5(3)

Армянская ССР
ЕРЕВАНСКИЙ ГОСУДАРСТВЕННЫЙ УНИВЕРСИТЕТ им. МОЛОТОВА

# НАУЧНЫЕ ТРУДЫ

ТОМ XXV

RSS d'ARMÉNIE
UNIVERSITÉ MOLOTOV à ÉREVAN

# TRAVAUX SCIENTIFIQUES

VOLUME XXV

ИЗДАТЕЛЬСТВО ГОСУНИВЕРСИТЕТА
ЕРЕВАН 1946

Հայկական ՍՍՌ
ՄՈԼՈՏՈՎԻ անվան ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

# ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ՀԱՏՈՐ XXV




ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1946

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ԱՆՎԱՆ ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

Հ. ԱՃԱՌՅԱՆ

# ՀԱՅՈՑ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

ՀԱՏՈՐ Գ.




ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1946

# Հ

*ՀԱԲԱՇ, ար. < արաբ. حبش ḥabaš «խափշիկ, եթովպացի» բառից (Եթովպացիք քրիստոնյա են, միաբնակ, դավանությամբ շատ մոտ հայ եկեղեցուն)։ Իբրև անձնանուն մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վենետ. Ա. 192 (գրված Հապաշ)։

ՀԱԲԷ, ար. ծագումն անհայտ. արդյոք Հայրապետ անունից մի անգամ հիշված է 1508 թ. (Ձեռ. Վասպ. 632)։

*ՀԱԲԻԲ, ար. և իգ. < արաբ. حبيب ḥabīb «սիրելի, բարեկամ» բառից, որ և արաբների մոտ անձնանուն է։ Գործածված է ԺԵ դարից մինչև ԺԸ դար։

— 1. Հաբիբ, կին Ներսէս քահանայի և մայր Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ աթոռակալն էր Բարթուղիմէոսի վանքի, 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41 ա (գրված նաև Խաբիբ)։

— 2. Խապիպ խաթուն, հարսն էր Կարապետ գրչի, որին օգնում էր թուղթ կոկելով, երբ սա օրինակում էր Փաշայ տիկնոջ համար մի Աւետարան, Վանում 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։

— 3. Խապիպ, այրի կին, որ Աննայի հետ օգնել է գնելու մի Աւետարան, որ գրված է եղել 1490 թ. Աղբակի Էրնկանի գյուղում.—Ձեռ. Վասպ. 512 (կասկածելի է թե թիվը և թե անունը. որովհետև քիչ առաջ էլ նույն անձը կոչվում է Ղարիպ)։

— 4. Խաբիբ, դուստր Ստեփաննոսի և կին Ատոմի. զավակ չունենալով՝ գրել տվին Մարգարայ գրչին մի Աւետարան, Աղբակի Երնկանի գյուղում, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 526—8։ Այս Հաբիբը՝ իր ամուսին Ատոմի հետ անզավակ էին. «զի ոչինչ զաւակ չունին և ոչ յիշատակ, բայց միայն զսուրբ աւետարանս»։ Ահա սրանց գերդաստանը. Հաբիբի հայրն է Ստեփաննոս, մայրը Ոսկի, եղբայրը Ղարիբ.—Ատոմի հայրն է Շաքար, մայրը Թագուհի,—Ատոմի եղբայրներն են՝ Մարտիրոս, Մկրտիչ. քույրերը՝ Հոռոմսիմ, Շնորհաւոր, սրանց որդիներն են՝ Ջանպլիզ, Մուրադ, Սոսուն, Խալիֆ, Սմբատ, Ազատ, աղջիկներն են՝ Բաղդադ, Խոն-

ձա, Սաղդաթ, Մրուաթ, Մուղամ, Խանում,—Ատոմի հորեղբայրներն են՝ Սարգիս և Վարդան. սրանց հետ հիշված են նաև Վարոց և Միքայէլ, որոնք մերձավոր արենակիցներ են։

— Նույն անունը ավելի ուշ հիշատակված է հետևյալ ձևերով. Հապիպ խաթուն 1569 թ. (Ձեռ. Վասպ. 134), Հաբիպ 1585 թ. (անդ 699), սեռ. Ցաբըբին 1599 թ. (անդ 756), Հաբիբ աղ. 1730 թ. (Բանասէր 1900, 149), Հապիպ քահանա 1761 թ. (Սըմբատեանց՝ Երնջակ 114), Ցապիպ իգ. Թիֆլ անհայտ (Bodleian 147, 149), Ցաբիբ իգ. Թիֆլ անհայտ (Ձեռ. Վասպ. 240)։

* ՀԱԲԻԲՇԱՀ, ար. <Նույն Հաբիբ անունից՝ -շահ մասնիկով. հիշված է մի անգամ 1353 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում՝ Հաբիպշայ ձևով (Ձեռ. Նոր-Բայազ. 20 բ)։

* ՀԱԴԻԱ, իգ. < արաբ. هدية hadiya «նվեր» բառից. հմմտ. Պարգև և Ընծայ անունները. հիշված է ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. Հադիա տիկին, դուստր Հայրապետի, գնեց Երզնկայում գրված մի Աւետարան և նվիրեց Երզնկայի Ս. Կիրակոս վանքին, 1298 թ.—Թորոս աղբ. Բ. 298։

— 2. Հատի, կին Վարդան քահանայի, որ Երզնկայում, Խոսրովի որդի Վարդան քահանայից գնեց մի Աւետարան, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։

— Ավելի ուշ հիշատակված են Հատիա 1512 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 646, Հատիէ 1630 թ. (Ջամբռ 176), Հատիա՝ անթվական (բայց գրված 1331 թվից հետո) Manus. brit. mus. 58 բ), Հատի՝ ԺԶ դար (Ձեռ. Սանաս. 7 բ)։

* ՀԱԴԻՐ, ար. < արաբ. حاضر ḥāzir «ներկա, պատրաստ» բառից. մի անգամ ավանդված է ԺԶ դարից։

— 1. Հատիր մելիք, Խաչենի Ջալալեանց իշխանական տոհմից, որդի մեծն Սայտունի և հայր Սարգիս կաթողիկոսի Աղվանից, ԺԶ դար.—Բարխուտ. Պատմ. աղվանից, Ա. 142, Բ. 34, Արցախ 177, Շահխաթ. Բ. 373 (Արձ. 1546 թվից)։

† ՀԱԶԱՐ, ար. Թեև կան պրս. هزار hazār «սոխակ» (իբրև հմր. hazārdastān կամ hazārāvā հոմանիշ բառերից), որ իբրև անձնանուն էլ գործածվում է (Justi 127 բ) և Hazārān հայր Նամխաստ զորավարի Թուրանեանց (Շահն. 4, 319), բայց մեր բառը նրանցից չէ, այլ կրճատված է հաջորդ անուններից։— Հազար անունը նախ հիշված է 1613 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 68), ապա 1684 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 91) և մի անգամ էլ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 5 ա)։

† **ՀԱԶԱՐԱՊԵՏ**, ար. < հյ. հազարապետ «հազար զինվորների պետ» բառից. գործածված է ԺԳ—ԺԷ դարերում։ Սրանից կա Հազարապետեան ազգանունը (Կարին)։

— 1. Հազրպետ քահանա, որդի հյուսն Աստուածատուրի, որ նրա համար գրել տվեց մի Աւետարան՝ Նիկոպոլսի Խաւմ քաղաքում, 1223 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 423։

— 2. Հազարապետ հիշված է նաև 1635 թ. (Դրնղ. 528) և Հազրապետ երեց՝ 1697 թ. (Տաշեան, Մատեն. մանր ուս. Բ. էջ 121)։

† **ՀԱԶԱՐԲԷԳ**, ար. < հյ. հազար + թրք. بك beg բառերից, իբրև հազարի վրա իշխող. հիշատակված է ԺԳ—ԺԷ դարերում։

— 1. Հազարբեկ, հիշված ՇԺԵ=1066 թ. Շիրակի Արալըխ գյուղի ամրոցի խանգարված արձանագրության մեջ։ (Ալիշան, Շիրակ, էջ 8 կարծում է թե պետք է կարդալ ՉԺԵ=1266 թ. որովհետև Հոռոմոսի արձանագրությանց մեջ այդ ժամանակից կա Հազարբէկ որդի Թայիկի (1269 թ)։ Տես հաջորդը։

— 2. Հազրպեկ, որդի Սասնայի, (ի կնոջէն Թայիկ Թագուհւոյ), որդւոյ Խաւռաս իշխանաց իշխանի. Թայիկի հետ միասին կալված են նվիրել Հոռոմոսի վանքին 1269 թ.—Արձ. Շիրակ 28, Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 18։

— 3. Հազարբեկ, եղբայր Ամիրբէկի, երկուսն էլ որդիք Սահմադինի, որ հիշատակված է իբրև պարոն՝ Օշականի արձանագրության մեջ 1288 թ.—Չքր. պատմ. Գ. 27, Շահխաթ. Բ. 79, Այրարատ 190։

— 4. Հազարբեկ, որդի Մխիթարի և եղբայր Խութլուպէկի և Թիրքիշի, որոնք գրել տվին մի Աւետարան՝ Կարսի Գողիս գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 463)։

— 5. Հազարբեկ, որդի Զաքարիայի, որ էր տանուտեր Բերկրի քաղաքի, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 350։

— 6. Հազարբեկ, որդի Բուրթէլի, Խլաթում գրել տվեց մի Ցայսմաւուրք՝ Աստուածատուր գրչին, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։

— 7. Հազարբեկ, հիշված է Շնոխոր Սուլղանի հետ՝ Ուշտունեաց Գանձակ գեղի մոտ Ս. Գէորգ եկեղեցու դռան արձանագրության մեջ՝ 1447 թ.—Նոտարք 155 (թվականը ստուգելի)։

— 8. Հազարբեկ, հայր Կիրակոս Սարփեցու, որ եղավ գնի միջնորդ տանուտեր Էդիլշահի և Ցովհաննէս գրչի միջև, Արծկէ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 9. Հազարբեկ պարոն, որդի Խնդուբէկի և Շիրավխաթունի, որ նորոգել տվեց մի Աւետարան 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։

— 10. Հազարբեկ, ամուսին Սուլթանմէլիքի՝ դստեր պղնձագործ Ըռուզբեկի, որ Կուքի գյուղում, Մանուէլ քահանային օրինակել տվեց Գանձարանը, 1478 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 39 բ, Սմբատեանց՝ Երնջակ 195։

— 11. Հազարբեկ, որդի Աւետիսի և եղբայր խոջա Միրիջանի, որ Ցակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են Ղըզարբէկ իգ. 1579 թ. (Ձեռ. Վասպ. 689.—Նոր-Ջուղայի բարբառով hազար > ղզար), Հազարբէկ 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 302), Հազրպէկ 1655 թ. (Թորոս աղբ. Բ. 372), Հազիպեկ 1673 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 345), Հազարբէկ, թիվն անհայտ (Ձեռ. Նոր-Բայազ. 43 բ)։

† ՀԱԶԱՐԴԵՂ, ար. <հյ. hազար և դեղ բառերից (իբր թե հազար ցավերի դեղ, ինչպես կա Խոցադեղ)։ Հիշատակված է մի անգամ ԺԴ դարում. մյուսները անթվական են։

— 1. Հազարդեղ, որդի Խութլուշայի, որ գրել տվեց մի Աւետարան, 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— Անթվական են Հազարդեղ՝ Արջոյառիճի արձանագրության մեջ (Շիրակ 123), Բագնայրի արձանագրության մեջ Շիրակ 121), Հազարդեղ իգ! (Ձեռ. Թաւր. 74 ա (1311 թվից ուշ)։

*ՀԱԶԱՐՄԱԼ, ար. <պրս. هزار hazār «հազար»+արաբ. مال māl «ապրանք, ինչք, տավար» բառերից։ Մի անգամ հիշատակված է ԺԸ դարում։

— Հազարմալ, հնդկահայ, որ Կալկաթայի հայոց եկեղեցու զանգակատունը կառուցեց 1734 թ. (Բազմ. 1924, էջ 31, Գուշակեան, Հնդկահայք 90)։

† ՀԱԶԱՐՄԱՐԴ, ար. <հյ. hազար+մարդ բառերից (իբրև թե նա որ հազար մարդ արժի)։ Մի անգամ հիշատակված է՝

— Հազարմարդ, մեղձավոր Սարգիս եպիսկոպոսի, որ Գուգարաց Կոթիփորոյ վանքում օրինակեց Ցայսմաւուրքը 1427 թ.—Նոտարք 85։

* ՀԱԶԱՐՇԱՀ, ար. և իգ. <պրս. هزار hazār «հազար»+شاه šāh «թագավոր» բառերից։ Գործածված է ԺԴ—ԺԶ դարերում։

— 1. Հազարշահ, որդի Մխիթարի, Տայոց Շիկբակ գյուղում, ստացող 1313 թ.—յիշ. ИАН 1911, էջ 1300։

— 2. Հազարշահ, կին ումն 1420 թ.—Տաշեան, Ցուց. 666։

— Ավելի ուշ հիշված են Հազարշահ իգ. 1550 թ. (Տաշեան, Ցուց. 790 բ), ար. 1576 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 314), ար. 1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 232 բ), ար. 1594 թ. (անդ 125 ա)։ Անթվական է Տեղերի տաճարի մի գերեզմանի տապանի վրա Հազարշահի (Բանաս. 1903, 28)։

† **ՀԱԶԱՐՋԱՆ**, ար. <հյ. Հազար կրճատ անունից+ջան գրգվականով։ Հիշատակված է 1576 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 470), 1561 թ. (Ձեռ. Կես. ածած. 51 բ՝ տպ. Հազարջան)։

† **ՀԱԶԱՐՎԱՐԴ**, իգ. <հյ. հազար և վարդ բառերից, իբրև «հազար թերթով վարդ»։ Գործածվել է ԺԴ դարից սկսած և կան հիշատակություններ ԺԷ դարի վերջից. կենդանի է այժմ էլ Հազրավարդ ձևով (Զանգեզուրում Հազավարդ)։

— 1. Հազրեւարդ, կին Գրիգորի և մայր Կարապետ քահանայի, որ Երզնկայում գրեց մի Ավետարան 1310 թ. երբ իր ծնողները մեռած էին։—Ձեռ. Վասպ. 156։

— 2. Ազրեվարդ, կին Էլինախի և մայր Յովհաննէս քահանայի, որ Ծարի Գետամէջ վանքում գրել տվեց մի Ճաշոց 1411 թ.—Կարապետ եպս.՝ Դոփեանք 184։

— 3. Հազրավարդ, մերձավոր Յովհաննէս քահանայի, որ Մոկաց Փառակայ վանքում, Իսրայէլ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 422։

— Ավելի ուշ հիշատակված են՝ Հազարվարդ 1508 թ. (Ձեռ. Վասպ. 634), Խազրայվարդ 1585 թ. (անդ 699—704), Խազրավարդ 1596 թ. (անդ 747), Հանձրեվարդ՝ շուրջ 1606 թ. (Թորոս աղբ. Բ. 342—3), Հազրէվարդ 1621 թ. (Ձեռ. Վասպ. 860), Հազարվարդ 1627 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 544), Հարզավարդ 1635 թ. (Թորոս աղբ. Ա. 293), Հարզեվարդ (Ձեռ. Ագուլ.=Արարատ 1911, 222), Հազարվարդ 1692 թ. (Տաշեան, Ցուց. 662), Հազրեվարդ՝ թիվը անհայտ (Ձեռ. Վասպ. 394)։ Ըստ իս նույն է նաև Ձեռ. Դաղեան, Բ. 31 բ անթվական մի հիշատակարանում հիշված ձևը, որ տպված է Հուզեվարդ, ցանկումն էլ Հուզիվարդ։

**ՀԱԶԻՐ**, ար. անստույգ ձևով, որովհետև կա միայն սեռ. Հազրի։ Ծագումն էլ անհայտ։

— Հազիր Գնունի (Ը դար), որի որդին Գրիգոր Գնունի մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ».—սեռ. Հազրի՝ Արծր. Բ. զ։

ՀԱԹ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշատակված եմ գտնում անթվական մի հիշատակության մեջ, սեռ. Հաթին ձևով (Ձեռ. Վասպ. 238), ուր անշուշտ մի ձայնավոր կրճատված է, ինչպես ցույց է տալիս հաջորդ անունը։

ՀԱԹԷՋԱՆ, իգ. կազմված է նախորդ անունից+ջան փաղաքշականով։ Մի անգամ հիշատակված է 1554 Թ. կամ քիչ ուշ (Ձեռ. Վասպ. 100)։

ՀԱԹՈՒՇԷԿ, ար. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1505 Թ. Ձեռ. Ներս. 16 բ։

* ՀԱԼԱԼ, ար. <արաբ. حلال ḥalāl «արդար. մաքուր» բառից. իբրև անձնանուն մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 10 բ)։

* ՀԱԼԱԲ, ար. անշուշտ Ասորիքի حلب ḥalāb քաղաքի անունից (ասոր. Խիլիպպու, ֆրանս. Alep(po), Թրք. Haleb)։ Մի անգամ հիշված է 1517 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում՝ Ճանիկեան, Հնութ. Ակնայ 85։—Կա նաև Հալաբեան ազգանունը, որի ճիշտ ձևն է Հալաբլեան «Հալէբցեան»։

*ՀԱԼԱՖ տես ԽԱԼԱՖ։

— Հալաֆ մահտեսի, դուստր Աբրահամ քահանայի և կին Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1112—3։

ՀԱԼԴԻՏԱ, ար. հիշված է Բիսիթունի արձանագրության մեջ Գ. 79 Haldita ձևով, որ և Ելամականում Hal-ti-da ձևն ունի. (ասորեստանեան թարգմանության մեջ պակասում է).—Հին պարսկերենում, ինչպես հայտնի է, l ձայնը չկա. բայց այս բառի մեջ պահված է։—Այս անվան ծագումը անհայտ է (Բասմաջեան, Բանասէր 1899, էջ 43 Խալդի աստուծու անունից է հանում)։

— Հալդիտա, հայր Արախայի, որ Բաբելոնի սատրապն էր (Զ դար).—ավելին տես Արախա։

* ՀԱԼԻՄ, իգ. <արաբ حليم ḥalīm «հեզ, հեզահամբոյր» բառից։ Հիշատակված է Հալիմ և Խալիմ ձևերով՝ ԺԴ—ԺԵ դարերում և մի անգամ էլ ԺԸ դարի սկզբում։ Այսպես՝

— 1. Խալիմ խաթուն, կին խոջայ Եզգանբախշի, որդւոյ Աբդուլմեճհի, 1327 Թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

— 2. Հալիմ խաթուն, դուստր Խաչիկի և քոյր Թումայ կրոնավորի, որ Աղթամարում օրինակեց Ճաշոցը՝ Յովհաննէս կրոնավորի համար, 1421 Թ.—Նոտարք 67։

— 3. Խալիմ խաթուն, *դուստր Թուլուխի և քույր Յովհաննէս քահանայի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան՝ Կարապետ քահանային, 1422 թ.—Նոտարք 69։*

— 4. Հալիմ խաթուն, *դուստր տանուտէր Խաչատուրի, որ Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Ձեռ. Վասպ. 419։*

— 5. Խալիմ, *դուստր Թումայի և քույր Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ. —Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։*

— 6. Հալիմ խաթուն, *մերձավոր Ստեփաննոսի, որի հիշատակին իր կինը՝ Փաշամելէք գրել տվեց մի Աւետարան՝ Կեցանայ ձորի Սորավանք գյուղում, 1458 թ.—Ձեռ. Վասպ. 428։*

— 7. Հալիմ խաթուն, *դուստր Թումայի, որ Աղթամարում, Ներսէս արեղային գրել տվեց մի Աւետարան, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433։*

— 8. Հալիմ, *նախորդի դուստրը և Թումայի թոռը (անդ)։*

— 9. Խալիմ խաթուն, *մերձավոր խոջա Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 439։*

— *Անթվական են Խալիմ խաթուն (Ձեռ. Վասպ. 316), Հալիմ խաթուն (անդ 461), իսկ 1701 թվին է Խալիմ խաթուն (անդ 1027)։*

*ՀԱԼԿԱՄ, ար. ծագումը անհայտ։ Հիշատակված է ԺԱ—ԺԲ դարերում, այնուհետև խափանված։*

— 1. Հալկամ, *եղբայր Օշինի, որ Գանձակից գաղթելով Կիլիկիա, առաջին անգամ տեր դարձավ Լամբրոն բերդին, 1071 թ.—Սիսուան 46 բ, Սամ. անեց. 117, Տաշեան, Ցուց. 638։*

— 2. Հալկամ *Պապեռոնցի, եղբայր Ռիթայի և Բակուրանի, մորեղբայր Լևոն Բ-ի, մեծ իշխան, տեր Մանիոնի, Լամօսի, Ժամնկանն և Անամօռի. Լևոն Բ-ի կողմից Լամբրոնացու և Պողոս իշխանի հետ դեսպան ուղարկվեց Պոլիս՝ կայսեր մոտ «1197 թ». ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ»։ —Սմբ. պատմ. 109, 112. Սիսուան 290, 322, 347, 465, 471։*

* *ՀԱԼՎԱ, իգ. <արաբ.* حلوا ḥalvā *«հրուշակ, հալվա» (բուն նշանակում է «քաղցր»)։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԵ դարում։*

— 1. Հալւայ խաթուն, *կին տանուտեր Յովհաննէսի. Խլաթում իր ամուսնու հետ միասին, Աստուածատուր քահանային*

գրել տվեց մի Աւետարան, 1443 թ. նույն տարին մեռավ Հալվա խաթունը.—Ձեռ. Նոր-Բայազ. 18—19.

— 2. Հալւա խաթուն, դուստր Հալիմ խաթունի և թոռն Թումայի, որ Ներսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433։

† ՀԱԼԻՈՐ, ար. <հյ. ալխոր, ժղ. հալվոր «ծերունի» բառից, ինչպես ունինք Ծեր, Ծերուն, Ծերօն, Ծերիկ, Ծերուկ, ինչպես և էլտիար անունները։ Հիշված է մի անգամ 1678 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 173 ա)։ Տես և հաջորդը։

† ՀԱԼԻՈՐԱԿ, ար. նախորդի գգվականն է։ Մի անգամ ունինք՝

— Հալւորակ, հայր մահտեսի Կիրակոսի՝ ստացողի (ԺԶ—ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 546։

* ՀԱԽԲԱՆԴԱ, ար. <արաբ. حق ḥaqq «Աստուած»+պրս. بنده banda «ծառա» բառերից. իր համազորներն են արաբ. Աբդլլայ, թրք. Թանգրիղուլի, հուն. Թէոդուլոս. հիշված է ԺԷ դարից՝ Հախպենտե ձևով (Ձեռ. Էջմ. № 1754, հրտր. Ազաթ. 1909 թ. յոՁ. էջ ծա):

* ՀԱԽՆԱԶԱՐ, ար. <արաբ. حق ḥaqq «Աստուած»+نظر nazar «հայացք» բառերից. իբր «այն որի վրա Աստուծու հայացքն է ընկել»։ Իբրև օտար անուն հիշված է 1621 թ. (Տաշեան, Ցուց. 181)։ Մեր մեջ հնագույն հիշատակությունը ԺԶ դարից է. շարունակվում է ԺԷ դարում, ապա դադարում։ Կրճատ ձևով կա Հախնազ՝ ԺԶ դար (Ձեռ. Թաւր. 13 բ և 24 բ)։ Սրանից է Հախնազարեան ազգանունը (Կովկաս)։ Հնագույն հիշատակություններից են՝ Հախնազար 1541 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 569), 1553 թ. (անդ 446), 1575 թ. (անդ 809), Յախնազար 1578 թ. (Ձեռ. Վասպ. 11=Կրպտ. եպս.՝ Դոփեանք, էջ 188), Հախնազար 1579 թ. (անդ 137), Հախնազար՝ հայ զորավար Շահաբասի՝ Հայապ. 619, Հախնազար՝ ազատաց ազատածին, որ Շահաբասի արշավանքի պատճառով թողեց իր երկիրը և «փախստական գնացեալ ցՍտամպալ» շուրջ 1603 թ. (Ձեռ. Վասպ. 524), Հախնազար՝ 1661 թ. (Manus. brit. mus. 302 ա), 1671 թ. (Յովսէփեան, Խաղբակեանք 254), Հախնազար իշխան Գանձակի՝ 1683 թ. (Ձեռ. Սևան. 12 ա)։

* ՀԱԽՈՒՄ, ար. <արաբ. حق ḥaqq բառից (որ նշանակում է «իրավունք», բայց նաև «Աստուած»)+թրք. um ստացական հոդով, նշ. «Աստուած իմ»։ Իբրև անձնանուն գործածված է մեր

մեջ 1674 թ. (Ձեռ. Դագեան, Բ. 46 բ), 1682 թ. (Սիսական 330), 1763 թ. (Ձեռ. Դագեան Բ. 20 ա), 1801 թ. Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 577). բայց կա նաև Հախում գյուղ՝ Արցախի Շամշադին գավառում։ Սրանից է Հախումեան ազգանունը (Կովկաս)։

*ՀԱԽՎԵՐԴԻ, ար. < արաբ. حق ḥaqq «Աստուած»+թրք. ويردى verdi «տվեց» բառերից, իբր «Աստուածատուր» (տես այս անունը)։ Անշուշտ իբրև անձնանուն գործածվել է մեր մեջ, որից Հախվերդեան (նաև Ախվերդեան) ազգանունը (Կովկաս)։

Հաղբակ տես Խաղբակ

†ՀԱՃՈՒԹԻՒՆ, ար. հյ. հաճութիւն (ի հարկէ աստվածային հաճութիւն) բառից, ինչպես ունինք Յարութիւն։ Իմաստի համար հմմտ. արաբ. رضا rizā «հաճութիւն», որ և անձնանուն է (Րիզա)։ Այս անունը անշուշտ գործածական էր ԺԸ դարում, որի կրճատ ձևն էր Հաճուք, որից էլ ծագել է Հաճուքեցց ազգանունը (ԺԹ դարից. տես Տաշեան, Ցուց. 787 բ), ինչպես ունինք Յարութիւն > Յարութ > Յարութենց։

*ՀԱՄԱԶԱՍՊ, ար. < հպրս. *Hamāzāspa անունից, որ կազմված պիտի լինի հպրս. *hamāza-=սանս. samāja- «համաքում, խումբ, բազմություն»+aspa- «ասպ, ձի» բառերից, իբր «նա որ ունի խմբով ձիեր». Նշանակության համար հմմտ. զնդ. Habāspa- անունը, որ կազմված է նույն ոճով *habā=սանս. sabhā- «հավաքում, խումբ»+aspa- «ձի» բառերից (Հիւբշ. 47)։ Գտնվում է նաև վրաց մեջ Ամզասպ ձևով. այսպես են կոչվում վրաց երկու թագավորներ, որոնցից վերջինը իշխեց 184—8 թ. (Mourier, Hist. de Géorgie, էջ 94—97)։ Հիշվում է նաև Համազասպ եղբայր Միհրդատ թագավորի վրաց †114 թ։ Իբրև անձնանվան օրինակ հիշում է Անան. քեր. 140 ուղ. Համազասպ, բց. ի Համազասպայ, ազգանուն Համազասպեան ձևերով։ Տառադարձված է հուն. Ἀμαζάσπης (Պրոկոպ. Պարս. Բ. 3) ձևով։ Իբրև ազգանուն ունինք Համազասպեանք (տոհմ) Ագաթ. 398։ Հիշատակված է մեր մեջ Բ դարից մինչև ԺԵ դար։ Վերակենդանացել է վերջին ժամանակ, և այժմ բավական տարածված անուն է։ Համազագ ձևով չորս անգամ հիշված է Ջամբռ 273 և 274։ Կրճատ ձևն է Համօ, որի հնագույն հիշատակությունը 1572 թվից է (գրված Յամօ Ձեռ. Վասպ. 674, 676)։

— 1. Համազասպ Արծրունի, ժամանակակից Արտաւազդ Բ-ի (130 թ).—Արծր. Ա. ը։

— 2. Համազասպ Կամսարական, ժամանակակից Մեծն Ներսէսի («353—373 թ»).—Տաշեան, Ցուց. 802 ա։

— 3. Համազասպ Մամիկոնեան, որդի Վասակ սպարապետի Արշակ Բ-ի («350—368 թ»). Պարսից Շապուհ թագաւորի պալատում հրամանատար կարգվեց։—Մեսր. եր. 68։

— 4. Համազասպ Մամիկոնեան, աներ Գարեգին Ռշտունու և հայր Համազասպեանի և Համազասպուհեայ. մասնակցեց Մանուէլ սպարապետի պատերազմին ընդդեմ Վարազդատի («374—378 թ»). մի անգամ հիշված է Բուզ. Ե. լէ անորոշ ձևով. այնպես որ կարող է լինել և ուրիշ անձ և ուղղելի Համազասպեան (տես անդ)։

— 5. Համազասպ Մամիկոնեան, որդի Մանուէլ սպարապետի, եղբայր Արտաւազդի և Հմայեակի, ամուսին Սահականոյշի՝ դստեր Ս. Սահակի, որի փեսան է։ Նշանակվեց սպարապետ Հայոց՝ Վռամշապուհ թագավորի («389—414 թ.») ժամանակ։ (Ըստ Բ. վ. Կիւլէսէրեան, Եղիշէ 361 սպարապետութեան պաշտոնը վարել է 388/9—414/5 թ)։ Քաջն Վարդանի հայրն է։ Մեռել է Խոսրով Գ-ի մահից («415 թ») քիչ հետո։—Խոր. Գ. ծա. Արծր. Ա. ժա. Մեսր. եր. 123 (ըստ այս պատմագրի մասնակցել է Մանուէլ սպարապետի պատերազմին՝ ընդդեմ Վարազդատի, որով միանում է նախորդի հետ).—սեռ. Համազասպայ՝ Խոր. Գ. ծա, ծե. Փարպ. ժը. Մեսր. եր. 123. Արծր. Ա. ժա. Օրբ. ժգ. Վրդ. իե. Վկ. շուշ. 50. Ցայսմ. սեպտ. 9. Նհպտք. 91։

— 6. Համազասպ Մամիկոնեան, որդի նախորդ Համազասպ Մամիկոնեանի, եղբայր Քաջն Վարդանի. մեռավ անորդի.—Justi 125 ա, Կիւլէսէրեան՝ Եղիշէ 378։

— 7. Համազասպ Մամիկոնեան, կառավարիչ Յունահայաստանի 415—421 թ.—Այրարատ 561։

— 8. Համազասպ Մամիկոնեան, Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մին «452 թ». սա բերեց Փարպեցու թուղթը Վահան Մամիկոնեանին (Ագաթ. 485 համարում է Վահան Մամիկոնեանի եղբորորդին).—Եղիշ. 150. Փարպ. խէ և էջ 195.—սեռ. Համազասպայ՝ Փարպ. էջ 186։

— 9. Համազասպ Տարօնեցի, պատերազմեց Յունաց դեմ՝ Տրդատ, Արև, Ջուանշեր և Գրիգոր նախարարների հետ, պարսից և Վրաց զորքով, առաջնորդութեամբ Վրաց Վախտանգ Գուրգասար թագավորի (Ե դար).—Գում. վր. ժգ. Վրաց աղբ. Ա. 189։

— 10. Համազասպ ի Գուգվառամեան, իշխան Մամիկոնեան,

ստորագրում է Ներսէս Բ. կաթուղիկոսի «548—557 թ.» կազմած «Ուխտ միաբանութեան Հայոց աշխարհիս» թղթին.—Գիրք Թղ. ժէ։—Այրարատ 561 դնում է կառավարիչ Յունահայաստանի 535 թ։

— 11. Համազասպ ի Հմայակեան, իշխան, անդամ Դուինի «554 թվի» ժողովի.—Գիրք Թղ. ժէ։

— 12. Համազասպ իշխան Զիւնականեան, անդամ Դուինի Բ ժողովի «554 թ.»—Գիրք Թղ. ժէ։

— 13. Համազասպ ի Սահական, իշխան, անդամ Դուինի Բ ժողովի «554 թ.»—Գիրք Թղ. ժէ։

— 14. Համազասպ, քեռորդի Շմաւոն կուսակալի Բարձր Հայոց. սրա սպանությունից հետո նշանակվեց կուսակալ Բարձր Հայոց՝ Յուստինիանոս կայսեր կողմից (535 թ)։ Ակակիոս իշխանը չարախոսեց նրան կայսեր մոտ և նրա հրամանով սպանելով՝ եղավ կուսակալ Բարձր Հայոց (536 թ)։—Զամչ. Բ. 241. Տեղեկ. Համալս. №1, էջ 66 (դնում է ըստ Պրոկոպիոսի եղբորորդի Սիմէոնի և ոչ թե քեռորդի Շմաւոնի)։ Տես և Շիրակ 5 ա։

— 15. Համազասպ, հայր Սահակ Նեստորականի, որ ապա զղջաց և դարձի եկավ (Զ դար).—սեռ. Համազասպայ՝ Գիրք Թղ. իդ.—Թվի թե նույն է Համազասպ ի Սահական իշխանի հետ № 13։

— 16. Համազասպ Մամիկոնեան, հրամանատար Յունահայաստանի հայկական բանակի։ Յունաց Հերակլ զորավարի հետ ընկճեց Վահեւունիների ապստամբությունը Մօրիկ կայսեր († 602) դեմ.—Սեբ. ժե։—Ըստ Ազգապ. 596 Ակասիոսի քսութեամբ սպանվեց «604—7 թվերին» և իրեն հաջորդեց Մժէժ Գնունի (հմմտ. № 14)։

— 17. Համազասպ Մամիկոնեան, որդի Դաւթի, փեսայ Թէոդորոս Ռշտունու, որի հետ միացավ՝ Հունաց Կոստանդին (641—668) կայսեր դեմ ապստամբության ժամանակ։ Թէոդորոսի մահից «658 թ» հետո Արաբների կողմից նշանակվեց Հայաստանի կառավարիչ. Երբ հայերը նորից անցան Հունաց հպատակության, Կոստանդին կայսրը նշանակեց նրան Հայաստանի կյուրապաղատ։ Դաւիթ վրդ. Տարօնացուն թարգմանել է տվել Բարսղի ճառերը (Ձեռ. Կարին. 77, Տաշեան, Ցուց. 550 ա, Ձեռ. Վենետ. Բ. 1262)։ Իբրև կյուրապաղատ պաշտոնավարեց երեք տարի և մեռավ «661 թ»։—Սեբ. խէ, խը, ծ. Կիր. 35. Յհ. կթղ. ժթ. [illegible] գ. [illegible]այրիվ. 19. [illegible]
Հա[illegible]

84. Նհպտք. 9ʼ. Զուգ. 56.—սեռ. Համազասպայ՝ Սեբ. ծ. Յհ. կթղ. ի. Ասող. Բ. բ. Կղկնտ. Բ. իբ. Վկ. դաւ. 86. Կիր. 35. Միխ. աս. ԻԹ (=ԻԸ). Զուգ. 57.—Վրաց ազգ. Ա 79 կոչում է Ամազասպ կուրապալատ։

— 18. Համազասպ Կամսարական պահլաւունի իշխան. ուխտի գնաց Երուսաղէմ և Հունաց ձեռքից ազատեց Երուսաղէմի հայոց վանքերը։ Իր խնդրով գրեց Անաստաս վարդապետը «Վասն վանորէից որ ի ս. քաղաքն յԵրուսաղէմ» (Է դարի վերջը)։— Զարբ. Հին դպր. 230, Թրգմ. 296,; Ազգապ. 1154, Հայապ. 229, Շիրակ 5 ա։

— 19. Համազասպ «ի տանէն համարակարին». ուղեկից եղավ Սահակ կաթուղիկոսին, երբ սա գնում էր արաբ ոստիկանի սիրտը ամոքելու և մեռավ Խառան քաղաքում «703 թ»։—Սուտ-Շապհ. 26—28։

— 20. Համազասպ Արծրունի, որդի Վահանի. եղբոր՝ Սահակի հետ ջարդեց Սուլէյմանի զորքը և երկուսն էլ քաջությամբ ընկան (Եզիտ ոստիկանի օրով, որ նստել է շուրջ «758—764 թվերին»).—Ղև. լ. Ասող. Բ. դ։

— 21. Համազասպ Արծրունի, որդի Գագիկի. հոր հետ բռնըվեց Նկան բերդի պաշարման ժամանակ և բանտարկվեց։ Ապա ազատվելով՝ դարձավ Հայաստան։ Հասան ոստիկանի ժամանակ ապստամբեց Վասպուրականում, բայց Արճէշի առաջ չարաչար հաղթվեց «775 թ»։ Հավատքը չուրանալով նահատակվեց իր եղբոր՝ Սահակի հետ, Խազմ ոստիկանի ձեռքով «786 թ».—Ղև. խ. Ասող. Բ. դ. Վկ. հմզ. 68, 76. Ցայսմ. ապր. 8.—սեռ. Համազասպայ՝ Ճշ. 653. Վկ. հմզ. 61, 63, 77, 80. Ցայսմ. ապր. 8. Սամ. անեց. 89.—Ալգեր. Լիակ. վրք. սրբ. Զ. 330—345։—Այս երկու նահատակների բարձրաքանդակ նկարները կան Աղթամարի Ս. Խաչ տաճարի հարավային պատի աջ կողմը (դրսից), երեք մետր բարձրությամբ։ Նրանց կողքին էլ արձանագրված է՝

| | |
|---|---|
| ՏՐ ՍՈՒ(ՐԲ ՍԱՀԱԿ ԵՂ | ՍԲ ՀԱՄԱԶԱ |
| ԲԱՑՐ ՀԱՄ(ԱԶԱՍՊԱՑ) | (ՍՊ ՎԱՍՊՈՒՐ |
| ՄԱՐՏԻՐ | ԱԿԱՆԻ |
| ՈՍՔ ԵԻ | ԻՇԽ |
| ՎԿԱՑ | ԱՆ; |
| (Ք) ՔԻ | |

Տես Լալայեան, Ազգագր. հանդ. Ի, էջ 203, որ և էջ 202 ունի քանդակի նկարը. արձանագրությունը շատ անորոշ է. փակագծված մասերը չեն երևում։

— 22. Համազասպ Արծրունի, որդի Գագիկ Արծրունու, եղբայր Աշոտ և Գրիգոր իշխանների (Ը դար)։—Սուտ-Շապհ. 37։

—23. Համազասպ, որդի Սահակի. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ. Համազասպայ՝ Օրբ. լը։

— 24. Համազասպ Արծրունի, մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ».—Արծր. Բ. դ. Ազգապ. 936։

— 25. Համազասպ Արծրունի, որդի Աշոտի (№ 30) և եղբայր Գրիգոր-Դերենիկ Գ-ի. հորը հետ կռվեց Նկան բերդում, Բուղայի դեմ, բայց բռնվեց և Բաղդադ գերի տարվեց։ Ազատվեց ու հոր հետ վերադարձավ Վասպուրական «858 թ», ուր 5 տարի ծանր հիվանդությամբ տառապելուց հետո մեռավ՝ նախ քան իր հայրը, որ մեռել է «874 թ».—Սուտ-Շապհ. 58, (64)։

— 26. Համազասպ Արծրունի, իշխան, որդի Աշոտի, թոռն Գրիգոր-Դերենիկի Ա, եղբայր Գագիկի և Գրիգոր-Դերենիկի Բ. երբ այս երեք եղբայրները բաժանեցին իրենց մեջ Վասպուրականը, Համազասպը ստացավ Աղբակը։ Աշոտ իշխանի (№ 30, †874) հորեղբայրն է։—Սուտ-Շապհ. 39, 41, 47, 48.—սեռ. Համազասպայ՝ անդ 40, 47—49։

— 27. Համազասպ, թագավոր Վասպուրականի, որդի Գագկայ Արծրունւոյ. հաջորդեց իր եղբոր՝ Գրիգոր Դերենիկին, որ †958 թ.—Անան. ապստ. 140 բ։—Նույն է Աբուսահլ № 1, որ իշխել է «953—969 թ»։

— 28. Համազասպ, իշխան Ամատունեաց, հիշված է Հռիփսիմէ արքայադստեր կեղծ կտակագրում, 981 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 424։

— 29. Համազասպ, որդի Սենեքերիմ թագավորի Արծրունեաց, եղբայր Ատոմի, Դավթի և Կոստանդինի (ԺԱ դար).—Զարբ. Հին դպր. 384։

— 30. Համազասպ, հայր Արամի, որ մի այգի նվիրեց Հաղբատի գրատան և ինքն էլ միաբան դարձավ նույն վանքին, 1179 թ.—Justi 20 ա. Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 70, Երզնկեանց՝ Հնախ. Տեղագր. 49։

— 31. Համազասպ, նվիրատու Հայրավանքի, 1213 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 436։

— 32. Համազասպ, առաջնորդ Կեչառու վանքի, 1213 թ.—

*Արձ. Այրարատ 263 ա, 267 (դնում է նախ քան Աթանասը՝ 1272-ից առաջ)։*

— 33. Համազասպ *մարծպան, մեռել է պատերազմի մեջ և թաղվել Սանահնի վանքում. սրա որդին է Սմբատ, որի որդիներն են Քուրդ, Հասան, Համազասպ և Սարգիս. այս բոլորը հիշված են 1191 թ. Սարգիսը մեռել է 1215 թվին, իսկ Համազասպ մարծպանը սրանից ավելի առաջ։—Արձ. 1191 և 1215 թ. Սանահնի վանքում,* Justi *125 ա, Ազգագր. հանդ. Գ. 282—3, Է. 383, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 29. Յարութիւնեան՝ Ներս. դպր. սաների Ա. ճնպրհ. 72։*

— 34. Համազասպ, *որդի Սմբատի, թոռն նախորդի, որ տես։*

— 35. Համազասպ *Ա. վանահայր Հառիճի վանքի. սրա օրով Սարգիս Ճոն շինել է մի եկեղեցի։ Արձանագրության թվականն անհայտ է։ Աբէլ վրդ. տանում է մինչև Ժ դար, իսկ Ալիշան, Շիրակ 158, 163 չի ընդունում։ Երկրորդ անգամ հիշված է հայր Համազասպը մի ուրիշ արձանագրության մեջ, որ դարձյալ անթվական է (Շիրակ 159 բ)։ Երրորդ և չորրորդ անգամ հիշված է Տէր Համազասպ՝ հայր Յովհաննէսի հետ (Շիրակ 161 բ և 162), որոնց թվականը թեև ընկած է, բայց հեջուբ Վահրամի և նրա կնոջ Թամարի հիշատակությունից երևում է, որ շուրջ 1229 թվին է։ Յովհաննէս վանահայրը հիշված է 1224 թվին (Շիրակ 163 ա տախտակում), Համազասպ Բ-ը 1234—5 թվերին, ուստի այս Համազասպը կամ հետո է վանահայր դարձել կամ միայն միաբան է։*

— 36. Համազասպ *Բ. առաջնորդ Հառիճի վանքի, հիշված 1235 թ.—Արձ. Շիրակ 161--3 (տես նախորդը)։*

— 37. Համազասպ, *Պետրէի հետ միասին հիշված է բերև հայրապետ Ախտալայի և Պօղոս-քիլխայի հին եկեղեցու, 1245—1247 թ.—Բարխուտարեանց, Արցախ 363—4. Ազգ. հանդ. Է 431 (Համզասպ ձևով)։*

— 38. Համազասպ *Անեցի, ութերորդ եպիսկոպոս և առաջնորդ Հաղբատի, ազնվական ծագումից. հաջորդեց Յովհաննէս Գ-ին և նստավ 1243—1257 թ. ստորագրում է Սսոյ ժողովի կանոններին «1243 թ». եղել է մեծ շինարար. ինքն է շինել Հաղբատի երկհարկանի զանգակատունը (1244 թ), Հաղբատի եօթնխորանեան տաճարը (1245 թ), և Համազասպ կոչված մեծ ժամատունը (1253—7 թ)։ Սրա խնդրանքով գրեց Վարդանը իր Մեկնութիւն հին կտակարանի (1261 թ!) և Ճառ Ս. Գրիգորի*

(Ձեռ. Կարին. 125).—Գիր. 57, 65, խա, խգ. Վրդն. լս. 40.—սեռ. Համազասպայ՝ Վրդն. լս. 39. Տաշեան, Ցուց. 592, 984. Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 67. Զարբ. Հին դպր. 742 (բայց կա թվականի սխալ. որովհետև եթե Համազասպը մեռել է 1357 թվին, ինչպես կարող էր Վարդանը գրել իր Մեկնութիւնը 1261 թ. նրա խնդրանքով)։—Իր անունով կան բազմաթիվ արձանագրություններ Հաղբատում, որոնց հնագույնն է 1242 թ. (Երգնկեանց՝ Հնախ. տեղագր. 24) և վերջինը 1257 թ. տես անդ, էջ 24, 29, 34, 38, 45, 46, 54, 55, 59, 62, 69. Բժշկեան՝ Ճանապ. լեհ. 78, Ազգագր. հանդ. Է, 411, 412, 417, 425 (վերջինս Բորչալուի Խորակերտ վանքի դռան վրա)։

— 39. Համազասպ, առաջնորդ Ուշի գյուղի Ս. Սարգիս եկեղեցու, հիշված 1264 թ.—Այրարատ 181։

— 40. Համազասպ եպիսկոպոս Մամիկոնեան, առաջնորդ Յովհաննավանքի. հիշված է 1279—1300 թվերին. իր հրամանով և ծախսով գրվեց մի օրինակ Մեկնութիւն Գործոց առաքելոց՝ Յովհաննավանքում 1288 թվին, Ագաթանգեղոս 1293 թ. և նվիրեց Յովհաննավանքին (հրատ. Ագաթ. 1909 թ. յառ. էջ ԼԸ), Ներսէս Լամբրոնացու Մեկնութիւն Սաղմոսաց՝ 1294 թ. (Շողակաթ 208) և ուրիշ շատ ձեռագրեր։—Զքր. սարկ. Գ. էջ 19, 20, 27, 30.—սեռ. Համազասպայ՝ Զքր. սարկ. 30. տես և Այրարատ 170, 171, 174, 190. ZAPh 2, 294. Շահխաթ. Բ. 78—79. Տէր-Մովսէսեան, Կրպտ. Սասնեցի, էջ 7, Սոկր. յոչ. 20—24։—Նույն պիտի լինի նաև Համազասպ Մամիկոնեան տէր, որ գրել տվեց Սարգիս գրչին մի օրինակ Ղևոնդ պատմիչ, Եւագր են (1279—1311 թվերին). հիշված է Ղևոնդի պատմության հիշատակարանում, Ձեռ. Վենետ. Բ. 292, Տաշեան՝ Ժղվծ. առակաց Վրդ. 188, Մառ՝ Ամառն. ուղև. 21։

— 41. Համազասպ, հայր Վարդանէս աբեղայի, որ Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում գրեց մի Գանձարան, 1412 թ.—Manus. brit. mus. 120 բ։

— 42. Համազասպ եպիսկոպոս Երևանի, հակառակորդ Կիրակոս կաթողիկոս Վիրապեցու, 1443 թ.—Զամչ. Գ. 489։

— 43. Համազասպ, ունի մի գանձ Խաչի վրա.—Manus. brit. mus. 140 բ (թվականն անհայտ է)։

* ՀԱՄԱԶԱՍՊԵԱՆ, աբ. ծագումը տես Համազասպ. իբրև օրինակ հիշված է Թր. քեր. 13։

— 1. Համազասպեան *սպարապետ Մամիկոնեան, մասնակցեց Մանուէլ սպարապետի պատերազմին՝ Վարազդատ Թագաւորի դէմ «378 թ».—Բուզ. Ե. լէ.—սեռ.* Համազասպէի *(իմա* Համազասպեանի*)՝ Բուզ. Ե. լէ։*

— 2. Համազասպեան *Մամիկոնեան, որդի Համազասպ Մամիկոնեանի, եղբայր քաջն Վարդանի և թոռն Ս. Սահակի. մասնակից եղավ Վարդանանց պատերազմին բանտարկվեց 12 տարի Պարսկաստանում և ապա արձակվելով դարձավ Հայաստան «462 թ».—Խոր. Գ. ծը. Եղիշ. 90, 150. Փարպ. ժը, լթ, խէ. Արծր. Ա. ժա. Վրդ. իէ. Ցայսմ. սեպտ. 9, օգոստ. 7.—Փարպ. լ գրում է սեռ.* Համազասպայ *և ոչ թե* Համազասպեանի:

** ՀԱՄԱԶԱՍՊՈՒՀԻ, իգ. ծագում է* Համազասպ *անունից՝* ուհի *մասնիկով։*

— 1. Համազասպուհի, *դուստր Համազասպ Մամիկոնեանի, քույր Համազասպեան սպարապետի և Վարդան Մամիկոնեանի, կին Գարեգին Ռշտունու։ Հավատքը չուրանալու պատճառով՝ Միրուժան Արծրունին կախեց նրան Վանայ բերդից «369 թ».—Բուզ. Դ. ծթ.—սեռ.* Համազասպուհեայ*՝ Բուզ. Դ. ծթ. Արծր. Ա. ժ.—Տես և Բուզ. Ե. լէ, ուր հիշված է իբր քույր Համազասպեան սպարապետ Մամիկոնեանի։*

— 2. Համազասպուհի, *կին Սիւնեցի մի իշխանի, մայր Գէորգի (Ը դարի վերջը).*—Justi *125 բ։—Հմմտ.* Համամուհի:

** ՀԱՄԱԶԻԶ, ար. < պրս.* هم ham *«նույնպես»+արաբ.* عزيز ʿazīz *«ծիրական, սիրելի» բառից։ Հիշված է մի խաչքարի վրա 1595 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 506։*

*ՀԱՄԱԼՏԻԿԻՆ, իգ. ծագումը ինձ անհայտ, եթե չկա վրիպակ. թվականն անհայտ. հիշված է մի անգամ Զեռ. Սեբ=ՀԱ 1926, 47։*

*† ՀԱՄԱԿԱՐ, ար. < հյ.* համակար *բառից, որ մերթ նշանակում է «համազօր» և մերթ կրճատված է* համարակար *բառից։ Մի անգամ գտնում եմ գործածված՝*

— Համակար *իշխան Անձևացեաց, իր զորքով օգնական գնաց Սմբատ Ա Թագավորին՝ կռվելու համար Ափխազների Դոտաս Թագավորի դեմ, շուրջ 908 թ.—Սուտ-Շապհ. 81։*

** ՀԱՄԱՄ, ար. < արաբ.* حمام ḥamām *անունից, որ նշանակում է բուն «հաւբալ, վայրի աղավնի»։ (Այս անունով արաբ անձեր տես Կամուս, Թրք. Թրգմ. Գ. 434)։ Հայոց* Համամ *անունը տառադարձված է սակայն արաբ.* همام Hamām *ձևով։ Կա նաև վրացի Համամ իշխան՝ 632 թ. (Զամչ. Բ. 339)։*

— 1. Համամ *Արծրունի, որդի Արշաւրի. Արտաշէս Բ Թագավորից (88—129 Թ) ստացավ Աղբակը. ուղարկվեց դեսպան Ադրիանոս կայսեր (117—138 Թ) մոտ։—Արծր. Ա. ը.—սեռ.* Համամայ՝ *անդ.—կեղծիք, որովհետև այդ դարում* Համամ *անուն չէր կարող լինել։—Ալիշան, Յուշիկք Բ. 110 դնելով «արքունեաց դիւանապետ», համարում է երգիչ և վիպասան։*

— 2. Համամ *իշխան Մելիտինեայ, ներկա էր Մեծն Ներսէսի օրհասին «353 Թ».—Մեսր. եր. 88։ (Կեղծիք կամ սխալ գրչություն նույն պատճառաբանությամբ, ինչ որ նախորդը)։*

— 3. Համամ *Ամատունի, որդի Շապուհի. Արաբներից նեղվելով՝ հոր հետ միասին 12,000 հայոց գլուխն անցած՝ գաղթեցին Պոնտոս. արաբները ընկան նրանց ետևից, բայց հաղթվեցին «788 Թ».—Ղև. խբ. Ասող. Բ. դ։*

— 4. Համամ *վարդապետ Արևելցի. մատենագիր. ծաղկել է Աշոտ Ա Բագրատունու «885—890 Թ» և Գէորգ Բ Գառնեցի («877—879 Թ») կաթողիկոսի ժամանակ։ Կենսագրական տեղեկություններ պակասում են իր մասին։ Գրել է Վերլուծութիւն Առակաց Սողոմոնի, Յոբայ Ո՞վ է դա, Մեկնութիւն Սաղմոսաց, Ամբիծք, Լուծումն քերականին։ Իրենն են նաև «Հարցումն Աշոտոյ», որ գրել է 856—865 թվերին (տես Սարգիսեան, Եւագր. Ներած. էջ ԿԼ) և պատմական մի երկ, որ այժմ կորած է (Զարբ. Հին դպր. պատմ. 785 և Հայապ. 78)։—Ասող. Գ. ը. Վրդ. խե.—սեռ.* Համամայ՝ *Համամ. քեր. 253, Երզն. պտճռ. 89։—Թերևս նույն անձն է՝*

— 5. Համամ *իշխան Արևելից, Բագրատունի ցեղից, նորոգեց Աղուանից Թագավորությունը, փրկանքով ազատեց Գէորգ Բ կաթողիկոսին Աֆշին ոստիկանի ձեռքից «894 Թ»։ Բուղա ոստիկանի ստիպմամբ՝ մահվան սպառնալիքի տակ սպանել է իր հարազատ եղբորը։ Այնուհետև զղջալով իր այս ակամա արարքի վրա, գրել է մի զղջական շարական, որ ամբողջությամբ դնում եմ այստեղ։*

*Հայր երկնաւոր, անկանիմ առաջի անոխակալ քո գթութեանդ, զի մեղօք իմովք բարկացուցի և չար առաջի քո արարի. աղաչեմ զքեզ, ներեա յանցանաց իմոց, որ միայնդ ես ողորմած։*

*Արք անօրէնք կոչեցին զիս հաղորդել արեան մահու, գնացի զճանապարհս ձախակողմեանն. կատարեցի զչար խորհուրդ նոցա. աղաչեմ զքեզ...*

Մեծ են յանցանք իմ, Տէ՛ր, զոր գործեցի յահէ մահու, հրամանաւ Իսմայէլեան բռնաւորին երագեցի հեղուլ զարիւն եղբօրն. աղաչեմ զքեզ...

Աստուած ապաւէն և յոյս դարձելոյս ի քեզ. յարենէ փրկեա զիս. որպէս թողեր զայն երգողին, թո՛ղ և ինձ զպարտս մեղուցեալ քո ծառայիս. աղաչե...

Մեղա՛յ, Տէր, մեղայ. Մանասէի ձայնիւ գոչեմ, ընկա՛լ զիս, մարդասէ՛ր, ընդ երանելեացն, որոց թողան և ծածկեցան յանցանքն. աղաչ"

Այս շարականը, որի ծայրանունն է Համամ, տպված է Սահակ վրդ. Ամատունու «Պարականոն շարականներ» աշխատության մեջ, էջ 163։ Հմմտ. նաև Ջեռ. Օշ. 63 ա։—Իր մեղքը քավելու համար՝ Համամը շատ բարեգործություններ է անում, որի համար էլ ստանում է «բարեպաշտ» կոչումը։ Կոչվում է նաև Յովհաննէս անունով (ըստ Մխ. այրիվ. 70)։ Համամ թագավորի և նրա կնոջ գերեզմանները գտնվում են Արցախի Վարանդա գավառի Աւետարանոց գյուղի հին հանգստարանում։ Թագուհին չունի տապանագիր, այլ նկարված է միայն պատկերը։ Թագավորի քարը մաշված է եղել, ուստի ոմն «տէր Մասան» նոր քար է գցել 1241 թ. (Բարխուտ. Պատմութ. Աղվանից 164)։—Յհ. կթղ. լգ. Ասող. Գ. գ. Կղկնտ. Գ. իբ. Օրբ. ծգ. Միխ. աս. իթ (= իը).—սեռ. Համամայ՝ Անան. ապստ. 131 ա, 135 ա, 138 բ, 139 ա, Օրբ. ծա. տես և Հայապ. 510։—Առանձին մենագրություն ունի Կ. Կոստանեանց, «Համամ Արևելցի», Վղրշպտ. 1896, արտատպ. Արարատ ամսագրից, 1896, էջ 169—176։ Այստեղ երկու Համամները մի անձ են ընդունված։ Իբր թե Համամ թագավորը իր եղբոր սպանելուց հետո՝ զղջացել և գահը թողնելով կրոնավոր է դարձել։ Յովհաննէս անունը այդ ժամանակից է։ Այդ ժամանակ գրած պիտի լինի նաև այն զանազան երկերը, որ տեսանք վերը։ Այս բոլորը շատ գեղեցիկ, բայց բաղխում է դժվարությանց։ 1) Պատմագիրները (Ասողիկ և Վարդան) այնպես են հիշում այդ երկուսին, որ իբր թե բոլորովին տարբեր անձեր լինէին։ Մինչդեռ եթե թագավորը կրոնավոր դարձած լիներ, բոլորովին տարբեր վերաբերմունք պիտի ունենային։ 2) Համամի երկերի խորագրում բնավ չէ հիշատակված թագավոր տիտղոսը։ 3) Այլ և այդ երկերը չեն հիշված Յովհաննէս կրոնավորական անունով, այլ միայն Համամ։ 4) Ամենից վատն է 856—865 թվականը, որ տալիս է Սարգիսեանը Համամ վար-

դապետի «Հարցումն Աշոտոյ» գործի համար։ Եթե Համամ վարդապետը գրել է այդ երկը 865 թվին, ուրեմն արդեն կրոնավոր էր, մինչդեռ մենք գիտենք որ Համամը թագավոր էր 894 թվին, երբ ազատեց Գէորգ Բ կաթողիկոսին։

— 6. Համամ, հայր Գագիկի (№ 28), որ էր տէր Տանձեաց (ԺԱ դար).—տես. Համամայ՝ Վրդ. ծզ։

— Համամ անունը այնուհետև չի երևում։ ԺԷ դարում նորից է հիշատակվում իբրև իգական անուն, բայց անորոշ ձևով. այսպես՝ գրված Յամամ ձևով 1648 թ. (Ձեռ. Վասպ. 911) և Համամ ձևով 1678 թ. (անդ 1023)։—Բայց տես և Համան։

*ՀԱՄԱՄՈՒՀԻ, իգ. ծագում է նույն Համամ անունից՝ իգական -ուհի մասնիկով։

— Համամուհի, տիկին Սիւնեաց, մայր Գէորգ քահանայի Սիւնեցւոյ (№ 19)՝ Երիցակու վանից (Թ դար).—տես. Համամուհեայ՝ Օրբ. խե (այլ ձ. Համամօրհեայ, որից հետևում է որ հին ձևն էր Համամուրհեայ)։

*ՀԱՄԱՅ, իգ. <պրս. هما humā բառից, որ է առասպելական մի թռչուն, որի ստվերը նշան էր բախտավորության, և որ ում վրա նստեր՝ թագավոր կլիներ։ Նույնը ասվում էր նաև همای humāy և գործածվում էր իբրև իգական անուն. օր. Հումայ էր կոչվում Իսֆենդիարի թագավորի քույրը։ Մեր մեջ հիշված է Ժ դարում։

— 1. Համայ, դուստր Մամիկոնի. գնեց մի Աւետարան և նվիրեց Բարձրաքաշ վանքին՝ Վահանի առաջնորդության ժամանակ.—Ձեռ. Սևան. էջ 2։ (Ձեռագիրը թվական չունի. բայց Զարբ. Թրգմ. 158 դնում է 966 թ.—Զարբ. կարդում է Համայս, հոդը սխալմամբ միասին առնելով. Տաշեան, Ակնարկ 20 կարդում է Համայ, և այս է ճիշտը, որովհետև քիչ հետո ունինք տես. Համայի)։

— 2. Համայեայ խաթուն ձևով մի անգամ էլ հիշված է 1828 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 12 բ)։

ՀԱՄԱՅՆ, ար. ծագումն ինձ անհայտ, որովհետև չեմ կարծում որ հյ. համայն «բոլոր» բառից լինի։ Հիշված է Համայն ոմն 1619 թ. (Տաշեան, Ցուց. 970 ա)։—Հմմա. Համան։

ՀԱՄԱՆ, իգ. ըստ որում գրությունն անորոշ է, ուստի և ծագումն էլ անորոշ է. գրված է թե Համան և թե Յաման. բայց ունինք նաև Համանգուլ (տես այս անունը). ըստ այսմ Յաման կարող է ծագած լինել Թրք. یمان yaman բառից, ինչպես և կըր-

ճառված լինել Համանգուլ բառից։ Համան ձևով հիշված ունինք 1563 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 49 բ), 1650 թ. (Tübingen 35), 1663 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 21 բ՝ հոդով 21 բ), Յաման ձևով՝ 1645 թ. (Ձեռ. Վասպ. 436), 1680 թ. (անդ 568), անթվական (Ձեռ. Վասպ. 1012, Ձեռ. Վեներ. Ա. 640) են, կրկնակ ձևով՝ Համան կամ Յաման՝ 1646 թ. (Ձեռ. Թաւր. 103 ա)։ Տես և Յաման-Սուլթան։

*ՀԱՄԱՆԳՈՒԼ, իգ. < պրս. همان‌گل haman-gul «հենց նույն վարդը»։ Մի անգամ գործածված եմ գտնում 1493 թ.։

— Համանգուլ, դուստր Յովհաննէսի. փոքր հասակից կրոնավոր դարձավ. Այրի վանքում, Ստեփան աբեղային գրել տըվեց մի Աւետարան, 1493 թ.—Թորոս աղբ. Բ. 304։

Համաս, Համասիե տես Համասփիւռ:

†ՀԱՄԱՍՊՐՈՒՀԻ, իգ. < հյ. համասպրամ ծաղկանունից՝ -ուհի մասնիկով։ Հիշված է մի անգամ Ժ դար։

— Համասպրուհի, դուստր Բաբկէն իշխանի (Թվի № 12) Սիւնեաց. նվիրեց Հալիս գյուղը Տաթևի վանքին (Ժ դարի ըսկիզբը).—Օրբ. խա. Սիսական 228 բ, 256 ա։

†ՀԱՄԱՍՓԻՒՌ, իգ. <հյ. համասփիւռ ծաղկի անունից, որ իր բույրմունքը սփռում է ամեն կողմ։ Հնագույն գործածությունը ԺԵ դարից է (տես տակը). հիշված է նաև 1629 թ. Նոր-Ջուղայում (Կնիք հաւ. յոչ. IV)։ Շատ գործածական է այժմ էլ. կրճատ ձևերն են Համաս, Համասիկ, Համասխայ, Համասիէ, որոնցից ոմանք ավանդված են նաև հնից։

— Համաս խաթուն, կինն է նշանավոր գրիչ Դանիէլ քահանայի (№ 30). հիշված է 1441 թ.—Ձեռ. Վասպ. 383։

— Համասփիւռ, կին Կարապետ քահանայի և մայր Գրիգորիսի, որ բաբունապետ էր Սևանի, 1486 թ.—Արձ. Սմբատեանց, Գեղարքունի 120։ Հմմտ. Համաւոր № 1։

— Ավանդված են նաև Համասիե 1587 թ. (Bodleian 107), Ամաս 1666 թ. (Ձեռ. Վասպ. 926), Համաս 1693 թ. (անդ 334), Համաս 1710 թ. (անդ 657), Համազ ԺԸ դար (Ջամբռ 183), Յամասխայ խաթուն՝ թվականն անհայտ (բայց 1224-ից ուշ՝ Թորոս աղբ. Բ. 274)։ Տես և Ամուս:

†ՀԱՄԱՎԱՐ, ար. < հյ. համավար բառից, որ Առձեռնը մեկնում է «մէկտեղ դրած, մէկտեղ խառնած»։ Մի անգամ հիշատակված է ԺԱ դարում։

— Համավար եպիսկոպոս Բջնիի, հիշված 1051 թ.—Այրարատ 260։

† **ՀԱՄԱՒՈՐ**, *իգ.* < *հյ.* համաւոր *բառից, որի բուն նշանակությունն է «համեղ, անուշ», բայց այժմ Պոլսի բարբառում նշանակում է «համեստ, պարկեշտ»։ Մի անգամ հիշատակված է ԺԵ դարում։*

— 1. Համաւոր, *կին Կարապետ քահանայի և մայր Դանիել վրդ. Սևանեցու, որ Առաքել աբեղայից գնեց մի Քարոզգիրք, 1461 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 բ)։ Նույնը հիշված է նաև 1486 թ. Սևանի հռչակավոր դռան արձանագրության մեջ՝ Սիսական 84 բ, Անահիտ 1932, 25 են։*

— 2. Համաւոր *հիշված է նաև Հոռոմոսի անթվական մի արձանագրության մեջ՝ Շիրակ 25։*

† **ՀԱՄԲԱՐՁՈՒՄ**, *ար.* < *հյ.* համբարձում *բառից, ակնարկությամբ Քրիստոսի Համբարձման։ Հնագույն հիշատակությունը ԺԵ դարից է (տես տակը)։ Երկրորդ հիշատակությունը 1773 թվից է (Կարապետեան, Յիշատ. Սամաթ. 90)։ Կրճատ ձևերն են* Համպարցիկ *(Ձեռ. Թաւր. 133 ա, 1663 թվից ուշ գրված մի հիշատակարանում), Հմբարցի (Ղրբ.), Համփո, Համբար, Համփիկ, Բմ́րցի (Ղրբ)։*

— 1. Համբարձում *Կաֆացի, ստորագրում է Կաֆայեցոց դիմումին՝ Ֆլորենտիայի ժողովի առթիվ, 1438 թ.—Պալճեան, էջ 299։*

— 2. Համբարձում *Սեբաստացի, կամ Պապա Համբարձում. նշանավոր երաժշտագետ, որ եվրոպական ձայնագրության հետեվողությամբ և հին հայկական ձայնանիշներով հնարեց Պոլսում նորատեսակ հայ ձայնագրություն 1834 թ. նույնը Գէորգ Դ կաթուղիկոսը Նիկողայոս Թաշճեանի ձեռքով գրի առավ և տարածեց (Ազգապ. 4246).*

**ՀԱՄԲՈՒԼ**, *ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1545 թ. (Արցախ 139)։*

† **ՀԱՄԵՂ**, *իգ.* < *հյ.* համեղ *բառից, որի հետ հմմտ.* Համաւոր։ *Մի անգամ հիշատակված է 1399 թվից ուշ գրված անթվական մի հիշատակության մեջ Վանայ բարբառի* խամող *ձևով (Ձեռ. Վասպ. 237)։*

† **ՀԱՄԵՍՏ**, *իգ.* < *հյ.* համեստ *«պարկեշտ» բառից. նորակերտ անուն. լսել եմ Ղարաբաղում և Երևանում։*

***ՀԱՄԶԱ**, *ար.* < *արաբ.* حمزه ḥamza *անունից, որ բուն նշանակում է «վավաշոտություն, ախորժակ» (տես Կամուս, Թրք. թրգմ. Բ. 418)։ Գործածված է մեր մեջ Թ դարից մինչև*

ԺԱ դար։ Շատ ավելի ուշ է Համզա (Ջեռ. Վասպ. 618), որ թեև անթվական է, բայց 1503 թվից ուշ է։

— 1. Համզա, որդի Գագիկի և հայր Աշոտ (№ 30) իշխանի Վասպուրական, որ կռվեց Բուղայի դեմ «852 թ». բայց բռնվեց և Բաղդադ գերի տարվեց։ Համզա ձևը հիշում են Բելաձորի և Իբն-Մասկավա՝ առաջինը Աշոտ-իբն-Համզա-իբն-Գագիկ և երկրորդը՝ Աշոտ-իբն-Համզա ձևով (տես Խալաթ. Արաբ. մատ. 65, 78, 98, 123). այլուստ ծանոթ չէ։

— 2. Համզայ, հայր Գագիկ (№ 12) Ապումրուան Արծրունու, ըստ Սուտ-Շապհ. 64 (սեռ. Համզէի ձևով). այլուր կոչվում է Վահան, որ տես (Թ դար)։

— 3. Համզէ, փաղամեռիկ որդի Գրիգոր Համզայ Պահլավունու († 982).—Ալիշան, Շնորհ. 12 (տախտակը), Շիրակ, 53, 148, տես և Գրիգոր № 137։

— 4. Համզէ (իմա Գրիգոր Համզէ), որի որդին՝ իշխանաց իշխան Վահրամը ներել է Մաստարայի հարկերը, 1015 թ։—Արձ. Այրարատ 136։

— 5. Համզա, որի անունով է Հաղբատի մեծ տաճարի ժամատան գերեզմաններից մեկը, առանց թվականի.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 22—23։

— 6. Համզա, կանգնեցրել է երկու խաչքար, մեկը իր որդի Պապի, երկրորդը իր որդի Էվատի անունով, Փիփ գեղի մոտ, Սվրեցիք գեղատեղի գերեզմանոցում, 1473 թ.—Արցախ 299։

ՀԱՄԷԼ, ար. ծագումն ինձ անհայտ։ Այս անունով գիտենք միայն՝

— 1. Համէլ, հայր Մխիթար ռաիսի և պապ Կողբեցի Հասանի, որ նվիրներ է արել Բագնայրի եկեղեցուն։—Տես հաջորդը։

— 2. Համէլ, որդի Մխիթար ռաիսի, Կողբեցի, եղբայր նախորդ Հասանի, քույրն է Կատա. թոռն է նախորդ Համէլի։ Բոլորի էլ թվականը անհայտ է։—Արձ. Շիրակ 122։

*ՀԱՄԻԴՈՒԼԱ, ար. <արաբ. عمود الدوله ʿamūd-ud-dovla պարսկական տիտղոսից, որ նշանակում է «սիւն պետութեան»։

— Համիդուլա, տեր Մանասայ Գոմուց. քեն ունենալով Իւանէ աթաբեգի դեմ, դավաճանեց Թաթարների պատերազմում և պատճառ եղավ Վրաց պարտության՝ ՈԿԳ=1214 թ.—Մաղաք. աբ. 5.—սեռ. Համիդօլայ՝ Մաղաք. աբ. 6։ Նույն անձը վրաց մոտ կոչվում է Համադավլա:

*ՀԱՄԻՆ, իգ. < պրս. همین hamīn «հենց նույնը» (մորը, քրոջը և մի ուրիշ իգական արենակցի նմանությամբ)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1654 թ. (Ձեռ. Ազուլ.=Արրտ. 1911, 385)։

ՀԱՄԼԻԿ, ար. ծագումն անորոշ է. կարող է լինել Համել անվան գգվականը, բայց նաև Ամլիկ անվան հետ նույն (տես անդ)։ [Ս. Երեմեան համարում է Համազասպ անվան գգվականը]։

— 1. Համլիկ Դսեղեցի, որ իբրև վկա հիշատակված է Դսեղի Բարձրաքաշ վանքի մի արձանագրության մեջ, 1246 թ.—Յարութիւնեան, Ներս. դպր. սաների Ս. Ճնպրհ. էջ 71 (սեռ. Համլկայ ձևով)։

— 2. Համլիկ Մամիկոնեան, կինն է Մամքան. նվերներ է արել ըստ Դսեղի մի արձանագրության և պատարագ նշանակել Ներճիսին, որ Զաքարէի և Իվանէի չորրորդ քույրն է համարվում.—Խաղբակեանք 16։

Համոշ տես Խամուշ։

ՀԱՄՈՒՆԻ, ար? ծագումն ինձ անհայտ. իբրև կոչական անուն հիշում է Մագ. քեր. 246 Ո՛ Համունի:

*ՀԱՄՏՈՒՆ, ար. <արաբ. حمدون ḥamdūn անունից, որ ծագում է حمد ḥamd «գոհություն» բառից (տես Կամուս, Թրք. Թրգմ. Ա. 600)։ Այս անունով հայտնի է Համտուն ամիրան, որ Խալիֆայի դեմ ապստամբելով՝ Միջագետքն ու Ատրպատականը ապատակեց և ապա Հայաստան արշավեց։ Աշոտ Գ Ողորմած նրա դեմ ելավ, հաղթեց ու սպանեց «959 թ»։

— 1. Համտուն Ա., իշխան Բաղաց, սրա որդին է Հասան և թոռն է հաջորդը.—սեռ. Համտունայ՝ Օրբ. կ, Սիսական 17, 274 (դնում է 1170 թ)։

— 2. Համտուն Բ. որդի Հասանի, թոռն նախորդ Համտունի, իշխան Բաղաց. Բաղաբերդի առումից հետո փախավ Վայոց ձոր և մտավ Նորավանք, ուր և մեռավ 1231 թ.—Օրբ. կ, կգ. Սիսական 17, 184, 274 ա (թվականը ուղղում է 1157)։

†ՀԱՅԱՍՏԱՆ, իգ. մեր երկրի անունից շինված նորակերտ անուն, որ բնականաբար արգելված է Տաճկաստանում։

*ՀԱՅԲԱԹ, ար. < արաբ. هيبت haybat «պատկառանք, ահ ու երկյուղ» բառից։ Մի անգամ հիշատակված է Հայպաք ձևով 1654 թ. (Bodleian 117)։ Տես և Հայպատ:

ՀԱՅԴԻԿ, ար. ծագումն անհայտ. ունինք մի անգամ՝

— Հայդիկ, անծանոթ ոմն, որ հիշված է Վահան Մամիկոն-

*եանի օրով, նրա Վարդ եղբոր և Ղազար Փարպեցու հետ.—Փարպ. Թղթ. 197։*

† *ՀԱՅԽԱԹՈՒՆ, իգ.* < հայ+խաթուն *բառերից, ինչպես կա նաև* Արմանի խաթուն, *որ տես։ Հնագույն հիշատակությունը ԺԴ դարի սկզբից է, որ նշանակում է թե ԺԳ դարում կար։ Շարունակվում է ԺԵ, ԺԶ, ԺԷ դարերում. վերջին հիշատակությունը 1690 թվին է (Ձեռ. Վասպ. 975)։ Ըստ այսմ* Արմանի խաթուն *ձևը, որի առաջին հիշատակությունը 1436 թվից է, թարգմանված է հայերենից և ոչ թե հակառակը։ Հայերեն բառն էլ աղավաղված է Խայխաթուն. Խախաթուն, Խալխաթուն և Հալխաթուն ձևերով։*

— 1. Խախաթուն, *կին Ամիրխանի և մայր Վան քաղաքի ռէս Կարապետի, որ ազատեց գերի ընկած մի Աւետարան, 1308 թ?—Ձեռ. Վասպ. 152։*

— 2. Խալխաթուն, *կին Վարդան քահանայի, մերձավոր Բարսեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գյուղում օրինակեց Աւետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Վասպ. 191։*

— 3. Խախաթուն, *մերձավոր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց Աւետարանը՝ 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։*

— 4. Հայխաթուն, *եղբոր դուստր Մկրտիչ կրոնավորի, որ Բաղէշում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Ցայսմաւուրք՝ 1446 թ.—Նոտարք 151։*

— 5. Հայխաթուն, *դուստր տանուտեր Կարապետ Մանկարոնի (№ 204), փեսայի Փաշա տիկնոջ, որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։*

— 6. Խախաթուն, *մերձավոր Սուլթան-մելիք տիկնոջ, որ Աղթամարում, Գրիգոր քահանային գրել տվից մի Աւետարան և նվիրեց Ոստանի եկեղեցուն, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 415։*

— 7. Հայխաթուն, *դուստր Խաչատուրի, որ Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան. 1453 թ.—Ձեռ. Վասպ. 419։*

— 8. Խայխաթուն *(կամ Խախաթուն), դուստր Զուլալ տիկնոջ, որ իր հանգուցյալ ամուսին Արթուխշայի հիշատակին, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459, 460։*

— 9. Խալխաթուն, *կին Սեթի և մայր Գրիգոր աբեղայի, որ Աղթամարում, Զուլալ տիկնոջ համար գրեց մի Աւետարան, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 460։*

— 10. Խախաթուն, կին Սաղաղա Ծերենցի, որ Թումայ քահանային, Աղթամար կղզում գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Ջեռ. Վասպ. 482։

— 11. Խախաթուն, հորաքեռորդի նույն Սաղաղա Ծերենցի, 1476 թ.—Ջեռ. Վասպ. 481 (իսկ նախորդ էջում՝ 480 գրված է Խաթուն՝ թե այս և թե նախորդ Խախաթունի փոխարեն)։

ՀԱՅԿ, ար. ծագումն անհայտ. Orion համաստեղության անունն է (> ժղ. Խէքեր. տես և Մոտխեգին «Երևակ» Արմ. բռ.)։ Այս իմաստով գործածված է Յոբ. լԸ. 31=Համամ. քեր. 281, 282 Խելամտութ իցես կարգի բազմաստեղաց և քո բացեալ իցէ զպատրուակ Հայկին.—Ես. ԺԳ. 10 Աստեղք երկնից Հայկիւն հանդերձ և ամենայն զարդուն երկնից՝ լոյս մի տացեն.—Նմանապես Ոսկ. պօղ. Բ. 842 «Առ լուսաւորեալսն ասացելովքն լուացմամբ Մարիամայ» ճառի մեջ, Ոսկ. ես. 146, Վրք. և վկ. Ա. 682, Նաև Վրք. գլոն. 36, 38, Պարականոն շար. 121։—Հայկ «հսկա» իմաստով գործածված է Ոսկեդարում՝ հայկաքար բարդի մեջ՝ Ագաթ. § 767, ավելի ուշ հայկաչափ «հսկայաչափ» Փիլ. լին. 66, հայկից «հսկաների» Փիլ. լին. 66 և հայկասիրտ (տես վարը) բառերի մեջ։ Վերջապես հայկ «հսկայ» իմաստով գործածված է Թէոն. էջ 106 երկու անգամ յգ. ուղ. հայկք, սեռ. հայկից ձևով, նույն բնագրի γίγας, 'γίγαντες «հսկա, գիգանտ» բառի դիմաց.—Բնակեալ էին մարդակերպք, որ կոչէին հայկք, զորս Հերակլէս ասի ըմբռնել... որ ընդ Հերակլեայն էին իբրև զի սակաւ էին, հայկիցն բազմացն (Հերակլի հետ եղողները իբր թե քիչ էին, իսկ հսկաները շատ)»։—Այս հայկ «հսկա» բառի շարունակությունն է հէք «հսկայ՝ վիթխարի մարդ», որ զարմանալի կերպով պահված է Այնթապի բարբառում (տես իմ Գւռ. բռ. էջ 658)։—Հայկ աստուծու մասին էլ տես Մատիկեան, Կրօնի ծագումը, էջ 317—327։

— 1. Հայկ, որդի Թորգոմի, Նոյ նահապետի թոռան թոռան որդին. ծնվել է Ասորեստանում. չճանաչելով Բէլի աստվածությունը, ապստամբեց նրա դեմ, գաղթեց իրեններով դեպի հյուսիս, հաստատվեց Վանայ ծովի արևմտյան կողմը, և հիմնադիր եղավ հայ ազգի և պետության։ Բէլը իր բանակով արշավեց նրա վրա, բայց պատերազմում հաղթվեց և սպանվեց Հայկի ձեռքով։ Մեռել է Ն. Ք. 2026 թ. ըստ Ջամչ։ Հայկի անունով կոչվել է մեր ժողովուրդը՝ հայ և մեր երկիրը՝ Հայաստան։—Հայկ կամ Հայկն՝ Խոր. Ա. ե, է, թ—ժբ, լա. Սեբ. ա. Շիր. տիեզ. 76.

Ցհ. կթղ. ա. Ուխտ. Ա. է, ժդ—ժզ. Շնորհ. վիպ. 107. Կղկնտ. Ա. բ (պետք է ուղղել Հայք, ինչպես ունի տպ. Շահն.), ժե. Օրբ. կե. Վրդ. գ. է, ժե. Պտմ. վր. ա. Գր տղ. եէմ. 301. Միխ. աս. ա. Մագ. թղ. հգ. Լմբ. մատ. 413. Լմբ. 128. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 10, 27, 41, 42. Մխ. այրիվ. 17, 22, 43. Տաթև. հարց. 297. Տաթև. ձմ. ա. Առաք. նար. 474. Մին. համդ. 2, 3, 13. Սիմ. ապար. 17, 20. Հաւաք. 5. Նհպտք. 88.--կոչված է նաև ըստ Վրաց պատմության՝ Հայօս՝ Վրդ. ծ. իսկ Վրաց. աղբ. Ա 74՝ Հայկ, էջ 144—147 Հաոս, Բ. էջ 14 Հաոս.—սեռ. Հայկայ՝ Խոր. Ա. ե, ժ—ժգ, իբ. Բ. գ, ե, ը. Սեբ. 1, 4, 5. Ցհ. կթղ. ա—դ. Ուխտ. Ա. գ, ժդ—ժզ, ժթ. Ասող. Ա. ե. Ցս. որդի յիշ. Արծր. Ա. բ. Դ. է. Մխ. անեց. գ, զ. Մխ. այրիվ. 18, 44, 58. Կիր. ը. Վրդ. գ—ը, ժգ. Շնորհ. ընդհ. 3. Վրք. շնորհ. 18, 40, 66. Միխ. աս. ա, ե. Մագ. թղ. ձգ. Օրբ. ծդ, կե, կը. Օրբ. ողբ 25. Վրդն. ծան. գ, էջ 250. Օրբ. հկճռ. ժբ. Երզն. լս. 144. Վրդն. լս. 43, 56. Վահր. ոտ. տպ. 1832, էջ 137, (իսկ տպ. Շահն. 219 թերի է). Սամ. անեց. 42, 47, 49. Մին. համդ. 3, 13. Մեսր. տաթև. 720. Նոր վկ. 274, 518. Առաք. պտմ. 168. Հաւաք. 6. Ջուղ. 16, 18.—Հայկին՝ Խոր. ժա, ժբ. Սեբ. 3, 5. Շիր. տիեզ. 77. Ուխտ. Ա. ժե. Լմբ. 127. Պատմ. ձր. ա. Շնորհ. վիպ. 121. Վանակ. տարեմ. 160 ա. Տաթև. ձմ. ա. հրց. 200.—ըստ «Այս են քաղաքք և շինողք նոցին» ZAPh 1, 190 Հայկը շինել է Արքիսոն քաղաքը.—ածանց և բարդ ձևեր՝ Հայկասիրտ Արծր. Գ. բ.—Հայկածին՝ Ցհնսկ. 186.—Հայկացի՝ Վրդ. ժդ. (հրտր. Էմինի՝ Հայկակայ).—Հայկազարմ՝ Վրդ. ղթ.—Հայկանման՝ Նար. Ո՞վ է դա (Աստուածածնի գեղեցկությունը որակելու համար)՝ Ալիշան, Հին հաւատք 240, Հյստն. յառաջ քան 154.—Հայկեան՝ Խոր. Ա. ժգ. Սասն. 16. Օրբ. բ. Մագ. թղ. գ, չկար ժթ, խ, հ, հա. Հայապ. 228.—Հայկական՝ Խոր. Գ. ծբ. Ցհ. կթղ. յոջ, ժզ, ի, լդ. Մխ. անեց. ժ. Շնորհ. չփ. էջ 310, 313. Կիր. ժդ. Վրդ. ծթ. Շնորհ. ընդհ. 1. Անան. խոստ. 5. Երզն. երկն. ոտ. էջ 31, 41. Խոր. պտմ. ածած. 281. Դաւ. քեր. 114. Անան. քեր. 149. Շնորհ. սահմ. 289. Սամ. անեց. 43. Օրբ. ծդ. Օրբ. ողբ. 53. Արծր. Ա. ա. Գ. ի. Կիր. խ. Միխ. աս. իը (=իե), իթ (=իը). Ոսկ. գծ. 457. Այրիվ. 7 բ. Մին. համդ. 7. Առաք. պտմ. 31, 253. Ջուղ. 6, 14.—Հայկազն, Հայկազեան, Հայկազունք, Հայկազեանք՝ Խոր. Ա. ի, իե—իէ, իթ, լա. Բ. կդ, կե, հը. Գ. իը. Ցհ. կթղ. խ, խգ. Ուխտ. Ա. իգ. Ուռհ. 87. Մեծոփ. յիշ. գ. Մեծոփ. 85. Մխ. անեց. բ, գ. Կրպտ. սարգ.

յոչ. Տաթև. հարց. 558. Խոր. ճառ հոփ. էջ 311. Սիմ. ապար. 21. Անսիզք 93. Ջուղ. 9.—Հայկազն՝ Մխ. անեց. ա. Ասող. Ա. ե. Գ. խգ. Շնորհ. չփ. էջ 361, 476. Վիպաս. Գր. տղ. եէմ. 298, 300, 303. Օրբ. լը, ծզ. Արծր. Ա. գ, ե, է. Գ. իթ. Կիր. 57. Վրդ. ժէ, ձգ. Ուռհ. 67, 84. Շնորհ. թղ. 207. Միխ. աս. ժը, ի, իա. Մագ. թղ. հ. Վրդն. աշխ. 517. Սամ. անեց. 9, 45, 48. Ոսկ. գծ. 457. Առաք. լծ. սահմ. 169. Սիմ. ապար. 20, 27, 78, 159.—Հայկազուն՝ Յհ. կթղ. իր, խէ. Կղկնտ. Գ. իբ. Օրբ. լե, լէ, խ.—Հայկազանն (իբրև ուղ.)՝ Լծ. պրպմ. 775. Ջուղ. 4.—Հայկազունք, Հայկազանց են՝ Մխ. անեց. գ, է. Արծր. Դ. ժբ. Վրդ. իե, ձգ. Ուռհ. 10. Միխ. աս. ե, ժթ, իա, իը (=իէ). Ադամ. 325. Ոսկ. յհ. բ. յիշ. Վրդն. սղ. ճա. Մկ. մեծոփ. 29. Վահր. ոտ. 190, 191. Օրբ. ողբ 37. Սամ. անեց. 46, 47. Պտմ. ռուբ. 216. Պտմ. լմբ. 238, 240, 241.—Հայկազինք՝ Կղկնտ. Գ. իդ.—Հայկազեանն՝ Մեծոփ. յիշ. ա—գ. Մեծոփ. 32. Ասող. Գ. խը. Սասն. 16. Օրբ. կզ. Ցայսմ. ապր. 27. մայ. 11. Մեծոփ. 9, 77, 121. Տաթև. ամ. 418—9, 504, 711, 713, 715. Առաք. տաթև. 717. Տաթև. հարց. 772, 789. Ջուղ. 1, 56, 72, 121, 125—6. Առաք. պտմ. 242, 323. Սիսուան 144.—Հայկազեանն՝ Տաթև. ձմ. ղէ.—Հայկազնեայ՝ Անան. ապստ. 132 ա. Շար. ղբ. Արծր. Ա. ե, զ. Գ. իգ. ժմ. 919. Վրդն. լս. 57. Սիմ. ապար. 18 (սեռ. Հայկազնէի), 98 (սեռ. Հայկազնէից). Վահր. ոտ. 206.—Հայկազնեայց՝ Գիրք թղ. դ. Կղկնտ. Բ. ժէ. Գ. իգ. Արծր. Ա. գ. Մխ. դտ. նխդր. ժա. Պտրգ. 636.—Հայկազնեաց՝ Մխ. անեց. գ. Արծր. Ա. ա, գ. Վրդն. լս. 61.—Հայկազունեաց՝ Ուռհ. 33. Ջուղ. 245, 267.—Հայկազնի՝ Օրբ. ժգ, խբ. Կիր. 5. Վրդ. ծթ. Միխ. աս. ժը. Սամ. անեց. 31. Տաթև. ամ. 712.—Հայկազանի (սեռ.)՝ Ողբ եդես. 83.—Հայկազնիք՝ Մեսր. եր. 32.—Հայկարան տուն (Հայաստան) Վրդն. լս. 45.—Հայկի պատմությունը մանրամասն տալիս է Ալիշան՝ Հյստն յառաջ քան, էջ 125—154, ուր և Բէլի սպանման թվականը ըստ Ափրիկանոսի և Եւսեբիոսի դնելով Ն. Ք. 2492 թ, այս կետն էլ ընդունում է նաև Հայոց բուն թվականի սկիզբը (էջ 147).—Հայկի առասպելի մասին տես Տեղեկ. Արմֆանի 1941, № 8, էջ 29—36, Աբեղյան՝ Հայ ժող. առասպ. էջ 176—258։

— 2. Հայկ կամ (Հայկակ) Հայկազնի, նախարար. Ներկա էր Մեծն Ներսէսի օրհասին «373 թ».—Մեսր. եր. 88։

— 3. Հայկ անունն էր կրում նաև Գրիգոր Մագիստրոսի († 1059 թ) վաղամեռիկ որդին. հմմտ. Չի թեպէտև մանուկն իմ

յառաջադէմ և բարգաւաճեալ ծաղկէր յիւրն համանուն նմանակի հայկեանն շառաւիղ... Մագ. Թղ. գ։

—4. Մելիք-Հայկ! Ջրաբերդի մելիքն էր Շահաբաս Ա-ի ժամանակ (ԺԷ դար).—Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 51։

† ՀԱՅԿԱԶՆ, ար. < Հայկ+ազն «ցեղ, սերունդ» բառից. առաջ լոկ ածական էր. ապա դարձավ անձնանուն։ Հնագույն հիշատակությունն է՝

— 1. Հայկազ պարոն, որդի Միրիշիկի և եղբորորդի Զուժայ Բ-ի, Պռոշեանց ցեղից։ Կոտայքի Ստեփանոս եպիսկոպոսի եղբայրն է։ Հիշված են 1475 թ։ Ձերբակալվեց Թուրքերի ձեռքով և 7 ամիս բանտարկված մնաց։ Ստիպում էին Թուրքանալ։ Բայց նա հավատը չուրացավ և մեծ փրկանքով հազիվ ազատվեց՝ 1486 թ։—Խաղբակեանք 232, 236, 239։

—Ավելի ուշ եղած վկայություններն են՝ պարոն Հայկազ աղէն (շուրջ 1603 թ. Ձեռ. Վասպ. 524), նույն ժամանակից է Հայկազն իշխան՝ որդի Հախնազարի, ժամանակակից Շահաբասի (Սիսական 248), 1605 թ. (Առաք. պատմ. 9, 166), 1615 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 47 ա Հեզազ ձևով), 1653 թ. (Ձեռ. Վիեննա. Բ. 1037 և Ձեռ. Թաւր. 44 բ, 45 ա), 1702 թ. (Ձեռ. Թաւր. 109 բ՝ Հեկազ ձևով), անհայտ թվականով, բայց 1428-ից ուշ՝ Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 568 (տպված է Հեկազաղես, իմա Հայկազ աղաս)։ Այժմ գործածական է Հայկազ ձևով, բայց կա նաև Հայկազուն, որից Մելիք-Հայկազեան ազգանունը (Կովկաս)։

† ՀԱՅԿԱԿ, ար. < Հայկ անունից՝ -ակ փաղաքշական մասնիկով։ Հին ժամանակ սովորական չէր. այժմ ընդհանուր տարածված անուն է։

— 1. Հայկակ Ա. նահապետ Հայկազանց. հաջորդեց Վաշտակին, Ն. Ք. 1381 թ. (ըստ Զամչ.) հաղթեց Ասորեստանցոց Զամինդէս Թագավորին, բայց նրա հաջորդ Բելոքոսի դեմ կռվելով հաղթվեց և ընկավ պատերազմում.—Խոր. Ա. ժթ. Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. ժե. Սամ. անեց. 45. Մխ. այրիվ. 17, 50. Մին. համդ. 9. Վրաց աղբ. Ա. 74.—Հայկեակ՝ Մագ. Թղ. ժթ (որ ըստ հաւուն իւր հակակ, որ է հարթակ հաւասար).—սեռ. Հայկակայ՝ Կղկնտ. Ա. գ (ավելորդ հավելված, որ չունի հրատ. էմինի)։—Ալիշան՝ Հայաստան յառաջ էջ 210—211 մի քիչ ավելի մանրամասն է խոսում Հայկակի ապստամբության մասին։

— 2. Հայկակ Բ. Թագավոր Հայկազն. հաջորդեց Փաւոսի Ն. Ք. 605 թ. (Զամչ. Ա. 101).—Խոր. Ա. իբ. Բ. ը? Յհ. կթղ. գ.

*Ուխտ. Ա. ԻԳ. Մխ. անեց. Գ. Կղկնտ. Ա. ԺԵ. Վրդ. Է. Մագ. Թղ. ԺԹ. Սամ. անեց. 46. Մխ. այրիվ. 18, 55. Մին. համգ. 11.—սեռ.* Հայկակայ *Բ? Ասող. Ա. Ե. Վրդ. ԺԵ. (ըստ Էմինի. իսկ ըստ Կե- նետ.* Հայկացի). *Սամ. անեց. 46.—Վրաց աղբ. Ա. 74 գրում է «միւս Հայկ», որ է Խոր. «մեւս Հայկակ», որ է Հայկակ Բ։*

† *ՀԱՅԿԱՆԴՈՒԽՏ, իգ. <* Հայկ *անունից+*դուխտ *«աղջիկ»* -անն *մասնիկը ավելորդ համելված է, որ առաջացել է* Հայկանոյշ *բառի նմանողութեամբ։ Նորակերտ, բայց տարածված անուն է։*

† *ՀԱՅԿԱՆՈՅՇ, իգ. <* Հայկ *անունից+*անոյշ *բառից, որ «աղջիկ» նշանակութիւնն ունի. Հնից չէ ավանդված։ Կազմված է ԺԹ դարում, բայց շատ տարածված անուն է։*

† *ՀԱՅԿԱՍԵՐ, ար. <* Հայկ *անունից+*սեր*, իբր թե «Հայկի սերունդից, Հայկից սերած»։ Անցյալ դարում կազմված անուն է, որ ավելի տարածված է Արեւմտահայոց մեջ։*

† *ՀԱՅԿՈՒՀԻ, իգ. <* Հայկ *անունից՝* -ուհի *իգականակերտ մասնիկով։ Անցյալ դարում կազմված նորակերտ անուն է, բայց շատ տարածված։ Փաղաքշական ձեւերն են* Հայկուկ, Հայկուշ։

† *ՀԱՅՈՑ, իգ. և ար.* հայ *բառի յգ. սեռականից կազմված, իբր թէ «Հայոց ազգից»։ Գործածական էր ԺԳ դարից սկսած և անցյալ դարում դեռ գործածական էր Պոլսում, իբրև արական անուն։ Սրանից է* Հայոցեան *ազգանունը, որ հիշված է 1888 թ. (Կարապետեան, Ցիշատ. Սամաթ. 171)։*

— 1. Հայոց, *մեծ մայր Շահնշահի, որ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւե- տարանը՝ 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։*

— 2. Հայոց, *կին Դաւթի և մայր Թանկխաթունի, որ գրել տվեց մի Աւետարան՝ Կարապետ կրոնավորին, 1358 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 563)։*

— 3. Հայոց *(գրված է* Հաւոց), *ար. եղբայր Թումայի. եր- կուսն էլ մերձավոր Ցակոբ վարդապետի, որ Աստուածատուր գրչին գրել տվեց մի Ոսկեփորիկ, 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 931։*

— 4. Խաւուց *(Վանեցոց բարբառով), դուստր Մաւգաւի և կին Մկրտչի, հիշված 1452 թ.—Ձեռ. Վասպ. 415։*

— 5. Հայոց, *դուստր Թումայի՝ եղբոր տանուտեր Մանկ- տաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։*

— 6. Հայոց, կին Մկրտիչի՝ եղբոր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— Մյուս հիշատակութիւններն են՝ Հայոց (սեռն անհայտ) 1681 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1879), Հայոց իգ. ԺԷ դար (Ձեռ. Կես. սարգ. 13), Հայոց իգ. թիւը անհայտ, բայց 1311-ից ուշ (Ձեռ. Թաւր. 74 ա), Խաոց՝ սեռն ու թիւը անհայտ (Ձեռ. Վասպ. 166)։

ՀԱՅՊԱՏ, իգ. ծագումն անորոշ (հմմտ. Հայքար)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված Ցիսուս որդու մի տպագիր օրինակում (տես Նորազն). «քվերցս Հայպատին և Վարդուսկին»։

† ՀԱՅՐ, ար. <հյ. հայր բառից. իրապես անուն չէր, այլ տիտղոս, որ կրում էին Արշակունի թագավորների բոլոր մարդպետները (պալատի կանանոցի գլխավորը). հմմտ. Բուզ. Դ. ժդ՝ «այր չար և ժանտաբարոյիւք անօրէն և անիրաւ քան զառաջին Հայր անուն մարդպետոմն».—Բուզ. Ե. զ՝ «Դղակ մարդպետ, որ անուանեալ կոչէր ըստ գործոյն՝ հայր թագաւորին»։ Կոչման համար հմմտ. հյ. թագաւորահայր և Թրք. Աթաբեգ։ Ավելի ուշ, ինչպես Աթաբեգ, նույնպես և հայր դարձավ անձնանուն։

— 1. Հայր իշխան, Հայկ նահապետի ցեղից. Վաղարշակ Ա (Ն. Ք. 149—127 ըստ Զամչ.) կարգեց նրան ներքինապետ և նրան տվեց Ատրպատականից մինչև Ծուաշ և Նախճաւան։—Խոր. Բ. է։

— 2. Հայր մարդպետ, Տիրան Բ թագավորի («339—350 թ») հրամանով գնաց Զօրայ Ռշտունուն բերելու թագավորի մոտ։ Ուղեկից եղավ Շահակ և Ներսէս կաթուղիկոսներին՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ («353 թ»)։ Քսությամբ կոտորել տվեց Ռշտունեաց և Արծրունեաց տոհմերը. վերջապես ինքն էլ սպանվեց Արծրունեաց վերջին մնացորդ Շաւասպի ձեռքով.—Խոր. Գ. ժե. Բուզ. Գ. ժէ, ժը. Դ. դ, ժդ. Մեսր. եր. 25, 42.—սեռ. Հայրի՝ Բուզ. Դ. ժդ։

— 3. Հայր, մարդպետ Արշակ Բ («350—368 թ») թագավորի. Նախատեց Փառանձեմ թագուհուն, որի համար Պապի հրամանով և Մուշեղ Մամիկոնեանի ձեռքով սպանվեց.—Բուզ. Դ. ծե. Ե. գ. Մեսր. եր. 53, 86, 88։

— 4. Հայր, մարդպետ Պապ «368—374 թ» թագավորի.—Բուզ. Ե. իդ, լգ։

— 5. Հայր, վանահայր Կճաւի. սրան է գրել Գրիգոր Նարեկացին («977—1003 թ») իր Թուղթն ընդդէմ Թոնդրակեցոց.— Գիրք Թղ. ղր.

— 6. Տեր Հայր, որ Տէր Սարգսի հետ վկայում է կալվածների նվիրման մի անթվական արձանագրության Հալիձորում.— Ազգագր. հանդ. Դ. էջ 41։

† ՀԱՅՐԱՁԱՅՆ, ար. <հյ. հայր+ձայն բառերից, իբր թե «նա որի ձայնը նման է հորը ձայնին». մի անգամ հիշատակված է ԺԳ դարում (բայց ընթերցումը կասկածելի)։

— Հայրաձայն, որդի Հայրուտի և Խաթունի, որոնց հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Նոր-Բայազետի Գյոլ գյուղում 1284 թ.—Շահխաթ. Բ. 248, Սիսական 54, Գեղարքունի 518։

† ՀԱՅՐԱՆ, ար. կարող է ունենալ երկու ծագում. 1) արաբ. حيران ḥayrān «հիացած, զարմացած» բառից. 2) Հայրանուն բառից կրճատված։ Գրված է նաև Հերան և Խերան։ Վերը (հտ. Բ, էջ 509) խոսելով այս Խերան անվան մասին, ծագումը դնում եմ արաբ. ḥayrān «հիացած» բառից։ Բայց այժմ գտնում եմ, որ ճիշտ չէ այս բացատրությունը։ Օտար բառերի h ձայնը ամեն անգամ խ չի տալիս և հատկապես արաբ. ḥayrān բառը Վանայ բարբառում լինում է հեյրան և չի դառնում խերան (տես իմ Թրք. փոխառեալ բառեր, էջ 208)։ Մնում է ուրեմն դնել Հայրանուն բառից, որ տես։—Հայրան անունը հիշված է 1666 թ. (Ձեռ. Վասպ. 928՝ Մայրան անվան հետ երկիցս), Հերան 1710 թ. (Ձեռ. Վասպ. 1032), Յայրան 1744 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 249)։

† ՀԱՅՐԱՆՈՒՆ, ար. <հյ. հայր+անուն բառերից. ծնողները կարող են իրենց որդին կոչել իր հոր անունով, բայց նաև այս ձևով, որ միևնույնն է գալիս։ Հմմտ. նաև Մայրանուն։ Կրճատ ձևն է Հերան, Հայրան, Խերան, որ տես։ Մի անգամ հիշատակված է ԺԳ դարում։

— 1. Հայրանուն, հիշված է Տաշքենդ գյուղի (Նոր-Բայազետ) Ս. Աստուածածին եկեղեցու արձանագրության մեջ՝ ԺԳ դար։ Այս Հայրանունի որդիքը շինել են նույն եկեղեցին։ Արձանագրությունը տես Սիսական 72 և Սմբատեանց՝ Գեղարքունի 629։ Առաջինը կարդում է սեռ. Հայրանունայ ?, իսկ երկրորդը՝ «հայր Անանիայ», որ իմաստ չունի։

† ՀԱՅՐԱՆՏՈՆ, ար. <հյ. հայր+Անտոն անունից, որ մեր

*մեջ հարգված ճգնավոր է (տես Ա հտ. էջ 174)։ Այսպեսով* Հայրանտոն *բարդ բառ է։ Մի անգամ գտնում եմ գործածված 1589 թ. (Ջեռ. Հալէպի, Ա. 167 բ երկիցս)։*

† **ՀԱՅՐԱՆՑ**, *իգ. <հյ.* հայր *բառից, իբր «հէրանց, հէրանց տնից»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝*

— 1. Հայրանց, *տիկին, կին Հազարշահի, նվիրատու Ս. Թորոս վանից (նախ քան 1420 թ). — Տաշեան, Ցուց. 666 ա։*

† **ՀԱՅՐԱՊԵՏ**, *ար. <հյ.* հայրապետ *«կաթողիկոս կամ վանահայր» բառից. թերևս թարգմանաբար ասոր.* ܪܒܘܠܐ rabōlā «summus pastorum *հովվապետ» բառից (*Brockelmann, Lex. syr. *345), որ նույնպես անձնանուն է։ Գործածական է մեր մեջ սկսած Ժ դարից մինչև այժմ։ Կրճատ ձևերն են Հայրիկ, Հայրի, Հայրո,* Հօքի *(Ղրբ), Խոպօ, Հարպիտ (վերջինս տես Տաշեան, Ցուց. 871),* Հէրօ *(տես Ջեռ. Վասպ. 52, ուր քիչ հետո նույն անձը կոչվում է Հայրապետ), Ցերո (1756 թ. Ջեռ. Վասպ. 313), Խերու 1674 թ. (անդ 990)։ Սրանից են Հայրապետեան, Հայրիեան ազգանունները։*

— 1. Հայրապետ *ոմն, որի տապանաքարը գտնվում է Երնջակի Ս. Կարապետ վանքի գերեզմանատնում՝ 951 թվից. — Սրմբատեանց, Երնջակ 331։*

— 2. Հայրապետ, *անորոշաբար հիշատակված է Կարմիր վանքի մի արձանագրության մեջ 1165 թ. հետևյալ ձևով (ըստ Բասմաջեան, Ոստան 1911, էջ 235).*

*† Ի ԹՈՒ ՈԺԴ ՆՈՐՈԳ(ԵՑԱՒ)*
*ՀԱՅՐԱՊԵՏ*

— 3. Հայրապետ *քահանա, ծաղկեց այն Աւետարանը, որ օրինակեց Սարգիս սարկավագը՝ Կոստանդին քահանայի համար, 1200 թ. — Շողակաթ 198։*

— 4. Հայրապետ, *առաջնորդ Պետրոսի վանաց, ուր շինեց Ս. Աստուածածին եկեղեցին ի հիշատակ իր և իր եղբոր Շմաւոնի, 1201 թ. — Արձ. Արցախ 362 (գտնվում է Փողոս-քիլիսայի Ջուխտակ վանքի դռան ճակատին)։*

— 5. Հայրապետ, *որդի Վարդանի. ի հիշատակ իր գերդաստանի մի հսկայական խաչքար է կառուցել Մանազկերտի Նորատի գեղի Ս. Յովհան Օձնեցի մատուռում, 1204 թ. — Թորոս աղբ. Բ. 279։*

— 6. Հայրապետ *Մշեցի, եղբայր Դալարի, նվիրատու ձեռագրի, 1204 թ. — Հայապ. 450։*

— 7. Հայր(ապետ), *միաբան Աստուածընկալ վանքի, 1207 թվին.—Այրարատ 255։*

— 8. Հայրապետ *քահանա. ձեռձավոր Սիոն գրչի, որ 1210 թվին օրինակեց Յովհ. Մանդակունու ճառերը.—Դուրեան, Ուսումն. 280, 284։*

— 9. Հայրապետ *քահանա, գրիչ. օրինակեց Աւետարանը Ս. Աստվածածնի վանքում, 1211 թ.—Ձեռ. Կարին. 23, Տաթև 1927, 183։*

— 10. Հայրապետ *քահանայ, օրինակեց Աւետարանը՝ հայր Յովհաննէսի և Բարսեղ վանականի համար, Սեբաստիա 1211 թ.—Շողակաթ 198։*

— 11. Հայրապետ *քահանա, նկարազարդեց մի ձեռագիր (էջմ. № 364/987), օժանդակությամբ պարոն Յովանէս Ուքանի և Պապքանի, Սեբաստիա 1211 թ.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 12։*

— 12. Հայրապետ, *կուսակրոն քահանա կամ վարդապետ, միաբան Հաւուցթառի. իր եղբայր Թադէոս վարդապետի հետ միասին Իգնատիոս գրչին գրել տվին մի գեղեցիկ Աւետարան, որ նվիրեցին նույն վանքին, 1214 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 592—3, Այրարատ 356։*

— 13. Հայրապետ, *հիշված է Անդրէաս և Գէորգ քահանաների հետ, որոնք ազատեցին Մլքէ թագուհու Աւետարանը և նվիրեցին Վարագայ վանքին, 1218 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 389։*

— 14. Հայրապետ *վարդապետ, առաջնորդ այն միաբանութեան, որ գտնվում էր Ինաքլու գյուղում, 1221 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 3։*

— 15. Հայրապետ *երեց Սեբաստացի, հիւրընկալեց Նորաւգէս գրչին՝ մինչև գրեց Աւետարանը 1222 թ.—Տաշեան, Ցուց. 558։*

— 16. Հայրապետ, *իր երեք եղբայրներով միասին մի խաչ են կանգնեցրել իրենց մոր հիշատակին Խաչենի Խանձք գյուղում, 1230 թ.—Արցախ 159։*

— 17. Տէր Հայրապետ, *նորոգել է Տաթևի Առաքելոց եկեղեցու ընկուզենի դուռը, 1253 թ.—Արձ. Սիսական 236, Ազգագր. հանդ. Գ. 142։*

— 18. Հայրապետ, *հայր Սոստանէսի և Բարսեղի, որոնք մի խաչ են կանգնեցրել նրա հիշատակին, Խաչենի Խանձք գյուղում, 1253 թ.—Արցախ 159։*

— 19. Հայրապետ, միաբան Կիլիկիոյ Ակների վանից 1261 թ.—Հրտր. Ազատ. 1909 թ. յուլ. էջ լբ։

— 20. Հայրապետ աբեղա, կրկին շինեց Արատէսի Ս. Սիոն վանքը, նորոգեց եկեղեցին, կալվածներ գնեց և նվիրեց նրան 1270 թ.—Արձ. Սիսական 142, Արրտ. 1888, էջ 767։

— 21. Հայրապետ, հայր Գրիգորի և Լորիկի, որոնք մի խաչքար են կանգնեցրել իրենց ծնողների հիշատակին, Լոր գյուղում 1271 թ.—Ազգագր. հանդ. Գ. 162։

— 22. Հայրապետ, որդի Խորէնի, իր եղբոր (անունն է Փա...) հետ միասին մի խաչքար են կանգնեցրել իրենց ծնողների հիշատակին, Փառիսոս 1271 թ.—Արցախ 307։

— 23. Հայրապետ, նվիրատու Նեղուցի Ս. Աստուածածին վանքի (Բջնիի Արզաքան գ.), 1271 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 177, Սմբատեանց՝ Գեղարքունի 313, Այրարատ 258։

— 24. Հայրապետ, կուսակրոն քահանա, եղբայր Հայրուտի և հորեղբայր Աբրահամ քահանայի, որ նրանց հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Նոր-Բայազիտի Գյոլ գյուղում, 1284 թ.—Շահխաթ. Բ. 248, Սիսական 54, Գեղարքունի 518։

— 25. Հայրապետ, շինել է մի եկեղեցի՝ Վաչագան Աղուանից Թագավորի գերեզմանի վրա՝ 1286 թ.—Բարխուտարեանց, Արցախ 235—6, Պատմ. Աղուանից, Ա. 86։

— 26. Հայրապետ րաբունի, միաբան Արատէսի վանքի. ուսուցիչ. կոչված է «նորոգիչ եկեղեցւոյ և սիրող սրբութեանց»․ Նորոգել է նույն վանքը և հասցրել աշակերտներ, որոնցից մէկն է Վարդան վարդապետը, որ գրել է տվել մի Աւետարան 1284 թ. Հայրապետ րաբունապետը մեռել է 1290 թ. և թաղվել նույն վանքում, ուր Թուղ է տապանը (այժմ Եղեգեաց ձորի Ալյասս գյուղում).—Խաղբակեանք 138, Սիսական 142, Արրտ. 1888, 772։

— 27. Հայրապետ եպիսկոպոս Սիւնեաց՝ 1252—1292 թ. էր եղբորորդի և հաջորդ Յովհաննէս Ը եպիսկոպոսի Սիւնեաց. Նստավ Սողոմոն Գ-ի հետ. նորոգեց Տաթևը. ուխտի գնաց Երուսաղէմ և հանդիպելով Լևոն Գ թագավորին՝ ստացավ նվերներ Տաթևի վանքի համար։ 1274 թվին նորոգել է տվել Վարարակի քանդված առուն, որի մասին հիշատակում է նորից իր հոգևոր որդի Տէր Յովհաննէսը՝ 1292 թ.—Օրբ. կբ, կե, կզ, հա. Manus. brit. mus. 294 բ.—սեռ. Հայրապետի՝ Օրբ. կբ, կե, կզ, հ.—Հայրապետայ՝ Օրբ. կզ. Ձեռ. Վասպ. 103.—Արձ. Ազգագր. հանդ. Գ. 129. Նիւթեր հին Հյստ. պատմ. 120։

— 28. Հայրապետ, հայր Հադխայի, որ Երզնկայի Ս. Կիրակոս վանքին նվիրեց մի Ավետարան, 1298 թ.—Թորոս աղբ. Բ. 298:

— 29. Հայրապետ քահանա, եղբայր Թումայ քահանայի (№ 42). երկուսով միասին Զաքարիա գրչին գրել են տվել մի Ավետարան, 1304 թ.—Ձեռ. Վասպ. 142—3։

— 30. Հայրապետ եպիսկոպոս Ռորանի, անդամ Սսոյ ժողովի, 1307 թ.—Ազգապ. 1785։

— 31. Հայրապետ եպիսկոպոս Զմչկածագի, անդամ Սսոյ ժողովի, 1307 թ.—Ազգապ. 1786, Չամչ. Գ. 309։

— 32. Հայրապետ, վանահայր Թանատի վանից 1307 թ.—Սիսական 121. 124։

— 33. Հայրապետ, գրել տվեց մի Ավետարան՝ Ղազար կրոնավոր գրչին՝ Ասպինկայ անապատում, 1308 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 46 բ, Արցախ 143։

— 34. Հայրապետ գրիչ, շարունակեց և ավարտեց մի Ավետարան, որ Յովհաննէս քահանան սկսել էր գրել Կիլիկիոյ Փոսի վանքում, 1309 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 94 ա։ Հմմտ. № 38 և 44։

— 35. Հայրապետ կրոնավոր. գրիչ. Արճէշի Ուռընկար վանքում՝ Յովհաննէս վարդապետի խնդրանոք գրեց Սամուէլ Անեցու Պատմութիւնը, 1315 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 94 բ։

— 36. Հայրապետ քահանա, գրել տվեց Յովսիան գրչին մի Ավետարան, Հաղարակն գյուղում, 1316 թ.—Ձեռ. Վասպ. էջ 166։

— 37. Հայրապետ վարդապետ, առաջնորդ Թիւրքթի վանքի. հաջորդեց Գրիգորին. անդամ Ադանայի ժողովի «1317 թ». — Ազգապ. 1819, Սիսուան 156, 258։

— 38. Հայրապետ, փակակալ Փոսի վանից, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 518)։ Հմմտ. № 34։

— 39. Հայրապետ, մառանապետ Ակներ վանից. ձեռնտու եղավ Վարդան վարդապետին՝ գրելու մի Ավետարան, 1323 թ.—Տաշեան, Ցուց. 790։

— 40. Հայրապետ եպիսկոպոս, վանահայր և առաջնորդ Մաշկևոր վանքի, 1325 թ.—Բրս. մրկ. 460. Ձեռ. Միւնխ. 29 բ. Շողակաթ 211, Սիսուան 408 բ։

— 41. Հայրապետ քահանա, վանահայր Դրազարկի վանից, 1325 թ.—Սիսուան 234 բ։

— 42. Հայրապետ քահանա, Կարապետ քահանայի հետ

միասին խնդրեցին Աստուածատուր երեցից՝ օրինակել Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460)։

— 43. Հայրապետ, որդի Յովհաննէսի և եղբայր Աստուածատուր երեցի, որ օրինակեց Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460)։

— 44. Հայրապետ, որդի Յովհաննէս քահանայի. գրիչ. Կիլիկիոյ Փոսի վանքում օրինակեց Սանդուղք աստուածային ելից և Յովհան աստուածաբան (վերջինիս մասին տես Աստղ ճգնաւոր), 1329 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 86 բ։ Հմմտ. № 34 և 38։

— 45. Հայրապետ վարդապետ Եօթնաղբիւրցի, ունիթոռական, միաբան Քռնի վանուց, 1330 թ.—Ձեռ. Ներս. 32 բ. Ազգապ. 1845։

— 46. Հայրապետ Խանակահցի, ազգական Ներսէս վարդապետ Սամնեցու, նվիրատու ձեռագրի 1332 թ.—Հայապ. 546։

— 47. Հայրապետ քահանա, հայր Գրիգորիս գրչի, որ Մարմանց գյուղում օրինակեց մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 25 բ։

— 48. Հայրապետ, կուսակրոն աբեղա, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, Արծկէի Ս. Աստուածածնի վանքում, 1338 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 72—74։

— 49. Հայրապետ, վանահայր Ռամանոսի վանից, անդամ Սսի եկեղեցական ժողովի, 1343 թ.—Ազգապ. 1870։

— 50. Հայրապետ քահանա, միաբան Երզնկայի Ս. Յակոբ եկեղեցու. Սիմէոն քահանային գրել տվեց Աւետարանը, բայց նա Մարկոսի 110 համարը հասնելուց հետո, թողեց քաղաքը և հեռացավ։ Գործը այսպես երկար ժամանակ թերի մնալուց հետո, Հայրապետ քահանան խնդրեց իր եղբոր՝ Աղարիա աբեղային և նա ի վերջո հանձն առավ գրել և ավարտեց Երզնկայում, 1351 թ.—Թորոս աղբ. Բ. 356—7։

— 51. Հայրապետ սարկավագ, որդի Յովսէփ ավագերեցի, որ հյուրընկալեց Տարօնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսին, երբ սա պանդխտում էր Երզնկա, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 52. Հայրապետ կրոնավոր, աջակցեց Ստեփանոս գրչին՝ օրինակելու համար Հին Կտակարանը՝ Սղկայու վանքում, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

— 53. Հայրապետ որդի Զաքարիայի, կրտսեր եղբայր Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 849։

— 54. Հայրապետ, *հայր Տիրացու կրոնավորի, որ Բարթուղիմէոս առաքելոյ վանքի միաբան էր և փրկանքով ազատեց գերի ընկած մի Աւետարան Թաթարների ձեռքից, 1388 թ.—Ձեռ. Վասպ. 202։*

— 55. Հայրապետ, *հայր Տիրացու կրոնավորի, որ հիշվում է Դասապետի և Սիմէոն բարունապետի հետ, որ Վարագայ վանքում գրել տվեց մի Ճառընտիր և նվիրեց Բարթուղիմէոս առաքելոյ վանից, 1399 թ.—Թորոս աղբ. Բ. 429 (անունների նույնությունը, ժամանակի մոտավորությունը և Բարթուղիմէոս առաքելի վանքի անունը ցույց են տալիս, որ այս Հայրապետը նույն է նախորդի հետ, և Դասապետ № 3 և № 4 նույն անձերն են)։*

— 56. Հայրապետ *կրոնավոր. իր եղբայր Յովհաննէս միայնակեացի հետ Վասպուրականում գրել տվեց մի մեծ Ճառընտիր՝ Յովհաննէս քահանային, Յովհաննէս կրոնավորին և Աւետիք սարկավագին, 1402 թ.—Ձեռ. Կարին. 94, Նոտարք 16։*

— 57. Հայրապետ, *միայնական Տաթևու վանից. օգնեց Գր. Տաթևացուն՝ երբ սա գրում էր իր Քարոզգիրքը 1407 թ.—Տաթև. ամ. 721։*

— 58. Հէրապետ, *որդի Վարդանի և հանգուցյալ եղբայր Թադէոս քահանայի (№ 56), որ Մոկաց Կաղթանց գյուղում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1409 թ.—Ձեռ. Վասպ. 294։*

— 59. Հայրապետ, *սարկավագ Խորաձորի Ս. Աստուածածին վանից, 1410 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 51 բ։*

— 60. Հայրապետ *աբեղա, որդի Գորգի (№ 26), օրինակեց մի Հաւաքածոյ, Ս. Թորոսի վանքում, նախ քան 1420 թ.—Տաշեան, Ցուց. 665—6։*

— 61. Հայրիկ, *մանկտավագ Ս. Թորոսի վանքում, նախ քան 1420 թ.—Տաշեան, Ցուց. 666 բ։*

— 62. Հայրապետ, *կազմեց այն Աւետարանը, որ Կարապետ վարդապետը (№ 207) բերել էր Երուսաղէմից և նվիրել Ս. Աստուածածնի տաճարին, 1421 թ.—Նոտարք 50։*

— 63. Հայրապետ, *միաբան Կողուց վանքի 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583 բ։*

— 64. Հերապետ *քահանա, մերձավոր Ստեփանոս կրոնավորի, որ Խոսրովայ վանքում, Վարդան գրչին գրել տվեց Աւետարանը՝ 1430 թ.—Ձեռ. Վասպ. 358։*

— 65. Հայրապետ *կրոնավոր, որդի Հուսէն բէկի և Հերիքի. գնեց մի Ավետարան 1431 թ.—Նոտարք 97։*

— 66. Հայրապետ *կրոնավոր, կազմեց այն Մաշտոցը, որ Կարապետ քահանան գրեց Մկրտիչ վարդապետի համար, Արճէշ 1432 թ.—Նոտարք 101։*

— 67. Հայրապետ, *հայր Ռստակէս երեցի, որ ստացավ մի Ավետարան, 1435 թ.—Ձեռ. Թավր. 13 ա։*

— 68. Հէրապետ *կրոնավոր, որի խնդրանոք Վարդան քահանան օրինակեց Յայսմավուրքը, Վան 1441 թ.—Ավգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ հէ։*

— 69. Հայրապետ, *որդի Ադմէլիքի՝ քրոջ Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում, Յակոբ աբեղային գրել տվեց Ավետարանը 1442 թ.—Ձեռ. Վասպ. 347։*

— 70. Խերապետ, *«տարաժամ հանգուցեալ» եղբայր Յոհաննէս վարդապետի, որ Գամաղիէլի վանքի վանահայրն էր և օրինակել է Ճաշոցը 1442 թ.—Նոտարք 128։*

— 71. Հայրապետ, *միաբան Սեպուհ լեռան Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանքի, 1445 թ.—Նոտարք 135։*

— 72. Հայրապետ, *միաբան Ուշտունեաց Ս. Յակոբ վանքի, 1445 թ.—Նոտարք 139։*

— 73. Հայրապետ *քահանա, հայր Ստեփաննոս գրչի, որ Մկրտիչ Աղթամարցի Քուքենց աբեղայի համար օրինակեց Յայսմավուրքը, Բաղէշ 1446 թ.—Նոտարք 152։*

— 74. Հայրապետ *կրոնավոր, որի հիշատակին մի արձանագրություն կա Ուշտունեաց Գանձակ գյուղի Ս. Գէորգ եկեղեցում, 1447 թ.—Նոտարք 155։*

— 75. Հայրապետ, *«բանին աշակերտեալ», գրիչ. օրինակեց Ավետարանը՝ Ասլիմէլիքի համար, Ծառիկու վանքում, 1447 թ.—Նոտարք 157։*

— 76. Հայրապետ *աբեղա, որդի Թումայի, Ուշտունեաց Շատվան գեղից. Աղթամարում Ներսէս աբեղային գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Նկարինայ մենաստանին, 1448 թ.—Նոտարք 160։*

— 77. Հերապետ *կրոնավոր, որդի Մելքիսեթի. Քաջբերունեաց Ձորոյվանքում, ծերունի Թումա գրչին գրել տվեց մի Ավետարան, 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 691։*

— 78. Հայրապետ, *որդի Ներսէս քահանայի, եղբայր Ավետիսի և հորեղբայր Վարդան գրակալի, որ Արճէշում Յովհան-*

նէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1450 թ.—Ձեռ. Թաւր. 68 բ։

— 79. Հայրապետ, հերպետ Վարագայ թէ Սուխարայ վանքի, 1454 թ.—Նոտարք 175։

— 80. Հերապետ, երկու համանուն միաբաններ (մը վանքի), 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։

— 81. Հէրապետ քահանա, օգնեց գրելու Յայսմաւուրքը՝ Լիմ կղզում, ստացող Ստեփաննոս Ղարիպշահի համար, 1457 թ.—Ձեռ. Թաւր. 105 ա։

— 82. Հայրապետ արքեպիսկոպոս, առաջնորդ Բարթուղիմէոս առաքելոյ վանից Աղբակու, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 բ։

— 83. Խէրապետ քահանա, միջնորդեց մի Աւետարան նվիրելու Ս. Վարդանայ վանքին, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 434։

— 84. Հերապետ, որդի Նորտունկի, որ գնի միջնորդ եղավ տանուտեր Էդիլշահի և Յովհաննէս գրչի միջև, Արծկէ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 85. Հայրապետ գրիչ. Աղթամարում օրինակեց մի Աւետարան, 1465 թ.—Ակինեան՝ Գաւազանագիրք 115։

— 86. Հէրապետ քահանա, որդի Յովհաննէսի, գրիչ. Սալչուկ խաթունի պատվերով գրել է մի Մաշտոց, 1466 թ.—Թորոսաղբ. Ա. 232, Բ. 337—8։

— 87. Հայրապետ եպիսկոպոս, Անաւարզայի Ս. Աստուածածին վանքում, Մատթէոս քահանայի համար օրինակեց Ճաշոցը, 1466 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 235 բ, 236 բ։

— 88. Հայրապետ (կամ Հէրապետ) աբեղա, որդի Խաչիկի, մայրն է Ոսկիտիկին, քրոջ որդին է Աղթամարցի Թովմա Մինասենց նշանավոր վարդապետի(№ 165). 1425 թվին կոչվում է դեռ «նորաբողբոջ սարկաւագ», 1428-ին «նորաբողբոջ քուերորդւոյ իմոյ», ապա միաբան Աղթամարի վանքի (1441 թ), ավելի ուշ դարձավ նշանավոր գրիչ՝ Աղթամարի Ստեփաննոս Գ կաթուղիկոսի օրով (1464 թ), որի մօրաքեռորդին էր և որի հետ գնաց Էջմիածին։ Օրինակել է մի մի Աւետարան 1444 թ., 1446 թ, 1459 թ. և մի Ճառընտիր 1467 թ. (կեսը Էջմիածնում, կեսը Աղթամար).—Ձեռ. Վասպ. 354, 384, 387—8, 392—3, 397, Նոտարք 89, 127, 133, 146, 193, 231, Ազգապ. 2174։

— 89. Հերապետ, որդի Ջանիբէկի, հանգուցյալ եղբայր Կիրակոս երեցի Ջօշկանց, որ օրինակեց Ճառընտիրը՝ սկսելով

Բաղէշում և ավարտելով Աղթամարում, 1467 թ.—Նոտարք 230։

— 90. Հայրապետ (Խէրապետ), որդի տանուտեր Առաքելի, որ Գամաղիէլի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 453—5։

— 91. Հայրապետ, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 92. Հայրապետ, հորեղբայր Կիրակոս կրոնավորի, որ Եկեղեաց գավառի Կայիփոսի վանքում գրել տվեց մի Սաղմոս, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 305։

— 93. Հայրապետ գրիչ. Եկեղեաց գավառի Կայիփոսի վանքում, Կիրակոս կրոնավորի համար գրեց մի Սաղմոս, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 305։

— 94. Տէր Հայրապետ, ուրիշ քահանաների հետ վկայում է, որ մի Աւետարան է նվիրված Աբրահամ քահանա Մսրցուն, 1471 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 59 բ։

— 95. Հայրապետ, մերձավոր Յակոբի, որ Երզնկայում ստացավ մի Աւետարան, 1477 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 628։

— 96. Հայրապետ, որդի Մարտիրոսի և թոռ Խոսրովի, որ Բռնաշէնում Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 483։

— 97. Հայրապետ, որդի Սահակի և թոռ նույն Խոսրովի, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 483։

— 98. Հայրապետ, որդի Ամոնի և թոռ նույն Խոսրովի, 1478 թ.— Ձեռ. Վասպ. 484։

— 99. Հէրապետ, կազմեց այն Աւետարանը, որ Մուշում գրել տվեց Խոջա Յովսէփը 1479 թ.—Ձեռ. Սեբ. = ՀԱ 1925, էջ 263։

— 100. Խէրապետ, հորեղբայր Վարդան աբեղայի, որ Կտուց անապատում, Խաչատուր աբեղային գրել տվեց Աւետարանը, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 488։

— 101. Տէր Հայրապետ, կրոնավոր Ագուլիսում, 1481 թ.—Ոմքատեանց՝ Երնջակ 300։

— 102. Հայրապետ, եղբորորդի Զաքարայ աբեղայի, որ Յակոբ քահանայից գնեց մի Շարակնոց, Երզնկայում, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 ա։

— 103. Հայրապետ աբեղա, որդի Խաչատուրի. գրիչ. Աղթամարում, Գէորգ աբեղայի օրինակի վրայից (որի թվականը

*անհայտ է) օրինակեց Աւետարանը՝ Դովլաթխաթունի համար, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11—12։*

— 104. Հայրապետ, *որդի Վարդանի, որ Մոկաց Շատախ քաղաքում, Իսրայէլ քահանային գրել տվեց Աւետարանը, 1491 թ.—Ձեռ. Վասպ. 518։*

— 105. Հայրապետ, *եղբայր Ստեփան աբեղայի Այրի վանից, որ գրեց մի Աւետարան, Համանգուլ կույսի համար, 1493 թ.—Թորոս աղբ. Բ. 304։*

— 106. Հայրապետ *վարդապետ. գրիչ. Յովհաննէս վարդապետի հետ միասին Աւագ վանքում օրինակեցին Նարեկը՝ ՋԽԵ=1496 թ.—Ձեռ. Կարին. 176։*

— 107. Հայրապետ, *որդի Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։*

— 108. Հէրապետ, *որդի Վարդանի, տանուտեր Շատախի. ազատեց գերի ընկած մի Աւետարան և նվիրեց Պատրկի վանքին, 1499 թ.—Ձեռ. Վասպ. 318։*

— 109. Հայրապետ *աբեղա Տեու վանից (Սեբաստիա). կըրակի մեջ գցվելով նահատակվեց հավատքի համար ՋՁԲ=«1533 թ».—Սամ. անեց. շար. 176=Առաք. պատմ. 487. Ջամչ. Գ. 516, Տաշեան, Ցուց. 871, Նոր վկ. 370։*

— 110. Հայրապետ *Ա. Փակախեցի. կաթուղիկոս Աղթամարի «1705—1707 թ», հաջորդ Յովհաննէս Կեծուկի. Նարեկի մոտի Փակախ գյուղից էր, Թովմա կաթուղիկոսի քեռորդին և ինքն էլ շուշտակ վարդապետ։—Ակինեան, Գաւազանագիրք 145—146, Հաւաք. 63, Ազգապ. 2868։*

† *ՀԱՅՐԱՏԵՂ, ար. < հյ.* hայր+տեղ *բառերից (իբր նա որ իր հոր տեղը բռնել է կամ պիտի բռնի)։ Մի անգամ հիշատակված է՝*

—Հայրատեղ, *որդի Թէրի. կանգնեցրել է մի խաչքար իր և իր ծնողների հիշատակին՝ Դսեղի (Լոռի) գերեզմանատնում (Թվականն անհայտ)։—Յարութիւնեան, Ներս. դպր. սաներն Ա. ճանապ. 63, Ազգագր. հանդ. Է, 424։*

*ՀԱՅՐԻՆ, սեռն ու ձևը, հետևաբար նաև ծագումը անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԶ դար սեռ.* Հայրինին *ձեվով (Ձեռ. Սանաս. 7 բ)։*

† *ՀԱՅՐՄԵԼԻՔ, իգ. հյ.* hայր+*արաբ.* melik *բառերից, իբր*

թե «նա որի հայրը մելիք է». ըստ իս ձևափոխված է Հայրմելէք ձևից, որ տես Խէրմելէք բառի տակ։ Գրված է՝

— 1. Հէր մէլիք, կին Ծերուն աղայի, մեծ մայր Սելչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337—8,

— 2. Հէրմէլիք, դուստր Ստեփաննոսի, քույր Սելչուկ խաթունի, նախորդի թոռն է.—Թորոս աղբ. Բ. 338։

— 3. Հէրմէլիք հիշված է նաև անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Վասպ. 610։

† ՀԱՅՐԱԻԿ, ար. (սեռ. Հայրկանն ձևով (բայց գուցե ուղղականն է Հայրիկ) < հյ. հայր բառից՝ փաղաքշական մասնիկով. հիշված է մի անգամ ԺԲ դարում։

— Հայրուկ, գրիչ. իր եղբայրների (Ստեփաննոսի, Սարգսի և Գրիգորի) հետ միասին օրինակել է մի հոյակապ Ճառընտիր (ԺԲ դար).—Ալիշեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ. էջ ՀԱ, Ձեռ. Վեննետ. Բ. 64—66։

ՀԱՅՐՈՒՄ, ար. ծագումն անհայտ. սրանից է Հայրումեանն(ց) ազգանունը, որ կայ նաև Խէրումեանց ձևով։ (Կա պրս. هاروم Härūm «է անուն քաջի մըոջ» (ԳԴ 253 ա)։ Այս անունով հիշված ունինք՝

— 1. Հայրում, որի անունով կա մի խաչքար Նոր-Բայազեդի Գյոլ գյուղում, 1284 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 518, Շահխաթ. Բ. 248. Սիսական 54 (վերջին երկուսը գրում են Հայրուտ):

— 2. Կա նաև Հայրում՝ ԺԵ դար (Ձեռ. Ն. Բայազ. 18 բ) և Հէրում 1653 թ. (Ձեռ. Թաւր. 45 ա), Հերում 1766 թ. (Ջամբռ էջ 167)։

ՀԱՅՐՈՒՏ, ար. ծագումն անհայտ։ Հիշված է ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. Հայրուտ, «վայելեց ձիավարժ իշխանութիւնը» և ապա դարձավ միաբան Արցախի Վարագայ Ս. Նշան վանքի, Յովհաննէս վանահոր մոտ, 1261 թ.—Արցախ 338։

— 2. Հայրուտ 1284 թ. տես վերը Հայրում:

— 3. Հայրուտ պարոն, շինել է Քարավանքի, Թանատի վանքի և Ս. Կաթուղիկէի աղոթանոցները 1335 թ.—Խաղբակեանք 115։

ՀԱՆԱԻՈՒՄ, եր. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է 1638 թ. (Ձեռ. Վասպ. 896)։

ՀԱՆԴՈՒՐ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է մի անգամ 1573 թ. (Ձեռ. Վասպ. 30)։

*ՀԱՆԷՍ, ար. կրճատված է Յովհաննէս անունից. Մնացյալը տես անդ։

— 1. Հաննէս, կառուցել է Կապտավանքի եկեղեցին (Արցախի Տաւուշ գյուղում), 1151 թ.—Արցախ. 332։

— 2. Հաննէս, ծերունի մորեղբայր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղեմում օրինակեց Ճառընտիրը 1335 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 149, Բ. 348։

— 3. Հաննէս, հայր Թութկանց Աստուածատուրի, որ Ոստանում ազատեց գերի ընկած մի Աւետարան և Կիրակոս երեցի ձեռքով նվիրեց Կապուտ գեղի եկեղեցուն, 1487 թ.—Ձեռ. Վասպ. էջ 115։

†ՀԱՆԻԿ, իգ. < հյ. հանի բառի փաղաքշական հանիկ «մեծ մայրիկ, տատիկ» ձևից. հիշատակված է իբրև անձնանուն ԺԶ—ԺԷ դարերում։

— 1. Խանիկ, դուստր Նորատունկի, մերձավոր Գեղամեցի Առաքել սարկավագի, որ Կարնոյ Թուանճ գեղում օրինակեց Մաշտոցը, 1589 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 167 բ։

— 2. Խանիկ, հիշված է 1629 թ. (Կնիք հաւ. յոչ. IV), Հանիկ 1652 թ? (Ձեռ. Վենետ. Ա. 762), տես. Հանկանն՝ անթըվական Արձ. Հոռոմոսի վանից (Շիրակ 25, Արրտ. 1870, 271)։

*ՀԱՆՆԱ, ար. < Յովհաննէս անվան արաբ. يوحنا Yuḥanna ձևից կրճատված։ Տես և Յովհաննէս անվան տակ։

— 1. Հաննա Երուսաղեմացի, պատմիչ. պատրիարքական փոխանորդ էր Յովհաննէս Կոլոտ և Գրիգոր Զ. Շղթայակիր պատրիարքների ժամանակ. իր փութաջանությամբ և մաքուր գործունեությամբ մաս ունի Երուսաղեմի պարտուց հատուցման մեջ և համարվում է Շղթայակրի աջ բազուկը։ Գրել է Երուսաղեմի ընդարձակ պատմությունը 1727 թ. (տպված է Պոլիս 1734 թ. և այլ ևս մի քանի անգամ). մեռել է 1733 թ.—Ազգապ. 2877, Զամչ. Գ. 769, 773—4. Լէօ, Հյկ. տպագր. Բ. 158։

— 2. Հանա (մի ն-ով) ոմն Պոլսեցի, հիշված է 1720 ական թվերին (Աբր. երև. 53)։

ՀԱՆՈՓՈՐ, մր. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ 1570 թ. (Ձեռ. Վասպ. 672)։

*ՀԱՆՋԱՆ, ար. կրճատված է Յովհաննէս անվան փաղաքշական Օհանջան ձևից. մի անգամ գտնում եմ հիշատակված Ձեռ.

Սեբ.=ՀԱ 1925, 472 թվականն անհայտ (բայց 1578 թվից ուշ) մի հիշատակարանում։

ՀԱՊԱԻ, ար. թվի ծագած Ապով անունից, ուրի մի այլ ձևն է Ապաւ. այժմ Աբով. բոլորի մայրն է Աստուածապով. (տես այս անունները)։ Հիշատակված է մի անգամ՝

— Հապաւ, պապ Մուրադի, որ Արճէշում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ջեռ. Վասպ. 498։

*ՀԱՊՈՒԼ, ար. ըստ իս պետք է կարդալ Հաբուլ և հասկանալ Աբուլ, որից և Աբուլեանց ազգանունը (Տփղիս). նույն է վրաց. Աբուլաձե ազգանվան հետ. բոլորն էլ ծագում են Աբուլ ձևից, որ Ջուղայեցի մի լեռան անունն է։ Հապուլ ձևը մի անգամ գտնում եմ հիշատակված 1666 թ. (Ջեռ. Վասպ. 928) և մի անգամ էլ անթվական մի հիշատակարանում՝ Արցախ 40։

*ՀԱՋԱԹ, ար. < արաբ. حاجت ḥāǰat «պետք, կարիք» բառից. գտնում եմ մի անգամ հիշված 1586 թ. (Manus. brit. mus. 269 բ, 270 ա էն)։

*ՀԱՋԱՋ, ար. < արաբ. حجاج ḥaǰāǰ, hiǰāǰ «ունքի տակի ոսկորը, աչքի փոսը (ականոզիք), արևը նոր ծագելու ժամանակ հորիզոնից բարձրացած առաջին բարակ շերտը», حجّاج ḥaǰǰāǰ անձնանուն է (Կամուս, Ա. 382)։ Մի անգամ գտնում եմ հիշված՝

— Հաջաջ, որդի Ապլհա[սանի], մեռել է մանուկ հասակում, 1034 թ. Թաղում է իր գերեզմանը Խծկօնքում, հետևյալ արձանագրությամբ. «Ի ՆՋԳ թուիս ես Հաջաջ որդի Ապլհա... տղական հասակի ելի յաշխարհէ և ոչ տեսի [զվ]աեյչութն սորա և սուգ մեծ թողի ծնողաց իմոց առ Քս յիշեցէք զիս աղ"» (Շիրակ 130)։

*ՀԱՋԱՐԻ, մր. թե իգ. < արաբ. حجر ḥaǰar բառից, որ նշանակում է «քար, հանքից նոր դուրս բերված և դեռ չմաքրած արծաթ կամ ոսկի» (Կամուս, Ա. 811), որ և արաբների մոտ արական անուն է (տես անդ, էջ 812, տող 1—2)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված Նորավանքի անթվական մի արձանագրության մեջ՝

— Հաջարի, որ «իր ամուսին Մէլիքի» հետ նվերներ է արել Նորավանքին.—Արձ. Սիսական 200։

*ՀԱՋԻ, ար. < արաբ. حاجی ḥāǰī «մահտեսի» բառից, որ մահմեդականների մոտ էլ արական անուն է։ Այսպես օրինակ՝ Հաճի պէկ իշխանակալը, որ Բջնին քանդեց, ժողովուրդը կոտորեց, երկիրը աւերակ դարձրեց 1358 թ. (Արձ. Այրարատ 273—4)։

Հնուց մեր մեջ ավանդված չէ, բայց քիչ անգամ գործածվում է այժմ (Սեբաստիա, Ախալցխա)։

— Աջիբէգ, ար. հիշված է 1389 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Աշուղ. (Արար. 1911, 759—760)։

*ՀԱՍԱՆ, ար. < արաբ. حسن ḥasan անունից, որ նշանակում է բուն «գեղեցիկ»։ Գործածվել է մեր մեջ սկսած Թ դարից և տևել է մինչև ԺԵ դարը։ Այժմ ի սպառ խափանված է։

— 1. Հասան, որդի Շապուհի. հիշվում է իբրև վկա Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը։

— 2. Հասան իշխան, օգնական Աշոտ Արծրունի իշխանի. Բուղայից պաշարվելով՝ քաշվեց Նկան բերդը «852 թ».—Արծր. Գ. բ։

— 3. Հասան Անձևացի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ».—Արծր. Գ. դ։—Թվի թե սա է Հասան տեր Անձևայեաց, որ հիշված է Եղիշէի Անձևացեաց օրինակում, Գուրգէնի և Գէորգի հետ. տես Գալֆայեան հրատ. Եղիշէի, տպ. Թէոդոսիա 1861, էջ Գ—Է. ըստ Ակինեան՝ Եղիշէ Ա. 109 կեղծիք։

— 4. Հասան Արծրունի, որդի Վասակ ամբարիշտի, քեռորդի Գրիգոր-Դերենիկի, տեր Սևան ամրոցի. խաբեությամբ բռնեց և բանտարկեց Գրիգոր-Դերենիկին. Աշոտ Ա Բագրատունին («858—890 թ») ազատեց նրան։ Օգնեց Աֆշին ոստիկանին՝ ավերելու Հայաստանը։ «899 թվին»՝ դավաճանությամբ ուզեց բռնել Վասպուրականի իշխան Աշոտ Արծրունուն, բայց ինքը ընկավ Աշոտի ձեռքը, որ բռնեց և աչքերը փորեց։ Հասանը զղջաց իր արածի վրա և կրոնավոր դարձավ։—Յհ. կթղ. լը. Արծր. Գ. ի, լ. Դ. բ.—սեռ. Հասանայ՝ Արծր. Գ. ի, իբ, լ. Դ. բ. Յհ. կթղ. լը.—կոչվում է նաև Հասանիկ, որից սեռ. Հասանկան՝ Արծր. Գ. ի։

— 5. Հասան Գնթունի, բերդապահ Կարուց, իշխան և հրամանատար արքունեաց, հավատարիմ Սմբատ Ա թագավորի։ Երբ Աֆշին ոստիկանը պաշարեց Կարսը, Հասանը ստիպվեց վերջապես թագավորական ընտանիքով միասին անձնատուր լինել «896 թ»։—Յհ. կթղ. լե, խբ.—սեռ. Հասանայ՝ Յհ. կթղ. խբ.—Այրարատ 27 բ. Ազգապ. 1010, Ջամչ. Բ. 722։

— 6. Հասան Գնթունի, որդի Խաքանի. շինել է Ուղուզլի գյուղի (Շիրակ) եկեղեցին։ Թվականը անհայտ է, բայց համարվում է Թ դարից։ Թերևս նույն է նախորդի հետ և հայրն է Վասակ և Աշոտ Գնթունի (№ 39) եղբայրների։—Արձ. Շիրակ 15, Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 81, Այրարատ 248։

— 7. Հասան Հաւնունի, *մեծ իշխան, Յուսուփ ոստիկանի արշավանքի ժամանակ, 15 նախարարների և Վրաց Ատրներսեհ Թագավորի հետ միացած՝ խորհուրդ արին սպանելու Սմբատ Ա Թագավորին. բայց Թագավորը բռնեց նրանց և կուրացրեց բոլորին «908 Թ»։—Այրարատ 27 բ (դավակից է դնում նաև Հասան Գնթունուն № 5), Ջամչ. Բ. 738. Ազգապ. 1028։—Հմմտ. նաև նախորդ երկու անունների վկայությունները։*

— 8. Հասան *իշխան, որդի Կորայ Բրդէի, որդւոյ Սմբատայ իշխանաց իշխանի Սիւնեաց, Թոռան Փիլիպպէի Ա (Ժ դար)։—Օրբ. ծԹ։*

— 9. Հասան *Պահլաւունի, որի որդին Գրիգոր շինել է մի եկեղեցի, ինչպես հիշում է ինքը Կեչառուի արձանագրության մեջ, 1003 Թ.—Խաղբակեանք 71, Այրարատ 259—260։ (Այս Գրիգորը մագիստրոսը չէ. արձանագրությունը Թվագրված է ՆԶԲ, որ սխալ է. Ալիշան ուղղում է ՆԾԲ=1003. տես նաև Գրիգոր № 125)։*

— 10. Հասան, *որի համար Գրիգոր Մագիստրոսը Կեչառուի մեծ արձանագրության մեջ պատարագ է նշանակում, 1051 Թ.—Այրարատ 260, Շողակաթ 181 (Նախորդ Հասանն է)։*

— 11. Հասան, *հայր Ապիրատ իշխանի և պապ Վասակի. Բարսեղ (№ 12) կաթուղիկոսի («1105—1113 Թ») պապի հայրն է (Ժ դար).—տես.* Հասանայ՝ *Ուռհ. 10, 211, 269. Սմբ. պատմ. էջ 28։*

— 12. Հասան *մագիստրոս Պահլաւունի, հայր Ապիրատի (1176) և պապ Գրիգորի (1178) և Բարսեղ (№ 23) եպիսկոպոսի Անւոյ († 1203).—Ալիշան, Հայապ. 390, Շնորհ. և պրդյ. էջ 13։*

— 13. Հասան, *ավագ որդի Խուլ Խաչիկ (№ 7) իշխանի Վասպուրականի. հաղթեց Թուրքերին և լուծեց իր եղբոր մահվան վրեժը՝ 1041 Թ.—Ուռհ. 90—92, Սմբ. պատմ. 59, 60.—տես.* Հասանայ՝ *Ուռհ. 91, 92, 219. Սմբ. պատմ. 60։*

— 14. Հասան, *որդի Սմբատի. իր անունով մի խաչքար է կանգնեցրել Հաւուցթառում, 1081 Թ.—Շողակաթ. 182։*

— 15. Հասան, *որդի Գրիգորի. Սիւնեաց Սենեքերիմ Ա Թագավորի ազատներից. Նորաշինիկ գյուղը և Ջեռատի վանքը նվիրեց Տաթևին՝ 1086 Թ.—տես.* Հասանայ՝ *Օրբ. ծԹ։—Սիսական 289։*

— 16. Հասան *իշխանաց իշխան, որդի Սենեքերիմ արքայի. վախճանվեց մատաղ հասակում, հայրենի փառքից զրկված և*

ատար... (Մնացյալը թերի)․ իր անվան է նվիրված Նորավանքում անթվական մի խաչքար (Սիսական 200)։ Այս Սենեքերիմ է թագավոր Սևնեաց և Կապանի, որ խ. րդախությամբ սպանվեց Պարտաւի ամիրայի ձեռքով՝ 1094 թ.—Հասանն էլ շուրջ նույն ժամանակից է։

— 17. Հասան, *ազգական Գրիգոր Մագիստրոսի․ նորոգել է և իր անունով կոչել Հասան-Ղալա քաղաքը (ԺԱ դար)․—Այրարատ 19։*

— 18. Հասան, *Խաչենի Գեսումեան Առանշահիկ տոհմից․ ամուսնացավ Փառիսոսի Սենեքերիմ և Գրիգոր (№ 126) թագավորների Խանում (№ 1) քրոջ հետ և այդ թագավորների մահից (1003 թ.) հետո նստավ Փառիսոսում։ Սրա որդին է Գրիգոր՝ փառավոր իշխան Փառիսոսի (ԺԱ. դար)։—Բարխուտ. Պատմ. Աղուանից 178։*

— 19. Հասան, *որդի Վասակի, եղբայր Բարսեղ կաթուղիկոսի Անեցւոյ (№ 12), որ նստավ 1105—1113 թ.—Ուռհ. 221։*

— 20. Հասան, *որդի Դեսմոյ, պատերազմում սպանեց Սմբատին, որ Խաւախան բերդի (Գանձասար) տեր Վասակ իշխանի որդին էր (շուրջ 1147 թ.)—Հայապ. 387։*

— 21. Հասան, *որդի Վասիլի, եղբայր Գրիգոր Դ Տղայի († 1193 թ). մեռավ երիտասարդ հասակում, նախ քան 1174 թ.—Թորոս աղբ. Ա. 118։*

— 22. Հասան, *որդի Խաղբակ Բ-ի, եղբայր Ջաջուռ Բ-ի և Վասակի, նաև Գրիգորի և Աբուսի․ մի խաչքար է կանգնեցրել Հաւապտուկ բլրի գլխին, 1184 թ.—Ցովսէփեան՝ Խաղբակեանք 32 (նույնացնում է Բաղաց թագավորի փեսա Հասանի հետ, բայց նա որդի է Վախտանգի, իսկ սա որդի է Խաղբակի)։*

— 23. Հասան *Սակռեանց, իշխան Խաչենի, Գետաքարեցի, տեր Խոյախան բերդի․ որդի Վախտանգի և թոռն Մեծ Հասանի (ծվ է այս անձը)։ Ամուսնացավ Բաղաց Գրիգոր Բ թագավորի դուստր Կատայի հետ (№ 7) և եղավ ժառանգ թագավորության։ Երբ Թուրքերը գրավեցին Բաղաբերդը, ինքը ընտանիքով փախավ Խաչեն (1170 թ)։ Կատայից ունեցել էր երեք որդի (Վախտանգ, Սմբատ, Վասակ)․ Կատայի մահից հետո ամուսնացաւ Կիւրիկէ Գ թագավորի Մամա կամ Մամքան դստեր հետ, որ Աբաս Բ-ի քույրն էր։ Սրանից էլ ունեցավ եւ երեք որդի (Գրիգոր, Խոյդան և Գրիգորիս), 40 տարի իշխանություն վարելուց և շատ հաղթություններ տանելուց հետո, իր զավակները բա-*

ժանեց վեց որդիների միջև և իր կնոջ՝ Մամայի հետ գնաց Դադի վանքը, որի առաջնորդն էր իր եղբայրը՝ Գրիգորիս (№ 194) և կրոնավոր դարձավ (1182 Թ)։ Նորոգել է Կեչառու վանքը 1188 Թ. և նրան նվերներ է արել—Օրբ. կ.—սեռ. Հասանայ՝ Մխ. դտ. նխգր. ժա. Նոր վկ. էջ 31.—Արձ. Այրարատ 262, 268 ա (Թիվը սխալ է դրված ՈՂԷ, պետք է ուղղել ՈԼԷ=1188). Սմբատեանց՝ Գեղարք. 173, Կրպտ. եպս.՝ Դօփեանք 48, 60. Բարխուտարեանց՝ Արցախ 168, 182, 203—4, Պատմ. Աղուանից 140—141, Սիսական 16, 17, 295. Յովսէփեան՝ Խաղբակեանք 29, 80։—Ա՞յս է արդյոք նաև Հասան, որի կինն է Մամախաթուն և որոնց թոռը մի արձանագրություն է թողել 1265 Թ. (Արցախ. 168—9)։—Հասան իշխանի և նրա կնոջ Մամայի երկու ընդարձակ արձանագրությունը 1182 թվից՝ Եսայի կաթուղիկոսի օրինակությունից վերցրած տես Շահխաթ. Բ. 361—2 և Արցախ 203—4։—Հիշված է նաև Շահխաթ, Բ. 367=Արցախ. 350։

— 24. Հասան, որդի Սմբատի, թոռն Համազասպ մարզպանի. եղբայրներն են Քուրդ, Համազասպ և Սարգիս, որոնք հող են նվիրել Սանահնի վանքին, 1191 Թ.—Ազգագր. հանդ. Գ. 283 (տես և Համազասպ № 33)։

— 25. Հասան, որդի Վասակի. մայրն է Շուշիկ. եղբայրներն են Վաչէ և Յովհաննէս. այս բոլորը մեռած էին 1198 թվին, բացի Յովհաննէսից, որ շինեց նրանց հիշատակին Մակարավանքի (Ղազախ) փոքր մատուռը 1198 Թ.—Արցախ 375։

— 26. Հասան Կայենեցի, Վրաց Գէորգի թագավորի իշխաններից էր. շինեց Կայեան բերդը (ԺԲ դար).—Օրբ. կե.—բց. ի Հասանայ՝ Վրդ. ձգ։

— 27. Հասան, մեծ իշխան Բաղաց թագավորության, որդի Համտունի Ա. այս Հասանի որդին է Յովհաննէս Կապանեցի (ԺԲ դար)—սեռ. Հասանայ՝ Օրբ. կ, կգ։

— 28. Հասան, որդի Սակոյի, հայր Վասակ պատրոնիկի, որ Գոլաշտեանում նահատակվեց Թուրքաց դեմ պատերազմում և որդիքը՝ Խոյդան և Խոչախ մի խաչքար կանգնեցրին նրա հիշատակին Խաթրավանքում, 1201 Թ.—Շահխաթ. Բ. 363, Արցախ 196 (ի՞նչ կապ ունի № 23 Հասան Սակռեանց իշխանի հետ)։

— 29. Հասան, որդի Իշխանի և հայր Գրիգորի (№ 224), որ իր սեփական Երգս գյուղը նվիրել է իր որդի Ամիր-Հասանի արևշատության համար՝ Հոռոմոսի վանքին, 1201 Թ.—Շիրակ 23, Արրտ. 1870, 298։

— 30. Հասան, հայր Վախտանգի, որ մի խաչքար է կանգնեցրել Գանձասարում, (երևի իր հոր) դամբարանի վրա, 1202 թ.—Արցախ 179։

— 31. Հասան, հայր Պարսամոյի, որ Օշական գյուղի տերն էր և նվերներ է արել Արջոյառիճին և Բագնայրին 1207 և 1210 թվերին։—Շիրակ 117 և 121։

— 32. Հասան, որդի «Վախտանգայ թագաւորազնոյ տեառն Հաթերքոյ և ամենայն Վերին Խաչենոյ», մեռավ թուրքերի դեմ պատերազմում։ Նրա եղբայրն էր Գրիգոր (№ 239), որ մեռավ Հասանի մահից 3 ամիս հետո։ Նրանց մայրը՝ Արզուխաթուն, իր ամուսին Վախտանգի և երկու որդիների՝ Հասանի և Գրիգորի գերեզմանի վրա շինեց Դադի վանքը, 1214 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 356—8, Արցախ 204, 207։

— 33. Հասան, որդի Վախտանգի (Ա) և հայր Վախտանգ (Բ) Տօնկիկի, որի կինն է Խորիշահ՝ հիշված 1212 թ.—երկուսն էլ (Վախտանգ Ա և Բ) մեռել են 1214 թ.—Տողակաթ 198։ Հասան-Ջալալ-Դօլայի պապն է, ինչպես հիշված է Գանձասարի մեծ արձանագրության մեջ 1240 թ. (Շահխաթ. Բ. 371—2, Արցախ 173) և Կեչառուի արձանագրության մեջ՝ 1248 թ. (Շահխաթ. Բ. 194, Այրարատ 262։

— 34. Հասան, որդի Պետրոսի. մայրն է Տուշիկ, որի հետ միասին մի կամար է կանգնեցրել իր հոր հիշատակին, 1215 թ.—Արցախ 194։

— 35. Հասան, որդի Վախտանգի, իշխան Վերին Խաչենի (հիշված 1220-ական թվերին).—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 61 (տարբեր է նախորդներից)։

— 36. Հասան ոմն, կինն է Թուղուքան. սրանց որդին շինել է Կեչառուի Ս. Յարութիւն եկեղեցին, ինչպես հիշատակում է իր գրած արձանագրության մեջ, առանց իր անունը տալու, 1220 թ.—Այրարատ 263, Շահխաթ. Բ. 197, Արաքս 1892 ա, էջ 29։

— 37. Հասան, որդի Ջաջուռ Բ-ի, Խաղբակեան տոհմից. մեռավ 1224 թ. և հայրը կանգնեցրեց մի խաչքար՝ նրա շիրմի վրա, Հաւապտուկ բլրի գլխին.—Խաղբակեանք 32—33։

— 38. Հասան, հայր Հեճուպ Գրիգորի (№ 266), որ իբրև տեր Հոռոմոսի հիշված է վանքի արձանագրությանց մեջ 1198 և 1228 թ.—Շիրակ 23։

— 39. Հասան, մեծավոր Տարափշահի, որ ինչպես Կոթելի,

Կիւրիկէի, Այխաթունի, նմանապէս և Հասանի հոգու համար մարդ ու ջաղացք է նվիրել Բագնայրին, 1234 թ.—Շիրակ 118։

— 40. Հասան, որդի Սմբատի, իր եղբոր Վահրամի հետ միասին նվերներ է արել Մեծարանց վանից՝ իր հոր հոգուն, 1251 թ.—Բանասէր 1901, 142։

— 41. Հասան-Ջալալ-Դօլա, որդի Վախթանգ Բ Տօնկիկի, մեծ իշխանի Խաչենոյ. մայրն է Խորիշահ (№ 2), որ նշանաւոր Զաքարէ և Իւանէ եղբայրների քույրն էր։ Հասանի երկու եղբայրներն էլ կոչվում են Իւանէ և Զաքարէ։ Կինն է Մամքան, դուստր Բաղաց թագավորի։ Աղջիկներն են՝ Մինա խաթուն՝ կին Տարսայիճ իշխանի Օրբելեան, և Մամախաթուն՝ կին Ումեկ իշխանի Տփղիսեցւոյ։ Շինեց Ս. Ստեփաննոսի տաճարը, այնտեղ՝ ուր հայտնվեցին նրա նշխարները 1229 թ. (Արձ. Խաղբակեանք 33, Շահխաթ. Բ. 377, Արցախ 185)։ Ուխտի գնաց Երուսաղէմ։ Համաձայն իր հոր կտակի՝ շինեց Գանձասարի տաճարը, որ և օծվեց 1240 թ. Աղվանից Ներսէս կաթուղիկոսի ձեռքով։ Կեչառուի վանքը թաթարների արշավանքի ժամանակ ավերված լինելով, իր կնոջ Մամքանի հետ նորոգեց՝ 1248 թ։ Ընդունեց թաթարների հպատակութիւնը. միջնորդ եղավ դաշնակցութեան Հեթում Ա թագավորի և Թաթարաց Բաչու զորավարի միջև։ Արղուն խանի դեմ գանգատվելու համար գնաց մինչև Մանգու խանի մոտ։ Արղուն խանի հրամանով նահատակվեց Ղազվին քաղաքում, «1261 թվին»։ Որդին Աթաբեկ փոխադրեց հոր մարմինը Ղազվինից Գանձասար, ուր և թաղելով՝ հաջորդեց նրան, նույն թվին (1261)։ Ընդարձակ կենսագրութիւնը տես Օրբելի ИАН 1909, էջ 405—436։ Համառոտ կենսագրութիւնը տալիս է Աշոտ Գալստեան, Մոնղոլական շրջանի պատմ. Լենինական 1945. էջ 26—33։—Հասան—Ջալալ՝ Կիր. իէ, լգ, ծգ.—Ջալալ—Հասան՝ Կիր. կա.—Ջալալ՝ Վրդ. դգ. Կիր. իը, լգ, ծգ, ծէ, կա. Օրբ. ժմ. 26. Օրբ. հ. Անանուն ժմ. 23. Մխ. այրիվ, 83.—Հասան—Ջալալդօլա՝ Վրդ. ձգ (հրտր. Էմինի՝ Ջալալատաւլէ).—Ջալալդօլայ՝ Կիր. իը.—սեռ. Հասանայ՝ Կիր. իը.—Ջալալի(ն)՝ Կիր. լգ, լդ, կա. Օրբ. կե. Օրբ. ժմ. 30.—Ջալալ—Հասանին՝ Կիր. խբ.—Ջալալայ՝ Երզն. երկն. յոջ.—Թողել է մի մեծ ու գեղեցիկ արձանագրութիւն Գանձասարում, վանքի օծման առթիւ 1240 թ. որ Յովասափ միակեցի գրչի քանդակն է (Շահխաթ. Բ. 371—2, Արցախ 173)։ Նշանավոր է նաև Կեչառուի արձանագրութիւնը՝ 1248 թվից (Շահխաթ. Բ. 194, Այրարատ 262)։ Կոչված է քա-

գոր (իմա Թագաւոր) Մեծարանց վանքի անթվական մի արձանագրության մեջ, որ տպ. Բանաս. 1901, 135։

— 42. Հասան, որի կինը Ռպուքան՝ դուստր մեծ իշխան Ելիկումի, նվիրաբերություններ է արել Մեծարանց վանքին 1265 թ.—Բանասէր 1901, 140։—Հմմտ. № 36։

— 43. Հասան կամ Հասնայ, Շիրանշահանց տնից, որդի Ուզի. իշխան Մեծկողմանց. Կեսարիայից բերել տվեց մի Աւետարան և նվիրեց Եղիշէ առաքեալի վանքին, 1266 թ.—Արցախ 227, Պատմ. Աղուանից 145։

— 44. Հասան, որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրած Արատէսի վանքի մոտ, 1266 թ.—Սիսական 145, Արրտ. 1888, էջ 773։

— 45. Հասան, որդի Մխիթարի և թոռն Խալաշահի (№ 1). եղբայրներն են Սարգիս և ...բէկ, քույրն է Թաճմելիք. պատարագ է ստացել Թանատի վանքում 1263—7 թվերին.—Սիսական 120։

— 46. Հասան, որդի Կարապետի, ազատ Սիւնեաց. հիշված է Տաթևի 1274 թվի մեծ արձանագրության մեջ.—Օրբ. կե. Manus. brit. mus. 295 ա, Սիսական 232, Շահխաթ. Բ. 354։

— 47. Հասան որդի Վասակի, իր եղբայր Ջուրջին Ուքանի հիշատակին կանգնեցրեց մի խաչքար Խաչենի Դահրաւ գյուղում, 1276 թ.—Արցախ 156։

— 48. Հասան, որդի և հաջորդ Քուրդ Բ մեծ իշխանի Արագածոտն գավառի, որի մոտ իջևանեց Հեթում Ա՝ իր ուղևորության ժամանակ «1254 թ»։ Մայրն է Խորիշահ Մամիկոնեան. եղբայրներն են Վաչէ և Դաւիթ. Վաչէն Երերունք գյուղի կեսը Հասանին էր նվիրել։ Կինն է Արուս խաթուն, դուստր Ուքանայ. որդին է Քուրդ Գ և թոռը Թէոդո(րո)ս Զրքին (№ 15)։ Արձանագրության մեջ կոչված է նաև Տայիր։ Մեռել է 1283 թ։—Կիր. ծզ. Զքր. սարկ. Գ. 15, 19. ZAPh 2, 48. Այրարատ 162, 170 և 171 (երեք Արձ.), 253—4 (ազգաբանական տախտակ), Շահխաթ. Բ. 102, 122։

— 49. Հասան, երկրորդ անուն մեծ իշխան Պռօշի †1284 թ. (տես անդ).—Կիր. ժ, ծը, ծթ։

— 50. Հասան հայր Խէրխանի (№ 2) և որդի Բաղաց Թագավորի. Թոռը Խէրխան մեռել է 1286 թ.—Խաղբակեանք 80 (միացնում է Հասան Գեռաքարեցու հետ. բայց սրա 6 որդիների մեջ չկա Խէրխան)։

— 51. Հասան Ա. ամուսին Դոփի, որ էր Զաքարէ սպասալարի և Իւանէ աթաբէկի քույրը։ Հասանի որդին է Ղարա Գրիգոր և սրա որդին էլ է՝

— 52. Հասան Բ. Դոփեան, իշխան Խաչենի, որդի Ղարա Գրիգոր (№ 377) մեծ իշխանի. տեր Ականի, Հանդաբերդի, Սոթից, Շաղվաքու, Ծարի էն. բայց ամենից ավելի սիրում էր իր հայրենի Ծար գյուղը, որ իբրև արյան գին և քաջության պարգև էր տրված (Ջեռ. Դաղեան, Ա. 89 ա)։ Սրա կինն էր Մամքան († 1298 թ), դուստր Քուրդ իշխանի, իսկ որդին էր Գրիգոր Բ Բարի (№ 418), որ ամուսնացավ Տարսայիճ Օրբելեան իշխանի դուստր Ասփայի հետ։ Հասանի կրտսեր եղբայրն է Տէր Յովհաննէս, իններորդ առաջնորդ Հաղբատի (1257—1334), որ տես առանձին։ Այս Յովհաննէսը շինել է Խաթրավանքում մի եկեղեցի, մասունքներով ու գրքերով ճոխացրել, կալվածներով ապահովել և հանձնել է իր ավագ եղբոր՝ Հասանին, 1024 թ! (ըստ Արցախ 194, ուր թվականը անշուշտ սխալ է)։ Հասանը իր կնոջ Մամքանի հետ հիշված է 1276 թվի արձանագրության մեջ (Սմբատեանց, Գեղարքունի 625=Սիսական 74).—սեռ. Հասանայ՝ Օրբ. կե.—Կրպտ. եպս.՝ Դոփեանք, էջ 44, 45, 60, 62, 64, 65, 75, 76. Հայապ. 529, Արցախ 166, 195, 196, 205—6, 405, 407. Շահխաթ. Բ. 362—3, 360, 364.—Ըստ Օրբ. ժմ. 30 մեռել է 1287 թ։ Հասան Ա և Բ, ինչպես նաև Գրիգոր Ղարա (№ 377) և Գրիգոր Բարի (№ 418) շփոթված են իրար հետ։ Մի դեպքում Հասան Ա. որդին է Դոփի, մյուս դեպքում ամուսին։ Այս վեճերի մասին տես Կարապետ եպս.՝ Դոփեանք, էջ 60 և մանավանդ Յովսէփեան՝ Խաղբակեանք, էջ 20, ուր լուծված է խնդիրը վերի ձևով։

— 53. Հասան, որդի Աւատարիկի և եղբայր Խոցադեղի (№ 7). իրենց հանգուցյալ եղբայր Մխիթարի հիշատակին մի հող են նվիրել Վայոց ձորի Ս. Ստեփանոս եկեղեցուն, 1292 թ.—Արձ. Սիսական 167։

— 54. Հասան կամ Ամիր-Հասան Ա, որդի Պռոշի՝ մեծ իշխանի՝ որդւոյ Վասակայ Խաղբակեան. սպարապետ էր «տանն Աւագի». այս է որ իբր «արքայ» հիշված է 1290 թվի մի խաչքարի վրա (Սմբատեանց, Գեղարքունիք 548)։ Կինն է Թաճեր (№ 3 և 4, որոնք միևնույնն են և հիշված 1286—1307 թվերին). Թաճերն էլ դուստրն է Ուքանի։ Հասանի որդին է Էաչի (ծն. 1268—73 թվերի միջև), որ ամուսնացավ Ելիկում Օրբելեանի դուստր Մամախաթունի հետ։ Պռոշի մահից հետո (1284 թ) Հա-

սանը ժառանգեց իր հոր իշխանությունը՝ իր եղբայր Պապաքի հետ, որ էր ավագ իշխանապետ։ Արձանագրություններում մեջ Հասանը հիշատակված է 1268—88 թվերին։ Մեռել է 1292 թվին, իշխանությունը թողնելով Ջաջի որդուն.—տես. Հասանայ՝ Օրբ. կե. հիր. ծր.—Այրարատ 268—9, 339, Սիսական 120, 121, 122, 137, 139, 156, 174, 176. Խաղբակեանք 20, 127, 129, 137, 141—2, 146—154, Նոտարք 192, Արրտ. 1889, 102. Շահխաթ. Ա. 51, 65, Բ. 365։

— 55. Հասան Դլեննեանց, մի մասունք ծախեց Ստեփանոս եպս. Օրբելեանին, 1294 թ.—Օրբ. հ։

— 56. Հասան իշխան Որոտնեցի, կինն է Վախախ. հայր Իւանէ իշխանի և Սարգիս արքեպիսկոպոսի. Յովհաննէս Որոտնեցու (Կախիկ) պապն է (ԺԴ դար).—Սիսական 217, Ազգապ. 1957։

— 57. Հասան Բ, եղբայր Գրիգոր իշխանի Խաչենեցւոյ, թոռն Գրիգոր Բաբի իշխանի (ԺԴ դար).—Բարխուտ. Արցախ 208, Պատմ. Աղուանից, Ա. 137։

— 58. Հասան, մի խաչքար է կանգնեցրել Ակոռիի Ս. Յակոբ վանքում, 1303 թ.—Այրարատ 471։

— 59. Հասան Տաւուշ, որդի Որդորի, թոռն Իւանի. վաղամեռիկ եղավ 1304 թ. Թաղված է շիրիմը Զոլախաչ գյուղում (Նոր-Բայազիդ).—Սմբատեանց, Գեղարքունի 546։

— 60. Հասան, որդի Վահրամ սպարապետ Շահունեցու, որ էր իշխող կամ պարոն Հերհերի. մայրն է Գոնցա (№ 2)։ Ըստ Ալիշանի ճյուղագրության (Սիսական 116) Վահրամի և Գոնցայի որդիքն են Թուխտին, Հասան, Ամադին և Ուքան։ Հասան և Ուքան իբրև դեռ երախա հիշված են 1283 թվին (Արձ. Սիսական 114, Արրտ. 1889, 322), ապա 1297 թ., երբ ավելանում է Ամադինը (Սիսական 112, Արրտ. 1889, 331)։ Ավելի ուշ՝ 1310 թ. Ուքան, Հասան և Ամադին հիշվում են իբրև պարոն Հերհերի։ Ըստ այսմ սխալ է թվականը (ՉՂԴ=1545) այն արձանագրության, որ գրում է Գոնցա, հայտնելով որ իր որդիքը Ուքան և Ամադին տղերաւք (տղայօրօք, մանկատի) մեռել են։ Ալիշանը (Սիսական 116) այդ թվականը ուղղում է ՉՂԴ=1345, բայց այս էլ դեռ ուղիղ չէ (տես Ամադին)։

— 61. Հասան, հայր Ջևանի, որի գերեզմանը գտնվում է Գանձակի Սուլուկ գյուղի մոտ, 1315 թվից.—Արցախ 270։

— 62. Հասան Բաւրէ, եղբայր Մանուէլ քահանայի, որ նորոգեց մի Աւետարան՝ գրված 1315 թ.—Տաշեան, ցուց. 934։

— 63. Հասան, *հայր Մամաքի՝ մօր Վախթանգի, որոնք մի ապարանջան և մի կալված են նվիրել Հերհերի Ս. Յովհաննէս եկեղեցուն, 1318 թ.—Սիսական 114։*

— 64. Հասան *մուղտսի Մերդինցի. գնեց ժԲ դարում գրըված մի հոյակապ Ճառընտիր, որ այլազգիները գերել և բերել էին Մերդին, ու նվիրեց Ս. Յովհաննէս* (թվին *կոչված) վանքին, 1377 թ.—Ջեռ. Վիեննա. Բ. 65։*

— 65. Հասան *Դ Դոփեան, Ծարեցի, իշխան Բջնիի. որդի Սարգսի և թոռնորդի Գրիգոր Բաքի իշխանի Խաչենոյ. իր երեք որդիներով (որոնք են Սարգիս, Աղբուղա և Շիրուանշահ) ըսպանվեց Լէնգթիմուրի ասպատակավորներից 1384 կամ 1387 թ։ Իր մահից հետո Դոփեան ցեղը բաժանվում է նրա երեք որդիղիների միջև (Շահանշայ, Աղբուղայ և Ջհանշայ) և կազմում է երեք ճյուղ.—Խլաթ. յիշ. 6. Հայապ. 529. Շահխաթ. Բ. 359. Արցախ 208. Ջեռ. Դաղեան, Ա. 89 բ, Կրպտ. եպս.՝ Դոփեանք 45, 56. Սիսական 37. ավելին տես Աղբուղա № 7։*

— 66. Հասան *որդի Դաւթին, իշխան Ծարի, կինն է Խոնձա (№ 3). մեռել են նախ քան 1411 թ. երբ հիշատակված են մի Ճաշոցի հիշատակարանում.—Նոտարք 39 (տես և Կրպտ. եպս՝. Դոփեանք 185)։*

— 67. Հասան *1450 թ. տես Ամիր-Հասան № 5 (Նոտարք 164)։*

— 68. Հասան, *մերձավոր Ներսէս գրչի, որ Աղթամարում օրինակեց մի Աւետարան 1461 թ.—Ջեռ. Վասպ. 437։*

— 69. Հասան-Բուղա, *հայր Գրիգոր եպս. Աշտարակեցու, որ էր գրիչ 1478 թ.—Այրարատ 274։*

— 70. Հասան, *որդի Վախթանկի և թոռն Սմբատ թագաւորազին. մայրն է Նանա. իր կնոջ՝ Ռուզուքանի հետ Ս. Գրքեր են նվիրել Գեղարդի վանքին.—Արձ. անթվ. (Այրարատ 340)։*

— 71. Հասան *Դեսումեանց, իշխան էր Խաչինում. սրա աղջիկն է Խաթուն, որ Խաչենից հարս եկավ և ամուսնացավ Զաքարիայի հետ, որ Գագի, Տաւուշի, Գարդմանի, Տէրունականի և ուրիշ գավառների տերն էր։ Նրա հետ եկան նաև Հասանի երկու որդիները՝ Սեննեքերիմ և Սևադայ, որոնք մեռան և թաղվեցին Հաղբատում։ Խաթունը նրանց հիշատակին շինեց Հաղբատի Ս. Աստուածածին եկեղեցին, որ զարդարեց սպասներով ու գըրքերով և կալվածներով ապահովեց՝ առաջնորդ Յովհաննէսի օրով (թվականը անհայտ է).—Արձ. Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 79, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 35։*

— 72. Հասան, իգ! կին Բաղիշեցի Մինասի, 1751 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 45 բ)։

*ՀԱՍԱՆՋԱՆ, ար. < նախորդ Հասան անունից+ջան փաղաքշականով։ Հիշատակված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Դադեան, Բ. 31 ա)։

*ՀԱՍԼՄԵԼԷՔ, իգ. բուն ձևն է Ասլիմելէք, որ նշանակում է «բուն իսկ հրեշտակ». տես Ասլիմելէք, որ գործածված է ԺԴ—ԺԵ դարերում։ Առաջին մասը՝ արաբ. aşlī «իսկական, հարազատ» շփոթվելով حاصل ḥāşil «առաջ գալ, արտադրվել» բառի հետ, վերածվել է Հասլմելէք կամ Հասլմելիք ձևին, որ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 187։

ՀԱՍՄԲԵՐ, ար. ծագումն անհայտ. ունինք միայն՝

— Հասմբեր, որդի Հասանի Շիրանշահեան՝ Մեծկողմանց իշխանի, որ Կեսարիայից բերել տվեց մի Աւետարան և նվիրեց Եղիշէ առաքեալի վանքին, 1266 թ.—Բարխուտ. Պատմ. Աղուանից 145, Արցախ 227։

ՀԱՍՈԻԽ, իգ? ծագումն ինձ անհայտ. գործածված է մի անգամ անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 572։

†ՀԱՏՄԵԼԷՔ, իգ. < հյ. հատ և արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից, իբր թե «հրեշտակի հատը՝ նմանը». հմմտ. Արեհատ։ Մի անգամ հիշատակված է ԺԵ դարում։

— Հատմելիք, կին Թորոսի և մայր Կիրակոս կրոնավորի, որ Եկեղեաց գավառի Կայիփոսի վանքում գրել տվեց մի Սաղմոս, 1470 թ.—Թորոս աղբ. Բ.էջ 305։

ՀԱՏՈՒՏ, իգ. ծագումն անհայտ. հմմտ. Խանտուտ. հիշված է մի անգամ Լազարեան Ճեմարանի Աւետարանի հիշատակութեանց մեջ (Թվականն անհայտ)։

†ՀԱՐԱԶԱՏ, ար. < հյ. հարազատ բառից. շինծու անուն. այժմ սկսվել է գործածվել Հայրազատ ձևով. մի անգամ ունինք՝

— Հարազատ, Թագավոր Հայոց. շինել է Հարսնմնաուր (այժմ կոչված Հիւսնիմանսուր) քաղաքը.—տե՛ս «Այս են քաղաքք և շինողք նոցին» ZAPh 1, 190։

ՀԱՐԱԿՈԲ, (կամ Համակոբ) ար. բուն ձևը, հետևաբար և ծագումը անհայտ։ Երկու անգամ գտնում եմ գործածված 1477 և 1481 թվերի խաչքարերի վրա (տե՛ս Շահազիզ, Ազգագր. հանդ. է, էջ 50 և 71)։

ՀԱՐԱՏ, ար. ծագումն անհայտ. հիշատակված է մի անգամ Ջեռ. Վենետ. Ա. 658 անթվական մի հիշատակության մեջ։

ՀԱՐԱՐ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշված է՝

— Հարար իշխան, Ուտի նահանգի ապստամբ իշխան Մովսէսի որդիներից մին, որ հիշում է Իբն —Հաուքալ արաբ պատմիչը, շուրջ 955 թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 461։

*ՀԱՐԲ, ար. գրված է նաև Հարպ ձևով և հիշատակված է Ժ—ԺԳ դարերում։ Փաղաքշական ձևն է Հարպիկ (տես վարը), որ հիշատակված է ԺԱ դարում։ Ըստ այսմ բուն ձևն է Հարբ, որի արևմտյան տառադարձությունն է Հարպ։ Ծագում է ըստ իս արաբ. حرب ḥarb անունից, որ բուն նշանակում է «կռիվ, քաջ, ռազմիկ»։ Այս անունով հայտնի արաբ անձնավորություններ՝ տես Կամուս, Ա. 105։ Բառիս նման է հնչում խարբ (հիշված է մի անձ 1026 թ.), որ ես համեմատել եմ թաթարական խարբ անվան հետ։ Բայց ԺԱ դարում թաթարական անուն մեր մեջ անսպասելի է. ուստի թերևս այս խարբ ձևն էլ նույն լինի հիշյալ Հարբ արաբական անվան հետ։ Նույն Հարբ անունից է ձևացած Հարբանճ, Հարբանց ազգանունը, որ գործածված է անթվական մի արձանագրության մեջ (Արցախ 365)։

— 1. Հարպ, տանուտեր Հայոց, միջնորդեց՝ որ Գագիկ Ա թագավորը «990—1020 թ» ազատի Մրենը հարկից։—Արձ. Շիրակ 139։

— 2. Հարբ, հայր Աւտասէրի ? որ մի հող է նվիրել Գոշավանքին, վանահայր Մարտիրոսի օրով.—Ազգ. հանդ. Ժ, 26 (Ըստ Ի. Ցարութիւնեանի Մխիթար Գոշի † 1213 թ. հաջորդի օրով)։

— 3. Հարբ, հայր Խալթի (իմա Խալաթ), որ շինեց Հաղարծինի Ս. Ստեփաննոս եկեղեցին, 1244 թ.—Արձ. Արցախ 368։

— 4. Հարպ, հայր Ելպէկի, որ Աստուածընկալի եկեղեցում մի խորան է շինել (թիվը անհայտ).—Բանաս. 1903, 31։

† ՀԱՐԿՆԻՈՐ, սեռն անհայտ. թվի իգական. <ժղ. հարկևոր բառից, որ նշանակում է «յարգոյ, յարգելի»։ Հիշատակված է ԺԳ դարում։

— 1. Հարկևոր, կին Մխիթարի, միասին նվեր են արել Արցախի Ծովքի վանքին և պատարագ ստացել 1217 թ.—Արցախ 342։

— 2. Հարկևոր, մայր Պետրոսի, որ Բագնայրին մի այգի է նվիրել և պատարագ ստացել իրայնոց համար (թիվը անհայտ).—Շիրակ 121։

ՀԱՐՄԱ, որ. ծագումն անհայտ։

— 1. Հարմա, կրտսեր որդի Հայկ նահապետի (կամ Արմենակի ?). հմմտ. Սեբ. էջ 5 «Կադմեայ թոռին խւրում, որդւոյ Արամանեկայ, եղբօր Հարմայի»։

— 2. Հարմա, որդի և հաջորդ Գեղամ նահապետի Հայկազանց. իշխել է ըստ Զամչ. Ն. Ք. 1858 թ.—ուղ. Հարմայ՝ Խոր. Ա. ե, ժբ. Սեբ. էջ 3, 6. Ուխտ. Ա. է, ժգ. Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. ժե (իսկ հրտր. Շահն. Հարմա). Մխ. այրիվ. 17, 46. Մին. համդ. 4, 5.—Հարմա՝ Ցհ. կթղ. բ. Շնորհ. վիպ. 133. Վրդ. է. Սամ. անեց. 11, 42, 43. Նհպտք. 88. Վրաց պղբ. Ա. 74.—Հարամ! Շիր. քրոն. 31.—սեռ. Հարմայ՝ Խոր. Ա. ժբ. Մագ. Թղ. ժթ.—Հարմեայ՝ Խոր. Ա. ե.—Հարմայի՝ Սեբ. 6. Ցհ. կթղ. բ. Սամ. անեց. 42. Մին. համդ. 5.—բցռ. ի Հարմայէ՝ Շնորհ. վիպ. 134.—գրծ. Հարամայիւ՝ Արծր. Ա. ա։

* ՀԱՐՈՒՆ, ար. <արաբ. هارون Hārūn անունից, որի մասին ավելի ընդարձակ տես Ահարոն։ Մեր մեջ Հարուն ձևը հիշված է ԺԶ կամ ԺԷ՞ դարում (Ջեռ. Դաղեան, Ա. 58 բ)։

* ՀԱՐՊԻԿ, ար. փաղաքշականն է Հարպ անվան, որ տես վերը՝ Հարբ ձևով։

— Հարպիկ, որդի Հաբէլի, տէր Արկնոյ. ունէր և երեք եղբայր (Դաւիթ, Լևոն, Կոստանդին). բոլորն էլ հունաց կայսեր վասալ էին։ Չարախոս մարդիկ ամբաստանեցին Մոնոմախոս կայսեր մոտ թե հայ իշխանները մտադիր են ապստամբել։ Կայսրը Պեռոս զորավարին ուղարկեց Պաղնատուն գավառը, որ սկսավ քանդել ու ավերել։ Բոլոր հայ իշխանները լսելով այս, հավաքվեցին, խորհուրդ արին և որոշեցին ամրանալ իրենց բերդերում և մարդ ուղարկել կայսեր մոտ՝ ցույց տալու համար իրենց անմեղությունը։ Թլպաղտոյ բերդի իշխանը՝ Թորոսակ, դրժելով իր երդումը, գաղտնի գնաց Պեռոսի մոտ և հայտնեց իշխանների խորհուրդը։ Այս լսելով մյուս իշխանները նույնպես գնացին Պեռոսի մոտ։ Միայն Արկնոյ չորս իշխանները՝ անտեղյակ դավադրությունից, մնացին իրենց բերդերում։ Պեռոսը արշավեց Արկնի բերդի վրա. բայց տեսնելով նրա ամրությունն ու բարձրությունը, սարսափեց։ Զայն տվեց բերդականներին թե «ով բերի Հարպիկի գլուխը, այս բերդը նրան կտամ և կայսեր մոտ մեծ իշխան կդարձնեմ»։ Հարպիկը կասկածի մեջ ընկավ և քունը փախավ աչքերից։ Երեք օր չքնեց. և ամենահավատարիմ մարդկանցից մի քանիսին վերցրած քաշվեց բերդի մի անկյունը։

Բայց հենց այս ամենահավատարիմ ընկերները դավաճանեցին նրան։ Հորդորեցին նրան որ մի քիչ քնի, խոստանալով լավ պահել բերդը. բայց հենց որ քնեց, գլուխը կտրեցին և Պեռոսին տարին։ Պեռոսը ցցեց գլուխը բերդի դեմ։ Հարպիկի եղբայրները երբ տեսան այդ, բերդի դռները բացին և լալով ընկան իրենց եղբոր գլխի վրա։ Պեռոսը բերդը գրավեց, երեք եղբայրներին մյուս իշխանների հետ ձերբակալեց և տարավ կայսեր մոտ, որ առանց քննության բոլորին էլ աքսորեց (1051 թ)։—Ուռհ. 110, 111. Մին. համգ. 119.—սեռ. Հարպկան՝ Ուռհ. 111, 112, 122.—Չամչ. Բ. 951—3։

Հաւան տես Հօրոյ։

† ՀԱՒԱՆԱԿ, ար. < ենթադրվում է հաւանել բայից, իբրև «դյուրահավան, շուտ հավատացող». հմմտ. զնդ. Zrazdātay անձնանունը, որ բուն նշանակում է «հավատացյալ»։

— Հաւանակ, նահապետ Հայկազն, հաջորդեց Սուրին, Ն. Ք. 1433 թ. ըստ Չամչ.—Խոր. Ա. ժթ. Կղկնտ. Ա. ժե (հրտր. Էմինի). Մագ. Թղ. ժթ. Սամ. անեց. 45. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 17, 50. Մին. համգ. 9.—Հավանակ՝ Վրաց աղբ. Ա. 74.—Հաւնակ՝ Կղկնտ. Ա. ժե (հրտր. Շահն.)—Հոնակ՝ Ցհ. կթղ. բ.—Յոնակ՝ Վրդ. է։

*ՀԱՒԱՍ, իգ. < պրս. هوس havas «իղձ, փափագ, ցանկություն» բառից։ Մի անգամ հիշված եմ գտնում 1571 թ. (Տաշեան, Ցուց. 1005) և մի անգամ էլ, անթվական մի խաչքարի արձանագրության մեջ՝ Արցախի Քարագլուխ գյուղում.—Արցախ, էջ 166։

*ՀԱՒԹԱՑ, իգ. < պրս. هفته hafta «եօթնեակ, շաբաթ»; բառից. հմմտ. Շաբաթ անունը։ Երևի սրա հետ նույն է Աւթա անունը, որ տես վերը։

— 1. Հաւթայ խաթուն, դուստր Հազարշահ Շիկրակեցու, 1313 թ.—յիշ. ИАН 1911, էջ 1300։

— 2. Հավթայ Կոնիռապատցի, օգնեց գնելու մի Աւետարան, 1435 թ.—Ջեռ. Թաւր. 13 ա։

† ՀԱՒԻԿ, ար. < հյ. հաւիկ «թռչնակ» բառից. հիշատակված է մի անգամ ԺԳ դարում։

— Հաւիկ ձեռնաւոր էր Գէշմարդ ամիրայի մոտ. վերացրել են Օշականի և այլ տեղերի հարկերը 1288 թ.—Ջքր. պտմ. Գ. 27, Շահխաթ. Բ. 79, Այրարատ 190։

† ՀԱՒՈՒԿ, ար. < հյ. հաւ «թռչուն» բառից. հմմտ. Հաւիկ: Գործածված է Ե—Զ դարերում։

— 1. Հաւուկ Կուկայառիճեցի, նշանակվեց Յունահայոց կաթողիկոս՝ Սահակի անկումից հետո «428 թ». Անատոլ զորավարի կողմից ուղարկվեց Պարսից թագավորի մոտ՝ խնդրելու համար որ Սահակին դնի կաթողիկոս, գոնե Յունահայաստանում, փոխանակ սուրբ Բրքիշոյի «432 թ».—Խոր. Գ. կե. Արծր. Ա. ժա։

— 2. Հաւուկ եպիսկոպոս Արշարունեաց, հաջորդ Թովմայի. մասնակցեց Դուինի երկրորդ եկեղեցական ժողովին «554 թ». գահակալել է 550—566 թ.—Գիրք թղ. ժէ. Զամչ. Բ. 374. Այրարատ 56, Տաշեան, Ցուց. 656։

— 3. Շատ ավելի ուշ հիշվում է Հաւուկ ոմն՝ թերևս ԺԶ դար.—Ջեռ. Սանաս. 1 բ։

† ՀԱՒՍԱՐ, իգ. < հյ. հաւասար բառի ժղ. հաւսար ձևից։ Մի անգամ հիշատակված է ԺԵ դարում։

— Հաւսար, կին Մաթէոսի և մայր Մաթէոս վարդապետի, որ էր առաջնորդ Սեբաստիոյ, 1489 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 239—240։

*ՀԱՒՐՏԱՆ, ար. գեղեցիկ պիտի լինէր, եթե ծագած լինէր հօր տան ձևից, իբր թե «հօր տան հարազատ զավակ», բայց ես կարծում եմ, որ պարզապես Յորդանան ձևի կրճատումն է։ Հիշված է մի անգամ 1588 թվից ուշ (Տաշեան, Ցուց. 736)։

*ՀԱՔԻՄ, ար. < արաբ. حکیم hakīm «իմաստուն» բառից, որ և ապա ստացել է «բժիշկ» նշանակությունը։ Հիշված է մի անգամ ԺԷ դարում (Սարգիս որդի Հաքիմի Ղրիմեցւոյ).—Ջեռ. Կես. ածած. 58 բ։

ՀԵԹՈՒՄ, ար. ծագումն անհայտ. անշուշտ օտար է, որովհետև հայերենով անբացատրելի է։ Օտար լեզուներից ունինք արաբ. حاتم Hātim կամ حطيم Hatīm անձնանունները, որոնց բուն նշանակությունն է «առջևի ատամները կոտրած» արմատը حطم hatm «առջևի ատամները կոտրել», Կամուս Գ. 578). հայտնի է օրինակ Հեթմ՝ Բուղայի թուրք զորավարներից մին (Արծր. Գ. ե)։ Կա նաև արաբ. حاتم Hātem անունը, որ բուն նշանակում է «դատավոր» (Կամուս, Գ. 422)։ Այս անունով հայտնի է Հաթեմ-ի Տայի՝ իր առատաձեռնությամբ առածի կարգ անցած։ Բայց ավելի հարմար եմ կարծում եվրոպական Othon անունը։ Մեր Հեթում անունը տառադարձված է արաբ. Հաթիմ, եվր. Հայթոն։—

Այս անունը գործածվել է մեր մեջ սկսած ԺԲ դարից և տևում է մինչև ԺԾ դարի վերջը։ Այնուհետև դադարում է։ Բայց մի անգամ էլ Հեթում անունը գտնում եմ 1640 թ. (Ձեռ. Հալէպի, Ա 107 ա)։

— 1. Հեթում Ա. սեբաստոս, որդի Օշինի և թոռն Հալկամի, տեր Լամբրոն բերդի. հունաց Ալեքս կայսրից ստացավ սեբաստոս տիտղոսը։ Երբ ֆռանգները եկան և գրավեցին Երուսաղէմը (1098), Հեթումը շատ նեղություն կրեց նրանցից. բայց հունաց Յովհաննէս Կոմնենոս (1118—1143) կայսեր օգնությամբ կարողացավ փրկել իր բերդը (Սիսուան 80)։ Մեռել է 1143 թվից հետո։—Պատմ. լմբ. 225. Հայապ. 345, 414.—սեռ. Հեթմոյ՝ Rapport Arm. 47, Պատմ. լմբ. 226.—Հեթումեանք (Լամբրոնին տիրող ցեղը) Սմբ. պատմ. 102.—Հեթմեանք՝ Պատմ. լմբ. 238.—Հեթմանք՝ Պատմ. լմբ. 241։

— 2. Հեթում «պատանի և մանուկ գեղեցիկ», որդի Վասլի, եղբայր Գրիգոր Դ. Տղայի. մեռավ պատանի հասակում, նախ քան 1174 թ.—Թորոս աղբ. Ա. 118։

— 3. Հեթում Բ. սեբաստոս, անդրանիկ որդի Օշին Բ-ի (դավաճանն)՝ տեառն Լամբրոնի, երեց եղբայր Ներսէս Լամբրոնացու. ծնվել է 1151 թ. Օշինը տվեց նրան Թորոս Բ-ին բբրև պատանդ, երբ դեռ 1 կամ 2 տարեկան էր և կնքված էլ չէր։ Թորոսը կնքեց նրան և նրա կայտառության ու խելքի պատճառով շատ սիրելով՝ փեսայացրեց իրեն և ամուսնացրեց իր Ռիթա անունով աղջկա հետ։ Օշին Բ մեռնելով «1169 թվին», Լամբրոնի իշխանությունը անցավ Հեթումին, որ գնաց հունաց Մանուէլ Ա կայսեր (1143—1180) մոտ և ստացավ սեբաստոսական պատիվը։ Շուրջ 1181 թվին կառուցել է մի եկեղեցի։ Ներկա էր Լևոն Բ-ի թագադրության հանդեսին («1199 թ»)։ Իբրև սեբաստոս իշխեց Լամբրոնում մինչև «1201 թիվը», երբ Լևոն Բ տիրեց բերդին և կալանավորելով նրան, դրեց Դրազարկ վանքը՝ Հեղի անունով։ «1210 թվին» Լևոնի կողմից պատգամավոր ուղարկվեց Օթոն Դ կայսեր և Իննովկենտիոս Գ պապի մոտ։ Այս նավարկության միջոցին թարգմանեց «Շարադրութիւն ինքնակալացն և հայրապետացն Հռոմայ» (Զարբ. Թրգմ. 647—8), որ է Նեղոսի Դոքսապատրի Գաւազանագիրքը (Հայապ. 114)։ Վերադարձին բերեց Անտիոքի գահաժառանգ Ռուբէնի թագը և օծման հանդեսը կատարվեց «1212 թ»։ Մեռավ Դրազարկի վանքում, 1212—8 թվերի միջև (Սիսուան 83)։—Կիր. լե. Սամ. անեց. շար.

144, 165. Սմբ. պատմ. 96, 101, 112—4. ՀԱ 1898, 246 բ. Հայապ. 414, 416. Պատմ. կիլ. 207. Պատմ. ռուբ. 216. Պատմ. լմբ. 226, 229.—սեռ. Հեթմոյ՝ Կիր. 63, լե. Սմբ. պատմ. 96, 113. Պատմ. լմբ. 226, 233. Լմբ. խորհրդ. պտրգի. տպ. Եմ. 1842, յոջ.—իր հիշատակարանը տես ՀԱ 1924, 111.—Հեթմեանք (իր ընտանիքը)՝ Սմբ. պատմ. 114.—Հեթմցի (Հեթումի ցեղը)՝ Սմբ. պատմ. 115.—Զարբ. Թրգմ. 464, 513, 607. Աթան. յոջ. ժղ. Սիսուան 81, 83, 504—5. Ձեռ. Վենետ. Ա. 557—8։—Թորոս աղբ. Բ. 389 հիշատակված է «Մեկնութիւն Յոհաննու յայտնութեան և Բանք պիտանիք Գրիգորի կաթուղիկոսի ի խնդրոյ Հեթմոյ Սեւաստի»։ Յայտնի չէ թե որն է այս Հեթում Սեւաստոսը և որն է Գրիգոր կաթուղիկոսը։ Հավանական եմ համարում, որ Գրիգոր Դ Տղայ կաթուղիկոսն է, որ գրել է Հեթում Բ Սեւաստոսի համար։

— 4. Հեթում Սասնեցի, որդի Զորտուանէլ Սասնեցու, եղբայր Շահնշահի. 1189 թվին գաղթեց Կիլիկիա և ամուսնանալով Ռուբէն Բ-ի Ալիծ աղջկա հետ, ստացաւ Լեոն Բ-ից Մսխըմնռավ «1193 թ».—Սմբ. պատմ. 105.—սեռ. Հեթմոյ՝ Սմբ. պատմ. 108. Սիսուան 441, 455, 456։

— 5. Հեթում իշխան, որին Լեոն Բ ուղարկեց Ներսէս Լամբրոնացու մոտ՝ հանդիմանելու համար նրա ընթացքը.—Լմբ. 213 (ըստ Ազգապ. 1514 Լամբրոնացու երեց եղբայրն է, տես №3)։

— 6. Հեթում տեր Մանաշ բերդի. ժամանակակից Լեոն Բ-ի. ներկա էր Լեոնի թագադրության հանդեսին, «1199 թ».—Սիսուան 76 (տարբեր է Ն. Լամբրոնացու եղբայր Հեթումից)։

— 7. Հեթում տեր Պապեռոնի, հայր Կոստանդին Պայլի, որ էր սպարապետ Լեոն Բ-ի և խնամակալ Զապէլ թագուհու.—սեռ. Հեթմոյ՝ Սմբ. պատմ. 118։ (Ասում է «զպարոն Կոստանդին, զորդին Հեթմոյ, Լամբրոնին տիրոջն, որ էր իւր աներ». այլուստ մենք գիտենք, որ Կոստանդին պայլի հայրն է Վասակ)։

— 8. Հեթում վարդապետ, ստացող Վենետկի № 1322 ձեռ. Ս. Գրքի. ըստ Ալիշանի պետք է լինի մատենագիր ԺԲ դարի (տես Սարգիսեան, Ներած. Եւագրի, էջ ՂԷ)։

— 9. Հեթում Զաւականց, մեծ իշխան, անդեկնոս Օշին մարաջախտի. հիշված է 1247 թ. իբրև «զխոհեմ այրն և զիմաստից իմաստակն զճարտասանն ի գործս ի բանս ի խորհուրդս յամենայն կողմ, մինչ գրեթէ և զգազանաբարոյսն և զթիւնաւորսն ի քաղցրութիւն փոխարկեալ ողոքական և հեզ շրթամբք իւրովք».—ՀԱ 1898, 247 ա։

— 10. Հեթում, եղբայր Ալիծի, որ հանգուցյալ կինն էր Ծոփքի († 1261 թ.) իշխանի Սարվանդի քարի և որի որդիքն են Կոստանդին, Սմբատ և Օշին. Ալիծը մեռել էր 1259 թվից առաջ.—Թորոս աղբ. Բ. 437։

— 11. Հեթում Գ. տեր Լամբրոնի, որդի Կոստանդին (№ 51) Լամբրոնացու, եղբայր Օշին մարաջախտի. նահատակվել է պատերազմում (1274 թվից առաջ). այս Հեթումի աղջիկներն են՝ Կիռան Թագուհին, որ ամուսնացավ Լևոն Գ-ի հետ՝ «1262 թ», և Ալիծ իշխանուհի՝ կին Փիլիպպոսի Իպլինեան՝ սենեսկալի Թագաւորութեան Կիպրոսի.—սեռ. Հեթմոյ՝ Գում. կիլ. 212, Սիսուան 85, ՀԱ 1898, 246 ա, 248 ա. Գովրիկեան, Դրանսիլուանիոյ Հայոց մետրապոլիսը, էջ 344=REA 10, 39։

— 12. Հեթում—Ստեփանոս, ծառայող Անդրիասանց (Բարձրբերդի) վանից, 1269 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 496, Սիսուան 150 ա։

— 13. Հեթում Ա թագավոր Կիլիկիոյ «1226–1270 թ». որդին էր Կոստանդին պայլի (№ 57), որ Լևոն Բ-ի սպարապետը և Զապէլ Թագուհու խնամակալն էր։ Երբ Զապէլի ամուսինը՝ լատին Փիլիպպոսը մեռավ բանտում («1225 թ»), Հեթումը ամուսնացավ Զապէլի հետ և Կիլիկիոյ թագավորական գահը բարձրացավ։ Գնաց Կարակորում՝ Թաթարաց Մանգոյ խանի մոտ «1254 թ» և կնքեց նրա հետ հարձակողական և պաշտպանողական դաշինք՝ Եգիպտացոց դեմ։ Հայ-Թաթարական միացյալ բանակը արշավեց Ասորիք, գրավեց Եդեսիա և Հալէպ քաղաքները և հասավ մինչև Երուսաղէմ, ուր Հեթումը անցկացրեց Զատկի տոները։ Թաթարները ետ քաշվելով՝ Հեթումն էլ ստիպվեց հրաժարվել իր նվաճած երկիրներից։ Ծերացած ժամանակ վանք քաշվեց Մակար անունով, ուր և մեռավ «1270 թ» (Ձեռ. Վեննետ. Բ. 235)։ Հեթումին է վերագրվում մի պարականոն շարական, որի ծայրանունն է «Հեթում տիրացու» (տես Ամատունի, Պարականոն շար. էջ 15)։ Հեթումի վեճը Ասորոց պատրիարքի հետ՝ եկեղեցապատկան հողերը խլելու մասին, տես Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 284—8)։—Հեթումի որդին և հաջորդն է Լևոն Գ։ Հեթումը ունէր նաև հինգ աղջիկ, որոնք են՝ Տամ Ֆիմի, Բրնձէս Սիպիլ, տիկնանց տիկին Թիթա (արդեն մեռած 1263 թ), Զապլուն և Մարիուն (Շահազիզ, Պատմ. պատկ. 119—120)։—Գում. տաբ. 220—222. Գում. լմբ. 241. Ցիշատ. (Karst, Դատաստ. էջ b). Մաղաք. աբ. 16, 17, 20, 22, 31, 37, 40—43, 45, 48. Մխ.

այրիվ. 20. Միխ. ատ. յիշ. Անանուն ժմ. 22, 24. Վահր. ոտ. 219, 220, 223—4. Սմբ. պատմ. 121—2, 124—5,136. Սամ. անեց. շար. 149, 151—2, 161—2. Պտմ. կիլ. 211. Գիրք Թղ. դդ. Օրբ. կր. Օրբ. ժմ. 24—27. Կիլ. է, լդ, լե, լթ, խա, խդ, խը, ծդ, ծէ. Վրդ. դ, դը, դդ, դթ. Միխ. ատ. իը (=իէ). յաւել. Մխ. այրիվ. 82, 83. Սկեռ. պատ. 69. Հեթ. պատմ. իգ, իը, լգ. ժմնկ. Ձեռ. օշ. 98 ար, 99 աբ. Մխն. համդ. 43, 44. Նհպտք. 104. Դրնգ. 305.—ձեռ. Հերմոյ՝ Կիլ. է, լա, լդ, լե, խա, ծգ. Պտմ. յյա. նելս. 45. ZAPh 1, 183. Վրդ. ձգ. Միխ. ատ. իը (=իէ). յաւել. Օրբ. կէ. Օրբ. ժմ. 27. Պտրգ. 695 ? Սկեռ. պատ. 1, 7. Անսիգք 3, 93. Վրդն. սղ. (վերնագիրը). Մաղաք. աբ. 17, 37, 49. Միխ. ատ. յիշ. Երզն. պտճռ. 84. Վահր. ոտ. 231. Սամ. անեց. շար. 148—9, 151—2, 161—2. Ձեռ. օշ. 98 ա, 99 աբ. Պտմ. կիլ. 211. Պտմ. ռուբ. 221. Պտմ. լմբ. 239, 242. Սմբ. դատ. 13. Դրնգ. 304—5. Մխն. համդ. 44. Ջուղ. 81, 82.—Հերումոյ՝ Վրք. շնորհ. 83.—Հերմայ՝ Կանոն. 177. Նհպտք. 101—5.--գրծ. Հերումաւ՝ Մաղաք. աբ. 19.—Ջարբ. Թրգմ. 156, 324, 360, 390, 558, 567, 569, 570, 738. Յովնանեան՝ Հետաղօտ. նախն. ոմկ. Ա. 48. Դարգել 16—24, 26. Սիսուան 144, 153. Ձեռ. Վենետ. Բ. 235 (տալիս է մահվան օրը). Schlumberger REA 1, 6 (խոսում է Հեթումի կտրած դրամների մասին).—Իր նկարը տես Սիսուան 232. Իր ստորագրության նմանահանությունը կարմիր թանաքով՝ տես Սիսուան 402.—Արձ. Սիսուան 73, 75, 216 ? 285. Արձ. (Երուսաղէմում) ՀԱ 1898, 57 (=Խապայեան, Բովանդ. ազգ. սեպհ. 98 և Պատմ. կամ ուղեց. Ս. տեղեաց 175. Յովհաննէսեան՝ Պատմ. Եմի. 187).—Ն. Շնորհալու միւռոնի շիշի կեղծ վկայականը՝ Հեթում Ա-ի անունով տես Թորոս աղբ. Բ. 352—3.—Իր հիշատակությունը Կոռիկոսի բերդի վրա 1258 թ. տես Սիսուան 336, 338. Ավելի հին (1228 թ) և վստահելի է Տարսոնի բերդի արձանագրությունը, որ հետեւյալն է (Սիսուան 270, Կիլիկիա 211, Տաշեան ՀԱ 1901, 309).

Ի ԹՈՒ. ՀԱՌՑ
ՈՀԷ. ՆՈՐՈԳԵՑ
ԱՒ ՊԱՐԻՍՊՍ ՏԱՐՍ
ՈՆԻ ՁԵՌԱԲ ԹԳ.
ՀԱՌՑ ՀԵԹՄՈՅ.

— 14. Հեթում, որդի Սմբատ Գունդստաբլի, եղբայր Լևոնի և Կոստանդնի, Հեթում Ա թագավորի եղբորորդին է. մեռել է իր հոր կենդանության ժամանակ՝ 1270 թ.—տես. Հեթմոյ՝ Անսիդք 93, Սիսուան 72։

— 15. Հեթում սարկավագ, գրիչ ի Կիլիկիա 1279 թ.—Տաշեան, Ցուց. 835. Թերևս նույն է և այն Հեթում սարկավագը, որ Իտալիայի Perugia քաղաքի հայոց Մատթէոս ավետարանիչ եկեղեցուն Լևոն Գ թագավորի կողմից նվեր ուղարկված Ավետարանի հիշատակարանը գրեց 1279 թ.—Հայապ. 485, Սիսուան 519, 546։

— 16. Հեթում, որդի պարոն Վասակի՝ տեառն Ճանճոյ, եղբորորդի Հեթում Ա-ի.—տես Վասակ։

— 17. Հեթում, անդրանիկ որդի Լևոն Գ-ի, տեր Լամբրոնի՝ 1285 թ.— Զարբ. Թրգմ. 156. Սիսուան 85։

— 18 Հեթում, ջանցլեր կամ պետական քարտուղար Լևոն Գ և Հեթում Բ թագավորների օրով, 1288 թ.— Սիսուան 485։

— 19. Հեթում քհ. գրիչ. իր ուսուցիչ Սմբատ Բաչկոնց քահանայի պատվերով օրինակեց Ավետարանը՝ Մամեստիայի Ս. Թորոս եկեղեցում, 1297 թ.—Թորոս աղբ. Բ. 347, Սիսուան 546։

— 20. Հեթում Բ. թագավոր Կիլիկիոյ. Լևոն Գ թագավորի որդին էր. ծնվել է 1265 թ. (Ջեռ. օշ. 99 ա). ձիավորության աստիճան ստացավ 1283 թ. (Բարխուտ. Արցախ. 39). մոր կողմից լինելով թոռն Լամբրոնի Հեթում Գ իշխանի, ժառանգեց նույն բերդը։ Նախ քան գահակալությունը ընդունել էր կաթոլիկ դավանությունը և ֆրանչիսկեան միաբան էր դարձել։ Առանց թագ ընդունելու դարձավ թագավոր, հաջորդելով իր հոր՝ Լևոն Գ-ի։ Արքայական գահ բարձրացավ ըստ Ջեռ. օշ. 100 բ ՉԼԷ=1288 թ. իսկ ըստ Ազգապ. «1289 թ»։ Աշխատեց լատինական ծեսը մտցնել հայ եկեղեցում՝ ընկերակցությամբ Գրիգոր Անավարզեցի Է կաթուղիկոսի (№ 391)։ Իր առաջին տարիներում՝ Եգիպտոսի Մելիք-էլ-Աշրաֆ սուլթանը արշավեց Կիլիկիա, գրավեց Հռոմկլան և Ստեփաննոս Դ կաթուղիկոսին գերի տարավ։ Հեթում հրաժարվեց գահից, նստեցրեց իր տեղ Թորոս եղբորը (№ 64) և ինքը վանք մտավ «1294 թ», ընդունելով Յոհաննէս անունը (Նհպտք. 106)։ Երկու տարի հետո դուրս գալով վանքից, նորից կառավարությունը ձեռք առավ։ Գնաց Թաթարաց Ղազան խանի մոտ՝ հին դաշինքը նորոգելու համար։ Վերադարձին իշխանությունը հանձնեց իր մյուս եղբոր՝ Սմբատին և գնաց Պոլիս՝ տեսակցելու իր քրոջ Մարիամի հետ, որ Հունաց

Անդրոնիկոս կայսեր Միքայէլ որդու կինն էր «1296 թ»։ Երբ դարձավ Կիլիկիա, Սմբատը չուզելով գահը ետ հանձնել, Հեթումին բռնեց, աչքերի լույսից զրկեց ու բանտ դրեց։ Հեթումի երրորդ եղբայրը՝ Կոստանդին (№ 96), զորքի գլուխն անցավ, Սըմբատին գահից գցեց և ինքը գահ բարձրանալով՝ Հեթումին բանտից արձակեց։ Այդ միջոցին Հեթումի աչքերը լավացան. իր տեսությունը վերստանալով՝ Հեթումը երկրորդ անգամ գահ բարձրացավ «1299 թ»։ Հաղթեց Դամասկոսի սուլթան Սուսամիշին և իրան էլ գերի բռնեց։ Միանալով Թաթարների հետ, արշավեց Ասորիք, բայց շուտով Թաթարաց խանը մահմեդականություն ընդունելով, Եգիպտացոց ու Թուրքերի հետ միացած, արշավեց Կիլիկիա և երկիրը ավերակ դարձրեց։ Հեթումը ստիպվեց կրոնական զիջումներ անել կաթոլիկներին, որի վրա ժողովուրդը դայրացավ և Թաթարների հետ միացած՝ սպանել տվեց թե Հեթումին և թե նրա որդի Լևոն Դ-ին «1307 թ»։—Որքան կրոնասեր, նույնքան և ուսումնասեր էր Հեթումը։ Դեռ փոքր էր (համբակ), երբ Կոստանդին կաթուղիկոսը գրել տվեց մի գեղեցիկ Ավետարան և նվիրեց նրան՝ 1267 թ. (Թորոս աղբ. Ա. 324—6)։ Թագաժառանգ ժամանակ (այն է 1287—8 թ.) գրել է տվել մի գեղեցիկ Ճաշոց, որ այժմ գտնվում է էջմիածնի Մատենադարանում (Շողակաթ 206)։ 1295 թվին Ստեփանոս (Գոյներիցանց) գրչին գրել է տվել մի Աստուածաշունչ (Շողակաթ 208)։ Այս Աստուածաշնչի հիշատակարանը մի երկար ոտանավոր է (226 տող), որ Հեթումի ինքնաձեռագիրն է։ Տպված է Արարատ ամսաթերթում 1869 թ. № 2, էջ 39—41, այս վերնագրով. «Ոտանաւոր բարեպաշտի Թագաւորին Հայոց Հեթմոյ Բ»։ Սկսում է հետևյալ ձևով.

Որ ծառայեալս եմ բիւր ախտից,
Կապեալ տոռամբ չար շղթայից.
Առ ի մեղաց գոլով տիրեալ,
Եւ ներհակաց ներքոյ անկեալ...

Պատմում է շատ համառոտ գծերով Ռուբինեանց տոհմի պատմությունը, ավելի ընդարձակ խոսում է Եգիպտացոց արշավանքի և Հռոմկլայի առման մասին, ապա Ծռազատկի տոնի մասին (1292 թ)։—Նույն 1295 թվին իր խնդրանոք (և ոչ թե Հեթում Ա-ի) Գէորգ Սկեռացին գրեց Մեկնութիւն Եսայեայ (Առաք. լծ. սահմ. 523, Սիսուան 103, Զարբ. հին դպր. 720)։ «1296 թվին»

ստացավ Փիլոնի մի օրինակ (տես Փիլ. իմաստ. յիշ. 105)։ Իր խնդրանօք են գրված Դրուատ սրբոց, Բերականութիւն և Լուծմունք Ս. Գրոց (Վարդանայ)։ Գր. Անաւարզեցին էլ գրել է երկու շարական, որոնց ծայրանունը Հեթումի անունով է (տես Պարականոն շար. 152—3)։ Ինքն է հորինել Ոտանաւոր վասն ծռազատկի (Հայապ. 114 և 517). Շարական Ս. Բարսղի և Շարական Տարադասի են (տես Տաշեան, Ցուց. 1106 ա), Որդւոց և Թոռանց Լուսաւորչին ի Հեթմոյ (Ձեռ. Վենետ. Բ. 1157)։ Հեթում թագավորի անունով է դարձյալ ձիաբուժական մի (կամ երեք) գիրք, որ նա (ըստ Ալիշանի Հեթում Ա՝ Սիսուան 32 ա և 487 ա) արաբերենից թարգմանել է տվել։ Այս գրքի մի մասը գտնվում է Պարիզի Bibl. nat.-ում և մի մասը Վենետիկում։ Մի հատված սրանից տպված է Բազմ. 1867 և Սիսուան՝ անդ։ Բայց կարծեմ թե այս գիրքը շփոթված է Սմբատ Գ-ի կազմել տված գրքի հետ (տես Թորոս Կիլիկեցի, № 62)։ Ասացինք թե Հեթումի կրոնական անունն է Յովհաննէս, որ ստացած պիտի լինի վանք մտած ժամանակ («1294 թ»), բայց Ձեռ. Միւնխ. 8 բ դնե 1292 թվին կոչում է նրան Յովհաննէս կրօնավոր. և այս անունով հասել է մեզ իր մի ձեռագիրը (Խրատ ոգեշահ և ճառք), որ արտագրել է 1297 թ. Հայելի գյուղում (Ձեռ. Կարին. 43)։ Հեթում Բ-ի ընտանեկան ժամանակագրությունը տես Bodleian 247, որ ընդգրկում է 1251—1293 տարիները։ Իր կենսագրությունը տես Փիլոնի յիշ. հտ. Բ. էջ 620։ Իբր սուրբ անցել է իտալական Յայսմաւուրքի մեջ. պատկերը՝ մնում է Վենետկի Ս. Յօբայ տաճարի վրա (տես նմանահանությունը Հայ-Վենետ. 82—83. իսկ իբրև աղօթաւոր՝ Հեթում Բ-ի նկարը տես Սիսուան 111)։ Կնիքը տես Հայապ. 520։—Սամ. անեց. շար. 153—5, 163-4,166, Պտմ. լմբ. 212. անանուն ժմ. 26—29. Օրբ. կէ, կթ. Օրբ. ժմ. 30, 31. Հեթ. ժմնկ. Ձեռ. օշ. 99—101. Վահր. ոտ. 236. Սմբ. պտմ. 125—7, 136, 165. Պտմ. կիլ. 212. Պտմ. ռուբ. 213. Մխ. այրիվ. 80, 84. Մին. համդ. 45—49, 140. Առաք. պտմ. 141, 320, 483. Յիշատ. (Karst, Դատաստ. էջ Ե). Նհպտք. 105.—սեռ. Հեթմոյ՝ Օրբ. կէ, հր. Սմբ. պտմ. 127. Սամ. անեց. շար. 155—6, 164, 166. Անանուն ժմ. 28. Պտմ. ռուբ. 212. Մին. համդ. 46—49, 140—1. Ջուղ. 83. Զարբ. Հին դպ. 785. Թրգմ. 728, 737—741.—Հեթմու՝ Նոր վկ. 117.—Հեթումոյ՝ Անանուն ժմ. 28.—Հեթմի՝ Սամ. անեց. շար. 154, 156.—գրծ. Հեթմիւ՝ Զարբ. Թրգմ. 390.—Զարբ. Նոր մատեն. 235—245. Հայապ. 499, 502, 516—524.—Տէր Սահակեան՝ Հայ

կայսերք Բ. 401, 404, 410 խոսում է Հեթումի դուստր Ռիթայի ամուսնության և Հեթումի այցելության մասին։—Մոտ է Կոստանդին Բ կաթողիկոսի 1293 թ. կազմած սրբոց ճառանց տոնափի մեջ (Սիսուան 107—112)։ Մի մասնատուփ էլ կազմել է ինքը, որի մասին տես Աղգագր. հանդ. Ա. 153։

— 21. Հեթում, որդի Օշին Լամբրոնացի մարաջախտի. հիշված է 1274 թվին իբրև «պատանեակ» (ՀԱ. 1898, 245—6 և REA 6, 170). հաջորդեց իր հոր՝ մարաջախտության պաշտոնում 1294 թ. ամուսնացավ Սիդոն քաղաքի լատին իշխան Ջուլիանի դուստր Ֆիմիի հետ, որ Հեթում Ա թագավորի դուստր Ֆիմիի թոռն էր։ Մարաջախտության պաշտոնը շարունակեց մինչև իր մահը՝ 1307 թ.—Սմբ. պատմ. 137, Սիսուան 85, 371 բ։

— 22. Հեթում միականի, հորեղբորորդի Լևոն Դ թագավորի. երկուսը միասին զոհ գնացին Թաթարաց Բիլարղու զորավարին, որ խարդախությամբ գրավեց Անարզաբա քաղաքը.— Դարդել 24—25 (շփոթում է Հեթում Ա և Բ իրար հետ)։

— 23. Հեթում, որդի Հայոց Գունդստապլի. մայրն է Զապլուն իշխանուհի, որ գրել տվեց մի Ավետարան, 1309 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1924, 519։

— 24. Հեթում պատմիչ, որդի Օշին պայլի՝ եղբոր Հեթում Ա-ի և թոռն Կոստանդին պայլի. տեր Կոռիկոս բերդի, սպարապետ Հայոց։ Ամուսնացավ Գուիտոն Իպլինեանի դուստր Զապելի հետ, որի մայրն էր Մարիամ՝ քույր Հեթում Ա թագավորի։ Հաջորդելով իր եղբոր Գրիգորին՝ նշանակվեց պայլ Հայոց թագավորության՝ 1287 թ։ Ուսումնասեր անձ էր. իրեն համար Ստեփանոսին գրել տվեց մի Տոմար «1287 թ» և մի Բժշկարան՝ Վարդ Մրտիչցիի ձեռքով «1294 թ» (Սիսուան 337)։ [Այս Բժշկարանը թարգմանված էր արաբերենից Ժ դարում, ըստ Ալիշան, Շիրակ 96 և Թորգոմեան, REA 6, 24]։ Իր եղբայր Օշինի հետ միացած ապստամբեց Հեթում Բ թագավորի դեմ 1293 թ. (Ձեռ. օշ. 100 բ)։ Սպարապետ կամ գունդստապլ էր 1294—1305 թ։ «1305 թվի» հաղթությունից հետո, երբ Հեթում Բ թագավորի և Օշին սպարապետի հետ ջարդուփշուր արին Եգիպտացոց բանակը, Հեթումը՝ նույն իսկ պատերազմի դաշտում ներկայացավ թագավորին, աղաչեց և իրավունք ստացավ հրաժարվելու զինվորական կարգից, և իր որդի Օշինին իր տեղը նշանակելով՝ գնաց Նիկոսիա և մտավ Պրեմոնստրատեանց (ordre de Prémontré) լատին կրոնական կարգը, Անտոն անունով «1305 թ»։ Հաջորդ տա-

րին «1306 թ» ուխտի գնաց Հռոմ, որտեղից «1307 թ» անցավ Ավինիոն՝ Կղեմէս Ե պապի հրավերով. և նրա հանձնարարությամբ գրեց իր ժամանակի Թաթարաց և Հայոց պատմությունը՝ հայերեն լեզվով. որ Նիկողայոս Սալկոնի (կամ Ֆալկոնի) անուն անձի օգնությամբ վերածեց ֆրանսերենի, հետո էլ թարգմանվեց լատիներենի։ Այս աշխատության հայ բնագիրը կորած է. ֆրանսերենը տպված է Paris 1517 „Les fleurs des Histoires de la terre d'Orient" վերնագրով (հեղինակը կոչվում է Hayton l'Arménien)։ Նույնը տպված է նաև 1529 և 1735 թվերին։ Լատիներենը տպված է 1529, 1532, 1555, 1585 և 1671 թվերին։ Կա նույն գրքի իտալերեն թարգմանությունը (տպ. 1535), հոլանդերեն թարգմանությունը (տպ. 1664), և անգլերեն թարգմանությունը, որ տպված է մի քանի անգամ։ Նույնը թարգմանված է նաև հայերեն՝ Հ. Մ. Աւգերեանի ձեռքով և տպված Վենետիկ 1842 թ։ Գրքի վերջում դրված է Հեթում պատմիչի ժամանակագրութիւնը (10 էջ), հայերեն լեզվով։ Ասում են թե Հեթումը ունի նաև «Մեկնութիւն Յայտնութեան» և ուրիշ կրոնական գրվածքներ։ Իբրև լատինամիտ հայ, բնականաբար հակառակ էր ազգային եկեղեցուն. ուստի իր դեմ գրված կան զանազան թղթեր։ Այսպես՝ «Թուղթ մեծին Եսայեայ վարդապետին և պատասխանի ընդդէմ պարոն Հեթումի Կիւռիկոսցւոյն՝ վասն կարգաց և կրօնից Հայ. եկեղեցւոյն և վասն դաւանութեան հաւատոյ» (Թորոս աղբ. Բ. 395)։ Նույն, թե մի ուրիշ ավելի ընդարձակ թուղթ էլ կա Եսայի Նչեցու անունով՝ Ձեռ. Վենետ. Բ. 732։—Հեթումը բնակվում էր Ֆրանսիայի Poitiers քաղաքի վանքում. մահվան թվականը հայտնի չէ։—Ձեռ. օչ. 101 ա. Հեթ. պտմ. խբ, (խդ), խզ.—սեռ. Հեթմոյ՝ Հեթ. ժմնկ.—Զամչ. Գ. 300. Սիսուան 337—340, Զարբ. Նոր մատեն. էջ 142—149. Թրգմ. 761—2. Հայապ. 113. Ազգապ. 1794.—Ձեռ. Թաւր. 15։—Հեթում պատմիչի մասին ավելացնում ենք նաև հետևյալ հետաքրքրական տեղեկությունը։ Հեթումի գործը թարգմանված կա երկրորդ անգամ իտալերեն, իտալացի Ramusio-ի ձեռքով, իր Navigationi et viaggi diveri աշխատության մեջ, տպ. Վենետիկ 1559։ Ramusio կոչում է նրան Hayton Armeno և համարում է figliuol del signor Curchi, parente del Re di Armenia «որդի տեառն Կուրկի (իմա Կոռիկոսի, որ այստեղ անձնանուն է դարձել), ազգական Հայաստանի թագաւորի»։ Ավելի հետաքրքիր է ֆլորենցիացի պատմիչ Giovanni Villani, որ իր Պատմության մեջ

խոսում է այս Հեթումի մասին և դարձնում է Հայոց թագավորի որդին, Թաթարների Ղազան խանը, երբ պետության գլուխը բարձրացավ, ուզեց ամուսնանալ ամենից գեղեցիկ աղջկա հետ, առանց նկատի առնելու ոչ նրա հարստությունը և ոչինչ։ Դեսպանները դուրս եկան որոնումներ անելու ամբողջ Արևելքում և վերջապես գտան Հայոց թագավորի աղջկան, որ իր գեղեցկությամբ և իր առաքինությամբ գերազանցում էր բոլորից։ Դեսպանները խնդրեցին նրա ձեռքը Ղազան խանի համար։ Հայրը ընդունեց, եթե դուստրը հաճեր։ Աղջիկը իմաստության մեծագույն ապացույցը տվավ, հայտնելով թե պատրաստ է իր հոր հաճելի լինել, միայն այն պայմանով որ ինքը ազատ լինի պաշտելու Տէրն մեր Յիսուս Քրիստոսին, իսկ իր ամուսինը կարող է մնալ հեթանոս։ Դեսպանները ընդունեցին։ Արքայադուստրը առաջնորդելու համար կազմվեց մի մեծ շքախումբ, իշխանավորներից և եպիսկոպոսներից բաղկացած։ Շքախմբի մեջ էր նաև Հեթում (պատմիչը), որ պիտի առաջնորդեր իր քրոջը։ Նոր թագուհին ծնեց մի երեխա, որ մի սոսկալի հրեշ էր և մարդկային ոչինչ չունէր։ Իմաստունները գտան, որ թագուհին պոռնիկ է և իր երախայի հետ պետք է կրակը գցվի։ Թագուհին պահանջեց իր համար խոստովանանք և հաղորդություն, իսկ երախայի համար մկրտություն։ Մկրտությունից հետո՝ երախան ամենագեղեցիկը դարձավ։ Մոր անմեղությունը ճանաչվեց, եղան մեծամեծ հանդեսներ, Ղազան խանն ու իր ժողովուրդը քրիստոնյա դարձան։ (Այս առասպելի մասին տես Soulier REA 9, 249—254)։

— 25. Հեթում քահանա, որդի Դաւթի, մեծարան Յովհաննավանքի, հիշված է 1318 թ.—Այրարատ 172։

— 26. Հեթում սպարապետ Հայոց, մասնակցեց Ատանայի կրոնական ժողովին «1317 թ». քաջությամբ վանեց Եգիպտոսի սուլթան Նասըրի հարձակումը 1319 թ։

— 27. Հեթում, տէր Նղրի, թագավորական ջամբռլայ (սենեկապետ), ատենապետ կամ գլխավոր արքայական դարպասիտորագրում է՝ Aytonus de Negrino (Նղրցի), Camberlanus et Gubernator regni Armenie, Aytonus dominus Nigrini, Capitanus Curie regis Hermenie.—Որդին էր Կոստանդնի (№ 92) և Թոռն Կոստանդին պայլի (№ 57). եղբայրներն են Գաղտին Նղրցի մարաջախտ և Վասակ։ Հեթումը լինելով երեցը՝ ժառանգեց հոր իշխանությունը։ Օշին թագավորի կողմից խնամակալ

կարգվեց մանկահասակ Լևոն Ե Թագավորին «1320 թ» Օշին ավագ պայլի և նրա եղբայր Կոստանդին Գունդստապլի հետ։ Այս Թագավորի (Լևոն Ե) օրով էր, որ «բարեպաշտ ծերունին և աստուածասէր իշխանն պարոն Հեթում Նղրցին ճանապարհորդեալ եղև յաշխարհն Եգիպտոսի վասն հանգստեան քրիստոնէից» 1327 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 396 բ)։ Իր վերջին դիվանական գրությունը 1331 թվից է (Սիսուան 412 ա)։ Մահվան թվականը հայտնի չէ։ —Սամ. անեց. շար. 157. Բրս. մրկ. 460. Ձեռ. Միւնխ. 29 բ. Դարդել 28. Զամչ. Գ. 317. Ազգապ. 1819, Սիսուան 412։ ‑Ըստ Դարդելի Հեթում ջամբոլայ (սենեկապան արքայի), եղբայր Պալտին սպարապետի, հայրն է Կոստանդին Ե Թագավորի (№ 147) և մեռել է «1356 թ».—Դարդել 59, 69. Սիսուան 560. Ազգապ. 1925։

— 28. Հեթում, պարոն և տեր Չլկնոցի. իր եղբայր Կոստանդինի հետ մեռավ Եգիպտացոց դեմ պատերազմում «1322 թ».—Սմբ. պատմ. 130։

— 29. Հեթում, որդի Օշին պայլի, որ էր փեսան Կոռիկոսի. մեռավ մանուկ հասակում, 1325 թ.—Սմբ. պատմ. 130։

— 30. Հեթում, տեր Կոռիկոսի. երբ Լևոն Ե Թագավորի սպարապետ Օշին սինիջալը գլխատվեց, Հեթումը ստացավ սպարապետության պաշտոնը (1329 թ). սրան էլ հաջորդեց որդին Կոստանդին.—Սմբ. պատմ. 137։

— 31. Հեթում սինիջալ հայոց թագավորության. Հեթում Նղրցու հետ (№ 27) ստորագրում է Լևոն Ե Թագավորի հրամանագրի տակ 1331 թ.—Սիսուան 412 ա, 485 ա (իբրև սինիջալ է դնում 1321—1331?թ)։

— 32. Հեթում, բնակվում էր Վենետիկում. հանցանքի համար դատի կանչվեց, բայց ազատ արձակվեց 1331 թ.—Հայ-Վենետ. 154։

— 33. Հեթում պարոն, եղբայր Գրիգոր կրոնավորի, որ Սիմէոն գրչին գրել տվեց մի Ճաշոց՝ Կիլիկիոյ Խողկրտի գյուղի համար, 1335 թ. երբ Հեթումը արդեն մեռած էր։—Սիսուան 119։

— 34. Հեթում քահանա, ապրում էր Երուսաղէմի Ս. Սիոնում, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 35. Հեթում, մերձավոր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը 1335 թ.—Նախորդից տարբեր անձ է.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 36. Հեթում, որդի Լևոն Ե Թագավորի († «1342 թ»).

մանկահասակ մեռավ հոր մահից առաջ.—Հայ-Վեննա. 127, Սիսուան 512 ա։

— 37. Հեթում, որդի Սիրունի՝ հորեղբոր Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում ստացավ մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 613։

— 38. Հեթում քահանա, որդի Վասիլի. հմուտ էր գրչագրական արվեստին. Նրա ցուցումներով Յովհաննէս դպիրը արտագրեց Աւետարանը՝ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում, Հեթումի որդի Աբրահամ քահանայի համար, 1357 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 613։

— 39. Հեթում, հայր Աբրահամ քահանայի Ծակաղբիւրցիտես նախորդը և Աբրահամ № 43։

— 40. Հեթում, քաջ զորավար Կոստանդին Ե թագավորի հայոց. հաջորդեց Լիպարիտ († 1370 թ) զորավարին։ Լևոն Զ-ի գերությունից հետո տիրեց Կանչի բերդին։ Իր քաջարի կնոջ՝ Զարմանուհու հետ կռվելով Եգիպտացոց դեմ, ձերբակալեց սուլթանի որդուն։ Գրիգոր անուն մի մատնիչ (№ 503) արձակեց նրան և սպանեց Հեթումին։ Սրա վրա Զարմանուհին մի խումբ քաջերով փախավ ապաստանեց Զէյթունի լեռները և 5 տարի այնտեղ թափառում էր։ Ապա լեռնականներից հավաքեց 300 քաջեր և իր Գէորգ (№ 96) որդու հետ գրավեց Կապանը և պաշտպանեց ժողովուրդը 65 տարի։ Հայոց վերջին սպարապետն է։ Կնոջը անունը մերթ գրված է Զարմանուհի և մերթ Զարմանդուխտ, որոնք վերևում (հտ. Բ, էջ 174) սխալմամբ իբրև տարբեր անձեր են նշանակված։—Սիսուան 184, 192, 227. Ազգապ. 1928։

— 41. Հեթում, «որ և Յոհաննէս կոչիմ». ստացող Աստուածաշնչի, որի գլխակարգությունը համեմատեց «Փռագի ջաբիստր»-ների հետ և տարբերությունները նշանակեց, 1384 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 5 ա։

— 42. Հեթում, որ Ռուբէնի հետ միասին պատգամավոր էր ուղարկված «Գիթխարացոց և Սասունցոց» կողմից՝ մասնակցելու համար այն խաչակրության, որ կազմել էր Հռոմի պապը Սուլթան Մէհէմմէդ Ֆաթիհի դեմ, 1459 թ.—Տոմաշէկ. Սասուն, էջ 57։

— 43. Հեթում Խաչենց, կոչված Սպիտակ երեց. Սսոյ Կարապետ կաթուղիկոսի կողմից նշանակվեց Լուսաւորչի աջի պահապան. սրանով սկսվեց Աջպահեանց գերդաստանը. մեռավ

«1470 Թվի» ժանտախտին.—Ազգապ. 2159, 2939, Սիսուան 535, 540, 545։

— 44. Հեթում, որդի Յովհաննէս քահանայի կանչ բերդի. Զարմանդուխտ դիցազնուհու ցեղից. հիշված է 1473 թ.—Սիսուան 184 ա։

ՀԵՂԱՆ, անստույգ անուն. մի անգամ հիշատակված եմ գտնում անթվական մի արձանագրության մեջ՝ Արցախ 166. «կողակից իմ Հաւասայ և Հեղան»։

*ՀԵՂԻ, ար. <եբր. עֵלִי ʽElī անունից, որ ծագում է թերևս עָלָה ʽlh «բարձրանալ» արմատից (Gesenius 591)։ Այս անունով հայտնի էր Հրէից դատավոր և քահանայապետ Հեղի՝ ուսուցիչ Սամուէլ մարգարէի (Ն. Ք. ԺԲ դար)։ Տառադարձված է հուն. Ἠλί (լատ. Heli), որից եմեր ձևը։ Այս անունը գործածական չէ եղած մեր մեջ. ունինք միայն՝

— Հեղի, կրոնավորական անուն Հեթում Բ սեբաստոսի, որ էր որդի Օշին Բ դավաճանի. տես Հեթում № 3. Հեղի անունով հիշված տես ՀԱ 1898, 246 բ, Զարբ. Թրգմ. 647—8, Հայապ. 415 և հատկապես իբրև թարգմանիչ «Շարադրութիւն հայրապետացն Հռոմայ» աշխատության, լատիներենից հայերեն, 1210 թ.—Չեռ. Վատիկ. (ՀԱ 1892, 247ա)։

*ՀԵՂԻՆԷ, իգ. <հուն. Ἑλένη անունից, որից նաև ֆրանս. Hélène, գերմ. Helena, անգլ. Helen, ռուս. Елена են։ Ըստ իս նշանակում է «նվիրական կողով, որ գեղեցիկ ծաղիկներով զարդարելով նվիրում էին Արտեմիս աստվածուհուն»։ Այս անունով նշանավոր է հնության մեջ Հեղինէ՝ կին Մենելասի, հույն իշխանուհի, աննման գեղեցկությամբ, որին առևանգեց Պարիսը և եղավ պատճառ Տրովադայի պատերազմին։ Քրիստոնեության ժամանակ հայտնի է Հեղինէ թագուհին, սրբուհի, մայր մեծն Կոստանդիանոսի. իրեն է վերագրվում խաչի գյուտը († 327 թ). անցել է Յայսմաւուրքի մեջ առասպելախառն պատմությամբ։ Գործածական է հնուց մինչև այժմ, բայց ոչ շատ յաճախ։ Փաղաքշական ձևն է Հեղուշ (Կովկասում)։

— 1. Հեղինէ թագուհի, կին Աբգար թագավորի Հայոց Եդեսիոյ. ամուսնու մահից հետո, Սանատրուկի հրամանով քաշվեց Խառան, ապա Երուսաղէմ, ուր մեծ սովի ժամանակ, իր ամբողջ գանձերը վատնեց, Եգիպտոսից ցորեն բերեց և բաշխեց սովյալներին։ Մեռավ ու թաղվեց Երուսաղէմի՝ դռան առաջ (42 թ)։ Նրա վրա կանգնեցրին փառավոր շիրիմ, որի համար Եւս. պատմ. Բ. 12 և Խոր. Բ. լե ասում են թե մինչև իրենց ժամանակ գոյու-

թյուն ուներ (Զամչ. Ա. 296)։—Խոր. Բ. լե. Ուխտ. Ա. խ.—սեռ. Հեղինեայ՝ Խոր. Բ. լե. Արծր. Ա.գ.—Հեղինեի՝ Արծր. Ա. գ, է. Կիր. իը։—Ըստ Լաբուբ. 10 Աբգարի կինն է Շղամաթ՝ դուստր Մեհրդատի, Խորենացին Հեղինէ անունը հանած պիտի լինի Յովսեպոսից, որ գիտե Հեղինե՝ կին Թագավորի Ադիաբենաց (Ալիշան, Լաբուբ. էջ 10, ծան.), քույր և կին Մոնոբազ Թագավորի Ադիաբենի (Կարրիէր, Աբգ. զրոյցը 104), քույր և կին Աբգար Թագավորի Եդեսիոյ (Դուրեան, Ազգ. պատմ. 124)։

— 2. Հեղինե, տիկին Հայոց Մեծաց, աղուանից ազգից, կին Գրիգոր իշխանի Մամիկոնեան (№ 39). ժամանակակից Սահակ կաթողիկոս Ձորափորեցու («677—703 թ»).—Կղկնտ. Բ. լը՝ Հիշված է Արուճ (=Թալիշ) գյուղում իր ամուսնու կառուցած եկեղեցու արձանագրության մեջ՝ 668.—ZAPh ?, 41, Շողակաթ 175, Բանաս. 1903, 27։

— 3. Հեղինե, կին Անձևացեաց Մուշեղ իշխանի. ամուսնու մահից հետո՝ ամուսնացավ Գուրգէն Արծրունու հետ, որով իշխանությունը անցավ նրան (Թ դար).—Արծր. Դ. ժե.—սեռ. Հեղինեի (այլ ձ. Հեղինեայ)՝ Արծր. Գ. ժե։

— 4. Հեղինե, կին Գուրգէն Արծրունու, տեառն Անձևացեաց, որ թարգմանել տվեց Սրքլմսեհի վկայաբանությունը 873 թ.—Ջարբ. Հին դպր. 531, ՀԱ 1937, 129։ (Կարող է լինել նախորդի հետ նույն կամ տարբեր անձ. հմմտ. Գուրգէն № 5 և 9)։

— 5. Հեղինե, դուստր հայազգի պատրիկ Ադրիանոս Սպերացու (տես այս անունը). ամուսնացավ հունաց Ռոմանոս Ա Լեկապենոս հայազգի կայսեր որդի Կոստանդինի հետ 941 թ. յունվ. 14, բայց մի քանի օրից մեռնելով՝ Կոստանդինը երկրորդ անգամ ամուսնացավ Մամոսեան ընտանիքին պատկանող Թէոֆանօ անունով օրիորդի հետ (941 թ. փետր. 2).—Ջամչ. Բ. 817. Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 484։

— 6. Հեղինե, կայսրուհի հունաց. Վաշտակ անուն հայ զինվորի թոռը և Ռոմանոսի դուստրն էր. պապը պատերազմի մեջ ազատելով Վասիլ Արշակունի կայսեր կյանքը, իշխանական պատվի էր հասել. իսկ նրա որդի Ռոմանոսը նախ ծովակալ էր դարձել, ապա Պոլիս մտնելով՝ իրեն կայսր էր հրատարակել, առանց սակայն վտարելու օրինական կայսր՝ Կոստանդին Է Պերփիւռուժէնին, որ այն ժամանակ 14 տարեկան էր։ Կոստանդինը տեսնելով այս Հեղինէին, որ ուսյալ, առաքինի և գեղեցիկ մի օրիորդ էր, սիրահարվեց և ամուսնացավ նրա հետ, թեև նա իր

թշնամու աղջիկն էր (919 թ)։ Շատ ծանր էր Հեղինէի դերը մի կողմից իր հօր, որ իրեն ստորակարգ վիճակի մէջ էր դրել մյուս կայսրուհիներից, և մյուս կողմից իր ամուսնու՝ Պերփեռուժէնի միջև, որ պաշտում էր նրան և նրա ակնարկներին անգամ հնազանդում էր։ Հեղինէն բռնեց իր ամուսնու կողմը։ Համոզեց իր երկու եղբայրներին (Կոստանդին և Ստեփաննոս), որ իրենց հօր աքսորեն։ Երբ Ռոմանոսը հիվանդ պառկած էր, փոխադրեցին նրան Պրոտի կղզին և մի վանքում փակեցին (944 թ)։ Այնուհետև երկու եղբայրները դավադրություն կազմեցին Պերփեռուժէնի կյանքի դեմ. բայց Հեղինէն կանխեց նրանց և ճաշի հրավիրելով՝ երկուսին էլ փակեց վանքերում։ Պերփեռուժէնը թագավորեց 15 տարի էլ (944—959), բայց առանց գահակցի, միայն Հեղինէ կայսրուհու մշտական գերիշխանության տակ։ Հեղինէն ունեցավ մի քանի աղջիկ և մի տղայ՝ Ռոմանոս Բ անունով։ Ծնողները մեծ ջանք թափեցին տալու նրան ընտիր դաստիարակություն։ Բայց զուր։ Ռոմանոսը ամուսնացավ մի գինեպանի Թէոփանօ անուն աղջկա հետ, իր հօրը՝ Պերփեռուժէնին թունավորելով սպանեց (959), քույրերին վանքի մէջ փակեց և իր մօրը աքսորի դատապարտեց։ Երբ Հեղինէն լսեց այս վճիռը, ներկայացավ իր որդուն և նրա անբնական ապերախտությունը այնպիսի կրքոտ ճարտասանությամբ կշտամբեց, որ նա իր վճիռը ետ առավ։ Այնու ամենայնիվ այս վերքը շատ ազդեց նրան և երկար ժամանակ չանցած մեռավ սրտի ցավից (961 թ)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 78—79, 104, 375—8։

— 7. ՀԵՂԻՆԷ, կին Գրիգոր քահանայի և մայր ԺԴ դարի նշանավոր ծաղկող ու նկարիչ Սարգիս Պիծակի. այր ու կին մեռած էին նախ քան 1325 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 30, Շողակաթ 212, Սիսուան 234 բ, 236։

— 8. ՀԵՂԻՆԷ, կինն է Գրիգոր քահանա գրչի, որ օրինակեց Աւետարանը Սեբաստիայում, 1307 թ.—Շողակաթ 210 (Նախորդից տարբեր ամուսիններ են)։

— 9. ՀԵՂԻՆԷ, կին Արղուանի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան Յովհաննէս գրչին, 1482 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 84 բ)։

— 10. ՀԵՂԻՆԷ պարոն! որի հիշատակին մի խաչ է կանգնեցրած Նոր-Բայազետի մի հին գերեզմանի վրա, 1548 թ.—Սիսական 44։

— 11. ՀԵՂԻՆԷ ապաշխարող, կին գրիչ. օրինակել է Իգնա-

տիոս վարդապետի «Մեկնութիւն Աւետարանին Ղուկասու». դըժբախտաբար թվականն անհայտ.—Ձեռ. Կարին. 157։

— 12. Հեղինէ հիշված է նաև 1657 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 547։

† ՀԵՂՆԱՐ, իգ.<ժղ. եղնար «էգ եղնիկ» բառից. հիշված է 1653 թ. (Թորոս աղբ. Ա. 121). նաև անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Նոր-Բայազ. 39ա։ Կա նաև Եղինար 1701 թ. (Bodleian 207)։ —Տես նաև Եղնար։

ՀԵՄԵՖՏՈՒ, իգ. ձևն ու ծագումը անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Հեմեֆտու, դուստր Կիրակոսի և քույր Երեմիա քահանայի. դրամով օժանդակեց իր եղբոր՝ օրինակել տալու համար Գէորգ Սկեռացու Մեկնութիւն Եսայեայ գործը, որի համար Լևոն գրչին վճարեց 40 դրամ, 1295 թ.—Մխսուան 103 (գրված է սեռ. Հեմեֆտուոյ. ուղղականը ինչպես էր)։

Հեճրի տես Հերի:

ՀԵՇԱՅ, ար. որ և Խեշա. ծագումն ինձ անհայտ. թվի ասորական անուն։

— Հեշայ, որդի Աղձնեաց Բակուր բդեշխի. Մանաճիհր Ռշտունին ձերբակալեց և ուղարկեց Խոսրով Բ-ին («330—339 թ»).—Խոր. Գ. է։—Ըստ Բուզ. Գ. Թ կոչվում է Խեշա (մի ձ. Խեչա), որ բդեշխի կոտորածից փախչելով՝ ապավինեց Վաչէ սպարապետի մոտ և մեծանալով ժառանգեց իր հոր տունը։

† ՀԵՊՁԱՆ, ար. (ըստ իս ծագում է Հայրապետ-ջան ձևից կրճատմամբ). մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 273։

ՀԵՋԻԿ, իգ. ծագումն անհայտ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Հեջիկ (հողով Հեջիկն, սեռ. Հեջկանն) երիցակին Մատթէոս քահանայի, միասին նվերներ են արել Հաղբատի վանքին (թվականն անհայտ)։—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 31։

*ՀԵՋՈՒԲ, ար. < արաբ. حاجب hājib «թագավորի սենեկապանը, արարողապետ». իբրև հասարակ անուն գործածված է զանազան ձևերով. արևմտյան տառադարձությամբ էլ կա հեճուպ, հեճեպ, հեճէպ. մինչև անգամ տեղափոխությամբ հէպեճ. ինչ. Ցովհաննավանքի 1300 թվի մի արձանագրության մեջ հէպեճ Դաւիթ (քիչ հետո սեռ. հէճուպին) (Ջքր. պատմ. Գ. 20, Շահխաթ.

Բ. 103, Այրարատ 171)։ Դարձել է անձնանուն և գործածված է եղել ԺԴ—ԺԷ դարերում։

— 1. Հեջուբ, հայր Սմբատի, որ Հասան Ջալալդովլայի († 1261) հրամանով մի այգի է վաճառել Գրիգորին, որի համար էլ մի արձանագրություն է գրել Խաչենի Մեծարանց վանքում (անթվական).—Բանաս. 1901, 135։

— 2. Հեջուբ, հայր Մուշեղի, որ նվիրներ է արել Մեծարանց վանքին, 1293 թ.—Բանաս. 1901, 142, Արցախ 171։

— 3. Հեճուպ, իր կնոջ Անփիփայի հետ միասին նվերներ են արել Վանեվանից եկեղեցուն, 1320 թ.—Սիսական 62, Սըմբատեանց՝ Գեղարքունի 568։

— Ավելի ուշ հիշված է Հէճուպ՝ 1511 թ. (Ջեռ. Վասպ. 645) և Հեջուբ՝ 1662 թ. (Tübingen 23)։

**ՀԵՐԱԶԱՆԴ**, իգ. ծագումը ինձ անհայտ (բայց գուցե Հնազանդ անունից տարանմանությամբ)։ Մի անգամ ավանդված է՝

— Հերազանդ, կին Սիրատանի. օգնեց մի Ավետարան գնելու, 1375 թ.—Տաշեան, Ցուց. 277։

***ՀԵՐԱԿԼԷՍ**, ար. հուն. Ἡρακλῆ անունից. այսպես էր կոչվում Զևսի որդին, որ արիի մարմնացումն է, միևնույն ժամանակ հզոր ուժի. որից ֆրանս. Hercule. կա և հունաց հայազգի կայսր Հերակլ Ա (610—640, որ հին ձևով ասվում էր Հերակղ (բառավերջի լ՝ բաղաձայնից հետո գրվում է միշտ ղ. ինչ աստղ, արկղ, Պրոկղ են)։ Հնից ավանդված է մի անգամ. անցյալ դարում գործածական էր Պոլսում (Հերակլէս ձևով), բայց շատ քիչ անգամ։ [Հները Ἡρακλῆς անունը մեկնում էին Ἥρα (Հերա աստվածուհին, Զևսի կինը)+κλέος «հռչակ, համբավ, քաջագործություն» բառերից]։

— 1. Հերակլ պատրիկ, կառավարիչ Հայաստանի 594 թ. ապա եղավ էքսարխոս Աֆրիկէի. Կապադովկացի հայ ազնվականներից և թերևս ազգական Մօրիկ կայսեր։ 60 ամյա ծերունի էր, երբ Բիւզանդական Աֆրիկէի փոխարքա նշանակվեց, իրեն տեղակալ ունենալով Գրիգոր եղբորը։ Հերակլ ծերունին, որդին Փլաւիոս Հերակլ, եղբայրը Գրիգոր և սրա որդին Նիկիտաս գրեթե կես դար կառավարեցին Եգիպտոսը՝ խաղաղ ու բարգավաճ մինչև Արաբների արշավանքը։ Հաստատվելով Կարքեդոնում՝ նրանք մեծ ժողովրդականություն էին վայելում։ Երբ Փոկաս կայսեր (602—610) բռնությունները անտանելի դարձան, Պոլիսը ամբողջ հրավիրեց Հերակլին, որ գա տապալի կայսրին։ Հերակլ

լսեց հրավերը և բանակն ու նավատորմիղը շարժման մեջ դրավ։ Գրիգորի որդին՝ Նիկիտաս ցամաքի ճամբով արշավեց Եգիպտոս, տիրեց Ալեքսանդրիային, ապա Սուրիայից և Պաղեստինից անցնելով արշավեց Պոլիս։ Փլաւիոսը Աֆրիկեան նաւատորմիղով Պոլիս հասավ և տապալեց Փոկաս կայսեր, որ իր գործակիցներով զոհ գնաց ժողովրդի կատաղության։ Ծերունի Հերակլը մերժեց իրեն առաջարկված կայսերական գահը, որ թողեց իր որդի կրտսեր Հերակլին։ Ինքը պահեց իր վրա Աֆրիկէի փոխարքայությունը և մեռավ 611 թվին, իրեն հաջորդ կարգելով եղբորը՝ Գրիգորին։ Սրա իշխանությունը վերջ գտավ 640 թվին՝ Եգիպտոսի արաբական գրավումով և Բյուզանդական Աֆրիկէի անդարձ կորուստով (648)։ Պոլսում հայ Հերակլեան հարստությունը փառքով գահակալեց 5 սերունդ և 85 տարի իշխեց Բյուզանդական գահի վրա, տալով մի քանի կայսր, շատ զորավարներ և կառավարիչներ՝ Եփրատից մինչև Դանուբ, Ռավեննա և Սիկիլիա։— Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Ա. 394—5։

— 2. Հայրակղ կամ Հարակղ ազատ, որ իր ընտանիքի հիշատակին կանգնեցրել է Ս. Սարգիս անունով մի խաչքար՝ Նոր-Բայազիտի ձորամիջի գերեզմանատան մեջ, 1000 թ. (այս խաչքարը այժմ փոխադրված է քաղաքի Գյուղացու տան թանգարանը)։ Արձանագրությունը հետևյալն է.

† ի թվականութեան
Հայոց ՆԽԹ ի թագաւորութեան Գ
(ագ)կա ես Հայրակղ կագնեցի ս
(ու)րբ Սարգիս յաւ(ա)նականութի
(ւ)ն ինձ և ամուսնին և որդեացս իմ. որ կ
(արդ)ա, զիս յիշցե. ես Հարակղ ազատ
. . . բարաթա . . . ի հոգամասն եր . . .
. . . . . ս փառ . . . բազում մե . . .

(տես Տեղեկ. գիտութ. և արվ. Ինստիտ. № 2, էջ 218)։

[ՀԵՐԱՏՈՒԿ, նշանակում է «մազերը կտրած» և նախատական ածական էր կանանց համար։ Այս մեկնությունը գիտե Justi 129, բայց սխալմամբ կարծում է որ Ստեփաննոս Սիւնեցուն սպանող կնոջ անունն է. մինչդեռ պատմիչը ասում է. «Իսկ կինն հերատուկ շարժեալ ի կատաղի բոցոյ ցանկութեանն» (Ստեփ. Օրբ. տպ. 1911, էջ 140)։]

*ՀԵՐԻ, ար. < անգլ. Harry անունից, որ և ասվում է

անգլ. Henry, ֆրանս. Henri. բոլորն էլ ծագում են գերմ. Heinrich անունից։ Սովորական անուն էր Եվրոպայում Ժ դարից սկսած. կան այս անունով բազմաթիվ թագավորներ, որոնցից նշանավոր է Գերմանիոյ կայսր Հենրիկոս Զ, որ թագ ուղարկեց Լևոն Բ-ին (1198—9 թ)։ Կիլիկիոյ հայերը Եվրոպացոց էլ կոչում էին Հերի ձևով (փոխանակ Հենրի)։ Կա նաև գրված Հեռի (Տաշեան. Ցուց. 1106 բ)։ Այժմ գործածական չէ։

— 1. Հերի կամ Հեռի, պարոն, տեր Աչէ բերդի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111 (այս բերդի անունը Սիսուան 196, 244, 471 գրում է Անէ)։ Այլ անձ է և օտար՝

— 2. Հերի, պարոն և սևաստոս, տեր Նոր բերդի և Կամարտիասի, ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին («1199 թ»).—Սմբ. պատմ. 113.—Նույն անձն է, որի համար Սամ. անեց. շար. 146 ասում է թե «1209 թ. թագաւորն Հայոց Լևոն կալաւ զսեւաստն Հեռի որդօքն» (տպ. Սևաստն հեռի)։ Այդ որդիներն էին. Կոստանդ, Ճօսլին և Պաղտին, բոլորն էլ Կամարտիաս կամ Խումարտաշ տոհմից (Սիսուան 285, 287, 447, 471, 506—7։ Այս Հերին հույն էր կամ լատին և հունաց կայսրից ստացել էր իր պաշտոնը և աստիճանը։ Բայց նա խնամացել էր հայոց հետ և մտել Լևոն Բ-ի ծառայության։ Կոստանդը Լևոնի կողմից գնացել էր դեսպան Ֆրեդերիկոս կայսեր մոտ. Հերին ամուսնացել էր Յովհաննէս Մեծաբարոյ կաթուղիկոսի քրոջ հետ և Կոստանդ, Ճօսլին և Պաղտին նրա քեռորդիներն էին։ Լևոն թագավորը գժտվելով նրանց հետ՝ բոլորին էլ բանտարկել էր, որի համար և գժտվեց Յովհաննէս կաթուղիկոսի հետ և նրան դահընկեց արեց։ Բանտում մեռավ Կոստանդը, թերևս նաև Հերին. իսկ Ճօսլին և Պաղտին արձակվեցին Հեթում—Հեղիի բարեխոսությամբ։

— 3. Հենրի անունը շատ ավելի ուշ գործածված եմ գտնում 1635 թ. այն էլ Նոր-Ջուղայում և տեղական խ հնչումով՝ «Խոճայ Խենրի» (Ջեռ. Դաղեան, Ա. 104 ա)։

†ՀԵՐԻՖ, իգ. < հյ. հերիֆ «բավական» բառից, ինչպես ունինք նաև հյ. Բաւական, թրք. Եքար և Basdi, որ նշանակում է «բավ է»։ Բոլորի բացատրությունը տես Եքար, որ գործածված է մեր մեջ ԺԶ դարից սկսած. Բաւական անունը հնից չի ավանդված և այժմ միայն գործածվում է. իսկ Հերիֆ ավանդված է ԺԴ դարից, ուստի և հնագույն ու բոլորից անկախ ձև է։ Բայց այժմ

-ունինք նաև ჰერიჭნაზ, որի կրճատն է ჰერიჭ, որ այսպեսով առանձնանում է բուն և հնագույն ჰერიჭ ձևից։ Գրված է նաև ჰერიჭაჲ, ჰერიჭე, ჰირეჭ, բարբառային ձևերն են՝ ხერეჭ, ხერიჭ։

— 1. ხერიჭთიკინ, հայրս Շահնշահի, որ Գողթան գավառի Կողատուսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Ավետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

— 2. ჰჱრიჭ տիկին, կին Բուրդամիրի, մայր Արզումանի, որ Ոստան քաղաքում նորոգել տվեց մի հին Ավետարան, 1386 թ.—Ձեռ. Վասպ. 117։

— 3. ჰერიჭ տիկին, կին Աբրահամի և մայր თუმაჲ կրոնավորի (№ 114), 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 4. ხერიჭ, կին Խուսէն բէկի և մայր Հայրապետ կրոնավորի, որ գնեց մի Ավետարան և նորից կազմել տվեց մահտեսի Ներսէսի ձեռքով՝ 1431 թ.—Նոտարք 97։

— 5. ჰერიჭ, դուստր Հուռումի և քույր Յովհաննէս քահանա Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 բ։

— 6. ჰირიჭაჲ, կին Յովհաննէսի և մայր Ստեփաննոս գրչի, որ Յովհաննէս արեղայի պատվերով օրինակեց Ավետարանը՝ Տարօնի Եղերդուտ վանքում, 1463 թ.—Նոտարք 215։

— 7. ჰერიჭ, տնտես Աշտաձորի Անկիւնեաց վանքի, ուր Թուղթ էլ էր կոկում, նշայում և օգնում Զաքարիա գրչին՝ օրինակելու Ավետարանը, 1477 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 220)։

— 8. ხერეჭ (կամ Խերէք), կին Կարապետի և մայր Խոսրովի, որ Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Ավետարան, 1478 թ—Ձեռ. Վասպ. 485—6։

— 9. ხერეჭ, կին Գուրջիբէկի և մայր Ատոմ կրոնավորի՝ հորեղբոր Բաղիշեցի Կիրակոս երեցի Հարջոշենց, որ մի Ավետարան է նվիրել եկեղեցուն, 1487 թ.—Ձեռ. Վասպ. 115—6։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են ჰირიჭაჲ 1503 թ. (Ձեռ. Վասպ. 621), Խէրիք 1509 թ. (անդ 637), Խէրէք 1585 թ. (անդ 699 և 704), Խէրէք 1588 թ. (անդ 709), ჰერეჭ 1613 թ. (անդ 846), Հերիքէ 1677 թ. (Թորոս աղբ. Բ. 454). Չեմ հիշում մնացյալ հիշատակությունները ԺԷ և ԺԸ դարերից, որոնց վերջինն է՝ ჰერიჭაჲ 1769 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 688)։ Անսովոր ձևեր են ჰერიჭნაზ՝ թվականն անհայտ (Թորոս աղբ. Բ. 367) և ჰერი՝ 1533 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 717)։

+ՀԵՐԻՔԵՆ, իգ. ըստ իս փաղաքշականն է նախորդ ჰერიჭ

անվան (փխ. Հերիֆիկ)։ Հիշատակված է մի անգամ ԺԶ—ԺԷ դարում (Տաշեան, Ցուց. 546)։

† ՀԵՐԻՖՄԱՄ, իգ. < հյ. հերիֆ և մամ բառերից. «իբր թե մնա որ հերիքում կամ օգնում է մամին կամ մորը»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Հերիֆմամ, աշխատավոր կին, որ հաց էր թխում և ջուր բերում Աշոտաց երկրի Անկինաց վանքում, երբ Զաքարիա գրիչը օրինակում էր Աւետարանը, 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588։

† ՀԵՐԻՖՆԱԶ, իգ. < հյ. հերիֆ+նազ բառերից, իբր թե «հերիք ինչքան նազ ես անում»։ Հիշատակված է ԺԷ դարից սկսած և այժմ էլ գործածական է։ Հնագույն հիշատակությունն է 1653 թ. (Ձեռ. Ազգ.=Արրտ. 1911, 563), որից հետո գալիս են 1744 թ. (Սմբատեանց, Երնջակ 250), 1749 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 450), 1717 թ. (Արցախ 81) և անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1501 թվից ուշ (Ձեռ. Նոր-Բայազ. 4 ա)։ Ուրիշներ թերևս ծածկված են Հերիֆ կրճատ ձևի մեջ։

† ՀԵՐՀԵՐ, ար. կապ չունի համանուն գյուղի անվան հետ. այլ ծագում է հայր բառի կրկնությամբ, իբր հօր հայր կամ «պապ». գործածական է այժմ Վանեցոց մեջ՝ Խերխեր ձևով. Ցացյալը տես Խերխեր անվան տակ։

* ՀԵՐՄԷԼ, իգ. < արաբ. حرمل ḥarmal (Թրք. արտասանվում է harmel) «փեգենա, սպանդ կոչված խոտը, որ ինչպես կրակապաշտների, նույնպես և մահմեդականների մոտ համարվում է սրբազան ծխանելիք, Թրք. ւզերլիք, գաւլիկ»։ Մի անգամ գտնում եմ իբր անձնանուն հիշված 1508 թ. (Ձեռ. Վասպ. 635)։ (Արաբների մոտ էլ ḥarmal բուսանունը գործածված է իբր անձնանուն, բայց ավելի շատ حرملا ḥarmala բառը, որ մի ուրիշ բուսանուն է (Կամուս, Գ. 176)։

*ՀԵՐՄԻՆԷ, իգ. < ֆրանս. Herminie անունից, որ Տասսոյի «Երուսաղէմ ազատեալ» դյուցազներգական բանաստեղծության ազնվագույն տիպերից մեկն է։ Գործածական է Պոլսում, իբրև նոր անուն։ Բուն ծագումը տես Երմոնէ։

* ՀԵՐՄՈՆ տես Աեերմոն։

— Հերմոն, աշակերտ Անանիա Շիրակացու. իր դասընկերներ Տրդատի, Ազարիայի, Եզեկիէլի և Կիրակոսի հետ գնացին Երուսաղէմ. ավելին տես Ազարիա № 2։

* ՀԵՐՈՆԻՄՈՍ, ար. < հուն. Ἱερώνυμος անունից, որ բուն նշանակում է «նա՝ որի անունը նվիրական է» (կազմված ἱερός

«նվիրական» + ὄνομα «անուն» բառերից)։ Հեթանոսական շրջանում գործածական էր այս անունը հունաց մեջ. քրիստոնեության ժամանակ նշանավոր դարձավ լատին եկեղեցու հայրերից Ս. Հերոնիմոս (լտ. Hieronymus, ֆրանս. Jérôme), որ Ս. Գիրքը թարգմանեց լատիներենի (վուլգատա), շուրջ 331—420։ Հայոց մեջ գործածված չէ. բայց ունինք հիշատակված՝

— 1. Հերոնիմ ոմն հայ, որ բնակվում էր Իտալիայի Անկոնա քաղաքում, 1580 թ. (այդ քաղաքի հայոց եկեղեցին էլ կոչվում էր Ս. Հերոնիմոս).—Ոսկյան 453։

— 2. Հերոնիմոս ոմն հիշված է 1781 թ.—Ազգապ. 3148։

— Վերջին ժամանակներում հայտնի էին Պոլսում՝ Հերոնիմոս Բարսեղյան աստղաբաշխը և Հերոնիմոս՝ մեծանուն դերասան Պետրոս Ադամյանի (ծն. 1849 թ) հայրը (տես Գառնիկ Ստեփանյանի «Պետրոս Ադամյան», Երևան 1941, էջ 9)։

*ՀԵՐՈՍ, ար. < հուն. ἱερός «նվիրական» բառից. անսովոր անուն, որ մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— 1. Հերոս, քեռորդի Խոնտքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց մի Ավետարան, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 2. Հերոս անունը այս դարի սկիզբը սկսել էր գործածվել Պոլսում, բայց հյ. հերոս=ֆրանս. héros «դյուցազն» բառից։

*ՀԵՐՍԻԼԻԱ, իգ. < լտ. Hersilia. Ֆլորիանի «Նումա Պոմպիլիոս» վեպի (հյ. թրգմ. տպ. Մադրաս 1812, Վենետ. 1853, 1866) հերոսուհին է։ Շատ անսովոր անուն էր Պոլսում, անցյալ դարում. (քրոջս անունն էր)։ շատ է տարածված Շուշում։ Փաղաքշական ձևերը Հերսիփ, Հերսիկ:

ՀԷՅԼԱՆԷ, իգ. անշուշտ արաբական անուն է, ըստ որում գործածված է Հալէպում։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1658 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 63)։

Հիբա տես Հիպայ:

*ՀԻԼԱԼ, ար. և իգ. < արաբ. هلال hilāl «լուսնի մահիկ» բառից. շատ հազվագյուտ գործածություն է ունեցել։

1. Հիլալ, որդի Կարապետ քահանայի, որ Նախավկայի վանքում գրել տվեց Իգնատիոս վարդապետի Մեկնութիւն Ղուկասու, 1357 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 227։

— 2. Հիլալ, իգ. հիշված է 1655 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 42 բ։

*ՀԻԼԱՓԱՇԱՅ, իգ. համարում եմ նույն Հիլալ իգ. անունից+փաշա փաղաքշականով. մի անգամ գտնում եմ անթվական մի հիշատակության մեջ (Սմբատեանց՝ Երնջակ 237)։

ՀԻՆԱԽ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Վասպ. էջ 682։

*ՀԻՊԱՅ, իգ. ըստ իս պետք է կարդալ Հիբա և ծագումը դնել արաբ. هبة hiba «նվեր, պարգև», ինչպես ունինք Հադիա, Պարգև, Ընծայ անունները, բոլորն էլ նույն նշանակությամբ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Հիպայ, դուստր Ներսէսի և քոյր Բասիլ գրչի, որ Կիլիկիայի Խորին անապատում օրինակեց մի մեծ Ճառընտիր, 1270 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 235, Սիսուան 152 (ըստ իս վերջինիս միայն հոգևոր քոյր)։

* ՀԻՊԵՐԻՔԻԱ, իգ. ծագումը տես Հիպերիքոս։ Մի անգամ հիշատակված է՝

— Հիպերիքիա, հայ կին Կապադովկացի, † 385 թ. կյանքը տես Կուիրինոս անվան տակ։

* ՀԻՊԵՐԻՔՈՍ, ար. < հուն. Ὑπερήχιος անունից, որ նշանակում է բուն «բարձրագոչ»։ Այս անունը չէ գործածված մեր մեջ. բայց կան Հիպերիքեանն վկաները Յայսմաւուրքում «Սահմի ԺԷ=հոկտ. 26. Յայսմ աւուր վկայութիւն սրբոց Հիպերիքեանցն. Սոքա էին ի Սամուսատացոց քաղաքէն արք փառաւորք»։ Սրանք 7 հոգի էին, այն է Հիպերիքոս, Փիլոթէոս, Յակոբոս, Պարեգորիոս, Աբիբաս, Դունաս, Յուլիանոս. ընդունել էին քրիստոնեությունը։ Մաքսիմիանոս կայսրը եկավ Սամուսատ և աստվածներին զոհ արավ։ Հրավիրեց նաև սրանց։ Նրանք չընդունեցին և կայսեր ձեռքով նահատակվեցին։ Օտարները հայ են կարծում այս նահատակներին. իսկ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ը. 93 դնում է «ըստ մերոցս կարծեաց՝ ընիկ հայկազունք»։ Կոստանդին Բ կաթուղիկոսի կազմած մասանց տուփի արձանագրության մեջ (Սիսուան 107—112) սրանց անունը գրված է Հեպերքոս։ ԺԸ դարի վերջում կային Ռոտոսթոյում Հիւպրիւք օղլու-ները, որոնք հետո Պոլիս գաղթեցին և որոնց վերջին ժառանգներից է գրքիս հեղինակը։ Վերջին տարիներս եղել է Երևանում Հիպերիկ անունով մի ուսուցիչ։ Այս անվան իգական ձևն է Հիպերիքիա, որ տես առանձին։

*ՀԻՒՊԱՏՈՍ, ար. < հուն. Ὕπατος անունից, որ բուն նշանակում է «բարձրագույն», բայց Բիւզանդական հունարենում նշանակում էր «հիւպատոս» և կարդացվում էր Ipatos, որից էլ ունինք՝

— Իպատոս, որդի Ռոմանոսի և եղբայր Սահակ քահանա Անեցու, որ ստացավ Գետաշէնի նշանավոր Ավետարանը՝ 1211 թ. այս թվին արդեն մեռել էր Իպատոսը երիտասարդ հասակում։—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 42, 43։

*ՀԻՒՐՄԻԶ, ար. < պրս. هرمز Hurmuz (որ և Hurmuzd, Urmuzd, Huzmurd, Hurmus, Hurmust) բառից, որ նշանակում է «Լուսնթագ. 2. հինգշաբթի օրը. 3. նույն օրը կատարված դեպքերի վրա հսկող հրեշտակը»։ Իսկապես Արամազդ > Որմիզդ աստուծու անունն է, որ ապա անձնանուն դարձավ։ Այսպես Hurmuz «է անուն որդւոյ Իսֆէնտիեար արքայի. 2. անուն իմաստասէր առն միոջ եգիպտականի, որ կոչի յն. մականունաբար Դոխմէ՛յիստօս, զորմէ ասի՝ թէ նախ նա խօսեցաւ զիրաց վերնագունից և զչարժմանց աստեղաց, և զզօրութիւնս իրաց ծանուցեալ, շարագրեաց բժշկական մատեանս. նորա է շինեալ բուրգունս Եգիպտոսի» (ԳԴ), Hurmuz՝ վէզիր Բահրամ Գուր արքայի (Շահն. հտ. 5, էջ 466)։ Մեր մեջ հիշված ունինք Հրմուզ Երեմ. չէլ. օրագր. 39, Հուրմուզ 1658 թ. (Նշանեան, հրատ. Երեմ. չէլ. օրագր. էջ ՂԳ), Հուրմուզ՝ հիշված 1309 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Սեր=ՀԱ 1924, 519, Հրմզ՝ անթվական մի հիշատակարանում (Rapport Belgique 48, 49, 52), Հիւրմիւզ 1770 թ. (Կարապետեան, Յիշատ. Սամաթ. 298), որից Հիւրմիւզեան ազգանունը (օր. Հ. Եդուարդ Հիւրմիւզ, Վենետիկի նշանավոր հայրերից (1799—1876 Պոլսեցի)։—Տաշեան, Ցուց. 267 հիշված կա Հուրմուզ ոմն աստղաբաշխ, բայց անշուշտ ոչ-հայ։

*ՀՄԱՅԵԱԿ, ար. < իրան. Humayak ձևից. հմմտ. Humaya (հուն. Ὑμέης) փեսա և զորավար Դարեհ Ա-ի, զնդ. Humayā, Humāyā, Humayaka ար. և իգ. անձնանուններ, պհլ. Hūmāi դուստր Čīharāzāt-ի, շինեց Tavak քաղաքը (Blochet, Liste géogr, էջ 3), պրս. همای Humāī դուստր Գուշտասպ արքայի (Շահն. հտ. 4, էջ 330, 341), Humai դուստր և կին Արտաշիր Բահման թագավորի, հաջորդից իր հոր (Շահն. հտ. 5, էջ 11, 14), Homai մոգպետ Բահրամ Գուրի ժամանակ (Շահն. հտ. 5, էջ 542), Humāy-քույր և կին Իսֆէնտիեար արքայի, همای آزاد Humāyāzād «դուստր Պէհմէնի, յորմէ ծնաւ Տարապ»։ Բոլորն էլ ծագում են զնդ. hu-māyā «օրհնեալ» բառից (Bartholomae, Altir. Wört. էջ 1833—4, Հիւբշ. 47)։ Գործածված է մեր պատմության առաջին շրջանից մինչև ԺԲ դար. այնուհետև դադարում է. բայց մի անգամ գտել եմ 1677 թ. Համայեակ ձևով (Ձեռ. Նոր-Բայազ. 36 բ). վերակենդանացավ մեր ազգային

զարթման ժամանակ և դեռ մինչև վերջերս լսվում էր աղավաղ Համայակ, Հումայեակ, Հումանեակ ձևերով։

— 1. Հմայեակ իշխան Խորխոռունեաց, անդամ այն շքախմբի, որ ուղեկցում էր Մեծն Ներսէսին՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ («353 թ»).—Մեսր. եր. 25։

— 2. Հմայեակ Մամիկոնեան, որդի Մանուէլ սպարապետի, ժամանակակից Վարազդատ («374—8 թ») թագավորի.—Բուզ. Ե. լէ. Մեսր. եր. 122—3.—գրծ. Հմայեկիւ՝ Մեսր. եր. 122։

— 3. Հմայեակ տէր Աշոցայ, ժամանակակից Արտաշէս Դ թագավորի. պատգամավոր գնաց Պարսից Վռամ թագավորի մոտ՝ խնդրելու Հայոց համար նոր կաթողիկոս «432 թ».—Խոր. Գ. կե. Արծր. Ա. ժա։

— 4. Հմայեակ Մամիկոնեան, սեպուհ, որդի Համազասպ Մամիկոնեանի, եղբայր Քաջն Վարդանի, թոռն Ս. Սահակայ, հայրն է Վահան Մամիկոնեան մարզպանի։ Ներկա էր Ս. Մեսրոպի թաղման հանդեսին «439 թ.»։ Ուղարկվեց Հունաց մոտ՝ օգնություն խնդրելու համար Պարսից դեմ «450 թ»։ Վարդանանց պատերազմից հետո Խաղտեաց քաջերի հետ հարձակվեց Տայոց ձորագավառի Պարսիկների վրա և այնտեղ նահատակվեց։—Խոր. Գ. ծը. Եղիշ. 99. Փարպ. ժը, (իէ?), ւ, լգ, խտ. Կոր. 27. Փ. կոր. 32. Մեսր. եր. 124. Արծր. Ա. ժա. Վրդ. իէ. Ցայսմ. սեպտ. 9, օգոստ. 7.—սեռ. Հմայեկայ՝ Փարպ. ւ, խա, ծթ, կբ, կգ. Կիր. 21. Վրդ. իթ. Ցայսմ. մրտ. 30. Սիմ. ապար. 49.—Հմայեկի՝ Փարպ. խա. Կոր. 27. Փ. կոր. 33. Ցհ. կթղ. ժզ. Ասող. Բ. ը. Վրդ. իթ (հրտր. Էմինի). Ցայսմ. մրտ. 30. Սիմ. ապար. 55. Նհպտք. 92։

— 5. Հմայեակ Մամիկոնեան, հայր Գրիգորի (Ե դար).—սեռ. Հմայեկի՝ Վրդ. կզ։—Նույն է նախորդի հետ, եթե սա Նունեայ խաչը փոխադրող Գրիգորի (№ 8) հայրն է. տես Վրդ. կզ։ Որովհետև ըստ Ցայսմ. Նունեայ խաչը փոխադրող Գրիգորը՝ Վարդանի Հմայեակ եղբոր որդին է։

— 6. Հմայեակ Դիմաքսեան, անդամ Արտաշատի ժողովի «449 թ». ուղարկվեց Վարդան Մամիկոնեանի հետևից՝ համոզելու և ետ դարձնելու համար Հայաստան։ Մասնակցեց Աղվանից պատերազմին և ապա Վարդանանց պատերազմին, ուր նահատակվեց իր 22 զինվորներով (451 թ)։—Եղիշ. 77, 93. Փարպ. իգ, ւ, լդ, լե, լթ. Շար. գբ. Ցայսմ. օգոստ. 7։

— 7. Հմայեակ իշխան Վարաժնունի, մասնակցեց Դուինի «554 թ» ժողովին.—Գիրք թղ. ժէ։

— 8. Հմայեակ *Աղահունի, մասնակցեց Սմբատ Վրկան մարզպանի պատերազմին Քուշանաց դեմ «608 թ».—Սեբ. իզ։*

— 9. Հմայեակ *Մամիկոնեան, հայր Արտաւազդի (№ 26), որ Հասան ոստիկանի դեմ կազմված ապստամբության գլուխ կանգնեց «774 թ».—սեռ.* Հմայեկի՝ *Ղև. լդ։*

— 10. Հմայեակ *երեց Վանանդի. հիշվում է իբրև վկա Տաթևի 844 թ. կալվածագրում.—սեռ.* Հմայեկի՝ *Օրբ. լը։*

— 11. Հմայեակ *իշխան Փառիսոսի. իր զորքով օգնական գնաց Սմբատ Ա-ին՝ պատերազմելու համար Ափխազաց Դոտան թագավորի դեմ (շուրջ 980 թ).—Սում-Շապհ. 81 (գրում է* Հմաեկ *իշխան Փառիսոյ)։*

— 12. Հմայեակ *իշխան Մոկաց, որի դուստրը Մելքսեթի՝ կինն էր Սասնոյ Վիգէն իշխանի (1169 թ).—Հայապ. 393, որի աղբյուրն է Թորոս աղբ. Բ. 309, որ սակայն պարզ չէ։ Նույնը ունի նաև Հնութ. Ակնայ 77։*

*ՀՆԱ, ար. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1605 թվի մի հիշատակարանում (Թորոս աղբ. Բ. 438 գրված* Հընա):

†*ՀՆԱԶԱՆԴ, իգ. < հյ.* հնազանդ *բառից, նշն.* Ուսլու: *Հիշատակված է ԺԴ—ԺԷ դարերում. և այժմ էլ դեռ գործածական է։*

— 1. Հնազանդ, *դուստր Սէթի. գնեց մի Աւետարան, կազմել տվեց Սէթ աբեղային և նվիրեց Խայիք գյուղի (Երզնկա) եկեղեցու Գրիգոր երեցին (№ 530), 1404 թ.—Թորոս աղբ. Ա. 65, 66, Նոտարք 20։*

— 2. Հնազանդ, *դուստր Ջանիբէկի, քույր Բաղիշեցի Կիրակոս երեցի Զօշկանց կամ Հաբշոշենց, որ օրինակեց մի Ճառընտիր 1467 թ. (տես № 141 և 150, որոնք միևնույն են).—Նոտարք 230։*

— 3. Խազանդ *ձևով հիշված է 1628 թ.—Ջեռ. Վասպ. 432 (պետք է կարդալ* Խնազանդ, *ինչպես որ այժմ էլ Վանեցոց բարբառում* հնազանդ *ածականը հնչվում է* խնազանդ):

**ՀՆԴՈՒ, ար. կրճատված է հաջորդ* Հնդուբեկ *անունից, որ տես։ Այս կրճատ ձևով ունինք՝*

— 1. Խնդու *մահտասի, որդի Գրիգորի, մայրն է Միրզախաթուն. եղավ առաջնորդ Ս. Գէորգ վանքի, որ վերանորոգեց, գնեց վանքի համար մի Աւետարան (1357 թ), Տաբեգիրք, Գործք առաքելոց, Ճառընտիր, Շարակնոց, Խազգետր և երկու Մաշտոց՝*

Այս բոլորը հանձնեց իր եղբորորդի Յովհաննէսին, որին իբրև քահանայացու տեղավորեց նույն վանքում.—Ձեռ. Վասպ. 213, 216։

— 2. Հնդու, հայր Ստեփանոս երաժշտի՝ ուսուցչի Թադէոս քահանայի, որ Արճէշի Մեծոփայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1412 Թ.—Ձեռ. Դադեան, Բ. 30 բ։

— 3. Հնդու հիշված է նաև մի անթվական արձանագրության մեջ (Գեղարքունի 313) և մի անթվական հիշատակության մեջ (Ձեռ. Վասպ. 766՝ Հնդո՞ւ թե Ընդու ձևով՝ չի հասկացվում Լալայեանի տպագրած ձևից) և մի ուրիշ անթվական յիշատակարանում (Քոսեան, Հայք ի Ջմիւռն. Բ. 22)։

***ՀՆԴՈՒԲԷԿ**,ար. < արաբ. هند Hind «Հնդկաստան» + Թրք. beg բառերից, իբր թե «Հնդկաստանի իշխան»։ Բայց արաբների մոտ էլ կա هند Hind թե՛ արական և թե իգական անուն (տես Կամուս, Ա. 717), ինչպես նաև هندو Hindū իգ. Տե՛ս Հնդու։ Նախաձայնի թավացումով՝ Խնդուբեկ։ Հմմտ. Ընդմելիք, որ է Հնդումելիք։

— 1. Խնդուբեկ, դերձակ էր Ոստան քաղաքում, մի քրդի ձեռքից գնեց գերի ընկած մի Աւետարան և «յոժար սրտիւ» նվիրեց իր նախկին տիրոջ՝ Յովհաննէս քահանային 1414 Թ.—Նոտարք 44։ (Ամբողջական հիշատակարանը մեջ է բերված Ձեռ. Վասպ. 249, որից երևում է որ ձեռագիրը 1414 թվին անցել է Յովհաննէս քահանայի ձեռքը, ավելի ուշ ընկել է գերի և ազատվել։ Բայց որովհետև վերադարձվում է իր նախկին տիրոջ, ուստի թվականը շատ ուշ չպիտի լինի)։

-- 2. Խնդուբեկ, մերձավոր Ստեփաննոս կրոնավորի, որ Վանում, կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան 1421 Թ.—Ձեռ. Վասպ. 341։

— 3. Խնդուբեկ, ամուսին Շիրաղխաթունի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1470 Թ.—Թորոս աղբ. Բ. 356։

— Խնդուբեկ հիշված է նաև անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վեննետ. Բ. 418, և մի ուրիշը Հուդուպեկ վրիպակ գրչությամբ՝ Քոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 19։

Հնդումելիք տես Ընդմելիք։

**ՀՆՆՈՅ**, ար. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական ոտանավոր մի հիշատակարանում սեռ. Հըննօյին ձևով (Ձեռ. Վասպ. 608)։

**ՀՈԳԱՐՍԱՄ**, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1706 Թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. էջ 1883)։

† ՀՈԳԵԴԵՂ, ար. < հյ. հոգի+դեղ բառերից, իբր «ծնողների համար հոգու դեղ կամ ճար». ինչպես կան Խոցադեղ, կամ պարզապես Դեղ, Դեղիկ անունները։ Հազվագյուտ անուն է։

— 1. Հոգէդեղ, որդի Առէսի? որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Շնհերի Կուսանաց անապատում, 1281 թ.—Սիսական 259, Ազգագր. հանդ. Դ. 43։

— 2. Հոգեդեղ հիշված է նաև Նետողաց ազգի ժամանակ (ԺԳ—ԺԴ դար).—Ձեռ. Վենետ. Ա. 474։

† ՀՈԳԻ, ար. < հյ. հոգի բառից, ինչպես կա պարսիկ բառով Ջանիկ անունը։ Հիշված է միայն ԺԳ դարում։

— Հոգի, հայր Սարգսի, որի որդիները Ուքան և Պապքան նվերներ են արել զանազան վանքերի՝ 1252, 1268, 1271, 1274 թվերին։—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 13, Բանաս. 1901, 136։

† ՀՈԳՈՅ ՔՆԱՐ, իգ. < հյ. հոգի և քնար բառերից. մի անգամ հիշված եմ գտնում ԺԴ դարում.

— Հոգոյքնար, կին Լուսաբեր քահանայի, հոգևոր մայր Բարսեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գյուղում օրինակեց Աւետարանը 1336 թ.—Ձեռ. Վասպ. 191 (հիշված է այնպիսի ձևով, որ կարծես անուն չէ, այլ գովասանական մի պատկեր. «Այլ և յիշման արժանի արնէք զմիւս ծնողքն իմ, զսրբասէր ծերունին՝ զԱւետիս քահանայ և զԼուսաբեր քահանայ և զկենակիցն իւր՝ զմայր մեր զՀոգոյ քնարն, որ շատ երախտիք ունին ի վերայ մեզ»։

* ՀՈԼՈՒԲ, ար. < չեխ. լեհ. ուկր. holub = ռուս. голубь «աղավնի» բառից։ Ունինք օր. Հոլուպ վոյթ Կամենիցի, ՌՀԴ=1625 թ.? տես հրատ. Սամ. անեց. էջ ԺՋ։

† ՀՈՂԱԲԱՇԽ, ար. < հյ. հող+բաշխել բառերից. մի անգամ հիշված եմ գտնում ԺԵ դարում։

— Հողաբաշխ, որդի տանուտեր Առաքելի, որ Գամաղիէլի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։ (Հիշված է հետևյալ ձևով. «Լի բերանով ասացէք զԱստուած ողորմին ստացողի ս. աւետարանիս զԱռաքելն, զկողակիցն իւր զՄարգարիտն և զաւակաց իւրեանց՝ զՀայրապետն, զԱւետն և զՀողաբաշխն և զԹէլաւքն և զտղայն իւր...»։ Կասկած չկա որ այստեղ Հողաբաշխ անձնանուն է. բայց արդյոք որքան ստույգ է արտագրությունը. «հողաբաշխ և խելօք» իբրև ածական չեն դրված Աւետի։

† ՀՈՂԻԿ, ար. < հյ. հող բառի փաղաքշական ձևից, իբրև-

նշան համեստության. հմմտ. Թուրաբ անունը, որ արաբ. turāb «հող» բառից է։ Մի անգամ միայն գտնում եմ գործածված՝

— Հողիկ, գրիչ Հարանց վարուց ձեռագրի, Վենետ. № 966 (ԺԳ դար). տես Սարգիսեան, Նուագր. ներած. էջ ԾԹ, ՃԶԴ։

†ՀՈՅ, ար. այս անվան մասին Մագ. Թղ. ԺԹ գրում է. «Հոյ հրաշակերտն տեսլեամբ», որից երևում է որ ուզում է հանել հոյ (հոյակապ են) արմատից։ Այս մեկնությունը ճիշտ եմ կարծում, մանավանդ երբ ընդունենք, որ հոյ հին ու բնիկ անկախ հայերեն մի բառ էր, որ նշանակում է «իշխան, պետ»։ Այս անունով կա միայն՝

— Հոյ նահապետ Հայկազանց, հաջորդ Բազուկի, Ն. Ք. 985 Թ. ըստ Զամչ.—Խոր. Ա. ԺԹ. ՑՆ. կԹղ. բ. Մխ. անեց. Գ. Կղկնտ. Ա. ԺԵ. Մագ. Թղ. ԺԹ. Սամ. անեց. 45. Մխ. այրիվ. 53. Մին. համդ. 10.—Հոյն՝ Վրդ. է.—Հոյակ՝ Մխ. այրիվ. 18։

ՀՈՆԱ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ ԺԳ դարում։

— Հոնա կամ Խոնա, որդի Ալուեցու և հայր Հէճուպ Դաւիթի, որ իր կնոջ Նանայի հետ շատ նվերներ է արել Յովհաննավանքին, 1300 Թ.—Ջքր. պատմ. Գ. 20. Շահխաթ. Բ. 103, Այրարատ 171։

*ՀՈՆԱՒԱՐ (կամ Հոնաւոր և Հոնովար), ար. (Ալիշան, Հին հաւ. 335 կցում է զրադաշտական հոնավար, ahuna-vairya «ամենասուրբ աղոթքը» (Barthol. 283) բառին։

— 1. Հոնաւար Տրունի, հայր Ցխէի (Թ դար).—սեռ. Հոնաւարայ՝ Արծր. Գ. ին։

— 2. Հոնովար, հայր Մուկն իշխանաց իշխանի, որ նորոգեց Հաղբատի կործանված կաթուղիկեն, 1016 Թ.—Արձ. Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 64 (գրում է Հոնովար), Երզնկեանց՝ Հնախօս. տեղագր. 45 (գրում է Հոնաւոր)։

— 3. Հոնաւար կամ Հոնաւոր, որդի Մուկն իշխանաց իշխանի. նախորդի թոռն է. վաղամեռիկ եղավ՝ իր ծնողների կենդանության ժամանակ, 1023 Թ. տապանաքարը մնում է Հաղբատում.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 64, Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 77, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 39, Ազգագր. հանդ. Է, էջ 404, Տաշեան՝ Ցուց. 984 բ։

ՀՈՌԵԱՆ, ար. ծագումն անհայտ. տեղանունից սարքած անուն։

— Հոռեան, որդի Դեմետրի կամ Գիսանէի՝ Տարօնի հնդիկ

իշխաններին. շինեց Պալունեաց գավառի Հոռխանս ավանը. իր եղբայրների հետ կանգնեցրեց Դեժեոր և Գիսանէ կուռքերը։— Զեն. 36.—սեռ. Հոռեննայ՝ Զեն. 36.—Ջամչ. Ա. 210։

ՀՈՌԵՆԱՆ, սեռն ու ծագումը անհայտ. հիշված է մի անգամ Ցղնա գյուղի (Գողթն) եկեղեցու մի խաչքարի վրա՝ 1477 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ 321—2։

ՀՈՌԻ, ար. իբր թե Հայկ նահապետի որդիներից մեկի անունն է ըստ Տաթև. ձմ. ա և հարց. 200։ Հայոց տոմարի հոռի ամսանունից սարքված։

*ՀՈՌՈՄ, ար. սովորական հոռոմ բառն է, որով ԺԳ դարում հասկանում էին Ռումի Սելճուկյան սուլթանությունը (Իկոնիա)։ Ոչ մի կապ չունի Հռիփսիմե անվան հետ, որ իգական է։ Սրանից ունինք նաև Հոռոմշահ, Հոռոմխաթուն, Հոռոմտիկին։

— 1. Հռովմ (կամ Հոռոմ) իրեց, որդի Մաւրեհամայ? կինն է Ուլուխաթուն. միասին մի այգի են նվիրել Ուշիի եկեղեցուն, 1329 թ.—Շահխաթ. Բ. 119, Այրարատ 181։

— 2. Հուռում Գանձակեցի, հայր Յովհաննէս քահանայի, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 բ։ Հայտնի կերպով արական անուն է. կինն էլ կոչվում է Գոհար. ուստի ոչ մի կապ չունի Հռիփսիմէ անվան հետ։

— 3. Խոռոմ Սիլիվրիցի, նահատակվել է 1554 թ.—Նոր վկ. 385 (համարել եմ իգական և նշանակել «Հռիփսիմէ» ձևով։ Նախորդ երկու անուններից հետո կասկածելի է թվում. գուցե և պարզապես մի հույն է (հոռոմ)։—Մեզ հետևել է նաև Ազգապ. էջ 2262։

ՀՈՌՈՄԱԿ, ար. ծագումն անհայտ. թերևս հոռոմ բառից. մի անգամ հիշված է՝

— Հոռոմակ եպիսկոպոս Ամարասի (Զ դար).—սեռ. Հոռոմակայ՝ Գիրք թղ. ժթ.—Հռոմկայ՝ Կղկնտ. Բ. է։

*ՀՈՌՈՄԱՆՈՍ, ար. < հուն. Ῥωμανός արական անունից, որ ավելի ուշ տառադարձված է Ռոմանոս (տես անդ)։

— Հոռոմանոս եպիսկոպոս Ակիոյ, ժամանակակից Ներսէս կաթուղիկոսի, մասնակցեց Դուինայ երկրորդ ժողովին «554 թ»։— սեռ. Հոռոմանոսի՝ Գիրք թղ. ժզ։

*ՀՈՌՈՄԽԱԹՈՒՆ, իգ. < Հոռոմ+խաթուն բառերից. իբրև «Հոռոմի, այսինքն Իկոնիայի Սելճուկեան սուլթանի իշխանու-

հի», որի արականն էլ է Հոռոմշահ, համանիշը Հոռոմտիկին. կըրճատ ձևը Հոռոմ: Մի անգամ հիշատակված է ԺԳ դարում։

— Հոռոմխաթուն, Կիպրոսի Ս. Աստուածածին եկեղեցու համար՝ պանդուխտ Պերճ երեցին գրել տվեց մի Աւետարան, Կիպրոս 1280 թ.—ՀԱ 1937, 380։

* ՀՈՌՈՄՇԱՀ, ար. < Հոռոմ+պրս. شاه šāh «թագավոր» բառերից, իբրև «Հոռոմի, այսինքն Իկոնիայի Սելճուքեան սուլթանության թագավոր», որի իգական ձևերն էլ են Հոռոմխաթուն և Հոռոմտիկին:

— 1. Հոռոմշահ, հայր Սարգիս և Ստեփաննոս կրոնավորների, որոնք շինեցին Աղթամարի Ս. Ստեփաննոս եկեղեցին, 1293 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Ի, էջ 209, Ակինեան՝ Գաւնգիրք 44։ [Հաւաք. 43 դնում է Ստեփաննոս Դ կաթողիկոսի ժամանակ, այն է «1465—1489 թ»]։

— 2. Հոռոմշահ ոմն, երախտավոր մի ձեռագրի Հաւաքածոյի 1420 թ.—Տաշեան՝ Ցուց. 666։

— 3. Գրված խոռոմշայ ձևով՝ անթվական մի հիշատակության մեջ, որ սակայն գրված է 1311 թվից ուշ.—Ձեռ. Թաւր. 73 բ։

† ՀՈՌՈՄՏԻԿԻՆ, իգ. < Հոռոմ+տիկին բառերից. բացատրությունը տես Հոռոմխաթուն: Մի անգամ հիշված եմ գտնում ԺԳ դարում և մի անգամ էլ անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Թաւր. 72 բ)։

— Հոռոմտիկին, դուստր Ռոմանոսի, քույր Սահակ քահանա Անեցու, որ ստացավ Գետաշէնի նշանավոր Աւետարանը 1211 թ. երբ Հոռոմտիկինը արդեն մեռած էր.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 43։

† ՀՈՎԱԴԵՂ, ար. < հյ. հով+դեղ բառերից, իբրև «սրտի հովացման դեղ կամ ճար». հմմտ. Հոգեդեղ, Խոցադեղ և Դեղ կամ Դեղիկ անունները։ Հիշված է ԺԴ դարում.

— 1. Հովադեղ, մերձավոր Սարգիս աբեղայի, որ Գլաձորում օրինակեց Ոսկեփորիկը՝ 1317 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 857։

— 2. Ավելի ուշ հիշված է 1623 թ. (Արցախ 123)։

† ՀՈՎԻԿ, ար. < հյ. հով բառի փաղաքշականն է. կենդանի է այժմ էլ. ոմանք համարում են Յովհաննես անվան կրճատ ձևը. Հովադեղ անվան գյուտից հետո, կարելի է ընդունել թե այս էլ նրա կրճատ կամ փաղաքշական ձևն է։ Գտնում եմ մի անգամ հիշված ԺԴ դարում։

— Հովիկ, որդի Սահակի 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489։

ՀՈՐՄԱՏ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է ԺԵ դարում։

— Հօրմատ, որդի խոջա Յովհաննէսի, որ ժառանգեց Տարօնի իշխան իր հօրեղբօրորդի խոջա Յովսէփի Մուշում գրել տված Աւետարանը 1488 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

*ՀՈՒՄԱՅԻ, իգ. ծագումը տես Հմայեակ անվան տակ։ Հիշված է 1651 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 735)։ Այս անունն էր կրում նաև Վարանդայի մելիք Շահնազարի դուստրը՝ ԺԸ դար (Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 162)։

*ՀՈՒՄԱՅԻԽԱՆ, իգ. նախորդ անունից՝ ավելացնելով խան պատվանունը։ Մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1526 թվից ուշ (Ձեռ. Մաղն. էջ 15)։

ՀՈՒՆ, ար. շինծու անուն։ Այս անունով է կոչվում՝

— Հուն արքայ Հայոց, որ շինել է Ապահունիքը, ըստ «Այս են քաղաքք և շինողք նոցին» ZAPh 1, 190։ Նույնը գիտե նաև Ալիշան՝ Հյստ. յառաջ քան, էջ 159 և կոչում է Հուն կամ Հոն, որին համարում է Մանաւազի որդին։

*ՀՈՒՆԱՐ, ար. < պրս. هنر hunar «խելք, ճարտարություն» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 74 ա), որ սակայն գրված է 1311 թվից ուշ. և մի ուրիշ անթվական հիշատակարանում, (ԺԵ—ԺԷ դարերում գրված մի Ցայսմաւուրքի մեջ), ուր սակայն իգական է (Ձեռ. Նոր-Բայազ. 50 բ)։ Նույն եմ կարծում նաև Հունխար, ար. (վրիպակով կարդացված այսպես), որ հիշված է 1632 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 33 ա)։

ՀՈՒՋԻ, սեռով ու ծագումով անհայտ. ձևն էլ անստույգ. մի անգամ յիշատակված է Հերհերի 1291 թվի մի արձանագրության մեջ (Սիսական 114)։

ՀՈՒՌ, ար. ծագումն անհայտ. մի անգամ ունինք՝

— Հուռ, ազատ Սիւնի, որդի Շապուհի. հիշված է իբր վկա՝ Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. ԼԸ։

*ՀՈՒՌԻԿ, իգ. գործածվում է այժմ Վանեցոց մեջ իբրև կրճատ ձև Հռիփսիմէ անվան. բնականաբար հնչվում է Խուռիկ, ինչպես գրված է և Ձեռ. Վասպ. 1034 մի հիշատակարանում, որ գրված է 1897 թ! Հնագույն հիշատակությունն է Հուռիկ 1653 թ. (Ձեռ. Վիեննա. Բ. 1037)։

*ՀՈՒՍԷՅՆ, ար. < արաբ. حسين Ḫuseyn անունից, որ բուն նշանակում է «սիրունիկ» (حسن Ḫasan=Հասան անվան գգվական ձևն է)։ Գործածված եմ գտնում մի անգամ ԺԾ դարում և երկու անգամ էլ ԺԷ դարում։

— 1. Խուսէն բէկ, հայր Հայրապետ կրոնավորի, որ գնեց մի Աւետարան և նորոգել տվեց 1431 թ.—Նոտարք 97։

— 2. Յուսէին հիշված է նաև 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 310)։

— 3. Մելիք Յուսէին Ա որդի Մելիք Շահնազարի, որ իշխում էր Գեղամայ լճի եզերքում. Լեզգիների արշավանքից (1682) ստիպված՝ գաղթեց Ղարաբաղ և հաստատվեց Վարանդայի Աւետարանոց գյուղում։ Երբ Նադրշահը Մուղանում թագավոր հռչակվեց, Յուսէինին էլ հաստատեց Վարանդայի մելիքության մեջ. մեռավ 1736 թ. և իրեն հաջորդեց Միրզա-բէգ Բ։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 22, 27, 68։

*ՀՈՒՍՆԻ, իգ. < արաբ. حسن ḥusn «գեղեցկություն» բառից. համմտ. حسنى ḥusna «ամենագեղեցկուհի» և Ḫusnī ար. անձնական անուն։ Գործածված է մեր մեջ քիչ անգամ ԺԶ—ԺԷ դարերում։ Այսպես Հիւսնի 1562 թ. (Ձեռ. Թաւր. 68 ա), Հուսնի 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 735), Հուսնի 1658 թ. (Ձեռ. Թաւր. 13 բ)։

*ՀՈՒՐԻ, իգ. < արաբ. պրս. حورى ḥūrī «երկնային սևաչյա գեղեցկուհի (մահմեդականների հավատալիքներում)»։ Մեր մեջ իբրև անձնանուն գործածված է ԺԶ դարից. սրանից են նաև Հուրիխան, Հուրիղաղ, Հուրիփաշա, որոնք տես առանձին։

— 1. Հուրի հիշված է 1686. (Ձեռ. Վասպ. 967)։

— 2. Հուրի կոչվում էր Կոմիտաս քահանայի († 1707 թ) կինը (ՀԱ 1929, 425)։

— 3. Հիւրիւ 1796 թ. (Էֆիմ. 448)։

— 4. Իւրի ձևով հիշված է 1574 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1856)։

— Հուրի իբր ար! հիշված է 1710 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 580), ըստ այսմ էլ ունինք «Հուրու տղայ Հանէս» 1609 թ. (Ջքր. սարկ. Գ. 22)։

*ՀՈՒՐԻԶԱԴ, իգ. < պրս. حورى ḥūrī «հուրի, գեղեցկուհի» + زاده zāde «ծնված» բառերից։ Հիշված է նախ 1708 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 45, Կրպտ. եպս.՝ Դօփեանք 155, Սմբատեանց՝ Գե-

-ղարքունի 613), նաև Հիւրզաղ ձևով՝ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 32 բ)։

— Հիւրիզադ էր կոչվում նաև Վարանդայի մելիք Շահնազարի դուստրը, որ եղավ կին՝ Շուշվա բերդի տեր Թուրք Փանահ խանի որդի Իբրահիմ խանի.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. էջ 100։

*ՀՈՒՐԻԽԱՆ, իգ. < նախորդ Հուրի անունից+խան։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ—ԺԸ դարերում։ Հնագույն հիշատակությունները են Հիւրիխան 1579 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 390), Հուրիխան 1581 թ. (Ձեռ. Վասպ. 694), Հիւրիխան 1596 թ. (Ձեռ. Թաւր. 75 բ), որոնցից հետո գալիս են Հիւրիխան 1614 թ. (Ձեռ. Թաւր. 120 բ), Հուրիխան 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 14 բ), 1654 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրա. 1911, 385), 1661 թ. (անդ, էջ 119), Հիւրիխան 1661 թ. (Ձեռ. Թաւր. 65 բ), 1687 թ. (անդ 24 բ), Հուրիխան 1724 թ. (Ձեռ. Վասպ. 886)։

* ՀՈՒՐԻՋԱՆ, իգ. < նախորդ Հուրի անունից+ջան փաղաքշականով։ Հիշված է ԺԷ դարից. այսպես մի անգամ Հուրիջան 1661 թ. (Ձեռ. Վասպ. 920) և մի անգամ էլ Հուրջան՝ անթվական, բայց 1608 թվից ուշ գրված մի հիշատակարանում (անդ 830)։

*ՀՈՒՐԻՓԱՇԱ, իգ. < նախորդ Հուրի անունից + փաշա պատվանունով։ Հիշատակված է ԺԶ դարից սկսած. հնագույնն է 1554 թ. (Ձեռ. Վասպ. 98, գրված Խուրիփաշա), Հուրիփաշա 1596 թ. (անդ 749), Խուրիփաշա 1604 թ. (անդ 813), Հուրիփաշա 1661 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 745), անհայտ թվականով՝ Ձեռ. Վասպ. 461 և Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 472 (սխալ տպված Հուրիփալին)։

*ՀՌԱԴԱՄԻՍՏ, ար. < հպրս. fratama «առաջին» բառից. հիշված կա Ῥαδάμειστος ձևով՝ Տանայիսի մի արձանագրության մեջ՝ Բ դարից (Justi 257 ա)։ Ըստ Մ. Երեմեանի այժմ Վրաստանում դեռ ևս պատահում է Ռադամի կամ Ռոդամի անունը։

— Հռադամիստ (լտ. տառադարձությամբ գրված Radamistus), որդի Վրաց Փարսման թագավորի. իբրև բարեկամ եկավ Հայաստան՝ իր հորեղբայր Միհրդատի մոտ, որ Հայոց թագավորն էր, պատեհանությամբ սպանեց նրան և բռնագրավեց Հայոց գահը (45—53 թ)։ Հայերը դուրս եկան նրա դեմ։ Լսելով Տրդատի (Տիրիթ) արշավանքը, փախավ Վրաստան, հոր մոտ, որ իբրև մատնիչի սպանեց նրան։—Զամչ. Ա. 304—6 (գրում է նաև Հռամիգդ), Justi 257 ա, Գրգչ. Քնն. պատմ. Բ. 205—212, Լէօ Ա 457—9։ -Ֆրանսիացի ողբերգակ Crébillon (1674—1762) գրել

է մի ողբերգություն նրա վրա (Rhadamiste ct Zénobie), որի մասին տես Hérold REA 9, 55—59։

*ՀՌԱՔԷԼ, իգ. < եբր. רחל Rāxēl անունից, որ նշանակում է բուն «մաքի, էգ ոչխար»։ Այս անունով էր կոչվում Յակոբ նահապետի սիրելի կինը, որ Լիայի քույրն էր (Ծն. ԻԹ—ԼԵ)։ Հուն. տառադարձված է Ῥαχήλ, որից և հյ. Ռաքէլ կամ Հռաքէլ։ Մեր մեջ այս անունը բնավ հիշատակված չէ. կա միայն՝

— Հռաքէլ Թագուհի Հայոց, հրեա Սողոմոնի 7 եղբայրները Փղշտացոց երկրից եկան Եկեղեաց գավառը՝ Հռաքէլ (Ռաքայէլ) թագուհու մոտ, որ մկրտեց նրանց։ Նրանցից չորսը գնացին Վրաստան, իսկ երեքը մնացին Հայաստան և տիրեցին երկրին։ Հռաքէլ նրանց անունները փոխել ու դրել էր Մուշեղ, Բագրատ (սրանից են Բագրատունիք) և Արգար։—Վրաց աղբ. Ա. 136—7, Բ. 105 (տառասպել)։

*ՀՌԻՓՍԻՄԷ, իգ. անշուշտ օտար լեզվից փոխառյալ բառ է, բայց աղբյուրը անհայտ է։ Ագաթ. § 175 մի բառախաղ ունի, որով ուզում է հանել հուն. ῥίπτω, ῥίψω «նետել, գցել» բայից.— «Ըստ անուանդ քում արդարև ընկեցեալ եղեր»։ Նույնը կրկնում է Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 50։ Շատ գործածական է այս անունը մեր մեջ՝ սկսած Դ դարից մինչև այժմ։ Հին ընթերցվածներն են Հռիփսիմէ, Հռիպսիմէ, Հռփսիմէ. միջնադարում առաջացած ձևերից մի քանիսը պիտի հիշատակենք հաջորդ էջերում, բայց ավելորդ չենք համարում հավաքել նաև այստեղ.—Հռիփսիմ, Հռամսիմ, Հռէփսիմէ, Հռիփսիմայ, Հռումսիմա, Հռաւբ, Հռիփսիմ, Հռիւս, Հըռոփսիմէ, Հռումսիմայ, Հոռոմսի, Հոռոմսիմ, Հուռումսի, որոնք հիշատակված են 1247—1493 թվերին։ Սրանցից ուշ պատահած ձևերն են՝ Հոռոմսիմայ, Խոռոմսիմա (1509 թ. Ձեռ. Վասպ. 640), Խոռամսիմէ, Հոռոսմայ (1558 թ. տես Ձեռ. Սեբ=ՀԱ 1925, 133), Խոռոմսիմի (1553 թ. Ձեռ. Վենետ. Ա. 578), Հռամսիմ, Հուռումսիմ, Հոռոպսինմա (Ձեռ. Հալէպի Ա 98. թիվը անհայտ), Ուռումսանէ (թիվը անհայտ, բայց 1351-ից ուշ. տես Ձեռ. Վենետ. Ա. 410), կրճատ ձևով Հոռոփ, Հուռուփ, Հոռոմ, Հուռում, Ուռում, Խոռոմ։ Այժմ արտասանվում է Հռոփսիմա, Հոռոմսիմա, Հռիփսիկ, Հոռոփ, Հոռոմ, նույն իսկ բոլորովին այլափոխված ձևով՝ Ռիմա։ Փաղաքշական իկ մասնիկով կազմված ձևեր են Հուռիկ (տես առանձին), Հոռիկ (Ձեռ. Նոր-Բայազ. 33 բ՝ անթվական մի հիշատակության մեջ՝ գրված 1418 թվից ուշ), Ըռուռիկ (1631 թ. Bodleian 139)։ Այսքան ձևափո-

խության պատճառներից մեկն էլ պատահական նմանությունն է Հոռոմ անվան, որ բոլորովին տարբեր բառ է և կապ չունի Հռիփսիմե անվան հետ (տես վերը Հոռոմ)։ Հոռոմ (=Հռիփսիմէ) ձևի հնագույն հիշատակությունն է ԺԲ դար, որովհետև 1260 թվին արդեն ունենք Խուռում։

— 1. Հռիփսիմե, կույս Հռովմայեցի, նշանավոր գեղեցկուհի. չուզելով կին դառնալ Դիոկղետիանոս կայսեր, իր ընկերների հետ փախավ Հայաստան։ Տրդատ թագավորը գտավ նրան Վաղարշապատում և սիրահարվելով՝ ուզեց բռնի իր կինը դարձնել։ Հռիփսիմէն մերժեց։ Դահիճները չարչարելով նահատակեցին նրան, իր ընկերների հետ «301 թ»։ Լուսավորիչը կանգնեցրեց նրա վրա Ս. Հռիփսիմէի մատուռը, որ Կոմիտաս կաթուղիկոսի ժամանակ վերակառուցվելով՝ մնում է մինչև այժմ իբրև ընիկ հայ ճարտարապետության ամենագեղեցիկ կոթողներից մեկը։—Ագաթ. § 138—9, 165, 168, 175, 178, 180, 182—3, 197, 201, 205, 210, 230, 737, 759, 768. Արտբ. Ագաթ. 8, 11, 13—14, 17--21, 23—26, 35, 37, 46, 79, Խոր. ճառ Հռիփ. 307, 310, 315. Պատմ. հռիփ. 298. Բուզ. Գ. ժգ. Վկ. շուշ. 26. Վրթ. քերթ. պատկ. 304. Ուխտ. Ա. կդ. Շար. կթ. Շնորհ. չփ. էջ 469—471, 474—5. Կղկնտ. Ա. ժդ, իա (հրտր. Շահն.), իգ. Օրբ. լե. հիր. 8. Թղթ. դաշ. 21, 29. Ոսկ. ներբ. լս. 799, 827. Պատմ. վր. ը. Ցայսմ. հոկտ. 5, 6, 29. նոյ. 18, 29, փետր. 26, Տաթև. ձմ. ղէ. ամ. 420, 534. Վրդն. աշխ. 514. Նոր. ժող. Գ. 26. Զքր. սարկ. Գ. 3. Առաք. պատմ. 253, 499.—Հռիփսիմեա (իբր ուղ!) Գարդ. 499.—սեռ. Հռիփսիմեայ՝ Ագաթ. § 140, 162, 189, 203—4, 207, 209, 211, 233, 766. Խոր. ճառ Հռիփ. 304—5, 311, 315, 317, 323—4. Պատմ. հռիփ. 298. Վկ. շուշ. 37. Սեբ. լե. Ցհ. կթղ. ժէ. Շար. կթ. Ասող. Բ. ա, բ. Կղկնտ. Ա. իա, իթ (հրտր. Էմինի). Օրբ. իէ, լը, կէ. հիր. 30, ժբ. Վրդ. լբ, կզ. Թղթ. դաշ. 20. Ոսկ. ներբ. լս. 809. Գարդ. 499. Ժմ. 372. Ցայսմ. հոկտ. 5, 6, 29. նոյ. 18. Մխ. այրիվ, 65. Տաթև. ձմ. ղէ. Փ. Սոկր. իգ. Եզն. եր. 267. Բհնպ. 271. Ցհ. կթղ. հյր. 275. Առաք. պատմ. 134—149, 156, 160, 165, 241, 250—3, 266, 327. Հաւաք. 31.—Հռոփսիմեայ՝ Արծր. Դ. ժբ.—Հռոփսիմիայ՝ Արծր. Դ. ժբ.—Հռովփսիմեայ՝ Արծր. Գ. ժը.—Հռիպսիմեայ՝ Ցայսմ. հոկտ. 5.—Հռիփսիմեի՝ Արձ. Շողակաթ 172. Սեբ. լե. Ուխտ. Բ. լէ. Գիրք թղ. խ. Անան. ապստ. 137 բ. Ասող. Բ. ա, գ. Շնորհ. չփ. էջ 472. վիպ. 569. Կղկնտ. Ա. իթ (հրտր. Շահն.), Թղթ. դաշ. 27. Փ. Սոկր. իգ. Սամ. անեց.

79. շար. 179. Եղն. եր. 268. Առաք. պտմ. 250, 479. Հայապ. 227.—Հռիփսիմի՝ Տաթև. հարց. 659. Հաւաք. 26. Սիմ. ապար. 105.—գրծ. Հռիփսիմեաւ՝ Ագաթ. § 143, 149. Խոր. ճառ հռիփ. 310. Կղկնտ. Ա. իա (հրտր. էջմինի, իսկ Շահն.՝ Հռիփսիմով).—Հռիփսիմէիւ՝ Յայսմ. հոկտ. 5.—Հռիփսիմեանք՝ Խոր. ճառ հռիփ. 305. Պտմ. հռիփ. 297. Խոր. Բ. ձգ, ղա. Յհ. կթղ. ժէ· Օրհն. 247. Ուխտ. Ա. ծէ, կգ—կվ, հգ. Գիրք թղ. ղէ. Մեսր. եր. 10. Պտմ. ներս. 24. Շար. կթ. Ասող. Բ. ա. Շնորհ. չփ. 468, 472. Կղկնտ. Ա. ժդ. Մագ. մեծ են 72. Սամն. 36. Մամիկ. ա. Արծր. Ա. ժ. Կիր. 8, 16. Վրդ. իե, լը, իը. Միխ. աս. իթ. (=իը). Շիր. քրոն. 50. Ճշ. 492—3, 501. Պտրգ. 645. Ժմ. 379, 601. Մխ. այրիվ. 60. Յայսմ. օգոստ. 14, հոկտ. 5, 6, 29, նոյ. 18, 29. Սամ. անեց. 63. Եղն. եր. 268. Նշխ. մատ. 60. Վրդն. լս. 64. Պարականոն շար. 164. Տաթև. ամ. 407, հարց. 549, 637. Մին. համդ. 22. Դրնդ. 302, 514. Յկ. կր. 45. Առաք. պտմ. 146, 149. Հայապ. 76, 263. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 5—55։—Հայերենից է ազդված պարսկական նշանավոր «Հազար և մի օրեր» վեպի մեջ Repsima-ի պատմությունը.—Repsima Բասրայի վաճառականներից Temim անուն մեկի կինն էր, խիստ ջերմեռանդ և բարեպաշտ. իր հրաշալի գեղեցկության պատճառով երեք անգամ ենթարկվեց ծանր փորձության և աղետների. բայց առանց իր պատիվը կորցնելու՝ կրեց իր տանջանքներն ու դատապարտությունը։ Վերջում իր անմեղությունը երևան եկավ և վարձատրվեց (տես Frilley, La Perse littéraire, Paris, էջ 208—219)։—Հռիփսիմէի պատմությունը մտել է նաև Ղփտիների մոտ, որոնք կոչում են Արփիսիմա (Ալիշան, Արշալ. քրիստ. 136)։ Տես նաև Վրաց աղբ. Ա. էջ 20, 22, 169—171, Բ. 89, 98—104 (գրված է Հռռմ-Սիմէ)։

— 2. Հռիփսիմէ, բամբիշ Վասպուրականի, դուստր Աշոտ Մսակերի, քույր Բագարատ պատրիկի, մայր Աշոտ, Գուրգէն և Գրիգոր Արծրունեաց, պատգամախոս գնաց Բուղայի մոտ՝ հաշտություն խոսելու համար։ Որդիները գերի քշվելով Բաղդադ, ինքն էլ կամովին հետևեց նրանց (852 թ)։ Հակառակ տանջանքներին, չուրացավ հավատքը։ Մեռավ Բաղդադում.—ուղ. Հռուփսիմէ՝ Արծր. Գ. (ե), ժե.—սեռ. Հռիփսիմեայ՝ Արծր. Գ. դ։

— 3. Հռիփսիմէ կույս, դուստր Աշոտ Գ. Ողորմածի. իր հիվանդությունը բուժելու համար գնաց Մաղարդայ վանքը, ուր մնաց մի ամիս։ Անի վերադառնալու ժամանակ մեռավ Աստապատ գյուղում։ Մահվան միջոցին Աստապատ գյուղը կտակեց

Մաղարդայ վանքին։ Կտակաթուղթը կրում է 981 թվից. օրինակը տես Սմբատեանց՝ Երնջակ 422—425.—կեղծիք, որովհետև Աշոտ Գ մեռավ 977 թ.—Սիսական 517։

— 4. Հռիփսիմէ, օժանդակեց Ստեփաննոս գրչին, գրելու համար Տօնականը՝ Տիւրիկի Նեղկուկ գյուղում, 1194 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 511։

— 5. Հռիփսիմէ տիկին, որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրած Մանազկերտի Նորատին գյուղի գերեզմանատան մեջ, 1210 թ.—Թորոս աղբ. Բ. 279։

— 6. Հռիփսիմ, Թվի կին Տէր Յորդանանի, որ շինեց Գոգոս-քիլիսայի մոտիկ հին եկեղեցին 1247 թ. հիշված է նրա թողած արձանագրության մեջ։—Բարխուտ. Արցախ 363։

— 7. Հռիփսիմէ, կին Սարգսի և մայր Առիւծ Հոգևորեանցի, որ Հոռոմոսի վանքի առուն է նորոգել և վանքին նվերներ է արել 1251 թ.—Արձ. Շիրակ 25։

— 8. Հռուամսիմ, կին Հայրապետի և մայր Սոստանէսի և Բարսեղի, որոնք մի խաչքար են կանգնեցրել Խաչենի Խարձք գյուղում, իրենց ծնողների հիշատակին, 1253 թ.—Արցախ 159։

— 9. Խուռում, եղբայրն է Վահրամշահ. շինել է Ջրաբերդ գավառի Երից մանկանց վանքի մոտ մի եկեղեցի. 1260 թ.—Արցախ 222։

— 10. Հռէփսիմէ, դուստր Թէոդոս քահանայի և քույր Կոստանդին Հռիփսիմեցի քահանայի, որ Կիլիկիայում գրեց մի Աւետարան, 1269 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 656։

— 11. Հռիփսիմէ կրոնավորուհի, դուստր Կոստանդին պայլի և քույր Հեթում թագավորի. գրել տվեց մի գիրք՝ Արիստակէս գրչին, Լիսոնկայ վանքում, 1270 թ (Բանասէր 1899, էջ 130)։—Հռիփսիմի գրչությամբ հիշված է Կոստանդին պայլի որդիների հետ (Սմբատ գունդստաբլ, Հեթում թագավոր, Օշին պայլ, Բարսեղ արքեպիսկոպոս, Լևոն մարաջախտ, Վասակ մենամարտ կորովի), ինչպես և նրա աղջիկների հետ (Թիֆանո թագուհի Կիպրոսի, Կալամարի կոմսուհի, Ֆիլիպ և Մարիամ թագուհի)՝ Յովհաննէս արքայեղբոր իբրև «քույր», իր գրած Աւետարանի հիշատակարանում, 1286 թ. Կարծում եմ նույն է այն Հռիփսիմէ կրոնավորուհու հետ, որի մոտ սովորել է Յովհաննէս արքայեղբայրը (Սիսուան 144) նախ քան կրոնավոր ձեռնադրվելը.—Ձեռ. Վասպ. 109։

— 12. Հռիփսիմէ, դուստր Աստուածատուր քահանայի (№

29), որ Լիմ անապատում, Խաչատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1301 թ.—Ձեռ. Վասպ. 141։

— 13. Հռիփսիմէ, կին Շերկանն և մայր Յովսիան գրչի, որ Հազարակն գյուղում, Հայրապետ քահանայի համար օրինակեց Աւետարանը 1316 թ.—Ձեռ. Վասպ. 166։

— 14. Հռիփսիմայ, հարսն Շահնշահի, որ Գողթան գաւառի Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը՝ 1333 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

— 15. Հռիփսիմէ, դուստր Դանիէլի, քույր Մարգար գրչի՝ Բերդձորում, 1337 թ.—Տաշեան, Ցուց. 696։

— 16. Հռուբ (իմա Հռիփսիմէ) կին Իշխանի, մայր Մկրտիչ կուսակրոն քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Աւետարան, 1344 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237։

— 17. Հռիփսիմ հավատավոր, մերձավոր պարոն Յովհաննէսի, որ Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1344 թ.—Թորոս աղբ. Բ. 355։

— 18. Հռիփսիմէ, դուստր Գրիգորիս քահանայի և վաղամեռիկ քույր Ստեփաննոս քահանայի, որ Սուրխաթ քաղաքում (Խրիմ) Քրիստոստուր կրոնավորի համար օրինակեց Աստուածաշունչը, 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7, 13։

-- 19. Հռիփսիմէ, մայր Ֆիմի Այասցու, հիշված 1375 թ.—տես անդ։

— 20. Հռիփսիմ! կին Դաւթի և մայր Արղուն տիկնոջ, որ կազմել տվեց Նարեկը, որ Ներսէս երեցը գրել էր Թաւրիզում, 1377 թ.—Ձեռ. Դագեան, Ա. 55 ա։

— 21. Հռումսիմա, հարս Սաղմոսիկ քահանայի, հիշված են Գետաշէնի Աւետարանում, 1325—63 թվերին.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 44։

— 22. Հռիփսիմէ, դուստր Առաքել քահանայի և քույր Գէորգ երեցի, որ Երզնկայում օրինակեց Ճաշոցը 1391 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։

— 23. Հռիւս խաթուն, կին Առաքել քահանայի և մայր Մկրտիչ Նաղաշի (ԺԴ դար)։—Արրտ. 1898 յնվ. Ձեռ. Վենետ. Ա. 116։

— 24. Հռիփսիմէ, դուստր Աստուածատուրի և Մարթայի, հոգևոր մոր Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348։

— 25. Հռիփսիմէ, դուստր Խաթունի, որ Աղթամարում,

Մինասենց Թումա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1425 թ.— Ձեռ. Վասպ. 352։

— 26. Հռիփսիմէ, դուստր Սադոնչ, Գամաղիէլի վանքում, Յոհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1427 թ.—Նոտարք, էջ 82։

— 27. Հռիփսիմէ, կին Թումայ քահանայի և մայր Խաչատուր քահանայի (№ 82), որ Բուխտանում, Մարգարէ աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1428 թ.—Նոտարք 90։

— 28. Հռիփսիմէ, սանամոր հարս Յովհաննէս քհ. Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 բ։

— 29. Հռիփսիմէ, կին Պետրոսի, մայր Դովլաթ խաթունի՝ կնոջ տանուտէր Առոմի, որ Ոստանում գրել տվեց Գանձարանը, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 ա։

— 30. Հռիփսիմէ, կին մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։

— 31. Հռիփսիմէ, կին Յովհաննէսի և մայր Մարտիրոս կրոնավորի, որ Արծկէում Յոհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1464 թ.—Նոտարք 219։

— 32. Հռփսիմէ, դուստր Ամիրի և քույր Ստեփանոս քահանայի, որ Հերմոնի վանքում գրել տվեց մի Աւետարան 1469 թ.—Ձեռ. Թաւր. 132 բ։

— 33. Հռիփսիմէ, դուստր Գրիգորի և քույր կոշկակար Մարտիրոսի, որ Աշոտաց երկրի Անկիւնաց վանքում գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588։

— 34. Հռիփսիմէ, դուստր Թոդանի (№ 2) և քույր Փաշայի, որ Թովմա առաքյալի վանքում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 463։

— 35. Հռիփսիմէ, կին Վարդապետի, և մայր Յովհաննէս քահանայի, որ Երզնկայում Մանուէլ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 420։

— 36. Հռիփսիմէ, դուստր Խոսրովի (№ 33), Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։

— 37. Հռիփսիմէ խաթուն, կին պարոն Թորոսի և մայր Էլպաշի պարոն Էմին պէկի, որ Կեսարիայում, Տէր Յովանէս Նաղաշին գրել տվեց մի Ճաշոց՝ 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1848։

— 38. Հռոփսիմէ, դուստր Պետրոս Խզըլօղլանի, գնեց Մարտիրոս երեցից մի Աւետարան և իր հոր հիշատակին նվիրեց Ս. Սարգիս եկեղեցուն, 1486 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 537։

— 39. Հռումսիմայ, դուստր Յովսէփ քահանայի և քույր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 40. Հուռումսի, կին Խութլիբէկի և մայր Աղազարի (№ 3), որոնց հիշատակին մի խաչքար է կանգնեցրած Երնջակ գավառի Շոռոթ գյուղում, 1493 թ.—Սեդրակեան՝ Հնութ. Երնջակու 124, Սիսական 356։

— 41. Հռոմսի, կին Տէրպարոնի, մայր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ.—ՀԱ 1887, 56 ա։

— 42. Հռոմսիմ, քրոջ աղջիկ Աստմի, որ իր Հարիր կնոջ հետ՝ Աղբակի Երնկանի գյուղում մի Աւետարան գրել տվեց, 1498 թ.—Ջեռ. Վասպ. 526, 528։

— 43. Հռիփսիմէ մայրապետ, Սիւնեաց Հալիձոր բերդի կուսանաց անապատում օրինակեց Խոսրովի «Մեկնութիւն ժամագրոց» 1653 թ.—Հացունի, Դաստ. 234, Սիսական 257 բ։

*ՀՐԱՀԱՏ, ար. < պհլ. Frahāt անունից. հմմտ. Phraātes I (Արշակ Ե) թագավոր Պարթևաց Ն. Ք. 176—171 թ., Phraātes II (Արշակ Է) Ն. Ք. 138—128 թ., Phraātes III (Արշակ ԺԲ) Ն. Ք. 70—57, Phraātes IV (Արշակ ԺԴ) Ն. Ք. 37—2 թ., Phraātes V (Արշակ ԺԵ) Ն. Ք. 2—Յ. Ք. 4 թ. գրված նաև Phrahates, Phradates, հուն. Φραάτης, Φραδάτης, 'Αφραάτης, ասոր. افرهت Afrahāt, պրս. فرهاد Farhād. Իբրև անձնանուն գործածված է նաև Պարսից ու Ասորիների մոտ. ինչ. Farhād զորավար Խոսրով Ա-ի (Տաճն.), Farhād՝ Շիրինի նշանավոր սիրահարը, Afrahat ասորի եպիսկոպոս Սպահանի 415 թ., Ապգար Հրահատ՝ թագավոր Եդեսիոյ 242 թ։ Բոլորի հնագույն ձևն է հպրս. զնդ. fraδāta, որ կազմված է fra մասնիկով da «անուն տալ, դնել, առաջ բերել, երևան հանել ևն» արմատից (Bartholomae, Altir. Wört. 983, Հիւբշ. 48)։ Ըստ այսմ ճիշտ չէ Justi 101 ա տրված բացատրությունը՝ իբր «զգոն, խելոք», իսկ հյ. հրահատ «կրակի հատիկ» միայն պատահական նմանություն ունի։ Ըստ Ս. Երեմեանի նույն է վրաց. Ռատ անունը, որ Լիպարիտեանների տոհմանունն է։

— 1. Հրահատ Կամսարական, որդի Գազաւոն Կամսարականի. հորը հետ գերի տարվեց Պարսկաստան և դրվեց Անյուշ

բերդը. ապա աքսորվեց Սագաստանից հեռու մի տեղ։ Ս. Սահակի խնդրանոք ազատվելով վերադարձավ Հայաստան՝ Խոսրով Գ թագավորի վերջին տարին «415 թ».—Խոր. Գ. ծե.—սեռ. Հրահատայ՝ Խոր. Գ. կե։—Կոգեան, Կմսրկնները 94—95։

— 2. Հրահատ տեր Աշոցայ, անդամ Արտաշատի ժողովի «449 թ».—Փարպ. իգ։

— 3. Հրահատ Կամսարական, կրտսեր եղբայր Սահակի և Ներսեհի. երեքն էլ որդիք Արշաւիր Կամսարականի. մասնակից եղավ Վահան Մամիկոնեանի ապստամբական կռիվներին. մասնակցեց Ակոռիի և Ներսեհապատի ճակատամարտներին. սպանեց Ատրվշնասպ մարզպանին (481 թ)։ Վրաց պատերազմում գերի ընկավ Պարսից ձեռքը, բայց փախավ ազատվեց։—Փարպ. կը, կթ, հդ, հզ, ձ (ձեռ. Հրատ), էջ 188 (ձեռ. Հրատ).—Անան. գիտ. 26. Օրբ. ժէ. Սիմ. ապար. 62.—սեռ. Հրահատայ՝ Փարպ. կթ, հզ, հթ, էջ 196.—գրծ. Հրահատաւ՝ Փարպ. կթ, հա.—Կոգեան՝ Կմսրկնները 103—120։

— 4. Հրահատ Բողբերդցի, եղբայր Ներսեհի և Սահակի, որոնք Յուստինիանոս կայսեր ժամանակ եկան Ներսէս պատրիկի մոտ ծառայության (533 թ)։ Հունարեն տառադարձված է 'Αρζάτιος).—Զամչ. Բ. 241։—Թե այս երեքը Արշաւրի որդինե՞րն են, այս մասին բացասական կարծիք ունի Կոգեան, Կմսրկնները 119։

— 5. Հրահատ մարզպան Հայաստանի, հաջորդեց Գորիոի և նստավ 4 ամիս (587 թ)։—Այրարատ 561։

— 6. Հրահատ, որդի Գրիգոր Վանանդեցու, հիշված է Բագարանի արձանագրության մեջ 628 թ.—Կոգեան, Կմսրկնները, էջ 137։

— 7. Հրահատ, պատրիկ, տեր Շիրակի և Արշարունեաց, որդի Ներսեհ Կամսարականի, որ պատրիկ էր Հայաստանի 685—8 թ. հիշված է Թալինի եկեղեցու անթվական արձանագրության մեջ. մայրն է Շուշան։—Շահխաթ. Բ. 50, Այրարատ 138, Շողակաթ 173, 176, Կոգեան՝ Կմսրկնները 153—4, 164—6։—Սրա որդին է Արտաւազդ Կամսարական (№ 28), որ տես (Շիրակ 136 և 174)։

— 8. Հրահատ նախարար Սիւնեաց, հաջորդեց Գրիգորին (Է դար).—Օրբ. ժզ. Սիսական 13 բ, 14 բ, 17 բ (ըստ Ալիշանի իշխել է 637—655 թ)։

— 9. Հրահատ կոմս Մամիկոնեան, որի որդին Մուշեղ ա-

ապստամբեց Հասան ոստիկանի դեմ (780 թ).—սեռ. Հրահատայ՝ Ղև. լգ։

— 10. Հրահատ մեծ իշխան Սիւնի, որդի Սահակի, եղբայր Արումանի, տեր Կովսական գավառի, հիշված է Տաթևի 839 թ. արձանագրության մեջ և 844 թվի կալվածագրում։ Այս թվին Նորաշինիկ գյուղը նվիրեց Տաթևին։—Օրբ. լը, ծթ.—սեռ. Հրահատայ՝ Օրբ. լը։

— 11. Հրահատ Վահեունի, ժամանակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ».—Արծր. Գ. դ (գրված է Խրախատ)։

— 12. Հրահատ որդի Սահակի, եղբայր Գրիգոր Սուփանի և Գագիկի.—Օրբ. ծդ։

— 13. Հրահատ Սիւնի, որդի Գրիգոր Սուփան իշխանի և եղբայր Վասակ Գաբուռի.—Օրբ. ծդ.—սեռ. Հրահատայ՝ Օրբ. լգ։

— 14. Հրահատ իշխան, կինն էր Բուպղինգուխտ՝ դուստր Սիւնեաց Վասակ իշխանի. մեռավ անորդի. Բուպղինգուխտը Մաճ գյուղը նվիրեց Տաթևին 867 թ.—սեռ. Հրահատայ՝ Օրբ. լթ։

— 15. Հրահատ Սիւնի, որդի Գրիգորի և եղբայր Գագիկի. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 և 881 թվերի կալվածագրերում.—Օրբ. լէ.—բց. ի Հրահատայ՝ Օրբ. լթ։

— 16. Հրահատ Սիւնի. ներկա էր Տաթևի օծման հանդեսին՝ 906 թ. (նախորդներից մեկն է).—Օրբ. խը։

— 17. Հրահատ իշխան Սիւնի, որի օգնությամբ Ստեփաննոս քահանան շինեց Բղէն գավառի Նորավանքը 936 թ.—սեռ. Հրահատայ՝ Օրբ. խգ։

— 18. Հրահատ վանահայր Նորավանից, հաջորդեց Ստեփաննոսին և նստավ 970 թ.—Օրբ. խդ։

— 19. Հրահատ, գործակալն էր Գրիգոր Մագիստրոսի Տարոնում. նորոգեց Ս. Կարապետի տաճարը (ԺԱ դար).—Լաստ. իա։

ՀՐԱՆԴ, ար. սովորաբար հանում են հյ. հուր «կրակ» բառից. հմմտ. Մագ. Թղ. ԺԹ «Ո՞ւր Հրանտ հրատեսակ գեղատիպ». և ըստ այսմ գրում են Հրանդ (դ-ով), իբր -անդ մասնիկով (հմմտ. Եռանդ). բայց հների մոտ ավելի Հրանտ ձևն է իշխում, և մանավանդ Հրատն։ Ըստ այսմ Հրանդ ձևը սարքովի ուղղագրություն է թվում։

— 1. Հրանդ Ա. Նահապետ Հայկազն, հաջորդ Գոռակի. Ն. Ք. 1267 թ. ըստ Զամչ.—ուղ. Հրանտ (տ-ով) Խոր. Ա. ԺԹ (2 ձ. Հրատն), Մխ. անեց. գ. Կաղկանտ. Ա. Ժե. Սամ. անեց.

45. Մխ. այրիվ. 18, 50. Մխն. համղ. 9.—Հրատն՝ Յհ. կթղ. բ.— Հուան՝ Վրդ. է (ըստ հրտր. Էմինի՝ Յուան. այլ ձեռ.՝ Յուակ).— Հրանտ՝ Մագ. թղ. ժթ։

— 2. Հրանդ Բ. իշխան Հայկաղն, որ Սելևկեանց կողմից կուսակալ կարգվեց Հայաստանում, Ն. Ք. 284 թ.—Զամչ. տես Որոնդէս։

ՀՐԱՆՈՅՇ, իգ. համարվում է հուր+անոյշ բառերից. բայց անշուշտ կեղծ ստուգաբանութիւն է։ (Justi 131 հրա- համարում է կրճատված Հրահատ անունից)։ Հնում ավանդված է միայն Թ—ԺԱ դարերում. այնուհետև դադարում է. կենդանացավ անցյալ դարում և այժմ շատ սովորական անուն է։

— 1. Հրանոյշ տիկին Արծրունեաց. իր ամուսին Մուշեղ Արծրունու և Աշոտ մեծ իշխանի հետ գերի տարվեց Բաղդադ՝ Բուղայի ձեռքով «852 թ».—Հրանուշ՝ Արծր. Գ. գ։

— 2. Հրանուշ, դուստր Աշոտ Ա թագավորի և քույր Սմբատ Ա թագավորի Բագրատունեաց. կին Գրիգոր-Դերենիկ Գ-ի. կոչվում է նաև Սոփի. իր ամուսինը անարժան սիրով կապվեց Հերի ամիրայի աղջկա հետ և կնոջը բաց թողեց. ամուսնու սպանությունից հետո («886 թ») մնաց այրի և լքված մեռավ «888 թ».— Սուտ-Շապհ. 64, 66, 84։

— 3. Հրանոյշ (կամ Անոյշ) թագուհի, դուստր Դավիթ Անհողինի, որ Լոռիի թագավորն էր. քույրն է Կորիկէ Բ-ի. շինությունները է արել Սանահնի վանքում. հիշված է 1063 և 1083 թվերին.—Justi 131 ա. Հայապ. 392, Մովսէսեան՝ Լոռի 48, 56, Ազգագր. հանդ. Գ. 299։

— 4. Հրանուշիկ, որի համար Օրբ. ժմ. 10 գրում է ՇԽԸ= 1099 թվի տակ «Հրանուշիկն եկն». ուրիշ ոչինչ. հայտնի չէ թե ով է և ուր է եկել։

— 5. Հրանոյշ, ազնվական կին Տիրի բերդաքաղաքում. հարեց Թոնդրակեցոց աղանդին՝ քարոզությամբ Կունծիկ աբեղայի (ԺԱ դար)։—Լաստ. իգ։

— 6. Հրանուշ, արենակից Աբրահամի որդի Խաչերես Լոռեցու, որ խանութներ և այգի է նվիրել Բագնայրին, 1209 թ.— Շիրակ 117։

† ՀՐԱՉԵԱՅ, ար. < հյ. հուր+աչք բառերից, իբր «հրեղեն աչքեր ունեցող».—«Կոչի վասն առաւել պայծառերես և բոցակնագոյն լինելոյ» Խոր. Ա. իբ։ [Պատահական նմանություն ունի զնդ. Frāčya արական անձնանունը (Bartholomae, Altir.

Wört. 1012)]։ Խորենացու հնարած անուններից է, որ գործածված է միայն մի անգամ. այնուհետև իսպառ խափանվեց։ Վերակենդանացավ Պոլսում ԺԹ դարի կեսին. սկզբում չափազանց հազվագյուտ էր. ապա շատացավ, մանավանդ Կովկասում, ուր դարձավ իգական անուն, շնորհիվ Պոլսեցի մի դերասանուհու, որին Տփղիսեցիք՝ աչքերի հիանալի գեղեցկության պատճառով տվին «տիկին Հրաչեայ» անունը։ Սրա հակազդեցությունը այն եղավ, որ արականի համար Կովկասում հնարեցին Հրաչիկ ձևը, իսկ Պոլսում իգականի համար հնարեցին Հրաչուհի անունը։ Կրճատ ձևն է Հրաչ, որ գործածական է Պոլսում՝ արականի համար։

— Հրաչեայ, թագավոր Հայկազն, որդի և հաջորդ Պարույրի (Ն. Ք. 700 թ. ըստ Զամչ.) Բաբելացոց Նաբուգոդոնոսոր թագավորի հետ միասին արշավեց Երուսաղեմի վրա, գրավեց և Հայաստան գերի բերավ հրեա Շամբաթ իշխանին, որից սերվեց Բագրատունեաց տոհմը.—Խոր. Ա. իբ. Յհ. կթղ. գ. Ուխտ. Ա. ժթ, իգ, իդ. Մխ. անեց. ա, գ. Շնորհ. վիպ. 146. Կղկնտ. Ա. գ, ժե. Սամ. անեց. 45. Մագ. Թղ. ժթ, հգ. Մխ. այրիվ. 18, 54. Մին. համդ. 10.—Հրաչէ (ուղ.)՝ Յհ. կթղ. գ. Մխ. անեց. գ. Սասն. 18. Վրդ. է. Սամ. անեց. 45. Վրաց. աղբ. Ա. 74.—սեռ. Հրաչեայ՝ Ուխտ. Ա. իդ. Սամ. անեց. 46.—Հրաչէի՝ Յհ. կթղ. գ. Վրդ. է. Պտմ. լմբ. 239. Մին. համդ. 11.—բց. ի Հրաչեայ՝ Ուխտ. Ա. իե.—ի Հրաչէէ՝ Օրբ. ծգ.—մի ուղղագրություն Հրաչեայի մասին տես Աբեղյան, Հայ ժող. առասպ. 399—403։—Այս Հրաչեայի մասին խոսում է նաև Զեռ. Վենետ. Բ. 630 կոչելով Հրչէ. «Բան պիտանի. Հրչէ հայոց թագաւորն ընդ Նաբոգոդոնոսորայ էր որ գերեցին զԵրուսաղէմ և զՀրէաստան։ Հրչէ՝ զեղբայրն Ցովաքազու՝ զՍմբաք, որ է Շմբաթ, որդի Ցովսիա թագաւորի, եբեր ի Հայս և պատուով պահեաց...»։

— Ոմանց մոտ Գոթաց Հոչէ թագաւորն էլ դարձել է Հրաչեայ. ինչ. Ուխտ. Ա. ծէ, ծը։

+ՀՐԱՉԻԿ տես նախորդը։

+ՀՐԱՉՈՒՀԻ, իգ. նախորդ Հրաչեայ անվան իգականն է, որ հնարեցին Պոլսում ԺԹ դարի վերջերքը։

ՀՐԱՍԵԿ, ար. ծագումն անհայտ։

— Հրասեկ, անծանոթ իշխան մի, որ շինեց և իր անունով կոչեց Սիւնեաց երկրի նշանավոր Հրասեկայ բերդը.—բց. ի Հրասեկայ՝ Օրբ. բ։

† ՀՐԱՎԱՐԴ, իգ. < հյ. հուր+վարդ բառերից, իբրև «կրակի նման կարմիր վարդ»։ Նորակերտ անսովոր անուն։

† ՀՐԱՐՓԻ, իգ. < հյ. հուր+արփի բառերից, իբրև «հրափայլ արև»։ Նորակերտ անուն, քիչ գործածական։

† ՀՐԵՂԷՆ, իգ. < հյ. հրեղէն բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1744 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 250, Խրեղէն ձևով)։

Հրև տես Ցրև։

ՀՕՍՔԱ, իգ. գործածական է Լենահայոց մեջ. հնագույն հիշատակությունը 1624 թ. (Տաշեան, Ցուց. 718)։

ՀՕՐՈՅ, ար. ծագումն անորոշ։ Խորենացու հնարած անուններից է։

— Հորոյ, նահապետ Հայկազն, հաջորդեց Գղակի, Ն. Ք. 1197 թ. ըստ Չամչ.—Խոր. Ա. ժթ. Կղկնտ. Ա. ժե (հրատ. Էմինի). Մին. համդ. 9.—գրված է զանազան ձևերով. Հորայ՝ Մխ. անեց. գ.—Հարա՝ Կղկնտ. Ա. ժե (հրատ. Շահն.)—Հաւաճ՝ Յհ. կթղ. բ. Վրդ. ել.—Հորա՝ Շիր. քրոն. 31.—Հորայ՝ Մաղ. թղ. ժթ.—Հորայ՝ Մխ. այրիվ. 18, 50.—Նորա! Սամ. անեց. 45։

ՀՕՐՏԻԿ, սեռն ու ծագումը անհայտ։ Հիշված է մի անգամ ԺԲ դարից։

— Հաւրտիկ, պատարագ է տացել Խծկոնից վանքից՝ ըստ նույն վանքի 1213 թվի արձանագրության.—Այրարատ 113։

# Ձ

† ՁԱԳԻԿ, ար. < հյ. ձագ բառի փաղաքշականն է. հմմտ. Հաւուկ, Թրր. Ծաւրի պրս. Բալա համազորները։

— 1. Ձագիկ նահապետ Սիւնեաց, Սիսակ նահապետի սերունդից. իր անունով է կոչվել Ձագեձորը (=Զանգեզուր).—բց. ի Ձագկայ՝ Օրբ. բ։

— 2. Ձագիկ իշխան աղուանից, որին սպանեցին Խազիրները 727 թ.—Կղկնտ. Գ. ժէ։

— 3. Ձագիկ Ա Սիւնի, որդի Վահանի, հիշվում է իբրև վկա՝ Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը. Սիսական 273։

— 4. Ձագիկ Բ Սիւնի, ըստ Սիսական 273 իշխել է 895—906 թ. (ուրեմն սա էր որ ներկա էր Տաթևի օծման հանդեսին՝ 906 թ.) ինքը թոռն է Ձագիկ Ա-ի. հոր անունը հայտնի չէ. սրա որդին ու հաջորդն է Ջուանշէր Բ և թոռը Ձագիկ Գ։

— 5. Ձագիկ Գ որդի Ջևանշիրի, իշխան Սիսական, տեր Բաղաց և Կապանի. ժամանակակից Աշոտ Բ Երկաթի («915—930 թ»). Տաշրակերտ գյուղը ծախեց Տաթևին՝ 925 թ. իր որդիքն են Վահան և Ջևանշիր.—Անան. ապստ. 142 բ. Օրբ. լէ, խ, խբ, խդ, ծ.—սեռ. Ձագկայ՝ Օրբ. խդ, ծ, ծդ.—Ձագիկայ՝ Անան. ապստ. 143 ա.—Սիսական 273 բ։

— 6. Ձագիկ Դ. իշխան, թոռն Ջուանշերի Բ (911—958 թ) և հայր Փարաջի, որ Բոլորաքար գյուղը հաստատեց Տաթևի վրա՝ 998 թ.—Օրբ. ծգ.—սեռ. Ձագկայ՝ Օրբ. ծգ։—Սիսական 273։

† ՁԱՅՆԻԿ, իգ. < հյ. ձայն բառից, նորակերտ և անսովոր անուն։

ՁԵՌԷՍ, ար.—ՆՀԲ այս բառը համարում է հասարակ անուն՝ «ձեռնոց» նշանակությամբ. ուրիշներ անձնանուն են կարծում։ Հմմտ. Եւ զգեցուցանողս իւր զՁեռէս ի զաւակաց Քանանացւոց, անուն կոչէ ազգին Գնթունիս. Խոր. Բ. է.—Կարգէ ընդ սմա զՁեռէս ի զաւակէ Քանանացւոց ի ցեղէն Գնթունեաց զգեցուցանողս ինքեան և դնէ ի վերայ արքունի հանդերձիցն. Օրբ. գ.—Եւ զգեցուցանողս զՁեռէս ի զաւակէ Քանանացւոց և Քանիդայ. Ասող. Ա. ե.—Ձեռէս՝ Սամ. անեց. 48։

† ՁՈՐԵՆԻ. Թերևս ար. ծագումը անորոշ. այս ձևի տակ անշուշտ ծագում է ձոր բառից, իբր «ձորաբնակ» (հմմտ. վայրենի, քաղքենի). բայց կարելի է նաև հասկանալ ձորենի «ձոր պողի թուփը» (ինչպես կա մորենի).—վերջապես կարող է լինել ցորեան բառից։ Մի անգամ հիշատակված է՝

— Ձորենի Թասրովենց, որ գնել է մի հին Աւետարան (գրված Երզնկա 1310 թ) և նվիրել Կարմիր խաչին (թվականն անհայտ).—Թորոս աղբ. Բ. 446։

† ՁՈՒԻԿ, իգ. համարվում է հյ. ձու բառի գգվականը. (Պոլսի բարբառով նշանակում է «թեթևսոլիկ»)։ Միայն մի անգամ հիշատակված է Ե դարից։ Գործածական է և այժմ։

— Ձուիկ, դուստր Վասակ Արծրունու և քույր Աշան Արծրունու. կին Հմայեակ Մամիկոնեանի՝ եղբոր քաջն Վարդանի. Վահան Մամիկոնեանի մայրն է.—Փարպ. կբ.—սեռ. Ձուկայ՝ անդ։

† ՁՕՆԻԿ, ար. < հյ. ձօն «նվեր» բառից. նորակերտ և անսովոր անուն (Լենինական)։

# Ղ

ՂԱԲԱԲՈՒՇ, ար. ծագումն անհայտ. Թերևս պրս. قبابوش qabāpūš ենթադրյալ ձևից, որ պիտի նշանակեր «կապա կամ պարեգոտ հագած»։ Մի անգամ գտնում եմ գործածված՝

— Ղայպայպուշ որդի Սողրաթմիշի, որոնց տապանաքարը գտնվում է Շամախիի Գիրկ գյուղի հին գերեզմանատանում, 1474 թ.—Բարխուտ. Աղվանից երկ. 198։

ՂԱԲԱՐ, ար. ծագումն անորոշ. մի անգամ հիշված եմ գտնում 1512 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 646)։—Հմմտ. Ղարպար:

*ՂԱԴԱՄ, իգ. < արաբ. قدم qadam բառից, որի մասին տես խաղամ: Գործածված է ԺԷ դարում. բայց անշուշտ կար նաև ԺԶ դարում, ինչպես ցույց են տալիս հաջորդ անունները։ Եղած հիշատակություններն են՝ Ղատամ 1644 թ. (Rapport Belgique 117), Ղատեմ 1658 թ. (Ձեռ. Կես. ածած. 54 բ), Ղատամ՝ անթվական մի հիշատակարանում (Bodleian 148), սխալ գրչությամբ Ղատում 1611 թ. (Սմբատեանց, Երնջակ 243)։

*ՂԱԴԱՄԽՈՒԹԼՈՒ, իգ. < արաբ. قدم qadam (տես խաղամ)+ թթր. قوتلو qutlu (տես խութլու). ամբողջի իմաստն է «նա որի ոտքը երջանկաբեր է»։ Հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում. այսպես՝ Ղադամխութլու 1533 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 578), Ղատամղութլու 1641 թ. (Bodleian 212), Ղատումղութլու 1648 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 41), Ղատամղութլու ԺԷ դար (Ձեռ. Դաշեան, Ա. 110 ա)։

— Ղադամխութլու, մերձավոր տանուտեր բրուտ Ստեփանոսի, որ Վան քաղաքում գրել տվեց մի Ավետարան 1435 թ.— Ձեռ. Վասպ. 370։

*ՂԱԴԱՄՇԱՀ, իգ. < արաբ. قدم qadam (տես խաղամ)+ պրս. شاه šāh «թագավոր» բառից, որ նաև իբրև փաղաքշական մանիկ է գործածվում։ Հնագույն հիշատակությունը ԺԵ դարից հետո (Ձեռ. Թավր. 42—43). մի անգամ էլ կա 1311 թվին գրված մի Ավետարանում դրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թավր. 71 ա) և երրորդ անգամ Հերհերի եկեղեցու անթվական մի արձանագրության մեջ (Սիսական 111)։

*ՂԱԴԱՄՓԱՇԱ, իգ. < արաբ. قدم qadam (տես խաղամ)+ պրս. թրք. پاشا pāšā բառերից։ Հիշատակված է ԺԵ դարում։

— 1. Ղադամփաշա, դուստր տանուտեր բրուտ Ստեփանոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան

1435 թ. այս թվականից քիչ անց նույն աղջիկը վաղաժամ մահով մեռել է.—Ձեռ. Վասպ. 370 (այս անունը անդ էջ 369 հիշված է Զադամփաշա ձևով, որ ես էլ վերը մեկնել եմ պրս. zādam pāšā «ծնած փաշա է». հաջորդ էջում նույն անունը գրված է Ղադամփաշա. արդյունք գ-ղ տառերի շփոթման՝ Լալայեանի միջոց անուշադիր վերաբերմունքի պատճառով)։

— 2. Ղադամփաշա, կին Նուրիջանի, որ Ագուլիսում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Ցայսմաւուրք 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 299։

ՂԱԴԱՆԱ, իգ. < ծագումն անհայտ։

— Ղադանա (Ghadana), դուստր Հայոց թագավորի, կին Փարսման թագավորի վրաց, որի մահից հետո կառավարեց երկիրը՝ 146 թ.—Justi 107 ա։

*ՂԱԴԻՇԱՀ, իգ. < արաբ. قاضی qāḍī «դատավոր»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից. համտ. հաջորդը։

— Ղադիշայ, քույր Աղութ խաթունի. միասին գրել տվին մի Աւետարան՝ Վարդան երեցին, Վարագայ վանքում, 1260 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 46 բ։

*ՂԱԴԻՍՈՒԼԹԱՆ, իգ. < արաբ. قاضی qāḍī «դատավոր»+ سلطان sulṭān «թագավոր կամ թագուհի» բառերից, որի հետ նույն է նախորդը։

— Ղադիսօլթան, դուստր Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

*ՂԱԴՐԻ, իգ. < արաբ. قدری Qadrī անունից, որ սակայն արական է. ծագում է قدر qadr «արժեք, հարգ» բառից, ակնարկությամբ արաբ. ليلة قدر layla-i qadr (=թրք. qadər gejesi) «այն նվիրական գիշերը, երբ Ղուրանը իջել է երկնքից»։ Մի անգամ գործածված եմ գտնում Ղադրի կամ Խադրի ձևով՝ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 312)։

*ՂԱԶԱԼ, ար. եթե վրիպակ չէ (փոխանակ գրելու Ղազար) կարող է ծագել կամ արաբ. غزال γazāl «եղջերուի ձագ» կամ արաբ. غزل γazel «սիրերգ» և կամ (նվազ հավանական) թրք. قزل qazal «չոր տերև» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (Թորոս աղբ. Բ. 370)։

ՂԱԶԱՆ, իգ. ծագումն անորոշ. մի անգամ հիշված է անհայտ թվականով մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 186։—Հայտնի է թաթարների Ղազան խանը։

*ՂԱԶԱՐՈՍ, ար < հուն. Λάζαρος անունից, որ է լտ. Lazarus, ֆրանս. Lazare, իտալ. Lazzaro, գերմ. Lazarus, ռուս. Ла́зарь են (Հիւբշ. 335)։ Եբրայական անուն է, թեև Հին Կտակարանում չէ գործածված. կրճատված է Եղիազար անունից, որ բուն նշանակում է «օգնութիւն Աստուծոյ իմոյ» (տես անդ)։ (Ըստ այսմ Մաժբբ. Բ տպ. էջ 36 մեկնում է «Ղազարոս, որ ըստ Եբրայեցւոցն օգնականել ասի»)։ Հայտնի է Նոր Կտակարանից Ղազարոս բարեկամ Յիսուսի, որ մահվանից չորս օր հետո հարություն է առել ըստ Յհ. ԺԱ։ Ավելի նշանավոր է «աղքատ Ղազարոսը» (Ղկ. ԺԶ 19—31), որի անունով շինված են Ս. Ղազար անունով վանքերը և իտալ. lazaretto > ֆրանս. lazaret «վարակված նավորդների քառասնօրյա մաքրանոց»։ Սրանից էլ ռուս. лазарет «զինվորական հիվանդանոց»։ Առաջին իմաստով էր Վենետիկի առաջ գտնված մի աննշան կղզի՝ Ս. Ղազար անունով, որ ապա դարձավ Մխիթարեան միաբանության հռչակավոր մենաստանը։—Այս անունը գործածական է մեր մեջ Ե դարից ի վեր՝ Ղազարոս, բայց մանավանդ կրճատ Ղազար ձևով։ Կովկասում ռուսերենի ազդեցությամբ ասվում է նաև Լազար։ Կրճատ ձևերն են Ղազօ, Ղազիկ, Ղազլի. վանեցոց մեջ հաճախ գրված կա Կազար ձևով. ինչ. Ձեռ. Վասպ. 682, 773 (երկուսն էլ անթվական) և 818 (1721 թվից)։

— 1. Ղազար (ասորի), եղբայր Զենոբ Գլակի, որ Գլակայ վանքի առաջին առաջնորդն էր։ Ղազարը Լուսաւորչի ձեռքով առաջնորդ կարգվեց Առաքելոց վանքի, որ և կոչվեց Ղազարու վանք (Դ դար).—սեռ. Ղազարու՝ Յայսմ. օգոստ. 11.—Եղիազար՝ Հայապ. 98։

— 2. Ղազարոս, հայրն է Ստեփաննոս Ուլնեցի նահատակի. նախարար էր. բնակվում էր Անտիոքում. հալածանքից փախչելով ապաստանեց Կոկիսոնի լեռները, ուր և մեռավ «362 թ».—Աւքեր. Լիակ. վրք. սրբ. Ե. 62, Յուշիկք Բ. 50, Ազգապ. 188. ավելին տես Ստեփանոս Ուլնեցի։

— 3. Ղազար կաթուղիկոս Աղուանից, հաջորդ Պանդի (Դ դար).—Կղկնտ. Գ. իդ. Կիր. Ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 384։

— 4. Ղազարիկ կամ Ղազրիկ, աշակերտ Մեսրոպ-Մաշտոցի, երեց թարգմանիչներից էր (տարբեր է Ղազար Փարպեցուց).—Զամչ. Ա. 536, Զարբ. Հին դպր. 294։

— 5. Ղազար, տանուտեր Ակոռի գյուղի (Ե դար!) ըստ Յայսմ. յուլ. 7.—Այրարատ 472։

— 6. Ղազար եպիսկոպոս, անդամ Շահապիվանի ժողովի «444 թ».—Հայապ. 159, Ազգապ. 330։ Տես և Ղաւզ։

— 7. Ղազար Փարպեցի, մատենագիր Ե դարու. աշակերտեց Աղան Արծրունուն. ուսումը շարունակեց Հունաց մոտ. վերադառնալով Հայաստան, մի ժամանակ Սյունեաց երկրում ճգնական կյանքով ապրելուց հետո, վայելելով Վահան Մամիկոնեանի պաշտպանությունը՝ կարգվեց վանահայր Էջմիածնի։ Իբրև նոր գաղափարների քարոզիչ՝ միաբաններից հալածված ու կողոպտըված փախավ Ամիթ։ Գրել է «Հայոց Պատմութիւն» (սկսած Արշակունեաց թագավորության բաժանումից մինչև Վահան Մամիկոնեանի մարզպանությունը «485 թ») և «Թուղթ առ Վահան Մամիկոնեան»։ Գերեզմանը ցույց են տալիս Մշոյ Առաքելոց կամ Ղազարու վանքում (Հնոց և նորոց 13)։—Փարպ. դ. էջ (185, 186), 188, 190, 200. Ասող. Բ. ա, բ. Կիր. 3, 16, 17, 21. Վրդ. իե. Տաթև. հարց. 659. Օրբ. ժվ. Օրհն. 247. Մխ. այրիվ. 37 (երկիցս), 63. Օրբ. հկճռ. ժ. Մ. մաշտ. 336 ա. Յայսմ. սեպտ. 17, նոյ. 25, փետր. 19. Առաք. լծ. սահմ. 170. Ջքր. սարկ. Գ. 7, 29. Սիմ. ապար. 7, 33. Ես. կթղ. էջ Ը.—սեռ. Ղազարայ՝ Փարպ. Ա. էջ (183), 195, 197.—Ղազարի՝ Սիմ. ապար. 156.—Ղազարու՝ Փարպ. էջ (185, 186). Ասող. Ա. ա.—Ղազարիկ՝ Մխ. անեց. ե, իգ. ZAPh 1, 207. Սամ. անեց. 3, 72.—Փարպեցու մասին գրվածներից հիշենք Գրգչ. Քնն. պատմ. Դ. 104—8, Զարբ. Հին դպր. 391—406 և մանավանդ Գր. Խալաթեանի ընդարձակ մենագրությունը (Մոսկուա 1883)։

— 8. Ղազար եպիսկոպոս Կամսարական տան, հաջորդ Մովսէսի, նստել է 646—683 թ։—Զամչ. Բ. 374, Այրարատ 56, Տաշեան՝ Ցուց. 656։

— 9. Ղազար ի Տաթևոյ, իբրև վկա հիշվում է Տաթևի 881 թ. կալվածագրում.—Օրբ. լթ։

— 10. Ղազար աբեղա Ակնայ, հորդորեց ժողովուրդին, որպեսզի օգնեն Սենեքերիմ թագավորի իշխան Կիւրեղին՝ շինելու Տիւրիկի Կիւրղի վանքը և Ս. Նշանի մասունքները (1021).—Թորոս աղբ. Ա. 235։

— 11. Ղազար աղանդապետ Թոնդրակեցոց. հաստատված էր Ապահունեաց Թոնդրակ ավանում. Գրիգոր մագիստրոսը քանդեց նրանց ժողովատեղին, պատժեց աղանդավորներին և Ղազարին էլ հալածեց։ Նա էլ իր հետևորդներով փախավ Ասորոց կաթուղիկոսի մոտ, որ այս առթիվ գրեց Մագիստրոսին և բարե-

խոսեց նրանց մասին։ Մագիստրոսը պատասխանեց նրան, գրելով այս առթիվ երկու թուղթ, ուր «շէկ շուն» մակդիրով է կոչում Ղազարին և դատապարտում նրա ընթացքը (1050—1055 թ)։—Մագ. թղ. կե, կը. Զամչ. Բ. 892—3։

— 12. Տէր Ղազար, որի անունով մի խաչաթուռ կա Մուշում, Առաքելոց վանքի պարսպի դուրսը՝ Երևի վանքի նորոգման մասնակիցներից է, 1125 թ.—Սարգիսեան, Տեղագր. 232։

— 13. Ղազար, եպիսկոպոս Հեր և Զարևանդ գավառների. մասնակցեց Հռոմկլայի եկեղեցական ժողովին «1179 թ».— Շընորհ. պատճ. 199։

— 14. Ղազարոս, ավագ ատենադպիր Լևոն Բ. թագավորի, 1179 թ.— Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 298 (կեղծիք. տես հտ. Բ. էջ 416)։

— 15. Ղազար վարդապետ, որդի Սարգսի, գրիչ. Դարանաղեաց գավառի Ս. Գրիգոր վանքում օրինակեց Աւետարանը, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 246—8)։

— 16. Ղազար, առաջնորդ Աստուածընկալի վանից, 1207 թ.—Այրարատ 255, Բանասէր 1903, 31։

— 17. Ղազար վրդ. գրագիր, միաբան Կապոսի Ս. Լուսաւորիչ վանքի, ծաղկագրել է խորագրերը, գլխատառերն ու սկզբնատողերը այն մեծ Ճառընտրի, որ գրեց Թադէոս գրիչը՝ հայր Կոստանդինի համար։ Կազմել է նաև նույն Ճառընտրի բոլոր սրբերի անվանացանկը, 1224 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 33, 34. Զարբ. Թրգմ. 729։

— 18. Ղազար վարդապետ, ուսուցիչ Յովհաննէս քահանայի, որ Տուրուբերանի Խարձի անապատում օրինակեց Տօնականը 1229 թ.—Խաղբակեանք 92։

— 19. Ղազար, օգնեց Յովհաննէս գրչին՝ արտագրելու Աւետարանը, Հռոմ 1254 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 409։

— 20. Ղազար, հայր Մովսէս միակեցի, որ հիշված է 1266 թ.—Սիսուան 253 բ (ավելին տես Մովսէս)։

— 21. Ղազար, հայր Ալէքի, որ իր Մլքսթի կնոջ հետ մի խանութ նվիրեց Հոռոմոսի վանքին, 1266 թ.—Արձ. Շիրակ 26։

— 22. Ղազար, հայր Ալեքսի, որ իր գերդաստանի հիշատակին մի խանութ է նվիրել Հոռոմոսի վանքին, 1266 թ.—Արձ. Շիրակ 26—27։

— 23. Ղազարէ կրոնավոր, եղբայր Գրիգոր եպիսկոպոսի՝

առաջնորդի տանն Փարզմընայ. հիշված է նախ քան 1269 թ.— Ձեռ. Կես. ածած. 46 ա:

— 24. Ղազար, միաբան Աղջոց Ս. Ստեփաննոս վանքի, որի համար առու է հանել 1287 թ.—Արձ. Շողակաթ Ա. 26:

— 25. Ղազար, հայր Ստեփանոս քահանայի, որ գնեց այն Ավետարանը, որ գրել էր Մխիթար վարդապետը Մեծոփայ վանքում, 1307 թ.—Ձեռ. Վասպ. 156:

— 26. Ղազար կրոնավոր միայնակյաց. գրիչ. Ասպինկայ անապատում, Սիմէոն կրոնավորի համար օրինակեց Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի, 1307 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 247): Հաջորդ տարին էլ օրինակեց Ավետարանը Հայրապետի համար, 1308 թ.— Ձեռ. Դաղեան, Բ. 46 բ, Արցախ 143:

— 27. Ղազար, փակակալ Վարագայ վանքի. երբ Աղլաղու, Սինթամուր և Հասան Թամուր 1300 հոգով գրավեցին վանքը, կողոպտեցին և ամբողջ միաբանությունը փախավ, միայն այս Ղազարը պաշտպանեց Ս. Յովհաննէսի դուռը և սրբությունները պահպանեց 1318 թ.—Ակինեան՝ Գուղնգիրք 54:

— 28. Ղազար Երզնկացի, իր ունեցած Շարականը փոխ տվեց Կարապետ Ճիչողին՝ արտագրելու համար, 1320 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 147:

— 29. Ղազար, առաջնորդ Քաջբերունեաց Սուխարայ վանքի, 1325 թ.—Թորոս աղբ. Բ. 332:

— 30. Խազարբեկ, որդի Շահնշահի, որ գրել տվեց Ավետարանը Թումայ Արճիշեցուն՝ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387):

— 31. Ղազար քահանա, ստացավ Հին Կտակարանը, Բերդձորում 1337 թ.—Տաշեան, Ցուց. 696:

— 32. Ղազար, որդի Ներսէս քահանայի, որ Կաֆայում, Մկրտիչ երեցին գրել տվեց «Մանրուսմունքը» 1340 թ.—Տաշեան, Ցուց. 499 (տես վերը Թորոս № 120):

— 33. Ղազար, հոգևոր եղբայր Յովհաննէս դպրի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում օրինակեց Ավետարանը 1357 թ.— Ձեռ. Վեննետ. Ա. 613:

— 34. Ղազար, գրիչ. օրինակեց Ավետարանը Բաղենից վանքում, 1357 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 51 բ:

— 35. Ղազար գրամատիկ, որդի Պարոնշահի, եղբայր Յովհաննէս կրոնավորի Սեբաստացւոյ, որ Խլիմի Սուրխաթ քաղա-

քում, Ստեփաննոս քահանային գրել տվեց Դավթի Սաղմոսաց գիրքը, 1363 թ.—Manus. brit. mus. 248 ա։

— 36. Խազարոս, որդի Ստեփաննոս քահանայի. ստացավ իր հոր գրած «Կտակարանք որդւոյն Յակոբայ» Թուրկուրան 1388 թ.—Տաշեան, Ցուց. 413, 929։

— 37. Ղազար, «համշիրակ եղբայր» Յովհաննէս վարդապետի, որ օրինակեց Հիւրղի Պարապմանց գիրքը, 1394 թ.—Bodleian 161։

— 38. Ղազար նվիրակ, հելիկեոյ Կոստանդին կաթողիկոսը ուղարկեց նրան Նիկիտայ (այժմ Նիկտէ) քաղաքը, ուր տանուտեր էր Յակոբ անուն անձը, որ գողության մեջ տարապարտ կասկածվելով և Կոստանդին կաթողիկոսից նզովքի ենթարկվելով, ընտանիքով մահմեդական դարձավ, մեղքը գցելով կաթողիկոսի վզին (ԺԴ դար)։—Մեծոփ. յիշ. ա. Դրնդ. 308։ (Հայտնի չէ թե որն է այս Կոստանդին կաթողիկոսը։ ԺԴ դարում ունինք Կոստանդին Գ Կեսարացի «1307—1323 թ», Կոստանդին Դ Լամբրոնացի «1323—1326 թ», Կոստանդին Ե Սսեցի «1372—1374 թ», որոնցից հետո կա Կոստանդին Զ Վահկացի «1430—1439 թ». այնուհետև Կոստանդին անունով կաթողիկոս չկա։ Սրանցից ոչ մեկի մասին Աղգապ. նվիրակի դեպքը չի պատմում։ Եվ որովհետեվ մեր երկու աղբյուրներն էլ անարգանքով են հիշում կաթողիկոսին, ուստի կարծում եմ որ նա է Կոստանդին Գ. Կեսարացի «1307—1323 թ» անարժան կաթողիկոսը։

— 39. Ղազար երեց, որդի Ստեփաննոսի, ստացող. Մշեցի Յովհաննէս գրչին օրինակել տվեց մի Աւետարան, 1402 թ.—Manus. brit. mus. 38 ա։

— 40. Ղազար (գրված Խազար), եղբայր Սէթի և Զատկարի, հորեղբայր Հնազանդի, որ գնեց մի Աւետարան և նվիրեց Երզնկայի Խայիք գյուղի եկեղեցուն, 1404 թ.—Թորոս աղբ. Ա. էջ 66։

— 41. Ղազար քահանա, որ Ստեփաննոս կրոնավորի հետ միասին մի Ճառընտիր գրել տվեց Ստեփաննոս գրչին, Ուշտունեաց Տշող գյուղում, 1404 թ.—Նոտարք 22 (համտ. Առաքել. № 52)։

— 42. Ղազար ճարտարապետ, Մեծոփայ վանքի տաճարը շինող ճարտարապետներից մեկը (1402—1409 թ).—Արձ. Նոտարք 30, Աղգապ. 2001։

— 43. Ղազար քահանա, որդի Յովհաննէս քահանայի. իր

եղբայր Անտոն քահանայի հետ միասին, Մոկաց Ս. Խաչ վանքում, գրիչ Աստուածատուր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 296։

— 44. Ղազար, որդի Առաքելի և եղբայր Յոհանի, որ Մեծոփայ վանքում օրինակեց Բարոզգիրքը՝ 1414 թ.—Rapport Belgique 181։

— 45. Ղազար կրոնավոր, միաբան Տէր Յուսկան որդի վանուց. կազմեց Տաթևացու Լուծմունք Սաղմոսաց Դաւթի, որ գրել էր իր միաբանակից Մկրտիչ կրոնավորը, 1414 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 62 ա։

— 46. Ղազար գրիչ, խնդրանոք տանուտեր Յովհաննէսի օրինակեց Յայսմաւուրքը՝ Իլոյ վանք գյուղում, 1415 թ.—Նոտարք, էջ 45։

— 47. Ղազար վարդապետ, գրիչ. օրինակել է Մեկնութիւն գրոց Սողոմոնի, 1416 թ.—Manus. bibl. nat. էջ 16։

— 48. Ղազար տանուտեր, որդի Շամոյի, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, Վան քաղաքում, 1418 թ.—Նոտարք 57, Ձեռ. Վասպ. 307—9։

— 49. Ղազար, որդի Ամիրբէկի և եղբայր Իգիտ (=Գասկ) կրոնավորի, որ տանուտեր Թաթարբէկի համար գրեց մի Աւետարան, Նարեկ գյուղում, 1420 թ.—Նոտարք 62, Ձեռ. Վասպ. էջ 327։

— 50. Ղազար, միաբան Պատրկի վանքի (Ոստան), 1420 թ.—Ձեռ. Վասպ. 324։

— 51. Ղազար քահանա, որդի Յովհաննէսի. միացավ Ստեփաննոս կրոնավորի հետ և երկուսով Կարապետ երեցին գրել տվին մի Աւետարան ի վայելումն Յովհաննէս քահանայի, Վան 1421 թ.—Ձեռ. Վասպ. 340—1։

— 52. Ղազար, որդի նույն Յովհաննէս քահանայի, որի համար Կարապետ երեցը օրինակեց Աւետարանը 1421 թ.—Ձեռ. Վասպ. 342 (տես նախորդը)։

— 53. Ղազար վարդապետ Սանահնեցի, հիշված 1421 թ.—Տաշեան, Ցուց. 873։

— 54. Ղազար գրիչ. Տրապիզոնում օրինակեց Հարանց վարքը, 1422 թ. և ապա վաճառեց Մկրտիչ գրոց աշակերտին.—Ձեռ. Դաղեան, Ա. 58 ա։

— 55. Ղազար սարկավագ Մեծոփեցի. գրիչ. օրինակեց Ժամագիրքը, 1427 թ.—Տաշեան, Ցուց. 880։

— 56. Ղազար, որդի Ստեփաննոսի, Երզնկայի Վերին Թըլկան գյուղից. գնել է մի Ավետարան և ընծայել եկեղեցուն, 1427 թ.—Նոտարք 84։

—57. Ղազար վարդապետ Բաղիշեցի, ապստամբներից փախչելով ապաստանեց Սասուն. քրդերը գտան և հավատքը չուրանալու պատճառով նահատակեցին «1428 թ».— Մեծոփ. 44. Զամչ. Գ. 452. Նոր վկ. 283։

— 58. Ղազար քահանա, Կողունց գյուղում 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 59. Ղազար վարդապետ, առաջնորդ Ջորեհանգիստ Լուսաւորչի վանքի 1429 թ.—Նոտարք 91—92։

— 60. Ղազար, որդի Յոհանէսի, մերձավոր Ստեփանոս կրոնավորի, որ գրել տվեց մի Ավետարան՝ Խոսրովի վանքում, 1430 թ.—Ջեռ. Վասպ. 358։

— 61. Ղազար աբեղա, Երզնկայում, Մեծխաթուն տիկնոջ պատվերով գրեց մի Ավետարան, 1431 թ.—Ջեռ. Վենետ. Ա. էջ 662։

— 62. Ղազար, քեռի նույն Մեծխաթունի, որ Երզնկայում գրել տվեց մի Ավետարան, 1431 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 663։

— 63. Ղազար, եղբայր Հայրապետ կրոնավորի, որ գնեց ու նորոգել տվեց մի Ավետարան, 1431 թ.—Նոտարք 98։

— 64. Ղազար Ղրիմեցի, գրիչ. արտագրել է Տրապիզոնում մի Յայսմաւուրք՝ 1427 թ. (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ ՀԵ)։ Սրանից 7 տարի հետո, Լուսաւորչի անապատում, Տիւրիկեցի Սարգիս կրոնավորի խնդրանոք արտագրում է մի Ճաշոց, 1434 թ.—Նոտարք 103։

— 65. Ղազար, հայր Սարգիս գրչի, 1435 թ.—Տաշեան, Ցուց. 760։

— 66. Ղազար վարդապետ, միաբան Ամրդոլայ վանքի. հիշվում է իբրև վկա այն մասին, թե մի ջաղացք է գնվել վանքի համար, 1437 թ.—Նոտարք 112 (կարծում է թե վերևում հիշատակված № 56 Ղազար վրդ. Բաղիշեցին է. բայց ինչպես կարող է նույն լինել, երբ Բաղիշեցին արդեն նահատակվել է 1428 թվին)։—Հմմտ. № 80։

— 67. Ղազար, հայր Սարգիս աբեղայի, որ Կարապետ գըրչին գրել տվեց մի Ավետարան, Վանում 1437 թ.—Նոտարք 113, Ջեռ. Վասպ. 376։

— 68. Ղազար վարդապետ Բաղիշու. անդամ էջմիածնի

*մեծ ժողովի «1441 Թ».—Մեծոփ. յիշ. ա, Նոտարք 122։—Հմմտ.* № 80։

— 69. Ղազար, *եղբայր Եղիա աբեղայի, որ կազմեց Դաւիթ գրչի գրած Քարոզգիրքը 1441 Թ.—Ձեռ. Թաւր 59 բ։*

— 70. Ղազար *երեց, ուխտ էր արել գնալ Երուսաղէմ. այդ միջոցին Ջիհանշահը Թաւրիզից արշավելով՝ առավ Երզնկան ու Կամախը. քրիստոնյաներին մեծ կոտորած տվեց. Ղազար երեցը, իր որդի Յովհաննէս քահանայի հետ փախավ Տիվրիկ, ուր պատահեցին Մկրտիչ քհ. Արճիշեցուն (տես) և 50 ֆլորինով գնեցին մի Ճաշոց, որ նույն քահանան գրել էր տվել Արճէշում, 1441 Թ։ Այս գիրքը փոխարինեց իր ուխտը.—Թորոս աղբ. Ա. 223—5։*

— 71. Ղազար *կրոնավոր, նահատակ. կա մի արձանագրություն նրա և Թադէոս կրոնավորի անունով՝ Կաֆայի (Թէոդոսիա) Ս. Գէորգ եկեղեցում, 1442 Թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 351, որից և Նոտարք 128։*

— 72. Ղազար *կրոնավոր, գրել տվեց մի Ճաշոց՝ Յովհաննէս քահանային, 1443 Թ.—Նոտարք 132։*

— 73. Ղազար, *«գործաւոր և երախտաւոր» Ոստանի Պոլկի վանքի, 1444 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 41 բ։*

— 74. Ղազար, *աշակերտ Թովմա պատմիչ Մեծոփեցու, միաբան Մեծոփայ վանքի, 1445 Թ.—Նոտարք 147։*

— 75. Ղազար, *որդի Ստեփանի և եղբայր տանուտեր Թովմայի (№ 147), որ Աղնայ գյուղից էր և Իսրայէլ քահանային գրել տվեց մի Աւետարան Մոկաց Փառավանք գյուղում, 1447 Թ.—Նոտարք 156, Ձեռ. Վասպ. 397, 400։*

— 76. Ղազար *մահտեսի, կինն է Ամբար (№ 1). ծնողներն են Թովմա Մեծոփեցի գրչի (№ 152), որ գրել է մի Տօնացոյց 1441 Թ. (երբ Ղազար և Ամբար կենդանի էին) և մի Աւետարան, 1449 Թ. (երբ ծնողները արդեն մեռած էին)։—Նոտարք 124, 162։*

— 77. Ղազար, *որդի Աւետիսի և եղբայր Վարդան գրակապի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1450 Թ.—Ձեռ. Թաւր. 66 բ։*

— 78. Ղազար, *որդի Մելքսեթ երեցի, որ Աւան գյուղում օրինակեց Գանձարանը, 1453 Թ.—*Bodleian *134։*

— 79. Ղազար *քահանա, որդի Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան և նվիրեց նրան, երբ դեռ նորընծա էր, 1455 Թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 582։*

— 80. Ղազար *վարդապետ (բաբունապետ), որդի Աստուա-*

ծատուրի, մայրն է Ամէնտիկին. եղբայրներն են Պօղոս և Բաղդասար։ Եղել է ուսուցիչ։ Իր աշակերտն է Պօղոս աբեղա, որին պարոն Ամիրդօլը՝ «հրամանաւ քաջ րաբունւոյս մերոյ Ղազարայ» գրել է տվել մի Աւետարան, Բաղէշի Ամիրդօլայ վանքում, 1455 թ։ Այս բոլորից հետևում է, որ Ղազար վարդապետը Բաղէշեցին է, միաբան Ամրդօլայ վանքի, ուր և եղել է ուսուցիչ և ժամանակցել է Էջմիածնի մեծ ժողովին։ Ուստի նույն է վերոհիշյալ № 65 և № 68 Ղազարի հետ։—Նոտարք 178 (մի անգամ էլ հիշված է Նոտարք 198՝ 1461 թ. բայց իբրև կենդանի՞ թե հանգուցյալ)։

— 81. Ղազար կրոնավոր, միաբան Գամաղիէլի վանից 1455 թ.—Նոտարք 181։

— 82. Ղազար, հայր Վարդան հայրապետի, որ Յովհաննէս Մանկասարենց գրչին գրել տվեց մի Աւետարան, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։

— 83. Ղազար, ուրիշ շատերի հետ հիշվում է իբրև միաբան մի վանքի, որի անունը չի նշանակված, բայց որի հայրապետն էր նախորդ Ղազարի որդի Վարդանը, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։

— 84. Ղազար կամ Ղազարիկ, գրիչ. որդի Ամիրշահի, մայրըն է Արմելիք. եղբայրն է Բաղշախիշ։ Լիմ կղզում, Ստեփաննոս Ղարիպշահի համար օրինակեց Յայսմաւուրքը 1457 թ.—Ձեռ. Թաւր. 103 ա։

— 85. Խազար, հիշված է Նոր-Նախիջևանի Ս. Թորոս եկեղեցին փոխադրված մի խաչքարի արձանագրության մեջ, 1462 թ.—Շահազիզ, Ազգագր. հանդ. Է, էջ 58։

— 86. Ղազար, որդի Անդրէասի և եղբայր տանուտեր Աստուածատուրի, որ Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, Ուշտունեաց Բերդաձոր վանքում, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443—5։

— 87. Ղազար կրոնավոր, գրիչ. Մեծոփի միաբան Վարդան կրոնավորի և նրա հոգևոր որդի Յովհաննէսի համար գրեց մի Շարակնոց, Արգելանի վանքում, 1464 թ. բայց չկարողացավ վերջացնել. մահը վրա հասավ։ Իր օգնականները՝ Ազարիա երեց, Մկրտիչ կրոնավոր, Մինաս կրոնավոր և Յակոբ կրոնավոր վերջացրին գիրքը։—Ձեռ. Սևան. 47 բ. Սմբատեանց, Գեղարքունի 408։ Այստեղ կան մի խումբ անհայտ շարականներ։—Ձեռ. Սեվան. 47 բ. Սմբատեանց՝ Գեղարք. 408։

— 88. Ղազար կրոնավոր, որդի Թումայի, մայրն է Թամար. օրինակեց Աւետարանը՝ Գամաղիէլի վանքում, ստացող Սարգսի համար, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 451—2։

— 89. Ղազար, որդի Կարապետի և եղբայր Սարգսի, որ Գամաղիէլի վանքում, Ղազար կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 454։

— 90. Ղազար, ծերունի միաբան Մեծկերտի Սիրունքարի Ս. Յակոբ անապատի, 1468 թ.—Թորոս աղբ. Բ. 378։

— 91. Ղազար աբեղա, հիշված է Բիւրականում, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 92. Ղազար, որդի Խոնդի՝ քրոջ տանուտեր Առաքելի, որ Խիզանի Գամաղիէլի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 454։

— 93. Ղազար, միաբան Խիզանի Գամաղիէլ վանքում, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։

— 94. Ղազար, որդի Գոհարի՝ քրոջ տանուտեր Առաքելի, որ Խիզանի Գամաղիէլի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։

— 95. Խազար, որի անունով մի խաչքար կա Նոր-Նախիջևանի Ս. Թորոս եկեղեցու բակում, 1477 թ.—Շահաղեդ, Ազգագր. հանդ. Է. էջ 58։

— 96. Ղազար եպիսկոպոս, առաջնորդ «Նախանգիս մերոյ», ուր գտնվում էր Բռնաշէն գյուղը (Աղթամարի թեմում), 1478 թ. —Ձեռ. Վասպ. 484։

— 97. Ղազար, հայր Մելքիսեթ գրչի, որ Հալէպում, Ֆարաճ անուն անձի համար օրինակեց Աւետարանը, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 96 բ։

— 98. Ղազար, գրել տվեց մի Աւետարան Սարգիս աբեղային, և նվիրեց Կարապետ քահանային, 1479 թ.—Ձեռ. Կեսաբած. 47.

— 99. Ղազար, մերձավոր Սարգիս քահանայի, որ Բաղէշում գրել տվեց Յայսմաւուրքը՝ 1484 թ. — Rapport Belgique 39։

— 100. Ղազար, քահանա Ոստան քաղաքում 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

— 101. Ղազար աբեղա, աշակերտ Մատթէոս վարդապետի՝ ուսուցչի Մխիթար գրչի, որ օրինակեց Յայսմաւուրքը՝ Սեբաստիոյ Կովտուն գյուղում, 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 434։

— 102. Ղազար երեց, միաբան Սեբաստիոյ Ս. Նշան վանքի, 1489 Թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 239։

— 103. Ղազար եպիսկոպոս, միաբան Սեբաստիոյ Ս. Նշան վանից, 1489 Թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 239։

— 104. Ղազար, «քաջ և արի փիլիսոփայ» Աղբակի Բարթուղիմէոսի վանքի, 1487 Թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 84)։ Միևնույն անձը հիշված է նույն վանքում «Ղազար կրոնաւոր ամենագով և շնորհալի խորին փիլիսոփայ» տիտղոսով 1489 Թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 51 բ։

— 105. Ղազար եպիսկոպոս, առաջնորդ Բաբերդի Բերդակ անապատի, 1489 Թ.—Manus· brit. mus. 165 բ։

— 106. Ղազարոս, պարոն Բաբերդցի, հիշվում է իբր վկա, 1489 Թ.—Manus. brit. mus. 165 բ։

— 107. Ղազար «հայրապետ» Խորոտկայ վանից, 1490 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։ (Այս հիշատակութիւնը սխալ արտագրելով Սմբատեանց, Գեղարք. 54 դրել է «ի Հայրապետութեան Աղուանից Տէր Ղազարին», որի համար էլ Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 18 ծան. ասում է թե ոչ մի տեղ չի կարողացել գտնել այդպիսի կաթուղիկոս Աղուանից)։

— 108. Ղազար, որդի (կամ հորեղբորորդի՞) Վարդանի, որ Շատախում, Իսրայէլ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1491 Թ.—Ձեռ. Վասպ. 517։

— 109. Ղազար քահանա Արծկեցի, որդի Ներսէս քահանայի, մայրն է Խաթուն Մելիք, եղբայրն է Յակոբ քահանա Նետարենց։ Կոչվում է «շնորհալից քահանա»։ Նշանավոր գրիչ է եղել. իր թողած գործերից հայտնի են՝ 1) Ճառընտիր, որ արտագրել է Արծկէում՝ Վեզեն անուն անձի համար, 1465 Թ. (Tübingen 48).—2) Յայսմաւուրք, որ արտագրել է Արծկէում՝ Գրիգոր քահանայի խնդրանոք, 1475 Թ. (Ձեռ. Մաղն. 35).—Մեռավ 1491 Թ. և նրա մահվան վրա, իր եղբայրը՝ Յակոբ քհ. Նետարենց, որ իր Մեհրուբան անուն կնոջ վախճանից հետո եպիսկոպոսական աստիճանին էր բարձրացել, գրել է մի սրտառուչ ողբ։ Այդ ողբը տեսել է Նոտարքի հեղինակը, բայց այժմ էլ արդյոք մնում է։—Նոտարք 219։

— 110. Ղազար վարդապետ, միաբան Մշոյ Առաքելոց վանքի, 1496 Թ.—ՀԱ 1937, 320։

— 111. Ղազար, *որդի Ստեփաննոսի՝ եղբոր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ.—ՀԱ 1887, 56 ա։*

— 112. Ղազար, *ժամուսին Ռուզ տիկնոջ, որ Խիզանում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1499 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։*

— 113. Ղազար *Ուլնեցի, կաթուղիկոս Սսի «1545—47 թ», հաջորդեց Սիմոն Ա Ուլնեցուն, որի հորեղբորորդին էր։—Ձեռ. Հալէպի, Բ. 32 ա։*

— 114. Ղազար *եպիսկոպոս Ապրակունեցի (Ալընջեցի), եղել է Թաւրիզում, 1506 թ.—Ձեռ. Թաւր. 72 բ։*

— 115. Ղազար *Ա. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Բաղդասար Ա-ի և նախորդ Աւետիս Գարժիրի (ԺԶ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։*

— 116. Ղազար *կույր, տաղասաց ԺԶ դարի.—Ցուցիկք, Բ. 125։ Համեմատել հաջորդները։*

— 117. Ղազար *տաղասաց, ունի սիրային տաղեր.—Նորայր, Հայկ. բառաքնն. էջ 122.*

— 118. Ղազար *երեց Սեբաստացի. տաղասաց. ունի սիրային տաղեր. թվականը 1617 թվից առաջ է. տես Կոստանեան, Նոր ժողովածու, Բ. 23—27, Գ. էջ Է և 56—63։ (Կոստանեանը սխալմամբ համարում է Ղազար Արծկէցի)։*

— 119. Ղազար *Սռամպօլցի, տաղասաց. տես Կոստանեան, ժողովածու, Ա. 18—22, Տաշեան, Ցուց. 1108 բ։*

— 120. Ղազար *տաղասաց, որի երգերի ժողովածուն է Վիեննայի № 38 ձեռագիրը (ԺԹ դարից).—Տաշեան, Ցուց. 194—6։*

— 121. Ղազար *եպիսկոպոս Թոխաթեցի, տաղասաց. ծնվել է Եւդոկիայում, 1550 թ? ուրիշ շատերի նման երեի 1602 թվին՝ Եւդոկիա քաղաքի ավերածի պատճառով հեռացել է այնտեղից և գնացել նախ Ուկրայնայի Եազլովցա քաղաքը, ապա Կամենից։ Այստեղ արտագրել է մի Աւետարան (Տաշեան, Ցուց. 366), պարապել է ուսուցչութեամբ և մեռել է սրտի հիվանդութիւնից, 1610 թ? Գրել է Եւդոկիա քաղաքի վրա մի քանի տաղեր, որոնցից հիշելու արժանի են Գովասանք ի վերայ Թոխաթ քաղաքին, Ողբ ի վերայ կոտորածին Թոխաթի, Ողբ ի վերայ սովոյն Թոխաթի և թերևս ուրիշ տաղեր էլ, որոնք անհայտ են մնում։—Իր կենսագրութիւնը տես Ակինեան, Հինգ պանդուխտ տաղասացներ, Վիեննա 1921, էջ 205—216։*

— 122. Ղազար *Սեբաստացի, եպիսկոպոս Տիւրիկի. գնաց Պոլիս և գավառացի Հայոց գլուխն անցած՝ բողոքեց Մարտիրոս Կաֆացի պատրիարքի դեմ, տապալեց նրան և խլեց պատրիարքական աթոռը «1660 թ»։ Վերաշինեց Ս. Նիկողայոս եկեղեցին, որ հրդեհից այրվել էր։ Բայց որովհետև վերաշինությունը եղել էր առանց արքունի հրամանի, ուստի գահազուրկ արվելով, նրա փոխարեն գահ բարձրացավ Յովհաննէս վարդապետ Արևելցին «1662 թ»։—Ազգապ. 2530—31։*

— 123. Ղազար *Տէր-Գրիգորեան, բժիշկ Սեբաստիայում 1723 թ.—Թորգոմեան, Ներբ. 27։*

— 124. Ղազար, *ծառայում էր Նաւասարդ անուն անձի մոտ, որ Ռուսաց կառավարության գործակալն էր Պարսկաստանում։ Երբ Մեծն Պետրոս ուզեց վարձատրել նրան, Նաւասարդին գտան մեռած՝ առանց ժառանգի։ Կայսրը կանչեց Ղազարին և գեներալի տիտղոս տվեց։ Նա է Լազար Խրիստաֆորովիչը, որ հայերից կազմված մի առանձին զորախմբի հրամանատար էր և մասնակցեց Պարսկական արշավանքներին։ Ապա իր զորքով և հայ օֆիցերներով փոխադրվեց Ղզլար (1736)։— Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 33։*

— 125· Ղազար *կաթուղիկոս Ջահկեցի, հմուտ աստվածաբան էր. Զմիւռնիոյ առաջնորդությունից ընտրվեց էջմիածնի կաթուղիկոս «1737 թ.»։ Լինելով փառասեր ու մեծամիտ անձ, շատ նեղություն հասցրեց իր հակառակորդ կրոնավորներին. ինքն էլ մեծ նեղություն կրեց Նադիր Շահից և նրա ընչաքաղց պաշտոնյաներից։ Գահընկեց եղավ և աքսորվեց Սևան «1748 թ». տասը ամսից ազատվեց և վտարելով Պետրոս Բ Գիւթիւրին, որ նրա փոխարեն աթոռակալ կաթուղիկոս էր ընտրված, նորից հայրապետական գահը բարձրացավ «1749 թ» և մնաց մինչև իր մահը «1751 թ»։ Շինել է էջմիածնի Վեհարանը և մի հյուրանոց, որ իր անունով կոչվեց Ղազարապատ «1750 թ»։ Գրել է Դրախտ ցանկալի (տպ. Պոլիս 1735), Կոնդակ առ ազգայինս Տրապիզոնի, Գիրք աղօթից, որ կոչի Աստուածաղերս, և բազմաթիվ տաղեր, որոնք ամփոփված են «Երգարան Ղազարու Ջահկեցւոյ» (տպ. Պոլիս 1686 ըստ Տաշեան, Ցուց. 1108 կամ 1737 ըստ Ազգապ. 2916)։ Այլուր կան ցիրուցան նաև ուրիշ տաղեր (տես Տաշեան, Ցուց. 1108)։—Մ. մաշտ. 336 բ, Զուղ. 265, Ջամբռ 31, Ազգապ. 2913—2976։*

— 126. Ղազար Բ Մոկացի, մականունն է Առաքինի, կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Թումա Բ Ամկեցու և նախորդ Գրիգոր ԺԱ Խիզանցու (ԺԸ դար)։—Հաւաք. 63 (կեղծիք)։

ՂԱԶԲ, սեռն ու ճիշտ ձևը անստույգ. մի անգամ հիշատակված է Թէոդոսիայի մի արձանագրության մեջ սեռ. Ղազբին ձևով՝ 1451 թ.— Кучук-Иоаннесов, Стар. арм. над. էջ 36։

ՂԱԶԵԽ, ար. ծագումն անհայտ. Թերևս նույն է Ղազախ անվան հետ, որ զուտ թուրքական անուն է. հմմտ. Ղազախ խան Երևանի և նրա որդին Նաջաֆ-ղուլի (1657 թ. տես Սիսական 75 բ)։ սրանից էլ Ղազախ գավառի անունը։ Մեր մեջ այս անունով ունինք միայն՝

— Ղազեխ Բուդաղօղլի, տաղասաց. Թվականը անհայտ. իր տաղերից մեկը (Հոգու և մարմնի վեճը) տես Մառ, Ամառն. ուղև. 75—82։

*ՂԱԶԻ, ար. < غازی ġāzī «կրոնի համար մարտնչող, հաղթական» բառից։ Մի անգամ հիշատակված կա՝

— Ղազի, տանուտեր, որդի Ասլիպարոնի. սատարեց այն Աւետարանի գրության, որ գրել տվեց տանուտեր Մարտիրոսը, 1489 թ.— ՀԱ 1894, 52 բ։

*ՂԱԶԻԿ, ար. կրճատ ձևն է Ղազար անվան, որից կա նաև Ղազիկեան ազգանունը։ Հիշված է մի անգամ՝

— Ղազիկ, հայր Սարգիս Անգեղակոթեցու, որ վերանորոգել է Ս. Կարապետի վանքը՝ 1438 թ.— Սիսական 525, Ազգագր. հանդ. Գ. 153։

*ՂԱԼԱԲԷԳ, իգ. և ար. < արաբ. قلعه qalʿa «բերդ» + թրք. بك beg «իշխան» բառերից (իբրև «բերդի իշխան»)։ Հնագույն հիշատակությունն է՝

— 1. Ղալաբէգ, որդի Ջումա Բ-ի. Պռօշեանց ցեղից. հիշված է 1475 թ.—Խաղբակեանք 232, 236.

— Այնուհետև գործածված է ԺԶ դարում իբրև իգ, իսկ ԺԷ դարում իբրև ար. անուն։ Այսպես իգ. Ղալաբէկի (անթվական մի հիշատակարանում, բայց 1509 թվից ուշ)՝ Ջեռ. Վասպ. 641, 1548 թ. (Ջեռ. Սանաս. 25 բ), 1552 թ. (Ջեռ. Վասպ. 653), արական են՝ Ղալաբէկի 1605 թ. (Առաք. պատմ. 9), Ղալաբէկ 1611 թ. (Արցախ 200) Ղալաբէգ 1660 թ. (Խաղբակեանք 253)։

*ՂԱԼԱՄ, < արաբ. قلم qalam «գրիչ» բառից (ակնարկությամբ նուրբ ունքերի, որոնք իբր թե գրչով են քաշված)։ Այս անունը իբրև ար. հիշված է 1511 թ. (Ջեռ. Նոր-Բայազ. 4 բ) և

1670 թ. (Ձեռ. Ն. Բայազ. 4 ա). Իսկ իբրև իգական՝ հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 31 ա)։

*ՂԱԼԱՇԱՀ, ար. < արաբ. قلعه qalʿa «բերդ»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից, իբրև «բերդապետ»։ Մի անգամ հիշատակված է ԺԳ դարում՝

— Խալայշահ, հայր Մխիթարի և պապ Խութլուբէկի (№ 3), որ Գոշ իշխանի ազատներից էր և հողեր է նվիրել Թանատի վանքին (ԺԳ դար).—Խաղբակեանք 142։

*ՂԱԼԱՍԱՆ, ար. < արևել. թրք. qalasan «մնաս, տևական լինիս» (իբր հյ. Մնացական)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1450 թվից ուշ (Ձեռ. Թաւր. 67 բ)։

*ՂԱՀՐԱՄԱՆ, ար. < պրս. qahramān «քաջ, կտրիճ» բառից, որ իրանյանների մոտ էլ նաև իբրև անձնանուն գործածական է։ Օր. Qahramān որդի Թահմուրաթի (Շահնամա), իգ. Qahramāna «ուսյալ կին Խալիֆների պալատում՝ 1119 թ» (Justi 151 բ)։ Մեր մեջ հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում։ Սրանից է Ղահրամանեան ազգանունը (Կովկաս)։

— 1. Ղարաման, հորեղբայր Հայրապետ կրոնավորի, որ Ձորոյ վանքում (Բաջբերունիք) գրել տվեց մի Աւետարան, 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 691։

— 2. Ղահրաման, հայր Ստեփաննոս գրչի, որ Գանձակում օրինակեց մի Աւետարան (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 13 ա,

— Հիշված ունինք նաև Ղարաման 1592 թ. (Ձեռ. Վասպ. 762) և 1653 թ. (Ձեռ. Թաւր. 45)։

*ՂԱՀՐԻՓԱՇԱ, սեռն անհայտ (թվի իգ.) < արաբ. qahr «ուժ, բռնություն» բառից, որ սակայն թուրքերենում «հոգս, վիշտ, ցավ» իմաստն է ստացած։ Մի անգամ հիշատակված է անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1509 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 642 և 643)։

*ՂԱՄԱԹ, իգ. < արաբ. قامت qāmat «հասակ» բառից (անշուշտ ակնարկելով բարձր ու գեղեցիկ հասակը)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— Ղամաթ, մայր Ղփչախի՝ կնոջ տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

*ՂԱՄԱՑ, իգ. < թթր. قمه qama «սամույր. выдра, loutre» (ընտիր մուշտակ ունեցող կենդանին) (Будагов 2, 25)։ Մի ան-

գամ գտնում ենք հիշատակված Ղամայ սուլթան ձևով՝ 1544 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 492) և մի անգամ էլ Ղամայ խաթուն ձևով՝ անթվական մի արձանագրության մեջ, որ գտնվում է Տրապիզոնի Ամենափրկիչ վանքում (Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 86)։

*ՂԱՄԱՐ, իգ. < արաբ. قمر qamar «լուսին» բառից։ Գործածվել է մեր մեջ սկսած ԺԵ դարից և տևում է ամբողջ ԺԷ դարը։

— 1. Ղամար խաթուն, դուստր Արթուխշահի և Ջուլալ խաթունի (№ 1), որ Աղթամարում գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Սալնապատի եկեղեցուն, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459։

— 2. Ղամար, զավակ Յակոբի՝ եղբոր տանուտեր Արապշահի, որ Աղբակի Էրնկանի գյուղում, Մարգարայ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 511։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են Ղամար 1599 թ. (Ձեռ. Վասպ. 756), 1602 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 331), 1609 թ. (Bodleian 111), 1617 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 175 բ՝ գրված է Ղամառ և արական է!), 1618 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 120), 1622 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 79 բ), 1652 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 85), 1654 թ. (Rapport Belgique 104), 1673 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 345)։

*ՂԱՄԲԱՐ, ար. և իգ. Թեև կարելի էր դնել հյ. ղամբար «կանթեղ, լույս» բառից, բայց որովհետև այս բառը ջնջված էր ժողովրդի լեզվից, ուստի ավելի լավ է դնել < Թրք. Qamber, արև. Թրք. Qamber անունից։ Տաճկաց մեջ նշանավոր է կատակաբան Qamber, որի անունով մի առած էլ կա. «Qambersiz düyün olmaz, առանց Կամբերի հարսանիք չի լինիլ»։ Մեր մեջ այս անվան հնագույն հիշատակությունը ԺԵ դարից է։ Սրանից է Ղամբարեան ազգանունը Կովկասում, որին համապատասխանում է Արևմտահայոց մեջ Գամպէրեան։

— 1. Ղամպար, դուստր Խասայի, որ ստացավ մի հին Ավետարան, 1441 թ.—Manus. brit. mus. 3 բ։

— 2. Ղամբար խաթուն, դուստր Արթուխշահի. մայրն է Ջուլալ, որ Աղթամարում գրել տվեց մի Ավետարան, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 460։

— Ավելի ուշ հիշատակություններ են՝ Ղամպէր ար. 1669 թ. (Manus. bibl. nat. 136), Ղամբար՝ 1726 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 7 ա), անթվական Ղամբար իգ. (Ձեռ. Վասպ. 557), Ղամ-

պար տր. (Ձեռ. Թուր. 76 բ)։ Սխալ գրչությամբ ունինք Ճամբար իգ. 1730 թ. (Բանաս. 1900, 149, որ ուղղում եմ Ղամբար)։

*ՂԱՄԻՇ, իգ. < Թրք. قمش qaməš «եղեգ» բառից (ակնարկելով կնոջ նուրբ ու ճապուկ հասակը)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1644 թ. Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 334։

*ՂԱՅԱ, ար. < Թրք. قيا qaya «ժայռ» բառից (ակնարկելով տանական անսասան ոգին)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 310) և մի անգամ էլ սրանից ավելի առաջ՝ ԺԶ դարում, բայց առանց ճիշտ թվականի (Ձեռ. Կեռ. սարգ. 11 ա)։ Նույն անվան փաղաքշական ձևն է Ղայխաջան ար. հիշված 1609 թ. (Bodleian 110)։

*ՂԱՅԱԹ, իգ. կամ է արաբ. غياث giyāϑ «օգնական» և կամ Թրք. غايت gayet «յոյժ» (մակդիր գերադրականի)։ Հիշատակված է շատ ուշ շրջանում (Ձեռ. Թուր. 38 բ)։

*ՂԱՅԹԱՐՓԱՇԱ, իգ. < արևել. Թրք. قايتار qaytar «վերադարձ, վերադարձրու»+paša գգվականով։ (Բուն ծագումը հետևյալ դարձվածից եմ կարծում. Allah qaytarsun «Աստված քեզ փոխարենը հատուցի»)։ Մի անգամ հիշատակված եմ գտնում 1609 թ. (Bodleian 109)։

*ՂԱՅԻԲ, ար. < արաբ. غايب ġāyib «անտեսանելի, բացական» բառից։ Այս ձևով ունինք Ղայիբխան, ար. անունը, թվականն անհայտ (Սմբատեանց, Գեղարքունի 569) և՝

— 1. Ղայիպի, սարկավագ, եղբայր (մարմնավոր թե հոգևոր) Փիլիպպոս Արևելցի գրչի, որին օգնում էր թուղթ կոկելով, երբ նա օրինակում էր մեծ Ճաշոցը, Սեբաստիոյ Ս. Նշան վանքում, 1489 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 240։

*ՂԱՅԻՄ, իգ. < արաբ. قايم qāyim «ոտի կանգնած, կանգուն, ուղիղ», որ արևել. Թրք. դարձել է ġayim «հաստատուն, ամուր»։ Մի անգամ հիշատակված եմ գտնում 1635 թ. (Ձեռ. Վասպ. 888)։

*ՂԱՅԻՆ, ար. < Թրք. قين qayn, արևել. Թրք. qayin «աներձագ» բառից. մեր մեջ մի անգամ հիշատակված եմ գտնում Ղային խոջա անձնանունը, անթվական, բայց 1477 թվից ուշ (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 261)։

ՂԱՅԻՐ, սեռն ու ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշատակված է՝

— Ղայիր, նշանավոր մարդ, որ Շիրին խաթունի, Բահալու խաթունի, Թողթայի, Թալայի ու Խոջայի հետ ներել է Հախի-

սիմէի վանքի բամբակի հարկը, 1296 թ.—Արձ. Յովսէփեան, Արար. 1898, 442։

*ՂԱՅՍԱՐ, ար. < արաբ. قيصر qayṣar «կայսր» բառից, որից է նաև قيصريه Qayṣarie «Կեսարիա» քաղաքը։ Մի անգամ կա հիշված 1654 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ 1864)։

*ՂԱՆԴԻ, ար. < արաբ. قند qand «շաքար» բառից. մի անգամ հիշված եմ գտնում 1549 թ. (Ձեռ. Վասպ. 652)։

*ՂԱՆԴՈՒՐԱԼԻ, ար. < Թրք. قان qan «արյուն»+دورالی duralə «մնայուն, տևական» բառերից։ Հմմտ. Դուրալի, որի համար մեր տված ստուգաբանությունը այսպեսով ավելի է հաստատվում։ Հիշատակված է ԺԶ և ԺԷ դարերում. Այսպես 1555 թ. (Матер. Арх. Кавк. III, էջ 96), այլուր 1661 թ. (Ձեռ. Ագուլ.=Արար. 1911, 119), և սխալ գրչությամբ՝ Ղատուրալի 1570 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 672), որ ավելի է փչացնում Ալիշան՝ Այրարատ 39 ծան. գրելով Ղատուր-ալի, որով հանում է Ալի անունից։

*ՂԱՆԻ, իգ. < արաբ. غنى ġanī «հարուստ» բառից (բայց գուցե հաջորդ անվան կրճատ ձևն է)։ Մի անգամ հիշված եմ գտնում 1576 թ. (Նշխ. մատ. էջ 45)։

*ՂԱՆԻՄԱԹ, իգ. < արաբ. غنيمت ġanīmat «ավար, հարստություն, երջանկություն»։ Իբրև անձնանուն մեր մեջ գործածված եմ գտնում մի անգամ ԺԶ դարի երկրորդ կեսին. (մայրն է տաղասաց Մինաս Թոխաթցու, որ ծնվել է 1510 թ. տես Ակինեան, Հինգ պանդուխտ տաղաս. էջ 57, Տաշեան՝ Ցուց. 310 և Կամենից 163)։ Նույն անունը երկրորդ անգամ գտնում եմ Խանիմաք ձևով՝ 1621 թ. (Էջմիածին ամսաթերթ, 1944 թ. № 1, էջ 37 ա). երրորդ անգամ Ղանիմաթ 1745 թ. (Ոսկեան, Եղիա Մուշեղեան, էջ 5)։ Նույն անվան կրճատ ձևն եմ համարում՝

— Ղանիմխաթուն, ազգական Աբդուլմսեհի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ.=Արար. 1911, 461։ (Թեև կա արաբ. غانم ġānim «ավարառու», բայց անհարմար է)։

*ՂԱԶԱՐ, ար. < Պարսից Թագավորական տոհմի անունից. մեր մեջ իբրև անձնանուն գործածված է մի անգամ 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 735)։

*ՂԱՍԱՊ, ար. < արաբ. قصاب qaṣṣāb «մսավաճառ» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Ղասապ վարդապետ, առաջնորդ Գոշավանքի կամ Գետակայ վանից, 1283 թ. — Արձ. Շահխաթ. Բ. 367, Արցախ 350, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 9, Յարութիւնեան՝ Ազգագր.

հանդ. Ժ. էջ 28։ (Այսպիսի անուն անպատշաճ է մի վարդապետի համար. ուստի կամ պետք է համարել մականուն և կամ պետք է կարդալ Ցովասափ, ինչպես ենթադրում է Իս. Ցարութիւնեան և միացնում Կիրակոս պատմիչի հիշած Ցովասափի հետ)։

*ՂԱՍՈՒՄ, ար. < արաբ. قاسم Qāsim անունից (արմատն է قسم qasam «երդում անել»)։ Օրինակ հիշատակված է Թուրք Ղասում իշխանը 1486 թ. (Նոր վկ. 326—7)։ Մեր մեջ հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ 1517 թ. (Թորոս աղբ. Բ. 274), 1581 թ. (Ձեռ. Վասպ. 694), 1618 թ. (Թորոս աղբ. Բ. 308), 1653 թ. (Սմբատեանց՝ Գեղարքունի 620), 1657 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 33 բ)։ Անթվական են Ձեռ. Թաւր. 19 բ. և Ձեռ. Վասպ. 136։ Սրա փաղաքշականն է Ղասմեան 1561 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 193)։

*ՂԱՍՈՒՄՇԱՀ, ար. կազմված է նախորդ անունից+պրս. شاه šāh «թագավոր»։ Մի անգամ հիշված է ԺԵ դարում.

— Ղասումշայ, եղբօրորդի Խոնտքար տիկնոջ, որ Խօրոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը 1490թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

ՂԱՍՈՒՐ, թվի վրիպակ փխ. Ղասում. հիշված է 1555 թ. (Սմբատեանց՝ Գեղարքունիք 494)։

*ՂԱՐԱ, ար. < Թրք. قره qara «սև» բառից. հմմտ. Սևուկ, Մօրիկ անունները։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում։ Այսպես՝ Ղարայ 1557 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 529), Ղայրա (կարդա Ղարա) 1649 թ. (REA 10, 51), անթվական են խոջա Ղարայ՝ Տրապիզոնի Ամենափրկիչ վանքի արձանագրության մեջ (Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 84), Ղարայ (սեռ. Ղարի ձևով)՝ հիշատակարան Ձեռ. Նոր-Բայազ. 32 ա), և Ղարայի կամ Խարայի ձևով՝ մի ուրիշ անթվական հիշատակարանում (անդ 31 բ)։

*ՂԱՐԱԲԱՇ, ար. < Թրք. قره‌باش qarabaš «սևագլուխ» բառից, որով հասկանում են «քրիստոնյա կրոնավոր»։ Իբրև անձնանուն գտնում են գործածված մի անգամ 1695 թ. (Ձեռ. Թաւր. 111 բ)։

*ՂԱՐԱԲԷԳ, ար. < Թրք. قره‌بك qara-beg «սև բէգ» բառից, ինչպես կա և Աղբէկ < Թրք. آق‌بك aq-beg. Սրանից է Ղարաբէգեան ազգանունը (Կովկաս)։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ Ղարաբէգ 1602 թ. (Ձեռ. Վասպ. 188), Ղարաբէկ 1609 թ. (Bodleian 110), Ղարապէկ 1708 թ. (Սմբատեանց՝ Գեղարք. 613), իսկ առանց թվականի՝ Ղարապակի (Ձեռ. Վեննետ. Ա. 778), Ղարաբէկ (Ձեռ. Վասպ. 716, 718)։

*ՂԱՐԱԳՈԶ, ար. < Թրք. قره‌گوز qaragöz «սևաչվի» բառից։ Համտ.․պրս. سیاه‌چشم Siyāh-čašm ծառա Ֆարրուխզադ Թագավորի Պարսից (Շահն. հտ. 7, էջ 345)։ Սրանից է Ղարագոզյան ազգանունը Կովկասում, որի դեմ Արևմտահայերը ունին Գարակէօզեան (բայց այս վերջինը մականունից է և ոչ անունից)։ Իբրև անձնանուն գործածված է ԺԵ—ԺԸ դարերում։ Այսպես՝

— 1. Ղարակաւզ, փեսա մղդեսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։

— 2. Ղարակաւզ, որդի Էտիլշահի և եղբայր Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— Ուշ ժամանակի հիշատակություններ են՝ Ղարագոզ՝ ԺԶ դար (Կրպտ. եպս՝ Դօփեանք 154), Խարակուզ 1606 թ. (Նաթանեան՝ Արտօսր Հյստ. 152—4), Խարակոզ 1615 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 41), Ղարակաւզ իգ! 1619 թ. (Ձեռ. Թաւր. 81 ա), 1632 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 3 բ), 1632 թ. (Ձեռ. Կես. ածած. 63 ա), 1634 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 548), Ղարագօզ 1655 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 33 բ), Ղարայգոզ 1708 թ. (Ձեռ. Դաշեան, Ա. 45 ա և Սմբատեանց՝ Գեղարքունի 613)։

*ՂԱՐԱԳՈՒԼ, ար. < Թրք. قره‌گل qaragül «սև վարդ» բառից։ Երեք անձնանուն էր, որից և Ղարագիւլեան (Գարակիւլեան) ազգանունը։

*ՂԱՐԱԽԱՆ, ար. < Թրք. قره‌خان Qaraxan անունից, որ բուն նշանակում է «Սև խան»։ Այս անունով հայտնի է Թուրանի Աֆրասիաբ թագավորի պալատի կառավարիչը (Շահն. հտ. 3, էջ 251)։ Մեր մեջ գործածված է ԺԶ—ԺԷ դարերում։ Հնագույն հիշատակությունն է 1554 թ. (Manus. brit. mus. 193 ա), ապա գալիս են 1581 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 32 ա), 1641 թ. (Ձեռ. Թաւր. 37), 1693 թ. իգական! (Ձեռ. Վասպ. 977), անթվական գրված Կարահան (անդ 682)։ Սրանից է Ղարախանեան ազգանունը։

*ՂԱՐԱՀԱՍԱՆ, ար. < Թրք. قره qara «սև»+արաբ. حسن Ḥasan անունից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված մեր մեջ՝ անթվական մի հիշատակության մեջ Ձեռ. Վասպ. 766։

*ՂԱՐԱՂՈՉ, ար. < Թրք. قره qara «սև»+قوچ qoč «խոյ» բառերից։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ 1591 թ.

(Ձեռ. Հալէպի, Բ. 9 բ), 1630 Թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1867)։ 1669 Թ. (Ձեռ. Կես. սարգ. 11 բ)։

*ՂԱՐԱՄ, ար. < Թրք. قرم qaram «սև, սևուկ» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1616 Թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 47 ա)։ Սրանից է Ղարամեան ազգանունը. հայտնի է օրինակ հնդկահայ մեծ վաճառական Ռափայէլ Ղարամեանը։

*ՂԱՐԱՄԵԼԻՔ, ար. < Թրք. قره qara «սև»+արաբ. ملك melik «իշխան» բառերից. մի անգամ գտնում եմ գործածված 1553 Թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578)։

ՂԱՐԱՑԱՏԹ, ար. աղավաղ անուն. ծագումն ու Թվականը անհայտ. մի անգամ հիշված է Տաշեան, Ցուց. 934։

*ՂԱՐԱՉՈՐԱԿ, ար. < Թրք. قره qara «սև»+چوراك čörāk «հաց» բառերից։ Մի անգամ գործածված է ԺԷ դարում. այն է Ղարաչօրակ Նախիջևանցի (Առաք. պատմ. ԽԹ)։

*ՂԱՐԱՋԱ, ար. < Թրք. قرجه qaraǰa «սևուկ. 2. այծյամ» բառից։ Հիշված ունինք միայն՝

— 1. Ղարաճա, հայր Կարապետ քահանայի, որ Նախիջևանում, Յովսէփ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1324 Թ.—Ձեռ. Վասպ. 170։

— 2. Ղարաճա, հիշված է նաև 1762 Թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1950)։

ՂԱՐԱՍՈՒԼ, ար. ծագումն ինձ անհայտ, մի անգամ հիշված եմ գտնում 1652 Թ. (Այրարատ 24)։

ՂԱՐԱՔ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է ԺԳ դարում։

— Ղարաք, որդի Ջերգամի. միասին նվիրատու եղան Գոշի վանքին՝ Վրթանէս եպիսկոպոսի ժամանակ, 1248 Թ կամ քիչ ուշ.—Արցախ 80։

*ՂԱՐԱ-ՔԵՇԻՇ, ար. < Թրք. قره qara «սև» և كشيش kešlš «քահանա» բառերից։ Մի անգամ հիշատակված է՝

— Ղարա-Քեշիշ, որ միջնորդ եղավ և Տինար երիցկնոջ Աւետարանը վաճառեց Յովհաննէսի որդի Դանիէլին 150 Թանկա դրամի, 1501 Թ.—Բարխուտ. Աղվանից երկ. 10։

*ՂԱՐԴԱՇ, ար. < Թրք. قرداش qardaš «եղբայր» բառից, ինչպես որ ունինք հյ. Աղբայրիկ, Եղբայր, յն. Ադելփոս, արաբ. Ախի են անունները։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1573 Թ. (Սիսական 106) և մի անգամ էլ 1599 Թ. (Սիսական 423)։

Այս անձնանունից է անշուշտ նաև Դալի-Ղարդաշ (գյուղ Նոր-Բայազիտի)։ Սրանից է նաև Ղարդաշյան ազգանունը։

*ՂԱՐԻԲ, ար. և իգ. < արաբ. غريب ġarīb «պանդուխտ, զարմանալի, տարօրինակ» բառից։ (Որովհետև թե՛ արական է և թե իգական, ուստի զանազանելու համար, հաճախ իգականը կոչվում է Ղարիբխաթուն)։ Սկսել է գործածվել այս ձևի տակ ԺԴ դարում, բայց սրանից մոտ երկու դար առաջ արդեն կա Խարիփ ձևով, որ միաժամանակ գրվում է Ղարիփ, սեռ. Ղարփին։ Այսպեսով ունենում ենք երեք համանուն բառ. Հարբ, որ և Խարբ անունը (< արաբ. حرب ḥarb), Խարիփ կամ Ղարիբ (< արաբ. غريب ġarīb) և Խարբ ած. «անառակ» իմաստով։

— 1. Խարիփ մագիստրոս, որդի Ապուղամր մագիստրոսի, եղբայր Անիի Գրիգոր եպիսկոպոսի (№ 262), թոռն իշխանաց իշխան Վահրամի. կոչվում է «քաջ և արի զօրական»։ Իր եղբոր հետ սկսեցին նորոգել Մարմաշենը, հողեր և կալվածներ նվիրեցին 1225 թ. Այդ միջոցին Խարիփը պատերազմի գնաց «անաւրինաց» դեմ և պատերազմում նահատակվեց։ Մարմինը բերին և թաղեցին Մարմաշենում, Վահրամ իշխանի կողքին.—Արձ. Շիրակ 150, Շահխաթ. Բ. 273, Արրտ. 1870, էջ 12, Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 75։—Նույնը հիշված է նաև սեռ. Ղարփին ձևով Լմբատի արձանագրության մեջ՝ Շիրակ 165. վերջապես կա նրա տապանաքարը, որի տապանագիրն է «Այս է հանգիստ Ղա(րիփ)ի որդւոյ Ապուղամրի» (Շիրակ 149. Արրտ. 1870, 11, և 1904, 703)։

— 2. Ղարիբ, մայր Վարդան վարդապետ Բաղիշեցու, որ Պօղոս երեցին գրել տվեց Եւագրը՝ 1384 թ.—Սարգիսեան, Եւագր. Ներած. էջ ճիթ։

— 3. Ղարիպ, այրի կին, որ օգնել է մի Աւետարանի գնման համար՝ Աղբակի Երնկանի գյուղում, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 512 (բայց տես նաև Հաբիբ № 3)։

— 4. Ղարիպ, որդի Ստեփաննոսի և եղբայր Հաբիբի, որ իր ամուսին Ատոմի հետ մի Աւետարան գրել տվեց Մարգարե գրչին՝ Աղբակի Երնկանի գյուղում, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 528։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են արական սեռի՝ Ղարիպ, 1549 թ. (Ձեռ. Վասպ. 652), 1561 թ. (Ձեռ. Կես. ածած. 50 բ), 1585 թ. (Սիսուան 229 ա), 1592 թ. (Ձեռ. Վասպ. 724), 1628 թ. (Դրնդ. 190), 1640 թ. (Ձեռ. Վասպ. 898), 1640 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 107 ա), 1651 թ. (Տաշեան, Ցուց. 363), 1658 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 63 բ), վերջին անգամ 1710 թ.

գրված Կարիբ՝ Ձեռ. Վասպ. 657։ Իսկ իգական սեռի է Ղարիպ 1659 թ. (Ձեռ. Վասպ. 27)։ Այժմ էլ դեռ պատահում է Ղարիբ անունը արական ձևով, որից և Ղարիբեան ազգանունը։

*ՂԱՐԻԲԲԷԿ, տր. < արաբ. Ղարիբ անունից+բէգ: Հիշված է երկիցս անթվական մի հիշատակարանում (1375 թվից ուշ), երկու անգամն էլ գրված Ղարիպէկ (Ձեռ. Վասպ. 224)։

*ՂԱՐԻԲԽԱԹՈՒՆ, իգ. < արաբ. Ղարիբ անունից+խաթուն. հիշատակված է ԺԵ դարից մինչև ԺԸ դարը։

— 1. Ղարիպխաթուն, կին Ֆարաճի, որ Հալէպում Մելքիսեթ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96 բ։

— 2. Ղարիպ խաթուն, դուստր Խլազափաշայի, գրել տվեց Բուստայ անապատի միաբան Աստուածատուր գրչին մի Աւետարան՝ 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 275։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններն են՝ 1512 թ. (Ձեռ. Վասպ. 84), 1554 թ. (անդ 98), 1566 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 182), 1588 թ. (Ձեռ. Վասպ. 711), 1595 թ. (անդ 745), 1604 թ. (Թորոս աղբ. Բ. 267), 1609 թ. (Ձեռ. Վասպ. 633, գրված Ղարիպհաթուն), 1626 թ. (անդ 869), 1651 թ. (Տաշեան, Ցուց. 363), և վերջին անգամ 1701 թ. (Ձեռ. Վասպ. 1027)։

*ՂԱՐԻԲԽԱՆ, իգ. < արաբ. Ղարիբ անունից+թրք. xan. մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1490 թվից ուշ (Ձեռ. Նոր-Բայազ. 23 բ)։

*ՂԱՐԻԲՇԱՀ, տր. < արաբ. Ղարիբ անունից+պրս. šāh «թագավոր» բառից։ Հիշված է ԺԳ դարից մինչև ԺԸ դար։

— 1. Խարիփշահ, որդի Մխիթարի, որ շինել է Մարտիրոս գյուղը 1283 թ.—Խաղբակեանք 127, Սիսական 176։

— 2. Ղարիպշայ, որդի Նորատունկի, որ գնի միջնորդ եղավ տանուտեր Էդիլշահի և գրիչ Յովհաննէսի միջև, Արծկէ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 3. Ղարիպշայ, երկու համանուն որդիք մղդսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1494 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։

— 4. Ղարիպշայ, որդի Յովհաննէսի. տանուտեր. իր վաղամեռիկ որդու՝ Փաշիկի հիշատակին, Արծկէի վանքում, Նիկողայոս եպիսկոպոսին գրել տվեց մի Աւետարան, 1486 թ. Հայտնի է Ղարիպշայի բազմանդամ ընտանիքը. հայրն է Յովհաննէս, մայրը Շարմելիք. կինն է Շնախոր, որի հայրն է Ոխանէս և

մայրը՝ Սուլթանմելիք։ Ղարիպշայի եղբայրն է Թումա, որ ունի 4 որդի. Աղջիբէկ վաղամեռիկ, Խուդատատ, Մուրադ, Ասպահանշահ։ Ղարիպշահի քույրն է Աղիզխնաթ և սրա որդին Մուրադ։ Ղարիպշայի զավակներն են Փաշիկ, Մխիթար, Խումար, իսկ հին հանգուցյալ զավակներն են՝ Աղուպշայ, Սադաղա, Մլխամ, Դարման, Ովանէս, Նուրինաթուն, Գուլչինչաք և երկու Շախփաշա։— Մերձավոր ազգական է Ռստանի քհ. տէր Աւետիսը, որի որդին է Ներսէս։—Ձեռ. Վասպ. 499—502։

— 5. Ղարիպշա, «փեսայ [Մատթէոս] վարդապետի», իր մոր հետ այցելում էր միշտ և կերակուր էին պատրաստում Փիլիպպոս գրչի համար, երբ նա արտագրում էր իր մեծ Ճաշոցը, Սեբաստիոյ Ս. Նշան վանքում, 1489 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, էջ 240։

— 6. Ղարիպշայ, ամուսին Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում, Ալեքսիանոս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— Ուշ ժամանակի հիշատակությունները են՝ Ղարիպշայ 1569 թ. (Ձեռ. Վասպ. 133), 1597 թ. (անդ 753), 1633 թ. (անդ 882—3), և ամենից ուշ՝ 1702 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 94 բ)։

*ՂԱՐԻԲՋԱՆ, ար. < արաբ. Ղարիբ անունից՝ ջան փաղաքշականով։ Հիշատակված է ԺԵ դարից մինչև ԺԷ դար։ Սրանից է Ղարիբջանեան ազգանունը (Կովկաս)։

— Ղարիպջան խալիֆա, որի տապանաքարը Ֆնում է Վանի Ատնականց ավերակ գյուղի հին գերեզմանատնում, 1471 թվից։— Միրախորեան, Նկարագր. ուղևորութ. Բ, էջ 255։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններն են Ղարիպջան 1570 թ. (Ձեռ. Վասպ. 672), 1573 թ. (անդ 678), 1575 թ. (անդ 683, 685), 1585 թ. (անդ 650), 1602 թ. (անդ 442), 1609 թ. (անդ 835), 1613 թ. (անդ 848), 1613 թ. (անդ 408, գրված Ղարիպճան), 1655 թ. (անդ 553), 1659 թ. (անդ 27), 1682 թ. (անդ 956 և 957), 1685 թ. (անդ 772, գրված Կարիպջան), 1696 թ. (Տաշեան, Ցուց. 592, գրված Կարիպջան), և վերջին անգամ Ղարիպջան 1698 թ. (Ձեռ. Վասպ. 987)։

ՂԱՐՊԱՐ, մր. ձևով և ծագմամբ անստույգ անուն. հիշված է մի անգամ Հերհերի Ս. Սիոն անապատի մի տապանաքարի արձանագրության մեջ՝ 1559 թ. (Սիսական 117 կարդում է Ղարպար, իսկ Ջալալեան՝ Ղամբար)։—Հմմտ. նաև Ղաբար։

ՂԱԽԱՆ, *աը. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված ունինք՝*

— Ղավան *ոմն Կեսարացի նկարիչ, 1675 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1547։*

ՂԱԻՋ, *աը. (անսովոր անուն, որ Այրարատ 519 ծան. ուզում է ուղղել* Ղազար *կամ միացնել* Ալուզ *անվան հետ։ Բայց այլուստ գիտենք, որ պետք է կարդալ Ղազար, ինչպես ունի Ազգապ. 330)։*

— Ղաւզ *եպիսկոպոս, անդամ Շահապիվանի ժողովի, 446 թ.—Այրարատ 519 ա։*

*ՂԱԽՐԻԼ, *աը. <* Γαβριήλ *անվան նոր հուն. հնչման համաձայն. այսպես է կոչում Վրդ. կգ.* (Ղավրիլ) *Մելիտինէի հայ քաղաքապետին, որ տես* Գաբրիել *№ 5։*

ՂԱՓԱՆ, *աը. (արդյոք* Կապան *տեղանվան թրք.* Ղափան *ձևի՞ց է)։ Մի անգամ հիշատակված է 1708 թ. (Ձեռ. Վասպ. 564)։*

*ՂԱՓԼԱՆ, *աը. < թրք.* قپلان qaplan *«վագր» բառից։ Հիշված է մի անգամ 1772 թ. (Ազգ. մատ. ՀԸ 349)։ Կան նաև 1)* Ղաբլան *դպիր, գրիչ, որի թվականը անհայտ է (Ձեռ. Վիեննա. Բ. 204)։ 2)* Ղափլան *տաղասաց, որ գրել է «Ոտանաւոր յաղումն Կաֆայի», հրտր. Պատկանեան, Նշխարք 65—66։ (Կաֆայի առումը տեղի ունեցավ 1475 թվին, ուստի Ղափլանն էլ ԺԵ դարից է)։ Սրանից է* Ղափլանեան *ազգանունը։ Գգվական ձևն է* Ղաբլանիկ, *որ հիշված է 1674 թ. (Սխուան 260 ա ծան)։*

*ՂԱՖԱՐ-ՍՈՒԼԹԱՆ, *իգ. < արաբ.* غفار ġaffār *«միշտ ներող, միշտ քավիչ»+*سلطان sulṭān *բառերից։ (Առաջինը Աստուծուն տրըված մակդիր է. իսկ երկրորդը՝ յետադաս լինելու դեպքում դառնում է իգական)։ Մի անգամ հիշատակված է* Գաֆար-Սուլթան *ձևով՝* Bodleian *147 (անհայտ թվականով)։*

*ՂԲԷԼ, *իգ. ըստ իս ծագում է արաբ.* قبله quble *«համբույր» կամ* qable *«կանանց հատուկ յուռթուլունք» բառից (Կամուս, Գ. 322)։ Գործածվել է մեր մեջ ԺԴ—ԺԵ դարերում։*

— 1. Ղբէլ, *կին Գրիգորի և մայր Ստեփանոս քահանայի, որ մի հին Աւետարան գնելով, նորից կազմել ու ծաղկել տվեց 1348 թ.—*Manus. brit. mus. *8 բ։ (Այս անունը սխալմամբ ձեվափոխել և գրել եմ* Զաբել *№ 12, որ պետք է ջնջել)։*

— 2. Ղըբէլ, *կին Առոմի և մայր Յակոբ վարդապետի, որ մի Ոսկեփորիկ գրել տվեց Աստուածատուր գրչին, 1403 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 931։*

— 3. Ղըկ, դուստր Մարտիրոս քահանայի, որ 1316 թվին Հագարակ գյուղում գրված մի Ավետարան գնեց 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164։

— 4. Ղըկ, կին Ցուսիկի և մայր Ցակոբ աբեղայի, որ Բերկրիում օրինակեց Ավետարանը Ցովհաննէս կրոնավորի համար, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 349։

— 5. Ղըբէլ, կին Մարտիրոսի և տատ Ցովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց Ավետարանը 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

— 6. Խայբէլ, կին Ստեփանոսի և մայր Մարգարիտի՝ կնոջ տանուտեր Առաքելի, որ Գամաղիէլի վանքում, Ցովհաննէս վարդապետին գրել տվեց մի Ավետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 453, 455 (այս վերջինում գրված Ղբէլ)։

— 7. Ղբէլ, դուստր Խելօքի՝ դստեր նույն տանուտեր Առաքելի, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։

— 8. Ղըբէլ, միրձավոր Ցովանէս գրչի, որ Խիզանում օրինակեց Ավետարանը 1499 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 577։

ՂԵԹ, ար. ծագումը անհայտ. հիշված է մի անգամ՝

— Ղեթ, հայր Աբրահիմի, որ տես № 13.—տեռ. Ղեթայ՝ հղկնտ. Գ. ի։

*ՂԵԻՈՆ, ար. տես հաջորդը։

— Ղեոն, միաբան Կամխի Եղավանք անապատի, 1203 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 420։

*ՂԵԻՈՆԴ, ար. < հուն. Λέων, սեռ. Λέοντες, բայց և Λεόντιος. ավելի ընդարձակ տես Լևոն։ Հայերենի մեջ սովորական ձևն է Ղևոնդ, բայց կա նաև օտարաձև Ղևոնդիոս, ինչպես և Ղևոն (Հիւբշ. 335)։ Այժմ գործածական է Ղևոնդ, աղավ. Ղևանդ։

— 1. Ղևոնդիոս եպիսկոպոս, առաջնորդ Արտազի. հաջորդեց Շավարշի և նստավ «172—190 թ» (Ազգապ. 57)։ Նահատակվել է Շավարշանում՝ Ավրելիոս կայսեր (169—179 թ) և հայոց Վաղարշ թագավորի օրով, որ նստել է «193—213 թ»։ (Սրա գահակալության թվականը (193) չի համընկնում Ղևոնդիոսի նահատակության թվականին՝ 190)։—Զքր. եպս. 280, Արրտ. 1868, դեկտ. էջ 102։

— 2. Ղևոնդիոս, գլխավորներից մեկն է 45 հայ նահատակների, որոնք նահատակվեցին քրիստոնեության համար Փոքր-Հայոց Նիկոպոլիս քաղաքում, երբ 319 թ.—Ավգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 106—133։

— 3. Ղևոնդ, *սուրբ հայր, որին ընծաներ է ուղարկել կայսրը. ըստ ձևի Հայաստանումն է և հայ է. բայց կարող է լինել Կեսարիոյ Ղևոնդ արքեպիսկոպոսը.—սեռ.* Ղևոնդեայ՝ *Թղթ. դաշ. էջ 28։*

— 4. Ղևոնդ, *գլխավոր աշակերտ Ս. Մեսրոպի, որ իր հետ տարավ նրան Մելիտինե, ապա նշանակեց Սպեր գավառի վրա։ Կորյունի հետ գնաց Բյուզանդիոն, հունարեն սովորելու համար «424 Թ».—Խոր. Գ. կ. Փ. կոր. 17. Կիր. 16. Վրդ. իե, իէ. Եղն. եր. 267. Առաք. լծ. սահմ. 170.* ZAPh *1, 206.*—Ղևոնդեոս՝ *Կոր. 16.*—Ղևոնդես՝ *Կոր. 21.*—Ղևոնդի՝ *Ասող. Բ. ա. Վրդ. իե.—գրծ.* Ղևոնդիւ՝ *Խոր. Գ. ծէ։—Ըստ Արծր. Ա. ժա՝ Սահակի մահվանից հետո եղավ տեղապահ։ Համաձայն Ազգապ. 309 նույն պիտի լինի՝*

— 5. Ղևոնդ *երեց, Վանանդ գավառի Իջավանից գյուղից. մասնակցել է Շահապիվանի ժողովին (Հայապ. 159)։ Ժողովուրդի գլուխն անցած՝ ջարդեց մոգերին Անգղ գյուղում «450 Թ»։ Մասնակցեց Վարդանանց պատերազմին. քշվեց Պարսկաստան և բանտարկվեց, ապա նահատակվեց Ապար աշխարհում, «454 Թ. հուլ. 25»։ Ղևոնդեանց նահատակների գլխավորն է։—Եղիշ. 44, 77, 82, 88, 96, 104, 116, 126, 133, 139. Փարպ. իգ, լ, լը, խբ, խգ, խէ, ծգ, ծէ. Շնորհ. վիպ. 1001. Օրբ. ժգ. Արծր. Ա. գ. Կիր. 20. Վրդ. իէ. Յայսմ. սեպտ. 17, յուլ. 31, օգոստ. 7. Զուղ. 45.*— Ղևոնդի՝ *Փարպ. լը, խբ, խդ—խզ, ծա, ծե—ծէ.—կոչ.* Ղևոնդիե *Տար. դգ.—ուղ. (թեև ձևով սեռ.)* Ղևոնդեայ՝ *Սիմ. ապար. 48.*— Ղևոնդեանք՝ *Յհ. կթղ. ժե. Գր. նար. մատ. 344, 386. Տար. դգ. Ասող. Բ. բ. Արծր. Ա. ժ. Կիր. 64. Ճշ. 77. Յայսմ. նոյ. 1. դեկտ. 20, յուլ. 31. Պարականոն շար. 170. Տաթև. ձմ. խբ. Վրդն. աշխ. 523. Սամ. անեց. 71. Բհնպ. 270. Յհ. կթղ. հյր. 274. Տաթև. հարց. 637—8. Սիմ. ապար. 44, 54. Զուղ. 45, 46.—Այրարատ 90—106, Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 225. Վրաց աղբ. Ա. 40։*

— 6. Ղևոնդ *երեց, Աբերիոսի հետ ուղարկվեց Պոլիս՝ Պրոկլի մոտ, իմանալու համար Հունաց կարծիքը Նեստորականության մասին (435 Թ. ըստ Զամչ. Ա. 527).—Ադոնց ՀԱ 1925. էջ 198—202 ըստ Լիբերատի։—Նույն է նախորդի հետ։*

— 7. Ղևոնդ *վարէտ! որ կառուցել է Վանանդը՝ ըստ Վրդն. աշխ. 507 (այս անմիտ տեղեկությունը երևի ակնարկում է Ղևոնդ երեց Վանանդեցուն)։*

— 8. Ղևոնդ, *հայ նախարար. Իղղոսի (սեռ. Իղղեայ) հետ գլուխ կանգնեց հայ նախարարների ապստամբության՝ հունաց*

դեմ. Զենոն կայսրը (474—491) ընկճեց նրանց։—Գաթըրճ. Տիեզ. պատմ. Բ. 518։

— 9. Ղևոնդ, գրեց Գահնամակը.—Օրբ. դ՝ (Հայապ. 76 համարում է Ղևոնդ պատմիչը)։

— 10. Ղևոնդ Ա. Առեստացի, կաթողիկոս հայոց. Արբերանի գավառի Առեստ կամ Փոքր Եռաստ գյուղից էր. հաջորդեց Քրիստափորին և նստավ «545—8 թ».—Ցհ. կթղ. ժգ. Մխ. անեց. դ. Ասող. Բ. բ. Օրբ. հա. Կիր. 22. Վրդ. լ. Միխ. աս. իթ (=իը). Մխ. այրիվ. 20. Սամ. անեց. 73. Եղն. եր. 268. Քհնպ. 271. Ցհ. կթղ. հյր. 274.— Լևոնտի՝ Վրաց տղթ. Ա. 78.—Ղևոնդի՝ Ցհ. կթղ. ժգ՝ (Իբր թե գրել է Պատմութիւն քարոզութեան առաքելոց ի Հայս. այս մասին տես Հայապ. 77)։—Ազգապ. 533—4։

— 11. Ղևոնդ եպիսկոպոս Մեծկուանց (Մեծկողմանց), որին գրել են Յովհաննէս Հայոց կաթողիկոսը և ուրիշ եպիսկոպոսներ՝ Նեստորական քարոզիչների ոտնձգության դեմ Աղվանքում (564 թվից քիչ ուշ).—սեռ. Ղևոնդի՝ Գիրք թղ. ժթ.—Ղևոնդեայ՝ Կղկնտ. Բ. է (ըստ հրատ. Էմինի)=Ղևոնդի՝ (ըստ հրատ. Շահն).—Ազգապ. 562։

— 12. Ղևոնդ երեց կամ վարդապետ, պատմիչ. գրել է «Արտաքաց արշաւանքի պատմութիւնն ի Հայս», որ սկսելով Մահմեդի հաջորդներից հասցնում է մինչև Ստեփաննոս Ա. կաթողիկոս, այն է «788 թիվը», ընդ ամենը 150 տարվա մի շրջան։—Ասող. Ա. ա. Կիր. 3. Սամ. անեց. 3. Մխ. անեց. ե, իէ. Մխ. այրիվ. 37. Ջուղ. 51.—սեռ. Ղևոնդի՝ Ղև. խբ. Այրիվ. 20 բ. Մխ. անեց. իէ.—Ղևոնդեայ՝ Ղև. ա. Ջուղ. 26.—Զարբ. Հին դպր. 497—9. ընդարձակ կենսագրությունը տես Ակինեան, ՀԱ 1929, էջ 330 և շար։

— 13. Ղևոնդ երեց, պապ Ահարոն Վանանդեցու (Ը դար).—Զարբ. Հին դպր. 530։

— 14. Ղևոնդ վրդ. տես Լևոն Իմաստասէր, № 6։

— 15. Ղևոնդ, ուսուցիչ Բարսեղ գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ 1200 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 548։

— 16. Ղևոնդ Ա. կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Միքայէլ Ա-ի և նախորդ Սամուէլի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 17. Ղևոնդ Բ, կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Յովհաննէս Դ-ի և նախորդ Սարգիս Բ-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 18. Ղևոնդ որդի Սէթի և թոռն Բալիճանի. փոխանորդ կարգվեց Գրիգոր Մակուեցի կաթողիկոսից և Թուրքերից. գնեց Վաղարշապատ գյուղը իբր կալված Էջմիածնի 1443 թ.—Ջամբռ 100, Այրարատ 209։

— 19. Ղևոնդ Գ. կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Ստեփաննոս Ե-ի և նախորդ Աբրահամ Բ-ի (ԺԵ դար).—Հուաք. 61 (կեղծիք)։

*ՂԵՒՈՆԴԱԿ, ար. < Ղևոնդ անվան գգվականն է։ Մի անգամ ունինք՝

— Ղևոնդակ Խոռխոռունի, առաջնորդ Վարագայ վանքի. մեռավ խոր ծերության մեջ և կտակով «ոչ հրամայեաց գնչխարս ի հանգստանոցս գնել, այլ կարկառեալ քարամբք», շուրջ 500 թ.—Հայապ. 231, Ձեռ. Վենետ. Բ. 392։

*ՂԶԸԼ, ար? < Թրք. قزل qəzəl «կարմիր, շեկ», արևել. Թրք. «ոսկի»։ Մի անգամ հիշված է 1743 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 35 ա)։

*ՂԶԼԱՐ, իգ. < Թրք. قزلر qəzlar «աղջիկներ» բառից, որ qəz «աղջիկ» բառի հոգնակին է։ Ըստ իս կրճատված է հաջորդից կամ նման մի ձևից, իբր թե «աղջիկների լավագույնը, գեղեցկագույնը են»։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում։ Հնագույնն է 1557 թ. Ձեռ. Վենետ. Ա. 529 (և որովհետև Ղզլարբէգի հիշված է արդեն 1435 թվից, ուստի ճիշտ է այն ենթադրությունս թե Ղզլար կրճատված է սրանից)։ Սրանից հետո գալիս են 1606 թ. (Նաթանեան, Արտօսր Հյստ. 153, գրված Խզլար), 1613 թ. (Ձեռ. Վասպ. 846, 847), 1613 թ. (անդ 848, գրված Կըզլար), 1638 թ. կամ քիչ ուշ (անդ 896), 1640 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 107)։—Հիշատակության արժանի են՝

— 1. Ղզլար, դուստր Կարապետի, առևանգվեց Երևանի Ամիրգունա խանից և գերի էր մնում նրա տանը, առանց ուրանալու իր հավատքը (1621 թ).—Շահազիզ, Հին Երևանը, էջ 74։

— 2. Ղզլար Նորագավթեցի, կին Սեթ Զաքարիայի, նահատակվեց Թաթար ավազակների ձեռքով 1638—9 թ. գրեթե նույն ժամանակ նրա ամուսինն էլ սպանվեց ավազակների ձեռքով՝ իր երկու ընկերներով միասին, Մուշաղբիւր գյուղում, երբ գալիս էին վաճառականությունից.—Զքր. սարկ. Բ. 23 > Նոր վկ. 444։

*ՂԶԼԱՐԲԷԳԻ, իգ. < Թրք. قزلربكى qəzlar-begi «աղջիկների իշխանուհին (այսինքն ամենագեղեցիկը)»։ Հնագույն հիշատակությունն է՝

— 1. Ղզլարբէկի, դուստր Խլղաթի՞ թե բրուտ Ասատուրի, հիշված 1435 թ.—Ձեռ. Վասպ. 371 (Թվականի վրա կասկածում եմ, որովհետև հիշատակարանը լավ չէ արտագրված)։

— 2. Ղզլարբէկի, եղբորդուստրն է Աղարիա աբեղայի, որ Եղեգիսում գրել տվեց մի Ավետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։

— Ավելի ուշ ժամանակից են 1533 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 718, բայց ար!), 1582 թ. (Ձեռ. Վասպ. 696), 1629 թ. (անդ 876), 1662 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 12), անհայտ թվականով Ձեռ. Վասպ. 344 և 442։

ՂԷՑՐԱԼ, իգ. ընթերցումը ենթադրական է. ծագումն ինձ անծանոթ. հիշատակված է մի անգամ 1648 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 38 բ)։

*ՂԸՁ, իգ. < Թրք. قز qəz «աղջիկ» բառից. մի անգամ գտնում եմ գործածված 1579 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 390)։

*ՂԻՄԱԹ, իգ. < արաբ. قيمت qiymat «գին, արժեք, արժանիք» բառից։ Գործածվել է ԺԳ դարից մինչև ԺԸ դար։

— 1. Կիմայք, կին Խուպասարի և մայր Բաղդասարի, որ նրանց հոգուն հողեր է նվիրել Հառիճի վանքին, 1235 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 265, Շիրակ 163։

— 2. Ղիմաք, նվիրատու գրչության այն Ավետարանի, որ օրինակեց Սիմէոն երեցը Սուրխաթում, 1343 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 756։

— 3. Ղիմաք, կին Նորհատի և մայր Գրիգոր քահանայի ստացողի՝ 1375 թ.—Տաշեան, Ցուց. 277։

— 4. Ղիմաք, դուստր տանուտեր Մարտիրոսի, որ Ծպատի վանքում, Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1395 թ.—Ձեռ. Վասպ. 231։

— 5. Ղիմաք, կին Օտարշահի և մայր Ներսէս գրչի, որ Ֆամաղիէլի վանքում օրինակեց Ճառընտիրը՝ Ասաղ միայնակեցի համար, 1397 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1286։

— 6. Ղիմաք, կին Սաւռաւղի, որ տես (1499 թ).—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 317։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են՝ 1534 թ. (Ձեռ. Վասպ. 647), 1571 թ. (Ձեռ. Կես. ածած. 48 բ), 1621 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 376), 1663 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 406), 1668 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 160), 1688 թ. (Ձեռ. Վասպ. 1019), 1689 թ. (անդ 971), 1690 թ. (անդ 975), Կիմաք 1736

թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 44 ա), Ղըյմէր 1779 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 358)։ Անթվական է Ցովհաննավանքի մի արձանագրության մեջ Կիմառ՝ Ջքր. պատմ. Գ. 25, Այրարատ 171։

ՂԻՄԻՆԴՈՍ, ար. անշուշտ աղավաղ հունարեն ձև է. կա միայն՝

— Ղիմինդոս, վանահայր Գլակայ վանքի, հաջորդ Ցովհաննէսի (Է դար).—Մամիկ. ա։

ՂԻՖԱՐ, իգ. ծագումն ինձ անհայտ, թեև հայտնապես օտար։ Մի անգամ հիշված է 1626 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 32 բ. գրված է Ղիֆար. նույն ձևով էլ ցանկում)։

*ՂԼԻՃ, ար. < Թրք. قلج qələǰ «թուր» բառից. մի անգամ հիշատակված է 1517 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 482).

ՂՈԳԱՋ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է Ջուղայեցի ոմն 1751 թ. (Rapport Belgique 206՝ գրված logatch ձևով. 1 թևով)։

ՂՈԼՋՈՒԼ, իգ. անստույգ ձև. հիշված է մի անգամ 1671 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 305, Ղօլջուլ ձևով)։

*ՂՈՆՉԱ, իգ. < պրս. غنچه ġonča «կոկոն» բառից. հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում. այսպես՝ Խոնչայ՝ մայր Ստեփաննոս Առնջեցու, որ էր Միքայէլ Սեբաստացի կաթուղիկոսի աթոռակալը և մեռել է 1568 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 79), Խոնչա 1608 թ. (Ձեռ. Վասպ. 831), Ղօնչա (ար!) 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 735), Ղօնճայ 1729 թ. (մի տպագիր հիշատակարանում), Խոնչա խաթուն՝ անթվական մի հիշատակարանում (Bodleian 148)։

*ՂՈՆՉԷԳԻՒԼ, ար. < պրս. غنچه گل ġončegül «կոկոն վարդ» (ըստ Թրքական հնչման). երևի գործածական անուն էր, որից Ղոնչէգիւլեան ազգանունը։

*ՂՈՉ, ար. < Թրք. قوچ qoč «խոյ» բառից. հիշված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Ղոչ, հիշված է 1435 թվին գրված մի Աւետարանի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 371). բայց կարծում եմ որ տարբեր հիշատակարան է։

— 2. Ղոչ սարկավագ, իր մոր Ազիզի յիշատակին կանգնեցրել է մի խաչքար՝ Շօշու գյուղի (Արցախ) հին եկեղեցում, 1458 թ.—Արցախ 132, Ազգագր. հանդ. Բ. 33։

— 3. Ղաւչ, որդի կամ եղբորորդի ռէս Մարտիրոսի, որ

Բերկրիում գրել տվեց մի Ավետարան, 1473 թ.—Ձեռ. Վասպ. էջ 467։

— Սրանից հետո ունինք՝ Ղօչ 1534 թվից ոչ շատ ուշ (Ձեռ. Վասպ. 649), Ղօչ՝ անթվական մի հիշատակարանում. որ գրված է 1389 թվից ուշ (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 759, 760)։

*ՂՈՉԻ, ար. < արևել. թրք. قوچی qoči «քաջ, կտրիճ» բառից. հիշված է մի անգամ 1576 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 31 բ) և մի անգամ էլ 1609 թ. (Ջբր. սարկ. Գ. 22)։

ՂՈՐԴԱ? իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է 1601 թ. (Ձեռ. Վասպ. 798)։

*ՂՈՐԽՄԱԶ, ար. < արևել. թրք. قورخماز qorxmaz «անվախ» բառից։ Իբրև անձնանուն հիշված է 1661 թ. (Ձեռ. Ագուլ.= Արրտ. 1911, 119)։ Հիշված է նաև Ղարաբաղում (Բարխուտ. Պատմ. Աղվանից 151) և Ն. Ջուղայում՝ ԺԷ դար (Ձեռ. Թավր. 118 ա)։ Սրա աղավաղ գրչությունն է Ջորմազ 1644 թ. (Rapport Belgique 117)։

*ՂՈՐՂԱՆ, ար. < կարող է լինել չաղաթ. قورغان qurġan «ամրոց» բառից (Будагов 2, 76), բայց ավելի լավ է մոնղոլ. ղուրղան «գառնուկ» (ինչպես հիշում է Կիրակոս պատմիչ, տպ. Վենետիկ 1865, էջ 149—150)։ Սրանից է Ղորղանեան ազգանունը (Կովկաս)։ Հիշված եմ գտնում Ղորղան 1837 թ. (Ձեռ. Ներս. 46 բ)։

*ՂՈՒԲԱԹ, ար. < պրս. قباد Qubād անունից, որ հին հայոց տառադարձված Կաւատ անունն է։ Գործածվել է մեր մեջ ԺԵ—ԺԷ դար։

— 1. Ղուբաթ խոջա, որդի Եզդանբախշի, գրել տվեց Աղաբեկ գրչին մի Ավետարան, Արաշ գեղաքաղաքում, 1490 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 246, 256։

— Ավելի ուշ հիշատակված ունինք Ղուպաթ 1513 թ. (Օրբ. ժմ. յաւել. 46=Սիսական 34 ա), 1534 թ. (Ձեռ. Պետերբ.=ՀԱ 1892, 52 ա), Ղուբաթ 1549 թ. (Ձեռ. Վասպ. 652), 1579 թ. (անդ 689), Ղուպաթ՝ ԺՋ դար (Ձեռ. Թավր. 21 բ), 1663 թ. (Ձեռ. Վասպ. 922), Ղուբաթ 1682 թ. (անդ 580). անհայտ թվականով Նոտարք 180։

*ՂՈՒԲԱԹՇԱՀ, ար. < նույն Ղուբաթ անունից+պրս. شاه šāh «թագավոր»։ Մի անգամ հիշատակված է անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1311 թվից ուշ (Ձեռ. Թավր. 73 ա)։

*ՂՈՒԲԱԹՍԱՐ, ար. < անշուշտ նույն Ղուբաթ անունից+պրս. سر sar «գլուխ»? Մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1462 թվից ուշ (Ձեռ. Վենետ. Ա. էջ 216)։

*ՂՈՒԲԱՑ, իգ. < կիրգիզ. قبا quba «բաց դեղին» (Будагов 2, 69)։ Մի անգամ հիշատակված եմ գտնում 1513 թ. (Ձեռ. Վասպ. 135)։

*ՂՈՒԴՐԱԹ. իգ. < արաբ. قدرت qudrat «կարողություն» բառից։ Հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում։ Հնագույն հիշատակությունն է Ղուտրաթ 1595 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 379), Ղուտրատ 1603 թ. (Տաշեան, Ցուց. 902 և Կամենից 167), Խուտրաթ 1624 թ. (Տաշեան, Ցուց. 718/9), Ղուտրատ 1630 թ. (Ձեռ. Բեռլին, 2 ա), Խուտրաթ 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 310), Ղուդրադ 1655 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 577), Ղուտրաթ 1668 թ. (Թորոս աղբ. Բ. 440), Ղուդրաթ 1693 թ. (Ձեռ. Վասպ. 336), Ղուտրէթ 1710 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 580)։

*ՂՈՒԶԻ, ար. < թրք. قوزی quzi «գառնուկ» բառից. հմմտ. հյ. Գառնիկ և մոնղոլ. Ղորղոն համազորները։ Հիշված է մի անգամ 1559 թ. (Ձեռ. Սևան 4)։ Բայց տես նաև Ղուզիջան և Ղուզում։

*ՂՈՒԶԻՋԱՆ, ար. < նախորդ Ղուզի անունից+ջան փաղաքշականով։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1595 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 695)։

*ՂՈՒԶՈՒՄ, ար. < թրք. قوزوم quzum «գառնուկս» բառից. տես վերը Ղուզի։ Հիշատակված է 1327 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, էջ 462)։

*ՂՈՒԷՆ, ար. < թրք. قویون qoyun, գռ. ġoyin, մոնղոլ. ġoyna «ոչխար» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԴ դարում։ Սրանից է Ղոյինեան ազգանունը (Դերջան)։

— Ղուէն, ամուսին Գոհարգաշի, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում գրել տվեց Հին կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

Ղուքլու տես Խուքլու։

*ՂՈՒԹՍԻ, իգ. < արաբ. قدسی qudsī «նվիրական, սուրբ, հրեշտակ» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1702 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 94 բ)։ Սրա կրկնակն է Ղուցի, որ նույնպես մի անգամ հիշված եմ գտնում 1710 թ. (անդ, էջ 329 բ)։ Թան-

կագէն օրինակ է՝ ցույց տալու համար թե ինչպես հյ. տս դառնում է ապա ց. հմմտ. արտասուք > արցունք. մյուսները տես խոճա։

*ՂՈՒԼԻ, ար. < թրք. قول qulə, արևել. թրք. ġuli «ծառան, ստրուկը» (ակնարկությամբ որևէ սրբի կամ նաև թագավորի)։ Հմմտ. նաև Ղուլիբէկ, Ղուլիկ և Ղուլիջան անունները։ Սրանից է Ղուլեան ազգանունը (Կովկաս)։ Ղուլի անունը հիշված է 1671 թ. (Ձեռ. Ազուլ.=Աբրտ. 1911, 314, բայց թերևս Պարոնղուլի), ԺԹ դար (Սմբատեանց՝ Գեղարքունի 123), առանց թվականի էլ՝ Ձեռ. Թաւր. 81 բ։

*ՂՈՒԼԻԲԷԿ, ար. < նախորդ Ղուլի անունից+բէգ պատվանունով։ Մի անգամ գտնում եմ հիշված 1600 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 147)։

*ՂՈՒԼԻԿ, ար. < Ղուլի անվան փաղաքշականից։

— 1. Ղուլիկ, հիշատակված է Իբրև նվիրատու Տաթևի, 1332 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Գ. 141։

— Ավելի ուշ գտնում եմ Ղուլիկ անունը՝ հիշված 1603 թ. (Ձեռ. Սեան. 7 ա և Սմբատեանց՝ Երնջակ 214) և Ղուլեկ ձևով՝ 1673 թ. (հայր Յակոբ նահատակի) Նոր վկ. 500։

*ՂՈՒԼԻՋԱՆ, ար. < Ղուլի անունից+ջան գգվականով։ Հնագույն հիշատակությունը ԺԵ դարից է։

— 1. Ղուլիջան, որդի Կաքաւի՝ եղբորորդւոյ Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Յայսմաւուրք 1457 թ.—Ձեռ. Թաւր. 104 ա, 105 բ։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են՝ 1525 թ. (Ձեռ. Վասպ. 417), Ղուլիջան (հայրն է Յովհաննէս վրդ. Բրգուեենց տաղասացի, որ † 1589 թ. հայրը բնականաբար ավելի վաղ՝ շուրջ 1560 թ. ՀԱ 1937, 210), Ղուլիջան 1596 թ. (Ձեռ. Վասպ. 243), 1606 թ. (Ճանիկեան՝ Հնութ. Ակնայ 84), Խուլիջան 1606 թ. (Bodleian 10), Ղուլիջան՝ 1627 թ. (Ձեռ. Ներս. 40 ա), անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ազուլ.=Աբրտ. 1911, 565)։

[Ղուղոնէլ, սխալ ձև որ հիշում է Սիսական 467 ա փոխանակ Զուլղըեն, որ տես վերը]։

*ՂՈՒԿԱՍ, ար. < հուն. Λουκᾶς անունից, որի հետ նույն են լտ. Lucas, ֆրանս. Luc, գերմ. Lucas, անգլ. Luke, ռուս. Луќа են։ Ըստ հների նշանակում է բուն «յարութիւն» (Ձեռ. Վենետ. Բ. 295)։ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Է. 265 ասում է որ

թեև ոմանք հանում են «յարութիւն» իմաստից, բայց լավագույն է մեկնել լատ. lux բառից և հասկանալ «լուսավոր», ինչպես և Lucanus, Lnciola, Lucilia, Lucina և այլ անունները։ Ղուկաս անունով հայտնի է չորս ավետարանիչներից մեկը, որ և Գործք Առաքելոցի հեղինակն է։—Իբրև օրինակ անձնանվան հիշված է Համամ. քեր. 254։ Գործածված է մեր մեջ Ժ դարից սկսած և մինչև այժմ էլ գործածական է։ Սրանից է Ղուկասեան ազգանունը։

— 1. Ղուկաս վարդապետ, անշուշտ նշանավոր հոգևորական էր, որ Մովսէս եպիսկոպոսի հետ այցելության եկավ Գագիկ Ա Արծրունի թագավորին («908—937 թ») և գովեց Աղթամարի շինարարությունը։—Հաւաք 16։

— 2. Ղուկաս գրիչ, որդի Դաւիթ քահանայի. իր հոր առաջարկությամբ, 971 թվին օրինակեց Ս. Աթանասի գործերը։ Պարունակում է նաև Շիրակացու գործերը, ինչպես Մղոնաչափքը և Ժամանակագրությունը։ Ձեռագիրը նորոգվել է 981 թ.—տես Ցովսէփեան՝ Խաղբ. 110, Շողակաթ 189, Աթան. յոբ. էջ Թ., Տաշեան՝ Մատեն. մանր. ուս. Ա. 295. Աբրահամեան՝ Շիրակացու մատեն. էջ 103, 142, 107—8, Խորենացուն վերագրվող Աշխարհացոյցը 92, Շիր. տիեզ. յոբ. XIV. Արրտ. 1902, 963։—Հայոց հնագոյն թղթեայ ձեռագիրն է (Էջմ. Գև. № 102)։—Սրանից է արտագրված Վենետիկի օրինակը, ուր նշանակված է նաև այն թե Ղուկասի արտագրածը իր հոր Դաւիթ քահանայի կազմած նոր խմբագրությունն է Աթանասի, Անդրէասի և այլ գործերի (Ձեռ. Վենետ. Բ. 292)։

— 3. Ղուկաս վարպետ, Գրիգոր վարպետի և Տէր Թորոսի հետ (№ 10) գծագրել ու փորագրել են Մշու Առաքելոց վանքի նկարազարդ դուռը, 1134 թ.—Սարգիսեան, Տեղագր. 232, Արրտ. 1909, 983։

— 4. Ղուկաս քահանա Ամթեցի. ուներ մի օրինակ Նանայի Ասորւոյ Մեկնութիւն Աւետարանին Յովհաննու, որ օրինակության համար տվավ Կիրակոս գրչին, 1155 թ.—Նանայ, էջ ծզ և 63։

— 5. Ղուկաս, ստացող. հայր Կոստանդինի հետ միասին՝ Ստեփաննոս գրչին օրինակել տուին մի ընդարձակ Տօնական, Տիւրիկի Նեղկուկ գիւղում, 1194 թ.—Manus. bibl. nat էջ 54, Ձեռ. Վենետ. Բ. 511։

— 6. Ղուկաս, միաբան Դամխի Եղավանք անապատի, 1203 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 420։

— 7. Ղուկաս, վանահայր Վարագայ վանքի. երբ Խորազմեանները նվաճեցին Խլաթի շրջանը, այս Ղուկասը փախցրեց Վարագի խաչը և վեց տարի թափառելուց հետո, հասավ Նորաբերդ՝ Վասակ իշխանի մոտ և դրավ Անապատ վանքում, որ և կոչվեց Նոր-Վարագ, 1231 թ.—Շահխաթ. Բ. 368—9, Ջալալեան, Ճանապարհորդ. Ա. էջ 160, 161, Արցախ 336—7, Ակինեան ՀԱ 1929, 445 ծան. Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 168—171, ուր կա նաև նրա ընդարձակ Արձանագրությունը։

— 8. Ղուկաս, որդի Տիրատէր քահանայի և եղբայր Եղիային. իրենց հոր հիշատակին մի խաչքար են կանգնեցրել Վերին Ախտա գյուղում, 1266 թ.—Խաղբակեանք 134, Միսակյան 175։

— 9. Ղուկաս վարդապետ, որի վերակացությամբ պարոն Առաքելը շինել է Սոթայ Բեթղեհեմի վանքը (Բասարգեչարի մոտ), 1276 թ.—Սմբատեանց, Գեղարքունիք 139։

— 10. Ղուկաս, քահանա Իտալիոյ Perugia քաղաքի հայոց Մատթէոս ավետարանիչ եկեղեցու։ Եղբայրն է Հեթում սարկավագի, որ գրեց հիշատակարանը այն Աւետարանի, որ Լևոն Գ թագավորը նվեր ուղարկեց նույն եկեղեցուն, 1279 թ.—Հայապ. 485, Սիսուան 519։

— 11. Ղուկաս եպիսկոպոս Արքակաղնի վանո՞ւց, 1284 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 57 (բացատրությունը շփոթ է)։

— 12. Ղուկաս քահանա, եղբայր Մատթէոս գրչի, Տօրոսի Աղբերց վանքում, 1284 թ.—Տաշեան, Ցուց. 835 և 1039։

— 13. Ղուկաս քահանա. գրել տվեց մի Աւետարան՝ Կարապետ կրոնավորին, Եկեղեաց Տիրաշէն անապատում, 1302 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 516)։

— 14. Ղուկաս աբեղա, Թուղթ էր կոկում Ներսէս աբեղայի համար, երբ սա օրինակում էր Ճառընտիրը՝ Երուսաղէմում, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 15. Ղուկաս, գրիչ. օրինակեց Մանրուսմունքը՝ Տիրացու քահանայի համար, 1371 թվից քիչ առաջ.—Bodleian 20։

— 16. Ղուկաս, գրապետ Աղթամարի. Լէնկթիմուրի արշավանքի ժամանակ (1387 թ), գրքերը ազատելու համար տակառների մեջ լցնելով թաղել է։—Հայապ. 11։

— 17. Ղուկաս վարդապետ, առաջնորդ Շամբիձորի. եղբոր-

որդին է Շամբիձորի Սարգիս վարդապետի (ԺԴ դար).—Զամչ. Գ. 446։

— 18. Ղուկաս, որդի Վարդանի և հանգուցյալ եղբայր Թադեոս քահանայի, որ Մոկաց Կաղթանց գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1409 թ.—Ձեռ. Վասպ. 294։

— 19. Ղուկաս Շահապունեցի, ունիթոռական գավառահայր Երնջակի շրջանի. երկու անգամ գնաց Հռոմ՝ նպաստներ ստանալու համար։ Այս առթիվ Վոնիփակիոս Թ պապը Երնջակի ունիթոռներին ամբողջովին ենթարկեց լատինների իրավասության («1398 թ»)։ Ինքը նաև գրիչ է. արտագրել է Միսալը 1442 թ.—Սիսական 390, 482, Գաթըրճեան՝ Պտրգմ. 470, Ազգապ. 2016։

— 20. Ղուկաս եպիսկոպոս, եղբորորդի Ազարիա արքեպիսկոպոսի Գողթան գավառի, 1471 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 388)։

— 21. Ղուկաս արքեպիսկոպոս Նախիջևանու. շնորհեց Յայսմաւուրքի օրինակը Գրիգոր աբեղային, օրինակելու համար, 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 300։

-- 22. Ղուկաս, որդի Սարգիս երեցի, որ նվեր ստացավ մի Ավետարան, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 242։

— 23. Ղուկաս, առաջնորդ Խորոտկայ վանից, որ նոր նորոգեց Աւան ազան, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 24. Ղուկաս, հայր Երուսաղեմի Յովհաննէս Է պատրիարքի, որ գահակալել է 1517—1522 թ. (ըստ Աղաւնունու)։

— 25. Ղուկաս վարդապետ Հաղբատեցի. մեծ վարժապետ. իր աշակերտն է Յովհաննէս Ծարեցի, որ մեռել է 1583 թվին.—տես. Ղուկասու՝ Յհնակ. 192, Առաք. պատմ. 472։

— 26. Ղուկաս վարդապետ Կեղեցի (կամ Խարձենացի), նշանավոր գիտնական. աշակերտ Յովհաննէս Շիրակ (կամ Ջէրաք) վարդապետի. ուսուցիչ Սրապիոն կաթողիկոսի Ուռհայեցւոյ. ունի Տոմարագիտութիւն (տաղաչափյալ) և Պատճէն Հռոմայ մեծ տումարին։ Ոտանավորը գրել է 1557 թվին։ Մի ուրիշ ոտանավոր էլ ունի 1593 թվից (հրատ. ՀԱ 1937, 127)։ Մեռել է 1602 թ. (ըստ մի հիշատակարանի (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1860)։ Իր գերեզմանը գտնվում է Երզնկայի Ս. Սարգիս եկեղեցում՝ Մինաս Թոխաթցի կաթողիկոսի կողքին։—Մ. Մաշտ. 336 բ. Սամ. անեց. շար. 176. Առաք. պատմ. 4, 340, 487. Ցկ. կր. 12. Դրնդ. 350. Թորոս աղբ. Բ. 464 և 484։—Նո՞ւյն է Ղու-

կաս առաջնորդ Կեղւոյ (Տաշեան, Ցուց. 736)։—Ղուկաս Կեղեցու մասին Գր. Դարանաղցին իր Ժամանակագրության մեջ (տպ. Երուսաղէմ 1915, էջ 350) հետևյալ հետաքրքրական տեղեկությունն է տալիս—«Կեղեցի Ղուկասն, շնորհալի բանաստեղծն և տաղասաց և զուտմարն հոռոմոց ոտանաւոր շարադրողն։ Սա կամեցաւ կարճառօտել զամենայն շարականսն վասն յաճախութեանն, որ մանկունքն ի դպրոցացն բազում ժամանակաւ դեգերելով ընդ նա և ոչ կարեն ի մտի ունել և պահել մինչև ցվաղճան, ասելով թէ՝ զամենայն աստուածաշունչ գրոց և զաւետարանաց՝ հին և զնոր կտակարանաց մեկնութիւնքն կարճ և համառօտ արարին առաջի վարդապետքն վասն ժամանակին։ Ապաքէն որ ի վերջին ժամանակս որ մարդիկ կարճամիտք են և փոքրոգիք և ուսումնատեացք, յաղագս որոյ կամեցաւ և համառօտեաց զմեծամեծ կանոնս կարգաց, զԾննդեան Ութօրէիցն երեք աւուրն եթող, որպէս զԱստուածածնին փոխմանն, զԱղուհացիցն՝ ամէն շաբաթի մէկ մէկ, զՑարութեանն՝ նոյնպէս. Նմանապէս և զԳալստեան հոգոյն և զԽաչին։ Եւ են որ պիտոյ էին հարց կամ օրհնութիւն կամ մանկունք՝ յիւրմէն արար քաղցրաձայն եղանակաւ և զթերին ելից և զամենայն յաւելորդքն եբարձ և գրեաց ոսկի տփերով ի վերայ գեղեցիկ մագաղաթի, զի թերևս ընդունելի լիցի վասն նիւթոյ պատուականութեանն և զարդուցն։ Նա՝ ոչ ընկալան սոքա և բիրտ և ցրտասիրտ ազգս եկեղեցականաց և ոչ ցոյց ետուն զօրինակն, այլ ծածկեցին, ի խաւարի թաքուցին ի յՆրզնկայ քաղաքին ի մէջ քահանայից և ի վեր ոչ հանին։ ...Եւ այս Ղուկաս վարդապետս եկեալ ի յՆրզնկայ քաղաքն և անդ արարեալ զհամառօտութիւն շարականին և յաւուրսն յայնոսիկ եհաս վաղճան նորա և փոխեցաւ առ Աստուած ի թվին ՌԾ (1601) յունիս ամսոյն և թաղեցին ի սուրբ եկեղեցին ի փոքր պաղչայինս»։

— 27. Ղուկաս Վանանդեցի (Գողթն), հայ տպագրության ռահվիրաներից. Ամստերդամում տպագրեց շատ գործեր, որոնցից հիշատակելի են Խորենացին (տպ. 1695) և Համատարած քարտէսը.—Զամչ. Գ. 663, Սիսական 315, 339—340։

— 28. Ղուկաս Սսեցի, Աջպահեան, կաթուղիկոս Սսոյ. Նախապես ընտրված էր աթոռակից Յովհաննէս Հաճնցի կաթուղիկոսի «1731 թ». իսկ երեք տարի հետո, Յովհաննէսը մեռնելով՝ Ղուկասը եղավ ինքնագլուխ կաթուղիկոս 1733 թ։ Մեռել է «1737 թ»։—Ազգապ. 2938, 2941. (օծված է դնում 1734 թ.

բայց ըստ Ղուկասի ինքնաձեռագիր մի հիշատակարանի, որ տես Ձեռ. Հալէպի, Ա. 226, օծումը եղել է ՌՃՁԲ=1733 թ). Ազգ. մատ. ՀԸ, էջ 263։

— 29. Ղուկաս վարդապետ Խարբերդցի. Յովհաննէս Բաղիշեցի պատրիարքի և ուրիշների խնդրանոք լատիներենից և իտալերենից թարգմանեց 20 հատոր աշխատություն, որոնք են. Գիրք կենդանեաց (10 հատոր), Գիրք աստուածաբանութեան Սկօթոսի, Գիրք Եօթն խորհրդոց, Լուսաւորութիւն խոստովանութեան, Անտառ այլաբանութեան, Պատմութիւն Ս. Երկրին, Խաբէութիւն աշխարհի, Ջերմեռանդ կեանք, Գիրք քարոզութեան, Փիլիսոփայութիւն Կովտնոյ (Լոճիգա, Ֆիզիգայ, Մեթաֆիզիգայ և Բարոյական), Ի վերայ հայր մերի, Վասն զղջման և ապաշխարութեան, Կրթութիւն ապաշխարողի, Պարտէզ հովուաց, Օգոստինոսի աղօթք, Մեկնութիւն Ղեւտացոց և Բ Օրինաց, Պատմութիւն Ամերիկայի և Ափրիկայի, . Նախասահմանութիւն Ս. Թոմայի (որոնք թարգմանված են 1725—60 թվերին և մի մասը տպագրված է). Մեկնութիւն Յայտնութեան Յովհաննու, Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի—Գալէմքեարեան, Կենս. Ս. արքեպս. Սարաֆեան, էջ 167—172, Տաշեան, Ցուց. 569, 733։

— 30. Ղուկաս Կարնեցի, կաթողիկոս Հայոց «1780—1799 թ». Կարնոյ գավառի Քղի ավանից էր. նախ նվիրակ Ռումէլիի և Խրիմի, ապա նվիրակ և առաջնորդ Զմիւռնիոյ։ Սիմէոն կաթողիկոսի սիրելի աշակերտն էր. Նրա ծերության ժամանակ կանչվեց Էջմիածին, ուր մնաց իբրև օգնական և գործակից Սիմէոնի՝ մինչև նրա մահը։ Նորոգեց և նկարազարդեց Էջմիածնի տաճարը՝ աշուղ Յովնաթան նկարչի ձեռքով։ Բարձրացրեց Էջմիածնի հայրապետութեան ազդեցությունը։ Մեծ նեղություն քաշեց պարսկական արշավանքների պատճառով։ Գնաց Աղա Մահմադ խանի ոտքը և 100,000 ռուբլի կաշառք տալով՝ հազիվ ազատեց Մայր Աթոռը։—Ջուղ. էջ ԻԴ. Ազգապ. 3135—3240։

*ՂՈՒՄԱՇ, իգ. < արաբ. قماش qumāš «ընտիր կտորեղեն» բառից. հիշատակված է նախ 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 218). այնուհետև անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1686 թվից ուշ (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 399) և մի ուրիշը՝ Ձեռ. Վասպ. 490 (Կումաշ ձևով)։ Գործածական է այժմ էլ Ղարաբաղում։ Սրանից է Խումաշեան ազգանունը (Նոր-Նախիջևան)։

*ՂՈՒՄԱՐ, իգ. նույն է Խումար անվան հետ, որ տես. այս

բառը ծագում է արաբ. خمار xumār ձևից, ուստի տարօրինակ է ղ նախաձայնը խ-ի փոխարեն։ Հիշված է այս ձևով 1602 թ. (Նաթանեան, Տեղեկ. Սեբաստիոյ, էջ 85)։

*ՂՈՒՄԽԱԹՈՒՆ, իգ. < Պարսկաստանի սրբազան قم Qum քաղաքի անունից (Թեհրանի ճանապարհի վրա, Քաշան քաղաքի մոտ). իբր թե «Ղում քաղաքի տիկին»։ Մի անգամ հիշատակված է 1453 թ. մի արձանագրության մեջ, որ Խրիմից է փոխադրված և այժմ գտնվում է Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքում (Շահազիզ, Ն. Նախջ. Ս. Խաչ վանքը, էջ 11 և Ազգագր. հանդ. Է, էջ 71)։

*ՂՈՒՄՐԻ, ար. և իգ. < Թրք. قمری qumri «տատրակ» բառից։ Հիշատակված է ԺԷ—ԺԸ դարերում, Հնագույն հիշատակությունն է Ղումրի ար. 1602 թ. (Թորոս աղբ. Ա. 184=Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 331), որից հետո ունինք 1656 թ. (Երեմ. չէլ. օրագր. 181), 1661 թ. (Թորգոմեան՝ Ստամպօլոյ պատմ. 159), 1663 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 336), 1672 թ. (Նոր. վկ. 493), 1680 թ. իգ! (Տաշեան, Ցուց. 493), 1710 թ. ար. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 580), Ղումրի, Ղումրիկ ար. 1751 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 45 բ), առանց թվականի և թերևս իգ.՝ Թորոս աղբ. Բ. էջ 366։

*ՂՈՒՆԿԻԱՆՈՍ, ար. < հուն. Λουκιανός անունից, որ և լատ. Lucianus կամ Lucanus, ֆրանս. Lucien, գերմ. Lucian, ռուս. Лукиан, Луциан են. բուն նշանակում է «լուսավոր» (տես Ղուկաս)։ Հայտնի են այս անունով՝ Ղունկիանոս հայրյուրապետ, որի վկայության պատմությունը անցել է Յայսմաւուրքի մեջ, Ս. Ղունկիանոս քհ. Սամոսատցի († 312), որ կատարել է Ս. Գրքի Եօթանասնից թարգմանության վերաքննությունը, նաև Ղունկիանոս՝ մատենագիր հույն Բ դարի, որ ունի «Խօսակցութիւն մեռելոց» և «Արուեստ պատմագրութեան»։ Հյ. ձևը պիտի լիներ Ղուկիանոս, բայց նախասությամբ դարձել է Ղունկիանոս. Հնչվում է նաև Խունկիանոս (ինչպես Ղազար > Խազար), սրանով էլ կապվել է հյ. խունկ բառին, որի նմանությունը պատահական է։ Կրճատ ձևով դարձել է Խունկիկ, Խնկօ։ Կենդանի է այժմ էլ գեղջկական վայրերում։

— 1. Ղունկիանոս, եպիսկոպոս Փոքր-Հայոց, գրեց Լևոն կայսեր (457—474 թ) Քաղկեդոնի ժողովի առթիվ.—Տաշեան, Ցուց. 109։

— 2. Ղունկիանոս, քարտուղար Սիմէոն կաթուղիկոս Երև-

վանցու. շարունակից Յակոբ Շամախեցի («1759 — 1763 թ») և Սիմէոն Երևանցի («1763—1780 թ») կաթողիկոսների հորինած Գաւազանագիրքը (տես Ձեռ. Ներս. էջ 51)։

— 3. Ղուկիանոս, երգիչ Կարնեցի, որդի Յարութիւնի. գրել է հայերեն և թաճկերեն տաղեր. մնում է իր ձեռագիր տաղարանը «Չինչէքլիկ» անունով՝ 1839 թ. տաղերի մի մասը (հատկապես հայերեն տաղերը) տպված է Վենետիկ 1886 «Երգուածք Ղուկիանոս երգչի Կարնեցւոյ» վերնագրով։ Ներածության մեջ տրված է տաղասացի կենսագրությունը (Տաշեան, Ցուց. 990 և 1109)։

*ՂՈՒՇ կամ ՂՈՒՇԻ՞, իգ. < թրք. قوش quš «թռչուն» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված Ղուշ կամ Ղուշի՞ ձևով 1662 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 653). գործածական է այժմ Զանգեզուրում Ղուշի ձևով։

*ՂՈՒՐԱԲ, ար. < արաբ. غراب ġurāb «ագռավ» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԶ դարի՝ Ձեռ. Հալէպի, Ա. 290 ա՝ Ղուռապ ձևով։

*ՂՈՒՏԱԼՉԱՖ, իգ. < թթր. قوداچه qudača «խնամի» (قدا quda կամ qudača են կոչում իրար՝ ամուսնու և կնոջ քույրերը, այն է քենիները ու տալերը). ըստ Будагов 2, 40 ը մոնղոլական բառ է. ուստի հավանաբար մոնղոլերենում կա ավելի համառ մի ձև, որից առնված է նաև հայերենը։ Մեր մեջ այս անունով կա միայն՝ .

— Ղուտալչաֆ, կին Աղնաւորի և մայր Զաքարիայի. շինել են Աշտարակի Կարմրաւոր Ս. Աստուածածին եկեղեցու դուռը և պարիսպը (1325 թ) և կալված են նվիրել Աշտարակի Ս. Մարիանէ մատուռին, 1326 թ.—Շահխաթ. Բ. 85, 88, Այրարատ 186—7։

*ՂՈՒՏԱՄ, իգ. < թթր. قدا quda «խնամի», որ և ստացական հոդով قدام qudam «խնամիս» (ավելին տես Ղուտալչաֆ): Մի անգամ հիշատակված եմ գտնում ԺԵ դարում՝

— Ղուտամ, դուստր Հուռումի և քույր Յովհաննէս քհ. Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 բ։

*ՂՈՒՐԲԱԹ, սեռն անհայտ. < արաբ. غربت ġurbat «պանդխտություն» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1509 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 642, տպված Ղարբաթ, ուղղեցի Ղուրբաթ):

*ՂՈՒՐԲԱՆ, ար. < արաբ. قربان qurbān «զոհ, ողջակեզ, մատաղ» բառից, որ մահմեդականների մեջ էլ իբրև անձնանուն գործածական է։ Հիշատակված եմ գտնում մի անգամ 1805 թ. (Ձեռ. Թաւր. 37 բ)։ Սրանից է Ղուրբանեան ազգանունը (Կովկաս)։

*ՂՈՒՐՏ, ար. < Թրք. قورت qurt «գայլ» բառն է, որ Թուրքերի մեջ գործածվում է իբրև անձնանուն. ինչ. Ղուրտ ոմն Թուրք՝ 1611 թ. (հիշված Դրնղ. 161)։ Մեր մեջ հիշված է 1654 թ. (Երեմ. չէլ. օրագր. 55, 159). բայց անո՞ւն է թե մականուն։ Ավելին տես Խուրտ։

*ՂՈՒՑԻ, իգ. < արաբ. قدسی qudsī «Երուսաղէմ ուխտի գնացած» բառից. հիշված է ԺԸ դարում՝ 1739 թ. (Ոսկեան՝ Եղիա Մուշեղեան 32)։

*ՂՍՄԱԹ, իգ. < արաբ. قسمت qismat «բախտ, վիճակ» բառից։ Մեր մեջ իբրև անձնանուն հիշված է ԺԶ դար (Ձեռ. Հալէպի, Բ. 135), Ղսմաթ խաթուն † 1697 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 32 ա), Խըսմատ՝ 1644 թ. Rapport Belgique 117)։

Ղրիմ տես Խրիմ։

*ՂՐԻՄԲԷԿ, ար. < Խրիմ=Ղրիմ Թերակղզու անունից+բէկ. սրա աղճատ ձևն է Խրմպէ, որ տես առանձին։ Հին ձևով է՝

— Ղրիմպէկ, պատանի էր, ամուսնացավ Յովհաննէս անուն մեկի աղջկա հետ. դառն ցավերով հիվանդացավ, գնաց Գաղտոնի վանքը և այլ ևս չդարձավ (1395 թվից հետո).—Մեծոփէջ 114։

*ՂՐՄԸԶ տես Խրմըզ։

— Հիշված է Ղրմըզ 1585 թ. (Ձեռ. Վասպ. 699), Ղըրմըզ 1585 թ. (անդ 704), 1605 թ. (Manus. brit. mus. 71 բ), 1622 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 79 բ), 1660 թ. (անդ Ա. 178 բ)։

*ՂՓՉԱԽ, իգ. < Թրք. قپچاق qəpčaq Թրքական ցեղի անունից. հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Ղըչախ, կին Յովհաննէսի և մայր Ներսէս երեցի, որ Թաւրիզում օրինակեց Նարեկը, 1377 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 55 ա։

— 2. Ղփչախ, դուստր Թումայի և քույր տանուտեր բրուտ Ստեփանոսի, որ Վարագայ վանքում, կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 3. Ղփչախ, կին տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

# Ճ

ՃԱՂՐԻԿ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ ԺԶ դար (Ձեռ. Սանաս. 7 բ)։

ՃԱՃՆԱՑ, ար. ծագումն անհայտ. հիշատակված է ԺԳ դարում։

— 1. Ճաճնա, որդի Պարսեմայի, մի այգի են վաճառել Գետեան Բանաքեացուն, 1306 թ.—Բանաս. 1903, 32 և Այրարատ 298։ Սրա հետ նույն պիտի լինի՝

— 2. Ճայճնայ, որ Սարգսի հետ մի խաչքար է կանգնեցրել Ղարաղալա գյուղում 1306 թ.—Ազգագր. հանդ. Ի, էջ 54, Սմբատեանց՝ Գեղարքունի 292։

ՃԱՃՈՒՄ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1511 թ. (Ձեռ. Վասպ. 646)։

ՃԱՇ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշված է ԺԴ դարում. սրա հետ նույն են Ճաշիկ և Ճաշխաթուն, որոնք գնում են մինչև ԺԸ դար։

— Ճաշ, տիկին, որ եղավ «կրկին անուցանողն մեր և գերախտաւորն զկնի մայրական մեր ծննդեան» Գէորգ քահանայի, որ օրինակեց Ճաշոցը, Երզնկա 1391 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։

ՃԱՇԻԿ, իգ. նախորդ Ճաշ անվան գգվականն է. հիշված է ԺԵ—ԺԷ դարերում։

— Ճաշիկ, ազգական Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ. Կես. Բ. 1850։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններն են՝ 1578 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 438, Կամենից 164), 1618 թ. (Տաշեան, Ցուց. 778), 1619 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 274), 1633 թ. (արդեն մեռած. Труды вост. комм. ИМАО, հտ. II, 3, էջ 56)։

ՃԱՇԽԱԹՈՒՆ, իգ. նույն Ճաշ անունից+խաթուն։ Հիշված է ԺԷ դարում. այսպես՝ 1629 թ. (Կամենից 183=ՀԱ 1890, 21 ա), 1666 թ. (Տաշեան, Ցուց. 498), որ և Ճիշխաթուն կամ Ճշխաթուն՝ 1761 թ. (Գովրիկեան, Հայ արձանք 128, 131 և Հայք յՈղիսաբեթուպոլիս, հտ. Գ. էջ 131)։

ՃԱՊՈՒԿ, ար. արդյոք հյ. ճապուկ «դյուրաթեք, արագաշարժ» բառի՞ց է. հիշված է Ճապուկ պարոն ոմն, որի թվականն անհայտ է, բայց 1353 թվից ուշ է։—Ջեռ. Թաւր. 135 բ։

† ՃԱՐ, ար. < հյ. ճոր «դեղ» բառից, ինչպես որ կա Դեղ. անձնանունը։ Հիշատակված է ԺԲ դարից։

— 1. Ճոր, հայր Ումեկի, պապ Քարիմատինի, Ճարի և Վախթանգի՝ իշխանաց Տփղիսի. կանգնեցրել է մի խաչքար Ճահուկի Ապարաններում 1202 թ. իր հարս Մամախաթունի հետ ուխտի գնաց Գանձասար 1268 թ.—Արձ. Սիսական 370, Գեղարքունի 174, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 7,

— 2. Ճոր, իշխան Մանծկերտցի, որդի Ումեկի և թոռն նախորդ Ճարի. եղբայր Քարիմատինի և Վախտանկի († 1344), գնել է Յոլք գյուղը և 4000 դուկատ ես նվիրել Նոր-Գետիկի վանքին (1283). մեռել է Տփղիսում 1287 թ. կամ քիչ ուշ (Օրբ. ԺԱ. 30) և թաղվել Նոր-Գետիկի վանքում։—Արձ. Շահխաթ. Բ. 367, Արցախ 350, Սմբատեանց, Գեղարքունի 174, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 7, 9, Ազգագր. հանդ. Ժ, 28։

† ՃԳՆԱՒՈՐ, ար. < հյ. ճգնաւոր բառից, թվի անձնանուն, որից և Ճգնաւորեան ազգանունը (Ղարաբաղ)։ Մի անգամ գտնում եմ՝

— Ճգնաւոր, եղբայր Կարապետ Սանեցւոյ. հմմտ. «Ներբողեան պատմագրաբար ասացեալ սրբազան եպիսկոպոսի և վարդապետի Կարապետի Սանեցւոյ (№ 6), ի խնդրոյ համազնեայ եղբաւր Ճգնաւորի» (համարված է հասարակ անուն)։—Սան. էջ 13։

† ՃԵՐՄԱԿ, ար. < հյ. ճերմակ «սպիտակ» բառից. իբրև անձնանուն գործածված է մի անգամ 1511 թ. (Հին Ղրիմի Ս. Խաչ վանքի մի արձանագրության մեջ, տես Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 350, Սաեփանէ՝ Ղրիմի Ս. Խաչի վանք, էջ 11, Кучук-Иоаннесов, Стар. арм. надп. 41) և մի անգամ էլ 1776 թ. (տես Քօսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 138)։ Սրանից է Ճերմակեան ազգանունը։

ՃԻԳԻ, իգ. ծագումն ինձ անհայտ. գործածական է այժմ Ղարաբաղում. կոչականը լինում է Ա՛ Ճիգ։

ՃԻԼԱԲԽԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ, բայց անշուշտ օտար. մի անգամ գտնում եմ հիշատակված 1697 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 66)։

ՃԻԼԱՋ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է 1739 թ. (Ջեռ. Դաղեան, Բ. 14 բ)։

*ՃԻԼԱՐՏՈՄ, ար. ըստ Ալիշանի ֆրանս. Girardin անունից է. ավելի լավ է դնել Girardon անունից, որ նույնպես ֆրանսիական ծանոթ ազգանուն է։ Մի անգամ ունենք հիշատակված մեր մեջ՝

— Ճիլարտոմ, իշխան, որին Եգիպտացիք գերի բռնեցին Մառիի ճակատամարտում, 1266 թ.—Սիսուան 401 բ։

ՃԻՄԷԼ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1224 թվից ուշ։—Ջեռ. Վենետ. Բ. 36։

†ՃՆՃՂՈՒԿ, ար. < հյ. ճնճղուկ թռչնանունից։ Գործածված է ԺԱ դարում։

— 1. Ճնճղուկ, որդի Խուլ Խաչիկի (№ 7), որ էր իշխան Վասպուրականի և ծեր ժամանակ սպանվեց Թուրքերից՝ 1041 թ. Ճնճղուկը լուծեց իր հոր և իր փոքր եղբոր մահվան վրեժը.—Ուռհ. 90, 92. Սմբ. պատմ. 59, 60.—սեռ. Ճնճղուկին՝ Ուռհ. 91։

— Ճնճղուկ, քաղաքապետ Լաւոդիկիոյ (Կիլիկիա), ԺԱ դար.—Սիսուան 47 ա։

ՃՆՈՂ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշված է 1516 թ. (Ջեռ. Կես. ածած. 65 բ)։

ՃՈԽԵՐ, սեռն անհայտ. Թերևս հյ. ճոխ բառի հոգնակին է. հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1224 թվից ուշ (Ջեռ. Վենետ. Բ. 36)։

ՃՈՐՏԻԿԻՆ, իգ. ծագումն անհայտ. հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Ճորտիկին, կին Յակոբ քահանայի և մայր Խաչատուր քահանա գրչի (1319 թ).—Տաշեան, Ցուց. 885։

— 2. Ճուրտիկին, դուստր Վարդերեսի (Նախ քան 1420 թ).—Տաշեան, Ցուց. 666։

ՃՈՒԹԻԿ, իգ. ծագումն անստույգ. հիշված է մի անգամ՝ Ջեռ. Սանաս. 6 բ, ԺԶ դար։

ՃՈՒՃԱՑ, հայր Քափիկի, որ էր զորավոր Ամիրսպասալար Շահնշահի և նվերներ է արել Խծկոնից վանքին, 1230 թ.—Շիրակ 128։

# Մ

†**ՄԱԳԱՂԱԹ**, իգ. < հյ. մագաղաթ բառից, որ ասորական փոխառություն է. գործածական է այժմ Ղարաբաղում։

***ՄԱԳԴԱՂԵՆԻ**, իգ. < հուն. Μαγδαληνή > լտ. Magdalene բառից. բուն ձևն է հյ. Մագդաղենացի.— Մարիամ անուն մի կնոջ վերադիրն էր և նշանակում է բուն «բնակիչ Մագդաղայի» (սա մի գյուղ էր, որ գտնվում էր Գալիլիայի ծովակի մոտ, այժմ Թրքական գյուղ՝ Medjel անունով. Մատթ. ժէ. 39)։ Մարիամ Մագդաղենացին հայտնի է Ավետարանում, իբրև Յիսուսին միշտ հարգող ու հետևող մի կին։ Պատմության մեջ ընդունված է, որ նա մի անառակ կին էր, որ ապա զղջաց և դարձի գալով՝ սրբերի կարգն անցավ։ «Ապացույց չկա թե Մարիամ երբեք անառակ կյանք վարեց» ասում է Բռ. Ս. Գրոց, էջ 347։ Այլ լեզուներով տառադարձված է՝ գերմ. Magdalena, ռուս. Магдалина, անգլ. Magdelen, Madeline, Maudlin, ֆրանս. Madelon, Madelaine ևն։ Հյ. գրված է նաև Մագթաղենացի և այժմ առանձին անուն է դարձել Մագթաղ, ռուսերենի նմանությամբ նաև Մագդա ձևով։

— Մագդաղենի (սեռական ձևով), կին Աղախանի և մայր Գրիգոր քահանայի, որ Աղթամարում, Ատոմ քահանայի համար գրեց մի Ավետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 580)։

Մագնէս տես Մանգնոս։

***ՄԱԳՈՒԳ**, ար. < հուն. Μαγώγ ձևից, որ Յաբեթի որդիներից մեկն է և նահապետ ազգի. եբր. מגוג Māgog ձևով է և Ծն. ժ. 2 տառադարձված է հյ. Մագովգ, որ և Մագոգ։

— Մագուգ, նահապետ Ապրպատականի! մին այն նախարարներից, որոնք ուղեկից եղան Ներսէսին († 373) Վաղէս կայսեր մոտ դեսպանության ժամանակ։—Մեսր. եր. 53։

***ՄԱԴԱՆ**, իգ. < արաբ. معدن ma'dan «հանք» բառից։ Մի անգամ հիշատակված է Մատան ձևով՝ թվականն անհայտ (բայց 1578 թվից ուշ) մի հիշատակարանում՝ Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 472։

**ՄԱՋԱԽ**, ար. անհայտ է թե մականուն. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ 1666 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 8)։

***ՄԱԶԵՆԴ**, ար. < զնդ. mazand «աճող, մեծացող» բառից (ըստ Justi 201 բ)։

— Մազենտ, իշխան Արտաշատի. սա էր որ կապյալ Գրիգորին տարավ գցեց Խոր վիրապը (Գ դարի վերջը).—Զամչ. Ա. 376, Ցուշիկք Ա. 226.—Նույնը Մազենտիոս ձևով՝ Հայսմ. 86։ Առաջին երկուսի աղբյուրը հայտնի չէ. երրորդը մի տառի տարբերությամբ առնված է Ցայսմ. մայ. 11 Մաղենտիոս ձևից։ Եվ որովհետև ղնդ. բառի գոյությունը շատ ուշ է Ցայսմավուրքի համար, ուստի ավելի ստույգ է դնել Մաղենտիոս և այս էլ համարել աղավաղված լտ. Valentius (Վաղենտիոս) ձևից։

*ՄԱԶԼԸՄ, ար. < արաբ. مظلوم mazlum «հեզ, հեզիկ» (Նախավոր իմաստն է «հարստահարված, բռնադատված»)։ Հիշատակված է ԺԹ դարում (Սրապեան՝ Ս. Յակոբ ազգ. հիվանդ. էջ 40)։ Սրանից է Մազլըմեան ազգանունը։

*ՄԱԶՐՎԱՆ, ար. < Փոքր-Ասիայի Մարզվան քաղաքի անունից, որի հին ձևն է թրք. مرزيفون Merzifun. Իբրև անձնանուն ավանդված է մեր մեջ Մազրվան 1655 թ. (Արցախ 116), և Մազրուվան 1664 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 101 ա)։

ՄԱԹԷ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է 1795 թ. (Տաշեան, Ցուց. 821)։

*ՄԱԹԷ կամ ՄԱԹԷՍ ար. < Մատթեոս անունից. մի անգամ հիշված է ԺԴ դարում։

— Մաթէ, պաշտոնյա Շահանշահ Բ-ի. կինն է Թենի, եղբայրն է Մարկոս (որ լավ է պատշաճում Մատթէոս անվան). վերաշինել են Անիի Ս. Լուսավորիչ եկեղեցու խանգարված աղբյուրը՝ 1310 թ.—Արձ. Շիրակ 79։

*ՄԱԹԻԼԴԱ, իգ. եվրոպական նորամուտ անուն՝ ֆրանս. գերմ. Mathilde ձևից (ռուս. Матильда)։ Այս անունով նշանավոր է Մաթիլդա կայսրուհի՝ կին Հենրիկոս Հավորսի՝ կայսեր Գերմանիայի։ Իր կրթությունը վանքում էր ստացել և ըստ այսմ հետևեց քրիստոնեական բարեպաշտության. հիմնեց եկեղեցիներ ու վանքեր, մեռավ 968 թ. (Փափազեանց, Պատմ. եկեղ. էջ 417)։

ՄԱԹԻԿ, ար. ծագումն ինձ անհայտ. (արդյոք Մատթէոս, Մաթոս ձևից)։ Հիշատակված է Տաշեան, Ցուց. 305. կա նաև Մաթիկեան կամ Մաթկեան ազգանունը («Մուշեղ և Կալինիկէ» վեպի հեղինակն է՝ Մաշկերտ գյուղից, տպ. Պոլիս 1875)։

ՄԱԹԻՆ, ար? հիշատակված է 1490 թվից ուշ գրված մի հիշատակության մեջ (Ձեռ. Սևան. 5 ա)։

ՄԱԹՈՒԹԱՆԱ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշված է ԺԳ դարում։

— Մաթուքանա խաթուն, մայր Պարսեմայի և տատ Ճաճնայի. միասին մի այգի են վաճառել Բանաքեռում, Պետեան անուն անձին, 3200 սպիտակ արժողությամբ, 1306 թ.—Արձ. Բանաս. 1903, 32, Շահխաթ. Բ. 159, Սմբատեանց՝ Գեղարքունիք 207, Այրարատ 298 (վերջինները կարդում են Մաթութս Նասխաթուն)։

ՄԱԹՈՒԽ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ ունինք հիշատակված ԺԳ դարում՝

— Մաթուխ, եղբայր Շաշ միայնակեցի. մեծ աշխատությամբ շինեցին Հերհերի Ս. Գէորգ մատուռը, 1297 թ.—Արձ. Սիսական 112, Արրտ. 1889, 331։

ՄԱԹՈՒՆ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է Հաղբատի մեծ ժամատան գերեզմաններից մեկի վրա (առանց թվականի).—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 22—23, Ազգագր, հանդ. Է, 400—401։

*ՄԱԹՈՒՍԱՂԱՅ, ար. < եբր. מתושלח Məthušālaḥ անունից, հուն. Μαθουσάλα տառադարձության միջոցով։ Այս անունով հայտնի է Մաթուսաղայ նահապետ, Ենովքի որդին և Ղամէքի հայրը, որ ամենից երկարակյաց անձն է համարվում։ Ապրել է 969 տարի! (Ծն. ե. 21—27)։ Բառիս ծագումը անհայտ է՝ ըստ Gesenius 474։ Տաթև. հարց. 299 մեկնում է «առաքումն»։ Ոմանք ուզեր են նրանք, որ գրում են Մաթուս աղա, իբր թե եբրայական բառը թրք. աղա-ից ծագած լիներ։

— 1. Մաթուսաղայ եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Դաւթին «634 թ»։ համարվում էր շատ ուսումնական անձ. երբ Եզր կաթուղիկոսը գումարեց Կարնոյ ժողովը «633 թ», հրավիրեց նաև այս Մաթուսաղային. բայց նա չեկավ և իր փոխարեն ուղարկեց իր աշակերտ Թէոդորոսին՝ Դաւանութեան թղթով հանդերձ։ (Այս թղթից մի հատված տես REA հտ. 2 (1922), էջ 248).—Օրբ. իէ, հա.—սեռ. Մաթուսաղայի՝ Կղկնտ. Բ. ծ. Օրբ. իէ—իթ.—բց. ի Մաթուսաղայէ՝ Օրբ. իը։ (Գրված է Մաթուսալիմ՝ Տաշեան, Ցուց. 114)։—Զարբ. Հին դպր. 427—9. Սիսական 20, 23. Սեդրակեան՝ Հայ. եկեղ. պտկր. 338—340. Վրաց աղբ. Ա. էջ 45։

— 2. Մաթուսաղայ, որդի Ցակոբի, ավագերեց Ոյծայ. հիշ-

ված է իբրև վկա Տաթևի 844 թ. կալվածագրում.—սեռ. Մաթուսաղայի՝ Օրբ. լը։

— 3. Մաթուսաղա ոմն 1656 թ. Լեհաստանում (Ձեռ. Վենետ. Ա, 85)։

— 4. Մաթուսաղա անունը հիշված է նաև 1711 թ. Սեբաստիա (Ձեռ. Հալէպի, Բ. 42)։

ՄԱԺԱՆ, ար. ծագումն անհայտ. բայց անշուշտ իրանական է. հմմտ. վրաց. Մաիժան՝ սպարապետ Վրաց, ժամանակակից Սասանեան Արտաշիր և մեր Խոսրով Ա թագավորի (Վրաց աղբ. Ա. 164)։

— 1. Մաժան, որդի Արտաշէս Բ-ի. Արամազդի քրմապետն էր Անիում. իր արած մատնության պատճառով Արտաւազդ և Տիրան եղբայրները սպանեցին նրան. Տիգրան Գ (152—198 Զամչ.) շինեց զոհի սեղան նրա գերեզմանի վրա.—Խոր. Բ. ծա, ծգ, ծե.—սեռ. Մաժանայ՝ Խոր. Բ. ծե, կգ։

— 2. Մաժան, իշխան Աղձնեաց, անդամ այն շքախմբի՝ որ ուղեկից եղավ Ներսէսին, Կեսարիա օծման գնալու ժամանակ «353 թ».—Մեսր. եր. 25 (գրված է Մուժան, Մողան). Justi 218 բ բաժանում է նախորդ Մաժան անունից և Մուժան համարելով ուղիղ ձև՝ կցում է պրս. موژان mūžān «Նարգիս ծաղիկ» բառին։

ՄԱԼԱԶ, ար. մի անգամ հիշված է Ջուղայեցի ոմն 1595 թ. (Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 25 ա). արդյոք մալազ «անչափահաս, անմորուս» բառն է, որի վրա տես Արմ. Բռ։

ՄԱԼԱԶԱՏ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է 1631 թ. (Bodleian 139)։

ՄԱԼԱԽ, ար. ծագումն ինձ անհայտ. (կապ ունի՞ պրս. ملخ malax «մորեխ»։ Մի անգամ գործածված է 1622 թ. Հալէպում (Ձեռ. Հալէպի, Ա. 292 ա)։

*ՄԱԼԱԽԱԹՈՒՆ, որ և Մալխաթուն, իգ. կազմված է խաթուն +կամ թթր. malay «ծառա» (հմմտ. Մալայբէկ) բառից և կամ թթր. mal «հարկ, տուրք» բառից, որ գործածված է միջին հյ. գրականության մեջ ԺԳ դարում։ Սրա արականն էլ ունինք Մալխան ձևով։

— 1. Մալախաթուն, կին պարոն Ներսէսի և մայր Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսի Տարօնի, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 780։

— 2. Մալխաթուն, եղբորթոռ Յովհաննէս գրչի, որ Կեսարիայում օրինակեց երկու Ճաշոց՝ 1481 և 1484 թվերին։ Մալխաթունը

կատարում էր ամեն տեսակի սպասարկություն և գրելու թուղթն էր խազում։—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 1078, Բ. 1849։

ՄԱԼԱԿՈՍԻԱ, մր. ծագումն անհայտ. անշուշտ սխալ ընթերցված. այս անունով է կոչվում Զանկլի գյուղի հոյակապ եկեղեցու հիմնադիրը (Ժ դար).—Այրարատ 48։

*ՄԱԼԱՅԲԵԿ, իգ. < թթր. ملای malay «ծառա, աշխատավոր»+beg բառերից (իբր «ծառայապետ»)։ Մի անգամ հիշատակված է 1617 թ. կամ ավելի ուշ։—Ձեռ. Վասպ. 854։

ՄԱԼԱՅԻԿ, իգ. < արաբ. ملائك malayik «հրեշտակներ» (malak «հրեշտակ» բառի հոգնակին է)։ Այս անունով կա միայն՝

— Մալայիկ՝ կին Մելիք Շահնազարի, որ Վարանդայի իշխողն էր (ԺԸ դար).—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 70։

ՄԱԼԱՋ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է Մալաջ ոմն, 1534 թ.—Ձեռ. Վասպ. 647։

*ՄԱԼԱՔ, իգ. < արաբ. ملك malak «հրեշտակ» բառից. թուրքական արտասանությամբ melek: Մեր մեջ Մալաք իբրև իգ. անուն գործածական է այժմ էլ. ավելի հին հիշատակությունը տես Մելէք:

ՄԱԼԷՐ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է 1706 թ.—Manus. brit. mus. 217 բ և 218 բ։

ՄԱԼԻՆ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է ԺԸ դարում (1709 թվից ուշ)՝ Տաշեան, Ցուց. 789։

ՄԱԼԻՋԱՆ, ար. թերևս նախորդ անունն է՝ -ջան հավելվածով. այս դեպքում արմատը լինում է Մալի: Հիշատակված է Մալիճան ձևով 1585 թ. (Rapport Belgique 94), 1600 թ. (Արցախ 140), 1648 թ. (Տաշեան, Ցուց. 376)։

*ՄԱԼԽԱՆ, ար. ծագումը տես Մալայխաթուն, որի արական ձևն է. հիշատակված է ԺԻ դարում (Զքր. ագուլ. 92)։

*ՄԱԼԽԱՍ, ար. < թվում է թե ծագած է հին Մալխաս անունից, բայց ձևափոխված է այնպես, իբր թե պրս. مال خاص māl-i xāş «ընտիր ապրանք». հմմտ. Եզգիխաս անունը։ Գործածության հնագույն թվականներն են Մալխաս 1648 թ. (Տաշեան, Ցուց. 376), Մալխաս արծաթագործ 1656 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 324) կամ Մալխաս՝ նշանավոր արծաթագործ քանդակող Կեսարիայում, 1671 թ. իր գործերից մնում է Վիեննայի Մխիթարեանց № 416 ձեռագիրը (Տաշեան, Ցուց. 869—70)։ Ավելի ուշ է անզգամն Մալխաս՝ Շաղկերտ գյուղի տանուտերը, որ Թամամ

կամ Կատարեալ կուսանահատակի († 1690) հայրն էր (Զքր. պատմ. Բ. 128, Նոր վկ. 521—2)։ Սրանից է Մալխասեանց ազգանունը։

ՄԱԼԽՈՒԹ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է՝

— Մալխութ սին, որի թոռը՝ Դոլվաթ բէկ մի հող նվիրեց Յովհաննավանքին 1584 թ. — Զքր. սարկ. Գ. 21, Այրարատ 172 բ։

*ՄԱԼՀԱՄ, < արաբ. مرهم marham «սպեղանի» բառի աղավաղյալ թրք. mahlam ձևից։

— 1. Մլհամ խաթուն, կին Սարգսի և մայր Յակոբ քահանայի, որ Կոստանդին Պեհեսնեցի արքեպիսկոպոսի հետ գրել տվեց Սսում մի Յայսմաւուրք, 1311 թ.—Բակուրան, Կիպրոս կղ. 108։

— 2. Մլհամ, ճգ. ազգական էր ստացող բրուտ Ստեփաննոսի. արդեն մեռած էր 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 3. Մլխամշա (սեռ. Մըլխամշի ձևով), որդի տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369։

— 4. Մլխամ, մերձավոր ազգական Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1457 թ.—Ձեռ. Թաւր. 104 ա, 105 բ։

— 5. Մալհամ խօջա, ազգական Սեյչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։

— 6. Մլխամ, հանգուցյալ որդի Ղարիպշահի, որ Արծկէի վանքում, Նիկողայոս եպիսկոպոսին գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են Մալհամ 1501 թ. (Ձեռ. Վասպ. 583), Մլխամ 1536 թ. (Բանասէր 1899, 300—301), Մխլամ 1565 թ. (Ձեռ. Վասպ. 664), Մլամ 1640 թ. (անդ 897—8) և առանց թվականի՝ Մլհամ՝ Ձեռ. Վեննա. Բ. 36, Ձեռ. Վասպ. 117, 238, 273, Մլխամ՝ անդ 342, 430 և 440։

ՄԱԼՂՕՋ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1656 թ. (Երեմ. չէլ. օրագր. 143, 175), որից և Մալղօջեանց ազգանունը (անդ 199)։

ՄԱԼՄԵԼ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է մի անգամ ԺԸ դարում (Ձեռ. Արգ. յովհ. 164)։

*ՄԱԼՈՒՄ, ար. < արաբ. معلوم maʻlūm «հայտնի, ծանոթ»

*բառից. սրանից է Մալումեան ազգանունը։ Մալում անունը հի-շատակված է ԺԶ—ԺԷ դարերում. հնագույնն է 1587 թ.* (Bodle-ian *107), ապա 1620 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 259), 1640 թ. (Տաշեան, Ցուց. 703), վերջինը 1684 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 91, գրված Մալիմ՝ ըստ Ակնեցոց հնչման, ուր* ու > իւ)։

**ՄԱԼՈՒՖ, ար. < արաբ.* مألوف malūf *«ընտելացած, մտերիմ դարձած» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1669 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 46)։*

**ՄԱԼՍՈՒԿ, սեռն անհայտ. < արաբ.* ملصوق malşūq *«կըպ-ցրած, միացրած» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակ-ված՝*

— Մալսուկ, *որի հիշատակին մի խաչքար կա կանգնեցրած Գանձակի Սուլուկ գյուղին մոտիկ ավերակ վանքի հանգստա-րանում, 1447 թ.—Արձ. Արցախ 270։*

**ՄԱԼՎԻՆԷ, իգ. եվրոպական նորաձուտ անուն, գործածա-կան էր Պոլսում։*

*† ՄԱԽԱԶ, ար. < հյ.* Մաղխազ *բառից սաքված։ Մի ան-գամ հիշատակված ունինք՝*

— Մախազ, *հայազգի ոմն, չար և անօրեն մարդ, որին Հունաց Մօրիկ կայսրը (582—602) կարգեց կուսակալ Արևելից և ուղարկեց Հայաստան։ Սա շինեց մի ամրոց Խորիան (կամ Ա-խուրեան) գետի ափին, Անիից հարավ. կոչվեց Մախազի բերդ և ապա ձևափոխվելով դարձավ Մաղասաբերդ։—Սուտ-Շապհ. 4. Չքր. սարկ. Բ. 15. Շիրակ 124։ Տաշեան, Ցուց. 191. իսկ ըստ Այրարատ 561՝ կառավարիչ Ցունահայոց 593—4 թ։*

**ՄԱԽԹՈՒՄ, ար. և իգ. < արաբ.* مختوم maxtūm *«կնքված, վրան կնիք դրված» բառից։*

— 1. Մաղթում *ռէս, որդի Իսաւի, հորեղբայր Բալթու-ղիմէոս առաքյալի վանուց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկո-պոսի, որ ստացավ Ցայսմաւուրքը 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41 ա։*

— 2. Մաղթում *ոմն, մերձավոր Յովհաննէս աբեղայի, որ Աղբակի Ասփաթան գյուղում ստացավ մի Աւետարան, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 բ։*

— 3. Մաղթում, *եղբայր Մկրտիչ քահանայի, որ Բիւրակա-նում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վե-նետ. Բ. 1112—3։*

— 4. Մաղթում, *քեռի խոջա Խտրշահի (№ 10), որ Վանում,*

Ազարիա երեցին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 5. Մաղքում, որդի Գրիգոր Ակնցի աբեղայի, որ գրել տվեց մի Աւետարան, 1516 թ.—Թորոս աղբ. Ա. 230։

— 6. Մաղքում, կին Մելիքսէթ քահանայի, 1582 թ.—Manus. brit. mus. 39 բ։

— Անհայտ թվականով են Մխթում, իգ. (Ձեռ. Վենետ. Ա. 622), Մախքում խաթուն (Ձեռ. Վենետ. Ա. 780), Մաղքում իգ. (Ձեռ. Թաւր. 113 ա)։

*ՄԱԽՄՈՒՐ, իգ. < կամ արեւել. թրք. مخمور maxmur (տես Будагов 2, 248 բ) «թավիշ» բառից և կամ արաբ. مخمور maxmur (աղավ. թրք. mahmur) «խումար դարձած, կիսահարբած» բառից։ Հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում։ Այսպես՝ Մահմուռ 1521—9 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 382), Մախմուր ար! 1595 թ (Ձեռ. Վենետ. Ա. 694), 1652 թ. (անդ 740), 1666 թ. (Ձեռ. Վասպ. 928), Մախմուռ 1674 թ. (անդ 943), 1680 թ. (անդ 568), Մախմուր 1685 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 1011), Մահմուռ 1689 թ. (Ձեռ. Վասպ. 971), 1690 թ. (անդ 975), Մախմուր 1743 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 35 ա), անթվական՝ Ձեռ. Թաւր. 20 բ)։

*ՄԱԽՈԺ, ար. պարսկական անուն. տես Յիզդբուզիդ։

*ՄԱԽՍՈՒՏ, ար. < արաբ. مقصود maqṣūd «մտադրություն, նպատակ. 2. մտադրյալ բանը». իբրև անձնանուն գործածական էր նաև թուրքերի մեջ. հմմտ. Մաղսուտ Սուլթան Իկոնիոյ (արշավեց Կիլիկիա 1154 թ.—այլուր կոչված Մասուտ. տես Տաշեան, Ցուց. 501)։ Գործածված է մեր մեջ ԺԵ դարից սկսած և շարունակվում է մինչև այժմ Պոլսում։ Գրված է Մախսուտ, Մաղսուտ և այլ ձևերով։ Այժմ Պոլսում արտասանվում է ժղ. Մախսուտ (հմմտ. Բառգիրք Ռիվոլայի, էջ 248 Մախսուտ «անուն. 2. ցանկութիւն»). բայց վերածելով գրական հնչման՝ դարձրել են Մագսուտ, Մաfսուտ, որից էլ Մագսուտեան ազգանունը։ Հնագույն հիշատակությունն է Մասխուբ 1557 թ. (Ձեռ. Վասպ. 660), որից հետո գալիս են՝ Մախսուտ 1567 թ. (Թորոս աղբ. Բ. 257), Մասխուդ 1594 թ. (Ձեռ. Վասպ. 736—7), Մախսուտ 1609 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 341), 1616 թ. (Ձեռ. Վասպ. 852), 1624 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 834), 1628 թ. (Առաք. պատմ. 184), 1634 թ. (Թորոս աղբ. Բ. 430), Մաղսուտ 1652 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 740), Մախսուտ 1662 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 106), և առանց թվականի՝ Մասխուտ (Bodleian 148 և Ձեռ. Վասպ. 628)։

— Այս բոլորից շատ ավելի հին է Մազսուտ, որ զարմանալի կերպով ներկայացնում է գ բաղաձայնը ԺԳ դարում!

— Մազսուտ, ամուսին Մինայի, որ շինել է մի մատուռ 1231 թ.—տես Մինայ։

*ՄԱԿԱՐ, ար. (ավելի ուսումնական ձևն է Մակարիոս) < հուն. Μακάριος անունից, որից և լտ. Macarius, գերմ. Macarius, ֆրանս. Macaire, ռուս. Макарий են։ Բուն նշ. «երջանիկ, բախտավոր»։ Հայտնի է հնից Ս. Մակար եգիպտացի անապատականը (շուրջ 309—404 թ), որի վարքը մտել է Յայսմաւուրքի մեջ և Վարք հարանց։

— 1. Մակար եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Երիցակի (Զ դար).—Օրբ. իա, հա.—սեռ. Մակարայ՝ Օրբ. իա։

— 2. Մակար եպիսկոպոս Անտիոքի. գահակալել է մինչև 995 թ. որ իր մահվան թվականն է։ Սրա եղբորորդին է հաջորդ № 4 Մակարը։—Ազգապ. 1187։

— 3. Ս. Մակար հայ, եպիսկոպոս և պաշտպան Բելգիայի Gand քաղաքի (Ժ դար).—Ալիշան, Յուշիկք Ա. 73, Սիսական, էջ 461։*

— 4. Մակար հայկազն, եպիսկոպոս կամ պատրիարք Անտիոքի. Միքայէլ անուն մի իշխանի որդին էր. ծնվել է Անտիոքում, 970 թ. հետևեց եկեղեցականության իր հորեղբոր՝ Մակարի (№ 2) մոտ, որ Անտիոքի եպիսկոպոսն էր. հաջորդեց նրան 995 թ։ Իր չորս ազգականների հետ (Յովհաննէս, Պետրոս, Դաւիթ և Կոստանդին) Երուսաղէմ ուխտի գնալու ժամանակ, բռնըվեց և չարչարանքի ենթարկվեց (1000 թ)։ Անցավ Եվրոպա և իբրև պարզ ճգնավոր ման գալով ամեն կողմ, հռչակվեց իբրև հրաշագործ։ Շրջագայեց Գերմանիայի Բավարիա և Մոգունտիա գավառները. մի տարի մնաց Ֆլանդրիայի Գանտավիօ վանքը, ուր ժանտախտով վարակվածներին խնամելով, ինքն էլ վարակվեց ու մեռավ 1012 թ։ Մահվանից հետո այնքան հրաշքներ են կատարվել իր գերեզմանի վրա, որ իր մարմինը փոխադրեցին առանձին խորան (1067 թ) և լատին եկեղեցու սրբերի կարգը դասեցին։—Փափազեան, Պատմ. եկեղ. 428, Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ. 249. Զամչ. Բ. 858—860. Ազգապ. 1187։

— 5. Մակար, մի խաչքար է կանգնեցրել Հաղբատում 1023 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 55, Ազգագր. հանդ. Է, էջ 409։

— 6. Մակար հայ, փախել է Իտալիա և սկսել է զրպարտել

հայոց եկեղեցին. Գրիգոր Վկայասէր կաթողիկոսը գրել է այս առթիվ Պապին և Յովհաննէս քահանային էլ նվիրակ ուղարկելով նրա մոտ, խնդրել է քննել ու դատել այդ զրպարտիչ Մակարին (1080 թ).—Ալիշան, Շնորհ. էջ 35։

— 7. Մակար, օգնեց Յովհաննէս գրչին՝ արտագրելու համար Աւետարանը, Հռոմ 1254 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 409։

— 8. Մակար, կրոնավորական անուն Հեթում Ա թագավորի, որ վանք մտավ ու մեռավ «1270 թ»։—Հեթ. պատմ. լգ. Մաղաք. աբ. 48. Վահր. ոտ. 227. Սամ. անեց. շար. 151. Պատմ. կիլ. 211. Դարդել 16. Նհպտք. 105։—Սխալմամբ Հեթ. ժմնկ. և Մխ. համգ. 46 համարում են կրոնավորական անուն Հեթում Բ թագավորի, որ վանք մտավ «1294 թ» Յովհաննէս անունով (Ազգապ. 1745)։

— 9. Մակար Հենեցի, միաբան Մշոյ Ս. Կարապետ վանքի. նորոգեց մի Գանձարան, որ գրված էր 1483 թ.—Յովսէփեան՝ Մի էջ հայ արուեստի 45։

— 10. Մակար պատրիարք Անտիոքի, համարվում է հայ. արաբերեն լեզվով գրել է իր ճանապարհորդությունը Կիլիկիայում, 1695 թ.—Սիսուան 191 ա։

— 11. Մակար Ա. Թեղուտցի, կաթողիկոս հայոց, հաջորդեց Գէորգ Դ-ին և նստավ 1885—1891.—Ազգապ. 4537—4659։

*ՄԱՀԱՖԶՈՒՆ, < պրս. ماه māh «լուսին»+افزون afzūn «ավելի» բառերից. ամբողջը լինում է «ավելի (գեղեցիկ) քան լուսինը»։ Մի անգամ հիշատակված է ԺԴ դարում, Գիւնէի վանքում կամ Կնէվանքում գտնված մի գամբանի վրա.

Այս է հանգիստ Մահաւզոնի ՉՀԲ (1323)

տես Արրտ.1888, 445 և Սիսական 145։

ՄԱՀԲԱԲ, ար. ծագումն անհայտ. Թերևս ուղղելի Մահբուբ։ Հիշատակված է մի անգամ 1654 թ. (Տաշեան, Ցուց. 844 բ)։

*ՄԱՀԲԱՆՈՒ իգ. < պրս. ماه māh «լուսին»+ بانو bānū «տիկին» բառերից։

— Մահբանու, դուստր Մեծն Տրդատի և քոյր Խոսրով Բ Կոտակի, որի մահից հետո կառավարեց երկիրը։ Իր անունը անցել է Պարսից թագավորների ցանկի մեջ.—Վրաց աղբ. Բ. 95 (նրա մասին ընդարձակ պիտի խոսվի այդ գրքի Դ հատորում)։

*ՄԱՀԲԱՐ, իգ. < պրս. ماه māh «լուսին»+بر bar «բեր, բերված» բառից. ամբողջը նշանակում է «լուսնաբեր, լուսնից

բերված»։ Բայց կարելի է մեկնել նաև «լուսնի նման լուսափայլ կուրծք ունեցող» (իբր պրս. بر bar «կուրծք, լանջք» բառից)։ Իբրև անձնանուն հիշատակված է մի անգամ 1690 թ.— Ձեռ. Դաղեան, Ա. 49 բ։

ՄԱՀԲԻԹ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է մի անգամ 1657 թ. (Սիսական 75 բ)։

*ՄԱՀԲՈՒԲ, իգ. < արաբ. محبوب maḥbūb «սիրելի, սիրեցյալ» բառից. հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում. հնագույնն է 1544 թ. (Տաշեան, Ուս. Մտ. Կալիֆ. 158), Մահբուբ-Սուլթան 1609 թ. (Bodleian 109), Մահբուբ 1610 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 9 ա), 1621 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. էջ 133 ա), Մահպուպ 1623 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 629), Մահպուպ մր. 1645 թ. (Թորոս աղբ. Բ. 376), Մահպուբ՝ անթվական (Ձեռ. Թաւր. 39 բ), Մահպուպ՝ 1657 թ. (Սիսական 35, 37)։—Այժմ գործածական է Թուրքերի մոտ։

Մահևան *տես* Մեհևան։

*ՄԱՀԴԻ, ար. < արաբ. Mahdī հանրածանոթ անունից։ Այս անունն է կրում Մահմեդականների 12 գլխավոր իմամներից մեկը, որ Հիջրեթի 250 թվին անհետացավ մարդկային տեսությունից և աշխարհի վերջում նորից պիտի երևան գա։ Բուն նշ. «նվիրյալ»։ Լինելով մահմեդական հավատալիքի բառ, անգործածելի է մեր մեջ։ Բայց զարմանալի կերպով մի անգամ հիշատակված է՝

— Մելիք Մահտի Աւզբէկցի, մեռել ու թաղվել է Ս. Աստուածածնի մատուռում, ինչպես արձանագրում է Խուլավանքի առաջնորդ Զմշկածագցի Գէորգ եպիսկոպոսը՝ իր արտագրած Աւետարանի հիշատակարանում, 1443 թ.—Թորոս աղբ. Բ. 350։

ՄԱՀԹՈՒԽ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է 1654 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 127 բ) և 1661 թ. (անդ 75 բ). երկուսն էլ միևնույն անձն է։

*ՄԱՀԻ, իգ. < պրս. ماهی Māhī անունից, որ ծագում է ماه māh «լուսին» բառից և նշանակում է «լուսնային». հմմտ. Մահի ոմն հիշատակված մի կնիքի վրա և Մահի բանաստեղծը (Justi 184 բ)։ Մեր մեջ հիշատակված է մի անգամ 1557 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 8 ա) և մի ուրիշ անգամ էլ 1687 թ. (Ձեռ. Թաւր. 24 բ)։

Մահլ *տես* Սահլ։

*ՄԱՀՄԱՏ, ար. թեև շատ նման է արաբ. محمد Mahmad անվան (բուն նշ. «գովյալ, գովելի»), բայց չի կարելի դնել այս բառից, որովհետև 1) բառավերջի տ համապատասխան չէ արաբ.

մ-ին. 2) Է դարում դեռ արաբական ազդեցությունը այնքան զորացած չէր կարող լինել, որպեսզի բառեր, մանավանդ անուններ փոխ առնվեին, այն էլ հեռավոր Աղվանքում. 3) արաբական կրոնի հիմնադիրը հիշեցնող այսպիսի մի անուն սրբապղծություն պիտի համարվեր գործածել քրիստոնյաների մեջ։ Ուստի լավագույն եմ համարում դնել պհլ. Māhmāt=պազենդ. Mahmād անունից, որ բուն նշ. «լուսնիմաստ» (որ իմաստուն է լուսին եղիդի միջոցով) Justi 187 ա։

— 1. Մահումատ Ի Ղանքարեան, իշխան աղվան (Է դար). —հրար. Սամ. անեց. 286։

— 2. Մահմատ Ի Շերոյեան, իշխան աղվան, Դղմանց տերանց ցեղից (701 թ).—Կղկնտ. Գ. ը, ժ։

*ՄԱՀՄԼՔԷ, իգ. (ճիշտ ձևը հայտնի չէ, որովհետև կա միայն սեռ. Մահմլքին). < պրս. ماه māh «լուսին»+արաբ. ملیکه melīke «թագուհի» բառերից։ Հիշատակված է մի անգամ Լմբատայ վանքի անթվական մեծ արձանագրության մեջ, իբրև «մայր տեառն Գրիգորոյ արքեպիսկոպոսի մայրաքաղաքին Անւոյ և նահանգին Շիրակայ... որ էր հարեղբայր աստուածապատիւ տեառն Բարսղի»։ Այս տիտղոսներից երևում է որ սույն Գրիգորն է Գրիգոր Ապուղամրենց (№ 262), որ հիշված է Շիրակի արձանագրությանց մեջ 1213—27 թվերին։ Ուստի Մահմլքէ կինն է Ապուղամր մագիստրոսի (№ 4)։

ՄԱՀՈՒՏ, սեռն ու ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշված է ԺԵ դարում։

— Մահուտ մահտեսի. ամեն օր տասը լավաշ հաց էր բերում Մկրտիչ Նաղաշին, երբ սա նկարազարդում էր Աստուածաշունչը՝ 1418—22 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 115։

†ՄԱՀՏԵՍԻ, ար. < հյ. մահտեսի «Երուսաղէմ ուխտի գնացած» բառից, որ փոխառյալ է արաբ. مقدسی muqdasī համանիշից և հայերենում այսպես ձևափոխված։ Իբրև արական անձնանուն գործածված է անթվական մի հիշատակարանում՝ Մղտեսի ձևով (Manus. brit. mus. 55 բ)։ Մի անգամ էլ գործածված է Մահղասիպապ ձևով՝ 1624 թ. (Տաշեան, Ցուց. 780)։ Բայց արդյոք այս վերջինը պետք չէ՞ հասկանալ «մահդասի Պապ»։ Ավելի որոշ է Ձեռ. Վասպ. 116 «քւերն իմ Մահթասուն», որից երևում է, որ Մահթասի իգական անուն է։ Այս տողը գրողն է Կիրակոս երեց Բաղիշեցի (№ 150), որի հայրն է Ջանիբէկ, մայրը Նիգար, եղբայրը Յակոբ, հորեղբայրը Ատոմ կրոնավոր են (1487 թ)։

Նույն անձը հիշված է նաև Նոտարք 230, նույն ազգակցական կապերով (տես Կիրակոս № 141)։ Սրանից հետևում է որ պետք է իրար միացնել Կիրակոս № 141 և 150։ Արդ՝ Նոտարքի մեջ Կիրակոսի քրոջ հիշատակությունը հետևյալ ձևով է. «քըւերցն մահդասի Սալչուկին և Հնազանդին»։ Այս հիշատակությունից երևում է որ Ջեռ. Վասպ. 116 Մահքասուն պետք չէ առնել իբրև հատուկ անուն, այլ իբրև ածական և գրել փոքրատառ։ Այս երկու «մահտեսի»-ները ջնջելուց հետո, մնում է միայն առաջին Մղտեսի ձևը, որի վրա կարելի է չկասկածել, քանի որ Մուղդսի անունը այժմ էլ երբեմն լսվում է։ Կա նաև մի Տէր Մահտեսի 1649 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 574)։

ՄԱՀՐԻԽԱՆ, իգ. ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է 1690 թ. (Սմբատեանց, Երնջակ 296)։

*ՄԱՀՐՈՒՄ, ար. կարելի է բացատրել կամ պրս. ماهرو māhrū կամ مهرو mahrū «լուսնադեմ»+ր m «իմ» և կամ արաբ. محروم maḥrūm «զուրկ, զրկված»։ Առաջինը հարմար լինելով իգականի, երկրորդը ավելի հավանական է թվում։ Հիշատակված է 1681 թ. և գրված է Մեհրում (Ջամբռ 165)։

ՄԱՂԱՄԷԼԻՔ, ար. Թեև վերջի մասը հայտնի է, բայց ինձ անծանոթ է առաջին մասը։ Դավիթ բէգի ժամանակ հիշատակված անուն է (տես Սիսական 422 ա)։

Մաղաս տես Մախազ։

*ՄԱՂԱՔԻԱ, ար. < եբր. מלאכי Malākī անունից՝ հուն. Μαλαχίας (ֆր. Malachie են) տառադարձության միջոցով։ Ծագում է מלאך malāk բառից և բուն նշանակում է «հրեշտակ» (Gesenius 425—6)։ Հմմտ. Մաղաքիա... անուանակիր սուրբ հրեշտակին (Յս. որդի, էջ 56). Մաղաքիաս հրեշտակ էր և տեսլեամբ և անուանադրութեամբ (Սարգ. ա. պետ. բ. էջ 263). Մաղաքիայն յեբրայեցի լեզուն հրեշտակ լսի (Լմբ. ժբ. մարգ. էջ 229=Մաղաք. ա. 1). Մաղաքիաս, որ կոչի հրեշտակ (Անկ. գիրք հին կտ. 217)։ Այս պատճառով էլ Մաղաքիա մարգարէի անունը երբեմն թարգմանված է «հրեշտակ». ինչ. Իրենէոս, Ընդ. հերձ. էջ 57, 75, 65, Եւս. քրոն. Ա. էջ 184, Բ. էջ 202 (տես Վարդանեան ՀԱ 1911, էջ 50)։ Գործածված է մեր մեջ ԺԴ դարից սկսած և այժմ էլ երբեմն պատահում է։ Կրճատ ձևն է Մաղաք. (օր. Մաղաք՝ եղբայր Վառվառէ Կարնեցի կույսի, որ նահատակվեց 1810 թ. տես Նոր վկ. 647)։ Սրանից էլ Մաղաքեան ազգանունը։

— 1. Մաղաքիա հիշատակագիր. 1248 թվին Հռոմկլայում

գրված մի Աւետարանի հիշատակարանում գրում է թե Ծովգղեկի մենաստանը հիմնել է Մեսրոպ վարդապետը՝ 1234 թ.—Թորոս աղբ. Բ. 351։

— 2. Մաղաքիա աբեղա, պատմիչ ԺԳ դարու. աշակերտ Վանական վարդապետի, աբեղա եղավ Ակների վանքում. գրել է «Պատմութիւն վասն ազգին Նետողաց» (այն է Թաթարաց)։ Այս գիրքը տպված է Պետերբուրգ 1870, բայց ավելի լավ է Երուսաղեմի նույն թվի տպագրությունը, որ սխալմամբ վերագրված է Վարդան պատմիչին։ Գրվածքը համառոտ պատմությունն է Թաթարների ծագման և աշխարհակալության։ Պատմում է հատկապես Սմբատ Գունդստապլի և Հեթում Ա. թագավորի ճամբորդության և Թաթարաց խանի հետ կնքած դաշնագրության մասին, ինչպես նաև Եգիպտացոց արշավանքը Կիլիկիա, Լևոն Գ-ի գերությունը և վերադարձը (1268 թ), որից հետո հորը՝ Հեթումի ձեռքով պսակվում է թագավոր («1270 թ»)։ Այստեղ վերջանում է Մաղաքիայի Պատմությունը.—սեռ. Մաղաքիայ՝ Մաղաք. աբ. 1.—Զարբ. Նոր մատեն. էջ 149—153 (սխալմամբ դնում է պատմիչ ԺԴ դարու). Յովնանեան՝ Հետազոտ. նախն. ռամկ. Ա. էջ 239—249։

— 3. Մաղաքիա գրիչ. օրինակեց Կանոնագիրքը Կաֆա (Թէոդոսիա) քաղաքում, 1368 թ.—Ձեռ. Կարին. 45. Զարբ. Թրգմ. 490։

— 4. Մաղաքիա վարդապետ Ղրիմեցի. խստամբեր ճգնավոր, Կաֆա քաղաքից. մեծահարուստ մարդու զավակ էր. ուսանելու համար եկավ Հայաստան և Տաթևում աշակերտեց Յովհան Որոտնեցուն, որից ստացավ վարդապետական աստիճան։ Ուխտի գնաց Երուսաղէմ և վերադառնալով Հայաստան, Նախիջևանի գավառում երկու վանք հիմնեց։ Զինվելով կաթոլիկության դեմ, հաջողությամբ մաքառում էր, գործ դնելով իր ամբողջ հարստությունը և մինչև իսկ նյութական ուժ կամ բռնի միջոցներ։ Որից զայրանալով ունիթոռները՝ հորդորեցին իր կաթոլիկ սանամորը և նա թունավորելով սպանեց նրան «1384 թ»։ Թաղվեց Երնջակի վանքում (գերեզմանի մասին տես Սմբատեանց՝ Երնջակ 362)։ Իր կյանքը անցել է Յայսմաւուրքի մեջ։—Յայսմ. հոկտ. 21. Սամ. անեց. շար. 170. Մեծոփ. 15, 39. Տաթև. ամ. 715.—սեռ. Մաղաքիայ՝ Մեծոփ. 17.—Մաղաքիայի՝ Յայսմ. հոկտ. 21. Զամչ. Գ. 447—9, Սիսական 359, 363, 364, 378, 507։—(Երևի նույնն է ակնարկում Նոտարք 85 գրված մի հիշատակարանը, որ գրված է 1427 թ)

— 5. Մաղաքիա *աւագերեց, իր պապի եղբոր Թոռան՝ Պետրոսի հետ միասին շինեցին Թէոդոսիայի բերդը. ապա գնացին Աղթամար՝ իրենց ազգական Յովհաննէս վարդապետի մոտ (ԺԴ դար).—Հայապ. 582։*

— 6. Մաղաքիա *կուսակրոն աբեղա, առաջնորդ Պառուագրակ վանից, 1421 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 313։*

— 7. Մաղաքիա *եպիսկոպոս Կաֆայի. Նույն տեղի Ջենովացի կառավարիչ* Paolo Imperiali-*ի հորդորով գրեց Սսի Կոստանդին Զ կաթողիկոսին և առաջարկեց նրան, որ մի պատվիրակ ուղարկի՝ մասնակցելու համար Ֆլորենցիայի պապական ժողովին «1438 թ» (Ազգապ. 2080)։ Այս դիմումը լատիներենից թարգմանելով հրատարակեց Պալճեան 299—301։ Այստեղ ստորագրում են Կաֆայի հայերից 50 հոգի՝ կրոնավոր և աշխարհական։ Անունների մի մասը շատ է աղավաղված. ինչպես Օլոյպէյ Սանսայ, Բայարէս Փուիկոյ, Խոյիշ Դորակալեան, Տիրիմպաքալ են են։ Այս պատճառով էլ նույն անունները չվերցրի բառարանիս մեջ, բացի երեքից, որոնք են՝ Աւագպարոն, Համբարձում և Պարոնվարդ։—Մաղաքիա եպիսկոպոսը հիշվում է դեռ 1439 թ. իբրև առաջնորդ «Հոնաց աշխարհին և Գոպարիայ նահանգիս Սուլխաթ Ղրիմի և Կաֆայիս մայրաքաղաքիս» (Նոտարք 119)։*

— 8. Մաղաքիա *աբեղա, գրիչ. Աբրահամ քահանայի խնդրանոք, Կաֆայում, Ս. Անտոնի և Ս. Աստուածածնի վանքում օրինակեց Աւետարանը՝ 1439 թ.—Նոտարք 119։*

— 9. Մաղաքիա *եպիսկոպոս, իր հորեղբոր Պարսամ արքեպիսկոպոսի գերեզմանի վրա կանգնեցրել է մի խաչ՝ Գանձակի Փիփ գյուղում, 1457 թ.—Արցախ 301 > Ազգագր. հանդ. Ե. էջ 311։*

— 10. Մաղաքիա *կրոնավոր, գրիչ. Երերանու Ս. Աստուածածին վանքում օրինակեց Աւետարանը 1463 թ.—Սմբատեանց, Երնջակ 314։*

— 11. Տէր Մաղաքիա, *Խորձենի Խլպաշի վանքում, Ս. Կարապետ եկեղեցու քահանաներից մեկը, հիշված է 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 341, Նոտարք 218։*

— 12. Մաղաքիա, *ազգական Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։*

— 13. Մաղաքիաս, *գրիչ. Գաբոսի անապատում արտագրել*

է Գր. Նազիանզացու Աստուածաբանութիւնը և այլ գործերը՝ 1497 թ.—Ձեռ. Կարին. 6։

— 14. Մաղաքիա գրիչ. օրինակել է Եւագրը՝ ԺԵ կամ ԺԶ դար.—Սարգիսեան, Եւագր. ներած. ՃԶԴ։

— 15. Մաղաքիա վարդապետ Դերջանցի. հմուտ և շինարար մարդ էր. գնաց Պոլիս՝ Սուլթան Սիւլէյմանի մոտ և հաջողեց դադարեցնել ժանտաժողովը Դերջանից և Բաբերդից «1545 թ».—Աղթամ. 12. Առաք. պտմ. 448. Ձամչ. Գ. 513. Ազգապ. էջ 2237։

— 16. Մաղաքիա ճգնաւոր վարդապետ Բաբերդցի. միաբան Վահանաշէն գյուղի Ս. Ստեփաննոս վանքի. ճարտար գրիչ էր. ամբողջ ժամանակը լռությամբ անցկացրեց նույն վանքում և բնավ դուրս չեկավ։ Գիշեր-ցերեկ անդադար գրում էր և օրինակում Սաղմոս, Աւետարան, Շարակնոց, Ճաշոց, Յայսմաւուրք, Աստուածաշունչ և այլ կրոնական գրքեր, որոնցով լցրեց ամբողջ Խաղտեաց երկիրը։ Ո՛չ ցերեկն էր հանգստանում և ոչ գիշերը քնում. «բնաւ յանկողնի ոչ ննջէր, այլ սակաւ մի ոյժ առնելոյ աղագաւ դնէր զգլուխն ի վերայ շիքիլոնին և նստեալ ննջէր մէկ ժամ կամ երկու և դարձեալ փութով զարթնոյր և միւսանգամ աշխատէր ի գրելն»։ Կենսագրութիւնը տալիս է Գրիգոր Դարանաղցին (Երուսաղէմ 1915, էջ 407), որ 1591 թ. խոսած ժամանակ ասում է սրա մասին «եղեալ ի մերձ ժամանակիս մեր»։

— 17. Մաղաքիա դպիր Ճէվահիրճեան, պատմիչ. ունի ժամանակագրութիւն, որ սկսում է հայոց թվականի սկզբից և հասցնում է մինչև 1707 թ։ Ձամչեանը այստեղից է քաղել իր պատմությունը՝ հտ. Գ. էջ 723—760։ Նրա անունով կա նաև «Գաւազանագիրք կաթողիկոսացն Հայոց», որ գրել է 1713 թ։ Ձեռագիրը գտնվում է այժմ Վենետիկում (հիշատակում է Թորգոմեան, Ստամպօլայ պատմ. Բ. 816)։—Ձամչ. Գ. 723. Հայապ. 134։

— 18. Մաղաքիա Օրմանեան, պատրիարք Պոլսի 1896—1908 թ. իբրև տաճկասեր և հակահեղափոխական գահազուրկ եղավ Տաճկական Սահմանադրության հռչակմամբ։ Մեռավ 1918 թ։ Ունեցել է գրական բազմարդյուն գործունեություն. իր գրչին է պատկանում եռահատոր Ազգապատումը, որ ամենից ընդարձակ Հայոց պատմությունն է քրիստոնեական թվականի սկզբից սկսած մինչև 1912 թ. այստեղ իր մասին խոսում է էջ 5069, 5384, 5403։

Մաղենտիոս *տես* Մագենտ:

† *ՄԱՂԽԱԶ, ար.* < *հյ.* մաղխազ *բառից, որ նշանակում է «արքայական պահապանների գլխավորը»։ Տես և* Մախազ:

— 1. Մաղխազ *նահապետ, Խոռ Հայկազնի ցեղից. Վաղարշակ Թագավորը (149—127 Ն. Ք.) կարգեց նրան արքունի Թիկնապահապետ և նախարար։ Նրա ցեղն էլ կոչվեց Խորխոռունի.— Խոր. Բ. է. Ասող. Ա. ե. Սամ. անեց. 48։*

— 2. Մախազ *իշխան Անձևացեաց, Ներսէսի ուղեկիցներից էր Կեսարիա օծման գնալու ժամանակ «353 Թ».—Մեսր. եր. 25։*

**ՄԱՂՍՈՒՄ, իգ.* < *արաբ.* معصوم maʿṣūm *«անմեղ. 2. անմեղ մանուկ» բառից, որ Պոլսահայ բարբառում էլ գործածական է* մախսըմ *ձևով (նույնը նաև Խրիմ-Ն. Նախիջևան)։ Իբրև իգ. անուն գործածված է ԺԶ—ԺԷ դարերում, Հնագույնն է Մաղսում 1521—9 Թ. (Ձեռ. Վենետ. Բ. 382), որից հետո են Մաղսում 1534 Թ. (Տաշեան, Ցուց. 434), Մախսում 1549 Թ. (Խաղբակեանք 243, այլ ոմն Ձեռ. Վասպ. 651), Մաղսում 1554 Թ. (Ձեռ. Վասպ. 98), Մախսում 1579 Թ. (անդ. 575), Մաղսում 1580 Թ. (անդ 32), Մահսում 1602 Թ. (անդ 803), Մաղսում 1608 Թ. (անդ 832), 1648 Թ. (անդ 911), Մահսում (անթվական՝* Manus. brit. mus. *56 ա)։*

† *ՄԱՄԱ, իգ.* < *հյ.* մամ *«տատ կամ մայր» բառն է. նկատելի է որ ազգակցական անունները հաճախ իբր անձնանուն են գործածվում. համմտ. պրս.* Մամ *ոմն կին պարսիկ (Վրդ. պատմ. տպ. 1862, էջ 100),* Mamūyeh *հարճ Մծբինի մետրապոլիտ Բարծումայի* (Justi *189 ա), պհլ.* Papak, *ասոր.* Bābā, Māmā *արական անուններ (Հիւբշ. 50), հյ. Պապ. Բաբա, Հայրիկ, Եղբայր են։ Այս անունները դնելով իրենց զավակների վրա՝ ծնողները ցանկանում են կենդանի պահել նախորդների հիշատակը։ Այս անվան հետ նույնանում են Մամախաթուն և Մամատիկին անունները, ինչպես նաև Մամաք, Մամքան և Մամուշ որոնք տես իրենց կարգին։ Ես այստեղ հիշում եմ միայն այն դեպքերը, երբ* Մամա *գործածված է առանձին։*

— 1. Մամա *Թագուհի, դուստր Կիւրիկէ Գ Թագավորի, քույր Աբաս Բ-ի և Թամարի, երկրորդ կին Խաչենի Հասան (№ 23) իշխանի, որի հետ գնաց Դատիվանք, ուր իր տագրը՝ Գրիգորիս (№ 194) առաջնորդ էր, և երկուսն էլ կրոնավոր դարձան (1182 Թ.)։*—Justi *189 ա, Հայապ. 392, Կրպտ. եպս.՝ Դօփեանք 49։*

—Այս Մաժան խորթ մայրն է Վախտանկ Խաչենցու, որ օգնեց Մխիթար Գոշին՝ շինելու Նոր Գետիկը, 1191 թ.—Արձ. Սմբատեանց՝ Գեղարք. 173։

— 2. Մամա (սեռ. Մամին ձևով), դուստր Յովհաննեա, որ նրա հիշատակին, Կողբի մի այգին նվիրել է Խծկոնից վանքին, 1216 թ.—Ազգագր. հանդ. Ա. 45, Արար. 1904, 990։

— 3. Մամա (սեռ. Մամային), կին Վասակ իշխանի Խաչենցւոյ († 1224—15 թ), որդւոյ Խաղբակ Բ-ի. հիշված է ամուսնու անթվական մի արձանագրության մեջ՝ Կեչառուի կաթուղիկէ եկեղեցու շինության առթիվ, որ տեղի ունեցավ 1214 թ. Մաժան էլ մի այգի է նվիրել նույն վանքին։—Արձ. Շահխաթ. Բ. 196, Այրարատ 263 (ուր Ալիշան հայտնում է թե այս Վասակը քաջն Պռոշի հայրն է և արձանագրությունն էլ ԺԳ դարի առաջին քառորդից է)։ Արաքս 1892, Ա. էջ 28, Խաղբակեանք, էջ 78։

— 4. Մամա (որոշիչ հոդով Մամէն), դուստր Խնդուբէկի (№ 3)․ մայրն է Շիրազ խաթունի, որ նորոգել տվեց մի հին Ավետարան 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։

— Ավելի ուշ ժամանակից ունինք Մաժա 1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 233 ա), Մաժա կին ոմն 1610 թ. (Ձեռ. Դավթեան, Ա. 9 բ) և 1727 թ. (Տաշեան, Ցուց. 341 բ)։

† ՄԱՄԱԴԵԴԱ, իգ. < նույն Մամա անունից+վրաց. დედა deda «մայր»։ Հիշատակված է մի անգամ ԺԵ դարում։

—Մամայդեդայ, հանգուցյալ դուստր Թումայի՝ եղբոր խոջա Ղուբաթի, որ Արաշ գեղաքաղաքում գրել տվեց մի Ավետարան, 1490 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

*ՄԱՄԱԼՕ, ար. < վրաց. მამა mama «հայր», მამილო mamilo «հայրիկ», მამალი mamali «արու, աքլոր» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1721 թ. (Ջամբռ 209)։

† ՄԱՄԱԽԱԹՈՒՆ, իգ. նույն Մամա անունից՝ խաթուն պատվանունով։ Ասվում է նաև Մամխաթուն։ Հիշատակված է ԺԲ—ԺԷ դար։

— 1. Մամխաթուն Լոռեցի, դուստր Խաչերեսի՝ որդւոյ Աբրահամ Լոռեցու. հայրը 8 խանութ, 3 տուն և մի այգի էր նվիրել Բագնայրի վանքին 1209 թ։ Դուստրը՝ Մամխաթունն էլ նրանց վրա ավելացրեց ևս մի խանութ։ Տասը տարի հետո վախճանվեց խեղճ աղջիկը՝ առանց զավակ ունենալու. ուստի իբրև հիշատակ կառուցել էր Անիի արևելյան պարսպի աշտարակը, որի

*վրա իր անունով յետ մահու մի արձանագրություն կա՝ 1219 թ։—Արձ. Շիրակ 117, 43։*

— 2. Մամախաթուն *իշխանուհի, դուստր Ապուսերհի, կին Վաչէի Վաչուտեանց՝ իշխանաց իշխանի Արագածոտն գավառի, որդւոյ Սարգսի Վաչուտեանց. մայրն է Քրդի և Վաչուտի։ Իր ամուսնու հետ միասին բազմաթիվ նվերներ են արել վանքերին և այս առթիվ հիշված են 1213—29 թվերի արձանագրութեանց մեջ։ Կեչառու վանքին մի այգի են նվիրել 1213 թ. շինել են Սաղմոսավանքի Ս. Սիոն եկեղեցին 1215 թ. մեծ նվերներ են արել Յովհաննավանքին 1217 թ. տասը տարի ուխտի են գնացել Հաղբատ. և միշտ նվերներ են արել. իսկ 1220 թվին՝ Մամախաթունը մի ձիթահանք է նվիրել։ Հառիճի վանքին նվիրել են երկու այգի 1221 թ. իսկ 1229 թվին Հոռոմոսի վանքում շինել են նշխարատունը, գրատան մի այգի և եկեղեցուն էլ սպասներ են նվիրել։ Այս բոլորից դուրս նվերներ են արել նաև Սանահնի վանքին։ Մամախաթունը ունի իր սեփական արձանագրությունը Բջնիի մենաստանում 1211 թվից, բայց միայն մի տողն է մնում։ Ինքը շինեց Տեղերի եկեղեցիները 1232 թ. այս թվին էլ մեռավ և թաղվեց Տեղերում, ուր մնում է իր գերեզմանը։ Հիշված է նաև իր որդի Քրդի մի արձանագրության մեջ 1250 թ։—Արձ. Շահխաթ. Բ. 99, 101, 122, 175, 192, 264, Այրարատ 146—7, 162, 168, 169, 253, 256, 261, Շիրակ 161, Ջքր. պատմ. Գ. 16, 18, Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 71, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 26, Ազգագր. հանդ. Գ. 279,* ZAPh *2, 45—47, Բանաս. 29, 31։*

— 3. Մամախաթուն, *դուստր Քուրդի Վաչուտեանց՝ իշխանի Արագածոտն գավառի. նախորդի թոռն է. մանկահասակ մեռնելով՝ հայրն ու մայրը (Խորիշահ) նրա ունեցած գույքը վաճառեցին և շինեցին նրա անունով Սաղմոսավանքի գրատունը և մատուռը, որ ոսկետուփ Աւետարանով և զանազան սպասներով զարդարեցին, 1235 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 123, Այրարատ 163, Բանաս. 1903, էջ 31։*

— 4. Մամախաթուն, *կին Հասանի (թերևս* N *23 Հասանն է), որի թոռը մի արձանագրություն է թողել Խաչենի Քոլատակ գյուղում 1265 թ.—Արցախ. 168։*

— 5. Մամախաթուն, *դուստր Հասան-Ջալալ-Դոլայի՝ մեծ իշխանի Խաչենոյ, երկրորդ կին Ումեկի՝ որդւոյ Ճալրի, մայր Վախտանկ իշխանի Տփղիսեցւոյ. երկու անգամ ուխտի գնաց Գանձա-*

*սարի վանքը, 1268 և 1286 թվերին։—Արձ. Շահխաթ. Բ. 373,* Justi *189 ա, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 7, 10։*

— 6. Մամայ խաթուն, *կին Պապաքի և մայր Մխիթար քահանայի, որ Որոտանի Աղիտու վանքում գրեց մի Աւետարան, 1296 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 201։*

— 7. Մամախաթուն *իշխանուհի, կին Ջաջուռ իշխանի. Ամբերդում, Սարկաւագ գրչին գրել տվին մի Աւետարան, 1310 թ.—Ձեռ. Կարին. 17։*

— 8. Մամախաթուն, *կին Գրիգորիսի՝ հոգևոր եղբոր Սարգիս աբեղայի, որին երկուսով օգնում էին, երբ սա Գլաձորում օրինակում էր Ոսկեփորիկը՝ 1317 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 857—8, Սիսական 133 բ։*

— 9. Մամախաթուն, *կին Յովանէս երեցի և մայր Յովհաննէս գրչի, որ օրինակեց Աստուածաշունչը՝ 1319 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 20։*

— 10. Մամախաթուն, *մայր (թե կին) Մարտիրոս գրչի, որ գրեց Աւետարանը Բաւուն միայնակյացի համար, 1330 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 770։*

— 11. Մամախաթուն, *մորաքույր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը 1335 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 348։*

— 12. Մամախաթուն, *դուստր Ելիկումի Օրբելեանց, կին Էաչի իշխանի՝ որդւոյ Ամիր Հասանի և թոռան Պռօշ իշխանի Խաչենոյ։ Էաչին մեռավ 1317 թ. այս թվին հիշված է կինը՝ Ցախաքարի արձանագրության մեջ և մի անգամ էլ Թանատի վանքի մի արձանագրության մեջ՝ 1339 թ.—Այրարատ 269, Սիսական 121, 156։*

— 13. Մամախաթուն, *դուստր Իշխանի և քույր Մկրտիչ կուսակրոն քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Աւետարան, 1344 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237։*

— 14. Մամախաթուն, *կին Յովհաննէսի և մայր Տիրատուր անուն ստացողի, 1356 թ.—Տաշեան, Ցուց. 394։*

— 15. Մամախաթուն, *քույր Ավրամի՝ մեծ հոր Յակոբ սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան գիրքը, շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։*

— 16. Մամախաթուն, *կին Ոսկեհերի և մայր Գէորգ կրոնավորի, որ ստացավ Իգնատիոս վարդապետի Մեկնութիւն Ղուկասու, 1363 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 228։*

— 17. Մամախաթուն, կին Վարդան քահանայի, որ Երզնկայում գրել տվեց մի Աւետարան և ապա վաճառեց մի ուրիշ Վարդան քահանայի, որդւոյ Լուսերէցի? 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 45։

— 18. Մամախաթուն, կին Աւագ քահանայի (ԺԴ դար).—տես Մերկեռ մանկտաւագ։

— 19. Մամախաթուն, դուստր Ղազարի և քույր Սարգիս աբեղայի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Ձեռ. Վասպ. 376։

— 20. Մամախաթուն, կին պարոն Բէկթամուրի, որ Դարանաղեաց (Կամախ) գավառի Ծնանառձի մենաստանում գրել տվեց մի Ճաշոց, 1439 թ.—Նոտարք 120։

— 21. Մամխաթուն, մերձավորն է տանուտէր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 22. Մամախաթուն, կին Տէրպարոնի և մայր Սահակ եբեցի, որ Կիւրղի վանքում, Ստեփանոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 257։

— 23. Մամախաթուն, կին տանուտեր Յովհաննէսի, որ Մինաս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, Սեբաստիա 1469 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 11։

— 24. Մամախաթուն, դուստր Սամնայ իշխանի, որ իր գերդաստանի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Փառխոսի մայր եկեղեցում, 1481 թ.—Արցախ 307։

— 25. Մամախաթուն, ազգական Սիրատանի, որ Կեսարիայի Մանտխոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— Ավելի ուշ հիշված է Մամխաթուն 1630 թ. (Թորոս աղբ. Բ. 451)։

ՄԱՄԱԿ, ար. տես Մամա:

— 1. Մամակ Մամիկոնեան, միացած Սամուէլ Վահեւունու հետ՝ ապստամբեց Պարսից Խոսրով Բ Թագավորի դեմ, բայց շուտով հաշտվեց և Պարսկաստան հրավիրվելով՝ պետական ծառայության մտավ։—Սեբ. ժդ, ժթ, իա։

— 2. Մամակ անունը մի անգամ ևս գործածված է անթվական մի հիշատակարանում, որ ուշ ժամանակի գրություն է երեվում. անվան սեռն էլ հայտնի չէ, բայց երևի իգական է։—Ձեռ. Վասպ. 136։

†ՄԱՄԱՋԱՆ, ար. < հյ. մամ «մայր»+պրս. جان jān «հոգյակ» բառերից. իբր թե «մոր հոգյակը. շատ սիրելին»։ Մի անգամ հիշված եմ գտնում անթվական մի ձեռագրում (Tübingen, էջ 71)։ Սրանից է Մամաջանեան ազգանունը (Կովկաս)։

*ՄԱՄԱՍ, ար. հունական անուն է. հմմտ. Մամաս ճգնավոր (որ և Մամմէս, Մամանտիոս) Գանգրացի (Գ դար). տես Աւգերեան, Լիակ. վրք. սրբ. Զ. 5—24։ Շատ քիչ է գործածված հին հայոց մեջ. այժմ էլ երբեմն պատահում է։

— 1. Մամաս, վանքերեց Բագարանի. ուրիշ վանահայրերի հետ միասին հաստատութեան թուղթ տվեց Աբրահամ նորընտիր կաթուղիկոսին «607 թ».—Ազգապ. 618։ (Այսպես է կոչվում այս անձը ըստ Ազգապատումի, բայց Ուխտ. Բ. լէ գրված է Սամաս և Գիրք Թղ. ի Սամոս)։

— 2. Մամաս ճգնավոր, որի գերեզմանը գտնվում է Վարդիհէրում (Կաղզուան).—Այրարատ 51։

— 3. Մամաս (իգական է!), կին Թովմայի և մայր Կարապետ կրոնավորի, որ ժահտեսի Խնդուսի պատվերով գրեց մի Աւետարան (տեղն անհայտ), 1357 թ։—Ձեռ. Վասպ. 214։

†ՄԱՄԱՏԱՏ, իգ. < հյ. մամ «մայր»+տատ բառերից. իբր թե «մորը տատը»։ Մի անգամ գտնում եմ հիշված՝

— Մամատետ, կին Էտիլշահի և մայր Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։ (Այս անունից 5 տող ցած՝ տատ բառը գրված է տետ, ուստի Մամատետ անունն էլ պետք է կարդալ Մամատատ)։

†ՄԱՄԱՏԻԿԻՆ, իգ. < նույն Մամա անունից+տիկին, ինչպես վերը խաթուն կամ դեղա։ Գործածված է ԺԳ—ԺԵ դարերում։

— 1. Մամատիկին, կին Վարդապետի և մայր Յովհաննէս քահանայի, որ Կարնոյ Կան գյուղում գրեց մի չքնաղ Աւետարան, 1283 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 644։

— 2. Մամատիկին, մերձավոր Թումա և Հայրապետ քահանաների, որոնք Զաքարիա գրչին օրինակել տվին Աւետարանը՝ 1304 թ.—Ձեռ. Վասպ. 143։

— 3. Մամատիկին, կին Մարտիրոսի և մայր Սարգիս քահանայի, որ Սկեռայ վանքում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1325 թ. (Ձեռ. Վասպ. 171) և վեց տարի հետո էլ Դրազարկում, Թորոս Հռոմկլայեցուն գրել տվեց մի ուրիշ Աւետարան, 1331 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 436։

—4. Մամատիկին, կին Յովհաննէս քահանայի և մայր Բար-

*սեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գեղաքաղաքում օրինակեց Աւետարանը 1336 թ.—Ձեռ. Վասպ. 191։*

— 5. Մամայտիկին, *հիշված է մի քանի տխալարների հետ՝ Մոկաց Ծպատի վանքի շրջանում,° 1369 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 427։*

— 6. Մամատիկին, *դուստր Խնկիկի և քույր Թադէոս կրոնավորի, որ Աղթամարում գրել տվեց երկու Աւետարան, մին 1392 թ. և մյուսը 1393 թ.—Ձեռ. Վասպ. 226—8։*

— 7. Մամատիկին, *քույր Ջապելի՝ կնոջ Վարդան քահանայի, որ Երզնկայում, Խոսրովի որդի Վարդան քահանայից գնեց մի Աւետարան, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։*

— 8. Մամատիկին *ապաշխարող, դուստր Յովսէփի, Ստեփանոս կրոնավորի հետ միասին Վարդան աբեղայի գրել տվեց մի Աւետարան, Խոսրովայ վանքում, 1430 թ.—Ձեռ. Վասպ. 357 և 359 (առաջին անգամ գրում է Սմատիկին, երկրորդ անգամ Մամատիկին. Նույն հիշատակարանը դնում է նաև Նոտալք 94, բայց կրճատ է և այս անունները չի հիշում)։*

— 9. Մամա տիկին *Հաթերքու, Կիւրիկեանց տոհմից. թվականը անհայտ (Հացունի, Դաստ. էջ 75)։*

**ՄԱՄԱՔ**, *իգ. ծագումը տես* Մամա. *հիշատակված է ԺԳ—ԺԴ դարերում։ Նույնանում է* Մամա *անվան հետ. օր. Պռօշ իշխանի մայրը կոչված է* Մամա *կամ* Մամաք *(Խաղբակեանք 98), ինչպես ունինք Պապ, Պապաք, Պապքան։*

— 1. Մամաք, *կին Բարսեղի՝ որդւոյ Աբաջուր հրեցի. մի հող են նվիրել Գանձասարի վանքին՝ 1276 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 376, Արցախ 179 (պակասներով)։*

— 2. Մամաք, *դուստր Հասանի, իր ոսկի ապարանջանը և մի հող է նվիրել Հերհերի եկեղեցուն, 1318 թ.—Արձ. Սիսական, էջ 114։*

— 3. Մամաք, *իր ամբողջ ունեցածը նվիրել է Արատէսի վանքին (և եսու զինչ ունէի ի ս. եկեղեցի) և ստացել է միայն «մի օր պատարագ» (խեղճ կին!).—Արձ. Սիսական 142, Արտ. 1888, 770 (թվականն անհայտ)։*

**ՄԱՄԲՐԷ**, *ար. < եբր.* ממרא Mamrē *անունից՝ հուն.* Μαμβρῆ *տառադարձության միջոցով։ (*Gesenius *432 որևէ բացատրություն չի տալիս բառիս ծագման համար։ Հներից Գիրք առաք. 605 ա մեկնում է «Մամբրէ թարգմանի յստակութիւն», իսկ Բռ. Ս. Գրոց, էջ 334* Մամբրէ *մեկնում է «պարարտ»)։ Այս*

անունով հայտնի էր Ամովհրացի ոմն բարեկամ Աբրահամ Նահապետի (Ծն. ժդ. 24)։ Անունը արժեք է ստացել նրանով, որ Աստուած երևացել է Աբրահամին՝ «Մամբրէի կաղնու» մոտ (Ծն. ժգ. 18)։ Հնից մեր մեջ գործածված է միայն մի անգամ. բայց այժմ գործածական է (Հիւբշ. 335)։

— Մամբրէ վերծանող, եղբայր Մովսէս քերթողահոր. մատենագիր Ե դարու. իրեն են ընծայում «Ճառ յարութեան Ղազարու» և «Ճառ Քրիստոսի գալստեան յԵրուսաղէմ»։—Դաւ. անյ. 99. Ասող. Բ. բ. Կիր. 16, 17, 22. Վրդ. իե, իը. Մ. Մաշտ. 336 ա. Ցայսմ. սեպտ. 17, նոյ. 25. փետր. 19. Սամ. անեց. 73. Պատմ. սահ. 14. Առաք. լծ. սահմ. 170. ZAPh 1, 207. Ցղ. մովս. և դաւթի, էջ 45, 50, 80, 86.—սեռ. Մամբրէ՝ Մամբր. էջ 35. Ցղ. մովս. և դաւթի, էջ 51. Օրբ. խա. Պտմռ. բրձր. 30.—բց. ի Մամբրէէ՝ Արծր. Ա. գ.—գրծ. Մամբրէիւ՝ Շնորհ. վիպ. 932.—տես և Զարբ. Հին դպր. 388—390. Գրգչ. Քնն. պատմ. Դ. 108. Կոնիբեր՝ Քնն. Դաւ. անյ. էջ 17։

Մամգուն տես Մամիկոն։

† ՄԱՄԵՐ, իգ. < հյ. մամ «տատ» բառի հոգնակիից (այս անունը տվել են նորածին աղջկան, իբրև հիշատակ երկու տատերի). մի անգամ հիշատակված է ԺԳ դարից, մի անգամ ԺԵ դարից և երկու անգամ էլ անթվական։

— 1. Մամիր (փխ. Մամեր), կին Մխիթարի, որ Պռօշ իշխանի հրամանով շինեց Մարտիրոս գյուղը՝ Վայոց ձորում, 1283 թ.—Սիսական 176, Խաղբակեանք 127։

— 2. Մամեր, կին Ախիի և մայր Արղուան Արծկեցու, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1482 թ.—Ջեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 85 ա)։

— 3. Մամեր, կին Իգնատիոսի. երկուսով միասին կալված են նվիրել Հոռոմոսի վանքին (թվականն անհայտ).—Արձ. Շիրակ 21, Արրտ. 1870, 698։

— 4. Առանց թվականի է նաև Մամեր՝ Ջեռ. Թաւր. 73 բ (գրված 1311 թվականից ավելի ուշ)։

† ՄԱՄԷ, իգ. < հյ. մամ «մայր կամ տատ» բառից։

— Մամէ, բարեպաշտ կին, դուստր Ղուպաթի և Գուլհանի, Աստուածատուր գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Եղեգեաց անապատի Ամենափրկիչ եկեղեցուն, 1498 թ.—Սիսական 161 ա։

ՄԱՄԷԼ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է մի

անգամ Թվականն անհայտ մի հիշատակարանում՝ Ջեռ. Սեբ.= ՀԱ 1926, 339։

**ՄԱՄԹՈՒԹ**, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է մի անգամ ԺԵ դարում։

— Մամթութ. կին Եղբայրիկի, գրել տվեց մի Աւետարան Եղբայրիկ գրչին և նվիրեց իր երկու հարազատ եղբայրներին՝ Զաքար և Կոստանդ քահանաներին, 1420 թ. (տեղն անհայտ).— Ջեռ. Վասպ. 320։

† **ՄԱՄԻԿ**, իգ. < հյ. մամ «մայր կամ տատ» բառի փաղաքշականն է. մի անգամ հիշատակված է ԺԳ դարից, երկու անգամ էլ ավելի ուշ։

— 1. Մամիկ. կին Սուկատի և մայր Կաղերի. միասին երկու տուն նվիրեցին Հոռոմոսի վանքին, 1231 թ.— Արձ. Շիրակ, էջ 21։

— 2. Մամիկ հիշատակված է նաև 1552 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1853) և 1630 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 777)։

— 3. Մամիկ անձնանուն չէ, այլ հասարակ անուն և նշանակում է «տատ, մեծ մայր» Ջեռ. Վասպ. 430 հետևյալ անթվական հիշատակարանում, որ գրված է 1458 թվից ուշ. «Արարիչն Աստուած զիւր մեղք թողու. և զիւր ծնաւղաց, զհաւրն զԲարհորդարին և զմաւրն զՆթգարին և զմամիկն... նանին, զՆղօռաջ»։ Լալայեանը երկու շեղատառ բառերն էլ անուն կարծելով՝ գլխատառ է գրում։

**ՄԱՄԻԿՈՅ**, անստույգ անուն, որ ըստ Լալայեանի գտնում ենք մի անգամ Նախճի գյուղի մոտակա ավերակ եկեղեցու մի խաչքարի արձանագրության մեջ (1043 թվից). «Հիշեա (այսպես h-ով) Քս Ած զՄամիկոյ թագուհի և ողորմեա» (Ազգագր. հանդ. Գ. 168)։

**ՄԱՄԻԿՈՆ**, ար. հին ձևը համարվում է Մամգուն, որին չինական ծագում են վերագրում։ Հմմտ. չին. Man-gun «հարավային արիական այլազգիների իշխան» կամ gun-Man «իշխան Մաների» (ՀԱ 1911, էջ 519 և 526)։ Տես նաև Մատիկեան՝ Անանուն, էջ 53։—Այժմ դարձել է սովորական անուն Կովկասում։

— 1. Մամգուն կամ Մամիկոն, մեծ նախարար չինացի, որդի Կառնամի, որ իր Կոնակ եղբոր հետ փախավ Հայաստան՝ Տրդատի թագավորության ժամանակ։ Այդ միջոցին Սլկունի ցեղը ապստամբած լինելով, Մամիկոնը գնաց նրանց վրա, նվաճեց և Տրդատի հրամանով ժառանգեց նրանց տեղը։ Այսպեսով

կազմվեց Մամգունյան նախարարական տոհմը, որից սերեցան Մամիկոնյանները։ (Ըստ ՀԱ. 1911, էջ 526 Մամգուն ցեղը այժմ էլ կա Սիբիրի Մերձծովյան նահանգում. նրանց սիրելի նշանն է արծիվը, որ ամեն տան առաջ, ձողերի վրա ցցված է։ Մամգունյանց ազգը դեպի Հայաստան եկել է Ն. Ք. Գ կամ Ե դարում և առաջին անգամ բնակվել են Տայքում և ոչ թե Տարոնում։ Կառնամակ մասին էլ տես անդ, էջ 527--8)։—Մամգուն՝ Խոր. Բ. ձա, ձգ, Ասող. Բ. ա.—Մամգունայ՝ Խոր. Բ. ձա, ձգ. Վրդ. ժը.(հրտր. Էմինի՝ Մամգունոյ).--զՄամգունայն՝ Խոր. Բ. ձա.—Մամգունեան՝ Խոր. Բ. ձգ.—Մամգունեաց՝ Արծր. Գ. ժգ.—Մամգոնեան՝ Ասող. Բ. ա.—Մամակ՝ Վրդն. աշխ. 522.—Մամիկ՝ Սեբ. գ (էջ 12, 13).—Մամիկոն, բց. ի Մամիկոնայ՝ Սեբ. գ (էջ 13).—Մամ՝ Մեսր. եր. 121, Սիմ. ապար. 29։

— 2. Մամիկոն, եղբայր Մանուէլ Մամիկոնեանի, որ վանեց Վարազդատ թագավորին Հայաստանից դուրս «378 թ». (Բուզանդի կոմսն է).—Կիր. 13։

— 3. Մամիկոն, հայր Համայի, որ ստացավ երկաթագիր մի Ավետարան և նվիրեց Բարձրաքաշ վանքին, 966 թ.—Ջեռ. Սևան. 2 (թվական չկա. բայց Զարբ. Թրգմ. 158 դնում է 966 թվին)։

— 4. Մամիկոն, որ Խերխանի և Մարծպանի հետ նորոգել է Խաչենի Բոլատակ գյուղի իրենց գերեզմանատունը, 1265 թ.—Արձ. Արցախ 168։

— 5. Մամիկոն, թոռն Ջաջուռի Բ Խաղբակեան (ԺԳ դար).—Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 144 (չունի Ցովսէփեան՝ Խաղբակեանք իր Տոհմագրության մեջ)։

— 6. Մամիկոն իշխան, որդի Գրիգորի և Մամքանի, որոնց հիշատակին կանգնեցրել է մի հոյակապ խաչքար՝ Ամենափրկիչ անունով։ Գտնվում է Վեդիի Ջղին Գյոլ գյուղում։ Մամիկոնի բարձրաքանդակ արձանը ձիու վրա նստած գտնվում է պատվանդանի վրա։ Թվականն անհայտ է։—Խաղբակեանք 82։

— 7. Մամիկոն, իշխան Դսեղի. որդին էլ կոչվում է Վարդան. սրանց թվականի հիշատակության հիշված է մի խաչքարի արձանագրության մեջ.—տես Յարութիւնեան, Ներս. դպր. սաների Ա ճանապ. էջ 63. այստեղ գրված է Մամիկոնի. իսկ նույնը Լալայեան, Ազգագր. հանդ. Է, 424 կարդում է Մամիկոնեան։

ՄԱՄԻՆ, ար. հմմտ. Մամայօ անունը. մի անգամ գտնում

եմ հիշատակված սեռ. Մամինին ձևով անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Նոր-Բայազ. 31 բ)։

*ՄԱՄԼԱՔԱԹ, ար. < արաբ. مملكت mamlakat «երկիր» բառից (անշուշտ պանդխտության մեջ հայրենի երկրի հիշատակով դրված անուն)։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում, ԺԴ — ԺԵ դարից (Ջեռ. Սանաս. շար.=ՀԱ 1921, 173) և մի անգամ էլ ԺԷ դարում (Հալէպում), 1652 թ. (Ջեռ. Հալէպի, Ա. 85 բ)։ Այժմ իբրև իգ. անուն գործական է Ատրպատականի թուրքերի մոտ։

ՄԱՄԽԱԶՈՒՆ, սեռն ու թվականը անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի արձանագրության մեջ (Արցախ 233)։ Թերևս ուղղելի է Մամխաթուն:

ՄԱՄՆՈՒ, ար. ծագումն անհայտ. (արաբ. ممنوع mamnūʿ նշանակում է «արգելված», որ իբրև անձնանուն հարմար չէ։ Թերևս պետք է կարդալ Մամնուն, որով կստացվի արաբ. ممنون mamnūn «գոհ»)։ Մի անգամ հիշատակված է 1786 թ. սեռ. Մամնունին ձևով (Ջեռ. Վասպ. 262)։

†ՄԱՄՈՑ, իգ. < հյ. մամ «տատ» բառի հոգնակի սեռական հոլովից. աղջիկը երևի նման էր իր երկու տատերին և այս անունն է ստացել։ Մի անգամ գտնում եմ անթվական մի հիշատակարանում՝ Աղթամարի շրջանից (Ջեռ. Վասպ. 186)։

ՄԱՄՈՒՁ, սեռն ու ծագումն ինձ անհայտ։ Հիշատակված է ԺԳ դարից։

— 1. Մամուզ, հիշված է Շիրակավանի գերեզմանատան մի խաչքարի վրա, Մենիկի և Գէշի? հետ, 1272 թ.—Արձ. Շիրակ 10—11։

— 2. Մամուզ, հիշված է մի անգամ ևս Բագնայրի անթվական մի արձանագրության մեջ.—Շիրակ 118—9։

ՄԱՄՈՒԽ, իգ. < հյ. մամուխ «շլոր» բառից. այժմ գործածված անուն, բայց շատ անսովոր (տես Սովետ. Հայաս. 1945, յուլ. 29, էջ ա)։

†ՄԱՄՈՒԿՍԹԻ, իգ. < հյ. մամուկ «տատիկ» բառից, որի վրա ավելացել է արաբ. ستی sitī «տիկին»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԳ դարում։ Հմմտ. Մամսթի։

— Մամուկսթի, դուստր Վահրամի. իր և իրայնոց հիշատակի համար կալվածներ է նվիրել Հոռոմոսի վանքին, 1266 թ.—Շիրակ 26, Արրտ. 1870, 271։

*ՄԱՄՈՒՇ, իգ. հմմտ. Մամա: Այժմ Ատրպատականի թուրքերի մոտ կա ար. Մամոշ անունը։

— 1. Մամուշ, քույր Սիմէոնի և հորաքույր Յակոբ սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի «Կոչումն ընծայութեան» գիրքը, շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 2. Մամուշ, կին Խըլիմշահի? հիշված է 1375 թ.—Տաշեան, Ցուց. 277։

ՄԱՄՌԱԶ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1690 թ. (Ձեռ. Վասպ. 974)։

†ՄԱՄՍԹԻ, իգ. < հյ. մամ «մայր»+արաբ. ست sitī «տիկին» բառերից. սրա գգվականն էլ Մամուկսթի, որ տես վերը։ Մի անգամ ունինք՝

— Մամսթի (սեռ. Մամսթէ), կին Կողբեցի Որդեկ երեցի, որ իրենց հիշատակին նվերներ է արել Արջոյ առիճի վանքին 1289 թ.—Շիրակ 123։

†ՄԱՄՓՈՐԻԿ, սեռն անհայտ. կազմված է հյ. մամ «մայր»+փոր բառերից. հմմտ. Ղրբ. փորամնայ «ամուսնու կենդանության ժամանակ հղացված և նրա մեռնելուց հետո ծնված զավակ»։ Վերի Մամփորիկ բառն էլ կամ այս նշանակությամբ է և կամ «երախա, որի ծննդյան ժամանակ մայրն էլ մահանում է»։ Մի անգամ գտնում եմ գործածված՝

— Մամփորիկ (սեռ. Մամփորիկայ), որի անունը հիշատակված է մի խաչքարի վրա Հոռենանի, Յովհաննէսի, Խդրշահի և այլոց հետ, Ցղնայում, 1477 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ, էջ 321—2։

*ՄԱՄՔԱՆ, իգ. < մամ բառից. քան վերջավորության համար հմմտ. Պապքան, Գուլքան, Ռուզուքան: Նույնանում է Մամա անվան հետ. օր. Կիւրիկէ Գ թագավորի աղջիկը կոչվում է Մամա կամ Մամքան:

— 1. Մամքան թագուհի, կին Աբաս Ա (1089—1145) թագավորի Կիւրիկեանց. ապա եղավ կրոնավորուհի.—Վրդ. խը։

— 2. Մամքան, որի հիշատակին պատարագ է նշանակված Խծկոնից վանքի արձանագրության մեջ՝ 1216 թ. —Ազգագր. հանդ. Ա. 45, Արրտ. 1904, 990։

— 3. Մամքան, թվի Ձեչկանց Աւետիքի թոռան, այն է Մխիթարի որդի Վահրամի դուստրը. մայրն է Փառանձեմ. կալվածներ են նվիրել Բագնայրին, 1233 թ.—Շիրակ 122 ա։

— 4. Մամքան, կին Մարծպանի որդի Գրիգորի (№ 299),

*որ իր եղբայր Ասլանբէկի հետ շինեց Դսեղի Բարձրաքաշ Ս. Գրիգոր վանքը, 1241 թ.—Յարութիւնեան, Ներս. դպ. սաների ա ձնպրհ. 70։*

— 5. Մամքան. *կին Գրիգորի (№ 302)՝ եղբօր Համազասպի, որ էր եպիսկոպոս և առաջնորդ Հաղբատի։ Կալվածներ են նվիրել Հաղբատի վանքին, 1249 թ.—Մովսէսեան, Լոռիի հիւր. թգ. 79, Երզնկեանց, Հնախ. տեղագր. 25, 55։*

— 6. Մամքան, *դուստր պարոն Ասլանի. Խաչենի մեծ իշխան Հասան-Ջալալ-Դոլայի մերձավոր ազգականներից. հիշված է 1249 թ.—Արցախ 188=Արրտ. 1896, 234։*

— 7. Մամքան, *կին Զաքարէի (№ 16), որ նորոգել է Գեղարդի Ս. Աստուածածին եկեղեցին և մի կալված է նվիրել նրան, 1257 թ.—Արձ. Այրարատ 343, Արրտ. 1871, 93, Խաղբակեանք 103։*

— 8. Մամքան, *կին Մարծպանի Մամիկոնեան, որ շինեց Դսեղի Բարձրաքաշ Ս. Գրիգորի վանքը՝ 1221 թ. սրանց որդին է Գրիգոր (№ 299) և դուստրն է Խորիշահ՝ կին Բուրդ իշխանի՝ որդւոյ Վաչէ իշխանի Արագածոտն գավառի. հիշված է 1221 և 1250 թ.—Զքր. պատ. Գ. 18. Այրարատ 168—9. Շահխաթ. Բ. 101. Յարութիւնեան՝ Ներս. դպր. սաների Ա. ձնպ. 72։*

— 9. Մամքան, *կին Տիրացուի, մայր Մկրտիչ քահանայի՝ ստացողի (1223 կամ 1261 թ).—Տաշեան, Ցուց. 20—21։*

— 10. Մամքան *Թագուհի, դուստր Կիւրիկէ Գ-ի (որ կոչվել է նաև Բաղաց Թագավոր), քույր Ռուսուքանի, Մարիամի և Աբաս Բ Թագավորի Կիւրիկեանց. կին Հասան-Ջալալ-Դոլա իշխանի Խաչենի, մայր Վասակ պատրոնիկի. իր ամուսնու հետ միասին նորոգել են Գեչառուաց վանքը 1248 թ, շինել է Վաճառի եկեղեցիները 1251 թ, Գանձասարի նորաշեն եկեղեցու գավիթը։ Մեռել է 1260 թ։—Կիր. իթ.* Justi *189 ա. յիշատ.* ИАН *1909, 425. Արձ. Այրարատ 262, Սմբատեանց՝ Գեղարք. 352 (երկու Արձ). Շահխաթ. Բ. 194, 371—3, 377—8 և Արցախ 173 (Գանձասարի 1240 թվի մեծ Արձ.), 174, 175, 182, 184. հիշված է նաև 1163 թվի Արձանագրության մեջ՝ Մովսէսեան, Լոռիի թգ. 69—70։*

— 11. Մամքան, *կին Գայլաձագի. եղբայրներն են Բուսլան և Աղբերիկ. նվերներ են արել Գոշավանքին՝ 1293 թ.—Արցախ 351, Ազգագր. հանդ. Ժ. 20։*

— 12. Մամքան, *մայր մեծ սպարապետին Վահրամայ, հիշված է 1283 թ. և 1297 թ.—Ալիշ. Սիսական 113, 114. Արար. 1889, 322, 331։*

— 13. Մամքան, *դուստր Բուրդի, կին Հասան Բ իշխանի Խաչենի (Ականեցւոյ), որդւոյ Ղարա Գրիգորի և Դոփի (Շուշան) Երկայնաբազուկ. մայրն է Խորիշահ. կանգնեցրել է Ծարում նկարեն մի խաչքար (անթվական). իր ամուսին Հասանի հետ հիշված է 1276 թվի արձանագրության մեջ. մեռել է 1298 թ. գերեզմանը գտնվում է Խաթրավանքում (Դադիվանք)։*—Justi *189 ա, Ձեռ. Դաղեան, Ա. 89 ա, Շահխաթ. Բ. 360. Սմբատեանց՝ Գեղարք. 625=Սիսական 73, 74, Արցախ 205—6, 405. Կրպտ. եպս.՝ Դոփեանք 62—64։*

— 14. Մամքան, *դուստր Տարսայիճ իշխանի Օրբելեանց, քույր Ելիկումի և Ստեփաննոս եպիսկոպոսի Օրբելեանց (պատմիչն). հիշված է Նորավանքի 1294 թվի արձանագրության մեջ.—Օրբ. հ=Սիսական 205. Ձեռ. Դաղեան, Բ. 30 ա (հիշում է 1314 թ)։*

— 15. Մամքոն *տիկին. թվի կին Նաթէլի Վայոց ձորեցւոյ, հիշված 1334 թ.—Թորոս աղբ. Բ. 375։*

— 16. Մամքան, *կին Սարգսի, եղբոր Մարտիրոս աբեղայի, որ օրինակեց Շարակնոցը՝ Հաղբատում, 1437 թ.*—Manus. brit. mus. *97 ա, Նոտարք 113։*

— 17. Մամքան, *ազգական Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1457 թ.—Ձեռ. Թաւր. 103 բ։*

*ՄԱՄՔՈՍ, տր. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված՝*

— Մամքոս, *մի խաչքար է կանգնեցրել Ղարա-Ղալա գյուղի մատուռում, 1286 թ. այժմ փոխադրված է Նոր-Բայազետի Ջառ գյուղը.—Սմբատեանց՝ Գեղարք. 292, Ազգագր. հանդ. Ի, 54 (արձանագիրն ասում է. «Ես Մամքոս». ուստի վերջածայնը կարող է լինել* ս *հոդը)։*

**ՄԱՅԱ, իգ. այժմ էլ գործածական է Ատրպատականի թուրքերի մոտ. ծագումն ինձ անհայտ (չեմ կարծում որ պրս.* مایه māya *«դրամագլուխ, մակարդ, մերան» բառից լինի)։ Մի անգամ հիշատակված է Երևանում, ԺԹ դարում.—Սմբատեանց Գեղարքունիք 258։*

*ՄԱՅԷՆ, ար. ծագումն ինձ անհայտ.*

— Մայեն վանքից «միւս Արճոյ». հնազանդութեան թուղթ է տվել Աբրահամ կաթուղիկոսին «607 թ».—Ուխտ. Բ. լէ, Գիրք թղ. խ։

***ՄԱՅԻԼ**, ար. < արաբ. مايل māil «սիրահարված, հիացած» բառից։ Հնագույն հիշատակությունը 1578 թվից է (Արձ. Սիսական 72=Սմբատեանց՝ Գեղարքունիք 610)։—Սրանից է Մայիլեան ազգանունը (Կովկաս)։

***ՄԱՅԻԼԽԱՆ**, ար. < նույն Մայիլ անունից+խան։ Մի անգամ հիշատակված է 1786 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 450)։

ΜΑΙΚΤΗΣ արշակունի, Արտաւանի ցեղից. Բիւզանդիոնում ամուսնացավ Լեոն Արշակունու մի աղջկա հետ և սրանց որդին է Կոստանդին, որ Ադրիանապոլսում ամուսնացավ Մեծն Կոստանդիանոսի ցեղից համարված մի այրի կնոջ հետ, որից ունեցավ մի որդի, որ է Վասիլ Ա կայսր (867—886)։—Չամչ. Բ. 690, Տէր Սահակեան՝ Հայ կայսերք, Ա. 339—40։ (Չամչ. Μαΐκτις անունը դարձնում է հյ. Մեղտիս, ուրիշները Հմայեակ: Իսկ Justi 188 ա մեկնում է իրան. māh+wixta? բառերից, իբր թե «լուսնափայլ»)։

**ՄԱՅՄԱՆԻԿ**, ար. (< արաբ. ميمون maymūn «օրհնեալ» բառից)։ Հիշատակված է միայն՝

— Մայմանիկ, հայր Շապուհի (Ժ դար).—սեռ. Մայմանկին՝ Արծր. Դ. գ։

†**ՄԱՅՐԱՆՈՅՇ**, իգ. < հյ. մայր+անոյշ բառերից, իբր թե «մոր անուշ աղջիկը»։ Նորակերտ անուն, որ բավական էլ տարածված է։

†**ՄԱՅՐԱՆՈՒՆ**, իգ. < հյ. մայր+անուն բառերից (այսպես են կոչել աղջկան, որովհետև զավակներին ծնողների անունը դնել սովորություն չէ մեր մեջ)։ Մի անգամ գտնում եմ հիշված ԺԴ դարում։

— Մայրանուն, կին Գազանի (նախ քան 1420 թ).—Տաշեան, Ցուց. 666։

†**ՄԱՅՐԱՊԵՏ**, իգ. < հյ. մայր+պետ բառերից, ինչպես կա ար. Հայրապետ: Հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գտնվում է 1311 թվին գրված մի Աւետարանում (Ջեռ. Թաւր. 71 ա)։ Իսկ Մէրապետ ձևով կա 1635 թ. (Bodleian 107)։

†**ՄԱՅՐԱՑԵԱԼ**, իգ. <մայրանալ «մայր դառնալ» բայից. մի անգամ հիշատակված է ԺԲ դարում։

— Մայրացեալ *անն, Պօղոս-Բիլիսայի Ջուխտակ վանքում մի խորան է կառուցել 1207 թ.—Արձ. Արցախ 362։*

† **ՄԱՅՐԽԱԹՈՒՆ**, *իգ. < հյ.* մայր+խաթուն *բառերից, ինչպես կա և* Մայրտիկին։ *Հիշատակված է ԺԴ դարում։*

— 1. Մայրխաթուն *Խարբերդցի, նվերներ է արել Կապոսի Ս. Լուսաւորիչ վանքին, 1295 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 35։*

— 2. *Մի անգամ ևս հիշատակված է Գուշավանքի անթվական մի արձանագրության մեջ՝* Մայրախաթուն *ձևով (ա հոդակապով).—Ազգագր. հանդ. Ժ. 27։*

† **ՄԱՅՐՏԱՏԻԿ**, *իգ. < հյ.* մայր+տատիկ *բառերից. անշուշտ տատի մոր անունով դրված։ Մի անգամ գտնում եմ* Մերտատիկ *ձևով՝ 1631 թ.* (Bodleian *139*)։

† **ՄԱՅՐՏԻԿԻՆ**, *իգ. < հյ.* մայր+տիկին *բառերից։ Հիշատակված է ԺԲ—ԺԴ դարերում. համեմ.* Մայրխաթուն:

— 1. Մայրտիկին, *որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել որդին՝ Սէր, Խաչենի Առաջաձոր գյուղում, 1237 թ.—Արցախ 187։*

— 2. Մայրտիկին, *կին Տիրատուրի և մայր Երեմիաս քահանայի, որ Կարնոյ Կան գյուղում գրել տվեց մի չքնաղ Աւետարան, 1283 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 644.*

— 3. Մայրտիկին, *հանգուցյալ ազգականներից է Յոհաննէս քահանայի, որ օրինակեց մի Աւետարան 1298 թ. (տեղն անհայտ).—Թորոս աղբ. Բ. 335։*

— 4. Մայրտիկին, *կին Պարոնշահի, հոգևոր հոր Ցոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ։ Այս թվին Մայրտիկինը արդեն մեռած էր։—Ձեռ. Բեռլինի, 4 ա։*

† **ՄԱՅՐՓԱՇԱ**, *իգ. < հյ.* մայր+*թրք.* փաշա *բառերից. մի անգամ հիշատակված եմ գտնում ժղ.* Մէրփաշա *ձևով, 1664 թ.* (Bodleian *252*)։

**ՄԱՆ**, *ար. հիշում է Դաւ. քեր. 105 բցռ.* ի Մանայ *ձևով և սրանից էլ դնում է* Մանանոյշ *անունը։ Ըստ իս* Մանանոյշ *ծագում է արագարանությամբ* *Մանան—անոյշ *ձևից և նշանակում է «Մանանի աղջիկը»։ Ըստ այսմ չկա* Ման *անուն։*

† **ՄԱՆԱ**, *իգ. հիշված է 1506 և 1587 թվերին (Տաշեան, Ցուց. 55, 277)։ Տես* Մանայ:

***ՄԱՆԱԿ**, *ար. փաղաքշական ձևն է* Մանանիհր, Մանաւազ *և նման անունների։ Այսպես նաև* Մանէն։—Մանակ *կազմված է*

նյ. ակ գգվական մասնիկով, իսկ Մանէն պարսկական են մասնիկով (Հիւբշ. 51)։

— Մանակ, իշխան Բասենի. մին է այն վեց նախարարներից, որոնք ընկճեցին Բակուր բդեշխի ապստամբությունը Խոսրով Բ-ի («330—339 թ») դեմ։—Բուզ. Գ. թ։

*ՄԱՆԱՃԻՀՐ, ար. < իրան. Mana-čiϑra-ձևից, որ նշանակում է «Մանայի սերունդ կամ ցեղ». համմ. զնդ. Manuščiϑra= պհլ. Manuščihr, Manūčiϑr=փարսի Manūčehr=պրս. Minōčihr հատուկ անունը (Հիւբշ. 50)։ Այս անունով հնից հայտնի են մեզ Պարսից 7-րդ թագավորը՝ Թոռն Ֆէրիդունի (Շահն. 1, 164) և ուրիշներ։ Համմ. նաև Mānūščīhar մեծ քահանա փարսի, հեղինակ Բունդեհեշի (881), Minūčihr քերականագետ († 1279), Manučar վրացի աթաբէգ Ախալցխայի (1475—87)։ Նույն է նաև Մանուչէ՝ եղբայր Փատլունի, էմիր Անիի † 1110 (Justi 191 բ)։ Փաղաքշական ձևն է Mānuš (Justi 191 բ), ինչպես ունինք՝ Manuš իրանական մի հին նշանավոր վիպական հերոս, Manūšān թագավոր Քիրմանի (Justi 191 բ)։ Նոր պարսկերենում կեղծաբար ստուգաբանվում է manū «դրախտ»+čahra «դեմք» բառերից՝ իբր «դրախտադեմ» (տես ԳԴ 300 ա)։ Բառիս նորագույն ձևն է Մանուչար, որից Մանուչարեան ազգանունը (տես առանձին)։

— 1. Մանաճիհր, նահապետ Ռշտունեաց. Տրդատի չորս զորավարներից մեկն էր՝ Շապուհի դեմ պատերազմի ժամանակ։ Խոսրով Բ-ի («330—339») օրով եղավ Հայաստանի հարավային բանակի զորավար. նվաճեց Աղձնիքի ապստամբությունը։ Նզովքի ենթարկվելով Մծբնայ Ս. Յակոբ հայրապետից, չարամահ եղավ։—Խոր. Բ. ձե. Գ. ղ, է. Ասող. Բ. ա. Վրք. և վկ. Բ. 105—6.—Մանաճիհրի՝ Բուզ. Գ. ժ. Պատմ. ձծբ. 55, 56, 61. Յայսմ. դեկտ. 1, 15.—Մանաճիհր՝ Վրդ. ի (հրատ. էմինի՝ Մանաճիհր).—սեռ. Մանաճիհրի՝ Խոր. Գ. է, ժե. Ասող. Բ. ա.—Մանաճիհի՝ Պատմ. ձծբ. 55, 61.—Մանաճիհրայ՝ Խոր. Գ. է.—Մանաճիրհի՝ Յայսմ. դեկտ. 15.—Մանաճիհիրի՝ Վրք. և վկ. Բ. 106. Առաք. պատմ. 328. Նօտարք 137.—Մաճաճրի՝ Վրդ. ի (հրատ. էմինի՝ Մանաճիհրի).—Մանաճեղի՝ Սուտ-Շապհ. 29.—Մանաճի! Սուտ-Շապհ. 37.—Մանաճերհայ՝ Բուզ. Գ. ժ.—բց. Մանաճիրհէ՝ Յայսմ. դեկտ. 1։

— 2. Մանաճիհր Ամատունի, կողմնապահ Վասակ Սիւնու.—Զամչ. Բ. 56 (չունին Եղիշէ և Փարպ.)։

— 3. Մանաճիհր Ռշտունի, անդամ Շահապիվանի ժողովի «444 թ». Ատոմ Գնունու հետ իր զորքով կանչվեց Պարսկա-

տան՝ Ցաղկերտի կողմից. բայց չլսելով նրա հրապուրանքը՝ հետ քաշվեց գնաց Ուշտունիք. Պարսիկները հասան և բոլորին նահատակեցին. նրանց մարմինը թաղված է Ոչխարանից վանքում.— Ցայսմ. օգոստ. 19. Վկ. ար. 73, 81. Այրարատ 519, Հայապ. էջ 160։

— 4. Մանճիհր ռամիկ տես Գրիգոր № 16։

— 5. Մանճիհր, վանական Ցուսէփու վանից, անդամ Խաչէնի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի «946—968 թ» կաթուղիկոսը.—Անան. ապստ. 134 բ։

— 6. Մանճիհր վարդապետ Կանչ ավանի (Կիլիկիա). Ներսէս Պալենցի հետ միացած քարոզում էր ունիթոռական դավանանքը, 1336 թ.—Զմչ. Գ. 332. Ազգապ. 1853 (Լատինականում աղավաղ ձևով գրված է Mahznichar, որ Ճամչեան այսպես է հասկանում. իսկ Սիսուան 194 բ կարդում է Մխիթար. որովհետև Մխիթար կաթուղիկոսի անունն էլ այս ձևով է գրված)։

† ՄԱՆԱՅ, իգ. կրճատված է Մանանայ ձևից, որ տես վարը. Սրանից են՝

— 1. Մանայ (սեռ. Մանային), կին Արէքսի, որ կառուցել է Սեբաստիոյ Դուրա գյուղի եկեղեցին, 1280 թ.—Արձ. անտիպ, որ հաղորդեց ինձ † Կ. Գաբիկեան, 1912 ապրիլ 14։

— 2. Մանայ խաթուն, դուստր Բեհնամի, քույր մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ.— Թորոս աղբ. Ա. 330։

— 3. Մանայ հիշված է նաև 1566 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, էջ 249)։

ՄԱՆԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ. իբր անձնանուն հիշված է Թր. քեր. 16, Անան. քեր. 140, 142. սրանից է Մանանոյշ, որ տես վարը. կա նաև Մանանեան ազգանունը, բայց հիշված է շատ ուշ՝ 1819 թ. (Պէրպէրեան, Պատմ. հայոց 104)։

— 1. Մանան հազարապետ, հիշված է Տեկորի (Շիրակ 132) արձանագրության մեջ, որի լավագույն օրինակն ունի Շողակաթ 171։—Գ. Տէր-Մկրտչեան, Անան. շիր. 16 կարծում է թե սա է Վեհնամ պարսիկը, որ Վահանի ապստամբության ժամանակ փախավ։ Ըստ իս այսպիսի ենթադրություն անելու կարիք չկա. որովհետև Մանան ընթերցվածը ստույգ է նախ հին քերականների վկայությամբ և երկրորդ հաջորդ երկու օրինակներով։

— 2. Մանան, զավակ Սարգսի և քեռորդի Ջանվիլի, որ Մուղնիում ստացավ մի Գանձարան, 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։

— 3. Մանան ոմն ստացող՝ 1640 թ.—Տաշեան, Ցուց. 426։

† ՄԱՆԱՆ, իգ. կրճատված է Մանանայ ձևից, որ տես վարը։

— 1. Մանան, քույր Թորոս քահանայի, որ Ամիթում օրինակեց Աւետարանը՝ 1373 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 618։

— 2. Մանան (իբրև իգ. անձնանուն) հիշված է նաև 1502 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 375)։

† ՄԱՆԱՆԱՅ, իգ. < հյ. մանանայ «գազպէն» բառից, որ թեև օտար փոխառություն է, բայց արդեն հայացած էր։ Այս մաքուր ձևի տակ հիշված է նախ ԺԴ դարում, ավելի ուշ ԺԷ դարում։ Սրա կրճատ ձևերն են Մաննայ, Մանան, Մանայ, Մանա, որոնք տես վերը։ Տարբեր ծագում ունի Մանան ար։

— 1. Մանանա, կին Յովհաննէս քահանայի և մայր Սերովբէ քահանայի, որ կազմեց այն Աստուածաշունչը, որ օրինակեց Ստեփաննոս քահանան Սեբաստիայում, 1313 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1923, 71)։

— 2. Մանանայ իշխանուհի, կին հայոց Լիպարիտ զորավարի, որ սպանվեց Սաի կամուրջի վրա, Թուրքերի դեմ պատերազմում, 1370 թ.—Թլկր. 54։

— 3. Մանանայ, կին Գորք երեցի (№ 32)՝ որդւոյ Մարկոս քահանայի. հիշված են 1439 թվից մի-երկու տասնյակ տարի հետո.—Ձեռ. Հալէպի, Ա. 83 բ։

— Մանանայ ձևով հիշված կա նաև 1602 թ. (Թորոս աղբ. Ա. 184), մի ուրիշը 1633 թ. (Труды вост. Комм. ИМАО, հտ. II, 3, էջ 56). որոշիչ հոդով կա Մանանէն՝ անհայտ թվականով, բայց 1473 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 468), Մաննայ ձևով՝ Ձեռ. Վենետ. Ա. 658 (անհայտ թվականով)։

*ՄԱՆԱՆԴ, իգ. < պրս. مانند mānand «նման» բառից. լսել եմ որ բարբառներում նշանակում է «գեղեցիկ». իբր անձնանուն գործածված է ԺԶ—ԺԷ դարերում. հնագույնն է 1554 թ. (Ազգ. մատ. ՀԸ, էջ 2 Մենէնտ խաթուն ձևով), ապա Մանանդ 1593 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 194), 1654 թ. (Թորոս աղբ. Ա. 220) և անթվական (անդ Բ. 366)։ Սրանից է Մանանդեան ազգանունը (Ախալցխա)։

† ՄԱՆԱՆԵԽ, իգ. < հյ. մանանեխ բառից. բայց որովհետև այս իմաստով մի բառ անհարմար է իբրև կնոջ անուն գործա-

ծել, ուստի կարծում եմ որ աղավաղված է մանանայ ձևից: Հիշատակված է մի անգամ 1652 թ? (Ջեռ. Վենետ. Ա. 762) և մի անգամ էլ առանց թվականի (Bodleian 148)։

**ՄԱՆԱՆՈՅՇ**, իգ. < Մանան անունից+անոյշ, իբր «Մանանի աղջիկը». բուն ձևն է ուրեմն *Մանանանոյշ, որ արագաբանությամբ դարձել է այսպես: Իբրև իգ. անձնանվան օրինակ հիշված է Թր. քեր. 14, Դաւ. քեր. 105, Անան. քեր. 140։ Գտնում եմ նաև Էֆիմ. 448 (հրատ. 1796 թ) իգական անունների ցանկում։

***ՄԱՆԱՍԷ**, ար. < եբր. מנשה Mənaššē անվան հուն. Μανασσῆ տառադարձությունից: Եբրայական անունը համեմատվում է հին բաբել. Mannašu և փյունիկ. Mnsi անունների հետ (Gesenius 438)։ Ըստ Ս. Գրքի նշանակում է «մոռացուցիչ». հմմտ. «Եւ կոչեաց Յովսէփ զանուն անդրանկանն Մանասէ, զի ասէ թէ մոռացոյց ինձ Աստուած զամենայն վիշտս իմ և զամենայն վիշտս հօր իմոյ» (Ծն. խա. 51). Եփրեմ Թարգմանի փաքթամ և Մանասէն՝ մոռացումն (Մոլութ. 241 ա)։ Այս անունով հայտնի է Հրէից մեջ Յովսէփի գեղեցկի անդրանիկ որդին, որից սերվեց առանձին տոհմ: Բայց ավելի նշանավոր է Յուդայի թագավոր Մանասէ, որ Եզեկիայի որդին էր, իշխեց Ն. Ք. 694—639, և կռապաշտությունը վերականգնեցրեց Երուսաղէմում. իբրև պատիժ գերի քշվեց Բաբելոն (ըստ արձանագրությունների Menasē, Minsē), որտեղ դարձի գալով՝ նորից իր աթոռը դարձավ (Դ Թագ. իա. 1—18, Բ. Մնաց. լգ. 1—20)։ Յայտնի է Մանասէի զղջման գեղեցիկ աղոթքը (Տէր Ամենակալ) ընտիր հայերեն թարգմանությամբ։—Այժմ գործածական է մեր մեջ Մանաս ձևով (հին յիշատ. 1609 թ. Bodleian 110), որից էլ Մանասեան ազգանունը (Գանձակ), ճիշտ ինչպես Մարգարէ անունից ունինք Մարգար և Մարգարեան։—Տես և Մանասեր։

— 1. Մանասէ եպս. Թէոդոսուպոլսի (Կարնոյ) Հայոց Մեծաց (Μανάσσης ἐπίσκοπος Θεοδοσιουπόλεως Μεγάλης Ἀρμενίας), անդամ Քաղկեդոնի ժողովի (451).—Գալճեան, 14։

— 2. Մանասէ եպիսկոպոս Բասենի, անդամ Դուինի ժողովի «607 թ».—Ուխտ. Բ. լ, լգ, լե. Գիրք Թղ. իգ, լը, լթ. Օրբ. իե.—սեռ. Մանասէի՝ Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ. իգ, խ.—բց. ի Մանասէէ՝ Ուխտ. Բ. լբ. Գիրք Թղ. լթ.—Այրարատ 43։

— 3. Մանասէ, դրան երեց Վաչագան Գ թագավորի Աղվանից (Զ դար).—Կղկնտ. Ա. ժթ, իա։ Սրա հետ նույն է՝

— 4. Մանասէ *եպիսկոպոս Կապաղակայ, Վաչագան Գ-ի օրով, անդամ Աղուէնի ժողովի 608 թ.—Կղկնտ. Ա. իգ. Կանոն. էջ 192։*

— 5. Մանասէ *փորագրիչ, քանդակել է Աւագտիկնոջ (№ 1) արձանագրութիւնը 1207 թ.—Շիրակ 122 ա։*

— 6. *Շատ ուշ է Մանասէ 1733 թ. (Ձեռ. Վասպ. 1040)։*

— 7. Մանասէ *նաև իգական անուն է, որի հնագույն գործածությունն է թվում Աշտարակի Կարմրաւոր եկեղեցու շըրջապատ արձանագրության մեջ Մանսա կամ Մանաս. «Ես Դաւիթ մեղաւոր (ի) գիւղաքաղաքէս յՇրեցունեաց Գրիգոր քահանայի և Մանսա» (այսպես Այրարատ 186, իսկ Շահխաթ Բ. 87* Մանաս):—Մանսա *պիտի լինի նույն Գրիգոր քահանայի կինը և Դաւիթի մայրը։*

— *Շատ ավելի ուշ են* Մանասի *խանում, 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 517),* Մանասի *1666 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 37) և* Մանասէ *կոյս, որ Սեբաստիայում եղավ ուսուցիչ Մխիթար աբբայի՝ 1680 ական թվերին (Զամչ. Գ. 762)։*

***ՄԱՆԱՍԷՐ**, *ար. նախորդ* Մանասէ *անունն է, որ ժողովրդական ստուգաբանությամբ* սէր *բառի հետ կապվելով՝ ստացել է ավելորդ մի* ր։ *Սրանից և* Մանասէրեան *ազգանունը։ Հմմտ. նաև* Հայկասէր։ *Հնագույն հիշատակությունն է* Մանասէր *1697 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 266) և այլ ոմն 1808 թ. (Ձեռ. Թաւր. 25 ա)։*

**ՄԱՆԱՍՊ**, *ար. ծագումն անհայտ։*

— Մանասպ *Խորխոռունի, ուղեկից եղավ Յուսիկ կաթողիկոսին՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ «341 թ».—Բուզ. Գ. ժբ։*

***ՄԱՆԱՒԱԶ**, *ար. < իրան.* Manavaz *անունից. հմմտ.* Μονόβαζος *Ադիաբէնի թագավորը (փաղաքշական ձևն է* Βαζαῖος), *սրա որդին էլ է* Μονόβαζος *և մի ուրիշ ազգականը նույն անունով՝ 69 թ.* (Justi *189 բ)։ Ծագում է* Mana-*(տես* Մանաճիհր)+vaz *ձևից. հմմտ.* Ἀρτάβαζος, Μεγάβαζος, Τιρίβαζος, Φαρνάβαζος *(Հիւբշ. 50—51)։—ՀԱ 1937, 277 մեկնվում է իբր «մեկ բազկով օժտված ինչպես Մանը». այսպես և* Տիրիբազ *«մեկ բազկով օժտված ինչպես Տիր աստվածը»։*

— 1. Մանաւազ, *որդի Հայկայ, իրենից է սերվել Մանաւազեան տոհմը.—Խոր. Ա. ժբ. Ուխտ. Ա. ժգ. Սամ. անեց. 42. Մխն. համղ. 3.—սեռ.* Մանաւազայ՝ *Խոր. Ա. ժբ. Ուխտ. Ա. ժգ. Սամ.*

անեց. 42. Մին. համզ. 3.—Մանուազեան՝ Սամ. անեց. 49.—գրված է Մանազա՝ ըստ Ալիշան, Հայտ. յառաջ.քան զլին. 159 (բայց տեղը չէ.նշանակած)։

— 2. Մանուազ, իշխան Կողբացոց. ուղեկից եղավ Յուսիկ կաթողիկոսին, երբ սա գնում էր Կեսարիա. օծում ստանալու համար «341 թ».—Բուզ. Գ. ժբ։—Նույն պետք է համարել՝

— 3. Մանուազ իշխան Ձորոց աշխարհին, ուղեկից եղավ Մեծն Ներսէսին, Կեսարիա օծման գնալու ժամանակ «353 թ»։—Մեսր. եր. 25։

ՄԱՆԱԽԱՅ. կա միայն՝

— Մանուայ. զավակ պարոն Կոստանդի, որ Եւդոկիայում, Անդրէաս երեցին գրել տվեց մի Աւետարան. 1463 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ. 1925, 133)։—Երևի պետք է հասկանալ Մանանայ դուստր Կոստանդի։

*ՄԱՆԱԻՇԷ, իգ. < պրս. منفشه manafše «մանիշակ» բառից. մի անգամ հիշատակված եմ գտնում 1721 թ.՝ Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 220։ Ավելին տես Մանիշակ:

ՄԱՆԱՓ (կամ Մանաֆա), իգ. հիշված է 1506—7 թ. (Տաշեան, Ցուց. 55, Կամենից 161)։

ՄԱՆԳԱԲԱԻՆ, ար. ոչ թե անուն, այլ մի.վերադիր է, ինչպես ցույց է տալիս № 204 Կարապետ Մանկաբօն (Վան 1451 թ). գուցե այս վերջինիս հետ նույն է այս «Մանգաբաւն»-ն էլ, որ հիշատակված է իբրև մի անձ, որ Աղթամարում, Գրիգոր քահանային գրել է տվել մի Աւետարան և նվիրել Ոստանի եկեղեցուն, 1452 թ. (Ձեռ. Վասպ. 413)։ Բայց միևնույն բանը ավելի ընդարձակ և մանրամասն կերպով վերագրվում է նաև Սուլթան-Մելէքին։

ՄԱՆԳԵՆ, ար. ծագումն անհայտ։ Մի անգամ հիշատակված է՝

— Մանգեն տէր Ամատունեաց, ժամանակակից Բաբկէն կաթողիկոսի «490—516 թ», որի հետ ստորագրում է «Թուղթ հայոց ի Պարսս, առ ուղղափառս» գրված թղթին։—Գիրք թղ. ը։

*ՄԱՆԳՆՈՍ, ար. < Μάγνης կամ Μάγνος անունից, որ է լտ. Magnes, Magnus. բոլորն էլ արական անուն են. հայտնի են օր. Մագնես՝ հին հույն երգիծաբան բանաստեղծ, Մանգնոս եպիսկոպոս՝ անդամ Անտիոքի ժողովի, Մանգնոս եպիսկոպոս, եղբայր Անդրէաս առմարապետի (Սոկր. Բ. գ.)։ Ծագում են լտ. magnus «մեծ» բառից. համմտ. նույն բառի բաղդատականը և

գերադրականը major, maximus «մեծագոյն», որոնք նույնպես ար. անձնանուններ են։

— 1. Մանգնոս, որդի (կամ եղբայր) Վարդան Մամիկոնեանի և հայր Վահան Մամիկոնեանի (որ է Համայեակ)։ Վարդանի նահատակութիւնից հետո (451 թ), երկիրը 10 տարի անիշխան մնաց և ապա, Պերոզի օրով սպարապետ եղավ Մանգնոս, որ այդ պաշտոնը վարեց 20 տարի։ Նրան էլ հաջորդեց Վահան Մամիկոնեանը։ (Վերի հաշվով լինում է 481 թ. որ Վահան Մամիկոնեանի ապստամբութեան թվականն է)։—Մանգնոս՝ Ասող. Բ. բ. Մխ. անեց. գ. Կիր. 21. Սամ. անեց. 71.—Մանգիոս՝ Մին. համդ. 27.—Մագնոս՝ Մխ. այրիվ. 19.—Մագնես՝ Դաւ. անյ. 102 (Ի ժամանակս մարզպանութեան և սպարապետութեան Վահանայ որդւոյ Մագնեսի որդւոյ Վարդանայ, կամ որպէս ասեն եղբօր).— սեռ. Մագնոսի՝ Պտմռ. բրձր. 31.—Մանգնոսի՝ Միխ. աս. իթ (=իը). Պտմռ. բրձր. 30.—Մանկնոսի՝ Յայսմ. նոյ. 18.—Մարգրոսի՝ ZAPh 1, 207.—Չամչ. Բ. 459 և Ազգապ. 445 համարում են նույն ընդ Վահան Մամիկոնեան։ Այրարատ 561 դնում է կառավարիչ Յունահայոց 461—480 թ. տես և Բ. վ. Կիւլէսէրեան՝ Եղիշէ 380։

— 2. Մանկնոս եպիսկոպոս Տամբուրի կամ Համշէնի. անիծեց Վրաց իշխան Վաշդեանին կամ Վաշտէին, որ նահատակեց նրան և ապա ինքն էլ հրայրեաց եղավ Տամբուրի առաջ, շուրջ 627/8 թ։—Տաշեան, Հայ բնակչ. Սև ծովէն մինչև Կարին, էջ 23 (տես նաև Մամիկ. տպ. Վենետ. 1832, էջ 56—58)։

*ՄԱՆԳՐԱՏ*, սեռն ու ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված է 1581 թ. (Թորոս աղբ. Բ. 430)։

*ՄԱՆԴԷՇ*, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է 1666 թ. (Թորգոմեան, Ստամ. պատմ. Բ. 560)։

*ՄԱՆԴԻՆ*, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է 1701 թ. (Սմբատեանց՝ Սաղիան 258)։ Սրանից է Մանդինեան ազգանունը (Տփղիս)։

**ՄԱՆԴՈՒ*, իգ. < իրան. Mandōē փաղաքշական ձևից. համա. Ibn-Mandūye Սպահանցի բժիշկ և գրող, Μανδάνη դուստր Աժդահակի և մայր Կիւրոսի։ Բուն իմաստն է «սև յամբար ծաղիկը», որ է պրս. ماند mand (ըստ Justi 190 ա)։

— Մանդու, գեղեցիկ հարճ Արգամ Մուրացանի և ապա Արտաշէս Բ (88—129) թագավորի.—Խոր. Բ. ծա։

*ՄԱՆԴՐՈՒՏ*, իգ. ծագումն անստույգ. մի անգամ հիշատակված է 1634 թ. (Թորոս աղբ. Բ. 431)։

ՄԱՆԴՕ, ար. կրճատված անուն է. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է Զեռ. Վասպ. 610 անթվական մի հիշատակարանում։ (Այժմ Օրդուպատի շրջանում Մնդօ անունը գործածական է իբրև Մարտիրոս անվան կրճատ ձևը)։

ՄԱՆԷ, իգ. ծագումն անհայտ. սեռական Մանեայ ձևից հանելով կազմված է նաև ուղ. Մանիա, որից էլ գգվական Մանիկ կամ Մաննիկ, ինչպես գործածական է այժմ (առաջինը Արևելահայոց, երկրորդը Արևմտահայոց մեջ)։ Իբրև կոչ. հիշում է Մագ. քեր. 246 ո՜ Մանի։ Կա և Մանիա կին Սամարացի, մայր Աթանաս պատրիարքի (Յայսմ. տես Տաշեան, Ցուց. 84)։

— Մանէ կույս. Հռիփսիմեան կույսերից մեկն էր. ճգնում էր Դարանաղեաց գավառի մի այրում, որ իր անունով կոչվեց Մանեայ այր։ Ընկերուհին էր Նունէի.—ուղ. Մանեայ անուն՝ Խոր. Բ. ղա. Դրնդ. 516.—Մանի՝ Ցհ. կթղ. ծե. Երզն. լբ 131, 139. Հայսմ. 105. Յայսմ. հոկտ. 5, 6, 29.—սեռ. Մանեայ՝ Խոր. պտմ. հռիփ. 300. Խոր. Բ. ղա. Ասող. Բ. ա. Գ. ե. Շնորհ. վիպ. 714. Ցհ. կթղ. ծե. Տար. լա. Ճշ. 501. Յայսմ. հոկտ. 29, նոյ. 18. Ցկ. կր. 13.—Ագաթ. Լիակ. վրք. սրբ. Գ. 130—140։

*ՄԱՆԷՃ, ար. իրանական անուն է, որ ավանդված է հուն. Μοναίσης, լատ. Monaeses ձևերով. հմմտ. Μοναίσης ազնվական պարթև, որ ապաստանեց Անտոնիոսի մոտ (Ն. Ք. 37 թ), Moneses պարթև,. հաղթեց Կորբուլոնին (61 թ), Μοννήσης թագավոր Խարակենացւոց։ Սրա իգականն է Manīže դուստր Աֆրասիաբի և կին Բէժանի (Հիւբշ. 51, Justi 190)։ Իբրև անձնանվան օրինակ հիշվում է Թր. քեր. 14, Անան. քեր. 140։ Սրա ժողովրդական (գորդայից) ձևն է Մանայճ՝ ըստ Թր. քեր. 14, Անան. քեր. 140, Խոր. քեր. 170, Սիւն. քեր. 206 (վերջինս համարում է բարդ բառ)։

— 1. Մանէճ իշխան Գնունեաց, մեկն էր Մեծն Ներսէսի ուղեկիցներից, երբ սա գնում էր Կեսարիա՝ օծում ստանալու համար «353 թ».—Մեսր. եր. 25։

— 2. Մանէճ Ապահունի. ժամանակակից Արտաշէս Դ թագավորի. պատգամավոր գնաց Վռամի մոտ՝ խնդրելու համար Ս. Սահակի վերադարձը «432 թ». մասնակցեց Արտաշատի ժողովին «449 թ». մեկն է այն նախարարներից, որոնք Յազկերտի դուռը կանչվեցին և հավատքը առ երեսս ուրանալով՝ ազատ արձակվեցին։ Բռնեց Վասակի կողմը՝ ընդդեմ ուխտապահներին։—Խոր. Գ. կե. Եղիշ. 33, 71. Փարպ. իգ, իե, լգ։

*ՄԱՆԷՆ, ար. իրանյան փաղաքշական ձևն է Մանանիկ, Մանաւազ և նման անունների. նույնի հայկական ձևն է Մանակ, որ տես (Հիւբշ. 51)։

— Մանէն Ամատունի, սեպուհ, կողմնակից Վասակի՝ ընդդեմ ուխտապահների.—Եղիշ. 71։

ՄԱՆԷՍ, ար. ծագումն անհայտ. կա միայն՝

— Մանէս, որդին է Սսոյ Թորոս կաթողիկոսի, որ պաշտօնակալել է «1548—53 թ».—Սիսուան 536, Ազգապ. 2259։

ՄԱՆԹԻ (կամ Մանթին), ար. ծագումն անհայտ։ Իբրև վկա հիշվում է Բանաքեռում, մի այգու վաճառման առթիվ, 1306 թ.—Բանաս. 1903, 32, Այրարատ 298 (վերջինս Մնթի ձևով), Շահխաթ. Բ. 159։

ՄԱՆԻ, ար. ,ծագումն անհայտ. հիշված է 1724 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 35 ա)։

Մանիա տես Մանէ։

ՄԱՆԻԹ, ծագումն անհայտ. իբրև անձնանվան օրինակ հիշված է Թր. քեր. 14, Անան. քեր. 140։

*ՄԱՆԻԺԱՒ, իգ. < պրս. Manīže անունից, որի մասին տես Մանէժ անվան տակ։ Ըստ այսմ հայ բառի վերջին աւ վանկը պետք է կարդալ ոչ թե ավ, այլ օ։ Հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Նոր-Բայազ. 31 ա։

ՄԱՆԻԿ, իբրև իգ. տես Մանէ անվան տակ։ Բայց այլ է Մանիկ, ար. որ Մանուկ անվան գգվականն եմ կարծում։ Մի անգամ հիշատակված է՝

— Մանիկ, տանուտեր Նորագեղի 1465 թ.—Այրարատ 320, Նոտարք 221։

†ՄԱՆԻՇԱԿ, իգ. (որ և Մանուշակ) < հյ. մանիշակ ծաղկանունից։ Ըստ Յայսմ. սեպտ. 11 կա հույն սրբուհի Մանուշակ. բայց սա թարգմանություն է, ինչպես որ ինքն էլ ասում է. «Որ ի հոռոմ լեզու անիա կոչի»։ Նույն անվան օտար համազորներն են՝ պրս. Benefšeh սարկուհի Մուսթանսիր խալիֆայի (1226—42), նշանավոր իր գեղեցկությամբ և ողորմածությամբ (Justi 67 ա), քրդ. Benefšxatun, ֆրանս. Violette են։ Այս անունը մեր մեջ առաջին անգամ երևում է Ժ դարում և արական է. երկրորդ անգամ հիշատակվում է ԺԵ դարում, արդեն իբրև իգ. իսկ ԺԶ—ԺԷ դարերում սովորական է և այժմ էլ գործածական է միշտ իբր իգ։ Հմմտ. նաև Մանուշի և Մանուշխան։

— 1. Հայր Մանուշակ, վանական Խաչենայ վանից. անգամ

*Թաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթուղիկոսը.—Անան. պատ. 134 բ։*

— 2. Մանուշակ պիէ *(թթր. «տիկին»), որի հիշատակին մի խաչքար կա Թէոդոսիայի Ս. Հրեշտակապետ եկեղեցում, 1478 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 350։*

— 3. Մանուշակ *Խնուսցի. քահանայի որդու կինն էր. փաշան նրա անձնական գեղեցկությունից հրապուրված՝ խլեց ամուսնու ձեռքից և 6 տարի պահեց հետը։ Կինը մնաց ծածուկ քրիստոնյա։ Մի հարմար առթիվ ժամադրվելով իր ամուսնու հետ՝ փախավ Վաղարշապատ։ Այստեղ մի քանի հայ երեցներ նրա բնակած տան դռները ջարդելով՝ գիշերանց բռնաբարեցին նրան։ Իր ամոթանքը ծածկելու համար՝ Մանուշակը գնաց Բայազիդ. փաշայի որդին բռնեց նրան, առաջարկեց մահմեդական դառնալ և իր կինը լինել։ Մանուշակը մերժեց։ Բռնաբարեցին նրան և չարաչար տանջելուց հետո՝ քարկոծելով սպանեցին 1794 թ.—Այս նահատակի պատմությունը պակասում է մեր Նոր վկայքում. քաղել եմ ընդարձակ մի աղբյուրից, որ սակայն մոռացել եմ հիշատակել։*

— Մանիշակ *անվան ուշ ժամանակի հիշատակություններն են 1506 թ. (Տաշեան, Ցուց. 55), 1585 թ. (Թորոս աղբ. Բ. 368),* Մանուշակ *1593 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 194),* Մանիշակ *1596 թ. (Ձեռ. Վասպ. 243—4), 1622 թ. (անդ 622), 1638 թ. (անդ 890),* Մանուշակ *1643 թ. (ՀԱ 1937, 575), 1657 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 547), 1684 թ. (Ձեռ. Վասպ. 966), 1689 թ. (Թորոս աղբ. Բ. 373), 1690 թ. (Ձեռ. Վասպ. 974) և* Մանոշակ *ձևով 1698 թ. (անդ 987)։ Կրճատ ձևով են* Մանուշ *1608 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 630), 1620 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167),* Մանօշ *1585 թ.* (Rapport Belgique *94)։ Վերջապես կան* Մանօշա *1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 551) և* Մանաւշէ, *որ տես առանձին։*

***ՄԱՆԿԱՅՈՍ** կամ **ՄԱՆԿԷՈՍ**, ար. ծագումն անհայտ։ Զորավարն էր Տիգրան Մեծի. իրեն էր հանձնված Տիգրանակերտի պաշտպանությունը. հաղթվեց Լուկուլլոսից (Ն. Ք. 69 թ)։ Տառադարձված է* Μαγκαῖος *(ըստ Ապպիանու).*—Justi *191 ա, Գրգշ. Քնն. պատմ. Բ. 143, 146. Լէօ Ա 407, Մանանդ. «Տիգրան Բ» 101, 104—5, 132—3. տես և ՀԱ 1911, 521, ուր այս Մանկէոսը համարվում է Մամիկոնեան ցեղի նախնիներից մեկը։*

†***ՄԱՆԿԱՍԱՐ**, ար. < հյ.* Մանուկ + *պրս. ~* sar *«գլուխ» բառերից, իբր թե «մանուկների գլուխը, ուսուցիչ կամ վարժապետ».*

*բառիս երկրորդ մասի համար հմմտ.* կախարդասար *և* ազանդասար. *իսկ ամբողջին իբրև հոմանիշ՝* Մանկաւագ *և* Մանկտաւագ: *Հիշատակված է ԺԴ դարից սկսած և այժմ էլ գործածական է. գրվում է նաև* Մանգասար. *Ղարաբաղում գգվական ձևն է համարվում* Մանգի *(որ հիշատակված է Գիտ. աշխ. XIII, էջ 339, Աբրահամ Կրետացու հիշատակարանում)։ Նույնը տես նաև* Մանկիկ: *Սրանից է* Մանկասարեան,-եանց *ազգանունը, (որ հիշված է արդեն 1444 թ. Ձեռ. Վասպ. 389)։*

— 1. Մանկասար, *որի կինն է Ասլան խաթուն. հիշված են Հառոմոսի վանքի նվիրատուների հետ, 1347 թ.—Յովսէփեան՝ Մի էջ հայ տրուեստի, 37, 39։*

— 2. Մանկասար *դպիր, որդի Յովհաննէս քահանայի. ապա դարձավ սարկավագ և կոչվեց Մարկոս. հայրը գնեց նրա համար մի հին Աւետարան՝ 1439 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 83։*

— 3. Մանկասար, *հայր Յովհաննէս քահանայի, որ Արճէշում օրինակեց մի Աւետարան՝ Յովհաննէս կրոնավորի համար, 1445 թ. (Նոտարք 147) և մի ճաշոց էլ Մխիթար աբեղայի համար՝ 1457 թ. (Նոտարք 186). հիշված է նաև 1462 թ. (Ձեռ. Վասպ. 439) և 1463 թ. (Նոտարք 217)։ Այս բոլորը յետ մահու հիշատակություններ են, որովհետև Մանկասարը իր կնոջ Փաշայի հետ արդէն մեռած էր 1450 թ. (Ձեռ. Թաւր. 66 բ)։*

— 4. Մանկասար *անունը հիշված է մի անգամ էլ 1620 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167)։*

*†ՄԱՆԿԱՒԱԳ, ար. < հյ.* մանուկ *և* աւագ *բառերից. տես վերը* Մանկասար. *հիշատակված է մի անգամ ԺԵ դարում։*

— Մանկաւագ *Երզնկացի, որդի Ամիրդովլաթի և եղբայր Մեսրոպի, որ Երզնկայի Կայփոսի վանքում օրինակեց մի Աւետարան, 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 328։*

*†ՄԱՆԿԻԿ, ար. < հյ.* մանկիկ *բառից, որ* մանուկ *բառի փաղաքշականն է. գրվում է նաև* Մանգիկ. *կրճատ ձևն է* Մանկի, *որ հիշված է չորս անգամ 1764, 1782, 1795 և 1805 թվերի տապանաքարերի վրա (Ցոսեան, Հայք ի Զմ. Ա. 97, Բ. 87, 89)։ Համարվում է նաև* Մանկասար *անվան կրճատումը։*

— 1. Մանկիկ *քորեպիսկոպոս Ծղկաց. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը։*

— 2. Մանկիկ *երեց (սեռ.* Մանկկան), *որի որդին Գարեգին երեց նվիրեց Բագնայրին կալվածներ և ձեռագրեր 1262*

թ.—Արձ. Շիրակ 119, Ցովսէփեան՝ Մի էջ հայ 18, Նիւթեր և ուս. Ա. 17։

†ՄԱՆԿԼԱՒ, ար. < կրճատված հյ. մանկլաւիկ «արքունի սպասավոր» բառից, որ փոխառյալ է հուն. μαγκλαβίτης ձևից։ Մի անգամ միայն հիշատակված ունինք՝

— 1. Մանգլաւ, մեծ պապն է Ցովհաննէս արքեպիսկոպոսի, որ Բարթուղիմէոս առաքելոյ վանից առաջնորդն էր և ստացավ մի Ցայսմաւուրք 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41 ա։ (Հիշված լինելով 1438 թ. իբրև մեծ պապ, ուստի պետք է դնել ԺԴ դարի վերջի կամ ԺԴ դարի սկզբի անձ)։

— 2. Նույն անունը հայտնի է Մանգլաւտ ձևով. այս անունով հայտնի է Զափրանիկ Մոկացի իշխանը, որ վերածվել է ապա Մանկլիկ ճգնավորի (տես Զափրանիկ անվան տակ)։—Մանգլաւտ ձևը ավելի լավ է համապատասխանում հուն. μαγκλαβίτης բառի վերջավանկին, իսկ Մանկլիկ ձևն էլ մանկլաւիկ բառին։

†ՄԱՆԿՈՒԿ, ար. <հյ. մանուկ բառի գգվականն է, որ լինում է նաև մանկիկ. ճիշտ ինչպես գառն բառից ունինք Գառնիկ և գառնուկ: Մի անգամ հիշված է՝

— Մանկուկ, միաբան Հաւուցթառ վանքի, ուր հնում է իր տապանաքարը՝ 1246 կամ 1248 թվից.—Այրարատ 356, Արրտ. 1871, էջ 330։

— Այս անվան կրճատ ձևն է Մանկու, որ հիշված է 1749 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 450), ինչպես որ ունինք Մանկի, որ Մանկիկ անվան կրճատ ձևն է։ (Թեև կա թթր. Մանգո խան անունը, բայց շատ ավելի հին լինելով՝ կարելի չէ կցել սրան)։

ՄԱՆԿՈՒՄ, ար. ծագումն ինձ անհայտ. (արդյոք Նախորդ Մանկու անվան գգվական ձևից է թրք. ṁ ստացական հոդով!). մի անգամ հիշված է 1683 թ.—Ձեռ. Մաղն. 25։

†ՄԱՆԿՏԱՒԱԳ, ար. <հյ. մանկտի+աւագ բառերից, իբրև «մանուկների աւագ, ուսուցիչ կամ վարժապետ». եղակի ձևով է Մանկաւագ, որ տես վերը. համմտ. նաև Մանկաստր։ Հիշատակված է մի անգամ ԺԲ դարում և երկու անգամ ԺԸ դարում։

— 1. Մանկտաւագ Մշեցի, որդի Խամարդաւլայի, 100 դահեկան է նվիրել Բագնայրի վանքին, 1242 թ.—Արձ. Շիրակ 122 (գրված է Մսնգտավաղ կամ Մանգտավաղ, որ պետք է ուղղել Մանկտաւագ):

— 2. Մանկտաւագ, որդի Մարտիրոսի, տանուտեր կամ ռէս, Մշի գյուղում գնեց մի Աւետարան և նվիրեց իր նո ընծա որդի

Ղազար քահանային՝ 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։—Այս Մանկտաւագի գերդաստանը մանրամասն հիշված է Ձեռ. Վենետ. Ա. 582, բայց ազգականական կապերը բավական խառնակ են. դասավորում եմ հետևյալ ձևով. Մանկտաւագի հայրն է Մարտիրոս, մայրը Գոհար, կինն է Ղփչախ (որի մայրն է Ղամաթ).—Մանկտաւագի եղբայրն է Թումայ, քույրերը՝ Աղութ, Թամամ, Շնորհւոր.—այս Թումայի որդին է Ստեփանոս և աղջիկը՝ Հայոց.—Ստեփանոսի կինն է Դուխթար և իրենց զավակներն են՝ Սարգիս, Սաղաղայ, Դանէլ, Շատարև, Սահակ, երկու Մարտիրոս, Յովանէս, Մկրտիչ, Աղբրաց, Աւագտիկին, Խոնձայ (վերջին երեքը աղջիկ, բոլորը միասին 12).—Մանկտաւագի որդիքն են Ղազար (նորընծա քահանա) և Յակոբ, աղջիկները Ջամալ և Մարամ, վաղամեռիկ որդիքը՝ Բերամ, երկու Մարտիրոս, Թումայ և Մուրադ (բոլորը միասին 9).—Մանկտաւագի հորեղբայրը և Մարտիրոսի եղբայրն է Յովանէս, որի որդիքն են՝ Դանէլ, Մուսէս, Ներսէս։ Այս երեքի զավակներն են՝ Գողումէտ, Մելքիսեթ, Յովանէս, Յակոբ, Յովսէփ, Տիրատուր, Շատարև, Գոհար, Թաջէ, Խանդում, Վարդխաթուն։ Կան և 4 անձ (Մամխաթուն, Վարդան, Նազիկ, Շահապ), որոնց կապը հայտնի չէ։

— 3. Մանկտեւագ, որդի տանուտեր Աստուածատուրի, որ Ուշտունեաց Բերդաձորի վանքում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443։

*ՄԱՆՈՎԷ, ար. Հեբր. מנוח Mānōxa անվան հուն. Μανωὲ տառադարձությունից։ Այս անունով հայտնի է Սամփսոնի հայրը (Դատ. ԺԳ)։ Բուն իմաստն է «հանգիստ» (Gesenius 436)։

— Մանուէ իշխան հրեայ, հայր Սամսոնի և նախնին Ամատունեաց, որոնք Ահմատանից (արդի Համադան) գաղթեցին Հայաստան՝ Արտաշէս Բ-ի (88—129 թ) ժամանակ.—բց. ի Մանուեայ՝ Խոր. Բ. ծէ (2 օր. ի Մանովեայ).—Մանուեանք՝ ըստ Պարսից (որ է Ամատունիք)՝ Խոր. Բ. ծէ։

* ՄԱՆՈՒԷԼ. ար. ծագումը տես Էմմանուէլ, որից կրճատվել է, ճիշտ ինչպես Եղիազարից Ղազար։ Գրված է նաև Մանուեղ, Մանուէղ, Մանուել, Մանիլ (ինչպես կա Ձեռ. Վենետ. Ա. 390 անհայտ թվականով), Մանուլ ձևերով։ Հիշատակված է Դ դարից սկսած և այժմ էլ գործածական է։ Արտասանվում է Պոլսում Մանոյէլ (ռմկ. Մանիէլ), Կովկասում Մանվել։ Իբրև օրինակ անձնանվան հիշված է Թր. քեր. 9, 14, 16, Անան. քեր. 142, Սիւն. քեր. 204։

— 1. Մանուէլ *Մամիկոնեան, որդի Արտաշէնի. գերի էր Պարսկաստանում. Քուշաններին հաղթելով, ազատություն ստացավ, դարձավ Հայաստան և Բատ Սահառունու ձեռքից խլեց սպարապետությունը, որ Մամիկոնեանների ցեղական իրավունքն էր։ Այս պատճառով թշնամացավ Վարազդատ թագավորի հետ, պատերազմի դուրս եկավ նրա դեմ, հաղթեց և քշեց Հունաց երկիրը «378 թ»։ Այնուհետև Հայաստանի կառավարությունը իր ձեռքն առնելով՝ թագավորեցրեց Արշակ Գ-ին «379 թ»։ Մեռել է «384 թ»։—Բուզ. Ե. լէ—խդ. Մեսր. եր. 67, 68, 71, 119—123. Կիր. 13, 14.—սեռ.* Մանուէլի՝ *Բուզ. Ե. լէ, լը, խ—խգ. Զ. ա. Մեսր. եր. 122—3.—բց.* ի Մանուէլէ՝ *Բուզ. Ե. լը—խա, խգ։—Վրաց աղբ. Ա. 75 (գրում է Մանոել Մամկուէն)։*

— 2. Մանուէլ *Ամատունի, որդի Պարգև Ամատունու, որ սպանվեց այն պատերազմում, որ մղում էին Շաւարշ և Պարգև իշխանները՝ ազատելու համար գերի ընկած Խոսրով Գ թագավորին «389 թ».—Խոր. Գ. ծ։*

— 3. Մանուէլ, *ընկեր Ղևոնդեան նահատակների «454 թ».—Յայսմ. հրոտից 25, ըստ Տաշեան, Ցուց. 565 ա։*

— 4. Մանուէլ *եպիսկոպոս, առաջնորդ Արտազի. հաջորդեց Յակոբի (Զ դարի կեսից առաջ).—Զքր. եպս. 281, Արրտ. 1868 դեկտ. 103 բ։*

— 5. Մանու*եղ Ամատունեաց տէր, շինել է Գողավանքը, Զ դարի առաջին կեսից.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Գ. 14 բ, 25—27 համարում է Մանգեն Ամատունու որդին և Սահակ Մանուէլեանի հայրը։ Այս վերջինիս էլ որդին է Կոտիտը։ Որով ստացվում է Մանգեն—Մանուէլ—Սահակ—Կոտիտ կանոնավոր շարքը։*

— 6. Մանու*եղ իշխան Սպանդունի, անդամ Դուինի երկրորդ եկեղեցական ժողովի «554 թ».—Գիրք թղ. ժէ։*

— 7. Մանուէլ *Մամիկոնեան, որդի Վասակի և թոռ Վարդի՝ եղբոր Վահան Մամիկոնեանի. սպանվեց Պարսից Սուրէն մարզպանի ձեռքով. սրա վրա Մանուէլի եղբայրը՝ Վարդան Բ Մամիկոնեան սպանեց Սուրէնին և ապստամբեց Պարսից դեմ «571 թ».—Զամչ. Բ. 284 (հայ պատմիչները չգիտեն այս անունը. Զամչեանը դնում է քաղելով հույն պատմիչ Թէոփանէս Բուզանդացուց)։—Տէր Սահակեան, Հայ Կայսերք, Ա. 29, 289։*

— 8. Մանուէլ *տէր Ապահունեաց, ժամանակցեց Սմբատ*

Վրկան մարզպանի պատերազմին Քուշանների դեմ «608 թ».— Սեբ. իզ։

— 9. Մանուէլ Մամիկոնեան, հայր Դավիկ Մամիկոնեանի, որին Պարսից Խոսրով Բ թագավորը (590—628) պաշտոնի կանչեց Պարսկաստան.—Սեբ. ժթ։

— 10. Մանուէլ Բագրատունի, հայր Սմբատ Բագրատունւոյ, որ ապստամբեց Մորիկ (†602) կայսեր դեմ.—սեռ. Մանուէլի՝ Սեբ. ժը։

— 11. Մանուէլ հայկազն, զորավար Հերակլ կայսեր (610—641 թ) Եգիպտոսում.— Միխ. աս. ժը։

— 12. Մանուէլ մագիստրոս, աներ Սմբատ ասպետի՝ որդւոյ Վարազտիրոցի. պաշտոնյա էր հունաց կայսեր պալատում. սպանվեց խռովության ժամանակ «648 թ?».—Սեբ. խե։

— 13. Մանուէլ աբեղա Յովհաննավանքի. գնաց որոնելու Վահան Գողթնացու գերեզմանը (743 թ).—Տաշեան, Ցուց. 576։

— 14. Մանուէլ Մամիկոնեան, զորավար հունաց արևելյան բանակի՝ Լևոն, Միքայել և Թեոփիլոս կայսրների ժամանակ։ Նշանավոր եղավ իր քաջությամբ։ Երբ հունաց բանակի զորավար Լևոն հայկազնը կայսերական գահ բարձրացավ Լևոն Ե անունով, իր փոխարեն այս Մանուէլին զորավար կարգեց (813 թ)։ Թեոփիլոս կայսրը նրան կարգեց արևելյան բանակի սպարապետ։ Գրավեց շատ տեղեր։ Մի անգամ այնպես հաղթեց արաբներին, որ 25,000 գերի բռնեց նրանցից։ Մի ուրիշ անգամ Թեոփիլոս կայսրը պարսիկների և Մանուէլի հայկական բանակի հետ միասին արաբների դեմ պատերազմի դուրս եկավ, բայց հաղթվեց և քիչ էր մնում որ ինքն էլ գերի ընկներ։ Մանուէլը օգնության վազեց և կայսեր ձիու սանձից քաշելով՝ բռնի ազատեց նրան։ Կայսրը նրան իր ազատարարն էր կոչում։ Նախանձորդները չարախոսեցին նրան կայսեր մոտ։ Բռնության զոհ չգնալու համար, Մանուէլը 150 հոգով հունական բանակից փախավ, գնաց Կամախ՝ արաբների մոտ և նրանց ծառայության մտավ։ Թեոփիլոս գաղտնի պատգամավորությամբ կարողացավ Մանուէլի սիրտը շահել և սա հրաժեշտ առնելով ամիրապետի Վաթիք-Բիլլահ որդուց, նորից հունաց ծառայության մտավ։ Այս անգամ գործում էր հունաց կայսրության Եվրոպական գավառներում։ Տապալեց Յովհաննէս պատրիարքին և պատկերամարտության վերջ տվեց։ Թեոփիլոս կայսրը մեռած ժամանակ իր որդուն՝ երեք-տարեկան Միքայելին կտակով կայսր հրատարակեց և նրա խնամակալու-

*Թյունը հանձնեց Թեոդորա կայսրուհուն, Վարդին և Մանուէլին (երեքն էլ Մամիկոնեան)։ Մանուէլը հրապարակ ժողովեց զորաբանակն ու ժողովուրդը՝ հավատարմության երդում պահանջելու համար նորընտիր կայսեր։ Բոլորը գոչեցին. «Կեցցէ Մանուէլ կայսրը»։—«Ոչ, ասաց Մանուէլ, ձեր տերը Միքայէլն է. և քանի նա փոքրիկ է՝ իր մայրը Թեոդորա. ես միայն նրանց պաշտպանն եմ»։ Եվ մերժեց ընդունել ժողովուրդի պահանջը։ Ծերացած հասակում փախճանվեց խաղաղությամբ Միքայէլ Գ (842—867 թ) կայսեր ժամանակ և թաղվեց իր շինած Մանիլկերտ վանքում։—Միխ. աս. բ տպ. 366—7* **Մանիլ** *ձեռք (ա տպ. չունի). Վրդ. խա. Չամչ. Բ. 437—441, Ազգապ. 929։—Տէր Սահակեան, Հայ կայսրեք, Ա. 170, Բ. 357—8, 363, 366, 370, 374։*

— 15. **Մանուէլ** *պրոտոսպաթար Լևոն Զ կայսեր օրով. Փոքր-Հայքից էր (Թ դար).*—Justi *59 բ։*

— 16. **Մանուէլ,** *նշանավոր ճարտարապետ. շինել է Աղթամարի հռչակավոր տաճարը «926 թ».—Արծր. Դ. ը. Հաւաք. 23—24 (ըստ Հաւաքարանի Մանուէլը կրոնավոր էր).—Թորամանեան, Հայկ. ճրտրպտ. 75 բ, 76 բ, 77 բ, 96 բ։ Այստեղ բազմահմուտ հեղինակը խոսում է նախ այն հոյակապ շինարարական գործի մասին, որով Մանուէլը լցրել է նախ ծովը՝ պատրաստելու համար Աղթամարի քարափը։ Այսօր էլ այդ աշխատանքը ներկայանում է մեր աչքին իբրև վիթխարի գործ։ Երկրորդ խոսում է Ռումինիայի Արճէշ քաղաքի մասին, որ Արճէշի հայոց մի գաղութ է եղել ԺԲ դարից։ Նշանավոր է այս քաղաքի հայոց եկեղեցին, որ այժմ Ռումիններին է պատկանում, և նշանավոր է ամբողջ Ռումինիայում իբրև հնագույն և սքանչելի կառուցվածք։ Այս եկեղեցու ճարտարապետն է համարվում ըստ Ռումինների՝* **Մանոլ** *անուն մի հույն, որի անունով կա և մի աղբյուր եկեղեցու մոտ։ Թորամանեանը գտնում է որ այդ Մանոլը մեր Մանուէլն է։*

— 17. **Մանուէլ** *Դերջանցի, եղբայր Սամուէլի, կոչվում էին Կոմսաձագ. Հունաց Վասիլ Բ կայսեր Մակեդոնիա գաղթեցրած իշխաններից էին (988 թ)։ Ապստամբեցին կայսեր դեմ, փախան Բուլգարիա և իշխանության գլուխ անցան (Չամչ. Բ. 873)։ Այս դեպքը պատմում է նախ Ասող. Գ. իը, որ սակայն երկու եղբայրներից միայն երեցի անունն է տալիս (Սամուէլ), իսկ փոքրի անունը չի հիշում։ Չամչեանը կոչում է վերջինիս Մանուէլ և իբրև աղբյուր դնում է միայն Ասողիկ։ Տէր Սահակեան,*

Հայ կայսերք, Բ. 277—8 ասում է որ չորս ազնվական եղբայրներ (առանց հայ կոչելու) բաժանեցին իրենց մէջ Բուլղարիան։ Սրանք էին Դաւիթ, Մովսէս. Ահարոն, Սամուէլ, որոնցից առաջին երեքը մեռնելով Բուլգարիայի թագաւորութիւնը մնաց Սամուէլին։ Ազգապ. 1141 նոյն է Զամչեանի հետ։

— 18. Մանուէլ եպիսկոպոս, գրել է «Վասն տօնի Ս. Խաչին». հայտնի չէ որ ժամանակից.—Զեռ. Դաշեան, Ա. 87 բ (ուր հիշված է Գէորգ Գ. «1067—72» կաթուղիկոսից հետո)։

— 19. Մանուէլ բժիշկ Ականց անապատի (ԺԲ դար).—Զարբ. Թրգմ. 472։

— 20. Մանուէլ ջանցլեր (աեենադպիր հայոց թագաւորության) 1207 թ.—Սիսուան 485 բ։

— 21. Մանուէլ եպիսկոպոս, առաջնորդ Պարվաւանի Ս. Աստուածածին վանքի, 1209 թ.—Կնիք հաւ. յոջ. 111։

— 22. Մանուէլ քահանա, իր մեռած եղբոր՝ Խաչատուրի (№ 40) հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Թանատի վանքից Արգաղ տանող ճանապարհին, 1277 թ.—Սիսական 124, Արրտ. 1889, 107, Խաղբակեանք 42։

— 23. Մանուէլ քահանա փիլիսոփա (բժիշկ), գրել տվեց մի Աւետարան Դրազարկի վանքում, Հեթում Բ-ի ժամանակ, «1289—1305 թ».—Արցախ 153։

— 24. Մանուէլ վարդապետ ոմն, 1305 թ.?—Տաշեան, Ցուց. էջ 771։

— 25. Մանուէլ, դեսպան կամ գործակալ Սմբատ Գ թագավորի. հիշված է նախ 1297—8 թ (Սիսուան 369 բ). Վենետկեցի վաճառականներից գնեց 9 տախտ կամ փերթ ոսկեդիպակ՝ Եգիպտոսի սուլթանին ընծա ուղարկելու համար, 1306 թ.—Ալիշան, Հայ-Վենետ. 55, 154։

— 26. Մանուէլ պարոն, հայր Զաքարիա եպիսկոպոսի, որ նորոգեց Արտազի Թադէոս առաքյալի վանքը, 1329 թ.—ընդարձակ տես Զաքարիա № 27.—Արձ. Շահխաթ. Բ. 350, ուր Մանուէլը հիշված է սեռ. Մանվելայ ձեով։

— 27. Մանուէլ քահանա, որդի Մարտիրոս գրչի, որ Բաւուռ միայնակյացի համար գրեց մի Աւետարան, 1330 թ.—Զեռ. Վենետ. Ա. 770։

— 28. Մանուէլ գրիչ Երզնկացի. օրինակել է «Ոսկեբերանի և Եփրեմի Մեկնութիւն չորեքտասան թղթոցն Պօղոսի», որի վերջում կա «Աղիւսակ կարգագրութեան բանակաց զօրաց Հա-

յոց ըստ ազգի և տոհմի Երանեանց», 1334 թ.—Ձեռ. Կարին. էջ 162։

— 29. Մանուէլ *սարկաւագ. գրիչ. Ուղագու անապատում օրինակեց Դաւիթ Անյաղթի գործերը, Մեսրոպ վարդապետի համար, 1335 թ.*—Bodleian 229։

— 30. Մանուէլ, *միաբան Թիւրքթի վանից. առաջնորդ Գրիգոր վարդապետի (№ 453) խնդրանոք օրինակեց Շարականը, 1335 թ.—Թորոս աղբ. Բ. 450։*

— 31. Մանուէլ *քահանա, հայր Սարգիս ավագերեցի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցու Աղախ (այժմ Աղով) քաղաքի, 1341 թ.—Շահազիզ, Հին Երևանը, էջ 72, Տաշեան, Ցուց. 885։*

— 32. Մանուէլ *քահանա Մուսուլցի. գրիչ. օրինակել է Քարոզգիրքը՝ 1352 թ.—Ձեռ. Կարին. 222։*

— 33. Մանուէլ *երեց, գրիչ. օրինակել է Մաշտոցը, 1364 թ.—Ձեռ. Բեռլինի, 47 ա։*

— 34. Մանուէլ *եպիսկոպոս Այրարատեան նահանգի և Բջնոյ. Անիի Յովհաննէս եպիսկոպոսին գրել տվեց մի Աստուածաշունչ 1368—75 թ. և հազիվ վերջացրած էր, ծաղկումը դեռ չավարտած մեռավ։—Տաշեան, Ցուց. 259, Հացունի՝ Կարևոր խնդ. 260 (համարում է արքեպիսկոպոս)։—Ինարկե նույն է* Մանուէլ *առաջնորդ Բջնոյ, Լէնկթիմուրի արշավանքի ժամանակ (Շահազիզ, Հին Երևանը, էջ 73, 74)։*

— 35. Մանուէլ *ասպետ Յովհաննէսեան, որդի Յովհաննէս ասպետի, ծնեալ ի Գենուա, ազգավ հայ, թարգման, բնակվում էր Նէապոլ. Սսի Յովհաննէս արքեպիսկոպոսի հետ, Հայոց Մարիամ թագուհու կողմից պատգամավոր ուղարկվեց Նէապոլ՝ խընդրելու Եվրոպացոց օգնությունը և ձեռք ձգելու համար Կիլիկիոյ գահը «1371 թ»։ Անցավ Կիպրոս և նշանակվեց օգնական Մարիամ խնամակալ թագուհու «1373 թ»։—Սիսուան 560 ա, Հայ-Վենետ. 135, Ցուցիկք Բ. 513, Բասմաջեան՝ «Լևոն Ե», էջ 34, Ազգագ. 1929, 1935։—Սրա հետ նույն պիտի լինի՝*

— 36. Մանուէլ, *«սերունդ ի Վերին Հայոց և գիտէր քաջ խօսել զհայ և զնէապօլսական լեզուս»։ Գրիգոր պապի և Նէապոլի Յովհաննա թագուհու կողմից սուրհանդակ եկավ Կիպրոսի թագավորի մոտ, որպեսզի դիմի Կիլիկիա և Կոստանդին թագավորի կնոջ՝ որ Նէապոլսեցի էր, ուղարկի իր հայրենիքը, ժառանգելու համար արքայական գահը։ Հալէպում բանտարկված էր արաբների կողմից և հավատքը ուրացել էր. Լևոն Զ երբ դերի*

*էր տարվում, խնդրեց և ստացավ Մանուէլի ազատությունը (1375 թ)։—Դարդել 76—80, 150։*

— 37. Մանուէլ, *նախապես քահանա էր եղել, ապա ուրացել էր հավատքը և մահմեդական էր դարձել։ Հայտարարելով իրեն ասպետ և պատվիրակ Լևոն Զ-ի կողմից, նա էր գալիս Եվրոպայում և խաբեությամբ նվերներ էր հավաքում, իբր թե Լևոն Զ թագավորի ազատության համար։ Սպանիոյ Ավիլա քաղաքում պատահեց նրան Յովհան Դարդել քահանան և Կաստիլիայի թագավորի առաջ խայտառակեց նրան։ Սակայն ինքն էլ մի ժամանակ պահեց նրան իր մոտ՝ Լևոնի ազատության համար աշխատեցնելու նպատակով (1381 թ).—Դարդել 177—180, Բասմաջ. «Լևոն Ե» 71, Ազգայ. 1965։*

— 38. Մանուէլ *վարդապետ. Յովհան Երզնկացու հետ Երուսաղէմում գրեց քառահատոր ընդարձակ մի ճառընտիր 1417—9 թ.—Զարբ. Թրգմ. 728, Տաթև տարեց. 1925, 292։*

— 39. Մանուէլ *քահանա, Ամարասում, Քթիսոյ վանքում, Մելքիսեդ արքայի համար օրինակեց Աւետարանը՝ 1428 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 245, 253։—Անշուշտ սրա հետ նույն է՝*

— 40. Տէր Մանուէլ, *գրիչ. օրինակեց Աւետարանը «Աղուանից երկրում, Ամարասի մոտ Շուշու գյուղում», 1428 թ.—Սմբատեանց՝ Սաղիան 244։*

— 41. Մանուէլ *աբեղա, եղբայր Աւագ եպիսկոպոսի, որին հանձնեց Դուրսուն իշխանը (1411—1430 թ) Դատիվանքի խնամատարությունը։—Շահխաթ. Բ. 359, Արցախ 208։*

— 42. Մանուէլ *աբեղա. գրիչ. օրինակել է Գանձարանը՝ Տէր Տիրատուրի համար, 1431 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 45 ա։*

— 43. Մանուէլ *երեց Խուշքաշէնի, հիշվում է իբրև վկա 1438 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 44 ա։*

— 44. Մանուէլ *քահանա, սպասավոր Ս. Յովհաննէս վանքի՝ Արարատեան գաւառի Սերկևլի գյուղի, 1441 թ.—հրատ. Ադաթ. 1909 թ. յավ. էջ ԽԹ։*

— 45. Մանուէլ *վարդապետ, տաղասաց. գրել է «Մինչ ի յէէն» գանձ մեռելի. հնագույն ձեռագիրը՝ որի մեջ կա սույն տաղը, 1455 թվից է (Տաշեան, Ցուց. 424 բ)։ Սրանից ուշ է նույնը՝ Մանուէլ եպիսկոպոսի անունով՝ 1497 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 150 ա)։*

— 46. Մանուէլ, *միաբան Ցիպնայ-Դաստակ վանքի, 1450 թ.— Ձեռ. Վասպ. 460, Նոտարք 166։*

— 47. Մանուէլ *քահանա, ծաղկող. նկարազարդեց այն Աւետարանը, որ Վարդան գրակալը գրել էր տվել Արճէշում՝ Յովհաննէս քահանային, 1450 թ.—Ջեռ. Թաւր. 65։*

— 48. Մանուէլ *եպիսկոպոս, Աւագ գրչի ձեռքով 1337 թվին գրված մի հին Երգարան է գնել 1452 թ.—Ջեռ. Բեռլինի, 26 ա։*

— 49. Մանուէլ *քահանա, որդի Ամիրբէկի, ստացող. Գեղարքունեաց Կած գյուղում, Հերմոնի վանքում, Արծկեցի Յովհաննէս կրոնավորին գրել տվեց մի Ճաշոց՝ 1465 թ. — Ջեռ. Սեան. 18—19։ Մառ չի դնում թվականը, բայց ըստ Սմբատեանց՝ Երնջակ 216, որ տալիս է ամբողջ հիշատակարանը, գրված է 1465 թ։ Նույնը հաստատում է նաև Գեղարքունի 403։—Սիսական 523։*

— 50. Մանուէլ *գրիչ. Երուսաղէմում օրինակեց Վարդան վրդ. Մարաթացու Աղօթագիրքը՝ 1466 թ. — Տաթև տարեց. 1925, 292։*

— 51. Մանուէլ *(արք)եպիսկոպոս, որդի պարոն Աւագի և թոռն պարոն Աղիզբէգի. մայրն է Խոնձայ. Եղվարդի առաջնորդն էր. իր շինարարությամբ զարդարեց Եղվարդը՝ 1464 թ (Այրարատ 197—8)։ Մի այգի և մի ջաղացք է նվիրել Եղվարդի եկեղեցուն, ինչպես հայտնում է մի արձանագրության մեջ, ուր կա նաև մի խաչքար՝ իր, իր հոր Աւագի և իր մոր՝ Խոնձի անունով՝ 1471 թ. (տես վերը հտ Բ, էջ 523, ուր հիշված անթվական խաչքարը սրանց է պատկանում և 1471 թվից պետք է դնել).— Շահխաթ. Բ. 126, Բանաս. 1903, 30։*

— 52. Մանուէլ *երեց, որդի Տիրացու քահանայի, աշակերտ պատկերահան Սամուէլ վարդապետի, գրիչ. Երզնկա քաղաքում, «Սեբաստաբէգ դրան» Ս. Աստուածածին եկեղեցում գրեց մի Աւետարան՝ Ուռիկ գյուղացի Յովհաննէս քահանայի համար, 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 420։*

— 53. Մանուէլ, *որդի Մանուկի՝ հորեղբոր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 11 ա։*

— 54. Մանուէլ, *առաջնորդ անապատին Ուրծայ, 1491 թ.— Այրարատ 443, Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ* ԽԲ:

— 55. Մանուէլ, *սարկավագ Խուռնավիլի վանուց. սրա ձեռքով Շահմելիքը նվիրեց վանքին մի կաթսա, 1493 թ.—Թորոս աղբ. Ա. 217։*

— 56. Մանուէլ *քահանա, որդի Պետրոս քահանայի, գրիչ.*

Շահապունեաց ձորի Կուքի գյուղում, Ըռուզբեկի խնդրանոք օրինակեց Գանձարանը 1478 թ, մի Մաշտոց 1493 թ. և մի Աւետարան՝ Ջանղուրբանի հրամանով 1495 թ.—Սմբատեանց, Երընջակ 135, 142, 195 և 316 (Մեծ Ցուցակը՝ էջ 6), Ձեռ. Դաշեան, Ա. 39 բ, Ձեռ. Բեռլինի 47 բ։

— 57. Մանուէլ եպիսկոպոս Այրարատեան կողմանց, հիշված 1491 թ. (Այրարատ 346)։ Նույն է «Տէր Մանուէլն յարևելեան և հայրապետ Խորվիրապեանն», որ Պետրոս եպիսկոպոսի, Աւետիք վարդապետ Արճիշեցու և Աստուածատուր Տիւրիկցի երեցի հետ գնացել էին Երուսաղէմ, ուր վերջինս նահատակվեց 1496 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 207 և 146։

— 58. Մանուէլ կրոնաւոր, միաբան Սանահնի վանքի, 1497 թ.—ՀԱ 1887, 56 բ։

— 59. Մանուէլ Բջնեցի Աղիբէկենց, գանձասաց. մր դարից.—Յովսէփեան՝ Մխիթ. այրիվ. էջ 5 բ։

— 60. Մանուէլ գրիչ. օրինակել է «Հաւաքածոյ փիլիսոփայական գրոց», ԺԵ—ԺԶ դար.—Ձեռ. Թաւր. 52—53։

— 61. Մանուէլ տաղասաց. (գրված է Մաքին Մանօլ). ունի տաղ «Վասն գինւոյ և գինեխում մարդկան». ձեռագիրը ԺԶ—ԺԷ դարից.—Տաշեան, Ցուց. 795։

† **ՄԱՆՈՒԿ**, աշ. < հյ. մանուկ բառից. Պոլսում համարում են Մանուէլ անվան փաղաքշականը, բայց ճիշտ չէ, որովհետև ունենք նաև Մանկիկ կամ Մանկուկ։ Ուրիշներ համարում են Սեբաստիայի Քառասուն մանուկների հիշատակին կոչված այսպես։ Գործածական է եղել սկսած Ը դարից և մինչև այժմ էլ գործածվում է։ Սրանից է Մանուկեան ազգանունը։

— 1. Մանուկ, ազնվական աղուան, որ հավատքի համար նահատակվեց Պարտաւում, Աբդլազիզի ձեռքով (711 թ).—Կղկնտ. Գ. ԺԸ (որ և Մանկիկ՝ անդ).—սեռ. Մանկանն՝ Կղկնտ. Գ. ԺԸ (չունի Շահն.),

— 2. Մանուկ, որի անվան մի խաչքար կա կանգնեցրած Երնջակի Ս. Կարապետ վանքի գերեզմանատանը՝ 1219 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 17։

— 3. Մանուկ, որդի Շամօյի և եղբայր տանուտեր Ղազարի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1418 թ.—Ձեռ. Վասպ. 307, Նոտարք 57։

— 4. Մանուկ (սեռ. Մանկան), որի անունով մի խաչքար է

կանգնեցրած «Սպիտակ Մանուկ» մատուռի մեջ (Նոր-Բայազիտ), 1460 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 447։

— 5. Մանուկ, հանգուցյալ որդի կամ եղբորորդի տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

— 6. Մանուկ մզտեսի, աներ Խըրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Ավետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։—Թերևս նույն է՝

— 7. Մանուկ խոճա մահտեսի, որդի մզտեսի Մելիքշահի, Կեսարիայում Յովհաննէս գրչին գրել, ծաղկել և ոսկով զարդարել տվեց մի Ճաշոց, 1484 թ., ուր կա նաև իր նկարը։—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1848։

— 8. Մանուկ, հորեղբայր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Ավետարանը՝ 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 9. Մանուկ, որդի պարոն Յովհաննէսի՝ եղբոր Խոջա Բաղդասարի, որ ստացավ մի ձեռագիր (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. էջ 724։

— 10. Մանուկ Պոլսեցի, 15 տարեկան պատանի, հավատքը չուրանալով նահատակվեց ու թաղվեց Բերա թաղում, «1652 թ».—Ազգապ. 2498։

— 11. Մանուկ դպիր, ունի «Ոտանաւոր առ Տիրածին մայրն անարատ», 1725 թ.—Տաշեան, Ցուց. 727։

— 12. Մանուկ դպիր, ունի «Գովեստ Երգոց երգոյն», 1826 թ.—Տաշեան, Ցուց. 361։

Մանուշ տես Մանիշակ։

Մանուշակ տես Մանիշակ։

ՄԱՆՈՒՇՔԱՆ, սեռն ու ծագումը ինձ անհայտ։ Մի անգամ հիշատակված է Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցու մի արձանագրության մեջ (սեռ. Մանուշքանին ձևով) 1451 թ.—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. էջ 36։

*ՄԱՆՈՒՉԱՐ, ար. նույն է Մանաճիհր անվան հետ, որ տես։ Հիշատակված է Մանիչար ձևով՝ ԺԶ դար (Կրպտ. եպս.՝ Դօփեանք 191); Մանուչար ձևով՝ 1661 թ. (Ձեռ. Ազուլ.=Արրտ. 1911, 119), 1674 թ. (Ձեռ. Դաղեան. Բ. 46 բ), Մանուչար հայ իշխան՝ 1747 թ. (Ազգապ. 2961)։ Այս բոլորից ավելի հին է՝

— Մանուչար, որի գերեզմանը խաչքարով հանդերձ գտնըվում է Նովլու գյուղում, 1279 թ.—Սիսական 109։

ՄԱՆԳՈՒՐ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է ԺԶ դարում (Կրպտ. եպս.՝ Դոփեանք 152)։

Մանսա տես Մանասէ։

*ՄԱՆՍՈՒՐ, ար. < արաբ. منصور Manṣūr անունից, որ բուն նշանակում է «աստվածազոր, հաղթական»։ Հիշատակված է 1536 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 340), 1604 թ. (Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 13 բ), 1632 թ. (Ձեռ. Թաւր. 33 բ)։

*ՄԱՆՔՈՒ, իգ. < արաբ. منكوحه mankūḥa «մեկի պսակված կինը, կողակիցը»։ Մի անգամ հիշատակված է ԺԳ դարում։

— Մանքու, կին Թադէի՝ որդւոյ Անգուրի, որոնք միասին նվերներ են արել Գոշավանքին, 1277 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Ժ, էջ 25։

ՄԱՇՏՈՑ (կամ Մաշթոց), ար. ծագումն անհայտ. իբրև անձնանվան օրինակ հիշում են Թր. քեր. 43, Խոր. քեր. 178 (Մաշդոց ձևով)։

— 1. Մաշտոց եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Գրիգորի. ձեռնադրվեց Մեծն Ներսէս («353—373») կաթուղիկոսից.—Օրբ. է, հա.—սեռ. Մաշտոցի՝ Օրբ. է։

— 2. Մաշտոց վարդապետ, Տարօնի Հացեկաց գյուղից, որդի Վարդանի. ծնվել է մոտ «353 թ». եղավ զինվորական, արքունի քարտուղար, ապա դարձավ վարդապետ և թարգմանիչ «394 թ»։ Հնարեց հայ գիրը և թարգմանեց Սողոմոնի Առակաց գիրքը. այսպեսով հիմք դրավ հայ գրականության «404 թ», որ տարածեց ամբողջ Հայաստանում՝ 35 տարի անդադար ճամբորդելով բոլոր գավառները։ Հնարեց նույնպես վրաց և աղվանից գրերը։ Իրեն են ընծայում Մաշտոցի (կամ Ժամագրքի) հորինումը, Մեծ պահոց շարականները և աղոթքներ, բայց բոլորն էլ անհարազատ են (Զարբ. Հին դպր. 274—280, Թրգմ. 664)։ Տեղակալ եղավ Ս. Սահակի, որի մահվանից 6 ամիս հետո վախճանվելով՝ թաղվեց Օշականում («439»)։ Իր վրա կառուցվեց մի եկեղեցի, որ մի քանի անգամ վերանորոգվելով՝ մնում է մինչև այժմ։—Խոր. Բ. Ժ. Փարպ. Ժ, ԺԹ, ԼԸ. Կոր. 6, 14. Կնիք հաւ. 130, 139. Գիրք թղ. ա (Մաժդոց ձևով), ծը, ձբ. Մեսր. եր. 83, 110. Ուխտ. Բ. ծ. Ասող. Բ. ա. Արծր. Ա. ժա. Սամ. անեց. 68. ZAPh 1, 206. Յհ. իմաստ. 66. Սամն. 24. Յիշատ. Զարբ. Թրգմ. 286. Աթան. յոչ. էջ ի.—սեռ. Մաշտոցի՝ Կոր. 9, 21, 25. Փարպ. Ժ, ԺԹ. Գիրք թղ. ծէ. Կանոն. 59. Կղկնտ. Ա. իէ, իը. Բ. իթ, լգ. Օրբ. Ժդ. Արծր. Ա. ժա. Մխ. այրիվ. 62. Տաթև. հարց. 544.

ZAPh 1, 206.—բց. ի Մաշտոցէ՝ Կոր. 26, Փարպ. ժա. Գիրք Թղ. թ.—գծ. Մաշտոցիւ՝ Կոր. 9, 27. Փարպ. ժ, ժա. Արծր. Ա. ժա.—Վրաց պատմ. Ա. 40, 78 (Մաստոց).—կոչված նաև Մեսրոպ, որ տես առանձին։ (Մեսրոպի և հայոց գրերի մասին ունիմ ընդարձակ ուսումնասիրություն, որ պատրաստ է տպագրության)։

— 3. Μαστούβιος քորեպիսկոպոս ի Հայոց (ἐξ Ἀρμενίας), որի հետ վիճաբանում է Թէոդորոս Մոպսուեստացին († 428) իր «Ընդդէմ մոգուց Պարսից» գրքում (L. Mariès, Le De Deo d'Eznik, էջ 88). ըստ Ադոնց ՀԱ 1925, 196 β տառը ուղղելով ζ պետք է հասկանալ Մեսրոպ Մաշտոցը։

— 4. Մաշտոց եպիսկոպոս Խոռխոռունեաց, անդամ Դուինի երկրորդ ժողովի «554 թ». մեռավ 565 թ. ըստ Ջամինեան՝ Անահիտ 1931, սեպտ. 124, 126.—Գիրք Թղ. ժէ.—բց. ի Մաշտոցէ՝ Գիրք Թղ. ժզ, ժը, ժթ. Կղկնտ. Բ. է. Օրբ. իը։

— 5. Մաշտոց Եղիվարդեցի (որ և երբեմն Սևանեցի), կաթողիկոս հայոց «897—8 թ». Եղվարդի Գրիգոր քահանայի որդին էր. ծնվել է 833 թ. մկրտության անունը Թվլի Ստեփաննոս։ Նախնական ուսումը ստացավ հորից և նրա մահից հետո աշակերտեց Մաքենեաց վանքի Թէոդորոս կրոնավորի մոտ։ Ինքն էլ նույն վանքում կրոնավոր դարձավ. ապա քաշվեց Սևան (860 թ), ուր Աշոտ Ա-ի դուստր և Սիւնեաց իշխանուհի Մարիամի առաջարկությամբ և օգնությամբ, «արեապէտ» վախճանեալ Վասակ Սիւնեաց իշխանի հոգուն ի հիշատակ՝ շինեց Առաքելոց եկեղեցին («871 թ»)։ Հավաքեց կրոնավորներ և խստամբեր կյանք էր վարում։ «Զամս քառասուն հաց ոչ եկեր և ջուր ոչ արբ» (Կիր. 45, Մխ. այրիվ. 70)։ «Եւ յայսմ ամի (ՅԽԲ=893) յորում կարգեցի զսակաւաւոր գրկունքս, էին ամք նորա պակաս ինչ քան զԿ, իսկ որ մեկնեալ էր ի կերակրոց և ի բոլոր հեշտութեանց աշխարհիս ԼԳ ամ, և շինութեան տեղւոյս ամք ԻԲ», ասում է Ստեփաննոս իր աշակերտը (Ձեռ. Դաղեան, Ա. 44 բ)։ Ըստ այսմ ծնունդն է 833 թ., ճգնությունը 860 թ, Սևանի շինությունը 871 թ։—Այդ միջոցին Արաբը դիմեց իրեն՝ չարախոսելով Գէորգ կաթողիկոսի մասին. Մաշտոցը պատասխանեց նրան՝ հատուկ մի թղթով, որ ավանդում է Յհ. կթղ. ը։ Մի ուրիշ թուղթ էլ ունի Դուինի երկրաշարժից («893 թ») ազատյալներին ի մխիթարություն, որ ավանդում է Յհ. կթղ. լբ։ Ընտրվեց կաթողիկոս՝ իբրև հաջորդ Գէորգ Բ-ի. բայց նստավ միայն 7 ամիս և մեռավ «898 թ»։ Երեան եկավ իր գերեզմանը և իր

*տապանաքարը Գառնիում, Տրդատի հովանոցի արևմտյան կողմը, Մառի երևան հանած եկեղեցու հարավում գտնված մատուռի մեջ՝ այս արձանագրությամբ.*

*Յ. Խ. Զ.: Թվ: ի Բս: փոխց Տր Մաշղ:*

*(Ոստան 1911, 562, Արրտ. 1909, 179, Ազգագ. 1012)։ Մաշտոցին է ընծայվում հայ եկեղեցու Ծիսարանը, որ իր անունով կոչվում է* Մաշտոց։ *Ունի նաև պատմական մի գրվածք, որ կորել է։—Ստեփ. սեան. 44, 50. Յհ. կթղ. լ, լբ, լդ. Մխ. անեց. դ. Մխ. այրիվ. 21. Ասող. Գ. գ. Օրբ. լգ, խե. Արծր. Գ. իզ. Կիր. 45. Շնորհ. թղ. 274. Միխ. ասւ. իթ (=իը). Յայսմ. հոկտ. 13. Վրդն. աշխ. 509. Սամ. անեց. 95. Բհնպ. 272. Հաւաք. 28. Յհ. կթղ. հյր. 276. Առաք. պատմ. 479. Դրնղ. 376.—սեռ.* Մաշտոցի՝ *Ստեփ. սեան. 41, 42, 51, 53—54. Յհ. կթղ. լբ, լդ. Յհ. կթղ. հյր. 277. Ասող. Գ. լբ. Օրբ. իդ, իե, լդ, խ, խե, ծա, հա. Օրբ. ժմ. 12. Արծր. Գ. իզ. Կիր. 49. Վրդ. խէ. Շնորհ. թղ. 274. Յայսմ. հոկտ. 13, մայ. 27. Սամ. անեց. 96, 101.—բց.* ի Մաշտոցէ՝ *Շնորհ. թղ. 274.—Զարբ. Հին դպր. 506—511. Այրարատ 369, Յուշիկք Ա. 464—7, Ջեռ. Դաղեան, Ա. 43—44, Ազգագ. 1013—1018։*

*ՄԱՉԱՅ? (ավանդված է միայն հոլովով* Մաչէն*) իգ. ծագումն ինձ անհայտ. հիշված է շուրջ 1550 թ.—Ջեռ. Դաղեան, Բ. 47 ա։*

*ՄԱՍԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ. ծանոթ է միայն՝*

— Տէր Մասան, *նորոգեց Համամ Աղուանից թագավորի տապանաքարը Արցախի Վարանդայ գավառի Աւետարանոց գյուղում և ավելացրեց նոր արձանագրություն 1241 թ.—Բարխուտ. Պատմ. Աղուանից 164։—Նույն անունը Արցախ 98 գրված է* Մասուն։

**ՄԱՍԵՀ, ար. չեմ համարում կրճատված* Աբդլմսեհ *անունից, այլ փոխառյալ արաբ.* مسيح Masīḥ *անունից, որ բուն նշանակում է «Մեսիա, Քրիստոս» և մահմեդականների մեջ իբրև անձնանուն գործածական է. ինչ. Մասիհ որդի Հասանի՝ Աղ-Ղոյունլու ցեղի առաջնորդը 1471—9 թ. (Այրարատ 330)։ Մեր մեջ* Մասեհ *անունը գործածական էր Հնդկահայոց մեջ. սրանից է* Մասեհեան *ազգանունը (Թեհրան)։ Հիշված կա* Մասէ *ոմն Ագուլեցի 1674 թ. (Զքր. ագուլ. 124)։*

*ՄԱՍԻ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է 1662 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 653), 1678 թ. (Ջեռ. Նոր-Բայազ. 2 բ, սեռ.* Մասուն *ձևով), այժմ էլ գործածական է Ղարաբաղում։*

† *ՄԱՍՆԵՐ, ար. < հյ.* մասներ *«մասունքներ» բառից. մի անգամ միայն գտնում եմ գործածված՝.*

— Մասներ *ջուլահակ, իր կնոջ Դուխթարի (№ 3) հետ ոսկով, արծաթով ու նկարներով զարդարեց այն Ավետարանը, որ Երուսաղէմում Երկայն Ստեփան գրչին գրել էր տվել Վարդիշխան քահանան՝ 1321 թ.—Թորոս աղբ. Բ. 346։*

**ՄԱՍՈՒԴՇԱՀ, ար. < արաբ.* مسعود Mas'ūd *«երջանիկ»*+šāh *բառերից (համմտ. նաև* Մախսուտ*)։ Հիշատակված է ԺԵ դարում։*

— 1. Մասուդշահ, *որդի Յակոբշահի. մայրն է Էլխութլու. Թաւրիզի իշխաններից, սեպուհ և խօջա. սրա խնդրով գրեց Գր. Տաթևացին իր քառահատոր Ոսկեփորիկը (1401 թ. ըստ Ձեռ. Սանաս. 19 ա կամ 1407 թ. ըստ Տաշեան, Ցուց. 402 և Նոտարք 27, կամ 1410 թ. ըստ Սիսական 240, որ Տաթևացու վերջին տարին է).—տպագրում գրված է* Մասուտշա՝ *Տաթև. ոսկիփ. 573,* Մաշդուս! *Տաթև. ոսկիփ. 14 և սեռ.* Մաշդուսի! *(կարդա* Մասուդշի*) անդ 9։*

— 2. Մասուտշայ, *եղբօրորդի Խոնտքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Ավետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։*

Մասուն *տես* Մասուն։

† *ՄԱՍՈՒՐ, ար. և իգ. < հյ. ժղ.* մասուր *(վարդի) բառից. հիշված է ԺԵ—ԺԶ դարում. այսպես՝* Մասուր, *ար. 1551 թ.* (Матер. Арх. Кавк. III, *էջ 93, 94),* Մասպուր *(սեռն անհայտ) 1628 թ. (Երեմեան, Նոր-Ջուղայի յուշարձ. էջ 10 ա),* Մասփուր *իգ. 1629 թ. (Կնիք հաւ. յիշ. էջ 372) և* Մասուր, *ար. Թվականն անհայտ (Ձեռ. Վասպ. 342)։*

*ՄԱՍՔԱՍ, իգ. ճիշտ ձևն անհայտ, որովհետև վերջաձայնը կարող է լինել անձնական հոդ (Ես Մասքաս). հիշված է մի անգամ ԺԳ դար։*

— Մասքաս, *դուստր Ասղաւի (այլ ընթ. Արասլուի) և թոռն Տիգրանի. իր և իր որդի Սարգսի հիշատակին մի գյուղ է նվիրել Հոռոմոսի վանքին, 1280 թ.—Շիրակ 28, Արրտ. 1870, էջ 271։*

**ՄԱՏԱԹԻԱ, ար. եբրայական անուն, որ հուն.* Ματταθίας *(ֆրանս.* Matathias*) ձևի վրայից անցել է հայերենի։ Բառ. Ս. Գրոց մեկնում է «պարգև Տեառն» (հանելով անշուշտ* מַתָּן mattān *«նվեր»*+יָה yāh *«Աստված» բառերից)։ Այս անունով հայտնի են Մատաթիա՝ հայր Մակաբայեցի եղբայրների, և Մա-*

տաթիա առաքյալ, որ ընտրվեց Յուդայի փոխարեն (Գծ. Ա. 24—26)։ Գործածված է մեր մեջ քիչ անգամ՝ ԺԱ դարից սկսած. սրանից է Մատաթեան ազգանունը։ Պոլսում գործածական էր անցյալ դարում կրճատ Մատաք ձևով։

— 1. Մատաքէ, մի խաչքար է կանգնեցրել Մարմաշէնի տաճարի դռան վրա, 1026 թ.—Շիրակ 151, Արրտ. 1870, 11։

— 2. Մատաքիա եպիսկոպոս Մելիտինէի՝ 1214 կամ 1255 թ. հիշված է ինչ որ մասունքների գյուղի առթիվ (կեղծիք).—Թորոս աղբ. Բ. 353, Տաշեան, Ցուց. 1040։

— 3. Մատաքիա, գրիչ. օրինակել է Անանիա Շիրակացու տոմարը 1426 թ.—Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 127։

— 4. Մատաքիա, դոմինիկեան ունիթոռական հայ կրոնավոր, որ Նախիջևանից գնաց Ջենովայի Դոմինիկեան վանքը՝ հետը տանելով զանազան հին պատմագրեր, ի միջի այլոց Բերոսոսի պատմությունը (ԺԵ դար).—Ալիշան, Հին հաւատք 23։

— 5. Մատաքիա աբեղա ոմն, հիշված է 1624 թ.—Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 97։

ՄԱՏԵԻԱՔ, մր. ծագումն անհայտ. հիշված է 1311 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Թաւր. 74 ա)։

*ՄԱՏԹԷՈՍ, ար. < հուն. Ματθαῖος անունից (որ և Μαθθαῖος, լտ. Matthaeus, ֆրանս. Matthieu, անգլ. Matthew, գերմ. Matthäus, ռուս. Матвей)։ Ըստ Բռ. Ս. Գրոց, էջ 339 նշանակում է «պարգև» (տես Մատաքիա), իսկ ըստ Յայսմ. յունիս 30 «Մատթէոս, որ ասի երգ կենաց»։ Այս անունով հայտնի է չորս ավետարանիչներից առաջինը։ Մեր մեջ գրված է նաև Մաթէոս, Մաթիոս, Մատթոս, Մաթոս, Մատթէ, Մաթևոս. հնչվում է Արևմտահայոց մեջ Մաթոս, Արևելահայոց մեջ Մաթևոս: Տես նաև վերը Մաթէ: Սրանից է Մատթէոսեան ազգանունը։ Այս անունը գործածված է մեր մեջ Դ դարից սկսած և այժմ էլ կենդանի է։

— 1. Մատթէոս Ա. կաթուղիկոս Աղուանից, հաջորդեց Շուփհաղիշոյի (Դ դար).—Կղկնտ. Գ. իդ. Մխ. այրիվ. 24.—Մատթէ՝ Կիր. ը։

— 2. Մատթէոս քահանա, որ Յովհաննէս Բ Գաբեղեան կաթուղիկոսի («557—574 թ») կողմից Սիւնիք և Աղուանք՝ Վաչագան Գ թագավորին տարավ Ս. Գրիգորի, Զաքարիայի և Պանդալեոնի մասունքները և մի շրջաբերական կոնդակ՝ Նեստորական և այլ հերձվածների հերքման համար։—Գիրք թղ. ժը, ժթ. Կղկնտ. Բ. է. Օրբ. իբ.—Մատթէ՝ Կղկնտ. Ա. իա։

— 3. Մատթէոս երեց Դարանոճի. աշակերտել է Յովհան Մանդակունուն (ըստ Զամչ. Ա. 658 և Բ. 219), անդամ Աղուէնի ժողովի. գտավ Ս. Գրիգորիսի մասունքը՝ Վաչագան Գ-ի ժամանակ։—Մատթէ՝ Կղկնտ. Ա. իա, իզ (հրատ. Էմինի և Կանոն. 192 ունին Մաթէ).—սեռ. Մատթէի՝ Կղկնտ. Ա. իա։

— 4. Մատթէոս երեց Պարտաւի. անդամ Աղուէնի ժողովի. ժամանակակից Վաչագան Գ թագավորի.—Մատթէ՝ Կղկնտ. Ա. իզ (Էմին ունի Մաթէ). Կանոն. 192։

— 5. Մատթէոս երեց գիտնական, առ որ ունինք «Հարցումն Վաչագանայ արքային Աղուանից», որ ավանդում է Կղկնտ. Ա. իզ (Մատթէ երէց գիտնաւոր).—հայտնի չէ թե նախորդ երեքից որն է։

— 6. Մատթէոս եպիսկոպոս Ամատունեաց. մասնակցեց Տիզբոնի կրոնական ժողովին (615 թ) քրիստոնեական դավանանքների քննության համար։ Ունի Թուղթ առ Աբրահամ կաթողիկոս, որ գահակալել է «607—615 թ».—Սեբ. խդ. Ասող. Բ. բ.—բց. ի Մատթէոսէ՝ Գիրք Թղ. ծե։

— 7. Մատթէոս ճգնավոր խոտաճարակ վարդապետ. ճգնում էր Օձունի մոտ՝ Սոթից լեռան մեջ, ճգնակից ունենալով Գէորգ վարդապետին (սքանչելագործ) և Յովհան կաթողիկոս Օձնեցուն «728 թ».— Զարբ. Հին դպր. 479, Ազգապ. 843։

— 8. Մատթէոս Բ կաթողիկոս Աղուանից 776—777 թ. էր եպիսկոպոս Կապաղակայ և Սաղքաւայ. հաջորդեց Դաւիթ Գ կաթողիկոսին (№ 34).—Կղկնտ. Գ. իդ. (հրատ. Էմինի՝ Մատթէ). Կիր. ը. Մխ. այբիվ. 24. Հայապ. 384։

— 9. Մատթէոս Հաղբատացի, ուղեկից եղավ Պետրոս Գետադարձ կաթողիկոսին՝ Պոլիս ճամբորդության ժամանակ «1047 թ».—Ուռհ. 105։

— 10. Մատթէոս քահանա Կարսի. փախենալով Սուլթան ամիրայի սպառնալիքից՝ ուրացավ իր հավատքը՝ 1094 թ.— Յայսմ. մրտ. 30. Զամչ. Բ. 550. Այրարատ 88։

— 11. Մատթէոս եպիսկոպոս, սովորել է Գրիգոր Վկայասէրի ձեռքի տակ. իր ուսուցչի հրամանով ուղղեց և կոկեց Յովհ. Ոսկեբերանի Վարքը, որ Վկայասէրը թարգմանել էր տվել Թէոփիլոսէ հույնին՝ Սև լեռան Պաղլահայ (ասոր. «Դրախտ Աստուծոյ») կոչված վանքում, 1104 թ.—Զամչ. Գ. 20. Զարբ. Հին դպր. 602—3. Թրգմ. 617. Սիսուան 406. Ակինեան՝ Թուղթ Մակարայ 98։

— 12. Մատթէոս Ուռհայեցի, քահանա և վանական. պատմիչ ԺԲ դարու. միջին հայերեն լեզվով գրել է իր ժամանակի պատմությունը՝ սկսելով 952 թվից և հասցնելով մինչև 1136 թիվը։ Չի պատմում Եդեսիա քաղաքի առման պատմությունը (1144 թ), որի վրա շատեր գրել են։ Սրանից հետևցնում է Չամչ. Գ. 67 թե այդ թվին Մատթէոսը արդեն մեռած էր և կամ գուցե նույն աղետի զոհերից մեկն էր։ Հեղինակը այս աշխատության վրա տքնել է 8 տարի. «Ութն ամ անհանգիստ քննութեամբ աշխատ եղէ և զայս ամենայն յօժարեցի ի տեսութիւն և ի մատենագրութիւն ածել գրով»։ Տալիս է շատ կարևոր տեղեկություններ թէ մեր և թե մեր շրջակա ազգերի պատմության մասին։—Տպագրված է երկու անգամ. նախ Երուսաղէմ 1869 թ. և ապա Վաղարշապատ 1898։—Կիր. 4. Ուռհ. 113, 278, 280. Մխ. այրիվ. 37. Ես. կթղ. էջ բ.—տես. Մատթէոսի՝ Ուռհ. էջ 1, 114.—Զարբ. Հին դպր. 663—670։

— 13. Մատթէոս պատմիչ անծանոթ. Ուռհայեցուց հետո հիշում է Ղազար Ջահկեցին.—Հայապ. 13, 99։

— 14. Մաթէոս, միաբան Տիւրիկի Նեղկուկ գյուղում, 1194 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 511։

— 15. Մաթէոս, աշակերտ Սեթի և Սիմէոնի. այս երկուսի գերեզմանի վրա Մաթէոսը և իր երկու ընկերակիցները (Սոսթենէս և Գրիգորէս) շինեցին Ս. Կարապետի մատուռը՝ Հաւուցթառի վանքում, 1213 թ.—Արձ. Այրարատ 356, Արար. 1871, 331։

— 16. Մատթէոս, մերձավոր Մարտիրոս և Գրիգոր եղբայրների, որոնք Գոշավանքում շինեցին Ս. Գրիգորի եկեղեցին, 1231 թ.—Արցախ 352, Ազգագր. հանդ. Ժ, 31։

— 17. Մաթէոս քահանա, հայր Յոհանէսի, որ Բջնիում կանգնեցրեց մի խաչքար 1232 թ.—Սմբատեանց, Գեղարքունի, էջ 324։

— 18. Մատթէոս, եղբայր Յովհաննէս գրչի, որին օգնեց Աւետարանի արտագրության ժամանակ, Հռոմ 1254 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 409։

— 19. Մաթէոս, նվիրատու Մեծարանց վանից (Խաչեն), 1272 թ.—Բանասէր 1901, 141։

— 20. Մատթէոս քահանա, գրիչ. օրինակեց մի ժողովածու՝ Տաթևի վանքում, Մահկանաբերդի անտառներում, 1282 թ.—Manus. bibl. nat. էջ 155։

— 21. Մատթէոս վարդապետ Կիլիկեցի, աշակերտ Ներսէս Մշեցու, որի հրամանով արտագրեց Լամբրոնացու Մեկնութիւն Ցայտնութեան և Հանդստեան Յովհաննու, 1283 թ. ունի և չափածու մի գրվածք.—Սիսական 131 բ։

— 22. Մատթէոս (կամ Մատթէ) քահանա, աշակերտ Բարսեղ վարդապետի և եղբայր Ղուկաս քահանայի. Կիլիկիոյ Մլիճ անապատից էր. գնաց ուսանելու Եսայի Նչեցու մոտ (1283 թ). օրինակեց Լամբրոնացու գործերը Վայոց ձորի Աղբերց վանքում, 1284 թ.—Տաշեան՝ Ցուց. 834, 1039, Սիսուան 74։

— 23. Մատթէոս գրիչ. օրինակեց Ճառընտիրը Մլիճի վանքում, 1284 թ.—Տաթև 1927, 187։

— 24. Մատթէոս, վերջին ստացող մի հին Աւետարանի, 1295 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1924, 515։

— 25. Մատթէոս վարդապետ, հոգևոր որդի Պետրոսի. կանգնեցրել է մի մեծ խաչքար Մարտիրոս գյուղում (1275 թ), ուր շինել է նաև վիմափոր եկեղեցիներ 1286 թ։ Գրել է նաև մի Աւետարան, Վայոց ձորի Աղաւ անապատում 1292 թ.—Սիսական 176, Խաղբակեանք 129, 148, Սմբատեանց՝ Երնջակ 494։

— 26. Մաթէոս կրոնավոր, Կիւզուց վանքում օրինակեց Աւետարանը՝ 1298 թ.—Ձեռ. Վասպ. 125։

— 27. Մատթէոս քահանա, գրիչ. օրինակեց Խաղտետրը՝ Եկեղեաց գավառի Ս. Գէորգ գյուղում, 1300 թ.—Ձեռ. Թաւր. 33 ա։

— 28. Մաթէոս, քահանա Իտալիոյ Փէրուժ (Perugia) քաղաքի հայ եկեղեցու, 1301 թ.—Ձեռ. Վատիկ.=ՀԱ. 1892, 342 ա։

— 29. Մատթէոս գրիչ, օրինակել է Գրիգոր Նազիանզացու Ճառերը՝ ստացող Սիմէոնի պատվերով, 1319 թ.—Manus. bibl. nat. 62։

— 30. Մատթէոս քահանա, կազմեց այն Աւետարանը, որ Վարդիշեան քահանայի խնդրանոք արտագրել էր Երկայն Ստեփան գրիչը, Երուսաղէմ 1321 թ.—Թորոս աղբ. Բ. 346 (հիշատակարանը կիսատ արտագրած լինելով, հայտնի չէ թե առաջի՞ն կազմողն է թե հետագա մի կազմող է, ինչ որ ավելի հավանական է)։

— 31. Մատթէոս քահանա, գրիչ. հրամանով և օգնութեամբ Սիւնեաց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի, Տաթևում և Տաթևի միաբանութեան համար օրինակեց Մայր Մաշտոցը, 1321 թ.—Ձեռ. Թաւր. 33—35։

— 32. Տէր Մատթէոս, սալահատակել է Եղիշէ առաքյալի եկեղեցին 1317 թ. և շինել է զանգակատունը 1323 թ.—Շահխաթ. Բ. 379։

— 33. Մատթէոս գրակալ, «իր հոգու համար» ձրի և առանց վարձու կազմել է այն Աւետարանը, որ Սարգիս քահանայի խնդրանօք օրինակեց Յովհաննէս գրիչը՝ Սկևռայ վանքում, 1325 թ.—Ջեռ. Վասպ. 172։

— 34. Մատթէոս կրօնավոր, որդի Պօղոսի, եղբայր Մխիթար գրչի, որ Գլաձորում օրինակեց «Գիրք լուծմանց» 1315 թ. (Հայաս. 526) և 12 տարի հետո էլ Եկեղեաց գավառի Երկայնի վանքում օրինակեց Հին կտակարանը, 1327 թ.—Ջեռ. Վեննետ. Ա. 160։

— 35. Մատթէոս եպիսկոպոս Դավրիժու, աշակերտ Եսայի Նչեցու, գաղընկեր Խաչատուր Կեչառեցու և այլոց. հիշված է 1331 թ.—Սիսական 134 բ։

— 36. Մատթէոս, կուսակրոն հոգևոր եղբայր. կազմեց այն Ճառընտիրը, որ օրինակեց Կրակացի Ներսէս աբեղան՝ Երուսաղէմում, 1335 թ.—Ջեռ. Վեննետ. Բ. 348։

— 37. Մատթէոս քահանա, գրիչ. Անգեղակոթ գյուղում օրինակեց Հարանց վարքը, Վարք սրբոցը և Գիրք թղթոցը, 1378 թ.—Տէր-Պօղոսեան, Շանթի հին ատ. 39, հրատ. եպս.՝ Դոփեանք և Մել. Շահն. 7, «Էջմիածին» 1944, № 4—5, էջ 43 ա։

— 38. Մատթէոս աբեղա, պատանեց Մաղաքիա Ղրիմեցու մարմինը՝ 1384 թ.—Աղգապ. 1970։

— 39. Մաղթէոս, միացած Մկրտիչի հետ՝ Աղթամարի Զաքարիա կաթուղիկոսից գնեցին՝ Գլաձորում 1317 թվին գրված մի Ոսկեփորիկ՝ 1372 կամ 1392 թվին.—Ջեռ. Վեննետ. Բ. 859։

— 40. Մատթէոս արքեպիսկոպոս Տարսոնի. օծեց Կիպրոսի Յովհաննէս Ա թագավորին, որ հաջորդեց Յակոբ Ա-ին, 1399 թ.—Սիսուան 560 ա, Բակուրան՝ Կիպրոս կղ. 55, 118։

— 41. Մատթէոս Երզնկացի, գրիչ. օրինակեց Բարթուղիմէոս Բոլոնիացու 1330 թվին թարգմանած լատինական ժամագիրքը (ԺԴ դար).—Manus. bibl. nat. 46։

— 42. Մատթէոս քահանա, նկարիչ. Տաթևում ծաղկել է մի Աւետարան, 1407 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 153։

— 43. Մատթէոս վարդապետ, առաջնորդ Գանձասարայ վանքի. հիշված է 1407 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 374, որից և Նոտարք 25 (մասամբ)։

— 44. Մաղթոս, աղգական Մարտիրոս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164։

— 45. Մատթէոս, աշակերտ Սարգսի, ապա Գրիգոր Տաթևացու.—Յայսմ. ապր. 27. Մեծոփ. 16, 51 (ընկերները տես Սարգիս րաբունապետ).—երևի նոյն է № 48։

— 46. Մատթէոս Ուխեցի, «Ս. ուխտին Գանձասարայ», աշակերտ Գր. Տաթևացու.—Յայսմ. ապր. 27=Մեծոփ. 21 (գրում է «Մատթէոս Ուխտեցի՝ սուրբ ուխտին Գանձասարու»)։

— 47. Մատթէոս Ջուղայեցի, աշակերտ Գր. Տաթևացու.—Յայսմ. ապր. 27, Մեծոփ. 51։ Սրա հետ ըստ Հայապ. 99 նոյն է՝

— 48. Մատթէոս վարդապետ Հայոց. կոչված է պարթև. աշակերտեց նախ Սարգիս րաբունապետին Մեծոփայ վանքում և ապա Գրիգոր Տաթևացուն (†1410 թ)։ Մատենագիր ժԵ դարու. թողել է բազմաթիվ գրական աշխատութիւններ. 1) Մեկնութիւն Գործոց առաքելոց, «ի խնդրոյ հարազատ և սիրեցեալ եղբաւր մերոյ Յակոբ վարդապետի (Ովսաննեանց)»։ Քաղված է Ոսկեբերանի և Եփրեմի համանուն մեկնութիւններից, որին ձեռնարկել էր նախ իր ուսուցիչը՝ Սարգիս վարդապետ, «քանզի նա կանխաւ համառօտեալ էր զսա և մեզ նորին շաւղացն հետևեցաք»։ Սրա հիշատակարանը դնում է Թորոս ապր. Բ. 479—483, որից արտագրում եմ հետևյալ հետաքրքրական տողերը. «Այլ և սովորութիւն է բնական մերոյ ազինս՝ օտար ազգաց իմաստից բանին ցանկալ և որոնել, թէև կարի յետնոց իցէ արարեալ, և զնոյն ընթեռնուլ, և զիւրոյ հօր՝ թէև կարի մեծ իցէ աշխատեալ, ոչ ընդունիլ. վասն որոյ աղաչեմ, մի զանմտութիւնս զայս ի գործ ածել, և կամակար մտօք ընթեռնուլ»։—2) Գիրք ութ խորհրդոց մեղաց, որ գրել է Տանձափարախում, 1393 թ., քաղելով Եւագրի գործից և նորից խմբագրելով։—3) Ողբ Գր. Տաթևացու մահվան վրա. «Ներբողեան ողբալ ողբերգաբար ի Թաղումն երջանիկ րաբունապետին Գրիգորի, ընդ նմին և յիշատակեալ զողբս լալեաց կոտորածին, որ ի Վրաց տունն ի Փայտակարան (իմա Տփղիս) քաղաքի. քանզի պատկեր աւուրցն ի մի դիպեցաւ. ժանաւանդ ի հրաշազեղ Կարապետ (№ 118) եղբայրն իւր. բնաբան. Ո՜վ տայր զմահ իմ փոխանակ մահու քոյ, և զգերեզման իմ փոխանակ գերեզմանի քոյ»։—4) Վեցօրեայ մեկնութիւն, ի խնդրոյ Սարգիս կրօնաւորի. գրված 1395 թ։—5) Քարոզներ՝ թվով 50 հատ, ըստ Ձեռ. Դաշեան, Ա. 92 ա (օր. Քարոզ վասն Շողակաթի. Ձեռ. Կարին. էջ 1)։—6) Գանձեր՝ ի

խնդրոյ Գրիգորի (սրանցի՞ց են արդյոք Manus. brit. mus. 119 բ հիշված գանձերը)։—7) Հաւաքումն բանից յԱւետարանէն Ղուկասու և քարոզք յոլովք, գրված 1391 թ. (Ձեռ. Բեռլինի, էջ 22 բ և Ձեռ. Դաղեան, Ա. 92 ա)։—8) Մատթէոս վարդապետի վասն հարցման օրինաց ղանազան պատասխանիք, զոր խնդրեաց բարեպաշտն Աբիսողոմոն տանուտէրն Շիրանայ (Ձեռ. Վենետ. Բ. 937)։—Այս գործերից առաջինը մասամբ, երկրորդը և երրորդը ամբողջ տպված են Պոլիս 1750.—Մատթ. եւագր. էջ 3 և 147.—սեռ. Մատթէոսի՝ Մատթ. ներբ. 148.—տես Տաշեան, Ցուց. 189 ա, 1112 բ, Զարբ. Նոր մատեն. 219. Կնիք հաւ. յոյ. 119. Ձեռ. Ներս. 11 բ, 14 ա. Ձեռ. Թաւր. 46 բ, 48 ա։—Ըստ Սարգիսեան, Եւագր. ներած. էջ ճլխ հավանաբար Երզնկացի էր և Լէնկթիմուրի անգթությունից փախչելով՝ պանդխտեց Տաթևի վանքը, որի համար էլ համարվել է աշակերտ Տաթևացու. իսկ ըստ Ձեռ. Դաղեան, Ա. 92 ա Ջուղայեցի էր և իրոք աշակերտ Տաթևացու։— Ըստ Նոտարք 16 նույն հեղինակից է նաև «ի Մատթէոս վարդապետէ» առ Ցակոբ հայրապետ Մծբնայ» ողբ.

Աստանօր վտանգ հասեալ,
Ով սուրբ հայրապետ ընտրեալ,
Զորդիքս քո գերի առեալ,
Զտօն քո հանդիսի ցրուեալ,
Եկեղեցիք աւեր կացին...

որ գրել է Երնջակում Թամուրի զորքերից պաշարված տարին, ըստ վկայության անծանոթ մի Գանձարանի։ (Հիշված է նաև Նոտարք 85)։

— 49. Մատթէոս քահանա. գրիչ. օրինակել է Մատթէոս վարդապետի Վեցօրեայք և Քարոզգիրք, 1411 թ.—Ձեռ. Կարին. էջ 205։

— 50. Մատթէոս կրոնավոր, կազմեց այն Աւետարանը, որ Արճէշի Մեծոփայ վանքում գրել էր տվել Թադէոս քահանան, 1412 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 30 բ։

— 51. Մատթէոս քահանա, հոգևոր եղբայր Սարգիս եպիսկոպոս գրչի, որ օրինակեց Աւետարանը 1416 թ.—Ձեռ. Թաւր. 31 բ։

— 52. Մատթէոս վարդապետ, միաբան Երուսաղէմի. Պօղոս պատրիարքի հետ միասին գնաց Սիս, քննելու համար Գրիգոր Ը կաթուղիկոսի արարքները «1417 թ» (Ազգապ. 2048)։ Այս նույն

*անձը ըստ Միսուան 541 ա հոգևոր որդին է Սսի Պօղոս կաթողիկոսի, որի հետ ուխտի գնաց Երուսաղէմ և վերադարձավ Սիս՝ 1422 թ։ Ավելի մանրամասն տես Պօղոս Գառնեցի կամ Արաբատցի։*

— 53. Մատթէոս *գրիչ. օրինակել է Շիրակացու գործերը՝ 1426 թ.—Շիր. տիեզ. յաջ.* XV։

— 54. Մատթէոս *քահանա, եղբայր Սիմէոն ճգնավորի. Թվին միաբան Կոթլփորոյ Ընկուզագոմ վանքի, 1427 թ.—Նոտարք 84—85։*

— 55. Մարկոս *երեց, որդի Աղասուլթանի, գրիչ. Անգեղակոթ գյուղում օրինակեց Նարեկը 1431 թ.—Ձեռ. Կարին. 173> Նոտարք 95, Մխական 212, ուր տես և իր ճյուղագրությունը։*

— 56. Մատթէոս *աբեղա, միաբան Ամրդոլայ վանից, երբև վկա ստորագրում է մի ջաղացքի գնման առթիվ, 1437 թ.—Նոտարք 112։*

— 57. Մատթէոս *քահանա Վրաստանի Գորի քաղաքի Ս. Աստուածածին եկեղեցու, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Ավետարան՝ 1438 թ.—Նոտարք 117։*

— 58. Մատթէոս *Գ կաթողիկոս Աղուանից, հաջորդել է Կարապետ (№ 156) կաթողիկոսին՝ 1423 թ. (ինչպես ճշտվում է Նոտարք 72 դրված հիշատակարանից և ոչ 1424 թ). Նորից է հիշված 1435 թ. (Շահխաթ. Բ. 343> Նոտարք 105) և նստել է մինչև 1440 թ։ Նրան հաջորդեց Աթանաս (№ 11), որ նստավ 1 տարի։—Ջամբռ 77, Ձեռ. Դադեան, Ա. 27 ա, 89 բ, Բ. 44 ա։*

— 59. Մատթէոս *գրիչ. միաբան Գեղարդայ վանքի. օրինակել է Շարականը՝ 1441 թ.—Այրարատ 346։*

— 60 Մատթէոս *կրոնավոր, միաբան Մեծոփայ վանից, հիշված է 1445 թ. երբ արդեն մեռած էր։—Նոտարք 147։*

— 61. Մաթէոս *երեց, գրիչ. Ագուլիսում օրինակեց մի մեծ Տօնական՝ Գողթան գավառի առաջնորդ՝ Ստեփաննոս արքեպիսկոպոսի պատվերով՝ 1447 թ.—Ձեռ. Թաւր. 123 բ։*

— 62. Մաթէոս, *գրիչ. գնեց մագաղաթ և իր ձեռքով գրելով Շարականը, նվիրեց իր ձեռնասուն աշակերտ Յովհաննէս կրոնավորին, Այրիվանքում, 1447 թ.—Ձեռ. Բեռլինի, 30 ա։*

— 63. Մատթէոս, *առաջնորդ Սեպուհ լեռան Ս. Լուսաւորչի վանքի, 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 423։*

— 64. Մարկոս *աբեղա, հայրապետ Պղնձայգոյ Աւագ անապատի, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 407։*

— 65. Մաղթեոս աբեղա, միաբան Տրապիզոնի Վերի Ս. Աստուածածին վանքի, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 190։

— 66. Մատթեոս երեց, որդի Սուլթանի. գրիչ. օրինակել է մի մեծ տոնական ճառընտիր, որ կոչվում է «Հրաշափառ Տոնական», Վերի Նորավանքում, 1456 թ.—Ձեռ. Կարին. 102. Զարբ. Թրգմ. 727. Սոկր. յոյ. 38. Հրատ. Ազատ. 1909 թ. յոյ. էջ ԽԶ, Սմբատեանց՝ Երնջակ 122, Նոտարք 182, Ձեռ. Վենետ. Բ. 1128։

— 67. Մատթեոս Աւենիկեան (Avenicensis), ունիթոռական, նշանակվեց Եւգենիոս Պապից առաջնորդ Նախիջևանի կաթոլիկ հայոց (1438 թ). գիտնական անձ է եղել. երկար ժամանակ վարել է իր պաշտոնը. ճամբորդության ժամանակ հիվանդացել և մեռել ու թաղվել է Կիպրոս կղզում։ Նրան հաջորդեց Յովհաննէս եպս. որ ձեռնադրվեց Հռոմում, 1462 թ.—Սիսական 390 բ։

— 68. Մատթեոս Շիրուանցի, գրիչ. օրինակել է Աւետարանը Խորտկանց գյուղում, 1464 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 301, Սադիան 31։

— 69. Մատթեոս գրիչ. օրինակեց Մաշտոցը Եղվարդ գյուղում, 1464 թ. և մի տարի հետո էլ մի Աւետարան, նույն գյուղում, 1465 թ.—Այրարատ 198, 320, Նոտարք 221։

— 70. Մատթեոս, միաբան Եղվարդի Գետարգելայ վանքի, 1465 թ.—Նոտարք 221։

— 71. Մաղթեոս քահանա, որդի Ստեփանոս քահանայի. Անաւարզայի Ս. Աստուածածին վանքում, Հայրապետ եպիսկոպոսին գրել տվեց մի Ճաշոց, 1466 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 235 ա։

— 72. Մատթեոս վարդապետ Սեբաստացի, Թոտորկայ գյուղից, որդի տանուտեր Յովհաննէսի. Մինաս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, ծաղկել տվեց Յովհաննէս Նաղաշին, ինքը իր ձեռքով կազմեց և նվիրեց Սեբաստիոյ Հրեշտակապետաց վանքին, 1469 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 11։

— 73. Մատթեոս քահանա Անբերդի, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 74. Հ. Մատթեոս Քռնեցի, գավառահայր ունիթոռական վանորէից, գնացել էր Հռոմ և Հ. Գրիգոր վանահոր հետ վերադարձավ Ապարաներ՝ 1475 թ.—Սիսական 370 բ։

— 75. Մատթեոս Դ կաթուղիկոս Աղուանից, որդի Աթաբէկի՝ որդւոյ Ջալալի։ Այս Աթաբէկը ունէր երեք որդի, որոնք են Մատթէոս, Այդին (կամ Այտիմբէկ) և Խիմշայ։ Աթաբէկի եղբայրն էր Յովհաննէս Զ, որ Աղուանից կաթուղիկոսն էր։ Նրա

*մահից հետո՝ նրան հաջորդեց այս Մատթէոսը, որ Աթաբէկի եղբօրորդին էր և ստացավ Ջհանշահից իր հաստատության հրովարտակը՝ 1462 թ. Գահակալել է մինչև 1473 թ. և իրեն էլ հաջորդել է Արիստակէս Ա. (№ 38)։ Իսկ ըստ Բարխուտ. Պատմ. աշխ. Բ. էջ 17, գահակալում է մինչև 1476 թ. երբ հաջորդում է Արիստակէս Ա., որ ըստ Բարխ. նստում է միայն մի տարի, իսկ ըստ Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ՝ հինգ տարի։—Ջամբռ 78, Ջալալ. Բ. 480—2, Նոտարք 206, Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ, Բ. 30 բ։*

— 76. Մատթէոս *գրիչ, օրինակեց Գիրք Թղթոցը և մի ժողովածու, իր հարազատների համար, սկսելով 1426 թ. և ավարտելով 1476 թ.—տես Գ. Տէր-Մկրտչեան, Անան. շիր. էջ 3, Կրպտ. եպս.՝ Դոփեանք 189։ Իսկ ըստ Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 137 նույն թվերին օրինակել է մի տոմարական գըրվածք։*

— 77. Մատթէոս *գրիչ. օրինակեց մի Աւետարան, որ գնեց Էմին տիկինը 1477 թ.—Բարխուտ. Աղվանից երկ. 9։*

— 78. Մարկոս *«ծառայ սուրբ աստուածածնին». գրեց մի ողբ Թաւրիզցի խոջա Յակոբի որդի Յովհաննէսի վաղաժամ մահվան վրա, 1478 թ.—(գտնվում է* Bodleian *№ 30 Յայսմաւուրքի մէջ)։*

— 79. Մարկոս, *որդի պարոն Թորոսի, միջնեկ եղբայր Էլպաշի Էմին պէկի, որ Կեսարիայում տէր Յովանէ Նաղաշին գրել տվեց մի ճաշոց՝ 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1848։*

— 80. Մարկոս, *որդի նույն Էլպաշի Էմինի.—անդ։*

— 81. Մատթէոս *Երեց, միաբան Մուղնու, 1484 թ.—Ձեռ. Սանահ. 25 ա։*

— 82. Մատթէոս, *որդի՝ Հռիփսիմէի, որ Մարտիրոս երեցից գնեց մի հին Աւետարան և նվիրեց Ս. Սարգիս եկեղեցուն, 1486 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 537։*

— 83. Մատթէոս, *որդի Յովսէփ քահանայի և եղբայր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 10 բ։*

— 84. Մատթէոս *վարդապետ, ուսուցիչ Մխիթար գրչի, որ Սեբաստիոյ Կովառուն գյուղում օրինակեց Յայսմաւուրքը 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 434 (թերևս № 86)։*

— 85. Մատթէոս, *հայր Մատթէոս վարդապետի՝ առաջնորդի Սեբաստիոյ, 1489 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 239, 240։*

— 86. Մատթէոս վարդապետ Սեբաստացի. որդի Մատթէոսի. Սեբաստիոյ թէմի և Ս. Նշան վանքի առաջնորդն էր. գիտնական մարդ, որ կոչված է «մեծ բարունապետ և քաջ հռետոր... որ յայսմ ժամանակիս փայլէր ի մէջ վարդապետաց, որպէս (յ)աստեղս արեգակն»։ Սուլթան Մէհէմմէդ Ֆաթիհը՝ Աբրահամ վարդապետ Տրապիզոնցու հետ Պոլիս բերել տվեց պատրիարքը դարձնելու համար, 1479 թ. բայց նրանք մենակեցությունը նախընտրելով՝ մերժեցին աթոռը։ Մատթէոս վարդապետը դարձավ Սեբաստիա, ուր Փիլիպպոս Արևելցուն գրել տվեց և Ս. Նշան վանքին նվիրեց մի փառավոր ճաշոց 1489 թ։ Սրա վերջում ինքը ավելացրեց մի ընդարձակ ոտանավոր՝ այս սկզբնավորությամբ. «Ես Մատթէոս մեղօք լցեալ, Սեբաստիոյ վարդապետ լեալ, դատարկ անուան արժանացեալ, գործոց բարեաց թափուր մնացեալ...». գրված է 1495 թ.—Առաք. պատմ. 440. Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1926, 239—241, Թորգոմեան, Սեբաստիոյ պատմ. 228, Ալպօյաճեան՝ Պատմ. հայ Կես. Ա. 583։

— 87. Մաթէոս քահանա, որդի Մկրտչի. գրել տվեց Աւետարանը՝ Եղեգեաց անապատում, Աստուածատուր գրչին. 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

— 88. Մատթէոս աբեղա. գրիչ. օրինակել է Աւետարանը Աղթամարում, 1497 թվին.—Ձեռ. Կարին. 18։

— 89. Մատթէոս եպիսկոպոս, առաջնորդ Ունիթորական հայոց. գնացել էր Ջենովա 1498 թ.—Հայապ. 28։

— 90. Մատթէոս տաղասաց. թվականը անհայտ է. գրել է Վարդանանց վրա մի տաղ, որ սկսում է այսպես.

Մաքուր հոգով, արիք մարմնով,
Լերուք ողբակից հայոց հաւատով.

Տաղը գտնվում է Ձեռ. Հալէպի, Ա 143 բ (ձեռագիրը գրված է 1497 թ)։ Նույնը գտնվում է նաև 1630 ական թվերին գրված մի Գանձարանում (Ձեռ. Հալէպի, Ա. 205 ա)։ Հնագույնը լինելով ԺԵ դարից, հեղինակն էլ ամենաուշը այդ դարից է։

— 91. Մաթէոս որդի Էլբէկի՝ եղբոր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։

— 92. Մատթէոս վրդ. գրիչ. օրինակել է «Յաղագս երկրաչափութեան» (ԺԵ դար).—Աբրահամեան, Խորենացուն վերագրվող Աշխարհացոյցը, էջ 92։

— 93. Մատթէոս հայ վաճառական, որ Եթովպիայի թագաւորի կողմից դեսպան ուղարկվեց Պորտուգալիայի Էմմանուէլ թագաւորի մօտ (1509—12 թ)։—Սիսական 458 բ։

— 94. Հ. Մատթէոս Թոշկաշինեցի. ունիթոռական քարոզիչ, պատարագում էր Թոշկաշէնի եկեղեցում, երբ մի Թուրք իշխանավոր 50 ձիավորով ներս մտավ եկեղեցի և պահանջեց որ իսկոյն գայ, ծառայի իրեն։ Միաբան եղբայրները այգի էին գնացել։ Պատարագչին սպասավորող եղբայրը խնդրեց Թուրքից, որ մի քիչ սպասի, մինչև պատարագը վերջանա։ Թուրքը զայրացավ, քաշեց պատարագչին, գլուխը սեղանի քարերին զարնելով ջարդեց և հրամայեց գլխատել նրան։ Հ. Մատթէոսին թույլ տվեց միայն մի ծունկ աղոթք անել, որից հետո թրի մի հարվածով գլուխը կտրեց ու հեռացավ։ Ժողովուրդը հավաքվեց և իբրև նահատակի՝ թաղեց նրան սեղանի կողքին (1598 թ)։—Սիսական 366 բ։

— 95. Մատթէոս վարդապետ Ծարեցի. Փիլիպպոս կաթողիկոսի քարտուղարն էր. Յակոբ Ջուղայեցի կաթողիկոսի կողմից ուղարկվեց Եվրոպա «1656 թ». այցելեց Վենետիկ, Հռոմ, Ամստերդամ. այստեղ հիմնեց տպարան և սկսեց տպագրել Ներսէս Շնորհալու «Յիսուս որդին» «1660 թ», բայց դեռ չավարտած մեռավ 1661 թ.—Զամչ. Գ. 658, Ազգապ. 2511. Լէօ, Հայկ. տպագր. Ա. 145—9։

— 96. Մատթէոս քահանա, ուսուցիչ Օգոստինոս Բաջեցու, որին ուղեկից եղավ Եվրոպա համբորդած ժամանակ (1609 թ).—Մարիոս՝ Օգոստ. բաջ. 5, 10։

— 97. Մարկոս Յովհաննիսեցի. Նախիջևանից ուղարկվեց Հռոմ՝ կաթոլիկ հայոց հովիվ ձեռնադրվելու համար, 1667 թ.—Մարկոս՝ Օգոստ. բաջ. 24։

— 98. Մատթէոս Վանանդեցի, հայ տպագրության հիմնադիրներից. սկզբում Ոսկանի օգնականն էր, ապա բաց արեց անկախ տպարան, ուր տպագրեց նախ Պարտէզ 1683 թ, որին հաջորդեցին Շարական 1685 թ, Ժամագիրք 1686 թ. ևն։ Իր գլխավոր օգնականն էր Թովմա եպս. Վանանդեցի (№ 223)։—Զամչ. Գ. 662, Սիսական 339—340։

— 99. Մատթէոս եպիսկոպոս Սարը, Կեսարացի, պատրիարք Պոլսի «1692—4 թ», ապա ընտրվեց կաթողիկոս Սսի «1694 թ»։ (Իբրև Սսի կաթողիկոս է հիշված 1703 թ. Չեռ. Հալէպի, Ա. 108 բ, 277 ա, 364 ա)։ Պետրոս Բերիացու հակաթոռության ժամա-

նակ գնաց Պոլիս «1701 թ» և Աւետիք պատրիարքի հակառակորդ կուսակցության մէջ մտավ։ Աւետիքի աքսորի ժամանակ եղավ պատրիարք Երուսաղէմի, սակայն Պոլիս նստելու պայմանով. «1706 թ»։ Սխալ է դնել պատրիարք Պոլսի՝ այս 1706 թվին (Ազգապ. 2735)։ Իբրև խռովարար և Աւետիք պատրիարքին փախցնողներից մեկը կասկածվելով՝ մահվան դատապարտվեց։ Հավատքը ուրանալով ազատվեց «1707 թ». փախավ Հռոմ, ուր և մեռավ (տես ՀԱ 1929, 435)։—Զամչ. Գ. 721—753։

— 100. Մատթեոս դպիր, տպարանապետ Պոլսում. իր հրատարակություններից են Իգնատիոսի Թուղթք (Պոլիս 1783), Մեկնութիւն Սաղմոսարանի (1801 թ) են։

— 101. Մատթեոս դպիր Գալատցի. գրել է «Գիրք ծանուցմանց», 1795 թ.—Այվազեան, Շար հայ կենս. Ա. 74—112, Տաշեան, Ցուց. 364։

— 102. Մատթեոս դպիր Պոլսեցի. եբրայեցերենից թարգմանեց «Տումար հարցողական» (ԺԸ դար).—Տաշեան, Ցուց. էջ 895։

— 103. Մատթեոս քահանա Կարնոյ, Հաննէ վարժապետի և պարոն Կարապետի հետ միասին գրեցին Գասպար, Մարիամ և Վառվառէ Կարնեցոց նահատակության (1810 թ) պատմությունը, որ տպվեց Ցայսմաւուրքի Գ տպագրության մէջ, որից էլ արտատպել ենք Նոր վկ. 631—644։

— 104. Մատթեոս Բ. Զուխաճեան, Պոլսեցի, պատրիարք Պոլսոյ «1844—48 թ». հաջորդեց Աստուածատուր Բ Պոլսեցի (№ 192) գահընկեց պատրիարքին. ուսումնասեր և ժողովրդական մարդ էր. համարվում էր ժամանակի լավագույն գիտնական անձնավորություններից մեկը. կարգավորեց Պատրիարքարանի Վարչական ժողովը, հիմնեց Հայաստան (ապա Մասիս) պաշտոնաթերթը, բացավ Իւսկիտարի Ճեմարանը «1845 թ»։ Իր օրով կազմվեց Հայ բողոքական համայնքը «1847 թ»։ Նեղված ամիրաների բռնություններից՝ հրաժարվեց աթոռից։ Ունի մի խումբ կրոնական աշխատություններ, որոնցից նշանավոր է «Բարի մարդ և բարի քրիստոնեայ» (տպ. 1856 թ)։ Տասը տարի հետո ընտրվեց կաթողիկոս «1858 թ», իբրև Մատթեոս Ա. Պոլսեցի և գահակալեց «1858—1865 թ»։ Իր օրով սկսվում է մեր ազգային վերածնունդը։ Կարգի բերավ մեր ծխական դպրոցները, Ներսիսեան դպրոցը, Մայր աթոռի ձեռագրատունը։—Ազգապ. 3977—4134։

— 105. Մատթէոս Գ. Իզմիրլեան, պատրիարք Կ. Պոլսի. ընտրվեց «1894 թ». արժանացավ «Երկաթէ պատրիարք» տիտղոսին. իր ժամանակ տեղի ունեցան Տաճկահայոց առաջին մեծ կոտորածները. Մատթէոսը ամեն կերպ աշխատեց դիմադրել Սուլթանին, հրավիրելով Մեծ պետությունների միջամտությունը հօգուտ հայերի, բայց անհաջող։ Սուլթանի հրամանով գահընկեց եղավ և աքսորվեց Երուսաղէմ «1896 թ»։ 12 տարի աքսորում մնալուց հետո, Տաճկական Սահմանադրության հռչակմամբ «1908 թ» մեծ փառքով վերադարձավ իր աթոռը, և ապա ընտրվեց կաթուղիկոս հայոց Մատթէոս Բ անունով՝ «1909 թ». կարճ ժամանակ հետո վախճանվեց 1910 թ։—Ազգապ. 5401—5524։

*ՄԱՏԼԻՆԱ, իգ. < իտալ. Maddalena=ֆրանս. Madelaine ձևից, որի մասին ավելի երկար տես Մագդաղենի։ Մի անգամ հիշատակված է 1771 թ. (Այրարատ 226)։

*ՄԱՐ, ար. < ասոր. ܡܪܐ mārā «տէր» բառից. հատկապես գործածվում էր mārī «տէր իմ» իբրև պատվանուն կրոնավորների։ Իբրև անձնանուն հմմտ. Մարի երեց Տիզբոնի (Բուզ. Դ. 16) (Հիւբշ. 294). գիտենք նաև Մար Աբաս Կատինա, որ բուն նշանակում է «Տէր Աբաս իմաստունն»։ Հայերեն էլ կա Տէր անձնանունը։ (Justi 197 ա հիշում է ասորի Marūī ավագերեց և բժիշկ (Ը դար), Marūī ավագ սարկավագ (774 թ) և համարում է իրան. Māhrūy «լուսնադէմ»?)։

— Մար իշխան Մեծ Ծոփաց, որին Վրթանէս կաթուղիկոսը («333—341 թ») ուղարկեց կայսեր մոտ՝ խնդրելու համար թագավորեցնել Խոսրով Բ Կոտակին։ Մին է այն 6 նախարարներից, որոնք ընկճեցին Աղձնեաց Բակուր բդեշխի ապստամբությունը Խոսրովի դեմ.—Խոր. Գ. դ. Բուզ. Գ. թ։

ՄԱՐԱԹԼԻ, ար. անշուշտ թուրքերեն է, ինչպես ցույց է տալիս -lı «-եղ,-ավոր» վերջավորությունը. բայց բառարաններում չկա նման բառ։ Հավանաբար Վանի բարբառում գործածված թրք. գւռ. մի ձև էր։ Իբրև անձնանուն գործածված է մի անգամ 1503 թ. (Ձեռ. Վասպ. 127)։

†ՄԱՐԱԽ, ար. < հյ. մարախ «մորեխ» բառից. այսպես նաև լտ. locusta, որ է «մորեխ», է նաև անձնանուն։ Հայտնի է օրինակ՝ Locusta Ներոնի մեղսակից նշանավոր թունավորող կինը։ Բայց թերևս այս է նաև հույն տառադարձությամբ Μάδαχος անունը (իբր զնդ. maδaxa «մորեխ»), որ Justi 183 բ համարում է māta- «իմաստուն» բառից։

— 1. Մարախ անապատական, աշակերտ Գինդի. Մեծն Ներսէսի մահից «373 Թ» հետո.—Բուզ. Զ. ժզ։

— 2. Մարախ (սեռ. Մարախու), կարծեմ քահանա, գրիչ. օրինակեց մի Աւետարան՝ Սիոն և Հայրապետ քահանաների համաձայնությամբ, Գնիկանց գյուղում (Աղթամարի թեմ), 1508 Թ.—Ձեռ. Վասպ. 633—4։

Մարաթ տես Մարիաթ։

† ՄԱՐԱՍ, ար. < Ամարաս նշանավոր ուխտատեղի անունից կրճատված, ինչպես սովորություն է այժմ էլ Ղարաբաղում։ Հիշված է 1658 Թ. (Ձեռ. Թավր. 13 բ)։

ՄԱՐԱՏԱՐՈՆ, ար. անշուշտ աղավաղ բառ. ծագումն անհայտ. ունինք միայն՝

— Տէր Մարատարոն, քահանա Բիւրականի, 1469 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

† ՄԱՐԳ, ար. կարծում եմ հյ. մարգ «արոտավայր, մարգագետին» բառից և ո՛չ թե կրճատված Մարգարէ կամ Մարգար անունից։ Այս անունով ունինք միայն երկու հոգի ԺԴ—ԺԴ դարից. այն է՝

— 1. Մարգ քահանա, հայր Յովհան գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ 1355 Թ.—Ձեռ. Վասպ. 209 (տեղն անհայտ)։

— 2. Մարգ, վաղամեռիկ որդի նույն գրչի, թոռն նախորդի։—Անդ։

† ՄԱՐԳԱՐԷ, ար. < հյ. մարգարէ բառից. հմմտ. արաբ. نبی nabī, որ թեև նշանակում է «մարգարէ», բայց նաև արական անձնանուն է։ Հնագույն ձևն է Մարգարէ, որ առաջին անգամ հիշատակված է ԺԲ դար. և որովհետև բառավերջի է հաճելի չէ Հայերենում, ուստի դառնում է Մարգարայ, հոգով Մարգարաւ (հիշատակված առաջին անգամ 1335 Թ.)։ Կրճատված ձևն է Մարգար, որի առաջին հիշատակությունն է 1269 Թ. և շարունակվում է մինչև այժմ։ Սրանից է Մարգարեան ազգանունը։

— 1. Մարգարէ վարդապետ Յովհաննավանից. դեռ աշակերտ էր, երբ Նանա թագուհին (դուստր Մեծն Սարգսի, քույր Զաքարե ամիր սպասալարի, կին Աբաս Բ թագավորի († 1192) Կիւրիկեանց) որդեգրեց նրան. իր մոր հետ շինում էր Յովհաննավանքի պարիսպը. շինության վերակացուն էլ Մարգարէ վարդապետն էր. բայց դեռ չավարտած, մեռավ վարդապետը մատաղ հասակում. և Նանան նրա գերեզմանի վրա կանգնեցրեց մի խաչքար հետևյալ սրտառուչ արձանագրությամբ. «Զաստուածա-

ընակս զայս խորանս և զխաչս ոսկեզօծական ես Նանայս դուստր մեծ հայրապետին Մարգսի որդւոյ Զաքարէի որդւոյ Աւագ Ծարգսի կանգնեցի ի վերայ նորակերտ վարդապետիս Մարգարէի, որ ի սկիզբն յաշակերտութեան իւրոյ որդիացաւ ինձ, և առաւել եղև քան զծնունդ յորովայնի, և հոգայր զօգուտն հոգւոյ իմոյ. և իմ տեսեալ զյօժարութիւն սրտի նորա անկայ ի շինութիւն պարսպին, նորա առաջնորդութեամբ. և մինչ նա յայս բարւոյ գործոյս վերակացութեան էր, մերձեցաւ կատարած կենաց նորա և ի հող էջ մանկահասակ. և մեզ սուգ անմխիթար եղև փոխումն նորա. և ես Նանայս աղէխարշեալ ի գթոյ նորա զայս գրի հնար սփոփանաց անձին իմոյ, զփոքր յիշատակս զայս ի դիրս նորա հաստատել, զի անմոռանալի լիցի առաջի Աստուծոյ յիշատակ նորա և անվախճան առ ի սէր որդիութեան նորա։ Արդ, ով մանկունք նոր Սիոնի, սիրով ցաւակցութեամբ յիշեսջիք զատարաժամ փոխեցեալն զամենաշնորհն զՄարգարէ, զի պայծառ և զուարթ երեսօք տեսցէ զՔրիստոս. և մերս անշարժ մնասցէ միաբանութիւն ի դուռն սուրբ Կարապետիս և ի հանդերձեալն առաջի Աստուծոյ. ամէն։ —Զքր. պատ. Գ. 23, Շահխաթ. Բ. 107. Այրարատ 175։ (Արձանագրությունը չունի թվական. բայց որովհետև Նանայի ամուսինը մեռել է 1192 թ. ուստի Մարգարէ վարդապետի մահն էլ պիտի դրվի ԺԲ դարի վերջը կամ ԺԳ դարի սկիզբը)։

— 2. Մարգարէ, *որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրված Ալաշկերտի Խասսուր գյուղի Ս. Աստվածածին վանքի դռան մոտ, 1206 թ.—Հայկունի, Բագրևանդ 182։ (Որովհետև գրված է «Մարգարէից», ուստի կարելի է ենթադրել թե երկու համանուն անձինք են)։*

— 3. Մարգարէ *քահանա միայնավոր, որի աշակերտը (Գրիգորիոս?) մի խաչքար է կանգնեցրել նրա գերեզմանի վրա, նրա և իրայինց հիշատակին Խծկոնքի վանքի առաջ, 1208 թ.—Շիրակ 129, Այրարատ 47 ա, Նոր վկ. 94։*

— 4. Մարգարէ, *թվի թե նույնն է այն քարտաշի, որ փորագրել է Անիի արքեպիսկոպոս Գրիգորի արձանագրությունը Բագնայրում, վանքի հանգուցյալ միաբանների քառասունքի մասին, 1215 թ.—Շիրակ 118։*

— 5. Մարգարէ, *որի հոգուն պատարագ է նշանակված Խըծկոնից մի արձանագրության մեջ՝ 1216 թ.—Ազգագր. հանդ. Ա. 45, Արար. 1904, 990։*

— 6. Մարգարե, վանահայր Օշականի Ս. Սիոն եկեղեցու 1221 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 83, Այրարատ 194։

— 7. Մարգար որդի Կիրակոսի, որ Կիլիկիայում, Լևոն Բ-ի ձեռքով կարգված էր բերդավագ Անուշ 1179 թ։ Մարգարի թվականն է 1240։ Սրանից է սերվել Լիվոնոյի Միրմանեան ազնըվական տոհմը.—Ալիշան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 201, 206 (կեղծիք)։

— 8. Մարգար վարդապետ, եղբորորդի Յովհաննէս Վանական վարդապետի, որ հիշում է նրան իր մի արձանագրության մեջ, Խորանաշատ 1246 թ։ Ստորագրում է այն թղթին, որ գրեցին Սիւնեցիք Գրիգոր է Անաւարզեցի («1293—1307 թ») կաթուղիկոսի կաթոլիկական նորմուծության դեմ։—Օրբ. կը. Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 177. Ջամչ. Գ. 291. Աղգապ. էջ 1767։

— 9. Տէր Մարգարէ, հոգեոր որդի Կոստանդին Ա Բարձրբերդցի (№ 56) կաթողիկոսի, որ նրա միջոցով մի Աւետարան նվիրեց Խաչենի Վաղահաս գյուղի Տիրամայր եկեղեցուն (եպիսկոպոսարան), 1246 թ.—Արցախ 192։

— 10. Մարգարէ, որդի Գագիկ երեց. աթոռակալի, կանգնեցրել է մի խաչքար՝ Հերհեր գյուղի մատուռում, 1247 թ.—Սիսական 112, Արրա. 1889, 329։

— 11. Մարգարէ, ծաղկել է Հաղբատի նշանավոր Աւետարանը՝ 1211 թ. մի խաչքար է կանգնեցրել Հաղբատում 1255 թ.—Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 78, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 62, Ազգագր. հանդ. Է, 412, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 15, 42, 43, 62, 63, 71։

— 12. Մարգար գրիչ. օրինակել է Աստուածաշունչը Հռոմում 1269 թ.—Ձեռ. Կարին. 14։

— 13. Մարգարէ, որդի Խոբր քահանայի, որ Տարում շինել է Ս. Գրիգոր մատուռը 1274 թ.—Արցախ 407։

— 14. Մարգար քահանա, քեռայր Թումայ քահանայի, որ նրա և իրայնոց հոգուն մի խաչ կանգնեցրեց Մարցի հին հանգստարանում, 1285 թ.—Ազգագր. հանդ. Է, 350։

— 15. Մարգար, առաջնորդ Գեղարդայ վանից, 1288 թ.—Յովսէփեան՝ Խաղբակեանք 143, Այրարատ 342, 350, Արրա. 1871, 92, Շահխաթ. Բ. 287 (վերջինս գրում է Գրիգորի)։

— 16. Մարգարէ որդի Տեր քահանայի, որ գրեց մի Աւետարան, 1311 թ.—Ձեռ. Թաւր. 71 բ։

— 17. Մարգար *վարդապետ Օձոպեցի, ունիթոռական, միաբան Քռնիի վանքի «1330 թ».—Ազգապ. 1845, Զեռ. Ներս. 32 ր. Սրա հետ նոյն է՝*

— 18. Մարգար *վարդապետ, կազմարար. Քռնիի վանքումն էր. ապա գնաց Ջահուկ, ուր Ներսէս վրդ. Սասնեցու համար կազմեց Ս. Գիրքը 1332 թ.—Հայապ. 547։*

— 19. Մարգարա *փիլիսոփա (երաժիշտ). Թիւրքթի վանքում, 1335 թ.—Սիսուան 517 ա։*

20. Մարգարէ *քահանա, որդի Դանիէլի. գրիչ. օրինակել է Աւետարանը՝ Բերդձորում, 1337 թ.—Տաշեան, Ցուց. 696։*

— 21. Մարգար *որդի Սահակի, որ ստացաւ մի ձեռագիր 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489։*

— 22. Մարգարէ, *խաչընդուս կրօնաւոր, հոգևոր եղբայր Ստեփաննոսի, որ ստացաւ մի ժողովածու, 1360 թ.—Քոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 83։*

— 23. Մարգար *որդի Յովհաննէսի, որ տուեց նրան Մովսէս քահանային իբրև հոգեորդի, ապա երեց դարձնելու համար, 1387 թ.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 45, 61։*

— 24. Մարգար *Զուղայեցի, մահտեսի. Ռումինիայի Եաշ քաղաքի հայ եկեղեցու հիմնադիրներից մեկը՝ 1395 թ.—Տան, Արևել. հայք 8։*

— 25. Մարգար *պարոն, հայր Թուրվանդայի, որ ստացաւ մի Աւետարան և նվիրեց Անդրէաս քահանային, 1406 թ.—Քոսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 22։*

— 26. Մարգար, *որդի խաչպան Յովհաննէս երեցի, որ գնեց մի Աւետարան, 1411 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 232։*

— 27. Մարգարէ *վարդապետ, աշակերտ Մկրտիչ Եղէգեցւոյ, որին Թովմա Մեծոփեցին նվիրել էր իր արտագրած «Առորս» գիրքը. սրա փոխարէն Մկրտիչ Եղեգեցին էլ Սաղմոսավանքում օրինակեց Լուծմունքը և նվիրեց Մեծոփեցուն, 1413 թ.—Այրարատ 163։*

— 28. Մարգարէ *վարդապետ Վարագցի, աշակերտեց Մեծոփայ վանքում Գրիգոր Տաթևացուն, ապա Սուխարայ վանքում Սարգսին, դասընկեր ունենալով Թովմա Մեծոփեցուն։ (Մյուս ընկերները տես Սարգիս Րաբունապետ)։—Մեծոփ. 51, 52. Յայսմ. ապր. 27, Տաշեան՝ Ցուց. 418։*

— 29. Մարգարէ *քահանա, մականունը Ցախոբ ասորի, Մո–*

կաց Ս. Գէորգ անապատում, Կարապետ աբեղային գրել տվեց մի Մաշտոց, 1418 թ.—Նոտարք 54։

— 30. Մարգարե, միաբան Պարկի վանքի (Ոստանի գեմ), հիշված 1420 թ.—Ձեռ. Վատ. 324։

— 31. Մարգարե աբեղա, որդի Պլտուխի և եղբայր Դանիել աբեղայի, որ գնեց Բարոյգիրքը՝ 1425 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)։

— 32. Տեր Մարգար, երեց եղբայր Դանիել կրոնավորի, որ Ծաղարցի վանքում գրել տվեց մի Ավետարան, 1427 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 414։

— 33. Մարգարե աբեղա, գրիչ. նահատակ տանուտեր Մարտիրոսի օրինակից օրինակեց Ավետարանը՝ Բուխտանից երկրում, Խաչատուր քահանայի համար, 1428 թ.—Նոտարք 90։

— 34. Մարգարե, գրիչ. Սիոն եպիսկոպոսի համար օրինակեց Ավետարանը Մոկաց Ս. Գէորգ վանքում, 1435 թ.—Ձեռ. Վատ. 372։

— 35. Մարգար կրոնավոր, փակակալ տաճարի Բարթուղիմէոս առաքյալի վանից, երբ նույն վանքի առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսը Յայսմաւուրքը օրինակել էր տալիս Աղարիա գրչին, Մարգարը թուղթն էր կոկում և երբեմն էլ ինքն էր գրում, 1438 թ.—Ձեռ. Թավր. 41 ա։

— 36. Մարգարե աբեղա, Եկեղեաց գավառի Աւագ վանքում, 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49 բ։

— 37. Մարգարայ աբեղա. սրա մայրը մի կապ թուղթ նվիրեց Մելքիսեթ երեցին՝ արտագրելու համար Գանձարանը, Աւան գյուղում, 1453 թ.—Bodleian 134։

— 38. Տեր Մարգարե, ազգական Տէր Մարտիրոսի, որ Մովսէս գրչին գրել տվեց մի Ավետարան՝ Բասենի Սպիտակ վանքում, 1455 թ. այդ թվին արդեն մեռած էր Տէր Մարգարէն և թաղված Նորք գյուղի Ս. Ստեփաննոս եկեղեցում,—Նոտարք, էջ 180։

— 39. Հայր Մարգարե, վանահայր ո՞ր վանքի 1456 թ.—Ձեռ. Վատ. 426։

— 40. Մարգարե աբեղա, գրիչ. օրինակեց Երուսաղէմում մի Յայսմաւուրք 1468 թ.—Տաթև տարեց. 1925, 292։

— 41. Մարգարե, որդի Յովհաննէսի, մայրն է Ոսկի, եղբայրներն են Յովհաննէս և Մխիթար. հոգևոր որդի Թումայ քահանայի և Յովհաննէսի. բնռւն գրիչ. արտագրել է 1441—63

թվերին, այն է 22 տարվա ընթացքում՝ չորս Ավետարան։ Առաջին Ավետարանը արտագրել է 1441 թ. Մոկաց Արքահամանց գյուղում, Մկրտիչ եպիսկոպոսի հրամանով (Նոտարք 124=Ձեռ. Վաստ. 445)։ Երկրորդ Ավետարանը գրեց Ուշտունեաց Բերդաձոր վանքում, Առաքել աբեղայի համար (№ 71), 1446 թ. (Նոտարք 154=Ձեռ. Վաստ. 399 (Թերի)։ Երրորդ Ավետարանը արտագրեց Բերդակցի հեւան տանուտեր Աստի համար, Ուշտունեաց երկրում, 1456 թ. (Նոտարք 184)։ Վերջապես չորրորդ Ավետարանը արտագրեց նույն Բերդաձորի վանքում, տանուտեր Աստվածատուրի համար, 1463 թ. (Նոտարք 216՝ շատ համառոտ, բայց տես վերջին տողը, որի միջոցով միացնում և կապում եմ Ձեռ. Վաստ. 443—6 ընդարձակ հիշատակարանի հետ և այսպեսով կազմում նույն գրչի կենսագրականը)։ Վերջին ձեռագիրը օրինակած ժամանակ խեղճ գրիչը արդեն շատ ծերացել էր և գրում է. «Եւ խոշորութեանս և սխալութեանս անմեղադիր լերուք. զի աչքս ի լուսոյ էր պակասեր և ձեռս ի շօշափելոյ և միտքս ի տեսանելոյ. ով զմեզ յիշէ, Աստուած զինքն յիշէ»։

— 42. Մարգարէ *(կամ Մարգարայ) վարդապետ, աթոռակալ վիճակին Վանայ և առաջնորդ Վարագայ վանից. հիշված է Վանի առաջնորդ Յովհաննէս եպիսկոպոսի հետ 1421 թ. (Նոտարք 65, 67, երեք տարբեր հիշատակարաններում և Ձեռ. Վաստ. 340), 1448 թ. (Նոտարք 158), և վերջապես ըստ Յակոբ եպս. Թոփուզեանի Պատմության՝ 1464 թ. (Նոտարք 218)։ Փերգալէմեան (Նոտարք 65 նույն է համարում № 28 Մարգարէի հետ)։*

— 43. Մարգարէ *(կամ Մարգարայ) վարդապետ Կոռեցի, հիշված է երեք անգամ Էլթանենց ժահանի Տէր Վարդանի հետ (ժառանուն Մաքի). իբրև վարպետ (ուսուցիչ) 1447, 1455 և 1466 թվերին (Նոտարք 156, 177 և 226=Ձեռ. Վաստ. 400)։ Տես և* Իսրայէլ *№ 13։*

— 44. Մարգարէ, *հայր Ջանիբէկի, ամուսնոյ Սելչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 338։*

— 45. Մարգարէ *կրոնավոր, գրիչ. Մենծկերտում, Սիրունքարի անապատում օրինակեց Յայսմաւուրքը, 1468 թ.—Թորոս աղբ. Բ. 377։*

— 46. Մարգարայ, *իր երեք եղբայրների հետ՝ Մոկաց Փա-*

տավանք գյուղում, Խուրայել գրչին գրել տվեց մի Ավետարան, 1473 թ.—Արցախ 146։

— 47. Մարգարե քահանա, որդի Գրիգոր քահանայի, գրիչ. Բալուի Նեխրի գյուղում օրինակեց Ավետարանը, որ ստացավ Ասլըպէկը՝ 1475 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 624։

— 48. Մարգար երեց, ուներ մի Գանձարան, որ տվեց Յովան երեցին՝ օրինակելու համար Ծովքի Ս. Նշան վանքում. 1478 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1847։

— 49. Մարգարե, որդի Վելիի. եղբայր Խաչատուրի և Զաքարէի, որոնք (վերջին երկուսը) նրանց հիշատակին մի խաչքար են կանգնեցրել Ծարում, 1484 թ.—Արցախ 406։

— 50. Մարգար, որդի Տէրտէրի, եղբայր Աբրահամ գրչի (№ 86), որ Բոլորաձորում օրինակեց Մանրուսմունքը 1484 թ.—Տաշեան, Ցուց. 855, Խաղբակեանք 237—8։

— 51. Մարգարայ, որդի Շահի և հորեղբորորդի Զաքարայ աբեղայի, որ Երզնկայո՞ւմ գնեց Յակոբ քահանայից մի Շարակնոց՝ 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 52. Մարգարայ գրիչ. Աղբակում օրինակեց մի Ավետարան՝ 1487 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 84։

— 53. Մարգար, ժերձավոր Աստուածատուրի, որ գնեց մի հին Ավետարան, 1488 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 492։

— 54. Մարգար, աշխարհական եղբայր Աբրահամ քահանայի, որ Վայոց Ձորի Եղեգիս գավառի Վերի Նորավանք ուխտում, Գրիգոր աբեղային (№ 690) գրել տվեց մի Ավետարան 1495 թ.—Ձեռ. Վասպ. 522։

— 55. Մարգար, որդի Աթաբագի և եղբայր Սպահանի, որ Սաղմոսավանքում, Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Ավետարան 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22 բ։

— 56. Մարգարայ քահանա, օգնեց Կարապետ Բաղիշեցուն՝ կազմելու համար մի հին Ավետարան, Մշոյ Առաքելոց վանքում, 1496 թ.—ՀԱ 1937, 320։

— 57. Մարգարա, որդի Մկրտիչ քահանայի. մայրն է Շնոհոր. աշակերտել է Զաքարիա վարդապետին և Սուքիաս կրոնավորին. գրիչ. Աղբակի Երնկանի գյուղում օրինակել է մի Ավետարան տանուտեր Արապշահի համար 1490 թ. և մի Ավետարան էլ Հաբիբ խաթունի համար 1498 թ.—Ձեռ. Վասպ. էջ 512 և 528։

— 58. Մարգարե դպիր, որդի Սուլթանի՝ եղբոր Մանուէլ

քահանայի, որ Գեղաքքունեաց Կոթ գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սեւան. 18։

— 59. Մարգարայ սարկավագ Թուրկուրանցի, նահատակ։ 1580 թվին այս գյուղում շատ առատ ցորեն էր դուրս եկել։ Գյուղի դատավորը՝ Մահմետ պահանջեց հարկերը ավելացնել և երբ տանուտերները ընդդիմացան, սկսեց ամբողջ գյուղը նեղել։ Տանուտերները դիմեցին Կարսի զորագլխին և հրաման հանեցին նրանից, օրինական տուրքից ավելին չպահանջել։ Դատավորը գնաց Տիգրանակերտի դատավորին՝ չարախոսելու հայոց մասին. վրա հասան նաև Թուրկուրանի 10 տանուտերները, որպեսզի պաշտպանեն իրենց։ Մահմետը բանտարկեց նրանց և Տիգրանակերտի դատավորի հետ միացած՝ երկու Թուրք սուտ վկա վարձեցին, որոնք դատարանի առաջ վկայեցին թե նրանք հայհոյել են իրենց կրոնը։ Հրաման դուրս եկավ այրել հայհոյիչներին։ Ջոկեցին նրանցից երկուսին՝ Մարգարէին և Շահրմանին և առաջարկեցին ուրանալ իրենց հավատքը։ Երբ մերժեցին, ամբոխը քաղաքից դուրս տարավ նրանց, տեսակ տեսակ տանջանքներով չարչարեցին, փայտի վրա մեխեցին և նավթով կրակ վառելով այրեցին։ Սիմէոն անուն անձը, հավանաբար Տիգրանակերտցի, գրեց նրանց նահատակության պատմությունը (1580 թ), որ տպված է Նոր վկ. 413—420։

— 60. Մարգարէ վարդապետ, աշակերտ Վարդան վարդապետ Բաղիշեցու. բերավ Իւղօրհնէքի և Հիւանդաց օծման կարգը, 1681 թ.—Տաշեան, Ցուց. 677 բ։

— 61. Մարգար եպիսկոպոս Պարոնտէր, ուսուցանում էր Վարագայ վանքում. իր աշակերտներից են Զաքարիա փիլիսոփան, Կարապետ Ջամալ, Յովհաննէս Բրդուանեց վարդապետները, որոնք ունէին երգեր ու գանձեր (ԺԷ դար).—Ազգապ. 2261։

† ՄԱՐԳԱՐԻՏ, իգ. < հյ. մարգարիտ բառից. սրա համազորներն են արաբ. در durra «մարգարիտ» և անձնանուն (տես Կամուս, հտ. Ա. 855), Lulu «մարգարիտ» և արական անձնանուն Բենգալիայում (տես Ibn-i-Baṭuṭa, Դ. 212, ԺԴ դար), պրս. Durdānah («մարգարտի հատ»)՝ կին Նուշապուրի իմամ Օմարի († 1139) (Justi 87)։ Գործածական է մեր մեջ ԺԲ դարից սկսած և այժմ էլ կենդանի է։ Այլ է եվրոպական Մարգարիտ անունը (ֆրանս. Marguerite, Margot, անգլ. Margaret, Marget, գերմ. Margaretha, ռուս. Маргарита), որոնք առաջանում են «մարգարտածաղիկ» բառից։ Հայերենում երկու անունները դուգա-

կոչել են և այժմ եվրոպական ձևով հաճախ ասվում է Մարգօ:

— 1. Մարգարիտ, դուստր Ուխտիկի, կանգնեցրել է մի խաչքար՝ Գանձակի Հարցհանգիստ գյուղի եկեղեցում, 1155 թ.—Արցախ 292, Ազգագր. հանդ. Ե. 310։

— 2. Մարգարիտ, հոգևոր մայր Վասիլ քահանայի, որ նրա դրամական օգնությամբ «բուն խոկ Կիլիկիոյ» Ս. Թորոս եկեղեցում օրինակեց Աւետարանը, 1231 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 222։

— 3. Մարգարիտ, դուստր Կոստանդին պայլի և քույր Հեթում Ա. թագավորի և Սմբատ գունդստաբլի. հիշված է Կոստանդին պայլի հոյակապ արձանագրության մեջ (Ջանոբը գյուղում, 1242 թվից), երբ Մարգարիտը արդեն 12 տարեկանից անց էր.—Միսուան 75։

— 4. Մարգարիտ, դուստր Տիրատուրի և քույր Երեմիաս քահանայի, որ Կարնոյ Կան գյուղում գրել տվեց մի չքնաղ Աւետարան, 1283 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 644։

— 5. Մարգարիտ Խարբերդցի, նվիրատու Կապոսի Ս. Լուսավորիչ վանքի, 1295 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 35։

— 6. Մարգարիտ, կին Պապանի և մայր Թամամի՝ կնոջ Հաղարշահ Շեկրակեցու, 1313 թ.—յիշ. ИАН 1911, էջ 1300։

— 7. Մարգարիտ, թագուհի հայոց. ֆրանսուհի ազգաւ, Հունգարացոց թագավորական ցեղից, Սուասոնեան տոհմից. կին Լևոն Զ թագավորի հայոց։ Կիպրոսումն էր Լևոնի հետ. երբ Լևոնը սակավաթիվ մարդկանցով եկավ Կոռիկոս, իր հետ բերավ նաև մորն ու կնոջը, որոնց թողեց Կոռիկոսում։ Երբ հասավ Սիս, մարդիկ ուղարկեց, որոնք ողջամբ հասցրին նրանց Անարզաբա և այնտեղից էլ Սիս, ուր եղավ Լևոնի թագավորական օծումը 1374 թ։ Ամուսնու հետ գերի տարվեց Կահիրէ, ուր մեռավ «1381/2 թ» (1380 թվին դեռ կենդանի էր ըստ Դարդել 173) և թաղվեց Հայոց Ս. Մինաս եկեղեցում։—Սուտ է համարվում տաղասաց Մարտիրոս Ղրիմեցու այն տեղեկությունը, թե ուխտի է գնացել Երուսաղէմ, ուր և մեռել է ու թաղվել։—Յուշիկք Ա. 161, Բ. 503, 513. Հայ-Վենետ. 137—8. Ազգապ. 1965. Դարդել 63, 104, 114. Բասմաջեան, «Լևոն Ե» 58, 146—9։ (Շփոթելով իր աղջկա հետ՝ կոչված է նաև Մարիամ կամ Մարուն՝ Մին. համգ. 51)։

— 8. Մարգարիտ, թոռն Շահնշահի, որ Գողթան գավառի Կողատուռի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը, 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 387)։

— 9. Մարգարիտ, կին Լիանոսի և մայր Կիրակոս վարդապետի, որ ստացավ Տաթևացու Քարոզգիրքը 1419 թ.—Տաշեան, Ցուց. 978։

— 10. Մարգարիտ, Թաջխաթունի հետ երկու եղբոր կանայք Հայրապետ կրոնավորի, որ գրել տվեց մի Աւետարան՝ 1431 թ.—Նոտարք 98։ (Թաճխաթուն № 2 կոչել եմ կին Հայրապետ կրոնավորի, պետք է ուղղել «եղբոր կին»)։

— 11. Մարգարիտ, մորաքույր բրուտ տանուտեր Ստեփաննոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1435 թ.—Ջեռ. Վասպ. 370։

— 12. Մարգարիտ, կին Խաչատուրի՝ եղբոր տանուտեր Դուլթի, որ Թացու գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Ջեռ. Վասպ. 379։

— 13. Մարգարիտ, կին Մուրատի և մայր անծանոթ մի գրչի (սխալ գրված Թովմա, տես Բառարանիս Բ հտ. էջ 331), որ Խնդրակատար վանքում արտագրեց Նարեկը 1458 թ.—Նոտարք 189։

— 14. Մարգարիտ, կին Ստեփանոս քահանայի և մայր Մատթէոս քահանայի, որ Անաւարզայում, Հայրապետ եպիսկոպոսին գրել տվեց մի Ճաշոց, 1466 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 235 բ։

— 15. Մարգրիտ, կին տանուտեր Առաքելի, որ Գամաղիէլի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ջեռ. Վասպ. 453։

— 16. Մարգարիտ, դուստր Ստեփանոս քահանայի, որ Հերմոնի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ջեռ. Թաւր. 132 բ։

— 17. Մարգարիտ տիկին, Խարբերդում գնեց մի Աւետարան և նվիրեց Ս. Սարգիս եկեղեցուն, 1470 թ։ Խարբերդում նույն թվին ժանտախտ պատահեց, որին զոհ գնացին Մարգարիտի որդին, դուստրը և թոռները։ Մարգարիտը նրանց հիշատակին՝ Յակոբ քահանային մի Աւետարան ևս գրել տվեց, նույն 1470 թ.—Bodleian 9։

— 18. Մարգարիտ, կին Յովնանի, եղբոր հանգուցյալ ակս Մարտիրոսի, որ Բերկրիում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1473 թ.—Ջեռ. Վասպ. 467։

— 19. Մարգարիտ, կին Խոսրովի, որ Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ջեռ. Վասպ. 485—6։

— 20. Մարգարիտ, կին Յովհաննէս քահանայի, որ Բերկ-

րիի Առեղս գյուղում, Սարգիս գրչին գրել է տվել մի Ավետարան, 1468 թ.—Ջեռ. Վասպ. 508։

— 21. Մարգարիտ, կին Ստեփանոսի, եղբոր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի Շարակնոց, 1497 թ.—ՀԱ 1887, 56 ա։

— 22. Մարգարիտ, դուստր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ջեռ. Սևան. 18։

*ՄԱՐԴԱԶԱՏ, ար. < իրան. mard «մարդ»+āzāt «ազատ» բառերից՝

— Մարդազատ, ազնվական ազուան, որ իր եղբոր՝ Մանուկի հետ հավատքի համար չարչարվեց Պարտաւում, Արդլագիզի ձեռքով։ Եղբայրը նահատակվեց, իսկ ինքը ուրացավ (711 թ), բայց հետո դարձի եկավ։—Գղկնտ. Գ. ժը (հրտր. Շահն. մարդազատ, միրդազատ, էմին՝ մերդազատ).—սեռ. Մերդազատայ՝ Գղկնտ. Գ. ժը (չունի Շահն.)։

*ՄԱՐԴԱՆ, ար. < պրս. مردان Mardān անունից, որ ըստ Justi 195 բ. ծագում է mard «մարդ, տղամարդ» բառից՝ յգ. ān մասնիկով։ Մեր մեջ հիշատակված է մի անգամ 1581 թ.—Manus. brit. mus. 32 ա։

ՄԱՐԴԱՐԻՈՍ, ար. ծագումը անորոշ (Աւգերեան մեկնում է հյ. Մարդայր, իբր «այր մարտի»։

— Մարդարիոս հայ շինական, բնակվում էր Փոքր-Հայքի (Սեբաստիոյ շրջան) Արաւրակացոց քաղաքի (Արօրակ) մոտակա մի գյուղում։ Կտուրը շինելու ժամանակ, տեսավ թե ինչպես չարչարում են Եւստրատիոսին հավատքի համար։ Հայտնեց իր կնոջը և նրա հորդորով ինքն էլ գնաց նրան միացավ, իբրև քրիստոնյա։ Նահատակվեց Լիւսիաս դատավորի ձեռքով՝ Դիոկղետիանոս կայսեր († 313) ժամանակ։ Մին է Եւստրատիոսեան նահատակներից. տոնվում է 13 դեկտ։—Վրք. և վկ. Ա. 448—453.—կոչ. Մարդարիէ՝ էջ 452.—սեռ. Մարդարիոսի՝ էջ 474.—գրծ. Մարդարիոսիւ՝ էջ 468։—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ 500։

ՄԱՐԴԻԹ, ար. իբրև օրինակ բարդ բառի՝ հիշում է Թր. քեր. 16, որի դեմ հույն բնագիրն ունի Περικλῆς անունը։ Սրանից հետևում է թե Մարդիթ եւ հայկական անուն է, ինչպես կարծում է նաև Ադոնց, որ բառը գրում է գլխատառով։ Նույնը ունին նաև Խոր. քեր. 172, Սին. քեր. 206։

*ՄԱՐԴՈՒՄ, ար. < պրս. مردم mardum «մարդ» բառից.

հիշված է մի անգամ Մարտում ձևով, մի տապանագրում, 1778 թ.—Քոսեան, Հայք ի Ջմիւռն. Ա. 96։

ՄԱՐԵԱՄ, մր. ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված է 1705 թ. (Տաշեան, Ցուց. 916 ա)։

*ՄԱՐԵԽ, իգ? < արաբ. مريخ marrīx «Հրատ մոլորակը» բառից. հիշված է մի անգամ 1775 թ. (Ջեռ. Թաւր. 18 բ)։

†ՄԱՐԵՄԹԱԳ, (կամ Մարիամթագ) իգ. < Մարիամ անունից+հյ. թագ բառով. հմմտ. Լուսեթագ և Արևթագուհի անունները։ Հիշատակված է 3 անգամ ԺԳ—ԺԴ դարում և գնում է մինչև ԺԵ դար։

— 1. Մարեմթագ, մայր Ջորվար միակեցի, որ հիշված է Ատանայի Բաղնեկունք գյուղում 1292 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 436։

— 2. Մարեմթագ, քույր Երուսաղէմի աթոռակալ Յովհաննէսի. հորդորեց Ներսէս Կրակացուն՝ օրինակելու Ճառընտիրը, 1335 թ.—Ջեռ. Վեննա. Բ. 347։

— 3. Մարիամթագ, դուստր Սէթի և քույր Հնազանդի, որ գնեց մի Աւետարան և նվիրեց Խայեք գյուղի (Երզնկա) եկեղեցուն, 1404 թ.—Թորոս աղբ. Ա. 66։

*ՄԱՐԵՄԻԿ, իգ. < եբր. Մարիամ անվան փաղաքշական ձևն է։ Հիշատակված է ԺԲ դարում։

— 1. Մարեմիկ դուստր Հեթում Ա. սեբաստոսի (†1143 թվից հետո), տեառն Լամբրոնի. կին Վասլի՝ եղբոր Ներսէսի Շնորհալւոյ. քոյր Սմբատայ՝ տեառն Պապեռոնի.—Հայապ. 414, Թորոս աղբ. Ա. 117։

— 2. Մարեմիկ (տես. Մարեմկանն ձևով) հիշատակված է Արջոյառիճի մի արձանագրության մեջ (առանց թվականի).—Շիրակ 123։

†ՄԱՐԵՄՏՈՒՐ, սեռն անհայտ. < եբր. Մարիամ անունից+հյ. տուր, ինչպես ունինք Աստուածատուր, Տիրատուր, Գրիգորատուր, Վիրապատուր։

— 1. Մարեմտուր, կին Ստեփաննոսի Կուրկեան, որ մի կալված նվիրեց Գեղարդայ վանքին, 1177 թ.—Արձ. Այրարատ 343, Արրտ. 1871, 93։

— 2. Մարեմտուր Երևանցի, որի թոռը Սարգիս Երևանցի ժամանակել է Հաւուցթառի եկեղեցու շինության, 1177 թ.—Շահազիզ, Հին Երևանը, էջ 75, 76։

— 3. Մարեմտուր, հանգուցյալ ազգական Յովհաննէս քահա-

նայի, որ օրինակեց մի Աւետարան, 1298 թ.—Թորոս աղբ. Բ. 335։

— 4. Մարխմտուր Կողպացի, Նվիրատու Հոռոմոսի վանքին. հիշված է անթվական մի արձանագրության մեջ՝ Շիրակ 25։

ՄԱՐԵՆՑ, ար. մի անգամ հիշված է 1583 թ? Ջեռ. Սեբ.= ՀԱ 1926, 548 հետևյալ ձևով. «Եղբօրն նորա Մարենց». անհուն է թե ազգանուն. վերջին դեպքում ինչ է անվան ձևը.—Մարի*:

† ՄԱՐԵՐԻ, իգ. իբր թե Հայկ նահապետի աղջիկներից մեկի անունն է, որից առաջացել է հայոց մարերի ամսանունը (Տաթև. ձմ. ա. հարց. 200)։—Կեղծ գիտական ստուգաբանություն մարերի ամսանվան, որի ծագումը իրանական է։

*ՄԱՐԶՊԱՆ, ար. < պհլ. marzpān = պրս. مرزبان marzbān «մարզպան, կուսակալ» բառն է, որ իրանցոց մեջ էլ իբրև անձնանուն գործածվում էր. հմմտ. Մարզապան՝ բժիշկ արաբ (Տաշեան, Ցուց. 601), Marzūbān պալատական Շապուհ Գ-ի, Մարզպան՝ որդի Վահրիճի, կուսակալ Եմէնի, և 44 զանազան անձինք, որոնց ցանկը տես Justi 197—8. վերջինը Marčpan Բիրմանցի ուսումնական 1572 թ։ Կա նաև արաբ. իգ. Marzubānat Խորասանի նահանգապետի դուստրը։ Տես և Մարծուան։

— 1. Մարծպան, «որդի Սարգսի և թոռն Համազասպեանց, յազգէ Մամիկոնեանց». շինեց Դսեղի Բարձրաքաշ Ս. Գրիգոր վանքը, որ թանկագին սպասներով զարդարեց, գրքերով հարստացրեց և կալվածներով ապահովեց։ Այս բոլորը անձամբ պատմում է Դսեղի մեծ արձանագրության մեջ՝ 1221 թ։ Կինն է Մամքան (№ 8), որդիներն են Գրիգոր, Ասլանբէգ, Սարգիս և Ամիրայ, աղջիկն է Խորիշահ՝ կին Քուրդի, որի մոտ իջեանեց Հեթում Ա թագավորը՝ Մանգու ղանին այցելության գնալու ժամանակ «1254 թ»։ Արդեն մեռած էր 1241 թ. որդիքը և աղջիկը քանիցս անգամ հիշում են նրան՝ իրենց արձանագրությանց մեջ. -- սեռ. Մարզպանին՝ Կիր. լ (տպված է իբրև հասարակ անուն).—Մարզպանայ՝ Կիր. ծգ. Այրարատ 255. — Մարծպան, սեռ. Մարծպանայ ձևով Արձ. Այրարատ 162, 168, 169, Ջբր. պատմ. Գ. 18, Շահխաթ. Բ. 101, 122, 170. Ցարութիւնեանց՝ Ներս. դպ. Ա. ճնպրհ. 65, 70, 71, 72։—Մարզպան՝ Արձ. Ազգագր. հանդ. Ժ, 24 (անթվական)։

— 2. Մարծպան, որ Խերխանի և Մամիկոնի հետ նորոգել է Խաչենի Քոլատակ գյուղի իրենց գերեզմանատունը, 1265 թ.— Արձ. Արցախ 168։

— 3. Մարզման, մեծ հայր Շահնշահի, որ Գողթան գավա-

ռի Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Ավետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 387)։

*ՄԱՐԹԱ, իգ. < ասոր. مرتا mārtā բառից, որ مرا mārā «տէր» բառի իգականն է և նշանակում է «տիրուհի» (հմմտ. նաև Մարութա)։ Սրանից են ծագում նաև հուն. Μάρθα, լտ. գերմ. Martha, ֆր. Marthe, ռուս. Марфа. Հայտնի է օր. Մարթա՝ քույր Մարիամի և Ղազարոսի, որ բարեկամն էր Յիսուսի (Յհ. ԺԱ)։ Չհաշվելով առաջին վկայությունը, Մարթա անունը գործածական է եղել մեր մեջ ԺԲ դարից սկսած և մինչև այսօր էլ գործածական է։

— 1. Մարթա, քույր Մաքովարի, տեսչուհի Հոգեաց վանքի (Բարթուղիմէոս առաքյալի վանքից քիչ հեռու).—Յոր. պատմ. ածած. էջ 295.—սեռ. Մարթայի՝ անդ, էջ 296։

— 2. Մարթա, կին Ջնդանշահի. միասին ուխտի եկան Արտաւազայ վանքը և նվերներ արին 1224 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 365։

— 3. Մարթա, կին Ենոքի և մայր Տէր Յորդանանի, որ շինել է մի եկեղեցի (Պօղոս-Բիլխայում), 1247 թ.—Արցախ, էջ 363։

— 4. Մարթա, կին Հայրապետի և մայր Գրիգորի, որ իր կնոջ Լորիկի հետ մի խաչքար է կանգնեցրել Լոր գյուղում, 1271 թ.—Ազգագր. հանդ. Գ. 162։

— 5. Մարթա, կին Աստուածատուր քահանայի, որ Լիմ կղզում, Խաչատուր աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1301 թ.—Ձեռ. Վասպ. 139, 141։

— 6. Մարթա, մերձավոր Սարգիս աբեղայի, որ օրինակեց Ոսկեփորիկը Գլաձորում, 1317 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 857։

— 7. Մարթա կրոնավորուհի, դուստր Պօղոսի և քույր Մխիթարի, որ Եկեղեաց գավառի Երկայնի վանքում օրինակեց Հին կտակարանը, 1327 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 160։

— 8. Մարթա, դուստր Սեֆեդին արքայունի, քույր Աղթամարի Ստեփաննոս և Զաքարիա († 1336) կաթուղիկոսների.—Ակինեան՝ Գւզնգիրք 42։

— 9. Մարթա, կին Դանիէլի և մայր Մարգարէ դրչի ի Բերդձոր, 1337 թ.—Տաշեան, Ցուց. 696։

— 10. Մարթա, դուստր Գրիգորի և քույր Ստեփաննոս քահանայի, որ՛ մի հին Ավետարան գնելով, նորից կազմել ու ծաղկել տվեց, 1348 թ.—Manus. brit. mus. 8 բ։

— 11. Մարթա, դուստր Կարապետի և քույր Քրիստոստուր կրոնաւորի, որ Սուրխաթում (Ղրիմ) օրինակել տվեց Աստուածաշունչը, 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 12. Մարթա խաթուն, քույր Սիմէոնի և հորաքույր Յակոբ սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի «Կոչումն ընծայութեան» գիրքը՝ մոտ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 13. Մարթա, վաղամեռիկ կին Թորոս քահանայի, որ Ամիթում արտագրեց Աւետարանը՝ 1373 թ։—Ձեռ. Վեննետ. Ա. էջ 618։

— 14. Մարթա, կին Գրիգոր քահանայի, որ ստացավ մի հին Աւետարան, 1375 թ.--Տաշեան, Ցուց. 277 ա։

— 15. Մարթա խաթուն, կին Յակոբ անուն մի անձի, 1375 թ.—Տաշեան, Ցուց. 277 ա։

— 16. Մարթա, քույր Ամիրլոյսի և Թումայի, ազգական Կարապետ կրօնաւորի, որ օրինակել տուեց Հին Կտակարանը՝ Սղկայու վանքում, 1381 թ.—Ձեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 850)։

— 17. Մարթա, կին Թադէոս քահանայի և տատ Թադէոս փիլիսոփայի (երաժիշտ), որ Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1392 թ.—Ձեռ. Վասպ. 226։

— 18. Մարթայ, կին Ցետկարի և մայր Ներսէս երեցի, որ Երուսաղէմում օրինակել է մի Գանձարան, 1402 թ.—Նոտարք, էջ 19։

— 19. Մարղայ, կին Յովհաննէս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան 1414 թ.—Ձեռ. Վասպ. 249։

— 20. Մարթա, կին Ապրիլուսի և մայր Մկրտիչ քահանայի, որ Աղթամարում, Թումայ գրչին գրել տվեց մի Ճաշոց, 1419թ.—Նոտարք 58։

— 21. Մարթա խաթուն, դուստր Յովհաննէս քահանայի, ազգական Ստեփանոս կրոնավորի, որ Վանում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան 1421 թ. բայց չավարտած վախճանվեց նույն թվին։—Ձեռ. Վասպ. 341։

— 22. Մարթա, կին Բարիշահի և մայր Աստմ կրոնավորի, որ Վանում, Գրիգոր աբեղային՝ երկու ուրիշ գրիչների հետ գրել տվեց մի Յայսմաւուրք, 1421 թ. —Նոտարք 68։

— 23. Մարթա, դուստր Մկրտիչ քահանայի, քույր Կարապետ Դերջանցու, որ Հերմոնի վանքում օրինակեց Քարոզգիրքը, 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ)։

— 24. Մարթա, կին Թուլուխի և մայր Յովհաննէս քահա-

նայի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1422 թ.—Նոտարք 69։

— 25. Մարթա, կին Աստուածատուրի (№ 84). հոգևոր մայր Յոհաննէս կրոնավորի, որ Բերկրիում գրել տվեց մի Ավետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348։

— 26. Մարթա, կին Յովհաննէս տանուտերի, որ Աղթամարում, Դանիէլ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1436 թ.—Ձեռ. Վասպ. 373։

— 27. Մարթա խաթուն, կին Ամիրջանի, մեծ մայր Ստեփաննոսի, որ Տրապիզոնում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1437 թ.—Труды вост. комм. ИМАО, հտ. II 3, էջ 55։

— 28. Մարթա մահտեսի, հոգևոր մայր Մկրտիչ եպիսկոպոսի, որ Մոկաց Արբահամանց գյուղում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1441 թ.—Նոտարք 124։

— 29. Մարթա, կին Թումայի և մայր Շատվանցի Հայրապետ աբեղայի, որ Աղթամարում, Ներսէս աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1448 թ.—Նոտարք 160։

— 30. Մարդա, կին Եղէոնի և մայր Յոհանէս աբեղայի՝ հոգևոր եղբոր Յովսէփ աբեղայի, որ Մկրտիչ Նաղաշից ստացավ մի Աստուածաշունչ, 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 115։

— 31. Մարթա, դուստր Մկրտիչ քահանայի և քույր Կարապետ վարդապետի, վերջին ստացողի Աստուածաշնչի, 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 32. Մարթա, կին Ստեփանոսի և մայր Փաշա տիկնոջ, որ Վանում, Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 411։

— 33. Մարթայ, կին Իսրայէլ քահանայի, որ Մոկաց Փառավանք գյուղում օրինակեց Ավետարանը, 1455 թ.—Նոտարք, էջ 179։

— 34. Մարթա, դուստր Գունաշի՝ հոգևոր մոր Յովհաննէս աբեղայի, որ ստացավ մի Ավետարան, Աղբակի Ասփսթան գյուղում, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 բ։

— 35. Մարթայ խաթուն, կին Թաւաքալի և մայր Յովհաննէս քահանա գրչի, որ փայտ կտրելու ժամանակ աղետի զոհ գնաց և մայրը «կայ դառն սրտիւ և լալագին արտասուօք», 1458 թ.—Ձեռ. Թաւր. 429։

— 36. Մարթա, մերձավոր Յովհաննէսի, որի անունով մի

*խաչքար է կանգնեցրած Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքում, 1458 թ.—Շահազիզ, Ն. Նախջ. Ս. Խաչ վանքը 11, Ազգագր. հանդ. Է, 71։*

— 37. Մարթա, *դուստր տանուտեր Աստուածատուրի, որ Բերդաձորում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443։*

— 38. Մարթա, *կին Ստեփանոս քահանայի, որ Հերմոնի վանքում գրել տվեց մի Աւետարան; 1469 թ.—Ձեռ. Թաւր. 132 բ։*

— 39. Մարթա, *դուստր տանուտեր Սահակի և կում իր եղբօր Ատոմի, որոնք Խիզանում գրել տվին մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 470։*

— 40. Մարթա, *դուստր մահտեսի Մելիքշահի՝ հօրեղբօր Խդրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.*—Rapport Belgique *34։*

— 41. Մարթայ, *կին Յովհաննէս քահանայի և մայր Մխիթար քահանայի, որ Բոնաշէնում օրինակեց Աւետարանը՝ 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։*

— 42. Մարթայ *խաթուն, կին Ահարոն քահանայի և մայր Յովհաննէսի, որոնց անունով մի խաչքար կա Նոր-Նախիջևանի Ս. Լուսաւորիչ եկեղեցում, 1481 թ.—Ազգագր. հանդ. Է, 50։*

— 43. Մարթա, *քույր կամ հօրաքույր Վարդան արեղայի, որ Կտուց անապատում, Խաչատուր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 488։*

— 44. Մարթ(ա) *խաթուն, մերձավոր Սարգիս քահանայի, որ Բաղէշում գրել տվեց մի Յայսմաւուրք՝ 1484 թ.*—Rapport Belgique *39։*

— 45. Մարթա, *դուստր Բախթիարի և քույր Շահամիրի, որ Սարգիս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1925, 264։*

— 46. Մարթա, *կին Իսմայէլի և մայր Աստուածատուրի, որ գնեց մի հին Աւետարան, 1488 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 492։*

— 47. Մարթախաթուն, *դուստր խոջա Ղուբաթի, որ Արաշ գյուղաքաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։*

— 48. Մարթա, *դուստր Ծատուր քահանայի. գնեց Յուսիկ աբեղայի գրած Մաշտոցը՝ իր որդի Նորընծա Թադէոս քահանայի համար, 1491 թ.*—Bodleian *29։*

— 49. Մարթա, *դուստր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Ավետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։*

— 50. Մարթա, *կին Յովհաննէսի և մայր Աւագտէր վարդապետի (տես Ա. հտ. էջ 326), որ էր գրիչ և միանգամայն առաջնորդ Որկղունից Սպիտակաւոր վանքի. մեռած էր 1498 թվից քիչ առաջ։—Խաղբակեանք 233։*

**ՄԱՐԹԱԲ, իգ. < արաբ.* مرتبه martaba *«աստիճան» բառից։ Իբրև անձնանուն հիշված է մի անգամ 1685 թ.* Մարթապ *ձևով՝ Ձեռ- Ագուլ. (Արրտ. 1911, էջ 1011)։*

**ՄԱՐԹԻՆ, ար. < լտ.* Martinus *անունից, որ ծագում է* Mars, *սեռ.* Martis *անունից. (սա է պատերազմի աստվածը, Հրատ մոլորակը, երեքշաբթի օրը, ինչպես նաև «պատերազմ, կռիվ»)։ Այս անունով հայտնի են մի զորավար Յուստինիանոս կայսեր ժամանակ, մի եպիսկոպոս Տուր քաղաքի և առաքյալ Գալլիացոց, ինչպես և մի քանի պապ։ Հին տառադարձությամբ գրվում է* Մարտինոս. *գործածվում է Պոլսում և Նոր-Նախիջևանում* Մարթին *ձևով և համարվում է Մարտիրոս անվան համազորը, բայց ոչ մի կապ չունի նրա հետ.—Տես և* Մարտին։

**ՄԱՐԻԱՄ, իգ. < եբր.* מרים Maryām *կամ* Miryām *անունից՝ հուն.* Μαριάμ *տառադարձությամբ։ Նույնից են նաև հուն.* Μαρία, *ասոր.* Maryam, *լտ. գերմ.* Maria, *ֆրանս.* Marie, *անգլ.* Mary, *ռուս.* Мария *(փաղաք.* Маша, Машинка*), վրաց.* Մաիրամե, *թուրք.* Մաիրամ, *արաբ.* مريم Maryam *են։ Հայտնի են այս անունով բազմաթիվ անձեր, որոնցից նշանավոր են Մարիամ՝ քույր Մովսես մարգարեի, և Մարիամ Աստվածածին՝ մայր Յիսուսի։ Բուն նշանակում է «լուսաւորեալ». հմմտ. Մարիամ, որ է լուսաւորեալ (Տաթև. ամ. 527).—Մարիամ երկիր լուսաբեր թարգմանի կամ լուսաւորեալ (Յայսմ. մրտ. 22).—Անուանեաց զնա Մարիամ, որ ասի լուսաւորեալ (Յայսմ., սեպտ. 8).— Մարիամ՝ լուսաւորութիւն (Տաթև. հարց. 307).—Իսկ ըստ Գիրք տառ. 204 ա «Մարիամ, որ թարգմանի աստղ ծովու»։—Արաբ.* maryam *դարձել է հասարակ անուն և նշանակում է «պարկեշտ, համեստ կին, որ սիրում է խոսել արանց հետ և բարեկամություն անել» (Կամուս, Գ. 471). — Գլ. ստացել է «աղախին» իմաստը։—Մեր մեջ շատ սովորական անուն է և գործածվել է սկզբից մինչև այժմ։ Կրճատ ձևերն են* Մարուշ, Մարօ, Մրօ՛ *(ըստ Բալուեցոց, տես Նաթանեան՝ Արտօսր Հյատ. էջ 47),*

Մարի (*հիշատակված առանց թվականի՝ Ջեռ. Վասպ. 435, Ջեռ. Թաւր. 76 բ*), *եվրոպական ձևով՝* Մարի, Մառի, *ռուսական ձևով՝* Մաշա, Մաշինկա, Մարուսիա, *հունական ձևով՝* Մարիցա (*Պոլիս*), *իսկ Ղրբ.* Ամարնան (*ըստ Խամսայի մելիքութ. 106*)։

— 1. Մարիամ, *վանամայր Հոգեաց վանքի, նշանակվեց Բարթուղիմէոս առաքյալի կողմից, քույրն է Ցուսիկ անուն անձի (50 թ. ըստ Զամչ. Ա. 297).—Խոր. պատմ. ածած. 295։*

— 2. Մարիամ, *դուստր Դաւթի, կին Գրիգոր Լուսաւորչի. Սեբաստացի էր, վերաբնակված Կեսարիա. փոխադարձ համաձայնությամբ բաժանվեց ամուսնուց և մտավ կուսանոց «267 թ».—Ցայսմ. դեկտ. 1. Տաթև. ձմ. դզ. Վրդն. լս. 47.—բց.* ի Մարեմայ՝ *Ցայսմ. նոյ. 18.—Ազգապ. 75։*

— 3. Մարիամ, *դուստր Նախարարաց Հայոց, կին քրմապետի Ոտայեցւոց. Մծբնայ Ս. Յակոբ հայրապետի օրով (ըստ Զամչ. Ա. 500 Խոսրով Բ-ի օրով, որ գահակալեց «330—9 թ»), դարձրեց իր ամուսինը և քրիստոնեություն տարածեց ներկրում, հիմնեց վանք ու եկեղեցի։ Ամուսնու մահից հետո գնաց Երուսաղէմ, ապա հաստատվեց Անտիոք։ Իր թոռն է Ս. Մարութա եպիսկոպոս, որ շինեց Մարտիրոսուպոլիս քաղաքը՝ Յազկերտի և Փոքր Թէոդոսի (408—450) օրով։—Վրք. և վկ. Բ. 18—20.—սեռ.* Մարիամու՝ *անդ 18, 20.—բց.* ի Մարիամայ՝ *անդ 18, 20.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ա. 585։*

— 4. Մարիամ, *կին Ղազարոս Նախարարի և մայր Ստեփաննոս Ուլնեցու, որի հետ նահատակվեց «362 թ».—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ե. 63, Ազգապ. 188 (ավելին տես Ստեփաննոս Ուլնեցի)։*

— 5. Մարիամ, *դուստր Մորիկ կայսեր հունաց († 602). ըստ արաբ և պարսիկ հեղինակների՝ կնության էր տրված Պարսից Խոսրով թագավորին։—Տէր Սահակեան, Հայ կայսերք Ա. էջ 305։*

— 6. Մարիամ, *կին Գրիգոր Եղուսար իշխանի. շինեցին Ալամանի Ս. Անանիա եկեղեցին 637 թ.—Արձ. Շիրակ 125, Կոգեան՝ Կմսրկնները 135։*

— 7. Մարիամ, *դուստր Մուշեղ Մամիկոնեանի և կին Վարդպատրիկ իշխանի Արծրունեաց. ուխտի գնաց Ս. Կարապետի դամբարանը (ուր արգելված է կանանց մուտքը) և մահվամբ պատժվեց (Է դար).—Մամիկ. ա. Զամչ. Բ. 295. հիշված է նաև*

Մամիկ. բ (էջ 29), բայց առանց անունը տալու, մինչ Նոր տպ. Երևան, էջ 204, ունի սեռ. Մարիամու:

— 8. Մարիամ Շամքորեցի, տիրացել էր Երուսաղէմում Պարտաւի Ս. Աստուածածին վանքին.—Կղկնտ. Բ. ծբ:

— 9. Մարիամ, դուստր մի հայ իշխանի, երկրորդ կին Կոստանդին Կոպրոնիմոս կայսեր, որ ամուսնացել է նրա հետ 750 թ: Այսպես է դնում Զամչ. Բ. 1014: Սակայն ըստ Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 337—8 ճիշտ չէ այս տեղեկությունը: Ըստ Ս. Նիկեփորի 750 թվին մեռել է Կոպրոնիմոսի կինը՝ Մարիամ և ոչ թե ամուսնացել: Նրա հայ լինելու մասին տեղեկություն չկա: Տեղեկություն չկա նաև Կոպրոնիմոսի երկրորդ կնոջ վրա, որ ապրած պիտի լինի մինչև 769 թ. որովհետև Կոստանդին Կոպրոնիմոսը այս թվին ամուսնացավ երրորդ անգամ:

— 10. Մարիամ, դուստր Արշավիր հայկազն պատրիկի, քույր Թէոդոսիա կայսրուհու՝ կնոջ Լևոն Ե Հայ կայսեր, որ գահակալեց 813—820 թ. կոչված է նաև Կալի-Մարիա (գեղեցիկն Մարիամ):—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 156:

— 11. Մարիամ, դուստր Վարազ-Տրդատայ՝ իշխանի Աղուանից (Ը դար).—սեռ. Մարիամայ՝ Կղկնտ. Գ. ժբ (ըստ Շահն. Մարիմայ):

— 12. Մարիամ, դուստր Աշոտ մեծ իշխանի Վասպուրականի, քույր Գրիգոր Դերենիկի, կին Դաւիթ կիւրապաղատի Տարօնոյ (Թ դար).—Արծր. Գ. ի:

— 13. Մարիամ Բագրատունի, Սիւնեաց տիկին, դուստր Աշոտ Ա Թագաւորի, քույր Սմբատ Ա Թագաւորի և Շապուհ սպարապետի, կին Վասակ Գաբուռ իշխանի Սիւնեաց: Ամուսինը վաղաժամ մեռնելով, ինքը ժառանգեց Գեղամայ լիճը իր շրջակայքով: Շինեց Սևանի եկեղեցիները «871—4 թ» և ապա ուրիշ եկեղեցիներ: Իր եղբայրը՝ Շապուհ սպարապետը առանձնապես հիշում է նրան 903 թվի իր արձանագրության մեջ (Նոր-Բայազետի Ալուչալու գյուղ), հետևյալ բառերով. «Մեծափափագ տենչանովք վերակացու և տեսուչ առնելով զքոյր իմ Մարիամ Սիւնեաց տիկին՝ յիւրում իշխանութեան ի Վանավանս տուն Աստուծոյ կանգնել վիմատաշս կոփածովք շատածախ գանձիւք և մեծաջան վաստակովք կատարել»: Թարգմանել տվեց Նանա ասորու Մեկնութիւն Յովհաննու: Մայրն է Գրիգոր Բ Սուփանի, Սահակի և Վասակի. իր որդիների հետ ապավինեց Սևան. բայց Յուսուփի հրոսակներից հալածվելով՝ մեռավ Գարդմանի ճանա-

պարհին «911 թ»։—Օրբ. լղ, ծդ.—Մարեմ! Նանայ 8, 246.— սեռ. Մարիամայ՝ Օրբ. լղ, լէ.— բց. ի Մարիամայ՝ Սամփ. Սեան. 46.— գրծ. Մարիամաւ՝ Օրբ. լէ։— Զարբ. Թրգմ. 622. Ակինեան՝ Մատեն. հետազ. Ա. 140—144։—Արճ. Շահխաթ. Բ. 251> Սիսական 33, 60, 51—2, 80։

— 14. Մարիամ, դուստր Քրիստոփոսի՝ թոռան Ռոմանոս Լեկաբենոս հայազգի կայսեր հունաց. Բուլղարների Պետրոս թագավորը խաղաղության դաշինք կնքեց հունաց հետ և ամուսնացավ այս Մարիամի հետ 927 թ.— Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 482։

— 15. Մարիամ, դուստր Նիկետասի և քույր Վարդ Փոկաս հայ պատրիկի. բնակվում էր Պոլսում, ուր թագուհու համբավ ուներ։ Յովհաննէս Չմշկիկը ամուսնացավ այս Մարիամի հետ, որ սակայն միշտ հեռու ապրեց ամուսնուց, ընդունելով միայն նրա միակերպ նամակները, որոնց մեջ միշտ իր հաղթությանց վրա էր խոսում։ Ունեցավ մի որդի Յովհաննէս անուն։ Ծաղիկ հասակում մեռնելով՝ գահակից չեղավ իր ամուսնուն։ Նրա մահից հետո Չմշկիկ կայսրը ամուսնացավ 971 թ. Պերփեռուժէնի Թէոդորա աղջկա հետ։— Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 131, 541, Զամչ. Բ. 844։

— 16. Մարիամ, կին հայոց Միքայէլ իշխանի. գաղթեցին Անտիոք. սրանց որդին է Մակար (№ 4) հայկազն (ծն. 970 թ), որ լատին եկեղեցու սրբերից է և մեռել է 1012 թ.— Զամչ. Բ. էջ 858։

— 17. Մարիամ, կին Եղիա քահանայի, որ ստացավ մի Աւետարան 986 թ.— Ձեռ. Սանաս. 1 բ։

— 18. Մարիամ, մի գիրք է նվիրել Թալինի Ս. Սարգիս եկեղեցուն և ստացել տարեկան երկու պատարագ, 1018 թ.— Շահխաթ Բ. 55 և Այրարատ 141։

— 19. Մարիամ, դուստր Սենեքերիմ Արծրունի թագավորի և թոռն Գագիկ Ա. թագավորի Բագրատունեաց. սրա դուստր Խուշուշի աղջիկն է. մայր Բագրատ թագավորի Վրաց և Ափխազաց. կոչում է իրեն «Թագուհի Ափխազաց և Հայոց»։ 1030 թվին գնաց Պոլիս՝ Ռոմանոս կայսեր մոտ, խաղաղության դաշինք կնքելու և իր որդու համար կիւրապաղատության պատիվ խնդրելու։ Սոսթենէս վանահոր (նստել է 1033 թ.) առաջնորդության ժամանակ Մարմաշէն վանքին է նվիրել Տարուս գյուղը, որի անթվական արձանագրությունը մնում է մինչև այժմ։—Շահխաթ. Բ.

272. Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 75. Շիրակ 149. Արար. 1870, 12. Պամ. վր. ժէ. Վրաց աղբ. Ա 109, 138, 205—206։

— 20. Մարիամ Թագուհի, դուստր Կարուց Գագիկ Թագաւորի, որի հետ գնաց Պոլիս՝ կայսեր մօտ և գրավելով Եւդոքսիա կայսրուհու սերը, նրա միջամտութիւնը գործադրեց և կաթողիկոսական գահը բարձրացրեց Գրիգոր Բ Պահլաւունուն «1065 թ.»։ Իր հոր Գագիկ Թագաւորի և իր մոր Գորանդուխտի հետ միասին ստացել է մի նկարազարդ Աւետարան (Շողակաթ 194)։— Մարեմ՝ Լմբ. մատ. 535. Ազգապ. 1268—71, 5526.

— 21. Մարիամ, դուստր Գրիգոր Մագիստրոսի և քույր Գրիգոր Բ Վկայասէր կաթողիկոսի, որ մեռել է 1105 թ.—Ալիշան, Շնորհ. էջ 12 (տախտակը) և 107 նույն է համարում՝

— 22. Մարիամ, դուստր Գրիգորի Արևելեան տուկի, թոռն Ալուղի և կին Աբգլմսեհի պատուկուրապաղատի Ամիւկի։ Այս Մարիամը մեռել է 1123 թ.— Արծր. Դ. ժբ. Հաւաք. 35.— տես. Մարիամու՝ Հաւաք. 38։

— 23. Մարիամ, կին Ստեփանոսի և մայր Շուշանի, որ Մանազկերտի Խաղղուղի գյուղի եկեղեցուց գողացված Աւետարանը երկան հանեց, 1171 թ.— Ձեռ. Վեննա. Ա. 545։

Մարիամ տես Տիկին 1187 թ։

— 24. Մարիամ, որ և Շահանդուխտ, մայր Ներսէս Լամբրոնացու, որ ծնվել է 1153 թ. և † 1198 թ.—Տաշեան, Ցուց. 638 (տես և Շահանդուխտ)։

— 25. Մարիամ ճգնավորուհի, քույր Ներսէս Շնորհալու. որ † 1173 թ.— Շնորհ. վիպ. 1533.— տես. Մարեմայ՝ Շնորհ. չփ. էջ 165, 226։

— 26. Մարիամ, անդրանիկ դուստր Օշին Բ Լամբրոնացու, քույր Ներսէս Լամբրոնացու. վերջինս ծնված լինելով 1153 թվին, Մարիամը ծնված պիտի լինի նրանից մի քանի տարի առաջ.— գրծ. Մարեմաւ՝ Պամ. լմբ. 234։

— 27. Մարեմ տիկին, կին Փիլիպպոս քահանայի, որ օրինակեց Տօնապատճառը՝ Այրիվանք 1190 թ.— Շողակաթ 197։

— 28. Մարիամ Բագրատունի, դուստր Կիւրիկէ Գ Թագաւորի Կիւրիկեանց. մայրն է Թամար Թագուհի. քույրերն են Մամքան (կամ Մամա), Ռուսուդան, Վանէ, Բաւրինա, եղբայրն է Աբաս Բ (№ 14) Թագավոր (Մածնաբերդի) Կիւրիկեան, որ վաղամեռիկ եղավ 1192 թ։ Իր քրոջ Ռուսուդանի օգնութեամբ Մարիամը շինել է իր մոր Թամարի և իր հորաքույր Ռուսուդ-

նայ գերեզմանի վրա Հաղբատի Աւագ Ս. Նշանի գավիթը և ժամատունը 1185 թ: Նույնպես Լոռու Այգեհատ գյուղում Բոբայրի արևելյան կողմի կաթողիկէն 1153 թ. իր ծնողների և Աբաս եղբոր անունով: (Այս թվականը սխալ է. որովհետև Աբասը 1185 թվին 12 տարեկան գահ բարձրացած և 1192 թվին 19 տարեկան մեռած լինելով՝ ծնված պիտի լինի 1173 թվին. ուստի արձանագրության ՈԲ=1153 թիվը պետք է ուղղել ՈԽ=1191): Նույն Մարիամը Սանահնի վանքում մի սյուն է կանգնեցրել և թանկագին սպասներ ու տոնացուցակ նվիրել: Ըստ Վրդ. հ կրոնավորուհի էր Բոբայրում. հիշում է նաև Մխ. այրիվ. 78 և դնում է 1131—41 թվերին: Մնում է գերեզմանը Հաղբատի մեծ տաճարի ժամատան մեջ իր գերդաստանի մյուս անդամների գերեզմանների շարքում, բոլորն էլ անթվական: — Արձ. Ազգագր. հանդ. Է, 400—1, 420, Գ. 285 (3 արձ.), Բժշկեան՝ Ճանապ. Լեհ. 77, 80, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 21—23, 26. Հայապ. 392. Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 64, 66. Մովսէսեան՝ Լոռիի թգ. 64—66:

— 29. Մարիամ, դուստր Կոփրիդի և քույր Վահրամ մարաջախտի († 1220). ամուսնացավ Պալիան Իպլիննեանի որդի Փիլիպպոսի հետ: — Սիսուան 334 բ:

— 30. Մարիամ, դուստր Սարգսի և քույր Ազուլթ խաթունի, որ Վարդան երեցին մի Աւետարան գրել տվեց Վարագայ վանքում, 1260 թ. — Ձեռ. Դաշեան, Բ. 47 ա:

— 31. Մարեամ (սեռ. Մարեմա), կին Գարեգին երեցի. Բագնայրին նվիրեցին Նորաշբեւրիկ գյուղը, մի Տօնական, մի ոսկետուփ Աւետարան, 1262 թ. — Արձ. Շիրակ 119, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 17:

Մարիամ տես Կալամառի և Ֆիլիպ:

— 32. Մարեմ, կին Յովհաննէս քահանայի՝ հոր Թադուհու՝ կնոջ Երեմիաս քահանայի, որ Կարնոյ Կան գյուղում գրել տվեց մի չքնաղ Աւետարան, 1283 թ. — Ձեռ. Վիեննա. Ա. 644:

— 33. Մարեմ, մայր Գրիգոր քահանայի, որ Հառարծին վանքում, Աստուածատուր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1284 թ. — Թորոս աղբ. Բ. 339:

— 34. Մարիամ, դուստր Խեդենեկ Բ-ի, որ արու զավակ չունենալով՝ իր այս աղջկան ամուսնացրեց Սեֆեդին արքայունի հետ, որին տվեց Աղթամար կղզին և կաթողիկոսական աթոռը: Մայրն է Աղթամարի Ստեփաննոս և Զաքարիա կաթողիկոսների (ԺԳ դար): — Ակինեան՝ Գաղնգիրք 38—39. հմմտ. Արծր. հրատ. Պատկ. էջ 321:

— 35. Մարիամ տիկին, կին Վասիլի՝ մորեղբոր Թորոս քահանայի, որ ստացավ մի Աստուածաշունչ (ԺԳ դար).—Զարբ. Թրգմ. էջ 154։

— 36. Մարիամ իշխանուհի, դուստր Հեթում Գ Լամբրոնացու, քույր Կեռան († 1285 թ) թագուհու, մորաքույր Հեթում Բ թագավորի. պարապում էր հոգևոր կրթությամբ (ԺԳ դար).—Զամչ. Գ. 285. Ազգապ. 1716։

— 37. Մարիամ (սեռ. Մարեմայ), մերձավոր Թումայ և Հայրապետ քահանաների, որոնք Զաքարիա գրչին գրել տվին մի Ավետարան, 1304 թ.—Ձեռ. Վասպ. 143։

— 38. Մարիամ (կամ Մարգարիտ), դուստր Հեթում Ա թագավորի և քույր Լևոն Գ թագավորի։ Եղավ Կիպրոսի ֆրանսիացի սինեջալ Կի տը Պլնի (Guy de Boulogne) կամ Գուիտոն Իպլինեանի (Guy d' Ibelin) կինը (1266 թ)։ Երբ ամուսինը մեռավ, այրի Մարիամը մայրապետ դարձավ Կիպրոսի «Տիւրոսի Աստուածածին» կուսանոցում, հաջորդելով իր քրոջ՝ Ֆիմիին, 1309 թ.—Մարիայ (ոչ Մարիամ)՝ Պատմ. կիլ. 211, Marie՝ Միսուան 79.—Ալիշան՝ Յուշիկք Ա 145, Բակուրան՝ Կիպրոս կղ. 62, 116։

— 39. Մարիամ, կին Ստեփաննոս քահանայի, որ Սեբաստիայում օրինակեց Աստուածաշունչը 1313 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1923, 70)։

— 40. Մարիամ Մշեցի, կին Սարգիս քահանայի և մայր Թորոս Մշեցու (№ 110), որ նշանավոր մանրանկարիչ էր և հիշվում է 1314 թվից սկսած.—Հայապ. 548, Ձեռ. Վենետ. Ա. 127։

— 41. Մարիամ, դուստր Լևոն Գ-ի և քույր Հեթում Բ-ի։ Անդրոնիկոս Բ կայսր հունաց իր Միքայել որդու համար մի հարսնացու փնտռելով՝ դիմեց նախ Կիպրոսի արքունիքը, ուր հուսախաբ լինելով, դիմեց Կիլիկիա։ Հեթում Բ ներկայացրեց իր երկու մանկամարդ քույրերին, առաջինը Մարիամ կամ Ռիթա՝ 13 տարեկան, երկրորդը՝ Թէոֆանո, նրա երկվորյակը։ Երկու քույրերը օժտված էին չքնաղ գեղեցկությամբ և հայ արքունիքում այնպիսի եվրոպական ընտիր դաստիարակություն էին ստացած, որ նվիրակները չկարողացան որին ընտրել։ Որոշեցին երկուսին էլ տանել Պոլիս և ընտրությունը թողնել կայսեր։ Մարիամը՝ ծովային ճամբորդությունից հիվանդանալով, դուրս եկան Հռոդոս կղզին։ Նվիրակները առիթից օգտվեցին և Մարիամին բռնադատեցին հունադավանություն ընդունել և կոչեցին Քսենէ։ Այսպես և քույրը Թէոֆանո, որ կոչվեց Թէոդորա։ Մարիամը

*Պոլսում պսակվեց Միքայելի հետ և հռչակվեց օգոստուհի (1296 թ)։ Ունեցավ չորս զավակ՝ Անդրոնիկոս, Մանուել, Աննա և Թէոդորա։ Անդրոնիկոսը ապա եղավ կայսր՝ Անդրոնիկոս Գ անունով, իսկ աղջիկներից մեկը եղավ Բուլղարաց թագուհի, որի որդին՝ Միքայել եղավ Բուլղարիոյ թագավոր։ Մարիամը փառասեր կին էր. գահի ժառանգության համար գժտվեց իր որդու հետ և դավադրություն կազմեց նրա կյանքի դեմ։ Բայց դավադիրները բռնվեցին և մահվամբ պատժվեցին։ Կայսրը ներեց իր մորը։ Այնուհետև Մարիամը տխուր և մենավոր ապրեց Թեսաղոնիկեում, ուր և մեռավ 1333 թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 337, 399—411, Չամչ. Բ. 1014, Գ. 270, 295։*

— 42. Մարիամ, *կին Ստեփանոսի և մայր Լեոն Ե թագավորի թղթագիր Վասիլի, որի կյանքը տես առանձին (1337 թ).— Շահազիզ, Պատմ. պատկ. 118։*

— 43. Մարիամ, *դուստր Սահակի, որ ստացավ մի Շարակնոց, 1343 թ?—Տաշեան, Ցուց. 489 բ։*

— 44. Մարիամ, *տնտեսուհի Հայոց տան Վենետիկում, 1344 թ.—Ալիշան, Հայ-Վենետ. 157։*

— 45. Մարիամ *թագուհի Հայոց. ծնվել է «1323 թ». Կոռիկոսի իշխան Օշին պայլի դուստրն էր. մայրն է Ցովհաննա թագուհի՝ երկրորդ կին Օշին թագավորի. Կոստանդին Դ թագավորի («1344—63 թ») կինն էր։ Սրա մահից հետո դիմեց Վենետիկ և խնդրեց հայոց գահը (Ալիշան, Հայ-Վենետ. 132, 138)։ Դեսպան ուղարկեց պապին և խնդրեց նրա օգնությունը Կիլիկիոյ համար («1371 թ»)։ Երբ հայերը ուզեցին գահընկեց անել Կոստանդին Ե թագավորին («1363—73 թ»), ոմանք ուզում էին գահը հանձնել Կիպրոսի Պետրոս թագավորին, ոմանք էլ այս այրի թագուհի Մարիամին, ամուսնացնելով նրան եվրոպացի մի իշխանի հետ։ Կոստանդին Ե թագավորի սպանությունից հետո եղավ խնամակալ կամ թագապահ պետության («1373 թ»), մինչև Լևոն Զ-ի թագավորելը։ Այրի ապրում էր նրա թագավորության ժամանակ և նրա հետ էլ գերի գնաց Եգիպտոս «1375 թ»։ Կրոնավորել է Երուսաղէմի վանքում, ուր և մեռել է «1377 թ»։—Դարդել 28, 132, 148. Ազգապ. 1929, 1934։*

— 46. Մարիամ, *դուստր Լևոն Զ թագավորի՝ նրա Մարգարիտ կնոջից. ծնվել է Սիս քաղաքում 1374 թ. մի տարեկան էր, երբ ծնողների հետ գերի տարին նրան Եգիպտոս (Կահիրէ). ստիպում էին նրան ուրանալ հավատը, բայց նա միշտ մերժում*

էր. կենդանի էր դեռ 1380 թ.—Դարդել 173, Բասմաջեան՝ «Լեոն Ե», 45, 149։

— 47. Մայրիամ, դուստր Սահակ քահանայի, որ ստացավ Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթողիկոսի Աւետարանը, 1389 թ։—Ձեռ. Վենետ. Ա. 652։

— 48. Մարիամ, մեծ մայրն է Աղամգրքի հեղինակ Առաքել Սիւնեցու (ԺԴ դար).—Աղամ. 229։

— 49. Մարեմ, (և սեռ. Մարեմին), կին Աբրահամի և մայր տանուտեր Դանիելի, որ Աղթամարում, Զաքարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1399 թ.—Ձեռ. Վասպ. 234—5։

— 50. Մարիամ (սեռ. Մարեմի), կին Շաքարի, որ Գաւառում գրել տվեց մի Աւետարան, 1418 թ.—Նօտարք 56։

— 51. Մարիամ (սեռ. Մարիամա և Մարեմա), կին Շամօի, մայր տանուտեր Ղազարի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1418 թ.—Նօտարք 57, Ձեռ. Վասպ. 307—9։

— 52. Մարեմ, կին Վարդանի և մայր Թումայ կրոնավորի, որ Ծպատի անապատում Վարդան աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 331։

— 53. Մարեմ խաթուն, հոգևոր մայր Կարապետ Դերջանցու, որ Հերմոնի վանքում օրինակեց Քարոզգիրքը, 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)։

— 54. Մարեմ, կին Պօղոս քահանայի և մայր Թումայ եպիսկոպոսի (№ 119), որ Բուխտանից երկրի առաջնորդն էր 1428 թ.—Նօտարք 90։

— 55. Մարեմ, կին Ստեփանոսի?՝ եղբոր Ներսէս քահանայի, որ Ուրանց գյուղում, Թումայ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 365—6։

— 56. Մարեմ, կին ռէս Մուսէսի՝ հորաքեռորդու նույն Ներսէս քահանայի.—անդ։

— 57. Մարիամ, դուստր Խասսայի, որ ստացավ մի հին Աւետարան, 1441 թ.—Manus. brit. mus. 3 բ։

— 58. Մարեմ (սեռ. Մարեմին, գրծ. Մարեմիւ), կին Թումայի (№ 154) և մայր Կարապետ միայնակեցի, որ Յօհանէս գրչին գրել տվեց մի Աւետարան, Ցիպնայ դաստակ վանքում, 1450 թ.—Ձեռ. Վասպ. 405։

— 59. Մարո, թվի թե կինն է Ղազրի և մայր Աղիզմելեքի, որ էր կին Խութլուպէի, որ մի խաչ է կանգնեցրել Թէ-

պոխայի Ս. Սարգիս եկեղեցում, 1451 թ.—Кучук-Иоаннесов. Стар. над. 36։

— 60. Մարեմ տիկին, հարսն է Յակոբ քահանայի, որ օրինակեց Աւետարանը 1453 թ.—Ձեռ. Թաւր. 135 բ։

— 61. Մարիամ, կին Սիմէոնի և մայր Կարապետ վանահոր, որ Պառուագրակի վանքում օրինակեց Աւետարանը, 1454 թ.—Rapport Belgique 97։

— 62. Մարիամ, դուստր մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։

— 63. Մարեմ, կին Ղազարի և մայր Վարդան հայրապետի, որ Յովհաննէս Մանկասարենց գրչին գրել տվեց մի Աւետարան, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։

— 64. Մարեմ, կինն է Ղազարի՝ եղբոր տանուտեր Աստուածատուրի (№ 137), որ Ուշտունեաց Բերդաձոր վանքում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443։

— 65. Մարեմխաթուն, կին Յովհաննէսի և մայր Նորմանուկի, որ Տիվրիկի Վաւդըռ գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 363։

— 66. Մարիամ, դուստր Մելքիսեդի, և քույր Զաքարիա գրչի, որ Աշոտաձորի Անկիւնեաց վանքում օրինակեց Աւետարանը, 1477 թ.—Ձեռ. Ադուլ. (Արրտ. 19ն1, 220)։

— 67. Մարիամ, կին Մուրադի՝ հորեղբոր խոջա Յովսէփի, որ Տարօնի իշխանն էր և Մուշում գրել տվեց մի Աւետարան 1497 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

— 68. Մարեմ, կին Հապաւի և մեծ մայր Մուրադի, որի հիշատակին Ստեփաննոս գրիչը օրինակեց մի Աւետարան Արճէշում, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 498։

— 69. Մարամ, եղբորդուստր Ազարիա աբեղայի, որ Եղեգիսում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 586։

— 70. Մարիամ, դուստր Գալուստի և քույր Զանդուրբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1495 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 135։

— 71. Մարիամ, դուստր Տէր Աւագ երեցի, որ Երուսաղէմում, Վրթանէս կրօնավորին գրել տվեց մի Ճաշարան, 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 150 բ։

— 72. Մարիամ, կին Մարտիրոսի և մայր Կիրակոս քահա-

նայի, որ Ամ գյուղում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 73. Մարիամ, մայրապետ Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքում, 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 151 ա։

— 74. Մայրա(մ) խաթուն, կին Խութլուշահի, որոնց անունով մի արձանագրյալ քար պահվում է Թէոդոսիայի թանգարանում, 1536 թ.—Кучук-Иоаннесов, Стар. над. էջ 39։

— 75. Մարիամ Կարնեցի, իր տան նկուղում թաքցրել էր Վառվառէ կույսին, որին թուրքերը որոնում էին. բռնվեցին և հավատքը չուրանալով նահատակվեցին 1810 թ.—Նոր վկ. 631—674, Ազգապ. 3023։

— 76. Մարիամ իշխանուհի, դուստր Երևանի մելիք Սահակ Աղամալեանի. զարմանալի գեղեցկության տեր. ամուսնացավ Վրաց արքայազն Ալեքսանդրի հետ. իր որդին է Հերակլ, որ վրաց արքայազուններից վերջինն եղավ (ԺԹ դարի առաջին քառորդին).—Ազգապ. 3508։

*ՄԱՐԻԱՄ-ՂՈՒԼԻ, ար. < Մարիամ անունից+թրք. قول qulə «ծառան» (իբր թե Մարիամ Աստուածածնի ծառան). հիշված եմ գտնում 1772 թ. (Ազգ. մատեն. հտ. ՀԸ, էջ 350 թրք. Մէյրէմ ղուլի ձեռով)։ Իբրև ազգանուն գործածվում է Պոլսում։ Տես նաև Մարիանգուլ։

*ՄԱՐԻԱՆԳՈՒԼ, իգ. ծագում է Մարիանէ կամ Մարիոն անունից+պրս. گل gul «վարդ»։ Գործածական է Ղարաբաղում։ Ձևով նման է, բայց պետք չէ շփոթել Մարիամ-Ղուլի անվան հետ։

*ՄԱՐԻԱՆԷ, իգ. (ծագումը տես Մարիոն)· այս անունով հայտնի է Մարիանէ կույսը, որի վարքը մտել է Յայսմաւուրքի մեջ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Զ. 120)։ Այս անվան հին և ամբողջական ձևն է Մարիանէ, ավելի նոր և կրճատ ձևը Մարիոն, որ պետք չէ շփոթել Մարիամ անվան հետ։ Գրված կա նաև Մարինէ, Մարինայ, Մարանէ, Մարան (1749 թ. Ձեռ. Վենետ. Ա. 450), Մայրան (1673 թ. Ձեռ. Սանաս. 14 բ. նույնը նաև Զքրագուլ. 168). առանձին տես Մարիանգուլ։

— 1. Մարիանէ, Հռիփսիմեան կույսերից մեկն էր. հիվանդացած էր հնձանում. դահիճները Հռիփսիմեան կույսերին նահատակելուց հետո, սրան էլ են սպանում «301 թ».—Այրարատ 234—5, Ազգապ. 8?։

— 2. Մարիանէ (կամ Մարիամ), Փիլարետ անունով մի աղքատ հայ մարդու եղբոր աղջիկն էր, ծնված էր Ամնիա գե-

տի ափանց վրա և օժտված էր հազվագյուտ գեղեցկությամբ։ Իռենէ կայսրուհին բերել տվեց նրան Պոլիս և բռնի կերպով ամուսնացրեց իր որդու՝ Կոստանդին Զ կայսեր հետ՝ մերժելով նրա նախկին նշանածին, որ Ֆրանսիայի Մեծն Կարոլոս կայսեր դուստրն էր՝ Ռոթրիտ անունով (788 թ)։ Կայսրուհու փառքը դառն ցավերի աղբյուր եղավ Մարիանէի համար, որովհետև իր ամուսինը սիրեց նրա նաժիշտներից մեկին՝ Թէոդոտա անունով։ Մի քանի տարի հետո, Կոստանդինը իր մոր դավաճանությամբ թշնամացավ Մարիանէի հետ և նրան մի վանքում արգելափակեց (795 թ) և ամուսնացավ նույն նաժիշտի հետ։ Իսկ Մարիանէ մինչև իր մահը ապրեց վանքի միայնության մեջ, երկնային խոկումների մեջ իր ցավերի սփոփանքը գտնելով։ Հաճախ արցունքով էր հիշում իր միակ դուստր Եփրոսինէին (տես վերը առանձին), որ Թէոդոտայի ձեռքի տակ շատ տխուր մանկություն պիտի անցկացներ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 337, 340–343, Զամչ. Բ. 423, 425։

— 3. Մարիանէ, կին Բարսեղ երեցի և մայր Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում արտագրեց Աւետարանը 1222 թ.— Տաշեան, Ցուց. 558։

— 4. Մարիանէ, կին Վահրամ քահանայի և մայր Բարսեղ երեցորդու, որ Հալեպում գնեց մի հին Աւետարան, 1323 թ.— Ձեռ. Կես. ածած. 64 բ։

— 5. Մարինա, դուստր Վախտանգ Բ Տոնկիկի և քույր Հասան-Ջալալ-Դոլայի. հիշված է նրա մեծ արձանագրության մեջ՝ Գանձասարում, 1240 թ —Բարխուտ. Պատմ. Աղվանից, Ա. 142, Արցախ 173, Շահխաթ. Բ. 371—2։

— 6. Մարիան, դուստր Լևոնի՝ որդւոյ Սմբատ Գունդստապլի, կին Պաղտին մարաջախտի. Կոստանդին Դ թագավորի մայրն է. իր ամուսինը մեռավ Հալեպի բանտում 1336 թ.— Ցուշիկք Ա. 161, Սիսուան 149 ա, Հայապ. 112։

— 7. Մարիանէ, դուստր Յովհաննէս քահանայի և քույր Բարսեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գեղաքաղաքում օրինակեց Աւետարանը՝ 1336 թ. —Ձեռ. Վասպ. 191։

— 8. Մարիանէ, կին Ամիր-Գրիգորի և մայր Ղազարոսի, որ գնեց մի հին Աւետարան 1424 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 645.

— 9. Մարինէ, կին Վարդերի և մայր Յովհանէսի, որոնց անունով մի արձանագրություն կա Նոր-Նախիջևանի Ս. Խաչ

*վանքում, 1458 թ.—Շահազիզ, Ազգագր. հանդ. Է, 71, Ն. Նախջ. Ս. Խաչ վանքը 11։*

— 10. Մարիան, *հայր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Ավետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։*

— 11. Մայրանէ, *կին Չէմպահի՝ եղբոր Սահակ երեցի, որ Կեսարիայի Մոնտխոն գյուղում օգնեց Յովհաննէս աբեղային գրելու Յայսմաւուրքը՝ 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։*

— *Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են* Մարինէ *1692 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 30 բ), սեռ.* Մառինի *(թիվն անհայտ)՝ անդ 288 բ, 289 բ,* Մարանէ *1593 թ. (անդ 87), 1636 թ. (անդ 237 ա), 1681 թ. (անդ 186), սեռ.* Մարանուն *1639 թ. (անդ 229), սեռ.* Մարենայ *1615 թ. (անդ 68),* Մարիան *1577 թ. (Ձեռ. Վասպ. 688), 1587 թ. (Տաշեան, Ցուց. 319), 1596 թ. (Ձեռ. Վասպ. 749), 1601 թ. (անդ 793), 1629 թ. (Կնիք հաւ. յոջ. 4) են,* Մարեան *1511 թ. (Ձեռ. Վասպ. 645),* Մայրան *1666 (անդ 928),* Մարան *1652 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 85), 1682 թ. (Ձեռ. Վասպ. 955), 1693 թ. (անդ 334),* Մարինայ *1649 թ. (Սիսական 117)։*

**ՄԱՐԻՀԱԲ, ար. < արաբ.* [illegible] Marihab *անունից (Հիւբշ. էջ 289)։*

— 1. Մարիհաբ *բդեշխ Աղձնեաց, որին Աբգար թագավորը իբր պատգամավոր ուղարկեց Մարինոսի մոտ.—Խոր. Բ. լ. Ուխտ. Ա. լբ. Մխ. անեց. ժբ. Ասող. Ա. ե. Վրդ. ժզ (ըստ հրատ. Էմինի՝* Մարիախա).—Մարիխաբ՝ *Յհ. կթ. զ։—Այս անձը Լաբուբ. էջ 2, 3 են հիշվում է իբր ասորի և էջ 38 կոչվում է «որդի Բարշամշայի»։*

**ՄԱՐԻՆՈՍ, ար. < հուն.* Μαριανός *և այս էլ լտ.* Marianus *անունից, բայց կա նաև լտ.* Marinus *անունը, որ բուն նշանակում է «ծովային» (հմմտ. արաբ.* Baḥrī *և հյ.* Ծովիկ)։ *Այս անունով հայտնի է Յայսմաւուրքում Մարինոս՝ ծերունի նահատակն Անարզաբացի։ Այս անվան իգականն է* Մարիանէ *(ֆրանս.* Marianne), *որ տես առանձին։ Հայոց մեջ քիչ է գործածված* Մարինոս *իբր ար. ավելի շատ է* Մարիանէ *կամ* Մարիան *ձևը, որ մինչև այժմ էլ կենդանի է։ Սակայն* Մարինոս *կա նաև իբր իգ.*

— 1. Մարինոս *Մամիկոնեան, եղբայր Մանուէլի, որ հունաց արևելյան բանակի զորավարն էր. Նիկեփոր կայսեր ժա-*

ժանակ, սկսած 810 թվից, ծովակալ կարգվեց հունական նավատորմի.—Ալպոյաճեան, Պատմ. հայ կես. Ա. 403։

— 2· Մարինոս, *որդի Մանուէլ Մամիկոնեանի և հայր Թէոդորա Ա կայսրուհու հունաց՝ 830—867 թ.—Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Բ. 374։*

— 3. Մարիանոս, *եղբայր Վասիլ Արշակունու. ինքն էր որ սպանեց Միքայէլ Արբշիռ կայսեր, որով եղբայրը գրավեց կայսերական գահը (867 թ), ինքն էլ մեծամեծ պաշտոնների հասավ։—Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Ա. 210, 354։*

*— Մեր մեջ հիշատակված են Մարինոս 1653 թ. (Ձեռ. Թաւր. 44), 1668 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 296), 1672 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 113), 1676 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 46 բ)։—* Մարինոս *անունը իբր իգական է գործածված՝ շուրջ 1550 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 47 ա), 1621 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 47 ա), 1651 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 51 ա)։ Նույնը կրճատ ձևով* Մարնոս *իգ. (Ձեռ. Թաւր. 20 բ)։*

**ՄԱՐԻՈՒՆ, իգ. տես* Մարիանէ:

— 1. Մարիուն, *կրտսեր դուստր Հեթում Ա-ի, որ գահակալեց 1226—70 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 120։*

— 2. Մարիուն, *դուստր Հեթմոյ Գ տեառն Լամբրոնի, քույր Կեռան թագուհու (№ 4), կնոջ Լևոն Գ թագավորի։ Մարիուն և Կեռան քույրերը մեռան 1285 թ. և թաղվեցին իրար մոտ Դրազարկում.—Սիսուան 556 ա, Հայապ. 545։*

— 3. Մարիուն *թագուհի, դուստր Լևոնի՝ որդւոյ Սմբատ Գունդստաբլի, կին Պաղտին մարաջախտի, մայր Կոստանդին Դ թագավորի։ Ըստ Սիսուան 243 ա Սմբատ Գունդստաբլի թոռան աղջիկն է։ Էր նախապես տիկին Բարձրբերդի։ Նկարը գտնըվում է Երուսաղէմի ձեռագիր մի Աւետարանում՝ 1346 թվից (Հացունի, Պատմ. տարազի 247)։ Մեռել է 1352 թ։—Սիսուան 149, 520 ա, 150 ա, 243 ա։ Հայապ. 544,* REA *8, 20—21։*

— 4. Մարիուն, *թագուհի հայոց. ըստ ոմանց կին Լևոն Զ-ի, ըստ այլոց կին Կոստանդին Ե-ի. Հայոց թագավորության անկումից հետո գնաց Երուսաղէմ, ուր ապրեց և մեռավ 1378 թ.—Հայապ, 542։*

— 5. Մարիուն *թագուհի (Թվլի մայր, եթե ոչ կին Կոստանդին Դ. թագավորի Ռուբինեանց). նորա համար օրինակեց Սարգիս քահանան մի Աւետարան, 1353 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 20 ա։ (Նույն է № 3-ի կամ № 4-ի հետ)։*

— 6. Մարիուն, *կին Կոստանդին Զ Վահկացի («1430—39 թ») կաթուղիկոսի, երբ աշխարհական էր. մեռել է նախ քան 1413 թ.—Ազգատ. 5528։*

— Մարիուն *անունը հիշված է մի անգամ ևս 1658 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 63)։*

*ՄԱՐԻՏԱՏ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում։*

— 1. Մարիտատ, *կին խոջա Բաղդասարի, որ ստացավ մի Ավետարան (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 724 ա։*

— 2. Մարիտատ, *կին Դավիշի՝ որդւոյ Շահմելիքի, որ ստացավ մի Ավետարան Սպահանում, 1651 թ.—Տաշեան, Ցուց. 363 ա։*

— Մարիտատ *հիշատակված է նաև 1652 թ?—Ձեռ. Վենետ. Ա. 762։*

**ՄԱՐԻՑԱ տես* Մարիամ։

*† ՄԱՐԽԱԹՈՒՆ, իգ. ըստ իս կրճատված է* Ցիմար-խաթուն *ձևից, իսկ* Ցիմար *անվան ծագման մասին տես առանձին։ Այս ձևի տակ հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում։*

— 1. Մարխաթուն, *դուստր Փանձիի և քույր Գրիգոր կրոնավորի, որ Տէր Աւագ երեցին գրել տվեց մի Ավետարան ոսկեձայնից, Երուսաղէմ 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118։*

— 2. Մարխաթուն, *դուստր Խնկիկի և քույր Թաղէոս փիլիսոփայի, որ գրել տվեց մի Ավետարան Կարապետ քահանային, Աղթամար 1392 թ. և մի Ավետարան էլ Զաքարա դրչին՝ նույն կղզում 1393 թ.—Ձեռ. Վասպ. 226, 228։*

— 3. Մարխաթուն, *կին Մովսէս քահանայի, որ ստացավ մի Ճաշոցամատույց 1439 թ.—Տաշեան, Ցուց. 50։*

**ՄԱՐԽԱՍ, ար. < արաբ.* [illegible] marxaşa *«առաջնորդ, վարդապետ» բառից? բայց զարմանալի կերպով հոլովված է ուղ.* Մարխաս, *սեռ.* Մարխայ, *իբր թե հունարեն բառ լիներ։ Ձևափոխվել և դարձել է* Մալխաս, *որ տես առանձին։*

— 1. Մարխաս, *Սասնցի հայ վաճառական. իբր* Կոսփար *անուն կռապաշտի ընկերոջ հետ գնաց Խորասանի կողմերը, ուր և մնաց, իր հարստությունը կտակելով Քրիստոսին! և հանձնելով կռապաշտ Կոսփարին, որպեսզի տանի նրան տա։ Անտիոքի եկեղեցում «Քրիստոս երևեցաւ տեսլեամբ», դրամը առավ և Կոսփարը հավատալով մկրտվեց.—ուղ.* Մարխաս, *սեռ.* Մարխայ *Մարխայի՝ Ցայսմ. նոյ. 10։ (Մարխայ և Կոսփարայ վրա մի տաղ*

ունի Յակոբ եպիսկոպոս Նետրարենց. տես Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 129։ Կա նաև նրա ընդարձակ պատմությունը. տես անդ, էջ 130)։

— Ուշ ժամանակի հիշատակություններ են Մարհաս 1609 թ. (Ձեռ. Վասպ. 833), Մարխաս 1610 թ. (անդ 838), 1624 թ. (Տաշեան, Ցուց. 780), Մարխաս իշխան Վանեցի 1651 թ. (Զամչ. Գ. 645), Մարհաս 1710 թ. (Ձեռ. Վասպ. 657), Մարխաս 1808 թ. (անդ 360)։

ՄԱՐԾՈՒԱՆ, որ է՝

— Մարծպան Թոռն Զաչուս Բ իշխանի Խաղբակեան (ԺԳ դար).—Բարխուտ. Պատմ. Աղուանից, Բ. 144 (չունի Ցովսէփեան՝ Խաղբակեանք իր Տոհմագրութեան մեջ)։

*ՄԱՐԿՈՍ, ար. < հուն. Μάρκος անունից, որ ծագում է լտ. Marcus անունից (սրանից են նաև գերմ. Marcus, ֆրանս. Marc, անգլ. Mark, ռուս. Марк, իտալ. Marco են)։ Լատին բառը տարբեր է marcus «մուրճ» գոյականից (Ernout-Meillet 561)։ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ի, 243 հանում է marceo «թոշնիլ, փտիլ» բայից և մեկնում է «վտիտ, հյուծված»։ Նախապես վերադիր էր, ինչպես Մարկոս Աւրելիոս՝ կայսր Հռովմայեցոց 161—180 թ. ապա դարձավ առանձին անձնանուն։ Հայտնի են օր. Մարկոս ավետարանիչը, Աբբա Մարկոս ճգնավորը են։ Իբրև օրինակ արական անվան հիշված է Թր. քեր. 18, 40, Խոր. քեր. 173, Սիւն. քեր. 207—8. Լեհահայոց մեջ հիշատակված է Մարքս ձևով (ինչ. Տաշեան, Ցուց. 718)։ Հիշատակվում է մեր մեջ սկսած Ե դարից և մինչև այժմ էլ գործածական է նույն ձևով։ Սրանից է Մարկոսեան ազգանունը։

— 1. Մարկոս վանահայր Գլակայ վանքի. հաջորդեց Ղիմինդոսին (Ե դար).—Մամիկ. ա (2 ձեռ. Մակար)։

— 2. Մարկոս եպիսկոպոս Բագրեւանդի. ժամանակակից Ներսէս Բ («548—557 թ») կաթուղիկոսի.—Գիրք Թղ. ժէ։ (Բագրեւանդայ բառը սխալ է թվում, որովհետև նույն անունների շարքում արդեն կա Տիրակ եպս. Բագրեւանդայ, որ և ստուգված է նաև ԺԶ թղթից)։

— 3. Մարկոս քահանա. ժամանակից եղավ Կաղսեսի նշխարաց գյուտին 560 թ.—Կղկնտ. Բ. զ։

— 4. Մարկոս ավագերեց. հիշված է իբր վկա Տաթևի 839 թվի արձանագրության մեջ.—սեռ. Մարկոսի՝ Օրբ. ըԸ։

— 5. Մարկոս Ա կաթուղիկոս Աղվանից՝ 998—? հաջորդեց

*Պետրոսին՝ ըստ Կիր. ը. բայց որովհետև ըստ Կղկնտ. և Հայապ. 6, Մխ. գոշ. 385 Պետրոսի հաջորդն է Մովսէս, ուստի կամ երկուսը միևնույն անունն են, և կամ Կիր. մոռացել է հիշել Մովսէսին, ինչ որ ավելի հավանական է։ Մարկոսի հաջորդն է Յովսէփ Գ. ըստ. Ջամբռ 76։*

— 6. Մարկոս *վանահայր, որդի Շապուհ քահանայի. Շահանշահից գնեց հողեր և նվիրեց Բագարանի մայր եկեղեցուն, 1034 թ.—Արձ. Այրարատ 66, Արրտ. 1870, 250։*

— 7. Մարկոս *Բ կաթուղիկոս Աղվանից. հաջորդեց Յովսէփ Գ-ին. մեռավ 1076 թ. և նրան էլ հաջորդեց Ստեփաննոս Ա.—Կիր. ը. Ուռհ. 231. Ջամբռ 76. Հայապ. 385։*

— 8. Մարկոս *ճգնավոր և մարգարե. ճգնում էր Մարաշի մոտ Կոկաց գավառի Կոնկոնաթ լեռան վրա. 65 տարի միայն խոտ ուտելով ապրեց. մեռավ ու թաղվեց Կաստաղոնում «1105 թ».—Վրդ. կզ. Ուռհ. 300. Սիսուան 163, 183. Ազգապ. 1348 (դնում է Մոկացի (=Կոկաց), ապա եկած Մարաշ)։*

— 9. Մարկոս *կուսակրոն քահանա. ստացավ Էջմիածնի № 939 Ճառընտիրը 1187 թ.—Միաբան, Գոր. և շմ. էջ 52։*

— 10. Մարկոս, *միաբան Հաւուցթառ վանքի 1214 թ.—Ջեռ. Վիեննա. Ա. 593, Այրարատ 356։*

— 11. Մարկոս *վարդապետ, աշակերտ Վանականի, որի հետ բանտարկված եղավ Թաթարների մոտ՝ «1236 թ».—Կիր. իը։*

— 12. Մարկոս *արքեպս. Սուրմառոյ. գերի ընկավ Թաթարների ձեռքը. Քուրդ իշխանը ազատեց նրան. Մարկոսը գնաց Հռոմկլայ, ուր Կոստանդին կաթուղիկոսը սիրով ընդունեց նրան։ Մարկոսը այստեղ Բարսեղ գրչին գրել տվեց մի Դատաստանագիրք (1238 թ.)—Այրարատ 122, 253, Հայապատում 458, Հացունի՝ Կարևոր խնդ. 274 (դնում է Գետիկ կոչված վանքից)։*

— 13. Մարկոս *կրոնավոր, գրիչ. Կուքիոյ վանքում օրինակեց Մեկնութիւն պատարագի, 1269 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 816 (տես մեծ Ցուցակը, էջ 6)։*

— 14. Մարկոս *քահանա, տներ Բարսեղ քահանայի, որ Սամիսար քաղաքում, Աստուածատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1275 թ.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Բ. 37։*

— 15. Մարկոս *քահանա, որի խնդրանոք Սիմէոն քահանան օրինակեց մի Ճառընտիր 1278 թ.—Ջեռ. Կարին. 126։*

— 16. Մարկոս *վարդապետ Խաչենի (ԺԳ դար).—Կիր. ծգ։*

— 17. Մարկոս *հայր, կրոնավոր միայնակեց, Կաֆա 1305 Թ. ավելին տես Աւետիք № 29.—Ջեռ. Վենետ. Բ. 511—2։*

— 18. Մարկոս *վարդապետ Սկեռայ վանքի. ժամանակակից Կոստանդին Բ կաթողիկոսի. անդամ Սսի եկեղեցական ժողովի «1307 Թ».—Զարբ. Հին դպր. 711. Աղգապ. 1786, Սիսուան, էջ 107։*

— 19. Մարկոս *վարդապետ կաթողիկոսարանի. անդամ Սսի եկեղեցական ժողովի, «1307 Թ».—Ազգապ. 1786։*

— 20. Մարկոս, *եղբայր Մաթէի, որ էր Շահանշահ ամիրսպասալարի պաշտոնյա և վերաշինեց Անիի խանգարված մի աղբյուրը 1310 Թ.—Շիրակ 79։*

— 21. Մարկոս *եպիսկոպոս Կարուց՝ 1307 Թ. անդամ Ատանայի եկեղեցական ժողովի «1317 Թ».—Այրարատ 76, Ազգապ. էջ 1819։*

— 22. Մարկոս *կրոնավոր, գրիչ. օրինակել է տվել Լամբրոնացու Մեկնութիւն պատարագի, Կուքի կամ Հազարաբիւրք վանքում, 1322 Թ.—Խաղբակեանք 60։*

— 23. Մարկոս *հայրապետ, որդի Մարտիրոսի. մայրն է Շնորհաւոր. Թիզանում գրել տվեց մի Աւետարան Յովհաննէս գրչին, 1336 Թ.—Ջեռ. Վասպ. 194։*

— 24. Մարկոս *եպիսկոպոս Կեսարիայի, անդամ Սսի եկեղեցական ժողովի «1343 Թ».—Ազգապ. 1869։*

— 25. Մարկոս *գրիչ. օրինակեց Աստուածաշունչը 1369 Թ.—Ջեռ. Կարին. 14։*

— 26. Մարկոս, *որդի Յովհաննէսի. գրիչ. օրինակեց Գանձարանը՝ Աստուածատուր քահանայի համար, Կաֆա քաղաքում, 1381 Թ.—*Manus. btbl. nat. *էջ 37։*

— 27. Մարկոս *գրիչ. օրինակել է «Սանդուխք գիրքը», 1401 Թ.—Ջեռ. Կարին. 202։*

— 28. Մարկոս *քահանա, մերձավոր Սարգիս եպիսկոպոս գրչի, որ օրինակեց Աւետարանը, 1416 Թ.—Ջեռ. Թաւր. 31 բ։*

— 29. Մարկոս, *քեռի Յովհաննէս քահանայի, որ Ոշտունեաց Տայշող գյուղում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Ճաշընտիրը 1419 Թ.—Նոտարք 59։*

— 30. Մարկոս, *առաջնորդ մի սուրբ ուխտի, որի անունը կտրված է, 1426 Թ.—Թորոս աղբ. Բ. 425։*

— 31. Մարկոս *վարդապետ, որին Կոստանդին Զ Վահկացի կաթողիկոսը երեք ընկերներով պատգամավոր է ուղարկել Ֆլո-*

*բենտիայի եկեղեցական ժողովին՝ 1439 թ.—Գալճեան 87, Ագգայպ. 2080, (իսկ ըստ Տաշեան, Ցուց. 111 կոչվում է* Մարտիրոս):

— 32. Մարկոս *քահանա, որդին է Յովհաննէս քահանայի, նախապես կոչվում էր Մանկասար (№ 2) և դպիր էր. ապա դարձավ քահանա և կոչվեց Մարկոս. հայրը գնեց նրա համար մի հին Աւետարան, որ նորոգել ու կազմել տվեց 1439 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 83։*

— 33. Մարկոս *եպիսկոպոս Վրաստանի, աշակերտ Յովհաննէս վարդապետ Հերմոնեցու. հակառակորդ էր Կիրակոս կաթողիկոս Վիրապեցուն, որ նստավ 1441 թ. և գահընկեց արվեց «1443 թ»։—Մեծոփ. յիշ. գ. Դրնգ. 313, Սիսական 126 ա։*

— 34. Մարկոս *աբեղա, արտագրեց չորս տետր այն Ցայսմաւուրքի մեջ, որ օրինակեցին զանազան գրիչներ Երզնկայում, 1446 թ.—Նօտարք 149։*

— 35. Մարկոս *միայնակեաց, միաբան Ս. Փրկիչ վանքի, օգնում էր իր հոգևոր եղբայր Թադէոս սարկավագին, երբ սա օրինակում էր Աւետարանը Երուսաղէմի Ս. Սաքա վանքում, 1455 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 59։*

— 36. Մարկոս, *թուղթ կոկող էր Աշոտաձորի Անկիւնեաց վանքում, 1477 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 220)։*

— 37. Մարկոս, *մականունը Ֆաթալլահ, Բերիացի. որդի Գէորգի, թարգման Վենետիկի հանրապետության։ Վենետկեցի նշանավոր բժիշկ Նիկ. Մասսա* (Massa) *արաբերենից իտալերենի թարգմանել տվեց նրան՝ նշանավոր արաբ բժիշկ Աբուսինայի վարքը (որ գրել էր նրա աշակերտ Ջորջան-ալ-Կուզկանի) և լատիներենի վերածելով հրատարակեց 1544 թ.—Հայ-Վենետ. էջ 219։*

— 38. Մարկոս *Ա. Արճիշեցի կամ Բլուրմակեցի, (Արճէշի Բլուրմակ գյուղից), կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Ստեփաննոս Ժ-ի և նախորդ Թումայ Ա. Ոշտունցու, որ նստավ 1681 թվին.—Հաւաք. 63 (կեղծիք կամ սխալ)։*

— 39. Մարկոս *ծաղկարար. նկարազարդել է Կալիսթենէսի Պատմ. Աղեքսանդրի, Պոլիս 1694 թ.—Տաշեան, Ցուց. 762։*

— 40. Մարկոս *վարդապետ Շնքրլցի, տաղասաց. ունի «Մեղաւոր եմ հոգով մարմնով չարեօք լի» տաղը (ժէ դար).—Տաշեան, Ցուց. 892, Ձեռ. Հալէպի, Ա. 210 բ։*

— 41. Մարկոս *Շատախեցի. կաթողիկոս Աղթամարի*

«1788—1791 թ», իբր հակաթոռ Կարապետի, որից դժգոհ էին Աղթամարցիք.—Ակինեան, Գաւազանագիրք 163—166, Ազգապ. 3175.—Հաւաքարանը չունի։

ՄԱՐԿՍԱՄ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված եմ գտնում 1731 թ.—ՀԱ 1894, 51 ա։

*ՄԱՐՄԱՐ, իգ. < Թրք. مرمر mermer «մարմարիոն քարը» բառից. հիշատակված եմ գտնում նախ 1702 թ. (Բարխուտ. Աղուանից երկ. 236) և ապա 1768 թ. երբ մեռնում է Սայաթ-Նովայի կինը՝ Մարմար (տես Ախվերդեանի «Սայեաթ-Նովայ», Մոսկվա, 1852, յոջ. էջ ԺԱ։

ՄԱՐՇԱԼԷՔ, ար. Լեհահայ անուն. հիշված է 1658 թ. (Տաշեան, Ցուց. 923)։

ՄԱՐՈԴ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ ունինք՝

— Մորոդ Արծրունի, հաջորդ Ներսեհի, ժամանակակից Արտաշէս Բ թագավորի Պարսից (405—359 Ն. Ք.)—Արծր. Ա. գ.

ՄԱՐՈՑ, իգ. ծագումն անորոշ. հիշված է մի անգամ 1508 թ. (Ջեռ. Վասպ. 634) հետևյալ ձևով. «դստերն Հանդուտին, Բագկին, Մարոյ և փոխեցելոյն ի Քրիստոս՝ Մարտիրոսին». ուր հայտնի չէ թե Մարոյ ուղղականն է թե սեռ.։ Թերևս սրա հետ նոյն է նաև՝

ՄԱՐՈՆ, իգ. հիշված է 1591 թ. (Ջեռ. Հալէպի, Բ. 7 բ)։

*ՄԱՐՈՒԳԷ, ար. գրվում է թե գ-ով և թե ք-ով, բայց հնչվում է միշտ ք-ով. ասորական անուն է. հայտնի է օրինակ՝ Մարուգէ ասորի ճգնավոր, որ հիշված է Մծբնայ Ս. Յակոբ հայրապետի հետ (Զամչ. Ա. 423)։ Արդյոք ծագում է ասոր. ܡܪܝܟܐ mərīkā «մաքուր» բառից։ Քիչ է գործածված մեր մեջ և այն էլ ԺԴ—ԺԵ դարերում։ Սրանից է Տէր-Մարուքեան ազգանունը (Երևան)։

— 1. Մարուգէ կրոնավոր, եղբայր Յովհաննէս քահանայի, որ Կրակայ գեղաքաղաքում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1317 թ.—Թորոս աղբ. Բ. 301։

— 2. Մարուգէ վարդապետ, նշանավոր կազմարար Քռնիում և Ջահուկում, 1330 թ.—Զարբ. Թրգմ. 148։

— 3. Մարուգէ քահանա, Կաֆայի (Թէոդոսիա) Ս. Միքայէլ եկեղեցու. հիշված է 1366 թ. գրել է «Պատմութիւն հայոց (եկեղեցւոյ)», որ Կղ. Կալանոսը լատիներենի է թարգմանել և հրատարակել։ Ձեռագիրը այժմ կորած է։—Հայապ. 121։

— 4. Մրուգայ, *հիշված է անթվական մի հիշատակարանում (ԺԴ դար).—Ձեռ. Վասպ. 260։*

— 5. Մարուգէ *ճգնավոր, առաջնորդ Հաւատաւոր անապատի (Հաւատրու վանք) և Ս. Գէորգ տաճարի, որոնք ինքը շինեց մեծ չարչարանքով՝ իր ծախսով և ժողովուրդի օգնությամբ 1460 թ.—Նոտարք 196, Հաւաք. 43։*

— 6. Մարուգէ, *որդի Մատթէոս քահանայի, որ Անաւարզայում, Հայրապետ եպիսկոպոսին գրել տվեց Ճաշոցը, 1466 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 235 բ։*

**ՄԱՐՈՒԹԱՅ, ար. < ասոր.* mārūtā *«տերություն» բառից. համա.* Մար, Մարթա *անունները։ Հներից ունինք. «Մարութա, որ թարգմանի տէր աշխարհիս» Վրք. և վկ. ա. 18. «Այր ոմն անուն Մարութայ, որ թարգմանի տէր աշխարհիս» Յայսմ. փետր. 25։ Իբրև անձնանուն գործածական էր ասորիների մեջ. ինչ.* Մարութայ *եպիսկոպոսը (Հիւբշ. 294)։ Մեր մեջ քիչ է գործածված. սրանից է Մարութեան ազգանունը։*

— 1. Մարութայ *եպիսկոպոս. հոր կողմից ասորի և մոր կողմից հայ. Թէոդոս փոքր (408—450 թ) կայսեր ժամանակ շինեց Մարտիրոսաց քաղաքը (Նփրկերտ), ուր փոխադրեց բազմաթիվ սրբերի մասունքներ, որոնց մեջ նշանավոր էր Բարթուղիմէոս առաքյալի մասունքը։—Յայսմ. փետր. 25, Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ա. 585—618։*

— 2. Մարութ *ազգապետ ազուան, Վաչագան Գ Բարեպաշտի օրով (Զ դար).—Կղկնտ. Ա. իզ (հրտր. Շահն. Մարուք, Մարուքի), Կանոն. 197։*

— 3. Մարութայ *քահանա Գողթնեցի. օրինակել է Մայր Մաշտոցը՝ Ցղնա 1604 թ.—Պարականոն շար. 172, Սմբատեանց՝ Երնջակ 259 (թվականը սխալ է, որովհետև 1604 թվին դնում է Փիլիպպոս կաթուղիկոս էջմիածնի, մինչդեռ Փիլիպպոսը նստել է «1633—5ә թ»)։—Նույն անձն է՝* Մարութէ *երեց, գրիչ, որ օրինակել է Վարդան վարդապետի «Մեկնութիւն Սաղմոսաց», Գողթն գավառի Ցղնա գյուղում, ՌՁԳ=1634 թ։—Ձեռ. Կարին. էջ 149։*

— 4. Մարութա *դպիր Ամասիացի. օրինակել է Մաշտոցը՝ Լեհաստանի Զամոսցա քաղաքում, 1645 թ.—Ձեռ. Վիեն. 22 բ. Տաշեան՝ Ցուց. 366 բ։*

— 5. Մարութբեկ, *աշակերտ Նաղաշ Յովնաթանի, որ նրա վրա ունի երգիծական մի տաղ.—Տաշեան, Ցուց. 1007։*

— 6. Մարութայ, *ժամենագիր, որ ունի «Բանք ի վերայ զանազան նիւթոց հին և նոր կտակարանաց, այլ և ի վերայ ժողովոց և հերձուածողաց ոմանց և յայտնութեան Մահմետի և բաժանման Վրաց ի Հայոց»։ Ո՞վ է և երբ է գրել՝ հայտնի չէ։— Ձեռագիրը տես Ձեռ. Լազար. էջ 80 ա։*

*ՄԱՐՈԽՆԱՅ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված Լեհահայոց մեջ 1572 թ. (Տաշեան, Ցուց. 909)։*

*ՄԱՐՈԻԿ, իգ. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1507 թ. (Կամենից 161)։*

*ՄԱՐՈԻԾ, իգ. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1679 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 459)։*

*ՄԱՐՈԻՇ, իգ. (թերևս նույն է նախորդի հետ). մի անգամ գտնում եմ հիշված Լեհահայոց մեջ՝ 1504 թ- (Տաշեան, Ցուց. էջ 55)։*

**ՄԱՐՈԻՖ, իգ. < արաբ.* معروف ma‘rūf *«հայտնի» բառից։ Գտնում եմ երկու տարբեր անթվական հիշատակարաններում, որոնցից մեկը գրված է 1331 թվից ուշ* (Manus. brit. mus. *58 բ), մյուսը 1609 թվից ուշ (Ձեռ. Հալեպի, Ա. 98 ա)։*

*ՄԱՐՊԱՏ, իգ. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված Հերհերի անթվական մի արձանագրության մեջ՝ Սիսական 111։*

**ՄԱՐՋԱՆ, իգ. < արաբ.* مرجان marǰān *«բուստ,* corail» *բառից, որից կա նաև* مرجانه Marǰāna *իգական անունը (Կամուս, Ա. 440)։ Մեր մեջ հիշատակված է ԺԳ դարից սկսած և գործածական է նաև այժմ։ Բուն ձևն է* Մարջան, *բայց դարձել է նաև* Մրջան, Մռջան, *արդի ձևն է* Մարջան, *փաղաքշականը՝* Մարջանիկ։ *Սրանից է Մարջանեան (կամ* Մերջանեան) *ազգանունը։*

— 1. Մարջան, *կին Խեղենեկ Բ-ի, որդւոյ Ալուզ իշխանի Ամիւկ բերդի. իր ամուսնու հետ Թիզանոյ շամբ կոչված կալվածը նվիրեց Հոռոմոսի վանքին, 1245 թ.—Արձ. Շիրակ, էջ 22 և 26։*

— 2. Մռջան, *կին Ստեփաննոսի և մայր Յովհաննէս քահանայի, որ Ստեփաննոս քահանա գրչին գրել տվեց Ճառընտիրը՝ Ոշտունեաց Տայշող գյուղում, 1419 թ.—Նոտարք 59։*

— 3. Մռջան, *կին Թումայի և մայր Յովհաննէս քահանայի, որ Սստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։*

— 4. Մռջան, *դուստր Յովհաննէսի և քույր Վարդան ա-*

բեղայի, որ Կտուց անապատում, Խաչատուր աբեղային գրել տվեց Աւետարանը՝ 1481 թ.—Ձեռ. Վասպ. 488։

— 5. Մրջան, քրոջ աղջիկն է տանուտէր Պետրոսի, որ Վանում, գրել տվեց մի Աւետարան՝ Զաքարիա գրչին, 1495 թ.—Թորոս աղբ. Բ. 276։ (Սխալ է Ձեռ. Վասպ. 476՝ Աղարիա գրիչը և 1475 թիվը)։

— Չեմ դնում ԺԶ և ԺԷ դարերի հիշատակությունները, բացի փաղաքշական Մոճանիկ ձևից, որ սեռ. Մոճանկան ձևով հիշված է բուն Մոճան անվան հետ միասին, 1622 թ. (Ձեռ. Վասպ. 622)։

*ՄԱՐՍԻԼ տես Մորփիա։

*ՄԱՐՏԻԿ, ար. գգվական ձևն է Մարտիրոս անվան. հիշատակված է 1608 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 696) և սեռ. Մարտիկան ձևով՝ 1666 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 8)։ Գործածական է այժմ Պոլսում։ Սրանից է կազմված Մարտիկեան ազգանունը։ Այլ է՝

†ՄԱՐՏԻԿ, ար. < հյ. մարտիկ «մարտնչող, ռազմիկ, քաջամարտիկ» բառից. նորակերտ անուն է նախորդ բառից կաղապարված։

*ՄԱՐՏԻՆ, ար. ծագումը տես Մարթին. հին ձևով գործածված եմ գտնում 1647 թ. (Ձեռ. Թաւր. 101 բ)։

*ՄԱՐՏԻՐՈՍ, ար. < հուն. μάρτυρος «վկա, նահատակ» բառից, որ նաև իբր անձնանուն գործածվել է. հմմտ. Մարտիրոս՝ որդի Ս. Սարգսի, նահատակ, որի կյանքը անցել է Յայսմաւուրքի մեջ։ Հմմտ. «Եւ ի խուռն յարձակմանէ ամբոխին կոխեալ եղև Մարտիրոս պատանին և նա այնպէս բարի և սուրբ մահուամբ կատարեցաւ ի Քրիստոս՝ գործովք զանունն լցեալ» (Յայսմ. յնվ. 31)։ Այսպես է նաև արաբերենում, ուր شاهد šāhid նշանակում է «վկա» և شاهد الله šāhid-ullah «վկայ Աստուծոյ) անձնանուն է։ Մարտիրոս անունը հիշատակված է մեր մեջ սկսած Ե? դարից և գործածական է նաև այժմ։ Կրճատ ձևերն են Մարտի, Մարտիկ, Մարտո, Մրտո (Ղրբ. Մրտէ'րօս)։ Տես նաև Մանջո, Մարթին, Մարտիկ անունները։ Հնից ավանդված է Մարտիրոսիկ գգվական ձևը՝ 1698 թ. (Ձեռ. Վասպ. 987)։

— 1. Մարտիրոս, գլխավոր ազատաց հայոց, որոնք Վարդանանց պատերազմից հետո նահատակվեցին Վայոց ձորում, Պարսից Աթաշխուդայ զորավարի ձեռքով (Ե դար).—Մարտիր! Օրբ. ԺԸ։

— 2. Մարտիրոս եպիսկոպոս Գողթնեաց, անդամ Կարնոյ

ժողովի, որ գումարեց Եզր կաթողիկոսը «633 թ».—Չամչ. Բ. 328, Տաշեան, Ցուց. 114 բ։

— 3. Մարտիրոս երեց Բջնեցի, գրիչ. օրինակեց Ղուկասի Աւետարանի Մեկնութիւնը՝ Թադէոս վարդապետի համար, 1184 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 304։

— 4. Մարտիրոս միաբանակեաց, միաբան Ս. Գրիգորի վանից Դարանաղեաց գաւառի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, էջ 248)։

— 5. Մարտիրոս, որդի Վարդանի. իր և իր գերդաստանի հիշատակի համար մի խաչքար է կանգնեցրել Մանազկերտի Նորատի գյուղում, 1211 թ. – Թորոս աղբ. Բ. 279։

— 6. Մարտիրոս գրիչ. օրինակել է Ոսկեբերանի Պատմութիւն և ճառ Լուսաւորչի, ՈԿԹ=12?0 թ.—Ձեռ. Կարին. 189 (տպ. ՌԿԹ, որ պետք է ուղղել այսպես)։

— 7. Մարտիրոս քահանա, հետագայում կոչված Մարտիրոս րաբունապետ. Գլաձորի դպրոցում, Կիւրեղ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1221 թ.—Խաղբակեանք 208։

— 8. Մարտիրոս, որդի Հաղրպետ քահանայի և Թոռն հյուսն Աստուածատուրի, որ Նիկոպոլսի Խաւմ քաղաքում, նրանց համար գրել տվեց մի Աւետարան, 1223 թ.— Ձեռ. Վենետ. Ա. էջ 423։

— 9. Մարտիրոս, իր եղբոր՝ Գրիգորի (№ 272) և ուրիշների հետ շինել են Գոշավանքի Ս. Գրիգոր եկեղեցին՝ 1231 թ.— Արձ. Ազգագր. հանդ. Ժ, 31, Արցախ 352։

— 10. Մարտիրոս, աշակերտ Մխիթար Գոշի. լավ գրիչ ու երգիչ էր. հաջորդելով իր ուսուցչին՝ նստավ վանահայր Նոր-Գետիկ վանքի 1213—1233 թ. վանքը զարդարեց նորանոր շինություններով. իր անունը հիշատակված է Գոշավանքի անթվական մի արձանագրության մեջ (տես Ազգագր. հանդ. Ժ, 26)։ Կամավորապես հրաժարվեց առաջնորդությունից 1233 թ.—Կիր. ԺԳ, ԺԵ.—տես. Մարտիրոսի՝ Կիր. ԺԵ։

— 11. Մարտիրոս, կալվածներ է նվիրել Ս. Գէորգ եկեղեցուն, Խաչենի իշխան Հասանի և Մամախաթունի հոգուն, 1265 թ.—Արցախ 169։

— 12. Մարտիրոս քահանա, Վահկայ բերդում (Կիլիկիա), Ստեփաննոս կրոնավորին գրել տվեց կիսատ մնացած մի Աւետարան, 1269 թ.—Ձեռ. Վասպ. 95։

— 13. Մարտիրոս, *գրիչ. Խորանաշատի վանքում օրինակեց Նարեկը, 1283 թ.—Շողակաթ 205, Ձեռ. Կարին. 173։*

— 14. Մարտիրոս, *տէրն էր Սիսիանի Կիրակոսիկ և Բնունեաց գիւղերի. կինն է Վանենի. իրենց որդին Օրբելի վաղամեռիկ լինելով՝ անժառանգ մնացին և գիւղերը Տաթեւի վանքին նուիրեցին։ Մնում է նրանց թողած մի արձանագրութիւնը իրենց վաղամեռիկ որդու հիշատակին, 1291 թ.—Սիսական 215—6, Ազգագր. հանդ. Գ. 178։*

— 15. Մարտիրոս *կրօնաւոր, միաբան Խորին անապատի, 1295 թ.—Տաշեան, Ցուց. 817 բ։*

— 16. Մարտիրոս, *պապ Շահրիման Թլկուրանցու (ԺԴ դար).—Հայապ. 574։*

— 17. Մարտիրոս, *պապն է Խաչատուր գրչի, որ Լիմ անապատում, Աստուածատուր քահանայի համար օրինակեց մի Աւետարան, 1301 թ.—Ձեռ. Վասպ. 140։*

— 18. Մարտիրոս *սարկաւագ, որդի Տարսոնի Ստեփաննոս արքեպիսկոպոսի և եղբայր Սիր Գրիգորի. մեռել է 1301 թ.— Սիսուան 74։*

— 19. Մարտիրոս *վարդապետ, գրիչ. օրինակեց Աստուածաշունչը Գոների վանքում, 1303 թ.—Սիսուան 534 ա։*

— 20. Մարտիրոս, *որդի Աստուածատուրի. Տփղիսում, Խաչատուր սարկաւագին գրել տվեց մի Աւետարան, 1304 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 488։*

— 21. Մարտիրոս *վարդապետ, աշակերտ Գէորգ Սկեւռացու (կամ Լամբրոնացու). գրիչ. օրինակել է Աստուածաշունչը, առաջին մասը Գոների վանքում և երկրորդ մասը Խաչատրոյ անապատում, 1303 թվից մինչև 1306 թ.—Սիսուան 106, 147, 534 բ, Շողակաթ 209, Ձեռ. Կարին. 10, Մի էջ հայ. արուեստի, էջ 3։*

— 22. Մարտիրոս *եպիսկոպոս Ուռթելի, անդամ Սսի եկեղեցական ժողովի, 1307 թ.—Ազգապ. 1785, Չամչ. Գ. 310։*

— 23/4.— Մարտիրոս *վրդ. Սելեոնցի, վանահայր Կիլիկիոյ Սև լեռան Ս. Բարսղի կարգի վանուց։ Գուլիելմոս անուն վանականի հետ, որ Սեաւ լեռան վանքի իր ճգնակից ընկերներից էր, ժողովարարութեան համար գնաց Իտալիայի Գենուա (Ջենովա) քաղաքը «1307 թ»։ Ջենովայում ապրում էին նրանք նույնպես ճգնական կյանքով։ Քաղաքի հարուստ վաճառականներից մին՝ Օպերթոյ անունով, խղճաց նրանց և Մոնթալտո լեռան վրա տեղ շնորհեց նրանց։ Այստեղ նրանք տեղացի ժողովրդի օգնու-*

Թյամբ և նվերներով շինեցին մի հոյակապ մենաստան և նրա մոտ մի եկեղեցի Ս. Բարթողիմէոս առաքյալի անունով (1308 Թ)։ Վանքի շինության համար էլ պապը տվեց երկու կոնդակ, առաջինը 1307 Թ. և երկրորդը 1309 Թ։ Վանքի հոչակը տարածվեց և եղավ նշանավոր ուխտատեղի, ուր միաբան դարձան տեղացի բարեպաշտներից շատեր։ Այս եղավ նախանշան և այնուհետև Իտալիոյ զանազան քաղաքներում հիմնվեցին նմանօրինակ վանքեր ու եկեղեցիներ՝ Բարսեղեանց հայ եղբարց անունով։—Սիսուան 410—411, Ազգապ. 1815։ Ուղուրլեան, Պատմ. Լիվոռն. էջ 241—2։

— 25. Մարտիրոս գրիչ. օրինակեց Աստուածաշունչը՝ Կոստանդին երեցի համար, 1314 Թ.—Շահազիզ, Հին Երևանը, էջ 227։

— 26. Մարտիրոս, որդի Պօղոսի, եղբայր Մխիթար գրչի, որ Գլաձորում օրինակեց Գիրք Լուծմանցը, 1315 Թ.—Հայապ. էջ 526։

— 27. Մարտիրոս վարդապետ կաթուղիկոսարանի. անգամ Ատանայի եկեղեցական ժողովի «1317 Թ».—Սիսուան 258 բ, Ազգապ. 1819։

— 28. Մարտիրոս, հայր Ստեփանոս դպրի, որ Գոլու անապատում Սիմէօն քահանային գրել տվեց մի Շարական, 1318 Թ.—Շահազիզ, Պատմ. պատկերներ, 111։

— 29. Մարտիրոս, կուսակրոն քահանա, որդի Տիրատուր քահանայի, որ նրա համար Կարապետ Ծիլող անուն գրչին գրել տվեց մի Շարական, Երզնկայում, 1320 Թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 146—7։

— 30. Մարտիրոս վարդապետ, միաբան Գլաձորի վանից. իր եղբայր՝ Կիւրեղ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1321 Թ.—Manus. brit mus. 22 բ, 23 բ։

— 31. Մարտիրոս, որդի Ներսէս քահանայի, որ Ապահունեաց Արսէ գյուղակում գրել տվեց մի Աւետարան, 1321 Թ.—Ձեռ. Վասպ. 167։

— 32. Մարտիրոս, հայր Սարգիս քահանայի, որ Սկևռայ վանքում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1325 Թ.—Ձեռ. Վասպ. 171։

— 33. Մարտիրոս կրոնավոր, որդի Պօղոսի և եղբայր Մխիթար գրչի. որ Եկեղեաց գավառի Երկայնի վանքում օրինակեց Հին Կտակարանը, 1327 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 160։

— 34. Մարտիրոս, *հայր Պարոնշահի, որ իր հանգուցյալ կնոջ և իր որդի Թաթուլի հիշատակին (№ 10) գրել տվեց մի Ավետարան, 1329 թ.—Ձեռ. Վասպ. 179։*

— 35. Մարտիրոս, *որդի Յովաննէս քահանայի և եղբայր Հայրապետ գրչի, որ Փոսի անապատում (Կիլիկիա) օրինակեց «Սանդուղք աստուածային ելից», 1329 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 86 բ։*

— 36. Մարտիրոս, *եղբօրորդի Սամուէլ քահանայի. իր եղբայր Գրիգոր միակեցի հետ միասին բնակարան տվին Գրիգոր գրչին, երբ սա արտագրում էր Մատթէի Մեկնութիւնը Ակների վանքում, 1329 թ.—Սիսուան 155 բ։*

— 37. Մարտիրոս *սարկավագ, թուղթ էր կոկում Գրիգոր գրչի համար, երբ սա օրինակում էր Մատթէի Մեկնութիւնը Ակների վանքում, 1329 թ.—Սիսուան 155 բ։*

— 38. Մարտիրոս *քահանայ, կազմեց Ոսկեբերանի Մեկնութիւն Մատթէի գիրքը, որ օրինակեց Գրիգոր գրիչը՝ Ակների վանքում, 1329 թ.—Սիսուան 155 բ։*

— 39. Մարտիրոս *գրիչ. շարունակեց և ավարտեց այն Ավետարանը, որ սկսել էր գրել Յակոբ քահանան՝ Բաւուն միայնակեցի համար, ավելացրեց նաև ցանկն ու հիշատակարանը, 1330 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770։*

— 40. Մարտիրոս, *որդի Բաղի. դրամով օժանդակեց Յովանէս գրչին՝ արտագրելու համար Ավետարանը 1330 թ.—Ձեռ. Թաւր. 2 բ։*

— 41. Մարտիրոս, *հայր Սարգիս քահանայի, որ Դրազարկում, Թորոս Հռոմկլայեցուն գրել տվեց մի Ավետարան 1331 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 436։*

— 42. Մարտիրոս *Խանականցի, որդի Թադիկի, ազգական Ներսէս վարդապետ Սասնեցու, նվիրատու ձեռագրի, 1332 թ.—Հայաստ. 546։*

— 43. Մարտիրոս, *որդի Կարապետի և հանգուցյալ եղբայր Պօղոս քահանայի, որ Կիլիկիայում գրել տվեց մի Ավետարան, 1334 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 698։*

— 44. Մարտիրոս *երեց, հիշատակված է Երուսաղէմում, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 349։ Թերևս նույն է՝*

— 45. Մարտիրոս *քահանա, ապրում էր Երուսաղէմում, Սիոնի դուռը, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։*

— 46. Մարտիրոս, *հայր Մարկոս հայրապետի, որ Խիզա-*

նում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1338 թ.— Ձեռ. Վասպ. 194։

— 47. Մարտիրոս, որդի հայրապետի և եղբայր Առաքել գրչի, որ Մոկաց Դաշտ գյուղում արտագրեց Աւետարանը՝ 1338 թ.—Ձեռ. Վասպ. 198։

— 48. Մարտիրոս եպիսկոպոս Հայոց Թոլմաքի (Tolmachy), Հունգարիա, 1343 թ.—Ալիշան, Կամենից, էջ ը։

— 49. Մարտիրոս, որդի Սարգսի և եղբայր Սիմէոն կրոնավորի, որ Գրիգոր կրոնավորի հետ միասին գրել տվեց Տէր Աւագ երեցին մի Աւետարան և Ճաշոց, Երուսաղէմում 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118 ա։

— 50. Մարտիրոս կրոնավոր, մեծ չարչարանքով նահատակվեց մահմեդականների ձեռքով, Տշիղ գյուղում, 1358 թ.— Նօտարք 22 (ծանոթ. 3)։—Հիշում է նրան նաև Ստեփաննոս գրիչը (1404 թ.), որի հորեղբայրն էր սույն Մարտիրոսը, տես Նօտարք 22, 38, 45, 50, 60։

— 51. Մարտիրոս վարդապետ, օրինակեց Աստուածաշունչը՝ Երուսաղէմում, 1358 թ.—Տաթև տարեց. 1925, 292։

— 52. Մարտիրոս, որդի Ոսկեհերի և եղբայր Գէորգ կրոնավորի, որ ստացավ Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու, 1363 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 228։

— 53. Մարտիրոս քահանա, հայր Վասիլ եպիսկոպոսի Ամասիոյ, հիշված է 1367 թ.—Տաշեան, Ցուց. 744 բ։

— 54. Մարտիրոս, որդի Արզլմսեհ քահանայի, որ Ամիթում Թորոս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1373 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 617։

— 55. Մարտիրոս վարդապետ, ունի ոտանավոր պատմութիւն Լևոն Ջ թագավորի գերութեան և Ռուբինեանց թագավորութեան կործանման մասին, 1375 թ.—Զամչ. Գ. 360, 361, 390, 39?։

— 56. Մարտիրոս, որդի Խութլուշահի, որ գրել տվեց մի Աւետարան, 138? թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— 57. Մարտիրոս, տանուտեր Կողբ գյուղի. քաջ, աղքատասեր և բարեպաշտ մարդ էր։ «1387 թվին», երբ Լենկթիմուրի հրոսակները ավերեցին Սուրմառին, գյուղացիների հետ բարձրացավ Բարդող (Թակալթու) լեռը և շարունակ յետ մղելով թշնամիներին, ազատեց ժողովուրդը։ Ավելի ուշ Մարտիրոսը նահատակվեց Սահակ անուն մի թուրքմանի ձեռքով, որ մարդ-

կանցից ծածուկ խեղդեց նրան Արաքսի մեջ։—Մեծոփ. 18, Ջամչ. Գ. 4'1, Այրարատ 117, Նոր վկ. 151, Ազգապ. 1977։

— 58. Մարտիրոս, որդի Ստեփաննոս քահանայի. ստացավ Թուրկուրանում «Կտակարանք որդւոյն Յակոբայ», 1388 թ.—Տաշեան, Ցու ց. 929։

— 59. Մարտիրոս քահանա Գաւաշ գյուղի, 1389 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 765)։

— 60. Մարտիրոս, որդի Խնկիկի և եղբայր Թադէոս փիլիսոփայի, որ Աղթամարում մի Աւետարան գրել տվեց Կարապետ քահանային, 1392 թ. և մի Աւետարան էլ Զաքարայ գրչին, 1393 թ.—Ձեռ. Վասպ. 226—9։

— 61. Մարտիրոս միայնակեաց Ս. Մարիամու վանքից, 1394 թ.—Bodleian 161։

— 62. Մարտիրոս, որդի Յովհաննէսի, Մոկաց երկրից, Շատախեցի, տանուտեր. կինն է Շարմելիք. Ծպատի անապատում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, որ և նվիրեց Անջողից Ս. Աստուածածնին, 1395 թ.—Ձեռ. Վասպ. 231—4։

— 63. Մարտիրոս կրոնավոր, խնդրեց Սարգսից գրել մի Աւետարան (նախ քան 1396 թ).—Տաշեան, Ցուց. 416 բ։

— 64. Մարտիրոս, որդի Օտարշահի և եղբայր Ներսէս գրչի, որ Գամաղիէլի վանքում օրինակեց Ճառընտիրը՝ Աստ միայնակեացի համար, 1397 թ. երբ Մարտիրոսը մեռած էր։—Ձեռ. Վեննա. Բ. 1286։

— 65. Մարտիրոս եպիսկոպոս Կահիրէի. հրովարտակ հանեց Եգիպտոսի Սուլթանից՝ քրիստոնյաների պաշտպանության համար Արաբ հարկապահանջների դեմ, «1399 թ».—Ազգապ. 2015։ Ըստ իս նույն է № 99։

— 66. Մարտիրոս քահանա, որին նվիրեց Կիրակոս միայնակեացը իր գնած մի Աւետարանը (Իգնատիոս Հոռոմոսցու գրած), 1400 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 66։

— 67. Մարտիրոս, Թումայի հետ միասին՝ էժան գնով մի հին Աւետարան վաճառեցին Կարապետ (№ 111) քահանային, որ նորից կազմել տվեց 1401 թ.—Ձեռ. Վասպ. 126։

— 68. Մարտիրոս, Մեծոփայ տաճարի ճարտարապետներից մեկն է, որ աշխատել է 1402—9 թվերին։—Նոտարք 30, Ազգապ. 2071,

— 69. Մարտիրոս քահանա, որդի Յակոբի, եղբայր Յոհանէս քահանայի, որ Մոկաց Կաղթանց գյուղում օրինակեց մի Աւե-

*տարան, 1409 թ. այս թվից քիչ հետո Մարտիրոս քահանան վաղամեռիկ եղավ և եղբայրը՝ Յոհաննէս Ջերմաձորի Ակոռոյ վանքում, նրա հիշատակին գրեց մի ուրիշ Աւետարան՝ 1417 թ.— Ձեռ. Վասպ. 294, 302—4, Նոտարք 51։*

— 70. Մարտիրոս *ոմն, մերձավոր Մարտիրոս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 168։*

— 71. Մարտիրոս *քահանա, որդի Գորգի. մայրն է Թանկխաթուն (№ 6). կինն է Աւագ տիկին. որդիներն են Գրիգոր, Գորգշահ, Աստուածատուր, Ղըէլ, Արուս և Սօրղան. իր խորթ եղբայր Դաւիթից ետ գնեց մի Աւետարան, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 163—7։*

— 72. Մարտիրոս, *հայր Նորհատի, երախտավոր վանուց (նախ քան 1420 թ).—Տաշեան, Ցուց. 666 ա։*

— 73. Մարտիրոս, *միաբան Խիզանի Ս. Խաչ վանքի, հիշված 1402 և 1413 թվերին.—Նոտարք 17, 42։*

— 74. Սարտիրոս, *տանուտեր Բերկրի քաղաքի, իր քեռորդի Մկրտիչ քահանայի համար, Բերկրիում Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1418 թ.—Նոտարք 55։*

— 75. Մարտիրոս *կրոնավոր, որդի Աբրահամի. Բաղէշի Քոռ գյուղում, Մկրտիչ գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1418 թ.—Նոտարք 55։*

— 76. Մարտիրոս, *որդի Ապրիլուսի և եղբայր Մկրտիչ քահանայի, որ Աղթամարում, Թումայ կրոնավորին գրել տվեց մի Ճաշոց, 1419 թ.—Նոտարք 58։*

— 77. Մարտիրոս, *որդի Աւետիսի և եղբայր հյուսն Յովհաննէսի, որ գրել տվեց մի Ճաշոց՝ Աղէթ, 1421 թ.—Ձեռ. Թաւր. 113 ա։*

— 78. Մարտիրոս *կուսակրոն աբեղա, հոգևոր եղբայր և ընկերակից Ստեփաննոս հայրապետի, Աստուածատուր կրոնավորի և Յովանէս վարդապետի, որոնք ուսուցիչ եղան Յովհաննէս կրոնավորին, որ Բերկրիի Եղավանքում գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348, Նոտարք 70։*

— 79. Մարտիրոս, *որդի Ստեփաննոսի և եղբայր սույն Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում գրել տվեց այն Աւետարանը, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347։*

— 80. Մարտիրոս, *հորեղբայր նույն Յովհաննէս կրոնավորի, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347։*

— 81. Մարտիրոս, *որդի Աստուածատուրի°, որ գնեց մի*

հին Աւետարան, իսկ որդին՝ Մարտիրոսն էլ նորից կազմել տվեց, 1423 թ.—Ջեռ. Վասպ. 192։

— 82. Մարտիրոս ոմն, որի տապանաքարը մնում է Երուանդաշատի ավերակներում, †1424 թ.—Այրարատ 61։

— 83. Մարտիրոս քահանա, գրիչ. Թումայի և Աբրահամի պատվերով Սխգայ գյուղում գրեց մի Ճաշոց, 1427 թ.—Նոտարք 83։

— 84. Մարտիրոս ոմն, որ մեղր է նվեր բերել Սարգիս եպիսկոպոսին, երբ սա արտագրում էր Յայսմաւուրքը, Կոթիփորոյ Ընկուզագոմ վանքում, 1427 թ.—Նոտարք 86։

— 85. Մարտիրոս, տանուտեր էր Բուխտանից երկրում (Մարաստան). ունէր մի Աւետարան, որ շնորհեց Մարգարէ աբեղային արտագրելու համար. նահատակվեց այլազգիների ձեռքով՝ 1428 թ.—Նոտարք 90։

— 86. Մարտիրոս, միաբան Կողուց վանից, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 87. Մարտիրոս, այլ միաբան Կողուց վանից, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 88. Մարտիրոս, միաբան Ոստանի Գառըկայ վանքի. հիշված է իր միաբանակիցների հետ նախ 1420 թ. և ապա 1428 թ.—Ջեռ. Վասպ. 324, Նոտարք 88։

— 89. Մարտիրոս, միաբան Ջորեհանգիստ Լուսաւորչի վանից, հիշված է 1429 թ.—Նոտարք 92։

— 90. Մարտիրոս կուսակրոն քահանա, որի խնդրանոք Քրիստոստուր քահանան գրեց, նկարազարդեց և կազմեց մի Շարական, Կաֆա քաղաքում, 1429 թ.—Manus. bibl. nat. 33։

— 91. Մարտիրոս քահանա, շինեց Մեռելյարոյց Աստուածատուր վրդ. Արճիշեցու (№ 28) գերեզմանը՝ 1432 թ.—Նոտարք 100։

— 92. Մարտիրոս, եղբորորդի Ներսէս քահանայի, որ Ուռանց գյուղում մի Աւետարան գրել տվեց, 1433 թ.—Ջեռ. Վասպ. էջ 365—6։

— 93. Մարտիրոս, հորաքրոջթոռ նույն քահանայի.—անդ։

— 94. Մարտիրոս վարդապետ, վանահայր Ս. Լուսաւորչի անապատի, 1434 թ.—Նոտարք 103։

— 95. Մարտիրոս, հարազատ Դաւիթ կրոնավորի, որ Ջմըշկածագի Ընկուզեաց անապատում օրինակեց Աւետարանը. Թուղթ կոկողն էլ այս Մարտիրոսն էր, 1434 թ.—Ջեռ. Թաւր. 12 բ։

— 96. Մարտիրոս Կոնիապատցի, որի մայրը օգնեց գնելու մի Աւետարան, 1435 թ.—Ջեռ. Թաւր. 13 ա։

— 97. Մարտիրոս *Հիզնեցի, ջաղացպան էր Խիզանում. այլազգի շեխեր մի օր տեսան նրան ջաղացքում մի քուրդ կնոջ հետ և իսկույն չարախոսեցին նրան։ Մարտիրոսը պատասխանեց. «Այն գործն ձեր է և ազգին ձեր. ծառայքն Քրիստոսի սուրբ են և զսրբութիւն սիրեն»։ Մահվան սպառնալիքով պահանջեցին ուրանալ հավատը. վախից ընդունեց. փախավ Մեծոփայ վանքը և Թովմա Մեծոփեցու ձեռքի տակ ապրեց երեք տարի ապաշխարելով։ Միշտ ուզում էր գնալ Խիզան և նահատակությամբ քավել իր մեղքը. բայց Մեծոփեցին չէր թույլ տալիս։ Շահռուխի արշավանքի պատճառով Մեծոփեցին ապաստանեց Բաղեշի Աւեխոռ վանքը, ուր եկավ նաև Մարտիրոսը։ Այլազգիները տեսան նրան և պահանջեցին ուրանալ։ Մարտիրոսը մերժելով՝ քարկոծմամբ նահատակեցին նրան, 1436 թ.—Այս նահատակի վկայաբանությունը հրատարակել եմ Նոր վկ. 714—9, բայց առանց հեղինակի անվան և թվականի։ Նոտարքի հեղինակը (էջ 105) ասում է, թե կա իր մոտ նահատակության ընդարձակ պատմությունը, որից երևում է թե հեղինակն է Գալուստ եպիսկոպոս Բաղեշի և նահատակության թվականն է 1436 թ. յունվ. 4։*

— 98. Մարտիրոս *աբեղա, որդի Խոցադեղի, գրիչ. Հաղբատում օրինակեց մի Շարակնոց, 1437 թ.*—Manus. brit. mus. *96 բ, Նոտարք 112։*

— 99. Մարտիրոս *Ա Եգիպտացի, ընտրվեց պատրիարք Երուսաղեմի «1418 թ», հաջորդելով Պողոս Բ-ին, երբ սա ընտրըվեց էջմիածնի կաթուղիկոս։ Շինարար մարդ էր. հիշված է 1427 թ. (Նոտարք 82). իրեն օգնական առավ Եսայի եպիսկոպոսին «1430 թ». իսկ ինքը գնաց Եգիպտոս և աշխատում էր Երուսաղեմի վանքի կալվածների հարցով։ Գահակալել է մինչև «1438 թ»։—Ազգապ. 2063, Ջամչ. Գ. 473.*

— 100. Մարտիրոս *վարդապետ, մին այն պատգամավորներից, որոնք ուղարկվեցին մասնակցելու Ֆլորենտիայի կրոնական ժողովին, 1439 թ.—Տաշեան, Ցուց. 111։ (Տես Մարկոս № 31)։*

— 101. Մարտիրոս *վարդապետ, առաջնորդ Եկեղեաց գավառի Աւագ վանքի, 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49։*

— 102. Մարտիրոս *աբեղա, միաբան Եկեղեաց գավառի Աւագ վանքի, 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49։*

— 103. Մարտիրոս *աբեղա, այլ միաբան նույն վանքի, 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49։*

— 104. Մարտիրոս եպիսկոպոս Հաղբատի, անդամ էջմիածնի մեծ ժողովի, 1441 թ.—Մեծոփ. յիշ. ա։

— 105. Մարտիրոս եպիսկոպոս Սեւորդեաց, անդամ էջմիածնի մեծ ժողովի, 1441 թ.—Ջամչ. Գ. 487, Ազգապ. 2106։

— 106. Մարտիրոս կրոնավոր, միաբան Ոստանի Գուլկի վանից, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։

— 107. Մարտիրոս աբեղա, միաբան Սեպուհ լեռան Ս. Լուսաւորիչ վանքի, ուր ծաղկեց Յովհաննէս գրչի օրինակած Սաղմոսը, 1442 թ. աշակերտում էր Յովհաննէս րաբունուն, 1445 թ.—Նոտարք 129, 135։ Տես և № 111։

— 108. Մարտիրոս, աշակերտ Կարապետ վարդապետի, որ ստացավ մի հին Աստուածաշունչ, 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 109. Մարտիրոս կրոնավոր, գրիչ. օրինակել է Գր. Տաթևացու Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի, Կաֆա քաղաքում, 1449 թ.—Ձեռ. Կարին. 150, Նոտարք 160։

— 110. Մարտիրոս քահանա, ծաղկող. նկարազարդեց այն Աւետարանը, որ Արճէշում Յովհաննէս քահանային գրել էր տվել դրակալ Վարդանը 1450 թ.—Ձեռ. Թաւր. 65։

— 111. Մարտիրոս եպիսկոպոս, գրիչ. օրինակել է մի Ժամագիրք, Թորդանի վանքում, «առ դամբարանի Հօրս լուսոյ (Լուսաւորչի) և Որդւոց և Թոռա՛նց նորա», 1450 թ. (Թերևս № 107 Մարտիրոս գրիչն է, որ Ս. Լուսաւորիչ վանքում աբեղա էր 1445 թվին և հինգ տարի հետո բարձրացել է եպիսկոպոսական աստիճանին)։—Նոտարք 165։

— 112. Մարտիրոս Մոկացի, «որ բազում երախտիք ունի ի վերայ մեզ», ասում է Գրիգոր քահանա գրիչը (№ 610), որ Աղթամարի վանքում օրինակեց Աւետարանը՝ Սուլթան-Մելէք տիկնոջ համար, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 414։

— 113. Մարտիրոս, որդի Կիրակոսի (№ 122) և եղբայր Խաչատուրի (№ 97), որ Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1'53 թ.—Ձեռ. Վասպ. 419։

— 114. Մարտիրոս, որդի Յակոբ քահանայի, որ օրինակեց մի Աւետարան 1453 թ.—Ձեռ. Թաւր. 135 բ։

— 115. Մարտիրոս, հորեղբորորդի Ատոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 580)։

— 116. Մարտիրոս, երկու համանուն որդիք տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան 1455 թ.,

երբ այդ երկու որդիներն էլ մեռած էին.— Ձեռ. Վիեն. Ա. 582։

— 117. Մարտիրոս, հայր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.— Ձեռ. Վիեն. Ա. էջ 582։

— 118. Մարտիրոս, երկու համանուն փաղաւերիկ որդիք Ստեփանոսի՝ եղբորորդւոյ տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 119. Մարտիրոս, որդի տանուտեր Յովհաննէսի, որ իր Յովհաննէս քահանա եղբոր հետ Մոկաց Փառավանքում գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.— Ձեռ. Վասպ. 422։

— 120. Մարտիրոս, որդի Մխիթարի և եղբայր Պօղոս աբեղա գրչի, որ Բաղէշի Ամրդօլայ վանքում օրինակեց Աւետարանը 1455 թ.— Նոտարք 178։

— 121. Տէր Մարտիրոս, որդի Մելքիսեդի. Բասենի Սպիտակ վանքում, Մովսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.— Նոտարք 180։

— 122. Մարտիրոս, փակակալ Նորավանից, 1456 թ.— Ջարբ. Թրգմ. 727։

— 123. Մարտիրոս, պապ Ստեփաննոս Ղարիպշահի, որ Ղազար գրչին օրինակել տվեց Յայսմաւուրքը՝ Լիմ կղզում, 1457 թ.— Ձեռ. Թաւր. 103 բ։

— 124. Մարտիրոս, թոռնորդի Ստեփաննոսի, որ գրել տվեց մի Աւետարան՝ կեցանայ ձորի Սորավանքում, 1458 թ.— Ձեռ. Վասպ. 431։

— 125. Մարտիրոս, «հայրապետ Կոստանդինուպօլիս վիճակին», 1459 թ. այսպես ենք գտնում Ամիրտովլաթի Բժշկարանի ձեռագրում (տես Ամիրտ. Օգ. բժշ. էջ ԻԹ)։ Բայց 1459 թվին Պոլսում դեռ պատրիարքական աթոռ չէր հիմնված. և առաջին պատրիարքը՝ Յովակիմ Ա գահակալել է 1461 թ. Սուլթան Մեհեմմէդ Ֆաթիհի հրովարտակով։ Ուստի պետք է ընդունել կամ 1) որ Յովակիմից առաջ էլ եպիսկոպոս էր նստում Պոլսում և կամ 2) որ հիշատակարանը գրված է ավելի ուշ։— Հմմտ. № 149։

— 126. Մարտիրոս, թոռն Թումայի (№ 178), որ Ներսէս աբեղային գրել տվեց Աղթամարում մի Աւետարան, 1460 թ.— Ձեռ. Վասպ. 433։

— 127. Մարտիրոս ոմն, որի անունը հիշված է Նոր-Նախի-

Ջիվանի Ս. Թորոս եկեղեցու մի խաչքարի արձանագրության մեջ, 1462 թ.—Ազգագր. հանդ. Է, էջ 58։

— 128. Մարտիրոս վարդապետ Պռուեցի, գրել է Տարոնի Յովհաննէս եպիսկոպոսի նահատակության պատմությունը, Բաղէշ 1463 թ.—Նոտարք 199, 213, 230, Ազգապ. 2171։

— 129. Մարտիրոս կրոնավոր, որդի Յովհաննէս քահանայի. Յոհաննէս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1464 թ.—Նոտարք 219։

— 130. Մարտիրոս, երկու համանուն քահանաներ Մոկաց երկրի Առբերդոյ վանից, 1466 թ.—Նոտարք 225։

— 131. Մարտիրոս, ջաղացպան նույն վանքի, 1466 թ.—Նոտարք 225։

— 132. Մարտիրոս աբեղա Վաւտըրցի, միաբան Ատմընայ վանքի՝ յանուն Ս. Աստուածածնի և Ս. Յակոբայ, 1467 թ.—Ձեռ. Վասպ. 449։

— 133. Մարտիրոս, պապ Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ (№ 234) գրչին գրել տվեց մի Ավետարան, 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

— 134. Մարտիրոս հիշատակագիր. երբ Վահրամ և Թիֆանէ գնեցին մի Ավետարան և նվիրեցին Կիպրոսի եկեղեցուն՝ 1468 թ., Մարտիրոսը գրեց այս դեպքի հիշատակությունը.—Ձեռ. Միւնխ. 6 բ։

— 135. Մարտիրոս, Թոռն տանուտեր Առաքելի (№ 89), որ Գամաղիէլի վանքում գրել տվեց մի Ավետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։

— 136. Մարտիրոս, Լերդկայ երկրից, հորեղբորորդի Ներսէս աբեղայի, որի միջնորդությամբ Ստեփանոս գրիչը Տիվրիկում օրինակեց մի Ավետարան, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 364։

— 137. Մարտիրոս, որդի Գրիգորի, կոշկակար. Աշոտաց երկրի Անկիւնաց վանքում, Զաքարիա աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588, Այրարատ 52։

— 138. Մարտիրոս, որդի Մկրտիչի, ռէս կամ տանուտեր, Բերկրի քաղաքում, Կարապետ քահանա գրչին գրել տվեց մի Ավետարան, 1473 թ. երբ ինքն էլ մեռավ.—Ձեռ. Վասպ. 467։

— 139. Մարտիրոս, եղբայր Աղների, որ գրել տվեց մի Ավետարան, Աշոտաձորի Անկիւնեաց վանքում, 1477 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 219)։

— 140. Մարտիրոս, *որդի Խոսրովի (№ 33), որ Բռնաշէնում Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485—6։*

— 141. Մարտիրոս, *որդի Յովհաննէսի և եղբայր Վարդան կրոնավորի, որ Կտուց անապատում, Խաչատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 489։*

— 142. Մարտիրոս, *որդի Սարգսի և քեռորդի Զահվիլի, որ Մուղնիում ստացավ մի Գանձարան, 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։*

— 143. Մարտիրոս *երեց. մի հին Աւետարան նվեր ստացավ Սարգիս երեցի որդի Յոհանէս երեցից. 1449 թ. այն պայմանով որ մինչև մահը գործածի. ծախելու իրավունք չունի. «և յորժամ իւր վախճանն հասնի, նա մեզ յիշատակ դնէ»։ Բայց դրժեց իր պայմանը և 5 ֆլորինով ծախեց Հռիփսիմէ տիկնոջ՝ 1486 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 537։*

— 144. Մարտիրոս, *որդի Յովսէփ քահանայի և եղբայր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 10 բ։*

— 145. Մարտիրոս, *որդի Յովհաննէսի և վաղամեռիկ եղբայր Մուրադի, որի հիշատակին Ստեփաննոս գրիչը Արճէշում գրեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 498։*

— 146. Մարտիրոս, *եղբօրորդի Զաքարայ աբեղայի, որ Յակոբ քահանայից գնեց Շարակնոցը, Երզնկայում, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 ա։*

— 147. Մարտիրոս, *տանուտեր, որդի Տուլախի. իր եղբայր Շարիբէգի հիշատակին գրել տվեց մի Աւետարան, Սարգիս վարդապետ Անիձորացի գրչին, և Մկրտիչ քահանայի ձեռքով նվիրեց Փողիկ գյուղի Ս. Սարգիս եկեղեցուն, 1489 թ.—ՀԱ 1894, 51—52։*

— 148. Մարտիրոս *աբեղա, միաբան Աղբակու Ս. Բարթուղիմէոս վանից, 1489 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 51 բ։*

— 149. Մարտիրոս *աբեղա, գրիչ. Ղարաման գավառի հայ տարագիրների հետ աքսորվել է Պոլիս 1479 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 583). 1480 թվին, Ամիրդովլաթ բժշկի խնդրանոք արտագրել է Պոլսում մի Սաղմոս, որի օրինակը Սուլթան Մէհէմմէդ Ֆաթիհը ձեռք էր բերել 1473-ին Բաբերդը կողոպտելու ժամանակ։ Ամիրդովլաթը խնդրում և Սուլթանից ձեռք է բերում հիշյալ թանկագին Սաղմոսը (Կարապետեան՝ Յիշատ.*

Սամաթիոյ 45, Թորգոմեան՝ Ներբ. Ամիրտ. 1922, էջ 12 և ՀԱ 1895, 246, Ստամպօլոյ պատմ. էջ 226—8, Տեղեկ. Արմֆանի 1941 թ. № 3--4, էջ 120)։ Նույն անձն է նաև այն Մարտիրոս աբեղան, որ կազմել է Ավետարանը 1488 թ. (գրված 1492 թ. բայց անշուշտ սխալ. որովհետև կազմը ավելի ուշ է լինում քան գիրքը գրելը) (Կարապետեան՝ Ցիշատ. Սամաթիոյ 42)։ Օրինակել, ծաղկել և կազմել է Ամիրդովլաթի Անգիտաց անպէտը 1490 թ. (Տեղեկ. Արմֆանի. 1941 թ. № 3—4, էջ 124)։

— 150. Մարտիրոս գրիչ, Բաբերդում օրինակեց Ցայսմաւուրքը, 1491 թ. Սմբատեանց՝ Երնջակ 315։

— 151. Մարտիրոս եպիսկոպոս Երզնկացի, Նորգեղից, Ս. Կիրակոսի անապատից. լսելով որ Քրիստափոր Կոլոմբոսը գտել է Ամերիկան, ինքն էլ ուզեց նոր աշխարհներ գտնել։ Նա դուրս եկավ Հայաստանից, անցավ ամբողջ Եվրոպան և Սպանիայի վրայով հասավ Ատլանտեան ովկիանոսի եզերքը։ Այս ամբողջ ճամբորդությունը կատարում էր ոտքով, հյուրասիրություն գտնելով վանքերում Ատլանտեանի վրա Բիսկայեցիների հետ ծովային ճամբորդության դուրս եկավ։ Այս ճամբորդությունը կատարել է նա 1488—1491 թվերին և թողել է նրա ինքնաձեռագիր պատմությունը, որ այժմ պահվում է Պարիզի Bibliothèque nationale-ում.—Ալիշան, Ցուշիկք, Բ. 470, Հայ-Վենետ. 194—197, Revue de l'Orient, 1862, էջ 398-406, Manus. bibl. nat. էջ 159, REA 1(1920), էջ 67։— Այս նույն «Ճանապարհագրութիւնը» ունի նաև Ձեռ. Վենետ. Բ. 509, արտագրված Bibl. nat. № 65 ձեռագրից, բայց այստեղ Ամերիկեան ճամբորդությունը վերածված է Հռոմի Առաքյալների գերեզմաններին ուխտի գնալու շատ հասարակ վիճակին։

— 152. Մարտիրոս քահանա, որդի Յորդանանի՝ եղբոր Դալուստ աբեղայի, որ կեչառուսում օրինակեց Ավետարանը, 1491 թ.— Ձեռ. Սևան. 10 բ։

— 153. Մարտիրոս աբեղա, միաբան Գլախորի վանքի, 1495 թ.— Ձեռ. Սանաս. 24 ա։

— 154. Մարտիրոս, հայր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1497թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 155. Մարտիրոս, որդի Շաքարի և եղբայր Ատոմի, որ իր Հարիբ (№ 4) անուն կնոջ հետ գրել տվեց մի Ավետարան, Աղբակի Երնկանի գյուղում, 1498 թ.— Ձեռ. Վասպ. 526,528։

— 156. Մարտիրոս, *եղբայր Կարապետ քահանայի, որ Խաչատուր և իր կին Սալչուկ անուն անձերից նվեր ստացավ մի Ավետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։*

— 157. Մարտիրոս *Բ Պրուսացի, պատրիարք Երուսաղեմի 1491—1501 թ. հաջորդեց Յովհաննէս Զ. Թաւլիլի (ըստ Աղաւնունու). հիշված է 1497 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 151 ա)։*

— 158. Մարտիրոս, *պատրիարք Պոլսի «1509—1526 թ.» հաջորդեց Կարապետին.—Ազգապ. 2225։*

— 159. Մարտիրոս *եպիսկոպոս Ամթեցի. իբրև նվիրակ ուղարկվեց Լեհաստան՝ Միքայէլ կաթուղիկոսի կողմից (որ գահ է բարձրացել «1567 թ»).—Կամենից 229—230։*

— 160. Մարտիրոս *եպիսկոպոս Աշոցի. Սսի Զաքարիա կաթուղիկոսի հետ միասին դավանության թուղթ տվեց Սեքստոս Ե պապին, 1585 թ.—Տաշեան, Ցուց. 111։*

— 161. Մարտիրոս *երեց Խարբերդցի, տաղասաց. իր տաղերից նշանավոր է Տաղ չախուի. «Սիրտս ի փորս դողայ». հրտր. Կոստանեանց, Նոր ժող. Բ. 37, Գ. էջ* Ե. *իր տաղերի մասին տես Տաշեան, Ցուց. 795 բ և 1114 բ. (նախ քան 1617 թ. ուրեմն և ԺԶ դար)։*

— 162. Մարտիրոս *Խարասարցի, տաղասաց. ունի ուրախ տաղեր, որոնք տես Կոստանեանց, Նոր ժող. Բ. 47—52, Դ. 17—26, Տաշեան, Ցուց. 1114 բ-գ։ Շփոթված է նախորդի և հաջորդի հետ։ Գրել է 1617 թվից առաջ, ուրեմն և ԺԶ դար։ Ինքը կոչում է իրեն Մարտիրոս «Ղարաճասրի» (Նոր ժող. Դ. էջ 23), որով պետք է հասկանալ Ղարահիսար կամ Ղարաճահիսար։*

— 163. Մարտիրոս *Մոկացի, Գուրջի ազգատոհմից. կաթուղիկոս Աղթամարի 1660—1662 թ. Մոկաց գավառի Նանենից գյուղից էր. մականունն է Փշրուկ. հաջորդեց Կարապետ Բանածին։ Իր օրով Շատախը բաժանվելով Աղթամարից՝ միացավ Էջմիածնին։ Օգուտ քաղելով թուրք-պարսկական պատերազմից, Մարտիրոսը բողոքեց Տաճկաց Սուլթանին թէ Էջմիածնի կաթուղիկոսը Սուլթանի երկիրներից հավաքած տուրքերը Պարսից երկիրն է տանում ուտում։ Այսպեսով հրովարտակ հանեց Սուլթանից, որ ամբողջ հարավային Հայաստանը (Վան, Մուշ, Բաղէշ, Տիգրանակերտ) Աղթամարի թեմին միանա։ Յակոբ կաթուղիկոսը նույնպես բողոքեց Սուլթանին և յաջողեց հրամանը կասեցնել (1661 թ)։—Ջամբռ 93, Հաւաք. 63, Ազգապ. 2588, Ակինեան՝ Գւզնգիրք 131—136։*

— 164. Մարտիրոս *վարդապետ Ղրիմեցի կամ Կաֆացի. Եղիազար Այնթապցի կաթողիկոսի ձեռնասունն ու պաշտպանյալն էր. ազդու մասնակցություն ունեցավ Պոլսի պատրիարքական վեճերին։ Կաթոլիկ կուսակցությունը ընկճելուց և նրանց անարժան պատրիարք Թովմասին սպանելուց հետո, հայադավան կուսակցության կողմից Մարտիրոսը Պոլսի պատրիարքական գահը բարձրացավ «1659 թ»։ Մի տարի հետո գահընկեց եղավ Ղազար Սեբաստացու ձեռքով «1660 թ» և էջմիածին անցնելով՝ ձեռնադրվեց Ղրիմի թեմի եպիսկոպոս «1661 թ»։ Եղիազար Այնթապցու հակաթոռության ժամանակ ազդու միջամտություն ունեցավ՝ իբրև պաշտպան էջմիածնի շահերի, կարողացավ չեզոքացնել Եղիազարին և այս առթիվ ստացավ Երուսաղեմի պատրիարքական աթոռը «1667 թ», որ վարեց անվանապես իբրև Մարտիրոս Գ մինչև «1682 թ», ըստ որում ինքը նստած էր Պոլսում, իսկ բուն պատրիարքությունը վարում էր Եղիազարը Երուսաղեմում «1671 թվից մինչև 1682 թ», երբ Եղիազարը էջմիածնի կաթողիկոս ընտրվեց և Երուսաղեմի աթոռը հանձնեց Մարտիրոսին։ Մեռավ Եգիպտոսում «1683 թ»։ Մարտիրոսը նշանավոր տաղասաց էր. գրել է իր տաղերը 1659—1681 թվերին. 1669 թվին ուխտի գնալով Անկիւրիոյ Ս. Աստուածածին վանքը, գրեց «Գովեստ Ս. Աստուածածին վանաց Անկուրիոյ» (տես Կոստանեանց, Նոր ժող. Դ. էջ 26—29). ունի նաև «Յաղագս քաղաքին Ամասիու» տաղը (անդ, Ա. 38—41)։ Տաղերի ցանկը տես Տաշեան, Ցուց. 894 և 1114 բ, Կոստանեանց, Նոր ժող. Դ. 68։ Ամբողջական հրատարակությունը Պոտուրեան, Պուքրէշ 1930։ Մարտիրոս Ղրիմեցու գործերից հիշատակելի են նաև «Կարգ վարդապետաց Հայոց» (Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 216), «Կարգ և թիւ թագաւորաց կամ Պատմութիւն Հայոց տաղաչափեալ» (տես սրա մասին Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 212—3), «Պատմութիւն Ղրիմայ երկրին» (76 տուն ոտանավոր, գրված 1662 թ. Bodleian 227), «Կոնդակ օրհնութեան առ Լեհահայսն»։ — Զքրսարկ. Բ. խ, ծբ. Ազգապ. 2557—74, Լէօ, Հայկ. տպագր. Ա. 284։—Իր նկարը տես Նշանեան, հրատ. Երեմ. չէլ. օրագր. ԼԲ։*

— 165. Մարտիրոս *Երզնկացի, կոչված Բիւլհանճի. Աւետիք պատրիարքի ձեռնասունն էր. եղել էր պատրիարքական փոխանորդ. բայց գողության մեջ բռնվելով պատժվել էր. սրա վրա հակառակեց իր բարերարին և մտավ նրա հակառակորդ կուսակցության մեջ։ Աւետիքի աքսորի ժամանակ եղավ պատրիարք*

Պոլսի «1706 Թ»։ Բայց երբ Ֆրանսիացիք գողացան Աւետիքին և գաղտնի կերպով Մարսէյլ փախցրին, Մարտիրոսը ժողովրդական ցասման ենթարկվեց ու գահազուրկ եղավ «1706 Թ»։—Աղգապ. 2736, 2741, Զամչ. Գ. 750։

— 166. Մարտիրոս դի Առաքել, ժանր մատենագիր ԺԸ դարի. վաճառական էր. ճանապարհորդությամբ եղել է Շիրազ, Բանդարաբբաս, Լիվոռնո (1723 Թ). գիտեր վրացերեն ու ֆրանսերեն. գրել է «Կարգ և Թիւ Թագաւորաց Պարսից», որ հրատարակեց Աշ. Աբրահամեան (Գիտական նյութերի ժողովածու, № 1, էջ 93—100), հանդերձ կենսագրական համառոտ տեղեկությամբ։ Պարունակում է Պարսից և Օսմանցոց պատմությունը 1397—1729 Թ։

— 167. Մարտիրոս, Նոր Նահատակ. պատանի էր. հավատքը չուրանալով՝ գլխատմամբ նահատակվեց 1763 Թ. Պոլսում։ Շիրիմը գտնվում է մինչև այժմ Պոլսում, Խասգիւղ Թաղի գերեզմանատան մեջ և է աղբյուր—ուխտատեղի։—Թորգոմեան, REA 4, 218, ուր կա նաև իր գամբանի նկարը։

— 168. Մարտիրոս Լուսարար Կարնեցի. տաղասաց (ԺԸ դար). իր տաղերի ցանկը տես Տաշեան, Ցուց. 1114 բ։

— 169. Մարտիրոս ողբասաց. ունի «Կոծ չարչարանաց և խաչելութեան» (ԺԸ դար). տես Տաշեան, Ցուց. 1114 գ և էջ 939—940։

— 170. Մարտիրոս Հիզանցի, տաղասաց. տես Մառ, Ամառն. ուղև. 83։

ՄԱԽԱՐՏ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է մի անգամ 1594 Թ. (Տաշեան, Ցուց. 749)։

ՄԱԽԳԱԻ, ար. անստույգ ձևով անուն, որ մի անգամ հիշված է 1452 Թ. «Խաւուց, Մկրտչի կին՝ զՄաւգաւի դուստրն» (Ջեռ. Վասպ. 415)։

ՄԱԽԷՇ, սեռն ու ծագումը անհայտ. հիշված է մի անգամ 1666 Թ. (Bodleian 253)։

*ՄԱԽՋՈՒԴ, իգ. < արաբ. موجود mavǰūd «գտնված, ներկա» բառից։ Գրված է արևմտյան տառադարձությամբ Մաւճուտ և հիշատակված է երեք անգամ (Թորոս աղբ. 346, 362, Ջեռ. Հալէպի, Ա. 206 ա), երեքն էլ անթվական։ Վերջինը 1426 Թվից հետո է, որովհետև հիշատակում է Գանձարանի հեղինակ Գրիգոր Խլաթեցուն († 1426 Թ)։

ՄԱՔ, ար. ծագումն անհայտ. հիշատակված է միայն՝

— Մաք եպիսկոպոս, որ մի քանի քահանաների հետ ուղարկվեց Հոնաց աշխարհը և այնտեղ եկեղեցի հիմնեց (ըստ Զաքարիա հռետորի). Զ դարի առաջին կեսին.—Ակինեան, Եղիշէ վրդ. Ա. 221։

*ՄԱՔԱՆԴԱՐ, ար. < արաբ. مكان makān «տեղ, բնակարան»+պրս. دار dār «ունեցող» բառերից. ամբողջը նշանակում է «տեղ կամ բնակարան ունեցող»։ Հիշված է մի անգամ 1603 թ. (Матер. Арх. Кавк. III, էջ 99—100)։

ՄԱՔՈՎՏՐ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված կա՝

— Մաքովտր, անծանոթ ոմն, որի քույրը՝ Մարթա նշանակվեց Հոգեաց վանքի վանամայր՝ Բարթուղիմէոս առաքյալի ձեռքով (50 թ. Զամչ. Ա. 297).—սեռ. Մաքովտրի՝ Խոր. պատմ. աԾած. 295.—Մաքովտրայ՝ Հայսմ. 53։

Մաքսուդ տես Մախսուտ:

† ՄԱՔՐԻՆԷ, իգ. < հյ. մաքուր բառից. նորակերտ անուն. հների Մակրինե անունն է, որ այսպես հարմարեցրել են. հմմտ. Մակրինա կամ Մակրինե՝ քույր Մեծն Բարսեղի (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ, 251)։

† ՄԱՔՐՈՒՀԻ, իգ. < հյ. մաքուր բառից. նորակերտ անուն. (Աստուածածնի 7 անուններից մեկն է. այսպես՝ Աստուածածին, Մարիամ, Թագուհի, Սրբուհի, Տիրուհի, Մաքրուհի, Դշխուհի)։ Կրճատ ձևն է Մաքրիկ:

*ΜΕΓΑΒΑΤΗΣ, ար. < իրան. Bαγαπάτης «աստուածապահ» անունից (ըստ Justi 57 բ)։ Հիշված է մի անգամ. Փոքր-Հայոց (յոյնկոյս Եփրատի) Artapates թագավորի հիւպարքոսն էր, որ երեաց Պոմպէոսի բանակում (Justi 57 բ)։

*ՄԵԹԱՐ, ար. < պրս. mihtar «մեծագույն» բառն է, որ ապա աղավաղվելով դարձավ mehter և հին թրքական գործածությամբ նշանակում էր «արքունի դռան բարապան. 2. նախարարների դռան նվագածու»։ Սրանից ունինք՝

— Մեթար ոմն, որ իր այգին նվիրեց Արճէշի Ս. Յարութիւն եկեղեցուն, 1291 թ.—Արձ. Սարգիսեան, Տեղագր. 268։

*ՄԵԹՈՏԻՈՍ, հիշված է իբրև նահատակ և հայոց առաջին մարգարե, որ գուշակել է Արաբների արշավանքը (ըստ Ռուբրուք ճանապարհորդի ԺԳ դարու. տես Ուղեգրութ. Ա. 16, 21).—պետք է հասկանալ Մեթոդ-Մաշտոցը։

ՄԵԹՈՐ. ծագումն անհայտ. (հմմտ. Մեթար). հիշված է մի անգամ՝ անթվական մի արձանագրության մեջ (Սմբատեանց, Գեղարքունի 313)։

*ՄԵԼԱՆԻԱ, իգ. < հուն. Μελανία, լտ. Melania, ֆրանս. Mélanie անունից, որ բուն նշանակում է «սևություն, մարմնի խալ» (հուն. μέλας «սև» բառից)։ Այս անունով հայտնի են՝ Մելանիա. Մեծ մայր Ս. Եւագր Պոնտացու (Դ դար), Մելանիա ազնվական կին հռովմայեցի միանձնուհի († 444 թ)։ Հնից չէ ավանդված մեր մեջ և անցյալ դարում նոր մտավ Արևմտահայոց մեջ։

Մելետ տես Մելիտե։

ՄԵԼԵՐ, ար. ծագումը անհայտ. մի անգամ հիշված է՝

— Մելեր «եղբայր» Վարդան պատմչի. Տփխիսում գնեց Վարդանի Պատմությունը, որ ավազակներն էին գողացել (ԺԳ դար).—Վրդ. ղէ։

*ՄԵԼԷՔ, իգ. < արաբ. ملك malak (կամ melek) «հրեշտակ» բառից, որի ավելի հին և հարազատ տառադարձությունն է Մալաք։ Ուրիշ է արաբ. ملك malik կամ مليك malīk «իշխան, թագավոր», նոր արտասանությամբ melik, որ տալիս է Մելիք արական անունը։ Հմմտ. Մելիք թագավոր Պարսից, որդի Տափարի, նստում էր Թավրիզում 1118 թ. (Զամչ. Գ. 42)։ Ուրիշ է դարձյալ արաբ. ملكة malika (նոր հնչմամբ melike) «թագուհի», որ տալիս է մեր Մլքե իգական անունը։ Հետագայում իրար խառնըվելով առաջացավ Մելիք թե արական և թե իգական անունը։ Այժմ Ատրպատականում զանազանվում են Mäläk իգ., Mälik ար. և Mälikä իգ. անունները։ Սրանցից են ծագած նաև Մելիքխաթուն, Մելիքշահ, Մելէքնազ են։

— 1. Մէլիք, կին Խաչատուր քահանայի և մայր Վասիլ քահանայի, որ Կիլիկիայ Ս. Թորոս վանքում գրեց մի Ավետարան, 1231 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 222 բ։

— 2. Մելիք մահտեսի, մայր (հոգևոր) Գրիգոր աբեղայի, որ օրինակեց Ավետարանը՝ Փրկչի վանքում, 1280 թ.—Թորոս աղբ. Ա. 216։

— 3. Մելէք, կին Վարդանի, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

— 4. Մելէք, կին Կիրակոսի և մայր Ստեփանոս կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 848—851)։

— 5. Մելիք, կին Դավթի և մայր Առաքել Սիւնեցու, որ հեղինակն է Ադամգրքի (1403 թ).—Ադամ. 229, 271, Ձեռ. Թաւր. 83 բ։

— 6. Մելիք, կին խաչպան Թոդանի և մայր Յովհաննէս երեցի, որ գնեց մի Աւետարան 1411 թ.—Սմբատեանց՝ Երնջակ, էջ 232։

— 7. Մելիք, կին Խաչերեսի և մայր Էվաչայի, որ Տրապիզոնծում գնեց մի հին Աւետարան 1425 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 485։

— 8. Մելեք, կին Սաղաթիէլի, մայր տանուտէր Մկրտչի, որ ստացավ մի Ճառընտիր 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 9. Մելէք, կին Նորամիրի և մայր Յովհաննէս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 364։

— 10. Մելիք, կին Գրիգորի և պապի մայրն է Յովհաննէս քահանայի, որ գրել տվեց մի Աւետարան, Մոկաց Փառավանքում, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 421։

— 11. Մելիք, երիցակին Սիմէոն քահանայի, որի անունով կա մի խաչքար Նոր-Նախիջևանի Ս. Լուսաւորիչ եկեղեցում, 1461 թ.—Ջալալ. Բ. 166> Նոտարք 198։ (Շահազիզ նույն անունը կարդում է ԷմիրՄելիք 1464 թ. տես այս անունը)։

— 12. Մելիք մահտեսի, երկրորդ կին Տիվրիկցի ներկարար Գրիգորի և մորու (խորթ մայր) Գրիգոր աբեղայի (№ 640), որ հիւրզի վանքում, Ստեփաննոս եպիսկոպոսին գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Վասպ. 448—9։

— 13. Մելիք, կին Մելքիսեդի և մայր Զաքարիա գրչի, որ Աշոտաձորի Անկիւնեաց վանքում օրինակեց Աւետարանը, 1477 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 220)։

— 14. Մելիք, կին Յովհաննէսի և մայր Հաթուչի՝ կնոջ խոջա Զօզի, որ գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. էջ 514։

— 15. Մելիք, կին Ստեփանոս քահանայի և մայր Մովսէս երեցի, որ Աւագ վանքում Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1494 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 576)։

— 16. Մելեք, մայր Յովհաննէս սարկավագ գրչի (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 591։

— 17. Մելիք, կին ոմն հիշված 1507 թ.—Կամենից 161։

*ՄԵԼԷՔԽԱԹՈՒՆ, իգ. < արաբ. ملك melek «հրեշտակ» բառից+խաթուն «տիկին»։ Այնուհետև շփոթվելով Մելիք բառի հետ՝ հաճախ դարձել է Մելիքխաթուն:

— 1. Մելիքխաթուն, կին Գուռճիբէկի, հավանաբար մայր Զաքարիա Բ կաթուղիկոսի, որ նահատակվեց Աղթամարում

1393 թ. մեռել էր իր որդու նահատակությունից առաջ՝ 1376 թ.—Ակինեան՝ Գավնգիրք 67< Ազգագր. հանդ. Ի, 211։

— 2. Մելիքխաթուն, կին Թութլուպէկի, որ գնեց մի Աւետարան 1422 թ.—Կամենից 161, REA 7, 107։

— 3. Մելիքխաթուն, կին խոջա Ստեփաննոսի, որ շինեց Պոնտոսի (Տրապիզոն) Ամենափրկիչ վանքը 1424 թ.—Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 83, Նոտարք 75։

— 4. Մելիքխաթուն, կին Միրամիրի և մայր Միմէօնի, որոնց բոլորի հիշատակին մի խաչքար է կանգնեցրած Նոր-Նախիջևանի Ս. Լուսաւորիչ եկեղեցում, 1431 թ.—Ազգագր. հանդ. Է, 51։

— 5. Մելէքխաթուն, դուստր Միրզայի և կին Ատոմի՝ եղբոր տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369։

— 6. Մելիքխաթուն, դուստր Ստեփաննոս քահանայի և կին Աղնաւուրի. Վանում, Վարդան քահանային գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Նոտարք 171, 173։

— 7. Մէլէք խաթուն, կին՝ ամիրա կամ մելիք Ստեփաննոսի և մայր Զաքարիա Գ (1434—1464) կաթուղիկոսի Աղթամարի. անորոշաբար հիշված է մի խաչքարի վրա.—Ակինեան, Գավնգիրք 86 և Հաւաք. 42։

— 8. Մելիքխաթուն, կին Պարոն Բշնեցու, որ մի Աւետարան ընծայեց Աշտարակի եկեղեցիներին 1478 թ.—Այրարատ 187 և 274։

— 9. Մելիքխաթուն, կին Սալղաթմիշի և մայր Նուրիջանի, որ Ագուլիսում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Յայսմաւուրք 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 299։

— 10. Մելիքխաթուն, դուստր Ջանգուլբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1495 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 135։

— Հիշված կան նաև Մալիքխաթուն 1557 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 529), Մէլիքխաթուն 1581 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 32 ա)։

— 11. Շրջված ձևով ունինք Խաթուն Մելիք, կին Ներսէս քահանայի և մայր Ցակոբ Ներսէսեանց գրչի. հիշված է 1464 թ.—Նոտարք 219։

*ՄԵԼԷՔԽԱՆ, իգ. < արաբ. ملك melek «հրեշտակ»+Խան բառերից. ենթադրում եմ որ գոյություն ունեցել է նախապես (հմմտ. վերը Մելէք). սրան ապացույց է Մալաքխան, որ հիշա-

տակված է †1755 թվին (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 41 ա), կա և Մելիքխաթ իգ. 1710 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. էջ 329)։

*ՄԵԼՔՆԱԶ, իգ. < արաբ. ملك melek «հրեշտակ»+պրս. ناز nāz «նազանք» բառերից, իբր «հրեշտականազ»։ Հիշատակված է ԺԴ դարում։

— Մելքնազ, կին Սուքիասի և մայր Սարգիս քհ. գրչի, որ Նախավկայի վանքում օրինակեց Աւետարանը, 1320 թ.—Ձեռ. Դադեան, Բ 30 ա։

*ՄԵԼՔՍԹԻ, իգ. < արաբ. ملك melek «հրեշտակ»+ستی sitti «տիկին» բառերից (Հայապ. 393 համարում է մելիք «թագավոր» բառից)։

— 1. Մելքսթի, դուստր Մոկաց Հմայեակ իշխանի և կին Սասնոյ Վիգէն իշխանի՝ որդւոյ Զորտուանէլի, 1169 թ.—Թորոս աղբ. Բ. 309—318, Ճանիկեան՝ Հնութ. Ակնայ 77, Հայապ. 393—4։

— 2. Մլքսթի, կին Ալէքսի (№ 3), երկուսով կալվածներ են նվիրել Հոռոմոսի վանքին, 1266 թ.—Շիրակ 26։

*ՄԵԼՔՏԻԿԻՆ, իգ. < արաբ. ملك melek «հրեշտակ» բառից+հյ. տիկին։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Մելքտիկին, դուստր Վարդան քահանայի, Պաղասխ դաշտի Աղպինար գյուղում. «վաղահաս մանկական հասակին փոխեցաւ ի Քրիստոս և խիստ տրտմութիւն եղև մեզ». մեռել էր 1331 թվից քիչ առաջ.—Ձեռ. Վասպ. 174 (սխալ տպված Մելէքսիկին)։

*ՄԵԼԻ, ար. < հուն. μέλι «մեղր» բառից. այս անունով հայտնի է Մելի եպիսկոպոս (որ և Մելես), որի վկայաբանությունը մտած է Յայսմաւուրքի մեջ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ը. 331)։ Մեր մեջ ավանդված չէ հնից. այժմ կա Մելեան ազգանունը, որ ենթադրում է Մելի անունը։ Այս անունը անորոշ ձևով հիշված է 1321 թվից ուշ (Ձեռ. Թաւր. 33 բ)։

*ՄԵԼԻԱՍ, ար. < հուն. μέλι «մեղր» բառից են համարում և ըստ այսմ Ջամչ. թարգմանում է Մեղրիկ։ Այս անունով գիտենք՝

— Մելիաս կամ Մեղրիկ զորավար հայ, որ Աշոտ Ա. Պոլիս գնացած ժամանակ իր հետ տարավ մի գնդով. Լևոն Իմաստասէր կայսրը պատերազմ ունենալով Բուլղարների հետ, խնդրեց Աշոտի օգնությունը. Աշոտն էլ տվեց նրան այս Մելիասին, որ իր գնդով միացավ հույն բանակին։ Մելիաս շատ քաջություններ գործեց,

բայց հույն բանակը հաղթվելով, ինքն էլ հեռացավ և գնաց Փոքր-Հայքի Լիկանդիա գավառը, հիմնեց այնտեղ հայկական գաղութ (901 թ.), որ շատ աճեց ու զարգացավ։ Լևոն կայսրը տեսնելով նրա հաջողությունը, նշանակեց նրան գավառապետ. Մելիասը հավատարիմ մնաց նրան մինչև իր մահը։—Զամչ. Բ. 706, Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Ա. 369, 370, 373, 380։

*ՄԵԼԻՆԷ, իգ. < հուն. μελέϊνη «հացի» բառից. այս անունով հայտնի է Մելինե տիկին, որ ունի թղթակցություն Եւագր Պոնտացու հետ (տես և Մելանիա)։ Նորամուտ անուն էր Պոլսում, անցյալ դարում։

*ՄԵԼԻՏԷ, ար. < հուն. Μέλιτος, որ և Μελέτιος, Μέλητος անունից, որ բուն նշանակում է «մեղրաւէտ»։ Հնից հայտնի են Մելիտոս՝ երեսուն բանակալներից մեկը, Մելիտոս՝ ողբերգակ հույն բանաստեղծ, Սոկրատի դատապարտիչներից մեծագույնը։ Քրիստոնեության ժամանակ հայտնի են մի քանի հայրեր, որոնցից նշանավոր է Մելիտոս հայրապետ Անտիոքի և անդամ Կ. Պոլսի ժողովի (381 թ)։ Հայերենում ունինք իբրև օտար ձև Մելիտոս և Մելիտոն, բայց ավելի հայացյալ են Մելետ, Մելիտէ, Մեղեդի, որոնք տես տակը (Հիւբշ. 335)։

— 1. Մելիտոս, նշանավոր եկեղեցական հայր. ծնվել է Փոքր Հայոց Մելիտինէ քաղաքում, ազգով հայ (ըստ Պալլադիոսի). ձեռնադրվեց Սեբաստիոյ եպիսկոպոս։ Տեսնելով ժողովրդի մեջ ծագած կրոնական խռովությունները, քաշվեց Բերիա։ Այդ միջոցին Կոստանդ կայսրը Անտիոք եկավ և ուզելով դադարեցնել հերձվածները, ընդհանուրի հավանությամբ պատրիարք դրեց Մելիտոսին (360 թ)։ Մելիտոս պատրիարքը շատ նեղություններ կրեց Արիոսականների ձեռքից. մի քանի անգամ աքսորվեց Մելիտինէ և Հայաստան, բայց հետո վերադարձավ իր աթոռը՝ Անտիոք, ուր հասցրեց շատ աշակերտներ։ Սրանց մեջ նշանավոր է Յովհաննէս Ոսկեբերանը։ Թէոդոս կայսեր կողմից հրավիրվեց Կ. Պոլսի ժողովին, բայց դեռ ժողովը չվերջացած մեռավ 381 թ.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ը. 287—317, Ցուցիկք Բ. էջ 62։

— 2. Մելիտէ, գլխավոր երեց, որ մասնակցել է Շահապիվանի ժողովին «444 թ».—Այրարատ 519, Հայապ. 159։ Նույն պիտի լինի հաջորդի հետ։

— 3. Մելետ եպիսկոպոս Մանազկերտի, անդամ Արտաշատի

ժողովի «449 թ».—Եղիշ. 22։ Նույնը կոչվում է Մելիտոն եպս. Մանձկերտոյ՝ Փարպ. իզ, որից երևում է թե նույն է՝

— 4. Մելիտոն, կաթուղիկոս Հայոց, «յազգէն Մանազկերտեցւոցն», հաջորդ Յովսէփ Ա-ի. գահակալեց «452—6 թ».—Փարպ. կր.—Նույնը գրված Մեղես՝ Արծր. Ա. ժա։

— 5. Մեղիտոն (կամ Մեղեդէ), առաջնորդ և վանահայր Արմանի լեռան Յովհաննու անապատի, 1098 թ.—Ակինեան՝ Թուղթ Մակարայ 99, 102։

— 6. Մեղիտոն Երևանցի, իր այգու քառորդը ծախեց Վարդըմբելին, սա էլ նվիրեց Կեչառու Ս. Գրիգոր եկեղեցուն, 1163 թ.—Շահազիզ, Հին Երևանը, էջ 75։

— 7. Մելիտոնոս եպիսկոպոս, առաջնորդ Խարբերդի Արգըլ-մեհնի վանքի, 1295 թ.—Տաթև 1927, 182։

— 8. Մեղիտոն, հոգևոր եղբայր Եղբայրիկ գրչի, որ օրինակեց Ավետարանը 1420 թ.—Ջեռ. Վասպ. 322։

— 9. Մեղիտոն, քեռորդի Կարապետ Դերջանցու, որ օրինակեց Քարոզգիրքը, Հերմոնի վանքում, 1421 թ.—Ջեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ)։

— 10. Մեղիտոն աբեղա, միաբան Սեպուհ լեռան Ս. Լուսաւորիչ վանքի, հիշված 1442 թ.—Նոտարք 129։

— 11. Մելիտոն, որդի տանուտեր Առաքելի, որ Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Ավետարան, Գամաղիէլի վանքում, 1469 թ.—Ջեռ. Վասպ. 453։

— 12. Մեղետոն աբեղա, առաջնորդ Բաբերդի Անլոց ուխտի. հակառակ իր ծերացած տարիքին՝ սպասավորում էր գրիչ Մովսէս աբեղային, որ գրում էր Ավետարանը 1486 թ.—«Էջմիածին» 1944 թ. № 1, էջ 36 բ։

— 13. Մելտոն Արապօղլու, կեսարացի. ճարտարապետ Օսմանցոց Սուլթան Ահմէտ Գ-ի (1703—30). վերաշինեց Սամաթիոյ Ս. Գէորգ եռեակ եկեղեցիները (1722 թ), ապա Գալաթիի Ս. Հրեշտակապետ եկեղեցին (1729 թ)։ Այն ժամանակի Պոլսի ամենից ազդեցիկ հայն էր և Կոլոտ Յովհաննէս պատրիարքի գործակիցն ու աջակիցը։—Կարապետեան՝ Յիշատ. Սամաթ. 259, Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1535, Թորգոմեան՝ Սամաթիոյ պատմ. Ա. 213, Բ. 493։

— Ուշ ժամանակի հիշատակություններ են Մելիտոն 1534 թ. (Ջեռ. Պետերբ.=ՀԱ 1892, 52 ա), 1561 թ. (Ջեռ. Կես. ածած. 51 ա), Մելիտոն 1633 թ. (Ջեռ. Վասպ. 884), Մելտոն

քահանա 1657 թ. (Երեմ. չէլ. օրագր. 263), Մելիտա՛ 1659 թ. (անդ 334), Մելիտոն որդի Տումանի՝ ԺԷ դար (Տաշեան, Ցուց. 506), Մելիտէն քահանա (Թվականն անհայտ, Արցախ 186) Մելիտոն 1707 թ. և 1742 թ. (Ջեռ. Վասպ. 508, 566)։

*ՄԵԼԻՔ, ար. < արաբ. ملك melik կամ مليك melīk «թագավոր» բառից. իբրև անձնանուն գործածական է նաև Իսլամների մոտ. ինչ. Մելիք որդի Եզդին ամիրայի (Մեծոփ. 70). հին տառադարձությամբ գրվում է Մալիք. սրանից է Մելիքեան ազգանունը։ Ավելին տես Մելէք: Հիշատակվում է ԺԴ դարից սկսած և մինչև այժմ էլ գործածական է։

— 1. Մելիք ոմն, որի տապանաքարը գտնվում է Շամախու Վանքաշէն գյուղի գերեզմանատանում, ՊՃԳ=1354 թ. (եթե սխալ չի արտագրված փխ. ՌՃԳ=1654)։—Բարխուտ. Աղվանից երկ. 204—206։

— 2. Մայլիք, հայր Սարխութայի, որ իր դուստրը էսան հոգեորդի տվեց Մովսէս քահանային, 1387 թ.—Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 45, 61։

— 3. Մելիք մահտեսի, որդի Աստուածատուրի, որ կառուցեց Թէոդոսիայի Ս. Հրեշտակապետ եկեղեցին, 1408 թ. — Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 37։

— 4. Մալիք, եղբայր մահտեսի Մուրադի և Ցիսաւի, մեծ հորեղբայր Ցովհաննէս արքեպիսկոպոսի, որ առաջնորդ էր Բարթուղիմէոս առաքյալի վանից և ստացավ մի Ցայսմաւուրք 1438 թ.—Ջեռ. Թաւր. 41 ա։

— 5. Մելիք, հիշատակված է Թէոդոսիայի Ս. Գէորգ եկեղեցու գաւթի արձանագրության մեջ 1479 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 372։

— 6. Մելիք, տնտես Բաբերդի Բերդակ վանքի, 1489 թ.— Manus. brit. mus. 165 բ։

— 7. Մելիք, որդի Սայտունի և թոռն մեծին Աղբաստու, սպասներ և կալվածներ է նվիրել Գանձասարի վանքին, 1499 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 374, Բարխուտ. Արցախ 179 (պակասներով)։

— 8. Մելիք, եղբորորդի Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Ցովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ջեռ. Սևան. 18։

— Մելիք անունը հիշված է նաև մի քանի անթվական ար-

ձանագրությանց մեջ, ինչ. Մելըք ձևով (Արցախ 407), Մելիք (Կրպէ, Կարս քաղաք 30)։

— Ուշ ժամանակի հիշատակարաններից են Մէլիք երեց 1534 թ. (Ձեռ. Վասպ. 647), Մէլիք 1575 թ. (անդ 688), 1579 թ? (անդ 690), 1582 թ. (անդ 696), 1602 թ. (անդ 802), 1605 թ. (Թորոս աղբ. Բ. 342), 1610 թ. (Ձեռ. Վասպ. 837), 1615 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 41)։

— Անթվական են, բայց իբրև արական են հիշված Մելէք երեց! (Ձեռ. Վասպ. 618), Մելէք (անդ 127), նաև ուրիշ անունների հետ իբրև մակդիր՝ Մելէք Սոսուն, ապա Մելիք Սոսուն և վերջն էլ պարզապես Սոսուն՝ 1707 թ. (Ձեռ. Վասպ. 507—8), Մելէք Ստեփաննոս (հոգևոր հայր), քիչ վերջը Մելիք Ստեփա(նոս) 1291 թ. (Սարգիսեան, Տեղագր. 268)։

*ՄԵԼԻՔԱՂԱ, հիշված է 1653 թ. իբր իգ! (Ձեռ. Ագուլ=Արրտ. 1911, 563), ինչպես որ սրա հակառակ էլ կա Մելէքաղա իբր ար! 1578 թ. (Ձեռ. Վասպ. 9)։

*ՄԵԼԻՔԱՑ, իգ. < արաբ. ملكة melika (կամ melike) «թագուհի» բառից։ Հնագույն վկայությունը ունինք ԺԳ դարից։ Ավելի հին տես Մլքէ։

— 1. Մելիքա (սեռ. Մէլիքայի), կին Պօղոս երեցի, որ ստացողն է Վենետկի Դ մեծ ճառընտրի, հավանաբար ԺԳ դարից.— Ձեռ. Վենետ. Բ. 132։

— 2. Մելիքայ խաթուն, կին խօճայ Ստեփաննոսի, որ շինեց Տրապիզոնի Ամենափրկիչ վանքը, 1424 թ.—Արձ. Բժշկեան, Պատմ. Պոնտ. 83 > Նոտարք 75։

— Հիշված կան նաև Մելիքայ՝ 1311 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 73 ա) և մի ուրիշ Մելիքայ՝ հիշված նույնպես անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Բ. 132)։

*ՄԵԼԻՔԲԷԳ, ար. < արաբ. ملك melik «իշխան, թագավոր» +թրք. بك beg բառերից։ Հիշված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես Մելիքբէգ 1559 թ. (Սխական 182), † 1578 թ. (Սխական 69, Կրպտ. եպս.՝ Դօփեանք 189), Մելիքբէկ 1626 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 32 բ), 1667 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 3 բ), 1490 թվից ուշ անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Սևան. 6 ա)։

— Մելիք-բէգ Հասան-Ջալալեան, որդի Մելիք Ալլահվերդի Ա-ի. իշխան Խաչենի. հաջորդեց իր հոր. սրա որդին է Գանձա-

սարի Յովհաննէս կաթուղիկոսը, որ սպանվեց Շուշի բերդի Իբրահիմ խանից (1786 թ.).—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 21։

*ՄԵԼԻՔԶԱԴԷ, ար. < արաբ. ملك melik «իշխան»+պրս. زاده zāde «ծնունդ» բառերից և նշանակում է «իշխանածին»։ Հիշատակված է 1604 և 1613 թվերին (Ջեռ. Վասպ. 813, 846). ուստի և ԺԶ դարից. մյուսները անթվական են (Թորոս աղբ. Բ. 273, Ջեռ. Վասպ. 158, Ջեռ. Թաւր. 67 բ). գրված է Մելիքզադ 1817 թ. (Ազգապ. 3431)։

*ՄԵԼԻՔԶԱՐ, իգ. < արաբ. ملك melik «թագավոր»+պրս. زار zār մասնիկով? կամ زر zar «ոսկի» բառով? Հիշված է մի անգամ 1630 թ. (Թորոս աղբ. Բ. 451)։ Երկրորդ անգամ հիշված է Ջեռ. Թաւր. 67 բ անթվական մի հիշատակության մեջ՝ սեռ. Մելիքզարայ ձևով, որ երևի արական է։

*ՄԵԼԻՔԽԱՆ, ար. < արաբ. مليك melīk «իշխան»+պրս. خان xān հոմանիշից. հիշված է 1651 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 531)։ Հմմտ. Մելէքխան։

*ՄԵԼԻՔՆԱԶԱՐ, ար. < արաբ. ملك melik «իշխան»+ نظر nazar «նայվածք» բառից. հիշված է 1224 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Թորոս աղբ. Բ. 274)։

*ՄԵԼԻՔՇԱՀ, ար. < արաբ. ملك melik «թագավոր»+համանիշ պրս. شاه šāh բառերից։ Հայտնի է ԺԱ դարում Մելիքշահ, որդի Ալփասլանի, թագավոր Սելջուկեանց, որ ամբողջ Հայաստանը իր իշխանության տակ առավ (1086—1092 թ)։ Նույնանուն ուրիշ տասը իշխաններ տես Justi 203 ա։ (Այս անունը Justi մեկնում է արաբ. malak «հրեշտակ» բառից, որ ապա աղավաղվելով դարձել է malik «թագավոր»)։

— 1. Մելիքշահ, եղբայր Մկրտիչ քահանայի, որ ստացավ մի Ճաշոց 1223 կամ 1261 թ.—Տաշեան, Ցուց. 20 բ։

— 2. Մելիքշահ Թիլուխարձեցի (Եկեղեաց գավառ), իր որդի Ստեփանոս քահանայի և իր թոռ Սարգսի համար, Ներսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1335 թ.—Bodleian 5։

— 3. Մելիքշա մղտեսի, որդի Փանիկի և հորեղբայր Խդըրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։

— 4. Մելիքշա (սեռ. Մելիքշի), եղբայր Խաչատուր և Յակոբ աբեղաների, ստացող (ԺԵ դարից հետո).—Ջեռ. Թաւր. էջ 42—43։

— 5. Մելիքշա մահտեսի, հայր մղդեսի Մանուկի, որ Կե-

սարկայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։

— Մելիքշահ հիշված է նաև 1605 թ. (Թորոս աղբ. Բ. 343), 1623 թ. (Սիսական 178)։

*ՄԵԼԻՔՋԱՀԱՆ, ար. < արաբ. ملك melik «թագավոր»+ պրս. jihān «աշխարհ» բառերից, այն է «թագավոր աշխարհի»։ Մի անգամ հիշատակված է 1334 թ. կրճատ Մլքջահան ձևով (Թորոս աղբ. Բ. 375)։

*ՄԵԼԻՔՋԱՆ, կազմված է վերի Մելիք բառից+ջան «հոգի, հոգյակ» փաղաքշականով։ Ինչպես Մելիք, նույնպես և Մելիքջան գործածական է թե՛ ար. և թե՛ իգ։ Իբրև արական հիշված է ԺԶ դարից. այսպես Մելիքճան 1595 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 695), Մելիքջան 1596 թ. (Ձեռ. Վասպ. 749), Մելիքջան ԺԸ դարից (Այրարատ 305, Արր. կրետ. 11, 61), հատկապես 1735 թ. (Ձեռ. Սևան. 12 ա)։ Իսկ իբր իգ. ունինք՝

— Մալիքճան, դուստր Սաւղաթմիշի և քույր Նուրիճանի, որ Ագուլիսում գրել տվեց մի Ցայսմաւուրք 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 299։

*ՄԵԼԻՔՍՈՒԼԹԱՆ, ար. < արաբ. ملك melik «թագավոր» և سلطان sulṭān համանիշներից բարդված, ինչպես է նաև Մելիքշահ։ Հիշատակված է ԺԵ դարում։

— Մելիքսուլթան, եղբայրորդի Խոնդքար տիկնոջ, որ Խորակայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

*ՄԵԼՔԻ, ար. < եբր. מלכיה Malkiā անվան հուն. Μελχία տառադարձությունից։ Ս. Գրքում գործածված է Մեղքիա ձևով և չկա այս անունով մի նշանավոր անձ։ Անկանոն գրքերից հիշվում են Մելքի թագավոր Սաղիմայ և Մելքի հորեղբայր Մարիամ Աստուածածնի (Տաշեան, Ցուց. 566 և 184)։

— Մելքի, եղբայր Մելքիսեդեկ քահանայի, Սանահինում 1421 թ.—Տաշեան, Ցուց. 873։

— Ավելի ուշ հիշված են Մելքի 1611 թ. (Սմբատեանց, Երնջակ 243) և Մելքես (տպված է սեռ. Մելքէսին) 1666 թ. (Ձեռ. Վասպ. 926)։

*ՄԵԼՔԻՍԵԴԵԿ, ար. < եբր. מלכי-צדק Malkī-Ṣedek անվան հուն. Μελχισεδέκ տառադարձությունից։ Այս անունով հայտնի է Մելքիսեդեկ քահանան՝ արքայ Սաղիմայ, «քահանայ Աստուծոյ բարձրելոյ», որ ընդունեց և օրհնեց Աբրահամին (Ծն.

ժդ. 18)։ Նշանակում է «Թագավոր արդարութեան» (եբր. şedek «իրավունք, արդարություն» բառից). հմմտ. «Մելքիսեդեկ... նախ թարգմանի թագաւոր արդարութեան, ապա թագաւոր Սաղիմայ, որ է թագաւոր խաղաղութեան» Եբր. է. 2.—«Մելքիսեդեկ թագաւոր Սաղիմայ, որ թարգմանի թագաւոր արդարութեան և կամ խաղաղութեան» Կնիք հաւ. 255.—«Մելիքն թագաւոր ասի և սեդեկն արդար և կամ քահանայ՝ ի խորհուրդ Տեառն մերոյ» Մխ. աս. (Բ տպ.) յդ. քհ. էջ 6։—Նույն ձևով կրկնում է Տաթև. ոսկիփ. 193 և հարց. 50։ Մեր մեջ այս անունը ձևափոխվելով հաճախ դառնում է սխալմամբ Մելիքսեդեկ, Մելքիսեբեկ, Մելքիսեթ, Մելիքսեթ: Ծաղրաբար ասված է «այս Մելքիս և ոչ Սեդեկս» Դրնդ. 76։—Այս անունը մեր մեջ սկսած է հիշատակվել ԺԲ դարուց և այժմ էլ կենդանի է։

— 1. Մելքիսեդեկ եպիսկոպոս, Մշոյ Ս. Կարապետի վանքում կանգնեցրել է մի խաչքար 1212 Թ.—Տըվըլէ, Ուղև. ի Փ. Ասիա, Վիեննա 1892, էջ 55։

— 2. Մելքիսեդեկ, որդի Գէշի և եղբայր Յովհաննէս աւագերեցի, որ գնեց մի ժողովածու 1225 Թ.—Շողակաթ 189։

— 3. Մելքիսեդեկ քահանա, որի որդի Յակոբի հիշատակին Սիմէոն գրիչը գրեց մի Աւետարան, 1280 Թ.—Ձեռ. Կարին. 16։

— 4. Մելիքսեթ, միաբան (կամ թերևս վանահայր) Վանեվանից 1286 Թ.—Սմբատեանց, Գեղարքունի 568 (Սխական 61 ունի նույն արձանագրությունը, բայց չի հիշում Մելիքսեթին)։

— 5. Մելքիսեթ, միաբան Խորձեանի Խլպաշի վանքի 1336 Թ.—Նաթանեան, Արտօսր Հյստնի 152։

— 6. Մելքիսեդեկ միայնակեաց, մեծ ջանքով միջնորդ հանդիսացավ Քրիստոսատուր կրոնավորի և գրիչ Ստեփանոս քահանայի միջև՝ արտագրելու համար Աստուածաշունչը, Սուրխաթ 1352 Թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 7. Մելքիսեթ քահանա ոմն, գրել տվեց մի ժամագիրք և Տաղարան, 1372 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 196 (հրատարակիչը 100 տարի սխալ է հաշվել՝ դնելով ՊԻԱ=1472!):

— 8. Մելքիսեբեկ քահանա, ծաղկող. Բջնիի արքեպիսկոպոս Մանուէլի պատվերով ծաղկեց մի Աստուածաշունչ, 1368—75 Թ.—Տաշյան, Ցուց. 259։

— 9. Մելքիսեդեկ Վանեցի, նոր նահատակ. աշխարհական անձ էր, կրոնական կրթությունից զուրկ. «ոչ ի դուռն եկեղեցւոյ սնեալ և ոչ առ ոտս քահանայից կացեալ և ոչ ի լուր աստ-

ուածային գրոց պատուիրանացն սովորեալ, այլ ի տունս այլազգեաց սնեալ և ի վարս նոցին վարժեալ, առ ոտս անօրինաց կացեալ և նոցին օրինակացն հմտացեալ»։ Զրպարտվելով մի թուրք աղջկա գերեզմանապղծության մեջ, չարչարանքի մատնվեց։ Առաջարկեցին հավատքը ուրանալ և ազատվել։ Բայց նա մերժեց և նահատակվեց «1403 թ».—ուղ. Մելքիսեդեկ, Մելքիսեդ, Մելքիսեթ՝ Յայսմ. յուլ. 10.—սեռ. Մելքիսեդեկի՝ անդ։—Նոր վկ. 198—204, Նոտարք 22։

— 10. Մելքիսեթ քահանա, հայր Ստեփաննոս քահանայի, որ Խիզանում, Մովսէս վանահոր համար օրինակեց Աւետարանը, 1404 թ.—Նոտարք 23։

— 11. Մելքիսեդեկ գրիչ. Խիզանում օրինակել է Գր. Տաթևացու Քարոզգիրքը, ՊԾԳ=1404 թ.—Ձեռ. Կարին. 216 (տպ. ՊԺԳ, ուղղելի ՊԾԳ)։

— 12. Մելքիսեդ, որդի Տիրացու քահանայի. գրիչ. Բաղէշում օրինակեց մի Քարոզգիրք, 1410 թ.—Նոտարք 37։

— 13. Մելքիսեթ, որդի Համազասպի և եղբայր Վարդանէս աբեղայի, որ Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում օրինակեց Գանձարանը, 1412 թ.--Manus. brit. mus. 120 բ։

— 14. Մելիքսեթ գրիչ. Ափլիսցիխե գեղաքաղաքում օրինակել է Շարականը՝ 1412 թ.—Ձեռ. Կարին. 175։

— 15. Մելքիսեթ վանահայր Տէր Յուսկան որդու վանից, 1414 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 62 ա։

— 16. Մելքիսեթ Երզնկացի, աշակերտ Սարգսի, ապա Գրիգոր Տաթևացու († 1410 թ), երբ նա ուսուցանում էր Մեծոփի վանքում։ Թովմա Մեծոփեցու դասընկերն է. մյուս ընկերները տես Սարգիս բաբունապետ։—Յայսմ. ապր. 27, Մեծոփ. 51, 52։—Տես № 19։

— 17. Մելքիսեթ, այլ աշակերտ Սարգիս վարդապետի Սուխարայ վանից, դասընկեր Թովմա Մեծոփեցւոյ.—Ազգապ. 1949։

-- 18. Մելքիսեթ սարկավագ, որդի Ստեփաննոս քահանայի և հանգուցյալ եղբայր Կարապետ քահանայի, որ օրինակեց Աւետարանը Վանում, 1418 թ.—Նոտարք 37; Ձեռ. Վասպ. 309, էջ 369։

— 19. Մելքիսեթ վարդապետ, առաջնորդ Բերկրիի «Տէր Յուսկան որդի» վանքի, 1420 թ.—Նոտարք 61 (որ կարծում է թէ նույն է № 16։

— 20. Մելքիսեդ, *կուսակրոն քահանա, միաբան Սանահնի վանուց, ստացավ, ծաղկեց և կազմեց Մանրուսմունքը 1421 թ.— Տաշեան, Ցուց. էջ 873։*

— 21. Մելքիսեթ *կրոնավոր, միաբան Կոցի վանից, 1422 թ.—Նոտարք 68։*

— 22. Մելքիսեթ *վարդապետ, առաջնորդ Բերկրիի Եղավանք գյուղի Ս. Ստեփանոս և Ս. Վարդանանց վանքի, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 349, Նոտարք 70։*

— 23. Մելքիսեթեկ *կրոնավոր, որդի Պէկի. Հարանց վորքը տվեց Ղազար գրչին արտագրելու, որին օգնում էր նաև Թուղթ կոկելով, Տրապիզոն 1422 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 58 ա։*

— 24. Մելքիսեդեկ, *որդի Մատթէոս քահանայի՝ եղբոր Սիմէոն ճգնավորի, որ ճգնում էր Ընկուզագոմ կամ Կոթիփորոյ վանքում, 1427 թ.—Նոտարք 85։*

— 25. Մելքեսեթ, *առաջնորդ Կողունց վանքի 1428 թ.— Տաշեան, Ցուց. 58*[դ]*։*

— 26. Մելիքսեդ *աբեղա, որդի Ասաղի, Ամարասում Մանուէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1428 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 253։*

— 27. Մելքիսեթ, *որդի Արիստակէս երեցի, որ ստացավ մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 բ։*

— 28. Մելքիսեդ, *որդի Յովհաննէս քահանա Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 բ։*

— 29. Մելքիսեթ, *վանահայր Կարմիր վանքի և առաջնորդ Ձմշկածագի, 1436 թ.—Նոտարք 108։*

— 30. Մէլքէսէթ, *որդի Խաչատուրի՝ եղբոր տանուտեր Դաւթի, որ Թացու գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.— Ձեռ. Վասպ. 379—380։*

— 31. Մելքիսեթ, *որդի Յովհաննէս քահանայի և եղբայր Կարապետ (№ 205) գրչի, որ Արճէշում գրել է մի Յայսմաւուրք 1437 թ.—Նոտարք 111։*

— 32. Մելքիսեդ *երեց. Մշու Առաքելոց վանքից թալանված սրբություններից մի մասը ազատեց քրդերից, 1439 թ.—Ջարբ. Թրգմ. 150, Հայապ. 549։*

— 33. Մելքիսեթ, *հայր Հայրապետ կրոնավորի, որ Քաջբերունեաց Ձորավանքում գրել տվեց մի Աւետարան, 1449 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 691։*

— 34. Մելիքսեթ *սարկավագ, որդի Ստեփանոս քահանայի և հանգուցյալ եղբայր Կարապետ երեց գրչի, որ Վանում, Փաշայ տիկնոջ համար օրինակել է Ավետարանը 1451 թ.—Ջեռ. Վասպ. 412։*

— 35. Մելքիսեթ *երեց, որդի Ֆախրկան, գրիչ. Ավան գյուղում օրինակեց Գանձարանը, 1453 թ.—*Bodleian *134։*

— 36. Մելքեսեթ, *որդի մահտեսի Շահփաշայի, որ նա գնեց ու նորոգել տվեց գողացված մի Ավետարան, Վան 1453 թ.— Ջեռ. Վասպ. 136, Նոտարք 171 (վերջինս կրճատած)։*

— 37. Մելքիսեթ, *նորընծա կրոնավոր, ծաղկող. առաջին անգամ ծաղկեց այն Գանձարանը, որ Ավան գյուղում գրեց Մելքիսեթ երեցը, 1453 թ.—*Bodleian *145։*

— 38. Մելքիսեթ *կրոնավոր, միաբան Վարագայ վանքի, 1454 թ.—Նոտարք 175—6։*

— 39. Մելքեսեթ, *հորեղբորորդի տանուտեր Մանկտավագի, որ Մցի գյուղում գնեց մի Ավետարան, 1455 թ.—Ջեռ. Վեներ. Ա. 582։*

— 40. Մելքիսեթ, *հայր Մարտիրոս քահանայի, որ Բասենի Սպիտակ վանքում, Մովսես արեղային գրել տվեց մի Ավետարան, 1455 թ.—Նոտարք 180։*

— 41. Մելքիսեթ *քահանա, հայրապետ Բասենի Սպիտակ վանքի, 1455 թ.—Նոտարք 180։*

— 42. Մելքիսեդ *կրոնավոր, Վանում Կարապետ երեցին գրել տվեց Մայր Մաշտոցը, 1458 թ.—Թորոս աղբ. Բ. 479, Նոտարք, էջ 188։*

— 43. Մելքիսեդ *քահանա, Շատուան գյուղում (Ռշտունիք), Թումայ կրոնավորի պատվերով օրինակեց մի Գանձարան, երբ նվեր Ս. Յակոբայ վանքին 1458 թ.—Նոտարք 189։*

— 44. Մելիքսեթ *արեղա, որդի Գուզարի, աշակերտ Սարգսի, վանահայր եղավ Երերան վանքի, որ զանազան շինություններով զարդարեց, և վանքի համար գրել տվեց մի Յայսմավուրք, Խաչատուր Ուրծեցու ձեռքով 1460 թ.—Այրիվ. 16 բ, «էջմիածին», 1945 թ. մայ. էջ 18 բ։*

— 45. Մելքիսեդ, *ավագերեց Բաղէշի, 1461 թ.—Նոտարք, էջ 199։*

— 46. Մելքիսեթ *կրոնավոր, հանգուցյալ որդի խոջա Խաչատուրի, որ իր կնոջ՝ Սուլթանխաթունի հետ մի Ավետարան*

գրել տվեց Յովհաննէս քահանային, Արճէշ 1462 թ.—Ձեռ. Վասպ. էջ 438։

— 47. Մելքիսեդեկ, միաբան Յովհաննավանքի 1464 թ.—Այրարատ 172։

— 48. Մելքիսեդ, միաբան Խորձենի Խլպաշի վանքի, 1464 թ.—Նոտարք 218, Թորոս աղբ. Բ. 341։

— 49. Մելքիսեթ, որդի Աստուածատուր Գառնուկ քահանայի և հանգուցյալ եղբայր Ներսէս աբեղայի, որի միջնորդությամբ Ստեփանոս գրիչը օրինակեց Աւետարանը՝ Տիվրիկի Վաւտըռ գյուղում, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 364։

— 50. Մելքիսեթ քահանա, հայր Յովհաննէս գրչի, որ Ս. Թովմայի վանքում օրինակեց Աւետարանը Փաշայի պատվերով, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 464։

— 51. Մելքիսեթ քահանա, որդի նախորդ Մելքիսեթ քահանայի.—անդ։

— 52. Մելքիսեդեկ աբեղա Երուսաղէմում, հիշված 1473 թ.—Տաշեան, Ցուց. 449։

— 53. Մելքիսեթ քահանա, որդի Ազնիրի, որ գրել տվեց մի Աւետարան, Աշոտաձորի Անկիւնեաց վանքում, 1477 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 219)։

— 54. Մելքիսեդ, հայր Զաքարիա գրչի, որ Աշոտաձորի Անկիւնեաց վանքում օրինակեց Աւետարանը, 1477 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 220)։

— 55. Մելքիսեթ կրօնաւոր, որդի Ղազարի, աշակերտ Մկրտիչ վարդապետի. գրիչ. Հալէպում օրինակեց Աւետարանը՝ պարոն Ֆարաճի համար, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96 բ։

— 56. Մելքիսեդ պարոն, շնորհեց Աւետարանի օրինակը, որից օրինակեց Զօրվար գրիչը Տիւրիկում, 1480 թ.—Թորոս աղբ. Ա. 231։

— 57. Մելքիսեթ երեց, գրիչ. օրինակել է Աւետարանը, Գուգարաց Ուխտիք գավառում, 1483 թ.—Ձեռ. Բեռլինի, 7 բ։

— 58. Մելքիսեթ քահանա, որդի Յովհաննէս քահանայի, գրիչ. Բաղէշում, Սարգիս քահանայի համար օրինակեց Ցայսմաւուրքը, 1484 թ.—Rapport Belgique 38, 40։

— 59. Մելքիսեթ ավագերեց Ոստան քաղաքի, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

— 60. Մելքիսեդ եպիսկոպոս, որի ձեռքով Բաղիշեցի Կիրակոս (№ 141, 150) երեց Հաբջոյենցը մի Աւետարան նվիրեց Կա-

պուտ գեղի Մծբնայ Ս. Յակոբ վանքին, 1487 թ.—Ձեռ. Վասպ. 115։

— 61. Մելքիսեդ երեց, նույն Բաղիշեցի Կիրակոս (№ 141, 150) Հարջոշենց երեցի ազգականներից մեկը, 1487 թ.—Ձեռ. Վասպ. 116։

— 62. Մելքիսեթ գրիչ. օրինակեց Ավետարանը՝ Գուգարաց Ս. Կարապետ վանքում, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 121։

— 63. Մելքսեթ եպիսկոպոս Մշու Ս. Կարապետ վանքի 1496 թ.—Ցովսէփեան, Մի էջ հայ արուեստի 43, 45։

— 64. Մելքիսեթ, որդի Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Ավետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. էջ 16 բ։

— 65. Մելքեսեթ կրոնավոր, հիշված է Աղթակեցի Մարգարա գրչի (№ 57) ուսուցիչների շարքում, 1498 թ.—Ձեռ. Վասպ. էջ 528։

— 66. Մելքիսեթ, գրիչ. օրինակեց Ավետարանը՝ Խաչատուրի և նրա կին Սալչուկի պատվերով, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. էջ 29 բ։

— 67. Մելքիսեդ, որդի Ավետիք քահանայի. նորընծա քահանա էր Մելքիսեդը, երբ հայրը գնեց նրա համար Բարսեղ գրչի օրինակած Ավետարանը, 1500 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 68 բ։

— 68. Մելքիսեթ Արաշեցի, կաթողիկոս Աղվանից. նստել է 1593 թ. իբրև հաջորդ Արիստակէս Գ Բոլատակեցու. իրեն էլ հաջորդել է Սիմէոն Գ 1596 թ. (Ջամբռ 78 և Ձեռ. Դաշեան, Ա. 89 բ)։ Բայց ըստ Բարխուտ. Պատմ. աղվ. Բ 62՝ Շմավոն Բ մեռնում է 1611-ին, ապա նստում է Արիստակէս Գ Բոլատակեցին, ապա Մելքիսեթ, որին էլ հաջորդում է Սիմէոն Բոլատակեցին 1622 թ։

— 69. Մելքիսեդեկ Գառնեցի, կաթողիկոս Էջմիածնի «1593—1626 թ». աթոռակից էր Դավիթ Դ կաթողիկոսին, սկսած «1593 թվից»։ Բայց իբրև կաթողիկոս հիշատակված է 1570 թ. ժամանակակից մի հիշատակարանում՝ Թորոս աղբ. Բ. 385, ապա 1590 թվին (Ձեռ. Վասպ. 715), ինչպես և 1591 թ. (Ձեռ. Վասպ. 719)։ Շատ վատ անուն է թողել մեր եկեղեցական պատմության մեջ։ Էջմիածնի պարտքերը հատուցանելու համար ժողովարարության գնաց Պոլիս, ուր մի տարի պատրիարքություն անելուց «1599 թ» հետո, հեռացվեց «1600 թ»։ Գալով Էջմիածին, նույնպես մերժվեց և իր տեղը կարգվեց Գրիգոր ԺԳ։ Մելքիսեդեկը անցավ Սպահան, ներկայացավ Շահաբասին և նրա բա-

նակը առաջնորդեց Հայաստան։ 1605 թվին գերի տարվեց Սպահան, բայց փախչելով՝ դարձավ Երևան, անխնամ թողնելով աթոռը։ 1610 թվին հպատակության թուղթ գրեց Հռոմի Պողոս Ե պապին։ Վաճառելով Էջմիածնի հարստությունը և վանքերի մասունքները, հրավիրեց բոլորի զզվանքը։ Փախավ Լեհաստան, ուր և մեռավ «1626 թ»։—Առաք. պատմ. 2, 3, 8, 10, 14, 18, 134, 137, 153—175, 207, 211—6, 223—9, 279—281, 332, 338—9, Ձքր. սարկ. Ա. 53. Ալիշան՝ Կամենից 126, 137, 179, 239. Զարբ. Թրգմ. 144. Իր թղթակցությունը պապի հետ տես Պալճեան 161 են, իր կոնդակն առ Լեհահայս տես Կամենից 239. Իր դեմ գրված մի թուղթ տես Թորոս աղբ. Բ. 280—293։—Զամչ. Գ. 534—631. Ազգապ. 2287—2378։

— 70. Մելքիսեթ վարդապետ Երևանցի. Վժան գյուղից. Ամրդոլու վանքում աշակերտեց Ներսէս վարդապետ Մոկացուն. հետևեց նրան Սիւնեաց Հարանց մեծ անապատը և Լիմ անապատը, ուր ապրելով ճգնական կյանքով, գրեթե ինքնագլուխ սովորեց քերականական և փիլիսոփայական ուսմունքները։ Անցնելով Էջմիածին, եղավ քարոզիչ և ուսուցիչ, և իր 15 տարիների ուսման արդյունքը ավանդեց իր աշակերտներին։ Սրանց մեջ նշանավոր հանդիսացավ Սիմէոն Ջուղայեցին։ Մեռավ և թաղվեց Կողեռնում, «1631 թ».—Գրել է Պատմութիւն Յովհաննու եպիսկոպոսի։—Առաք. պատմ. 301—9, Հայապ. 133, Շահազիզ՝ Հին Երևանը 187, 244։

— 71. Մելքիսեդեկ եպիսկոպոս, կոչված Սուլհի շայիր (աշուղ կամ բանաստեղծ). պատրիարք Պոլսի. հաջորդեց Եփրեմ Ղափանցուն «1698 թ». մի տարուց գահընկեց եղավ և իր տեղ նստավ Մխիթար «1699 թ». հաջորդ տարին Մխիթարը ընկավ և Մելքիսեդեկը նորից գահ բարձրացավ «1700 թ». պաշտպանելով երեք կաթոլիկ հայ աքսորական քահանաների, ինքն էլ պետության կողմից կասկածի ենթարկվեց և գահազուրկ լինելով բանտարկվեց «1701 թ»։—Զամչ. Գ. 727—9, Ազգապ. 2683, 2694, 2700։

*ՄԵԼՔՈՆ, ար. այս անունով հայտնի է մին այն երեք մոգերից, որոնք եկան երկրպագելու նորածին Յիսուսին։ Մելքոնը համարվում է թագավոր Պարսից (Անկ. գիրք նոր կտ. էջ 19 և 42. Մխ. այրիվ. 59)։ Նրա երկու մյուս ընկերներն են Գասպար և Բաղդասար։ Ավելին տես Գասպար։ Այս երեք անունները զանազան լեզուներով շատ տարբեր ձևեր ունին. սրանցից

հայերենին ամենամոտիկ ձևերն են՝ լատ. Melchior, Gaspar, Balthasar, ալեքսանդրեան Melichior, Gathaspar, Bithisarea, վրաց. Melikona, Wiscara, Walastar (տես Սարգիսեան, Երեք թագաւոր մոգերու զրոյցն, Վիեննա 1910, էջ 28)։ Սրանցից Մելքոն մեկնվում է եբր. מלך אור melek or «թագավոր լույս», որ վերջատառի շփոթությամբ ר=ן) կարելի է կարդալ Մելքոն։ Հայերենում ունինք Մելքոն, Մելքոմ և Մելքում ձևերով։ Առաջին ձևի հնագույն հիշատակությունը 1194 թվից է. իսկ վերջին ձևի հնագույն հիշատակությունը 1554 թվից։ Միջին ձևը Մելքուն ավանդված է 1578 թ. (Սիսական 72)։ Մելքոն և Մելքում գործածական են մինչև այժմ. սրանցից են Մելքոնեան և Մելքումեան ազգանունները։ Մելքում սովորական է Հնդկահայոց մեջ։ Թե Մելքոն և Մելքում միևնույն են՝ հաստատում է անթվական մի հիշատակարան (Ձեռ. Վենետ. Ա. 410, գրված 1351 թվից ուշ), ուր հիշատակվում են Գասպար և Մելքում անունով երկու եղբայրներ։—Առանձին տես Մլքան և Մուլուքան։

— 1. Մելքոն, մերձավոր Սմբատի որդի Խաղաթի, որ շինեց Հաղարծնի վանքի մի եկեղեցին 1194 թ.—Սմբատեանց, Գեղարքունիք 182։

— 2. Մելքուն, «թագաւորազն պարոն, իշխան կամ ամիրայ» Լևոն Բ և Հեթում Ա թագավորների սերնդից. Շնորհալու մեռոնի շիշը և ուրիշ մասունքներ հանձնել է Խարբերդի Խուլէ վանքի առաջնորդ Միքայէլ արքեպիսկոպոսին 1255 թ. նա էլ թաղել է Ս. Գէորգ վանքում. 1839 թվին գտնվել են վանքի նորոգության ժամանակ (խարդախություն և կեղծիք)։—Թորոս աղբ. Բ. 351—3, Ալիշան՝ Շնորհ. 455, Տաշեան՝ Ցուց. 1040։

— 3. Մելքոն, որբացյալ որդի Կարապետ (№ 202) երեց գրչի. հիշված է 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369։

— 4. Մելքոն որդի Սմբատի, հիշված է 1476 թ.—Տաշեան, Ցուց. 915։

— 5. Մելքոն խոջա, որդի խոջա Յովհաննէսի. կինն է Թուրֆանդա, որդիքն են Թարխան, խոջա Յովհաննէս և Յովսէփ. ինքը հորեղբոր թոռն է խոջա Յովսէփի, որ Տարոնի իշխանն էր և Մուշում գրել տվեց մի Աւետարան 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

— 6. Մելքոն, մերձավոր Սարգիս քահանայի, որ Բաղէշում գրել տվեց մի Յայսմաւուրք՝ 1484 թ.—Rapport Belgique 39։

—Ուշ ժամանակի հիշատակություններ են Մալքում 1554 թ. (Manus. brit. mus. 193ա ), Մելքոն 1557 թ. (Ձեռ. Վասպ. 659), Մելքում 1578 թ. (Սմբատեանց՝ Գեղարքունի 610), 1579 թ. (Сборн. Матер. հտ. 29, էջ 14), Մելքոն 1596 թ. (Ձեռ. Վասպ. 748, որ նույն է էջ 659 հիշված Մելքոնի հետ), 1613 թ. (անդ 847), Մելքում 1614 թ. (Ձեռ. Թաւր. 120 բ), Մելքոն 1647 թ. (Ձեռ. Վասպ. 906), Մելիքոն 1677 թ. (Նոր վկ. 505), Մելքում 1681 թ. (Ձեռ. Թաւր. 94 բ), Մելքոն 1689 թ. (Ձեռ. Վասպ. 970), Մալքում 1702 թ. (Ձեռ. Թաւր. 109 բ)։—Կա և Մլքոն 1609 թ? (Ձեռ. Հալէպի, Ա. 98 ա)։

— 7. Մելքոն, տաղասաց ԺԶ դարու.—Ցուցիկք, Բ. 125։

— 8. Մելքոն Երեց Կեղեցի, տաղասաց, ԺԸ դարու առաջին քառորդին.—ՀԱ 1931, 652։

ՄԵԼՕ, ար. փաղաքշական ձև է, բայց ծր անվ ան. սրանից է Մելոյեան ազգանունը (Վան)։

†ՄԵԽԱԿ, ար. < հյ. մեխակ ծաղկանունից. Կովկասում տարածված անուն է։

*ՄԵԽԼՈՒ, ար. < Թրք. مخلو məxlu «գամաւոր, մեխ ունեցող» բառից։ Վերադիր է և ոչ անձնանուն։ Այս անունով հայտնի է՝

— Մեխլու վարդապետ, ուտեացի հայ էր՝ Գանձակ քաղաքից. քարոզում էր մի նոր աղանդ, հակառակ էր կուսակրոն հոգևորականության և պահանջում էր միայն քահանա։ Հրաշագործի համբավ հանեց։ Իրեն միացան հայ և թուրք 500 հոգի, որոնցից ընտրեց 12 աշակերտ և նրանց միջոցով կառավարում էր բոլորին։ Սահղծել էր համայնական կյանք, Գանձակից եկավ Երևան. կաթուղիկոսի խնդրանոք Երևանի խանը վռնտեց նրան Տաճկաստան։ Անցավ Կարին և այստեղից էլ Երուսաղէմ, ուր բանտարկվեց։ Բանտից ազատվելով գնաց Հալէպ և Տիգրանակերտ, ուր և կորաւ (ԺԷ դար)։—Զքր. սարկ. Ա. ԻԹ. և էջ 71։ Ընդարձակ տես Անյայտ աղանդ. էջ 4—23։ Տես և Դրնղ. 456 ա։

†ՄԵԾԱՒ, ար. < անշուշտ հյ. մեծ բառից, բայց անհայտ է ձևում առ: Այս անունով գիտենք միայն վանեցի խիաք (ոստայնանկ) Մեծառ, որ հիշված է դաբաղ (կաշեգործ) Գաբրիէլի հետ 1742 թ. (Ձեռ. Վասպ. 566)։

†ՄԵԾԱՏՈՒՐ, ար. < հյ. մեծ+տուր բառերից, ինչպես ունինք Տիրատուր, Աստուածատուր են։ Հիշատակված է մեր մեջ ԺԴ—ԺԷ դարերում. սրանից է կազմված Մեծատուրեան ազգանունը։

— 1. Մեծատուր, հարուստ մարդ էր, բարեկամ Եւստրատիոսի. Մարդայրը սրան հանձնեց իր զավակներին և ինքը գնաց նահատակվելու (Դ դար)։ Գրված է Մուսատարիոս, Մուսատոր, Մուգարոր։ Ենթադրում եմ որ Մեծատուր բառի յն. և լտ. աղավաղությունն է։ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ. 502)։

— 2. Մեծատուր, որդի Յովհաննէսի և եղբայր Աստուածատուր երեցի, որ օրինակեց Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460)։

— 3. Մեծատուր, հովիւ էր Բերկրի քաղաքի Տէր Յուսկան որդի վանքի, 1420 թ.—Նոտարք 61։

— 4. Մեծատուր, հայր Յովհաննէս քահանայի և Յովհաննէս տանուտերի, որոնք Մոկաց Փառավանք գյուղում Իսրայէլ գրչին գրել տվին մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 421։

— 5. Մեծատուր Սեբաստացի. նոր վկա. Շատարև անուն մարդու որդին էր. փոքր հասակից որբ էր մնացել. 25 տարեկան հասակում նահատակվեց Թուրքերի ձեռքով, 1595 թ.—Իր վկայաբանությունը տես Manus. brit. mus. 181։

— Ուշ ժամանակի հիշատակություններ են Մեծատուր 1583 թ? (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 548), 1662 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 13), 1689 թ. (Ազգապ. 2641)։

† ՄԵԾԱՒԱԳ, ար. < հյ. մեծ+աւագ հոմանիշներից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1626 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 870)։— Սխալ է տպված «մեծ Աւագ»։

† ՄԵԾԵՐԷՑ, ար. < հյ. մեծ+երէց բառերից, ճիշտ ինչպես իր հոմանիշը՝ Մեծաւագ։ Հիշատակված է ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. Մեծերէց քահանա, հորեղբայր Գրիգոր քահանայի, որ Սկեռայ վանքում, Ստեփանոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1293 թ.—Ձեռ. Վասպ. 112 (իբր հասարակ անուն տպել է «մեծ էրիցու»)։

— 2. Մեծերէց, որդի Գրիգոր քահանայի և եղբայր Ներսէս վանահոր, որ Երուսաղէմում գրել տվեց Աստուածաշունչը 1363 թ.—Ձեռ. Վասպ. 18։

† ՄԵԾԽԱԹՈՒՆ, իգ. < հյ. մեծ+խաթուն բառերից. իր հոմանիշն է Մեծտիկին, որ տես տակը։ Հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Մեծխաթուն, ծերուկ ազգական Ներսէսի՝ հոր Յով-

հաննէս Ալինախ եպիսկոպոսի, որ էր առաջնորդ Տարօնի, 1370 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 780։

— 2. Մեծխաթուն, կին Յովսէփի և մայր Առաքել Կախմըխեցու (№ 39), որ Թուրքերից ազատեց մի Աւետարան, 1383 թ.—Ջեռ. Հալէպի. Ա. 79։

— 3. Մեծխաթուն, դուստր Անդրէասի. Երզնկայում, Ղազար աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1431 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 663։

— 4. Մեծխաթուն, կին Շնոֆոր պարոնի և մայր Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում գրել տվեց մի Ճաշոց 1438 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243։

— 5. Մեծխաթուն, կին Խասայի, որ ստացավ մի հին Աւետարան, 1441 թ.— Manus. brit. mus. 3 բ։

— 6. Մեծխաթուն, դուստր Ուսլու մելիքի, սանամոր Մկրտիչ Արճիշեցի քահանայի, որ գրել տվեց մի Ճաշոց, 1441 թ.—Թորոս աղբ. Ա. 223։

— 7. Մեծխաթուն, ստացել է մի Աւետարան 1477 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 261։

— Ուշ ժամանակի հիշատակություններ են Մեծխաթուն 1502 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 375), 1570 թ. (Այրարատ 39), 1678 թ. (Կամենից 197)։

†ՄԵԾՊԱՐՈՆ, աբ. < հյ. մեծ և պարոն բառերից. համապատասխանում է թթր. Uluxan անվան։ Գործածվել է մեր մեջ ԺԳ—ԺԷ? դար։

— 1. Մեծպարոն յատար (?). սրա խանութը կից էր Սիր Օիմոնի խանութին, որ նվիրել էր Կապոսի Ս. Լուսաւորիչ վանքին, 1303 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 36։

— 2. Մեծպարոն, հայր Յակոբ երեցի, որ կազմեց այն Աւետարանը՝ որ Յովհաննէս քահանան և ուրիշներ գրել էին Կիլիկիայի Փոսի վանքում, 1309 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 94 ա։

— 3. Մեծպարոն, հայր Յակոբ քահանայի, որ կազմեց այն Մանրուսմունքը, որ Ստեփանոս գրիչը օրինակեց Դրազարկում, 1313 թ.—Սիսուան 234 ա։

— 4. Մեծպարոն, ստացավ մի Աւետարան, որ Խորձեանում օրինակեց Ստեփաննոս եպիսկոպոսը 1336 թ.—Նաթանեան, Արտօսր Հյստնի 152։

— 5. Մեծպարոն, գրել տվեց մի Աւետարան՝ Խորձեանի Խլպաշի վանքում, 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 342։

— 6. Մեծպարոն, գրել է «Մանուկն խղրշահ» (№ 14) նահատակի վկայաբանական գեղեցիկ տաղը, 1541 թ.—Նոր վկ. էջ 376—382։

— Մեծպարոն, մի անգամ ևս հիշված է անթվական մի հիշատակության մեջ, որ թվի թե ԺԷ դարից է (Ձեռ. Վասպ. էջ 56)։

† ՄԵԾՏԻԿԻՆ, իգ. < հյ. մեծ+տիկին բառերից. համապատասխանում է թթր. ulu-bika անվան, որ նույն կազմությունն ունի։ Հիշատակված է ԺԳ—ԺԶ դարերում։

— 1. Մեծտիկին, հոգևոր մայր Սարգիս աբեղայի, որ օրինակեց Ոսկեփորիկը Գլաձորում, 1317 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 857։

— 2. Մեծտիկին, կին Ստեփաննոս քահանայի և մայր Յովհաննէս գրչի, որ իր քեռորդի Ներսէս վարդապետի համար օրինակեց Մանրուսմունքը՝ 1328 թ.—Manus. brit. mus. 87 ա։

— 3. Մեծտիկին (սեռ. Մեծտիկնայ), կին Տիրացու քահանայի և մայր Մելքիսեդ գրչի, որ Բաղէշում օրինակեց Բարոզգիրքը 1410 թ.—Նոտարք 37։

— Ավելի ուշ հիշված է Մեծտիկին 1536 թ. Ձեռ. Հալէպի Ա. 340, սեռ. Մեծտիկնայ՝ անդ 341։

ՄԵՀԱՌ, ար. ծագումն անհայտ (բայց տես նաև Մեհևան):

— Մեհառ նահապետ Անձևացեաց. ուղեկցեց Մեծն Ներսէսի դեսպանության Վաղէս կայսեր մոտ «364 թ»։—Բուզ. Դ. Ժա։

† ՄԵՀԵԿԻ, ար. < հյ. մեհեկի ամսանունից. իբր թե Հայկ նահապետի 7 որդիներից մին է, որից և ծագել է մեհեկի ամսանունը.—Տաթև. հարց. 200։

*ՄԵՀԵՆԴԱԿ, ար. < իրան. *Mihravandak < հպրս. *Miϑrabandaka- «Միհրի ծառան» անունից։ Ավելի լավ է պահված Մեհրևանդակ անվան մեջ. հմմտ. Վահրամ Մերհևանդակ Սեբ.= Վահրամ Մեհրևանդակ Արծր.=Վահրամ Մեհևանդ Ասող. որ է Պարսից Bahrām čōbīn, նաև Միհրան Միհրևանդակ՝ զորավար Խոսրով Ա-ի (Սեբ.)—Հիւբշ. 52։

— Մեհենդակ Ռշտունի, եղբայր Զորայ Ռշտունու. նիզակակից Վաչէ սպարապետի Խոսրով Բ-ի. մին այն նախարարներից, որոնք Փառէն կաթողիկոսին Կեսարիա տարին օծվելու Հայր մարդպետի քսությամբ և Տիրան Բ-ի հրամանով ցեղովին կոտորվեց. միայն որդին ազատվեց դայակների ձեռքով։ Ուղեկից եղավ Մեծն Ներսէսին՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ «353 թ». և ապա Պոլիս դեսպանության միջոցին, Վա-

*դէս կայսեր մոտ «364 Թ»։—Վերջի երկուսը տարօրինակ են, որովհետև ըստ Բուզ. Գ. ժը Ռշտունիք, որոնց հետ նաև Մեհենդակը կոտորված էին!—ուղ.* Մեհեհնդակ՝ *Բուզ. Գ. ժզ. Մեսր. եր. 25, 52.*—Մեհունդակ՝ *Բուզ. Գ. է.*—Մեհանդակ՝ *Բուզ. Դ. դ.*—Մեհենդակ՝ *Արծր. ա. ժ.*—Մեհեհն՝ *Բուզ. Դ. ժա.—սեռ.* Մեհեհնդակայ՝ *Խոր. Գ. ժե.*—Մեհրընդակայ՝ *Բուզ. Գ. ժը։*

Մեհեր *տես* Մհեր:

***ՄԵՀԵՒԱՆ**, *ար. < իրան.* Միհր *անունից. համտ. պրս.* Mihrbān (Justi *202 բ),* hbul-Mihrwān *որդի Արտաշրի,* Meherwān *արդի Փարսի անուն* (Justi *208 բ)։ Նույն անվան աղվանական ձևն է* Մրհաւան, *որ տես։ Հնագույն ձևն է* Մեհրևան, *որ տես տակը։*

— 1. Մեհևան, *նահապետ Անձևացեաց. մին այն նախարարներից, որոնք ուղեկցեցին Մեծն Ներսէսին՝ դեսպան գնալու ժամանակ Վաղէս կայսեր մոտ «364 Թ».—Մեսր. եր 52։ Նույն է* Մեհառ:

— 2. Մահևան, *մեծ իշխան Սեննեքերիմ Ա. թագավորի Սիւնեաց. հիշվում է իբրև վկա Տաթևի 1091 թվի կալվածագրում.—Օրբ. ծթ.—սեռ.* Մահևանայ՝ *Օրբ. ծթ։ (Սիսական 221 բ նույնը կոչում է* Մանան):

— 3. Մեհևան *Երևանցի, հայր Սարգսի, որ օժանդակեց Հաւուցթառի եկեղեցու շինության, 1177 Թ.—Շահազիզ, Հին Երևանը, էջ 75։ (Թվում է թե շփոթված է № 7 Մեհևանի հետ)։*

— 4. Մահևան, *եղբորորդի Ջուրջի. Բաղաբերդի գրավման ժամանակ՝ Բաղաց թագավորությունից փախավ Անի (ԺԲ դար.)—Օրբ. կ.*—Մահևանեանք՝ *Օրբ. հ։*

— 5. Մեհրևան, *հասարակ գյուղացի, որին իբրև ճորտ կամ ծառա նվիրեց Խաւռաղ իշխանը Բագնայրի վանքին, 1262 Թ.—Արձ. Շիրակ 116։*

— 6. Մահևան, *Բաղաց տոհմից, թոռն Ջուրջեանց. Նրբոյ բերդը նվիրեց Նորավանքին (ԺԳ դար).—Օրբ. կդ. (Թերևս սրանն է Նորավանքի ժամատան հարավային կողմը գտնված դամբանը, որի տապանագիրն է «Պարոն Մահևանայ է» (Սիսական 201)։*

— 7. Մեհևան, *հայր ծերունի Սարգիս քահանայի, որ Հաւուցթառի միաբան էր և Դաւիթ գրչի հետ միանալով մի Մաշտոց օրինակեցին և նվիրեցին Հաւուց թառին։ Սարգիսը թուղթը պատրաստեց, իսկ Դաւիթը օրինակեց Մաշտոցը, 1423 Թ.—Թո-*

րոս աղբ. Ա. 234, Բ. 339, Այրարատ 357, Նոտարք 73։—Տես և № 3։

*ՄԵՀՄԱՆ, իգ. < պրս. Mihmān անունից, որ բուն նշանակում է «հյուր». հմմտ. Haidar Mihmān պարսիկ բանաստեղծը (Justi 204 ա)։ Մեր մեջ հիշատակված է մի անգամ՝

— Մեհմանն, մեծ մայր (տատ) Նաւասարդ անուն անձի (անթվական).—Ձեռ. Թաւր. 20 բ։

*ՄԵՀՄԵԴ-ՂՈՒԼԻ, ար. Թրքական անուն է, որ կազմված է արաբ. محمد Muḥammed (մարգարեն)+թրք. قلی quli «ծառան» բառերից (իբր թե Մուհամմեդի ծառան)։ Սրանից է՝

— Մեհմետ-Ղուլի խան, Ագուլիսցի Մուսաբէգեանց հայ տոհմից. Թուրքացել էին և մեծ պաշտոնների տեր դարձել. մի եղբայրը (Հիւսէին խան) Շամախու կառավարիչն էր. իսկ Մէհմէտ-Ղուլին դարձավ Երևանի փոխարքա։ Մեծ տուգանքի ենթարկեց էջմիածնի վանքը, երբ կասկածեց որ Աստուածատուր կաթուղիկոսը մասնակից է Հայոց ազատագրական շարժման.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 30։

*ՄԵՀՆԱԶ, իգ. < պրս. مه meh (կամ ماه māh) «լուսին»+ ناز nāz «նազանք» բառերից (իբր թե լուսնի նման նազանք անող)։ Հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում։

— Մեհնազ, կին Թումայի (1317 թվից ուշ).—Manus. brit. mus. 21 բ)։

*ՄԵՀՈՒԲԱԹ, մր. < արաբ. محبت mehabbet, աղավ. muhabet «սէր, բարեկամություն» բառից? մի անգամ գտնում եմ հիշատակված 1609 թ. (Bodleian 111)։

*ՄԵՀՍՈՒՊ, < արաբ. محسوب maḥsūb «հաշված» բառից? նոր ժամանակի անուն է ըստ Ալիշան՝ Հին հաւ. 430։

*ՄԵՀՐԱԲ, ար. < պրս. Mihrāb (նոր հնչումով Mehrab) «անուն քաջի միոջ ի Թուրանականաց անտի» (ԳԴ), Mihrab թագավոր Կաբուլի (Շահն. հտ, 1, էջ 188), Mihrāb xān կուսակալ Կանդահարի՝ Շահաբբաս Բ-ի ժամանակ (1650 թ), վրացական ձևով Մեհրաբ՝ անուն երեք իշխանների՝ ԺԸ դար (Justi 204 բ)։ Մեկնվում է «արևափայլ», իբր mihr «արեգակ» +āb «ջուր, երեսի փայլ» բառերից. բայց բուն արմատն է Միհր: Մեր մեջ հիշատակված է ԺԵ—ԺԶ—ԺԸ դարերից. և սրանից է կազմված Սեհրաբեանն ազգանունը (Կովկաս)։ Հնագույնն է՝

— Մեհրապ, իշխան Խաչենի, որի հայրն է «Արղութ», որդին է Շահանշահ, հիշված է 1456 թվի մի հիշատակութեան

մեջ, որ տես Արցախ 187։ Նույնը ունի Նոտարք 187—8 (բայց գրում է Մեհրաբ), առնելով Ջալալեան, Բ. 244 էջից։ Դարձյալ Մէհրապ պէկ՝ տէր Խաչենի հիշված է Արցախ 141, իր թոռնորդու կողմից 1621 թ. (տէր Յովհաննէս որդի Տաւութին թոռն Պաղդասարին, որ է որդի Մէհրապ պէկին տեառն Խաչենոյ)։ Մեհրապ բէկ, իշխան Խաչենի, հիշված է նաև 1556 թ. (Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 142, Բ. 21, Սիսական 182, Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ, Բ. 44 բ), ապա գալիս են Մահրապ 1577 թ. (Ձեռ. Վասպ. 687), Մեհր(պ)ապ 1617 թ. (Արցախ 186), Մեհրապ 1686 թ. (անդ 967), Մեհրաբ (անթվական մի խաչքարի վրա, Արատէսի վանքում, Սիսական 144), Մեհրապ 1738 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 14 բ), Մերհաբ 1775 թ. (Ձեռ. Թաւր. 18 բ)։

ՄԵՀՐԱԶ, ար. ծագումն ինձ անհայտ. ունինք մի անգամ ԺԴ դարից՝

— Մեհրազ, որդի Իշխանի և եղբայր Մկրտիչ կուսակրոն քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Աւետարան 1344 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237։

*ՄԵՀՐԻ, իգ. < պրս. mihr «սէր, բարեկամութիւն, արեգակ» բառից, որից կա նաև mihrī «նվագարան, գիթառ» (բանաստեղծական կոչում զանազան բանաստեղծների)։ Բուն ծագումն է Միհր աստվածը։ Մի անգամ հիշված եմ գտնում մեր մեջ 1653 թ. (Երեմ. չէլ. օրագր. 37), մի անգամ էլ Միհրե ձևով, անթվական մի հիշատակության մեջ (Թորոս աղբ. Բ. 453)։

*ՄԵՀՐԻԶԱԴ. ար. < պրս. Mihrzād անունից, որով հայտնի է Փուլադի որդին, Ռուսթեմի հայրը. բուն նշանակում է «միհրոյ որդի», բայց ավելի շուտ Միհրի ծնունդ (Justi 206 բ)։ Այս անունը մեր մեջ հիշատակված է մի անգամ անթվական մի հիշատակարանում, Մեհրիզատ ձևով (Բարխուտ. Արցախ 40)։

*ՄԵՀՐԻՄԵԼԻՔ, իգ. < պրս. Mihr+արաբ. ملك melīk «թագավոր» կամ ավելի լավ ملك melek «հրեշտակ» բառից։ Մի անգամ միայն ունինք հիշատակված՝

— Միհրիմելիք, կին Զաւրվար քահանայի, որ գրեց մի Աւետարան (ժամանակն ու տեղը անհայտ).—Թորոս աղբ. Ա. էջ 231։

*ՄԵՀՐԻՇԱՏ, իգ. < պրս. Mihr+شاد šād «ուրախություն» բառերից։ Հիշատակված է մեր մեջ ԺԵ—ԺԶ? դարերում։

— 1. Միհրիշատ, կին Պետրոս քահանայի և մայր Գրիգոր

աքեղայի, որ Բուստայ անապատում (Գողթն) գրեց մի Աւետարան, 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 275։

— 2. Մեհրիշատ, մայր Գրիգոր գրչի (ԺԵ—ԺԶ դար).— Ձեռ. Թաւր. 43 ա։

ՄԵՂԻԴԻՒԹ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշատակված եմ գտնում Մեղիդիւթ երեց, 1676 թ.—Արցախ 253։

ՄԵՂՈՒՆԱ, մի անգամ հիշված է Քանաքեռի 1306 թվի մի արձանագրության վերջում, ուր հիշատակվում է գրչի անունը և տրված տասանորդը «շահնաբին և մեղունաբին»։ Անձն է թե պաշտոն։—Արձ. Այրարատ 298, որի սխալ ընթերցվածները ուղղում է Մխիթար վրդ. (Բանաս. 1903, էջ 32)։

† ՄԵՂՈՒՇ, իգ. < հյ. մեղր բառից շինված փաղաքշական անուն. չորս անգամ գտնում եմ հիշատակված ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ 1585 թ. (Ձեռ. Վասպ. 704), 1596 թ. (անդ 747), 1619 թ. (անդ 860), 1632 թ. (անդ 879)։

ՄԵՂՏԷՍ, ար. (սարքված է Մեղտի տեղանունից)։

— Մեղտէս, որդի Դեմետրի կամ Գիսանէի, որոնք հնդիկ իշխաններ էին Տարոնում։ Մեղտէսը շինեց Մեղտի ավանը և եղբայրների հետ կանգնեցրեց Դեմետր և Գիսանէ կուռքերը (3871 թ. Զամչ. Ա. 210)։—Ձեն. 36.—սեռ. Մեղտեայ՝ անդ։

† ՄԵՂՐԻԿ, ար. < հյ. մեղր բառից կամ Մեղրի տեղանունից։ Հմմտ. «Ծնաւ և կին մի ի Մեղրի և անուանեցին զանուն նորա Մեղրիկ» (Սբր. կրետ. 64)։

— Մեղրիկ տես Մելիաս:

— Մեղրիկ կամ Մելիաս, հայ զորավար, որ Գուրգէնի հետ ընկճեց արաբների ապստամբությունը Մելիտինէում, հունաց դեմ, 934 թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 70։

ՄԵՄՓԱՐ, իգ. ծագումը ինձ անհայտ։ Այս անունով գիտենք՝

— Մեմփար, կին Տիգրան Գ-ի «† 193 թ» և մայր Վաղարշի.—Զամչ. Ա. 357 (աղբյուրը անհայտ)։

† ՄԵՆԱԿԵՑ, ար. < հյ. մենակեաց բառից. հմմտ. Ճգնաւոր անունը։ Հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1311 թվից ուշ (Ձեռ. Թաւր. 73 ա)։

ՄԵՆԱՒՈՍ, ար. անստույգ ձև. գուցե պիտի լինի Մենաւոր. մի անգամ գործածված է 1247 թվի մի արձանագրության մեջ (Արցախ 363), ուր Տէր Յորդանանը շինել է մի եկեղեցի. Մենաւոսը իր ազգականներից է։

*ՄԵՆԹՈՒՀԻ, իգ. ծագումն ինձ անհայտ. անցյալ դարում գործածական էր Պոլսում. փաղաքշական ձևն էլ էր* Մենթուկ:

† *ՄԵՆԻԿ, իգ.* < *հյ.* մենիկ *«մենակ» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված՝*

— Մենիկ *(սեռ. Մենկանս), Թերևս ամուսին քահանայի. վաղամեռիկ է եղել 1272 Թ. կամ քիչ ուշ (Արձ. Շիրակ 10—11)։*

— *Այս անունն էր կրում Տերենցի վաղամեռիկ դուստրը։*

† *ՄԵՆՏԻԿԻՆ, իգ.* < *հյ.* մեն *«մինակ, մի հատիկ»* + տիկին *բառերից (իբր Թե տիկին, որ մենակ է և իր նմանը չունի)։ Մի անգամ հիշված է ԺԳ դարում։*

— Մենտիկին, *մեծ մայր (տատիկ) Կրակացի Ներսէս արեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը 1335 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 349։*

*ՄԵՆՔԱԲ, ար. ծագումն ինձ անհայտ. (բայց կա արաբ.* منقبة menqabe *«ձիրք, տաղանդ, գովասանական երգ, ներբողյան»)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված* Մենքաբ *ձևով 1639 Թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 396)։*

*ՄԵՇԻ, իգ. ծագումն ինձ անհայտ. գործածական է այժմ Զանգեզուրում։*

**ՄԵՋԼԻՍ, ար.* < *արաբ.* مجلس mejlis *«ժողով, հավաքույթ» բառից (Տփղիսում նաև «խնջույք» իմաստն ունի)։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԵ դարում։*

— Մեջլիս, *հայր Ուլուբէկի, որ մի կալված է նվիրել Գանձասարի վանքին, 1407 Թ.—Շահխաթ. Բ. 374* > *Նոտարք 25, նույնը հիշված նաև 1458 Թ. Արցախ 187, Նոտարք 187։*

**ՄԵՋԼՈՒՄ, (որ և* Մեժլում*), ար. Թուրքերի մեջ էլ գործածական անուն է. համմտ.* Մեջլում *կամ* Մեժլում *Թուրք ոճի (Զամբռ 258)։ Ըստ իս ծագում է* مجنون Mejnūn *անունից, որ բուն նշանակում է «զիվահար, սիրով գժված» և Լէյլա-Մեջնուն հռչակավոր ավանդավեպի հերոսն է։ Երկու* n*-երից առաջինը տարանմանությամբ դարձել է* l*, որից հետո բառավերջի* n *դարձել է* m*: Հիշատակված է ԺԸ դարում. այսպես* Մեժլում *1724 Թ. (Արցախ 43),* Մեժլում *1750 Թ. (անդ 238),* Մեժլում *1790 Թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 318)։ Սրանից է Մեջլումեան կամ Մեժլումեան ազգանունը (Կովկաս)։—Նշանավոր եղավ Ղարաբաղում Մելիք Մէջլումը, որի համառոտ կենսագրությունը հետևյալն է.*

— Մելիք-Մեջլում, որդի Մելիք Ադամ Ա-ի Մելիք-Իսրայելեան, իշխան Ջրաբերդի. հաջորդեց իր հոր՝ 1780 թ. մասնակցեց Հայաստանի ազատության համար մելիքների գումարած ժողովներին և Ռուսաց պետության հետ վարված բանակցություններին։ Սրա համար էլ խարդախությամբ բռնվեց Իբրահիմ խանի ձեռքով և մյուս մելիքների հետ բանտարկվեց։ Մելիք Մեջլումի քաջ զորավար Արզումանը՝ իր երկու ընկերներով հարձակվեց բերդի վրա, դռները խորտակեց և մելիքներին ազատեց։ Բանտից ազատվելուց հետո Մելիք Աբով Գ-ի հետ գնաց Վրաստան և ապավինեց Հերակլ թագավորի մոտ։ Հերակլը պահում էր նրանց, բայց վախենալով Իբրահիմ խանից, նրա պահանջի վրա, խնջույքի ժամանակ ուզեց խարդախությամբ ձերբակալել երկուսին և հանձնել Իբրահիմին։ Նրանք իմացան դավը և ձիերը հեծած սուրացին դեպի Գանձակ, ուր Ջավադ խանը սիրով ընդունեց նրանց։ Գանձակից շարունակ ասպատակում էին Ղարաբաղ։ Երբ Աղա-Մահմադ-խանը արշավեց Շուշի, մելիք Մեջլումը միացավ նրան և հորդորեց արշավել Տփղիս։ Ինքը առաջինն եղավ, որ մտավ քաղաք։ Դա վրեժն էր Հերակլի դավաճանության։ Հերակլը փախավ։ Ավելի ուշ Հերակլը ուզեց վրեժ լուծել մելիք Մեջլումից և Ջավադ խանից. եկավ պաշարեց Գանձակը։ Բաջարի պաշտպանների թվումն էր նաև Մեջլումը, որ մի գիշերային կռվի ժամանակ պատահական գնդակի զոհ գնաց։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 130—135, 182—187, 195—260։

ՄԵՍԱԼՔՍ, ար. ծագումն անհայտ. հայոց Արաս թագավորի արքունական պաշտոնյաներից մեկն էր։ Արաս թագավորը Պարսից դեմ ծանր պատերազմ ուներ։ Աստվածային պատգամներից իմացավ, որ եթե իր երկու կույս աղջիկներին զոհի նրանց, հաղթությունը իրը կլինի։ Զուզելով զոհել իր սեփական աղջիկներին, Մեսալքսի երկու աղջիկներին զոհեց։ Մեսալքսն էլ թագավորի երկու աղջիկներին սպանեց և ինքը փախավ Սկիւթացոց մոտ։ Արասը հուսահատ իրեն գետը գցեց և այդ օրվանից գետը կոչվեց Արազ (Երասխ)։—Պատմում է Պլուտարքոս՝ առնելով Կտեսիփոնից. տես Ալիշան՝ Հյատ. էջ 163։

ՄԵՍԱՐ, ար. ծագումն անհայտ. թերևս արաբ. ميسر muyessar «հաջողակ, բարեհաջող» բառից։ Հիշատակված է մի անգամ ԺԵ դարում։

— Մեսար, հայր Եղիա աբեղա Հաղբուըթեցու, որ ծգնա-

ւարի Քար անապատում օրինակեց Աւետարանը՝ 1428 թ.—Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 567)։

*ՄԵՍԻԱ, աբ. < եբր. משיח māšīxa «օծեալ» բառից՝ հուն. Μεσσίας տառադարձության միջոցով։ Յիսուսին տրված պատվանունն է, ուստի և անպատշաճ է տալ սովորական մահկանացուներին։ Բայց բողոքական հայերը երբեմն գործ են ածում, ինչպես և կա Մեսիայեան ազգանունը։ Տես նաև Մսեհ։

ՄԵՍԻԼ. աբ. ծագումն անորոշ. մի անգամ գտնում եմ հիշատակված Մեսիլ ձևով՝ 1656 թ. (Երեմ. չէլ. օրագր. 157)։

Մեսերշահ տես Մսր։

Մեսիր տես Մսր։

Մեսխի տես Մսեհ։

Մեսրի տես Մսր։

ՄԵՍՐՈՊ, աբ. ծագումն անհայտ. ստուգաբանված է սերովբէ բառով. «Մեսրովբայ սրովբէատեսն անուան» (Պտմ. սահ. 41). հմմտ. նաև «Մեսրոպայ, որ է կանաչացեալ, այսինքն յարագուարճ և բերկրեալ» Վրք. իե (ուր հրատարակիչը՝ ծան. 4 ավելացնում է սեմական (=արաբ.) مسرور masrūr «բերկրեալ»։ Գրըված է զանազան ձևերով՝ Մեսրոպ, Մեսրոբ, Մեսրովպ, Մեսրովբ. գործածական է մինչև այժմ և ամեն տեղ հնչվում է Մեսրոփ։ Սրանից է Մեսրոպեան ազգանունը։

— Մեսրոպ-Մաշտոց, հայ գրականության հիմնադիրը. կենսագրությունը տես Մաշտոց ձևի տակ։ Մեսրոպ ձևով հիշատակված է՝ Խոր. Գ. խթ, ծբ, ծգ, ծէ, կ, կա, կէ. Խոր. մատենագր. 281. Կղկնտ. Բ. գ. Գ. իգ. Վրթ. քերթ. պտկ. 307. Գիրք Թղ. ղէ, ծէ. լծ, կոչ. 73. Մեսր. եր. 83, 110. Ասող. Բ. ա. դ. Գ. իա. Սամն. 22, 26, 41, 54, 66. Պտմ. ներս. 28. Փ. կոր. 5, 9, 13, 14, 23, 26. Երզն. եր. 267. Յհ. կթ. ժգ, ժդ. իբր հեղինակ հիշվում է Շարականի սկիզբը. Կիր. 15—19, 64, ը. Պտճռ. բրձր. 29, 30. Պտմ. սահ. 8—10, 28, 36. Առաք. լծ. սահմ. 170. Վրք. իե—իէ. Վրք. առ. 303 (որ կազմեց Վարձունեաց խաչը). Շիր. քրոն. 57 (այլ ձ. Մասրոպ). Մխ. աս. ժբ. Շնորհ. վիպ. 900, 1233. Օրբ. ժդ. Օրբ. հկճռ. ժ. Խոսր. 116 (Թարգմանիչք). Յղ. մով. և գաւթի, էջ 41, 44, 45, 57. Վրդն. աշխ. 519. հիշվում է իբր Պատարագամատոյցի հեղինակներից մեկը. Մ. մաշտ. 333 ա. Մեծոփ. յիշ. գ. Յայսմ. սեպտ. 9, 17, նոյ. 25, յունվ. 31, փետր. 19, մրտ.

29, յուլ. 31. Սամ. անեց. 68. Վրդն. աշխ. 519. Մաղաք. աբ. 34. Տաթև. ձմ. լա. հարց. 637. Պարականոն շար. 58 (Մեսրաւպ ձեռվ). Սիմ. ապար. 35. Զքր. սարկ. Գ. 3. ZAPh 1, 206. Զքր. ազուլ. 108.—սեռ. Մեսրոպայ՝ Կոր. էջ 1 (ուրիշներից մոտ). Խոր. Գ. խէ, ծգ, ծդ, ծէ, ծը, կ, կա, կէ. Փ. կոր. 5, 11, 13, 17, 19, 27, 29. Դաւ. անյ. 99. Գնիք հաւ. 129., Կանոն. 57. Գիրք Թղ. ծգ. Կղկնտ. Ա. իէ, իթ. Բ. գ. Գ. իդ. Ցհ. կթղ. ժգ. Սասն. 13, 46. Ասող. Բ. ա, բ. Գ. ը. Արծր. Ա. ժա. Հիր. 15, 17, 18. իբ. Վրք. շնորհ. 18. Ցղ. մովս. և դաւթի, էջ 39, 58, 60, 68, 70, 71, 83. Շար. բ, իդ, ձթ. ժմ. 946. Ճշ. 519, 662. Պտրգ. 146, 506, 547, 564, 690. Ցայսմ. սեպտ. 9, 17. 30. նոյ. 25. յունվ. 7. փետր. 19, 27. մրտ. 6, 29. Ցիշ. Թաթ. 47. Մ. մաշտ. 260 բ, 319 բ. Օրբ. զ, ժզ, ժե, իէ, կը. Վրդ. իզ. իե, լզ. ձե. Օրբ. հկճռ. ժբ. Լմբ. մատ. 218. Մխ. այրիվ. 34, 62. Սամ. անեց. 71. Ցհ. կթղ. հյր. 274. Պարականոն շար. 115. Պտմ. սահ. 5, 37, 41. Առաք. լծ. սահմ. 171. Զքր. եպս. 281. Պտճռ. բրձր. 29. Բհնպ. 270. Շնորհ. վիպ. 935. Մեծոփ. յիշ. բ. Ցկ. կր. 9, 38. Առաք. պտմ. 270—1. Ջուղ. 44, 117, 245. Զքր. սարկ. Գ. 29. Տարօն. Բ. § 12.—գրծ. Մեսրոպաւ՝ Խոր. Գ. կե, կզ.—Մեսրոպեան՝ Խոր. Գ. ծգ.—Մեսրոպի անունով կեղծված է կանոնագրքի մեջ «Երանելոյն Մեսրոպայ հայոց վարդապետի ասացեալ» խորագրով մի գրվածք, որ կախարդության և երազների մասին է խոսում (Սարգիսեան, Բննադ. Մանդ. 194)։—Ակցեր. Լիակ. վրք. սրբ. 281—308. Հայկ. աշխատ. Ցէթթէրի, էջ 64—78։

— 1. Մեսրոպ երեց, Վայոց ձորի Հողոցմանց գյուղից, պատմիչ Ժ դարու. «967 թվին» հին պատմիչներից (գլխավորապես Բուզանդից) ծաղկաքաղ անելով գրել է Մեծն Ներսէսի և Մամիկոնեանց տոհմի պատմությունը, իր որդի Վահան Մամիկոնեանի համար։ Տպված է Սոփերք Զ հտ.—Զարբ. Հին դպր. 561—8. Մեսր. եր. 138 (Այրիվ. 20 բ կոչում է «Մեծն Ներսէսի Պատմութիւն»)։ Տես նաև Սահակ պարթևի վերջում։

— 2. Մեսրոպ ոմն, որ Հաղբատի վանքում մի խաչքար է կանգնեցրել 1006 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 24, Մովսէսեան՝ Պատմ. Լոռիի 48։

— 3. Մեսրոպ Ա. պատրիարք Երուսաղէմի, հիշված է 1008 թ. (Աղաւնունի). հաջորդել է Արսէնին. իրեն էլ հաջորդել են աթոռակալներ՝ 1038—90։

— 4. Մեսրոպ վարդապետ. ունի աղոթքներ և բազմաթիվ

խրատական գրվածքներ (հավանաբար ԺԲ դար).—Տաշեան, Ժղվ. տուակաց Վարդանայ, էջ 81, Ձեռ. Թաւր. էջ 55 և 85, Ձեռ. Սևան. 37 ա, Թորոս աղբ. Բ. 396։ Նույն է՝

— 5. Մեսրոպ վարդապետ, ունի մի գրվածք «Վասն զըղջման և արտասուաց», Ձեռ. Հալէպի, Բ. էջ 61 ա և 132 ա։

— 6. Մեսրոպ քահանա, միաբան Կապոսի Ս. Լուսաւորիչ անապատի, Թուղթ էր կոկում և օգնում Թադէոս գրչին՝ օրինակելու համար մեծ Ճառընտիրը, 1224 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 34։

— 7. Մեսրոպ վարդապետ, իշխանների պաշտպանությամբ շինել է Ծովք գեղի մենաստանը 1234 թ։—Թորոս աղբ. Բ. էջ 351։

— 8. Մեսրոպ վարդապետ, միաբան Ուղաղու անապատի. Մանուէլ սարկավագին գրել տվեց Դաւիթ Անյաղթի գործերը 1335 թ.—Bodleian 229։

— 9. Մեսրոպ րաբունապետ, ուսուցանում էր Մեծ Հայքում. ժամանակակից Եսայի Նչեցու († 1338 թ).—Միսուան 517 ա։—Թերևս սրան է ակնարկում Զարբ. Նոր մատեն. 193, որ ասանց թվականի հիշում է Մեսրովպ վարդապետ, որ Արտազում, Ս. Թադէի մենաստանում բացել էր մի լսարան կամ ուսումնարան, ուր շատեր դիմում էին աշակերտելու։

— 10. Մեսրոպ եպիսկոպոս Խորձեանի? անդամ Սսի ժողովի, «1343 թ».—Ազգապ. 1869։

— 11. Մեսրոպ Բ Արտազեցի, կաթուղիկոս հայոց «1359—1372 թ». հաջորդեց Յակոբ Բ-ին. գումարեց Սսի Է-րդ ժողովը «1361 թ» կաթոլիկական ծեսերի դեմ մաքառելու համար։ Հիմնեց Լեհահայոց արքեպիսկոպոսական թեմը (1364 թ)։—Սամ. անեց. շար. 169. Առաք. պատմ. 336. Թորոս աղբ. Բ. 381 (հիշվում է 1360 թվի մի հիշատակարանում). Ալիշան՝ Կամենից, էջ 4—8. Զարբ. Թրգմ. 389. Ձեռ. Դաղեան, Բ. 51 բ (Մեսրոպին կաթուղիկոս գիտե դեռ 1357 թվին), Նոտարք 85։

— 12. Մեսրոպ եպիսկոպոս Երուսաղէմի, հիշված է Աբրահամի հետ 1402 թ. (Նոտարք 19)։ Նույն թվին հիշվում է Մեսրոպ եպիսկոպոս (Երուսաղէմի՞ թե Գահիրէի), որ Սուլթանից հրովարտակ է հանել Ճառների գերեզմանատան անարգել գործածության համար (Ազգապ. 2015)։—Ըստ Երուսաղէմի Օրացույցի Երուսաղէմի պատրիարքն է Մեսրոպ Բ, որ նստել է 1402 թ. իբրև հաջորդ Մարտիրոսի և իրեն էլ հաջորդել է Պօղոս Գառնեցի 1415 թ։

— 13. Մեսրոպ վարդապետ, ունի գովասանական ոտանավոր Ս. Գրիգոր Տաթևացու (†1410 թ) վրա։ Տպված է Տաթև. ամ. 719—720. ծայրանունն է «Ի Մեսրոպա վարդապետէ». Թվի աշակերտ Տաթևացու։—Սիսական 238։

— 14. Մեսրոպ առաջնորդ Աղբակի և վանահայր Բարթուղիմէոս առաքյալի վանից, 1418 թ.—Նոտարք 56։

— 15. Մեսրոբ քահանա, գրիչ. Սիմէոն Այրիվանեցու հրամանով սկսեց օրինակել Յայսմաւուրքը՝ Այրիվանքում, 1428 թվից քիչ առաջ։—Հայապ. 569։

— 16. Մեսրոպ, որբացյալ զավակ Կարապետ քահանայի (№ 202), որ Վանում օրինակեց մի Ավետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369։

— 17. Մեսրոպ, միաբան Մեծոփայ վանքի, աշակերտ Թովմա Մեծոփեցու, արդեն մեռած էր 1445 թ.—Նոտարք 147։

— 18. Մեսրոպ, որդի Յովհաննէս քահանայի, որ Արճէշում գրեց մի Ավետարան, 1450 թ., երբ արդեն մեռած էր Մեսրոպը, իր եղբոր Սահակի հետ.—Ձեռ. Թաւր. 66 բ։

— 19. Մեսրոպ, իր միաբանակիցների հետ հիշված է իբրև միաբան մի վանքի, որի անունը չի հիշված, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։

— 20. Մեսրոպ, որդի Յակոբշահի և քեռորդի Յովհաննէս տբեղայի, որ Աղբակի Ասփսթան գյուղում ստացավ մի Ավետարան, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 ա։

— 21. Մեսրոպ Գ, պատրիարք Երուսաղէմի 1454—1461 թ. հաջորդել է Աբրահամ Ե Մսրցուն, որին աթոռակից էր նախապես. իրեն էլ հաջորդեց Պետրոս պատրիարքը 1461 թ.

— 22. Մեսրոպ, վաղամեռիկ որդի Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1112—3։

— 23. Մեսրոբ Երզնկացի, որդի Ամիրդովլաթի, գրիչ. Երզնկայի «Կայմասի» վանքում օրինակեց Ավետարանը, 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 328։

— 24. Մեսրոպ քահանա Ոստանի, իր միաբանակիցների հետ հիշված է 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

— 25. Մեսրոփ կրոնավոր, Գողթան Բուստայ անապատում Աստուածատուր գրչին գրել տվեց Ավետարանը՝ 1489 թ.—Սրմաքեանց՝ Երնջակ 274։

— 26. Մեսրոպ, *որդի Ստեփանոս քահանայի և թոռն Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց կած գյուղում, Ցովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի ճաշոց (ԺԶ դար).—Ձեռ. Սևան. էջ 18։*

— 27. Մեսրոբ *Գանձակեցի, վարդապետ Աղուանից. 1753 թվին գնաց Պոլիս, ուր տպված տեսնելով Դավթի գործերը, ինքն էլ գրեց նրանց Մեկնութիւնը (Տաշեան, Ցուց. 958)։ Ունի և Վասն ողջոյն տսելոյ վարդապետաց (Ձեռ. Կարին. էջ 1)։*

— 28. Մեսրոպ *արքեպիսկոպոս Նարոյեան, ծնվել է Մշոյ Արդրեթ գյուղում, 1875 թ. ավարտել է Արմաշի Դպրեվանքը. Պոլսի պատրիարքական տեղապահ էր 1920—25 թվերին. ընտրվեց պատրիարք Պոլսի 1927 թ. և մեռավ այս պաշտոնում 1944 թ. (կենսագրությունը տես «էջմիածին», 1944 թ. № 6)։*

— 29. Մեսրոպ *Կ. Պոլսեցի, պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց Թորգոմ Գուշակյանին 1939 թ. իր հաջորդն է Կիւրեղ Նոր-Ջուղայեցի, որ գահակալեց 1944 թ.*

— 30. *Ուշ ժամանակի հիշատակություններ են Մասրուպ՝ 1538 թվից ուշ (Ձեռ. Վենետ. Բ. 536), Մեսրոբ 1622 թ. (Ձեռ. Վասպ. 622), Մեսրոպ 1633 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 86 բ), 1681 թ. (անդ 186 բ), 1682 թ. (Ձեռ. Վասպ. 1004), 1698 թ. (անդ, էջ 986)։*

*ՄԵՏԱԿԷՍ, ար. ծագումը անհայտ։ Մի անգամ ունինք՝*

— Մետակես *քրմապետ Աշտիշատի. Արծրունեաց իշխանը սպանեց նրան Արձանի պատերազմում Լուսաւորչի դեմ. սպանված տեղը կոչվեց Մետսակող.—Զեն. 29 (գրված նաև Մեսակէս). և 30։*

**ՄԵՐԱՄ, իգ. < արաբ.* مرام meram *«նպատակ, մտադրություն». մի անգամ հիշատակված է 1493 թվից ուշ գրված անթվական մի հիշատակության մեջ՝* Մերամ *ձևով (Ձեռ. Վասպ. 522)։ Կարելի էր կարծել* Մարիամ > Մայրամ *ձևից, բայց վերի ձևով մեկնել ավելի հարմար համարեցի։ Տես և* Մերում:

**ՄԵՐԱՆԳՈՒԼ, ար. < պրս.* میرانگل ***mīrān-gul *«իշխանների վարդ» (ենթադրյալ) ձևից։ Անշուշտ մեր մեջ գործածված արական անուն էր, որից ծագել է* Մերանգուլեան *ազգանունը (Կովկաս)։ Կա և վրաց.* Miraïngul, *կին Վրաց Դավիթ Ը (1505—25 թ) թագավորի, որ* Justi *207 ա հանում է պրս.* mihr *«արեգակ»* +āyīn *«ձև, կերպ» բառերից, այն է «արեգակնակերպ»։ Թվում է թե իմ տված բացատրությունը ավելի հասարակ է։ Բայց Զքր.*

տգուլ. 174 հիշում է Մերանղուլ ոճով 1764 թ., որով այն բանաստեղծական վարգը (gul) փոխվում է դժբախտ թրք. قول qul՝ «ծառա» բառի։ Այսպեսով Մերանգուլ դառնում է Սերանղուլ «իշխանների ծառա»։

*ՄԵՐԴԻՆ, ար. < Իրաքի Merdin քաղաքի անունից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1582 թ. (Manus. brit. mus. 39 բ), Մերտին ձևով։ Սրանից կա Մերդինեան ազգանունը, որ լսել եմ Երևանում՝ Տաճկահայ մի ընտանիքում։

*ՄԵՐԴԻՆՇԱՀ, իգ. < նախորդ Մերդին անունից+պրս. شاه šāh «թագավոր»։ Մի անգամ գտնում եմ հիշված ԺԶ դար, Մերտինշայ ձևով՝ Ձեռ. Դաշեան, Ա. 12 բ։

*ՄԵՐԵԹ, իգ. < Թրք. meret բառից։ Այս բառը չեմ գտնում բառարաններում. բայց գործածական է Պոլսի ժողովրդական լեզվի մեջ՝ «աղնիվ ըմպելիք» իմաստով (հատկապես օղիի համար է ասվում)։ Մի անգամ գտնում եմ հիշված ԺԵ դարում։

— Մերեթ, կին Թաւաքալի և մայր Յովսէփ միայնակեցի, որ օրինակեց Աւետարանը Լիմ անապատում, 1439 թ.—Ձեռ. Վասպ. էջ 380։

ՄԵՐԻԿ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված կա մի անգամ՝

— Մերիկ պարոն, որի գերեզմանը գտնվում է Գեղարդավանքի ժամատան մեջ, առանց թվականի.—Խաղբակեանք 144։— Տես և Մերիկ։

*ՄԵՐԿԵԱՆ, ար. < կիրգիզ. ալթայ. մոնղոլ. مرکان mergyan «հրացանաձիգ, հրացանավոր զինվոր, ուժեղ մարդ» բառից (տես Будагов, II, 224)։ Նույն բառը կա պահված նաև Պոլսի Խմիրկեան, Միրկեն թաղի անվան մեջ։ Իբրև անձնանուն մեր մեջ հիշված եմ գտնում մի անգամ 1606 թ. (Труды Вост. комм. ИМАО, հտ. II, 3, էջ 68)։

*ՄԵՐԿԵՌ, ար. ծագում է լտ. Mercurius անունից, որ է «Հերմէս, Արամազդի որդին և աստվածների պատգամավորը, ինքն էլ աստված ճարտարախոսության, վաճառականության և գողերի, նաև Փայլածու մոլորակը»։ Արական անուն էր նաև լատիններին և հույների մեջ։ Հմմտ. «Մերկիւրիոս, Գորգիոս և մեծն Բասիլիոս» (Նոր վկ. 75)։ Այս տառադարձությունը համաձայն է լատիններենին (u > իւ). բայց ապա կազմվել է հուն. Μερχεριος?, որից էլ հյ. Մերկեռիոս. ինչ. Մերկեռիոս Սկիւթացի վկա (Յայսմ. և Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ. 188)։ Մեր մեջ շատ քիչ է գործածված. բայց կա Մերկեռեան ազգանունը (Պոլիս, Սամա-

թիա)։ Իտալական հնչումով գրված է այս անունը նաև Մերձեր, Մերչեր, Մերչո։

— 1. Մերչո, որի հիշատակին Ուքան և Պապքան եղբայրները նվերներ են արել Խաչենի Մեծարանց վանքին, 1252 թ. (Արձ. Բանասէր 1901, էջ 136) և ավելի ուշ՝ 1271 և 1274 թ. Անիի վանքերին (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 13)։ Մերչո կամ Մերչէ որդին է Սարգսի և թոռն Հոգոյ։

— 2. Մերկեռ մանկտաւագ (սրա անունը գրված է Մերձեր և Մերչեր ձևերով). հայր է նշանավոր գերդաստանի, որ հիշատակված է մի քանի տեղ։ Մերկեռի որդին է Աւագ քահանա (որ հիշել եմ վերը հտ. Ա, էջ 322 և 324, № 4 և 35 համարների տակ, որոնք պետք է այժմ միացնել)։ Այս Աւագ քահանան երկրորդ ստացողն է այն չքնաղ Աւետարանի, որ գրել էր Յովհաննէս երեցը՝ Կարնոյ Կան գյուղում, Երեմիաս քահանայի համար, 1283 թվին։ (Ձեռ. Վենետ. Ա. 645.—զուր է կարծում Սարգիսեան, թե Աւագ քահանան կեղծել է հիշատակարանը։ Ընդհակառակը նա՝ Երեմիայի հիշատակութիւնից հետո հիշում է իրեն՝ իբրև ստացող, դժբախտաբար առանց թվականի)։ Նույն Աւագ քահանան Ստեփանոս գրչին գրել է տվել մի մեծ Ճառընտիր—Տօնական, որ «որդէն յինքեան մեծայաղթ հատոր մ՚ըլլալով», երկու մասի է բաժանված և առանձին առանձին կազմվելով ձևացրել է Վիեննայի Մխիթարեանց № 1 և 2 ձեռագրերը (տես Տաշեան, Ցուց. էջ 7, 14)։ Դժբախտաբար այս տեղ էլ հիշատակարանը ընկած լինելով՝ թվականն անհայտ է։ Տաշեանը դնում է «1506 էն շատ յառաջ» և կարծում է թե գրված է «հաւանականօրէն Լեհաստան»։—Մերկերի կինն է Միճասբեր, որ Տօնականի գրութեան ժամանակ «դեռ երեք աւր է որ փոխեալ է ի Քրիստոս»։ Տէր Աւագի կինն է Մամախաթուն, որ Տօնականում կոչված է «քահանայուհի»։ Զավակներն են Քարիմ, Նեքեմատ (Տօնականում սխալ գրված Ներքէմատ) և Քիմիլ (վերջինը Տօնականի ժամանակ դեռ չէր ծնված)։ Նեքամադը այնուհետև դառնում է նշանավոր ճարտարապետ. ինքն է շինել Ամիդի Ս. Թէոդորոս եկեղեցին, որ ավարտել է 1447 թ. (Հայապ. 574)։

— 3. Մերկեռ, որդի Մխիթարիչ քահանայի (նախ քան 1420 թ).—Տաշեան, Ցուց. 666 (գրված Մերգեր)։

— 4. Մերկեռ տիրացու Ակնի Կարուչլա գյուղից (ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 797 (գրված Մեռկեռ)։

*ՄԵՐՇԱՊՈՒՀ, ար. < իրան. Mihr-šāpūr անունից, որ տա-

գիս է նախ Միհրշապուհ (որ տես), ապա Մեհրշապուհ և Մերշապուհ (Հիւբշ. 54)։ Հմմտ. Mihršābhōr ասորի, քրիստոնյա, բանտարկված Յազկերտ Ա-ի օրով, Միհրշապուհ մովպետան մովպետ՝ Վահրամ Ե-ի օրով (421 թ), Միհրշապուհ եպիսկոպոս Շօշի (577 թ)։—Justi 206 ա։

— 1. Մերշապուհ Արծրունի, որդի Մերուժան մատնչի, զորավար Պապ թագավորի. հուղարկավոր եղավ Մեծն Ներսեսի († «373 թ») թաղման։—Արծր. Ա. ժա։

— 2. Մերշապուհ Արծրունի տես Ներշապուհ։

— 3. Մեհրշապուհ Արծրունի, մասնակցեց Վահան Մամիկոնեանի ապստամբության և պատերազմներին (Ե դար).—Արծր. Բ. ը։ Սա է որ վռնտել է նեստորական քարոզիչ ասորի Բարծումային Արզնարզիուն և Մոկաց նահանգից։ Այդ մասին գրեց նորերս Ե. Տէր-Մինասեան, Նեստորականութ. Հայաստանում (արտատպ.), էջ 194—6 և Եղիշէ աշխ. Թրգմ. էջ 12—14։

— 4. Մերշապուհ ի Շինական իշխան, մասնակցեց Դուինի երկրորդ կրոնական ժողովին «554 թ».—Գիրք Թղ. ժէ։

— 5. Մերշապուհ եպիսկոպոս Մամիկոնէից և Տարօնի. ժամանակակից Բաբկէն Ա («490—516 թ») և Ներսէս Բ («548—557 թ») կաթուղիկոսներին.—Գիրք Թղ. թ, ժ, ժէ. -սեռ. Մերշապհոյ՝ Գիրք Թղ. ը, ժա, ժզ, ժզ, ժէ, ժէ bis։

*ՄԵՐՈՅ, ար. < իրան. Meroe անունից, որ բուն նշանակում է «ռեհան» (անուշահոտ բույս, որ ծաղկում է դրախտում, ըստ Արտավիրաֆի)։ Այս անունով հայտնի են Μερόης ոմն հնդիկ և Μερόη մայր Կամբիւսի. իր անունով կոչվեց Մէրվ քաղաքը (Justi 203 բ)։ Mīrōī զորավար Յազկերտ Գ արքայի (Շահն., Justi 207ա)։ Մեր մեջ հիշատակված է միայն մի անգամ՝

— Մերոյ իշխան Սահառունի. ուղեկից եղավ Յուսիկ կաթուղիկոսին՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ «341 թ».—Բուզ. Գ. ժբ. (ըստ Միաբանի ZAPh 2, 277 պետք է ուղղել Տիրոց)։

ՄԵՐՈՇ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ Մերոշ ձևով՝ 1756 թ. (Ձեռ. Վասպ. 314)։

*ՄԵՐՈՊԷ, իգ. այս անունն է թերևս այն, որ գործածական էր Պոլսում անցյալ դարում ժղ. Մէօրիւպէ (Mörübe) ձևով։ Եթե այո, ծագում է հուն. Μερόπη իգական անունից, որ թերևս պետք է դնել μέροψ, μέροπος «մահկանացու, մարդ» բառից։ Բայց չգիտեմ թե ինչպես է հասել մեզ։ Նոր ժամանակներից կան այս

*անունով մի քանի ողբերգություններ. ինչպես Վոլտերի (1743), Ալֆիէրիի (1783) և Մաֆֆէի (1713)։—Բայց ինչ որ տեղ տեսել եմ այս անունը գրված* Մեհրուպհ *ձևով. այդ դեպքում կարելի է դնել պրս.* նյս meh-rubā *«լուսինը գրավող» ձևից և կամ նույն ընդ* Միհրիբաց։ *Լավագույնը տես Միւրոպէ։*

**ՄԵՐՈՒԺԱՆ**, *ար.* < *պհլ.* Mitrūčan *(կարդա* Mihrōǰān *անունից, որ համապատասխանում է* miϑrōaoǰah *«Միհրազօր» ձևին։ Մեր բառի բուն ձևն է* Մեհրուժան, *ապա* Մերհուժան *և ավելի ուշ* Մերուժան *կամ* Մեհուժան *(Հիւբշ. 52—53)։ Տես նաև* Միհրբարզան։ *Իրանյանց մեջ հայտնի են՝* Մարուժան *պարսիկ զորավար, որ եկավ Արշակ Գ-ի դեմ (Բուզ Դ. խբ.),* Marwazān *կուսակալ Եմէնի,* Μαρουζᾶς *զորավար Որմիզդ Դ-ի և Խոսրով Բ-ի* (Justi *197 ա)։*

— 1. Մեհրուժան (Μερουζάνης) *եպիսկոպոս Հայոց, որին թուղթ է գրել Ս. Դիոնեսիոս Ալեքսանդրացին («248—264 թ»), եպիսկոպոս Եգիպտոսի՝ «253—5 թվին», «Վասն ապաշխարութեան» վերնագրով։ Այս թղթում խոսում է այն քրիստոնյաների մասին, որոնք հալածանքի ժամանակ ստիպված ուրացել էին իրենց հավատքը և ապա զղջալով վերադարձել (Եւս. պատմ. Զ. խե (=խզ), էջ 517։ Թե ո՛ւր էր այս Մերուժանի աթոռը, այս մասին տես Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. էջ 13—16 և Հացունի, Կարևոր խնդ. 115—9։ Կարծվում է թե Փոքր-Հայոց եպիսկոպոսն էր, կամ Արծրունի էր և եպիսկոպոս Վասպուրականի (Գելցեր) և կամ հավանաբար Ծոփաց (Ադոնց,* Армения *347)։ Ըստ Ազգապ. 61 Արտազի առաջնորդն էր և նստել է «240—270 թ?»։ Տես նաև Ալիշան, Արշալ. քրիստ. 80։*

— 2. Մերուժան *Արծրունի, նահապետ տոհմի. մին այն նախարարներից, որոնք ուղեկցեցին Ներսէսին Վաղէս կայսեր մոտ դեսպան գնալու ժամանակ «364 թ»։ Ապստամբեց Արշակ Բ-ի դեմ և դավաճանությամբ միանալով Պարսից Շապուհ թագավորին՝ ավերեց իր հայրենիք Հայաստանը, հուսալով որ իր դավաճանության իբր վարձ՝ Հայաստանի թագը կստանա։ Ձիրաւի ճակատամարտում (ըստ Խորենացու) սպանվեց Սմբատ Բագրատունու ձեռքով՝ հրաշեկ շամփուրով պսակվելով «370 թ» կամ Մանուէլի և Բաբիկի ձեռքով (ըստ Բուզանդի)։—Մերուժան՝ Խոր. Գ. լե—լէ. Բուզ. Դ. իգ, իդ, լա—լէ, լթ—խգ, խե—խթ, ծը, ծթ. Ե. ա, բ, գ, լը, խգ. Պատմ. Ներս. 18, 20. Ասող. Բ. ա.—*Մերուժան՝ *Ձհ. կթ. ժգ. Մխ. անեց. իգ. Մեսր. եր. 52—53,*

88. Կղկնտ. Ա. ժգ. Վրդ. իդ. Զուզ. 42.—Մնեուժան՝ Արծր. Ա. ժ, ժա.—սեռ. Մերուժանայ՝ Խոր. Գ. իթ, լև, լզ, լէ, ծզ. Փ. կոր. 12. Բուզ. Դ. իգ, իզ, ծ, ծը. Ե. դ, լը, խգ. Ասող. Բ. ա.—Մեհրուժանայ՝ Բուզ. Դ. ծթ (ցանկում). Ցհ. կթ. ժգ. Կղկնտ. Ա. ժգ. Վրդ. իգ.—Մեհրուժանի՝ Վրդ. իդ (հրտր. Էմինի).— Մեեուժանայ՝ Արծր. Ա. ժ, ժա.—գրծ. Մերուժանաւ՝ Բուզ. Դ. իգ։

— 3. Մերուժան Արծրունի, Ցազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մեն «452 թ».—Մեհրուժան՝ Եղիշ. 150 (Փարպ. խէ).—նույն է Մերճուժան Արծրունի, որդի Վասակի և եղբայր Ալան Արծրունու. ուղարկվեց Ցունաստան՝ օգնություն խնդրելու հայոց համար «450 թ».—Փարպ. լգ։

— 4. Մերուժան իշխան Արծրունեաց, որդի Գագիկի։ Սիոն կաթուղիկոսի շքախմբի հետ գնաց Պարտաւ, ուր մասնակցեց եկեղեցական ժողովին «768 թ» (Կանոն. 166, Տաշեան, Ցուց. 653 բ)։ Միացավ իր եղբոր՝ Համազասպի ապստամբության Արաբների դեմ, բայց հաղթվեցին Արճէշում «775 թ»։ Ձերբակալվեց Խազմ ոստիկանի ձեռքով, սակայն հավատքը ուրանալով ազատվեց «786 թ», մինչդեռ իր եղբայրները՝ Սահակ և Համազասպ նահատակվեցին։ Վանի Դաւիթ իշխանը բռնեց նրան և սպանեց։—Մեհրուժեան՝ Ղև. խ. Ցայսմ. ապր. 8.—Մերեուժան՝ Վկ. հմզ. 64, 67.—սեռ. Մեհրուժանայ՝ Ղև. խ։ Սրա հետ նույն պետք է լինի՝

— 5. Մեհրուժան Արծրունի, իշխան Վասպուրականի. սպանեց Մուշեղ Մամիկոնեանի երկու որդիներին «789 թ», որոնք Բագրևանդի պատերազմից ազատվելով՝ իրեն էին ապավինել։—Վրդ. խա։

— 6. Մեհուժան Արծրունի, մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ».—Արծր. Բ. զ։

*ՄԵՐՈՒՄ, ար. < պրս. ﻣﻴﺮ mīr «իշխան»+թրք. -um ստացական հոդով. նշանակում է «իշխանս». հմմտ. Գուլում, Շահում։ Մի անգամ հիշատակված է 1575 թ. (Ձեռ. Վասպ. 688) և մի անգամ էլ 1655 թ. (անդ 916)։ Տես և Մերամ։

ՄԵՐՈՒՆ, ար. անստույգ ձևով անուն, որ հիշատակված է մի անգամ 1648 թ (Ձեռ. Վասպ. 682)։ Կարող է լինել Մերու կամ Մերուն (ն որոշիչ հոդ կամ ոչ), բայց նաև նույն ընդ նախորդը՝ իբր Մերումն:

Մերուպէ տես Մերօպէ:

ՄՆՐՈՒՐ, ձևով ու սեռով անորոշ անուն, որ մի անգամ հիշատակված է 1550 թ. Հին Ջուղայի մի խաչքարի վրա, հետևյալ ձևով. «ծնողացն Մերուրին? և Արզունին» (Սիսական 422 և Սեդրակեան՝ Հնութ. Երնջակու 166)։ Սովորական շարքով Մերուր հայրն է (ար.) և Արզուն մայրն է (իգ)։ Բայց եթե Արզունը մեզ ծանոթ ար. Արթուն անունն է, ուրեմն Մերուր իգական է։

ՄՆՐՈՔ, ար. կասկածելի ընթերցվածով հիշատակված է մի անգամ 1742 թ. (Ձեռ. Վասպ. 566)։

Մերչո տես Մերկեռ։

ՄՆԻՈՆ, ար. ծագումն անհայտ, ինչպես նաև հիշատակության թվականը։ Մի անգամ ունինք՝

— Մեւոն, հայր Սարգսի, որին Թուրքերը սպանել և մի հորում քարաթաղ էին արել։ Եղբայրը՝ Կազեր գտավ նրան և նրա ու իրենց ծնողների հիշատակին մի խաչքար կանգնեցրեց Անիի մոտիկ համանուն գյուղում։—Արձ. Շիրակ 34, Նոր վկ. 135, Ազգագ. 1920 (Մեոն անունը կարդում է Միւոոն)։—Ալիշանը դնում է ԺԳ դար։

ՄՁԻԿ, ար. ծագումն անհայտ. մի անգամ գործածված է 1617 թ. Ձեռ. Վասպ. 854, սեռ. Մզկեն ձևով։

*ՄՁՈՒՆ, ար. < արաբ. ماذون me'zūn «արտոնյալ» բառից։ Հիշված է մի անգամ անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Վասպ. 259)։

ՄԷՄԻՆ, ար. < արաբ. مامن me̤'emen «ապահով տեղ, ապաստարան» բառից? մի անգամ հիշատակված է 1593 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 142)։

† ՄԷՆՏԻԿԻՆ, իգ. < հյ. մէն «միայն, մենակ»+տիկին բառերից, իբր թե «մի հատիկ տիկին, որ իր նմանը չունի»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԴ դարում։

— Մէնտիկին, կին Թագւոր մանկտաւագի և մայր Պօղոս սարկավագի, որ ստացավ մի Շարակնոց 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489 բ։

† ՄԷՐԻԿ, իգ. < հյ. մայրիկ բառի ժղ. ձևից. այլ է Միրիկ, որ արական լինելով չի կարող կցվել սրան։ Հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում (Bodleian 201)։

ՄԷՐՐԱՆ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ 1626 թ. (Ձեռ. Վասպ. 872)։

Մըսր տես Մսր։

*ՄԹԽԱԼ, *ԺԳ. < արաբ.* مثقال miϑqāl *«ոսկի և թանկագին քարեր կշռելու միութիւնը» (Թրք. ստացել է* məsxal *ձևը)։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԴ—ԺԷ դարերում։*

— 1. Մթխալ, *մերձավոր Վարդան քահանայի, որ Երզնկայում, Խոսրովի որդի Վարդան քահանայից գնեց մի Աւետարան, որին «օգնական եղև ի գինս» նույն Մթխալը, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։*

— 2. Մթխալ, *դուստր Խդրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.*—Rapport Belgique *34։*

— *Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են* Մթխալ *1512 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 646), 1601 թ. (Ձեռ. Վասպ. 792), 1654 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1864), 1674 թ. (անդ 1876), 1687 թ. (Ձեռ. Վասպ. 44)։*

*ՄԺԷԺ, ար. ծագումն անհայտ։ Հիշատակված է միայն Զ—Է դարերից։*

— 1. Մժեժ Գնունի, *մեծ քաջությամբ վանեց հոնաց արշավանքը, կարգվեց մարզպան Հայաստանի։ Վարդ Մամիկոնեանին հաջորդող պարսիկ մարզպաններից հետո բարձրանալով մարզպանական գահը, կառավարեց Հայաստանը խաղաղությամբ ավելի քան 30 տարի «517—548 թ» (ըստ Ադգապ. 519—535)։—* Մժեժ՝ *Կիր. 23.—*Մեժեժ՝ *Սամ. անեց. 74.—*Մեժէժ՝ *Ասող. Բ. բ. Վրդ. լ. Մխ. այրիվ. 19.—սեռ.* Մեժէժայ՝ *Ասող. Բ. բ.—*Մժեժայ՝ *Օրբ. ԽԳ, ԽԴ.—*Մեժեժայ՝ *Կիր. 25. Վրդ. լբ. Միխ. ա. ԽԹ (= ԽԸ).—*Մեժէժի՝ *Ասող. Բ. բ.—Վրաց պղբ. Ա. 79 կոչում է միայն «Գնունի պատրիկ»։*

— 2. Մժէժ Գնունի, *հունական զորավար. Թոռնորդին է նախորդի (ըստ Չամչ. Բ. 325). մեծամեծ քաջություններ գործեց Պարսից դեմ, իբրև օգնական Հերակլ կայսեր (610—641 թ), որ նշանակեց նրան կիւրապաղատ Հայաստանի։—Այդ միջոցին տեղի ունեցավ Հերակլ կայսեր դեմ ապստամբություն, որին մասնակցեց նաև Դաւիթ Սահառունի հայ իշխանը։ Մժէժ Գնունին բռնեց նրան և շղթայի զարկավ։ Բայց Դաւիթը ջարդեց շղթաները, հաղթեց հույներին և Մժէժին էլ սպանեց «635 թ»։—* Մժէժ՝ *Սեբ. լԹ.* —Մեժէժ՝ *Մխ. անեց. գ.—*Մեժեժ՝ *Վրդ. լգ.—*Մաժեժ՝ *Յհ. կԹդ. ԺԸ (2 ձեռ.* Մժեժ*).—սեռ.* Մժեժայ *կամ* Մժեժի՝ *Սեբ. լԹ։*

— 3. Մեժեժ Գնունի. *անորոշաբար հիշված է Արծր. Գ. ԽԸ.*

«ի զարմէ Մեժեժի Գնունւոյ, ի Վասպուրական բաժնէ». հայտնի չէ ով է։

— 4. Մժէժ, հայազգի պատրիկ և զորավար Կոստաս Բ կայսեր. Թիկնեղ ու փառահեղ մարդ էր. Արևելյան բանակով ուղարկվեց Սիկիլիա՝ կռվելու համար Սարակինոսների դեմ։ Սիկիլիայում, երբ կայսրը բաղնիսում սպանվեց, Մժէժն էլ բանակի կողմից հունաց կայսր հայտարարվեց «668 թ». բայց կայսեր որդին՝ Կոստանդին Դ նավատորմով եկավ և նրա իշխանության վերջ տվեց։—Մեժէժ՝ Միխ. աս. ժթ.—սեռ. Մեժեժայ՝ անդ։—Զամչ. Բ. 368. Ցուցիկք, Բ. 33ˇ.—հունարեն գրված է Μεζέζιος. (Զամչ. սխալմամբ միացնում է № 2 Մժէժի հետ, որ սպանված էր 635 թ. ինչպես գիտե նաև Ալիշան, Շիրակ 142)։

*ՄԺՆՈՒՄԱՋԱՆ, ար. < ըստ իս պրս. مجنون meǰnūn անունից (որ է արաբ. «դիվահար, սիրով գժված»). վերջածայն n ազդեցությամբ նախաձայն m-ի դարձել է նույնպես m. Meǰnūn> Meǰnūm, որից ապա ǰ կրճատվելով Mežnūm. ըստ այսմ Մժնումաջան նշանակում է «Մեջնունի հոգին, այն է որդին կամ զավակը»։ Նույն անվան մի ուրիշ տարբերակն է Մեջլում> Մեժլում, որ տես առանձին։ Մժնումաջան անունը մի անգամ գտնում են հիշատակված 1621 թ. (Ձեռ. Վասպ. 860)։

ՄԻԱՆԴԱԿ, ար. ծագումն անհայտ։ Մի անգամ գիտենք՝

— Միանդակ նախնին Մանդակունեաց տոհմի. Վաղարշակը կարգեց նրան նախարար.—Խոր. Բ. ը. Սամ. անեց. 49։

*ՄԻԱՆՍԱՐ, ար. < պրս. میانسر miyānsar բառից, որ նշանակում է «մի տեսակ թագ, որի կեսն է միայն ականակուռ». կազմված է miyān «մեջ» և sar «գլուխ» բառերից։ Հիշատակված է մեր մեջ Միանսար՝ Նադըրշահի ժամանակ (Կրպտ. եպս.՝ Դոփեանք 156, Սմբատեանց՝ Գեղարքունի 796), այլ ումն Միանսար 1609 թ. (Ձեռ. Վասպ. 833=Մինասար՝ անդ 835), 1715 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 103), Միասար (ն կրճատված), թվականն անհայտ (Ձեռ. Վենետ. Ա. 589). սրանից է կազմված Միանսարեանց ազգանունը, որ և կա Միասարեան ձևով։

ՄԻՋՈ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է 1736 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 44 ա).—այս ձեռագրում կրճատ ձևեր բավական կան. ինչպես. Գալօ, Փաշօ, որոնց հետ նաև Միզօ։

ՄԻԹՈՐ, ար. հիշված է մի անգամ անթվական մի հիշա-

տակարանում, որ գրված է սակայն 1230 թվից ուշ (Ձեռ. Վենետ. Ա. 574)։

ՄԻԼԻԴՈՒԽՏ, իգ. վերջի մասն է պրս. دخت duxt «դուստր», բայց առաջին մասը անհայտ է։ Ամբողջը պարսկական փոխառություն պետք է լինի։ Մի անգամ գտնում եմ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 32 ա)։

*ՄԻԽԱՅԼ, ար. ծագումը տես Միքայել։ Այս ձևով գործածված է մեր մեջ ԺԲ—ԺԴ դարերում։

— 1. Միխայլ պարոն, մեծ իշխան, եղբայր Գրիգորիս կաթուղիկոսի և Վասիլ իշխանի. Պահլավունի տոհմից. եղբորորդի Ներսէս Շնորհալու. Հռոմկլայում Բասիլ սարկավագին գրել տվեց Սողոմոնի գրքերը՝ 1201 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 168։

— 2. Միխայլ ոսկերիչ. ձեռք է բերել մի հին Աւետարան և նվիրել Զօրավար քահանային 1201 թ.—Տողակաթ 193։

— 3. Միխայլ (կամ Միխել), ազգական Հոռմեանց Կոստանդի որդի Յովհաննէս քահանայի, որ նվերներ է արել Արջոյառիճի և Բագնայրի վանքերին, 1213 և 1215 թվերին.— Արձ. Շիրակ 121 և 122։

— 4. Միխայիլ պարոն, Սսում օրինակել տվեց մի Աւետարան Յովհաննէս քահանայէն, իր հոգևոր որդի Կարապետ քահանայի համար, 1293 թ.—Թորոս աղբ. Բ. 303։

— 5. Միխալ (կամ Միխայլ), կրոնավոր միաբանակեաց Կաֆայում, 1305 թ. (տես Աւետիք № 29).—Ձեռ. Վենետ. Բ. 511—2։

— 6. Միխայել միաբանակեց, հայր Գրիգոր գրչի, որ Դրազարկի կամ Փոսի վանքում գրեց մի Աւետարան, 1325 թ։ Սարգիս պիծակ նշանավոր նկարչի քեռայրն է։—Սիսուան 234 բ, և 236։

*ՄԻՀՐ, ար. < պհլ. Mihr (գրված Mitru), պազ. պրս. Mihr, հպրս. Miϑra, զնդ. Miϑra անուններից, որից են նաև հուն. Μίϑρας, Μίϑρης, լտ. Mithras: Արևի հին արիական աստվածն էր, որի պաշտամունքը Իրանից անցնելով Եվրոպա հասավ (Bartholomae, Altir, Wört. էջ 1185), Դուրեան, Կրօններու պատմ. 330։ Բառիս պրս. ձևը պիտի լիներ *Missa, ինչպես որ կա նաև ելամ. Mi-iš-ša. ուստի Mitra ձևը փոխառություն է մարերենից. Միհրի պաշտամունքը բառի հետ Մարերից անցավ Պարսիկներին (Meillet, Gram. v. perse, էջ 12)։ Զնդ. բառը նշանակում է նաև «դաշինք, պայմանադրություն, կրոնական պարտավորու-

թյուն», պրս. mihr նշանակում է «արեգակ, սէր, բարեկամություն» (Հիւբշ. 53)։ Աստուծու անունից հետո Միհրը դարձավ անձնանուն։ Օր. Mihr որդի Վաղարշի, պարսիկ նահանգապետ Կարէնի տոհմից (600—620 թ), Mitra գրիչ ոմն (կնիք Սելևկեան շրջանից), պրս. Mihrak որդի Nūšzād-ի, կռվի դուրս եկավ Արտաշիր Բաբականի դեմ, բայց հաղթվեց և սպանվեց (Շահն. հտ. 5, էջ 254—9), Mihr պետ Մանիքէականների (Ը դար), Mihr որդի Դարայի, սատրապ (ԺԲ դար), վրաց. Միր կամ Միհեր՝ Ստեփաննոս Բ կուսակալի որդին (Է դար), Միր թագավոր Վրաց (735 թ) (Justi 207—8)։ Միհր անվան վրա առանձին մենագրություն է «Միհրը Հայոց մեջ», Վիեննա 1929, Ազգ. մատ. ԾԻ, ուր հեղինակը «իրան յատուկ փութկոտութեամբ» (տես էջ 58) ամեն անուն Միհրից է հանում։

— 1. Միհր աստված, որդի Արամազդի.—«Մրհական մեհեանն անուանեալ որդւոյն Արամազդայ» Ագաթ. 790.—«Միհրական մեհեան» Ուխտ. Ա. կը.—Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. էջ 137։

— 2. Միհր եպիսկոպոս Արցախի. Ցղերկս գյուղում ընդունեց Յովսէփ անապատականին (Է դար).—Կղկնտ. Բ. ծ։

*ՄԻՀՐԱՄՂՈՒԼ, ար. ենթադրում եմ որ այս անունը անցյալ դարում գործածական է եղել Կովկասում, որովհետև նրանից ունինք Միհրամղուլեանց ազգանունը։ Սրա հետ նույն է Մարիամղուլի = Պլ. Մերյեմ-Գուլի ձևով, իբր. թրք. مريم Meryem + قولى qulə «ծառա» (Մարիամ Աստուածածնի ծառան). հմմտ. թրք. Մահմադղուլի, Իսաղուլի, Ալիղուլի կամ արաբ. Աբդուլլահ, Աբդըլմսեհ են անունները։

*ՄԻՀՐԱՆ, ար. < պրս. Mihrān անունից (ծագումը տես Միհր. հպրս. Μιτρανης), որից և վրաց. Միրիան, Միրվան (y > v ձայնափոխության համար հմմտ. ախոյեան > վրաց. ախովանի, թրք. bayraq > վրաց. բավրակի «դրոշակ»)։ Այս անունով հայտնի են՝ Պարսկական ազնվական մի տոհմ, Միհրան սատրապ Լիւդիայի, կարգվեց կուսակալ Հայաստանի Մեծն Աղեքսանդրի ձեռքով (330—323 թ), Միհրան ճգնավոր Հնդկաստանում, մեկնեց Հնդկաց Keïd թագավորի երազը և գուշակեց Աղեքսանդրի արշավանքը (Շահն. հտ. 5, էջ 89), Միհրան զորավար Նուշիրվանի (Շահն. հտ. 6, էջ 159), Միհրան՝ Պարսից զորավար, որ արշավեց Տարօն՝ Գայլ Վահանի դեմ, Միհրան Միհրևանդակ զորավար (Սեբ. տպ. 1939, էջ 27, 30), Միհրան իշխան Վրաց, ժա-

ժամանակակից Տրդատի (Խոր. Բ. ձե), նոյն իսկ Mihrān ծառա Մուհամմեդի (Կամուս, Գ. 648)։

— 1. Միհրան զօրավար Տիգրան Մեծի, Հռովմայեցոց զօրավար Սիլլայի հեռանալուց հետո, Բագուաս զօրավարի հետ միասին հարձակվեց Կապադովկիայի վրա և վտարելով Արիոբարզանին, երկիրը հանձնեց Միհրդատի որդի Արիարաթին (Ն. Բ. 90).—Ջամչ. Ա. 222, Գրգչ. Ընդ. պատմ. Բ. 133, Justi 214 ա, Մանանդեան՝ Տիգրան Բ. 33 (Միթրաաս ձևով)։

— 2. Միհրան որդի Թուրքայ, հիշված է իբրև վկա՝ Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը։

— 3. Միհրան, օգնական Վասակ Պահլաւունի սպարապետի՝ Թուրքերի դեմ պատերազմում, ուր և մեռավ «1020 թ».—Սմբ. պատ. 29, 30։

— 4. Միհրան Ուգոլինի, հայր Պետրոսի, որ հիմնեց Իտալիայում Պիզա քաղաքի Կարապետեան վանքը 1367 թ.—տես Պետրոս։

— 5. Մեհրան, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 6. Միհրան ոմն (գրված Մէհրան), հիշված է 1492 թ.—Ձեռ. Թաւր. 31 բ։

† ՄԻՀՐԱՆՈՅՇ, իգ. նորակերտ անուն, որ կազմված է Միհրան անունից+անոյշ. պատահական նմանություն ունի պրս. Mihrnūš, որդի Իսֆենդիար արքայի Պարսից (Շահն. հտ. 4, էջ 349) և ուրիշներ (Justi 206 ա)։

*ՄԻՀՐ-ԱՐՏԱՇԻՐ, ար. < պրս. Միհր և Արտաշիր անուններից բարդված։

— Միհր-Արտաշիր տեր Սիւնեաց, հաջորդ Գրիգորի. ներկա էր Դուինի 551 թվի ժողովին.—Օրբ. ժզ, իզ.—սեռ. Միհր-Արտաշրի՝ Գիրք Թղ. ժը. Օրբ. իա, իբ։

*ΜΙΘΡΑΥΣΤΗΣ, ար. անշուշտ իրանական անուն է. (Justi 217 ա մեկնում է իբր հպրս. *Miϑrawahišta «Միհրի միջոցով լավագույնը»)։—Gaugamela-ի ճակատամարտում հայոց բանակի զորավարն էր (Արրիան)։

*ՄԻՀՐԲԱՐԶԱՆ, ար. < իրան. Mihr-warzān անունից, որ նշանակում է «ըստ Միհրի գործող» (զնդ. varəzāna- «գործ»). տառադարձված է յն. Μιθροβουζάνης, Μιθροβαρζάνης (Justi 208—9). հմմտ. բառի վերջին մասի համար՝ Արիոբարզան (Թագավոր

կապադովկիայի), իսկ ամբողջի համար՝ պրս. Mihr-Berzin զորավար Բահրամ-Գուրի (Շահն. հտ. 5, էջ 540). Միհրբարզան՝ պարսիկ մոգ Բաբելոնի են։ Justi 209 իրարից տարբերում է Μιθροβαρζάνης և Μιθροβουζάνης, վերջինիս միացնելով Մեռուժան անունը։ Նաև Marquart, Հայ բդեաշխք, էջ 30 Μιθροβουζάνης ձևը համարում է նույն ընդ Մեռուժան:

— 1. Միհրբարզան, որդի Զարեհ թագավորի Ծոփաց. երբ Արտաշէսը հաղթեց Զարեհին և վանեց նրան իր երկրից (Ն. Ք. 163), Միհրբարզանը փախավ Կապադովկիա և Արիարաթ թագավորի օգնությամբ իր երկրին տէր դարձավ.—Լէօ Ա. 388, Դիոդ. Սիկիլ.—Զամչ. Ա. 207 համարում է Խորենացու Մորփիւղիկէսի հետ նույն, որ մերժում է Գրգշ. Քնն. Պատմ. Ա. 238։

— 2. Միհրբարզան զորավար Տիգրան Մեծի. ուղարկվեց Լուկուլլոսի դեմ, բայց հաղթվեց և սպանվեց (Ն. Ք. 69).—Գրգշ. Քնն. Պատմ. Բ. 142, Լէօ Ա. 407, Մանանդ. Տիգրան Բ. 101։

*ՄԻՀՐԴԱՏ, ար. < պհլ. Mihrdāt (գրված Mitrdāt) անունից, որ բուն նշանակում է «Միհր աստուծու տվածը կամ ստեղծածը»։ Տառադարձված է արամ. Miϑradāta, հուն. Μιθραδάτης, Μιθριδάτης, լտ. Mithridates, Meherdates. փոխառությամբ վրաց. Միրդատ (օր. Միրդատ թագավոր Վրաց՝ Մխ. այրիվ. 22)։ Պրս. դարձել է Mīlāδ, որից և Mīlādgird քաղաքը (Հոէում)> ասոր. Mhldgrd (Հիւբշ. 54, Justi 209 բ—213 բ)։ Պարթև թագավորներից հայտնի են Միհրդատ Ա (Արշակ Զ) 171—138 Ն. Ք., Միհրդատ Բ (Արշակ Թ) 123—88 Ն. Ք., Միհրդատ Գ (Արշակ ԺԳ) 57—54 Ն. Ք., Միհրդատ Դ (Արշակ ԺԴ) 12—9 Ն. Ք., Միհրդատ Ե (Արշակ Ի) 49—50 Յ. Ք., Միհրդատ Զ (Արշակ ԻԶ) 116? Յ. Ք։ Ամենից ավելի նշանավոր է Մեծն Միհրդատ թագավոր Պոնտացոց (դաշնակից Մեծն Տիգրանի), որի անունը դարձել է նաև հասարակ անուն։ Այսպես ֆրանս. mithridate «դեղթափ, անդեղայ, հակաթույն», vendeur de miihridate «փողոցներում սուտ դեղեր ծախող շառլատան», mithridatisme կամ mithridatisation «փոքրաքանակ թունավորումներով անձը թունավորումից անվտանգ դարձնելը»։ Մեր մեջ այս անունը հին ժամանակ սովորական չէր, բայց անցյալ դարում գործածական դարձավ, որից և Միհրդատեան ազգանունը։—Պոլսում հնչվում է ռմկ. Միրթատ:

— 1. Միհրդատ թագավոր Փոքր-Հայքի, դաշնակից էր Պոնտոսի Փառնակ թագավորին, որ իշխել է Ն. Ք. 190—169 թ.—Մանանդյան՝ Տիգրան Բ. 20։

— 2. Միհրդատ, նշանավոր իշխան հայ, ժամանակակից Արտաւազդի՝ որդւոյ Արտաշէսի, 3841 թ.—Չամչեան, Ա. 207 (ըստ Պողիւբիոսի)։

— 3. Միհրդատ որդի Միհրդատի և եղբայր Փարսման թագավորի Վրաց. Տիբերիոսի հրամանով կարգվեց թագավոր Հայոց։ Եկավ Արտաշատ, նենգությամբ սպանել տվեց Արշակ թագավորին և Վրաց բանակի օգնությամբ խլեց գահը (35 թ)։ Պարթևները հարձակվեցին նրա վրա. տեղի ունեցան մեծ պատերազմներ մի կողմից Վրաց, Աղվանից և Սարմատացոց միացյալ բանակի և մյուս կողմից Պարթևաց միջև։ Պարթևները հաղթվեցին։ Կալիգուլա գահազուրկ արեց Միհրդատին (37 թ), բայց Կլավդիոս վերահաստատեց նրան (41—45 թ)։ Փարսմանի որդին Հռադամիստ եկավ Հայաստան և խաբեությամբ սպանելով նրան՝ խլեց Հայոց գահը։—Չամչ. Ա. 300, Գրգշ. Քնն. պատմ. Բ. 200—205, 208—211, Լէօ Ա. 154—8։

— 4. Միհրդատ, որդի Պերոզ Արծրունու, որ 1350 թվին գաղթել էր Սեբաստիայից Ակն. իրանով է սկսվում Ակնայ Պեռեան տոհմը, որ ապա դարձավ Տատեան ամիրայական տոհմը։—Ազգապ. 3440։

*ՄԻՀՐԻԱՐ, ար. < պրս. Mihriyār անունից, որ բուն նշանակում է «Միհրի բարեկամը»։ Այս անունով հայտնի է Զրադաշտի մոր առաջին ամուսինը (Justi 208 ա)։ Հիշատակված է մի անգամ Միհրիար և մի անգամ էլ Մեհրիար գրչությամբ 1595 թ. (միևնույն անձն է, Ձեռ. Վասպ. 744, 746)։ Ըստ Ալիշան, Հին հաւ. 430 (գրում է Մեհրիար) նոր ժամանակի անուն է։

*ՄԻՀՐԻԲԱՆ, իգ. < պրս. mihribān «ողորմած, գթած, սիրող» բառից, որ Պարսից մեջ էլ իբրև անձնանուն գործածական է (Justi 208 ա)։ Բուն ծագումը Միհր աստուծու անունից է։ Գործածված է մեր մեջ ԺԵ—ԺԸ դարերում։

— 1. Մեխրաբան, ազգական բրուտ Ստեփաննոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 371։

— 2. Մեհրուբան, հանգուցյալ կին Յակոբ քահանայի Նետարենց Արծկեցու, որ օրինակել է մի Աւետարան, Արծկէում 1464 թ.—Նոտարք 219 > Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 121։

— Ուշ ժամանակի հիշատակություններ են Մեհրուբան 1533 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 717), Մեյրուբան 1578 թ. (Ձեռ. Վասպ. 12), Մեհրիպան 1653 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 1037), Մեհ-

րաքան 1785 *թ. (Արարատ 224), անթվական է* Մերիքան *(Ձեռ. Վասպ. 582)։*

**ՄԻՀՐՇԱՊՈՒՀ, ար. < պրս.* Mihr-šāpūr *անունից, որ տես* Մերշապուհ։

— Միհրշապուհ *մարզպետ. մասնակցեց Վարդանանց պատերազմին 451 թ.—Փարպ. լթ. (գրված է այսպես. «մինջոցի գնդին կարգէր գլխաւոր զտէրն Արծրունեաց, և զմարզպետն Միհրշապուհ՝ հանդերձ իշխանաւն Արշարունեաց Արշաւրաւ»։ Որովհետև Միհրշապուհ մարզպետը այլուր հիշված չէ, և որովհետև Ներշապուհ Արծրունին շատ անգամ այս ձևով էլ է հիշված, ուստի կարծում եմ որ այս էլ նույն անձն է և պետք է կարդալ՝ «զտէրն Արծրունեաց և զմարզպետն՝ Միհրշապուհ...»)։*

**ՄԻՀՐՈՒ, ար. < պրս.* Mihrōi *բանտապահ ոմն (Շահն.),* Mihrūye *արաբ կուսակալ Տաբարիստանի (801 թ),* Mihrū *զորավար Սուլթան Մահմուդ Ղազնևիի (1004 թ) են* (Justi *206)։ Այս* Mihrōi *անունը ըստ Հիւբշ. 54* Մեհրուժան, Միհր-Ներսեհ *և նման անունների փաղաքշական ձևն է։ (Ըստ Գ Դ կարդացվում է* mahrōy *և նշանակում է «լուսնադեմ». տրվում է գեղեցիկներին իբրև վերադիր և ծագում է* mah *«լուսին» և* rōy *«դեմք» բառերից։ Այս մեկնությունը ճիշտ չէ։ Կարելի չէ համեմատել նաև* Mihr-rōi *«Միհրադէմ, Միհրի դեմքն ունեցող», որովհետև պրս.* روی rūy *բառի պհլ. ձևն է* rōd (Horn § *636)։*

— Միհրու *Դիմաքսեան, որին Վրկանի մարզպան Սմբատ Բագրատունին († «617 թ») իր տան կառավարիչ էր նշանակել.— տես.* Միհրուի՝ *Սեբ. իե։*

*† ՄԻՆ, իգ. < հյ.* մին *«միակ, մի հատիկ» բառից. գործածված է միայն մի անգամ՝*

— Մին *(տես.* Մընին *ձևով), քույր Յովհաննէս եպիսկոպոսի, որ Խիզանում, գրիչ Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 503։*

— *Ունինք դարձյալ հիշատակված տես.* Մինին՝ *1648 թ. (Ձեռ. Վասպ. 911), 1666 թ. (անդ 926), բայց սրանք ոչ թե* Մին *ձևից են, այլ* Մինա *անունից, որ տես տակը։*

**ՄԻՆԱ (կամ* Մինայ), *իգ. < պրս.* مینا mīnā *«մանրանկարչություն» բառից. իբրև անձնանուն գործածված է մեր մեջ՝ սկսած ԺԳ դարից և մինչև այժմ էլ գործածական է Ղարաբաղում։*

— 1. Մինայ, *կին Մագուստի, շինել է մի շատ փոքրիկ մատուռ (հազիւ 3 հոգի պարունակող)՝ Ղուլալի գյուղի մոտ,*

*Մանուչարի գյուղում (այժմ ավերակ), 1231 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 498։*

— 2. Մինա *տիկին, կին Աստուածատուրի և մայր Մարտիրոսի, որ Տփղիսում, Թաչատուր սարկավագին գրել ավեց մի Աւետարան, 1304 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 488։*

— 3. Մինայ *խաթուն, կին Ապուքանի. երկուսով կալվածներ են նվիրել Գանձասարի վանքին 1311 թ.—Շահխաթ. Բ. 376։*

— 4. Մինայ *տիկին, կին Կոստանդի և մայր Յովհաննէս քահանա գրչի, Շիկրակ 1313 թ.—յիշատ.* ИАН *1911, էջ 1301։*

— 5. Մինայ *խաթուն, դուստր Հասան-Ջալալ-Դոլա (№ 41) մեծ իշխանի Խաչենոյ († «1261 թ»), կինն է իշխանաց իշխան Տարսայիճի Օրբելեանց († «1290 թ»), որ էր որդի Լիպարիտի Օրբելեանց։ (Տարսայիճը ամուսնացավ Մինայի հետ իր առաջին մահմեդական կնոջ՝ Արուզ խաթունի կենդանության ժամանակ. ուստի և Մինան համարվում է նրա երկրորդ կինը և խորթ մայրն է Ստեփաննոս Օրբելիան պատմագրի)։ Իր ամուսնու հետ միասին շինել են Ըղերձի Ս. Աստուածածին եկեղեցին, որ և կալվածներով պայծառել են իբրև լուսագին Տաթևի, 1272 թ. (Արձ. Շահխաթ. Բ. 364, որից շատ ավելի նոր, բայց տխմար արտագրությունն ունի Լալայեանց, Ազգագր. հանդ. Գ. 165)։ Շինել են նաև մի դարպաս Եղեգիսում, 1274 թ. (Սիսական 151)։ Այստեղ քանդակված են Տարսայիճի և Մինայի պատկերները. «այրն սպերճազգեաց, մանեկաւոր և թագակիր բազմեալ ի գահոյս. կինն գանգրահեր և պաճուճազգեստ և խոյրակիր, աջ զգօտւով ածեալ, զձախն ի վերայ ծնկանն ունելով»։ (Քանդակը գտնելուց հետո նորից հողի տակ թաղել են, որպեսզի այլադենները չխորտակեն)։ Մինայի անունով անթվական արձանագրություններ կան Ցախացքար (Սիսական 154), Նորավանք (անդ 203), Խաթրավանք (Շահխաթ. Բ. 362—3, Արցախ 195)։ Մինայի աղջիկն է Ասփա (№ 3), որ շինեց Խաթրավանքի եկեղեցին և կամուրջը Թարթառ գետի վրա (երկու անթվական արձ. Շահխաթ. Բ. 362, 363 և Արցախ 194, 196, ուր Ասփան իր մորը կոչում է «Թագազարմ մօրն իմոյ Մինայ խաթունին»)։ Թաղված է Նորավանքում, ուր ննջում է իր անթվական տապանը այս արձանագրությամբ. «Թագազարմ արքայուհին է Մինայ խաթունն դուստր մեծ կողմնակալին Աղուանից Ջալալին» (Սիսական 192)։ —Օրբ. կե. Ձեռ. Դաղեան, Բ. 30 ա (հիշում է 1314 թ)։*

— 6. Մինայ *կրոնավորուհի, դուստր Պօղոսի և քույր Մխիթար գրչի, որ Եկեղեաց գավառի Երկայնի վանքում օրինակեց Հին Կտակարանը 1327 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 160։*

— 7. Մինախաթուն, *քույր Ծերունի Թանգեր տիկնոջ, որ ստացավ այն Ավետարանը, որ գրեց Յովհաննէս գրիչը՝ Կիլիկիա 1327 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 397։*

— 8. Մինայ, *կին Ալեքսի և մայր Բաւուն միաբանակյացի, որ գրել տվեց մի Ավետարան. 1330 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770։*

— 9. Մինայ, *մորաքույր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։*

— 10. Մինախաթուն *կին Սիրունի՝ հորեղբոր Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում ստացավ մի Ավետարան, 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 613։*

— 11. Մինա, *դուստր Գանձիի և քույր Գրիգոր (№ 495) քահանայի, որ Տէրաւագ գրչին գրել տվեց մի Ավետարան և Ճաշոց, Երուսաղէմ 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118 ա։*

— 12. Մինայ *(հոգով Մինէն), դուստր Վարդանի, կին Մովսէսի՝ քեռավն Թադէոս քահանայի (№ 56), որ Մոկաց Ծպատայ վանքում գրել տվեց Ճառընտիրը 1413 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 269, 273, Ձեռ. Վասպ. 294 (վերջինը մեծ ուշադրությամբ! գրում է* Մինաս!)

— 13. Մինայ, *կին Յակոբի և մայր Յոհանէս քահանայի և Մարտիրոս քահանայի. առաջինը գրիչ, որ օրինակել է Ավետարանը Մոկաց Կաղթանց գյուղում, 1409 թ. և մի Ավետարան էլ Ջերմաձորի Ակոռոյ վանքում, 1417 թ. իսկ երկրորդը վաղամեռիկ էր եղել այս երկու թվերի միջև։—Ձեռ. Վասպ. 294, 303։*

— 14. Մինա *Թագուհի (այսպես կոչված), կին Ստեփանոս քահանա գրչի, որ Յովհաննէս քահանայի համար օրինակեց Ճառընտիրը Ոշտունեաց Տայշող գյուղում. այդ միջոցին Մինան էլ «սպասաւորէր մեզ ի մարմնաւոր պիտոյից», 1419 թ.—Նոտարք 60։*

— 15. Մինայ, *կին տանուտեր Թաթարբէկի, որ Պսակ գըրչին Նարեկ գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 325։*

— 16. Մինայ, *կի՞ն Սիմէոնի. օրինակել տվին Ավետարանը Յովհաննէս գրչին, Խաչրոց գյուղում, 1425 թ.—Ձեռ. Սևան. 9 ա։*

— 17. Մինախաթուն, *կին Սուլթանշահի և մայր Սարգիս Ծաղկողոսի, որ Կոթիփորոյ Ընկուզագոմ վանքում օրինակեց մի Յայսմաւուրք 1427 թ.—Նոտարք 84։*

— 18. Մինայ, *կին Սամուէլ քահանայի և մայր Վարդան աբեղա գրչի, որ Խոսրովայ վանքում օրինակեց մի Աւետարան 1430 թ.—Նոտարք 94, Ձեռ. Վասպ. 359։*

— 19. Մինայ, *կին Առոմի և մայր դպրին Ամիրզայի, որ Սպարկերտի Կեղեսու գիւղից էր և հաւատքի համար նահատակուեց 18 տարեկան հասակում, 1432 թ.—Նոտարք 98։*

— 20. Մինայ, *կին Սահակ քահանայի և մայր Դաւիթ աբեղայի, որ Ներսէս քահանայի համար օրինակեց մի Ճաշոց, Սեբաստիա 1438 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 244։*

— 21. Մինայ, *կին Ստեփաննոս քահանայի և մայր Կարապետ քահանայի, Յովհաննէս քահանայի և Մելքիսէթի. առաջինը գրիչ էր և օրինակել է Աւետարանը Վանում, 1418 թ. (Նոտարք 57, Ձեռ. Վասպ. 309), մի ուրիշը 1421 թ. (Ձեռ. Վասպ. 341), երրորդը 1435 թ. (անդ 369), չորրորդը 1437 թ. (անդ 376) և հինգերորդը 1451 թ. (անդ 412)։ Վերջապես արտագրել է Յովհաննէս տանուտիրոջ համար մի Ճառընտիր 1453 թվից քիչ առաջ.—Հրտր. Ագաթ. 1909 թ. յոջ. էջ ծ։*

— 22. Մինախաթուն, *կին Յովհաննէսի և մայր Սարգիս կրոնաւորի, որ Երուսաղէմում օրինակեց Գանձարանը՝ 1457 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 166 բ։*

— 23. Մինայխաթուն, *կին Ստեփանոս քահանայի և մայր Գրիգոր քահանայի, որ կազմեց ու ծաղկեց Յովհաննէս քահանայի Աւետարանը՝ Տայշող գիւղում, 1469 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 259։*

— 24. Մինայ *անտես, որի անունով մի համառօտ հիշատակութիւն կա Զմշկածագի Ագրակ գիւղին մօտիկ Կարմիր վանքի խորանի վրա, 1471 թ.—Թորոս աղբ. Բ. 116։*

— 25. Մինայ *կին Ումեկ քահանայի և մայր Աւետիք քահանայի (№ 93), որ Բարսեղ քահանայից գրել տվեց մի Աւետարան 1480 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 68 բ։*

— *Ուշ ժամանակի հիշատակութիւններ են* Մինա խաթուն *1547 թ. (Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 316),* Մինէ *1659 թ. (Երեմ. չէլ. օրագր. 331), Մինայ 1666 թ. (Ձեռ. Վասպ. 926) են։*

**ՄԻՆԱՆԱ, իգ. ըստ իս* Մինա *անունից սխալ գրչութիւն է։*

հիշատակված է Կեսարիայում, 1845 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. էջ 1572)։

*ՄԻՆԱՍ, ար. եգիպտական անուն է. (պետք չէ դնել հուն. Μηνᾶς, լտ. Menas անուններից, ոչ էլ հանել հուն. μηνάς «լուսին» բառից)։ Նշանավոր է Մինաս եգիպտացի հայրը, որի վկայաբանությունը մտած է Յայսմաւուրքի մեջ և որի անունով հայ և հույն եկեղեցիներ կան շինված։ Գործածված է մեր մեջ սկսած ԺԱ դարից և այժմ էլ սովորական է։ Օրանից է Մինասեան ազգանունը։ (Իսկ իգ. Մինաս տես Մինա կամ Մինասքեր)։

— 1. Մինաս եպիսկոպոս, ձեռնասուն Գրիգոր Վկայասէր կաթողիկոսի։ Երբ Վկայասէրը թարգմանեց Ոսկեբերանի վարքը հույն Թէոփեստոսի օգնությամբ (1100 թ), թարգմանությունը հանձնեց սույն Մինաս եպիսկոպոսին՝ լեզուն և ոճը հարթելու և գեղեցկացնելու համար։ Այս մասին Վկայասէրը գրել է իր հիշատակարանը գրքի վերջում (տես Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 14)։

— 2. Մինաս պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Աբրահամին և գահակալեց 1191—1205 թ. (ըստ Աղաւնունի). ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ»։—Սմբ. պատմ. 110։

— 3. Մինաս եպիսկոպոս, ուղարկվեց Յովհաննէս Մեծաբարոյ կաթողիկոսի կողմից Զաքարէ սպասալարի մոտ և գործակից եղավ նրան, ինչ ինչ կրոնական նորմուծությունների մեջ «1208 թ»։—Կիր. գ. Զամչ. Գ. 181—2։

— 4. Մինաս Երզնկացի, գրիչ. գրել է մի օրինակ Աստուածաշունչ՝ 1269 թ.—Խալաթեան, Գիրք Թաց. էջ դ։

— 5. Մինաս առաջնորդ Սկևռայ վանքի 1285 թ.—Զարբ. Թրգմ. 156, Սիսուան 106, Հայապ. 496, Տաթև 1927, 188։

— 6. Մինաս գրիչ. կոչում է իրեն «եռաթշուառ գրող, որոյ խորտակեալ է հոգւոյ ոսկերքս». Ակների անապատում օրինակել է Առակք Սողոմոնի, Գիրք Յոբայ, Գրիգոր Նիւսացու Բարոյք և Մեկնութիւն Ժողովողի, 1322 թ.—Թորոս աղբ. Բ 389, Սիսուան 535 ա։

— 7. Մինաս, ընթերցող, որդի Յովհաննէս գրչի, որ նրա համար օրինակեց Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 396 բ։

— 8. Մինաս քահանա, որին հիշում է Գրիգոր գրիչը իր օրինակած Ոսկեբերանի Մեկնութեան Մատթէի հիշատակարանում, Ակներ 1329 թ.—Սիսուան 155 բ։

— 9. Մինաս, կուսակրօն քահանայ, որդի Կարապետ քահանայի, եղբայր Կիրակոս սարկաւագի, որ օրինակեց Աւետարանը, Խրիմի Սուրխաթ քաղաքում, 1346 թ. — Դովրիկեան, Տրանսիլուանիոյ Հայոց մետրապոլիսը, էջ 331=ՀԱ 1895, 304 բ։

— 10. Մինաս քահանայ Դերջանցի. գրել տուեց Ստեփաննոս գրչին Կիւրղի Մեկնութիւն Եսայեայ, Սուրխաթ 1354 թ.—Զարբ. Թրգմ. 507—8։—Սրա հետ նոյն է անշուշտ Մինաս Դերջանցի տաղասաց ԺԴ դարու (Ցուցակք, Բ. 124)։

— 11. Մինաս, կուսակրօն քահանայ, ստացաւ Ներսէս Շնորհալու Գովեստ հրեշտակապետաց, որ գրել տուեց Կարապետ քահանան, 1355 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1118։

— 12. Մինաս կրօնաւոր, Յակոբ սարկաւագին օրինակել տուեց Կիւրղի Կոչումն Ընծայութեան գիրքը, շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28։

— 13. Մինաս, որդի Համազասպի և եղբայր Վարդանէս աբեղայի, որ Արծրունեաց գաւառի Կոճերաց վանքում օրինակեց Գանձարանը, 1412 թ.—Manus. brit. mus. 120 բ։

— 14. Մինաս, մերձաւոր Թադէոս քահանայի (№ 56), որ Մոկաց գաւառի Ծպատայ վանքում գրել է տուել մի Տօնական, 1413 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 273 ա։

— 15. Մինաս, հաւանաբար աթոռակից Երուսաղէմի Մարտիրոս պատրիարքի. հիշված է 1426 թ. (ըստ Աղաւնունի)։

— 16. Մինաս, քրոջ որդի Գրիգոր Արծկեցու, որ Մաղարդի վանքում օրինակեց Աւետարանը, երբ Մինասն էլ օգնում էր նրան թուղթ կոկելով, 1427 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 414։

— 17. Մինաս դպիր, հոգևոր որդի Մկրտիչ վարդապետի, որ Արճէշում գրել տուեց մի Մաշտոց, որ և Մինաս դպիրը ծաղկեց 1432 թ.—Նոտարք 101։

— 18. Մինաս եպիսկոպոս, առաջնորդ Բալուի, 1437 թ.—Manus. brit. mus. 30 բ։

— 19. Մինաս, որդի Մկրտիչ քահանայի և եղբայր Յովհաննէս տանուտէրի, որ Խլաթում գրել տուեց մի Աւետարան, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 20. Մինաս դպիր՝ գրիչ. Խարբերդում, Տղապարոն քահանայի համար օրինակեց մի Յայսմաւուրք, 1444 թ.—Manus. bibl. nat. էջ 101։

— 21. Մինաս խալիֆա, որդի Գորգիմելիքի, որ էր եղբայր

Թովմա պատմագիր Մեծոփեցու և իշխան Քաջբերունեաց. հիշված է 1445 թ.—Նոտարք 147։

— 22. Մինաս սարկավագ, Արաբկիրում օրինակել է մի Ճաշոց և նվիրել Սսի Կարապետ կաթողիկոսին, 1446 թ.—Ազգապ. հտ. Գ, էջ ճժզ:

— 23. Մինաս սարկավագ, 16 տետր գրեց այն Ցայսմավուրքից, որ Երզնկայում, Ս. Կիրակոս վանքի առաջնորդ Յովհաննէս վարդապետի նախաձեռնությամբ օրինակեցին մի խումբ գրիչներ, 1446 թ.—Նոտարք 149։

— 24. Մինաս նկարիչ. ծաղկել և նկարազարդել է մի Շարական 1447 թ.—Ձեռ. Բեռլինի 29 բ։ Նույն է արդյոք՝

— 25. Մինաս կրոնավոր, միաբան Մեծոփայ վանքի. ժամանակի նշանավոր ծաղկողներից էր. ծաղկել է Մեռելյարոյց Աւետարանը 1445 թ., ապա մի Աւետարան ևս, որ օրինակել էր Վարդան երեցը Վանում, 1452 թ.—Նոտարք 148, 169։

— 26. Մինաս գրիչ. Ամիրբէկի պատվերով օրինակեց Աւետարանը Արճէշի Գայթխս գյուղում, 1456 թ.—Նոտարք 183, Ձեռ. Վասպ. 423։

— 27. Մինաս եպիսկոպոս Քաջբերունեաց (Արծկէի և Բըզնունեաց), Արջոնից վանքում գրել տվեց մի Աւետարան Թումայ Մեծոփեցի գրչին (№ 152) և երկուսով միասին նվիրեցին Էջմիածնի Գրիգոր Ժ կաթողիկոսին 1449 թ. (Նոտարք 162)։ Հիշատակված է նաև 1450 թ. (Նոտարք 166=Ձեռ. Վասպ. 406), 1460 թ. (Նոտարք 196) և վերջին անգամ 1464 թ. իբրև արդեն հանգուցյալ (Նոտարք 219)։

— 28. Մինաս կրոնավոր, օգնական Ղազար գրչի, որ օրինակեց Շարակնոցը, 1464 թ. (տես Ղազար № 87).—Ձեռ. Սևան 47 բ։

— 29. Տէր Մինաս, նշանավոր նկարիչ. նկարազարդեց Սսում գրված մի հին Շարակնոց, 1465 թ. ծախիւք Յովհաննէս կրոնավորի, որ գնել էր նույն Շարակնոցը.—Rapport Belgique 145։

— 30. Մինաս, գրիչ. տանուտեր պարոն Յովհաննէսի և Մաթէոս վարդապետի խնդրանոք գրեց մի Ցայսմավուրք 1469 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 11։

— 31. Մինաս աբեղա, միաբան Աշոտաց երկրի Անկիւնոց վանքի, օգնում էր Թուղթ կոկելով Զաքարիա գրչին, որ օրինակում էր Աւետարանը 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588։

— 32. Մինաս *արեղա, եղբայր կամ որդի կոշկակար Մարտիրոսի, որ ստացավ մի Ավետարան 1471 թ.—Այրարատ 52։*

— 33. Մինաս *(սեռ.* Մինասէ! *ձեռվ) հիշված է մի խաչքարի արձանագրության մեջ Թէոդոսիա 1472 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 353։*

— 34. Տէր Մինաս, *հոգևոր հայր և ուսուցիչ Կարապետ քահանա գրչի, որ օրինակեց Ավետարանը Բերկրիում, 1473 թ.— Ձեռ. Վասպ. 468։*

— 35. Մինաս, *«դեռաբոյս» որդի տանուտեր Արապշահի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Ավետարան 1490 թ.—Ձեռ. Վասպ. 511։*

— 36. Մինաս *դպիր Թոխաթեցի, (կոչված նաև Լովանդացի կամ Լեհացի), տաղասաց. ծնվել է Փոքր-Ասիայի Եւդոկիա կամ Թոխաթ քաղաքում, 1510 թ։ Սովորեց գրչության արվեստը, մանրանկարչություն և կազմարարություն։ 30 տարեկան հասակում գաղթեց Կամենից, ուր նորոգեց մի Սաղմոսարան 1544 թ։ Ապա գնաց Սուչավա, ուր տեսավ հայոց դեմ եղած հալածանքը (1551 թ) և գրեց իր Ողբը։ Տևական բնակություն հաստատեց Լեմբերգում (1565 թ), ուր եղավ Գրիգոր Վանեցի արքեպիսկոպոսի պաշտոնական քարտուղարը։ Արտագրել է բազմաթիվ ձեռագրեր։ Մեռել է 1621/2 թ. 110 տարեկան հասակում։ Իր կենսագրությունը և տաղերը հրատարակեց Ակինեան, «Հինգ պանդուխտ տաղասացներ», Վիեննա 1921, էջ 57—114։ Տաղերից հիշելու արժանի են Գովասանք հերիսայի (գրված 1563 թ) և «Ողբ ի վերայ Օլախաց երկրի հայերուն», ուր պատմում է Ռումինների հանած սոսկալի հալածանքը հայոց դեմ 1551 թ. (հրտր. ՀԱ 1888, էջ 37—40 և 62—63)։ Տալիս ենք այստեղ Ողբի առաջին տունը.*

*Գոչեմ առ ձեզ ողբերգական,*
*Հառաչելով յոյժ լալական,*
*Քահանայք և աշխարհական,*
*Ծունր դրէք ամենեքեան։*

*—Տաշեան, Ցուց. 1116 գ, Կոստանեան, Նոր ժող. Ա. 50—56, Ալիշան, Կամենից, էջ 19—27։*

— 37. Մինաս *Կարնեցի, մականունը Բացախ, կաթուղիկոս Սսի. ըստ Ջամչ. Գ. 519՝ աշակերտն էր Ղուկաս Կեղեցու (Ազգ. ժառ. ՀԸ, 14)։ Ըստ Սիսուան 218 հաջորդել է Պետրոս Կարկառե-*

ցուն 1627 թ. և իրեն էլ հաջորդել է Սիմէոն Բ Սեբաստացի 1633 թ։ Իսկ ըստ Բաբկէն վրդ. Կիւլէսէրեանի գահակալել է 1621—1632 թ. երբ մեռել է (տես Ազգապ. Գ. էջ ճհ)։ Այս տեղեկությունը հաստատում է Ցկ. կր. 12, ըստ որի Մինասը գնացել էր իր հայրենի քաղաքը՝ Կարին, այնտեղից անցավ Երզընկա, ուր և մեռավ ՌՁԱ թ. և թաղվեց Ս. Սարգիս եկեղեցու դասնը՝ Ղուկաս վրդ. հեղեցու կողքին։ Մի հիշատակություն էլ կա Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 574, ըստ որի Մինասը մեռել է նույնպես 1632 թ. և ուր ասվում է «ի առաջնորդութեան տէր Մինաս կաթողիկոսին»։ Սրանից երևում է, որ Մինասը այլ ևս ոչ թէ կաթուղիկոս էր, այլ առաջնորդ Երզնկայի։—Տես Դրնդ. 333—5։

— 38. Մինաս քահանա Արաբկիրցի, առաջնորդն էր այն հայերի խմբի, որոնք Սուլթանի հրամանով Պոլսից ետ քշվեցին իրենց հայրենիքը 1609 թ։ Հույների ամբաստանությամբ իբրև պետական հանցավոր դատի ենթարկվեց և հավատքը չուրանալով գլխատմամբ նահատակվեց Պոլսում «1634 թ».—Ազգապ. 2431. Դրնդ. 149, Ճանիկեան՝ Հնութ. Ակնայ 98։

— 39. Մինաս վարպետ Ջուղայեցի. պատկերահան և ծաղկող. մանուկ հասակից գնաց Հալէպ և այնտեղ աշակերտելով մի ֆռանկ վարպետի, սովորեց արվեստը։ Դառնալով Նոր-Ջուղա, պարապում էր այս գործով։ Շահ-Սէֆի թագավորը իր աչքի առաջ րոպեապես նկարել տվեց իր ամենատգեղ մի նախարարի դեմքը և գնահատելով նրա արվեստը և ավելի գերազանց գտնելով քան իր պալատական նկարիչ Մահմադ Բէկը, նշանակեց նրան պետական թաշկառու։ Երեմեան (Նոր-Ջուղայի ԺԷ դարու յուշարձ. էջ 30) սրան է վերագրում Նոր-Ջուղայի Ամենափրկիչ վանքի հոյակապ նկարները, որոնց ուսումնասիրության է նվիրված սույն գիրքը (ԺԷ դար)։—Առաք. պատմ. 316—9, Տաշեան, Ցուց. 431, Ակնարկ էջ 30։

— 40. Մինաս արքեպիսկոպոս Ամթեցի, աշակերտ Մարկոս վարդապետ Ջնքուշցու. եղավ առաջնորդ Եւդոկիայի, ժամբիմ բարեկամ Եղիազար կաթուղիկոսի։ Գրել է տվել մի օրինակ Սամուէլ Անեցի 1687 թ. (տես հրատ. Սամ. անեց. էջ ծք) և Մխիթար Գօշի Դատաստանագիրքը 1688 թ. (տես Թորոս աղբ. Բ. 469)։ Ոմանք կարծում են թե «1687 թվին» եղել է պատրիարք Երուսաղէմի՝ խլելով աթոռը Յովհաննէս Պոլսեցի Նոխուդճի պատրիարքի ձեռքից կամ գահակից անելով նրան, մինչև որ Յովհաննէսը նորից հաջողում է խլել գահը «1691 թ» (Ազգապ.

2639)։ Ըստ Ձեռ. Վիեննա. Բ. 133 Յովհաննէս և Մինաս Երուսաղէմի պատրիարք են ՌՃԽԵ=1696 թվին։ Յովհ. Նախաբնէու մահից հետո, Գալուստ Կայծակի անվանական պատրիարքության ժամանակ տեղակալ էր «1697 թ» և երբ նա գահընկեց եղավ՝ Մինասը ընտրվեց պատրիարք «1698 թ»։ Չորս տարի հետո գահընկեց լինելով՝ Երուսաղէմի աթոռը միացվեց Պոլսի աթոռին, որի գահակալն էր այն ժամանակ Աւետիք պատրիարքը «1702 թ»։ Վերջինիս գահընկեցությամբ Մինասը նորից անցավ իր գահը «1703 թ», բայց մի տարուց մեռավ Կիպրոսում «1704 թ»։ Գրական գործերն են 1) Օրագրութիւն, որ պահվում է Երուսաղէմի Մատենադարանում (տես Նշանեանի հրատ. Երեմիա Չէլ. Օրագր. էջ ծզ), «որ թանկագին ու վավերական աղբիւր մըն է այդ ժամանակաշրջանի ազգային-եկեղեցական իրադարձութեանց» (անդ, էջ 4)։ Այս Օրագրությունը բռնում է 1680 թվից մինչև 1704. ընդարձակ բովանդակությունը տես Նշանեանի նույն հրատ. էջ ճլե—ճխդ: Ամթեցին շատ ճամբորդություններ է ունեցել ամբողջ Փոքր-Ասիա և Կովկաս, որոնց մասին խոսում է ընդարձակ, ուստի և իր գործը հիանալի աղբյուր է նաև տեղագրության համար։ 2) Ազգաբանութիւն Հայոց, թեև փոքր ու անարժեք աշխատություն, բայց գրականության պատմության մեջ ավելի է ծանոթ և տպագրված էլ է Վղրշպտ. 1870։ Բաղկացած է 144 փոքրագիր երեսներից, որից 51 երես Հայոց պատմության համառոտ ամփոփումն է Հայկից մինչև Լևոն Զ. իսկ մնացյալը Հռովմայեցոց, Բիւզանդեան և «Երկաթեայ կայսերաց» ժամանակագրությունը։ Այս աննշան աշխատությունը վերջանում է հեղինակի հետևյալ վերջաբանով. «Ի ՌՃԽԷ (=1698) թուին շարագրեցաւ կարգ թագաւորացս և անցք աշխարհիս Հայոց, ի Մինաս վարդապետէ Համթեցւոյ»։—Ջամչ. Գ. 733—747. Լէօ, Հայկ. տպագր. Ա. 285—8; Ազգապ. 2727, Թորոս աղբ. Բ. 458, 464, 468, 470, 484։—Նկարը տես Նշանեան, հրատ. Երեմ. չէլ. օրագր. ճծբ:

— 41. Մինաս Ճէրեան օղլու, տաղասաց ժէ դարում.—Տաշեան, Ցուց. 1117 ա։

— 42. Մինաս վարդապետ Տիգրանեան Խարբերդցի, Մեծարանց Ս. Յակոբ վանքի վանահայրն էր. Օրիի հետ գնաց Եւրոպա, հայոց ազատագրության գործը կազմակերպելու համար «1699 թ»։ Օրիի մահից հետո «1711—14 թ» գնաց Աստրախան, Մեծն Պետրոսի հետ կապ պահելու և բանակցությունները շարունակելու համար։ Այստեղ էլ վախճանվեց՝ լինելով իբր առաջին թե-

ժակալ առաջնորդ Աստրախանի և Ռուսաստանի Հայոց։—Լէօ Հայկ. տպագր. պատմ. Բ. 275, 286—9, 415։

— 43. Մինաս Ակնցի, նախապես առաջնորդ էր Մշոյ Ս. Կարապետ վանքի. Նալեանի հրաժարումից հետո ընտրվեց պատրիարք Պոլսի «1749—1751 թ». և երբ Ղազար Ջահկեցին վախճանվեց, ընտրվեց կաթողիկոս էջմիածնի «1751—1753 թ».—Մ. մաշտ. 336 բ. Ջամչ. Գ. 863—4, Ազգապ. 2977, Ջամբռ 32։

— 44. Մինաս արքեպիսկոպոս, միաբան էջմիածնի, նվիրակ էր Պոլսում։ Ունի Քարոզգիրք (տես Տաշեան, Ցուց. 1116 գ)։ Անշուշտ նույն է Մինաս եպս. Բագրևանդայ և բնիկ միաբան էջմիածնի և նուիրակ Պոլսոյ. հրատարակեց Իգնատիոսի Թուղթք, Պոլիս 1783, ինչպես հիշատակված է սույն հրատարակության մեջ, էջ 11։

ՄԻՆԱՍԹԵՐ, իգ. ծագումը անհայտ (թեր նշանակում է «թերթ», ինչ. Վարդիթեր)։ Մի անգամ հիշատակված է՝

— 1. Մինասթեր տիկին, կին Մանկտաւագ Մերչերի և մայր Աւագ քահանայի (տես Մերկեռ)։

— 2. Մինաս, կին Օղուլբալի, մայր տէր Ղազարի (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 760։

*ՄԻՆԵՎԵՐ, իգ. < արաբ. منور Munevver իգական անունից, որ գործածական է նաև Թուրքերի մոտ և նշանակում է բուն «լուսավոր»։ Հնից հիշատակված եմ գտնում Մինավար ձևով՝ 1327 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 462), Միներ ձևով (որ պետք է կարդալ Մինէր)՝ 1311 թվից ուշ գրված նույնպես անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Թաւր. 74 բ)։ Անցյալ դարում դեռ գործածական էր Պոլսում Միւնէվէր կամ Մինէր ձևով։

† ՄԻՆԻԿ, իգ. < հյ. մին «միակ, մի հատիկ, աննման» բառից, որ և անձնանուն է. սա էլ նույն անվան գգվականն է։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում, Ջեռ. Վասպ. 242—3 (երկիցս) Մինիկ ձևով։

MINKO, որ. լեհահայ անուն. հիշված է 1441 թ. այս անունով դատավոր մի Հայոց Լեհաստանի (REA 7, 71)։

† ՄԻՆՔՈՅՐ, իգ. < հյ. մին «միակ, մի հատիկ» + քոյր բառերից, իբր «միակ քույրը»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— Մինքոյր, դուստր Միրիշիկի, քույր Յովհաննէսի և Սաե-

փաննոս եպիսկոպոսների, Գօշեանց ցեղից. հիշված են 1475—8 թվերին։—Խաղբակեանք 234։

*ՄԻՇՆՕ (Michno), ար. լեհահայ անուն. հիշված եմ գըտնում նախ քան 1416 թ. այս անունով դատավոր ոմն Հայոց Լեհաստանի (REA 7, 71)։

*ՄԻՍԱՅԷԼ, ար. < եբր. מישאל Mīšāēl անվան հուն. Μισαήλ տառադարձությունից։ Այս անունով հայտնի է Դանիելին ընկերացող երեք մանուկներից մին, որ ապա Միսաք անունն ստացավ. Նաբուգոդոնոսորի հրամանով մյուսների հետ գցվեց հնոցը, ուսկից ապա ազատվեց (Դան. Ա. 6—7)։ Ծագումն անհայտ է ըստ Gesenius, բայց վերջի մասն է անշուշտ ēl «Աստված»։ Այս անունը քիչ է ավանդված մեր մեջ, բայց այժմ գործածական է Ղարաբաղում՝ Մուսայել ձևով (շփոթելով Մուսա անվան հետ). որից էլ Մուսայելեան ազգանունը։

— 1. Միսայէլ քահանա, կոչված Իմաստասէր. Մեծկողմանց Սամուէլ եպիսկոպոսը սրան հանձնեց իր եպիսկոպոսական պաշտոնը (876 թ) և ինքը նրանից ձեռնադրվեց ապօրինաբար Աղվանից կաթուղիկոս.—սեռ. Միսայելի՝ Կղկնտ. Գ. իբ (հիշված է 3 անգամ. Շահնազարեան հրատարակության մեջ միշտ Միսայելի, իսկ Էմինի մոտ 1 անգամ Միսայելի, 2 անգամ Իսմայելի)։— Անշուշտ սրանն է «Երանելոյն Միսայէլի Հայոց եպիսկոպոսի Մեծի կողմանցն և Քոստիփառնեայ նահանգին ի Ս. խաչն Քրիստոսի» գրվածքը, որ հրատ. Բազմ. 1911, էջ 258—265։ Այս ճառի և նրա հեղինակի մասին մի քննություն ունի Անդրիկեան, Բազմ. 1911, էջ 250։ Տես նաև Զարբ. Հին դպր. 785։—Ունինք նաև «Միսայէլի եպիսկոպոսի (Թուղթ), զոր գրեաց պատասխանի հարցմանն քաղկեդոնականաց» (Ձեռ. Դաշեան, Ա. 87 ա)։

— 2. Միսայէլ, վանական Շիկաքարի վանից. անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթուղիկոսը.—Անան. ապստ. 134 բ։

— 3. Միսայէլ որդի Սասնի. Թռում է իր տապանաքարը Գանձակի Սուլուկ գյուղի ավերակ վանքում, 1251 թ.—Բարխուտ. Արցախ 270։

— 4. Միսայէլ, ավագ որդի Սաղմոսիկ քահանայի. հիշված է Գետաշէնի Աւետարանում 1325—83 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 44, 61։

— 5. Միսայէլ Խոճայքեղցի. հավատքի համար նահատակ-

վել է Պոլսում, ուր ծնած է իր տապանաքարը 1551 թ.—Թոփ-գոմեան, Սսամ. պամ. Բ. 596։

— 6. Կրճատ Մուսիկ ձևը գտնում եմ 1678 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 2 բ)։

*ՄԻՍԱՔ, ար. < եբր. מִישַׁךְ Mēšak անվան հուն. Μισάχ տառադարձությունից։ Դանիէլ մարգարեի երեք մանուկներից Միսայէլի ասուրական անունն է (Դան. Ա. 6—7), որ ըստ Gesenius (էջ 83, 420 և 866) ձևափոխված է שֵׁשַׁךְ šēšak > հյ. թրգմ. Սիսակ (Երեմ. ԻԵ, 26 և ԾԱ 41) բառից և նշանակում է «Բաբելոն»։ Հնից ավանդված է միայն երեք անգամ. սրանից է Միսաքեան ազգանունը, որի հնագույն հիշատակությունը ունի Պէրպէրեան (Պատմ. հայոց, էջ 276) 1842 թվից։ Այժմ սովորական է Միսաք անունը, որ ոմանք սխալմամբ գրում են Միսակ՝ կարծելով թե կազմված է հյ. -ակ մասնիկով. մինչդեռ հուն. Μισάχ ձևի տառադարձությունն է։

— 1. Միսաք տես Մխիթար 1208։

— 2. Միսաք, որդի Աստուածատուր քահանայի, որ Լիմ անապատում, Թաչատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1301 թ.—Ձեռ. Վասպ. 141։

— 3. Միսաք հիշված է նաև 1661 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 28 ա)։

Միսիր տես Մսր:

ՄԻՍՐԱՃԱՆ, սեռն ու ծագումը անհայտ. հիշված է մի անգամ 1327 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 462)։

*ՄԻՍՔՕ, որ. լեհահայ անուն է, որ հիշված է քանիցս Լեհահայոց մեջ. հնագույնը 1587 թ. (տես Տաշեան, Ցուց. 277)։

*ՄԻՐ, ար. < արաբ. امير amīr բառից կրճատված պարսկական مير mīr «իշխան» ձևից։ Մեր մեջ հիշատակված է մի անգամ մի խաչքարի վրա 1290 թ. Շահան անուն անձի հետ (Ոսմքաաեանց, Գեղարքունի 548) և մի անգամ էլ անթվական մի արձանագրության մեջ (անդ 313)։

*ՄԻՐԱԶԻԶ, ար. < արաբ. պրս. مير mīr «իշխան»+արաբ. عزيز ʿazīz «ազիզ. նվիրական» բառերից։ Հիշատակված է միայն մեռ. Միրազըզին ձևով՝ երկու անգամ. 1608 թ. (Ձեռ. Վասպ. 255) և 1613 թ. (անդ 846)։

*ՄԻՐԱԹ, իգ. < արաբ. مرآت mirāt «հայելի» բառից։ Այս ձևով իբրև անձնանուն գործածված է մեր մեջ մի անգամ

— Միրաթ *խաթուն, կին Մենակեցի (ԺԴ դար կամ ավելի ուշ).—Ձեռ. Թաւր. 73 ա։*

*— Ավելի ուշ ունինք* Մրաթ *իգ. 1645 թ. (Ձեռ. Վասպ. 295) և* Միրէք *ար՝ թվականն անհայտ (անդ 618)։*

**ՄԻՐԱՂԱ*, *ար. < պրս.* مير mir *«իշխան»+*آقا aγa *բառերից։ Հիշատակված է մի անգամ ԺՁ դար (Ձեռ. Դաղեան, Ա. 12 բ) և մի անգամ էլ 1751 թ. սեռ.* Միրաղին *ձևով (Ձեռ. Նոր-Բայազ. 3 ա)։ Սրանից է* Միրաղեան *ազգանունը։* Միրաղա *անվան ամբողջական ձևն է* Ամիրաղա, *որ տես առանձին։*

**ՄԻՐԱՆ*, *ար. < պրս.* ميران Mīrān *անունից, որ բուն նշանակում է «իշխաններ» (Այսպիսի հոգնակի ձև ունին* Աղալար, Խանլար, Բէգլար *անունները)։ Այս անունով հայտնի են* Միրան *շահիարմէն, ամիրա Խլաթի և Մանազկերտի՝ ԺԲ դար (Ջամչ. Գ. 47) և մանավանդ* Միրանշահ *որդի Լենկթիմուրի, որ նշանակեց նրան կողմնակալ Ատրպատականի, Հայաստանի և Վրաստանի՝ 1401 թ. (Ջամչ. Գ. 428)։ Մեր մեջ գործածված է* Միրան *անունը ԺԳ—ԺՁ դարերում։ Տես նաև* Միրանշահ *և* Միրանդուխտ։

— 1. Միրան, *որդի Նուէրի, հիշվում է իբրև վկա Բեթեվանի արձանագրության մեջ, 1274 թ.* — Manus. brit. mus. *295 ա, Սիսական 232, Օրբ. տպ. Շահն. Բ. 164=տպ. 1910, էջ 418 (իսկ տպ. Մոսկ. 306 չունի)։*

— 2. Միրան, *եղբորորդի Թումայ կրոնավորի, որ Վասպուրականում, Վարդան արեղային գրել տվեց մի Աւետարան 1421 թ.—Ձեռ. Վասպ. 331։*

— Միրան *հիշված է 1534 թ. (Տաշեան, Ցուց. 434), ԺՁ դար (Ձեռ. Թաւր. 132 բ), անթվական (Ձեռ. Վասպ. 772)։*

Միրանգուլ *տես* Միրանգուլ:

**ՄԻՐԱՆԴՈՒԽՏ*, *իգ. < պրս.* ميران mīrān *«իշխաններ»+*دخت duxt *«դուստր» բառերից. ամբողջը նշանակում է «իշխանների դուստր»։ Հիշատակված է մեր մեջ* Միրանդուխ *ձևով՝ ԺԸ դար (Ձեռ. Թաւր. 18 բ) և* Միրանդող *ձևով (Ձեռ. Նոր-Բայազ. 31 բ)։—Նույն անունը գործածված է նաև վրաց մեջ* Միրանդուխտ *ձևով (դուստր Արչիլ Բ թագավորի).* Justi *216 ա հանում է* Միհրան *անունից. եթե այդ ճիշտ է, ուրեմն հմ.* Միհրանդուխտ *և վրաց.* Միրանդուխտ *կապ չունին իրար հետ։*

**ՄԻՐԱՆՇԱՀ*, *ար. < պրս.* ميرانشاه Mīrānšāh *անունից, որ բուն նշանակում է «իշխանաց թագավոր», որի հակադիրն է.*

Նախմիրան: *Այս անունով հայտնի են 1)* Միրանշահ՝ *որդի Լանկթամուրի և եղբայր Շահռուխի, կուսակալ Ատրպատականի, Հայաստանի և Վրաստանի. նշանակվեց 1401 թ. (Զամչ. Գ. 428). նստում էր Թաւրիզում. կոչվում է նաև Ամիր Միրանշահ Ջաղաթայի (տես Մեծոփ. 71,* Justi *207 ա, Ջեռ. Թաւր. 114 ա. կոչված է «յոյժ ողորմած և բարեբարոյ» Մեծոփ. 67, 69).—2)* Միրանշահ *որդի Ղազնեի սուլթան Իբրահիմի 1058—1099 թ.* (Justi *207 ա), 3) Սուլթան Բ Նասր-էդ-դին Մուհամմէդ Միրան-շահ՝ Շահի Արմէն 1128—1185 թ. Գործածված է մեր մեջ ԺԵ—ԺԸ դարերում.*

— 1. Միրանշայ, *ազգական Էդլշահի, որ ստացավ մի Ավետարան 1475 թ.—Ջեռ. Վասպ. 473.*

— *Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են* Միրանշա *1513 թ. (Օրբ. ժմ. յաւել. 46=Սիսական 34 ա),* Միրանշահ *1524 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 58=Սիսական 44),* Միրանշա *1524 թ. (Տեղեկ. գիտ. և արվ. Ինստիտ. № 2, էջ 215),* Միրանշահ *(սեռ. Միրանշին), ողեկից Օգոստինոս Բաջեցու՝ Եւրոպա համբորդության ժամանակ՝ 1609 թ. (Օգոստ. բաջ. 8), սեռ.* Միրանշին *1613 թ. (Ջեռ. Վասպ. 845),* Միրանշա *1655 թ. (Ջեռ. Նոր-Բայազ. 42 բ), հոգով՝* Միրանշէն *1701 թ. (Ջեռ. Վասպ. 1027).*

Միրասա *տես* Մուրասա:

**ՄԻՐԱՔ, ար. < պրս.* میرک mīrak *«իշխանիկ» բառից, որ* mīr *«իշխան» բառի գգվականն է. Հիշատակված է մեր մեջ ԺԴ դարից սկսած. սրանից է* Միրաքեան *ազգանունը, որ և Դերսիմի քրդերի մեջ ապրող հայկական մի քաջարի տոհմի անունն է.*

— 1. Միրաք, *որդի խոջա Աստուածատուրի, որ ազատեց մի Նարեկ Թուրքմանի գերությունից և նվիրեց Վարագի վանքին, 1425 թ.—Ջեռ. Դաշեան, Ա. 55 ա.*

— 2. Միրաք *խոջա, ստացավ մի Ավետարան, որ գրել էր Տեր քահանան 1311 թ. և իր ծախսով կազմել տվեց Յովսէփ աբեղային՝ Թաւրիզում, 1448 թ.—Ջեռ. Թաւր. 70 բ.*

— 3. Միրայք, *որդի Էդլշահի, որ ստացավ մի Ավետարան, 1475 թ.—Ջեռ. Վասպ. 473.*

— 4. Միրաք, *խոջա, Վանեցի, որդի տանուտեր Խդրշահի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան, 1484 թ.—Ջեռ. Վասպ. էջ 496.*

— 5. Միրաք, եղբայր Խաչատուրի և Զաքարէի, որոնք մի խաչքար են կանգնեցրել Տարում, իրենց եղբայրների հիշատակին 1484 թ.—Արցախ 406։

— 6. Միրաք Թաւրիզեցի. նոր վկա. քաղաքի հայոց առաջավորներից էր. բարեգործ մարդ. ինքն էր շինել Թաւրիզի եկեղեցին, որ Թուրքերը քանդել էին։ Մէհթի անունով նշանավոր մի Թուրք նախանձելով Միրաքին, պահանջեց որ մահմեդական դառնա. և երբ մերժում ստացավ, նահատակեց նրան իր խանութի առաջ «1486 մարտի 24», ավագ ուրբաթ օրը։ Առաջացավ մեծ խռովություն և պիտի սկսվեր քրիստոնեից կոտորած, եթե Եաղուբ փադշահը (որդի Ուզուն Հասանի) իր զորքով չմիջամտեր, Մեհթիին չգլխատեր և ամբոխը չցրեր։—Այրարատ 329, Ուղեգրութ. Ա. 213, Նոր վկայք 322—8, Ազգագ. 2215։

— 7. Միրաք անունը շարունակվում է ԺԶ և ԺԷ դարերում. վերջին անգամ հիշված է 1708 թ. (Ձեռ. Վասպ. 564)։

***ՄԻՐԲԱԳ**, ար. համարում եմ պրս. mīr և թրք. بابا baba բառերից։ Հիշված է մի անգամ 1655 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 42 բ)։

***ՄԻՐԶԱ**, ար. < պրս. میرزا mīrzā «իշխանածին, ազնվական, պարոն» բառից, որի ծագումը տես Ամիրզադէ։ Սրանից են նաև Միրզաբէգ, Միրզախան, Միրզալի, Միրզաջան անունները, որոնք տես առանձին։ Հնագույն հիշատակությունը ԺԴ դարից է և մինչև այժմ էլ կարելի է գտնել հետնյալ վայրերում։ Սրանից է Միրզայեան կամ Միրզոյեան ազգանունը (Կովկաս, Պարսկաստան)։

— 1. Միրզայ ամուսին (=կին!) Ամիրլոյսի, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ. այս թվին Միրզան արդեն մեռած էր.—Ձեռ. Ազուլ. (Արար. 1911, 850)։

— 2. Միրզա, աներ Ատոմի՝ եղբոր տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան 1435 թ.— Ձեռ. Վասպ. 369։

— 3. Միրզայ, որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրած Հոպակ գյուղում, 1460 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 569։

— 4. Միրզա եղբորորդի Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 5. Միրզա աղա, ամուսին Նարինխաթունի, որ նույն Խոնդքար տիկնոջ քույրն էր, 1490 թ.—անդ։

— Ավելի ուշ են Միրզա 1502 թ. (Սմբատեանց, Գեղար-

քունի 567, Սիսական 62), 1513 թ. (Օրբ. ժմ. յանել. 46=Սիսական 34 ա), և ուրիշ զանազան վկայություններ ԺԶ—ԺԷ դարերից։

*ՄԻՐԶԱԲԷԳ, ար. < պրս. میرزا mīrzā «իշխանածին»+թրք. بگ beg բառերից։ Հիշատակված է ԺԵ—ԺԸ դարերում. որից էլ Միրզաբեգյան ազգանունը։

— 1. Միրզաբէկ «դեռաբույս ծաղիկ որդին» Հալ-Ամիրադայի, որ Աղթամարի մեծ և փոքր տանուտերների խնդրանոք և Ոստանի թամղաջիների համաձայնությամբ, իր սեփական ծախսով գնացել է Փաթշահի դուռը և Ոստանի թամղան Աղթամարի Ս. Խաչ վանքի վրա է դարձրել, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 483։

— Ավելի ուշ հիշատակված են Միրզաբէկ 1559 թ? (Խաղբակեանք 249), 1570 ական թ. (Կրպտ. եպս.՝ Դոփեանք 187, 190), 1587 թ. (Bodleian 107)։

— 2. Մելիք Միրզա-բեգ Բ. որդի Մելիք Բաղիի. Վարանդայի մելիք Յուսէին Մելիք-Շահնազարեանի մահից հետո (1736 թ.) ստացավ իշխանությունը. իր հանդուգն անհնազանդությամբ գրգռեց Պարսից Նադիրշահ թագավորին, որ հրամայեց գլխատել նրան և նրա փոխարեն Վարանդայի մելիք նշանակեց Մելիք Յուսէինի որդի Մելիք-Յովսէփին.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 69։

*ՄԻՐԶԱԴ, ար. կրճատված Ամիրզադէ անունից, որ տես։ Մի անգամ գտնում եմ հիշատակված Միրզատ ձևով 1714 թ. (Սմբատեանց, Գեղարք. 485)։

*ՄԻՐԶԱԼԻ, ար. < պրս. Mirzali անունից, որ գործածական է այժմ էլ Պարսից մեջ և կազմված է میرزا mīrzā «իշխանածին»+علی ʿAlī անունից (բուն նշ. «բարձր»)։ Ալի անունը՝ իբրև զուտ իսլամական, շատ սակավ է գործածված մեր մեջ։ Միրզալի հիշված է մեր մեջ մի անգամ հետին անթվական մի ձեռագրում (Ձեռ. Թաւր. 5 ա), և մի անգամ էլ՝

— Միրզալի, որդի Դուրսունի, ստորագրում է իբրև վկա Գանձասարի կաթուղիկոսի և եպիսկոպոսի հետ միասին 1458 թ.—Շահխաթ. Բ. 244 > Նոտարք 188, Արցախ 187։

*ՄԻՐԶԱԽԱԹՈՒՆ, իգ. նույն Միրզա անունն է, որ թեև ընդհանրապես արական է, բայց կարող է լինել նաև իգ. ինչպես ցույց է տալիս Միրզա № 1 կին Ամիրլոյսի (1381 թ). իգականը զանազանելու համար ասել են նաև՝

— Միրզախաթուն, կին Գրիգորի և մայր մահտեսի Հնդուի, որի կյանքը տես առանձին, 1357 թ.—Ձեռ. Վասպ. 213։

*ՄԻՐԶԱԽԱՆ, ար. < պրս. میرزا mīrzā «իշխանածին»+خان xān բառերից՝ հիշատակված է ԺԷ—ԺԸ դարից. այսպես 1635 թ. (Bodleian 107), 1655 թ. (Արցախ 116), 1674 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 46 բ), 1694 թ. (Ձեռ. Սևան. 11 ա), 1694 թ. (Ձեռ. Վասպ. 998—9), 1724 թ. (Ձեռ. Թաւր. 41 բ)։ Սրանից է Միրզախանեան ազգանունը։

*ՄԻՐԶԱՄ, ար. < նույն Միրզա բառից թրք. m ստացական հոդով, իբր թե «իշխանս». համմտ. Գուլամ, Բէգում, Շահում, Աղամ։ Հիշված եմ գտնում 1708 թ. (Ձեռ. Դադեան, Ա. 45 ա, Սմբատեանց՝ Գեղարքունի 613)։

*ՄԻՐԶԱՊԱՐՈՆ, ար. < նույն Միրզա+հյ. պարոն բառերից, ինչպես ունինք Միրզաբէգ, Միրզախան։ Մի անգամ գտնում եմ հիշված ԺԴ դարում։

— Միրզապարոն, որդի Մուրադի, որ իր Խուանդ խաթուն կնոջ հետ գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1355 թ.—Ձեռ. Վասպ. 203։

*ՄԻՐԶԱՋԱՆ, ար. < նույն Միրզա+պրս. جان ǰān «հոգյակ» բառից։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերից. այսպես՝ 1549 թ. (Արձ. Արցախ 406), 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578), 1581 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 32 ա), 1583 թ. (Հայապ. 599), 1596 թ. (Ձեռ. Վասպ. 243), 1601 թ. (անդ 793, գրված Միրզաճան), անթվական (Սխական 74)։ Գործածական է նաև այժմ։ Սրանից է Միրզաջանեան ազգանունը։

*ՄԻՐԶԱՎԵԼԻ, ար. < Միրզա և Վէլի անուններից, որոնք տես առանձին։ Հիշված է մի անգամ 1738 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 14 բ)։

*ՄԻՐԶԵԿ, ար. < Միրզա անվան փաղաքշական ձևն է։ Հիշատակված է մի անգամ 1663 թ. (Ձեռ. Վասպ. 922)։

*ՄԻՐԻ, ար. համարում եմ կրճատված Միրիջան բառից, որի մի ուրիշ կրճատումն է Միրիկ (տես այս անունները առանձին)։ Թեև կա պրս. میری mīrī «արքունական, պետական» բառը, բայց հարմար չէ։ Միրի անունը գործածված եմ գտնում մեր մեջ մի անգամ ԺԷ դարում, սեռ. Միրու ձևով (Ջամբռ 274)։

*ՄԻՐԻԿ, ար. կրճատ և գգվական ձևն է Միրիջան անվան, որ տես։ Գործածվում էր անցյալ դարում Պոլսում։

*ՄԻՐԻՄԱՆ, ար. Թեև կարելի է մեկնել արաբ. میر mīr

«իշխան»+ایمان imān «հավատք» բառերից (իբրև հավատքի պետը), բայց այս բացատրությունը ճիշտ չի լինի. պետք է դնել պրս. میرمن mīr-i-man «տէր իմ, իշխանդ իմ», որ և համապատասխանում է Միրում ձևին (տես այս անունը)։ Հիշատակված է Միրիման ձևով 1627 թ. (Ջեռ. Ներս. 40 բ), Միրուման ձևով 1646 թ. (Ջեռ. Վիեննա. Ա. 722), կրճատ Միրման ձևով 1582 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռնոյի 44), 1669 թ. (Զքր. սարկ. Բ. 126>Նոր վկ. 488)։—Սրա շատ հին վկայությունն էլ կա Թ դարից. այն է Միրման ազվան, հայր Գարսամի, որ մեռավ 813 թ. (բայց սա կեղծիք է. տես Գարսամ)։ Կեղծիք է նաև Միրման, Գէորգ Գարսամեանի ցեղից, հայր Կիրակոսի, որ Աղվանքից գնաց Կիլիկիա, Լևոնի բանակում զինվորական դարձավ և ապա եղավ բերդավագ Ցահնոյ կամ Անւոյ, 1179 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռ. 201)։—Որանից է Միրիմանեան ազգանունը։

ՄԻՐԻՇԻԿ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Միրիշիկ, եղբայր Զումա Բ-ի, Գոօշեանց ցեղից. հայրն է Ցովհաննէս և Ստեփաննոս եպիսկոպոսների, հիշված 1475—8 թվերին։—Խաղբակեանք 234։

*ՄԻՐԻՋԱՆ, ար. < պրս. میرجان mīr-i-ǰān «իշխան հոգւոյ» ձևից. (հայրը կամ մայրը տվել է այս անունը որդուն, համարելով նրան իր հոգու տերը). հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերից և մինչև այժմ էլ կենդանի է։ Սրա կրճատ ձևն է Միրի և գգվականը Միրիկ, որոնք տես առանձին։ Միրիջան անունից է Միրիջանեան ազգանունը (Պոլիս)։

— 1. Միրիջան ոմն, որ ուրիշ ընկերների հետ միջնորդ եղավ Ս. Վարդան եկեղեցուն նվիրելու այն Աւետարանը, որ Թումայ անուն անձը գրել էր տվել Աղթամարում 1460 թ.—Ջեռ. Վասպ. 434։

— 2. Միրիջան, որդի Նորատունկի, որ գնի միջնորդ եղավ տանուտէր Էդիլշահի և Ցովհաննէս գրչի միջև, Արծկէ 1463 թ.—Ջեռ. Վիեննա. Ա. 621։

— 3. Միրիջան, ազգական Էդլշահի, որ ստացավ մի Աւետարան, 1475 թ.—Ջեռ. Վասպ. 473։

— 4. Միրիջան, որդի Թումայի և եղբայր խոջա Խդրշահի (№ 10), որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1484 թ.—Ջեռ. Վասպ. 496։

— 5. Միրիջան խոջա, որդի Աւետիսի. Աղթամարում Ցա-

կոր գլխին գրել տվեց մի Ավետարան 1493 թ.—Ձեռ. Վասպ. էջ 520։

*ՄԻՐԽԱՆ, ար. < պրս. میر mīr «իշխան»+خان xān համանիշներից. կրճատ ձևն է Ամիրխան անվան, ինչպես Միրզադ և Միրզա՝ Ամիրզադէ անվան։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի արձանագրության մեջ (Սմբատեանց՝ Գեղարքունի 569)։

ՄԻՐՀԱԻՐԱ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ անթվական, բայց ուշ շրջանի մի արձանագրության մեջ (Սմբատեանց՝ Գեղարքունի 630)։—Հմմտ. հաջորդը։

ՄԻՐՀԱԻՐԻԿ, ար. ծագումն ինձ անհայտ. հմմտ. նախորդը։

— Միրհաւրիկ, հազարապետ Վաչագան Գ թագավորի Աղվանից (Զ դար)։—Կանոն. 197, Կղկնտ. Ա. իզ.—հրատ. Շահն. Միրհարիկ, Տաշեան, Ցուց. 654 Հմիր հաւրիկ։

*ՄԻՐՄԻՐ, ար. < պրս. میرمیر mīr-i-mīr, ավելի լավ՝ میرمیران mīr-i-mīrān «իշխանաց իշխան»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարում։

— Միրմիր, «դեսպոտոյս ծաղիկն և գեղեցկատեսիլ մանուկն» Գարոնլոյսի՝ մերձավորի Սարգիս աբեղայի, որ օրինակեց Ոսկեփորիկը՝ Գլաձոր 1317 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 858, Սիսական 133։

*ՄԻՐՈՒՄ, ար. < պրս. میر mīr «իշխան»+թրք. um ստացական հոդով, իբր «իշխանս»։ Համապատասխանում է Միրիման անվան, որ տես։ Հիշատակված է 1504 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 31 բ), 1667 թ. (Ձեռ. Ն-Բայազ. 3 բ), 1669 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 28 բ), ԺԸ դարի առաջին քառորդից մի Արձ. Գալաթու Ս. Հրեշտակապետ եկեղեցում (Բանասէր 1899, էջ 127), մի ուրիշ անթվական հիշատակարան (Bodleian 148)։ Սրանից է Միրումեանց ազգանունը (Կովկաս)։

*ՄԻՐՎԵԼԻ, ար.<կազմված Միր+Վելի անուններից. հմմտ. Միրզավելի.—մի անգամ հիշված է 1611 թ. (Ձեռ. Ազգուլ.—Արրտ. 1911, 222)։

*ՄԻՐՓԱՇԱ, սեռն անհայտ. < պրս. میر mīr+թրք. paša «իշխան» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1558 թ. (Ձեռ. Ա. 578 Մերփաշա ձևով)։

ՄԻՐՕ, ար. կրճատված է Միր անունից. հիշատակված է 1744 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 249, 250)։

*ՄԻՒՌՈՆ, ար. < հուն. Μύρων անունից, որ ծագում է μύρον «անուշահոտություն» (քրիստոնեական շրջանում «մեռոն»,

օրհնյալ եղ») բառից։ Այս անունով հայտնի են նախաքրիստոնեական շրջանից Միւռոն հույն արձանագործը, քրիստոնեական շրջանից Միւռոն Սքանչելագործ եպս. Կրետէի, Նահատակ, որի վկայաբանությունը մտած է Յայսմաւուրքի մեջ։ Հնուց քիչ է ավանդված. անցյալ դարում կար նաև Պոլսում (շատ սակավ)։

— 1. Միւռոն եպիսկոպոս Երուսաղեմի. հավանաբար աթոռակից էր Յովհաննէս Ե պատրիարքի. նստել է 1436—7 թ. (Աղաւնունի)։

— 2. Միւզոն երեց, հիշված է 1668 թ. (Ձեռ. Արգ. յովհ. 179). երևի պետք է կարդալ Միւռոն։

— 3. Միւռոն Վասիլևսկի, հայազգի հարյուրապետ Ռուսաստանում 1700 թ.—Ազգապ. 2691։

— 4. Միրոն, հիշատակված է այս ձևով՝ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 238)։

*ՄԻՒՐՈՊԷ, իգ. համարվում է միւռոն բառից կազմված հունարեն մի անուն, որ ինձ անհայտ է։ Հնում կա հիշված Միւրոպէ նահատակուհի Քիոս կղզուց՝ Դեկոս կայսեր ժամանակ։ Անցել է Յայսմաւուրքի մեջ՝ մայիս 14—15։ Մեր մեջ իբրև անձնանուն հնապես չի հիշատակված. բայց թերևս այն անունն է, որ անցյալ դարում գործածվում էր Պոլսում Մէօրիւպէ ձևով (տես Մերոպէ)։

*ՄԻՔԱՅԷԼ, ար. < եբր. מיכאל Mīkāēl անվան հուն. Μιχαήλ տառադարձությունից։ Եբր. բառը նույն է ասուր. Mannu-kī-ili անվան հետ, և առաջանում է מי mī «ով», כ kə «որպես»+אל ēl «Աստուած» բառերից. նշանակում է «Ո՞վ է որպես Աստուած» (Gesenius 419)։ Հմմտ. «Միքայէլ, որպէս զԱստուած կամ հզօր» (Տաթև. հարց. 144)։ Այս անունով հայտնի են Ս. Գրքում զանազան մասնավոր անձեր. բայց նշանավոր է Միքայէլ հրեշտակապետը։ Փոխառությամբ անցել է բազմաթիվ լեզուների. ինչ. լտ. գերմ. Michael, անգլ. Michael, Mick, Mike, ֆրանս. Michel, իտալ. Michele, ռուս. Михаил, փղքշ. Миша: Հայերենում ուշ ժամանակ, համաձայն Բիւզանդական արտասանության, դարձել է Միխայէլ, Միխայլ (հնագույն հիշատակությունը 1124 թվից. տես հաջորդ համարները և Միխայէլ առանձին ձևը)։ Կան նաև Մուքայէլ 1621 թ. Manus. brit. mus. 23 ա), Մուխայէլ 1569 թ. (Բարխուտ. Աղվանից երկ. 10). Մխո կրճատ ձևով կա անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 635)։ Արդի ձևերն են Միքայէլ, Մուքէլ, Մուքի, Գլ. փղքշ. Մքիկ.

Կովկասում՝ ռուսական ձևով՝ Միխայիլ, Միշա, Միշիկ, եվրոպական ձևով՝ Միշէլ, Լեհահայոց մեջ էլ Միքլաշ, Միքօշ:

— 1. Միքայէլ եպիսկոպոս Ջարեհաւանից. ժամանակակից Ներսէս Բ («548—557 թ») կաթուղիկոսի, որ գրեց իր Մեղադրութեան թուղթը հայոց եպիսկոպոսներին, որոնց մեջ նաև այս Միքայէլին և հանդիմանեց նրանց այն բանի համար, որ չեն լսել իր հրավերը և չեն եկել Նեստորականների դեմ գումարվելիք ժողովին.—տես. Միքայէլի՝ Գիրք թղ. ժզ.

— 2. Միքայէլ վաներեց Աղցից. ստորագրում է այն Ջեռնարկին, որ տվին հունահայոց կրոնավորները Աբրահամ կաթուղիկոսին և մերժեցին Քաղկեդոնական դավանանքը «607 թ».—Գիրք թղ. խ. Ուխտ. Բ. լէ.

— 3. Միքայէլ եպիսկոպոս Բագրևանդայ, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Աղպապ. 839.

— 4. Միքայէլ կաթուղիկոս Աղուանից. էր «սարկաւագապետ ի Շաքւոյ». գահակալեց 707—742 թ. իբրև հաջորդ Սիմէոնի.—Կղկնտ. Գ. ժբ, ժգ, իդ. Կիր. ը. հրտր. Սամ. անեց. 286. Մխ. այրիվ. 24. Հայապ. 384.—տես. Միքայէլի Կղկնտ. Գ. ժբ—ժգ.

— 5. Տէր Միքայէլ, որի տապանաքարը գտնվում է Դարբանդի գերեզմանատան մեջ 751 թ. (այս թվականը անշուշտ սխալ է).—Բարխուտ. Աղուանից երկ. էջ 109—110.

— 6. Միքայէլ պատանյակ Գուգարացի. չուրանալով հավատքը՝ նահատակվեց Յուսուփ ոստիկանի գործակալների ձեռքով՝ Աշոտ Բ թագավորի («915—929 թ») ժամանակ.—Յհ. կթղ. ծա. Ասող. Գ. ե. Յայսմ. ապր. 16.

— 7. Միքայէլ Քուրդիկ, ապստամբ Վարդի ծովակալն էր և հաղթվեց 978 թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 577.

— 8. Միքայէլ, որդի Վարազվաչէ Ա-ի՝ եղբոր Թոռնիկ Բ վանականի. Տայոց Թոռնիկեանց տոհմից. միաբան է դարձել Աթոսի վրացական վանքում. իր ձեռքից մնում է մի վրացերէն հիշատակարան 981 թվից.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 69.

— 9. Միքայէլ իշխան, իր Մարիամ անուն կնոջ հետ գաղթեց Անտիոք. իր որդին է Մակար հայկազն († 1012), որ լատին եկեղեցու սրբերից է.—Ջամչ. Բ. 858.

— 10. Միքայէլ իշխան, որդի Գրիգոր Տարօնացւոյ. սիրելի դարձավ Ալեքս կայսեր, որ նրան կնութեան տալով իր քույր Մարիամ Կոմնենոս իշխանուհուն, փեսայացրեց իրեն. Ապա պատ-

*վեց նրան պռոտոսեբաստոս, պռոտովեստիարոս և պանհիպեր-սեբաստոս տիտղոսներով (ԺԱ դար)։—Չամչ. Գ. 10։*

— 11. **Միխայլ**, *որդի Կոստանդեայ. իր հայրենի հարկառ բերդը ազատեց Թուրքերից 1124 թ.—Ուռհ. էջ 359, Չամչ. Գ. 51—52։*

— 12. **Միքայէլ** *քահանա, Թարգմանեց ասորերենից Ս. Սարգսի վկայաբանությունը 1158 թ.—Ձեռ. հարին. 87։*

— 13. **Միխայլ**, *իշխան Բերդկան. ներկա եղավ Լևոն Բ-ի թագավորության հանդեսին «1199 թ».—Սիսուան 471 ա։*

— 14. **Միխայլ**, *պարոն, տեր Մանովշատի և Ալարոյ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 112։*

— 15. **Միքայէլ** *վարդապետ. այսպես է կոչվում Մխիթար Գոշը՝ իր Դատաստանագրքի լեհահայ թաթարերեն թարգմանության մեջ։—Տես Տաշեան, Ցուց. 943 և 1117 բ։*

— 16. **Միքայէլ** *եպիսկոպոս Անտիոքի և առաջնորդ Ցեսուանց ուխտի. աշակերտն էր Վարդան Այգեկցու, որին գրել է հինգ հարցմունք. Վարդանն էլ գրել է նրանց ընդարձակ պատասխանը 1229 թ.—Տաշեան, Ժղվ. առ. Վարդանայ 58—63։*

— 17. **Միքայէլ** *քահանա, գրիչ. օրինակել է Աստուածաշունչը 1253 թ.—Ձեռ. հարին. 10։*

— 18. **Միքայէլ** *բժիշկ, որդի Ահարոն բժշկի. վաղամեռիկ է եղել՝ ԺԳ դարի առաջին կեսին.—Ակինեան, ՀԱ 1931, 708։*

— 19. **Միքայէլ** *Այասցի 1276 թ.—տես Մոնսոր։*

— 20. **Միքայէլ** *կրոնավոր. ունի «Հարցմունք, առակք և խրատք», որի մի օրինակը գտնվում է Վիեննայի Մխիթարեանց մատենադարանում Ձեռ. № 364 Հաւաքածոյի մեջ, որ գրված է 1295 թ. ըստ այսմ հեղինակը ամենաուշը ԺԳ դարից է։—Տաշեան, Ցուց. 815 և 1117 գ։*

— 21. **Միքայէլ** *քահանա Այասի Ս. Փրկիչ եկեղեցու (Լատինաց), 1316 թ.—Ալիշան, Հայ-Վենետ. 71։*

— 22. **Մքայէլ** *վարդապետ, որի անունով մի խաչքար է կանգնեցրած Խարբերդի Խուլէ վանքի գերեզմանատանում 1324 թ.—Թորոս աղբ. Բ. 354։*

— 23. **Միքայէլ** *եղբայր, բնակվում էր Վենետիկում 1344 թ.—Հայ-Վենետ. 158։*

— 24. **Միքայէլ** *վարդապետ, առաջնորդ Ջորայ վանքի. իր 36 աբեղաներով միասին նահատակվեց Սեբաստիոյ Բուրհա-*

նէդդին ամիրայի ձեռքով «1387 Թ?».—Զամչ. Գ. 432, Ազգապ. 1977.

— 25. Միքայել եպիսկոպոս և առաջնորդ Խարբերդի Ս. Գևորգ կամ Խուլէ վանքի. իբր թե 1255 թվին Մելքոն իշխանից ստացել է Շնորհալու ձեռոնի շիշը և ուրիշ մասունքներ, որոնք թաղել է նույն վանքում, մագաղաթի վկայականով միասին։ Պեղման ժամանակ սրանք հայտնվել են 1839 Թ. (Թորոս աղբ. Բ. 352—3, Տաշեան՝ Ցուց. 1040, Ալիշան՝ Շնորհ. 455)։ Այս բոլորը կեղծիք և խարդախություն է։ Ստույգն այն է, ինչ որ պատմում է նույն վանքի առաջնորդ Չմշկածագցի Գևորգ եպիսկոպոսը (№ 109) իր արտագրած Ավետարանի հիշատակարանում (1443 Թ)։ Ըստ իր պատմության, այս Միքայէլ եպիսկոպոսը և Խուլէ վանքի միաբանները Լենկթիմուրի ահից սրբությունները թաքցրել են Ծովք գյուղում և Խարդիշարի, Ս. Կարապետի և Կարմիր վանքերում։ Այս դեպքը տեղի ունեցած պիտի լինի 1396 Թ. (տես Զամչ. Գ. 427)։ Այնուհետև Միքայէլ եպիսկոպոսը մեռնում է։ Նոր առաջնորդ Գևորգ եպիսկոպոսը նորոգում է Խուլէ վանքը և գրում է «ամենայն անցք որք ընդ իս և ընդ աթոռս անցին, յիշատակագրութիւն Միքայէլ արքեպիսկոպոսին և միւս առաջնորդաց, որք յառաջ քան զմեզ»։ Այս բոլորը տես Թորոս աղբ. Բ. 349—350։ Իսկ երբ Նոտարք 131 վանքի նորոգությունը դնում է 1255 թվին, այդ թիվը սխալմամբ վերցնում է Միքայէլ եպիսկոպոսի կեղծ վկայականից։

— 26. Միքայել Ա. կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Սահակ Ա-ի և նախորդ Ղևոնդ Ա-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 27. Միքայել, որդի Յակոբ քահանայի և եղբայր Յովսէփ կրոնավորի, որ Գիւրդի անապատում օրինակեց Ավետարանը 1432 Թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 47։

— 28. Տեր Միքայել, հիշված է իր ընկերների հետ իբրև միաբան մի վանքի, որի անունը չէ հիշատակված, 1456 Թ.—Ձեռ. Վասպ. 425։

— 29. Միքայել քահանա, գրիչ. օրինակել է Արծկէում մի Ավետարան Վարդան գրակալի համար 1451 Թ. և մի Ավետարան էլ Ստեփաննոս միակեցի համար 1460 Թ.—Նոտարք 167 և 196։

— 30. Միքայել, ազգական Էգլշահի, որ ստացավ մի Ավետարան, 1475 Թ.—Ձեռ. Վասպ. 473։

— 31. Միքաէլ, *նորաքեռորդի Սադաղա Ծերենցի, որ Աղթամարում, Թումայ գրչին գրել տվեց մի Աւետարան 1476 թ.— Ձեռ. Վասպ. 480—1։*

— 32. Միքայէլ *տաղասաց. իր երգերից է «Ի պլպուլէս հասցէ վարդենոյս բարև, անա եղև գարուն...»։ Ձեռագիրը օրինակված է 1495 թ, ուստի հեղինակն էլ այս թվից առաջ է։— Ձեռ. Հալէպի, Ա. 242։*

— 33. Մուքայէլ, *մերձավոր արենակից Հաբիբ տիկնոջ (№ 4), որ գրել տվեց մի Աւետարան, Աղբակի Երնկանի գյուղում, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 527։*

— 34. Միքայէլ *Բ. կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Թադէոս Դ-ի և նախորդ Սարգիս Ե-ի (ԺԴ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։*

— 35. Միքայէլ *քահանա Իլովցի. Պօղոս առաքյալի 14 թղթերը հայերենից թարգմանեց թաթարերենի, 1562 թ. հայատառ ձեռագիրը գտնվում է այժմ Վենետիկում.—Ձեռ. Վենետ. Ա. 835—8։*

— 36. Միքայէլ *Սեբաստացի, կաթողիկոս էջմիածնի «1567—1576 թ». (բայց հիշված է իբր կաթողիկոս $15^{6}6$ թ. Ձեռ. Թաւր. 132 բ). հաջորդեց Ստեփաննոս Ե Սալմաստեցուն, որի աթոռակիցն էր՝ սկսած 1545 թվից։ Գնաց Սեբաստիա, ուր «1562 թվին» ժողով գումարեց և Հռոմ դեսպան ուղարկեց Աբգար դպիր Եւդոկիացուն, մի կողմից տպագրության գործին ծանոթանալու և մյուս կողմից խնդրելու պապի օգնությունը Հայոց վիճակի բարելավման համար։ «1563 թ» դարձավ էջմիածին և գրեց Պիոս Դ պապին (1559—1565 թ.) և իր խնդիրքը կրկնեց։ Բայց ոչ Պիոս Դ և ոչ էլ Պիոս Ե (1565—1572 թ) չկարողացան որևէ բան անել։ Միքայէլը իրեն աթոռակից էր նշանակել Բարսեղ Գ, Գրիգոր ԺԲ և Ստեփաննոս Զ.—Աղթամ. 10, Առաք. պատմ. 337—8, Ազգապ. 2263—8. Կամենից 228—231 (տես Լեհահայոց դիմումը վասն մերձաւոր ամուսնութեան)։ Իր մի թուղթը գրած պապին՝ տես Պալճեան, էջ 151։*

— 37. Միքայէլ *որդի Բարդամ գրչի. թվի թե Սեբաստացի էր. ունի «Պատմութիւն տաղիւ չափեալ ռամնաւոր նահատակութեան Դաւթի Սեբաստացւոյ (և Գասպար Կռուանի)» († 1677 թ), որ հրատարակված է Նոր վկ. 504—519. իր մասին տես անդ. էջ 516։*

— 38. Միքայէլ *սարկավագ բժիշկ, ԺԷ դար.*—Manus. brit. mus. *314 բ. Թորգոմեան, Ներբ. 27։*

— 39. Միքայէլ *քահանա Խարբերդցի, պատրիարք Պոլսի «1706 թ», Երբ ֆրանսիացի Ֆէրիօլի դավաճանությամբ Ավետիք պատրիարքը աքսորվեց, նրան հաջորդ նշանակվեց Մարտիրոս Գ Բիւրհանճի։ Սուլթանը լսելով որ Ֆէրիօլը Ավետիքին Եվրոպա է փախցրել, հալածանք հանեց կաթոլիկների դեմ, Մարտիրոսին բանտարկեց և Ավետիքին ի բացակայության պատրիարք հայտարարելով՝ այս Միքայէլին նրան փոխանորդ կարգեց։ Նրա-տավ միայն 7 ամիս և իրեն հաջորդեց Սահակ Ապուչեխցի։*

— 40. Միքայէլ *քահանա Բրգնիկցի. բնիկ Խարբերդցի էր. բայց մեծացել և քահանա էր դարձել Սեբաստիոյ Բրգնիկ գյուղում։ Կասկածվելով կաթոլիկական խռովության մեջ կախաղանի դա-տապարտվեց և հավատքը չուրանալով նահատակվեց Սեբաստիա-յում 1707 թ։ Իր վրա մի տաղ ունի Ստեփաննոս Եւդոկիացի (տես Տաշեան, Ցուց. 468, 986)։—Ջամչ. Գ. 755։*

— 41. Միքայէլ, *որդի Գրիգորի. նոր նահատակ. հավատքը չուրանալով՝ գլխատվեց 1739 թ. դամբանը գտնվում է Պոլսում, Պերայի գերեզմանատանում.—Թորգոմեան,* REA *4, 217, ուր կա նաև դամբանի նկարը։*

— 42. Միքայէլ *Ա. Աջապահեան, կաթուղիկոս Սսոյ. եղբայր և հաջորդ Ղուկաս կաթուղիկոսի, որի աթոռակիցն էր «1737 թվից»։ Հալէպում, կաթոլիկները շատ կաշառք տալով Օսման փաշային և այն ժամանակի ժողլային, խլել էին հայոց Ս. Աստուածածին եկեղեցին և մեծ խռովություն գցել ժողովուրդի մեջ։ Զորս տարի այսպես մնալուց հետո, 1737 թվին, Միքայէլ կաթուղիկոսը գնաց Պոլիս և Սուլթանից ֆէրման հանելով, իր եղբոր՝ Գաբրիէլ վար-դապետի ձեռքով ուղարկեց Հալէպ և եկեղեցին ետ խլեց (Ջեռ. Հալէպի, Ա. 128)։ Ամբողջ Թուրքիոյ կաթուղիկոս լինելու տեն-չով վառված՝ գնաց Պոլիս «1749 թ», բայց մերժվելով, գիշերանց փախավ Սիս։ «1751 թվին» երկրորդ անգամ գնաց Պոլիս նույն նպատակով, բայց վռնտվեց արքունի հրովարտակով և այն պայ-մանով, որ մեկ էլ աթոռից չհեռանա։ Ըստ Ազգապ. 2941, 2997 պահակալել է «1738—1758 թ» և այս թվին էլ մեռել է։ Մնում է իր տապանը Սսում 1758 թվից (Սիսուան 217)։*

— 43. Միքայէլ *Պետրոս Գ. Գասպարեան, կաթուղիկոս կա-թոլիկ հայոց, հաջորդեց Յակոբ Պետրոս Բ-ին և նստավ «1753—80 թ»։—Ազգապ. 3014։*

— 44. Միքայէլ Գ. Վանեցի, կաթուղիկոս Աղթամարի «1796—1810 թ». ըստ Հաւաքարան 64՝ հաջորդ Յովհաննէս Սպարկերտցու և նախորդ Կարապետ Շատախցու։ Նշանավոր երաժիշտ էր.—Ակինեան, Գաւազանագիրք 167։

— 45. Միքայէլ Բ Սսեցի Աջպահեան, կաթուղիկոս Սսի, հաջորդեց Յովհաննէս Է-ին և գահակալեց «1846—53 թ»։ Իր գեղծումներին և անկարգության չափ դնելու համար, Պոլսում ժողով գումարվեց «1851 թ» և առանձին կանոնադրություն մշակվելով՝ Սիս ուղարկվեց։ Կաթուղիկոսը ընդունեց, բայց ավելի վատ սկսեց վարվել։ Շուտով մահը վրա հասավ «1853 թ»։—Ազգապ. 3958։

*ՄԻՔԻԱ, ար. < եբր. מיכה Mīkā կամ מיכיה Mīkāyā անվան հուն. Μιχαίας տառադարձությունից։ Ծագումը հմմտ. Միքայէլ. նշանակում է «Ո՞վ է որպէս Աստուած»։ Այս անունով հայտնի է 12 փոքր մարգարեներից մին։ Գործածական անուն չէ մեր մեջ. գիտենք միայն՝

— 1. Միքէ երեց, անդամ Աղուէնի ժողովի, ժամանակակից Վաչագան Գ Թագաւորի Աղուանից (Ձ դար).—Կանոն. 192, Կղկնտ. Ա. իզ. (Շահնազարեանի հրատարակության մեջ այս բառը միանալով նախորդ բառի հետ՝ դարձել է Պարմիդէ, իսկ Տաշեան՝ Ցուց. 653 բ Պրապմիդէ)։

— 2. Միքէ, առաջնորդ Վարագայ վանքի, հաջորդեց Փիլիպպոսին, շուրջ 540 թ.—Հայապ. 232։

*ՄԼԵՀ, ար. < արաբ. مليح malīh «սիրուն, գեղեցիկ» բառից։ Գործածվել է մեր մեջ Թ դարից սկսած։

— 1. Մլեհ Վարաժնունի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ», որի ձեռքով նահատակվեց «853 թ»։—Արծր. Գ. դ, ը։

— 2. Մլեհ Ճախամանեցի, եերդապահ Վանի. Գրիգոր-Դերենիկ Գ ուղարկեց նրան Հերի ամիրայի մոտ՝ լուր տալու համար իր այցելության մասին («886 թ»)։ Ջէր ուզում հանձնել Վանը Դերենիկի որդի Գագիկին, որ Սմբատ Ա Թագավորի կողմից նշանակված էր տեր Վասպուրականի։—Սուտ-Շապհ. 68, 75։

— 3. Μελίας, հիլիկեան թեմում հաստատված ազատներից մեկը՝ Թ դարի վերջում (տես Կոստ. Պերփ. De Thematibus, էջ 32—35). մեր Մլեհ ձևն է ըստ Marquart, Entstehung, էջ 9։

— 4. Մլեհ (արաբ. Մելիհ), հայազգի զորավար հունաց Ռոմանոս Ա Լեկապենոս (920—944 թ) կայսեր. գործեց մեծ

քաջություններ Արաբների դեմ պատերազմներում (Տոմաշէկ, Սասուն, էջ 35)։ Յովհաննէս Գուրգէնի հետ միասին տիրեցին Մելիտինէի գավառին 928 թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 482։—Սրա հետ նույն պետք է դնել՝

— 5. Մլեհ (արաբ. Մալիհ), հայ, Տօրոսի լեռնանցքի պետն էր. հույների հետ միասին կռվեց Արաբների դեմ Մալաթիայում և ուրիշ տեղեր, հիջրեթի 316 թ. (=926) ըստ Իբն-էլ-Աթիր արաբ պատմագրի.—Խալաթ. Արաբ. մատ. 143։

— 6. Մլեհ Գէորգ, ընկեր Աշոտ հսկայի (№ 32). Բուլղարական պատերազմում Աշոտը սպանվելով՝ Մլեհը գնաց Եփրատացոց կողմերը, արաբներից խլեց Լիկանդոն և Ծամանդի բերդերը և կայսրից էլ ստանալով Մամեստիա քաղաքը, կազմեց առանձին թեմ՝ Բիւզանդական իշխանության տակ։ Քառասուն տարուց ավելի ծառայեց քաջությամբ և մեռավ շուրջ 933 թ։ Մընում է իր հունարէն կնիքը՝ հետևյալ վերատառությամբ. «Գէորգ Մլեհ պրոտոսպաթար և արքունի զորապետ, տեսուչ Մամեստիայ, Անազարբայ և Ծամանդեայ».—Սիսուան 531, Տէր Սահակեան՝ Հայ կայսերք, Բ. 577։

— 7. Մլեհ իշխան Կիլիկիոյ. Լևոն Ա-ի որդին էր։ Երբ Լևոնը գերի տարվեց Պոլիս (1136), Մլեհը իր եղբոր՝ Ստեփանէի հետ Հալէպի Նուրէդդին սուլթանի ծառայության մտավ։ Երբ Լևոնը մեռավ բանտում և որդին՝ Թորոս Բ փախավ Կիլիկիա (1145), Մլեհը և Ստեփանէն միացան նրա հետ և ապստամբություն բարձրացնելով՝ Կիլիկիային տէր դարձան։ Երբ հույները Ստեփանէին բռնեցին և կաթսայի մեջ խաշելով սպանեցին (1163), Թորոս և Մլեհ ընկան հույների վրա և ի վրեժ իրենց եղբոր՝ 10,000 հոգի կոտորեցին։ Մի ժամանակ Մլեհը կաթոլիկ դարձավ և Տաճարական ասպետների կարգը մտավ։ Ապա քրիստոնեությունը թողեց և Թափառական Թուրքմէնների գլուխն անցավ։ Դավաճանություն կազմելով իր եղբոր՝ Թորոսի դեմ, բռնվեց և Կիլիկիայից դուրս արվեց։ Մլեհը գնաց Նուրէդդինի մոտ և նորից նրա ծառայության մտավ։ Թորոսի մահից հետո, սուլթանից զորք առնելով Կիլիկիա արշավեց, հայոց գահին տիրելու համար։ Հայերը միացան Անտիոքի իշխանի և Երուսաղէմի թագավորի հետ և նրան Կիլիկիայից դուրս արին։ Սուլթանը կոխեց դաշնակիցների երկիրը և Մլեհը բռնագրավեց գահը (1169)։ Իր իշխանության միջոցին նա դաշնակից և բարեկամ դարձավ ինչպես Հալէպի, նույնպես և Իկոնիոյ Թուրք սուլթանի

հետ՝ ընդդեմ Եվրոպացիների (Տաճարականների, Խաչակիրների) և հունաց։ Այսպեսով Կիլիկիան թշնամիներից բոլորովին զերծ մնաց։ Բայց իր իշխանները նրա անգութ գործերի պատճառով սպանեցին նրան Սսում «1175 թ»։—Սամ. անեց. 130, 135, 136, 138. Սմբ. պատմ. 98—101, 103, 136. Մխ. այրիվ. 19. Միխ. աս. իգ (=իե), իէ (=իզ). Հեթ. ժմկ. Վահր. ոտ. 197, 198, 210, 211. Պատմ. կիլ. 204—5, 207—8, Պատմ. ռուբ. 217—8. Պատմ. լմբ. 238. Մին. համգ. 40, 41.—Մլեհ՝ Նհպտք. 103.—սեռ. Մլեհի՝ Սմբ. պատմ. 102. Պատմ. ռուբ. 215. Պատմ. լմբ. 238. Մին. համգ. 41.—Մլեհայ՝ Օրբ. ժմ. 22.—Հայապ. 345, Շնորհ. և պրգյ. 313, 318—9, 324—7, Սիսուան 56—57.—Դարդել 12 կոչում է Մէլէք։

— 8. Մլեհ, փեսա Գրիգոր եպիսկոպոսի, որ էր եղբորորդի Ներսէս Շնորհալու (տես Գրիգոր № 217).—Միխ. աս. իէ (=իզ)։

— 9. Մլեհ Խանականցի, ազգական Ներսէս վարդապետ Սասնեցու, նվիրատու ձեռագրի, 1332 թ.—Հայապ. 546։

— 10. Մլախ, կին՝ Առաքելի և մայր Խարայէլի, որի կինը՝ Թուրվանդա խաթուն գրել տվեց մի Ավետարան, 1448 թ.—Ջեռ. Վասպ. 404։

ՄԼՈՒՆ, ար. անսովոր անուն է, որ մի անգամ հիշված է 1719—24 թ. (Այրարատ 305)։—Կա արաբ. ملعون mal'ūn «անիծյալ», բայց կարելի չէ դնել նրանից։

*ՄԼՈՒՔ կամ ՄՈՒԼՈՒՔ, իգ. < արաբ. ملوك mulūk «թագավորներ» բառից։ Որովհետև այսպիսի մի իմաստ անհարմար է իգական անուն դառնալու, ուստի պետք է ենթադրել թե կրճատված է մի ուրիշ ձևից. ինչ. «թագավորների պսակ, ակունք ևն»։ Նույնը կա նաև Մուլուքան ձևով, որ արաբ. mulūk ձևի պարսկական հոգնակին է, այն է ملوكان mulūkān. հմմտ. տակը № 2 Մուլուքան, որ նաև գրված է Մուլուք։ Վերջապես կա Մլքան, որ նույնի կրճատ ձևն է. գործածված է ԺԳ—ԺԶ դարերում։

— 1. Մլքան, կին Վասակի, Հաղբատի եկեղեցու շինության համար նվիրել է 30 դահեկան և 20 գոմեշ։—(Արձ. անթվական, որ սակայն պիտի լինի 1243—57 թվերից).—Երզընկեանց, Հնախ. տեղագր. 55։

— 2. Մուլուքան, կին Յովհաննէս արքաւունի. միասին կալվածներ են նվիրել Հոռոմոսի վանքին, 1253 թ.—Արձ. Շիրակ

26 (արձանագրության սկզբում գրված է Մուլուքան, վերջում Մուլուք)։

— 3. Մուլուք, հիշված է Բագնայրի մի արձանագրության մեջ, որ թեև անթվական է, բայց պետք է լինի 1260 ական թվերից (Շիրակ 122)։

— 4. Մլքան, ժերձավոր Մարտիրոս քահանայի, որ գնեց մի հին Ավետարան, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164։

— 5. Մլուք, դուստր Խասսայի, որ ստացավ մի հին Ավետարան, 1441 թ.—Manus. brit. mus. 3 բ։

— 6. Մլքան խաթուն, դուստր Աստուածատուրի, կին Ամիրդոլի (№ 1), հիշված է 1450—55 թվերին, իբ ամուսնու հետ։ —Նոտարք 164, 178։

— 7. Մլքան խաթուն, կին Վարդանի և մայր տանուտեր Հայրապետի (№ 108), որ ազատեց գերի ընկած մի Ավետարան և նվիրեց Գտարկի վանքին, 1499 թ.—Ձեռ. Վասպ. 318։

— Մի անգամ ևս հիշված է Մլքան անունը 1585 թ.—Ձեռ. Վասպ. 699։

ՄԼՔԵՐ, իգ. Թվի թե հոգնակի ձևն է Մելքէ անվան, որ տես վերը։ Նման հոգնակի անուններ են Թաջեր, Ծամեր, Վարդեր, Խաչեր ևն։ Մի անգամ հիշատակված է անթվական, բայց հին մի արձանագրության մեջ՝

— Մլքեր, կին Խաչերեսի, որ տներ է նվիրել Բագնայրի վանքին։—Արձ. Շիրակ 118։

*ՄԼՔԷ, իգ. < արաբ. ملكة malika (Նոր հնչմամբ melike) «թագուհի» բառից։ Այս անունով հայտնի է Malika դուստր Թահր թագավորի Արաբիոյ և կին Շապուհ Բ թագավորի Պարսից (Շահն. հտ. 5, էջ 342)։ Ավելին տես Մելքէ։

— 1. Մլքէ թագուհի, դուստր Սմբատ Ա թագավորի եղբայր Շապուհ իշխանի, երկրորդ կին Գագիկ Ա Արծրունի թագավորի։ Սրանից ունինք մի նշանավոր ձեռագիր Ավետարան, որ գրված և ընծայված է Վարագայ վանքին 1018 թ։ Այժմ գտնվում է Վենետիկի Մխիթարեանց վանքը (Հայապ. 80, Ձեռ. Վենետ. Ա. 385)։ Ըստ Սարգիսեանի քննության (Ձեռ. Վենետ. Ա. 385—9) ձեռագիրը գրել է տվել Գագիկ Արծրունին, երբ դեռ իշխան էր (851 թ)։ Գագիկի մահից հետո ձեռագիրը կողոպտել են Վարագայ վանքից, Մլքէ թագուհին ազատել է և նվիրել վանքին 922 թ։ Այսպեսով Մլքէ թագուհու Ավետարանը դառնում է մեր ամենահին ձեռագիրը, 36 տարով ավելի հին քան Լազարեան ճե-

մարանի Աւետարանը, որ գրված է 887 թ։ Կա առանձին ուսումնասիրություն Մլքէ թագուհու Աւետարանի մասին (Պոտուրեան, Զարդանկարք Աւետարանի Մլքէ թագուհւոյ), Վենետիկ 1902։

— 2. Մլքի, դուստր Հռոմկլայու Թորոս քահանայի, որ ստացավ մի հին Աւետարան, 1262 թ. հիշված է նաև 1256 թ. եղբոր թոռն է Կոստանդին Ա կաթողիկոսի.—Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 83, Թորոս աղբ. Ա. 188, Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա. Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 333)։

— 3. Մլքէ անունը հիշված է մի անգամ ևս Մուլքէ ձևով, 1590 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 341)։

†ՄԽԻԹԱՐ, ար. < հյ. մխիթար «սփոփանք, մխիթարանք» բառից, իբրև թրգմ. եբր. נחום Naxum > հուն. Ναούμ > հյ. Նաւում անվան, որ բուն նշանակում է «մխիթարիչ» (Gesenius 498 ա), ըստ Մառ ЗВО 17, էջ 31։ Ըստ Բառ. Ս. Գրոց 335 եբր. Մանայեմ և Մանայեն անուններն էլ նշանակում են բուն «մխիթարիչ»։ Այսպիսի իմաստ ունի նաև Թասալու անունը։ Մխիթար անունը հիշատակված է մեր մեջ սկսած Զ դարից և մինչև այժմ էլ գործածական է։ Հնում կային Մխիթարիկ, Մխիթրուկ փաղաքշական ձևերը, որոնք այժմ չկան։ Կրճատ ձևն է Մխիկ, որ հիշատակված է ԺԴ դարից. այսպես էր կոչվում Մխիթար կաթողիկոսը (Չամչ. Գ. 339, Ազգապ. 1862). նույնը գտնում ենք ավելի ուշ՝ ԺԷ դարից (Զքր. սարկ. Ա. 57—58)։ Տրփիզիսեցոց հատուկ է Խիթար ձևը, ըստ որում նրանց բարբառով հյ. մխիթարել դարձել է խիթարիլ: Խիթար ձևը հիշված է 1665 թ. (Ջամբռ 207)։ Այժմ այս զանազան ձևերից գոյություն ունին Մխիթարեան, Խիթարեան, Մխիկեան ազգանունները։

— 1. Մխիթար, նշանավոր ճգնակյաց, Թանահատի վանքի հիմնադիրն է (իբր «151 թ» Ազգապ. 58, 60).—Օրբ. լգ.—սեռ. Մխիթարայ՝ անդ։ (Ս. Բարխուդարեանը գտավ ինչպես Թանահատի վանքը, նույնպես և Մխիթար ճգնավորի անհայտ գերեզմանը արձանագրության բեկորներով միասին. տես այս մասին իր հոդվածը ՀՍԽՀ Պատմ. և գրակ. Ինստիտուտի Տեղեկ. № 1, էջ 98—102)։

— 2. Մխիթար, առաջնորդ Սիւնեաց, հիշված Զեմենդոսից և Բաբելասից հետո և նախ քան Մեհրուժան, իբր 155 թ.— Ալիշան, Արշալ. քրիստ. 33, Ազգապ. 41։

— 3. Մխիթար *եպիսկոպոս Ամարասի. ուզում էր իր թեմը բաժանել հայոց կաթողիկոսությունից. Աբրահամ կաթողիկոսը («607—615 թ») խրատական թուղթ գրեց նրան.—Գիրք թղ. ծն. Կղկնտ. Բ. խթ.—սեռ.* Մխիթարայ՝ *Կղկնտ. Բ. խթ.—Ակէնեան, Կիւրիոն կթղ. 152։*

— 4. Մխիթար *անապատական ի Տանձեաց. գնաց Երուսաղէմ և սրբոց մասունքներ բերավ Արցախ.—Կղկնտ. Բ. ծ.—սեռ.* Մխիթարայ՝ *անդ։*

— 5. Մխիթար, *հայր Վահանի. հիշված է իբրև վկա Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ.* Մխիթարայ՝ *Օրբ. լը։*

— 6. Մխիթար, *հայր Սադոկի, որ էր երեց Ըղուերծոյ և հիշվում է իբրև վկա Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ.* Մխիթարայ՝ *Օրբ. լը։*

— 7. Մխիթար, *որի մոր՝ Սպրամի մոտ ապաստանեցին Հանձիթ գավառում (Վասպուրական) Ռոմանոս Բ կայսեր (939—963) երկու մանկահասակ որդիները՝ Վասիլ և Կոստանդին, փախչելով Նիկեփոր կայսեր կնոջ երեսից.—սեռ.* Մխիթարայ՝ *Ուռհ. 7, Չամչ. Բ. 843, Տէր Սահակեան, Հայ կայս. Բ. 143։*

— 8. Մխիթար Վասիլ, *վեստ, դատավոր և նահանգապետ Մելիտինէի և Լիւկանդոսի (Ժ դար).—Տէր Սահակեան, Հայ կայս. Բ. 577։*

— 9. Մխիթար, *առաջնորդ Յովհաննավանքի. որա մոտ եկավ Մարմաշէնի վանահայր Սոսթենէսը և միասին որոշեցին երկու թեմերի սահմանը, 1033 թ.—Զքր. սարկ. Գ. 10, 29.—գրծ.* Մխիթարիւ՝ *անդ.—Այրարատ 166, Շիրակ 152։*

— 10. Մխիթար *գրիչ. օրինակեց Աւետարանը Ռստակէս քահանայի համար, 1040 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 28 բ. Շողակաթ էջ 192։*

— 11. Մխիթար *Բնայրեցի (այլ ձ. Բգնայրեցի), ուղեկից եղավ Պետրոս Գետադարձ կաթողիկոսին, երբ նա գնում էր Պոլիս՝ կայսեր մոտ «1047 թ».—Ուռհ. 105 (Ալիշան, Շիրակ 121 ա համարում է Բագնայրի վարդապետ)։*

— 12. Մխիթարիկ, *այլ ուղեկից Պետրոս կաթողիկոսի՝ նույն ճամբորդության ժամանակ «1047 թ».—Ուռհ. 105։*

— 13. Մխիթար *եպիսկոպոս, որի անունով մի խաչքար է կանգնեցրած Երնջակի Ս. Կարապետ վանքում, 1074 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 16։*

— 14. Մխիթար *պատրիկ, «այր քրիստոնեայ», Հալէպի Ռասուան սուլթանի զորականներից. օգնեց Թորոս կիւրապաղատին՝ գրավելու համար Ուռհան, 1095 թ.—Ուռհ. 251։*

— 15. Մխիթար, *հիշված է Զարդմբերի, Զարտագունի և Ճանանի հետ, որոնց հոգուն մի խաչքար է կանգնեցրել Մարգարիտ դուստր Ուխտիկի՝ Մլղնաբերդ սարում (այժմ տարել են Գանձակի Զովդառ կամ Հարցհանգիստ գյուղը), 1155 թ.—Ազգագր. հանդ. Ճ, 310, Արցախ 292:*

— 16. Մխիթար, *շինեց Վահրամի հետ Պղնձահանքի Աստուածածին վանքը 1161 թ.—Սմբատեանց, Գեղարք. 138։*

— 17. Մխիթար, *նվիրատու Արտաւազայ վանքի՝ 1161 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 365։*

— 18. Մխիթար, *որի խնդրանոք Դաւիթ քահանան (№ 83) գրել է Ցովսէփ Դունեցի Նահատակի ներբողը, 1170 թ.—Այրարատ 356 համարում է առաջնորդ կամ միաբան Հաւուցթառի, իսկ Գ. Տէր-Մկրտչեանը կարծում է որ Մխիթար Գօշն է, որին վերագրում է նաև նույն Ցովսէփ Դունեցու Նահատակութեան պատմությունը (Արրտ. 1897, 41 > Նոր վկ. 66)։*

— 19. Մխիթար, *եղբայր Դաւիթ գրչի, որ Կոշայ վանքում, իր և իր եղբոր Մխիթարի համար արտագրել է Եղիշէի պատմությունը, 1174 թ.—Շողակաթ 196։*

— 20. Մխիթար *վարդապետ Խորակերտի, մին հյուսիսայիններից, որոնք գրեցին Գրիգոր Տղային և հակառակ կանգնեցին միության խնդրին «1178 թ»։—Շնորհ. Թղ. 308։*

— 21. Մխիթար, *եղբայր Ցովհաննէսի, որ Հոռոմոսի վանքում, իր երեց եղբայր Վարդանի համար օրինակեց Աւետարանը 1181 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 395։*

— 22. Մխիթար *Հերացի, բժիշկ և աստղաբաշխ. գիտեր արաբերեն, պարսկերեն և հունարեն լեզուները. իր խնդրանոք է գրել Շնորհալին իր ոտանավորներից մի քանիսը։ Գրիգոր Տղայի առաջարկությամբ գրել է «Ջերմանց մխիթարութիւն» բժշկական աշխատությունը «1184 թ», ռամկական հայերենով։ Հրատարակված է Վենետիկ «1832. սրա գերմաներեն ընտիր թարգմանությունն ունի* Seidel, Trost bei Fiebern, Leipzig *1908, բազմաթիվ և հմտալից ծանոթություններով։ Ունի նաև «Վասն քարանց և յատկութեանց նոցա և բժշկութիւն նոցա», հրատ.* ZAPh *1, 208։ Մխիթարի անունը հիշվում է շարունակ մեր բժշկարաններում, որից երևում է որ ուրիշ հիվանդության մասին*

էլ ունի զանազան գրվածքներ, որոնք չեն հասած մեզ։—Մխ. հեր. ներած. Շնորհ. յղ. երկն. (ծայրանունը), Ախիտ. անգ. 2.—սեռ. Մխիթարայ՝ Մխ. հեր. ներած. Շնորհ. յղ. երկն.—Զարբ. Հին դպր. 675—681, Յովնանեան՝ Հետազօտ. նախն. ուսկ. Ա. 67—91, Ալիշան՝ Շնորհ. 257—260, Թորգոմեան, Բանասէր 1899, 238—243։

— 23. Մխիթար քարակոփ, շինել է Գրիգոր Տուտէորդու գամբանի խաչքարը, Սանահնի վանքում, 1185 թ.—Ազգագր. հանդ. Գ. 306, Է. 391։

— 24. Մխիթար, եղբայր Մարկոս քահանայի, միաբան Սաղմոսավանքի 1187 թ. գերի քշվեց Դուբին, ուր հազիվ ազատվեց կախաղանից։ (Տես Միաբան, Գորիա և Շմոն, էջ 52 և 54)։

— 25. Մխիթար գրիչ. օրինակել է Էջմիածնի № 919 Ճառընտիրը 1187 թ. (տես Միաբան, Գոր. և շմ. էջ 52 են)։

— 26. Մխիթար վարդապետ, որի օգնությամբ Դաւիթ որդի Վասակի շինեց Անապատի վանքը՝ 1190-ական թվերին.—Տեղեկ. Արմֆանի, 1940, № 4, էջ 168 (Կ. Ղաֆադարեանի հոդվածը)։

— 27. Մխիթար, միաբան «Շամիրամաշէն քաղաքի» Խաչի անապատում, 1198 թ.—Տաթև 1927, 184։

— 28. Մխիթար հիւսն, Նոր-Գետիկի շինության ժամանակ արհեստապետ էր (1191—8 թ).—Կիր. ժե։

— 29. Մխիթար եպիսկոպոս Ընկուզուտի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատ. 111։—Հիշված է իբրև գրիչ՝ Տաշեան, Ցուց. 266։

— 30. Մխիթար, կանգնեցրել է մի խաչքար Հաղբատում, 1199 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 70։

— 31. Մխիթար երեց Անեցի, պատմիչ ԺԲ դարու. Անիի կաթուղիկէի ավագերեցն էր. գրել է մի ընդարձակ «Հայոց պատմութիւն» (և հատկապես Բագրատունեաց տոհմի պատմությունը), Հառիճի Գրիգոր վարդապետի խնդրանոք։ Այս գիրքը ուներ երեք պրակ. 1) Բագրատունեաց հին պատմությունը՝ սկսած Գարոյր Ա թագավորից մինչև Յովհաննէս-Սմբատ. 2) Յովհաննէս-Սմբատից՝ մինչև Բարսեղ կաթուղիկոս. 3) Բարսեղից մինչև Սալահադինի և Երուսաղէմի առումը (1186 թ) և ավելի առաջ՝ մինչև Գրիգոր Տղայի մահը («1193 թ»)։ Այս գործը կորած է. կայ միայն մի մասը, որ հրատարակեց Պատկանեան 1879 թ։ Մխիթարը թարգմանել է նաև պարսկերենից (ըստ Առաք. պատ. 1187 թ) «Պատճառ խաւարման արեգական և լուսնի», աստղա-

բաշխական աղյուսակներով (զիճ), որ նույնպես կորած է։ Այս գործի մեջ հեղինակը հիշել է հատկապես 1176 թվի ամբողջական մեծ խավարումն արեգականի։—Վրդ. ծզ, ձա. Մխ. այրիվ. 37, 80 (ասում է «ի յոճիէ պարսկէ», որ կարելի է կարդալ կամ հասկանալ 1127 թ. մինչդեռ Առաք. պատմ. էջ 481 դնում է 1187 թ).—սեռ. Մխիթարայ՝ Մխ. անեց. ա. Օրբ. կ, կե. Վրդ. ծ. Զարբ. Հին դպր. 723—9, Ալիշան, Շնորհ. էջ 126—8։

— 32. Մխիթար որդի Դըւալի. կալվածներ նվիրեց Բագնայրին 1201 թ.—Արձ. Շիրակ 120։

— 33. Մխիթար, առաջնորդ Խաղտեաց Ալնոց վանքի 1203 թ.—Տաթև 1927, 182։

— 34. Մխիթար, նվիրատու Ապարանի Ս. Աստուածածին եկեղեցու (Տամճլու գյուղ), 1208 թ.—Այրարատ 251 ա։

— 35. Մխիթար, որի օգնությամբ Սերովբ և Միսաք եղբայրները շինել են Գոշավանքի Ս. Գրիգոր եկեղեցին 1208 թ. (կարելի է կարծել որ այս Մխիթարը Գոշն է)։—Արձ. Ազգագր. հանդ. Ժ, 33։

— 36. Մխիթար Փէճորենց կամ Փիճուրանց, որդի Դաւթի. առաջնորդ Նորատուս գյուղի. կանգնեցրել է մի խաչքար՝ 1211 թ.—Շահխաթ. Բ. 239, Սմբատեանց՝ Գեղարքունի 485, Միսական 47։ Օգնել է Ս. Լուսաւորիչ վանքի շինության (անդ 487)։

— 37. Մխիթար, վանահայր Հառոմոսի վանքի. օգնությամբ Սարգիս կրոնավորի և կամակցությամբ բոլոր միաբանների՝ Ականց ջուրը, որ մեր հին թագավորները շատ էին աշխատել բերել վանքը և չէին կարողացել, հաջողությամբ բերեց 1198 թ. (Արձ. Շիրակ 21)։ Հիշված է նաև մի այլ արձանագրության մեջ 1201 թ. (Շիրակ 23)։ Իր հրամանով կազմվեց Գետաշէնի նշանավոր Աւետարանը, որ գրվեց 1211 թ. (Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 42)։

— 38. Մխիթար Գոշ, որ և Գանձակեցի (կոչված է Գետկացի՝ Զարբ. Հին դպր. 554). աշակերտեց Յովհաննէս Տաւուշեցուն, ապա սովորեց Սև լեռան վանքում։ Բնակվեց Կարին, Խաչեն, ապա Կայենի Գետիկ վանքը, որ ինքը վերաշինեց 7 տարվա մեջ, 1191—8 թվերին և որ այնուհետև կոչվեց Նոր-Գետիկ։ Իրեն օգնել են այս գործում Վախտանկ իշխանը, սրա կինը՝ Արզու խաթուն և որդիները՝ Սմբատ, Վասակ, Խոյդան և Գրիգոր (Արձ. Շահխաթ. Բ. 367, Արցախ 350)։ Մեռել է «1213 թ»։ Գրական գործերն են 1) Դատաստանագիրք, որ սկսել է գրել

1184 թ. (ըստ Շողակաթ 82). Ինքնագիր ձեռագիրը կարծում են թե գտնվում է Վենետիկի վանքում (տես Manus. bibl. nat. 97). բայց Ոսկյան, Մատ. քնն. 152—6 հերքում է իրավամբ։ Մի հատված տես Թորոս աղբ. Բ. էջ 473—7։ Ամբողջի ընտիր հրատարակությունը կատարեց Բաստամեանց, Էջմիածին 1880. Թարգմանված է վրացերեն, թաթարերեն (վերջինս Լեհահայոց կողմից, ուր Մխիթարը կոչված է Միքայել վարդապետ), լեհերեն, լատիներեն, ռուսերեն (սրանց մասին տես ՀԱ 1888, 191)։ Ճոխ և ընտիր թարգմանություն ունի Karst հայագետը գերմաներեն լեզվով։ Դատաստանագրքի ռամիկ թարգմանությունը կամ նոր խմբագրությունը կազմեց Սմբատ Գունդստաբլը 1265 թ.—2) Առակք, 190 հատ, հրատ. Վենետիկ 1852. հրատարակությանց և թարգմանությանց մասին տես Ոսկյան, Մատ. քնն. 190.—3) Ծարք հայրապետացն Աղուանից և որ ինչ առ նոքօք դէպք (Հայապ. 102). գրված է իբր հավելված իր Դատաստանագրքի. Աղվանից պատմությունն է և համարվում է շարունակություն Մովսէս Դասխուրանեցու Թեև համառոտ, բայց շատ կարևոր է ժամանակակից դեպքերի հիշատակության պատճառով. այնքան որ ուշ շրջանում Մխիթարը համարվել է պատմիչ (Ոսկեան, Մատ. քնն. 184)։—4) Պատճառ Նախախնամութեան գրոց Փիլոնի.—5) Մեկնութիւն Երեմիա մարգարէի, որ գրել է 1187 թ. մի տարվա մեջ, ի խնդրոյ Դավիթ վարդապետի (հիշատակարանը հրատ. Ոսկեան, Մատ. քնն. 185—8. տես և Թորոս աղբ. Բ. 394). —6) Աղօթք, «Տէր Աստուած իմ Յիսուս» տես և Թորոս աղբ. Բ. 396.—7) Աղօթք Մխիթար Գոշ վարդապետի վասն Արքանոսականացն և այլոց հերձուածողացն (Ակինեան, Թուղթ Մակարայ, էջ 78)։—8) Ներբողեան (թերևս նաև Վկայաբանութիւն) Նոր վկային Խոսրովի Գանձակեցւոյ († 1167 թ). հրատ. Նոր վկ. էջ 23—39.—9) Յայտարարութիւն ուղղափառ հաւատոյ ընդդէմ ամենայն հերձուածոց, ի խնդրոյ մեծ զօրավարին Զաքարէի և եղբօր իւրոյ (հրատ. Ալիշան՝ Հայապ.)—10) Ողբ ի վերայ բնութեանս ի դիմաց Ադամայ և Եւայի.—11) Ճառ յարութեան Ղազարու.—12) Թուղթ խրատական յաղագս Վրաց. (հրատ. Արար. 1900, էջ 497, 562 և 1901 թ. էջ 51, 121։—Կիր. բ, գ, ժա. յաւել. Վրդ. ձգ. Շնորհ. թգ. 308. Մ. մաշտ. 336 բ. Օրբ. ժմ. 23. Մխ. այրիվ. 37 (հիշվում է իբրև պատմիչ). Առաք. պատմ. 339, 481.—միայն Գոշ անունով՝ Պարգ. 695, 708. Վրդ. աշխ. 504. Օրբ. ժմ. 25.—սեռ. Մխիթարայ՝ Կիր. ժա, ժգ. յաւել. Մխ. դատ.

*նախադր. ա. Մխ. տռ. 5. ադ. 468. Ցայսմ. յնվ. 31. Առաքպտմ. 339. Նոր վկ. 32.—Տես և Տաշեան, Ցուց. 1118 ա, Զարբհին գպր. 686—698. Ոսկեան, Մատ. քնն. 123—192։ Կենսագրութիւնը Սեանի մի ձեռագիր Ցայսմաւուրքից առնելով դնում է Սմբատեանց՝ Գեղարքունի, էջ 380—386։*

— 39. Մխիթար. *Թվի քարակոփ, հիշատակում է իրեն Գեղարդայ վանքի հետևյալ կարճ արձանագրության մեջ. «ՈԿԲ. Թ. Ած. ողորմի ես Տիմոթին և Մխիթարայ յաւրինողն Խաչիս...» (1213 Թ).—Այրարատ 338, Արրտ. 1871, էջ 90։*

— 40. Մխիթար *վարդապետ, միաբան Հաւուցթառի վանից, 1214 Թ.—Ձեռ. Վեննա. Ա. 593, Այրարատ 356։ Հմմտ. № 95։*

— 41. Մխիթար, *այգի է նվիրել Խծկոնից եկեղեցուն և պատարագ ստացել 1216 Թ.—Ազգագր. հանդ. Ա. 45. Արրտ. 1904, էջ 990։*

— 42. Մխիթար, *կինն է Հարկեոր. միասին նվերներ են արել Արցախի Ծուվղի վանքին 1217 Թ.—Արցախ 342։*

— 43. Մխիթար, *գրիչ. օրինակել է Ճառընտիրը 1220 Թ.—Հրտր. Ագաթ. 1909 Թ. յոջ. էջ* ԽԵ: *(Ասում է թե սրանից հին է Զենոբ Գլակ և Յովհան Մամիկոնեան, որ պատահմամբ կազմել են սրա հետ։ Հմմտ. այժմ Պատմ. Տարօնոյ, Երևան 1941, էջ* XII):

— 44. Մխիթար *Ջեչկանց Շիրակաւանցի, օգնեց Առաքել աբեղա Անեցուն՝ Թարգմանելու արաբերեն մի Նրագահան 1222 Թ.—տես Առաքել № 11։ Հմմտ. № 54։*

— 45. Մխիթար, *գնեց Սարգիս քահանայի հետ Գետաշէնի նշանավոր Աւետարանը և նվիրեց Մեծկողմանց Ս. Գրիգոր վանքին 1223 Թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 44։*

— 46. Մխիթար *որդի Մկրտիչ քահանայի, որ ստացավ մի Ճաշոց 1223 Թ.—Տաշեան, Ցուց. 20։*

— 47. Մխիթար, *գնեց Երևանում Եւագրի որդու այգին և նվիրեց Հառիճի վանքին 1224 Թ.—Շահխաթ. Բ. 265, Շիրակ 162։*

— 48. Մխիթար *եպիսկոպոս Տեղերեցի. երկրաշարժի երկյուղից վերացրել է Անիում փողոցի հրապարակական վաճառքը (ԺԳ դարի առաջին քառորդին).—Շիրակ 62 (Արձ.), 102։*

— 49. Մխիթար, *եղբայր Մելիքի, որ նրա և իր հոգեորդի Ակուտինի հետ կանգնեցրել է մի խաչքար Ծարի եկեղեցում, 1225 Թ.—Արցախ 407։*

— 50. Մխիթար *գրիչ. օրինակել է մի Ճաշոց Կիլիկիայում, Կապոսի անապատում, Եկեղեաց Վարդան և Սարգիս քահանա-*

*ների պատվերով 1230 թ. (այս ձաշոցը Լևոն Գ թագավորը նվեր ուղարկեց Իտալիոյ Փերուժ քաղաքի հայոց Մատթէոս առաքելոյ եկեղեցուն, 1279 թ).—Ուգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ 2։*

— 51. Մխիթար, *հիշատակագիր Տոնամակի, Երզնկայի Կապոսի անապատում, 1230 թ?—Ձեռ. Վեննետ. Բ. 1214։*

— 52. Մխիթար, *արձանագրող գրիչ Տեղերի արձանագրության՝ 1232 թ.—Արձ. Այրարատ 147, Բանաս. 1903, 29։*

— 53. Մխիթար, *առաջնորդ Նոր-Գետիկ վանքի. հաջորդ Մարտիրոսի. նստավ 1233 թ. և կարճ պաշտոն վարեց։—Կիր. ժե։*

— 54. Մխիթար, *որդի Ավետիքի Չեչկանց և հայր Վահրամի, որ կալվածներ է տակել Բագնայրին 1233 թ.—Արձ. Շիրակ 121։ Հմմտ. № 44։*

— 55. Մխիթար, *վանահայր Բագարանի Մայր եկեղեցու. Դուեթի և ուրիշ միաբանների հետ ուխտագրություն են հաստատել մեռած միաբանների հոգուն պատարագ և ժամաղ անելու մասին, 1233 թ. հիշված է նաև 1235 թ.—Արձ. Այրարատ, էջ 67—69։*

— 56. Մխիթար, *գրիչ և նկարիչ! Կարսի բերդի վրայի մի արձանագրության 1236 թ.—Արձ. Այրարատ 85, Կրպէ՝ Կարս քղ. 26։—Տես № 76։*

— 57. Մխիթար, *թուղթ պատրաստեց և գրելով էլ օգնեց X գրչին, որ օրինակեց Ավետարանը 1236 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. էջ 443։*

— 58. Մխիթար, *հորեղբայր Ցովհաննէս գրչի, որ Դրազարկում օրինակեց Գանձարանը (Տաղարանը) 1241 թ.—Սիսուան 233 բ, Ձեռ. Վեննետ. Բ. 1066։*

— 59. Մխիթար *(որ և* Մխիթարիչ), *որդի Ավետիս երեցի, որ Հռոմում Թորոս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1242 թ. այս թվից առաջ Մխիթարին սրով խողխողել էին.—Թորոս աղբ. Բ. էջ 441։*

— 60. Մխիթար, *ճգնավոր էր Վատիկանի հայոց վանքում. վախճանվեց և իր վրա կանգնեցրին հայերեն արձանագրությամբ մի տապանաքար, որ այժմ պահվում է Հռոմի Լատերանեան քրիստոնեական թանգարանում (1246 թ)։—Նկարը տես Գալճեան, 55։*

— 61. Մխիթար, *ազգական Տէր Ցորդանանի, որ մի եկեղեցի է շինել Գօզաս-քիլիսայում, 1247 թ.—Արցախ 363։*

— 62. Մխիթար վարդապետ, առաջնորդ Կեչառու վանքի-հիշված է երկու արձանագրության մեջ, որոնցից առաջինը անթվական է, երկրորդը ՈՂԷ=1248 թվից (ըստ Կոստանեանի պետք է կարդալ ՈԼԷ=1188)։—Արձ. Այրարատ 261—?, 267։—Սմբատեանց՝ Գեղարքունի 352 ունի մի երրորդ արձանագրություն ևս, որ երկրորդի կրկնությունն է և ուր դարձյալ թվականն է ՈՂԷ=1248։

— 63. Մխիթար ոմն, որ Արուերի հետ միասին մի խաչքար է կանգնեցրել Պողոս-Բիլիսայում, 1251 թ?—Արցախ 364։

— 64. Մխիթար որդի Խալայշահի և հայր ...րեկի, որ մի այգի է նվիրել Թանատի վանքին, Չ=1251 թ.—Արձ. Սիսական 120 (Ալիշան համարելով որ թվականի մեջ տասնավորը պակասում է, դնում է 1263—7 թ)։

— 65. Մխիթար Քոբայրեցի, ուղղեց և սրբագրեց Գետաշենի նշանավոր Ավետարանը, որ գրել էր Յակոբ գրիչը Հաղբատում 1211 թ. Ննում է իր անհեղ խաչարձանը Հաղբատի գերեզմանատանում, 1255 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 41, 62, 63, Տաշեան՝ Ցուց. 984, Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 78։

— 66. Մխիթար, իր եղբայր Դեղի հետ մի խաչքար է կանգնեցրել իրենց երրորդ եղբայր Շաշի հիշատակին, Վերին Ախտա գյուղում, 1262 թ.—Ծաղրակեանք 134, Սիսական 175։ Հմմտ. № 82։

-- 67. Մխիթար, որդի Խոյդանայ. եղբայրն է Արևիկ, որդին Օտարշահ. Ներքին Ախտա գյուղում կանգնեցրել է մի խաչքար և շինել մի եկեղեցի, 1263 թ.— Սիսական 174—5, Ծաղրակեանք. էջ 130։

— 68. Մխիթար վարդապետ Սկեռացի. ուղեկից եղավ Հեթում Ա թագավորին՝ Թաթարաց Մանգոյ խանի մոտ գնալու ժամանակ «1254 թ»։ Իսկ «1263 թվին» էլ պատվիրակ գնաց Պտղոմայիս (Աքքեա) քաղաքը՝ Ուրբանոս Դ պապի նվիրակ՝ Տիւրոսի Գուլիէլմոս արքեպիսկոպոսի մոտ, որի հետ վիճեց ընդդեմ Հռոմի աթոռի գլխավորության և հաղթեց։ Այս դեպքի պատմությունը Հեթումի հրամանով գրի առավ և կազմեց «Պատասխանիք յաղագս համապատուութեան երկոտասան առաքելոց» աշխատությունը։ Հրատարակված է Երուսաղէմ 1865 թ.— Կիր. ձգ. Սկեռ. պատ. 1։—Սիսուան 101 և Զարբ. Հին դպր. 751—2 Նրան են վերագրում նաև Հունաց պատրիարքական ա-

թոնների դեմ վիճաբանական մի գրվածք, որ շարադրել է Կատալոնի Յակոբ եպիսկոպոսի խնդրանոք:

— 69. Մխիթար, եղբայր Երևանի (№ 1), որ շինել է Ս. Ստեփաննոս անունով մի եկեղեցի և նորոգել է ուրիշ եկեղեցիներ Թաչենում, 1265 թ.—Արցախ 168:

— 70. Մխիթար, վանահայր Սանահնի վանուց, 1267 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Գ. 296:

— 71. Մխիթար քահանա, որդի Օշնի, սնվել էր Տէր Յովանի մոտ. օգնել է Հաղբատի կաթուղիկէի դրան «սրահայարկ» շինության, 1267 թ.—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 41:

— 72. Մխիթար կրոնավոր, գրիչ Երզնկայում, 1269 թ. (տես Յ. Մուրատ, Ցայտ. յովհ. էջ ԺԽ և շար). հմմտ. հաջորդ երկուսը:

— 73. Մխիթար գրիչ. Երզնկայում օրինակել է Աստուածաշունչը 1269 թ. (տես Խալաթեան, Մնաց. էջ դ և 115):

— 74. Մխիթրուկ դպիր, թուղթ էր կոկում Երզնկայում 1269 թ.—Յ. Մուրատ. Ցայտ. յովհ. ԺԽ:

— 75. Մխիթար ոմն, կանգնեցրել է մի խաչքար Հացի գյուղի (Արցախ) մի եկեղեցում 1270 թ.—Արցախ 126:

— 76. Մխիթար գրիչ. փորագրել է Անիի Կարմիր վանքի արձանագրությունը 1271 թ.—Շիրակ 170, Ոստան 1911 թ. էջ 234, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 13 բ. Տես № 56:

— 77. Մխիթար, նվիրատու Ակոռիի Ս. Յակոբ վանքի 1271 թ.—Այրարատ 471:

— 78. Մխիթար, եղբայր Յովհաննէս քահանայի, որ իր եղբայրների հետ հիմանց նորոգեց Հաղբատի կամուրջը 1273 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 103:

— 79. Մխիթար գրիչ. Դետկայ վանքում գրել է մի ձեռագիր (այժմ գտնվում է Երուսաղէմ, № 1288), 1273 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 13:

— 80. Մխիթար, որդի Գրիգորի, ոստիկան կնիք ղարկող էր Անիում 1276 թ. (տես Գրիգոր № 400).—Շիրակ 101:

— 81. Մխիթար վարդապետ, կառուցել է մի մատուռ Մրենում 1277 թ.—Արձ. Շիրակ 140:

— 81 ե. Մխիթար ոմն, Տիրածերի հետ միասին շինել են Գանձակի Սուլուկ կամ Աղատ գյուղի եկեղեցին 1279 թ.—Արցախ 270, Ազգագր. հանդ. Ե, 317:

— 82. Մխիթար որդի Դեղկայ (կինն է Մամիր, որդին Խա-

րիբշահ, դուստրը Ռուզուքան), «հրամանաւ իշխանաց իշխանին մեծին Պռաւշոյ և որդոյ իւրոյ Հասանայ» շինել է Մարտիրոս գյուղը և կանգնեցրել մի մեծ խաչքար՝ Շնորհաւոր վարպետի ձեռքով, 1283 թ.—Խաղբակեանք 45, 127, 148, Սիսական 176։ Հմմտ. № 66։

— 83. Մխիթար, որդի Խոցադեղի և հայր Աւետիսի, որ Ծղեգխում կանգնեցրել է մի խաչքար, 1283 թ.—Արձ. Սիսական 152։

— 84. Մխիթար քահանա, հանգուցյալ եղբայր Գրիգոր քահանայի (№ 348), որ Հաւարծին վանքում, Աստուածատուր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1284 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 339։

— 85. Մխիթար, հայր Արիստակէս, Աթանէս և Յովհաննէս եղբայրների, որոնք իրենց հոր հիշատակին կանգնեցրին մի խաչքար Մարտիրոս գյուղում, 1284 թ.—Սիսական 177, Խաղբակեանք 146։

— 86. Մխիթար, գրիչ առաջին մասի Նոր Կտակարանի, որ շարունակեց Ստեփանոս վանական քահանան և վերջացրեց Պետրոս քահանան, 1285 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 818։

— 87. Մխիթար, հայր Աւետիսի և Վահրամի, որոնք մի խաչքար են կանգնեցրել նրա հիշատակին Մարտիրոս գյուղում, 1286 թ.—Արձ. Խաղբակեանք 146, Սիսական 177 (սխալներով)։ Տես նաև Աւետիս № 24։

— 88. Մխիթար Այրիվանեցի, ծնվել է 1222 թ. և մեռել է 1289/91 թ. պատմիչ ԺԳ դարու, գանձասաց և գրիչ. արքեպիսկոպոս և վանահայր Այրիվանից (կամ Գեղարդայ վանից)։ Իր գործերն են 1) Պատմութիւն ժամանակագրական, որ հասցրել է մինչև 1289 թ. հրատ. Պատկանեան, Պետերբ. 1867։—2) Ցուցակ ատենից Ս. Գրոց. հրատ. Արրտ. 1895, էջ 408. նաև «Էջմիածին», 1945 թ. մայ. էջ 17—21։—3) Ստորագրութիւն պատմութեան Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի (ըստ Յովսէփեան՝ Խաղբակեանք, էջ 3 ծան.)։—4) Բազմաթիվ գանձեր, որոնց ցանկը տես Տաշեան, Ցուց. 1118 ա և Manus. brit. mus. 112—119։ Իբրև գանձասաց կրում է նաև Երևանցի, Տաւեհցի, Տաւետցի, Տաւեցի անունները կամ պարզապես «Տէր Մխիթար»։ Իբրև գրիչ օրինակել է 1270—87 թվերին մի քանի մեծ ձեռագրեր, որոնք գտնվում են այժմ մեր Մատենադարանում, օրինակությունը Վիեննա։ Նշանավոր է հատկապես մեծ Ճառընտիրը, որ ժողոված է

զանազան փիլիսոփայական գրվածքների, Նոր կտակարանի, Ժամագրքի և ուրիշ զանազան գրքերի մեկնությանց, բոլորը 1188 թերթ, զարդագրերի և մանրանկարների գեղեցկությամբ հայ գրչության գլուխ գործոցներից մեկը։ Այս ձեռագիրը գրել է Մխիթարը օգնությամբ Սարգիս գրչի, որ երևի լուսանցազարդերը նկարողն է (Շողակաթ 206)։—Մխ. այրիվ. 1, 33, 37, 38. Այրիվ. 17 ա. Ձեռ. ներս. 11 բ, 12 ա, 13 ա, 14 բ.—սեռ. Մխիթարին՝ ծշ. 211. Ձեռ. Վենետ. Բ. 302—3. Այրարատ 350—351. Զարբ. Նոր մատ. 154—8. Իր կյանքն ու իր գործերը հրատարակեց Ցովսէփեան՝ «Մխիթար Այրիվանեցի, նորագիւտ արձանագրութիւն և երկեր», Երուսաղէմ 1931։

— 89. Մխիթար «որդի Շերացի որդի Զուսի Միսալուքենց», շինել է Անիի Ս. Փրկիչ եկեղեցու զանգակատունը, ուր և կախել է զանգակներ 1291 թ.—Շիրակ 86։

— 90. Մխիթար երեց, «ժառանգ» Ս. Ստեփանոս եկեղեցու Վայոց ձորի Իւլգիւրտ գեղատեղում, 1292 թ.—Արձ. Սիսական 167։

— 91. Մխիթար որդի Աւատարկայ? մեռավ և նրա հոգու համար՝ նրա երկու եղբայրները (Հասան և Խոցադեղ) մի հող նվիրեցին նույն Ս. Ստեփանոս եկեղեցուն, 1292 թ.—Արձ. Սիսական 167։

— 92. Մխիթար, հիշված է իր կնոջ՝ Ղիմէթի հետ միասին Անիի մի արձանագրության մեջ, որից մի տող միայն ունի Анийская серія, № 2, էջ 48, ՉԽԲ=1293 թ։

— 93. Մխիթար քահանա, որդի Պապաքի, գրիչ. Որոտանու Աղիտու վանքում գրեց մի Աւետարան, 1296 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 200։

— 94. Մխիթար, հայր Խութլուբէկի և Թիրքիշի, որոնք Յակոբ աբեղային գրել տվին մի Աւետարան, Կարսի Գողիս գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 463—4)։

— 95. Մխիթար եպիսկոպոս, առաջնորդ Հաւուցթառի. ստորագրում է այն թղթին, որ արևելյան եպիսկոպոսները գրեցին Գրիգոր Է Անաւարզեցի («1293—1307 թ») կաթուղիկոսին՝ նրա եկեղեցական նորմուծութեանց դեմ «1297 թ» (Ազգապ. 1765—7).—Օրբ. կը. Տաշեան՝ Ցուց. 556 բ, Զամչ. Գ. 291, Այրարատ 357։ (Տարիքի մեծությունը դժվարացնում է նույնացնել № 40-ի հետ)։

— 96. Մխիթար հայր, որի խնդրանոք անծանոթ ոմն գրեց Մեկնութիւն Արիստոտէլի (ԺԳ դար).—Զարբ. Թրգմ. 322։

— 97. Մխիթար *ոՑ հիշատակագիր ի գիրս Յովհաննէս Արքայեղբայր եպիսկոպոսի (ԺԳ դար).—ըց.* ի Մխիթարեն՝ *Սիսուան 145։*

— 98. Մխիթար, *գրիչ Վիեննայի Մխիթարեանց նշանավոր կրկնագիր Ագաթանգեղոսի երկրորդ գրության, որ է Մեկնութիւն Անդրէի (ԺԳ դար).—Տաշեան, Ցուց. 261—6, 804։*

— 99. Մխիթար, *որդի Խալայչահի և հայր Խութլուբէկի (№ 3), որ Պռօշ իշխանի ազատներից է և հողեր է նվիրել Թանատի վանքին (ԺԳ դար)։—Խաղբակեանք 142։*

— 100. Մխիթար, *մի այգի է նվիրել Հայրավանքին՝ Վահրամի, Ստեփաննոսի և Խաչատուրի ընկերակցությամբ (ԺԳ դար).—Սմբատեանց՝ Գեղարքունի 435։ Նույն արձանագրությունը ունի նաև Սիսական 41, բայց Մխիթարին չէ հիշում. մյուս երեքը կան։*

— 101. Մխիթար *ոՑ, նվիրատու Սեբաստիոյ Ս. Նշան և Ս. Թորոս վանից, 1301 թ.—*Rapport Arm. *էջ 39։*

— 102. Մխիթար, *միաբան Երզնկայի Ս. Կիրակոս անապատի, 1304 թ.--Թորոս աղբ. Բ. 421։*

— 103. Մխիթար (*կամ* Մխիթարիչ) *երեց, գրիչ կամ քանդակող երկու արձանագրության Քանաքեռում, 1305 և 1306 թ.—Շահխաթ. Բ. 159, Այրարատ 297—8, Բանասէր 1903, 32, Սմբատեանց՝ Գեղարքունիք 207։*

— 104. Մխիթար *վարդապետ, իբրև վկա հիշվում է Քանաքեռում, մի այգու վաճառման առթիվ, 1306 թ.—Բանաս. 1903, 32, Այրարատ 298։*

— 105. Մխիթար, *հայր Աւագ գրչի (№ 6), որ Աւետիք վարդապետի հրամանով օրինակեց Կաֆայում Տօնականն ու Ցայսմաւուրքը, 1307 թ.—*Manus. bibl. nat. *էջ 57, 60։*

— 106. Մխիթար *վարդապետ, Մեծոփայ վանքում օրինակեց Աւետարանը իր հարազատ Աւետիք քահանայի համար, բայց ապա վաճառեց Ստեփանոս քահանային, 1307 թ.—Ջեռ. Վասպ. 154—5։*

— 107. Մխիթար, *որի հիշատակին Սիմէոնը նվերներ է արել Ս. Ստեփանոսի վանքին և Ս. Նշանին, 1309 թ.—Խաղբակեանք 187։*

— 108. Մխիթար, *եղբայր Վարդան վարդապետի, որ Հերհերում մի խաչքար է կանգնեցրել իր և իր եղբոր հիշատակին, 1310 թ.—Սիսական 117, Արրտ. 1889, էջ 286։*

— 109. Մխիթար քահանա, որդի Վարդան քահանայի և եղբայր Կիւրիոնի, որ օրինակեց Շնորհալու Մեկնութիւն Բարձրացուցէքի, 1311 թ.—Ակինեան, Կիւրիոն կթղ. 265—6։

— 110. Մխիթար, հայր Հազարշահ Շիկրակեցու. արդեն մեռած էր 1313 թ.—յիշատ. ИАН 1911, էջ 1301։

— 111. Մխիթար Ցաղմանեցի, աշակերտ Եսայի Նչեցու. հիշված է 1314 թ.—Սիսական 134։

— 112. Մխիթար վարդապետ Երզնկացի. որդի Պօղոսի և Տիրանցի. ուսանելու համար գնաց Գլաձորի վանքը՝ Եսայի Նչեցու մոտ (1314 թ). այստեղ սովորեց Գրիգորիս վարդապետի մոտ, որ հրամայեց նրան օրինակել «Պատճառ սահմանաց գրոց», որ և նկարազարդեց նշանավոր նկարիչ Թորոս Տարօնեցին։ Այս գրքի ճակատը նմանահանված է Սիսուան 138։ Այստեղ մեջ է բերված նաև հիշատակարանից մի կտոր, որ գեղեցիկ օրինակ է այն ժամանակի աշխարհաբարի.—

Որք ընթերցմամբ հայիք ի սա,
Եւ հանդիպիք գանձու սորա,
Տես թէ քանի՜ աշխատեցայ
Ես Մխիթար գրիչ սորա։
Թուղթս անկոկ ու գրիչ չկայ,
Աւուրքս ցուրտ ու պարզկայ.
Զարտախս բարձր ու կրակ չկայ,
Դոներս (հաց) չոր ու սպաս չկայ.
Եւ այս Գլաձորն ծվ գիտենայ,
Ես յոյժ նեղած ու ճար չկայ,
Գիրքս յերկար ու եղր չկայ
Եւ ես պանդուխտ, ու վեղար չկայ.
Ինձ հատուցումն յիշման արա
Վասն փցուն գրի սորա։

(Սիսուան 135)

Մխիթար գրչի անունով կան Գլաձորում ուրիշ ձեռագրեր էլ. օր. «Գիրք Լուծմանց Եւագրի» ՉԿԳ=1314 թ. որ գտնվում է այժմ Վենետիկի վանքում № 803 համարի տակ (տես Սարգիսեան, Եւագր. ներած. էջ ճիդ և ճխբ)։ Նույն է սրա հետ Մխիթար գրիչ 1314 թ. (Հացունի, Դաստիարակութ. էջ 44)։ Դարձյալ կա Մխիթար Երզնկացի. որ Գլաձորի վանքում օրինակել է «Լուծմունք»

քանից կտակարանաց» 1314 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 316, մեծ ցուցակը, էջ 5)։ Վերջապես ունինք Մխիթար կրօնավոր, աշակերտ Գրիգորիս Ծաղմանցու, գրիչ. Գլաձորում օրինակել է «Գիրք լուծմանց» 1315 թ. (Հայապ. 525—6, Սիսուան 106 բ)։ Սմբատեանց՝ Երնջակ 164—5։

— 113. Մխիթար, վանահայր Վաղադին վանքի (Սիւնիք), 1315 թ.—Արձ. Սիսական 525, Ազգագր. հանդ. Գ. 152։

— 114. Մխիթար, նշանավոր քարոզիչ Որնոյ գավառի Բատուենց գյուղում, կոչված է «արուսեակ», 1317 թ.—Թորոս աղբ. Բ. 419։

— 115. Մխիթար քահանա, որ Խաչիկ վարդապետից գնեց 1304 թվին Վժանում գրված մի Աւետարան, 1318 թ.—Ձեռ. Սևան. 8 բ։

— 116. Մխիթար վարդապետ. գրել է «Պատճառ մարդեղութեան Բանին Աստուծոյ» 1321 թ.—Զարբ. Հին դպր. 752 համարում է Սկեռացին. բայց եթե ընդունենք որ Սկեռացին Մանգոյ խանի մոտ գնալու ժամանակ (1253 թ) գոնե 30 տարեկան էր, ծնունդը կլինի 1223 թ. և 1321 թվին կդառնա 96 տարեկան, որից հետևում է թե պետք է դնել տարբեր անձ։ Եվ որովհետև այստեղ իբր ընկեր հիշվում է Բարսեղ աբեղա և այս նույնը ընկեր է հիշվում նաև Մխիթար Սասնեցուն, ուստի վերի Մխիթարն էլ ոչ թե Սկեռացին է, այլ Սասնեցին։—Իսկ Ձեռ. Կարին. 178 կոչում է Մխիթար Արծկեցի, որով լինում է բոլորովին տարբեր անձ։

— 117. Մխիթար, միաբան Ակների վանքում, հիշված է 1323 թ.—Տաշեան, Ցուց. 790։

— 118. Մխիթար երեց, մագաղաթ տալով օգնեց Գրիգոր գրչին՝ գրելու համար Աւետարանը Դրազարկի կամ Փոսի վանքում, 1325 թ.—Սիսուան 234 բ։

— 119. Մխիթար քահանա, ստացող, Ներսէս գրչին գրել տվեց մի Աւետարան, Ս. Կիրակոսի վանքում, 1325 թ.—Թորոս աղբ. Բ. 295։

— 120. Մխիթար սարկավագ «Թագվորին» (արքունի պալատի սարկավագ), որդի Ստեփանոս քահանայի, գրիչ. սկսեց գրել Աւետարանը, բայց մահը վրա հասավ։ Շարունակեց Գրիգոր երեցը, որ նույնպես չվերջացրած մնաց։ Վերջացրեց Սարգիս քահանան, 1326 թ։ Ստացողն էր Գրիգոր Տիվրնցին։—Rapport Belgique 85, 87։

— 121. Մխիթար, *որդի Պօղոսի. գրիչ. Եկեղեաց գավառի Երկայնի վանքում օրինակեց Թերի մի Հին Կտակարան, 1327 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 158—160։*

— 122. Մխիթար *քահանա, ծաղկող. Նկարազարդեց այն Ավետարանը, որ գրեց Ստեփաննոս գրիչը, Փոսի վանքում, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 517) և մի ուրիշ Ավետարան, որ գրեց Ներսէս գրիչը՝ նույն վանքում, 1329 թ. (անդ՝ էջ 518)։*

— 123. Մխիթար *Խանականցի, հորեղբորորդի Ներսէս վարդապետ Սասնեցու, նվիրատու ձեռագրի, 1332 թ. — Հայապ. էջ 546։*

— 124. Մխիթար *Խանականցի, հիւսն, ազգական Ներսէս վարդապետ Սասնեցու, նվիրատու ձեռագրի, 1332 թ.—Հայապ. էջ 546։*

— 125. Մխիթար *կրոնավոր, եղբայր Սիմէոն կրոնավորի, երկուսն էլ միաբան Աղթամարայ վանքի. գրել տվին մի Ավետարան Կարապետ գրիչ Աղթամարցուն, 1332 թ.—Ձեռ. Վասպ. 182, 184։*

— 126. Մխիթար *ավագ սարկավագ, թուղթ էր կոկում Ներսէս աբեղայի համար, երբ սա օրինակում էր Ճառընտիրը Երուսաղէմ, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 349։*

— 127. Մխիթար *տես* Մանաճիհր *№ 6։*

— 128. Մխիթար, *հիշված է մի խաչքարի վրա, 1336 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 448։*

— 129. Մխիթար *Սասնեցի կամ Կերմանեցի, կոչված նաև* քանահիւս. *Նշանավոր վարդապետ և մատենագիր 1260?—1337 թ։ Հորը մահից հետո մորը հետ գնաց բնակվելու Ապահունեաց Կերմանից գյուղը։ Սովորեց Գլաձորի վանքում, Ներսէս Մշեցու մոտ։ Ավարտելուց հետո այցելեց Կերմանից, Մեծոփայ և Արճէշի վանքերը։ Գրել է ճառեր, թվով 15 (1330 թվին), Մեկնութիւն Թղթոց և Հանգստեան Յովհաննու, Խօսք ընդդէմ Տօմարին Լեւոնի։ Թվի թե նա է այն Մխիթար վարդապետը, որ 1305 թվին Մեծոփում օրինակել է Եւագրը (Սարգիսեան, Եւագր. ներած. էջ* ճձգ *և 323)։ Մեռավ «1337 թ» և թաղվեց Մեծոփայ վանքում։ Մահվանից 106 տարի հետո, Մեծոփայ վանքի միաբանները՝ վանահայր Թովմա Մեծոփեցու գլխավորությամբ կանգնեցնում են նրա գերեզմանի վրա մի խաչքար, 1443 թ (Նոտարք 130)։ Իր կենսագրությունը գրել են Դանիէլ վարդապետ Մեծոփեցի (որ և անց է կացրել Յայսմաւուրքի մեջ) և Մկրտիչ*

*Մեծոփեցի, որի գրվածքը հրատարակեց Գ. վրդ. Ցովսէփեան, Վղրշպտ. 1899։—Մկ. մեծոփ. էջ 27—29. Ցայսմ. փետր. 11.—սեռ.* Մխիթարայ՝ *Մկ. մեծոփ. էջ 27. Ցայսմ. փետր. 11.—Զամչ. Գ. 343. Ձեռ. Վեննա. Բ. 302—3. Զարբ. Նոր մատ. 189—191. Ազգապ. 1862։*

— 130. Մխիթար, *հայր կամ եղբայր Սիմէոնի, որ նրա հոգուն մի կալված է նվիրել Թանատի վանքին 1339 թ.—Արձ. Սիսական 121։*

— 131. Մխիթար, *կանգնեցրել է Եղեգիսի գերեզմանատան մեջ 15 կանգուն բարձրությամբ նկարազարդ մի խաչքար՝ Բուրթէլի հետ, որ Թվի թե իր եղբայրն է, 1340 թ.—Սիսական 152։*

— 132. Մխիթար, *մի խաչքար է կանգնեցրել Արփայի եկեղեցու գավթում, 1341 թ.—Սիսական 182։*

— 133. Մխիթար *քահանա, ուսուցիչ Մկրտիչ քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Աւետարան 1344 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1926, 2*ᵛ*7։*

— 134. Մխիթար *Գռներցի կամ Հռոմցի (կոչված Տէր Մխիկ), կաթուղիկոս Հայոց «1341—1355 թ». Նախապես եպիսկոպոս և առաջնորդ էր Գռների վանից, իսկ հաջորդ Ներսէսի. «1335 թվին» ուղարկվել էր Լևոն Ե թագավորի կողմից պատգամավոր Եգիպտոսի Նասր սուլթանի մոտ՝ հաշտություն խոսելու համար։ Հաջորդեց գահընկեց Ցակոբ Բ Տարսոնացի կաթուղիկոսին, Լևոն Ե թագավորի առաջարկությամբ և Եվրոպայից օգնություն ստանալու հույսով՝ գումարեց Սսի 6-րդ եկեղեցական ժողովը «1343 թ», ուր մյնպիս հաստատվեց, թե Հայ եկեղեցին Հռովմեականի հետ նույն դավանությունն ունի. և երբ պապը կասկածով վերաբերվեց, կաթուղիկոսը Ցակոբ Տարսոնացի գահընկեց կաթուղիկոսին պատգամավոր ուղարկեց Իննովկենտիոս Զ (1352—1362) պապի մոտ «1354 թ», որ գերի էր Ավինիոնում։ (Ազգապ. 1913 Ցակոբ կաթուղիկոսի պատգամավորությունը համարում է Զամչեանի թյուրիմացությունը)։ Մեռել է 1355 թ. ըստ Ազգապ. բայց 1357 թվին Սուրխաթում գրված մի ձեռագրում դեռ կենդանի է հիշվում (տես Գիտական նյութերի ժող. № 1, էջ 46 բ. նույնը նաև Սմբատեանց՝ Երնջակ 202)։—Սամ. անեց. շար. 168. Առաք. պատմ. 335.—սեռ.* Մխիթարայ՝ *Ճառընտ. 1355 թ. № 45 Գարեգլի Ազգ. մատեն. ըստ Անան. Թրգ. էջ 16.—Զամչ. Գ. 339—353. Զարբ. Թրգմ. 145, 508. Սիսուան 147, 559 ա. Պալճեան 73—79. Ազգապ. 1861—1916։*

— 135. Մխիթար, որդի Պարոնշահի, հոգևոր հոր Ցոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ջեռ. Բեռլինի, 4 ա։

— 136. Մխիթար կրոնավոր, իր ընկերների հետ հիշված է իբրև միաբան Ս. Գէորգ զորավարի վանուց, 1357 թ.—Ջեռ. Վասպ. 213։

— 137. Մխիթար ռէյիզ (գեղապետ), սպանվեց Եգիպտոսում հալածանքի ժամանակ, շուրջ 1366 թ.—Ազգապ. 1931։

— 138. Մխիթար քահանա, հիշված 1375 թ.—Տաշեան, Ցուց. էջ 277։

— 139. Մխիթար գրիչ. օրինակել է Բարթուղիմէոս եպիսկոպոս Մարաղացու Վեցօրէից գիրքը՝ 1382 թ.—Ջեռ. Կարին. էջ 204։

— 140. Մխիթար վարդապետ Ուշտունի, աշակերտ Յովհաննէս Որոտնեցու. իր դասընկերներն՝ Յակոբ վրդ. Ուշտունու, Յովհաննէս վրդ. Մեծոփեցու և ուրիշների հետ ընտրեցին Գրիգոր Տաթևացուն իբր հաջորդ Որոտնեցու, «1388 թ».—տես. Մխիթարայ՝ Մեծոփ. 17։

— 141. Մխիթար քահանա, գրիչ. օրինակել է Խազգիրքը Բարերդիկ գյուղում, 1393 թ.—Ջեռ. Կարին. 41 > Նոտարք 1։

— 142. Մխիթար երեց, գրեց մի Աւետարանի գնման հիշատակարանը, Երզնկա 1397 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46 (սխալմամբ համարում է Աւետարանի գրիչը)։

— 143. Մխիթար Սուրմարեցի, վանահայր Կամրջաձորի վանքի, ազգական և հաջորդ Յովհաննէս Սուրմարեցու (ԺԴ դար).—Այրարատ 549։

— 144. Մխիթար Վանեցի, «հոգևոր որդեակ» Թովմա Մեծոփեցու. ականատես եղավ Լէնկթիմուրի անգթութեանց Դամասկոսում և Բաղդադում, որոնց մեջ մարդկային մազեր բերդեր շինեցին (1401 թ)։ Մխիթարը հազիվ ազատվեց այդ կոտորածից, դարձավ հայրենիք և այս բոլոր դեպքերը պատմեց Մեծոփեցուն։ Համակված այն ահից ու սարսափից, ինքն էլ միակեց դարձավ, բնակվեց Մեծոփեցու մոտ և երեք տարուց մեռավ.—Մեծոփ. 64. Ազգապ. 2004։

— 145. Մխիթար, որդի Անդրէաս քահանայի, որ մի Աւետարան նվեր ստացավ Թուրվանդայից, 1406 թ.--Բօսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 22։

— 146. Մխիթար Ապարանեցի. որդի Գորգիկի, մայրն է Նրախ. եղբայրը կոչվում է Շահ և քույրը Թուխտենիկ։ 10 տարի աշակերտել է Մաղաքիա Ղրիմեցուն, ապա Սարգսին, որից հետո հարեց ունիթոռական կուսակցության։ Այնքան մոլեռանդ էր, որ հենց իր խոստովանությամբ, մկրտում էր դավանափոխ հայերին և նրանց նորից «քրիստոնեայ» դարձնում։ Ման է եկել Մեծ ու Փոքր Հայք, Վրաստան և Յունաց երկիրը, և ամեն տեղ էլ հին հայկական ձեռագրեր է հավաքել, ինչպես ինքն է ասում, 50 տարի (1360—1410 թ)։ Ըստ Զամչեան (հտ. Գ. 445) այս բոլորը ուսանելու նպատակով էր, իսկ ըստ Սեդրակեան (Հայ. եկեղ. պատկերյարգութիւնը, էջ 272) նա այրում ոչնչացնում էր այն բոլոր ձեռագրերը, որոնք վիճում էին Հռովմի պապի ոտնձգությունների դեմ և պաշտպանում էին հայ ազգի և հայ եկեղեցու շահերը։ Գրել է Գիրք տրամաբանութեան ուղղափառաց (տես Հացունի, Ճաշեր, էջ 487), Գիրք հակաճառութեան (Զամչ. Գ. 449), Արևորդիների մասին մի գրվածք (Ալիշան, Հին հաւատք, էջ 92), նաև պատմական մի գրվածք (տես Զամչ. Գ. 353, Ազգապ. 1913), որ հասցնում է մինչև 1410 թվականը։—Ապրել է ԺԴ դարի վերջը և ԺԵ դարի սկիզբը։—Զամչ. Գ. 449. Ազգապ. 2062, Հայապ. 123, Սիսական 370։

— 147. Մխիթար Տաթևացի. իր ընկեր Կարապետի հետ աշակերտեց նախ Յովհան Որոտնեցուն և ապա Գրիգոր Տաթևացուն († 1410). որին հաջորդեց իբր առաջին վարդապետ. բայց շուտով վախճանելով՝ վարդապետ դարձավ Յովհաննէս Հերմոնեցին։ Իբր նշանավոր հայր մտել է պատարագի հիշատակության մեջ.—Յայսմ. ապր. 27.—տես. Մխիթարայ՝ Պարգ. 695, Մեծոփ. 50, Ազգապ. 2032։

— 148. Մխիթար, որդի Մկրտիչի և հորեղբոր Թոռ Յովհաննէս քահանայի, որ գրեց երկու Աւետարան, 1409 և 1417 թ.—Ձեռ. Վասպ. 304։

— 149. Մխիթար, իր կնոջ հետ մի խաչքար է կանգնեցրել Ախալքալաքի Թժբուկ կամ Թմոկվի գյուղի գերեզմանատան մեջ 1417 թ.—Ազգագր. հանդ. Ա. 158։

— 150. Մխիթար, եղբայր Ասպետի (նախ քան 1420 թ).—Տաշեան, Ցուցակ 666 ա։

— 151. Մխիթար (այլ), եղբայր Գազանի (նախ քան 1420 թ).—Տաշեան, Ցուց. 666 ա։

— 152. Մխիթար Գինեկեցի և

— 153. Մխիթար այլ ոմն, երկու հոգևոր եղբարք Եղբայրիկ գրչի, որ օրինակեց Աւետարանը Մամթութ տիկնոջ համար 1420 թ.—Ձեռ. Վաստ. 322։

— 154. Մխիթար եպիսկոպոս, առաջնորդ Կռուց անապատի և վիճակին Մարմետի (Գնունիք, որ է այժմ Թիմար), 1421—22 թ.—Նոտարք 66, 68։

— 155. Մխիթար քահանա, գրիչ. օրինակել է Քահանայաթաղը (Մաշտոց) Լեհաստանում, 1421 թ.—Նոտարք 66։

— 156. Մխիթար արքեպիսկոպոս և առաջնորդ վիճակին Ամասիոյ. գրել տվեց մի Գանձարան Յովհաննէս քահանային, 1424 թ. (Ձեռ. Լվով=ՀԱ 1937, 122)։—Հիշված է նաև 1427 թ. Թորոս աղբ. Ա. 65=Նոտարք 81։

— 157. Մխիթար, միաբան Գամաղիէլի վանից (Խիզան), 1427 թ.—Նոտարք 83։

— 158. Մխիթար, տնտես նույն վանքի 1427 թ.—Նոտարք էջ 83։

— 159. Մխիթար, միաբան Կողունց վանքի 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 160. Մխիթար եղեռնաբողբոջ և նորածաղիկ քահանայ, քրոջ որդի Հայրապետ կրոնավորի, որ նրա հիշատակին գնեց մի Աւետարան, 1431 թ.—Նոտարք 97։

— 161. Մխիթար, որդի Յովհաննէս քահանա Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.— Ձեռ. Դաշեան, Ա. 27 բ։

— 162. Մխիթար աբեղա, Թադէոս և Բարթուղիմէոս առաքելոց և Նախավկայի վիճակից էր. երբ «Շահռուխ Իմիրզէն» մեծ զորքով արշավեց այս երկիրը, այրեց, ավերեց, գերեց, կոտորեց, «և մեք տեսաք և վայ կարդայինք անձանց մերոց և լսելեացս. և մեք լալագին աչօք և դառն սրտիւ թողաք զծնող, զեղբայր, զքոյրս և զմայր և եկաք մինչև ի Համիթ քաղաք»։ Սևերակ քաղաքի հայերը խնդրում են որ մնա իրենց մոտ, Մխիթարը մնում է և Ս. Թէոդորոս եկեղեցում գրում է մի Աւետարան, որի թուղթ կոկողն էլ լինում է իր հորեղբորորդի աշակերտը՝ Ալթունը, 1437 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 64—65։

— 163. Մխիթար սարկավագ, հայր Մովսէս քահանայի, որ Եկեղեաց Աւագ վանքում ստացավ մի Յայսմաւուրք 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49։

— 164. Մխիթար *սարկավագ, որդի նույն Մովսէս քահանայի. նախորդի թոռն է. 1439 թ.—Տաշեան, Ցուց. 50։*

— 165. Մխիթար, *որդի Յովսէփ միայնակեցի, որ Լիմ անապատում գրեց, ծաղկեց ու կազմեց այն Աւետարանը, որ Յովանէս վարդապետը սկսել, բայց մահը վրա հասնելով կիսատ էր թողել, 1439 թ.—Ձեռ. Վասպ. 380։*

— 166. Տէր Մխիթար, *միաբան Այրիվանից, 1441 թ.—Այբուբեն 346։*

— 167. Մխիթար, *որդի Յովհաննէսի և եղբայր Մարգարէ գրչի, որ Մկրտիչ եպիսկոպոսի պատվերով, Մոկաց Աբրահամանց գյուղում գրեց մի Աւետարան 1441 թ.—Նօտարք 124։*

— 168. Մխիթար *մահտեսի, որի համար Կարապետ երեցը Վանում օրինակեց մի Յայսմաւուրք, 1442 թ.—Առաք. պտմ. էջ 322։*

— 169. Մխիթար, *որդի Պետրոսի, եղբայր Դովլաթ խաթունի՝ կնոջ տանուտէր Ատոմի, որ Ոստանում գրել տվեց մի Գանձարան, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 ա։*

— 170. Մխիթար, *որդի Բուրթելի և եղբայր Հազարբէկի, որ Խլաթում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։*

— 171. Մխիթար *աբեղա, օգնում էր իր եղբոր՝ Գալուստ գրչին, երբ սա օրինակում էր Աւետարանը՝ Աղջոց վանքում, 1447 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 688։*

— 172. Մխիթար *քահանա, գրիչ. օրինակեց Աստուածաշունչը 1447 թ.—Ձեռ. Կարին. 13։*

— 173. Մխիթար, *ազգական Հայրապետ կրոնավորի, որ Ձորոյ վանքում (Բաջբերունիք) գրել տվեց մի Աւետարան, 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 691։*

— 174. Մխիթար, *որդի Վարդազատի, եղբայր Ցինենից գյուղի ռէս Թումայի և ռէս Զաքարի. հիշված են 1451 թ.—Նօտարք 168։*

— 175. Մխիթար *կրոնավոր, առաջնորդ Սղքաու վանից 1453 թ.—հրատ. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ* ծա:

— 176. Մխիթար, *հօրեղբօրորդի Ատոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 580)։*

— 177. Մխիթար, *հայր Պօղոս աբեղա գրչի, որ Բաղէշի*

Ամրդոլայ վանքում օրինակեց մի Աւետարան, 1455 թ.—Նոտարք 178։

— 178. Մխիթար կրօնաւոր, միաբան Գամաղիէլի վանից 1455 թ.—Նոտարք 181։

— 179. Մխիթար, որդի Պարոնաւագի և եղբայր Ամիրբէկի, որ Մինաս գրչին գրել տվեց մի Աւետարան, Արճէշի Գայթիս գյուղում, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 424։

— 180. Մխիթար երեց, որդի Վարդաշահի. Արճէշում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ճաշոց և նվիրեց Սայլաւանապատի (Սալնապատի) եկեղեցուն, 1457 թ.—Նոտարք 185—6։

— 181. Մխիթար քահանա, որի հիշատակին մի արձանագրություն կա Ձմշկածագի Կարմիր վանքում 1458 թ.—Թորոս աղբ. Բ. 115 > Նոտարք 188։

— 182. Մխիթար ավագերեց Բաղէշի, վկայում է Պօղոս վարդապետի ժողովարարության մասին, 1461 թ.—Նոտարք 199։

— 183. Մխիթար, որդի Յովհաննէսի և եղբայր Մարգարէ գրչի, որ Ռշտունեաց Բերդաձորի վանքում, օրինակեց Աւետարանը 1463 թ.—Ձեռ. Վասպ. 445։

— 184. Մխիթար տանուտեր Նորագիւղի, 1465 թ.—Այրարատ 320, Նոտարք 221։

— 185. Մխիթար երեց, վանահայր Գետարգելայ վանից (Երևանի մոտ), 1465 թ.—Նոտարք 221։

— 186. Մխիթար սարկավագ, որդի պարոն Հազարբէկի, ազգական Շիրազխաթունի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։

— 187. Մխիթար, որդի Վարդանի և եղբայր Էգլշահի, որ ստացավ մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 472։

— 188. Մխիթար ոմն, հիշված 1476 թ.—Տաշեան, Ցուց. էջ 915։

— 189. Մխիթար քահանա, որդի Աղների, որ գրել տվեց մի Աւետարան՝ Աշոտաձորի Անկիւնեաց վանքում, 1477 թ.—Ձեռ. Ադուլ. (Արրտ. 1911, 219)։

— 190. Մխիթար քահանա, որդի Յովհաննէս քահանայի. մայրն է Մարթայ. Խոսրով անուն անձի համար օրինակեց Աւետարանը Բռնաշէնում, օգնությամբ իր որդի Յովհաննէս քահանայի, որ կազմեց գիրքը և Առաքել քահանայի (№ 93) որ «ծաղկազարդեց և պայծառացոյց», 1478 թ.—Ձեռ. Վասպ. 484—5։

— 191. Մխիթար, «դեռաբոյս որդի» Ղարիբշահի (№ 4), որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան 1486 թ.—Ձեռ. Վասպ. էջ 501։

— 192. Մխիթար գրիչ. որդի Թամուրի, աշակերտ Մատթէոս վարդապետի. Սեբաստիոյ Կոմառուն գյուղում, պարտիզպան Շնոփորի համար օրինակեց Ցայսմաւուրքը 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 434։

— 193. Մխիթար քահանա, միայնակեց, որդի Խաչիկի (№ 32). Աղթամարում, Զաքարիա (№ 90) գրչին գրել տվեց մի Աւետարան, 1487 թ.—Ձեռ. Վասպ. 505—6։

— 194. Մխիթար, տանուտերներից մեկն է Մաշկադդակ գյուղի. իր ընկերների հետ միասին նորոգել են մի հին Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 573։

— 195. Մխիթար, որդի Սահակի՝ եղբոր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 196. Մխիթար գրիչ. օրինակել է Մաշտոցը 1499 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 337։

— 197. Մխիթար, որդի Բուլղանդարի, մերձավորի Ռուզտիկնոջ, որ Խիզանում գրել տվեց մի Աւետարան, 1499 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։

— 198. Մխիթար, որդի Խաչատուրի, որ գրել տվեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։

— 199. Մխիթար Բաղիշեցի, վաճառական, որ առևտուրի համար գնաց Ատրպատական, Ղում, Իրաղ, Խորասան, Սամարղանդ, Բուխարա, Հնդկաստան և մինչև Խթայ։ Գնեց մի ղալմուխ գերի մանուկ, որին որդեգրելով՝ հետը Բաղէշ բերավ։ Սա է Աստուածատուր Խթայեցի նահատակը, որ տես. «1519 թ».—Աղթամ. 88—89, Նոր վկ. 353—4։

— 200. Մխիթար Վանեցի, «կարի ձիավոր և զինախաղաց և ուժնդակ, այլ և խելօք, կորովի և խօսուք քաջաբան» մարդ էր։ Դրա համար էլ Վանի փաշային, ղադիին, ենիչէրի աղասիին և այլ իշխաններին սիրելի անձ էր։ Մի օր, խնջույքի միջոցին մահմեդական երախաներ խռովելով՝ բարկացրին Մխիթարին, որ դաշույնով հարձակվեց նրանց վրա և սկսեց հայհոյել նրանց հավատքը։ Այս եղավ պատճառ որ սոֆտաները բողոքեցին փաշային և Մխիթարին բանտարկել տվին։ Ենիչէրիները լսելով այդ, 50 հոգով հարձակվեցին բանտի վրա, Մխիթա-

ըին ազատելով տարին իրենց մոտ և երկու օր պահելուց հետո ազատ արձակեցին։ Սոֆտաները հավաքվեցին, նորից բռնեցին նրան և փաշային, մուֆթիին և ղադիին դիմելով պատիժ պահանջեցին։ Ոչ մեկը չլսեց նրանց և Մխիթարին ազատ արձակեցին։ Զայրացած սոֆտաները և Մխիթարին փողոցներում քաշ տալով՝ պահանջում էին, որ ուրանա հավատքը։ Իսկ նա շարունակ մերժում և հայհոյում էր Իսլամի կրոնը։ Իբրև նշան բողոքի, սոֆտաները արգելեցին մզկիթների (մինարէի) աղոթքի կանչը։ Մի մոլեռանդ սոֆտա դաշույնով զարկավ նրան, մյուսները հարձակվեցին և կիսամեռ դիակը քաշ տալով՝ քարաթաղ արին «1656 Թ»։—Առաք. պատմ. 421—5, գլ. ԽԷ. Նոր վկ. 472—7, Ազգապ. 2624։

— 201. Մխիթար եպիսկոպոս Մոկաց. կոչված է Հալուակ Մխօ. գնաց Լէոպոլիս և ընդունեց կաթոլիկ դավանանքը 1693 Թ.—Տաշեան, Ցուց. 113 ա։

— 202. Մխիթար վարդապետ Քիւրդիստանցի (որ է Սղերդ). պատրիարք Պոլսի. հաջորդեց Մելքիսեդեկին «1699 Թ» և մի տարուց գահընկեց եղավ «1700 Թ».—Ազգապ. 2694։

— 203. Մխիթար Ղափանցի, քաջ զորավար և օգնական Դաւիթ բէգի. նրա մահից հետո («1728 Թ») հաջորդեց նրան. բայց իր դավաճան ընկերները պարգև ստանալու հույսով՝ նրա քնած ժամանակ գլուխը կտրեցին և Օսմանցոց փաշային տարին։ Փաշան այսպիսի քաջ մարդու տարապարտ մահվան վրա ցավելով՝ գլխատեց դավաճաններին, «1730 Թ»։—Տես Դաւիթ Սիւնեցի № 252։

— 204. Մխիթար աբբա Սեբաստացի (1676—1749 Թ), հիմնադիր Մխիթարեան միաբանության։ Ծնվել է Սեբաստիայում 1676 Թ. ավազանի անունն էր Մանուկ: Մանուկ հասակից չափազանց ուսումնասեր և կրոնասեր էր. 9 տարեկան հասակում դպիր ձեռնադրվեց և 15 տարեկան մտավ Ս. Նշան վանքը և Մխիթար անունն ընդունելով սարկավագ ձեռնադրվեց. Այդ միջոցին Սեբաստիա էր եկել Էջմիածնի նվիրակ Միքայէլ արքեպիսկոպոսը, որ անուն էր հանել իբր խստամբեր ճգնավոր և միևնույն ժամանակ գիտնական։ Մխիթարը նրա մոտ աշակերտեց և հետը գնաց Կարին, ապա Էջմիածին, Սևանայ վանքը և այսպես զանազան քաղաքներ թափառելուց և իր որոնածը չգտնելուց հետո, հասավ Պոլիս։ Իր միակ փափագն էր խորանալ կրոնական գիտության մեջ, մի վանք հիմնել և այդ գիտությունը սովո-

ընծնել իր աշակերտներին։ Իր ճամբորդության ժամանակ պատահելով հայ և օտար կաթոլիկ կրոնավորների, արդեն խմորվել էր կաթոլիկական ոգով։ Պոլսում ավելի զորացավ այդ ոգին. պատրիարքը հալածեց նրան և Մխիթարը ֆրանսիական դեսպանի հովանու տակ մտնելով. Պոլսում կազմեց գաղտնի մի կրոնական միաբանություն, 10 աշակերտներից կազմված, որոնց գլուխն էր ինքը (1701 թ)։ Փախչում են Մոռա, որ այն ժամանակ Վենետիկի հանրապետության էր պատկանում։ Մխիթարը ձեռք է բերում այստեղ Մեթոնի գյուղը և Պապի ու իտալական կառավարության օգնությամբ հիմնում է մենաստան, եկեղեցի, ինչպես և միաբանության պահպանության համար պարտեզ և ձիթաստան (1708 թ)։ 12 տարի այստեղ ծալուց հետո, ծագում է պատերազմ Օսմանցոց և Վենետկի հանրապետության միջև։ Մոռան գրավվում, Մեթոնի գյուղը քարուքանդ է լինում և Մխիթարի այնքան տարիների աշխատանքը ոչնչանում է։ Մխիթարը իր աշակերտների հետ փախչում է Վենետիկ, ուր ստանում է Ս. Ղազար անունով փոքրիկ կղզին և հիմնում նոր վանք (1717 թ)։ Իր աննկուն ոգով և անդուլ աշխատանքով նա այնքան առաջ տարավ այդ վանքը և այդ միաբանությունը, որ տարիներ հետո նա դարձավ հայոց ամենաբարձր ուսումնական հիմնարկությունը։ Մեռավ Մխիթարը 1749 թվին։ Նա ունի բազմաթիվ գրական գործեր, որոնց գլուխն է եռահատոր Հայկազեան բառարանը (տպ. 1769 թ)։ Այսօր 230 տարի է անցել այն օրից, երբ հիմնվեց Վենետկի վանքը։ Այս երկու դարի միջոցում Մխիթարեան միաբանությունը տվել է հայության շուրջ 100 հեղինակ և հազար հատոր աշխատություն։ Սրանց մեջ, մի կողմ թողնելով կրոնական և դպրոցական հասարակ գրքերը, կարևոր արժեք ունին 1) Օտար հին ու նոր գրականության բոլոր նշանավոր գործերի թարգմանությունը՝ սկսած Հոմերոսից մինչև Ֆենելոն, Դանտէ և Բայրոն։ 2) Ամբողջ հին հայ մատենագրության հրատարակությունը, որոնց գլուխն է Ս. Գրքի հրատարակությունը Բագրատունու ձեռքով (1860 թ)։ 3) Ամենից ավելի նշանավոր են հայագիտության բոլոր ճյուղերին վերաբերյալ գործերը, որոնց մեջ գերազանց են՝ Նոր Հայկազեան բառարանը (1836—7 թ), Չամչեանի Հայոց պատմութիւնը (1784—6 թ), Աւգերեանի Լիակատար վարք սրբոց, 12 հատոր (1810—15 թ), Ինճիճեանի Հնախօսութիւնը, 3 հտ. (1835 թ), Բագրատունու Զարգացելոց Քերականութիւնը (1852 թ.), Ալիշանի Տեղա-

գրութիւնները (Այրարատ, Շիրակ, Սիսական, Սիսուան), Զարբհանէլեանի Հին հայոց գրականության պատմությունը, Մատենագիտութիւն և Թարգմանութիւնք Նախնեաց։ Վենետիկի միաբանության մի ճյուղն է Տրիեստի և Վիեննայի միաբանությունը, որ բաժանվել է Վենետիկից 1773 թ։ Սրանց էլ արտադրած գլուխ գործոցներն են Կաթըրճեանի Տիեզերական պատմութիւնը (1849—52 թ), Պատարագամատոյցք հայոց (1897 թ), Այտընեանի Քննական քերականութիւն (1866 թ), Տաշեանի Ցուցակ հայերէն ձեռագրաց (1895 թ) և Ուսումն Դասական հայերէն լեզուի (1920 թ)։—Այս բոլորի մասին կան բազմաթիվ աղբյուրներ, որոնցից հիշենք 1) Ագոնց Գիւվէր, Պատմ. կենաց և վարուց տեառն Մխիթարայ աբբայի, Վենետիկ 1810.—2) Ծրիցեան, Վիեննայի Մխիթարեանք, Թիֆլիզ 1883.—3) Լէօ, Հայկական տպագրութիւն, հտ. Ա և Բ, մանավանդ հտ. Բ. էջ 1—104.—4) Աճառեան, Պատմ. հայոց նոր գրակ. Վղրշպտ. 1906, էջ 45—104։—Վենետիկի Մխիթարեանց բաժանման մասին խոսվում է բոլորովին այլ նպատակով գրված մի գրքում, որ է Mémoires de Jacques Casanova de Seingalt, Bruxelles 1881, հտ. 6, էջ 412—5։

†ՄԽԻԹԱՐԻՉ, ար. ծագմամբ նույն է Նախորդի հետ. առաջինը արմատական ձևն է, իսկ երկրորդը՝ մխիթարել բայի ներկա դերբայը։ Երբեմն միևնույն անձը երկու ձևով էլ կոչվում էր. այսպես Քանաքեռի երկու արձանագրությանց փորագրիչը 1305 թ. կոչված է Մխիթար (№ 103), իսկ 1306 թ. Մխիթարիչ (եթե չկա արտագրության սխալ)։ Նմանապես Մխիթար Ապարանցին (№ 146) կոչում է իրեն նաև Ցրա Մխիթարիչ (Սիսական 370 ա)։ Հնագույն վկայությունը 1215 թվից է և գնում է մինչև ԺԴ դարի սկիզբը։

— 1. Մխիթարիչ, որդի Գէորգի (№ 67) և եղբայր Յովհաննէս գրչի, որ սկսեց օրինակել Ճառընտիրը, բայց շուտով մեռավ։ Հայրը շարունակեց գրել, իսկ նյութը «ետ անտրտունջ ի յիւր հալալ վաստակոց», Յովհաննէսի եղբայրը՝ Մխիթարիչ, 1201 թ.—Հրատր. Ազատ. 1909 թ. յոշ. էջ ԽԶ։

— 2. Մխիթարիչ, որդի Գրիգորի, մի այգի նվիրեց Կեչառուս վանքին, 1213 թ.—Արձ. Այրարատ 263 աբ։

— 3. Մխիթարիչ Գանձակեցի, իր եղբոր՝ Աբրահամի հիշատակին Անիում, Ծաղկոցաձորի մոտ մի աշտարակի վրա թողել է մի արձանագրություն, 1215 թ.—Շիրակ 41։

— 4. Մխիթարիչ, *որդի Ալէքս պարոնի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1220 թ.*—Rapport Arm. *53։*

— 5. Մխիթարիչ, *որ և Մխիթար, որդի Աւետիս երեցի, որ նրա հոգուն գրել տվեց Հռոմում մի Աւետարան, 1242 թ.—Թորոս աղբ. Բ. 441։*

— 6. Մխիթարիչ, *իր ընկեր Վարդան վարդապետի հետ միասին նվերներ են արել Յովհաննավանքին, 1279 թ.—Այրարատ 170—171։*

— 7. Մխիթարիչ, *Բագուանի վանքում, Ստեփաննոս մենակեցի համար օրինակեց մի Աւետարան, որ նվիրեց Կանայ անապատին 1292 թ.—Ձեռ. Վասպ. 110։*

— 8. Մխիթարիչ, *եղբայր Յովհաննէս քահանայի, որ Սուրմարիում գրել տվեց մի Աւետարան 1296 թ.—Ձեռ. Վասպ. 121—122։*

— 9. Մխիթարիչ, *որդի Գրիգորի, մի այգի է նվիրել Կեչառուի վանքին (ԺԳ դար).—Այրարատ 263։*

— 10. Մխիթարիչ *տես Մխիթար № 103։*

— 11. Մխիթարիչ, *կրտսեր եղբայր Կիւրիոնի, որ օրինակեց Շնորհալու Մեկնութիւն Բարձրացուցէքի, 1311 թ.—Ակինեան, Կիւրիոն կթղ. 265—6։*

— 12. Մխիթարիչ *երեց, հիշված է նախ քան 1420 թ.—Տաշեան, Ցուց. 666։*

— *Անյայտ թվականով ունինք* Մխիթարիչ՝ *Արջոյառիճի արձանագրության մեջ (Շիրակ 123), Արձ. Դսեղի (Ազգագր. հանդ. Է, 348), Շիրակաւանի (Շիրակ 10), Տամճլուի (Այրարատ 251), Արձ. Անիի* Анийская Сер. *№ 3, էջ 94)։*

**ՄԽՈՒԱՆԴ*, *իգ. սխալ ընթերցված կամ սխալագիր ձև* Խուանդ *անվան, որ գտնում եմ Կարփիի 1338 թվի մի արձանագրության մեջ (Բանաս. 1903, էջ 30). տես* Խուանդ *№ 2։*

**ՄԿԴԷՄ*, *ար. < արաբ.* مقدام Miqdām *անունից (Կամուս, Գ. 535), որ բուն նշանակում է «ժրաջան, ջանասեր»։*

— 1. Մկդէմ, *որդի Վասակի Խաղբակեանց, Խաչենի իշխանական տոհմից, եղբայր Հասան-Պռօշի և Պապաքի, թոռն Խաղբակ Բ-ի. հազիվ ազատվեց Խփչախների պատերազմից «1222 թ»։ Իր մասին ուրիշ տեղեկություն չկա։ Մեռած պետք է լինի հոր մահվանից քիչ առաջ։—Կիր. Ժ. Մխ. այրիվ. 80.—սեռ.* Մկդեմայ՝ *Կիր. ծը > Նոր վկ. 97.—Այրարատ 268—9։*

— 2. Մկդէմ, *որդի Հասան-Պռօշի, թոռնորդի Խաղբակ Բ-ի,*

եղբայր Պապաքի, Հասանի և Վասակի. մեռել է նախ քան 1268 թ.—սեռ. Մկդեմայ՝ Կիր. ծը.—Այրարատ 268—9, Խաղբակեանք 104 և վերջի տախտակը։

†ՄԿՐՏԻՉ, ար. < հյ. մկրտել բայից, ակնարկութեամբ Յովհաննէս Մկրտչի. որի համար նույնպես տեղ տեղ գործածված է միայն Մկրտիչ վերադիրը, իբրև հատուկ անուն։ Այսպես՝ Զենոբ, էջ 31, հղկնտ. Բ. Ժ, Արծր. Գ. իզ։—Սովորական անունների համար գործածվել է սկսած Ը դարից (եթե չհաշվենք առաջին վկայությունը)։ Գործածական է մինչև այժմ. կրճատ ձևերն են Մկըր, Մկօ, Միկիչ, Մակիչ, Մուկուչ, Մակի, Մակլի. ռուսական ձևով՝ Նիկիտ։ Սրանից են Մկրտչեան, Տէր-Մկրտչեան ազգանունները։ Դրնդ. 454 ծաղրաբար գրում է Մրտռչին։

— 1. Մկրտիչ եպիսկոպոս Սիւնեաց, հովվեց նաև Արտազի թեմը, իբրև հաջորդ Ներսեհի և գահակալեց 22 տարի (480 ական թվերին).—Զքր. եպս. 284, Արրտ. 1868 դեկտ. էջ 103 բ։

— 2. Մկրտիչ Ա. պատրիարք Երուսաղէմի 708—730 թ. հաջորդեց Գէորգին, իրեն էլ հաջորդեց Յովհաննէս (ըստ Աղաւնունու)։

— 3. Մկրտիչ քահանա, գրիչ. Դրազարկի վանքում, Մովսէս վարդապետի համար գրեց մի Աւետարան, 893 թ.—Tübingen, էջ 4։

— 4. Մկրտիչ, ժանուկ է եղել, ընկղմվել է ծովում, Թէոդոսիա 947 թ.—Արձ. Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 35։

— 5. Մկրտիչ, փորագրիչ արձանագրության Շիրակաւանի 1231 թ.—Շիրակ 10։

— 6. Մկրտիչ եպիսկոպոս, թեմակալ Հանբերդի և առաջնորդ Յովհաննավանքի, ստորագրում է Սսոյ ժողովի կանոններին 1243 թ.—Կիր. խա. Զքր. սարկ. Գ. 17, 30. Այրարատ 156, 169 և 174։

— 7. Մկրտիչ աբեղա, որդի Ռատի, իր հոգևոր եղբայր Գրիգոր քահանայի հետ միասին վերաշինել են Արուճի և Փարպիի հնձանները 1258 թ.—Արձ. Շիրակ 26։

— 8. Մկրտիչ քահանա (ապա եպիսկոպոս), որդի պարոն Տիրացուի, գրիչ և ստացող Ճաշոցի, 1223 կամ 1261 թ.—Տաշեան, Ցուց. 20—21։

— 9. Մկրտիչ, հայր Սարկաւագ երեցի, որ կալվածներ է նվիրել Նորավանքին 1271 թ.—Արձ. Սիսական 190։

-- 10. Մկրտիչ քահանա, որդի Թադէոսի. գրիչ. Սաղմոսա-

վանքի առաջնորդ Տիրատուրի հրամանով և «արդեամբ» օրինակեց Կարփիում Խոսրով Անձևացու Մեկնութիւն Ժամագրոց, Պատարագամատոյց, Մեսրոպ երեց, Ջենոբ Գլակ և Յովհ. Մամիկոնեան, 1278 թ.—Ձեռ. Կարին. 165, Այրարատ 178, Շողակաթ, էջ 204։

— 11. Մկրտիչ, շինել է Ս. Կիրակոսի մատուռը՝ Արցախի Վերին Աղգան գյուղում, 1286 թ.—Արձ. Արցախ 346—7։

— 12. Մկրտիչ, որդի Սարավանի, եղբայր Շնորհաւորի, հարուստ վաճառական (ԺԳ դար).—Կիր. ծե։

— 13. Մկրտիչ, գրիչ Հարանց վարուց (Ձեռ. № 966 Վենետկի Մխիթարեանց). ԺԳ դար (տես Սարգիսեան, Ուսագր. Ներած. էջ ծք և ճձղ):

— 14. Մկրտիչ, սնվել է Գեղարդավանքում. թողել է մի կիսատ արձանագրութիւն Պռօշ իշխանի ժամանակից (ԺԳ դար). գտնվեց 1935 թ. Գեղարդաձորում կատարված պեղման ժամանակ (տես Նիւթեր հին Հայաստանի պատմ. 1935, էջ 140)։

— 15. Մկրտիչ կրոնավոր, միաբան Վարդանանց ուխտի. գրիչ. օրինակեց Գրիգոր աբեղայի համար Թուղթք Պօղոսի և Եսայի, 1303 թ.—Ձեռ. Վասպ. 64։

— 16. Մկրտիչ, որդի Գրիգոր քահանայի, եղբայր Վարդան քահանայի, որ օրինակեց Աւետարանը, Խոտինանց գյուղի Ս. Աստուածածին եկեղեցում, 1317 թ.—Թորոս աղբ. Ա. 218։

— 17. Մկրտիչ ոսկերիչ, զարդարեց կազմը այն Աւետարանի, որ Երուսաղէմում Ստեփան գրիչը օրինակել էր 1321 թ.—Թորոս աղբ. Բ. 346։

— 18. Մկրտիչ, առաջնորդ Գլաձորի անապատի. հոգևոր որդին էր Դաւիթ վրդ. մեծ ուսուցչի, որ նվիրեց նրան մի Աւետարան, որ գրել էր Կիւրեղ գրիչը՝ 1321 թ.—Manus. brit. mus. 24 ա։

— 19. Մկրտիչ «սրբազան կուսակրաւն քահանայ», որի տապանաքարը գտնվում է Քեալատաղում, 1323 թ.—Սիսական, էջ 171։

— 20. (Ջ)ատար Մկրտիչ, տանուտեր, հիշված 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460—461)։

— 21. Մկրտիչ, որդի խոջա Մուրատբախշի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

— 22. Մկրտիչ քահանա, որդի Դեղիկի, որ Արճէշում Դէոս-

կորոս քահանայէն գրել տվեց մի Աւետարան 1331 թ.—Ջեռ. Վասպ. 177։

— 23. Մկրտիչ Խանականցի, ազգական Ներսէս վարդապետ Սամնեցու, նվիրատու ձեռագրի 1332 թ.—Հայապ. 546։

— 24. Մկրտիչ աբեղա Խլաթցի, հիշված է Երուսաղէմում, 1335 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 349։

— 25. Մկրտիչ, որդի Յովհաննէս քահանայի և եղբայր Բարսեղ գրչի (№ 57), որ Բասենի Մժնկերտ գյուղում օրինակեց մի Աւետարան 1336 թ.—Ջեռ. Վասպ. 191։

— 26. Մկրտիչ քահանա, հայր Յովանէս գրչի, որ Խիզանում օրինակեց Աւետարանը 1336 թ.—Ջեռ. Վասպ. 194։

— 27. Մկրտիչ կրոնավոր, միաբան Խիզանի Ս. Աստուածածին և Ս. Սարգիս եկեղեցիների, 1336 թ.—Ջեռ. Վասպ. 194։

— 28. Մկրտիչ, որդի Կարապետի և եղբայր Առաքել գրչի, որ Մոկաց Դաշտ գյուղում գրեց մի Աւետարան, 1338 թ.—Ջեռ. Վասպ. 198։

— 29. Մկր(տիչ) քահանա, գրիչ. օրինակել է Ազոխ (իմա Ազով) քաղաքում մի Ժողովածու, ստացող Սարգիս Լոռեցու պատվերով, 1339 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 81։

— 30. Մկրտիչ երեց, օրինակեց և ծաղկեց Մանրուսմունքը (տեղն անհայտ) 1340 թ.—Տաշեան, Ցուց. 499, «Էջմիածին» 1915, օգոստ. 33 բ։

— 31. Մկրտիչ վանահայր, իր ուսումն ստացել էր Գլաձորի վանքում, Եսայի Նչեցու աջակից նշանավոր Դաւիթ վարդապետի (№ 143) մոտ, որ կոչված է ուսուցչապետ։ Այս վերջինը նվիրեց նրան՝ նույն դպրոցում 1321 թվին գրված մի Աւետարան։ Աւելի ուշ՝ եղավ Սպիտակաւոր Ս. Աստուածածին (որ և Բոլորաձոր) վանքի վանահայր, ինչպես հիշված է 1340—43 թվերին։—Խաղբակեանք 206—210 (կարծում է թե Խաչատուր Կեչառեցու որդին է. տես № 58), Արար. 1889, 58, Սիսական 134—9։

— 32. Մկրտիչ քահանա, հայր Գրիգորիս քահանայի, որ օրինակեց Երզնկայում մի մեծ Ճառընտիր, 1343 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 174։

— 33. Մկրտիչ, գրել է մի Աւետարան, որ ավարտել է 1344 թ. «ի պաշարմանն Կաֆայի», հանձնարարութեամբ Բաբերդցի Մկրտիչ կուսակրոն քահանայի, որ էր որդի Իշխանի.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237 (գրիչ և ստացող կոչված են Մկրտիչ. գրիչը չի հիշված հիշատակարանում, այլ միայն հրատարակչի

տված նկարագրության մեջ. մի զույգ թյուրիմացության արդյունք է)։

— 34. Մկրտիչ ոմն, նվիրատու Սպիտակավոր Ս. Աստվածածնի վանքի, 1343 և 1346 թ.—Խաղբակեանք 209, Սիսական 138, Արար. 1889, 56։

— 35. Մկրտիչ, կազմեց մի Ավետարան, որ գրել էր Սարգիս քահանան, Կիլիկիայում, 1353 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 20 բ։

— 36. Մկրտիչ քահանա, որդի Թովմայի և եղբայր Կարապետ կրոնավորի. որ մահդեսի Հնդուի համար գրեց մի Ավետարան 1357 թ.—Ձեռ. Վասպ. 214։

— 37. Մկրտիչ, այլ ոմն մերձավոր նույն Կարապետ գրչի, 1357 թ.—անդ։

— 38. Մկրտիչ աբեղա, որի տապանաքարը կա Գողոս-Բուլաղի (Դարբանդ) գերեզմանատանում 1364 թ.—Բարխուտ. Աղուանից երկ. էջ 109։

— 39. Մկրտիչ կրոնավոր, փակակալ Աղթամարի Ս. Խաչ վանքի. շատ օգնեց Ատոմ կրոնավորին՝ արտագրելու Լուծմունք Վարդանի, 1366 թ.—Ձեռ. Վեննետ. Բ. 846։

— 40. Մկրտիչ քահանա, գրել է մի Ավետարան 1371 թ.—Ձեռ. Վասպ. 218 (ասում է թե չունի հիշատակարան. բայց որտեղից է գտել թվականը)։

— 41. Մկրտիչ քահանա փակակալ. Տոներ գրչին գրել տվեց Մարգարէութիւն Եսայեայ 1381 թ.—Ձեռ. Սանաս. 22 ա։

— 42. Մկրտիչ, որդի Զաքարիայի և եղբայր Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 849։

— 43. Մկրտիչ Բ. պատրիարք Երուսաղէմի. Նախապես աթոռակից է եղել Գրիգոր Գ պատրիարքի 1356—1363 թ. և նրա մահից հետո նստավ առանձին 1363—1378 թ (այսպես ըստ Ս.-ղաւնունու. իսկ ըստ Տ. Մուրատի՝ Ցայտ. յովհ. ջիհ նստել է 1365—1386 թ։ Երուսաղէմի Օրացույցը դնում է նստած 1363 թ. իբր հաջորդ Կիրակոսի, իսկ իրեն էլ հաջորդել է Յովհաննէս Լեհացի։ Օրմանեանն էլ դնում է 1366—«1381 թ»)։ Սրա օրով Եգիպտացիք շատ էին չարչարում քրիստոնյաներին. պատրիարքին իր միաբաններով երկու անգամ Երուսաղէմից Գազա քշեցին, երկու աբեղա նահատակեցին, Ս. Փրկիչ վանքը խլելով ախոռ դարձրին (Ազգապ. 1931)։

— 44. Մկրտիչ, ճաշ էր պատրաստում Յովհաննէս գրչի

համար, երբ սա արտագրում էր Կիւրեղի, Եփրեմի և Վարդանի գործերը, Ոստանում, 1382 թ.—Bodleian 166։

— 45. Մկրտիչ քահանա, հայր Կարապետ գրչի, որ օրինակեց Ճառընտիրը Աղթամարում, 1389 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 765)։

— 46. Մկրտիչ, հայր Ստեփաննոս միայնակեացի, որ Աղթամարում օրինակել տվեց Ճառընտիրը՝ 1389 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 759—765)։

— 47. Մկրտիչ, որդի Առաքել քահանայի և եղբայր Գէորգ երեցի, որ Երզնկայում օրինակեց Ճաշոցը 1391 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։

— 48. Մկրտիչ սարկավագ, միաբան և սպասավոր Երզնկայի Ս. Նշան վանքի, Կարապետ քահանայի հետ (№ 100, որ հոգևոր և ոչ բնավ մարմնավոր եղբայրն էր Գէորգ երեցի), օգնեցին սրան արտագրելու իր Ճաշոցը 1391 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 242։

— 49. Մկրտիչ, Մատթէոսի հետ միասին Աղթամարի Զաքարիա կաթողիկոսից գնեցին Գլաձորում 1317 թվին գրված մի Ոսկեփորիկ, 1372 կամ 1392 թվին։—Ձեռ. Վենետ. Բ. 859։

— 50. Մկրտիչ քահանա, կինն է Թանկ խաթուն. ծնողներն են Կարապետ քահանա գրչի (№ 101), հիշված 1392 թ. և Զաքարայ (№ 49) գրչի, հիշված 1393 թ.—Ձեռ. Վասպ. 227, 229 և 235։

— 51. Մկրտիչ եպիսկոպոս Կարուց. սա ունէր երկու եղբայր, որոնց համար պատմվում է հետևյալ դեպքը։ Երբ Լէնկթիմուրի զորքերը գրավեցին Բագրատունեաց բերդը (Կարս), բնակիչներին բաժանեցին երկու խմբի. 300 տաճիկ մի կողմ և 300 քրիստոնյա մի կողմ. որոշել էին քրիստոնյաներին սպանել և տաճիկներին ազատել։ Մկրտիչ եպիսկոպոսի երկու եղբայրները գնացին խառնվեցին տաճիկների խմբի մեջ։ Թաթարները ազատեցին քրիստոնյաներին և սկսեցին կոտորել տաճիկներին։ Երկու եղբայրները սկսեցին բղավել թե «Մենք քրիստոնյա ենք»։ Թաթարները պատասխանեցին. «Դուք ստախոս էք», և կոտորեցին Մկրտիչ եպիսկոպոսի երկու եղբայրներին միայն և մնացյալին ազատ արձակեցին (1395 թ)։—Մեծոփ. 46. Ջամչ. Գ. 426. Ազգապ. 2003։

— 52. Մկրտիչ, որդի Օտարշահի և եղբայր Ներսէս գրչի, որ Գամաղիէլի վանքում օրինակեց Ճառընտիրը Ասատ միայնա-

կեացի համար, 1397 թ. երբ Մկրտիչը մեռած էր։—Վեննետ Բ. 1286։

— 53. Մկրտիչ երեց, մերձավոր Վարդան քահանայի, որ Երզնկայում մի ուրիշ Վարդան քահանայից (որդի Խոսրովի) գնեց մի Ավետարան 1397 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։

— 54. Մկրտիչ սարկավագ, որդի Վարդան քահանայի, որ Երզնկայում Խոսրովի որդի Վարդան քահանայից գնեց մի Ավետարան, 1397 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։

— 55. Մկրտիչ քահանա, ստացավ մի հին Մաշտոց 1397 թ.—Տաշեան, Ցուց. 705 բ։

— 56. Մկրտիչ կրոնավոր, միաբան Գուգարաց վանքի, 1397 թ.—Նոտարք 10։

— 57. Մկրտիչ, որդի Աբրահամի և եղբայր Դանիէլ տանուտիրոջ, որ Աղթամարում գրել տվեց մի Ավետարան 1399 թ.—Ջեռ. Վասպ. 234։

— 58. Մկրտիչ վարդապետ, որդի Խաչատուր Կեչառեցու, Պռօշեան տոհմից (ԺԴ դար)։—Այրարատ 268, Տաշեան՝ Ուս. Ստ.-Կալիսթ. 125. Խաղբակեանք 209—210 (վերջինս նույն է համարում Սպիտակավոր վանքի վանահայր Մկրտիչի հետ (№ 31)։

— 59. Մկրտիչ գանձասաց. իր գանձերը տես Manus. brit. mus. 112—9. ամենաուշը պիտի լինի ԺԴ դարից, ըստ որում ձեռագիրը գրված է 1412 թ.—բազմաթիվ գանձեր կան դարձյալ՝ անդ, էջ 126—137.—տես նաև Մկրտիչ վրդ. Մեծոփեցի։ Մկրտիչ ծայրանունով մի գանձ էլ կա, որ սկսում է «Մեծ հառաչանօք եկեն» և հրատարակված է Ջեռ. Վասպ. 166. Թվականը 1316-ի և 1410-ի միջև. երևի օրինակված է Գանձարանից։

— 60. Մկրտիչ Մեծոփեցի, աբեղա, աշակերտ Մխիթար Սասնեցու († 1337 թ). գրեց իր ուսուցչի կենսագրությունը, որ հրատարակեց Ցովսէփեան, Էջմիածին 1899, «Մխիթար Սասնեցի» վերնագրով։— Մկ. Մեծոփ. 32. Ջեռ. Վեննետ. Բ. 302։

— 61. Մկրտիչ քահանա, հայր Ցովհաննէս գրչի, որ Խիզանում, Ցովհաննէս քահանայի համար գրեց մի Ավետարան 1402 թ.—Ջեռ. Վասպ. 289։

— 62. Մկրտիչ, Մեծոփայ վանքի շինության մասնակցող ճարտարապետներից մեն՝ 1402—9 թ.—Նոտարք 30, Ազգապ. էջ 2001։

— 63. Մկրտիչ վարդապետ Բերկրեցի, աշակերտ Ցովհան-

նէս վրդ. Մեծոփեցու և դասընկեր Թովմա Մեծոփեցու. ներկա էր Գր. Տաթևացու թաղման հանդեսին (1410 թ), ինչպես նաև իրենց ուսուցիչ Յովհ. Մեծոփեցու թաղման, Հաւուցթառում 1410 թ.—Մեծոփ. 61, Այրարատ 357, Ազգապ. 2028։ (Նոտարք 55 նույն է դնում Մկրտիչ № 169)։

— 64. Մկրտիչ վարդապետ, այլ աշակերտ Յովհաննէս վրդ. Մեծոփեցու, որի նույնպես թաղման հանդեսին ներկա եղավ Հաւուցթառում 1410 թ.—Մեծոփ. 61։

— 65. Մկրտիչ Հիզնացի, աշակերտ Սարգիս վարդապետի Սուխարավանից, ապա Գրիգոր Տաթևացու († 1410 թ), Մեծոփի վանքում.—Մեծոփ. 52, Ազգապ. 1999։

— 66. Մկրտիչ Փայտակարանցի, աշակերտ Գրիգոր Տաթևացու, որ † 1410 թ.—Ցայսմ. ապր. 27, Մեծոփ. 51։

— 67. Մկրտիչ, աշակերտ Սարգսի, ապա Գրիգոր Տաթևացու. տարբեր է նախորդից.—Ցայսմ. ապր. 27։

— 68. Մկրտիչ վարդապետ Նահապետանց, աշակերտ Սարգիս վարդապետի Սուխարայ վանուց, դասընկեր Թովմա Մեծոփեցու (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 418։

— 69. Մկրտիչ, որդի խաչպան Յովհաննէս երեցի, որ գնեց մի Աւետարան, 1411 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 232։

— 70. Մկրտիչ, մին այն վեց կրոնավորներից, որոնց օգնությամբ Ստեփաննոս վրդ. Ռշտունին ավերակ դարձած Ս. Յակոբայ վանքը վերաշինեց 1412 թ.—Նոտարք 41, 138։

— 71. Մկրտիչ Եղէգեցի, գրիչ. Սաղմոսավանքում օրինակեց «Լուծմունք Առ որս գրոց», 1413 թ. և նվիրեց իր ընկեր Թովմա վրդ. Մեծոփեցուն, որ Առ որս գիրքն էր արտագրել և նվիրել նրան.—Այրարատ 163։

— 72. Մկրտիչ կրոնավոր, հայրապետ և առաջնորդ Խիզանի Ս. Խաչ վանքի. իր միաբանների խմբի հետ հիշված է 1402 թ. և 1413 թ.—Նոտարք 17, 43։

— 73. Մկրտիչ վարդապետ, միաբան Տէր Յուսկան որդու վանից. իր աշակերտ Մկրտիչ կրոնավորին գրել տվեց Տաթևացու «Լուծմունք Սաղմոսաց Դաւթի» նույն վանքում, 1414 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 62 ա։

— 74. Մկրտիչ կրոնավոր, որդի ժահդասի Մուրատի, աշակերտ նախորդ Մկրտիչ վարդապետի. իր ուսուցչի հրամանով օրինակեց Տաթևացու Լուծմունք Սաղմոսաց Դաւթի՝ Տէր Յուսկան որդու վանքում, 1414 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 62 ա։

— 75. Մկրտիչ *քահանա, հայր Յովհաննէս գրչի, որ առաջին անգամ լինելով գրել է մի Գանձարան, 1416 թ.—Նոտարք, էջ 49։*

— 76. Մկրտիչ, *կինն է Թամար (№ 14), որ հորեղբորդուստրըն է Յոհաննէս քահանա գրչի, որ օրինակեց երկու Աւետարան 1409 և 1417 թ.—Ջեռ. Վասպ. 304։*

— 77. Մկրտիչ *սարկավագ, Բաղէշի Գոռ գյուղում, Մարտիրոս կրոնավորի համար օրինակել է Ցայսմաւուրքը 1418 թ.—Նոտարք 55—56 (համարում է նույն ընդ Մկրտիչ Նաղաշ. նույնը կրկնում է Կոստանեանց, Նշշ. էջ ը)։*

— 78. Մկրտիչ, *որդի Աբրահամի և եղբայր նույն Մարտիրոս կրոնավորի, որ Բաղէշի Գոռ գյուղում գրել տվեց մի Ցայսմաւուրք 1418 թ.—Նոտարք 55։*

— 79. Մկրտիչ *քահանա, որդի Ապրիլուսի. գրեց Թումայ կրոնավորին գրել տվեց Աղթամարում մի Ճաշոց, որ և նվիրեց Ս. Սանդուխտի դուռը, Գր. Նարեկացու գերեզմանին, 1419 թ.—Նոտարք 58։*

— 80. Մկրտիչ *ժաճակալ Բերկրիի Տէր Յուսկան Որդու վանքի, 1420 թ.—Նոտարք 61։*

— 81. Մկրտիչ, *միաբան նույն վանքի 1420 թ.—Նոտարք 61։*

— 82. Մկրտիչ, *մերձավոր Եղբայրիկ գրչի, որ Մամթուլթիկնոջ համար օրինակեց Աւետարանը 1420 թ.—Ջեռ. Վասպ. էջ 322։*

— 83. Մկրտիչ, *ձեռնավոր Զարիշատ ավանի, հավատքը չուրանալով, ամբողջ ընտանիքով (ութ հոգի) կրակը գցվեցին և նահատակվեցին Ամիւկ բերդի իշխան Փիրալիի ձեռքով «1420 թ».—Մեծոփ. 110. Զամչ. Գ. 467, Նոր վկ. 231։*

— 84. Մկրտիչ *կրոնավոր, մորեղբայրն է Ստեփանոս կրոնավորի, որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1421 թ. նախ քան այդ՝ Մկրտիչը նահատակվել էր Թամուրի ձեռքով։—Ջեռ. Վասպ. 340։*

— 85. Մկրտիչ *քահանա, բազմաշխատ ուսուցիչ Կարապետ երեցի, որ Վանում օրինակեց Աւետարանը, 1421 թ.—Ջեռ. Վասպ. 341։*

— 86. Մկրտիչ *քահանա, հայր Կարապետ Դերջանցու, որ Հերմոնի վանքում գրեց Քարոզգիրքը, 1421 թ.—Ջեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ)։*

— 87. Մկրտիչ, *գրոց աշակերտ, Տրապիզոնցի, գնեց Ղա-*

գոր գրչից Հարանց վորքը, որ օրինակել էր Ղազարը իր համար, 1422 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 58 ա։

— 88. Մկրտիչ քահանա, որդի Օղբէկի. մայրն է Խութլուխաթուն, զավակներն են Պետրոս և Թումայ։ Իրեն համար ասում է գրիչը. «Կարգեալ ի սպասաւորութիւն ժողովրդեան Քրիստոսի». և մի ուրիշը «յիշել զարժանին յիշատակի զպատուելի քահանայն զՄկրտիչ, առաջնորդ քաղաքին Բերկրոյ, որ բազում գութ և խնամ տանի մեզ»։ Միաբան էր Բերկրիի Տէր Յուսկան որդու վանքի. Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան՝ արդեամբ իր երկու մորեղբայրների՝ Ստեփաննոսի և Մարտիրոսի, որոնք Բերկրիի տանուտերներն էին 1418 թ։ Հիշված է նաև 1420 թ. (Նոտարք 55, 61), 1422 թ. (Ձեռ. Վասպ. 350)։

— 89. Մկրտիչ, «Նորաբողբոջ պատանեակ», եղբօրորդի Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիում Յակոբ աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347։

— 90. Մկրտիչ կրոնավոր, միաբան Կտուց անապատի 1422 թ.—Նոտարք 68։

— 91. Մկրտիչ երեց, որ Գրիգոր աբեղայի և Կարապետ գրչի հետ միասին՝ երեքով մի Յայսմաւուրք գրեցին Վանում, Ատոմ աբեղայի համար, 1422 թ.—Նոտարք 68։

— 92. Մկրտիչ պարոն, որդի խոջա Ստեփաննոսի, որ շինեց Տրապիզոնի Ամենափրկիչ վանքը և եկեղեցին 1424 թ.—Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 83։

— 93. Մկրտիչ քահանա, Սքանտարի պաշարման ժամանակ պահպանեց Աւետարանը 1425 թ.—Նոտարք 78։

— 94. Մկրտիչ քահանա, վկայում է որ Էվաչան Տրապիզոնում գնել է մի հին Աւետարան 1425 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 486։

— 95. Մկրտիչ աբեղա, լուսարար Երուսաղէմի տաճարի, Տիրատուր և Վարդան աբեղաներին գրել տվեց «Մեկնութիւն Թղթոյն կաթուղիկեաց» 1427 թ.—Նոտարք 82։

— 96. Մկրտիչ կրոնավոր, որդի Վարդանի և հօրեղբօրորդի Թումայ գրչի, որ Աղթամարում, տիկին Խաթունի համար օրինակեց մի Աւետարան, որ և ծաղկեց նույն Մկրտիչ կրոնավորը. 1425 թ։ Արդեն մեռել էր 1428 թ.—Ձեռ. Վասպ. 353, Նոտարք 89։

— 97. Մկրտիչ, երեք նույնանուն միաբաններ Պատրկայ

վանքի (Ոստանի դեմ), որոնք հիշված են 1420 թ. (Ձեռ. Վասպ. 324), իսկ նրանցից մեկը միայն 1428 թ.—Նոտարք 88։

— 98. Մկրտիչ տանուտեր, որդի Սաղաթելի, Կողունց վանքում ստացավ մի Ճառընտիր 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 99. Մկրտիչ աբեղա, միաբան Կողունց վանքի 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 100. Մկրտիչ, միաբան Զորեհանդիստ Լուսաւորչի վանից. իր միաբանակից ընկերների հետ հիշված է 1429 թ.—Նոտարք 92։

— 101. Մկրտիչ քահանա, որդի Հայրապետ քահանայի, առաջնորդ Ծոսրովայ վանքի, 1430 թ.—Ձեռ. Վասպ. 358—9, Նոտարք 94։

— 102. Մկրտիչ արքեպիսկոպոս, ծաղկեց մի Ժամագիրք և Պատարագամատոյց՝ Մեծոփի վանքում, 1432 թ.—Գաթըրճեան, Պորգմո. 84։

— 103. Մկրտիչ վարդապետ, աշակերտ Թովմա Մեծոփեցու. իր աշակերտակից Ցովհաննէս և Զաքարիա վարդապետների հետ՝ օրինակեցին մի Ժամագիրք Մեծոփի վանքում, 1432 թ.—Ձեռ. Մխիթ. 19 ա։

— 104. Մկրտիչ, որդի Նորամիրի և եղբայր Ցովհաննէսի. գնել են տաճիկների ձեռքը ընկած մի Աւետարան 1433 թ.—Ձեռ. Վասպ. 364։

— 105. Մկրտիչ, հորեղբայր տանուտեր ոսկերիչ Երզնկացի Ցովհաննէսի, որ Արճէշում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան 1433 թ.—Ձեռ. Վասպ. 368։

— 106. Մկրտիչ հայրապետ Լուսաւորչի անապատի, 1434 թ.—Նոտարք 103։

— 107. Մկրտիչ քահանա, ազգական տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 108. Մկրտիչ, որդի Տէրաւագի և եղբայր տանուտեր Ցովհաննէսի, որ Աղթամարում, Դանիէլ գրչին գրել տվեց մի Աւետարան 1436 թ.—Ձեռ. Վասպ. 373։

— 109. Մկրտիչ կրոնավոր, Ձմշկածագի Կարմիր վանքում գրեց մի Գանձարան 1436 թ.—Նոտարք 108։

— 110. Մկրտիչ, որդի Ամիր-Հասանի, եղբայր Թաճդինի, հիշված 1437 թ. (Նոտարք 112). Հաջորդը տես Թաջդին։

— 111. Մկրտիչ, որդի Ցովհաննէս քահանայի և եղբայր

Նկարապետ գրչի, որ Արճէշում, սույն Թաշգինի համար օրինակեց Ցայսմաւուրքը 1437 Թ.—Նոտարք 111։

— 112. Մկրտիչ, որդի Բուրդամիրի՝ քեռայն Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում, Դաւիթ գրչին գրել տվեց մի Ճաշոց 1438 Թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243։

— 113. Մկրտիչ աբեղա, Թուղթ կոկող էր Եկեղեաց գավառի Աւագ վանքում, 1439 Թ.—Տաշեան, Ցուց. 49։

— 114. Մկրտիչ սարկավագ, Եկեղեաց գավառի Աւագ վանքում 1439 Թ.—Տաշեան, Ցուց. 49։

— 115. Մկրտիչ, հայր Աւետիք երեցի, Եկեղեաց գավառի Աւագ վանքում, 1439 Թ.—Տաշեան, Ցուց. 49։

— 116. Մկրտիչ վարդապետ, վերջացրեց այն Աւետարանը, որ Լիմ անապատում սկսել էր գրել Յովհաննէս վարդապետը, բայց մահը վրա հասնելով կիսատ էր թողել։ Նույնը այնուհետև շարունակել էր Յովսէփ միայնակեցը, բայց սա էլ բոլորովին չվերջացրած՝ մեռել էր։ Երրորդ անգամ ձեռք էր առել սույն Մկրտիչ վարդապետը, որ Թեև գրեց վերջացրեց, բայց սա էլ հիշատակարանը գրելու չժամանելով, մեռավ 1439 Թ։—Ձեռ. Վասպ. 382։

— 117. Մկրտիչ խոջա, տանուտեր Սեբկեիլ գյուղի (Արարատեան գավառ), 1441 Թ.—Հրար. Ազաթ. 1909 Թ. յոյ. էջ ԽԹ։

— 118. Մկրտիչ տանուտեր, որդի Պարոնի, Աղթամարում՝ Դանիէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, ոսկով ու արծաթով զարդարել տվեց, և նվիրեց Աղթամարի Ս. Խաչ վանքին, 1441 Թ. — Ձեռ. Վասպ. 381—4, Նոտարք 127։

— 119. Մկրտիչ քահանա, որդի Ոնոփրիոս քահանայի. Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ճաշոց, որ և ինքը նկարազարդեց (1441 Թ)։ Մկրտիչ քահանան մտադիր էր ուխտի գնալ Երուսաղէմ, բայց Նուրալիվանդը արշավեց Արճէշ և բոլորին Թալանեց։ Մկրտիչը Ճաշոցը փախցրեց Տիւրիկ, ուր Ղազար երեցին ծախեց 50 Ֆլորինով և այդ գումարով գնաց Երուսաղէմ.—Թորոս աղբ. Ա. 222—5։

— 120. Մկրտիչ եպիսկոպոս Մոկաց, որդի Կիրակոսի (№ 108). մայրն է Խոնդմելէք (№ 1). հօրեղբօր մայրն է մահդասի Մարթա (№ 28)։ Մոկաց Աբրահամանց գյուղում Մարգարէ գրչին (№ 41) գրել տվեց մի Աւետարան 1441 Թ.—Նոտարք 124։

— 121. Մկրտիչ վարդապետ Մեծոփայ վանուց. ներկա էր Գրիգոր Տաթևացու թաղման հանդեսին (1410 Թ). անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 Թ».—Մեծոփ. յիշ. ա. Աթան. յոյ.

ժղ. Այրարատ 357. Նոտարք 122, Ազգապ. 2028. — (Կոստանդեանց, Նշ. խը կարծում է թե սա է հեղինակն այն գանձերի, որ Տաշեան, Ցուց. 424 են ընծայում է Մկրտիչ Նաղաշին)։

— 122. Մկրտիչ եպիսկոպոս Բագրանու (Բագրեանդի), անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».—Մեծոփ. յիշ. ա։

— 123. Մկրտիչ վարդապետ Օղուլբեկենց (Նոտարք 122 գրում է Ողբեկենց), աշակերտ Սարգիս վարդապետի Սուխարավանից, դասընկեր Թովմա Մեծոփեցու, անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».— Մեծոփ. 51 (ընկերները տես Սարգիս րաբունապետ. բայց Մեծոփ. 51 դնում է մի Մկրտիչ և ոչ թե երկուսը). Տաշեան, Ցուց. 418, Ազգապ. 2106։

— 124. Մկրտիչ վարդապետ Հողձեցի (Նոտարք 122 գրում է Հողեցի). աշակերտ Սարգիս վարդապետի Սուխարայ վանից. դասընկեր Թովմա Մեծոփեցու. անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».—Տաշեան. Ցուց. 418, Ազգապ. 2106։

— 125. Մկրտիչ, հայր Անդրէասի, որ գնեց մի հին Աւետարան, 1442 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 17 բ։

— 126. Մկրտիչ քահանա, որդի Նասրադինի, հայր Յովհանէս տանուտերի, որ Խլաթում գրել տվեց մի Աւետարան, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 127. Մկրտիչ, ամուսին Նարինխաթունի՝ դստեր տանուտեր Յովհաննէսի, որ Խլաթում գրել տվեց մի Աւետարան, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 128. Մկրտիչ մահդասի, միաբան Վարդան զորավոր վանքի. հիշվում է իր 6 միաբանակիցների հետ 1444 թ.— Ձեռ. Վասպ. 389։ (Նոտարք 46 տալիս է նույն հիշատակությունը մի կեսը 1415 թվի տակ, մի կեսն էլ 1444 թվի տակ. մինչդեռ Ձեռ. Վասպ. ամբողջը դնում է 1444 թվի տակ)։

— 129. Մահդասի Մկրտիչ Կոշկըրենց, միաբան Ոստանի Գոլկի վանից. արդեն մեռած էր 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. էջ 40 բ։

— 130. Մկրտիչ մահդասի, աբեղա, միաբան Ոշտունեաց Ս. Յակոբ վանքի, հիշված 1445 թ.— Նոտարք 139 (նույն է արդյոք № 66-ի հետ)։

— 131. Մկրտիչ կրոնավոր, Կարապետ գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք՝ Վանում, 1445 թ.— Նոտարք 146։

— 132. Մկրտիչ վարդապետ, հիշված է Թովմա Մեծոփեցու, Յովհաննէս եպիսկոպոսի և Մեծոփայ վանքի այլ միաբանների

հետ՝ Աստուածատուր Մխռելյարոյց Արճիշեցի վարդապետի գամբանի արձանագրության մեջ, 1432 թ. և ապա «Մեռելյարոյց» կոչված Ավետարանի հիշատակարանում, 1445 թ.— Նոտարք 99, 147։

— 133. Մկրտիչ կրոնավոր կամ աբեղա, որդի Բուքի, ըստ այժմ ազգանունը Բուքենց, ընիկ Ողթամարցի. մայրն է Էլխաթուն. եղբայրներն են Յովհաննէս, Պարոն, Կարապետ, Վարդժանուկ, քույրը Խամոշ խաթուն, եղբորորդիքը Դանաբէկ, Թումայ բէկ, Սիրուն բէկ, եղբոր աղջիկը՝ Հայխաթուն, հորեղբայրը՝ մահտեսի Թումայ։ Կոչված է «խստակրօն և սրբասէր» կրոնավոր։ Իր եղբոր՝ Յովհաննէսի հետ միասին՝ Ստեփաննոս գրչին գրել տվեց Բաղէշում մի Ցայսմաւուրք և նվիրեց Ս. Վարդան զորավար եկեղեցուն (Ուշտունեաց Գաւաշ գյուղի դեմ), 1446 թ.— Նոտարք 151—2։

—134. Մկրտիչ ոմն, որ իր անունը արձանագրել է Ուշտունեաց Գանձակ գյուղի Ս. Գէորգ եկեղեցու բարավորի վրա, 1447 թ.— Նոտարք 155։

— 135. Մկրտիչ սարկավագ, գրեց մի Ճաշոց Սիմէոն հայրապետի պատվերով, Ս. Թէոդորոս զինավորի (կամ Դերձկի) վանքում, 1447 թ.— Նոտարք 157։

— 136. Մկրտիչ կրոնավոր, գրիչ. գրեց մի Մաշտոց, Սեբաստիա 1448 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 338։

— 137. Մկրտիչ քահանա, հայր Կարապետ վարդապետի, վերջին ստացողի Աստուածաշնչի, 1449 թ.— Թորոս աղբ Բ. 296։

— 138. Մկրտիչ, նկարիչ. նկարազարդել է մի Ավետարան, որ գրել է Յովհաննէս գրիչը, Հարհոց գյուղում, 1450 թ.— Ձեռ. Բեռլինի, 5 ա։

— 139. Մկրտիչ կրոնավոր, միաբան Խլաթի Ս. Յովհաննէս վանքի. հիշված է 1450 թ.—Նոտարք 164։

— 140. Մկրտիչ սարկավագ, որդի Ալեքսանի. մայրն է Սուլթանմելէք, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Ոստանի եկեղեցուն 1452 թ.— Ձեռ. Վասպ. 413—5։

— 141. Մկրտիչ, հոգևոր հայր նույն Սուլթանմելէքի կամ Գրիգոր քահանայի 1452 թ.—Ձեռ. Վասպ. 414։

— 142. Մկրտիչ, երկու նույնանուն միաբաններ Վարագայ վանքի 1454 թ.—Նոտարք 176։

— 143. Մկրտիչ, վաղամեռիկ որդի Ստեփանոսի՝ եղբօրորդ-

ւոյ տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 582։

— 144. Մկրտիչ կրոնավոր, միաբան Պառուագրակ անապատի 1455 թ.—Տաշեան, Ցուց. 425։

— 145. Մկրտիչ պարոն, որդի Ամիր-Հասանի, եղբայր Ամիրդոլի և Թաճդինի. հիշված է 1450 և 1455 թ.—Նոտարք 164, 178 (ավելին տես Թաջդին № 2)։

— 146. Մկրտիչ, իր միաբանակից ընկերների հետ հիշված է Խլաթի միաբան մի վանքի, որի անունը չէ հիշատակված, 1456 թ.—Ձեռ. Լաստ. 425։

— 147. Մկրտիչ քահանա տարեգիր. սրա Տարեգրութիւնից քաղվածքներ է անում Նոտարք, էջ 64, 90, 105 և 184, որոնք վերաբերում են 1421, 1429, 1435 և 1457 թվերին։ Ըստ այսմ նույն Մկրտիչ քահանան ԺԵ դարու պատմիչ է։

— 148. Մկրտիչ վարդապետ, վանահայր կամ առաջնորդ Արծկէի Սքանչելագործ վանքի, 1461 թ.—Նոտարք 199։

— 149. Մկրտիչ, վանահայր Ամիրզօլայ վանքի 1461 թ.—Նոտարք 199։

— 150. Մկրտիչ քահանա ոմն, օրինակել է մի Աւետարան 1462 թ.—Նոտարք 207։

— 151. Մկրտիչ, վաղամեռիկ որդի տանուտեր Էդիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 620։

— 152. Մկրտիչ կրոնավոր, օգնական Ղազար գրչի, որ օրինակեց Շարակնոցը, 1464 թ. (տես Ղազար № 87).—Ձեռ. Սևան. 47 բ։

— 153. Մկրտիչ, միաբան Յովհաննավանքի 1464 թ.—Այրարատ 172։

— 154. Մկրտիչ, որդի Սիրունի և եղբայր Գուլշադ խաթունի, որ Արծկէում Յակոբ գրչին գրել տվեց մի Աւետարան 1464 թ.—Նոտարք 219։

— 155. Մկրտիչ, գրիչ. Պետրոս քահանայի խնդրանոք գրել է մի Աւետարան, 1464 թ.—Նոտարք 220։

— 156. Մկրտիչ քահանա, հայր Աւետիս քահանայի, որ Վանում, Վարդան երեցին գրել տվեց մի Ցայսմաւուրք և նվիրեց եկեղեցուն 1465 թ.—Նոտարք 222։

— 157. Մկրտիչ աբեղա, որդի Թումայի, գրիչ. օրինակել է

Գանձարանը Աղթամարում, Տէր Յովհաննէսի խնդրանօք 1466 թ.—Նոտարք 224։

— 158. Տեր Մկրտիչ, «երախտաւոր վարպետն» Մոկաց Նահանգի Փասավանք գյուղին մոտիկ Առբերդի վանքի. 1466 թ.—Նոտարք 225։

— 159. Մկրտիչ, հովիվ նույն վանքի 1466 թ.—Նոտարք, էջ 225։

— 160. Մկրտիչ, որդի Ջանիբէկի. մայրն է Սալչուկ խաթուն, որ գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232 և Բ. 337։

— 161. Մկրտիչ քահանա, որդի Յակոբի. գրիչ. օրինակել է ատենավորների մի ժողովածու, ուր կան Ն. Շնորհալու Յիսուս որդին և Ողբ Եդեսիոյ, Գր. Մագիստրոսի, Ն. Լամբրոնացու և Յովհաննէս Երզնկացու տաղերը, Ստեփաննոս Օրբելեանի Ողբը, Վահրամ վարդապետի տաղը և Դաւիթ Անյաղթի Բարձրացուցէքը. արտագրությունը եղել է Բիւրականում, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1112—4, Այրարատ 148։

— 162. Մկրտիչ, հայրապետ Առմընայ Ս. Աստուածածին և Ս. Յակոբ վանքի, 1467 թ. (Ձեռ. Վասպ. 449)։ Նույն վանքը կոչված է նաև Տիւրիկի Վաւտըռ (Օտուռ) գյուղի Ս. Աստուածածին և Ս. Յակոբ վանք, ուր հայրապետ է նույն Մկրտիչը 1469 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 751=Թորոս աղբ. Բ. 363։

— 163. Մկրտիչ կուսակրոն աբեղա, հորեղբայր Ստեփաննոս քահանայի, որ Հերմոնի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Թաւր. 132 բ։

— 164. Մկրտիչ եպիսկոպոս Բիւրականի և Անբերդի. հիշված է 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114, Այրարատ 158։

— 165. Մկրտիչ, թոռն տանուտէր Առաքելի (№ 89), որ Խիզանի Գամաղիէլ վանքում գրել տվեց մի Աւետարան 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։

— 166. Մկրտիչ, որդի Արթուխչի (№ 3), մայրն է Զուլալ տիկին, որ Աղթամարում Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան 1470 թ.--Ձեռ. Վասպ. 459—460։

— 167. Մկրտիչ սարկավագ, որդի Մելքիսեթ քահանայի և եղբայր Յովհաննէս գրչի, որ Թովմա առաքյալի վանքում գրեց մի Աւետարան 1471 թ. այս թվից քիչ առաջ մեռել էր Մկրտիչը. «տարաժամ փոխեցելոյն ի Քրիստոս, որ և եթող մեզ սուգ

անմխիթար. զի եկին ազգն անիծեալ և ժանտաբարոյ ի գեօղն Շատուան և ղաշայ էրին և է հոգի սպանեցին։ Ո՛հ ո՜հ զողորմելի ժահս»։—Ձեռ. Վասպ. 464։

— 168. Մկրտիչ Նաղաշ, որդի Առաքել քահանայի. մայրն է Հռիփս խաթուն. ծնված է Բաղէշի Պոռ գյուղում. արվեստով նկարիչ (ծաղկող) էր, ուստի և կոչվել է Նաղաշ (արաբ. نقاش naqqāš նկարիչ)։ Ծաղկել է զանազան ձեռագրեր, ինչպես օր. Ձեռ. Միւնխ. 19 բ, 21 բ, Ձեռ. Վեննա. Ա. 115։ Այս վերջինը մի Աստուածաշունչ է, որ նախ Յովհաննէս վարդապետը և ապա Յովսէփ ճգնավորը գրել են տվել Կարապետ գրչին։ Օրինակությունը տեղի է ունեցել Խլաթում և տևել է չորս տարի 1418—1422 Թ։ Ավարտելուց հետո Յովսէփ ճգնավորը Նաղաշին որդեգրել է և այս գիրքը պարգևել նրան։ Երեք տարի հետո Յովսէփը վախճանվել է և Աստուածաշունչը մնացել է Նաղաշի մոտ, որ վեց տարի պահելով, զարդարել է շատ բազմաթիվ պատկերներով և լուսանցազարդերով՝ Ամիթ քաղաքում։ Երևի Նաղաշը ձեռագրեր էլ է արտագրել։ Այսպես Նոտարք 55—56 հիշատակված է, որ 1418 թվին Մկրտիչ սարկավագը Բաղէշի Պոռ գյուղում, Մարտիրոս կրոնավորի համար արտագրել է Ցայսմաւուրքը՝ Նոտարքը և Կոստանեանց, Նշ. էջ Ը այս սարկավագին նույնացնում են Նաղաշի հետ։ Թեև Նաղաշը փոքր հասակից կրոնավոր լինելու փափագ ուներ, բայց ծնողների ստիպմամբ 15 տարեկան ժամանակ ամուսնանում է։ Մի տարի հետո ունենում է մի որդի, բայց կինը որդեծնության ժամանակ մեռնում է։ Նաղաշը այրիանալով դառնում է վարդապետ և փոխադրվում է Պոռից Ամիթ։ «1430 թվին» Կոստանդին Վահկացի կաթուղիկոսի ձեռքով օծվեց եպիսկոպոս Ամիդի և Միջագետքի։ Առաք. պատմ. 323 կոչում է նրան «Մկրտիչ եպիսկոպոս առաջնորդ Արղնիի» (1444 Թ)։ Իսկ ինքը ստորագրում է «Մկրտիչ սուտ անուամբ եպիսկոպոս Ամիթ քաղաքի և Մերտընայ, Ուռհայու և Թիլկուրնա (=Թլկուրան), Հինու և Արղնու» (Ձեռ. Վեննա. Ա. 115)։ Իր քաղցր բնավորությամբ Նաղաշը ամենքին սիրելի դարձավ։ «Զի ամենայն ոք որ տեսանէր զսա, կամէր և զհոգին ես տալ յօժարութեամբ և զուարթութեամբ և առատ սրտիւ։ Եւ ոչ եթէ միայն ազգ քրիստոնէից, այլ և Թուրք, և Թաթ, և Թաթար, և Քուրդ, և արապ, և ջհուտ. և ամենայն ազինք ընդ տեսանելն, զպատիւ. և զպարգևս պատրաստէին, ձիս և ջորիս և խիլայս մեծագինս անասելի և անպատմելիս»։ Հատկապես սիրելի դարձավ

Միջագետքի Օթման ամիրային, որ տիրում էր Ծառանից մինչև Տրապիզոն։ Օթմանը իր իշխանության տակ գտնված բոլոր քրիստոնյաներին գլուխ կարգեց նրան և մեծ պարգևներով, թագավորական զգեստներով և արքունի ձիերով փառավորեց։ Երբ Նաղաշը գնում էր ամիրայի մոտ, նա դուրս էր գալիս նրա առաջ, համբուրում, իր արքայական գորգի վրա նստեցնում և իր մոլլաներին էլ կանչելով, գիշերն ի բուն խոսում և լսում էր նրան։ Օթմանի որդին Համզա հաջորդելով իր հոր՝ ավելի էր պատվում Նաղաշին և իր մեռած հոր փոխարեն նրան հայր էր անվանում։ Այնքան էր սիրում ու պատվում Համզան Նաղաշին, որ լուր տարածեցին թէ նա քրիստոնյա է դարձել։ Ինչպես Օթմանի, նույնպես և Համզայի բարությունից օգտվելով Նաղաշը հրաման ստացավ շինելու և նորոգելու զանազան եկեղեցիներ։ «1433 թվին» հիմնեց Արղնիի բարձր բերդի գլխին Բարձրահայեաց Ս. Աստվածածին վանքը, «1439 թվին» սկսեց նորոգել Տիգրանակերտի Ս. Թէոդորոս կաթուղիկէն, որ չորս տարում ավարտեց, կրոնավորներին ազատեց հարկից և հրաման առավ մեռելների համար դագաղ գործածելու։ Քրիստոնյաներին տրված այս արտոնությունները շատ գրգռեցին մահմեդականներին. մանավանդ Ամիդի Ս. Թէոդորոս եկեղեցու կաթուղիկեն, որ քաղաքի բոլոր մինարեներից ավելի բարձր և շքեղ էր։ Իսլամները բողոքեցին Եգիպտոսի սուլթանին, Պարսից շահին և Տաճկաց սուլթանին, որոնք դիմելով Համզային՝ պահանջեցին կործանել այդ եկեղեցին։ Համզան հրամայեց քանդել կաթուղիկեն։ Այս բանը այնպես վատ ազդեց Նաղաշի վրա, որ նա սրտաբեկ թողեց երկիրը և մատնեց իրեն պանդխտության։ Գնաց Տրապիզոն, Պոլիս և Ղրիմ։ Կաֆայում մնաց իր բարեկամ Սարգիս վարդապետի մոտ։ Համզայի մահից հետո հաջորդեց նրա որդին Ջհանգիր «1443 թ», որ փնտռեց և հրավիրեց Նաղաշին Ամիդ և հրաման տվեց կործանված եկեղեցին վերաշինելու «1447 թ»։ [Թորոս աղբ. Բ. 174 այս շինությունը դնում է ՊԳ = 1354 թ., որ Նոտարք 132 ուղղում է ՊՂԳ = 1444 (ըստ որում 1354 թվին Նաղաշը չէր էլ ծնված), իսկ էջ 155 դնում է ՊՂՋ = 1447 թ. ինչպես ունի նաև Արրտ. 1898, էջ 48 ժամանակակից հիշատակարանը]։ Ժողովուրդը գիշեր-ցերեկ աշխատելով 10 օրից վերջացրեց շինությունը։ Նաղաշը մեռավ «1473 թ» կամ քիչ ուշ։ Թողել է գեղեցիկ սրտառուչ գանձեր ու տաղեր, հատկապես պանդխտության վրա։ Ցանկը տես Տաշեան, Ցուց. 1118 բ-դ և 1132

ու Տաղերի հավաքածուն հրատարակեց Կոստանեանց, Վղրշպտ. 1898։ (Երկու տաղ ունի Յոֆինանեան, Միջն. ազգ. տղչփ. Վիեննա 1911, էջ 23—27)։ Իր անունը Նաղաշ ձևով հաճախ հիշված է իր տաղերում. մի անգամ էլ կա Մահուճ (փխ. Մկրտիչ), որ տես Նղշ. էջ 19 ծան։ «1436 թվին» Կոստանդին կաթուղիկոսի հրամանով գրեց «Թուղթ առ Եւգինէոս Դ պապ» (1431—1447 թ)։ Երևի իր ձեռքով արտագրված մի ձեռագիր է այն, որ Ձեռ. Դաշեան, Բ. 54 բ հիշվում է «Գանձարան Նախաշ եպիսկոպոսի՝ գրեալ 918-ին» (=1469 թ)։ —Մկրտիչ՝ Նղշ. լատ. 418, 423. —Նախաշ՝ Սամ. անեց. շար. 175. Առաք. պատմ. 486. Անկ. գիրք հին կտ. յոլ. էջ 9. Զարբ. Թրգմ. 266. Ձեռ. Հալէպի, Ա. 64 բ (հիշված է 1437 թ). Ազգապ. 2065։ Նոտարք 209 (հայտնում է թէ 1463 թվին գրել է իր Ողբը մեծ մահտարաժամի մասին)։ Թորոս աղբ. Բ. 397, 404։ Ընդարձակ կենսագրությունը ժամանակակից գըրչի ձեռքով տես Արրա. 1898, յնվ. էջ 44—48։

— 169. Մկրտիչ վարդապետ, որդի Օրպէլի, մայրն է Դովլաթ, տատն է Բաղդադ. վանահայր և առաջնորդ Բերկրիի Տէր Ցուսկան որդու վանքի. հիշված է 1418, 1422 և 1425 թվերին. իսկ 1432 թվին էլ Արճէշում, Կարապետ քահանային գրել է տվել մի Մաշտոց։ Առաք. պատմ. 321 իբրև առաջնորդ Արգելան վանքի (այս վանքը նույն է Տէր Ցուսկան որդու վանքի հետ ըստ Նոտարք 79) հիշում է Մկրտիչ վարդապետ 1439 թ. (նույնը նաև Նոտարք 119)։ Այսպեսով Մկրտիչ վարդապետի հիշատակությունը գնում է 1418—1439 թ.—Ձեռ. Վասպ. 349, Նոտարք 55, 61 (առանց անունը հիշելու), 70, 79, 100, 119։ —Իսկ Զարբ. Թրգմ. 391 հիշելով Մկրտիչ վրդ. որդի Օրբելի 1412 թ., համարում է նրան եղբայր Թովմա վրդ. Մեծոփեցու, ինչ որ սխալ է. Մեծոփեցու հայրը կոչվում էր Ստեփաննոս։ —Մկրտիչ բաբունապետ իբրև առաջնորդ Բերկրիի Տէր Ցուսկան որդու վանքի հիշված է նաև 1473 թ. (Ձեռ. Վասպ. 467)։ Չեմ կարծում որ այս անձը նախորդից տարբեր լինի։ Մկրտիչ վարդապետը հիշված է նախ 1418 թվին և եթե այդ ժամանակ լիներ 30 տարեկան, ծնունդը պիտի լինի 1388 թվին, որով 1473 թվին եղած կլինի պատկառելի ծերունի։

— 170. Մկրտիչ, հայր տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան 1473 թ.— Ձեռ. Վասպ. 467։

— 171. Մկրտիչ քահանա, ուսուցիչ Ցովհաննէս քահանա

գրչի, որ Խիզանում օրինակեց Ավետարանը 1474 թ.— Ջեռ. Վասպ. 470։

— 172. Մկրտիչ ժամհար, հայր աղքատ Յովսէփի, որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Ավետարան, 1475 թ.— Ջեռ. Վասպ. 478։

— 173. Մկրտիչ աբեղա, գրեց Յայսմաւուրքի հիշատակարանը, Արծկէ 1475 թ.— Ջեռ. Մաղն. 36։

— 174. Մկրտիչ ոմն, մերձավոր գրիչ Մխիթար քահանայի, որ Բանաշէնում օրինակեց մի Ավետարան Խոսրով անուն անձի համար, 1478 թ.—Ջեռ. Վասպ. 485։

— 175. Մկ(րտի)չ վարդապետ, ուսուցիչ Մելքիսեթ կրոնավոր գրչի, որ Հալէպում, պարոն Ֆարաճի համար օրինակեց Ավետարանը 1478 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 96 բ։

—176. Մկրտիչ, կանգնեցրել է մի խաչքար՝ Աղստ քաղաքում, 1482 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 445։

—177. Մկրտիչ քահանա, գրիչ. Խարբերդի Խուլաու վանքում օրինակեց Յայսմաւուրքը՝ խոջա Յակոբի խնդրանոք, 1482թ.— Bodleian 33։

—178. Մկրտիչ քահանայ, գրիչ. Խիզանում արտագրել է մի Ավետարան՝ Վարդան կրոնավորի համար, 1456 թ. և մի ուրիշ Ավետարան էլ նույն քաղաքում և նույն թվին.—Նոտարք 183 և 184 (երկուսը հիշում է առանձին. կամ միևնույն ձեռագիրն է սխալմամբ հիշատակված երկու անգամ և կամ իրոք գրիչը մի տարվա մեջ երկու Ավետարան է արտագրել, ինչ որ սովորական երեւույթ չէ)։—Անշուշտ նույն անձն է նաև այն Մկրտիչ քահանան, որ Խիզանում օրինակել է Յայսմաւուրքը 1461 թ. (Նոտարք 197) և մի Ավետարան 1482 թ. (Ջեռ. Վասպ. 492)։ Վերջինիս հիշատակարանում գրիչը հիշում է իր հոր անունը՝ Սուլտանշահ և մոր անունը Թրուանդա։ Հիշատակարանը հետաքրքրական է նրանով, որ առաջին մասում գրիչը հիշում է թե ձեռագիրը ստացել է X, որի ծնողներն են X և X (այսպես անունների տեղ բաց է թողած)։ Սա նշանակում է որ այդ Մկրտիչ քահանան «արհեստով գրիչ» էր, գրում պատրաստում էր ձեռագիրը և ապա հաճախորդ ճարելով վաճառում։ Այսպեսով այս «գրիչ արհեստավոր» քահանայի գործունեությունը գնում է 1456—1482 թ, որ անում է 26 տարի։

—179. Մկրտիչ երեց, գրիչ. օրինակեց Գանձարանը Մուղնիում, 1484 թ.—Ջեռ. Սանաս. 25 ա։

— 180. Մկրտիչ, *մերձավոր Սարգիս քահանայի, որ Բաղէշում գրել տվեց Ցասմաւուրքը՝ 1484 Թ.*—Rapport Belgique *39։*

— 181. Մկրտիչ *աբեղա. գրիչ. տանուտեր Ցակոբի համար օրինակեց մի Աւետարան՝ Սալնապատի վանքում, 1485 Թ.—Արցախ, էջ 148։*

— 182. Մկրտիչ *քահանա Ոստանի. իր 12 պաշտոնակից քահանաների հետ հիշված է 1486 Թ.—Ձեռ. Վասպ. 502։*

— 183. Մկրտիչ *հայրապետ, իր եղբորորդի Գրիգորի և Մխիթար քահանայի հետ մի Ցայսմաւուրք շնորհեցին Մխիթար գրչին՝ արտագրելու համար, Սեբաստիոյ Կովտուն գյուղում, 1487 Թ.--Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 434։*

— 184. Մկրտիչ *քահանա, որ տես նախորդը։*

— 185. Մկրտիչ *Բաբերդցի. գրիչ. օրինակեց Սաղմոսը, 1488 Թ?*—Bodleian *16։*

— 186. Մկրտիչ *քահանա Փողիկ գյուղի Ս. Սարգիս եկեղեցու. սրա ձեռքով տանուտեր Մարտիրոսը նույն եկեղեցուն նվիրեց մի Աւետարան, 1489 Թ.—ՀԱ 1894, 52 ա։*

— 187. Մկրտիչ *խոջա Բաբերդցի, հիշվում է իբրև վկա, 1489 Թ.*—Manus. brit. mus. *165 բ։*

— 188. Մկրտիչ, *որդի Ստեփանոսի, մերձավոր Դովլաթխաթունի, որ Աղթամարում Հայրապետ աբեղային գրել տվեց Աւետարանը, 1490 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12 բ։*

— 189. Մկրտիչ, *նկարիչ. նկարազարդել է մի Աւետարան, որ օրինակել է Գալուստ աբեղան, Կեչառուսում, 1491 Թ.—Ձեռ. Սևան. 10 ա։*

— 190. Մկրտիչ, *ազգական Լիանոսի, որ ստացավ մի Աւետարան, 1491 Թ.—Թորոս աղբ. Ա. 120։*

— 191. Մկրտիչ *կրոնավոր, միաբան Սանահնի վանուց, 1497 Թ.—ՀԱ 1887, 56 բ։*

— 192. Մկրտիչ *քահանա Հիզանցի, հայր Ցովհաննէս քահանա գրչի. հիշված է 1497 Թ.—Տաշեան, Ցուց. 284։*

— 193. Մկրտիչ, *որդի Մարտիրոսի և եղբայր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը 1497 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։*

— 194. Մկրտիչ, *հայր Վրթանէս աբեղայի, որ Արարատեան երկրից էր (Նոր-Վիրապից) և Երուսաղէմում մի Ճաշոց էր օրինակել Տէրաւագ քահանայի համար, 1497 Թ.— Ձեռ. Հալէպի, Ա. 150 բ։*

— 195. Մկրտիչ Գ. Իլովացի, պատրիարք Երուսաղէմի 1476—1479 թ. հաջորդեց Պետրոս Ա-ին (ըստ Աղաւնունի). բայց ըստ Manus. brit. mus. 25 բ և Ձեռ. Դաշեան, Բ. 52 ա Մկրտիչ արքեպիսկոպոս Երուսաղէմի կենդանի է դեռ 1484 թ. և ըստ Երուսաղէմի Օրացոյցի իր հաջորդն է Աբրահամ Բերիացի 1497 թ.։

— 196. Մկրտիչ քահանա, հայր Մարգարայ դպրի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրեց մի Աւետարան, տանուտեր Արապշահի համար, 1490 թ. և մի Աւետարան էլ Հաբիբ տիկնոջ համար 1498 թ.—Ձեռ. Վասպ. 512, 528։

— 197. Մկրտիչ, եղբայր Դաւթի և Յովհաննէս քահանայի. այս երեքի խնամքին է հանձնվում այն Աւետարանը, որ գրել էր Պարսամ գրիչը՝ Թաւրէզ տիկնոջ համար, 1498 թ.— Ձեռ. Վասպ. 526։

— 198. Մկրտիչ, հայր Կարապետ քահանայի՝ մերձավորի Յովհաննէս գրչի, որ Խիզանում օրինակեց Աւետարանը 1499 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 577։

— 199. Մկրտիչ քահանա, հայր Յովհաննէս գրչի, որ Խիզանում, Թուզ տիկնոջ պատվերով գրեց մի Աւետարան, 1499 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 577։

— 200. Մկրտիչ, եղբայր Գրիգոր վրդ. Արճիշեցու (№ 701). մոնթ (այսինքն աշակերտ) էր Արճէշի Ս. Աստուածածին վանքում 1432 թ. ապա եղավ վանահայր Տէր Յուսկան որդի վանքի «յաւուրս Ատոմայ կաթուղիկոսին (1496—1507 թ.) Աղթամարայ և Եաղուպ շահին Պարսից, որ էր որդի Ուզուն Հասանայ» (Նոտարք 101)։

— 201. Մկրտիչ բարունապետ, ծաղկել է Աղթամարում՝ ԺԶ դարի սկիզբը.—Ազգապ. 2212։

— 202. Մկրտիչ աբեղա, լուսարար և ավելածու Ս. Կիրակոս եկեղեցու Ամիթ քաղաքի. գիտեր արաբերեն, բարեկամացավ Պուտախ Ամթեցու, հետ որի նահատակության պատմությունն էլ գրեց «1524 թ.»—Նոր վկ. 360, 368։

— 203. Մկրտիչ նահատակ, որդի Յովհաննէսի. մայրն էր Ղումաթ. տեղն ու ժամանակը հայտնի չէ. հավանաբար նահատակվել է Կիլիկիայում, ԺԶ դար.—Ձեռ. Հալէպի, Բ. 135—6։

— 204. Մկրտիչ Տարօնեցի, տաղասաց ԺԶ դարու.—Յուշիկք Բ. 125։

— 205. Մկրտիչ եպիսկոպոս Մակուեցի, առաջնորդ Թա-

դէոս առաքելոյ վանից. ամբողջապես նորոգեց վանքը 1653 թ. —Առաք. պատմ. 269։

— 206. Մկրտիչ վարդապետ, բանաստեղծ և տաղասաց. Եկել էր օտար երկրից և բնակվել Փթառիճի վանքում. տվել է իրեն ճգնավորության և ոչ դաս է տվել, ոչ քարոզ ասել. մինչև իր մահը խմել է։ Ունի շատ ոտանավոր բանաստեղծություններ, որոնցից նշանավոր է իր վրա գրած հետևյալ խրատական տաղը. «Օրհնեալ Աստուծոյ անունն, որ բարեաց դռներն բացեր, դաշխարհս գեղեցիկ ստեղծել և երեք դիմաց բաժանել...» (ԺԶ դար).—Դրնգ. 405։

— 207. Մկրտիչ Ա Քէֆսիզեան, Մարաշցի. կաթուղիկոս Սսոյ. ծնվել է 1818 թ. հաջորդեց ինքնընտիր Նիկողայոսին և գահակալեց «1871—1894 թ»։ Շահադետ, կեղեքիչ և ազգադավ ու մատնիչ անձ. արհամարհվելով ժողովուրդից՝ աթոռը երեսի վրա թողեց և Մարաշի մոտ առանձնացած ապրեց։ Տապանագիրը տես Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 16 բ։ Իբանից հետո աթոռը 8 տարի թափուր մնաց.—Ազգապ. 5012։

— 208. Մկրտիչ Խրիմեան, վանեցի, կոչված Հայրիկ, կաթուղիկոս հայոց «1892—1907 թ». ծնվել է «1820 թ». պանդըխտելով Պոլիս, պարապում է ուսուցչությամբ և գրականությամբ. վերադառնալով Վան, դառնում է միաբան Վարագայ վանքի, ապա վանահայր. հիմնեց Արծիւ Վասպուրականի հանդեսը։ Իր ձեռքով սկսեց եվրոպական կուլտուրան մուտք գործել խուլ գավառի մեջ։ Նշանակվելով նաև Տարոնի Ս. Կարապետ վանքի վանահայր, այստեղ էլ հիմնեց դպրոց և սկսեց հրատարակել «Արծուիկ Տարօնոյ» հանդեսը։ «1869 թվին» ընտրվեց Պոլսի պատրիարք և այս պաշտոնում նա ծնունդ տվեց Հայկական հարցին։ Դժգոհ մնալով Ազգային երեսփոխանական ժողովի ձևականություններից և անվերջ ձգձգումներից, հրաժարվեց աթոռից «1873 թ»։ Ուղարկվեց պատվիրակ Բեռլինի վեհաժողովին, ուր ներկայացրեց Հայկական հարցը և բարենորոգումներ պահանջեց Տաճկահայաստանի համար։ Գրվեց նշանավոր 61-րդ հոդվածը (1878 թ), որ մնաց մեռյալ տառ հայության համար։ Երկրորդ անգամ անցնելով Վան, բացավ երկրագործական դպրոց՝ եվրոպական դրությամբ։ Կասկածվելով հեղափոխական գործունեության մեջ, Օսմանյան կառավարության կարգադրությամբ տարվեց Պոլիս և ապա աքսորվեց Երուսաղէմ «1890 թ»։ Համազգային ժողովում ընտրվեց կաթուղիկոս հայոց. բայց այս պաշտոնում նա չկարողացավ ցույց

տալ այն եռանդուն գործունեությունը, որ հատուկ էր իրեն վարդապետական շրջանում. և այդ՝ մի կողմից ցարական բռնակալության ցանցերի և մյուս կողմից իր վարչական անընդունակության պատճառով։ Նշանավոր է իբրև պերճախոս քարոզիչ և հռչակավոր գրող։ Ունի բազմաթիվ գրական գործեր, որոնցից հիշենք Հրաւիրակ Արարատեան, Հրաւիրակ երկրին Աւետեաց (այս երկուսը գրաբար ընդարձակ պոեմներ են), Մարգարիտ արքայութեան երկնից, Խաչի ճառ, Ժամանակ և խորհուրդ իւր, Դրախտի ընտանիք, Հայգոյժ, Վանգոյժ, Սիրաք և Սամուէլ, Պապիկ և Թոռնիկ. Վերջալոյսի ձայներ։

† ՄԿՐՏՈՒՄ, ար. < հյ. մկրտում (փխ. մկրտութիւն) բառից, ակնարկությամբ Յիսուսի մկրտության Յորդանան գետում, ինչպես ունինք Համբարձում, Երևում։ Հնագույն հիշատակությունը այս անվան՝ 1652? թվից է (Ջեռ. Վենետ. Ա. 762), ապա գալիս են 1687 թ. (Ջեռ. Կարին. 161), 1688 թ. (հրատ. Սամ. անեց. էջ ի), 1693 թ. (Ջեռ. Կարին. 7), 1698 թ. (Սիսական 336), և այժմ էլ գործածական է Կովկասում։ Հետաքրքիր է «Յովհաննէս Մկրտում» ձևը, ինչպես անվանում է իրեն մի գրիչ, ԺԷ դարում (տես Manus. bibl. nat. էջ 10). դժբախտաբար Macler հիշում է ֆրանս. „Jean Mkrtoum" ձևով միայն, այնպես որ ստույգ հայ ձևը հայտնի չէ։—Սրանից է Մկրտումխան ազգանունը։—Ջեռ. Վասպ. 936 հիշում է Մկրտումխին? ձևը (1670 թվից), որի ինչ լինելը հայտնի չէ։

*ՄՀԵՐ, ար. < պրս. Mihr անունից, որ ընդարձակ տես վերը Միհր: Ամենքին հայտնի է ժողովրդական հերոս Մհերը՝ Սասունցի Դավիթ վեպի մեջ։ Հմմտ. նաև Կանայեան, Ջոջանց տուն, 1907, էջ 43, 50, Լ. Մելիքսեթ-բէկ(եան), Բանբեր 1921—22, էջ 98։ Հնագույն հիշատակությունն է՝

— Մհեր Մամիկոնեան, իշխան Տարօնի, հիշված Վեսնի հետ, իբրև Զորտուանէլ իշխանի (1104 թ) նախնիներից։—Ջեռ. Վենետ. Բ. 474, Հայապ. 397։

— Ավելի ուշ հիշատակվում են Մեհեր 1608 թ. (Ջեռ. Վասպ. 256), Մեհեր 1616 թ. (անդ 852), Մհեր 1634 թ. (Թորոս աղբ. Բ. 430), Մըհէր 1644 թ. (Ջեռ. Վասպ. 276), Մըհեր 1652 թ. (անդ 462), Մհէր 1709 թ. (Ջամբռ 115), և անհայտ թվականով Մըհէր (Ջեռ. Թաւր. 104 ա), Մեհեր (Ջեռ. Վասպ. 175 և 993)։ Սրանից է Մեհերեան ազգանունը, որ հիշատակված է 1774 թ. (Ազգ. մատ. ՀԸ 167)։

— *կարևոր է հիշատակել* Մեհիր *1582 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 168 բ), որ իգական անուն է։ Արդյոք նույն* Մեեր *անունից է, թե օտար բառ է. հմմտ. արաբ.* ماهر māhir *«ճարտար» և* مخير muḥayyir *(իգ.* مخيره muḥayyire) *«հիացուցիչ, սքանչացնող»։*

**ՄՂԴԱՐ, իգ. < արաբ.* مقدار miqdār *(Թուրքական արտասանությամբ* məqdar) *«չափ, քանակ, նաև արժեք, արժանիք». հմմտ.* Ղուղրաբ *իգական անունը, որ այս բառի հետ նույն ծագումն ունի։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1572 թ.— Թորոս աղբ. Բ. 299։*

*ՄՂՈՒՆ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված Երևանում, 1721 թ.—Արր. երև. էջ 16։*

*ՄՆԱԿ, ար. թվում է թե արական անուն է եղել, որից էլ կազմվել է* Մնակեան *ազգանունը։ Արդյոք* Մնացական *անվան կրճատ մի ձևը չէ՞։*

*† ՄՆԱՑԱԿԱՆ, ար. < հյ.* մնալ *բայից (մնացական լինի, երկար կյանք ունենա). հմմտ. թրք. Դուրսուն, Դուրասան, Դուրղան, Դուրղայա, Դուրալի, Դուրմիշ, Դուրմիշխան անունները, որոնք բոլոր ծագում են* دور dur *«մնալ» արմատից և արական անուններ են։ Նույնպես են նաև թրք.* Ղալասաճ, *հյ.* Կեցուճ *և իտալ.* Dante, *որ* durante *«տևական» բառից է կրճատված* (Ferrari, Gram. ital. *էջ 19)։ Գործածվել է ԺԷ դարից և կենդանի է մինչև այժմ։ Կրճատ ձևերն են Մնաց, Մացակ, Մանցօ, Մացօ, տես և* Մնօկ: *Հնագույն հիշատակությունն է 1618 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 594), ապա գալիս են 1652 թ. (անդ 762), 1689 թ. (Ձեռ. Թաւր. 20 բ), 1792 թ.* (Մնացականն դպիր, *բժիշկ Պոլսում, ըստ Թորգոմեան, Ներք. 27),* Մանացայկան *1818 թ. (Ձեռ. Վասպ. 919), առանց թվականի է Մնացական (Թորոս աղբ. Բ. 362)։*

*ՄՆԴԱՐ, ար. < արդյոք թթր.* mundar *«բարձ» բառից՞ն է։ Մի անգամ ունինք հիշատակված՝*

— Մնդար, *հայր Աղաթոն երեցի Ցարենուոյ, որ մի այգի նվիրեց Ցովհաննավանքին (ԺԴ դար).—Արձ. Այրարատ 172 ա։*

*ՄՆԾՈՒՐ, ար. արդյոք* Մնձուր *լեռների անունից է (հմմտ. Գանձակում* Մռաւեան *ազգանունը՝ Ղարաբաղի* Մռաւ *լեռան անունից)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝ Ձեռ. Վենետ. Ա. 658, անհայտ թվականով։*

*ՄՆՈՆ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված Նորավանքի անթվական մի արձանագրության*

մեջ. «Զմնոն ապաշխարութեան յիշեցէք» (Սիսական 199).—Տես և Մոնանիկ:

†*ՄՇԱԿ*, ար. < հյ. մշակ «երկրագործ» բառից, ճիշտ ինչպես հուն. Գէորգ, որ տե՛ս.

— Մշակ, ազգական Արամ նահապետի, որ կարգեց նրան կողմնապետ (կուսակալ) նորանուաճ Կապադովկիայի (աշխարհի 2179 թ. ըստ Չամչ. Ա. 74). Մշակ կուսակալը շինեց այնտեղ իր անունով Մշակ քաղաքը, որ ապա աղավաղվելով կոչվեց Մաժաք: Սա է Կեսարիա, այժմ տճկ. Qayseri.—Խոր. Ա. ժդ. Սասն. 18. Սամ. անեց. 43. Մխն. հայր. 6.—սեռ. Մշակայ՝ Մխ. անեց. գ. (Ըստ Փիլոստորգիոս և Կոստ. Պորփիւռոժէն՝ Կապադովկիայի առաջին իշխանը կոչվում էր Մոսոք կամ Մոշոք. տես Չամչ. Ա. էջ 176).

†*ՄՈԳՊԱՇՏԷ*, ար. < հյ. մոգ և պաշտել բառերից, իբր «ծառայող մոգերի» (տե՛ս տակը).

— Մոգպաշտէ, մարզպետ Արտաշէս Բ-ի (88—129 թ), աշակերտ մոգի ուրումն երազահանի, «որ յայն սակս և Մոգպաշտէ անուն կարդային». Արտաշէսը նշանակեց նրան Բագարանի քրմապետ՝ փոխանակ Երուազի.—Խոր. Բ. խը.

*ՄՈԹԻԿԱՆ*, ար. (հմմտ. Մոտկան գավառի անունը). ունինք միայն՝

— Մոթիկան, եղբայր Տաշուրակ իշխանի. միասին բաշխել են Պասկոյգատ գյուղի հարկերը 1283 թ.—Սմբատեանց, Գեղարք. 310.

*ՄՈԼՈՇԻԿ*, ար. արդյոք հյ. մոլոշ «փիփերդ» բույսի անունից է. մի անգամ ունինք՝

— Մուլուշիկ սարկավագ, Տիւրիկցի, Թուղթ կոկող. հիշված է 1561 թ.—Թորոս աղբ. Ա. 229.

**ՄՈԿԱԹԼ*, ար. < արաբ. مقاتل Muqātil անունից (տես Կամուս Գ. 323), որ ծագում է قتل qatl «սպանել. 2. խորահմուտ լինել» արմատից.

— 1. Մոկաթլ Վանանդացի, նահատակվեց Բուղա ոստիկանի ձեռքով Պարտաւում (Թ դար).—Ասող. Բ. բ.—Մուկաթլ՝ Արծր. Գ. ժա.

— 2. Մուկաթլ, եղբայր Գրիգոր Ծաղիկի (№ 135), որ Անիում ունեցած իր գանձագին կրպակները նվիրեց Բագնայրին, 1042 թ.—Արձ. Շիրակ 114.

*ՄՈՂԱՄ, ար. < արաբ. مقام maqām բառից, որ նշանակում է «տեղ, դիրք, բարձր աստիճան, սրբի գերեզման, ինչպես և երգի եղանակ». վերջին իմաստով Պոլսահայ ռամիկ բարբառում ասվում է մախամ, որ և Երևանի ու Տփխիսի բարբառով՝ մուղամ: Իբրև անձնանուն գործածված եմ գտնում մի անգամ 1548 թ. (Ջեռ. Մեր.=ՀԱ 1925, 378)։—Տես և Մուղամ:

†ՄՈՄԵՂԷՆ, ար. < հյ. մոմեղէն «մոմից շինած» բառից. համտ. նաև Մոմիկ: Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— Մոմեղէն, հայր Թաթարբէկի, որ Նարեկ գյուղում, Իգիտ կամ Պաակ կրոնավորին գրել տվեց մի Ավետարան, 1420 թ.— Նոտարք 61=Ջեռ. Վասպ. 325։

†ՄՈՄԻԿ, ար. < հյ. մոմ բառի փաղաքշականից. համտ. նաև Մոմեղէն անունը։ Հիշատակված է ԺԳ—ԺԴ դարում։

— 1. Մոմիկ, ծաղկող, հիշված է Կիլիկիայում, 1283 թ.— Տաշեան, Ցուց. 1039։

— 2. Մոմիկ սարկավագ, դրիչ, նկարիչ և քանդակագործ. Վայոց ձորի Նորավանքում օրինակեց Ավետարանը՝ 1292 թ.— Շողակաթ 207։

— 3. Մոմիկ, նկարիչ. ծաղկեց Ստեփաննոս եպիսկոպոս Օրբելեանի գրել տված Ավետարանը՝ 1302 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 233։

— 4. Մոմիկ վարդպետ, քանդակել է Նորավանքի ժամատան մի խիստ գեղեցիկ խաչքարը, 1308 թ. և Արփա գյուղի եկեղեցու շինության արձանագրությունը 1321 թ.—Սիսական 182, 195, Կ. Ղաֆադարեան, Ավանի երկլեզվյան ծածկագիր արձանագրությունը, էջ 12 ծան. ուր հեղինակը միևնույն անձն է համարում Մոմիկ № 2—4 և ասում է թե Վարդպետ այստեղ չի նշանակում վարդապետ, այլ «վարպետ»։—«Մոմիկ վարպետն... երկար տարիներ աշխատել է Նորավանքում, Արփայում և այլուր և թողել է մի քանի շատ գեղեցիկ խաչքարեր և մուտքի ճակատի սրբոց պատկերներ»։

ՄՈՆԴԻՐ, ար. ծագումն անհայտ. վերջին ստացող մի հին Ավետարանի. թիվն անհայտ, բայց 1422 թվից ուշ (Ջեռ. Վասպ. էջ 350)։

*ՄՈՆՈՄԱԽ, ար. < հուն. μονομάχος «մենամարտիկ» բառից, որ Կոստանդին Ժ կայսեր (1042—54 թ) մականունն է։ Մեր մեջ մի անգամ միայն ունինք հիշատակված՝

— Մաւնումախ գրիչ. օրինակել է Իգնատիոս վարդապետի

«Մեկնութիւն Ղուկասու» գործը, Երզնկա 1223 թ.—Անկ. գիրք Նոր կտ. էջ ժե:

ՄՈՆՈՆԻԿ, որ և Մոնմոնիկ. հատուկ անուն չէ, այլ վերադիր. այսպես ունինք Գրիգոր վարդապետ (№ 230) Մոնոնիկ, անդամ Զաքարէ սպասալարի գումարած եկեղեցական ժողովի «1208 թ». հիշված է նաև պարզապես «Մոնոնիկ վարդապետ» ձևով Մխիթար Գոշի և Տուրքիկի հետ, ՈԿԵ=1216 թ.—Օրբ. ժմ. 23։—Սրա կրճատ ձևն է Մնոն, որ տես։

*ՄՈՆՍՈՐ, ար. եվրոպական տառադարձությամբ գրված է մեկ Monsor, մեկ Mansor. վերջին ձևով առնելով կարելի է դնել < արաբ. منصور Manşūr անունից՝ որ բուն նշանակում է «աստվածազոր, հաղթական»: Մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Մոնսոր Այասցի, արքունի ճորտ և գործակալ. գտնվում էր Կոռիկոսի նավահանգստի վաճառաբարձ մի նավում, 7 ուրիշ հայ ընկերների հետ, որոնք են՝ Վասակ, Վահրամ, Պարսամ, Միքայէլ, Դաւիթ, Յովսէփ Աղիղ և Մուսանտ (վերջին երկուսը Այասցի եղբայրներ)։ Ջենովացի մի ծովապետ գերեց սրանց նավը (1268 թ) և դատի կանչվելով իբրև տուգանք վճարեց նույն անձերին 22, 797 բիզանդ հայկական և 7 քարատեղ (1271 թ).—Սիսուան 341։

ՄՈՊԱՔԻՈՍ, ար. ծագումն անհայտ. հիշված է անթվական մի արձանագրության մեջ՝ իր Մարտիրոս, Իգնատիոս և Գրիգոր եղբայրների հետ, իբրև նվիրատու Գոշավանքին. — Ազգագր. հանդ. ժ, 21։

*ՄՈՌՋԵԿ, ար. < موزچك mōrčäk «մրջունիկ» բառից, որ مور mōr «մրջյուն» բառի նվազականն է. հմմտ. հյ. Մրջիւնիկ: Մի անգամ հիշված եմ գտնում 1655 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 474։

*ՄՈՎՍԷՍ, ար. < եբր. משה Mšeh անվան հուն. Μωσῆς տառադարձությունից: Մյուս լեզուներում ունինք մանդ. Mēšā, արաբ. موسى Mūsa, ասոր. موشا Mūšē, լտ. Moses, գերմ. Mose, ֆրանս. Moïse, ռուս. Моисей են: Ըստ Ս. Գրոց նշանակում է «ջրից հանված». հմմտ. Եւ անուանեաց զանուն նորա Մովսէս. ասէ. ի ջրոյ անտի հանի զդա (Ել. Բ. 10): Սրա համեմատ էլ «Մովսէս ջրածին լսի» (Տաթև. հարց. 409), «Մովսէս որ ջրային կամ ի ջրոյ հանեալ թարգմանի» (Տաթև. հարց. 756): Ըստ այս ստուգաբանության՝ արմատն է եբր. משה mšx «դուրս քաշել, հանել»: Ուրիշներ ենթադրում են եգիպտական ծագում: Այսպես

արդեն Յովսեպոս. «τὸ γὰρ ὕδωρ μῶ οἱ Αἰγύπτιοι καλοῦσιν, ὑσῆς δὲ τοὺς ἐξ ὕδατος σωθέντας զի Եգիպտացիք ջուրը mō կոչեն և usēs փրկյալսն ի ջրոյ»: Jablonski և ուրիշներ դնում են եգպտ. μω «ջուր» և ουδε (հինը wşә!) «ազատեալ»: Ուրիշներ էլ հանում են եգիպտ. ms(w), mos(e) «երախայ» բառից, որ ընդունված չէ (Gesenius 466): Հայերենում հնագույն ձևն է բառիս՝ ըստ ասորականին Մուշէ (տես առանձին), ըստ հունականին Մովսէս և ըստ արաբականին Մուսա: Իբրև անձնանվան օրինակ հիշված է Մովսէս՝ Թր. քեր. 9, Անան. քեր. 127, 135, Խոր. քեր. 167, Միխ. քեր. 204, 215: Գործածվել է մեր մեջ Բ դարից և կենդանի է այժմ էլ. ժողովրդական ձևերն են Մոսէս, Մոսի, Մոսիկ, Մուսի, Մուսէս (Հիւբշ. 335):

— 1. Մովսէս Տարոնացի, առաջնորդ Գողթան (Սիւնեաց), ձեռնադրվեց Արտաշի Մուշէ եպիսկոպոսից? և գահ նստավ Աստղներսեհի մահից հետո, երբ աթոռը մի քանի ժամանակ թափուր էր մնացել (Բ դարի սկիզբը).—Օրբ. ե (հմմտ. Ազգապ. 54—55):

— 2. Մովսէս եպիսկոպոս, քրմի որդի էր, որին Լուսաւորիչը սովորեցրեց և դրավ եպիսկոպոս (Դ դար).—Ագաթ. § 845.—Արաբ. Ագաթ. 71 նույն անձին դնում է եպիսկոպոս Իբակմիրեթ և Դերջան գավառների:

— 3. Մովսէս Ա. կաթողիկոս Աղուանից. հաջորդեց Սահակին (Դ դար).—Կղկնտ. Գ. իդ. Կիր. ը. Մխ. այբիվ. 24:

— 4. Մովսէս եպիսկոպոս Բասենի, ժամանակակից Խոսրով Գ թագավորի «† 415 թ».—Բուզ. Զ. ժգ.—սեռ. Մովսէսի՝ Բուզ. Զ. ժգ. Այրարատ 43:

— 5. Մովսէս Ա Մանազկերտցի, կաթողիկոս հայոց «456—461 թ». հաջորդեց Մելիտէի. երկուսն էլ Սուրմակի տոհմից և պարսկասեր կուսակցության կողմնակից.—Փարպ.կբ. Արծր.Ա. ժա:

— 6. Մովսէս քերթող, «էր դասատուր հայրապետանոցին» Գիւտ կաթողիկոսի («461—478 թ») տեղապահության ժամանակ. գրել է մեղադրական թուղթ Քաղկեդոնի ժողովի դեմ և իր աշակերտների ձեռքով ուղարկել Պոլիս:—Օրբ. հկճռ. դ, ժա:—Կա «Հարցումն Յոբնադի և պատասխանի Մովսէսի Հայոց քերթողի և Դաւթի փիլիսոփայի» (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1929, 14, Թորոս աղբ. Բ. 394), ինչպես և «Մովսէսի քերթողի Ո՞վ է դա որ թաքուցանէ յինէն զխորհուրդս» (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1929, 350):—Համարվում է Խորենացին:

— 7. Մովսէս եպիսկոպոս, ներկայացուցիչ Հայաստանի՝

այն նեստորական ժողովի մեջ, որ տեղի ունեցավ 486 թ. (տես ՀԱ 1925, 538)։

— 8. Մովսէս եպիսկոպոս Ցարեհաւանի. ստորագրում է այն թղթին, որ Բաբկէն կաթողիկոսի («490—516 թ») նախաձեռնությամբ հայ հոգևորականները գրեցին Պարսկաստանի ուղղափառներին.—բցռ. ի Մովսեսէ՝ Գիրք թղ. ը։

— 9. Մովսէս, գրիչ (այն է քարտուղար) Սահակ պարթևի «387—438 թ».—տես. Մովսիսի՝ Տաթև. հարց. 659։

— 10. Մովսէս փիլիսոփա, ուսումնական և ճգնավոր մարդ, որ հայ աբեղաներից չարաչար հալածվեց և վերջապես սպանվեց։ Գրել է «ահաւոր նզովս ի վերայ գլխաւորաց քահանայութեանըդ»։ Ժամանակակից է Վահան մարզպանին, որ նստավ «485—505 թ»։—Փարպ. թղ. էջ 202. Ասող. Բ. բ։

— 11. Մովսէս Սիւնեցի, հռչակյալ ճգնավոր, որի մոտ ճգնել է նաև Ղազար Փարպեցին (Ե դար)։—Փարպ. թղթ. էջ 187։

— 12. Մովսէս, «որ ըստ նոցանէ և ոչ հեռի ի նոցանէ (Սահակից, Մեսրոպից և Եզնիկից)՝ մեծն իմաստասիրաց և հռչակեալն ընդ տիեզերս»։—Յհ. իմաստ. էջ 66։ (Այս երեքը կամ չորսը կարող են նույն լինել)։

— 13. Մովսէս Խորենացի, կոչված «քերթող կամ քերթողահայր»։ Ե դարից, մահվան թիվը անստույգ անձ, որի մեջ խառնված և միացած են զանազան Մովսէս անունով անձեր և հետին մանր ժամանագիրներ։ Ըստ ավանդության Մովսէս Խորենացին Ե դարից է, Տարոնի Խորոնք գյուղից, Սահակի և Մեսրոպի կրտսեր աշակերտներից, եղբայր Մամբրէ Վերծանողի, ճամբորդել և սովորել է Բիւզանդիոնում, Աթէնքում, Պաղեստինում, Եգիպտոսում, Հռոմում և վերադարձել Հայաստան։ Կարգըվել է Բագրևանդի և Արշարունեաց եպիսկոպոս։ Իր առասպելական կենսագրությունը, որի վերնագիրն է «Յաղագս սրբոց վարդապետացն Հայոց Մովսէսի և Դաւթի», տպված է Հնոց և նորոց, էջ 39—87։ Իր գերեզմանը ցույց են տալիս Մշոյ Առաքելոց կամ Ղազարու վանքում (տես Հնոց և նորոց 13)։ Իր գործերն են՝ Պատմութիւն Հայոց, Պատմութիւն պատկերի Տիրամօր, Պատմութիւն և Ներբողեան Հռիփսիմեանց, Գիրք Պիտոյից, Ճառ Վարդավառի, Շարականներ, Աշխարհացոյց (այժմ համարվում է Շիրակացու գործը), Մեկնութիւն քերականի ևն։ Իր գործերի հավաքածոն է «Մատենագրութիւնք», հրատ. Վենետ. 1865։ Սրանից դուրս Մովսէսի անունով ունինք՝ 1) «Ճառ ի

մեծի աւուր Տապանակին, երանելւոյն Մովսէսի Խորենացւոյ սուրբ և ընտրեալ վարդապետի արարեալ որ ի Կարիաթարիմ որ բերէ զտօն Վարդավառի», տպ. Սոփերք ԺԸ, էջ 71—86.—2) «Վասն Թագաւորաց Հայոց, զոր կարգեաց Մովս. Խորենացի» (հետին գործ), տես Տաշեան, Ցուց. 192, 350.—3) «Հարցարանութիւն Մելիտոսի Յունաց ընդ Մովս. Խորենացւոյ» (Տաշեան, Ցուց. 709, 836).—4) «Պատմութիւն գիւտի խաչի ի ձեռն Հեղինեայ» և «Պատմութիւն Ս. Նշանին, որ ի Վարագ» (Տաշեան, Ցուց. 11).—5) «Մեկնութիւն երգոյն երից մանկանց» (Տաշեան, Ցուց. 136).—6) «Ճառ պատմութեան բանից ի Ս. Հռիփսիմէ» (Հայապ. 76).—7) «Մովսէսի Խորենացւոյ Բան իմաստութեան. Աստուծոյ խորհրդով և իմաստութեամբ հաստատեցաւ մարդկային տեսակ...» (Bodleian 233, Տաշեան՝ Ցուց. 783, Ձեռ. Վենետ. Բ. 1122).—8) «Աղօթք Մովսէսի քերթողի և պաղատանք առ տէր աստուած. Աղաչեմ զքեզ տէր, թող ինձ զմեղս իմ...» (Ձեռ. Թաւր. 85 ա և Ձեռ. Վենետ. Բ. 1122).—9) «Երանելւոյն Մովսիսի Խորենացւոյ սուրբ և ընտրեալ վարդապետի արարեալ. Պատճառս վասն սուրբ մարգարէիցն. Սիրով մեծաւ փափաքեյին մարգարէքն տեսանել զՔս» (Ձեռ. Վենետ. Բ. 1188). Խորենացուն են վերագրում նաև՝ Կալիսթենէսի Աղեքսանդրի պատմութեան թարգմանութիւնը։—Խոր. մատ. 281, 581. Հղկնտ. Ա. ը. Գր. սրկ. լա. 139. Հիր. 3, 16, 21, խը. Օրբ. ե, ժե. Մ. մաշտ. 336 ա. Սամ. անեց. 3, 10, 31, 69, 71. Մխ. այրիվ. 37, 62. Յայսմ. սեպտ. 17, նոյ. 25, փետր. 19 (այստեղ Մովսէս Խորենացին է քեռորդի Ս. Մեսրոպայ, վերակացու շինութեան Կարնոյ). Ցղ. մովս. և դաւթի, էջ 39—84. Պամ. սահ. 14. Արծր. Ա. բ, գ, ժա. Վրդ. իե, իգ, իը, Օրհն. 246. Տաթև. հարց. 637, 658. ձմ. լա. Վրդ. աշխ. 513. Վրդն. յանթ. 6 (հիշված է անունով «մեծ թարգմանիչն և հոգեշարժ վարդապետն Մովսէս Խորենացին առացեալ է զԾննդեան և զՅարութեան երգս շարականաց). Շար. (ընկիցը՝ հեղինակների շարքում). Ուխտ. Ա. ժթ, իգ, հզ. Բ. ժը. Ասող. Ա. ա. Մագ. թղ. է, լը. Մխ. անեց. գ, ը, ժա, ժգ, ի. Շնորհ. վիպ. 140 (պարզապես քերթող), 931. Մեծոփ. յիշ. գ. Պամ. լմբ. 232. Մին. համգ, 2, 13. Յկ. կր. 43, 46. Առաք. լծ. սահմ. 170. Հաւաք. 6, 12. ZAPh 2, 207. Վրդն. սղ. յոջ. (պարզապես խորենացի). Սիմ. ապար. 33 (պարզապես քերթող), 36. Զուղ. 17, 19, 33, 36, 37, 42, 44, 45, 218. Ջքր. սարկ. Ա. 1, Գ. 3. Եւ. կթղ. էջ ը և 3.—սեռ. Մովսէսի, Մովսեսի կամ Մովսիսի՝ Խոր. Ա. ա. Խոր. մատ. էջ

580, 585. Խոր. իմաստ. 64. Խոր. բնութ. 255. Սեբ. գ (էջ 11). Շիր. քրոն. 1. Գիրք թղ. գ. Դաւ. անյ. էջ 99. Յղ. մովս. և դաւթի, էջ 39, 51, 73, 75, 81, 84. Ասող. Բ. ա, բ. Յհ. կթղ. ժզ. Արծր. Ա. ա, ժ, ժա. Մաղ. թղ. ժը (սրբազանին Մովսէսի). Խոսր. 76. Յայսմ. սեպտ. 17, նոյ. 25. Վրդ. իե. Գանձ. բրձր. 30, 31. Երզն. պտճռ. 87, 89. Ճշ. 662. Պամ. յյտ. Ներս. 39. Ուռհ. 299. Սամ. անեց. 44, 46, 63, 71, 73. Մխ. այրիվ. 36, 71. Օրհն. 248 (գրիչ Ս. Սահակայ). Օրբ. Թ, կը. Լմբ. սսկ. 24. Մեծոփ. 38 (քերթողահօրն). Հաւաք. 12. Յկ. կր. 9, 36, 60. Սիմ. ապար. 8, 28. Զուղ. 8, 17, 38, 43, 59. Առաք. պատմ. 40.—Մովսեսի հայոց վիպագրի՝ Սամ. անեց. 27.—բցռ. ի Մովսիսէ՝ Ուխտ. Ա. է, իդ, իզ, խբ. Վրք. շնորհ. 40. Յղ. մովս. և դաւթի 84. Մխ. անեց. Ե. Մաղ. թղ. ը, ժթ.—ի Մովսեսէ՝ Մխ. անեց. ժ։—Տես նաև Վրաց աղբ. Ա. 38, 41. Հայապ. 195։—Խորենացու մասին եղած գրականությունը չափազանց շատ է. կարևորագույններից հիշենք Զարբ. Հին դպր. 350—387, Գրգչ. Քնն. պատմ. Դ. 74—104, Հայկ. աշխատ. Ցէթթէլի 90—105, գերմանացի Gutschmidt-ի և ֆրանսիացի Carrière-ի գործերը, իսկ ամենավերջինն է Ստ. Մալխասեանի աշխարհաբար թարգմ. Խորենացու պատմության, ընդարձակ ներածությամբ, կենսագրությամբ և բազմաթիվ ծանոթություններով ճոխացրած (Երևան 1940), որի համառոտ ամփոփումն է իր հոդվածը՝ տպված ԱրմՖանի Տեղեկ. 1940, № 1, էջ 213—9։ Կարող ենք ասել որ Մալխասեանի այս աշխատությամբ բացատրվում են Խորենացուն վերաբերյալ բոլոր հարցերը։—Երկու մեծ բանակ են կազմում Խորենացու քըննադատները։ Առաջինը ընդունում է որ Խորենացին Ե դարի հեղինակ է, Սահակի և Մեսրոպի կրտսեր աշակերտներից, ուրեմն ժամանակակից հարազատ անձնավորություն, շատ կարդացած խորահմուտ հեղինակ, որ իր ժամանակի գիտության համաձայն օգտվելով բազմատեսակ աղբյուրներից, կազմել է իր Հայոց պատմությունը։ Այս բանակի գլուխն են կանգնած հայագիտական հմտությամբ առլցուն այնպիսի դեմքեր, ինչպիսին են Նորայր Բիւզանդացին և Տաշեանը։ Երկրորդ բանակը կազմում են բազմաթիվ հակառակորդներ, որոնք սկսած գերմանացի Գութշմիտից և ֆրանսիացի անվանյալ հայագետ Կարրիէրից մինչև վերջին հայ համբակը հարձակվում են Խորենացու վրա և նախատում են նրան զանազան անպարկեշտ ածականներով։ Այս կարգի համբակներից մեկն է օրինակ Դաղբաշեանը, որ Խորենացու

մասին գրել է մի աշխատություն, որ կոչվում է «Փ. Բիւզանդացի և իւր պատմութեան խարդախողը» (Վիեննա 1898)։ Այս գրքից քաղում եմ ահա հետևյալ չքնաղ վերագիրները Խորենացու մասին.«Զառամեալ պատմաբան 4, 17, 35, 41, 44, 46. Խորենացու ցնդաբանութիւնները 13,. 42. մեր զառամեալ պատմաբանի անբարեխղճութեան և այն ողորմելի հասկացողութեան մասին, որ նա ունի պատմութեան վերայ 17. Խորենացին այս տեսակ գեղեցիկ պատմութեանց համար ճաշակ չունի. այլ նորա ճաշակը զարգացած է միայն անտեղի առասպելների և գրականական պլագիատի մեջ 24. զառամեալ պատմաբանի երևակայութիւնն, սուտ և հնարովի են 34. ստորութեամբ լռութեան տալով 39, 48. խարդախութեամբ արտագրում է 39. տգէտ, բայց գիտնական երևալ ցանկացող ծերունու ընդունայն բացատրութիւններից մէկն է 44. այս ծերունին որչափ խարդախ, նոյնչափ և միամիտ է. նա պարզամտութեամբ ի լուր աշխարհի պատմում է, թէ ինքն ինչ ողորմելի, թերի և ծիծաղելի հասկացողութիւն ունի պատմագրութեան մասին 47—48. Ով ծերացեալ հիւանդոտ, որքան մեծ ծառայութիւն պէտք է մատուցած լինէիր քո ազգին, եթէ ... ապագայ դարերու սերունդներին չթողնէիր քո կեղծ, անշունչ և անկենդան Հայոց պատմութեան կմախքը 48. խցիկում թարգմանութեամբ զբաղուած ծերունին շատ խակ, մանկական հասկացողութիւն ունի 56. մի անմիտ և այլանդակ քաղուածք է Փաւստոսի պատմութիւնից 58. կարկատող պատմաբանի ինքնահնար կեղծիքներից 60. մի կեղծիք, որ մեր ծերունու անուանը յաւիտենական նախատինք է բերում 80. հէքեաթներ որ Խորենացին տգիտաբար շարադրում է 87. մեր պատմաբանի կեղծիքն ու խարդախութիւնը 88. ստախօս պատմագիրը 92. որքա՜ն տգէտ է մեր ծերունի պատմագիրն 95. նոյն իսկ արտագրելու մէջ այնքան. անփոյթ է 98. ծառայամիտ և անբարեխիղճ պատմագիր 126. որքա՜ն զզուելի է մեր ծերունի պատմագրի վարմունքը 127. Խորենացին այն տկարամիտ մարդկանց նախահայրն է 133. ո՜րքան կեղծիքներ, ո՜րքան անբարեխղճութիւն է թոյլ տալիս իրեն Խորենացին 143. անմիտ թուական խաղեր, որոնք միայն պատմագրի խորին տգիտութիւնն են ցոյց տալիս 144. ուղղակի մարդ զարմանում է այս տգէտ պատմագրի յանդուգն խաղերի վրայ 145. պատուէրով պատմութիւն յերիւրող վարձկան հեղինակ 150. Խորենացին գողացել և յարմարեցրել է երևակայական Արա գեղեցկի դէմքի

վերայ 169. Բագրատունեաց տան ստրկամիտ պատմագիրը 171»:—Հակառակորդների պարագլուխներն են նախ Խալաթեանը, երկրորդ՝ Մանանդեանը և երրորդ՝ Ակինեանը: Խալաթեանը գրեց ռուսերեն երկու հատոր (Армянский эпос և Армянские Аршакиды), որոնց մեջ հեղինակը քննադատությունը հասցընում է ուղղակի մանկամտության: Առաջին աշխատության մեջ նա ուրանում է նույն իսկ Գողթան երգերի և հին առասպելների գոյությունը և Խորենացու պատմածները մի բառ աջից, մի բառ ձախից՝ անջատ անջատ Ս. Գրքից կամ մի այլ տեղից գողացած է համարում: Երկրորդում, նա Խորենացուն իբրև աղբյուր է դնում նույն իսկ այնպիսի գրքեր, ուրոնք հենց իրենք Խորենացուց են քաղված: Այսպեսով չի մնում բառ, որ Խորենացունը լինի: Այս ծայրահեղությունը զզվեցնում է ընթերցողին և այլ ևս ոչ մի հավատ չի թողնում նրա մեջ հեղինակի ասածների հանդեպ: Խալաթեանին պատասխանեց Մ. Աբեղեան, «Հայ ժողովրդական առասպելները» (Վաղարշապատ 1901) իր ընդարձակ ուսումնասիրությամբ, որի մեջ շատ հաջող կերպով ցույց տվավ ու նույն իսկ ծաղրի ենթարկեց Խալաթյանի մանկամտությունը:—Մանանդեանը հրատարակեց մի աշխատություն, որի վերնագիրն է «Խորենացու առեղծվածի լուծումը» (Երևան 1934): Եթե ուրիշ քննադատներ խոսում էին Խորենացու Պատմության ժամանակի մասին և անորոշաբար դնում էին Է—Թ դար, առանց հաստատուն պատճառաբանութեան, այս գրքում Մանանդեանը ճիշտ որոշում է իր դիրքը՝ դնելով Թ դար և տալիս է դրա համար հետևյալ պատճառաբանությունները: 1) Աշխարհացույցը Մովսէս Խորենացու գործն է և գրված է Թ դարում: 2) Ըստ այսմ Հայոց պատմությունն էլ այս ժամանակից է: 3) Խորենացին Զաքարիա կաթուղիկոսի հետ միասին գրել է «Ի փոխումն Աստուածամօրն և պատկերի նորին» ճառը, որ գտնըվում է Երուսաղէմի մատենադարանի № 413 ձեռագրում: Կա միայն մի հատ Զաքարիա կաթուղիկոս այդ շրջանից և դա է Զաքարիա Ա Ձագեցին, որ նստել է 855—876 թ. (Զաքարիա Բ Վաղարշապատցի կաթուղիկոսը նստել է «1515—1520 թ»): Բնականաբար նրա ժամանակակից Մովսէսն էլ, որ է Խորենացին, պետի լինի Թ դարից: Մանանդեանը իր աշխատության մեջ վարվում է շատ «զգույշ». օրինակ՝ գրքի բուն մասում, որ կրում է նույնպես «Խորենացու առեղծվածի լուծումը» խորագիրը և բռնում է գրքի 117—176 էջերը, գտնում ենք հետևյալ զգուշա-

վոր ձևերը. «հավանական է (158, 171), իմ կարծիքով (160, 176), կարծում եմ (164, 176), ենթադրել էինք (157), ես համարում եմ (169), կարող է թերևս գտնվել (164), դժվար չէ նաև եզրակացնել (167), կարող են վերաբերվել (133), այդ երևում է ըստ իս (140), կարևոր ենթադրություն (143), վիճելի է թվում ինձ (161), կարևոր են թվում ինձ (162), կարելի է ըստ իս կռահել (151), միանգամայն հավանական է (157), միանգամայն հնարավոր է և հավանական (151), այս ենթադրությունը հավանական է (138), հավանական մի ապացույց է (140), հավանական կռվաններ են (154), ավելի քան հավանական է (134, 161), ավելի քան հավանական է ըստ իս (157), ավելի քան հավանական է թվում ինձ (140), կարող էր թերևս հանդուրժելի համարվել (175), անհավանական չի լինի ենթադրել (137), չեն կարող ըստ իս համարվել ընդունելի (173), չի կարող ըստ իս համարվել հավանական (126), միանգամայն անհավանական է ըստ իս (160), կարող են թվալ վիճելի կռահումներ (123), հավանական են (162, 171), այնուամենայնիվ հավանական կարելի է համարել (167), կարող ենք նաև ենթադրել (167), թվում է հավանական (153), դժվար է շինովի և անհիմն համարել (151), միանգամայն պարզ է ու ավելի քան հավանական (168), եթե ճիշտ են (172)»։ Այս բոլորից դուրս ունինք «կարելի է, կարող է լինել ևն (6 անգամ), ըստ երևույթին (6 անգամ), ինձ (մեզ) թվում է (8 անգամ), հավանորեն (14 անգամ) և ըստ իս (16 անգամ)։ Բայց չնայած այս հարյուրի մոտ թեականներին, արդյունքը ուղղակի դրված է «ճիշտ», որ Խորենացին Թ դարի կեսից հետո ապրած հեղինակ է։—Մանանդյանի այս գործի քննադատության են նվիրված երկու գիրք. նախ Ստ. Մալխասյանցի «Խորենացու առեղծվածի շուրջը» (Երևան 1940) և երկրորդ՝ Աշ. Աբրահամյանի «Խորենացուն վերագրվող Աշխարհացույցի հեղինակի հարցի շուրջը» երկը (տպ. Երևան 1940)։ Երկու անգամ ուշադիր կերպով կարդացի այս երկրորդ գործը և որպիսի հիացմունք ունեցա հեղինակի աշխատանքի զուտ գիտական մեթոդի վրա։ Պրպտելով մեր Մատենադարանը, հեղինակը գտել է «Աշխարհացոյցի» 36 ձեռագիր։ Սրանցից ութը գրված են ԺԲ—ԺԶ դարերում, մնացյալ 28 հատը 1600 թվից մինչև 1724 թ։ Հին ձեռագրերը վերնագրում Խորենացու անունը չունին։ Առաջին անգամ 1600 թվին վերնագրում կարդում ենք «Մովսէսի Խորենացւոյն» և այս անունը այնուհետև սովորական է դառնում։

Թեև այս անունը կարդում ենք նաև ԺԴ դարում գրված մի ձեռագրի վերնագրում, բայց այդ անունը ավելացրած է 19-րդ դարում։ Սա նշանակում է որ Աշխարհացոյցը Խորենացուն վերագրելու միտքը 1600 թվից է սկսում։ Աշխարհացոյցի նախնական վերնագիրն է եղել «Երկրաչափ», որի հետքերը երևում են դեռ հնագույն ձեռագրերի վրա։ Ե՞րբ է գրվել այս Երկրաչափը (=Աշխարհացոյցը)։ Մի տեղ հեղինակը հիշում է Կոստանդինոս Անտիոքացու «Քրիստոնէական տեղագրութիւն» երկը, որից քաղվածքներ է արել։ Այս հեղինակը Զ դարից է։ Աշխարհացոյցում Արաբիայի մասին խոսելիս այնպես է նկարագրում հեղինակը, որ դեռ Արաբները մի միություն չեն կազմած, հանդիստ բնակվում են երեք տարբեր Արաբիայում (Ապառաժ Արաբիա, Անապատ Արաբիա, Երջանիկ Արաբիա) և դեռ աշխարհակալութեան չեն դուրս եկած։ Ուրեմն և Աշխարհացոյցը գրված է այդ թվականից առաջ, այն է Է դար։ Այն բոլոր հիշատակությունները, որոնք մեջ են բերված քննադատների և մանավանդ Մանանդեանի կողմից՝ ցույց տալու համար թե Աշխարհացոյցը գրված է Արաբների արշավանքից հետո (ինչ. Բասրա, Կուֆա կամ Ակողա, Մուծղ=Մուսուլ են) չեն գտնվում Աշխարհացոյցի հին օրինակներում։ Ինչպես Աշ. Աբրահամեանը ցույց է տալիս, Աշխարհացոյցը իբրև առձեռն գիրք շարունակ փոփոխության, հավելման ու համառոտման է ենթարկվել և այդ բոլորը պարզվում է հնագույն ձեռագրերի համեմատությամբ։ (Փակագծի մեջ ասեմ որ մաղապ, դհունալհունար, ախունա բառերը զուտ արաբ. ملاب malāb, دهن الحنا duhn-ul-ḥinnā, اخكونة axkūna ձևերից են (տես Արմ. բառ.) և նրանց ներմուծումը անհրաժեշտ է բացատրել պատշաճ ձևով)։ Ո՞վ է այն անձը Է դարից, որին կարելի լիներ վերագրել այսպիսի աշխարհագրություն, եթե ոչ Շիրակացին։ Բայց Աշ. Աբրահամեանը այս բանը ճշտում և հաստատում է նաև այլ ձևով։ Նա քննում է մի կողմից լեզվական այն ձևերը և մյուս կողմից գիտական այն գաղափարները, որոնք ընդհանուր են Աշխարհացոյցին և Շիրակացու անունով հայտնի մյուս գործերին։ Նույն իսկ Աշ. Աբրահամեանը Գր. Մագիստրոսի Թղթերի մեջ (էջ 8) գտնում է երկար մի հատված, որի մեջ հիշված է Անանիա Շիրակացու անունով «Երկրաչափութիւնը»։ Այսպեսով ընկճվեցին Մանանդյանի առաջին երկու հիմունքները։ Երրորդ պատճառաբանությունը շատ ավելի հեշտ եղավ հերքել։ Աշ. Աբրահամեանը գտնում է մեր Մատենադարանում Մովսէս

Խորենացու և Զաքարիա կաթողիկոսի աշխատակցությամբ գրված Աստուածամօր պատկերի պատմությունը։ Դուրս է գալիս որ այդ երկու անձինք, իրարից դարերով անջատ, գրել են նույնանուն մի մի երկ, և ինչ որ գրիչ ուշ ժամանակ այս երկուսի գործերը առանձին առանձին և հատված հատված առընթերագրել է, ամեն մեկի մոտ էլ նշանակելով Մով. (=Մովսէս) և Զք. (Զաքարիա)։ Կորավ ուրեմն այս երրորդ բացառիկ փաստն էլ և Թ դարի ենթադրությունը հալվեց։ Աշ. Աբրահամյանը ցույց է տալիս նաև, որ «Անանուն» կոչված Ժամանակագրությունը, որ նույնպես պատկանում է Շիրակացու գրչին, ունի մի հատված «Մովսէսի Խորենացւոյ և Անդրէասի» վերնագրով և իրոք արտագրված է Խորենացու Պատմությունից։ Բացի սրանից Շիրակացու «Զի՞նչ է ամիսն» գրվածքում, որ դեռ անտիպ է, կա 6 տող մի հատված Հայկի մասին, որ նույնպես Խորենացուց է քաղված։—Կա մի կարևոր կետ, որ Խորենացու ոչ կողմնակիցները և ոչ էլ հակառակորդները ի նկատի չեն ունենում։ Ենթադրենք Խորենացուն տարինք Ը կամ Թ դար, ովքե՞ր պիտի լինին այն երկու նշանավոր հայրերը, որոնք պիտի փոխանակեն Սահակին ու Մեսրոպին։ Մանանդյանը գրել է իր գրքում (էջ 136) «հավանօրեն Ովայեցի Հովհաննէս Ե կաթողիկոսը»։ Որքա՞ն տատանվեց արդյո՞ք հեղինակը և որքա՞ն դիմադրեց նրա գրիչը այս անունը գրելու համար։ Մի ողորմելի ոչնչություն, որ իր 22 տարվա կաթողիկոսության ընթացքում ուրիշ ոչինչ չի արել, եթե ոչ Բուղայի արշավանքների ժամանակ աստանդական թափառել և վերջն էլ մեռել է։ Ա՞յս է Ս. Գրքի հոյակապ թարգմանիչ Սահակին և հայ գրականության հիմնադիր Մեսրոպին փոխանակողը...։ Խորենացին պատմում է թե համբուրեց Եղեսիա, մի քիչ աշխատեց դիվանում, ապա գնաց Երուսաղէմ Ս. գերեզմանը համբուրելու և «Յեալ վայրկեան ի պաղեստինացւոց հրահանգս»։ Ե դարում, այո, Եղեսիան հռչակավոր ուսումնական կենտրոն էր, մեծ գրադարան ուներ, ամեն կողմից աշակերտներ էին գնում այնտեղ ուսանելու, թարգմանելու և գրելու։ Երբ Եղեսիայի Ասորիները չընդունեցին քաղկեդոնական դավանանքը (451 թ), Զենոն կայսեր հրամանով Եղեսիայի դպրոցը փակվեց և նրա վերջին ուսուցիչը՝ Ներսեհ Նեստորական փախավ Մծբին (489 թ)։ Իսկ Արաբների արշավանքից հետո ի՞նչ մնաց Եղեսիայից. նա դարձավ մի ողորմելի Ուռֆա, շարունակ ենթակա հույների և արաբների ավերումնե-

րին։ Երուսաղեմից Խորենացին անցավ Եգիպտոս և Ալեքսանդրիա։ Ե դարում նա կարող էր պատմել և ասել. «Այլ ևս չի նստում Պղոտինիոսը իր հինգ գագաթով, այլ Մարկոս ավետարանիչը։ Չկան միշապների գերեզմաններ, այլ նահատակների մասունքներ։ Չկան Տուբի ամայա հեթանոսական տոները, այլ Քրիստոսի հայտնության տոնը։ Չեն զոհում Սարապիսին, այլ Քրիստոսին են պատարագում։ Պատգամ չեն հարցնում Պրոդէիադից, այլ Նոր Պղատոնի ուսմունքն են սովորում։ Ես էլ նրան աշակերտեցի և գուցէ անարժան էի, բայց բավական բան սովորեցի»։ Այս բոլորը հնարավոր էր ասել Ե դարում, երբ անասնապաշտությունից քրիստոնեության] նոր էր դարձել Եգիպտոսը, երբ Ալեքսանդրիայում կանգուն էր հոյակապ գրադարանը, երբ Նոր Պլատոնը իր վարդապետությունն էր շարունակում...։ Պտղոմէոսն էր հիմնել Ալեքսանդրիայի Թանգարանն ու գրադարանը, որ ուներ 700,000 գիրք։ Արիոսից հետո Հաոդոնը եղավ Ալեքսանդրիայի դպրոցի վերջին ուսուցիչը, որից հետո դպրոցը փակվեց։ Նոր-Պլատոնական դպրոցը փակեց Յուստինիանոսը 529 թվին և նրա վերջին ներկայացուցիչները փախան Պարկաստան։ Արաբները եկան Է դարում. Օմարը խլեց Եգիպտոսը Հերակլ կայսեր ձեռքից (640 թ), Ալեքսանդրիան գրավեցին 641 թվին և գրադարանի մնացորդները ջնջեցին։ Ալեքսանդրիայի փոխարեն շինեցին մի նոր մայրաքաղաք Fostât անունով, որ հին Կահիրէն է (Է դար)։ Ուրեմն Թ դարում, երբ վաղուց Արաբները եկել, Ալեքսանդրիայի գրադարանը ոչնչացրել, քրիստոնեությունը վտարել և Իսլամի դավանանքն էին տարածում, կարելի՞ էր այսպիսի հիշողություններ անել։ Ե դարում կարող էր Խորենացին գնալ Եգիպտոս, Նոր Պլատոնին աշակերտ դառնալու, իսկ Թ դարում ինչու էր գնում, «խուրմա ուտելու»։ Եգիպտոսից Խորենացին Հռոմ է գնում, Ելլադայից Ատտիկէ և Աթէնքի վրայով Բիւզանդիոն։ Բիւզանդիո՞ն... Ե դարում կարելի էր դեռ հիշատակել այս անունը. բայց Թ դարո՞ւմ. Է դարում ապրող Սեբէոսը իր պատմության մեջ միայն 6 անգամ է հիշում այս անունը, իսկ Կոստանդնուպոլիսը 17 անգամ (չհաշվելով գլխակարգության մեջ հիշվածները)։ Թ դարում ի՞նչ Բիւզանդիոն. մոռացված էր արդեն այդ անունը։ Եթե Խորենացուն տանենք դնենք Թ դար, ինչպե՞ս պիտի տեղավորենք նրա բերնի մեջ Գոլիկրատէս, Եւագարոս, Կամադրոս, Ուղիւպ քուրմ Հանեայ և այլ նման անուններ, որոնք իսպառ

անծանոթ էին այն դարում։ Դեռ վերջերս ինքը Մանանդեանը Գառնիի նորագյուտ հունարեն արձանագրության մեջ այնպիսի հին գաղտնիքներ երևան հանեց, որոնք ծանոթ են Խորենացուն, բայց անհնարին էր որ ծանոթ լինեին նրան, եթե Թ դարից լիներ։—Այժմ պետք է խոսել երրորդ հակառակորդ Ակինեանի մասին։ Նշանավոր է Ակինեանը իր բազմապիսի բանասիրական գործերով, որոնք մեծ թիվ են կազմում։ Չկա այժմ «Հանդէս ամսօրեայի» մի համար, որ նրա մի կամ մի քանի հոդվածը չպարունակի։ Կան նույն իսկ համարներ, որ ամբողջապես ինքն է գրավել։ Այս բազմաբեղուն բազմավաստակ գիտնականը սակայն մի քանի տարի է, որ մոռացել է թե «ճանապարհ զարքունի գնասցուք, ոչ խոտորեսցուք յաջ կամ յահեակ»։ Վկա ինձ Եղիշէի ուսումնասիրությունը։ Եղիշէի պատմությունը մի աննման գոհար է մեր գրականության մեջ. կա՞ մարդ որ չկարդա, չհուզվի և չարտասվե այս չքնաղ գրքի պատմությամբ։ Աշխարհում քանի՞ գրականություն կա, որ նման երկ արտադրած լինի։ Բայց սակայն ի՜նչ լուտանքներ չթափեց Ակինյանը նրա գլխին։ Եղիշէի նման զատափետեց նաև Խորենացուն, որի Հայոց պատմությունը բերավ Ղևոնդ Երեցին ընծայեց՝ իր «Ղեւոնդ երեց և Մովսէս Խորենացի» աշխատության մեջ (տպ. Վիեննա 1930)։ Ինչպե՞ս կարելի է այս խղճուկ գրչակին—որ այնքան անշնորհք է—որ իր գրքի սկիզբը մի առաջաբան էլ չի կարողացել գտնել, ոչ էլ վերջում գոնե մի քանի տող վերջաբան,— այն մեծահանճար բազմահմուտ հեղինակի հետ հավասարել։ Եվ որքան խե՜ղճ են մեջ բերված պատճառաբանությունները։ Ինչ որ երկրում երկրաշարժ է եղել, կամ հեղեղ է պատահել, կամ գիսավոր է երևացել, Հայաստանում էլ նման բան է պատահել... ունայն խոսքեր որոնք մարդ ամաչում է Ակինեանին վերագրել։ Կա՞ տարի, որ նման աղետներ պատահած չլինին Հայաստանում կամ հարևան մի երկրում։ Կարելի՞ բան է այս սովորական երևույթները ժամանակագրական կռվան դարձնել հեղինակի թվականը որոշելու պատասխանատու և ծանրակշիռ գործում։ Ավելի զվարճալի է այն փաստարկումը, որով Ղևոնդ և Խորենացի դառնում են նույն և նման գաղափարների տեր մարդիկ։ Այսպես Ղևոնդը կարծում է թե ձմեռը ջուրը սառչում է. բոլորովին նույն կարծիքն ունի նաև Խորենացին։ Սրանից հետևում է թե երկուսը միևնույն անձինքն են։ Թեև դեռ հաստատված չէ թե որ աստիճանին սառչում է այդ ջուրը, բայց բավական է որ սառ-

չում է։ Այսքան ուժեղ ապացույցից հետո այլ ևս կարելի՞ է չընդունել երկու հեղինակների նույնությունը։ «Մովէս, Պաղէ, բազում դպրութիւնք գրեց ի մոլութիւն դարձուցանենն»։—Հակառակ այս բոլոր խծբծանքներին Խորենացին է և մնում է իբրև մեր հին մատենագրության բարձրակարկառ կոթողը։ Նա մեծ է նրանով, որ առաջին անգամ հղացավ Հայոց ազգը իբրև մի միություն և մի ամբողջություն ըմբռնելու միտքը և այս միտքը իրականություն դարձնելու համար ստեղծեց ոչնչից Հայոց անգոյ պատմությունը։ Իրանից առաջ եղող մեր բոլոր պատմիչները ժամանակակից մի շրջանի ժամանավոր պատմիչն են եղել։ Հայոց ազգը իր ծագման օրից մինչև իր ժամանակը ներկայացնելու ծանր և պատասխանատու գործը Խորենացին իր վրա վերցրեց։ Եվ ինչ ուներ իր ձեռքին այս խոշոր գործը հաջողությամբ կատարելու համար։ Աննշան ու թափթփուկ տեղեկություններ այս ու այն տեղ ցրուցան։ Նա հավաքեց ու կապակցեց այս բոլոր փշրանքները։ Ֆիրդուսիից 500 տարի առաջ նա գաղափարն ունեցավ օգտագործելու հայ ժողովրդի մեջ պատմըվող առասպելները։ Նա լավ ծանոթ էր ինչպես հույն, նույնպես և Պարսից առասպելներին։ Հույն առասպելների մեջ նա տեսնում էր պատմական դեպքերը վարագուրված. իսկ Պարսից առասպելները համարում էր «փծուն և անճոռնի», զուրկ պատմական ճշմարտությունից։ Այս տեսակետով մոտենալով նաև հայոց առասպելներին, քաղեց նրանցից ինչ որ ճշմարիտ էր համարում և հյուսեց իր պատմությունը։ Այն ժամանակ երբ գրում էր Խորենացին, ամբողջ քրիստոնյա աշխարհի մտքի վրա թագավորում էր Հրեից Ս. Գիրքը, մարդկության սկիզբը կապված էր Ադամի, Նոյի, Ջրհեղեղի և աշտարակաշինության առասպելների հետ։ Անհնարին էր ուրիշ բան մտածել և եթե մեկը մտածեր էլ՝ սուտ կհամարվեր։ Խորենացին էլ երբ գտավ Հայկի առասպելը ժողովրդի մեջ, կապեց Նոյի և աշտարակի հետ և ձևակերպեց Հայոց պատմության սկիզբը։ Իր ստեղծած ազգաբանության վրա կազմվեց Ժ դարում Աղվանից պատմությունը Մովսէս Կաղանկայտուացու ձեռքով, որ նույն իսկ Աղվանք անունը հայոց աղու բառից է հանում Խորենացուց առնելով (Խոր. Ա. ը > Կղկնտ. Ա. դ)։ ԺԲ? դարում Վրաց պատմիչ Ջուանշէրն էլ կազմեց Վրաց պատմությունը Խորենացու ձևով և օրինակով։ Նա ընդունեց մեր պատմահոր կազմած ազգաբանությունը։ Ինչպես հայտնի է ըստ Ս. Գրքի Նոյի որդիների շարքն է՝ Յաբեթ,

Գամեր, Թորգոմ (Ծն. Ժ. 2). իսկ Խորենացին (Ա. Ե) Գամերի և Թորգոմի միջև դնում է Թիրաս, որ ըստ Ս. Գրքի Գամերի եղբայրն է։ Այսպեսով Հայկը լինում է Նոյի վեցերորդ սերունդը։ Ջուանշէրը ճիշտ նույն ձևով Հայկին դնում է Թիրասի թոռ և Յաբեթի թոռան թոռ։ Իր պատմության առաջին գլուխը, որի գեղեցիկ նպատակն է ցույց տալ Կովկասեան բոլոր ժողովուրդների եղբայրակցությունը, այսպես է սկսում նա. «Յիշատակ արասցուք այժմ, զի Հայոց և Վրաց և Ռանաց (=Աղվանք) և Մովկանաց և Հերանաց և Լեկաց և Կովկասեաց և Եգերաց՝ հայր մի էր սոցա, Թորգոմ կոչեցեալ, որդի Թիրասայ, որդւոյ Գամերայ, որդւոյ Յաբեթի, որդւոյ Նոյի...»։ Աշտարակից հետո Թորգոմը գալիս բնակվում է «ի մէջ լերանց Մասեաց և Արագածու». ունենում է ութը որդի. «առաջինն Հայկն, երկրորդն Քարթլոս, երրորդն Բարդոս, չորրորդն Մովկան, հինգերորդն Լեկան, վեցերորդն Հերոս, եօթներորդն Կովկաս, ութերորդն Եգրէս։ Եւ Հայկն առաւել էր ուժով և քաջութեամբ, որ չեղև նման նմա ի վերայ երկրի, ոչ յառաջ քան զՋրհեղեղն և ոչ յետոյ՝ մինչև ցայսօր ժամանակի։ Սոցա բաժանեաց Թորգոմ զաշխարհն իւր. ետ զկէսն Հայկին, և զկէսն եւթանց որդւոցն՝ ըստ արժելոյ նոցա»։ Հետևում է ամեն մեկին տված երկրի սահմանները (Պատմ. Վր. էջ 7—9)։ Այսպեսով Կովկասեան երեք մեծ ազգերի պատմության սկիզբը կապվում է Խորենացու ձևակերպած Հայկի առասպելի հետ։ 1300 տարի իշխեց Խորենացու հնարած պատմությունը հայոց գլխին. Նրանից դուրս պատմություն չէինք ճանաչում։ Խորենացին եթե ոչ աշխարհի, գոնե հայ ազգի և ամբողջ Արևելքի առաջին ազգագրագետն է։ 1300 տարի պետք է անցներ Խորենացու վրայից, մինչև երևան կգային եգիպտական մեհենագրերը, Ասուրական, Պարսկական, Խալդյան և Հաթյան բևեռագրերը, կկարդացվեին ու կթարգմանվեին նրանք, կհնարվեր լեզվաբանությունը և այսպեսով երևան կգար մի կողմից հին աշխարհի իրական պատմությունը և մյուս կողմից կորոշվեր ազգերի ու ժողովուրդների ցեղակցական կապը։ Մինչև այդ, գիտնականները ստիպված էին, նույն իսկ հակառակ իրենց կամքին, կրկնել այն առասպելախառն պատմությունները, որ տվել են մեզ Աբիւդենոսը, Հերոդոտը կամ Եւսեբիոս Կեսարացին։ Այնու ամենայնիվ Խորենացին լավ է զանազանում առասպելը պատմությունից. և այս վերջինի անբաժան մասն է համարում ժամանակագրությունը։ «Ո՛չ է պատմութիւն ճշմարիտ

տանից ժամանակագրութեանս ասում է նա (Բ. ձր)։ Ըստ այսմ նա աշխատում է ճշտել ամեն մի թագավորի տարիներն ու ժամանակը։ Փույթ չէ թե իր աղբյուրները սխալ կամ իր դատողությունները անճիշտ լինեին։ Կարևորը սկզբունքն է։ Խորենացին գիտե քննադատությամբ վերաբերվել իր աղբյուրներին, մերժում է այս և ընդունում է այն՝ համաձայն իր դատողության։ Նա առաջդիմական է. հասկանում է կուլտուրայի արժեքը և դրա համար էլ թողնում է ասիական հայեցակետը և դեպի հույներն է դառնում, որոնց «գիտութեան մայր և դայեակ» է կոչում։ Նա հելլենասեր է, ուրիշ խոսքով Եվրոպական արևմտյան կուլտուրայի մեծ քարոզիչն է հայոց մեջ։ Նա գիտե որ հայը փոքր ազգ է, շատ անգամ հզոր ազգերի ոտքին կոխան եղած, բայց նա էլ ունի կատարած արիական գործեր։ «Զի թէպէտ և եմք ածու փոքր և թուով յոյժ ընդ փոքու սահմանեալ, և զօրութեամբ տկար և ընդ այլով յոլով անգամ նուաճեալ թագաւորութեամբ, սակայն բազում գործք արութեան գտանին գործեալ և ի մերում աշխարհիս և արժանի գրոց յիշատակի» (Ա. գ)։ Այս անմահ պարբերությունը, որ այսօր էլ հաճախ կրկնվում է մեր մեջ, արդյունքն ու ցուցանիշն է Խորենացու մաքուր հայրենասիրության, որով տոգորված է նա և տոգորում է մեր էլ սրտերը։ Եթե մեր առաջին մեծագույն հեղինակը Մեսրոպն է, որ ստեղծելով հայ գիրն ու գրականությունը՝ հավերժացրեց հայերեն լեզուն, որ նախապայմանն է հայ ազգի գոյության, երկրորդ մեծագույն հեղինակն էլ Խորենացին է, որ ստեղծելով հայոց պատմությունը հայ ժողովուրդն էլ իր ազգային գոյության գիտակից դարձրեց։—Վերջին հարցը Խորենացու մասին՝ նրա քաղկեդոնական լինելու հարցն է, որ արծարծեց վերջին անգամ Ստ. Մալխասեանը (տես իր «Խորենացու առեղծվածի շուրջը», էջ 130 (1940 թ) և «Խորենացին քաղկեդոնական էր» (1944 թ)։ Մալխասեանը պնդում է թե Խորենացին քաղկեդոնական էր, որին և վերագրում է նրա կրած հալածանքը։ Այս կարծիքի դեմ առանձին հոդված ունի Եր. Տէր-Մինասեան. Տեղեկ. Արմֆանի 1943, № 2, էջ 55—80, ուր հայկաբանի, կրոնագետի, բանասերի և պատմաբանի քաջակ հմտությամբ հաջողապես հերքում է «Խորենացու քաղկեդոնական լինելու առասպելը»։—Խորենացու Հայոց պատմությունը 12 տպագրության է արժանացել, թարգմանվել է բացի աշխար-

հաբար հայերենից՝ լատիներեն, ֆրանսերեն, իտալերեն, ռուսերեն, գերմաներեն, հունգարերեն և նույն իսկ տաճկերեն։

— 14. Մովսես Տարոնեցի, եպիսկոպոս Բագրևանդի և Արշարունեաց, ըստ Տաշեան, Ցուց. 656 հրատարակված ցանկի՝ նստած պիտի լինի մինչև 472 թ. կարող է լինել Խորենացին.—սեռ. Մովսեսի, Մովսիսի՝ Ասող. Բ. բ. Կիր. 22. Սամ. անեց. 73. Տաշեան, Ցուց. 656.—բց. ի Մովսիսէ՝ Ասող. Ա. ե։

— 15. Մովսես քերթողահայր, ուսուցիչ Պետրոս եպիսկոպոսի Սիւնեաց 551 թ.—սեռ. Մովսեսի՝ Օրբ. հկճռ. ժբ։

— 16. Մովսես Բ. Եղուարդեցի, կաթողիկոս հայոց «574—604 թ». հաջորդեց Յովհաննէս Բ-ին. իր օրով Հունաց Մօրիկ կայսրը (582—602) ժողով գումարեց Պոլսում (592—3 թ) և պահանջեց, որ հայերը քաղկեդոնական դավանանքը ընդունեն։ Մովսէսը մերժեց։ Կայսրը բաժանեց Յունահայոց թեմը և կաթողիկոս դրավ քաղկեդոնական Յովհան Բագարանցուն։ Մովսէսի օրով գործադրության դրվեց հայոց տոմարը, որ 551 թվին կարգադրել էր Ներսէս Բ կաթողիկոսը (այս մասին մի տեղեկություն տես Ձեռ. Վենետ. Ա. 344)։—Սեբ. ժէ, իե. Յհ. կթղ. ժղ, ժէ. Ուխտ. Բ. ա, դ—է, իբ, իգ, խդ, խե, խը, կա-կգ. Գիրք Թղ. լդ, լե, խդ, խէ, ծա, ծբ, ծէ. Յհ. կթղ. հյր. 274. Շիր. քրոն. 76. Եղն. եր. 268. Կղկնտ. Բ. խդ, խը. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 74. Փհնպ. 271. Մխ. անեց. դ, իգ. Մխ. այրիվ. 20. Կիր. 24—26. Վրդ. լ. Միխ. աս. իթ (= իը). Վանակ. տարեմ. 164 բ. Ցայսմ. փետր. 25. Օրբ. իա, հա.—սեռ. Մովսեսի, Մովսեսի, Մովսիսի՝ Գիրք Թղ. լը, լթ. Կղկնտ. Բ. խզ (հրատ. Էմինի). Յհ. կթղ. ժզ, ժէ. Ասող. Բ. բ. Մամիկ. ա. Ուխտ. Բ. ա, բ-ե, ը, թ, ի, լբ, լդ—լզ, լթ, խդ, խթ, կ, կը. Կիր. 25, 26. Ցայսմ. փետր. 25. Պամ. յյտ. ներս. 45. Մխ. անեց. դ, իգ. Վրդ. լ, լա. Մխ. այրիվ. 63. Օրբ. իգ, իդ, հա. Ջուղ. 47. Զքր. սարկ. Գ. 6.—բցռ. ի Մովսիսէ՝ Ուխտ. Բ. ա, բ, լը, խզ, կ. Օրբ. իե.—գրծ. Մովսիսիւ՝ Ուխտ. Բ. խզ. Օրբ. կը. Միխ. աս. ժէ.—Մովսեսիւ՝ Օրբ. հկճռ. ժբ։—Վրաց աղբ. Ա. 43, 44, 78, 79. Ջամչ. Բ. 256—302. Զարբ. Հին դպր. 414—6. Աղգապ. 567—614. Ակինեան, Կիւրիոն կթղ. 112—124։

— 17. Մովսես եպիսկոպոս, 12րդ առաջնորդ Ցուրտաւի, հաջորդ Յոհանէ Բ-ի. Տաշրաց Մեհենկերտ գյուղից էր. ծնվել է 570 թ. մանուկ հասակից գնաց Ցուրտաւ և այնտեղ կրթվելով՝ Կիւրիոնի ձեռքով ձեռնադրվեց («599 թ») եպիսկոպոս հայախոս

վրաց։ Երբ Կիւրիոնը ընդունեց հունական դավանանքը, Մովսեսը հեռացավ Հայաստան՝ Ցովհաննավանքը (Կարբի) և այնտեղից աշխատում էր իր նամակներով հեռու պահել իր հոտը նույն դավանանքից։ Այստեղ նա միտք հղացավ Վրաց բաժանման առթիվ տեղի ունեցած պաշտոնական թղթակցությունը ի մի հավաքելու և Վրթանէս տեղապահի օգնությամբ կազմեց Գիրք Թղթոցի այդ մասը՝ ըստ Ակինեանի։—Ցովհաննավանքում մահամերձ հիվանդացավ. ապաքինելուց հետո, նորընտիր Աբրահամ կաթողիկոսի հրավերով գնաց Դուին, ուր և մեռավ մի տարի հետո, 609 թ. 39—40 տարեկան առույգ հասակում։—Ուխտ. Բ. գ, ը, ժ, ժգ, ժթ, իդ, իէ—իթ, խ՝ խգ, խդ, խը-ծ, ծբ, ծդ, ծզ, ծէ, կը. Գիրք Թղ. ծա. կիր. 26.—սեռ. Մովսեսի, Մովսիսի՝ Ուխտ. Բ. ա, է, ժա-ժզ, ժթ—իէ, լդ, խ—խգ, խթ, ծբ, ծը, ծթ. Գիրք Թղ. իգ-իթ, լգ, լզ, լէ, խզ. Վրդ. լ.—բցռ. ի Մովսեսէ, ի Մովսիսէ՝ Ուխտ. Բ. ժա, ժդ, իե, խա, խգ, խթ, ծը. Գիրք Թղ. իե, իէ, լբ, լզ, խբ, խը. Օրբ. իե.—Վրաց աղբ. Ա. 37. Ակինեան, Կիւրիոն կթղ. 42—43, 198—223 (վերջինս Մովսէսի մանրամասն կենսագրությունն է)։

— 18. Մովսես եպիսկոպոս, առաջնորդ Կամսարական տան. հաջորդեց Թովմասին և նստած պիտի լինի ըստ Տաշեան Ցուցակի 599—609 թ. կամ ըստ Այրարատի ցուցակի 582—597 թ.—Չամչ. Բ. 374, Այրարատ 56, Տաշեան՝ Ցուց. 656։

— 19. Մովսես եպիսկոպոս Բախաղատոյ (Զ դար).—սեռ. Մովսիսի՝ Կղկնտ. Բ. է.—Մովսեսի՝ Գիրք Թղ. ժթ.—(էմինի հրատարակությունն ունի Բախաղատոյ ընթերցվածը, Շահնազ. Բաղաբատու (որ հայ ձև չէ). Գիրք Թղ. Բ...գատու. երկքի համեմատությունից լավագույնը առաջինն եմ համարում)։

— 20. Մովսես եպիսկոպոս Խորխոռունեաց. Աբրահամ կաթողիկոսին տվեց «ձեռնարկ հավատոյ» «607 թ.».—Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ. խ.—բցռ. ի Մովսիսէ, ի Մովսեսէ՝ Կղկնտ. Բ. խթ. Գիրք Թղ. ծե։

— 21. Մովսես եպիսկոպոս Գարտուի. ամբաստանություն գրեց Վրաց Կիրոյ կաթողիկոսի մասին առ Սմբատ մարզպան Վրկանաց (Է դարի սկիզբը).—Այրարատ 165։

— 22. Մովսես եպիսկոպոս, առաջնորդ Կամսարական տան, հաջորդեց Թէոփիլոսին. գահակալել է 634—646 թ. և իրեն էլ հաջորդել է Ղազար, որ նստել է 646—683 թ.—Չամչ. Բ. 374, Այրարատ 56, Տաշեան՝ Ցուց. 656։

— 23. Մովսէս կաթուղիկոս հայոց, հաջորդ Եզրի, քաղկեդոնիկ.—Տաթև. հարց. 545։ (Եզրի հաջորդն է Ներսէս Գ Շինող, որին հաջորդել են կարգով՝ Անաստաս, Իսրայէլ, Սահակ Գ և Եղիա։ Տաթևացին այս շարքը պահում է ճիշտ, միայն Ներսէսի փոխարեն դնում է Մովսէս)։

— 24. Մովսէս եպիսկոպոս, գործակից եղավ Իսրայէլին՝ Հոնաց մեջ քրիստոնեություն քարոզելու ժամանակ (680-ական թվերին)։—Կղկնտ. Բ. խա։

— 25. Մովսէս Բ կաթուղիկոս Աղվանից, հաջորդեց Մաթէոսին և գահակալեց 777—779 Թ.—Կղկնտ. Գ. իդ. Մխ. այբիվ. 24. Հայապ. 384։

— 26. Մովսէս եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Յովհաննին «730 Թ ?». եղել է ուսուցիչ Ստեփաննոս իմաստասէր Սիւնեցուն († «735 Թ»), քերթող։—Օրբ. իԹ, լ, հա.—սեռ. Մովսիսի, Մովսեսի՝ Օրբ. լ. Կիր. 40. Սամ. անեց. 89. Ցայսմ. յուլ. 24. Այբիվ. 17 բ.—Զարբ. Հին դպր. 472. Թրգմ. 388, 519. Զամչ. Բ. 367։—Սրա հետ նույն է երևում՝

— 27. Մովսէս քերթող, մեկնիչ քերականի (Ը դար). նույնացնում են Խորենացու հետ).—Անան. քեր. 137. Խոր. քեր. 165.—սեռ. Մովսեսի՝ Խոր. քեր. 159. Սիւն. քեր. 189։

— 28 Մովսէս Գ. կաթուղիկոս Աղուանից. գահակալեց 821 Թ. իբրև հաջորդ Յովհաննէսի և նստավ միայն կես տարի. իրեն էլ հաջորդեց Դաւիթ Դ.—Կղկնտ. Գ. իդ. Կիր. ը. Մխ. այբիվ. 24. Հայապ. 385։

— 29. Մովսէս վարդապետ, վանահայր. Դրազարկի վանքում Մկրտիչ քահանային գրել տվեց մի Աւետարան՝ 893 Թ.—Tübingen, էջ 4։

— 30. Մովսէս ամուսնացյալ քահանա, եղբայր Դաւթի և Սարգսի. Բիւրականի ամրոցի առման ժամանակ նահատակվեց Նըսր ոստիկանից «926 Թ».—Յհ. կԹղ. կգ.—սեռ. Մովսեսի՝ անդ։

— 31. Մովսէս իշխան Ուտէացի, ապստամբեց Աշոտ Բ Երկաթի («915—929 Թ») դեմ, բայց հաղթվեց և կուրացվեց «922 Թ».—Յհ. կԹղ. ծԹ. Վրդ. խգ.—սեռ. Մովսեսի՝ Յհ. կԹղ. ծԹ։

— 32. Մովսէս եպիսկոպոս, նշանավոր անձնավորություն էր. Ղուկաս վարդապետի հետ ներկայացավ Գագիկ Ա Արծրունի թագավորին («908—937 Թ») և գովեց նրա շինարարությունը Աղթամարում.—Հաւաք. 16։

— 33. Մովսէս ճգնավոր, «մեծանունն ի գիտութեան և

յառաքինութեան, որ 40 աւուրբք ձգտեցուցանէր զանսուաղութիւնն»։ Ստեփաննոս կաթուղիկոսը տարավ նրան Վասպուրական՝ դատելու համար հերձվածող Վահան կաթուղիկոսին «971 թ». աքսորվեց Աղթամար, բայց շուտով արձակվեց։—Ասող. Գ. է, ը.—գրծ. Մովսիսիւ՝ Ասող. Գ. է։

— 34. Մուսէս երեց, թողել է իր հիշատակությունը Փառիսոսի վանքի (Գանձակ, Ղալաքեանդ) դռան վրա, 994 թ.—Ազգագր. հանդ. Ե, էջ 340=Արցախ 306 (վերջինս առանց թվականի)։

— 35. Մովսէս Դ. կաթուղիկոս Աղուանից 992—998 թ. Փառիսոսի առաջնորդն էր. հաջորդեց Պենեղասի (Պետրոսի).—Կղկնտ. Գ. իդ. Մխ. այրիվ. 24. Հայապ. 385։

— 36. Մովսէս Կաղանկայտուացի, Ուտի գավառի Կաղանկայտուք գյուղից, հայ-աղվան, պատմիչ. գրել է «Պատմութիւն Աղուանից», 3 հտ. առաջին հատորը սկսում է աղվան ազգի ծագումից և հասնում է մինչև մոտ Վարդանանց պատերազմը (451 թ). երկրորդը հասնում է մինչև մեր Եզր կաթուղիկոսի ժամանակը (640), իսկ երրորդը մինչև Սմբատ Ա-ի մահը (915 թ)։ Ամբողջը զանազան հեղինակների գործերի հավաքումն է, որ Ժ դարում խմբագրել է Մովսէս Կաղանկայտուացին, իսկ շարունակությունը Մովսէս Դասխուրանեցին։ Ըստ ձևի գիրքը չի ներկայացնում կարգավորված պատմություն. լիքն է կրոնական առասպելներով, խաչի և սուրբ նշխարների անվերջ գյուտերով. երբեմն դեպքերը անկարգ, պակաս, խառնակ և ոստումներով։ Բայց ըստ բովանդակության նա չափազանց գնահատելի աշխատություն է, որովհետև Աղվանից կորած ազգի միակ պատմությունն է։ Բացի Աղվաններից նա պատմում է նաև Խազարների, Հոների և այլ հյուսիսային ազգերի մասին։ Հատկապես կարևոր է Իսրայէլ ճգնավորի քարոզությունը Հոնաց մեջ և նրանց քրիստոնեության դառնալը (է դար)։ Շատ կարևոր է նույնպես քանի մոտ պաշտոնական թղթերի մեջբերումը, և բոլորից ավելի Դավթակ քերթողի «Ողբ Ջուանշիր Թագաւորի» (36 տուն, հայերեն այբուբենի շարքով), որ Կոմիտաս կաթուղիկոսի «Անձինք նուիրեալք» շարականի հետ՝ հայ գրականության ամենահին քերթողական երկն է։ Մովսէս Կաղանկայտուացու գրքի մասին առաջին հիշատակությունը տալիս է Անանիա Մոկացի (946—968) կաթուղիկոսը (Անան. ապստ. 135 բ)։ Հրատարակված է երկու անգամ միևնույն 1860 թվին. Էմինի հրատարա-

կությամբ (Մոսկվա, միահատոր) և Տաշնազարեանի հրատարակությամբ (Փարիզ, երկու հատոր)։ Կաղանկայտուացու պատմության առաջին քննիչն է Կարապետ վրդ. Տաշնազարեան, որ իր հրատարակության ընդարձակ նախաբանում ապացույց բերելով այն բոլոր տեղերը, ուր հեղինակը առաջին դեմքով է խոսում, հետևցնում է որ այդ հեղինակը Է դարից է։ Բայց որովհետև Պատմությունը գնում է մինչև Ժ դար, ուստի մնացյալը վերագրում է շարահարողին։ Այս կարծիքը կրկնում է նաև Զարբհանալեան, Հին դպր. 442—454 և այսպես էլ ընդունված էր ընդհանրապես։ Հ. Աճառեան առաջին անգամ քննության առնելով նույն հարցը, ցույց է տալիս, որ եթե հավաքենք այն բոլոր տեղերը, ուր հեղինակը պատմում է առաջին դեմքով, կլինի 195—200 տարվա մի շրջան։ Եվ որովհետև անկարելի է տալ մեկին այսքան տարվա կյանք, ուստի և հետևում է թե այդ բոլորը չի կարելի վերագրել մի անձի։ Այնուհետև ցույց է տալիս, որ գիրքը խմբագրություն է բազմաթիվ հեղինակների զանազան գործերի՝ զանազան դարերից։ Բայց խմբագիրը ոչ թե բոլորի միացմամբ մի ամբողջական և հետևողական պատմություն է դուրս բերել, ինչպես անում են պատմագիրները, այլ իբրև արխիվային անմշակ նյութ շարել է իրար ետևից, անփոփոխ պահելով հեղինակների լեզուն նույն իսկ առաջին դեմքով և մինչև անգամ հեղինակի հիշատակարանն էլ օրինակելով! Այսպես առաջին դեմքով են խոսում «ես Վեհիկ», «ես Պօղոսիկ», «ես Վիրոյ՝ Աղուանից և Լփնաց և Ջողայ կաթողիկոս», «Ես Յովսէփ անապատական ի գաւառէն Գեղամայ», հիշատակագիրն էլ ասում է «ես Ադրիանէ, որ զյիշատակարանս գրեցի. մաղթեմ յէշել զանարժանութիւնս իմ ի յընթերցողացդ...»։ Եզրակացությունն այն է, որ Մովսէս Կաղանկայտուացին ապրած է տասներորդ դարում. և ընավ պատճառ չկա ասելու համար թե Աղվանից պատմության երրորդ գիրքը մի ուրիշ Մովսէսի շարահարությունն է, քանի որ գրքի վերտառությունն էլ այդպիսի բան չի հայտնում, այլ հաստատում է թե միևնույն հեղինակից է. «Մովսիսի Կաղանկայտուացւոյ երրորդ գիրք պատմութեան Աղուանից»։ (Հեղինակի այս հոդվածը աշակերտական շարադրություն էր՝ գրված իմ ուսուցիչ Ա. Մ. Գարագաշեանի խնդրանօք 1892 թ. Կեդրոնական վարժարանում և ապա անփոփոխ տպված Բազմ. 1897, էջ 370—374, մայիս 10 թվականով)։ — Երկրորդ անգամ, նույն հարցի քննությամբ զբաղվում է A. Manandian,

հրատարակելով մի տետրակ „Beiträge zur albanischen Geschichte, Leipzig 1897“։ Տետրակը պարունակում է 46 էջ, որից 18 էջ թարգմանություն է Կաղանկատուացու պատմության մի քանի գլուխների, 8 էջ Աղվանից եկեղեցու պատմությունն է, իսկ 20 էջ նվիրված է Կաղանկատուացու ուսումնասիրության։ Հեղինակի դոկտորական դիսերտացիան է՝ թվագրված 1897 հուլիս 28 թվականով։ Թեև երկու աշխատությունները իրարից անկախ, բայց հանգում են նույն եզրակացության։ Մանանդեանն էլ ցույց է տալիս, որ Կաղանկատուացին է դարի հեղինակ չի կարելի ընդունել (էջ 16) և որ ամբողջը անկանոն խմբագրություն է զանազան դարերի հեղինակներից։ Նմանապես չի կարելի դնել ավելի ուշ քան Ժ դարը, որովհետև Ուխտանէս պատմիչը, որ Խաչիկ կաթողիկոսին (972—991) ժամանակակից է, օգտագործել է Մովսէսի պատմությունը։ Հետաքրքրական է նաև այն կետը, որ քննության է առնում Մանանդեանը այն մասին թե ո՛ր տեղացի էր Մովսէսը։ Մովսէսին Կաղանկատուացի են համարում Կիրակոս Գանձակեցին և Մխիթար Այրիվանեցին։ Եթե նրանց ենթադրությունը հիմնված է Մովսէսի իր իսկ վկայության վրա, այդ ենթադրությունը սխալ է։ Վկայությունը հետևյալն է. «Որ է յանդիման գեղջն մեծի Կաղանկատուաց, որ ի նմին յՈւտի գաւառի, յորմէ և ես»։ Այստեղից չի հետևում, ասում է Մանանդեանը (էջ 22), թե Մովսէսը Կաղանկատուքից էր, այլ Ուտիքից, ինչպես որ ուրիշ դեպքերում էլ կոչված է Ուտէացի։ Ճիշտ չէ սակայն Մանանդեանի դատողությունը։ Եթե հայերենում որ հարաբերականի գործածությունը միշտ բացարձակ ճշտությամբ եղած լիներ, իրավացի էր։ Բայց որովհետև խոտորումներ շատ սովորական են, ուստի հերքումը իրավացի չէ։ Բացի սրանից Կիրակոսը և Այրիվանեցին, ինչպես նաև մենք բոլորս այսօր, հեղինակին Կաղանկատուացի ենք կոչում ո՛չ թե հանելով այս փոքրիկ և անհաստատ վկայությունից, այլ բուն իսկ գրքի խորագրից «Մովսիսի Կաղանկատուացւոյ պատմութիւն են»։ Երրորդ քննիչն ենք համարում Ս. Սիմոնեան (Ասորիք), որ ունի հազար էջանոց մի ուսումնասիրություն Կաղանկատուացու մասին (դեռ անտիպ)։—Կիր. 3. Մխ. այրիվ. 37, 71. Եւ. կթղ. էջ Բ. Ջուղ. 51.—սեռ. Մովսէսի, Մովսիսի՝ Կղկնտ. (խորագրում)։

— 37. Մովսէս Դասխուրանեցի, շարահարող Մովսէս Կա-

ղանկայտուացու Աղուանից պատմության (Ժ դարի վերջը)։—Զարբ. Հին դպր. 453, 696. Հայապ. 384։

— 38. Մովսես Տարոնեցի, հասցրեց շատ կրոնավորներ Արևմտյան Հայաստանում. եղավ հիմնադիր և վանահայր Խարբերդի Ս. Մովսեսի վանքի (Ժ դար).—Ասող. Գ. է.—տես. Մովսիսի՝ անդ։

— 39. Մովսես կամ Մուսե, իշխան Աղուանից, որդի Եսայի Ապումուսեի, որ Բաղդադ գերի տարվեց «852 թ». հայրը՝ Եսային կոչվել է Ապումուսե՝ իր այս որդու անունով, ըստ արաբական սովորության։ Մովսես իշխանի որդին Գագիկ թագավոր և դուստրը՝ Ոսկի հիշված են 1000 թվից (Ժ դար)։—Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 131։

— 40. Մովսես, ընտիր կրոնավոր, որին Կարուց Աբաս թագավորը վանահայր կարգեց իր շինած Շիրմանց վանքի († «1002 թ»)։—Ասող. Գ. ժէ։

— 41. Մովսես, մագաղաթ էր պատրաստում այն Ավետարանի համար, որ օրինակեց Յովհաննէս երեցը Սանդղկայ վանքում, 1053 թ.—Rapport Arm. 40, Շողակաթ 192։

— 42. Մովսես քահանա, հայր Թովմա երեցի, որ Մելիտինէում օրինակեց Ավետարանը, 1057 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 7 բ, Շողակաթ 193։ Երևի սրա հետ նույն է՝

— 43. Մովսես քահանա Մելիտինեցի, հայր Թորոս քահանայի, որ օրինակեց Ավետարանը 1057 թ.—Rapport Arm. 43։

— 44. Մովսես պատրիարք Երուսաղեմի, հաջորդեց Սիմէոնին և գահակալեց 1109—1133 թ. (Աղաւնունի)։

— 45. Մովսես գանձասաց, ունի Վարդանանց նահատակների վրա մի գանձ (տպ. Ցուշիկք Ա. 267). նախ քան ԺԳ դար։ Նույն է սրա հետ Մովսես գանձասաց, որ երգել է Արիստակեսի և այլոց գանձը (անդ 356)։

— 46. Մովսես, որի համար Առաքել գրիչը օրինակեց Ավետարանը՝ Կամխի Եղիվանքում, 1203 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 419։

— 47. Մովսես, քրոջ որդի Վրդանէս եպիսկոպոսի, որ շինեց Գտչայ վանքի եկեղեցին 1246 թ.—Արցախ 81։

— 48. Մովսես վարդապետ, որի տապանաքարը մնում է Արցախի Տող գյուղում, 1257 թ.—Արցախ 84։

— 49. Մովսես «որդի Ղազարայ, սրբասէր քահանայ և ճգնաւոր միակեց», ստացել է մի Ավետարան 1266 թ.—Սխուան 253 բ (բայց տես Շարմաղ)։

— 50. Մովսես *կրոնավոր, գրիչ Երզնկայում, 1269 թ.—Ց. Մուրատ, Ցայտ. յովհ. էջ* ԼԽ։

— 51. Մուսես *(սեռ. Մուսեսի) վարդապետ, մի խաչքար է կանգնեցրել Բանանեարի եկեղեցում 1287 թ.—Սիսական 370։*

— 52. Մովսես *վարդապետ, աշակերտ Գէորգ վարդապետի. Կիլիկիայից փախավ Երզնկա և քարոզում էր մի նոր հերձված. այն է՝ Հայր մերը միայն ձայնավոր ասել, պատարագել փայտեղեն ամաններով և առանց սպասավորի (ԺԳ դար)։—Հայապ. 552։*

— 53. Մովսես, *մերձավոր Թումա և Հայրապետ քահանաների, որոնք Զաքարիա գրչին օրինակել տվին Աւետարանը 1304 թ.—Ձեռ. Վասպ. 143։*

— 54. Մովսես *գրիչ. Կարապետ սարկավագի հետ Եկեղեաց գավառում օրինակեցին Թուղթք Շնորհալւոյ և այլոց, 1313 թ.—* Tübingen, *էջ 73։*

— 55. Մուսես, *հանգուցյալ որդի Աւետիք քահանայի, որ Հարք գավառի Դանեվանք գյուղում օրինակել տվեց Աւետարանը՝ 1316 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 465։*

— 56. Մովսես, *աշխատակցել է Ներսէս քահանային՝ արտագրելու ժամանակ Գիրք Թղթոցի, Կնիք հաւատոյի և Կանոնագրքի ժողովածուն, 1316 թ.—Տեղեկ. Արմֆանի, 1940, № 3, էջ 41։*

— 57. Մովսես *Երզնկացի, նշանավոր վարդապետ, բնիկ Կամախեցի էր, որդի Ներսէս քահանայի. սովորել է Աւագ վանքում։ Ապա գնացել է Կիլիկիա, ուր աշակերտել է Գէորգ վրդ. Սկեւռացուն (որ և Լամբրոնացի, † 1301 թ)։ Գէորգ Սկեւռացին կազմել էր Ս. Գրքի ամեն մի գրքի նախադրութիւնը և բոլորը միասին գրել էր Ս. Գրքի սկիզբը։ Իր աշակերտը՝ Մովսէս (կոչված Սկեւռացի Ձեռ. Վենետ. Ա. 51) հանձնարարեց այդ նախադրութիւններից ամեն մեկը դնել համապատասխան գրքի սկիզբը և այս սովորութիւնը մտավ մեր մեջ 1270—1282 թվերին (Ձեռ. Վենետ. Ա. 51)։ Ինքը նշանավոր գրիչ էր. Կիլիկիայում գրել է մի Աստուածաշունչ։ Կիլիկիայից եկավ հաստատվեց Երզնկա, Դարանաղեաց գավառը, հետը բերելով ոչ միայն իր գրած Աստուածաշունչը (Յովսէփյան, Մի էջ հայ արուեստի, էջ 6), այլ և ուրիշ շատ գրքեր և սկսեց ուսուցանել (1310 թ)։ Շինեց վանք և եկեղեցի և հասցրեց բազմաթիվ աշակերտներ։ Եղավ ուժեղ հակառակորդ Գրիգոր է Անաւարզեցի («1293—*

1307») կաթողիկոսի լատինածես նորմուծության դեմ։ Մեռել է «1323 թ» Երզնկայում։ Իր գործերն են. 1) Ողբ իր ուսուցչի մահվան վրա (1301 թ). հրատարակված է Սիսուան, էջ 104—5 (տես և Հայապ. 504, Զարբ. Հին դպր. 722—3, Manus. brit. mus. 243 ա)։—2) Խոսրով Անձևացու «Մեկնութիւն ժամակարգութեան» գրքի մի նոր խմբագրությունը, որ կազմեց Թէոդորոսի խնդրանոք՝ 1293 թ. (Ձեռ. Դաշեան, Ա. 92 ա)։ Այս գործի վերնագիրն է «Համառօտ մեկնութեան սրբոյ պատարագի, զոր յառաջագոյն արարեալ սրբոյ լուսաւոր հարց» (Bodleian 76, Զարբ. Հին դպր. 785, Սիսուան 147 ծան.)։—3) Ոսկեփորիկ, մի տեսակ նոր ժողովածու, ուր հավաքված են Ս. հայրերի խրատներ և վարքեր՝ 200-ից ավելի (Ձեռ. Վեննա. Բ. 771—792, № 986=Վիեննա № 791, իր հիշատակարանով հանդերձ), գրված 1310 թվից առաջ, Աթան. յոբ. ժթ, ՀԱ 1935, 101։—4) Համառօտ ժամանակագրութիւն հայոց, որի մասին տես Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 210, 219։—5) Բողոք Անաւարզեցի կաթողիկոսի և Լևոն Դ թագավորի դեմ. մի ուժեղ գրություն, որից հատվածներ կան տպված Սամ. անեց. էջ 298—9։—6) Պատասխանի ի Տրապիզոն, առ հատուածեալ երեցն Գրիգոր (Թորոս աղբ. Բ. 394, Ձեռ. Թաւր. 48 բ, Bodleian 86, Նորայր՝ Բառ. ֆրանս. 451 ա)։—Իր կենսագրությունը անանուն հեղինակից տես Հայապ. 507—9։—Սամ. անեց. էջ 301. Սամ. անեց. շար. 167. Խոսր. էջ դ. Սուտ-Շապհ. յոբ. էջ XX. Տաշեան՝ Ցուց. 137, Ազգապ. 1796. Սիսուան 103, 106. Հայապ. 525։

— 58. Մովսէս, որդի Կարապետի և եղբայր Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում (Խրիմ) օրինակել տվեց Աստուածաշունչը 1325 թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 59. Մովսէս, եղբորորդի Մխիթար քահանայի, որ Ներսէս գրչին գրել՝տվեց մի Աւետարան, 1325 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 295։

— 60. Մովսէս, որդի Յովաննէսի և եղբայր Աստուածատուր երեցի, որ օրինակեց Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Ազգուլ. (Արրտ. 1911, 460)։

— 61. Մովսէս կրոնավոր, միաբան Արգելանի վանից, 1331 թ.—Manus. brit. mus. 58 բ։

— 62. Մովսէս կրոնավոր, միաբան Խիզանի Ս. Աստուածածին եկեղեցու, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 194։

— 63. Մովսէս կրոնավոր, եղբայր Յովհաննէս փիլիսոփայի, ծաղկող, 1343 թ.— Տաշեան, Ցուց. 489։

— 64. Մովսէս կրոնավոր՝ գրիչ. Վայոց ձորի Հերմոնի վանքում օրինակել է Նարեկը՝ ՉՂԸ=1349 թ.—Ձեռ. Կարին. 173, Սմբատեանց՝ Երնջակ 123, 179, 316 (մեծ ցուցակը, էջ 7, դնում է 1359 թ)։

— 65. Մովսէս վարդապետ, միաբան Մեծոփայ վանից, օրինակեց Սողոմոնի Առակաց գիրքը, Վարագայ վանքում, 1355 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 95։

— 66. Մովսէս կրոնավոր, վանահայր Թըֆինի, կազմել տվեց այն Սաղմոսարանը, որ Վարդ քահանան օրինակեց Թըլֆինի վանքում (Մերդին), 1356 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 187։

— 67. Մովսէս հայր Գոհարինկինի՝ կնոջ Կարապետ քահանայի, որ Նախավկայի վանքում գրել տվեց Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու, 1357 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 227։

— 68. Մովսէս կրոնավոր, միաբան Աղթամարի Ս. Խաչ վանքի, որի շինության վրա շատ էր աշխատում, 1366 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 846։

— 69. Մովսէս քահանա, հոգևոր որդի Սաղմոսիկ քահանայի, նորոգեց և կրկին կազմեց Գետաշէնի նշանավոր Աւետարանը՝ 1383 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 30, Նիւթեր և ուս. Ա. 44, 61։

— 70. Մովսէս դպիր, որդի Առաքել քահանայի և եղբայր Գէորգ երեցի, որ Երզնկայում օրինակեց Ճաշոցը 1391 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։

— 71. Մովսէս գրիչ, Երզնկայում օրինակել է Աւագիրը, 1391 թ. (այժմ գտնվում է Պետական Մատենադարանում. տես Սարգիսեան, Աւագր. ներած. էջ ձՀէ)։

— 72. Մովսէս, հայր Թորոս և Ստեփաննոս կրոնավորների. ստացավ և նորոգեց մի Աւետարան 1396 թ.—Տաշեան, Ցուց. 416 բ։

— 73. Մովսէս վարդապետ, ուսուցանում էր Մեծոփայ վանքում, ուսուցիչ Ստեփաննոս վարդապետի († 1395) և Յովհաննէս Մեծոփեցու (որ † 1411 թ).—Մեծոփ. 55 (սեռ. Մովսէսի ձեռով)։

-- 74. Մովսէս առակագիր (ԺԳ կամ ԺԴ դարում).—Տաշեան, Ժղվ. առակաց Վարդանայ, էջ 79։

— 75. Մովսէս Տաթևացի, հիշատակվում է պատարագի

մեջ (ԺԴ դար).—սեռ. Մովսեսի, Մովսիսի՝ Պարգ. 690, Ժմ. 947։

— 76. Մովսես Երզնկացի, ունի խրատներ (ԺԴ դար).—Հացունի, Ճաշեր 490.—հմմտ. Տաշեան, Ցուց. 770 (դ)։—Նման է վերի Մովսէս վրդ. Երզնկացու հետ № 57։

— 77. Մովսես Ա. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Յովհաննէս Գ-ի և նախորդ Առաքելի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 78. Մովսես կուսակրոն քահանա և վանահայր Խնձորուտի վանքի (Աղթամարի վիճակ), Ստեփաննոս քահանային գրել տվեց մի Աւետարան, Խիզան 1404 թ.—Նոտարք 23, Ձեռ. Վասպ. 291։

— 79. Մովսես երեց, որդի Ամիրպէկի, Կամախի Աւագ վանքին նվիրեց մի հին Աւետարան, 1407 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 303։

— 80. Մովսես գրիչ, Տաթևում գրեց մի օրինակ Եւագր 1411 թ.—Սարգիսեան, Եւագր. ներած. ճհգ։

— 81. Մովսես աբեղա, ունեց մի հին Գանձարան, որ արտագրելու համար տվեց Արծրունեաց գավառի Կոճերայ վանքի միաբան Վարդանէս աբեղային, 1412 թ.—Manus. brit. mus. 121 ա։

— 82. Մովսես, իր կնոջ Մինայի (№ 12) հետ օգնել է այն Ճառընտիր-Տօնականի գրչութեան, որ իր աներորդի Թադէոս քահանան (№ 56) գրել էր տվել Մոկաց Ծպատոյ վանքում, 1413 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 269, 273 ա։

— 83. Մովսես գրիչ, օրինակել է Գր. Տաթևացու Մեկնութիւն Աւետարանին Մատթէոսի, Տաթևում, 1416 թ.—Ձեռ. Կարին. 155 > Նոտարք 47։

— 84. Մովսես, որդի Շամօի և եղբայր տանուտեր Ղազարի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան 1418 թ.—Նոտարք 57, Ձեռ. Վասպ. 307։

— 85. Մովսես, որդի Ստեփաննոսի և եղբայր Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում, Յակոբ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347։

— 86. Մովսես եպիսկոպոս, վկայում է հայոց և Աղուանից Մատթէոս կաթուղիկոսի առաջ, թե Սահակ միայնակեցը մի Աւետարան է նվիրել Կարապետ եկեղեցպանին և նրա հոգեորդի Թումայ աբեղային, 1423 թ.—Նոտարք 72։

— 87. Մուսես, «Նորաբողբոջ զաւակ» Վասակի, որ էր

փեսա Հայրապետ կրոնավորի, որ գնեց մի Ավետարան, 1431 թ.—Նոտարք 98։

— 88. Մուսես ըռէս (գեղապետ), ազգական Ներսէս քահանայի, որ Ուրանց գյուղում, Թումայ կրոնավորին գրել տվեց Ավետարանը 1433 թ.—Ջեռ. Վասպ. 365—6։

— 89. Մուսես, որդի Թումայի, երկուսն էլ քահանա Ուրանց գյուղի, 1433 թ.—Ջեռ. Վասպ. 366։

— 90. Մովսես քահանա Կաֆայի, որին ի միջի այլոց գրեց Կոստանդին կաթուղիկոսը՝ Ֆլորենտիայի ժողովի առթիվ, 1438 թ.—Պալճեան 87։

— 91. Մովսես, խնդրեց Յակոբ եպիսկոպոսից գրել Ս. Գէորգի տաղը (թվականն անհայտ).—սեռ. Մովսեսի՝ Վկ. գե. էջ 69։

— 92. Մովսես վարդապետ, որդի Իսաւի և հորեղբայր Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ Բարթուղիմէոս առաքյալի վանուց առաջնորդն էր և գրել տվեց մի Յայսմաւուրք 1438 թ.—Ջեռ. Թաւր. 41 ա։

— 93. Մովսես քահանա, որդի Մխիթար քահանայի. Եկեղեաց գավառի Ավագ վանքում Սիմէոն կրոնավորին գրել տվեց մի Յայսմաւուրք 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49, 50։

— 94. Մովսես, տանուտեր Սերկեփլ գյուղի (Արարատեան գավառ), 1441 թ.—Հրար. Ագաթ. 1909 թ. յոջ. էջ խթ։

— 95. Մովսես միայնակեց, հորեղբայր Կարապետ քահանայի (№ 202), որ Վանում արտագրել է Ավետարանը հինգ անգամ՝ 1418, 1421, 1435, 1437 և 1451 թվերին.—Նոտարք 57, Ջեռ. Վասպ. 309, 341, 369, 376, 412։

— 96. Մովսես աբեղա, որդի Յովհաննէս քահանայի, գրիչ. Պղնձայգոյ Ավագ անապատում գրեց մի Ավետարան՝ իր և ծնողների հիշատակին, 1451 թ.—Ջեռ. Վասպ. 407։

— 97. Մուսես, որդի Յովանէսի՝ հորեղբոր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Ավետարան, 1455 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 582։

— 98. Մովսես աբեղա, գրիչ. օրինակել է Տէր Մարտիրոսի համար մի Ավետարան՝ Բասենի Սպիտակ վանքում։ Գանգատվում է որ արտագրել է վանքի տնտեսատանը, միաբանների խմբի միջև, ուր «այնչափ ասել և լսել և կարդալ և պաշտել կայր, որ զամենն ոչ կարեմ գրել», 1455 թ.—Նոտարք 179։

— 99. Մովսես, հիշվում է իբր միաբանակիցների հետ իբրև

միաբան մի վանքի, որի անունը չէ հիշատակված, 1456 թ.— Ձեռ. Վասպ. 425։

— 100. Մովսես, եղբորորդի Յովհաննէսի, որ մի այգի կտակեց Ամիրատինի հոգուն՝ Ս. Նշան վանքին, 1461 թ.— Manus. brit. mus. 31 բ։

— 101. Մուսես, որդի Յովհաննէսի, որ Սալչուկի և այլոց հետ գնել է Ամենադինի այգին և նվիրել Ս. Նշանի վանքին, շուրջ 1461 թ.—Թորոս աղբ. Բ. 347 (չունի թվական, որ սակայն որոշվում է նախորդից և Ամինադին № 2 հիշատակարանի միջոցով)։

— 102. Տեր Մովսես, որդի Յովհաննէս քահանայի, որ Աղթամարում, Մկրտիչ աբեղային գրել տվեց մի Գանձարան, 1466 թ.—Նոտարք 224։

— 103. Մովսես քահանա Արճկեցի, գրել է Ոտանաւոր Պատմութիւն Ջիհանշահի և Ուզուն Հասանի պատերազմաց 1467—1473 թ։—Հայաստ. 127. Ձեռ. Դաշեան, Բ. 59 բ։

— 104. Մովսես ոՑի, որի անունով մի խաչքար կա Նաւուշ գյուղի (Գողթն գավառ) ավերակ եկեղեցու խորանի վրա, 1475 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ, 329։

— 105. Մովսես սարկավագ, մերձավոր Մխիթար քահանայի (№ 190), որ Բռնաշէն գյուղում Խոսրով անուն անձի համար (№ 33) գրեց Աւետարանը 1478 թ.—Ձեռ. Վասպ. 486։

— 106. Մովսես գրիչ, որի հետ միասին մի Յայսմաւուրք է օրինակել Արծկէում Տէր Յակոբ գրիչը՝ 1482 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 124։

— 107. Մուսխս, մերձավոր Սարգիս քահանայի, որ Բաղէշում դրել տվեց մի Յայսմաւուրք՝ 1484 թ.—Rapport Belgique, էջ 39։

— 108. Մովսես, որդի Հոխփախմէի, որ Մարտիրոս երեցից գնեց մի հին Աւետարան և նվիրեց Ս. Սարգիս եկեղեցուն, 1486 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 537։

— 109. Մովսես աբեղա, որդի Ստեփաննոսի, աշակերտ Կիրակոս եպիսկոպոսի. գրիչ. Բաբերդի Անլոց անապատում օրինակեց Աւետարանը՝ 1486 թ.—«Էջմիածին» 1944 թ. № 1, էջ 36 բ։

— 110. Մուսես, որդի Մանուկի՝ հորեղբոր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 111. Մովսես գրիչ, կոչում է իրեն «աբարող», այն է

հեղինակ վկայաբանության Միրաք Թաւրիզեցու, որ նահատակվեց 1486 թ. Թաւրիզում։ Ըստ այսմ հեղինակն էլ նույն թվից է և եթե ոչ Թաւրիզեցի, գոնե Թաւրիզաբնակ։—Նոր. վկ. 328։

— 112. Մովսէս *կրոնավոր, Բուստայ անապատում (Գողթն) Աստուածատուր գրչին գրել տվեց մի Աւետարան՝ 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 274։*

— 113. Մովսէս *աբեղա Համշէնցի, միաբան Բաբերդի Բերդակ անապատի, ուր օրինակեց Յայսմաւուրքը Ներսէս քահանայի համար, 1489 թ.*—Manus. brit. mus. *165 բ, 166 ա։*

— 114. Մովսէս *երեց, որդի Ստեփանոս քահանայի. Աւագվանքում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1494 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 576)։*

— 115. Մովսէս, *եղբորորդի Աղաբիա աբեղայի, որ Վայոցձորի Եղեգիս քաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։*

— 116. Մովսէս, *հայր Ստեփանոսի, որ Արծկէում Յակոբ եպիսկոպոսին գրել տվեց մի Աւետարան, 1499 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 123։*

— 117. Մովսէս *Բ Արտօնեցի, կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Գրիգոր Զ-ի և նախորդ Յակոբ Բ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։*

— 118. Մովսէս *վարպետ, իր ծառայի հետ ուխտի էր գնում Երուսաղէմ. հանդիպեցին Հալէպ քաղաքը, ուր տեսան ռաջիս Իսայու (№ 1) շինած եկեղեցիները և հիւրանոցը, որոնց գովեստը գրեցին 1500 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 151 ա։*

— 119. Մովսէս *վարդապետ Գառնեցի, ունի հանելուկներ (ԺԶ դար).—Տաշեան, Ցուց. 480։*

— 120. Մովսէս *կամ* Մուսա, *նշանավոր ճարտարապետ, շինեց Պոլսի Գալաթ թաղի հոյակապ Ս. Հրեշտակապետ եկեղեցին, 1628 թ.—Կարապետեան, Հնգ. յիշատ. Սամաթ. 72։*

— 121. Մովսէս Գ. *Սիւնեցի (Խոտանանցի կամ Տաթևացի), կաթողիկոս հայոց «1629—1632 թ»։ Աբեղա ձեռնադրվեց 15 տարեկան հասակում. սովորեց Սրապիոն կաթողիկոսի և Գրիգոր վրդ. Կեսարացու մոտ. գնաց Երուսաղէմ, Պաղեստին և Եգիպտոս, ուսումնասիրելու համար անապատական կյանքը։ Միանալով Սարգիս եպիսկոպոսի և Կիրակոս վարդապետի հետ՝ եկան Սիւնիք և հիմնեցին Հարանց անապատը «1608 թ», որ դարձավ ոչ միայն ճգնարան, այլ և օրինակելի ուսումնարան։*

Բայց Մովսէսը չուզեց փակվել վանքի սահմանափակ շրջանակում. «Նա սկսեց շրջել հայ գավառներն ու գյուղերը, եկեղեցիները բարեկարգել, դպրոցներ բանալ և քարոզել։ Կարճ ժամանակում նա դարձավ բոլորի սիրելին. Նրա համբավը տարածվեց ամբողջ Հայաստանում և հեռավոր գաղթավայրերում ապաստանած հայկական բեկորներն սկսեցին որոնել Սիւնիքի խիզախ և հայրենասեր վարդապետին։ Նա գրեթե շրջեց Հայաստանի մեծ մասը. Նա շրջում էր ոտքով, Նրան հետևում էին Նրա 15—20 առաջավոր աշակերտները, որոնք իրենց մեջքերին տանում էին իրենց պարենը, անհրաժեշտ գրականությունը ևն։ Այս հուզիչ տեսարանը բորբոքում էր հավատացյալ ժողովրդի զգացումները և խանդավառություն առաջ բերում» («Էջմիածին», 1945, № 1, էջ 24—2°)։ Հարանց անապատի օրինակով հիմնվեցին մի խումբ անապատներ։ Մովսէսը շրջեց և քարոզեց մինչև Սպահան, ուր 1624 թվին, Շահաբասի առաջարկությամբ՝ գործարան բացավ և պարսիկներին սովորեցրեց մոմ սպիտակացնելու արհեստը։ Իրավունք ստանալով թագավորից՝ ձեռնարկեց նորոգել Էջմիածինը, պարիսպներով պատեց, վեհարան, հյուրանոց, շտեմարան, սեղանատուն և միաբանների համար սենյակներ շինեց։ Բացավ դպրոց Յովհաննավանքում, և Էջմիածնի վանքը հարկից ազատեց։ Զիջելով ժողովուրդի խնդիրքին, ընդունեց կաթուղիկոսական օծում, բայց կարճ ժամանակից վախճանվեց։ Գերեզմանը գտնվում է Երևանի Կոզեռնում, ուր իր գամբարանի վրա մահվան թվականը նշանակված է ՌՁԲ (=1633, ըստ Շահազիզ, Հին Երևանը, էջ 188)։ Ունի գրած մի գանձ և մի տաղ, նաև Թուղթ առ Ուրբանոս պապ (Տաշեան, Ցուց. 1120 ա), Թուղթ առ Վլատիշլաւ արքայ Լեհաց՝ 1632 թ. (հրատ. Կամենից, էջ 241—3)։ Տաթևից Էջմիածին է բերել տվել մի ընտիր Ցայսմաւուրք (որ Ստեփաննոս Օրբելեանը Սսից էր բերել) և շատերին հրամայել է օրինակել (Զեռ. Ազգ.=Արրտ. 1911, էջ 853)։—Սամ. անեց. շար. 178. Մ. մաշտ.. 336 բ. Եկ. կր. 34. Զուղ։ 140. Առաք. պատմ. 5, 165, 171—2, 177—185, 192, 198, 215, 217—220, 222, 224—243, 266—8, 272—3, 278-9, 282, 284, 286, 292—5, 306—10, 338—40, 495—6, Զքր. սարկ. Ա. լ, խգ, խղ, Բ. էջ 26, Գ. 32, 34. Մարտ. ժմ. 96 ա. Դրնղ. 283—301. Ջամբռ 21. Ազգապ. 2399—2422. Ջամչ. Գ. 564—637։ Ընդարձակ կենսագրությունը գրեց Ակինեան, Մովսէս Գ Տաթևացի, Վիեննա 1936։

— 122. Մովսէս եպիսկոպոս Բջնիի, ի կարգէ քարոզողաց 1666 թ. (տես Տաշեան, Ցուց. 260)։ Սրա հետ նույն է՝

— 123. Մովսէս վարդապետ Բջնեցի, տաղասաց ԺԷ դարու (տես Կոստանեանց, Նոր ժողով. Դ. էջ 75)։

— 124. Մովսէս Կարնեցի, տաղասաց, նախ քան 1758 թ. իր տաղերը տես Տաշեան, Ցուց. 1120 բ, նաև Բազմ. 1875, 106 և Կոստանեանց, Նոր. ժող. Բ. 29։

— 125. Մովսէս կաթուղիկոս, հիշված է 1768 թ. ըստ Սըմբատեանց՝ Երնջակ 150 (այս թվին Էջմիածնում չկա այդ անունով կաթուղիկոս, ուստի կամ թվականն է սխալ կամ թե Աղվանից կամ Գանձասարի երկրորդական մի կաթուղիկոս է։ Այս թվին Աղվանից երկու կաթուղիկոսներ (Յովհաննէս և Իսրայէլ) կռվում են իրար հետ։

— 126. Մովսէս Աստապատցի. առաջին անգամ թշնու-սերմը և չարամի որդը տարավ Ռուսաստան, արժանացավ կայսերական գնահատության և նախարարների համապատիվ փառք ստացավ՝ Սիմէոն կաթուղիկոսի («1763—80 թ») ժամանակ։— Ազգապ. 3056։

*ՄՈՎՍԷՍԻԿ, ար. փաղաքշականն է Մովսէս անվան. այժմ անսովոր. կա միայն հնից՝

— Մովսէսիկ, հայր Տիրուկ քահանայի. ժամանակակից Ս. Սահակի (Ե դար).—սեռ. Մովսիսկայ՝ Խոր. Գ. կե։

ՄՈՐԷ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշատակված եմ գըտնում ԺԵ—ԺԶ դարում։

— 1. Մօրէ, կին տանուտեր Յովհանի, որ Երուսաղէմի Բանեառ գյուղում իր ծախսով գրել տվեց մի Գանձարան, 1498 թ.— Ձեռ. Սեր.=ՀԱ 1927, 432։

— 2. Մօրէ հիշված է նաև 1574 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1856)։

*ՄՈՐՖԻԱ, իգ. < հուն. μορφή «գեղեցկություն», μορφήεις «գեղեցիկ» բառերից։ Սրանից ունինք միայն՝

— Մորֆիա կամ Մարսիլ (Մարսիլիա), դուստր Գաբրիէլի, որ Մելիտինէի քաղաքապետն էր. ամուսնացավ Պալտինի (Baudouin de Boury) հետ, որ Եդեսիայի կոմսն էր և հետո եղավ Երուսաղէմի թագավոր՝ Պալտին Բ անունով (1118—1131 թ)։—Երուսաղէմի բոլոր թագուհիները եղել են հայուհի կամ հայատոհմ։— Սիսուան 47, Շնորհ. և պրգյ. էջ 312. ZAPh 1, 177։

*ՄՈՒԱՎԻԷ, ար. < արաբ. معاویه mu'āviye. արաբական անուն Ցովհաննէս իշխանաց իշխանի 839 թ. որ տես անդ։

*ՄՈՒԲԱՐԱՔՇԱՀ, ար. < արաբ. مبارك mubārak «օրհնեալ» բառից (որ տաճկական արտասանութեամբ հնչվում է mubarek) + պրս. شاه šāh «թագավոր»։ Գործածված եմ գտնում Մուբարաքշահ ձևով 1311 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 74 բ) և Մուբարեքշահ ձևով՝ 1580 թ. (Հայ-Վենետ. 398)։

*ՄՈՒԴԱՄ, իգ. < արաբ. مدام mudām «շարունակ, մշտական, տևական» բառից։ Հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Մուտամ, կին Անտոնի՝ եղբոր խոջա Ջուղի, որ գրել տվեց մի Աւետարան 1490 թ.—Ձեռ. Վասպ. 515։

— 2. Մուղամ, ազգական Ատոմի, որ գրել տվեց մի Աւետարան, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 527 (ավելին տես Հարիր № 4)։

— Ավելի ուշ հիշատակված են Մուղամ 1507 թ. (Ձեռ. Վասպ. 623), 1508 թ. (անդ 634), Մուտամ 1511 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 4 բ), Միտամ 1512 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 646), Մուղամ 1533 թ. (անդ Ա. 717), 1626 թ. (Ձեռ. Վասպ. 872)։

*ՄՈՒԴԱՄԴՈՂԴԻ, իգ. < արաբ. مدام mudām «մշտական, տևական» + թրք. دوغده doγdə «ծնվեց» բառերից (իբր թե «ծնվեց և մշտական լինի, հացական լինի»)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1490 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում, աղավաղյալ Մուտամղաւղի ձևով, որ սրբագրում եմ այսպես։—Ձեռ. Սևան. 5 ա։

*ՄՈՒԶԱՓԱՐ, ար. < արաբ. مظفر muzaffar «հաղթական» բառից, որ նաև Իրանեանց մեջ անձնանուն է. ինչ. Muzaffar-ed-dīn թագավոր Պարսից 1896—1907 թ։ Մեր մեջ գործածված եմ գտնում մի անգամ Մուզափար ձևով 1714 թ. (Ջամբռ. 115)։ Մի անգամ էլ հիշատակված է 1373 թվից ուշ՝ Ամիթում գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 618). Հմմտ. Մուզէֆէր սուլթան Եգիպտոսի (Աղգալ. 2049), 1424 թվից։

*ՄՈՒԹՂԱԼ, իգ. ծագումը տես Մթխալ: Այս ձևի տակ գործածված եմ գտնում մի անգամ 1681 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1879)։

ՄՈՒԼԻՋԱՆ, իգ. թվի թե պարսկական բառ է. բայց ծագումն ինձ անհայտ է։ Մի անգամ հիշված է ԺԶ դար (Ձեռ. Սանաս. 7 բ)։

*ՄՈՒԼՔ, իգ. < արաբ. ملك mulk «հարստություն, ինչք» բառից։ Այս ձևով հիշված է հինգ անգամ, որոնք են՝ 1649 թ. (Տաշեան, Ցուց. 513), 1674 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1876), անթվական (1327-ից ուշ՝ Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 462), անթվական (1418-ից ուշ՝ Ձեռ. Թաւր. 39 ա), անթվական (1578-ից ուշ՝ Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 472)։ Նույնը ՄՈՒԼՔԱ ձևով հիշվում է 1490 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Սեան. 5 ա)։ Վերջապես նույնը ՄՈՒԼՔԻ ձևով՝ անթվական մի հիշատակարանում՝ Bodleian 148։

*ՄՈՒՂԱՆ, ար. < Մուղանի անապատի անունից։ 1736 թվին, երբ Նադրշահը Մուղանի դաշտում իր թագադրության հանդեսը պիտի կատարեր, հրավիրել էր նաև հայոց Աբրահամ Կրետացի կաթուղիկոսին։ Դաշտում 700,000 գերի կար, որոնք 7 ամիս մնացին այնտեղ։ Աբրահամը նորածիններին գտնում մկրտելով Մուղան էր անվանում (տես իր Պատմ. Նադրշահի, էջ 64)։ Գործածական էր մինչև վերջերս Կովկասում։ Սրա հետ համեմատիր՝

— Մուղան խաթուն, դուստր Տիրոնի և քույր Յովհաննէս կրոնավորի, որ գնեց մի հին Շարակնոց և նորոգել տվեց 1465 թ.—Rapport Belgique 145։—Հմմտ. Մուշան։

ՄՈՒԾԻԿ, ար. ծագումն անհայտ։ Հիշված է մի անգամ Զ դարում, բայց ունինք սրանից կազմված Մուծկանց ազգանունը Հայրավանքի անթվական մի արձանագրության մեջ (Սիսական 40, ուր Ալիշան համարում է նախ քան 1211 թիվը)։

— Մուծիկ, հրամանատար Վաչագան Գ թագավորի Աղուանից (Զ դար).—Կանոն. 197. Կղկնտ. Ա. իզ (հրատ. Շահն. գրում է մուծին «մոցրին»)։

†ՄՈՒԿՆ, ար. < հյ. մուկն բառից! Միայն ունինք՝

— Մուկն, (սեռ. Մկան), իշխանաց իշխան, որդի Հոնաւարի. նորոգեց Հաղբատի կաթուղիկեն, որ երկրաշարժից քանդըվել էր (1016 թ)։ Մնում է իր որդի Հոնաւարի շիրիմը Հաղբատի գերեզմանատանում, 1023 թվից։—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 39. Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 45, 77. Ազգագր. հանդ. Է, 404. Տաշեան, Ցուց. 984. Յովսէփյան, Նյութեր և ուս. Ա. 64։

— Տես նաև Մուշկան։

*ՄՈՒՀԹԱՐԱՄՇԱՀ, ար. < արաբ. محترم muḥtaram «հարգելի» + պրս. شاه šāh «թագավոր» բառերից։ Մի անգամ ունինք՝

— Մուխթարամշա, հորաքրոջ որդին է տանուտեր Սադա-

դա Տերենցի, որ Աղթամարում գրել տվեց մի Ավետարան, 1476 թ.—Ձեռ. Վասպ. 480, 482։

*ՄՈՒՀԻԲ, իգ. < արաբ. محب muḥibb (իգ. محبه muḥibbe) «սիրելի, բարեկամ» բառից։ Հիշատակված են Մուհիպ 1583 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 48 բ), 1601 թ. (Manus. brit. mus. 252 ա), Մուհուպ՝ 1663 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 21 բ), Մուհիբ 1677 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 34 բ)։

*ՄՈՒՀԻԲ-ՍՈՒԼԹԱՆ, իգ. < նախորդ Մուհիբ «սիրելի» անունից + սուլթան: (Սուլթան բառը նախադաս արական է, հետադաս՝ իգական)։

— Մուհուբ-Սուլթան, † ազգական խոջա Խդրշահի, որ Վանում, Ազարիա գրչին գրել տվեց մի Ավետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— Անթվական են Մուհիպ-Սուլթան (Ձեռ. Վասպ. 96) և Մեհեպսուլթան (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 462, գրված 1327 թվից ուշ մի հիշատակարանում)։

*ՄՈՒՀԻԴԻՆ, ար. զուտ արաբական անուն է (محي الدين Muḥyi-d-dīn «կենսատու կրոնի»)։

— Մուհիդդին (բուն անունն է էլ-Ադիլ-Մուհիդդին-Ուզդիքի)․ որդին էր Եգիպտոսի վեզիր Աբուլ-Ղալադ-Թալայիի (տես Ա հտ. էջ 24)։ Երբ սա սպանվեց 1161 թվին, անմիջապես վեզիր նշանակվեց Մուհիդդինը։ Իր տիտղոսն էր Աբու-Շուջաւ վեզիր դառնալով ստացավ էլ-Ադիլ-էն-Նասիր մականունը, որ նշանակում է «արդարն և հաղթականն»։ էլ-էմիր-Շավարի ապստամբության ժամանակ իր ընտանիքով, իր հետևորդներով և իր գանձերով փախավ իր մի բարեկարյալի մոտ, բայց բռնըվեց և գլխատվեց։—Իբն-Խալլիքան 186—8, 192—3։

*ՄՈՒՂԱԴԻՄ, ար. < արաբ. مقدم muqaddim «առաջնորդ, խնդրագիր մատուցանող անձը»։ Մի անգամ հիշատակված ունինք՝

— Մուղադիմ, թվի թե պաշտոնակալ էր Երուսաղեմում, Մարտիրոս Բ Գրուսացու պատրիարքության ժամանակ, 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 151 ա։

*ՄՈՒՂԱԼ, իգ. և ար. < مغول muγūl «մոնգոլ, մոնղոլ» ազգի անունից։ Հիշատակված է ԺԵ—ԺԸ դարերում։

— 1. Մուղալ խաթուն, դուստր էլեքսանի․ մայրն է Սուլտան մելէք, որ Աղթամարում, Գրիգոր քահանային գրել տվից Ավետարանը 1452 թ.—Ձեռ. Վասպ. 413—4։

— 2. Մուղալ *խաթուն, կին Աստուածատուրի և մայր տանուտեր Կիւրեղի, որ Ախքիրմանում, Նիկողայոս եպիսկոպոսին օրինակել տվեց մի Ճաշոց՝ 1460 թ.*—REA *10, 64։*

— 3. Մուղալ *խաթուն, դուստր Բաղդասարի, իր քույր Շամշիղամարի հետ միացած, Վանում, Վարդան քահանային գրել տվին մի Աւետարան, 1461 թ.—Արցախ 139։*

— 4. Մուղալ *խաթուն, ազգական Շիրազմամայի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։*

— 5. Մուղալ, *կին Թամուրի, մայր Մխիթար գրչի, որ Սեբաստիայի Կովտուն գյուղում օրինակեց Յայսմաւուրքը 1487 թ.—Ձեռ. Սեբ. = ՀԱ 1927, 434։*

— 6. Մուղալ, *դուստր Սուլթանշահի՝ եղբոր տանուտեր Արարշահի, որ Աղբակի Էրնկանի գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 512։*

— 7. Մուղալ, *դուստր Վարդի՝ եղբոր Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտխուն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։*

— 8. Մուղալ, *ար! ազգական էր տանուտէր Պետրոսի, որ ստացավ մի Աւետարան՝ գրված Զաքարիա գրչի ձեռքով, Վանում, 1495 թ.—Թորոս աղբ. Բ. 276։*

— Մուղալ *անունը իբրև իգ. հիշատակված է նաև 1509 թ. (Ձեռ. Վասպ. 640), 1533 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 718), 1549 թ. (Ձեռ. Վասպ. 652), 1578 թ. (անդ, էջ 9), 1581 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 316), 1588 թ. (Ձեռ. Վասպ. 714), 1590 թ. (անդ 715), 1593 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 194), 1609 թ. (Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 242), 1609 թ ? (Ձեռ. Հալէպի, Ա. 98), 1618 թ. (Տաշ, արեել. Հայք 30), 1623 թ. (Ձեռ. Կես. սարգ. 10 բ), 1652 թ. (Ձեռ. Վասպ. 462), 1681 թ. (Թորոս աղբ. Բ. 271), 1707 թ. (Ձեռ. Վասպ. 508), 1710 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 329)։*

**ՄՈՒՂԱԼՇԱՀ, իգ. < նախորդ* Մուղալ *անունից+պրս.* šāh. *հիշատակված է մի անգամ* Մուղալշայ *ձևով ԺԶ դարում (Ձեռ. Դաղեան, Ա. 12 բ)։*

**ՄՈՒՂԱՄ տես* Մողամ: *Այս ձևով հիշված ունինք 1540 թ. (Ձեռ. Մաղն. 29), 1560 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 249), 1671 թ. (Տաշեան, Ցուց. 781) և անթվական (Ձեռ. Վենետ. Բ. 1222)։ Մի անգամ էլ ունինք* Մուղում *ձևով՝ իգ. հիշատակված ԺԷ դարում (Ձքր. սարկ. Բ. 70)։*

*ՄՈՒՂԱՄՇԱՀ, ար. < նախորդ Մուղամ անունից+պրս. šāh։ Մի անգամ հիշված է սեռ. Մուղամշհին ձևով 1280-ից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Թորոս աղբ. Ա. 216)։

*ՄՈՒՂԱՅԵԴ, մբ. < արաբ. مقيد muqayyed «ուշադիր, հոգածու» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված Անիի անթվական մի արձանագրության մեջ։

—Մուղաետե, որ Քրիստոսուրի հետ միասին պատճառ եղել, որպեսզի դամդաչի (կնքադիր) Գէշը (որդի Պայկանն) նորի Անիի որոշ տուրքերը։—Արձ. Շիրակ 62 բ։

Մուղաճ տես Մուխաճ։

ՄՈՒՂԱՇ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշատակված ունինք՝

— Մուղաշ Հիզանցի, եղբայր Արևի. հիշված 1497 թ.— Տաշեան, Ցուց. 285։

*ՄՈՒՂԲԻԼ, < արաբ. مقبل muqbil «բախտավոր, բարեբաստիկ» բառից։

— 1. Մուղբիլ, ռէս կամ գյուղապետ, իր ընկերակիցների հետ վկայում է առ այն, որ Թումայ և Նշխուն ամուսինները մի Աւետարան են գրել տվել Աղթամարում և նվիրել Ս. Վարդանի վանքին, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 434=Նոտարք 197 (սեռ. Մուղբլին ձևով)։

— 2. Մուղբիլ պարոն, որդի Դալաբի, մայրն է Շուշան, եղբայրներն են Սաթիլմիշ և Նաւասաւ (վերջինը «մարտիրոսական արեամբ կատարեցաւ ի յանօրինաց»). ռէս կամ տանուտեր էրգնեց գերի ընկած մի Աւետարան, որ գրված էր 1444 թ. իր թվականը չէ հիշված։—Ձեռ. Վասպ. 394—5։

ՄՈՒՂՈՒԼԹԱՅ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գտնվում է 1311 թվին գրըված մի Աւետարանում։—Ձեռ. Թաւր. 70 բ։

*ՄՈՒՂՊԵՏ, ար. < պրս. مغبد muγbad կամ موبد mūbed «մոգպետ, կրակապաշտների վարդապետ» բառից։ Հիշված է մի անգամ 1617 թ. (Տաշեան, Ցուց. 800)։

ՄՈՒՄԷ, սեռն ու ծագումը անհայտ. մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 430։

*ՄՈՒՆԱԹ, իգ. < արաբ. منت minnat «բարիք, երախտիք» բառից, որ ադավաղյալ ձևով ասվում է munnat. իբրև անձնանուն հիշված է մի անգամ՝

— Մունաթ, կին ոմն Ակնցի, 1516 թ.—Թորոս աղբ. Ա. 230։

*ՄՈՒՆԱՒԱՐ, *իգ. այս ձևով հիշված է անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Հալեպի, Ա. 51 բ։ Տես* Մինևեր:

†ՄՈՒՆԹԻԿ, *ար. < հյ.* մոնք *(ժղ.* մունք*) «փոքրավոր, աշակերտ» բառից։ Մի անգամ հիշատակված է անթվական մի հիշատակարանում (Քոսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 22)։*

*ՄՈՒՆՈՒՍ, *իգ. < արաբ.* مونس mūnis *«ընտանի, ընկեր, մտերիմ» բառից։ Հիշված է 1490-ից ուշ գրված անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Սևան. 5 ա)։*

ՄՈՒՇ, *ար. ծագումն անհայտ. կապ ունի՞ Մուշ քաղաքի անվան հետ։*

— 1. Մուշ *Դիմաքսեան, ավագ սեպուհ, որ մասնակցել է Աղվանից պատերազմին Քաջն Վարդանի հետ և այստեղ էլ նահատակվել «450 թ».—Եղիշ. 58. Փարպ. լե. Կղկնտ. Բ. բ։*

— 2. Մուշ, *որդի Սանասար իշխանի Սասնոյ, որ իբրև դաշնակից հունաց՝ կռվեց արաբների դեմ 638 թ։ Խլաթի Սաբուանդ պատրիկի աղջկա՝ Տարոն կույսի նշանածն է։—Տոմաշէկ, Սասուն, էջ 21—23 ըստ Վակիդի արաբ պատմագրի (ինքը ուղղում է Մուշեղ).— Խալաթ. Արար. մատ. 5։*

— 3. Մուշ, *հայր Յովհաննէս կրոնավորի, որ Մարմեռում համառոտել է «Մեկնութիւն Եսայեայ մարգարէի» 1118 թ.— Ձեռ. Կարին. 151, Արրտ. 1913, 43—51, Շողակաթ 195։*

ՄՈՒՇԱՆ, *իգ. ծագումն անհայտ. հմմտ.* Մուղան. *մի անգամ հիշված է՝*

— Մուշան, *կին Հանէսի, տատ Անդրէասի, որ գնեց մի հին Աւետարան, 1442 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 17 բ։*

*ՄՈՒՇԵՂ, *ար. < հաթեան* Muršili *անունից, որով կոչված են Հաթեան մի քանի թագավորներ։ Ըստ այսմ հայերենի հին ձևն է* *Մուրշեղ, *որ ապա* ր*-ի անկումով դարձել է* Մուշեղ *(Աճառ. Նորք 1925, № 5, էջ 393)։ Կա* Մուշիղ *կաթողիկոս Վրաց՝ ըստ Մխ. այրիվ. 23։ Մեր բառը տառադարձված է պրս.* موسیل Mūsīl *(Շահնամէ), որ եռակետի հավելումով պետք է կարդալ* موشیل Mūšīl*։ Արաբներն էլ տառադարձրել են* موشائیل Mūšā'īl, *բայց կա նաև* Mūšālīq *ձևը, որ է* Մուշեղիկ *(տես Իբնի-Խալլիքան, էջ 355)։ Հին ժամանակ կային* Մուշեղակ *և* Մուշեղիկ *փաղաքշականները։* Մուշեղ *անունը հիշատակված է մեր մեջ սկսած Դ դարից մինչև ԺԳ դար. անցյալ դարում նորից կենդանացավ և այժմ սովորական է։ Կա նաև* Մուշեղեան *ազգանունը։*

— 1. Մուշեղ Արծրունի, որդի Բաբկենի, որին և հաջորդեց (Դ դար)։—Արծր. Ա. թ։

— 2. Մուշեղ Արծրունի հաջորդ Տիրոցի. ժամանակակից Խոսրով Բ Կոտակի («330—339 թ»).—Արծր. Ա. ժ։

— 3. Մուշեղ (գրված Մուժեղ), իշխան Տարօնի. անդամ այն շքախմբի, որ առաջնորդեց Մեծն Ներսէսին՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ «353 թ».—Մեսր. եր. 25։

— 4. Մուշեղ Մամիկոնեան, որդի Վասակ Մամիկոնեանի. քաջ և անձնվեր զորավար Պապ («368—374 թ») թագավորի. վտարեց Պարսիկներին Հայաստանից. մասնակցեց Ձիրաւի ճակատամարտին, ուր գերի բռնեց Ագուանից Ուռնայր թագավորին, բայց մեծահոգությամբ արձակեց։ Նվաճեց բոլոր ապստամբ նախարարներին։ Բատ Սահառունու քսութեամբ և Վարազդատ թագավորի («374—8թ») հրամանով սպանվեց խարդախությամբ։—Բուզ. Դ. ծե. Ե. ա—զ, ը—ժ, ժգ—ժէ, ժթ, ի, իգ, լ, լը—լե, լէ. Մեսր. եր. 67—73, 79—82, 86, 88, 104, 115—8, 120—1. Ասող. Բ. ա. Վրդ. իգ. Վրդն. աշխ. 522 (գրված է Մուշեխ). Պտմ. ներս. 19, 24. Յայսմ. նոյ. 19. Թլկր. 52? Դրնղ. 545. Վրաց. աղբ. Ա. 75 (գրում է Մուշիլ).—սեռ. Մուշեղի՝ Բուզ. Ե. ա, բ, դ, ե, ի, լե-լէ.—Մուշեղայ, ի Մուշեղայ՝ Բուզ. Ե. բ, լե, լէ. Խոր. Գ. լէ. Մեսր. եր. 70—73, 81, 82, 115, 118—121. Կիր. 13. Յայսմ. նոյ. 19.—ի Մուշեղէ՝ Բուզ. Ե. բ, դ. Կղկնտ. Ա. ժգ։—Նույն անձն է, որ Մամիկ. 59 կոչում է «Մուշեղ քաջակորով» և համարում է 32րդ մինչև Գայլ Վահանի թոռը. «որ երեսներորդ երկրորդ էր ի Մուշեղայ՝ զոր Քաջակորով կոչեն»։ Վենետիկի հրատարակության ցանկում այս Մուշեղը նույն է դրված Գայլ Վահանի ազգական Մուշեղի հետ (Է դար). բայց անշուշտ սխալ է, ինչպես ցույց է տալիս 32-րդ տոհմը, որ հասցնում է իրոք Դ դար։—Նույն եմ համարում նաև Մեծոփ. 81 «քաջն Մուշեղ», որ հիշված է Քաջն Վարդանի հետ։

— 5. Մուշեղ Մամիկոնեան, Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մին «452 թ».—Եղիշ. 150, Փարպ. խէ։

— 6. Մուշեղ Մամիկոնեան, սեպուհ. հավատարիմ կուսակից Վահան Մամիկոնեանի. մի գնդով գնաց Վրաստան՝ վիրավոր Վասակին և Սահակին հետ բերելու։ Արծաթի գյուղում հարվածեց Պարսիկներին «483 թ»։—Փարպ. հէ, հը, ձա, ձզ. Սիմ. ապար. 64 (գրված Մուշեխ).—սեռ. Մուշեղի՝ Փարպ. ձա։

— 7. Մուշեղ *եպիսկոպոս Բաղասականաց (Ե դար).—տես* Մուշէ № 5:

— 8. Մուշեղակ, *իշխան հայոց, տիրում էր Դ Հայոց կողմերում. երբ Անաստաս կայսեր Արովբինդ զորավարը արշավեց այն կողմերը, Մուշեղակը վախեցավ և ընդունեց կայսեր հպատակությունը (503 թ).—Չամչ. Բ. 235։*

— 9. Մուշեղ *ի Հմայեկեան, իշխան. անդամ Դուինի երկրորդ եկեղեցական ժողովի «554 թ».—Գիրք թղ. ժէ։*

— 10. Մուշեղ *Բագրատունի, որի խնդրանօք Ներսէս Բ Աշտարակեցի կաթուղիկոսը («548—557») գրել է «Թուղթ հաւատոյ», որի մասին տես* REA *հտ. 2 (1922), էջ 248, Ձեռ. Վենետ. Բ. 161 և վարը՝ Ներսէս Բ անվան տակ։*

— 11. Մուշեղիկ, *առաջնորդ Վարագայ վանքի, հաջորդեց Բողատին՝ շուրջ 600 թ.—Հայապ. 232։*

— 12. Մուշեղ *Մամիկոնեան, Մորիկ կայսեր (582—602) կողմից նշանակվեց Յունահայոց դուքս՝ Յովհանի մահից հետո. պատերազմեց Պարսից դեմ (584 թ)։ Մորիկի հրամանով գնաց օգնական Պարսից Խոսրով թագավորին՝ ընդդեմ ապստամբ Վահրամ Չոբինի։ Վահրամը խոստացավ Հայաստանը անկախ թագավորություն հայտարարել, եթե Մուշեղը միանար իրեն՝ կործանելու Սասանեան պետությունը։ Այս առթիվ նա գծում է Հայոց պետության էլ սահմանները, ինչ որ թանկագին տեղեկություն է մեզ համար։ «Ձեզ տուեալ լիցի իմ զՀայոց թագաւորութիւնն, զոր և դուք կամիք՝ արասջիք ձեզ թագաւոր։ Եւ թողում ձեզ զամենայն երկիրն Հայոց մինչև ցԿապկոհ և ցդուռն Աղուանից. և յԱսորւոց կողմանէ՝ զԱրուաստան, զՄրծուին և զնոր Շիրական մինչև ցսահմանս Տաճկաց, զի առ նախնեաւքն իսկ ձեզ լեալ է. և ընդ արևմուտս մինչև ցԿեսարիա Կապադովկացւոց։ Եւ ես մի՛ իշխեցից քան Զարասպ անցանել յայնկոյս»։ Մուշեղը մերժեց և պատերազմում հաղթեց Վահրամին, որ փախավ Բահլ, ուր և սպանվեց։ Պարսիկ իշխանները նախանձելով Մուշեղի քաջության վրա, զրպարտեցին Խոսրովի մոտ, ասելով թե Մուշեղը բռնել է Վահրամին, բայց ձի և զենք տալով արձակել է։ Միամիտ Խոսրովը հավատաց և հրամայեց իր մոտ կանչել նրան։ Նախապես կարգադրել էր սակայն, որ չթողնեն նրան զինված մտնել արքայի մոտ։ «Պատրաստ լերուք, ասաց նա, զի յորժամ եկեսցէ նա և ես ձեռամբ նշանակեցից ձեզ, յանկարծակի զձեռս նորա յետս կալարուք և կապեցէք զնա. բայց պատրաստ լիջիք,*

զի այր քաջ է նա, և մի՛ թէ կամ ինքն մեռանի կամ զիս սպա-
նանէ»։ Երբ սուրհանդակը ներկայացավ Մուշեղին և հայտնեց
որ Թագավորը կանչում է նրան, Մուշեղը կարծեց թե Թագա-
վորը վտանգի մեջ է, իսկույն հագավ իր զենքերը և 2000 սպա-
ռազեն մարտիկ վերցնելով, շտապեց Թագավորի մոտ։ Պարսից
զորքն էլ զինված պատրաստ կանգնած էր. չթողեցին որ Մու-
շեղի բանակը առաջ անցնի։ Մուշեղը վերցրեց 50 քաջեր և
մոտավ Թագավորի վրանը. Բարապանները պահանջեցին որ զեն-
քերը հանի և այնպես մտնի արքայի մոտ։ Մուշեղը կասկածել
սկսեց։ «Ես մանկությունից Թագավորների ծառայության մեջ
եմ մեծացել, ասաց նա, ես իմ տունը՝ խնջույքի ժամանակ ան-
գամ զենքս չեմ արձակել. այժմ Թագավորի առաջ պիտի հանեմ»։
Զինված մտավ արքայի վրանը՝ 7 ընկերներով։ Խոսրովը վախե-
ցած, կարկամեց, լեզուն բռնվեց և ոչինչ չկարողացավ ասել։
Մուշեղը դուրս եկավ, հեծավ ձին ու հեռացավ։ Խոսրովը սար-
սափեց, գահից իջավ, վազեց նրա հետևից և մի նշանավոր նա-
խարար ուղարկեց՝ երդում և կնքված աղ տանելով, պատվով ետ
կանչելու Մուշեղին։ Մուշեղը չլսեց և բռնելով Խոսրովի թիկնա-
պահներից մեկին, տարավ հունաց Յովհան պատրիկի մոտ և
մահվան սպառնալիքով՝ խոստովանեցրեց ճշմարտությունը։
Խոսրովը զորք ուղարկեց Մուշեղի դեմ, որպեսզի սպանեն նրան
գաղտնաբար, բայց Մուշեղը և հունաց բանակը ընկան նրանց
վրա և կոտորեցին։ Այնուհետև Մուշեղը գնաց և մնաց կայսեր
պալատում։ Հայ զորքով ուղարկվեց Աւարների դեմ կռվելու,
հաղթեց և անցավ Դանուբը, բայց հետո հաղթվեց և սպանվեց։—
Սեբ. Թ, Ժ, Ժզ. Արծր. Բ. գ. Վրդ. խդ. Մխ. անեց. իդ. Սիմ.
տպար. 78, 80—83, 90.—սեռ. Մուշեղայ՝ Սեբ. Ժ.—Մուշեղի՝ Սիմ.
տպար. 78, 81, 82.—պտմ. զՄուշեղն՝ Սիմ. տպար. 80.—Հույնե-
րը կոչում են նրան Մուսլակ, Մուստակ՝ Զամչ. Բ. 295. Տէր Սա-
հակեան, Հայ կայսրք, Ա. 98—99, 103, 275—7, 296։ Բայց
Զամչ. Բ. 299 նույնացնում է սրան Տարօնի Մուշեղ իշխանի
հետ, որի մասին տես տակը № 13։—Վրաց աղբ. Ա. 42, 43,
79 (կոչում է Մուսլի)։—Այս Մուշեղի մասին խոսում է նաև
Ֆիրդուսին (տես իմ Ֆիրդուսին Հայոց մասին, էջ 35, 37, 39,
43, 45, 49), բայց այնպիսի ստորացուցիչ ձևով, որ անհնարին
է բավարար չափով պախարակել։ Այն Մուշեղը, որի առաջ դո-
ղում է Խոսրովը, զիջանում է ասել. «Ո՛վ Թագավոր, թող գամ
համբուրեմ քո ասպանդակը»։ Եվ երբ Խոսրովի թույլտվությամբ

նա համբուրեց նրա ոտքն ու ասպանդակը, «նրա սարսափից չփոթվեց»։ Այս բոլորի մասին տես անդ, էջ 59—63։

— 13. Մուշեղ Մամիկոնեան, իշխան Տարօնի. իր ազգական Գայլ Վահանի ձեռքով կռվեց Պարսից Միհրան զորավարի դեմ և կոտորեց նրա 10,000 զորքը. մեռել է 604 թ. Իր գերեզմանը ցույց են տալիս Մշոյ Ս. Կարապետի վանքում (Տըվըլէ, Ուղև. ի Փ. Ասիա, Վիեննա 1892, էջ 55 և Հնոց և նորոց 15)։ —Մամիկ. ա, բ.—սեռ. Մուշեղայ և բց. ի Մուշեղայ՝ Մամիկ. ա, բ, գ, ե և էջ 56. Ցայտ. սեպտ. 30.—Մամիկ. ասում է թե Մօրիկի հրամանով Խոսրովը տարավ նրան Դուին և հայոց մարզպան կարգեց. և երբ Խոսրովը ուզում էր դավաճանությամբ սպանել նրան, Մուշեղը քաշվեց Տարօն և հետո կռվեց այնտեղ՝ օգնությամբ Գայլ Վահանի։ Ըստ այսմ Չամչ. Բ. 299 նույն է դնում նախորդ № 12-ի հետ։ Սակայն նկատի ունենալով, որ Խոսրովի դավաճանությունը հենց սկզբից էր եղել և Խոսրովը Մուշեղին մարզպան նշանակելու ոչ իրավունք և ոչ էլ կարողություն ուներ, որ Մուշեղը կայսեր բողոքելով կանչվեց պալատ, որտեղից ըստ Սեբէոսի «այլ ոչ ետես զերկիրն» (այսինքն է՛լ Հայաստան չդարձավ) և վերջապես որ նա Ավարների պատերազմում սպանվեց, ուստի Չամչյանի ենթադրությունը սխալ է։

— 14. Մուշեղ Մամիկոնեան, որդի Դաւթի, զորավար հայոց. 3000 զորքով կռվում էր Պարսից հետ արաբների դեմ՝ Տիզբոնի պաշարման ժամանակ, ուր և մեռավ իր երկու քեռորդիներով միասին «636 թ».—Սեբ. խ. Մխ. անեց. իը. Կիր. 33. Սամ. անեց. 81։

— 15. Մուշեղ Մամիկոնեան, սպարապետ ի Տարօն, հիշված է Սասանեան Խոսրով Ե թագավորի երկրորդ տարին (արաբ. Mūšeliq, հուն. Μουσλίκης, Μωσηλέ ձևերով, ուրեմն Մուշեղիկ).—Տոմաշէկ, Սասուն, էջ 15։

— 16. Մուշեղ Մամիկոնեան, սպարապետ Հայոց, ժամանակից Եզր կաթուղիկոսի («630—641 թ»).—սեռ. Մուշեղի՝ Կղկնտ. Բ. ծ։

— 17. Մուշեղ Մամիկոնեան, նախարար. Ներսէս Բ կաթուղիկոսի հետ ներկայացավ հունաց Կոստանդին կայսեր, երբ նա եկավ Հայքն «652 թ» և ստացավ նրանից հեծելոց հրամանատարությունը. ապա անցավ արաբների կողմը։—Սեբ. խդ. խը, ծ։

— 18. Մուշեղ Մամիկոնեան, իշխան, սպարապետ Հայոց, եղբայր Արտաւազդի. ներկա էր Թաղման Նահատակ Դաւիթ պարսիկ Դունեցու՝ Արգլլա ոստիկանի օրով «701 Թ»։—Ցայսմ. մրտ. 31, Վկ. դաւ. 95։

— 19. Մուշեղ Մամիկոնեան, որդի Սմբատի, եղբայր Գրիգորի և Դաւթի. երբ եղբայրը՝ Գրիգոր պատրիկ մեռավ Կարինում «748 Թ», Մուշեղը դարձավ իշխան հայոց, բայց քիչ ժամանակ հետո մեռավ։—Ղև. իզ՝ Ազգապ. 873։

— 20. Մուշեղ Մամիկոնեան, որդի Հրահատ կոմսի, ապստամբելով Հասան ոստիկանի դեմ՝ կոտորեց արաբ հարկահաններին և ամրացավ Արտագերսի բերդը. առաջին հաջողություններից հետո նահատակվեց Բագրևանդի անհավասար կռվում «775 Թ».—Ղև. լգ. հիր. 40. Վրդ. լԹ. Սամ. անեց. 89. Մխ. այրիվ. 67.—սեռ. Մուշեղայ՝ Ղև. լգ. Վրդ. խա.—հիշում է Բելազորին (տես Խալաթ. Արաբ. ժամ. 63, Ալիշան՝ Ցուշիկք, Ա. 197—215)։

— 21. Մուշեղ Մամիկոնեան, հայր Գրիգոր Մամիկոնեանի, որ էր զորավար հունական բանակի «778 Թ».—Ազգապ. 896 (գրված է հուն. Մուզալակի՝ Ղև. էջ 193 ծան.)։

— 22. Մուշեղ (կամ Ալեքս Մուշեղ), պալատական իշխան հունաց կայսեր. երբ հայկական բանակը ապստամբեց Եռինէ կայսրուհու դեմ, կայսրուհին ուղարկեց այս Մուշեղին՝ հանդարտացնելու համար ապստամբներին։ Բայց զինվորները համոզեցին Մուշեղին և իրենց գլխավոր ընտրելով՝ ընդհանուր ապստամբություն բարձրացրին. ապա Եռինէին արգելափակ արին և Կոստանդինին գահ բարձրացրին (790 Թ)։ Կոստանդինը Մուշեղին զորապետ կարգեց, բայց հետո կասկածելով նրա վրա, բանտարկեց (791 Թ)։ Երբ Կոստանդինը հաղթվեց Բուլղարներից, իշխանները դավադրություն սարքեցին և ուզեցին Մուշեղին կայսր նստեցնել՝ Կոստանդինը լսեց դավադրությունը, գլխավորներին պատժեց և Մուշեղին կուրացրեց (792 Թ)։—Ջամչ. Բ. 423, Ցուշիկք Բ. 356։

— 23. Մուշեղ Ռշտունի, որդի Վարդ պատրիկի և Թոռն Թէոդորոս Ռշտունու։ Այս Մուշեղից դժգոհ մնաց ժողովուրդը և Ռշտունեաց իշխանությունը բաժանեց Բագրատունեաց և Արծրունեաց մեջև (Ը դար)։—Սուտ. Շապհ. 37։

— 24. Մուշեղ Ցրօնցի, իշխան Տարօնի. հունաց պերիշխանության տակ էր. երբ Թէոփիլոս կայսրը արշավեց Տարօն, շատ սիրելով այս Մուշեղին, իր հետ տարավ Պոլիս և իր Մարիամ

*աղջկա հետ ամուսնացնելով՝ փեսայացրեց իրեն։ Անունն էլ փոխեց և դրեց Ալեքս, կոչեց պատրիկ, մեծ իշխան և կեսար։ Հավատալով չարախոսներին, նախ հեռացրեց Սիկիլիա և ապա բանտարկեց։ Զիջելով ավագանու աղաչանքին, արձակեց բանտից, բայց Մուշեղը կամավորապես վանք մտավ, ուր և մնաց մինչև իր մահը (833 թ).—Զամչ. Բ. 435։*

— 25. Մուշեղ, *որդի Տիրոցի, եղբայր Ստեփաննոսի. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում։—Օրբ. ԼԸ.—սեռ.* Մուշեղի՝ *անդ։*

— 26. Մուշեղ *տէր, որդի Սմբատի. իբրև վկա հիշվում է Տաթևի կալվածագրում 844 թ.—Օրբ. ԼԸ։*

— 27. Մուշեղ *Արծրունի, եղբայր Վահանի. մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ». Աշոտի հետ միասին դիմադրեցին Բուղային՝ Նկան բերդում։ Բուղայի ձեռքով գերի տարվեց Բաղդադ «852 թ»։—Արծր. Բ. դ. Գ. բ, գ։*

— 28. Մուշեղ *Վահևունի, Աշոտ Արծրունու օգնականն էր, երբ Նկան բերդում պաշարվեց Բուղայից «852 թ».—Արծր Գ. բ։*

— 29. Մուշեղ *Ապուպելճ, եղբայր Գուրգէնի. Գուրգէն Արծրունու օգնականն էր Բուղայի դեմ պատերազմի ժամանակ «852 թ».—Արծր. Բ. գ. Գ. ժբ.—սեռ.* Մուշեղի՝ *Արծր. Գ. գ։*

— 30. Մուշեղ *Արծրունի. մասնակցեց Գուրգէն Արծրունու պատերազմին Բուղայի դեմ «852 թ».—Արծր. Գ. գ, ժբ։*

— 31. Մուշեղ *Ամատունի, մասնակցեց Գուրգէն Արծրունու պատերազմին՝ Բուղայի դեմ «852 թ».—Արծր. Գ. գ։*

— 32. Մուշեղ *Բագրատունի, որդի Աշոտ Մսակերի († «824 թ»), եղբայր Դաւթի, Սահակի, Բագարատի և Սմբատ Խոստովանողի.—Վրդ. խբ։*

— 33. Մուշեղիկ, *հայ զորավար, որին Վասիլ հայ կայսրը ուղարկեց Կեֆալոնիա, 881 թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 353։*

— 34. Մուշեղ *Բագրատունի, որդի Սմբատ Խոստովանողի և եղբայր Աշոտ Ա. Թագավորի, որ մեռավ «890 թ»։—Արծր. Գ. ժ, ժա, ի։—Տես հաջորդը։*

— 35. Մուշեղ *իշխան Մոկաց. հաշտեցրեց Վասպուրականի Աշոտ իշխանին Գուրգէն Ապուպելճի հետ. պատերազմեց Անձևացեաց Գուրգէն իշխանի հետ և սպանվեց շուրջ «894 թ»։—Արծր. Գ. ժէ, ժթ, ի. Ցհ. կթդ. լդ։—Ըստ Մարքվարտ, Բագր. 67*

Սմբատ Տոստովանողի որդին և Աշոտ Ա-ի եղբայրն է (տես № 34)։

— 36. Մուշեղ Անձևացի, որի մահից հետո իշխանությունը անցավ Գուրգէն Արծրունուն (Թ դար)։—Արծր. Գ. ժե.—սեռ. Մուշեղայ՝ Արծր. Գ. ժե։

— 37. Մուշեղ Բագրատունի, որդի Սմբատ Ա-ի. ամուսնացավ Ափխազաց Դոտաս Թագավորի աղջկա հետ, որի վրա Սմբատը իրավունք համարեց գրավել Արտահանի և Կանգարքի ամբողջ շրջանը։ Դոտասը խորամանկությամբ բանտարկեց Մուշեղին։ Սմբատը մեծ զորքով գնաց նրա վրա և Վասպուրականի Գուրգէն իշխանի քաջությամբ ազատեց Մուշեղին։ Յուսուփ ոստիկանի արշավանքի ժամանակ, Մուշեղը իր եղբոր հետ ուղարկվեց նրա վրա, բայց Սևորդիների մատնությամբ գերի բռնվեց, Թունավորությամբ սպանվեց և Թաղվեց Բագարանում «911 Թ»։—Յհ. կԹղ. խե, խզ. Սում-Շապհ. 81, 82. Ասող. Գ. դ. Օրբ. լէ։ Վրդ. խզ.—սեռ. Մուշեղայ՝ Յհ. կԹղ. լէ, խե. Սում-Շապհ. 80. Օրբ. լէ։—Սա պետք է լինի Զարբ. Հին դպր. 568 հիշված Մուշեղ Բագրատունին, որի խնդիրքով Անանուն վարդապետ ոմն գրել է «Ընդդէմ Արիոսեանց, Եւտիքեանց, Նեստորականաց և Քաղկեդոնականաց»,

— 38. Մուշեղ-Ալեքս (ըստ հունաց կոչված Ալեքսիս Մոզելէս), ծովակալ Ռոմանոս Ա Լեկաբենոս կայսեր (920—944 Թ)։ Երբ Բուլգարները մեծ բանակով արշավեցին հունաց վրա, բոլոր հույն զորավարները՝ որոնք ուղարկված էին Թշնամու դեմ կռվելու, հենց որ տեսան Բուլգարների բազմությունը, իրենց զորքով միասին խուճապով փախչել սկսան։ Ծովակալ Մուշեղը սուսերամերկ նետվեց նավակ, ցամաք դուրս եկավ և սկսեց կոտորել Բուլգարներին։ Բայց դյուցազնությունը անօգուտ էր։ Մուշեղ մենակ մնացած, ետ քաշվեց, բայց խուճապի մեջ ծովը ընկավ և զրահների ծանրության պատճառով ծովի տակ գնաց (922 Թ)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 61—62։

— 39. Մուշեղ-Ռոմանոս, հայ իշխան. ազգական Ռոմանոս Ա-ի Լեկաբենեան, ժամանակակից Ռոմանոս Բ կայսեր (939—963). ունէր մի ծառա Փիլորէոս անունով, որ շատ վարպետ էր ձիախաղության մեջ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 109։

— 40. Մուշեղ Ա. Թագավոր Կարուց «968—984 Թ». Աբաս Բագրատունի Թագավորի որդին էր և կրտսեր եղբայր Աշոտ Գ. Ողորմածի. մեռավ 984 Թ. և իրեն հաջորդեց Աբաս։—Ասող. Գ.

ը, ժա, ժբ, ժէ.—սեռ. Մուշեղայ՝ Անան. ապստ. 144 բ. Ասող. Գ. ժա.—Վրաց պղբ. Բ. 97 (գրված Մուշիեղ)։

— 41. Մուշեղ, Թոնդրակեցի աղանդավոր, հռչակված գիտնական, որի դեմ գրել է Գր. Նարեկացին († 1003 թ)։—Գիրք թղ. ղր.—սեռ. Մուշեղայ՝ անդ։

— 42. Մուշեղ, որդի Զորտուանելի Ա. հայր Թոռնիկի. իշխան Սասնոյ (ԺԱ դար).—սեռ. Մուշեղայ՝ Ուռհ. 130, 206. Սմբ. պատմ. 72. Սամ. անեց. 111.—Հայապ. 391։

— 43. Մուշեղ որդի Հեջուբի, նվիրատու Մեծարանց վանից 1293 թ.—Բանասէր 1901, 142, Արցախ 171։

*ՄՈՒՇԷ, ար. < ասոր. موشه Mūšē անունից, որ նույն Մովսէսն է. հմմտ. Եփր. բ. Թես. էջ 191, ուր Մովսէս մարգարէի համար գործածված է Մուշէ ձևը (Հիւբշ. 295)։

— 1. Մուշէ, որին Գողթնեցիք ուղարկեցին Թադէոս առաքյալի վանքը՝ Արտազ, որպեսզի իրենց եպիսկոպոս ձեռնադրվի. բայց նա չկարողացավ վերադառնալ «92 թ» (տես հաջորդը)։—Օրբ. Ե։

— 2. Մուշէ (կամ Մուշեղ) եպիսկոպոս, առաջնորդ Արտազի. հաջորդեց Առնէրսեհին. Պարսից երկրից էր. հեթանոսների երկյուղից ծածկաբար կառավարեց իր թեմը 30 տարի, այն է «93—123 թ».—Զքր. եպս. 280, Արրտ. 1868 դեկտ. էջ 102։ (Աղգապ. 50—54 նույն է դնում նախորդի հետ. այսպես նաև Հացունի, Կարևոր խնդ. 108)։

— 3. Մուշէ անապատական, աշակերտ Գինդի, Մեծն Ներսէսի մահից («373 թ») հետո.—Բուզ. Զ. ժզ։

— 4. Մուշէ Տարօնեցի, աշակերտ Ս. Մեսրոպի († «439 թ»). օգնեց նրան Գողթնում լուսավորութեյունը տարածելու գործում.—Կոր. էջ 14 (այլ ձ. Մուշեղ), Փարպ. ծ. Խոր. Գ. ծզ. Կիր. 16. Վրդ. իե. Պտմ. սահ. 14. ZAPh 1, 206. Առաք. լծ. սահմ. 170։

— 5. Մուշէ եպիսկոպոս, որին Ս. Մեսրոպը թողեց Բաղասական կողմերի վրա։—Կոր. էջ 19 (կոչում է Մուշեղ), Խոր. Գ. կ. Դաւ. անյ. 99։ (Սարգիսեան, Անանիա Թարգմանիչն, էջ ծզ ծան. միևնույն է համարում № 4, 5 և 8)։

— 6. Մուշի, սարկավագ, որ Զանգակի, Պետրոսի և Սահակի հետ ծառայում էր Վասակ Սիւնու մոտ իբրև լրտես և գործիք.—Զամչ. Բ. 65 (չունին Փարպ. և Եղիշ. աղբյուրը անհայտ է)։

— 7. Մուշէ Աղբակեցի, եպիսկոպոս Արծրունեաց. մասնակ-

ցեց Արտաշատի ժողովին «449 Թ»։ Ավերած լինելով մի առ-բուշան, տարվեց Պարսկաստան, բանտարկվեց և նահատակվեց Ապար աշխարհում, Ղևոնդեանց խմբի հետ «454 Թ».—Եղիշ. 22, 101, 139. Փարպ. իգ, իը, իդ, իէ, ծզ, ծէ. Վրդ. իէ. Ցայսմ. յուլ. 31 (ուր գրված է նաև Մուշեխ ձևով). Սիմ. ապար. 48.—սեռ. Մուշեի՝ Փարպ. ծէ։

— 8. Մուշէ եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Գաղատի, ժամանակակից Բաբկէն կաթողիկոսի («490—516 Թ»). հյուրընկալեց Ղազար Փարպեցուն. մասնակցեց Դուինի ժողովին «506 Թ».—Փարպ. էջ 187. Օրբ. ժԹ, կը, հա. Օրբ. հկճռ. ժբ։

— 9. Մուշէ Այլաբերցի, կաթողիկոս հայոց «526—534 Թ». հոռայքի Այլաբերից (այժմ Ալափարս) գյուղից էր. հաջորդեց Սամուէլ Արծկեցուն։—Եզն. եբ. 268, Ցհ. կԹդ. ժզ. Ասող. Բ. բ. Մխ. անեց. գ. Միխ. սս. իԹ (=իը). Վրդ. լ. հեր. 22. Մխ. այբիվ. 20. Օրբ. ժԹ, հա. Ցհ. կԹդ. հյր. 274. Ջքր. սարկ. Գ. 5.—Մուշեղ՝ Սամ. անեց. 72. Բհնպ. 271.—Մուսիլի՝ Վրաց աղբ. Ա. 78.—սեռ. Մուշէի՝ հեր. 22, Օրբ. ժԹ։

— 10. Մուշէ եպիսկոպոս, հորեղբայր Թադէոսի, որ էր առաջնորդ Կոգովտի 999 Թ.—Ջարբ. Թրգմ. 454, Այրարատ 497, Հայապ. 310։

†ՄՈՒՇԿ, ար. < հյ. մուշկ բառից, ինչպես ունինք Բալասան, Իւղ, Միւռոն անունները։ Պարսից և արաբների մոտ Mušk սովորական անուն է ստրուկների՝ նրանց սև անուշահոտ մազերի համար (Justi 218 ա)։ Հմմտ. պրս. Muškināz գյուղացի ջաղացպանի աղջիկ, որ Բահրամ Գուրի կինը դարձավ (Շահն. հտ. 5, էջ 474), Muškī դարվիշ բանաստեղծ (Justi 218 ա). տես և Մուշկան։

— Մուշկ, նահապետ Սահառունեաց, ուղեկից եղավ Մեծն Ներսէսին, Վաղէս կայսեր մոտ դեսպան գնալու ժամանակ («364 Թ»)։—Բուզ. Դ. ժա։

*ՄՈՒՇԿԱՄԲԱՐ, ար. < պրս. مشك mušk «մուշկ»+արաբ. عنبر 'anbar «յամբար անուշահոտ ծաղիկը»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1632 թ.—Ջեռ. Դաղեան, Բ. 33 ա։

*ՄՈՒՇԿԱՆ, ար. < պրս. مشكان Muškān անունից, ինչ. Մուշկան Նիւսալաւուրտ՝ զորավար Պարսից (Եղիշ. Փարպ.)։ Հմմտ. նաև مشكنك Muškanak գյուղացի ջաղացպանի աղջիկը, որ Բահրամ Գուրի կինը դարձավ (Շահն. հտ. 5, էջ 474). բուն նշա-

նակում է «կաքավ»։ Մի անգամ միայն գտնում եմ հիշատակված մեր մեջ՝

— Մուշկան, նահապետ Սահառունեաց, մին այն նախարարներից, որոնք ուղեկից եղան Մեծն Ներսէսին՝ Վաղէս կայսեր մոտ դեսպան գնալու ժամանակ «364 թ»։—Մեսր. եր. 52 (այլ ձ. Մուկ, թերևս նրա համար որ պրս. موش mūš նշանակում է «մուկ» և موشك mūšak «մկնիկ»)։

*ՄՈՒՍԱ, ար. < արաբ. موسى Mūsa անունից, որ տես Մովսէս։ Հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1450 թվից ուշ (Ջեռ. Թաւր. 67 բ)։ Կա և Մուզայ 1665 թ. (Տաշեան, Ուս. Սո. Կալիսթ. 163, Ջեռ. Հալէպի, Ա. 289 բ), Սրանից է՝

*ՄՈՒՍԱԲԷԿ, որ իբր արական անուն հիշատակված է ԺԷ դարից. այսպես Մուսաբէկ ոմն Ագուլեցի՝ 1675 թ. (Զքր. ագուլ. 127). բայց անշուշտ շատ ավելի հին է, որովհետև ունինք Մուսաբէկեան ազգանունը ԺԵ դարից (Գրիգոր Թ կաթ. Մուսաբէկեան)։

ՄՈՒՍԱՆՏ, ար. ծագումն անհայտ. հիշատակված է մի անգամ 1271 թ. (տես Մոնսոր)։

ՄՈՒՍԱՏԱՐԻՈՍ տես Մեծատուր։

*ՄՈՒՍԵՖԻՐ, ար. < արաբ. مسافر musāfir «ճամբորդ, հիւր» բառից։

— 1. Մուսեֆիր, տանուտեր Արճէշի. Ստեփաննոս քահանայի հետ նահատակվեց հավատքի համար՝ «1395 թ»։—Մեծոփ. 47, 112—3, Նոր վկ. 184—5։ (Նույնը մի քիչ տարբեր ձևով պատմում է Ջամչ. Գ. 465 և դնում է 1432 թ.)։

— 2. Մուսաֆիր, որդի շահնա Յովհաննէսի (նախ քան 1420 թ).—Տաշեան, Ցուց. 666 ա։

*ՄՈՒՍԷ, ար. ծագումը տես Մովսէս։

— 1. Մուսէ, հայր Գագիկ Թագավորի Աղուանից. իշխում էր 1000 թ.—Արցախ 79։

— 2. Մուսէ, որի աղջիկը՝ Ոսկի մի տաճար է կառուցել Տումի գյուղում (Հաղրութի մոտ), 1000 թ.—Արձ. Արցախ 79։

*ՄՈՒՍԻ, ար. տես Մուսա=Մովսէս։ Հիշված է 1727 թ. (Մուսի՝ մելիք Ագուլիսի, դավաճան, Ջամչ. Գ. 797—8)։

*ՄՈՒՍԻԿ, ար. փաղաքշականն է Մուսա անվան։

— 1. Մուսիկ, մերձավոր Յովհաննէս երեցի, որ Բերկրիի

Առեղս գյուղում գրել տվեց մի Ավետարան. 1488 թ.—Ձեռ. Վասպ. 508։

— Մուսիկ անունը հիշված է նաև 1508 թ. (Ձեռ. Վասպ. 634), և անհայտ թվականով՝ Տաշեան, Ցուց. 530 (ԺԶ—ԺԷ դար)։

*ՄՈՒՍԻՆ*, *ար.* < Մովսես անունից (ինչպես մեկնում է Ա. Ազատեան, Մուսինի գանդատը, Թիֆլիս (890, էջ 7). սրանից է Մուսինեան ազգանունը (Կովկաս)

**ՄՈՒՏԱՖԱՐ* տես Մուզաֆար։

**ՄՈՒՐԱԴ*, *ար.* < արաբ. مراد Murād անունից, որի բուն նշանակությունն է «փափագ, ցանկություն»։ Այս անունով հայտնի են մի քանի տաճկական սուլթաններ, այն է՝ Մուրադ Ա 1319—1389, Մուրադ Բ 1401—1451, Մուրադ Գ 1546—1596, Մուրադ Դ 1611—1640, Մուրադ Ե. 1876 թ։ Գործածվել է մեր մեջ սկսած ԺԳ դարից և մինչև այժմ էլ կա։ Սրանից է Մուրադեան ազգանունը։

— 1. Մուրադ, քաջ սպարապետ Վարանդա գավառի. գերեզմանը գտնվում է Ավետարանոց գյուղում, 1241 թվից։—Արցախ 98։

— 2. Մուրատ ուստա, որի գերեզմանը գտնվում է Շաքիի Ամուր-Ավան գյուղում, ՉԱ=1252 թ. (եթե ստույգ է)։—Բարխուտ. Աղուանից երկ. էջ 215։

— 3. Մուրատ, կինն է Խուանդ խաթուն, զավակներն են Ամիր Սարգիս, Ամիրմուլք և Միրզապարոն. Աղթամարում, Գրիգոր գրչին գրել տվեց մի Ավետարան, 1355 թ.—Ձեռ. Վասպ. էջ 203։

— 4. Մուրատ մահտասի, հայր Թովմա քահանա գրչի, որ Վանում, Առոմ միայնակեցի համար օրինակեց Մաշտոցը 1393 թ.—Նոտարք 3։

— 5. Մուրատ, փեսան էր Ստեփաննոս քահանա Ամկեցու, որ նահատակվեց Արճէշում, 1395 թ։ Մուրատը նախապես ամուսնացած էր իր փեսի քրոջ հետ, որից ունեցել էր մի սրիկա որդի՝ Բախշայիշ անունով։—Մեծոփ. 113։

— 6. Մուրատ խաթուն! զուստր Աբրահամի և քույր տանուտեր Դանիէլի, որ Աղթամարում, Զաքարայ գրչին գրել տվեց Ավետարանը 1399 թ.—Ձեռ. Վասպ. 234, 239։

— 7. Մուրատ մահդասի, հայր Մկրտիչ կրոնավորի, որ Տէր Ցուսկան որդու վանքում օրինակեց Տաթևացու Լուծմունք Սաղմոսաց Դավթի, 1414 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 62 ա։

— 8. Մուրատ, տանուտեր Արծկէի. երբ Իսքենդերը պաշարեց քաղաքը, բանակցության մեջ մտավ նրա հետ և քաղաքը հանձնեց. որով ժողովուրդը կոտորածից ազատեց «1430 թ»։ —Մեծոփ. 93 (գրում է Մուրատտայ), Զամչ. Գ. 464 (գրում է Մուրատշայ), Ազգապ. 2052 (գրում է Մուրատ)։

— 9. Մուրատ, հանգուցյալ որդի տանուտեր Դաւթի, որ Թացու գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1437 թ.—Ձեռ. Վասպ. 379։

— 10. Մուրադ մզգասի, եղբայր Ցխաւի, հորեղբայր Ներսէս քահանայի և մեծ հորեղբայր Բարթուղիմէոս առաքյալի վանուց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ ստացավ մի Ցայսմաւուրք 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41 ա։

— 11. Մուրատ, որդի մահտեսի Շահփաշայի, որ Վանում, Վարդան քահանային գրել կամ նորոգել տվեց մի Ավետարան, 1453 թ.—Ձեռ. Վասպ. 136։

— 12. Մուրադ, հանգուցյալ որդի տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 13. Մուրատ, հայր Վրթանէս քահանայի, որ Թովմա աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1456 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 31 ա։

— 14. Մուրատ, հայր Թովմա վարդապետ Մեծոփեցու, որ Խնդրակատար վանքում գրեց Նարեկի Լուծմունքը 1458 թ.—Նոտարք 189։

— 15. Մուրատ, կանգնեցրել է մի խաչքար, Հոպակ գյուղում, 1460 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 569։

— 16. Մուրատ (կամ Մուրատշահ), որդի Մկրտչի, եղբայր տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում, Կարապետ քահանային գրել տվեց Ավետարանը 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

— 17. Մուրադ, անդամ այն դեսպանության, որ Պարսից Ուզուն Հասան թագավորը ուղարկեց Վենետիկ և Հռոմ, դաշնակցելու նրանց հետ և նրանց օգնությամբ նվաճելու Օսմանցոց (1469—70 թ)։ Հռոմից վերադարձել էր և արդեն գտնվում էր Կաֆայում, 1474 թ.—Ալիշան, Հայ-Վենետ. 187—9, որ համարում է Միրաք Թաւրիզեցին (գրում է Mirat, մինչդեռ իտալական աղբյուրն է Mòrat)։ Ուղեգրութ. Ա. 156, 159, 215 (գրված է Marach)։

— 18. Մուրատ, որդի Եղիազարի և եղբայր Գրիգոր կրո-

նավորի, որ Արծկէում, Ղազար քահանային գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1475 թ., երբ Մուրատը արդեն մեռած էր.—Ձեռ. Մաղն. 36։

— 19. Մուրադ, հայր Յովան երեցի, որ Ծովքի Ս. Նշան վանքում օրինակեց Գանձարանը 1478 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1874։

— 20. Մուրատ ոմն, որի անունը հիշատակված է Թումայի և Մանուշակ պիքէի հետ՝ Թէոդոսիայում մի խաչքարի վրա, 1478 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 350։

— 21. Մուրադ խօճայ, հօրեղբայր խոջա Յովսէփի, որ Տարօնի իշխանն էր և Մուշում գրել տվեց մի Աւետարան, 1479 թ։ Սրանից առաջ այլազգիները խոջա Մուրադին հրով այրել էին «որպէս զառաջին մարտիրոսքն»։—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

— 22. Մուրադ, մերձավոր Սարգիս քահանայի, որ գրել տվեց Ցայսմաւուրքը՝ Բաղէշում, 1484 թ.—Rapport Belgique 39։

— 23. Մուրատ Վանեցի, հայրը տաճկացած լինելով իրեն էլ հրավիրեցին տաճկանալ և մերժելու պատճառով չարաչար տանջանքով նահատակեցին «1485 թ».—Նոր վկ. 320—321 > Ազգապ. 2214։

— 24. Մուրադ, որդի Յովհաննէսի, մայրն է Բէկիջան, պապն է Հապաւ, տատն է Մարիամ, եղբայրն է վաղամեռիկն Մարտիրոս, քույրն է Գուլ (որ և Գուլում)։ Երևի իր կինն է «հոգևոր մայրն Զարմանդուխտ» (№ 7), որ Արճէշում, Ծիրանաւոր Ս. Աստուածածին վանքում գրել է տվել Ստեփաննոս գրչին մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 498—500։

— 25. Մուրատ, մի եղբորորդի և մի համանուն քեռորդի Ղարիպշահի (№ 4), որ տես առանձին, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 499—502։

— 26. Մուրատ, քեռայր Զաքարայ աբեղայի, որ Երզնկայում գնեց մի Շարակնոց Յակոբ քահանայից՝ միջնորդությամբ սույն Մուրատի, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 27. Հոջա Մուրադ, ստացող. Յակոբ գրչին գրել տվեց մի Ցայսմաւուրք, Ս. Սարգիս եկեղեցու համար, 1488 թ.—Manus. bibl. nat. էջ 102։

— 28. Մուրադ, որդի Աստուածատուրի և հօրեղբօրորդի Դովլաթխաթունի, որ Աղթամարում օրինակել տվեց Աւետարանը Հայրապետ աբեղային, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12։

— 29. Մուրատ, եղբայր Ստեփաննոսի և հորեղբայր տանուտեր Արապշահի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1490 Թ.—Ջեռ. Վասպ. 511։

— 30. Մուրադ, եղբորորդի խոջա Ջաւղի, որ գրել տվեց մի Ավետարան 1490 Թ.—Ջեռ. Վասպ. 515։

— 31. Մուրադ, որդի Աստուածատուրի և հորեղբորորդի Վարդանի, որ Շատախում, Խարայել գրչին գրել տվեց մի Ավետարան, 1491 Թ.—Ջեռ. Վասպ. 517։

— 32. Մուրադ, որդի Խուդադադի, որ Խիզանի Որճոկ գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1497 Թ.—Տաշեան, Ցուց. էջ 285։

— 33. Մուրադ, քեռորդի Ասոմի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Ավետարան 1498 Թ.—Ջեռ. Վասպ. 526, 528։

— 34. Մուրատ Խիկար, տաղասաց ԺԶ դարու. իր երգն է «Մարտն կուգայր ծաղկըներով». իր տաղերից տես Կոստանեան, Նոր ժողովածոյ, Բ. 7, Գ. էջ դ։—Ցուցիկք Ա. 186, Բ. 125։

— 35. Մուրատ, կոչված Մահտեսի Մուրատ կամ խոջա Մուրատ, Բաղիշեցի վաճառական և հասարակական գործիչ, ԺԷ դարի երկրորդ կիսում. արևմտահայոց ազատագրման համար որպես պատվիրակ աշխատել է Եվրոպայում։ Մանրամասնությունների համար տեսնել՝ Շահմուրատ: [Այս հատվածը գրեց Ց. Անասեան]։

— 36. Մուրատ տաղասաց, 1699 Թ.—տես Նշշ. էջ 41 ծան։

— 37. Մուրատ, Հալեպցի հայ վաճառական, որ 17-րդ դարում շատ երկար տարիներ ապրել է հաբեշական արքունիքում, նեգուսներին ծառայելով ոչ միայն կայսերական վաճառականի պաշտոնով, այլ և նրանց կողմից դիվանագիտական բանակցություններ վարելով մոնղոլական և հնդկական արքունիքներում։ Իր եղբորորդին, որ նմանապես Մուրատ էր կոչվում, նույնպես դիվանագիտական պաշտոններ է վարել Եթովպիայի կողմից, ֆրանսիական արքունիքին դեսպան գնալով նույն դարի վերջերին և հաջորդի սկիզբներին։ Տես՝ Արշակ Ալպօյաճյանի «Հայ եպիսկոպոսի մը առաքելութիւնը ի Հապէշիստան ԺԷ դարում», Կահիրէ, 1946, էջ 91—93։ [Այս հատվածը գրեց Ց. Անասեան]։

*ՄՈՒՐԱԴԲԱՇԽ, ար. < պարս. مراد murād «փափագ»+պրս. بخش baxš «պարգև» բառից։ Կարելի է թարգմանել երկու ձևով.

«Նա որի փափագը պարգևված է, 2. Մուրադի պարգևածը»։ Հիշատակված է ԺԴ—ԺԷ դարերում։

— 1. Մուրատբախշ, որդի Արղուլմսեխի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460—1)։

— 2. Մուրատբաղշ, որդի խոջա Ղուբաթի, որ Արաշ գյուղաքաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

— Մուրատբաշխ հիշված է նաև 1585 թ. (Ձեռ. Վասպ. 650), 1676 թ. (Սմբատեանց, Երնջակ 234), անթվական (Ձեռ. Էջմ. Գև. № 127) և այլ ոճ «Էջմիածին», 1944, № 4—5, էջ 43 բ։

*ՄՈՒՐԱԴԽԱՆ, ար. < արաբ. Մուրադ անունից+պրս. xān. օր. Մուրատխան-Սուլթան՝ իշխան Նախիջևանի 1668 թ. մեր մեջ հիշատակված է ԺԷ—ԺԹ դարերում. այսպես 1655թ. (Ձեռ. Վասպ. 553), 1656 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 85), 1663 թ. (Ձեռ. Վասպ. 922), 1701 թ. Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 32 բ), 1704 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 14 ա), 1742 թ. (Ձեռ. Վասպ. 566)։

— Մուրատխան Վանեցի, պատմիչ. գրել է Վասպուրականի դեպքերի պատմությունը կամ տարեգրությունը՝ սկսած Վարագայ խաչի երևումից մինչև ԺԹ դարի սկիզբը։—Հայապ. 137։

*ՄՈՒՐԱԴՂՈՒԼԻ, ար. < անշուշտ Սուլթան Մուրադի անունից+թրք. قول qulə «ծառան կամ ստրուկը»։ Հիշված կա մի անգամ 1666 թ. (Ձեռ. Վասպ. 928) և մի անգամ էլ անթվական մի հիշատակարանում Ձեռ. Նոր-Բայազ. 31 բ։

*ՄՈՒՐԱԴՄԵԼԻՔ, իգ. նախորդ Մուրադ անունից+մելիք (կամ մեյէf)։ Մի անգամ հիշատակված է 1651 թ. (Տաշեան, Ցուց. 363 ա)։

*ՄՈՒՐԱԴՇԱՀ, ար. < նույն Մուրադ անունից+պրս. شاه šāh «թագավոր»)։ Հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։ Սրա հակադիրն է Շահմուրատ:

— 1. Մուրատշահ Արծկեցի, քաղաքի հարգված անձերից մեկն էր. Ջենոն անուն մի չարագործ հայ մատնեց նրան քաղաքապետին, որ բանտարկեց նրան և ապա գլխեկից ցած գցելով նահատակեց 1420 թ.—Մեծոփ. 110 > Նոր վկ. 230, իսկ Ջամչ. Գ. 441 հիշում է Վաղին անունով (ցանկի մեջ նաև Մուրատշահ)։

— 2. Մուրատշա (*հոդով Մուրատշէն*), *կինն է Գուլբահար. մի արտ է նվիրել եկեղեցուն 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։*

— 3. Մուրատշայ (*սեռ. դարձել է* ՄուրաՉին), *որդի Մկրտիչի և թոռն տանուտեր Յովհաննէսի, որ Խլաթում գրել տվեց Ավետարանը 1443 թ. երբ արդեն մեռած էր Մուրատշահը.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։*

— 4. Մուրատշա, *փեսա Գողթան առաջնորդ Ստեփաննոս արքեպիսկոպոսի, որ գրել տվեց մի մեծ Տոնական, Ագուլիս 1447 թ. այս Մուրատշահն էլ ձեռագրի գրության համար բերեց «գկոկիչն և գլնձուքը»։—Ձեռ. Թավր. 121 բ։*

— 5. Մուրաթշա, *եղբայր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1113։*

— 6. Մուրատշա (*հոդով գրված է սխալմամբ* Մուրատշենն), *որդի Ասլանի և եղբայր Շիրազխաթունի, որ նորոգել տվեց մի հին Ավետարան, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։*

— 7. Մուրատշայ, *որդի Մկրտիչի և եղբայր հանգուցյալ ըռէս տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում գրել տվեց մի Ավետարան 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։*

— 8. Մուրատշայ, *ոսկերիչ, ազգական Դովլաթխաթունի, որ Աղթամարում օրինակել տվեց Ավետարանը Հայրապետ աբեղային, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12։*

— *Ավելի ուշ հիշատակված են* Մուրատշենն *1585 թ. (Ձեռ. Վասպ. 650),* Մուրատշա՝ *հայր Յովհաննէս Խուլ պատրիարքի (ԺԶ դար), անթվական* Մուրատշա *(Ձեռ. Թավր. 42 բ, 74 ա)։ Այս անվան տարբեր գրչությունն է* Մուրատճա՝ *ԺԸ դար (Տաշեան, Ցուց. 710), ինչպես և Մուրատճա* d'Ohsson *հայազգի թարգման թագավորին Շվեդաց և պատմիչ՝ ԺԹ դարի սկիզբը (Սիսական 475 բ)։*

**ՄՈՒՐԱԴՋԱՆ, ար. <* *նախորդ* Մուրադ *անունից*+ջան *փաղաքշականով։ Հիշատակված կան* Մուրատջան *1585 թ. (Ձեռ. Վասպ. 702),* Մուրատճան *1685 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 30 ա), 1723 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 220)։*

**ՄՈՒՐԱԴՓԱՇԱ, սեռն անհայտ. < նախորդ* Մուրադ *անունից*+փաշա *պատվանունով։ Հիշատակված է մի անգամ անթվական մի արձանագրության մեջ՝*

— Մուրադփաշա, *նվիրատու Թանատի վանքի (Սիսական, էջ 123)։*

*ՄՈՒՐԱՍԱ, իգ. < արաբ. مرصع muraṣṣaʿ «ականակուռ, ադամանդազարդ» բառից։ Հիշատակված է 1654 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 725), 1689 թ. (Bodleian 164), ԺԷ դար (Էջմ. Գև. № 613 ձեռագրում), 1692 թ. (Հրար. Ազաթ. 1909, յոջ. էջ 8զ), և մի անգամ էլ Միրասա ձևով՝ 1662 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 653), իսկ մի անգամ էլ Մերսայ ձևով՝ 1664 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 101 ա)։

† ՄՈՒՐԻԿ, ար. < հյ. մուրիկ «մուրացիկ» բառից։ Կարելի էր կարծել թե նույն է Մօրիկ անվան հետ (որ տես վարը), բայց որովհետև Մուրիկ գտնում է սեռ. Մուրկան, իսկ Մօրիկ գտնում է սեռ. Մօրկայ, ուստի երկուսը տարբեր են։ (Սեբէոսը գործածում է Մօրիկ կայսեր անվան սեռականը 13 անգամ և միշտ Մաւրկայ ձևով. այսպես էջ 21, 24, 31, 71, 72 (երկիցս), 73, 77, 78, 80, 81 (երկիցս) և 91. չհաշված գլխակարգությունները)։ Այս տարբերությունը բնականաբար առաջացել էր այն պատճառով, որ Մուրիկ բառի մեջ տեսնում էին հյ. -իկ մասնիկը, իսկ Մօրիկ բառի մեջ իբրև հունարեն օտար բառ՝ չէին տեսնում այդպիսի մի մասնիկ։

— 1. Մուրիկ սարկավագապետ Մեծն Ներսէսի, որ գահակալեց «353—373 թ».—Բուզ. Դ. Ժե։

— 2. Մուրիկ (սեռ. Մուրկան), հիշված է Երուսաղէմի Ջիթենեաց լեռան մոզայիկ արձանագրության մեջ, որի թվականը թեև հայտնի չէ, բայց շատ հին է։—Արշալ. 1876, էջ 195, Տ. վ. Գալեան՝ Սուրբ երկիր, էջ 300—3, որից Տաշեան՝ Ակնարկ, էջ 137։

ՄՈՒՐՈՒՄ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԸ դարում՝ Մուրում՝ քալանթար Լևաղի, քաջությամբ կռվեց և նահատակվեց Մեղրիում, թուրքերի դեմ պատերազմում (Սիսական, 304 ա)։

ՄՈՒՐՍ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1628 թ. (Երեմեան, Նոր-Ջուղայի յուշարձ. էջ 10 ա)։

*ՄՈՒՔԱՇ, ար. < պրս. موکش mūkaš «մազ քաշելու գործիք, մազխիլ» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 31 բ)։

*ՄՈՒՔԻ, ար. փաղաքշականն է Միքայէլ անվան (Մուքայէլ ձևից)։ Հիշված է միայն 1581 թ.՝ Ձեռ. Վասպ. 693—4, երկու անգամ սեռ. Մուքուն ձևով և մի անգամ էլ հյց. զՄուքունն ձևով։

† ՄՈԽՈՍ, ար. < հյ. ժղ. մոխս «մեծ, խոշոր» բառից։ Հիշատակված է 1571 թ. (Տաշեան, Ցուց. 1005), 1581 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 316), 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 334), 1753 թ. (Բակուրան, Կիպրոս կղ. 93)։

† ՄՌԱՒ, ար. < Ղարաբաղի Մռաւ սարի անունից, որ հյ. մառ «մթություն, մշուշ» բառից է և նշանակում է «մշուշոտ, մշուշապատ»։ Իբրև անձնանուն մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (Արցախ 40)։ Սրանից է նաև Մռաւեանն ազգանունը (Գանձակ)։

ՄՌԱՒՋՈՒՂ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշատակված եմ գտնում մի անգամ 1554 թ. (Գանձակի Շատախ գյուղում), Manus. brit. mus. 193 ա։

*ՄՍԵՀ, ար. կրճատված է Աբդլմսեհ անունից, որ տես առանձին (հմմտ. նաև Մասեհ)։ Աբդլմսեհ գործածված է Ե դարից մինչև ԺԵ դար։ Կրճատ Մսեհ ձևը, որ հավասարված է արաբ. مسیح Masīḥ «Մեսիա, Յիսուս» բառին, այս մաքուր ձևի տակ հիշատակված է՝

— 1. Մսեհ, մականունը Ղուզիկ, որի կինը՝ Թաւրէզ (№ 3) Պարսամ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 525—6 (գրված մի անգամ Մսեհ, երկու անգամ Մսեխ)։—Սրա հետ նույն են՝

— 2. Մեխսի, հորեղբայր Լևոնոս իշխանի, որ տես, 1258 թ։

— 3. Մսիհի, հիշված ԺԷ դար.—Ձեռ. Հալէպի, Ա. 133 բ (=արաբ. مسیحی mesīḥī «քրիստոնյա»)։

— 4. Մուսեխ, եղբայր Յակոբ աբեղայի, հայր Հերմոնի վանաց, մեռած էր 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ)։

— 5. Մուսեխ, ամուսին Դիլշատի՝ քրոջ Էվաչայի, որ Տրապիզոնում գնեց մի հին Աւետարան, 1425 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 485։

— 6. Մուսեհ խոջա, մեծ պապ Խաչատուր քահանայի, որի որդին՝ Դաւիթ քահանա գրեց մի Աւետարան, Արճէշ 1455 թ.—Նոտարք 177։

— 7. Մուսեհ, որդի Ջանիբէկի. մայրն է Սալչուկ խաթուն, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Բ. 337 (նույնը Ա 232 գրված է Մուսէհ)։

— 8. Նույն անունը գործածված է նաև իգական, սեռ. Մսխին ձևով, որ է կին Առաքելի և մայր Իսրայէլի, որի կինը՝ Թուրվանգա խաթուն գրել տվեց մի Աւետարան 1448 թ.—Ձեռ.

Վասպ. 402 (քիչ հետո գրված Մլախին ? որ տես վերը Մլեն № 10)։

— 8. Նույն են դարձյալ Մսեղ, Բաշ Մսեղ, հիշված 1633 թ.՝ Ձեռ. Վասպ. 882—3 (ոչ թե հյ. մսեղ «մսոտ» բառից) և Մոսեխ 1694 թ. (Bodleian 4)։

**ՄՍԵՐ**, ար. գործածվել է իբր առանձին անուն, որից էլ Մսերեան ազգանունը։ Այսպես հայտնի է «Մսեր մագիստրոս Մսերեան»։ Ծագումը ինձ հայտնի չէ. թերևս Մսր անվան մի այլ գրչությունն է. տես հաջորդը։

***ՄՍՐ**, ար. < արաբ. مصر Mişr (թրք. Məsər) «Եգիպտոս» երկրանունից։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում, զանազան գրչությամբ և ձևով։ Այսպես՝ Մըսր 1653 թ. (Ձեռ. Թաւր. 45 բ), Մըսըր՝ 1643 թ. (ՀԱ 1937, 575), Մսիր՝ 1643 թ. (Ձեռ. Բուլգ.= ՀԱ 1937, 575—6), Մսիր՝ ԺԶ դար (Ձեռ. Սանաս. 7 բ), Միսիր՝ 1652 թ. (Տաշեան, Ցուց. 442), 1666 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 8 ա)։ Հմմտ. նաև հաջորդները։

***ՄՍՐԻ**, իգ. < արաբ. مصری mişrī «եգիպտական, եգիպտացի» բառից. հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Մեսրի, դուստր խոջա Ջաւզի, որ գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Անջողաց Ս. Աստուածածնին, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 515։

— 2. Մեսերին (սեռական է), մայր Նուշիկի՝ կնոջ Աղազար Տոռոթեցու, որոնց անունով մի խաչքար է կանգնեցրած Երնջակի Տոռոթ գյուղում, 1493 թ.—Սմսակյան 356։

— Ավելի ուշ ժամանակից են Մսրի խաթուն 1504 թ. (Ձեռ. Վասպ. 168), Մսրի 1538 թ. (Ձեռ. Վեննա. Բ. 536), 1557 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 529), 1641? (Ձեռ. Հալէպի, Ա. 174 բ), անթվական (Ձեռ. Վասպ. 144)։

***ՄՍՐԻԿ**, ար. Մսր անվան փաղաքշականն է։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1508 թ. (Ձեռ. Վասպ. 634)։

***ՄՍՐԽԱԹՈՒՆ**, իգ. < արաբ. مصر Mişr «Եգիպտոս»+խաթուն բառերից, իբր թե «եգիպտական տիկին» կամ «Եգիպտոսի տիկին»։ Հիշատակված է ԺԵ դարում։

—1. Մըսրխաթուն, կին Խուտի աղայի՝ ազգականի Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց Աւետարանը, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

— Մսրխաթուն հիշված է նաև անթվական մի հիշատա-

կարանում, որ սակայն գրված է 1311 թվից ուշ.—Ձեռ. Թաւր. էջ 74։

*ՄՍՐԽԱՆ, ար. < արաբ. مصر Miṣr «Եգիպտոս»+պրս. خان xān «իշխան» բառերից, իբր «Եգիպտոսի իշխան». հմմտ. Խրիմշահ, Խրիմբէկ, Մսրշահ անունները։ Հիշատակված է ԺԷ դարից։ Այսպես՝ Մսրխան՝ Զքր. սարկ. Բ. 131 և Միսրխան 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 14 բ)։ Սրանից է Մսրխանեան ազգանունը։

*ՄՍՐՄԵԼԷՔ կամ ՄՍՐՄԵԼԻՔ, կամ երկու ձևով էլ, որոնցից Մսրմելիք թվի ար. (իբր արաբ. مصر Miṣr «Եգիպտոս»+ مليك melīk «թագավոր» բառերից), իսկ Մսրմելէք իգ. (իբր Miṣr+ ملك melek «հրեշտակ» կամ նաև مليكه melīke «թագուհի» բառից)։ Հիշատակված են ԺԴ—ԺԶ դարերում։

— 1. Մըսրմելէք, զավակ (սեռն անհայտ) Եղդանբախշի, †1327 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 461։

— 2. Մըսր մելիք, կին խոջա մահդասի Ամիրմուլքի և մայր խոջա Աստուածատուրի, որ ազատեց Նարեկը թուրքմանի գերությունից և նվիրեց Վարագի վանքին, 1425 թ.—Ձեռ. Դաշտեան, Ա. 55 ա։

— 3. Մսրիմելիք, մորաքույր Ստեփաննոսի, որ Տրապիզոնում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1437 թ.— Труды вост. комм. ИМАО, հտ. II, 3, էջ 55։

— 4. Մըսրմելիք, դուստր Ծերունի և քույր Սուլթանմէլէքի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 413։

— 5. Մըսրմելիք, դուստր Հազարբէկի և քույր Կիրակոս Սարփեցու, որ գնի միջնորդ եղավ տանուտեր Էդիլշահի և Յովհաննէս գրչի միջև, Արծկէ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 6. Մսրամելիք, կին Լիպանոսի, որ գրել տվեց մի Աւետարան, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։

— Հիշված է նաև Մսրիմելիք, ար. 1512 թ.—Ձեռ. Վասպ. էջ 85։

*ՄՍՐՇԱՀ, ար. < արաբ. مصر Miṣr «Եգիպտոս»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից, իբր «թագավոր Եգիպտոսի»։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում։ Այսպես՝ Մըսիրշայ՝ 1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա), Մսըրշայ՝ 1644 թ. (Rapport Belgique 117), Messerchach (այսպես գրված լատինական տառադարձությամբ, որ կարող է լինել Մեսերշահ կամ մանավանդ Մըսըրշախ)՝ 1661 թ. (Սիւրմէեան, La vie et la cult. 33), սեռ. Մսըր-

շին՝ անթվական (Ձեռ. Հալէպի, Ա. 275 ա), որոնցից ավելի կարևոր է հիշել՝

— Մարշաh, իշխան Կիլիկիոյ «1585 թ».—Ձեռ. Վեհնետ. Բ. 1205, Ազգապ. 2281։

*ՄՍՐՋԱՆ, ար. նախորդ Մսր անունից+ջան փաղաքշականով։ Հիշատակված է մի անգամ Մսըրջան՝ 1621 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1866)։

†ՄՐԳԻԿ, ար. < հյ. մրգիկ բառից, որ միրգ «պտուղ» բառի փաղաքշականն է։

— Մրգիկ, Թուրքացավ Մուշում, ապա Մհլքիսեդ կաթողիկոսից («1593—1626 թ») եպիսկոպոս ձեռնադրվեց և էջմիածնում աթոռակալ կարգվեց.—Թորոս աղբ. Բ. 281, Ազգապ. 2352։

Մրդատ տես Տրդատ։

ՄՐԶԱՍ, ար. < թվի պրս. میرزا mīrzā < հյ. Միրզա անունից՝ հայերեն ս ստացական հոդով. իբր Մրզաս «իմ միրզան»։ Հիշատակված է մի անգամ 1603 թ. (Матер. Арх. Кавк. III 99--100)։

*ՄՐՀԱՊԵՏ, ար. < իրան. *Miϑra-pati ենթադրյալ ձևից, որ պիտի նշանակեր Միհրի մեհյանի պետը։ Չկա նման անուն Justi-ի մոտ։ Հայերենի մեջ մի անգամ գտնում եմ հիշատակված Արցախի Տող գյուղում մի անթվական հին խաչքարի վրա (Արցախ 84)։

*ՄՐՀԱՒԱՆ, ար. < պրս. Mihrabān ձևից, որ տես Մեհևան։

— Մրհաւան, թագավոր Աղուանից, հաջորդեց Վաչագան Բ-ին (Դ դար).—Կղկնտ. Ա. ժե.—Նույնը Շահնազ., ինչպես և Մխ. այրիվ. 23 կոչում են Միրհաւան, իսկ Կիր. ը Մերհաւան։

*ՄՐՈՒԱԹ. իգ. < արաբ. مروت muruvvat «գութ, մարդասիրություն» բառից։ Հիշատակված է ԺԵ դարից սկսած և անցյալ դարում գործածական էր դեռ Ղարաբաղում՝ Միրվաք ձևով։ Գրված է նաև Մրվաթ, Մրւաթ, Մըրվաթ, Մըրւաթ, քիչ անգամ Միրւաթ կամ Մուրվաթ (Ձեռ. Նոր-Բայազ. 21 բ, Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 317), Մուրութ (բայց ար! 1645 թ. Bodleian 18), Մրուրաթ (Ձեռ. Դաղեան, Բ. 34 բ), Մրմաթ (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 566), Մրմւաթ (Ձեռ. Նոր-Բայազ. 15 բ), Մարրուաթ (Ձեռ. Վասպ. 633)։ Հիշատակությանց մեջ չեմ գտնում ԺԶ—ԺԸ դարերը։

— 1. Մրվաք, կարծեմ քույր լուսաւոր (=կոյր) Ատոմ քա-

հանայի, որ նվեր էր ստացել Աղթամարում գրված մի Ավետարան, 1418 թ.—Ձեռ. Վասպ. 313։

— 2. Մրուար, կին տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում ստացավ մի Ավետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369։

— 3. Մրուար, կին Առաքելի և մայր խոջա Խաչատուրի, որ Արճեշում գրել տվեց մի Ավետարան 1462 թ.—Ձեռ. Վասպ. էջ 438։

— 4. Մրուք, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց» 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 5. Մրուառ, կին Սահակի՝ որդւոյ Խոսրովի (№ 33), որ Բռնաշէն գյուղում գրել տվեց մի Ավետարան 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։

— 6. Մըրվար, կին Թուֆկանց Աստուածատուրի, որ Ոստանում ազատեց գերի ընկած մի Ավետարան 1487 թ?—Ձեռ. Վասպ. 115։

— 7. Մրուար, մերձավոր Առոմի, որի կինը՝ Հաբիբ (№ 4) մի Ավետարան գրել տվեց 1498 թ.—Ձեռ. Վասպ. 527։

*ՄՐՈՒԱՆ, ար. < արաբ. مروان Marvān անունից. այս անունով կա երկու խալիֆա՝ Մրվան-իբն-էլ-Հաքէմ 684—5 թ. և Մրվան-էլ-Հիմար 744—50 թ։ Հիշատակված է մեր մեջ ԺԳ դարում։

— 1. Մրուան, նվիրատու Բագնայրի վանքին, 1210 թ.—Արձ. Շիրակ 117։

— 2. Մրվան, դարբին, Նիկոպոլսի Խաւմ քաղաքում, գրիչ Գևորգս քահանայի տան սարուծիկն էր շինել, «և այլ զինչ և տանս պէտք էր, անտրտում աշխատէր և ոչ յապաղէր, այլ սըրտով, խորհրդով գործէր, և փափաքանաւք ցանկայր յիշել զանուն նորա ի սուրբ յաւետարանս», 1223 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 423 > Վ. Աբրահամյան, Արհեստները, Երևան 1946, էջ 42։

— 3. Մրուան հիշված է նաև 1373 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Թորոս աղբ. Բ. 326, Ճանիկեան, Հնութ. Ակնայ 99։

— Մրուան անունը հիշատակված է նաև Անիի ՆԽԴ=995 թվի մի արձանագրության մեջ (Շիրակ 52=53), բայց այնպես, որ մեկ դառնում է անձնանուն, մեկ էլ փողոցի կամ խանութի անուն։

†ՄՐՋԻՒՆԻԿ, ար. < հյ. մրջիւն բառի նվազականից։

— 1. Մրջիւնիկ, դրան երեց Արշակ Բ թագավորի. Տարօնի

Գոմկունք գյուղից էր. հաղորդության մեջ թույն խառնելով սպանեց Ողոմպիադա թագուհուն՝ Փառանձեմի թելադրանքով «360 թ».—Բուզ. Դ. ժե.—որ և Մրջմնիկ՝ Մեսր. եր. 51, Յայսմ. նոյ. 19.—սեռ. Մրջմնիկայ՝ Սմբ. պատմ. 41։

— 2. Մրջունիկ վարդապետ, աղանդավոր, ուսուցիչ Սմբատ Թոնդրակեցու (Ը/Թ դար).—Հայապ. 550։

— 3. Մրջմնիկ ի Ծարատնեաց, իբրև վկա հիշվում է Տաթևի կալվածագրում 881 թ.—Օրբ. լթ։

† **ՄՕՐԵՀԱՄ**, ար. < հյ. մայր, մօր+համ բառերից, իբր թե «մօր համը տվող, մօրը նման, մայրնմանակ»։ Մի անգամ գտնում ենք հիշատակված ԺԴ դարում։

— Մաւրեւհամ (սեռ. Մաւրեւհամայ ձևով), որի որդին է Հռովմ երեց, որ Ուշիի Ս. Սարգիս վանքին մի այգի է նվիրել 1329 թ.—Արձ. Այրարատ 181։

***ՄՕՐԻԿ**, ար. < հուն. Μαυρίκιος անունից, որից փոխառյալ են նաև լտ. Mauricius, Mauritius, ֆրանս. Maurice անունները։ Հունարենն էլ ծագում է μαῦρος «սև» բառից և նշանակում է բուն «Սևակ»։ Տես նաև Մուրիկ, որ սրանից տարբեր է։

— 1. Մաւրիկիոս, գլխավորներից մին է այն 45 հայ նահատակների, որոնք քրիստոնեության համար նահատակվեցին Փոքր-Հայոց Նիկոպոլիս (=Շաբին-Կարահիսար) քաղաքում, իբր 319 թ.—Աւգերեան, Լիակ. վրք. սրբոց, Դ. 106—133։

— 2. Մօրիկ, հայազգի կայսր հունաց «582—601 թ». համարում են Կապադովկիայի Արաբիսոս (այժմ Եարփուզ) քաղաքից. ուրիշներ Օշականից (Զքր. սարկ. Բ. 15, Այրարատ 191)։ «Սա Օշկնեցի և հայ ազգաւ» (Մին. համդ. 99)։ Կառավարիչ էր Յունահայոց 578 թ. (Այրարատ 561)։ Հունական բանակի գլուխն անցած՝ արշավեց Պարսից վրա. առավ Դուինը. մտավ Մարաստան և հետզհետե հաղթելով Պարսից Վահրամ-Պահլաւ և Տամ-Խոսրով նշանավոր զորավարներին, մեծ փառքով դարձավ Պոլիս։ Այստեղ փեսայացավ Տիբեր կայսեր և նրա տարաժամ մահից հետո կայսր հռչակվեց։ Իր ժամանակ խաղաղությունը տիրեց երկրում, այնպես որ մինչև անգամ հայոց մեջ առած կար թե «Իբրև ի ժամանակս Մօրկայ նստեալ ես յանհոգս»։ Ընդարձակ կենսագրությունը տես Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 25—125 և 261—314։ Տես նաև Զամչ. Բ. 293 են։ Սպանվեց Փոկասի ձեռքով։ Մեզ համար անմոռանալի են այն չարայուշ

տողերը, որ ավանդել է Սեբ. ժգ. «Ննենգաւոր խորհուրդ Մաւրկայ՝ Թափուր յիշխանաց Հայոց կացուցանել զՀայս։ Յայնմ ժամանակի Թագաւորն յունաց Մօրիկ հրամայէ գրել առ Թագաւորն Պարսից գիր ամբաստան վասն իշխանացն ամենայն Հայաստանեաց և զօրաց իւրեանց։ «Ազգ մի խոտոր և անհնազանդ են, ասէ, կան ի միջի մերում և պղտորեն։ Բայց եկ, ասէ, ես զիմս ժողովեմ և ի Թրակէ գումարեմ. և դու զքոյդ ժողովէ և հրամայէ յԱրեւելս տանել։ Զի եթէ մեռանին՝ թշնամիք մեռանին. և եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն. և մեք կեցցուք խաղաղութեամբ։ Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին, մեզ հանգչել ոչ լինի»։—Մօրիկի գերդաստանը.—հայրն էր Պօղոս, մայրը՝ Յովհաննա, մօրեղբայրը՝ Անելփիոս, եպիսկոպոսն էր Արաբիսոսի, իսկ մօրաքոյրը՝ մայրապետների գլխաւորը։ Մօրիկը ունէր միայն մի եղբայր՝ Պետրոս, որ զօրավար էր Ավարների դէմ, սպանվեց Փոկասից։ Մօրիկի քույրերն են՝ Գորդիա, Թէոկտիստա, Դամիանա։ Զորրորդ քույրը հայտնագործվեց յունարէն մի նոր արձանագրութեամբ, որ գտնվեց 1925 թվին, Երուսաղէմի Դոմինիկեանց վանքի մօտ։ «Աստ հանգչի Անաստոլիա, քոյր Մօրիկի. ծննդեամբ Արաբիսոսացի, որ բարուք պատերազմ պատերազմեալ նուիրեցաւ Աստուծոյ և հանգեաւ յամսեանն հոկտեմբերի ԻԱ ընդիկտիոնի Գ»։ (Այս մասին տես Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 393)։—Մօրիկը ամուսնացել էր Կոստանդինա իշխանուհու հետ, որից ունեցավ 6 որդի (Փլաւիոս Թէոդոս, Տիբեր, Պետրոս, Պաւղոս, Յուստինոս, Յուստինիանոս) և 5 դուստր (Անաստասիա, Թէոկտիստէ, Կլէոպատրա, Սոպատրա և Մարիամ, որ ամուսնացել էր Պարսից Խոսրով Թագավորի հետ).—Տէր Սահակեան, Հայ կայսերք Ա. 305։—Սմբատեանց՝ Գեղարքունիք 254 ասում է թե «այսօր ես կայ Օշականում Մօրիկեան ազգատոհմ»։

## Յ

*ՅԱԲԵԹ, ար. < եբր. יפת Yāfet անվան հում. ’Ιάφεθ տառադարձութիւնից. (միայն հայտնի չէ թե ինչու հյ. դրված է բ փոխանակ փ < յն. φ)։ Ըստ Ս. Գրքի ստուգաբանվում է פתה fth «ընդարձակել» արմատից. հմմտ. Ծն. Թ. 27 «Ընդարձակեսցէ Աստուած Յաբեթի և բնակեսցէ ի տան Սեմայ»։ Իսկ հները ստուգաբանում էին «գեղեցկութիւն». հմմտ. Տաթև. հարց. 299

«Յաբեթ՝ գեղեցկութիւն». Թերևս կապում էին եբր. יפעה ifʻā կամ יפעתך ifʻātekā բառին, որ նշանակում է «գեղեցկություն»։ Այս անունով հայտնի է Նոյի կրտսեր որդին, որ համարվել է հայ ազգի նախնին. ըստ այսմ հայերը կոչված են Յաբեթեան, Յաբեթական տոհմ են։ Հնապես մեր մեջ իբրև անձնանուն չէ գործածված. բայց այժմ կա, և նրա փաղաքշականն է Աբեթիկ։ Յաբեթ նահապետի հիշատակություններից հիշենք՝ Խոր. Ա. ե—է, թ. Յհ. կթղ. յոչ. ա. Ուխտ. Ա. գ, է, ժդ. Մխ. անեց. բ, գ. Սամ. անեց. 10, 11. Մին. համգ. 2.—Յապետոսբէ՝ Խոր. Ա. գ, թ. Ուխտ. Ա. ժդ.—Յապիտոսքէ՝ Սամ. անեց. 11.—սեռ. Յաբեթայ՝ Խոր. Ա. ե. Ուխտ. Ա. ժդ. Մխ. անեց. բ.—Յաբեթի՝ Խոր. Ա. ե, ժբ. Յհ. կթղ. յոչ. ա. Ուխտ. Ա. գ, է, ժ, ժգ. Մխ. անեց. գ. Շնորհ. վիպ. 99. Լմբ. 93 (տուն Յաբեթի). Ողբ եդես. 77. Սամ. անեց. 11, 14, 15, 41. Տաթև. հարց. 297.—Աբեթայ՝ Գարականոն շար. 35.—Աբեդայ՝ Նղշ. լատ. 421 (տուն Աբեդայ «Հայք»).—Աբեթայն՝ Սեբ. էջ 5.—բց. ի Յաբեթայ՝ Ուխտ. Ա. է. Մխ. անեց. գ, գ.—ի Յաբեթէ՝ Յհ. կթղ. ա. Մին. համգ. 13.—Յաբեթեան՝ Յհ. կթղ. յոչ. Մխ. անեց. ժ. Մագ. թղ. խա. Վրդն. դան. Գ. էջ 250.—Աբեթեան (բնակիչ, բաժին, ազն)՝ Գիրք թղ. ձգ. Թղթ. դաշ. 22. Տաթև. ամ. 715.—Յապետոսքեան (ապ.-ութեան)՝ Խոր. Ա. թ.—Յաբեթական (տոհմ)՝ Գր. նար. մատ. 268, 387.—Աբեթածին (Հայկ)՝ Սեբ. էջ 2, Սիմ. ապար. 17, 19 (հայոց համար է ասում)։

*ՅԱԶԴ, ար. < իրան. Yazd անունից, որ կրճատ ձեն է Yazdegird, Yazdpanāh, Yazdegušnasp, Yazdāndād «Աստուածատուր» են անունների։ Նման փաղաքշական ձևեր են նաև Yazdīn (> Յազդեն սահմանակալ Հայոց), Yazdak, ասոր. Yazdāδ, Yazdōi անունները. բուն նշանակությունն է «աստուածային». հմմտ. զնդ. yazata «աստվածային էակ, ոգի», Huyazata (անուն), պհլ. yazatan, yazdān, պազ. yazdān «ոգի. 2. Աստուած», պրս. īzad «Աստուած», یزدان Yazdān «Աստուած», یزد Yazd «Եզդ քաղաք հրապարակից» (Հիւբշ. 55)։ Այս անվան նորագույն ձևերն են հայերենում Ազիտան, Ազդին, Եզդին, Եզդան, որոնք տես առանձին։

— 1. Յազդ Սիւնի. սեպուհ, որ Վահան Մամիկոնեանի կուսակիցներից էր. Վրաց պատերազմում գերի ընկավ Պարսից ձեռքը և հավատքը չուրանալով նահատակվեց Բագաւանում

«482 թ».—Փարպ. հզ, հզ. Վրդ. իթ. Օրբ. ժէ.—սեռ. Յազդայ՝ Փարպ. հզ. Օրբ. ժէ.—հյց. զԱզդ՝ Սիմ. ապար. 62 (երկիցս)։ Ըստ Օրբ. եղբայր «կայենատիպն» Գդիհոն Սիւնու։

— 2. Յազդ Ամատունի, հինգ եղբայրներով (Յազդ, Կոռւն, Վահան, Սավայ, Բուրթ), Գրիգոր Դերենիկ Գ-ի հրամանով կալանավորեցին Գագիկ Ապումրվան Արծրունուն և բանտարկեցին, երբ Ապումրվանը միացավ Միջագետքի Հալիպ ոստիկանին և վաճառեց Սմբատ Ա թագավորին, Սմբատի հրամանով նրանք սպանեցին Ապումրվանին «895 թ»։—Սուտ-Շապհ. գրում է Իզտ 70, 74, սեռ. Իազատայ 69. ուղիղ ձևը պիտի լինի Յազդ, սեռ. Յազդայ։ Նույն դեպքի մասին խոսում է նաև Արծր. Գ. իդ, բայց եղբայրների անունը դնում է Շապուհ, Սարայ, Վահան։

*ՅԱԶԿԵՐՏ, պր. < պհլ. Yazdkert, պրս. Yazdegird անունից, որ և տառադարձված է ասոր. [illegible] Izdegerd, արաբ. Yazdaǰird, հուն. Ἰσδιγέρδης, լտ. Isdegertes. բուն նշանակում է «աստուածակերտ». ծագումը տես Յազդ (Հիւբշ. 55)։ Հայտնի են Պարսից Սասանեան թագավորներից Յազկերտ Ա Զար (Շահն. հտ. 5, էջ 394), Յազկերտ Բ (Շահն. հտ. 6, էջ 65) և Յազկերտ Գ. որ 642 թվին հաղթվելով արաբներից, Պարսից Սասանեան պետության վերջ տրվեց։ Հայոց մեջ այս անունը չէ գործածված. ունինք միայն՝

— Յազկերտ, եղբայր Աղուանից Վաչէ Բ թագավորի և հայր Վաչագան Գ-ի (Զ դար).—սեռ. Յազկերտի՝ Կղկնտ. Ա. ժէ (հրատ. Էմինի՝ Յազակերտի)։

ՅԱԶՈՒՇ, անստույգ անուն. մի անգամ սեռ. Յհազուշին ձևով, 1650 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 33 ա)։

ՅԱԹԱՄԶՈՒՆ, ար. անստույգ անուն. հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Դաշեան, Բ. 31 բ) սեռ. Յեթամզունն (ցանկում Յեաթամղունն) ձևով. ինչպես է ուղղականը։

*ՅԱԿՈԲ, ար. < եբր. יעקב Ya'qob անվան հուն. Ἰακώβ տառադարձությունից։ Ուրիշ լեզուներով ունինք լտ. Jacob, գերմ. Jacob, ֆրանս. Jacob, Jacques, անգլ. Jacob, James, Jemmy, Jim, իտալ. Giacobbe, Giacomo, ռուս. Яков, Яша, արաբ. يعقوب Ya'qūb են։ Ստուգաբանվում է ըստ Ս. Գրքի «խաբող». հմմտ. Եւ ապա ել եղբայր նորա և ձեռն նորա ունէր զգարշապարէ Եսաւայ. և կոչեաց զանուն նորա Յակոբ (Ծն. իե. 25). Միթէ արդարև կոչեցաւ անուն նորա Յակոբ, զի այս երկիցս խաբեաց զիս (Ծն. իէ, 36)։ Ըստ այսմ արմատը տրվում է եբր. עקב 'qb

«գարշապար. 2. խաբել» (=ասուր. iḳbu, արամ. عقبا ʿeqbā, արաբ. عقب ʿaqab «կրունկ»)։ Մ. Գրքի կրկին ստուգաբանությունները (1. կրունկից բռնող. 2. խաբող) պետք չէ համարել իրար հակասական, որովհետև ըստ եբրայեցերենի խաբել նշանակում է «մեկի ետևից գնալ՝ կրունկը բռնել» (Gesenius 612), որի համար էլ եբր. ʿqb ունի նույն երկու նշանակությունները։ Նոր քննիչները այս անվան հետ համեմատում են եգիպտ. Jʿḳub—ʾe̥ra, Jʿḳb-hr, հբաբել. Ikibum, Jaḫkub-el, Jakub-el, Jakubum, Aḳabi-el անունները (Gesenius 308)։ Արաբ. يعقوب Yaʿqūb «Յակոբ» նշանակում է նաև «սարու կաքաւ» (ԳԴ 44 բ)։ Մեր հին մատենագրության մեջ մեկնված ունինք հետևյալ ձևով. «Յակովբայ, որ թարգմանի խաբող. զի և նա խաբելով խաբեաց զթշնամիս իւր (Ոսկ. ես. 309). Յակոբ կոչեցաւ, որ է թաթող» (Իրեն. 77)։—Այս անունով հայտնի են Յակոբ նահապետ եբրայեցոց, Յակոբ առաքյալ, Յակոբ հայրապետ Մծբնայ ևն։—Հայերենում գրվում է Յակոբ, Յակովբ, Յակոբոս, Յակովբոս, վերջին երկուսը հատկապես առաքյալի համար (Մտթ. Դ. 21), իբրև հուն. Ἰάκωβος, որից և լտ. Jacobus, ֆրանս. Jacques։ Կենդանի է մեր մատենագրության սկզբից մինչև այժմ։ Տաթև. ոսկեփ. 85 իբրև օրինակ անձնանվան հիշում է Յակոբոս ձևով. արդի ձևերն են Յակոբ, Ակոբ, Յակո, Ակուփ, Ակուփի, Ակու, փղքշ. Յակոբիկ։ Կան նաև Յակոբշահ, Յակոբջան, օտար ձևով Աղուբ, Եաղուբ, նաև Աղոբ (վերջինս 1613 թվից. տես Զեռ. Հալէպի, Ա. 69 ա), որոնցից ունինք Յակոբեան, Յակոբջանեան, Եաղուբեան ազգանունները։

— 1. Յակոբ եպիսկոպոս, 5-րդ առաջնորդ Ծուրտաւի, հաջորդեց Եղիային շուրջ 520 թ.—Ուխտ. Բ. խը. Գիրք թղ. ծա։

— 2. Յակոբ եպիսկոպոս, առաջնորդ Արտազի. հաջորդեց Վահանին (Զ դարի առաջին քառորդին).—Զքր. եպս. 281, Արրտ. 1898, դեկտ. էջ 103։

— 3. Յակոբ վանահայր Հակուի. Խոճկորիկ աղուան նախարարի հետ գնաց Ծուի և գտավ Զաքարիայի և Պանդալէոնի մասունքները, որ Գրիգորիս մանուկ կաթուղիկոսն էր բերել և թաղել (Վաչագան Գ թագավորի օրով, Զ դար)։—Կղկնտ. Ա. ժթ։

— 4. Յակոբ երեց. անդամ Աղուէնի ժողովի, Վաչագան Գ թագավորի օրով. թերևս նույն է նախորդի հետ.—Կղկնտ. Ա. իզ. Կանոն. 192։

— 5. Յակոբ թարգման, Պարսից Խոսրով թագավորի կող-

մից ուղարկվեց Հունաց կայսեր մոտ՝ հաշտություն խոսելու համար, 576 թ։—Չամչ. Բ. 289։

— 6. Յակոբ Ուռհայեցի, «արար զնոր թարգմանութիւնն 641 թ». այսպես ունի Մխ. այրիվ. 65.—հայտնի չէ ով է և ինչն է նոր թարգմանել։

— 7. Յակոբոս եպիսկոպոս Պալունեաց, անդամ Դուինի 5-րդ եկեղեցական ժողովի, որ գումարեց Ներսէս Գ Շինող կաթուղիկոսը «645 թ»։ —Կանոն. 130, Չամչ. Բ. 345, Տաշեան՝ Ցուց. 654։

— 8. Յակոբ ավագերեց Ոյծայ. իբրև վկա հիշվում է Տաթևի կալվածագրում 844 թ.—Օրբ. լը։

— 9. Յակոբ վանական Վառիոյ. իբրև վկա հիշվում է Տաթևի կալվածագրում 844 թ.—սեռ. Յակոբայ՝ Օրբ. լը։

— 10. Յակոբ հայր Մաթուսաղայի, որ էր ավագերեց Ույծայ և հիշվում է իբրև վկա Տաթևի կալվածագրում 844 թ.—սեռ. Յակոբայ՝ Օրբ. լը։—Նույն է № 8։

— 11. Յակոբ Ա. եպիսկոպոս Սիւնեաց «918—958 թ». Դունեցի էր, եղբորորդի Յովհաննէս պատմաբան կաթուղիկոսի («898—929 թ») և փակակալ կաթուղիկոսարանի. ընտրվեց Սիւնեաց եպիսկոպոս և ձեռնադրվեց Յովհաննէս կաթուղիկոսից՝ իբրև հաջորդ Յովհաննէս Ե-ի։ Զարդարեց Տաթևի վանքը պարտեզով և ծառաստանով։ Ֆռանկ մի նկարչի ձեռքով նկարել տվեց տաճարի պատերը «930 թ»։ Տաթև բերեց Վարարակի մեծ առուն (932 թ)։ Ապստամբվեց հայոց եկեղեցական իշխանության դեմ և հրաժարվելով Հայոց կաթուղիկոսի հպատակությունից՝ հպատակվեց Աղվանից կաթուղիկոսին։ Անանիա Մոկացի կաթուղիկոսը («946—968 թ») այս առթիվ գնաց Սիւնիք՝ կարգալույծ անելու նրան, բայց ներեց և իր աթոռում հաստատեց։ Երկրորդ անգամ էլ ապստամբվեց Յակոբը, Անանիան նորից գնաց Սիւնիք, բայց այս անգամ Յակոբը փախավ աթոռից և ապաստանեց Ջուանշիր իշխանի Կապան բերդը։ Անանիան շատ խնդրեց Ջուանշիրից՝ հանձնելու իրեն, բայց ի զուր։ Ուստի Անանիան նզովեց Յակոբին «950 թ», որից ութը տարի հետո Յակոբը մեռավ «958 թ»։—Անան. պատ. 130 ա, 131 բ, 132 ա, 133 բ, 140 բ, 141 բ, 143 աբ. Կիր. 48. Օրբ. խզ, խը, ծ, ծա, հա.—սեռ. Յակոբայ՝ Օրբ. խդ, խը—ծա, ծե, ծթ. Վրդ. խէ.—Յակովբայ՝ Անան. պատ. 131 ա, 132 ա, 135 բ, 139 աբ, 140 բ, 141 ա, 142 ա։

— 12. Յակոբ հայկազն, մարզպան և նախարար հայոց, «այր իմաստուն և շինող ս. եկեղեցեաց». նրա օգնությամբ Պանդալէոնը գտավ Պետրոս առաքյալի մասունքները Կոգովտում (965 թվից քիչ ուշ).—Տաշեան, Ցուց. 13, Հայապ. 85, 296։

— 13. Յակոբ Բ. եպիսկոպոս Սիւնեաց. գահակալել է «1000—1003 թ», երբև հաջորդ Սամուէլի։ Բաղաց գավառից դարձած ժամանակ՝ սպանվեց Ցուրացոց ձեռքով։—Օրբ. խէ, ծգ, հա.—սեռ. Յակոբայ՝ Օրբ. ծգ։

— 14. Յակոբոս եպիսկոպոս Հարքայ. նախ ճգնակեաց կրոնավոր էր, ապա հարեց Թոնդրակեցոց աղանդին, որ սկսավ տարածել գավառում, իշխանների պաշտպանությամբ։ Սարգիս Սեւանեցի կաթուղիկոսը («992—1019 թ») բանտարկեց նրան, բայց նա փախավ Պոլիս, որտեղից մերժվելով՝ եկավ Թոնդրակ, ապա անցավ Խլաթ և Մուհարկին (Մուֆարղին), ուր և մեռավ։—Լաստ. իբ.—Սարգիսեան, Ուս. Թոնրակեց. աղանդին, էջ 75—76։

— 15. Յակոբ գրիչ, օրինակել է Ոսկեբերանի Մեկնութիւն Գործոց առաքելոց, 1076 թ.—Ջեռ. Կարին. 159։

— 16. Յակոբոս վարդապետ Սանահնեցի (կամ Քարափնեցի կամ Քարահատայ որդի). աշակերտ Դէոսկորոսի և դասընկեր Անանիա Սանահնեցու. միաբան Սանահնի վանուց։ «106 ̄ թվին» գնաց Պոլիս՝ կրոնական վեճերի համար և հակվելով հունաց կողմը, հայոց և հունաց միաբանության թուղթ տվեց։ Վրա հասավ Գագիկ Բ աքսորական թագավորը, վեճի դուրս եկավ հունաց վարդապետների հետ, հաղթեց և Սանահնեցու տված թուղթը պատառոտեց, ասելով թե «այդպիսի վարդապետներ հարյուրներով կան Հայաստանում. իսկ թագավորը մի հատ է»։ Սանահնեցին իր ծերությունը անցկացրեց Ուռհայում, ուր և մեռավ ու թաղվեց 1085 թ։—Յակոբոս՝ Ուռհ. 161—2, 226--7.—Յակոբոս որդի Քարահատայ՝ Ուռհ. 179.—Յակոբ Սմբ. պատմ. 79.—սեռ. Յակոբոսի՝ Ուռհ. 162։—Զարբ. Հին դպր. 786։—Ըստ Զամչ. Գ. 8 և Ալիշան՝ Շնորհ. էջ 133 նույն անձն է՝

— 17. Յակոբ վարդապետ Սանահնեցի (ԺԱ դար), որ իբրև հեղինակ հիշված է Շարականի սկիզբը։ Սրան պետք է վերագրել Շարական Ս. Յակոբայ (թիւ Ղ), որի ծայրանունն է «Յակոբ» և որ Շարականի սկզբում վերագրվում է «ըստ ոմանց» Շնորհալուն։—Զամչ. Գ. 8 կասկածով միացնում է նախորդի հետ։

— 18. Յակոբ քահանա, անծանոթ պատմիչ. գրել է պատ-

ժական մի գործ՝ սկսած Ադամից մինչև 1101 թվականը։ Սրա մի օրինակը գտնվում է Պարիզի Bibl. nationale-ում.—Manus. bibl. nat. էջ 133։ Երևի սրա հետ նույն է Յակոբ անծանոթ պատմիչը, որին հիշում է Ղազար Ջահկեցին.—Հայապ. 13։

— 19. Յակովբոս գրիչ, միաբան Տլուքի Ս. Պօղոս վանքի. առաջնորդ Սամուէլ եպիսկոպոսից ստացավ Եղիշէի Պատմութեան ձեռագիրը և նրա ծախսով արտագրեց՝ 1130 թ.—Կիւլէսէրեան, Ծովք, էջ 48—49, Սուրիահայ տարեց. 1925, էջ 106։

— 20. Յակոբոս գրիչ. օրինակել է Պատմութիւն Ս. Ներսէսի, 1131 թ.—Մեսր. եր. 143։

— 21. Յակոբ Սքանչիլի. նշանավոր ճգնավոր վարդապետ Աղվանքում (հիշված է 1131—41 թվերին).—Մխ. այրիվ. 78, Վրդ. հ։

— 22. Յակոբ վարդապետ, թարգմանիչ. Քոնայ վանքում օրինակել է Աստուածաբանութիւն Թովմա Աքուինացւոյ 1145 թ.—Ձեռ. Կարին. 7։—Հմմտ. № 119։

— 23. Յակոբոս քահանա, հայր Գէորգ վարդապետի, որ Ծով ամրոցում գրել տվեց մի Աւետարան, 1151 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 748։

— 24. Յակոբ որդի Սալիպայ, գրել է ամբողջ Հին և Նոր կտակարանների մեկնութիւնը՝ 1151—1161 թվերի միջև։—Մխ. այրիվ. 79։—Զունի Ջարբ. Հին դպր.

— 25. Յակոբ եկեղեցպան, օգնեց Գրիգոր գրչին՝ արտագրելու համար Աւետարանը Սկևռայ վանքում, 1173—4 թ.—Թորոս աղբ. Բ. 443։

— 26. Յակովբ եպիսկոպոս Մելիտինէի, անդամ Հռոմկլայի եկեղեցական ժողովի «1179 թ».—Շնորհ. պատճ. 199։

— 27. Յակովբ նկարիչ. նկարել է մի Աւետարանի պատկերները, բայց անճաշակ, 1182 թ.—Արցախ 101։

— 28. Յակոբ (կամ Ակոբ), կազմարար. 1191 թվին կազմեց այն գեղեցիկ Տօնապատճառը, որ օրինակեց Փիլիպպոս քահանան Այրիվանքում 1190 թ.—Յովսէփեան՝ Մի էջ հայ արուեստի, էջ 10, Շողակաթ 197։ (Թվի թե նույն է № 33)։

— 29. Յակոբ, վանահայր Խաչի վանքի, 1198 թ.—Հայապ. էջ 442։

— 30. Յակոբ, ճարտար գրիչ, ուրին Տիրացու Ստեփաննոս արքեպիսկոպոսը իր հետ Հռոմկլայ տարավ և այնտեղ նրան արտագրել տվեց Շնորհալու Մեկնութիւն կաթուղիկեայց 1198

թ.—Զարբ. Հին դպր. 634, 703, Հայապ. 442, Զամչ. Գ. 166։ Սրա հետ թերևս նույն է այն, որ հիշում է Զամչ. Գ. 236 Յակոբ աբեղա անունով, աշակերտ Ստեփաննոս Տիրացուի. ներկա էր Լևոն Բ-ի թագադրության հանդեսին՝ ըստ Զամչ. Գ. 403։

— 31. Յակոբ, աշակերտ Պետրոսի. գրիչ. օրինակեց Ս. Սարգիս վանքի համար մի Տօնական և մի Յայսմաւուրք (ԺԲ դար).—Manus. bibl. nat. էջ 54։

— 32. Տէր Յակոբոս (վարդապետ), միաբան Դարանաղեաց Ս. Գրիգոր վանքի, 1201 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 247։

— 33. Ակովբ կազմարար. Վարդ կամ Վարդեր քահանայի հրամանով կազմեց մի հին Աւետարան, 1201 թ.—Rapport Arm. 41 (թվի թե նույն է № 28)։

— 34. Յակոբ եպիսկոպոս Տարօնի. հիշված է 1204 թ.—Հայապ. 450։

— 35. Տէր Յակոբ, նվիրատու ձեռագրի 1205 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 473։

— 36. Յակովբոս, մերձավոր Սահակ քահանա Անեցու, որ ստացավ Գետաշէնի նշանավոր Աւետարանը 1211 թ.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 43։

— 37. Յակովբ քահանա, փակակալ Հաւուցթառի վանքի, 1214 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 593, Այրարատ 356։

— 38. Յակոբ Զահկեցի, վանահայր Տաթևի. սրա ձեռքով Ստեփաննոս Գ եպիսկոպոս Սիւնեաց (1168—1214) նորոգեց Տաթևի կամարը.—սեռ. Յակոբայ՝ Օրբ. կբ. Սիսական 232 բ։

— 39. Յակոբ, ի հիշատակ իր ծնողների կանգնեցրել է մի խաչքար Երանոս (Գեղարքունիք) գյուղում, 1215 թ.—Սմբատեանց, Գեղարքունիք 505։

— 40. Յակոբ, ստացավ Եփրեմ Խուրի ասորու ճառերի թարգմանությունը՝ Գէորգ Քեսունցու ձեռքով՝ 1215 թ.—Բանասէր 1901, 42։

— 41. Յակոբոս արքեպիսկոպոս, եղբորորդի Գրիգոր եպիսկոպոսի՝ առաջնորդի Հաւապտկի և Մեծարանց վանքի (№ 181), որին հաջորդեց իբրև առաջնորդ Մեծարանց վանքի և թերևս Արցախու Խաչեն գավառի։ Իրեն էլ հաջորդեց եղբայրը՝ Սարգիս, որ մի խաչ է կանգնեցրել սույն Յակոբոսի տապանի վրա, 1223 թ.—Արցախ 170, Բանասէր 1901, 145, Յովսէփեան՝ Խաղբակեանք 30, Հացունի՝ Կարևոր խնդ. 273։

— 42. Յակոբ կրոնավոր, գրիչ. Միջագետցի Կարապետ քա-

հանայի առաջարկով օրինակեց Աւետարանը Համբրոնում, 1233 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 403, Սիսուան 85 ա, 96 բ, Հայապ. 457։

— 43. Յակոբ, գրիչ Արմենի լեռան Յովանէ ագարակում, 1233 թ.—Տաթև 1927, էջ 187։

— 44. Յակոբ վանական. գրիչ. օրինակել է Հռովմում մի Աւետարան՝ Ստեփաննոս քահանայի համար, 1240 թ.—Ձեռ. Կարին. 18 (Թերևս նոյն է № 48)։

— 45. Յակոբ երեց, մի խաչքար է կանգնեցրել Ախտալայում, 1245 թ.—Աղզագր. հանդ. Է, էջ 431։

— 46. Յակոբ եպիսկոպոս Կարուց, ստորագրում է Սսոյ «1243 Թ» և «1246 Թ» եկեղեցական ժողովների կանոններին—Կիր. խա. Այրարատ 76։ (Ջամչ. Գ. 229 սխալմամբ գրում է Սարգիս)։

— 47. Յակոբ կրոնավոր, գրիչ. Արգելանի վանքում մի Աւետարան օրինակեց Գէորգ քահանայի համար 1251 թ.—Ձեռ. Վասպ. 87։

— 48. Յակովբ, օգնեց Յովհաննէս գրչին՝ արտագրելու համար Աւետարանը, Հռոմ 1254 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 409 (Թերևս նոյն է № 44)։

— 49. Յակոբ Հաղբատացի. գրիչ Գետաշէնի նշանավոր Աւետարանի, որ օրինակեց Հաղբատի վանքում, 1211 թ. իր խաչքարը մնում է Հաղբատում 1255 թվից.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 42, 62, 63, Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 78, Երզընկեան՝ Հնախ. տեղագր. 62, Աղզագր. հանդ. Է, 412։

— 50. Յակոբ եպիսկոպոս Կարնոյ և վանահայր Մշու Ս. Կարապետ վանքի. սպանվել է քրդերից 1256 թ. իր գերեզմանը մնում է Ս. Կարապետում։—Տըվըլէ, Ուղև. ի Փոքր-Ասիա, Վիեննա 1892, էջ 55։

— 51. Յակոբ եպիսկոպոս, առաջնորդ Վարագայ վանքի 1260 թ.—Ձեռ. Ծաղեան, Բ. 47 ա։

— 52. Յակոբ, արքեպիսկոպոս Անաւարզայի 1263 թ.—Սիսուան 241 ա։

— 53. Յակոբ եպիսկոպոս Կասգաղոնի. հորդորեց Մխիթար Սկևռացուն՝ գրելու իր Պատասխանիքը (1263 թ) և հատկապես հունաց պատրիարքական աթոռների դեմ վիճաբանական մի գրվածք.—տես. Յակոբայ՝ Սկևռ. պատ. էջ 1.—տես և Զարբ. Հին դպր. 752, Սիսուան 101։

— 54. Յակոբ հայր, ուսուցիչ Յովհաննէս սարկավագ գրչի,

որ Երզնկայում օրինակեց Աո որս գիրքը, 1266 թ.— Շողակաթ 201, Տաշեան՝ Ցուց. 552։

— 55. Յակոբ եպիսկոպոս, առաջնորդ Սսոյ 1267 թ.—Սիսուան 221 ա։

— 56. Յակովբոս կրոնավոր, Երզնկայում գրել է մի Աստուածաշունչ, 1269 թ.—տես Խալաթեան, Մնաց. էջ դ և 115, Ֆ. Մուրատ, Ցայտ. յովհ. էջ ԴԽ են։

— 57. Յակոբ արքեպիսկոպոս, առաջնորդ Մեծքարի. ուսուցիչ և ազգական Ներսէս կրոնավորի. միասին գրել տվին մի օրինակ Նոր Կտակարան, Մեծքարի վանքում, Թորոս սարկավագին, 1274 թ.—Ձեռ. Կես. ածած. 63 բ, Հացունի՝ Կարևոր խնդ. 274։—Թերևս նոյն է՝

— 58. Յակոբ եպիսկոպոս, «մեծ վարդապետ», որ հիշատակված է Օշին մարաջախտի Աւետարանում, 1274 թ.—ՀԱ 1898, 247 բ։

— 59. Յակոբ գրիչ. Սսում օրինակեց Մանրուսմունքը՝ դպիր Կարապետի համար, 1274 թ.—Manus. brit. mus. 85 ա, ·

— 60. Յակոբ, որդի Նահապետի և եղբայր Յովսէփ քահանայի, որ օրինակեց Աւետարանը Կեսարիայում, 1277 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1844։

— 61. Յակոբոս պատրիարք Երուսաղէմի. գահակալել է 1254—1281 թ. իբրև հաջորդ Կարապետի (Աղաւնունի)։

— 62. Յակոբ որդի Մելքիսեդեկ քահանայի. այս Յակոբի հիշատակին գրեց Սիմէոնը իր Աւետարանը 1280 թ.—Ձեռ. Կարին. 16։ .

— 63. Յակովբ, եղբայր Թորոս վարդապետի, որ Դրազարկի վանքում, Բարսեղ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1282 թ.—Manus. brit. mus. 18 ա։

— 64. Յակոբ Ա Կլայեցի, կաթուղիկոս հայոց «1268—1286 թ»։ Կոչված է նաև Սսեցի, Տարսոնացի, Մեծքարեցի և Հռետոր։ Հեթում Ա թագավորի սիրելին էր. նախապէս առաջնորդ Մեծքարի վարդապետանոցի։ Վարդապետ եղած ժամանակ կրոնական վիճաբանութեան համար ուղարկվեց Հունաց Յովհաննէս Լասգարիս թագավորի մոտ և ցույց տվեց հայոց դավանանքի ճշմարիտ լինելը («1254 թ»)։ Ուղեկից եղավ Հեթում թագավորին, երբ սա գնաց Թաթարաց Մանգու ղանին այցելութեան «1254 թ»։ (Ազգատ. 1649 այս Յակոբը տարբեր է համարում Կլայեցուց՝ առանց պատճառաբանութեան. իսկ Ալիշան, հրատ.

Կիր. 212 «գուցէ անուանեալն Սսեցի Հռետոր»)։ Կաթուղիկոսության ժամանակ Անտիոքի Եւթիմէոս պատրիարքը պահանջեց, որ հայոց կաթուղիկոսը իրեն ենթարկվի։ Հեթումի որդին՝ Լևոն Գ սպառնական թուղթ գրեց նրան և երբ տեսավ, որ թուղթը ազդեցություն չունեցավ, պատրիարքին բանեց և աքսորեց։ Գրիգոր Ժ պապի կողմից Յակոբը հրավեր ստացավ մասնակցելու Լիոնի եկեղեցական ժողովին (1274 թ), ուր հաստատվեց հույն և լատին եկեղեցիների միությունը։ Յակոբի անունը հիշված է Շարականի սկիզբը՝ իբր հեղինակ, բայց շփոթվում է Յակոբ Սանահնեցու հետ։ Իրեն վերագրված շարականները տես Տաշեան, Ցուց. 1121 բ և Ամատունի, Պարականոն շար. էջ 1, 162։ Իրն է նույնպես «Լուծմունք Նուրբ գրենոյ» (տես Տաշեան, անդ)։ Շնորհալու Ընդհանրականը օրինակել տալով ցրել է ամեն կողմ։ Իր խնդրով գրեց Յովհ. Երզնկացին Մեկնութիւն Քերականի ՉԼ=1281 թ։ Իր մի շրջաբերական թուղթը տես Ձեռ. Վեննա. Բ. 851։ Տես նաև Սարգիսեան, Քննադ. Մանդ. էջ 164, իբրև խմբագրող (կամ խմբագրել տվող) Ոսկեբերանի հորդորակների։—Մխ. անեց. գ. Կիր. ծգ. Անանուն ժմ. 24, 26. Օրբ. ժմ. 27, 30. Մխ. այրիվ. 21. Օրբ. կգ, կե, կէ, հա. Մաղաք. աբ. 48, 52. Երզն. պտճռ. 84. Վահր. ոտ. 227. Սմբ. պտմ. 125. Տաթև. հարց. 638. Սամ. անեց. շար. 151, 161. Ձեռ. օշ. 99 բ. Յիշատ. (Karst, Դատաս. էջ հ).—Առաք. պտմ. 335. Դրնդ. 305.—սեռ. Յակովբայ, Յակոբայ Կանոն. 180, 186, Պտմ. յյտ. նեբս. 45. Օրբ. կգ, կէ, հ. Մխ. այրիվ. 3, 8. Դրնդ. 305.—Զամչ. Գ. 252—283. Ազգապ. 1673—1698. Զարբ. Հին դպր. 93, Թրգմ. 156, 390. Թորոս աղբ. Ա. 326.—կոչված է Յովսէփ՝ 1280 թվին գրված մի ձեռագրում (Սմբատեանց՝ Գեղարքունի 396), բայց կարծեմ վրիպակ է, որովհետև Ազգապ. չունի բնավ այսպիսի անուն Յակոբ Ա-ի համար։

— 65. Յակոբ գրիչ. Արգելանի (Տէր Յուսկան Որդու) վանքում օրինակեց մի Աւետարան Խելօքի և նրա կնոջ՝ Փոխանի համար 1294 թ.—Ձեռ. Վասպ. 116։

— 66. Յակոբ կրոնավոր, հայթայթեց մի օրինակ «Հաւաքածոյ»՝ Յովհաննէս քահանա գրչին, 1295 թ.—Տաշեան, Ցուց. էջ 817։

— 67. Յակոբ քահանա, կանգնեցրել է մի խաչքար Կուքի վանքի գերեզմանատան մեջ, 1296 թ.—Խաղբակեանք 61։

— 68. Յակոբ *աբեղայ, գրիչ. Կարսի Գողիս գիւղում օրինակեց Աւետարանը՝ Խութլուբէկ և Թիրքէշ եղբայրների համար, 1297 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 463—4։*

— 69. Յակոբ *քահանա, Արճէշում Սիմէոն գրչին գրել տուեց մի Աւետարան, 1297 թ։—Ձեռ. Վասպ. 123—4։*

— 70. Յակոբ *վարդապետ. պատմել է մի հայ նշանաւոր ուղորդի մասին, թե Տրապիզոնի կայսրը խոստացել է նրան իր աղջիկը կնութեան տալ, եթե մինչև Պոլիս լողալով գնա ու գա։ Երիտասարդը հազար մղոն (ճիշտ չափն է շուրջ հազար կիլոմետր) ճանապարհը 40 օրվա մեջ, գիշեր ցերեկ լողալով հասնում է Պոլիս և վերադառնում։ Բայց նենգավոր կայսրը հրամայել էր, որ երբ դառնա, խեղդեն կորցնեն։ Այսպես էլ եղավ. և նավորդները երգ շինելով ողբում էին նրան «արմէ՛ն արմէ՛ն» գոչելով։—Վրդն. առ. 338։*

— 71. Յակոբ. *բժիշկ, ունի բժշկական աշխատութիւններ. հիշում է նրան Ամիրտ. անգ. 2, Մխիթար Հերացուց, Անարոն, Ստեփաննոս, Ճոսլին և Սարգիս բժիշկներից հետո և Դեղին բժշկից առաջ.—հավանաբար ԺԳ դար։*

— 72. Յակոբ *մանկտավագ Երզնկացի, որի խնդրանոք Յովհ. Երզնկացին գրեց «Խրատ մանկտաւագաց» (Ջարբ. Հին դպր. 766)։ Երևի նույն անձն է* Յակոբ *մանկտաւագ, որ հնարել է մի նոր հերձված. Քրիստոսին համարում էր երրորդութիւն (ԺԳ դար)։—Հայապ. 552։*

— 73. Յակոբ *քահանա, կոչված* մեծ, *սպասավոր՝ Իտալիոյ Փէրուժ (*Perugia*) քաղաքի հայ եկեղեցու, 1301 թ.—Ձեռ. Վատիկ. (ՀԱ 1892, 342 ա)։ Սրանից տարբեր է՝*

— 74. Յակոբ. *քահանա, առաջնորդ հայոց տան Իտալիոյ Փէրուժ (*Perugia*) քաղաքի, 1301 թ.—Ձեռ. Վատիկ. (ՀԱ 1892, 342 ա)։—Երևի նույն է սրա հետ՝*

— 75. Յակոբ *ծերունի քահանա, վերատեսուչ Պերուճիա քաղաքի (Իտալիա) հայոց Ս. Մատթէոս եկեղեցու. ստացավ մի Տօնամակ 1302 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1215—6։*

— 76. Յակոբ, *գրիչ. օրինակել է մի Աւետարան Նախիջևանում, 1304 թ.—Շողակաթ 209։*

— 77. Յակոբ, *որդի Աստուածատուրի և եղբայր Մարտիրոսի, որ Տփղիսում, Խաչատուր սարկավագին գրել տվեց մի Աւետարան, 1304 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 488։*

— 78. Յակոբ *քահանա, եղբայր Ստեփաննոս սարկավագի, որ ստացավ մի Շարակնոց, 1305 թ։—Տաշեան, Ցուց. 535։*

— 79. Յակոբ, *իբրև վկա հիշվում է Քանաքեռում, մի այգու վաճառման առթիվ, 1306 թ.—Արձ. Բանաս. 1903, 32, Այրարատ 298։*

— 80. Յակոբ *վարդապետ, խնդրանոք պարոն Օշնի դրել է «Ցաղագս անձին յատկութեան բանին. Արդ գիտել պարտ է...» (տես Ձեռ. Վեննա. Բ. 731—2)։ Պետք է համարել Օշին († 1307 թ) տէր Կոռիկոսի և Կանչոյ, եղբորորդի Հեթում Ա թագավորի։*

— 81. Յակոբ *երեց, որդի Մեծպարոնի, եղբայրներն են Յովհաննէս և Կոստանդին. կազմեց այն Աւետարանը, որ Կիլիկիոյ Փոսի վանքում օրինակեց Հայրապետ (№ 34) դրիչը 1309 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 94 ա։—Նույն է № 115։*

— 82. Յակոբ, *եղբորորդի Տեր քահանայի, որ օրինակեց մի Աւետարան 1311 թ.—Ձեռ. Թաւր. 71 բ։*

— 83. Յակոբ *քահանա, որդի Սարգսի. սպասավորն էր Կոստանդին Պեհեսնեցի արքեպիսկոպոսի, որ Սկեռայ վանքի առաջնորդն էր։ Անվանում է նրան «ձեռասուն որդեակ, լերդակից որդեակ»։ Սսում, Ասորոց Ճոխաթ վանքում և Ջորոյ վանքում միասին գրել տվին մի Ցայսմաւուրք 1311 թ. (Բակուրան, Կիպրոս կղ. 107—8)։ Մեռել է 1312 թ.։ Ահա թե ինչ է ասում Կոստանդին արքեպիսկոպոսը նրա մասին՝ նրա մահվանից երկու տարի հետո։—«Մահու չափ նահատակեցաւ ընդ իս, ի բանտ և ի կապանս, ի ծովու և ի ցամաքի և 4 ամօք յոտարութիւն պանդխտակից լեալ աշխարհն փռանկաց, և բ ամօք յառաջ (=1312 թ)... փոխեցաւ ի Քրիստոս վասն սիրայորդոր փութոյ տաճարիս, և յօժար կամօք աշխատելոյ ի վերակացութիւն շինութեան տաճարիս» (անշուշտ Սկեռայ վանուց)։—Ձեռ. Վասպ. 60։*

— 84. Յակոբ *երեց, որի եղբայրն է Յովհաննէս կուսակրոն քահանա Դրազարկում. երկուսն էլ երաժիշտ 1313 թ.—Սիսուան 517 ա։*

— 85. Յակովբոս *քահանա, գրիչ. օրինակեց Աւետարանը Շիրակ գավառի* Մոգւոյս *կոչված տեղում, 1313 թ.*—Tübingen, *էջ 6։*

— 86. Յակոբ, *սարկավագ Անաւարզայի Ս. Աստուածածին եկեղեցու 1314 թ.—Սիսուան 243 ա, Գաթրճեան՝ Պտըլմտ. 84,* REA *2, 283, Ջարբ. Թրգմ. 265։*

— 87. Յակոբ երեց, *նորոգել է Աշտարակի մեծ առուն 1292 թ. և ապա մի հիւրատուն է շինել Աշտարակում 1317*

*թ.—Շահխաթ. Բ. 88, 86, Այրարատ 186, Թորամանեան՝ Հայ ճրտր:պ. 291։*

— 88. Յակոբ *վարդապետ, հիշված է Դարանու դաշտի Խոռինանց գյուղում, 1317 թ.—Թորոս աղբ. Ա. 218։*

— 89. Յակոբ *եպիսկոպոս Սալմաստի, անդամ Ատանայի եկեղեցական ժողովի, «1317 թ».—Չամչ. Գ. 314, Ազգապ. 1819։*

— 90. Յակոբ *եպիսկոպոս Կապանի. հաջորդեց Բասիլիոսին. անդամ Ատանայի եկեղեցական ժողովի «1317 թ». Օշին թագավորի կողմից դեսպան գնաց Յովհաննէս պապին և թերևս նույն* Յակոբ *Բ կաթուղիկոսն է։—Ազգապ. 1818, 1826, 1842, Պալճեան 69—70, Սիսուան 192 ա։*

— 91. Յակոբ *Թագոր(ե)ցի, հիշատակագիր Աւետարանի 1314 թ? (Ձեռ. Դաշեան, Բ. 30 ա), Գլաձորի գրիչներից մեկն է 1317 թ.—Խաղբակեանք 188։*

— 92. Յակոբոս, *սպասաւոր բանի, հոգևոր որդի Ներսէսի, որ էր առաջնորդ Յովհաննավանքի 1318 թ.—Այրարատ 172։*

— 93. Յակոբ *եպիսկոպոս Ատանայի 1318 թ.—Սիսուան 260 ա։*

— 94. Յակոբ *կրոնավոր, գրիչ. Վարագայ վանքում օրինակեց Թուղթք Պօղոսի և Եսայի 1318 թ.—Ակինեան, Գւղնգիրք, էջ 53։*

— 95. Յակոբ *քահանա, գրիչ. Սսում Օշին թագավորի համար գրել է մի ձեռագիր, որ մի տփի մեջ պարունակում է Ժամագիրք, Սաղմոս, Մանրուսմունք, Շարական և Տօնացոյց, 1319 թ.—Ձեռ. Օշ. 101 բ, Ձեռ. Հալէպի, Ա. 12։*

— 96. Յակոբ *քահանա, հայրն է գրիչ Խաչատուր քահանայի, 1319 թ.—Տաշեան, Ցուց. 885։*

— 97. Յակոբ *մուղտսի, սատարել է Վարդան քահանային՝ գրելու համար մի Աւետարան 1280—1320 թվերին։—Ձեռ. Թաւր. էջ 27 բ։*

— 98. Յակոբ *երեց, իր և իր կնոջ անվան մի խաչքար է կանգնեցրել Արգեազի եկեղեցում, 1320 թ.—Սիսական 118։*

— 99. Յակոբ *վարդապետ ոՊ, որի տապանը գտնվում է Նովլու գյուղում, 1320 թ.—Սիսական 109։*

— 100. Յակոբ, *որի հիշատակին Սաթունը իր երկու որդիների հետ (Սարգիս և Շահերշ) մի հող են նվիրել Հերհերի Ս. Յովհաննէս եկեղեցուն, 1326 թ.—Արձ. Սիսական 115։*

— 101. Յակոբ *Թարգման, Թեմունդի հետ Լևոն թագավորի կողմից դեսպան գնաց Հռոմի պապի մոտ՝ Վենետիկ, Հայոց ու*

Կիպրացոց վեճը հարդարելու համար 1327 թ.—Ալիշան՝ Հայ-Վենետ. 115, Մխսուան 558 բ։

— 102. Յակոբ, Կրակացի, վարժապետ Մեծքարի վանքի դասատունում. Առաքել գրչին գրել տվեց Փիլոնի գործերը՝ Ջերմաղբիւրի վանքում, 1328 թ.—Մխսուան 518 բ, 547 ա։

— 103. Յակոբ, հորեղբայր Պարոնշահի, որ գրել տվեց մի Աւետարան, Բղնունեաց Աղէթ գյուղում, 1329 թ.—Ձեռ. Վասպ. 179 (գրչության տեղը անհայտ է, բայց որոշվում է ըստ Թաթուլ № 10)։

— 104. Յակոբ, հայր Վարդան արքեպիսկոպոսի՝ առաջնորդի Արգելանի վանից. ինքն էլ հավատարիմ ծառայող էր նույն վանքի. մեռավ 1330 թ.—Manus. brit. mus. 58—59։

— 105. Յակոբ. քահանա, գրիչ. սկսեց գրել Աւետարանը Թաւուն միայնակյացի համար. բայց դեռ չավարտած, «անօրէններից» նահատակվեց, 1330 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770։

— 106. Յակոբ վարդապետ, քաղաքակից և համշիրակ Կոստանդին վարդապետի, որ հանցանքի համար արգելափակված էր Մոլևոնի դղեկում և այս առանձնության մեջ գրեց Սողոմոնի գործերը, 1331 թ։ Այս ձեռագրի թուղթը Յակոբ վարդապետը տվեց։—Ձեռ. Հալէպի, Բ. 126 բ։

— 107. Յակոբ, առաջնորդ Աղթամարի վանքի 1332 թ.—Ձեռ. Վասպ. 181։

— 108. Յակոբ նկարիչ, աշակերտ Սարգիս Պիծակ նշանավոր նկարչի. հիշված է 1332 թ.—Շողակաթ 212։—Տես տակը № 110։

— 109. Յակոբ գրիչ. Կոշայ վանքում օրինակել է Ճաշոցը 1333 թ.—Խաղբակեանք 21։

— 110. Յակոբ դպիր, նկարիչ. նստում էր Գայլու վանքում. ժամանակակից է Սարգիս Պիծակին. ծաղկեց այն Մանրուսմունքը որ գրեց Սիմէոն քահանան Գայլու վանքում (Կիլիկիա), 1336 թ.—Մխսուան 201 բ, 518 ա։—Նույն չէ վերևինի հետ։

— 111. Յակոբ, գործակալ Խորձեանի Խլպաշի վանից 1336 թ.—Նաթանեան։ Արտօսր Հյատնի 152։

— 112. Ակոբ հիւսն, պատրաստեց կազմի տախտակը այն Աւետարանի, որ գրեց Թումայ Արճիշեցին՝ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, 1336 թ.—Ձեռ. Ագուլ.=Արար. 1911, էջ 387։

— 113. Յակոբ, որդի Վասիլի՝ թղթագրի Լևոն Ե թագավորի Ռուբինեանց, 1337 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 118։

— 114. Յակոբ Բ Տարօնացի, կաթուղիկոս հայոց «1327—1341 Թ». քեռորդին էր Գրիգոր Է կաթուղիկոսի. հաջորդեց Կոստանդին Դ-ի. մասնակցել էր Սսոյ եկեղեցական ժողովին «1307 Թ». Անաւարզայի արքեպիսկոպոսն էր, իբրև հաջորդ Յովհաննէսի, երբ ընտրվեց կաթուղիկոս և այս պատճառով էլ կոչված է նաև Անաւարզեցի։ Հանդիմանելով Լևոն Ե թագավորին իր լատինամտության համար՝ զրկվեց գահից «1341 Թ»։ Նրա տեղ նստավ լատինամիտ Մխիթար եպիսկոպոսը «1341—1355 Թ», որ արևմուտքից օգնություն ստանալու հույսով Յակոբին (այս թե մի ուրիշ) ուղարկեց Աւինիոն՝ Իննովկենտիոս Զ պապի (1352—1362 Թ) մոտ։ Մխիթարի մահից հետո Յակոբը երկրորդ անգամ գահ բարձրացավ և գահակալեց «1355—1359 Թ»։— Սմբ. պատմ. 130. Սամ. անեց. շար. 158, 167. Մխ. այրիվ. 21. Առաք. պատմ. 335.—սեռ. Յակոբու՝ Մկ. մեծոփ. 27.—Չամչ. Գ 326—353. Ազգապ. 1841—1862 և 1915—20. Զարբ. Թրգմ. 553. Իր մի կոնդակը գրված 1334 Թ. տես Bodleian 183։

— 115. Յակոբ երեց, որդի Մեծպարոնի, ուստի և կոչված Մեծպարոնենց, կազմարար։ Կազմել է 1) այն Աւետարանը, որ գրեց Ստեփաննոս սարկավագը Զապլուն իշխանուհու համար, 1309 Թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 519).—2) այն Շարակնոցը, որ Թորոս վարդապետը գրել էր տվել Ներսէս գրչին, 1312 Թ. (Manus. brit. mus. 95 բ).—3) այն Մանրուսմունքը, որ Դրազարկում օրինակեց Ստեփաննոս գրիչը 1313 Թ. (Սիսուան 233 բ)։ Տես և № 81։

— 116. Յակոբ գրիչ. գրել է մի գեղեցիկ Աստուածաշունչ՝ Սարգիս Պիծակ նշանավոր նկարչի հետ, Յակոբ Բ կաթուղիկոսի համար, 1338 Թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 10, Շողակաթ 203 (տես և սրա վրիպակները)։

— 117. Յակոբ, որդի Սահակի, որ ստացավ մի Շարակնոց 1343 Թ.—Տաշեան, Ցուց. 489 բ։

— 118. Յակոբ ոմն, բնակվում էր Վենետիկում 1314 Թ.—Հայ-Վենետ. 158։

— 119. Ֆրա Յակոբ Դոմինիկեան, գրիչ. Քռնոյ վանքում օրինակեց Թոմա Ագուինացու Թուղթը՝ 1345 Թ.—Սմբատեանց, Երնջակ 125։—Հմմտ. № 22։

— 120. Յակոբ վարդապետ Քռնեցի (կամ Գառնեցի, որ սխալ է), իր հայրենակից Յովհաննէս Քռնեցու հետ գնաց Մարաղա՝ աշակերտելու Բարթուղիմէոս լատին եպիսկոպոսին «1328 Թ», ուր սովորեց նաև լատիներեն և ապա հաստատվեց Քռնի

վանքում, թէրև ունիթոռական։ Ըստ այսմ կոչվում է նաև Ֆրա Յակոբ Ջահկեցի «1330 թ»։ Այստեղ օգնում էր լատին քարոզիչներին թարգմանելու նրանց գործերը հայերենի, և կամ ինքն էր թարգմանում կամ խմբագրում զանազան լատիներէն կրոնական գործեր։ Այսպես են Բարթուղիմէոս եպիսկոպոսի Մեկնութիւն Վեցօրէից և Քարոզգիրք (1331 թ), Պետրոս Արագոնացու († 1347 թ) Գիրք առաքինութեանց և Մոլութեանց (1339 թ) և «Գիրք իրաւանց և դատաստանի», Իմաստասիրականք, Յաղագս Քերականին և վերջապես լատինական Միսալը՝ 1337 թ. (Manus. bibl. nat. 47)։ Մարաղայի արքեպիսկոպոս Դոմինիկեան Բարթուղիմէոս Բոլոնիացու գործերը թարգմանել է Քռնում՝ խընդրանոք Յովհան Քռնեցու (անդ, էջ 81)։ Այս բոլոր թարգմանությունները կատարված են 1331—1350 թվերին։—Զամչ. Գ. 326, Զարբ. Նոր մատեն. 206—209, Տաշեան՝ Ցուց. 1122 բ, Manus. brit. mus. 158—9, Ձեռ. Ներս. 32 բ, Ձեռ. Թաւր. 96 ա, Ձեռ. Բեռլինի 57 բ, ՀԱ 1937, 345, Ազգատ. 1844, Սիսական 374 և 387։

— 121. Յակոբ որդի Հայրապետ քահանայի (№ 50), որ Եկեղեաց գավառում գրել տվեց Աւետարանը 1351 թ.—Թորոս աղբ. Բ. 356—7։

— 122. Յակոբ աբեղա, որդի Աստուածատուրի, ի կարգէ սրբոյն Բասիլիոսի, Հռոմում գնեց Յովհաննէս քահանայի 1?54 թվին գրած Աւետարանը և նվիրեց Հռոմի Ս. Աստուածամօր հայ եկեղեցուն, 1351 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 409։

— 123. Յակոբ քահանա, գրիչ. «բազում ժամանակ էր, զի ի բաց էի թողել զգրելն, և վասն այսորիկ և ձեռս բրտացեալ... աչք (ակնոց) դրի ու աշխատանօք գրեցի, զի էի 60 ամաց». օրինակել է Աւետարանը՝ 1353 թ.—Ձեռ. Թաւր. 135։

— 124. Յակովբ կրօնավոր, հոգևոր եղբայր Յոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի, 4 ա։

— 125. Յակոբ, որդի Յովհաննէսի և հօրեղբօրորդի Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում ստացավ մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 613։

— 126. Յակոբ, ոսկերիչ, կնքահայր նույն Յակոբ (№ 129) սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան գիրքը. մեռած էր նախ քան 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 127. Յակոբ քահանա, մեծ հայր Յակոբ սարկավագ

գրչի (№ 129), որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան գիրքը շուրջ 1358 թ. այս թվին արդեն մեռած էր։—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 128. Յակոբ, մորեղբայր նույն Յակոբ (№ 129) սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան գիրքը շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 129. Յակոբ սարկավագ. գրիչ. որդի Սիմէոնի և թոռն Յակոբ քահանայի. օրինակել է Կիւրղի «Կոչումն ընծայութեան», ստացող Մինաս կրոնավորի համար, շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. էջ 28։

— 130. Ակոբ քահանա, եղբայր Թագւորի և հորեղբայր Զաքարիա աբեղայի, որ Անապատիկ գյուղում օրինակեց Մեկնութիւն Պատարագի, 1361 թ.—Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1912, էջ 57)։

— 131. Յակոբ Շահնշահեան, կաֆացի, Փանոսի հետ միասին շինեցին Իլվովի հայոց քաղաքին մեծ եկեղեցին 1363 թ.—Կամենից 131, Ազգապ. 2175։

— 132. Յակոբ որդի Պարոնշահի և եղբայր Յովհաննէս կրոնավորի Սեբաստացւոյ, որ Խրիմի Սուրխաթ քաղաքում, Ստեփաննոս քահանային գրել տվեց Դաւթի Սահմանաց գիրքը, 1363 թվին.—Manus. brit. mus. 248 ա։

— 133. Յակոբ վանական Կիլիկիոյ Ս. Գէորգ վանքի. Ներսէս վանահոր հետ գնաց Անգլիա հանգանակության, 1364 թ. (ավելին տես Ներսէս)։—Միսուան 410։

— 134. Յակոբոս տիսալար, հիշված է «փառօք ի փառս բարձրացեալ Գրիգոր տիսալարի» հետ, Մոկաց Ծպատի վանքում գրված մի Մաշտոցում, 1369 թ.—Թորոս աղբ. Բ. 427։

— 135. Յակոբ մղտեսի, տնային սպասավոր Տարօնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսի, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 136. Յակովբ, եղբայր Բաբերդցի Վարդան աբեղայի, որ Երուսաղէմում գրեց մի Աւետարան 1371—2 թ. —Ձեռ. Վասպ. էջ 220։

— 137. Յակոբ կրոնավոր, որի համար Գէորգ գրիչը օրինակեց Մանրուսմունքը 1373 թ.—Ձեռ. Սանաս. 10 բ։

— 138. Յակոբ, տանուտեր Նիկիտայ (այժմ Նիկտէ) քաղաքի, որ գողության մեջ տարապարտ կասկածվելով և Սսոյ Կոստանդին Ե («1372—74 թ») կաթուղիկոսից նզովվելով, ընտանյոք մահմեդական դարձավ։—Մեծոփ. յիշ. ա. Դրնդ. 308։

— 139. Յակոբ եպիսկոպոս, վերատեսուչ Մերդինի հայոց

Ս. Աստուածածին և Ս. Յովհաննէս (բվիճ կոչված) վանուց, 1377 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 65։

— 139 բ. Յակոբ կրոնավոր, եղբայր Յովհաննէս գրչի, որ Ոստանում օրինակեց Կիւրղի, Եփրեմի և Վարդանի գործերը, 1382 թ.—Bodleian 165։

— 139 գ. Յակոբ կուսակրոն քահանա. գրիչ. օրինակեց Աստուածաշունչը՝ Հեթում-Յովհաննէսի համար, 1384 թ.— Ձեռ. Դաղեան, Ա. 5 ա։

— 140. Յակոբ գրիչ. աշակերտ Յովհան վարդապետ Որոտնեցու. ականատես է եղել և պատմում է Որոտան բերդի առումը Թուրքերի ձեռքով՝ 1386 թ.—Գ. վրդ. Յովսէփեան՝ Խաղբակեանք, էջ 230։

— 141. Յակոբ ճգնավոր վարդապետ Գլակայ վանքի. խնամում և քաջալերում էր Լէնկթիմուրի արշավանքից փախչող և վանք ապաստանող ժողովրդին 1387 թ.—Մեծոփ. 22, Ազգապ. էջ 1973։

— 142. Յակոբ վարդապետ Սաղմոսավանից. համշիրակ եղբայր Գր. Տաթևացու, որին ինքը և իր ընկերները ընտրեցին հաջորդ Որոտնեցու «1388 թ».—սեռ. Յակոբայ՝ Մեծոփ. 17։ Տես № 153 և 151։

— 143. Սարգիս-Յակոբոս բժիշկ-քահանա. գրիչ. Մակենցիս քաղաքում օրինակեց Միսալը՝ կարգավորելով Թորոս Սսեցու երեք օրինակների վրայից, 1391 թ.—Դաթըրճեան, Պտրգմ. էջ 470։

— 144. Յակոբ քահանա Սիսեանցի, Ռումինիայի Եաշ քաղաքի հայոց եկեղեցու հիմնադիրներից մեկը 1395 թ.—Տան, Արևել. Հայք 8։

— 145. Յակոբ կրոնավոր. 1396 թվին կազմեց մի ժողովածու, որ օրինակել էր Կարապետ գրիչը Կաֆայում.—Ձեռ. Լվով (ՀԱ 1937, 136)։

— 146. Յակոբ, եղբօրորդի Վարդան քահանայի, որ Երզնկայում, Խուբովի որդի Վարդան քահանայից գնեց մի Աւետարան, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46 (երկու Վարդանները տարբեր անձեր են)։

— 147. Յակոբ, որդի տանուտեր Դանիէլի, որ Զաքարիա գրչին գրել տվեց Աղթամարում մի Աւետարան, 1399 թ.—Ձեռ. Վասպ. 234, 239։

— 148. Յակոբ Ա. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Զաքարիա Ա-ի և նախորդ Բարսեղ Ա-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 149. Յակոբ բժիշկ, ունի բժշկական գրվածքներ (ԺԴ դար).—Տաշեան, Ցուց. 199։—Հմմտ. № 143։

— 150. Յակոբ վարդապետ, որդի Առուդի, իր քրոջ որդի 14 ամյա Աստուածատուրին գրել տվեց մի Ոսկեփորիկ, 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 931։

— 151. Յակոբ վարդապետ Բոստացի. նախ աշակերտել է Յովհաննէս Որոտնեցուն և ապա Տաթևացուն. կոչված է համշիրակ Տաթևացու, որ նրա խնդրանոք գրել է իր Քարոզգիրքը 1407 թ. կոչում է «ի տանէ Գողթնեաց, ի Բուստ բնակողի» (Տաթև. ամ. 721)։ Իսկ Մեծոփ. 50 և Ցայսմ. ապր. 27 կոչում են Յակոբ Բոստացի և համարում են աշակերտ Գր. Տաթևացու։ (Այս գյուղը այժմ կոչվում է Բիստ, Ագուլիսի շրջանում, Մսրրվանիս գյուղի մոտ և Ղարաբաղի սահմանի վրա)։—Սիսական 240, 344։—Հմմտ. № 142 և 153։

— 152. Յակոբ ի յՄապխնկու կամ Ասպխնակցի. աշակերտեց Գրիգոր Տաթևացուն, երբ նա ուսուցանում էր Մեծոփայ վանքում «1408 թ». իր ընկերները տես Սարգիս բարունապետ.—Մեծոփ. 51, 52, Ցայսմ. ապր. 27։ Ազգապ. 1999։

— 153. Յակոբ վարդապետ, աշակերտել էր 20 տարի Յովհաննէս Որոտնեցուն («† 1388 թ») և եղել էր ուսումնակից (դասընկեր) Գրիգոր Տաթևացու։ Առաջնորդ եղավ Սաղմոսավանքի՝ ԺԴ դարի վերջը։ Իր մոտ Յաց Տաթևացին († «1410 թ»)՝ իր մահից քիչ առաջ։—Մեծոփ. 33, 53, Այրարատ 163, Ազգապ. 2026։—Երևի նույն է № 142. տես և № 151։

— 154. Յակոբ գրիչ, գրել է մի փոքր հիշատակարան մի Աւետարանի ստացման համար 1410 թ.—Ձեռ. Վասպ. 168։

— 155. Յակոբ Երևանցի, որդի Վիշապի, բարեգործ մարդ, ստացավ մի Աւետարան և նվիրեց Երևանի եկեղեցուն, Լէնկթիմուրի արշավանքի ժամանակ (1411 թ).—Շահազիզ, Հին Երևանը, էջ 73, 203։

— 156. Յակոբ կուսակրոն քահանա, հարեղբայր Յովհաննէս գրչի, որ Խիզանի Ս. Խաչ վանքում օրինակեց Գր. Տաթևացու Քարոզգիրքը, 1413 թ.—Նոտարք 42։

— 157-8. Յակոբ, երկու համանուն միաբաններ Խիզանի Ս. Խաչ վանքի, 1402 և 1413 թ.—Նոտարք 17, 42, 43։

— 159. Յակոբ Գ. կաթուղիկոս հայոց «1404—1414 թ». Սսի եկեղեցականների կամքին հակառակ՝ այլազգի իշխանի ձեռնտվութեամբ գահ բարձրացավ։ Աղթամարի աթոռում դըժգոհութիւն բարձրացած լինելով իրենց Դաւիթ Գ կաթուղիկոսի դեմ, գահընկեց արին նրան և ուզեցին Աղթամարը միացնել Սսի աթոռին։ Գր. Տաթևացու առաջարկութեամբ Յակոբ Գ կաթուղիկոսը արձակեց Աղթամարի աթոռը դարավոր նզովքից և մինչդեռ պատրաստվում էր աթոռը միացնել, Դաւթի կուսակիցները զօրացան և նորից գահ բարձրացրին նրան (1410 թ)։ Յակոբը իր թշնամիների ձեռքով թունավորվելով մեռավ «1411 թ»։—Յայսմ. ապր. 27. Սամ. անեց. շար. 172. Ազգապ. 2017—38. Կամենից 221—4 (ուր տես իր կոնդակը գրված Լեհահայերին)։

— 160. Յակոբ սպասավոր բանի, Սուխարայ վանքում, 1414 թ. —Rapport Arm. էջ 6։

— 161. Յակոբ կրոնավոր, օրինակել է Խրիմի Ս. Լուսաւորիչ վանքում Հարանց վարքը, 1416 թ.—Նոտարք 49։

— 162. Յակոբ, կինն է Մինայ, հայր Մարտիրոս քահանայի, որ վախճանուել եղավ 1417 թվից քիչ առաջ, և Յոհաննէս քահանայի, որ օրինակեց մի Աւետարան 1409 թ. և մի ուրիշը 1417 թվին.—Ձեռ. Վասպ. 294, 302—3։

— 163. Յակոբ քահանա, որին հիշում է Կարապետ երեց գրիչը (№ 202), Վանում, իբրև իրեն երախտավոր, 1418 թ.—Ձեռ. Վասպ. 309, Նոտարք 57։

— 164. Յակոբ «հայրապետ», հիշված 1419 թ. գրիչ Աթանագինէ Սեբաստացու հիշատակարանում (Նոտարք 58)։—Այս թվին Յակոբ կաթուղիկոս չկա. Յակոբ Գ-ը մեռել էր 1414 թվին, նրա հաջորդ Գրիգոր Ը Խանձողատը նստել էր «1414—1418 թ»։ Թեև Փիրղալէմեան երկուսին էլ գահակից է համարում, բայց դա սխալ է։ Աթանագինէ գրչի հիշած Յակոբը Սամսոնի Ս. Աստուածածին վանքի հայրապետն է։

— 165. Յակոբ, հոգևոր եղբայր Եղբայրիկ գրչի, որ օրինակեց մի Աւետարան 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 166. Յակոբ աբեղա, ուսուցանում էր Հերմոնի վանքում. իր աշակերտներից է Կարապետ երեց Դերջանցի, որ օրինակեց Քարոզգիրքը՝ 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ)։

— 167. Յակոբ կուսակրոն աբեղա և ճգնավոր, միաբան Գառնուագրակ վանից, Աստուածատուր գրչին գրել տվեց մի Գանձարան և Տաղարան, 1421 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 313։

— 168. Յակոբ աբեղա Խոյեցի, միաբան Բերկրիի Տէր Յուսկան որդու վանքի 1410 թ., հոգևոր եղբայր Բերկրիի Եղավանքի առաջնորդ Մկրտիչ վարդապետի. երկուսով տվին մի ձեռագիր Ավետարան Յակոբ աբեղա գրչին՝ օրինակելու համար, 1422 թ.— Ձեռ. Վասպ. 349, Նոտարք 61, 70։—Հմմտ. № 179։

— 169. Յակոբ մահդասի աբեղա, միաբան Բերկրիի Եղավանքի, հիշված 1422 թ.—Ձեռ. Վասպ. 349։

— 170. Յակոբ աբեղա, որդի Յուսիկի. մայրն է Ղբէլ. միաբան Բերկրիի Եղավանքի, ուր Յովհաննէս կրոնավորի համար օրինակեց Ավետարանը 1422 թ.—Ձեռ. Վասպ. 349, Նոտարք 70։

— 171. Յակովբ, հայր Խաթունի (№ 13), որ Աղթամարում, Թումայ գրչին գրել տվեց մի Ավետարան 1425 թ.—Ձեռ. Վասպ. 352, 354։

— 172. Յակոբ կուսակրոն ճգնավոր «փիլիսոփայ խարազնազգեաց և անյաղթ աբեղայ». ուսուցիչ էր Տաթևի վանքում. իր աշակերտն է Կարապետ քահանա գրիչ 1425—6 թ։— Սիսական 241։

— 173. Յակոբ ճգնավոր վարդապետ (Խլաթեցի), հոգևոր եղբայր Գրիգոր Ծերենց Խլաթեցու, որին հուղարկավոր եղավ Ցիպնավանքում 1426 թ.՝ իր որդի Ստեփաննոս եպիսկոպոսի հետ և մի ամբողջ տարի նրա գերեզմանին սպասավոր ճգնելուց հետո, մեռավ 1427 թ։—Մեծոփ. 43, Ազգապ. 2059. (Ջաւչ. Գ. էջ 452)։

— 174. Յակոբ վարդապետ Ովսաննացի (Ովսանանց կամ Յովսանանց). Ռշտունեաց երկրից էր, ուստի կոչվում է նաև Ռշտունի. նախ աշակերտեց Յովհան Որոտնեցուն, ապա Գրիգոր Տաթևացուն (Մեծոփայ վանքում), Սարգիս վրդ. Ապրակունեցուն (Սուխարայ վանքում), և Յովհաննէս Մեծոփեցուն։ Իր դասընկերներ Մխիթար Ռշտունու և այլոց հետ ընտրեցին Գր. Տաթևացուն իբրև հաջորդ Որոտնեցուն «1388 թ»։ Թովմա Մեծոփեցու հետ հուղարկավոր գնացին Հաւուցթառ, ուր թաղեցին իրենց ուսուցիչ Յովհաննէս Մեծոփեցուն 1410 թ։ Սրա խնդրանոք է գրել Մատթէոս վրդ. պարթևը (№ 48) իր «Մեկնութիւն գործոց առաքելոց» երկը 1411 թ. (կոչում է նրան «հարազատ և սիրեցեալ եղբայր մեր Յակոբ վարդապետ» (Թորոս աղբ. Բ. 481)։ Միաբան էր Ռշտունեաց Անձղնապատի վանքում, երբ քրդերը հարձակվեցին նրա վրա և նահատակեցին «1428 թ»։— Մեծոփ. 43, 52, 61, Այրարատ 357, Ջաւչ. Գ. 452, 467. Նոտարք

35. Ազգապ. 1984, 1999.—սեռ. Յակոբայ՝ Մեծոփ. 17, Նոր վկ. էջ 282։ Սրա քեռորդին էր Աստուածատուր եպս. որ գրեց Մկրտիչ Նաղաշի կենսագրութիւնը.—Սարգիսեան, Եւագր. Ներած. ճժդ. Արրտ. 1898 յնվ. Տաշեան, Ցուց. 187, 189։

— 175. Յակոբ արքեպիսկոպոս, առաջնորդ Կողունց վանքի 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 176. Յակոբ որդի Կոստանդին Զ Վահկացի կաթուղիկոսի, որ գահակալեց «1430 թ». մեռել է 10 տարեկան հասակում։—Ազգապ. 5528։

— 177. Յակոբ աբեղա, գրիչ. օրինակել է Հարանց վարքը Երերան վանքում, 1431 թ.— Ձեռ. Կարին. 49։

— 178. Յակոբ գրիչ. Տրապիզոնում օրինակեց մի Ժողովածու, 1432 թ.— Ձեռ. Սևան. 47 ա։—Հմմտ. № 185 և 208։

— 179. Յակոբ կրոնավոր, միաբան Տէր Յուսկան որդու վանքի, ուր օրինակեց Աւետարանը Մկրտիչ քահանայի խնդրանոք, 1418 թ։ Հիշված է նաև 1420 թ. և 1432 թ.—Նոտարք 55, 61, 101 (Նոտարք 70 նույն է դնում № 168 Յակոբ աբեղա)։

— 180. Յակոբ քահանա, հայր Յովսէփ կրոնավորի, որ Կիւրղի անապատում օրինակեց Աւետարանը 1432 թ.—Ձեռ. Սեբ.= ՀԱ. 1926, 47։

— 181. Յակոբ աբեղա. գրիչ. օրինակել է Գր. Տաթևացու Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի, Երուսաղէմում, 1432 թ.—Ձեռ. Կարին. 151, Նոտարք 99։

— 182. Յակոբ քահանա, Թվլի հայր Յովհաննէս սարկավագ գրչի, որ գրեց Մաշտոցը՝ Արղնիում, 1434 թ. — Թորոս աղբ. Բ. 413։

— 183. Յակոբ պարոն, որին Գորգը նվիրեց մի Պատարագամատոյց, Վենետիկ 1434 թ.—Հայ-Վենետ 180։

— 184. Յակոբ քահանա Շամախեցի, կարողացավ շատ քրիստոնյա գերիներ ազատել Իսքենդերի ձեռքից «1435 թ»։—Մեծոփ. 100, Ջամչ. Գ. 467, Ազգապ. 2066։

— 185. Յակոբ կրոնավոր Տրապիզոնցի, գրիչ. օրինակեց Յայսմաւուրքը՝ Ստեփաննոսի համար, Տրապիզոնի Ս. Փրկիչ վանքում, 1437 թ.—Труды вост. комм. ИМАО, հտ. II, 3, էջ 55

— 186. Յակոբ աբեղա, միաբան Եկեղեաց Աւագ վանքի 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49։

— 187. Յակոբ աբեղա, գրիչ. Մեծոփայ վանքում օրինակել է Մեկնութիւն Սահմանաց Դաւթի, 1440 թ.—Ձեռ. Կարին. 201։

— 188. Յակոբ, դատավոր Հայոց Լեհաստանի, 1434—1441 թվերի միջև.—REA 7, 71։—Հմմտ. № 214։

— 189. Յակոբ, նորոգել տվեց մի հին գեղեցիկ Աւետարան՝ 1441 թ.—Ձեռ. Թեհր. 3 բ (ՀԱ 1935, 313)։

— 190. Յակոբ կրոնավոր, փակակալ Ս. Յովհաննէս վանքի՝ Արարատեան գավառի Սերկևլի գյուղում, 1441 թ.—հրատ. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ Խթ։

— 191. Յակոբ դպիր, որդի Յովհաննէս քահանայի. Սարգիս ճգնավորի պատվերով գրեցին մի Յայսմաւուրք՝ Հերմոնի վանքում, 1441 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 242։

— 192. Յակոբ եպիսկոպոս Կողբայ. անդամ Էջմիածնի մեծ ժողովի 1441 թ.—Մեծոփ. յիշ. ա։

— 193. Ակոբ որդի Սարգսի և մերձավոր Անդրէասի, որ գնեց մի հին Աւետարան, 1442 թ. այս թվին Յակոբը արդեն մեռած էր 26 տարեկան հասակում.—Ձեռ. Նոր-Բայազ. 17 բ։

— 194. Յակոբ վարդապետ, որ Յովհաննէս վրդ. Պուտըլկեցու հետ հորդորիչ է հանդիսացել Ս. Վարդան զորավար տաճարի ի հիմանց վերաշինութեան, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 389, Նոտարք 46 (վերջինս համարում է Յակոբ Ովսաննացին № 174. բայց իհարկե ստույգ չէ, որովհետև Ովսաննացին նահատակվել է 1428 թ)։

— 195. Ակոբ, հորեղբայր տանուտեր Առոմի, որ Ոստանում գրել տվեց մի Գանձարան, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 ա։

— 196. Յակոբ, դեռաբույս պատանեկ, ազգական Գորգի Մելիքի և Թովմա Մեծոփեցու, հիշված է 1445 թ.—Նոտարք, էջ 147։

— 197. Յակոբ, հիշված է իբրև Մեծոփայ վանքի հանգուցյալ միաբաններից մեկը. Նախկին աշակերտ Թովմա Մեծոփեցու, 1445 թ.—Նոտարք 147։

— 198. Յակոբ վարդապետ Ղրիմեցի. աշակերտ Գէորգ Երզընկացու († 1416 թ.). տոմարագետ. ունի Հարցումն Գէորգայ բաբունապետի և ծառայաբար կատարումն Յակոբ աշակերտի (Նոտարք 41), Քարոզ կոչակի կամ մեծի ուրբաթի, Ողբ խաչելութեան, Քարոզ պատուիրանի, Կանոնք յաղագս ազգականութեան, Պսակի և ճիւղագրութեան (որ գրել է Թովմա Մեծոփեցու խընդրանոք. Ձեռ. Հալէպի, Ա. 163 ա), Քերականականք, Մեկնութիւն Տումարի (որ գրեց 1448 թ., նույնպես Թովմա Մեծոփե-

ցու խնդրանոք, Նոտարք 159, Ձեռ. Վենետ. Բ. 826 և 830. այստեղ մեջ է բերված Յակոբ Ղրիմեցու ընծայականը, ուր Թովմա Մեծոփեցուն կոչում է «հոգևոր որդեակ իմ և եղբայր բազմալի»), Յաղագս տոմարական մակացութեան թէ ի յորոց մարդկանէ արհեստաւորեցաւ (Bodleian 100)։ Եկեղեաց գավառի Կապոսի վանքում 1389 թ. արտագրել է Աբրահամ աբեղայի համար մի ձեռագիր, որ է «Ձհոգոց և զօրութեանց, Առաքինութեանց հոգոյն, Վասն բնութեան հրեշտակաց» (Ձեռ. Մեսն. 40 բ)։ Իր մի ուրիշ արտագրությունը 1410 թվից՝ տես Ձեռ. Էջմ. 1889=1847 (Մանանդեան, Յունար. դպր. 266, 272)։ 1426 թվին, երբ քուրդ ամիրախը նահատակեց Գրիգոր Խլաթեցուն Արծկէ քաղաքի մոտիկ Ծիպնայ վանքում, «եկեալ հրեղէն լեգուն Յակոբ ճգնաւոր վարդապետն Ղրիմեցին աշակերտօք իւրովք և ազգականօք և բազում ժողովրդօք և արարին կոծ մեծ ի վերայ նորա և եդին սաղմոսիւք և օրհնութեամբ ի տապանի ի փոքր բլրին, որ է հանդէպ վանացն յարևմտեան կուսէն» (Նոր վկ. 270, Նոտարք 76)։ Այս առթիվ պետք է հիշել, որ Նոր վկ. 274 գրված իմ այն ենթադրությունը թե Առաքելը Յակոբ Ղրիմեցու աշխարհական և աշակերտական անունն է՝ այլուստ չի ստուգվում։ Այնու ամենայնիվ մնում է զարմանալի այն, որ Գր. Խլաթեցու անվան գրված եղերգի ծայրանունն է «Գրիգոր վարդապետին յԱռաքելէ Նորին աշակերտէ», իսկ երրորդ տան մեջ իբրև նույն եղերգի հեղինակ հիշված է «Ինձ վայ եղուկ տխմար գրչի, Յակոբ անուն գրող բանի, հոգւոյ ծնունդ հօրն մեծի, քաջ րաբունւոյն իմ Գրիգորի» (Նոր. վկ. 275)։ Այժմ Ձեռ. Հալէպի, Ա. 104 բ գտնում եմ մի տեղեկություն, որով լուծվում է հանելուկը։ Նշանավոր տաղասաց Առաքել Բաղիշեցին, որ հայտնի է Պոլսի առման վրա գրած իր ողբով, այս հատվածում հիշում է իր մերձավորներին։ Հայրն է Ներսէս, մայրն է Խութլումելիք (№ 7), որդին է Յովհաննէս քահանա, որ «ի հասակ մանկագունի» մեռել է, ուսուցիչն է Գրիգոր Ծերենց Խլաթեցի նահատակը, իսկ իր քարտուղարն է «Յակոբ սարկաւագ, նաղաշ ոսկով քարտաղար»։ Բաղիշեցին սովորություն է ունեցել իր երգերը թելադրելու իր սարկավագին և նա էլ գրել է։ Այսպես Պոլսի ողբի համար ասում է. «Եւ Յակոբայ սարկաւագի, նաղաշ ոսկով քարտողարի, որ գերդ բանիս զոր ասացի, նա գծագրեաց ի քարտիսի» (անդ, էջ 104 բ)։ Մի քիչ հետո էլ նույն սարկավագը ասում է.

Ես անարժանս մեղօք ի լի,
Որ զսակաւ նօտրս գրեցի,
Ջձեզ աղաչեմ աղերսալի,
Ինձ այլ ասել մին ողորմի։
Զի չեմ յիշման ես արժանի
Յիշատակել ի հանդիսի,
Աղաղակեմ ողորմելի,
Զի ինձ ընդ Ձեզ մասն լիցի,
Բերան մ'ասէք հայր մեր յերկինս։

Ահա այս Յակոբ սարկավագն է, որ Թեև Պոլսի ասման տաղում արժանի չի համարել իր անունը հիշելու, բայց արժանի է համարել հիշելու Խլաթեցու եղերգի մեջ.

«Ինձ վայ եղուկ տխմար գրչի,
Յակոբ անուն գրող բանի»:

Այսպեսով կասկածը բոլորովին վերանում է եղերգի հեղինակի մասին, որ Առաքել Բաղիշեցին է, ինչպես որ Խլաթեցու վկայաբանության հեղինակն էլ Առաքել Բաղիշեցին է, որ գրել է «ի Բաղէշ քաղաքի ի վանքս Գոմաց Ս. Աստուածածնի», 1426 Թ. (Նոր վկ. 272)։ Վերջում պետք է հիշեմ տարբեր կարծիքը որ կա Գր. Ծերենց Խլաթեցու հուղարկավոր Յակոբ վարդապետի մասին։ Ըստ Նոր վկ. 270 այս անձը հայտնապես Յակոբ Ղրիմեցին է. իսկ ըստ Ազգապ. 2059 Յակոբ Խլաթեցի ոմն, որ մի տարի սպասավորել է Ծերենցի գերեզմանին և մեռել է 1427 Թ։ Ջամչ. Գ. 452 անորոշ է (պարզապես կոչում է Յակոբ վրդ.). իսկ Մեծոփ. 43 ասում է «հոգևոր հարազատն իւր վարդապետն Յակոբ ճգնաւոր՝ այրն ցանկալի՝ եկն ամփոփեաց զնա հանդերձ հարազատ որդւովք իւրովք Ստեփաննոս եպիսկոպոսաւ և աշակերտաւն»։—Տաշեան, Ցուց. 1121 գ, Նօտարք 158—9, Անան. շիր. (Գ. Տ. Մկրտչ.) էջ 36, Նշշ. իա, Հայապ. 561. Ջեռ. Պետերբ. ՀԱ 1892, 51։

— 199. Յակոբ վարդապետ, ուսուցիչ Կարապետ վարդապետի, վերջին ստացողի Աստուածաշնչի, 1449 Թ.—Թորոս աղբ. Բ. էջ 296

— 200. Յակոբ աշակերտ Կարապետ վարդապետի, որ էր վերջին ստացող Աստուածաշնչի, 1449 Թ.—Թորոս աղբ Բ. 296։

— 201. Յակոբ քահանա, միաբան Ցիպնայ դաստակ վանքի. կոչված է ժիր մշակ. 1450 Թ.—Ջեռ. Վասպ. 406, Նօտարք, էջ 166։

— 202. Յակոբ *սարկավագ, քարտուղար Առաքել Բաղիշեցու. տես իր մասին Յակոբ Ղրիմեցի. հիշված է 1426 և 1453 թվերին։—Ձեռ. Հալէպի, Ա. 104 բ, Տաշեան՝ Ցուց. 795, Ձեռ. Դաղեան, Ա. 42 ա։*

— 203. Յակոբ *միակեց, միաբան Վարագայ վանքի. հիշված է 1454 թ.—Նոտարք 176։*

— 204. Յակոբ *որդի Ստեփանոսի, եղբայր Ատոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 580)։*

— 205. Յակոբ, *հորեղբորորդի տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 582։*

— 206. Յակոբ, *որդի նույն տանուտեր Մանկտաւագի, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։*

— 207. Յակոբ *խոճա, որդի Մխիթարի և եղբայր Պօղոս աբեղայի, որ Բաղէշում օրինակեց մի Աւետարան, 1455 թ.—Նոտարք 178։*

— 208. Յակոբ *աբեղա, եղբայր Տրապիզոնի Յովհաննէս եպիսկոպոսի. օրինակեց Սաղմոսը և նվիրեց Տրապիզոնի Վերի Աստուածածնի վանքին, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 189։—Հմմտ. № 178 և № 185։*

— 209. Յակոբ, *հիշվում է իր միաբանակիցների հետ իբրև միաբան մի վանքի, որի անունը չէ հիշատակված, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։*

— 210. Յակոբ *կրոնավոր. գրիչ. օրինակեց Մայր Մաշտոցը Աղթամար կղզում, 1458 թ.—Ձեռ. Կարին. 137>Նոտարք, էջ 187։*

— 211. Յակոբ *աբեղա Ախքիրմանցի, թուղթ էր կոկում Նիկողայոս եպիսկոպոսի համար, երբ սա օրինակում էր Ճաշոցը՝ 1459—60 թվերին.*—REA *10, 62։*

— 212. Յակոբ *երեց Ախքիրմանցի, տող էր քաշում Նիկողայոս եպիսկոպոսի համար, երբ սա օրինակում էր Ճաշոցը՝ 1459—60 թվերին.*—REA *10, 62։*

— 213. Յակոբ, *հայր Պալայի, որ հիշված է մի խաչքարի վրա, 1460 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 494։*

— 214. Յակոբ, *պարոն. Լեհաստանի հայոց առաջավորներից, 1463 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 87> Նոտարք 210.—Հմմտ. № 188։*

— 215. Յակոբ, *հորեղբայր տանուտեր Աստուածատուրի,*

որ Ուշտունեաց Բերդաձոր վանքում, Մարգարէ գրչին գրել տվեց Աւետարանը 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443։

— 216. Յակոբ քահանա, հայր Յովհաննէս գրչի, որ Արծկէում օրինակեց Աւետարանը 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 217. Յակոբ, որդի նույն Յովհաննէս գրչի, որին օգնում էր նույն Աւետարանի արտագրության ժամանակ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 218. Յակոբ քահանա, կինն է Սալչուկ խաթուն. ծնողներն են Յովհաննէս կրոնավորի, որ Ղազար կրոնավորի (№ 72) համար օրինակել է մի Ճաշոց 1443 թ., Թուրվանդա խաթունի (№ 8) համար օրինակել է մի Աւետարան 1448 թ. և խոջա Ասլանի (№ 10) համար էլ մի Յայսմաւուրք ու երկու Աւետարան էլ Արծկէ քաղաքում 1459 թ. և 1464 թ.—Ձեռ. Վասպ. 404, Նոտարք 132, 191, 193, 219։

— 219. Յակոբ, որդի Յովհաննէս քահանայի, օգնում էր իր հորը՝ Աւետարանը օրինակելու ժամանակ՝ Արծկէ 1464 թ.—Նոտարք 219։

— 220. Յակոբ, գործակալ Խորձեանի Խլպաշի վանքում, 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 342, Նոտարք 218։

— 221. Յակոբ վարդապետ Կրակացի. ունի «Լուծումն Գրիգորի Նիւսացոյ Ե գրոց». օրինակված է 1464 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 115 բ)։

— 222. Յակոբ կրոնավոր, օգնական Ղազար գրչի, որ օրինակեց Շարակնոցը, 1464 թ. (տես Ղազար № 87).—Ձեռ. Սևան. 47 բ։

— 223. Յակոբ քահանա, գրիչ. Պօղոս սարկավագի հետ միասին Խարբերդի Սինամուտ Թաղում օրինակեց Ճաշու գիրքը 1466 թ.—Թորոս աղբ. Բ. 479։

— 224. Յակոբ, որդի Ստեփաննոս քահանայի, որ Հերմոնի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Թաւր. 132 բ։

— 225. Տէր Յակոբ քահանա Բիւրականի 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 226. Յակոբ, որդի Շատարեփ և հանգուցյալ եղբայր տանուտէր Առաքելի, որ Խիզանի Գամաղիէլ վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. էջ 455։

— 227. Յակոբ քահանայ, որդի Գրիգորի, գրիչ. Խարբեր-

գում, Յովհաննէս քահանայի հրամանով, գրեց մի Աւետարան, 1469 թ. (Bodleian 8)։ Հաջորդ տարին էլ Մարգարիտ տիկնոջ համար էլ (տես այս անունը, № 17) գրեց մի ուրիշ Աւետարան, 1470 թ.—անդ՝ էջ 9։

— 228. Յակոբ եպիսկոպոս, առաջնորդ սուրբ ուխտին Բաղնեց, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 480։

— 229. Յակոբ վարդապետ, ուսումնակից Աւագտէրի, որ Սարգիս վարդապետի աշակերտն էր, ապա առաջնորդ Սրկղունից Սպիտակաւոր վանքի. հիշված է 1475 թ.—Խաղբակեանք 232։

— 230. Յակոբ, որդի կաղ Աստուածատուրի, ստացավ մի Աւետարան, որ գրեց Աստուածատուր քահանան, Երզնկա 1477 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 628։

— 231. Յակոբոս, որդի Վարդաշահի և թոռ Խոսրովի, որ Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։

— 232. Յակոբ քահանա, գրիչ. օրինակեց «Գիրք ձեռնադրութեան» 1478 թ.—Տաշեան, Ցուց. 785։

— 233. Յակոբ, թոռն պղնձագործ Ըռուզբէկի, որ Կուքի գյուղում, Մանուէլ քահանային գրել տվեց մի Գանձարան, 1478 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 39 բ, Սմբատեանց՝ Երնջակ 195։

— 234. Յակոբ սպասաւոր եկեղեցւոյ, Ագուլիս 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 300։

— 235. Յակոբ քահանա, ստացող. գրել տվեց մի Աւետարան Աբրահամ գրչին, Բոլորաբերդի անապատում, 1482 թ.—Խաղբակեանք 236։

— 236. Յակոբ րաբունի, միաբան Բոլորաբերդի անապատում, 1482 թ.—Խաղբակեանք 236։

— 237. Յակոբ քահանա, նախ գրել է իր համար «Ցաղագս ազգականութեանց բաժանման» հատորը, 1439 թ. երբ դեռ նորընծա էր. ապա ծերութեան ժամանակ Յովհաննէս եպիսկոպոսի խնդրանոք գրեց Մաշտոցը 1482 թ. և երկուսը միացրեց մի, տփի մէջ։ Տեղն անհայտ է։—Ձեռ. Հալէպի, Ա. 163 բ։

— 238. Խոջա Յակոբ, որդի Կուրճի բէկի, Մկրտիչ քահանային գրել տվեց մի Յայսմաւուրք, Խարբերդի Խուլառ վանքում, 1482 թ.—Bodleian 33։

— 239. Յակոբ որդի Տէրտէրի, եղբայր Աբրահամի, որ գրիչ էր Բոլորաձորի վանքում, 1484 թ.—Տաշեան, Ցուց. 855

Խաղբակեանք 237 (ասում է թե այս Յակոբը վանքի տնտեսն էր, ինչ որ չկա Տաշեանի մոտ)։

— 240. Յակոբ տանուտեր. որդի պարոն Գրիգորի. Սալնապատում Մկրտիչ աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1485 թ.—Արցախ 148։

— 241. Յակոբ վարդապետ, միաբան Թադէոս առաքյալի վանքի. Զատկի տոնի առթիվ գնացել էր Թաւրիզ, ուր տեղի ունեցավ այդ ժամանակ Միրաք Թաւրիզեցու նահատակությունը. Յակոբ վարդապետը եղավ նրա հուղարկավորը, 1486 թ.—Նոր վկ. 325։

— 242. Յակոբ Բաղիշեցի, որդի Ջանիբէկի, եղբայր Կիրակոս երեցի Ջօշկանց կամ Հարջոշենց. հիշված է իր եղբոր հետ 1467 և 1487 թվերին. (տես Կիրակոս № 141 և 150).—Ձեռ. Վասպ. 115–6, Նոտարք 230։

— 243. Յակոբ քահանա, Եղեգեաց գավառի Հերմոնի վանքում օրինակեց Շարականը 1426 թ. և ապա վաճառեց Զաքարայ աբեղային, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 եր։

— 244. Յակոբ, ազգական Յովհաննէս երեցի, որ Բերկրիի Առեղս գյուղում, Սարգիս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 508։

— 245. Յակոբ գրիչ. ստացող Հաջի Մուրադի համար օրինակեց մի Ցայսմաւուրք, 1488 թ.—Manus. bibl. nat. էջ 102։

— 246. Յակոբ կրոնաւոր Գողթան գաւառի Բուստայ անապատում 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 275։

— 247. Յակոբ, որդի Ստեփաննոսի և եղբայր տանուտեր Արաբշահի, որ Աղբակի Էրնկանի գյուղում Մարգարայ գրչին գրել տվեց Աւետարանը 1490 թ.—Ձեռ. Վասպ. 511։

— 248. Յակոբ կրոնավոր, որդի Յովսէփի. մայրն է Փաշայ, եղբայրն է Սուքիաս, կինն է Արմանի խաթուն, եղբորը (Սուքիասի) կինն է Թուրվանդայ, սրա որդին է Ստեփանոս և սրա կինն է Նղաշ։ Յակոբի ուսուցիչներն են Թումայ, Հայրապետ և Յովհաննէս կրոնավորները։ Աղթամարում, խոջա Միրիջանի համար օրինակել է Աւետարանը 1493 թ.—Ձեռ. Վասպ. 519 և 520։

— 249. Յակոբ, միայնակեց և սպասավոր միաբաններին, կրտսեր եղբայր Աբրահամ վարդապետի, որ Եղեգիսի Վերի Նորավանք ուխտում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վասպ. 522։—Թվի թե նույն է № 254։

— 250. Յակոբ *Մարգինեան, միաբան Միլանի Բարսեղեանց վանքի. եկել է Ֆիորենցայի վանքը 1491 թ. հիշվում է իր կտակը 1495 թ.—Ուղուրլեան, Պատ. Լիվոռ. 246։*

— 251. Յակոբ *ճգնավոր, հորեղբայր Ազարիա աբեղայի, որ Եղեգիսում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։*

— 252. Յակոբ *եպիսկոպոս, առաջնորդ Աւեխու վանքի (Բաղէշի մօտ), 1496 թ.—Թօրոս աղբ. Բ. 426, ՀԱ 1937, 321։*

— 253. Յակոբ *որդի Գրիգորի՝ եղբոր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։*

— 254. Յակոբ *միայնակեաց, սպասավոր միաբանից, եղբայր Բոլորաբերդի վանքի առաջնորդ Զաքարիայի. Երկուսով ունէին մի Մաշտոց, որ օրինակելու համար տվին Վանական կրոնավորին 1498 թ.—Երկուսն էլ եղբայրներն են Աբրահամ աբեղայի, որ տես յաւել.—Խաղբակեանք 237—8։—Տես և № 249։*

— 255. Յակոբ *հանգուցյալ որդի Սաւուաղի, որ գնեց Սեբաստիա 1499 թ. գրված մի Գանձարան և նրա հիշատակին նվիրեց վանքին.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 317։*

— 256. Յակոբ *վարդապետ, աշակերտ Գրիգոր Տաթևացու. ունի Լուծմունք Դիոնեսիոսի Արիսպագացւոյ (ԺԵ դար)։—Կնիք հաւ. յոչ. 34։*

— 257. Յակոբ *Բ. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Մովսէս Բ Արտօնեցու և նախորդ Ներսէս Դ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։*

— 258. Տէր Յակոբ, *որդի Յովհաննէս քահանայի. գրիչ. Արծկէում օրինակել է մի Յայսմաւուրք (Մովսէս գրչի հետ) 1482 թ. և մի Աւետարան էլ առանձին՝ 1500 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 124։*

— 259. Յակոբ *գրիչ. օրինակել է մի Աւետարան Ս. Ստեփաննոսի վանքում, 1500 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 314։*

— 260. Յակոբ *Նետրաբենց, եպիսկոպոս Արծկէի, գրիչ, երգիչ և բանաստեղծ. ծնվել է Արծկէում, հայրն է Ներսէս քահանա, մայրը խաթուն Մելիք. եղբայրն է Ղազար քահանա († 1491 թ.). նախապես ամուսնացած էր Մեհրուբան անուն կնոջ հետ, որի մահից հետո (Ն. ք. 1464 թ) քաշվեց Արծկէի վանքը։ Իբրև գրիչ արտագրել է Արծկէում 1) Աւետարան 1464 թ. Գուլշատ խաթունի համար, 2) Աւետարան 1467 թ. 3) Աւետարան 1499*

Թ. Ստեփաննոս անուն անձի համար։ Եպիսկոպոս է ձեռնադրըված արդեն 1467 Թ։ Մեռել է 1501 Թ։ Ունի տաղեր Թվով 12, որոնց ցանկը և առաջին ու վերջին տները, ինչպես նաև հեղինակի կենսագրությունը տալիս է Ակինեան, Մատեն. հետազ. հտ. Դ. Վիեննա 1938, էջ 119—139, Նոտարք 218—9 (հիշատակում է սրտառուչ եղերական ողբը, որ հորինել է իր կնոջ մահվան առթիվ), 229, Կոստանեանց, Նոր ժողով. Բ. 20 (ապա ուղղված Գ. 63), Տաշեան, Ցուց. 1122 բ։ Ինքն է գրել ի խնդրոյ Մովսէսի՝ Տաղ Ս. Գէորգայ (հրտր. Վկ. գէ. էջ 68—69), ուր հիշված է ծայրանունը Յակոբ և սեռ. Յակոբի՝ էջ 69։

— 261. Յակոբ Կիլիկեցի. ստորագրում է «Մեղաւոր Յակոբ» և այս անունով էլ ճանաչվում է, իբրև առաջին հայ տպագրիչ։ Միանալով Իտալացի մի տպարանատիրոջ հետ (որի անվան սկզբնատառերն են D. I. Z. A.), Վենետիկում հրատարակեց հինգ հայերեն գիրք (1. Պարզատումար (օրացոյց), 2. Պատարագատետր, 3. Երազահան, 4. Տաղարան, 5. Բժշկարան)։ Այս բոլորը տպված են 1512—3 Թվերին և հայ տպագրության երախայրիքն են։ Նրանցից կարևոր է Տաղարանը, որ պարունակում է 26 զանազան հեղինակների տաղերը։ Սրանցից 16-ի հեղինակն է ժամանակակից Յովհաննէս Թլկուրանցի՝ կաթողիկոս Կիլիկիոյ, առաջին հայ հեղինակը, որ իր երկը տպված տեսնելու հաճույքը վայելեց։—Հայ-Վենետ. 308, Ազգապ. 2213։

— 262. Յակոբ վարդապետ, առաջնորդ Արճէշի. իր 30 ընկերներով նահատակվեց պատարագի ժամանակ՝ ավազակների ձեռքով, Արճէշի Մեծոփայ վանքում, «1552 Թ»։ Իր նահատակության վրա մի սիրուն տաղ տես Նոր վկ. 679—682։—Հայապ. 595. Ազգապ. 2263 (դնում է 1552 Թ. բայց ապա մոռանալով՝ էջ 5528 դնում է 1401 Թ։ Լավագույնն է առաջինը. Ջամչ. Գ. 514 դնում է 1551 Թ. իսկ Նոր վկ. անԹվական է)։

— 263. Յակոբ Ա. եպիսկոպոս. պատրիարք Կոստանդնուպոլսի. հաջորդեց գահընկեց Տիրատուրին և գահակալեց «1563—1573 Թ». օգնեց Աբգար Եւդոկիացուն, երբ սա իր տպարանը Վենետիկից փոխադրեց Պոլիս։—Ազգապ. 2260։

— 264. Յակոբ երեց Սսեցի. տաղասաց. հիշված է 1585 Թ. իր տաղերից տես Կոստանեանց, Նոր ժող. Դ. էջ 9—11. տես նաև № 266։

— 265. Յակոբոս, անհայտ ոմն, հիշված Բուչ. 56։

— 266. Յակոբ վարդապետ. տաղասաց. ունի «Տաղ Երու-

սաղէմի»՝ գրված 1635 թ. տես Կոստանեանց, Նոր ժող. Բ. 20. Տաշեան, Ցուց. 1122 ա տալիս է նրան նաև ուրիշ տաղեր և միացնում է նախորդի հետ։ Դժվարություն է հարուցանում թվականը։

— 267. Յակոբ քահանա Արծկէացի. տաղասաց. իր տաղերից տես Կոստանեանց, Նոր ժողով. Բ. 19—20. ունի ոտանավոր Պատմութիւն Զարմանազան Թագաւորին (Manus. brit. mus. 277 բ—278 ա)։ Իր անվան է անցկացրել Կոստանդին Երզնկացուց և Գրիգոր Աղթամարցուց մի մի տաղ։ Ավելի առաջ է քան 1647 թ։—Տես Կոստ. երգն. 180. նաև Տաշեան, Ցուց. 1122 բ։

— 268. Յակոբ Ակնեցի, հեղինակն է Գաբրիէլ Ղալաթիացի նահատակի († 1662 թ) վկայաբանության, որ տպված է Նոր վկ. 484—7։

— 269. Յակոբ Կարնեցի, որդի Գէորգ քահանայի. ապրել է 1622—1662 թ. (ըստ Խաչատրեան, Տեղեկ. հմլս. 1, էջ 50)։ Ունի «Տեղագիր Վերին Հայոց» (տպ. Վղրշպտ. 1903 թ), որ գրել է խնդրանոք Կարնոյ քահանաների և հատկապես իր եղբոր՝ Մաղաքիայի (տես Յկ. կր. էջ 53, 60)։ Գրության թվականը չի գրված, բայց պատմած դեպքերը հասնում են մինչև 1662 թ։ Գրվածքը մի փոքրիկ հատոր է, ընդ ամենը 52 փոքրադիր էջ։ Նկարագրում է Բարձր Հայոց (Կարնոյ) նահանգը. տեղագրություն, քաղաքներ, գյուղեր. բերդեր, վանքեր, գետեր, վաճառականություն, բերքեր. երբեմն էլ տալիս է ժամանակակից պատմական դեպքեր։ Հետաքրքրական են իր նկարագրության մեջ երկրի բերրիությունը, հարստությունը, ժողովուրդի բարեկեցությունը, և որ անսպասելի էր՝ տաճիկ կառավարիչների բարեհաճ վերաբերմունքը դեպի հայերը, և սրան իբրև հետևանք՝ հայ և տաճիկ ժողովուրդի համերաշխությունը։ Գիրքը թարգմանված է նաև ֆրանսերեն (F. Macler, Paris 1919)։ Յակոբ Կարնեցունն է նաև «Մեկնութիւն երգ երգոցի», Վիեննայի Մխիթարեանց Ձեռ. № 736։ Վերջինիս մասին տես Ոսկեան, Երգ երգոցի Ա և Բ թրգմ. Վիեննա 1924, էջ 41։

— 270. Յակոբ Գզիր, որդի Ղուլեկի, նոր վկա. չուրանալով հավատքը՝ քարկոծությամբ նահատակվեց Կարինում, «1673 թ».—Նոր վկ. 500—501։ Զքր. սարկ. Բ. 125 դնում է 1667 թ.> Փիրղալէմեան, Զորս ընկերք, էջ 74։

— 271. Յակոբ քահանա, տաղասաց. ունի մի տաղ Երուսաղէմի վրա. «Ցաստուծոյ շինեալ քաղաք պատուական», որ

գտնում եմ 1679 թվին գրված մի ձեռագրում.—Ձեռ. Թաւր. 136 բ։

— 272. Յակոբ երեց Եւդոկիացի կամ Թոխաթցի, տաղասաց. ծնվել է 1573 թ. Եւդոկիայում, Բաթուկենց ընտանիքից։ Հայրն էր Ալթուն, պապը Աստուածատուր։ Աշակերտել է Այվաթենց Յակոբ քահանային։ Թողեց Եւդոկիա քաղաքը և գնաց նախ Ռումինիայի Եաշ քաղաքը, ուր ձեռնադրվեց դպիր (1593 թ), ապա քահանա։ Այս թվին տեղի ունեցավ Ղազախների հարձակումը Եաշի վրա, որից չարաչար տուժեցին հայերը և հատկապես հայոց եկեղեցին։ Յակոբ Թոխաթցին գրեց այս հարձակման պատմությունը, որ հեղինակի առաջին տաղն է, գրված 17 տարեկան հասակում և կրում է այս վերնագիրը. «Ողբ է վերայ Օլախաց երկրին» (տպ. Ակինեան, Մատեն. հետազ. հտ. Դ. էջ 13—21, ու. պետք չէ շփոթել Մինաս Թոխաթեցու համանուն տաղի հետ)։ Այս դեպքից հետո Յակոբ քահանան իր ընտանիքով անցավ Լեհաստան, ուր Զամոսցա քաղաքում, 1601/2 թվին նորահիմն հայ գաղութի քահանան դարձավ։ Այստեղ արտագրեց մի Ճաշոց, մի Յայսմաւուրք և մի Մաշտոց։ Թարգմանեց լատիներենից «Եօթն իմաստասիրաց պատմութիւնը» (1614 թ) և գրեց մի խումբ տաղեր։ Ոտանավորի վերածեց ամբողջ Սաղմոսը (1627 թ) և Նարեկի մի մասը։ Այս բոլորը անարվեստ բաներ են։ Տաղերից նշանավոր է «Ողբ ի վերայ Եւդոկիա քաղաքի» (1602 թ. տես Հայտպ. 608)։ Մեծ հաջողություն է ունեցել Եօթն իմաստասիրացը, որ կոչվում է նաև Պատմութիւն Փոնցիանոս կայսեր։ Այս գիրքը որի սկզբնական բնագիրը հնդկերեն է, թարգմանված է բազմաթիվ լեզուների. այսպես՝ պահլավերեն, ասորերեն, արաբերեն, պարսկերեն, լատիներեն, իտալերեն, ֆրանսերեն, գերմաներեն, լեհերեն և ռուսերեն։ Լատիներենից թարգմանվեց հայերենը (1615 թ.) և հայերենից էլ հայատառ թուրքերեն և տաճկերեն։ Հայերենը տպված է տասն անգամ (առաջին տպ. Պոլիս 1693), հայատառ թուրքերենը 3 անգամ։ 1635 թվին ուխտի է գնացել Երուսաղէմ և այս առթիվ գրել է մի տաղ. «ՅԱստուծոյ շինեալ քաղաք պատուական»։ Մեռել է 1680 թ. 107 տարեկան հասակում։—Իր մասին ընդարձակ տես Ակինեան, Հինգ պանդուխտ տաղասացներ, Վիեննա 1921, էջ 141—202 և Մատեն. հետազ. հտ. Դ. 1938, էջ 3—21։ Կամենից 171, 179, 137. տես նաև Տաշեան, Ցուց. 1121 բ, Ձեռ. Հալէպի, Բ. 127, Կարապետեան՝ Յիշատ. Սամաթ. 83, Manus. bibl.

nat. *159։ Վերջինս՝ էջ 160 եօթն իմաստասիրաց թարգմանությունը տալիս է Յակոբ Թոխաթեցու աշակերտին, բայց սխալ է, որովհետև Յիում է իր ձեռագիր հիշատակարանը՝ հետևյալ ձևով. «Ես Յակոբ երեց Թուխաթցի՝ որ եմ թոռանց Բաղուկենց, թարգմանեցի գգեղեցիկ պատմութիւնս ի լատինական գրոց ի հայ գիր, ի խնդրոյ վարժապետին իմոյ Թօխաթցի Տէր Յակոբին, որ ասեն Այվաթենց. Թվ. ՌԿԳ=1614» (Ձեռ. Հալէպի, Բ. 143 բ)։—Շփոթվում է իր հայրենակից Մինաս դպիր Թոխաթեցու հետ և նրան է ընծայվում սխալմամբ Պղնձէ քաղաքը։*

— 273. Յակոբ Դ *Ջուղայեցի, կաթուղիկոս հայոց «1655—1680 թ»։ Ծնվել էր 1598 թ. Հին-Ջուղայում. Շահաբասի գաղթականության ժամանակ, 7 տարեկան հասակում տարվեց Սպահան։ Աշակերտել է Խաչատուր վրդ. Կեսարացուն, եղել է նվիրակ, ապա վանահայր Մաղարթու Ս. Ստեփաննոս վանքի, որ ի հիմանց նորոգեց։ Կաթողիկոսության ժամանակ աշխատեց լուսավորության գործը բարձրացնել. Մատթէոս Ծարեցուն և ապա Ոսկան վարդապետին ուղարկեց Ամստերդամ՝ հայկական տպարան հիմնելու։ Շինեց էջմիածնի զանգակատունը «1658 թ», Բասաղ գետից առու բերեց վանքը (քանքան), նորոգեց Մուղնի, Խոր Վիրապ, Սանահին, Յովհաննավանք, Տաթևի Մեծ Անապատը ևն։ Եղիազար Այնթապցին ուզելով բաժանել Տաճկաստանը էջմիածնի կաթուղիկոսությունից, Յակոբը երկու անգամ համբորդեց Կարին, Պոլիս, Երուսաղէմ և խաղաղության վերջ տվեց։ «1678 թվին» էջմիածնում Ղարաբաղի մելիքների հետ՝ Իսրայէլ Օրու թելադրությամբ ժողով գումարեց, Պարսկահայաստանի անկախության գործի համար՝ Արևմուտքի օգնությամբ։ Այս առթիվ մինչև անգամ դիջեց ընդունել Հռոմի գերիշխանությունը։ «1679 թվին», 80 ամյա կաթուղիկոսը ճանապարհ է ընկնում Պոլիս, այստեղից Եվրոպա անցնելու՝ անկախության գործի համար։ Բայց մահը վրա է հասնում «1680 թ»։ Իր գործը շարունակեց Իսրայէլ Օրին։—Ջուղ. 117, 121, 141, 149. Ջբր. սարկ. Ա. 53, 77. Բ. 49, 51, 58, լե, լը—խդ, խզ, խէ, ծբ. Մ. Մաշտ. 336 բ. Սամ. անեց. շար. 179. Առաք. պատմ. 262, 266—7, 272, 333, 338—9, 404—5. 421, 425, 500, 503, 517—8. Ջբր. ագուլ. 45, 57, 66, 86, 108, 110—1, 118, 120, 128—9, 145; 151. Կամենից 257—265 (իր կոնդակները Լեհահայերին), Ջամբռ 23, Ձեռ. Վենետ. Բ. 1234. Պալճեան 163 (պապին հպա-*

տակվելու մի թուղթ, որ գրել է մահվան անկողնում)․ Այրարատ 164. Զամչ. Գ. 647—719. Ազգապ. 2505—2634։

— 274. Յակոբ քահանա, բժիշկ Սպահանում 1681 թ.— Թորգոմեան, Ներբող 27։

— 275. Յակոբ Սեբաստացի, մականունը Օքսուզ. տաղասաց.—Տաշեան, Ցուց. 1067 ա։

— 276. Յակոբ քահանա Գրիգորենց, գնացել է Անգլիա (Հարուիճ, Լոնդոն են) և 19 գլուխ ոտանավորով նկարագրել է անգլիական ժողովրդի կենցաղը.—Ձեռ. Վեներ. Բ. 1186։

— 277. Յակոբ վրդ. Ցովսէփեան, կաթոլիկ քահանա Հալէպցի. Աբրահամ Աթարի հետ ման եկաւ Պաղեստին և այլ շատ տեղեր. ի վերջոյ քաշվեցին Լիբանան, ուր կաթոլիկ Մարոնիներից պաշտպանութիւն գտնելով՝ հիմնեցին Անտոնեան միաբանութիւնը՝ յանուն ս. Անտոն աբբայի, 1705 թ.—Փափազեանց, Պատմ. եկեղ. 945։

— 278. Յակոբ Նաղաշ, տաղասաց, որդի Նաղաշ Յովնաթանի († 1722 թ), Շոռոթեցի. ունի 18 տաղ սիրային բովանդակութեամբ և ուրիշ մի տաղ էլ իր հոր մահվան վրա՝ «Ողբերգութիւն յաղագս մահուան Նաղաշ Յովնաթանի». գրել է նաև թուրքերեն և վրացերեն։ Տաղերը թույլ բաներ են. հեղինակը ավելի նշանավոր է իբրև նկարիչ։ Իր մասին տեղեկանք տես Ակինեան, «Յովնաթան Նաղաշ», Վիեննա 1911, էջ 86 ևն։ Տաղերի մասին տես Տաշեան, Ցուց. 1121 գ։ Ողբը հրատարակվեց Փարիզ 1910, «Նաղաշ Յովնաթան» աշխատության մեջ, էջ 113—116։

— 279. Յակոբ Տէր-Ղազարեան, Խարբերդցի, տաղասաց. իր տաղերը տես Տաշեան, Ցուց. 821 (1734 թվից)։

— 280. Յակոբ, նոր վկա. պատանի հասակում հավատքի համար նահատակվեց Պոլսում «1735 թ.»—Ազգապ. 3001։

— 281. Յակոբ Գ Ամթեցի, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Սահակ Աղբակեցու և նախորդ Նիկողայոս Սպարկերտցու (ԺԸ դարի կեսից առաջ),—իբր անարժան գահընկեց է եղել «1740 թ».—Հաւաք. 64 (կեղծիք). Ազգապ. 2954։

— 282. Յակոբ Պետրոս Բ, կաթուղիկոս կաթոլիկ հայոց. հաջորդեց Աբրահամ Պետրոս Ա-ին և նստավ «1749—1752 թ».— Ազգապ. 2973, 3013։

— 283. Յակոբ վարդապետ Շամախեցի, տաղասաց. իր տաղերը տես Տաշեան, Ցուց. 1121 գ. սրանց մեջ կարևոր է հատ-

կապես «Ղազարապատ դարմանաշէն» (ուստի գրված 1750 թվին, երբ շինվեց Ղազարապատ կոչված հյուրանոցը Էջմիածնում)։— Այս բոլորը ստիպում են մեզ ընդունել թե նույն է հաջորդի հետ։

— 284. Յակոբ *Ե Շամախեցի, կաթողիկոս հայոց «1759—1763 թ». նախապես տեղակալ և կոնդակագիր էր. Սահակ Ահագինի մերժումից հետո ընտրվեց կաթողիկոս։ Գրել է Գաւազանագիրք (որա մասին տես Ձեռ. Ներս. էջ 51)։ Կազմել է Էջմիածնի բոլոր իրավունքների մասին եղած վավերագրերի ցուցակը, դիմել է Երևանի Հիւսէին-Ալի խանին և ստացել է Էջմիածնի 14 գլուխ իրավունքների համար հաստատութեան թուղթ (Ջամբռ 232—3)։ Ունի մի թուղթ Ռուսաց Եղիսաբեթ կայսրուհուն («1760 թ»), որով խնդրում է «հայ ողորմելի ժողովուրդին ու վրաց մասին հոգացողութիւն ունենալ»։— Մ. մաշտ. 337 ա. Ջամբռ 32. Ջամչ. Գ. 865—871. Ազգապ. 3001—3020։*

— 285. Յակոբ *Նալեան, պատրիարք Պոլսոյ, «1741—1749 թ». հաջորդեց Յովհաննէս Կոլոտի, որի աշակերտը և օգնականն էր եղել նախապես։ Շարունակեց Կոլոտի գործը նույն եռանդով։ 1749 թվին Պրոխորոնը խլեց պատրիարքական գահը և թեև ութ օրվա պատրիարքութիւնից հետո աքսորվեց, բայց Նալեանը չուզեց շարունակել իր պաշտոնը և հրաժարվեց։ Իր տեղ նըստավ Մինաս Ակնեցին։ Յակոբը քաշվեց Պրուսա՝ իբրև առաջնորդ։ Նույն ժամանակ Երուսաղէմի պատրիարք Գրիգոր Շղթայակիրը մեռավ «1749 թ» և Նալեանը ընտրվեց պատրիարք Երուսաղէմի։ «1752 թվին» Նալեանը երկրորդ անգամ Պոլսի պատրիարք եղավ։ Հաջորդ տարին Էջմիածնից պատգամավորութիւն եկավ հրավիրելու նրան իբրև կաթողիկոս Էջմիածնի, բայց Նալեանը չուզեց հեռանալ իր աթոռից։ Նույնը կրկնվեց 1756 թվին, Աղեքսանդր Բ. կաթողիկոսի մահվանից հետո։ Նալեանը մնաց իր աթոռի վրա մինչև իր մահը՝ «1764 թ»։ Իր գործերն են Վէմ հաւատոյ (տպ. 1733), Քրիստոնէական (1737), Մեկնութիւն Նարեկի (1745), Հոգեշահ (1746), Ծրագ ճշմարտութեան (1756), Զէն հոգևոր (1757), Գանձարան ծանուցմանց (1758), Գիրք աղօթից (1760), Յառաջաբան Եղնիկի (1762), Զունայնութենէ կենցաղոյս (յետ մահու հրատ.)։ Իր անունով է Կտակ խաչելութեան (Ձեռ. Թաւր. 125—6)։ Ինչպես այս գործերը ցույց են տալիս, Նալեանի նպատակն էր հայթայթել և տալ ժողովուրդի ձեռքը կաթոլիկական ոտնձգութեանց դեմ ազդու մի զենք, որ-*

*դեսպի կարողանային բանավեճին բանավեճով պատասխանել և ոչ թե կովով։—Զամչ. Գ. 812—874, Ազգապ. 2919—3041։*

— 286. Յակոբ *կօշկակար Մարաշցի. համառը չուրանալով խեղդամահ նահատակվեց Իպիշ անուն ոստիկանի ձեռքով ԺԸ դարի վերջերը. նրա վրա կառուցին Ս. Յակոբ մատուռը՝ Զէյթունի այգիների և Կարսայ կամուրջի միջև։—Սիսուան 187 ա։*

— 287. Յակոբ *քահանա Ամասիացի, տաղասաց (ԺԸ դար).—Տաշեան, Ցուց. 1121 բ։*

— 288. Յակոբ *Պետրոս Է. Հոլասեան, կաթուղիկոս կաթոլիկ հայոց, հաջորդեց Գրիգորին և գահակալեց «1841—1843 Թ».—Ազգապ. 3764։*

— 289. Յակոբ *Սերոբեան, պատրիարք Պոլսի. ընտրվեց իբր հաջորդ Ստեփաննոս Աղաւնի պատրիարքին «1839 Թ», հատկապես կովելու համար բողոքականության դեմ։ Յակոբոսը իրոք որ շատ խիստ գտնվեց, բայց անգլիացոց միջամտությամբ դատի կանչվելով, ստիպվեց չափ դնել իր խստության։ Ուշ դարձըրեց Իւսկիւտարի ճեմարանը զարգացնելու և նրա միջոցով պայքարելու այդ շարժման դեմ։ Ամիրայական պայքարի ժամանակ հասարակ ժողովրդի կողմը բռնելով՝ իր դեմ լարեց ամիրաներին, որոնք գահընկեց արին նրան «1840 Թ»։ Երկրորդ անգամ գահ բարձրացավ «1848 Թ». իբրև հաջորդ Մատթէոսի, հրաժարվեց «1858 Թ» և մեռավ Երուսաղէմում «1862 Թ»։—Ազգապ. 3722, 3730, 3879, 3987։*

— 290. Յակոբոս *Պետրոս Թ. կաթուղիկոս կաթոլիկ հայոց. ընտրվեց «1871 Թ» չեղյալ համարվելով Անտոն Պետրոս Թ Հասունը (Ազգապ. 4316)։*

— 291. Յակոբ *եպիսկոպոս Թօփուզեան. գրել է Լիմ անապատի պատմությունը՝ սկսելով Բեղլու Ներսէս վրդ. Մոկացուց, որ Տաթևից գնալով Լիմ, հիմնել է այնտեղ խստակրոն միաբանություն 1621 Թ. և հասցնելով մինչև Գաբրիէլ եպս. Շիրոյեանցը (1830), որին հաջորդեց ինքը 1847 Թ. և մեռավ 1877 Թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 59 ա։ (Նոտարք ունի սրանից կարճ հատվածներ՝ էջ 171, 207)։*

**ՅԱԿՈԲԻԿ*, *արմ. նախորդ* Յակոբ *անվան փաղաքշական ձևն է, որ գործածական է այժմ։ Հնից ունինք մի անգամ՝*

— Յակոբիկ *Շնորհալից. մանր մատենագիր. գրել է «Վիճաբանութիւն ընդ ամիրապետին և ընդ հրէից». ժամանակն անհայտ.—Զարբ. Հին դպր. 786։*

*ՅԱԿՈԲՇԱՀ, ար.<նախորդ Յակոբ անունից+պրս. شاه šāh «թագավոր»։ Հիշատակված է ԺԵ դարից։

— 1. Յակոբշահ, հայր խօջա Մասուղշահի, որ Թաւրիզի երևելիներից էր և որի խնդրանոք գրեց Տաթևացին իր քառահատոր Ոսկեփորիկը 1401—7 թ.—Նոտարք 27, Տաշեան, Ցուց. 402 (տես և Մասուղշահ)։

— 2. Յակոբշա, եղբայր Առիւծի. մի Աւետարան նվիրեց Եաշ քաղաքի (Ռումինիա) Ս. Աստուածածին եկեղեցուն, 1451 թ.—Կամենից 161։

— 3. Յակոբշա, ամուսին Սուլտանի և քեռայր Յովհաննէս աբեղայի, որ Աղրակի Ասփսթան գյուղում ստացավ մի Աւետարան, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 ա։

— 4. Յակոբշա ոմն Սուրս գյուղից, հիշված 1469 թ. (Ձեռ. Վասպ. 455)։

*ՅԱԿՈԲՋԱՆ, ար.<վերի Յակոբ անունից+ջան փաղաքշականով։ Հնագույն հիշատակությունը ԺԵ դարից է. ապա ԺԷ դարից (Զքր. ագուլ. 98 և Ձեռ. Դաղեան, Բ. 26 ա)։ Յակոբջան 1596 թ. (Ձեռ. Վասպ. 748), 1618 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 594)։ Կենդանի էր դեռ անցյալ դարում Պոլսում։ Սրանից է Յակոբջանեան ազգանունը։

— Յակոբջան, որդի խօջա Բաղդասարի (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 724։

†ՅԱՂԹՈՒՀԻ, իգ.<հյ. յաղթել արմատից։ Նորահնար անուն, որ հանդիպում ենք Հնդկաստանում! (տես Գուշակեան, Հնդկահայք, էջ 339)։ Համապատասխանում է լտ. Victoria անվան, եթե նրա զուտ թարգմանությունը չէ։

ՅԱՂՃՈՅ։ իգ. ծագումն ինձ անհայտ. բայց անշուշտ օտար։ Հիշված եմ գտնում մի անգամ 1703 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 364 բ), երբ մեծ մայր (տատ). ուստի պետք է համարել ԺԷ դարից։

ՅԱՂՐՈՒՆ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված է Bodleian 147, թիվն անհայտ։

*ՅԱՄԱՆ, իգ. ծագումն անհայտ, որովհետև գրության ձևն էլ անորոշ է. կա թե Յաման և թե Համան ձևով. այսպէս՝ Յաման 1647 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 692), 1648 թ. (Ձեռ. Վասպ. 436), 1674 թ. (անդ 990), 1696 թ. (Տաշեան, Ցուց. 591), 1756 թ. (Ձեռ. Վասպ. 313—4), անթվական (անդ 392 և Ձեռ. Թեհր. 8 բ=ՀԱ. 1935, 399), Յամոն 1613 թ. (Ձեռ. Վասպ. 848), բարդությամբ Յաման-սուլթան իգ. 1575 թ. (անդ 688), Համանփաշա

իգ. 1582 Թ. (անդ 696), տես նաև Համան բառի տակ։ Ունինք նաև Համասուլթան (Ձեռ. Վասպ. 746), որ Թերևս պետք է կարդալ Համան-սուլթան։ Ըստ այսմ ծագումը կարող է լինել արաբ. يمن Yaman (Երջանիկ Արաբիա, Եմէն) կամ Թրք. يمان yaman, որի նշանակությունն է «սոսկալի» (Թե լավ և Թե վատ մտքով), նաև պրս. همان haman «հենց նույն»։ Օր. Յաման-Սուլթան կարող է լինել «Եմէնի Թագուհի», Համանգուլ պրս. «հենց նույն վարդը» են։

ՅԱՄԲՈՒՇԱՏ, ար. ծագումն անհայտ։ Ըստ մի արաբ հեղինակի ավանդության՝ Յամբուշատը մի հայ հեղինակ է, որ գրել է Բուսաբանության կամ Երկրագործության մասին մի գիրք՝ Հայկազանց և Բաբելացոց կամ Ասորեստանցոց ժամանակ (տես Ալիշան, Հին հավատք 78)։

* ՅԱՄԴԻՔՈՍ, ար.<հուն. Ἰάμβλιχος անունից. այս անունով հայտնի են՝ Նոր-պլատոնական մի փիլիսոփա (Դ դար), Սիրիացի հույն մի վիպագիր (Բ դար), Եմեսայի մի Թագավոր՝ Կեսարի կուսակիցներից։

— Յամդիքոս, վանական Շիրմի վանից, եղբայր Մովսէս վանահոր. երկուսն էլ մեռել են նույն «1002 Թվին»։—Ասող. Գ. ժէ։

* ՅԱՆԷՍ. երեի Յովհաննէս անվան աղավաղյալ մի ձևն է։

— Եանէս Նոզիր-էլ-ձույուշ, հայազգի վեզիր Եգիպտոսի՝ 1131—1134 Թվերին. Թերևս որդի Շահնշահ վեզիրի. բռնամահ եղավ։—Ալրուսահլ, էջ 72։

ՅԱՆՈՒՂ, ար. ծագումն անհայտ, ըստ որում վերջածայնն էլ անհայտ է.

— Յանուղ իշխան աԹոռակալ Սսոյ (Կիլիկիայի) 1585 Թ. (Ձեռ. Վենետ. Բ. 1205). նույնը գրված է Յանուզ Սիսուան 229 ա։

* ՅԱՇԿՈՒԼ, իգ. եԹէ ուղղելի չէ Յազգուլ (տես այս անունը), ծագում է Թրք. ياش گل yaš-gul բառից, որ է «Թարմ վարդ». հիշված է մի անգամ 1629 Թ. (Կամենից 183)։

ՅԱՇԿՈՒՐ, ար. ծագումն անհայտ. ունինք միայն՝

— Յաշկուր Արծրունի, պատգամավոր գնաց Վահան Մամիկոնեանի կողմից Պարսից Նիխոր զորավարի մոտ «484 Թ»։—Փարպ. գ. Արծր. Բ. բ։

Յասամին ար. տես Եասմին։

† ՅԱՍՄԻԿ, իգ.<հյ. յասմիկ անուշաբույր ծաղկի անունից.

հմմտ. Yāsmīneh պարսիկ գրագիտուհի †1108 թ. (Justi 145 բ). Օտար ձևով ունինք Եասմին, որ տես առանձին։ Բագնայրի արձանագրություններից մեկում հիշված է Յայսմիկ (տես. Յայսմականն ձևով), Շիրակ 121, բայց ոչ սեռն է հայտնի և ոչ թվականը։ (Բագնայրի հիշյալ արձանագրություններից հնագույնը 1207 թվից է, իսկ վերջինը 1289 թվից։ Ըստ այսմ նույն Յասմիկն էլ ԺԳ դարից պիտի լինի)։ Այլուր ավանդված չէ. ուստի կարող ենք ասել թե արդի Յասմիկ անունը նորահնար ձև է։

ՅԱՏԱՐ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ ունինք՝

— Յատար, մեծ պարոն, հիշված Կապուտում, 1303 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 36։

*ՅԱՐԱԲ, ար.<արաբ. يارب yá rabb «ով Տէր» բառից (կամ գուցե عرب ʿarab «արաբ» ազգի անունից)։ Կա միայն՝

— Յարապ, որ Երուսաղեմում ստացավ մի Աւետարան և նվիրեց Խանձառ գյուղին 1499 թ.—Ձեռ. Կես. ածած. 48 ա։

*ՅԱՐԱԶԻԶ, ար.<պրս. يار yār «սիրելի, բարեկամ»+արաբ. عزيز ʿazīz «սուրբ, նվիրական» բառերից։ Այս ձևով գտնում եմ մի անգամ հիշատակված ուշ ժամանակի անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Վասպ. 618)։ Այս ձևը ավելի լավ է բացատրում Արազիզ անվան ծագումը, որ վերը Ամիր-Ազիզ ձևից կրճատված եմ համարել։ Բառասկզբում յա=եա>ա դառնալու օրինակներ են Աղուբ «Եաղուբ», Աղմուր «Եաղմուր», Ազգուլ «Եազգուլ», Աղութ «Եաղութ» են։

ՅԱՐՈՎԷՆ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է միայն՝

— Յարովէն քալանթար Երևանի՝ «1747 թ».—Զամչ. Գ. 837, Աղգալ. 2961։

ՅԱՐՈՒԶ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված եմ գտնում 1610 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 684)։

†ՅԱՐՈՒԹԻՒՆ, ար.<հյ. յարութիւն բառից, ակնարկությամբ Քրիստոսի հարության (որ և Զատիկ), իբր թրգմ. հուն. Ἀναστάσιος (Անաստաս) անվան, որ բուն նշանակում է «յարութիւն (Քրիստոսի)»։ Ժողովրդական ձևերն են Արութին, Արթին, Արութ, Յարութ, Յարօ, Արթօ, Արթաքի։ Հնում կար Յարէ (տես Ձեռ. Նոր-Բայազ. 51 ա), բայց այժմ գործածական չէ։ Յարութիւն անվան հնագույն հիշատակությունը դնում է Ը կամ Թ դար ըստ Justi, և իգական է! (այս դեպքում պետք է համարել հուն. Ἀναστάσια իգ. ձևի թարգմանությունը)։ Իբրև ար. հիշված է նախ 1387 թ. կամ քիչ ուշ, «Արութէն» ձևով. «Արու-

թին» ձևը ունի Երեմ. չէլ. օրագր. 582, «Ցարօ» ձևը հիշված է 1682 թ. (Ձեռ. Վասպ. 952), «Ցարթէն» ձևը հիշված է 1731 թ. (Ձեռ. Վասպ. 1022), իսկ «Արթէն» ձևը 1754 թվից տես Ձեռ. Թաւր. 91 բ։ Կովկասում այժմ կա և Արտեմ ձևը, որ ռուս. Артемий անունից է և ոչ մի կապ չունի սրա հետ (տես Արտեմ)։ Ղարաբաղում խիստ կրճատմամբ դարձել է Թի՛ւնի, կոչ. Ա՛թիւն, որ նաև հասարակ անուն է և նշանակում է «անճարակ» (սրա ծագման մասին տես Արմ. Բռ. թօնի)։ Սրանցից են ծագած Ցարութիւնեան, Տէր Ցարութիւնեան, Արթինեան, Թիւնեան, Թիւնիբէգեան ազգանունները։

— 1. Ցարութիւն, իգ! կին Վարազ-Տրդատ Բ թագավորի Աղուանից (Justi 127 բ ըստ Brosset)։

— 2. Ցարութիւն (գրված Սրութէն) ոմն, հիշված է 1387 թ. կամ քիչ ուշ։—Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 45։

— 3. Ցարութիւն, գրիչ. օրինակեց մի Տոմարատետր, 1389 թ.—Ձեռ. Սևան. 40 բ։

— 4. Ցարութիւն Անդրէասայ, ազնվական քաղաքացի Կաֆայում. սրան գրեց ի միջի այլոց Կոստանդին Զ Վահկացի կաթուղիկոսը՝ Ֆլորենտիայի ժողովի առթիվ, 1438 թ։—Գալճեան 88։

— 5. Արութիւն ոմն, որի դամբանը գտնվում է Շամախու Նորաշէն գյուղի հին գերեզմանատնում 1454 թվից։—Բարխուտ. Աղուանից երկ. 200։

— 6. Արթին խոջա պէկ, հոգևոր հայր Ցովսէփ եպիսկոպոսի, որ Կամախի Վարդենցոց վանքում օրինակեց Սաղմոսարանը 1476 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 248։

— 7. Ցարութիւն քահանայ Խալֆայեան, Վանեցի, պատմիչ ԺԸ դարու կամ ավելի ուշ.—Նոտարք 171։

— 8. Ցարութիւն, որդի Քերոբէ Ջիլճեանի, որ 1622 թվին Սև ծովի եզերքից գաղթել է Պոլսի Սամաթիա թաղը և դարձել արքունի պղնձագործ։ Հիմնել է այնտեղ (Ս. Սահակեան վարժարանի դիմացը) ծնծղայի մի գործարան։ Իր որդին՝ Ցարութիւնը անում է մի այնպիսի գյուտ, որով ծնծղայի ձայնը հնչում է քաղցր և երկար։ Իր գյուտը մնում է գաղտնի մինչև այժմ Ջիլճեան գերդաստանում և օգտագործվում է նույն թաղի ծնծղայի գործարանում (Կարապետեան, Ցիշատ. Սամաթ. 341)։ Այդ գերդաստանի մի անդամը, որ իմ դպրոցական ընկերն էր և փոխադրվեց Երևան, հայտնեց ինձ որ Ջիլճեանները այժմ գնացել են Ամերիկա և ստանալով մենաշնորհ, հիմնել են նոր և մեծ գործարան։

— 9. Յարութիւն (*կամ* Pascal), *բացեց առաջին սրճարանը* (café) *Պարիզում, Սէն-Ժերմէն թաղի տօնավաճառում և* Quai de l'Ecole, *1672 թ։ Իր խանութի աշակերտն էր* Francesco dei Coltelli, *որդի* Onofrio-*յի, Պալերմոյի ազնվական, որ ապա իր անունը փոխեց և դարձրեց* Procope։ *Յարութիւնը հաջողություն չունեցավ, ուստի քաշվեց Լոնդոն։ 3—4 տարի հետո, մի ուրիշ հայ,* Maliban *անունով, բացեց մի ուրիշ սրճարան,* Bussy *փողոցում և ապա* Férou *փողոցում։ Սա էլ գնաց Հոլանդիա, խանութը թողնելով իր աշակերտ* Գրիգորին, *որ մի քանի ուրիշ հայերի հետ եկել էր Սպահանից։ Գրիգորը հարստացավ և սեփական տուն էլ գնեց։—Յուշիկք, Ա. 73, Միսաքյան 476 բ,* Mathorez REA *հտ. 2, պր. 1, էջ 87։*

— 10. Յարութիւն *Բիւզանդացի, կոչված Էքսէրճի օղլու (որդի գամ վաճառողի). Մինաս Ամթեցի պատրիարքի († 1704) սարկավագն էր. ունի բազմաթիվ տաղեր հայերեն և թուրքերեն.—Զամչ. Գ. 748։*

— 11. Յարութիւն, *կոչված «Թամբուրչի քիւչիւկ Արութին». Թվի Պոլսեցի. նվագածու էր և Մուստաֆա փաշայի և դեսպան Ավտիլ Չէքի խանի հետ Պարսկաստան գնաց։ Տեղի վրա գրեց Թահմազ Ղուլի խանի (ապա թագավոր դարձած Նադիրշահ անունով 1736 թ) և նրա արշավանքի պատմությունը դեպի Աֆղանիստան և Հնդկաստան, հայատառ թուրքերեն լեզվով։ Տըպված է Վենետիկ 1800 թ. ապա թարգմանվել է ֆրանսերենի և հրատարակվել երկու անգամ։ (Ըստ Մ. Տէր-Ավետիսյանի թարգմանիչն է Յաղուբ Արթին փաշա և տպված է կահիրէի* Bull. de l'Institut égyptien *հանդեսում, հտ. 8, 1914 թ. տես մեր համալսարանի Գիտ. աշխ. հտ. ԺԳ, էջ 303)։ Ձեռագրի մի օրինակը գտնվում է մեր Պետական Մատենադարանում։ Հայերեն թարգմանությունը տպվեց «Գիտական նյութերի ժողովածու»-ի մեջ, № 1, էջ 101—128։ Ոմանք կարծել են թե այս Քուչուկ Արութինը Սայաթ-Նովան է. Թուրքերեն բարբառի տարբերությունը վճռում է հարցը։*

— 12. Յարութիւն *Թոփճեան, որդի Թոփճի օղլու Սահակի. Նոր Նահատակ. Նախապես հավատքը ուրանալով մահմեդական էր դարձել, բայց 8 ամիս հետո զղջալով՝ ներկայացավ դատավորին և հայտարարեց թե նորից քրիստոնյա է։ Նրան բռնեցին և դատի կանչեցին։ Մերժեց ուրանալ իր հավատքը և կախաղան բարձրանալով նահատակվեց 1748 թ. հոկտ. 27։ Իր գեղեցիկ շիրիմը*

գտնվում է Պոլսում, Պերայի գերեզմանատան մեջ և ուխտատեղի է։—Թորգոմեան, REA 4, 218 (ուր կա նաև իր դամբանի նկարը), Ազգապ. 3001։

— 13. Յարութիւն Մփլղարացի. Նոր վկա. պատանի ժամանակ մահմեդական էր դարձել. ապա զղջալով իր հավատքին էր վերադարձել. տաճիկները Մանիսայում բռնեցին նրան և նահատակեցին «1755 թ»։—Նոր վկ. 683—4>Ազգապ. 3618։

— 14. Յարութիւն վարդապետ, տաղասաց, 1765 թ.—Տաշեան, Ցուց. 862։

— 15. Յարութիւն, աշուղ Սայաթ-Նովա. հայրը գաղթել է Հալեբից Տփղիս, ուր ծնվել է այս որդին շուրջ 1712 թ. սկըզբում ջուլհակ է լինում. բայց իր բնածին հանճարը շուտով երևան է գալիս և դառնում է Վրաց արքունիքի երգիչը։ Երգել է թուրքերեն, վրացերեն և հայերեն։ Իր հայերեն երգերը հրատարակված են քանիցս անգամ։ Նրանք հայ գուսանական գրականության գոհարներն են։ Կնոջը մահից (1768 թ) հետո, կրոնավոր է դառնում և 25 տարի ապաշխարողական կյանք է ապրում։ Պարսից թագավոր Աղա-Մահմէդ-Խանի արշավանքի ժամանակ, Տփղիսում, Հաղբատի առաջնորդարանի եկեղեցում հարձակում է կրում Պարսից զորքից, որոնք պահանջում են նրանից ուրանալ իր հավատքը։ «Ջխմանամ քլիսադան, դոնմանամ Իսադան—Չեմ դուրս գա եկեղեցուց, չեմ դառնա Հիսուսից» ասելով, Պարսից թրերի հարվածների տակ նահատակվում է գուսան վարդապետը «1795 թ»։—Իր համառոտ կյանքը տես Նոր վկ. 609—619, Ազգապ. 3625։

— 16. Յարութիւն Կարնեցի, Նոր վկա. չարուխչի (տրեխ կարող) Սանդոյի կամ Ալեքսանդրի որդին էր, ուժեղ և կորովի երիտասարդ։ Տնտեսական նեղությունից ստիպված, աշխատանք գտնելու հույսով գնաց Զմիւռնիա, ուր պանդխտում էր իր եղբայրը՝ Կարապետ։ Գինետան մեջ հարբած ժամանակ, խառնվեց ենիչերիների մի խմբի և խոստացավ մահմեդական դառնալ։ Երբ սթափվեց, ենիչերիները պահանջեցին որ հավատքը ուրանա։ Մերժում ստանալով, 12 օր սոսկալի տանջանքներով չարչարեցին նրան և վերջապես գլխատմամբ նահատակեցին «1806 թ»։ Իր պատմությունը, տապանագիրը և երկու տաղ (առաջինը Հաննէ կամ Յովհաննէս Նոտարի, երկրորդը Վանեցի Սահակ դպրի) տես Նոր վկ. էջ 620—630>Ազգապ. 3621։

— 17. Յարութիւն *Սեբաստացի, նոր նահատակ, որի թվականը անհայտ է. հիշված է 1806 թվին նահատակված Յարութիւն Կարնեցու տաղի մեջ մի նոր տուն ներմուծելով. տես Նոր վկ. էջ 630։*

— 18. Յարութիւն *Արտօնեցի (կամ Տարօնեցի), կոչված Կաքաւ կամ Կաքաւու ձագ. կաթուղիկոս Աղթամարի «1816 ? — 1823 թ». հաջորդել է Խաչատուր Վանեցուն (ըստ Հաւաքարանի) կամ Կարապետ Շատախցուն (ըստ Ազգապ.)։ Մնում է իր մի կոնդակը 1818 թվից, որ հրատարակված է Հաւաք. էջ 91—96՝ գեղեցիկ նմանահան նկարով։ Ունեցել է եղերական մահ։ — Ապարանից Ս. Խաչ վանքի աշխարհական վանահայրը երկու կին էր պահում. ժողովուրդը բողոքեց կաթուղիկոսին, որ գրեց նրան և պահանջեց արձակել մեկին։ Վանահայրը բարկացավ, երկու քուրդ ուղարկեց, որոնք ընթրիքի վրա հրացանազարկ արին կաթուղիկոսին, Խիզանի Ս. Խաչ վանքում, 1823 թ։ — Հաւաք. 64, 81—82, Ակինեան՝ Գաւազանագիրք 168, Ազգապ. 3615։*

— 19. Յարութիւն *քահանա Շմաւոնեան, ծնվել է Պարսկաստանի Շիրազ քաղաքում, 1750 թ։ Քահանա ձեռնադրվելուց հետո, մի շաբաթվա մեջ կորցրեց իր երկու սիրելի որդիներին։ Նրանց մահը սաստիկ ազդեց տարաբախտ հոր վրա և նա իր որդիների գերեզմանին մոտ լինելու համար, առանձնացավ քաղաքից 2 ժամ հեռու գտնված Բարաքուհ սարի դերվիշների վանքը։ Այդ դերվիշների կարգը մտնելով նա ճգնեց 7 տարի և լացավ իր որդկերանց վրա, որոնք թաղված էին լեռան ստորոտի գերեզմանատանում։ Իր ընտանիքի աղաչանքով 7 տարի հետո, հազիվ դիջեց թողնել վանքը և նորից քաղաք վերադառնալ։ Այստեղից քահանայական պաշտոնով 1784 թվին անցավ Մադրաս, ուր բաց արեց 1789 թ. հայկական տպարան, որի տառերը ինքն էր փորագրել ու ձուլել, ինչպես որ գրաշարն ու տպողն էլ ինքն էր։ Շմաւոնեանը հրատարակեց մի խումբ տետրակներ, պատմություններ, կրոնական բովանդակությամբ գրքեր և վերջապես, տպարանին մի մշտական գործ տված լինելու և մյուս կողմից ազգին օգտակար ընթերցանության նյութ մատակարարելու համար որոշեց հրատարակել* Ազդարար *թերթը։ Սրանով Շմաւոնեանը եղավ հայ լրագրության հիմնադիրը։ Թերթի առաջին համարը դուրս եկավ 1794 թ. հոկտ. 16։ Հրատարակիչը իր համար իբր օրինակ էր վերցրել անգլերեն մի թերթ, որ սկսել էր հրատարակվել Մադրասում, մի ամիս առաջ։ Ազդարարը սկըզ-*

բում ուներ միայն 28 բաժանորդ։ Նրա բովանդակությունն էր նշանավոր մարդկանց կյանքը, պատմություններ, առակներ, սակարան, հայ և անգլիական օրացույց, գրական հատվածներ ևն։ Նրա լեզուն գրաբար էր։ Հայոց առաջին թերթը ապրեց միայն 3 տարի և 1796 թվին դադարեց։ Այնուհետև դժբախտ կյանք ունեցավ Շմաւոնեանը. իր աղջկա ու փեսի փչացած վարքի պատճառով վատնեց ազգային-եկեղեցական գումարները, դատի տակ ընկավ և մեռավ ցավալի մահով 1824 թ. (Լէօ, Հայկ. տպագր. Բ. էջ 596—608)։

— 20. Յարութիւն ամիրա Պեզճեան, ծնվել է 1771 թ. Պոլսում. հայրը Կարսից էր գաղթած Պոլիս և կտավ էր ծախում։ Յարությունը 12 տարեկան հասակում, ուսումը կիսատ թողնելով, շուկա դուրս եկավ և մետաքսագործի աշակերտ դարձավ։ Քիչ ժամանակից այնպես առաջադիմեց, որ նախ վաճառական, ապա Տիւզեան ամիրային օգնական, վերջն էլ փողերանոցի տեսուչ նշանակվեց։ Տասը տարուց ավելի ծառայեց ամենամեծ հավատարմությամբ և արժանացավ Սուլթան Մահմուդ կայսեր ամենաբարձր շնորհներին։ Ազգի և տերության ամենամեծ բարերարն է. ինքը հիմնեց մեր Ազգային Հիւանդանոցը, վերաշինեց Մայր եկեղեցին, Պատրիարքարանը, Պէզճեան դպրոցը, Գում Գաբուի դրսի Ս. Յարութիւն եկեղեցին և երկու դպրոցները, Արքունի նավարանի Ս. Յարութիւն եկեղեցին, Պերայի աղջկանց վարժարանը, Մայր եկեղեցու Ս. Լուսաւորիչ վարժարանը, Գարթալի դպրոցը. եկեղեցին և աղբյուրը, բացի սրանցից կտակով ապահովեց Գում Գաբուի դրսի դպրոցները, Օրթագեղի եկեղեցու 100,000 ղրուշ պարտքը վճարեց, օգնեց Զանաք Գալէի (Դարդանել), Կէլիպոլուի, Ադրիանուպոլսի, Մալկարայի եկեղեցիներին, Պոլսի աղքատներին նվիրեց 100,000 ղրուշ ևն։ 1828 թվին, երբ հաղթական ռուս բանակը Պոլիս հասավ և 15 միլիոն ռուբլի պատերազմական տուգանք էր պահանջում, հակառակ դեպքում մայրաքաղաքը գրավելու սպառնալիքով, Սուլթան Մահմուդը շվարած չգիտեր ինչ անել, որովհետև ոչ դրամ կար վճարելու, ոչ զինվոր կար կռվելու։ Պէզճեանը փրկեց Օսմանեան կայսրությունը։ Նա մտածեց մի նոր հնարք և փողերանոցում գտնված հին արծաթները հալեցնելով և մեծ մասը պղինձ խառնելով, գիշեր-ցերեկ աշխատեց ու կտրեց հինգնոց-վեցնոց կոչված «մեթալիք» դրամները, որ հրապարակ հանեց և ժողովուրդի ոսկին հավաքելով՝ վճարեց տուգանքը։ Սրա վրա կայս-

րը ուրախացած, իր պատկերը նկարել տալով՝ իր ձեռքով կախեց Պէզճեանի կրծքին, ինչ որ պարգևատվության գերագույն նշանն էր։ Պէզճեանը Սուլթան Մահմուդի աջ բազուկը և նրա աչքի լույսն էր։ Երբ Պէզճեանը ջրգողությամբ հիվանդացել էր և տնից չէր կարողանում դուրս գալ, Սուլթանը իր երկու սենեկապետներով նրա տունը այցելության եկավ. Եվ երբ մեռավ, ծպտյալ եկավ նրա հուղարկավորության, վերջին անգամ տեսնելու իր սիրելու դեմքը (1834 թ)։—Ազգապ. 3645—3654։ Ընդարձակ կենսագրությունն ունի «Մ. Պ., Վարքագրութիւն Յարութիւն ամիրայի Պէզճեան, Թէոդոսիա, 1872»։

— 21. Յարութիւն Վեհապետեան, պատրիարք Պոլսի, հաջորդեց Ներսէս պատր. Վարժապետեանին, 1885 թ. ութ ամիս անց, Երուսաղէմի Եսայի պատրիարքի մահից հետո՝ ընտրվեց պատրիարք Երուսաղէմի (1885 թ), բայց նա մնաց Պոլսում և պահեց Պոլսի պատրիարքական աթոռը մինչև 1888. հակառակ կանգնելով հայ ազգային շարժման, չսիրվեց ազգից. փոխադրվեց Երուսաղէմ և պահեց Երուսաղէմի պատրիարքական աթոռը՝ Յարութիւն Եգիպտացի անունով. մինչև իր մահը՝ 1910 թ.—Ազգապ. 4525, 4562, 4609, 5521։

ՅԱՒԱՆ, ար. չեմ կարծում թե լինի Յաբեթի որդի և Նոյի թոռ Յաւան անունից (Ծն. Ժ. 2), որ է հուն. 'Ιωύαν < եբր. יון Yāvān, որ Խորենացին անգամ (Ա. ե) չէ հիշած, ուր մնաց թե գործածված լիներ ԺԳ դարում։ Ուստի համարում եմ կամ Յովհան անունից ձևափոխված կամ անծանոթ ծագումով։ Հիշված է մի անգամ՝

— Յաւան, մեծ պապ Սահակի, որ ստացավ մի Շարակնոց, 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489։

† ՅԱՒԻՏԵԱՆ, ար. < հյ. յաւիտեան բառից. հմմտ. իրան. ǰāwīd (Ջավիդ) բանաստեղծ դերվիշ, ǰāwīdān (Ջավիդան) որդի Սահլի և ուսուցիչ Բաբակի, ǰāwītān-būte պահլավ. (Justi 113 ա), տես և Վարազտիրոց, որ ըստ Պարսից կոչվեց Ջավիտան Խոսրով։ Այս անվան է համապատասխանում նաև Perpetua նահատակուհի Մաւրիտանացի (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ 319)։

— Յաւիտեան, վանեցից Եղիվարդայ. շատերի հետ ներկայացավ Աբրահամ կաթուղիկոսին և նզովեց հերձվածողներին, ինչպես և Քաղկեդոնի ժողովը «607 թ»։—Ուխտ. Բ. լէ. Գիրք թղ. խ։

Յաւչագան տես Վաչագան։

**ՅԱՓԿԱՆ**, *ար. (ավանդված է միայն բցռ.* ի Յափկանէ *ձևով. ուստի ուղղականը կարող է լինել թե* Յափկան, *ինչպես ունի Գիրք Թղթոցի ցանկը, և թե* Յափիկ, *ինչպես ունի Ազգապ. 503)։ Ծագումն անհայտ։ Ունինք միայն՝*

— Յափկան *եպիսկոպոս Մոկաց, ժամանակակից Բաբկէն կաթուղիկոսի («490—516 թ»), որի և բազմաթիվ եպիսկոպոսների հետ միասին շնորհավորական թուղթ է գրում Պարսկաստանի ուղղափառներին։—Բց.* ի Յափկանէ՝ *Գիրք Թղ. ը։*

***ՅԵԶՈՒՏ-ԽՈՍՐՈՎ**, *ար. <իրան.* Yazd *(պրս.* īzad) *«Աստուած» (տես* Յազդ)+Խոսրով *անուններից բարդված։*

— Յեզուտ-Խոսրով, *որդի Վարազ-Գրիգորի և եղբայր Ջուանշիրի, Միհրանեան տոհմից, իշխանայ Աղուանից (է դար)։— Կղկնտ. Բ. ժէ. Գ. իգ (հրտր. Շահն.* Յիզուտ-խոսրով).*—սեռ.* Յեզուտ-Խոսրովու՝ *Կղկնտ. Բ. իե։*

**ՅԵՊԱԳՈՅ**, *ար. ծագումն ինձ անհայտ։*

— Յեպապոյ, *որ և* Պապա, *հայր Այվատի, որ Անկիւրացի ազնվական էր և Տաճիկների հրավերով գաղթեց Պոլիս 1453 թ.— Նշխ. մատ. 63 (սխալ տպված)։*

**ՅԵՍԱԼԱՄ**, *իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է* Bodleian *147 (թիվն անհայտ)։*

***ՅԵՍՈՒ**, *ար. < եբր.* יְהוֹשֻׁעַ Yəhošu'a *անվան հուն.* Ἰησοῦς *(գերմ.* Josua, *ֆրանս.* Josué) *տառադարձությունից. ավորի ձևն է* יֵשׁוּעַ Yešū' *(Հիւբշ. 290)։ Կազմված է* יהוה *Եհովա+*שׁוּעַ šv' *«մեծանձն լինել» բառերից և նշանակում է «Աստուած է մեծանձն»* (Gesenius *814 բ)։ Հայերեն տառադարձված է նաև ըստ ասորականին* Յիշու։ *Այս անունով հայտնի է Յեսու հաջորդ Մովսէսի, Հրէից զորավար և առաջնորդ, որ նվաճեց Պաղեստինը († Ն. Ք. 1426 թ)։ Մեր մատենագրության մեջ մեկնված է «Յեսու՝ փրկիչ և Յիսուսն փրկիչ լսի» (Տաթև. հարց. 417)։*

— 1. Յեսու *եպիսկոպոս Խորխոռունեաց. գրել է «Սակս անապական զոլոյ զտէրունեան մարմնաւորութիւնն», որ կարդացվեց Եփեսոսի ժողովում (431 թ), Նեստոր հերձվածողի դեմ։ Ունի նաև «Նամակ հաւատոյ», որ տես* REA *2 (1922), էջ 248, կոչված նաև «Թուղթ հաւատոյ» (Ջեռ. Վենետ. Բ. 862).—սեռ.* Յեսուայ՝ *Գրպմ. 457.—Զարբ. Հին դպ. 799, Ջեռ. Դաղեան, Ա. 87 ա,* Bodleian *158։*

— 2. Յեսու *քահանա պատկերամարտ. Մովսէս Բ («574—604 թ») կաթուղիկոսի մոտից փախավ Սոթք, Արցախ և Աղուանք, և Թադէոսի ու Գրիգորի հետ պատկերամարտություն էր*

քարոզում։ Գարդմանի տերը բռնեց նրանց և Հայաստան քշեց, ուր խոստովանեցին և դարձի եկան։—Կղկնտ. Բ. խզ (Նույնը տես Եսայի № 4 անունով)։

— 3. Յեսու եպիսկոպոս Բասենի, անդամ Մանազկերտի «726 թ» ժողովի։—Գիրք թղ. ծէ, կանոն. 149։

— 4. Յեսու, քանդակել է մի խաչքար Մուշի Առաքելոց վանքի պարսպի դրսում, 1123 թ.—Սարգիսեան, Տեղագր. 232։

— 5. Յեսու աղանդապետ Թոնդրակեցոց, հաջորդ Կիւրեղի (ԺԱ դար).—Մագ. թղ. կէ. Հայապ. 551.—Եսու՝ Մագ. թղ. կը։

— 6. Յեսու փիլիսոփա (երաժիշտ), որի ունեցած մի ընտիր Տաղարանը օրինակեց Եսայի աբեղան (№ 28), Սսում, 1395 թ.—Բասմաջեան, Լևոն, 161։

*ՅԵՏԿԱՐ տես Եաղիզար։

*ՅԻԶՏԲՈՒԶԻՏ, ար. <պրս. [illegible] Yazdbōzēd <պհլ. Yazdbōžēō անունից, որի այլ տառադարձությունները են հուն. Ἰσβοζήτης, ասոր. יזדבוזיד Yazidbōzīd։ Նշանակում է «Աստուած է ազատում», ինչպես մեկնում են նաև Յհ. կթ. և Վրք. «Աստուած ապրեցոյց»։ Նման ձևով են պհլ. Yazdānbōžēt, Mitrbōžēt, āturbōžēt անունները։ Հնդեվրոպական լեզուներում դիմավոր բայով կամ ամբողջ նախադասությամբ բարդություն չկա, որ սակայն գտնվում է սեմական լեզուների մեջ։ Ուստի պհլ. Yazdbōžēō «Աստուած է ազատում», ինչպես նաև մյուս անունները, կազմված են ասորերենի օրինակով։ Բուն իրանական ոճով պիտի լիներ գնդ. *Yazatō-buxta = պհլ. Yazdbuxt կամ * Yazdbōxt. համմ. պհլ. Yazdānbōxt և ասոր. Bōxtyazd անունները (Հիւբշ. 55—56)։

— Յիզտբուզիտ պարսիկ նախարար. նախապես կոչվում էր Մախոժ. Դուինի մոգպետի որդին էր։ Հայոց Ոստանում (Դուին) մի հրաշք պատահելով՝ Մախոժ հավատաց, մկրտվեց և քրիստոնյա դարձավ, ստանալով Յիզտբուզիտ կամ Աստուածատուր անունը։ Պարսից Վշնասպ-Վահրամ մարզպանի ձեռքով նահատակվեց «553 թ»։—Մախոժ՝ Սամ. անեց. 74, 75.—Յիզտբուզիտ՝ Սամ. անեց. 75.—Յիզտբուզիտ անուանեալ որ թարգմանի Աստուած ապրեցոյց Յհ. կթղ. ժգ.—Յիզտբուզիտ, որ է աստուածապրեցոյց Վրք. լ.—Յիզտիբուզիտ՝ Մխ. այրիվ. 64.—Յիզդիբուզդ՝ Օրբ. հկճռ. ժբ.—Յեզիտբուզիտ՝ Ասող. Բ. բ.—սեռ. Յիզտիբուզտի՝ Վրք. աշխ. 508.—Յիզտբուզտի՝ Յհ. կթղ. ի. Յայսմ. մրտ. 31, Վկ. դաւ. 95.—Յիզտբուզտեայ՝ Վրք. լե.—Աստուածատուր՝ Յայսմ. փետր. 25, Ջուղ. 47.—սեռ. Աստուածատրոյ՝ Յայսմ. փետր. 25.—

ընդարձակ վարքը տես Վրք. և վկ. Բ. 124—130, Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ժ. 234—8, Ցուցիկք Բ. 309—331.—Մենանդր՝ հույն գրող Զ դարու, սրա վրա հորինել է մի ողբերգություն, որ այժմ կորած է։—Վրաց ազգ. Ա. 40 (Ագիդ-Բուզիտ)։

†ՑԻՄԱՐ, իգ. < հյ. յիմար բառից. հմմտ. հուն. Σάλον անունը, որ σαλός > Թրք. saloz «յիմար» բառից է։ «Ցիմար—σαλός էին կոչվում որոշ սուրբ մարդիկ, որոնք Քրիստոսի սիրով իրենց հիմար էին ձևացնում, և որոնցից ամենանշանավորն է Սիմէոն Աղուաշ» (Sophocles 977 բ)։—Տես նաև Մարխաթուն անունը։

— Ցիմար Վանեցի, նոր վկա. Լէնկթիմուրի արշավանքին ամուսինը սպանվելով («1387 թ»), գնաց մի քրդի մոտ և նրա կնոջ ծառայության մտավ։ Տիկնոջ մահից հետո, նրա կինը դարձավ՝ պահելով իր հավատքը։ Տաճիկ մուղրիները չարացան և պահանջեցին որ հավատքը ուրանա։ Ցիմարը մերժեց և բավականացավ միայն երեք քար գցելով եկեղեցուն։ Քսան տարի հետո գնաց Մակու, քրիստոնեությունը ազատ պաշտելու համար, բայց զղջալով իր արարքի համար, նորից եկավ Վան և քարկոծմամբ նահատակվեց մուղրիների ձեռքով «1418 թ»։—Ցիմար, սեռ. Ցիմարայ կամ Ցիմարի՝ Ցայսմ. փետր. 15=Նոր վկ. էջ 221—228. Նոտարք 47։

*ՑԻՍԱՅԻ, ար. < արաբ. عيسى ʿīsa «Յիսուս» բառից։

— «Ցիսայի, անուանեալն Աբու-Մուսէ, այր խաղաղութեան, քեռորդի Աբլասադայ», գրավեց Սիւնեաց գավառները՝ Բաբան պարսիկի դեմ կանգնելով (Թ դար)։—Կղկնտ. Գ. ի (հրտր. Շահնազ. Եսայի)։

*ՑԻՍԱՒԻ, ար. < արաբ. عيسوي ʿīsavī «քրիստոնյա» բառից։

— Ցիսաւ հայր Մովսէս վարդապետի, Ներսէս քահանայի և մեծ հայր՝ Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ Բարթուղիմէոս առաքյալի վանուց առաջնորդն էր և ստացավ մի Ցայսմաւուրք 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41 ա։

*ՑԻՍԷ, ար. (արաբական անուն է. հմմտ. Ցիսէ արաբ ոստիկանը, որ 885 թվին Աշոտ Ա Բագրատունուն թագ ու ծիրանի բերավ)։

— 1. Ցիսէ Ընտրունի, ժամանակցեց Գուրգէնի պատերազմին՝ Բուղայի դեմ «852 թ»։—Արծր. Գ. դ։

— 2. Ցիսէ որդի Հոնաւարայ, տեր Տրունեաց. ապաստանեց Ատոմ Ապուպելճի մոտ «շուրջ 894 թ».—Արծր. Գ. իբ։

— 3. Յիսէ Ակէացի, եղբայր Թադէոսի, որդի Շերեփայ. բերդապահ Վանի (Ժ դար).—տես. Յիսէի՝ Արծր. Գ. իբ։

— 4. Յիսէ, հիշված է Խծկօնից Ս. Սարգիս եկեղեցու խաչարձանի արձանագրության մեջ 1031 թ.—Ազգագր. հանդ. Ա. 45, Արրտ. 1904, 991։

— 5. Յիսէ, հայր Գրիգորի, որ Բերդիկ գյուղի (Հաղբատ) «ձիւնաւորահարկը» վերացրել է Զաքարէի († 1214 թ) և Իվանէի († 1231 թ) ամիրսպասալարության ժամանակ.—Արձ. Երզընկեանց՝ Հնախ. տեղագր. 102։

ՅԻՐՄԻՇ, սեռն ու ծագումը անհայտ. հիշված է 1552 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1853) և 1561 թ. (Ձեռ. կես. ածած. 50 բ)։

*ՅՈԲ, ար.<եբր. איוב Iyōb անվան հուն. Ἰώβ տառադարձությունից. արաբ. ايوب Ayyūb, ռմկ. Գլ. Էյիպ։—Տաթև. հարց. 320 մեկնում է «հայր». «Յոբ, նախ կոչիւր Յոբաբ, որ է սիրելի Աստուծոյ և կոչեցաւ Յոբ, որ է հայր, զի հայր եղև համբերութեան». Նաև «Յովաբ, որ է Յոբ, որ թարգմանի հայր» (Տաշեան, Ցուց. 754 ա)։ Ըստ Գիրք տառ. 212 ա «Յոբ թարգմանի ցաւագին կամ փորձեալ», Բռ. Ս. Գրոց, էջ 382 մեկնում է «Յոբ, ցաւած». Հնից նշանավոր է «Յոբ երանելին», որի կյանքին է նվիրված Հին Կտակարանում մի ամբողջ գիրք։

— 1. Յոբ ճգնակեաց երեց Վեկերտու. ազգով աղուան. Արցախի Գարծկանք գավառը քրիստոնեության դարձրեց.—Կղկնտ. Ա. իբ.—տես. Յոբայ՝ Կղկնտ. Ա. իբ։

— 2. Յոբ տես Յովաբ։

*ՅՈԹՈՐ, ար.<եբր. יתר Yeϑer կամ יתרו Yaϑro անուններից, հուն. Ἰοθόρ տառադարձության միջոցով։ Այս անունով հայտնի է Հին Կտակարանում Մովսէս մարգարէի աներ Յոթորը, որ Մադիանացոց քուրմ կամ հովիվ-իշխան էր (Ել. Գ. 1)։ Ըստ այսմ Մադիանացոց բառ է և ծագումը անհայտ (Gesenius 328 բ և Բռ. Ս. Գրոց 385)։ Մեր մեջ չի գործածված, բայց զարմանալի կերպով ԺԶ դարում ունինք՝

— Յոթոր կամ Յոդոր դպիր, կնքագիր էր, այսինքն կնիք փորող. Պոլսում բացավ առաջին հայ տպարանը՝ Ս. Նիկողայոս եկեղեցու բակում, 1567 թ։ Այս թվին տպեց աշակերտական «Փոքր քերականութիւն», Հաջորդ տարին 1568 թ. Յոդորին կմիանան Աբգար Եւդոկիացին և նրա որդին Սուլթանշահ, իրենց Վենետիկից բերած տառերով և կտպեն չորս գիրք։ Տպագրանի

վարիչն էր Առաքել արեղա Խորվիրապցի։ Հաջորդ տարին ապարանը դոհ գնաց ագիտության և նախապաշարմունքի հետևանք եղող մի պայքարի և եկեղեցական իշխանության կողմից փակվեց (Հայրենիք 1932, № 9, էջ 85)։ Նույնի մասին խոսում է նաև Զամչ. Գ. 657, բայց հալածանքի մասին ոչինչ չի ասում և հայտնում է որ ապարանը հրդեհի զոհ գնաց։

ՅՈԼՍԷՍ, ար. անստույգ անուն. մի անգամ հիշատակված է Հռոմոսի անթվական մի արձանագրության վերջում՝ իբրև փորագրիչի անունը. «Զյոլսէս յիշեա ի տր» (Սարգիսեան, Տեղագր. 149 > Շիրակ 22), կասկածելի եմ համարում, որովհետև նույն անունը ուրիշ ոչ մի տեղ հիշատակված չէ։ Թերևս պետք է կարդալ Յովսէս, որ է Յիսուսի եղբայրներից մեկի անունը. Մատ. ժգ. 55, սեռ. Յովսեայ Մրկ. զ. 3։

Յոհան տես Յովհաննէս։

*ՅՈՀԱՆԻԿ, ար.. ծագումը տես Յովհաննէս։

— 1. Յոհաննիկ եպիսկոպոս Գարդմանի (Զ դար).—Գիրք Թղ. ժթ.—սեռ. Յոհաննկայ՝ Կղկնտ. Բ. է (հրատ. Շահն. Յովաննկայ)։

— 2. Յոհաննիկ Արտաւազդայ Ապարանից վանքերեց «607 Թ».—Ուխտ. Բ. լէ, Գիրք Թղ. խ։

— 3. Յոհաննիկ վանքերեց Արծափաց «607 Թ».—Ուխտ. Բ. լէ, Գիրք Թղ. խ։

— 4. Յոհաննիկ Եղոյ եպիսկոպոս. անդամ Դուինի ժողովի «607 Թ».—Գիրք Թղ. լը.—տր. Յոհաննկայ Էղոյ եպիսկոպոսի՝ Գիրք Թղ. խ.—բց. ի Յոհաննկայ Եղոյ եպիսկոպոսէ՝ Գիրք Թղ. լթ։—Ուխտ. և Գիրք Թղ. գրում են թե Դուինի ժողովում 10 եպիսկոպոս կար. արդարև Ուխտանէսը դնում է 10 անուն, իսկ Գիրք Թղթոցը 12 անուն, որոնց մեկը հենց սա է և մյուսը Յովհաննէս եպս. Արծրունեաց։ Ավելացնենք որ այս վերջինը չկա հաջորդ հավաքման երկու «ձեռնարկ»-ներում էլ. մինչդեռ Յոհանիկ Եղոյ եպիսկոպոսը ներկայ է։—Ուխտանէսը ճանաչում է վերջինին՝ դանազան ձևերով. այսպես՝ Յհհան Կայդոյ՝ Ուխտ. Բ. լէ.—ի Յովհաննէ Կայեղոյ եպիսկոպոսէ՝ Ուխտ. Բ. լը։—Ամբողջ թյուրիմացությունը Յոհանիկ անվան վերջածայն կ-ի և Կայեղոյ տեղանվան նախաձայն կ-ի հանդիպման պատճառով է։

— 5. Յոհաննիկ տես Յովհաննիկ։

†ՅՈՅՍ, ար. <հյ. յոյս բառից, ինչպես ունինք հուն. Ἐλπίς և ռուս. Надежда անունները (երկուսն էլ իգական), որոնք

նշանակում են «հույս»։ Իգական է նաև հուն. 'Ελπινίκη անունը, իսկ արական են հուն. 'Ελπήνωρ և հյ. Յուսիկ:

— 1. Յոյս, որդի Արամ հայկազն նահապետի, որ ըստ Ջամչեանի իշխել է Ն. Ք. 1827—1769 թ։—«Յովսեպոս ասէ թէ ի Յուսայ, որդւոյ Արամայ հայկազնոյ շինեցաւ Դամասկոս» Սամ. անեց. 9 (առասպել)։

— 2. Յոյս եպիսկոպոս Գողթան, ժամանակակից Ներսէս Բ («548—557 թ») կաթողիկոսի, որի հետ, ինչպես և բազմաթիվ կրոնավորների և իշխանների հետ ստորագրում է նեստորականների դեմ գրված միաբանական ուխտին.—Գիրք թղ. ժէ։

— 3. Յոյս եպիսկոպոս Կամսարական տան, հաջորդ Մովսէսի. նստավ մի տարի 597—8։—Ջամչ. Բ. 374, Այրարատ 56, Տաշեան, Ցուց. 656։

— 4. Յոյս, հիշատակված է իբր գրիչ մի Ավետարանի՝ ԺԴ դարից (Ջեռ. Վասպ. 255). բայց մեջ բերված հիշատակարանները 1608 թվից են և ոչ մի տեղ հիշատակված չէ ոչ Յոյս գրչի անունը և ոչ ԺԴ դար։ Այս բոլորը որտեղից է հնարել հրատարակիչը։

— 5. Հուսիս! ձևով հիշված է ոմն ԺԸ դարում (Ջեռ. Վենետ. Բ. 980)։

— 6. Յոյս փխ. Յուսիկ (տես անդ)։

ՅՈՍԱՓՇԱՅ, ար. հիշված է 1505 թ. (Կրպտ. եպս.՝ Դոփեանք 98—99), որ Յոսափշայ ձևով գիտե Սմբատեանց՝ Գեղարքունի 494։ Ծագումն ինձ անհայտ (Եուսուֆշահ)։

* ՅՈՎԱԲ, ար. <եբր. יואב Yoāb անվան հուն. 'Ιωάβ տառադարձությունից։ Այս անունով ծանոթ է Դավթի սպարապետը, որին գլխատեց Սողոմոնը (Ն. Ք. 1014 թ)։ Ծագում է אב āb «հայր» բառից (տես վերը Յոբ)։

— 1. Յովաբ Դունեցի, կաթողիկոս հայոց «790—791 թ», հաջորդեց Ստեփաննոս Դունեցուն և նստավ 6 ամիս—Յհ. կթղ. իգ. Ասող. Բ. բ. Կիր. 42. Սամ. անեց. 90. Յհ. կթղ. հյր. 276. Մխ. անեց. դ. Միխ. ա. իթ (=իը).—սեռ. Յովաբայ՝ Յհ. կթղ. իգ.—(Մխ. այրիվ. 21 փոխցրել է՝ շփոթելով Յաքոբ Ա-ի հետ)։—Սխալմամբ գրված Յակոբ՝ Օրբ. հա.—Յոբ՝ Վրդ. խ.—սեռ. Յոբայ՝ Վրդն. խ.—Հունաձև վերջավորությամբ՝ Յովաբիոս՝ Թնկ. 272.—Ջամչ. Բ. 419—420, Անգապ. 910։

— 2. Յովաբ, կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Ներսէս

Գ-ի և նախորդ Ստեփաննոս Ե-ի (ԺԵ դար)։—Հաւաք. 61 (կեղծիք)։

*ՅՈՎԱԹԱՄ, ար. <եբր. יותם Yothām անվան հուն. Ἰωάθαμ տառադարձությունից։ Թերևս ծագում է եբր. תמם tmm «կատարել, վերջացնել» արմատից (Gesenius 296 ա)։ Այս անունով հայտնի են Հին Կտակարանում Գեդէոն դատավորի որդին և Յուդայի թագավորներից մին (Ն. Բ. 758)։ Գործածված չէ մեր հին մատենագրության մեջ. կա միայն ուշ ժամանակ՝

— Յովաթամ ոմն գրիչ, որ հիշված է 1629 թ. (ՀԱ. 1913, էջ 694)։

*ՅՈՎԱԿԻՄ, ար. <եբր. יהויקים Yəhoyāqīm անվան հուն. Ἰωακίμ տառադարձությունից (լտ. ֆր. գերմ. անգլ. Joachim, ռուս. Иоаким, Яким, արաբ. يحيى Yahyā)։ Բուն նշանակությունն է «Եհովա (Աստուած) յարեաւ», որի հոմանիշն է אליקים Elyāqīm>Եղիակիմ, երկուսն էլ կազմված qvm «վեր կենալ, կանգնել» արմատից (Gesenius 708)։ Այս անունով ծանոթ են Հրէից թագավորներից երկուսը, որոնցից Յովակիմ Բ գերի տարվեց Բաբելոն՝ Նաբուգոդոնոսորի ձեռքով և Յուդայի թագավորության վերջ տրվեց (Ն. Բ. 599)։ Ավելի հայտնի է Յովակիմ՝ այր Աննայի և հայր Մարիամ Աստուածածնի։ Գործածական է այժմ էլ Յովակիմ, Օվակիմ, Աւագիմ, Օվակէմ, Յովակ ձևերով։ Աւագիմ ձևով հիշատակված եմ գտնում 1677 թ. (Չեռ. Ն. Բայազ. 36 բ), որ անշուշտ բառախաղ չէ «աւագ եմ» իմաստով, քանի որ մի ուրիշ ձեռագրում էլ կա Աւակիմ և Աւագիմ ձևերով (անդ 39 ա), որոնց զուգընթաց են արդի ժողովրդական ձևերը. իբրև ազգանուն էլ կա Յովակիմեան։

— 1. Յովակիմ եպիսկոպոս Գարդմանի, անդամ Աղուէնից ժողովի (Է դար).—Հրատ. Սամ. անեց. 286։

— 2. Յովակիմ եպիսկոպոս Սիւնեաց, սրա օրով եղավ հակառակություն Սիւնեաց ավանների նախապատվության մասին, որ կարգավորեց Ներսէս իշխանը (Ը դարի կեսին).—Սեռ. Յովակիմայ՝ Օրբ. ժա (Թվի թե պետք է ուղղել Յովհաննէս)։

— 3. Յովակիմ եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Յովսէփի և նախորդ Սողոմոնի. նստել է 17 տարի (Ը դար).—Օրբ. լդ, հաւ։

— 4. Յովակիմ, հայր Ալի ոստիկանի, որ բերեց Աշոտ Ա. Բագրատունուն իշխանաց իշխանի տիտղոսը «858 թ»։ Այս Ալին կոչվում է արաբների մոտ Ալի-Իբն-Յահեա-ալ-Արմանի (տես Հտ. Ա. էջ 78). արաբ. يحيى Yaḥya անունը թեև ոմանք համարում

ձն Յովհաննէս, բայց ուրիշներ էլ գնում են Յովակիմ (տեսնել Արիշեան բռ. 1892, էջ 643), Յովհաննէսը համարելով Yuḥanna. Ըստ այսմ բոլորովին սխալ է վարվում Զամչ. Բ. 676, որ Ալին գնում է «որդի Վահէի»։

— 5. Յովակիմ, Թողել է մի արձանագրութիւն Արցախի Գարդման գաւառի Գետաշէն գիւղի այժմ աւերակ եկեղեցում 1285 Թվից։—Բարխուտ. Արցախ 267։

— 6. Յովակիմ եպիսկոպոս Հալէպի. Կոստանդին Զ կաթողիկոսի կողմից Կաֆայից ձեռնադրելով «1438 Թ», պատվիրակ գնաց իր երեք ընկերներով՝ Ֆլորենտիայի կրոնական ժողովին «1439 Թ»։—Զամչ. Գ. 475. Տաշեան, Ցուց. 111, Պալճեան 87, Ազգապ. 2080, Միւրմէեան, La vie et la cult. 17։

— 7. Յովակիմ Ա. առաջին պատրիարք Պոլսի. Նախապես Կուտինայի (Քէօթահիա), ապա Պրուսայի և վերջում Ֆիլիպպէի առաջնորդն էր և բարեկամ Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէդի, որ Պոլիսը գրավելուց հետո (1453 Թ), պատրիարք տիտղոսով փոխադրեց նրան Պոլիս և ամբողջ իր հպատակ հայոց գլուխ կարգեց։ Փոխանակվել է «1461—1477 Թ»։—Ամիրտ. օգ. բժշ. 8. Ազգապ. 2155։

— 8. Յովակիմ աբեղա, ժիտարան Գալախորի վանքի 1495 Թ.—Ձեռ. Սոնաս. 24 ա։

— 9. Յովակիմ Քանաքեռցի, պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց Պօղոս Վանեցուն «1775—1793 Թ». տագնապալի կյանք ունեցավ լատին կրոնավորների ոտնձգությանց և Երուսաղէմի վանքի պարտքերի պատճառով։ Իրեն հաջորդեց Պետրոս Եւդոկիացին։—Ազգապ. 3177. (Հաւաք. 83—84 Թվականը ճիշտ չի գնում)։

— 10. Յովակիմ Թավուքճեան, Պոլսի Սամաթիա Թաղից. նոր նահատակ. երիտասարդ ժամանակ մահմեդական էր դարձել («1839 Թ»), բայց ապա զղջալով՝ անճանաչ ապրում էր իբրև քրիստոնյա։ Մատնվեց և ձերբակալվեց «1843 Թ»։ Անգլիական դեսպանը դիմեց Տաճիկ կառավարութեան և հանուն կրոնական ազատութեան՝ պահանջեց որ Յովակիմը ազատ արձակվի։ Տաճիկները մերժեցին և գլխատամբ նահատակեցին նրան։ Եվրոպական դեսպանները իրենց տերութեանց պահանջով միահամուռ դիմեցին տաճկական կառավարութեան և ստացան կրոնական ազատութիւնը։ Յովակիմը եղավ վերջին նահատակը։—Պէրպէրեան 276, Ազգապ. 3794, Նոր վկ. 676—8, 735։

***ՅՈՎԱՆԱԿ**, որ. հիշված է մի անգամ ԺԷ° դարից (Տաշեան, Ցուց. 386)։—Ցանկում համարվում է Յովհաննէս անվան փաղաքշականը (Յովհանեակ), ինչպես պետք է ընդունել։

***ՅՈՎԱՆԳԻՒԼ**, որ. <Յովհան+պրս. گل gul «վարդ» բառից։ Գտնում եմ մի անգամ հիշատակված ԺԸ դարի վերջում (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 150)։

***ՅՈՎԱՍԱՓ**, որ. <կարծում եմ ձևափոխված Յովսափատ անունից, որ փոխառյալ է եբր. יהושפט Yəhošāfāt անվան հուն. Ἰωσαφάτ տառադարձությունից։ Կազմված է եբր. שפט šft «դատել» արմատից և նշանակում է բուն «Տէր դատաւոր» (Gesenius 292 ա և Բռ. Ս. Գրոց, էջ 393)։ Այս անունով հայտնի է Յովսափատ՝ Հրէից բարեպաշտ թագավորը (Ն. Ք. 914—889), բայց մանավանդ Հնդկաց արքայորդին Յովասափ, որի կյանքն էլ ունինք հայերեն թարգմանությամբ. «Նկարագրութիւն հոգևոր վարուց Յովասափու՝ որդւոյ թագաւորին Հնդկաց». հրատ. Մ. Վրդ. Մովսէսեան, Վղրշպտ. 1897։ Յովասափ անունը հիշատակված է մեր մեջ ԺԳ—ԺԸ դարերում. այժմ գործածական չէ։ Գրված է Յուասափ՝ Ձեռ. Վասպ. 682, Ովասափ՝ անդ 774, 860։

— 1. Յովասափ, առաջնորդ Հայրավանքի. հիշված է 1211—3 թվերին. իր օրով նորոգվեց վանքի եկեղեցին. եղան նաև զանազան նվիրատվություններ.—Արձ. Սիսական 40, 41, Սմբատեանց՝ Գեղարքունի 435, 436։

— 2. Յովասափ փիլիսոփայ (երաժիշտ), հոգևոր եղբայր Գրիգոր գրչի, որ Կարինում օրինակեց Աւետարանը 1230 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 572։

— 3. Յովասափ երեց, «որդի արժանաւոր քահանային Յորդինոյ», կանգնեցրել է մի խաչքար՝ Շողագայ վանքի գերեզմանատան մեջ, 1234 թ.—Սիսական 52, Սմբատեանց՝ Գեղարքունի 511։

— 4. Յովասափ միակեաց (ճգնավոր), գրեց ու փորագրեց Հասան-Ջալալ-Դոլայի մեծ արձանագրությունը Գանձասարում, որին և ստորագրում է 1240 թ.—Շահխաթ. Բ. 371—2, Արցախ 173։

— 5. Յովասափ առաջնորդ Նոր-Գետիկ վանքի. հաջորդեց Մխիթարին 1233 թվից քիչ ուշ (Կիր. ժե) և հիշված է 1273 թվին գրված մի հիշատակարանում (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 10)։

— 6. Յովասաբ, կանգնեցրել է մի խաչքար Գեօղալչարայի մոտ (Նոր-Բայազիտ), 1290 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 548։

— 7. Յովասափ, եղբայր Պետրոս եպիսկոպոսի, որ Վարագայ վանքի առաջնորդն էր. յիշված է 1318 թ.—Ակինեան՝ Գաւազանագիրք 53։

— 8. Յովասափ գրիչ. Կաֆայում օրինակել է Ֆրա Մարտինի Պատմութիւն ժամանակագրական, թրգմ. Ներսէս Պալիենցի, 1421 թ.—Ձեռ. Կարին. 189։

— 9. Յովասափ, եղբայր առաջնորդի Կեչառուաց վանքի, 1491 թ.—Այրարատ 267։

— 10. Յովասափ գրիչ. օրինակել է Խմբագիր Մեկնութիւն Գործոց առաքելոց, 1492 թ.—Ձեռ. Կարին. 160։

— 11. Յովասափ Սեբաստացի, սարկավագ, որդի Թադէոս քահանայի, տաղասաց ԺԶ դարի. իր գործերը իր ձեռագրով տես Յ. Մուրատ, Յայտ. յով. էջ ժգ—խա. իրն է նաև Վիեննայի Մխիթարեանց № 172 ձեռագիրը, որ ուշադրութեան չէ առնված. տես և Տաշեան, Ցուց. 488 և 1124 ա, Կոստանեանց՝ Նոր ժող. Ա. 26, Մառ՝ Ամառն. ուղև. 56, Ձեռ. Նոր-Բայազ. 40 ա (այս տաղարանում, որ գրված է 1647 թվին, էջ 94 ա—179 ա ամբողջ իր տաղերն են)։ Ըստ Յովսէփեան՝ Խաղբակեանք 241 գրել և նկարազարդել է Բեռլինի № 805 ձեռագիրը (Պատմ. Աղեքսանդրի)։ Այս բոլորից աւելի կարևոր է Կոկճայ Սեբաստացի նահատակի վրա († 1536 թ) գրած տաղը (17 տուն), որի առաջին 7 տների ծայրանունն է Յովասափ. հրատարակված է Նոր վկ. 373—5։—Տես նաև Պետրոսեան, Բիբլիոգրաֆիա, էջ 182—4։

— 12. Յովասափ վրդ. Տաթևացի, ունիթոռական քարոզիչ. յիշված է իբր հեղինակ Մոլութեանց գրքի, որ այլուստ հայտնի է իբր լատիներենից թարգմանված։—Թվականն անհայտ։—Ձեռ. Բեռլինի, 55 ա։

— 13. Յովասափ Աղուերձեցի, առաջնորդ Սիւնեաց. յիշված է ԺԸ դարում, Սիսական 21 ա, 250 բ։

* ՅՈՎԷԼ, ար. <եբր. יואל Yoēl անվան հուն. Ἰωήλ (լատ. Joel) տառադարձութիւնից։ Այս անունով հայտնի է 12 փոքր մարգարեներից մին (Ն. Ք. շուրջ 800 թ)։ Ըստ հների «Յովէլ, որ սիրելի Աստուծոյ թարգմանի» Արշար. 23։

— 1. Յովէլ պալատական սարկավագ Վաչագան Գ թագավորի Աղվանից (Զ դար). ժամանակից եղավ Ս. Գրիգորիսի մասանց գյուտին.—Կղկնտ. Ա. իա.—սեռ. Յովելայ՝ Կղկնտ. Ա. իա (հրատ. Շահն)։

— 2. Յովէլ երէց անապատական, որ ծնում էր Աղվանից Վաչագան Գ թագավորի մոտ (Զ դար). ժամանակից եղավ Ս. Գրիգորիսի մասանց գյուտին. անդամ Աղուէնից ժողովի (տարբեր է նախորդից).—Կղկնտ. Ա. իա, իգ. կանոն. 192։

— 3. Յովէլ աշակերտ Թովմէի. ճգնավոր էր Վարագայ վանքում. միասին գտան Վարագայ խաչը՝ Ներսէս Շինող կաթողիկոսի օրով «660 թ»։ Հաջորդեց Թովմէին իբր առաջնորդ Վարագի, նստավ 40 տարի և մեռավ շուրջ 700 թ.—Յայսմ. փետր. 26.—գրծ. Յովէլեաւ՝ անդ։—Ջամչ. Բ. 355, Հայապ. 230 և 232։

— 4. Յովէլ եպիսկոպոս Մեծիրանքի (Արցախ). գործակից եղավ Զղալի նշխարաց գյուտին. մեռել է 703 թ.—Կղկնտ. Բ. իթ—լա. Գ. գ.—սեռ. Յովէլայ՝ Կղկնտ. Գ. գ.—Յովէլեայ՝ Կղկնտ. Բ. իթ.—բց. ի Յովէլայ՝ Կղկնտ. Բ. լ։

— 5. Յովհէլ քահանա, որին հիշում է Կոթիփորոյ Ընկուզագոմ վանքի Սարգիս եպիսկոպոսը. մեռել է 1427 թ.—Նոտարք 85։

— 6. Ովհէլ մահտեսի, Հաւատուս կամ Ընկուզակ գյուղից. Պետրոս աբեղային գրել տվեց մի Ախտարան 1562 թ.—Ձեռ. Թաւր. 68 ա։

Յովհան տես Յովհաննես։

*ՅՈՎՀԱՆԻԿ, ար. ծագումը տես Յովհաննես։

— 1. Յովհաննիկ, վանեբեց Արտաւազդայ Սպարտնից վանքի՝ Արագածոտն գավառում (Զ դարի վերջը)։—Այրարատ 401 ա ծան։

— 2. Յովհանիկ վանեբեց Էջմիածնի և Ս. Հռիփսիմէի վանքի, ժամանակակից Կոմիտաս կաթողիկոսի «615—628 թ». իր օրով կատարվեց վանքի նորոգությունը, որի վերահսկիչն էլ ինքն էր «618 թ».—սեռ. Յովհանիկան՝ Սեբ. լե.—Յոհանիկան՝ Եղն. եր. 268.—որ և Յովհան Ասող. Բ. գ։

— 3. Յովհաննիկ վանեբեց Արծափի. ժամանակակից Աբրահամ կաթողիկոսի («607—615 թ»). անդամ Դուինի ժողովի «607 թ»։—Այրարատ 509 բ։

*ՅՈՎՀԱՆԻՍԻԿ, ար. ծագումը տես Յովհաննես։

— Յովհանիսիկ վարդապետ. ծնվել է 1560 թ. գրել է «Համառոտ ժամանակագրութիւն» 1572—1600 թվերի։—Ցհնսկ. 185, 200.—սեռ. Յոհանիսի ! Ցհնսկ. 186։

*ՅՈՎՀԱՆՆԱ, իգ. < Յովհաննէս անվան իգական ձևն է. տես անդ։

— Յովհաննա, դուստր Փիլիպպոսի՝ եվրոպացի իշխանին Տարենտի. ամուսնացավ Օշին թագավորի հետ և եղավ թագուհի Հայոց։ Ամուսնու մահից հետո երկրորդ անգամ ամուսնացավ Օշին իշխանի հետ, որ էր պայլ Լևոն Ե թագավորի.—Ալիշան, Հայ-Վենետ. 107, 112, Սիսուան 73։

*ՅՈՎՀԱՆՆԷՍ, ար. < հուն. Ἰωάννης անունից. (կարող է նաև լինել ասոր. יוחנים Yoḥannes ձևից. բայց ավելի հավանական է հունարենը՝ ըստ Հիւբշ. 291, 335, քանի որ սեռ. Յովհաննու ձևն էլ առնված է հուն. Ἰωάννου սեռականից)։ Այս անվան օտար համանիշներն են լտ. Joannes, Johannes, գերմ. Johann, ֆրանս. Jean, Jeannot, իտալ. Giovanni, անգլ. John, Johnny, Jack, ռուս. Иоанн, Иван, փղքշ. Ваня, արաբ. Yuḥanna, վրաց. Իվանէ, թուրք. Իվան են։ Ստուգաբանվում է ըստ հների «հնազանդութիւն». հմմտ. Յովհաննէս, որ տայ Տեառն հնազանդութիւն (Յայսմ. յունիս 30), Յովհաննէս հնազանդութիւն լսի (Տաթև. ամ. 696), իսկ ըստ Գիրք պատք. 207 բ «Յոհաննու, որ թարգմանի շնորհ»։ Ճիշտ իմաստն է «Տիրոջ շնորհը կամ գթութիւնը, Աստուածաշնորհ» և ձևացած է եբր. חנה Xannā «շնորհ, գթութիւն» անունից (Gesenius 244—5). հմմտ. יהוחנן Yəhoxānān > Յոհանան Եզր. ժ. 6, որ և יוחנן Yoxānān. Բառը ստացել է հունական -ης արական վերջավորությունը, ինչպես որ իգականի համար էլ ունենք լտ. Joanna > ֆրանս. Jeanne = Յովհաննա։ Հայտնի են այս անունով Յովհաննէս Մկրտիչը և Յովհաննէս առաքյալը, որ գրել է մի Ավետարան, երեք կաթողիկէ թղթերը և Յայտնութեան գիրքը։ Ինչպես ռուսաց մեջ Иван, նույնպես և մեր մեջ Յովհաննէս չափազանց շատ գործածված անուն է։ Իբրև օրինակ անձնանվան հիշված է Թր. քեր. 44, Խոր. քեր. 179, Լմբ. մատ. 48—52, Տաթև. հարց. 107 և ուղիղ. 90։ Ավանդված է բազմաթիվ ձևերով. այսպես՝ Յովհաննէս, Յովհանէս, Յովաննէս, Յովանէս, Յոհաննէս, Յոհանէս, Յովհան, Յոհան, Յօհան, Ոհան (մի քանի անգամ Ովհաննէս՝ Եփր. փիլ. 375)։ Անսովոր ձևերից հիշենք Յեհանէս 1512 թ. (Ձեռ. Վասպ. 83), Յաւանէս 1041 թ. (Խաղբակեանք 223), Յեխանէս 1501 թ. (Ձեռ. Վասպ. 583), 1610 թ. (Ձեռ. Դաշեան, Ա. 9 ա), Եխաննես (Ձեռ. Թաւր. 71 ա), Խովանէս 1601 թ. (Ձեռ. Վասպ. 798), Յէվանէս Արճ. 1018 թ. (հենց Յովհաննէս-Սմբատ

*Թագաւորի համար՝ Շիրակ 134), Ովանէս՝ Արձ. 1155 թ. (Արցախ 273), Էհանէս Արձ. 1253 թ. (Շիրակ 26), Եհանէս (Ձեռ. Վաստ. 394 անթվական), Յովանէ (անդ 176՝ 1331 թվից ուշ), Յուխանէս 1708 թ. (անդ 563), սեռ. Յիվանիսի՝ Արձ. 1036 թ. (Շիրակ 134), Ախանէս 1841 թ. (Ձեռ. Վաստ. 758), Յովօ 1601 թ. (անդ 798), Աւանէս 1219 թ. (նոյն իսկ Յովհաննէս կաթողիկոսի անունը՝ Սմբատեանց, Գեղարք. 513), 1514 թ. (անդ 630), 1551 թ. (անդ 506), 1555 թ. (անդ 494), 1568 թ. (Ձեռ. Վաստ. 668), Ավան և Ավանէս 1702 թ. (Ձեռ. Թաւր. 109 բ), Աւանիս 1662 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 653), Վանէս 1562 թ. (Բաքուրան, Կիպրոս կղ. 94), Հանէս՝ հնագոյնը 1151 թ. ապա 1335 և 1487 թ. (որոնք տես առանձին), 1607 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 32 ա), 1608 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 695), Հանօ 1683 թ. (Ձեռ. Թաւր. 98 բ), Խանէս (Թիֆլ. անհայտ. Ձեռ. Վաստ. 775), 1656 թ. (Տաշեան, Ցուց. 1039)։ Զարմանալի է որ ԺԴ դարում Յովաննէս և Յոհան տարբեր անձեր են համարվել. հմմտ. «Ընդ նմին և զքեռորդն իմ զՅովանէսն և զՅակոբն և զՅոհանն իւրեանց զաւակօքն» (Ձեռ. Թաւր. 28 ա)։ Ծղեզիում 1495 թ. երկու եղբայրներ կոչվում են Յոհանէս և Յովանէս. այսպես՝ «և եղբարցն Յոհանիսին և Յովանիսին և որդոցն Ցահակ քահանային...» (Ձեռ. Վենետ. Ա. 586)։ Սպահանում, 1671 թ. ունինք ոմն Յովհաննէս, սրա որդին Յովան և սրա էլ որդին Յովանէս (Ձեռ. Թեհր. էջ 2 բ=ՀԱ 1935, 310)։ Նաև 1656 թ. ունինք ոմն Խանէս, որի որդին էլ կոչվում է Յովհաննէս սարկավագ (Տաշեան, Ցուց. 1039). կա նաև 1708 թ. Յավանեսի որդի Յուխանէս (Ձեռ. Վաստ. 563)։ Այժմ գործածվող ձևերն են Յովհաննէս, Յովաննէս, Օհաննէս, Օհան, Ուհան, Օննիկ, Օնիկ, Օնօ, Հանէս, Վանէս, Վանի, Օվի, Օվիկ, Հովիկ, Ղրբ. Ավան, Ավանէս. օտարաձև՝ Իվանէ, Իվան, Հաննա, Յոխնան, Ճիվան (իմա Ջիվան < իտալ.* Giovanni)։ *Լեհահայոց մեջ եղել է Նուխնօ (ԺԶ դար. տես Տաշեան, Ցուց. 908)։ Հին փաղաքշական ձևերն են Յոհանիկ, Յովհանիկ, Յովանակ, Յոհանիսիկ, որոնք տես առանձին։ Կա նաև Յովիկ (ԺԶ դար)։ Նոր ձև է Յովհանջան կամ Օհանջան, որի հնագոյնն է 1605 թ. (Առաք. պատմ. 29)։ Սրանցից կազմված ազգանուններ են Յովհաննէսեան կամ Յովհաննիսեան (չափազանց շատ տարածված), Օհանեան, Օհանջանեան, Աւանեան, Հանէսեան, Հանէսօղլուեան։*

— 1. Յովհաննէս *նկարիչ, որին Աբգար Թագաւորը ուղար-*

կեց Երուսաղէմ՝ Յիսուսի մօտ՝ նրա պատկերը նկարելու համար.— Միխ. ատ. է. Յայսմ. դեկտ. 31։ (Ըստ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ժ. 148 նոյն ինքն է Անանէ սուրհանդակը, «զոր տարբեր Հաննէ կոչէին»)։

— 2. **Յովհաննէս** առաջնորդ Գողթան, հաջորդեց Ստեփաննոսին (Օրբ. Ե). ժամանակն անհայտ. ըստ Ազգապ. 60 Լուսաւորչից առաջ է։

— 3. **Յովհաննէս** որդի Քրմի. Լուսաւորիչը սովորեցրեց նրան և եպիսկոպոս կարգեց (Դ դար).—Ագաթ. § 845։—Արաբ. Ագաթ. 72 դնում է նրան եպիսկոպոս Գուանիտացւոց (?)։

— 4. **Յոհան** ճգնաւոր, ճգնում էր Սիմէոնի հետ. Լուսաւորիչը այցելեց նրանց և բաժանված միջոցին ասաց. «Եթէ հոգով չզատանամ ձեզ, մարմինս կզատանայ»։ Ըստ այսմ իր մասունքները թաղվեցին նոյն տեղում, որ կոչվում է Զորեհանգիստ։—Յայսմ. նոյ. 18։

— 5. **Յովհաննէս**, մկրտական անուն Տրդատ թագավորի († «330 թ»)։—Վրդ. ի. Թղթ. դաշ. 12. Յայսմ. նոյ. 29. Ազգապ. էջ 396։

— 6. **Յոհան** եպիսկոպոս, որդի Փառէն կաթողիկոսի, որ նստել է «348—352 թ». կրոնական կոչումին անարժան՝ խեղկատակ մարդ էր. իր խեղկատակ գործերի մասին տես Բուզ. Զ. ը—ժ.—տես. **Յոհաննու**՝ Բուզ. Զ. ը—ժ։

— 7. **Յովհաննէս** որդի Գրիգորի, եղբայր Սմբատի, Կոկկիոնցի. ժամանակակից Ստեփաննոս Ուլնեցու «362 թ»։—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ե. 83։

— 8. **Յովհաննէս** Դպեցի, Յուլիա անուն այրի մի կնոջ որդին էր. 15 տարեկան գնաց անապատ և մի խոր գուբի մէջ 15 տարի ճգնելով մեռավ (Դ դար)։ Մեր Յայսմաւուրքը համարում է նրան ասորի, իսկ Բոլլանդեանները և արդի քննիչներից ոմանք համարում են հայ՝ Փոքր-Հայոց Կատաոնիա գավառի Կիւբիստրոն քաղաքից։—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ. 268—273։

— 9. **Յովհան** Ա. կաթողիկոս Աղուանից և եպիսկոպոս Հոնաց. հաջորդեց Դաւիթ Ա. կաթողիկոսին (Դ դար)։—Կղկնտ. Գ. իդ. Մխ. այրիվ. 24.—**Յովհաննէս**՝ Գնձ. ը.—Հայապ. 384։

— 10. **Յոհան** Եկեղեցացի, աշակերտ Ս. Մեսրոպի և գործակից Առակաց գրքի թարգմանության մէջ։ Ուղարկվեց Կեսարիա և ապա Բիւզանդիոն՝ հունարեն սովորելու «424 թ»։ Գնբեղմանը ցույց են տալիս Մշու Առաքելոց կամ Ղազարու վան-

քում (Հնոց և Նորոց 13)։—Կոր. 10. Փարպ. Ժ. Խոր. Գ. ծզ.—Յովհան՝ Կիր. 16, Փ. կոր. 11.—Զարբ. Հին դպր. 292։—Նմայնն է՝

— 11. Յովհան, աշակերտ Ս. Մեսրոպի, գնաց Կեսարիա և Բիւզանդիոն՝ իր ընկեր Արձանի հետ, հունարեն սովորելու (Ե դար)։—Խոր. Գ. կ.—սրանցից մեկն է՝

— 12. Յովհաննէս, մին յերէց թարգմանչաց.—Առաք. լծ. սահմ. 170. Վրդ. բե.—Յոհաննէս ZAPH 1, 206։—Սա է արդյոք՝

— 13. Յովհաննէս կրտսեր թարգմանիչ, որ հիշում է Զարբ. Հին դպր. 295, առանց որևէ տեղեկութեան։

— 14. Յովհան Խոսրովանոց, Սահակի և Մեսրոպի մահից («439 թ.») հետո ընտրվեց հայրապետարանի տեղակալ և վերակացու՝ իբր ընկեր Յովսէփ Վայոցձորեցու։—Կոր. 28, Փ. կոր. 34։ (Անստույգ անձ. ոմանք համարում են Եկեղեցացին, այլք Մանդակունին, ուրիշներ էլ անկախ անձ։ Իմ «Ս. Մեսրոպի աշակերտները» աշխատության մեջ, էջ 16, համարել եմ նույն ընդ Եկեղեցացին)։

— 15. Յոհան Երեց, անդամ Շահապիվանի ժողովի (444 թ).—Հայսմ. 159։

— 16. Յովհաննէս եպիսկոպոս Սեբաստիոյ. մասնակցեց Քաղկեդոնի ժողովին 451 թ.—Հացունի, Կարևոր խնդ. 352։

— 17. Յովհաննէս եպիսկոպոս Նիկոպոլսի (Ա Հայոց), անդամ Քաղկեդոնի ժողովի 451 թ.—Հացունի, Կարևոր խնդ. 352։

— 18. Յոհան Ռոփսեննից, Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մին «452 թ».—Փարպ. խէ.—նույնը Եղիշ. 150 ունի ասորական ձևով՝ Յուխնան Ռափսոնեան։

— 19. Յովհաննէս եպիսկոպոս Մեծ-Հայոց և՝

— 20. Յովհաննէս եպիսկոպոս Փոքր-Հայոց, գրեցին Լևոն կայսեր (457—474 թ) և ընդունեցին Քաղկեդոնական դավանանքը։—Տաշեան, Ցուց. 108։

— 21. Յովհաննէս վանահայր Գլակայ վանքի, հաջորդեց Եփրեմին (Ե դար).—Մամիկ. ա։

— 22. Յովհան առաջնորդ Յովհաննավանքի, կարգվեց Ղազար Փարպեցու ձեռքով, երբ սա գրում էր իր Հայոց պատմությունը. նրա անունով առացել է վանքն իր անունը (Ե դար).—Զքր. սարկ. Գ. 7. Այրարատ 165.—Յոհան՝ Զքր. սարկ. Գ. 29։

— 23. Յոհան, եղբորորդի Գիւտ կաթուղիկոսի («461—478 թ»). Փարպեցու հակառակորդներից մեկն էր.—տես. Յոհաննու, Յովհաննու՝ Փարպ. 197, 198 (ձեռ. Յովհաննայ)։

— 24. Յովհան Ա Մանդակունի, կաթուղիկոս հայոց «478—

490 թ. հաջորդել Գիւտ կաթողիկոսին. Արշամունեաց գաւառի Ծախնոտ գյուղից էր. ժամանակակից Վահան Մամիկոնեանի, որի ապստամբական կռիվներին էլ մասնակից եղավ: Վերավորվեց Խոսրովակերտի պատերազմում: Կաթողիկոսական աթոռը Վաղարշապատից փոխադրեց Դուին «485 թ.: Ինքն է հիմնել Տեկորի տաճարը (տես Կ. Ղաֆադարեան, Աւանի երկլեզ. ծծկ. արձ. Երևան 1945, էջ 10): Նույնն է հաստատում նաև անթվական մի արձանագրություն, հմտր. Շողակաթ 171, Շիրակ 132: Իր գործերն են Ճառք (տպ. Վենետ. 1860), Կանոնք, Աղօթք, Ճաշու քարոզք, Շարականներ, բայց հատկապես Ժամագիրքը և Ծիսարանի կազմությունը: Իր անունով են դարձյալ «Պատմութիւն և գիւտ փոխման Աստուածածնին», որ ձևավորված է Խորենացու համանուն աշխատությունից (Ձեռ. Վենետ. Բ. 429) և Կոչումն ապաշխարութեան (Սարգիսեան, Քննադ. Մանդ. էջ 174):—Յոհան' Փարպ. կթ, հա, հը, դէ. Դաւ. անյ. 99. Եղն. իր. 268. Շիր. 13 (հմմտ. նաև Սարգիսեան, Քննադ. Մանդ. էջ 28—29 Շիրակացին Մանդակունու մասին). Յհ. կթղ. հյ. 274. Սամ. անեց. 71. Վրդ. իը, լ. Օրբ. հկճռ. ժ, ժբ. Տաթև. հարց. 637, 659. Սիմ. ապար. 55, 72. Մխ. այրիվ. 20. ZAPH 1, 207.—Յովհան' Թովմ. պտմ. 7, 39. Յհ. կթղ. ժզ. Ասող. Բ, բ. Շար. (ակիզբը հիշված հեղինակների շարքում). Մխ. անեց. գ. Մ. մաշտ. 336 ա (?). Քհնպ. 270. Կիր. 20. Օրբ. ժե, կը, հա. Միխ. աւիթ (=իը). Վրդ. իը. Վրաց ազբ. Ա. 78.—Յովհաննես' Կիր. 16.—տես. Յովհաննու, Յոհաննու, Յոհանու' Մանդ. 13, 207. Փարպ. կթ, հ, հբ, դէ, դթ. Գիրք Թղ. ծթ. Կնիք հաւ. 52, 130. Կանոն. 83, 87, 89, 91, 141. Մայրագ. 114, 118, 123, 127, 130. Խոսր. 196. Յհ. կթղ. ժզ. Մանդ. ափր. 3, 11, 17, 27. Օրհն. 247. Գիւտ նշ. Թադ. 96. Ժմ. 511. Մ. մաշտ. 155 ա. Կիր. 21. Նհպաք. 93. Վրդ. խդ. Պտճռ. բրձր. 30, 31. Ջուղ. 46.—Յոհանայ' Փարպ. կը. Յհ. իմաստ. 28.—Յոհաննիսի' Սիմ. ապար. 58.—հիշված պարզապես Մանդակունւոյն' Մխ. այրիվ. 34.—բցռ. ի Յովհաննէ' Մամիկ. աւ—Զամչ. Բ. 159—218, Ազգապ. 451—482.—Ինքն է նաև «Յովհաննէս եպիսկոպոսապետ Հայոց», որ ունի «Ապացոյց յերկուց բնութեանց ասել» Գիրք Թղ. է, բաsրում Կնիք հաւ. օրինակում է այս թղթից Մանդակունու անունով (տես Կնիք հաւ. յոջ. 57). սխալ է Ակինեան, Տիմ. կուզ, էջ 3, որ համարում է նույնը օտար, թարգմանված Զ դարու սասչին քառորդին—Տես նաև Տաշեան, Ցուց. 1127, Սեդրակեան,

Հայ. եկեղ. պատկերագր. 282—3, 306—9, Զարբ. Հին դպր. 327—333, 384, Թրգմ. 550, 759, Զեռ. Մանաս. շար. (ՀԱ 1921, 582) հիշում է «Պատմութիւն Յոհաննու Մանդակունեցւոյ», որի ինչ լինելը հայտնի չէ։—Յովհան Մանդակունու մասին ընդարձակ մենագրություն ունի Հ. Բ. Սարգիսեան, «Քննադատութիւն Յովհան Մանդակունւոյ և իւր երկասիրութեանց վրայ», Վենետիկ 1895, էջք 260, ուր մանրամասն քննությամբ ցույց է տալիս թե նրա ճառերը հարազատ են իրեն՝ Մանդակունուն, և չեն պատկանում Եփրեմի և Ոսկեբերանի, թեև ձեռագիրներում տեղ տեղ այնպես են նշանակված։ Միևնույն ժամանակ ի վեր է հանում հեղինակի արժանիքները իբրև պերճախոս բանաստեղծի՝ համասար Ոսկեբերանի։—Յովհան Մանդակունու մասին ընդարձակ հոդված ունի նաև Կարապետ եպս. (Տողակաթ Ա. էջ 84—136), որ հաստատում է թե Մանդակունու անունով ծանոթ և Վենետիկ հրատարակված ճառերը պատկանում են Յովհան Մայրավանեցուն և կազմում են նրա «Արմատ վարուց» գիրքը։

— 25. Յովհաննէս Իսթմէոս (Jean Isthmeos), հայ վարպետ ձուլիչ, բայց նշանավոր շարլատան, որ երևան եկավ Անտիոքում, 499 թվին, Անաստաս Ա կայսեր ժամանակ. ծածկաբար ոսկերիչների մոտ էր տանում արձանների ոտքեր ու ձեռքեր, անասունների ոսկե պատկերներ, ասելով թե դրանք գտել է ստորերկրյա մի թաքստոցում։ Կեղծարարը այսպեսով շատ մարդ խաբեց և մեծ գումար շահեց, որով գնաց Բիւզանդիոն և այնտեղ էլ շատերին խաբեց։ Կայսրը նրան իր մոտ կանչեց։ Յովհաննէսը ընծայեց նրան մարգարտազարդ ոսկեձույլ մի սանձ. բայց կայսրը չխաբվեց և նրան փակել տվեց Պետրայում.—Macler REA 9, 260։

— 26. Յոհան իշխան Մոկացի, ուրացյալների հետ հարձակվեց Առեստ ավանի մեջ Վահան Մամիկոնեանի կողմնակիցների վրա, բայց Ներսեհ Ճրուանդունու ձեռքով սպանվեց (Ե դար)։—Փարպ. հ.—սեռ. Յոհանայ՝ անդ։

— 27. Յոհան սեպուհ Անձաւացի. մասնակցեց Վահան Մամիկոնեանի ապստամբական կռիվներին (Ե դար).—Փարպ. հ. (ձեռ. Յոհնան).—սեռ. Յոհանայ՝ Փարպ. հ։

— 28. Յոհան եպիսկոպոս Մոկաց (Ե դար).—Արծր. Ա. ժ։

— 29. Յովհաննէս վանքերեց Տաղատայ. տեսիլքով գտավ սրբերի մասունքներ (Ե դար).—Օրբ. ժ։

— 30. Յովհան եպիսկոպոս արքունեաց բդեշխին Գուգա-

վաց. նստում էր Ցուրտաւ. Վազգէնը իր եղբօր՝ Ջօջիկի հետ ուղարկեց սրան Շուշանիկի մօտ՝ համոզելու համար նրան (Ե դար).—Ալիշան, Յուշիկք Ա. 391, 400։ (Վկ. շուշ. 22 չէ հիշված այս եպիսկոպոսի անունը, իսկ էջ 44 հիշված Յովհան եպիսկոպոսը Վրաց կաթուղիկոսի ընկերն է)։

— 31. Յովհան եպիսկոպոս Կամսարական տան, հաջորդեց Կնդակին, որ գահակալել էր 472—518 թ. և կամ 444—490 թ. իսկ ինքն էլ նստավ 490—501 թ։—Զամչ. Բ. 375, Տաշեան՝ Ցուց. 656, Այրարատ 56։ Նա է որ հիշված է Յովհան Մանդակունի կաթուղիկոսի հետ Յոհան Արշարունեաց ձեռք Տեկորի շինության արձանագրության մեջ (Շիրակ 132, Շողակաթ 171)։

— 32. Յոհան Ա. եպիսկոպոս, վեցերորդ առաջնորդ Ցուրտաւի, հաջորդեց Յակոբին՝ շուրջ 530 թ.—Գիրք թղ. ծա (չունի Ուխտ. Բ. խը)։

— 33. Յովհան Արշակունի, իր Արտաւան որդու հետ հարձակում գործեց Բարձր Հայոց կուսակալ Ակակիոսի վրա և սպանեց նրան։ Այնուհետև փախավ Պարսկահայաստան (536 թ)։ Յուստինիանոս կայսրը ուղարկեց նրանց վրա Սիգգա զորավարին, որին նույնպես հաղթեցին և սպանեցին։ Լսելով իր մտերիմ բարեկամ Բուզ իշխանի հրավերին, Յովհանը գնաց նրա մոտ խնջույքի և դավաճանությամբ սպանվեց 537 թ։—Զամչ. Բ. էջ 241—3։

— 34. Յովհան Թովմայեան, կոչված Γούζης (ըստ Զամչ. foշ կամ գուշազ), քաջ և ուժեղ մարդ, զորավար հունական հեծելազորքի, Եգերացոց պատերազմում հաղթեց Պարսից Խոռեան զորավարին, ընկճեց Ափխազների ապստամբությունը, գրավեց Պարսից ձեռքից Լազիստանի Պետրա քաղաքը, ուր մեծամեծ քաջություններ գործեց. բայց հաղթական խուճապի ժամանակ ինքն էլ սպանվեց 542 թ.—Զամչ. Բ. 247—9, Justi 124 ա։

— 35. Յովհան Ա տէր Սիւնեաց, հաջորդեց Բաբկէնին Բ 530 թ. և գահակալեց 18 տարի, իրեն հաջորդեց Վասդուղ 548 թ.—Օրբ. ժգ. Սիսական 17։

— 36. Յոհան իշխան Յոհանեան, անդամ Դուինի երկրորդ ժողովի «554 թ».—Ազգապ. 549։ (Գիրք թղ. ժէ գրված է «Վարազ՝ Յոհան ի Յոհանեան», որ ես կարդում էի «Վարազ-Յոհան ի Յոհանեան», իսկ Ազգապ. 549 բառերից բաժանելով կարդում է «Վարազ, Յոհան Յոհանեան»)։

— 37. Յոհան եպիսկոպոս Ապահունեաց, ժամանակակից

Ներսէս Բ կաթուղիկոսի («548—557»), անդամ Դուինի Բ ժողովի «554 թ»։—Գիրք թղ. ժէ։ (Ըստ Ազգապ. 557 Յովհաննէս Բ Գաբեղեան կաթուղիկոսն է)։

— 38. Յովհան նախարար, իշխան Փոքր-Հայոց. Յուստինոս կայսեր հրամանով, Մարկիանոսի և Վարդան Բ Մամիկոնեանի հետ արշավեց Պարսից վրա, 572 թ.—Ջամչ. Բ. 287։

— 39. Յովհաննէս Բ Գաբեղեան, կաթուղիկոս հայոց «557—574 թ», հաջորդեց Ներսէս Բ Աշտարակեցուն. Գաբեղենից Սիւնձեղուան գյուղից էր. գումարեց Դուինի երկրորդ ժողովը «565 թ», մաքառելու համար նեստորականության և քաղկեդոնականության դեմ։ Գրեց Աղուանից Աբաս կաթուղիկոսին և Սիւնեաց Վրթանէս եպիսկոպոսին՝ հեռու մնալ նրանցից։ Վարդան Բ-ի ապստամբության ժամանակ, երբ Պարսիկները ավերեցին երկիրը, Յովհաննէս Բ-ը իշխանների և եպիսկոպոսների հետ Բիւզանդիոն գնաց «572 թ» և երկու տարի մնալով այնտեղ, մեռավ տարագրության մեջ։ Իր գրական գործերից են մի Քարոզ ի յայտնութիւն Քրիստոսի, նաև թարգմանել է տվել Էակաց գիրքը (Ազգապ. 562—3)։—Գիրք թղ. ժր, ժթ, ծէ. Յհ. կթղ. ժզ. Եզն. եր. 268. Բհնպ. 271. Աստղ. Բ. բ. Յհ. կթղ. հյբ. 274. Մխ. անեց. դ. Մխ. այրիվ. 20. Սամ. անեց. 74. Կիր. 23, 25. Վրդ. լ. Միխ. աս. իթ (=իը). Օրբ. իբ, հա.—Հանեն Կապելինեցի՝ Վրաց ագր. Ա. 78.—սեռ. Յովհաննու՝ Գիրք թղ. ի, իը. Կնիք հաւ. 136.—Յովհաննեսի՝ Կղկնտ. Բ. է. Կիր. 24. Յղ. մովս. և դաւթի 87. Օրբ. իդ.—բց. ի Յովհաննէ՝ Կղկնտ. Ա. իա.—ի Յովհաննեսէ՝ Գիրք թղ. ժը, ժթ. Կղկնտ. Բ. է. Օրբ. իբ։—Նրա մասին է խոսում սուրբ պատմիչ Յովհաննէս Եփեսացին, Եկեղ. պատմ. Գ, որի թարգմանությունը տես Ակինեան՝ Եղիշէ վրդ. Ա. 173—196։—Ակինեան, Կիւրիոն կթ. էջ 111 և 115 հիմնվելով Կայսերաց գրոց և De rebus Armeniae գրքում արված տեղեկության վրա, հաստատում է, որ 573/4 թվին Պոլսում տեղի է ունեցել Հայոց և Հռոմոց մի ժողով, ուր ներկա են եղել 130 ժողովականներ. Նրանց մեջ էր և Յովհաննէս Բ տարագիր կաթուղիկոսը։ Ժողովը ընդունել է Քաղկեդոնի դավանանքը, որին ստիպվել է համաձայնվել նաև տարագիր կաթուղիկոսը։ Բայց այդ վճիռը չեն ընդունել Դուինեցիք։—Հայապ. 191—2 Նույնն է արդյոք Յոհան կաթուղիկոս, որին հիշում է Անաստաս վրդ. (Հայապ. 229)։—Ջամչ. Բ. 239—256, Ազգապ. 557—566։

— 40. Յովհաննէս Բ. եպիսկոպոս, 11-րդ առաջնորդ Տուր-

*տուի. հաջորդեց Ստեփաննոս Բ.-ին՝ շուրջ 580 թ.—Ուխտ. Բ. խը (գրված է* Յոհանէ՝ *Գիրք Թղ. ծա)։*

— 41. Յովհաննէս *Շիրակունի, հայր Անանիա Շիրակունու (Զ դար).—սեռ.* Յովհաննիսի *Շիրակայնոյ ձեռվ տես Շիրակացու Մատեն. հրատ. Աշ. Աբրահամեան, էջ 299.—սեռ.* Յովհաննիսի՝ *Շիր. 26։*

— 42. Յովհան *պատրիկ, մին այն զորավարներից, որ Մօրիկ կայսրը (582—602) ուղարկեց Պարսկաստան՝ Վահրամ Մեհրևանդակի ապստամբությունը ընկճելու համար։—Արծր. Բ. գ. Սիմ. պատր. 82։*

— 43. Յովհաննէս *վանահայր Գլակայ վանքի, հաջորդ Ներսէսի (Զ դար).—Մամիկ. ա։*

— 44. Յովհաննէս *վանական վարդապետ, գուշակեց Ամիթի առումը Պարսիկներից (Զ դար).—նոյն է։—Միխ. ատ. ժգ։*

— 45. Յովհաննէս *վանահայր ի Կապանէ. եղավ եկեղեցպան Սիւնեաց Գիւտայ վանքի, ուր փակված մնաց 25 տարի, եկեղեցուց դուրս չեկավ և ոչ ոքի հետ չխոսեց. գրել է ինչ որ հրաշքի պատմություն, որ ավանդում է Օրբելեան պատմիչը (Զ դար)։—Օրբ. ի։*

— 46. Յովհաննէս *սարկավագ, կանգնեցրել է մի խաչքար Մշոյ Ս. Կարապետի վանքում՝ 601 թ.—Տըվըլէ, Ուղև. ի Փ. Ասիա, Վիեննա 1892, էջ 54։*

— 47. Յովհաննէս, *մին այն 7 խոստաճարակներից, որոնք նահատակվեցին Պարսիկներից («604 թ»), Գայլ Վահանի դեմ արշավանքի ժամանակ.—Մամիկ. բ. Ցայսմ. սեպտ. 30։*

— 48. Յովհաննէս *եպիսկոպոս Ամատունեաց, անդամ Դուինի ժողովի «607 թ».—Ուխտ. Բ. լ. Գիրք Թղ. իդ, լը.—սեռ.* Յովհաննէսի, Յովհաննիսի՝ *Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ. իդ, խ.—բց.* ի Յովհաննիսէ, ի Յովհաննեսէ՝ *Գիրք Թղ. լթ. Ուխտ. Բ. լը։*

— 49. Յովհաննէս *եպիսկոպոս Կայենոյ. տես* Յոհանիկ *(№ 4) Եղոյ։*

— 50. Յովհաննէս *եպիսկոպոս Արծրունեաց. անդամ Դուինի ժողովի «607 թ».—Գիրք Թղ. լը.—տես նաև Յոհանիկ (№ 4) եպիսկոպոս Եղոյ նկատողությունը։*

— Յովհան *տես* Յովհանիկ *№ 2։*

— 51. Յոհան *Սիւնական, կաթուղիկոս Յունահայոց «590—611 թ»։ Մօրիկ կայսրը մի քանի անգամ ժողով գումարելով պահանջեց հայերից ընդունել քաղկեդոնական դավանանքը.*

բայց տեսնելով որ Մովսէս կաթուղիկոսը իրայիններին հետ հակառակ է դրան, որոշեց բաժանել Հայոց կաթուղիկոսութիւնը և Յունահայաստանի կաթուղիկոս նշանակեց Յոհանին, որ ընդունել էր Քաղկեդոնի դավանանքը։ «Նոր կաթողիկոսարանի հաստատութեան նպատակն էր լինելու մի կողմից թուլացնել և սահմանափակել Դուինում նստող կաթողիկոսների իշխանութիւնն ու ազդեցութիւնն, իսկ միւս կողմից անմիջական հաղորդակցութիւն կապել Սիւնեաց և Աղուանից երկիրների եպիսկոպոսների հետ՝ այս անուանի մասերն էլ Հայոց եկեղեցուց խլելու համար» (Սեդրակեան, Հայ. եկեղ. պատկերյարգ. էջ 178)։ Յովհանը Կոգովտի Բագարան գյուղից էր, նստավ Աւան գյուղում, Աղատ գետի ափին, Դուինի մոտ։ Այստեղ շինեց Էջմիածնի ոճով մի եկեղեցի, որի մասին տես Թորամանեան, Հայ. ճարտ. 288։ Այժմ գտնվել է Յոհանի հունարէն մի արձանագրութիւնը՝ նույն եկեղեցու շուրջը կատարված պեղման ժամանակ, որի վրա առանձին աշխատութիւն ունի Կ. Ղաֆադարեան, «Ավանի երկլեզվեան ծածկագիր արձանագր.», Երևան, 1945։ Մօրիկի մահից հետո, երբ Խոսրով Բ-ի հրամանով Կարնեցիք քշվեցին Համադան, Յովհան եւ գերի գնաց «610 թ», ուր և մեռավ «611 թ»։ Այսպէսով «պարսից յաղթանակը Յունաց բաժնի վերայ Աշոտ զօրապետի առաջնորդութեամբ և տարած յաղթութիւններն, որոնց մէջցին գերի ընկաւ Յովհան կաթողիկոսն և տարուեց Պարսկաստան, ցոյց տուին, թէ նոր կաթողիկոսական աթոռի տեղի ընտրութիւնը յաջող չէ արուել։ Յովհանից յետոյ Աւանում այլ եւ երկրորդը չնստեց. և այնուհետև խարամանկ քաղաքականութիւնն որոշեց Դուինի աթոռը գործունէութեան կէտ նպատակի անել։ Այդպիսով յառաջ է գալիս Եզրի կաթուղիկոսութիւնն, որոշ ուղղութեան հետեւող խորհրդականներով շրջապատուելն են» (Սեդրակեան, անդ)։ (Պատմագիրներից ոմանք սխալվելով դնում են Հայոց կաթուղիկոս՝ Աբրահամի և Քրիստափորի միջև. այսպես Կիր. Միխ. ստ. Եղն. եր. Մխ. անեց)։—Շիր. քրոն. 76. Սեբ. ժէ, լա. Եղն. եր. 268, Կղկնտ. Բ. խզ, խը. Ուխտ. Բ. լղ, կգ. Անան. ապստ. 137 ա (դնում է Աբրահամ Ա կաթուղիկոսի 19-րդ տարին. մինչդեռ Աբրահամը նստել է ընդ ամենը 8 տարի «607—615 թ»). Յհ. կթղ. ժէ. Ասող. Բ. բ, գ. Յհ. կթղ. հյր. 275. Քհնպ. 271. Կիր. 29. Վրդ. լա, լբ. Սամ. անեց. 77. Միխ. ստ. իթ (=իը). Մխ. անեց. դ. Մխ. այրիվ. 21. Օրբ. իա, ծա, հա. Սիմ. ապար. 105 (ագիտու-

թյամբ կոչում է «Յօհան Մանդակունի»)։ Վրաց աղբ. Ա. 43 (կոչում է Յովհանէ Կոգովիտեցի), 44, 78 (կոչում է Կապրանայեցի), 79 (կոչում է Թէոդորոզ! Կոկուստեցի).—սեռ. Յովհաննու՝ Գրչկնտ. Բ. խզ. Օրբ. ծա.— Յովհաննիսի՝ Կիր. 30.— Յովհաննայ՝ Անան. ապստ. 137 ա։—Զամչ. Բ. 306—324 գնելով Հայոց կաթողիկոսների շարքը՝ կոչում է Յովհաննէս Գ։—Այս կաթողիկոսի գործունեության և ժամանակի կրոնական վեճերի մասին մի առանձին գլուխ է նվիրում Ակինեան, Կիւրիոն կթ., էջ 124—148։

— 52. Յովհան վանահայր Ս. Կաթողիկէին, որ կոչվում է նաև Շողակաթ. դարձավ քաղկեդոնական, ուստի Աբրահամ Ա կաթողիկոսը («607—615 թ») վռնտեց նրան Այրարատից։—Վրաց աղբ. Ա. 44։

— 53. Յովհան Մայրավանեցի, Դուինի Ս. Գրիգոր եկեղեցու փակակալն էր. հմուտ աստվածաբան։ Կոմիտաս կաթողիկոսը նրան հանձնեց տեղապահությունը (621—628)։ Երբ Հերակլ կայսրը Դուինում գումարեց կրոնական ժողով («633 թ»), Եզր կաթողիկոսը չտարավ իրեն հետ նաև Մայրավանեցուն, որ կարող էր կրոնական վեճերում լավ պատասխան տալ։ Եզրը հաղթվեց և ստիպվեց ընդունել քաղկեդոնական դավանանքը։ Յովհանը հանդիմանեց նրան՝ ասելով. «Դու յիրաւի կոչեցար Եզր, զի յեզր հանեալ տրոհեցեր զհայաստանեայս, քակեալ զսահման հաւատոյ հարցն»։ Եզրը գանակոծեց Յովհանին և հալածեց։ Յովհանը քաշվեց Բջնիի Մայրոց վանքը, որ Եզրը ի նախատինս կոչեց Մայրեգոմ, իսկ Յովհանին էլ Մայրագոմեցի։ Այստեղից էլ հալածվելով Յովհանը քաշվեց Գարդման գավառը ճգնելու, ուր և մեռավ։ (Իր գերեզմանի մասին տես Ջեռ. Դադեան, Ա. 77 ա)։ Գրել է Արատ վարուց, Հաւատարմատ և Նոյեմակ, որոնք կորած են։ Նաև Թուղթ առ Դաւիթ եպիսկոպոս Աղուանից՝ ընդդէմ պատկերամարտից։ Ասում են թե հիմնադիր է եղել մի նոր հերձվածի (Շապհ. 249, հրատ. Սամ. անեց. 286), որ հերքում է Ազգապ. 793—4. այսպես և Սեդրակեան, Հայ. եկ. պտկր. 337—345, որ ի վեր է հանում Մայրավանեցու արժանիքը՝ իբրև հավատարիմ և ուղղամիտ հայ եկեղեցականի։ Իր դեմ եղած մեղադրանքները կաթոլիկների հնարած կեղծիքներն են։ Իր մասին առասպելական պատմություններ տես Կնիք հաւ. յոչ. 94։ Իր մասին մի հրաշք պատմում է Ջեռ. Դադեան, Ա. 102 բ։—Իր գործերից հատվածներ տես Կնիք հաւ. 52, 142, 253, 281,

*288, 327, 363 «Յովհաննու Մայրագոմեցւոյ ճգնաւոր խոստովանողի» անունով.—Ձեռ. Կարին. էջ 171 ունի № 1500 Յովհաննու Մայրավանեցւոյ Գիրք Արմատ հաւատոյ: Կան դարձյալ «Խրատաբանութիւն Յովհաննու Մայրավանեցւոյ» գրված 1581 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 126—7),—«Յովհաննու Մայրիվանեցւոյ Ճառք, Պատմութիւն Ս. վկայից և Խրատք վարուց» (Ձեռ. Դաղեան, Բ. 44 բ);—«Յովհ. Մայրավանեցւոյ վասն երկիւղի և զգուշութեան սուրբ պատարագին և խորհրդոյն մերձենալոյ» (Ձեռ. Արգ. յովհ. 202)։—Մայրավանեցու կենսագրության է նվիրված նորագյուտ մի ձեռագիր Երուսաղէմում «Պատմութիւն Յոհաննու Մայրագոմեցոյ», որի մասին տես Շողակաթ Ա. էջ 107։—Կարապետ եպս. հաստատում է որ Յովհան Մանդակունու անունով հասած ճառերը պատկանում են Մայրավանեցուն և հրատարակում է Շողակաթ Ա. 84—136։ Այստեղ Հաւատարմատը համարվում է Կնիք հաւատոյ գործը: Նրան է հետևում նաև Աբեղյան «Հայոց հին գրակ. պատմ». Ա, էջ 362—3 (առանց հեղինակին հիշելու)։—Յովհաննէս Մայրավանեցու անունով ունինք դարձյալ «Յաղագս պահոց, Յաղագս ընդունելի և անընդունելի աղօթից (Ձեռ. Նոր-Բայազ. 48 բ), Յաղագս ողորմածաց տնանկաց, Ողբ ի վերայ անապաշխար մեղաւորաց, Յաղագս հմայից, Յաղագս կնաթողաց», որոնք Զարբ. Հին դպ. 787 համարում է նախորդից տարբեր մի ուրիշ Յովհաննէս Մայրավանեցու գործ, բայց թվականն անհայտ։—Յհ. կթղ. ժբ. Ասող. Բ. բ. Կիր. 31. Անանուն ժմ. 14. Վրդ. լգ, խդ. Սամ. անեց. 79, 80. Մխ. այրիվ. 65. Օրբ. իե, իէ, կբ. Օրբ. հկճռ. ժբ.—*Յոհան՝ *Սուտ-Շապհ. 12, 13.—*Ոհան՝ *Սուտ-Շապհ. 12.—*Յովհաննէս՝ *Կիր. 31, Վրդ. աշխ. 504.—հրատ. Սամ. անեց. 302 (հիշված "իբր կաթուղիկոս հայոց).—սեռ.* Յովհաննու՝ *Յհ. կթղ. ժբ. Կիր. 31, 32. Շապհ. 249. Սամ. անեց. 80. Մխ. այրիվ. 36. Օրբ. իէ.—*Յոհաննիսի՝ *Մայրագ. 122.—*Յովհաննայ՝ *Յհ. կթղ. ժբ.—*Մայրագումացոյ՝ *Թէոդ. քութ. 147.—բց.* ի Յովհաննէ, զՅովհաննէ, զՅոհաննու՝ *Կղկնտ. Բ. խվ, խբ։—Չամչ. Բ. 543, Զարբ. Հին դպր. 429—430, Հայապ. 222, Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 227—8 (իբր յուլիանիտ է ներկայացնում), Սարգիսեան՝ Ուս. Թոնրակեց. աղանդին 49 (համարում է Պաւլիկեաններին նախակարապետը).—Վրաց աղբ. Ա. 38, 39, 42, 45, 46, 47, 80.—էջ 47 տալիս է մահվան թվականը (684 թ) և մի քանի կարևոր տեղեկություններ. «Ներսէս կաթողիկոսի մահից հետո, Անաստաս կաթողիկոսի*

թրոք, Մայրագոմեցին եկավ Այրարատ՝ աշակերտյալներով հանդերձ։ Եվ Անաստասի մահից հետո գազանի պես ներս խուժեց Սոմխիթ՝ առաջին հերթին իր իսկ գավառն Բջնի և Մայրեվանքը՝ նույն ընդդիմադրության փափագով լի և հերձվածքով մեռավ այնտեղ այդ լկտին ու Սոմխիթն ապականող քոփակ շունը, վատ օրում ՃԼԳ թվին։ Իսկ նրա աշակերտները մի առժամանակ վանականներ լինելով Մայրեվանքում, Եղվարդում և Ս. Թէոդորոսում, Իսրայէլ կաթողիկոսի և Գրիգոր իշխանից քշվեցին և ցիրուցան եղան ամբողջ Սոմխիթում, այս ու այնտեղ՝ քաղաքներն ու գյուղերը, գայթակղեցնելու բոլոր մարդկանց օրեցօր և մինչև այսօր»։

— 54. Յովհաննէս եպիսկոպոս Մամիկոնեան, 35-րդ վանահայր Գլակայ վանքի (=Ս. Կարապետ). ժամանագիր. գրել է Տարօն գավառի և անձուկ կերպով Գլակայ վանքի պատմությունը սկսած Լուսավորչից (Դ դար) և հասցնելով մինչև Տիրան Մամիկոնեանի մահը («639 թ»), այն է Արաբների արշավանքի սկիզբը։ Գրքի վերնագիրն է «Պատմութիւն Տարօնոյ»։ Առաջին մասի հեղինակն է Զենոբ ասորի, որ գրել է ասորերեն լեզվով Դ դարի պատմությունը։ Գլակայ վանքի ասորի վանահայրերը շարունակել են վանքի պատմությունը մինչև Թոդիկ վանահայրը (ժամանակակից Գայլ Վահանի, որ †606 թ)։ Գրքի այս առաջին մասը կոչվում էր «Պատմութիւն Ասորւոց»։ Թոդիկ վանահայրը ասորիներին հեռացրել է և վանքը հանձնել հայերին։ Յովհան Մամիկոնեանը (ինչպես ինքն է ասում իր գրքի վերջաբան հիշատակարանում), ձեռք է բերել Զենոբի այս Ասորոց Պատմութիւնը (10 գլուխ), բայց այդտեղ պակասում էր Տրդատից մինչև Պարսից Խոսրով թագավորն եղած պատմությունը։ Լսելով որ այդ թերի մասը գտնվում է Ուռհայում, Մարմառա անունով մի կրոնավորի մոտ, գնում է նրա մոտ և գտնելով 28 գլուխ եւ ամբողջը միացնում է և թարգմանելով հայերենի, կազմում է այս հատորը։ Գրության թվականն է «Ի ժամանակս թագաւորութեանն Հերակղի, և ի մահուն Խոսրովու, հրամանաւ տեառն Ներսեսի Հայոց կաթողիկոսի»։ Հերակլը նստել է 610—641 թ, Խոսրով Բ Փարվիզը գահակալել է 590 թվին և մեռել 628 թ., իսկ Ներսէս Գ նստել է 641—661 թ։ Այս թվականները համապատասխանում են իրար. հիմնական ժամկետն է Խոսրովի մահը՝ 628 թ. որ և Հերակլի թագավորության ժամանակն է։ Բայց պատմությունը գնում է մինչև 639 թիվը, որ նույնպես Հերակլի

օրով է։ Սրանից երկու տարի ուշ է Ներսէսի գահակալությունը, բայց Ներսէսը կարող էր 641-ին և նույն իսկ ավելի ուշ էլ հրամայել Յովհաննին գրել այդ պատմությունը, ինչպես և Յովհանը կարող էր հասցնել իր պատմության եզրը մինչև 639 կամ դեռ ավելի էլ առաջ։ — Յ. Մամիկոնեանի պատմությունը տպված է Վենետիկ 1832։ Նոր հրատարակությունը կատարեց հայտնի բանասեր Աշ. Աբրահամեանը (Երևան 1941), Մատենադարանի 23 ձեռագրի, Պոլսի 1719 թ. և Վենետիկի 1832=1889 թ. տպագրերի համեմատությամբ։ Թեև այս բոլորի տարբերությունները հրատարակիչը դնում է բնագրի ստորոտում՝ կրկնապատիկ ընդարձակ ծանոթության մեջ, բայց այնուամենայնիվ այս տպագրությունը քննական հրատարակություն չէ։ Հրատարակիչը հետևում է այն չափազանց հեշտ և ոչ-գիտական դրության, որի համեմատ ընտրվում է ձեռագրերից մեկը (իբրև թե լավագույնը) իբրև բնագիր, իսկ մնացյալը մնում է ծանոթությունների մեջ։ Այսպեսով բազմաթիվ ակնհայտնի սխալներ և թերություններ բարձրանում են հարազատ բնագրի պատվին, իսկ ուղղագույն ձևերը և լրացումները մնում են տակը։ Շատ շատերից հիշում եմ այստեղ՝ հայտնապես սխալ շաղախակերութիւն ձևը, որ գրված է բնագրում (էջ 91), իսկ ուղիղ ձևը՝ իբրև վաս ընթերցված՝ գրված է ծանոթության մեջ, այն էլ սխալ շաղախակերութիւն ձևով, մինչ տպ. Վենետ. 39 ունի շաղղակերութիւն։ Ես համեմատել եմ ամբողջ գիրքը Վենետիկի հրատարակության հետ և գտնում եմ, որ այս վերջինը մնում է լավագույնը հրատարակությունը, որից անում եմ բոլոր կոչումները։ Երկու անուն միայն ունի Նոր հրատարակությունը (Սիւս և Մաքիամ), որ չունի Վենետիկի հրատարակությունը։ Այս երկուսը հիշում եմ ես իրենց տեղում, թեև առաջինը կասկածելի է։ Աշ. Աբրահամեանի հրատարակությունը ունի սակայն մի քանի ուրիշ կարևոր կողմեր։ Նախ 25 էջ առաջաբանը, ուր տալիս է Զենոբի և Յովհանի մասին բոլոր կարևոր տեղեկությունները (կենսագրություն, ձեռագիրներ, տպագրություններ և թարգմանություններ)։ Երկրորդ՝ Մատենադարանի 23 ձեռագրերի տվյալների համաձայն՝ հաստատում է, որ Տարօնի Պատմութեան երկուսի բաժանումը (Զենոբ Գլակ և Յովհան Մամիկոնեան) Վենետկեցոց գործն է և բնագրում գոյություն չունի։ Երրորդ՝ ըստ այսմ Զենոբ Գլակը Է դարի կարկատանք չէ (ինչպես գտնում էր Խալաթեանը), այլ Յովհան Մամիկոնեանի գործը։ Չորրորդ՝ Յով-

հան Մամիկոնեանը հեղինակ չէ, այլ ինչպէս ինքը անկեղծօրէն խոստովանում է, թարգմանիչ կամ խմբագիր, որ Ուռհայում (Եդեսիա) Մարմառա կրօնաւորի մօտ գտնելով «Պատմութիւն Ասորոց» կոչված գիրքը, թարգմանել է նրանից 28 գլուխ և ավելացնելով նրա վրա իր ունեցած 10 գլուխը, կազմել է այսպեսով «Տարօնի պատմութիւնը»։—Գիրքը հետաքրքիր է հատկապէս իր լեզվի տեսակետով։ Նա գրաբար է, բայց ունի նաև այնպիսի նախադասություններ, որոնք զուտ աշխարհաբարից շատ հեռու չեն։ Նա ժողովրդական հայերենի առաջին օրինակն է։ Այս մասին տես Հայոց լեզվի պատմ. Բ, էջ 228։—Հեղինակի անունը հիշված է Յովհան, Յովաննէս ձևով՝ Մամիկ 60.—տես. Յովհաննու՝ Մամիկ 7.—Զարբ. Հին դպր. 431—4։—Այս Յովհաննէս Մամիկոնէից եպիսկոպոսի անունով է նաև մի նամակ Աղուանից Վաչագան թագավորին՝ տգիտության մասին (Manus. bibl. nat. 50), որ այլուր Աբրահամ (№ 5) Մամիկոնէից եպիսկոպոսի անունով է։

— 55. Յովհաննէս եպիսկոպոս Ոստան և Մարդպետական, ժամանակակից Եզր («630—641 թ») կաթողիկոսի. անդամ Դուինի ժողովի «645 թ».—Կանոն. 129, Չամչ. Բ. 345, Տաշեան՝ Ցուց. 654.—տես. Յովհաննու՝ Օրբ. իը։

— 56. Յովհան եպիսկոպոս Բզնունեաց, անդամ Դուինի ժողովի «645 թ».—Կանոն. 130, Չամչ. Բ. 345, Տաշեան՝ Ցուց. էջ 654։

— 57. Յովհաննէս եպիսկոպոս Մարդաղոյ, անդամ Դուինի ժողովի «645 թ».—Կանոն. 130, Չամչ. Բ. 345, Տաշեան, Ցուց. էջ 654։

— 58. Յովհաննէս վարդապետ Մաղարթեցի. ապաստավոր սուրբ ուխտին Մաղարթայ. գրել է «Յիշատակագրութիւնք եպիսկոպոսաց Արտազու», ՂԸ=649 թ. այն է Արտազ գավառի առաջնորդ եպիսկոպոսների ցանկը. հրատ. Արարատ 1868, դեկտ. էջ 102—5,—Ջքր. եպս. 279—281 (Սամ. անեց. հրտր. Տէր-Միքէլ. էջ 279—283), Ալիշան՝ Արշալոյս քրիստ. 21։—Կեղծիք։

— 59. Յովհաննէս աշակերտ Գրիգորատուրի. գրավ ջահոց կանոններ (է դար)։—Շնորհ. 250։ Սրա հետ նույն է՝

— 60. Յովհաննէս վարդապետ Մանազկերտացի, աշակերտ Գրիգորատուրի, տեղապահ կաթողիկոսության՝ Ներսէս Գ. Շինողի բացակայության («653—9 թ») ժամանակ. գումարել է Մանազկերտի ժողովը, ուր մերժել և նզովել է Քաղկեդոնի ժողովը.

ունի կանոններ.— Զամչ. Բ. 351—2, 584, Զարբ. Հին դպր. 481, Հացունի՝ Ծաշեր 490 (ամբողջապես կեղծիք է ըստ Ազգապ. 733—4, 845)։ Տես և № 70։

— 61. Յովհաննէս որդի Հունաց Մժէժ հայազգի կայսեր։ Իր հօր սպանման (668 Թ) ի վրեժ հալածեց Կոստանդին Դ կայսեր, բայց 7 ամիս հետո էլ ինքը սպանվեց նրա ձեռքով.—Միխ. աս. ժԹ։

— 62. Յովհան Բ կաթողիկոս Աղուանից 644—671 Թ., նախապես Ամարասի եպիսկոպոսն էր. իբրև կաթողիկոս հաջորդեց Զաքարիա Բ-ին և իրեն էլ հաջորդեց Ուխտանէսը.—Կղկնտ. Գ. իդ, Մխ. այրիվ. 24, Հայապ. 384.—Յովհաննէս՝ Կիր. ը։

— 63. Յովհաննէս եպիսկոպոս Հունահայոց. մասնակցել է Կոստանդնուպոլսի 680 Թվի ժողովին։—Զամչ. Բ. 369։

— 64. Յովհան Բ տէր Սիւնեաց, հաջորդեց Հրահատին 635 Թ. գահակալեց 27 տարի և իրեն էլ հաջորդեց Բաբկէն Գ 683 Թ.—Օրբ. ժգ. Սիսական 17։

— 65. Յովհաննէս կրոնավոր Արցախում. մերձավոր Յովսէփ անապատականի (է դար).—սեռ. Յովհաննու՝ Կղկնտ. Բ. ծ (հրտր. Էմինի), Յովհաննայ՝ հրտր. Շահն։

— 66. Յովհան հիւսն, որդի Փոքրիկի. հօրը հետ շինեց Արցախում մի վկայարան, ուր հանգուցին Մխիթարի բերած մասունքները Երուսաղէմից (է դար).—Կղկնտ. Բ. ծ։

— 67. Յովհաննէս Սիւնական քաղաքաց. ունի Հարցմունք, որոնց պատասխանները տվել է Սահակ կաթողիկոս վերջին (իմա Ձորափորեցին «677—703 Թ» Կանոնագրքում.—տես Տաշեան, Ցուց. էջ 1146 գ.—գրված է Յովհաննու եպս. Սիւնեաց՝ կանոն. 131։

— 68. Յովհաննէս եպիսկոպոս Կապաղակայ. դեմ կանգնեց և նզովեց Աղուանից Ներսէս քաղկեդոնիկ (700—703) կաթողիկոսին.—Կղկնտ. Գ. գ, ը. հրտր. Սամ. անեց. 286։

— 69. Յովհաննէս Ա. եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Յովսէփին 689 Թ. գահակալեց 22 տարի և մեռավ 711 Թ. իրեն էլ հաջորդեց Մովսէսը.— Օրբ. իԹ, հա։ (Ըստ Սիսական 20 գահակալել է 700 Թ. նստել է 12 տարի ?)։ Այս Յովհաննէս Սիւնեաց եպիսկոպոսի անունով Ձեռ. Վենետ. Բ։ 123 կա «Յաղագս զղջման։ Ողորմեաց ի լսողն բարեաց ինձ, զի անմխիթար է վախճան իմ և եղկելի ելք յաշխարհէս. ահա եհաս որոշումն շնչոյ և մարմնոյ...»։ Գրվածքը զղջական ոճը է և կարելի է կարծել Թե

Նարեկի նման մի ընդարձակ Ողբերգութեան մասն է, ըստ հրատարակիչ Սարգիսեանի։ Վերջինս միամտաբար կարծում է թէ միայն երկու Յովհաննէս եպիսկոպոս կա Սիւնեաց, մին Ը դարում և մյուսն ԺԳ!—քանի՜ երկուս. կարծում եմ թե պետք է համարել Յովհաննէս Է՝ № 143, որովհետև Սիւնեաց առաջնորդ Յովհաննէսներից սա է որ զբաղվել է գրական գործերով։

— 70. **Յովհաննէս** Տիկորեցի, տեղապահ կաթուղիկոսության (724 թ). գումարել է Մանազկերտի ժողովը՝ քաղկեդոնականների դեմ, իսկ Օձնեցին վռնտել է նրան Վաղարշապատի ժողովից.—Չամչ. Բ. 351—2, որ նույն է դնում Յովհաննէս Մանազկերտացու հետ (տես № 60), իսկ թե ինչպես շփոթվել է Յովհան Օձնեցու հետ, այդ մասին վիճում է Չամչ. Բ. 353, 384—5, 602—614։ Նույնը ունին նաև Վրդ. պատ. էջ 73 (հրատարակչի ծանոթությունը), Շիրակ 135, Տաշեան, Ցուց. 172. որոնց դեմ տես Ազգապ. 845՝ իբրև կեղծիք կաթոլիկ հայոց։

— 71. **Յովհաննէս** եպիսկոպոս Գնունեաց, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Ազգապ. 839։

— 72. **Յովհաննէս** քորեպիսկոպոս, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Ազգապ. 839։—Նույն անձն է որ գրել է «Ներբողեան ի սուրբ կաթուղիկէ եկեղեցի» պերճ ճառը և Վարագայ առաջնորդ Թոդիկ ճգնավորի և Վարագայ խաչի գյուտի («660 թ») պատմությունը, հրատ. Հայապ. 73, 229—232. տես նաև Ձեռ. Վենետ. Բ. 389 և 392։

— 73. **Յովհան** Գ Իմաստասէր Օձնեցի, կաթուղիկոս հայոց «717—728 թ». հարուստի զավակ էր. աշակերտել է Թէոդորոս Քռթենաւորին։ Դեռ վարդապետ էր, երբ Եղիա կաթուղիկոսը Օձնեցուն առավ իր հետ տարավ Պարտավ, Աղվանից Ներսէս քաղկեդոնիկ կաթուղիկոսին կարգալույծ անելու համար (703 թ) (Կղկնտ. Գ. ը) և ապա Արագածոտն գավառի եպիսկոպոս ձեռնադրեց։ Եղիայից հետո ընտրվելով կաթուղիկոս, ուժեղ կերպով մարտնչեց Պաւլիկեան, Պատկերամարտ, Երեւութական և քաղկեդոնական աղանդավորների դեմ, որի համար էլ գումարեց Դուինի Դ-րդ («720 թ») և Մանազկերտի («726 թ») ժողովները։ Արաբների օգնությամբ Հայաստանից դուրս վռնտեց նույն կրոնավորներին, որոնք զինված էին հայ եկեղեցու դեմ, ինչպես և նրանց հետևորդ և մոլորյալ հայ-հոռոմներին։ Մանազկերտի ժողովը ծառայեց հատկապես հայ և ասորի եկեղեցիների միության գործին։ Գնաց Դամասկոս՝ Օմար Բ ամիրապետի մոտ «719 թ»

և խնդրեց եկեղեցին ազատել հարկից ու քրիստոնյաների հավատքի համար չհալածել։—Այստեղ պատմվում է հետևյալ միջադեպը։ Օձնեցին սիրում էր փարթամ հագնվել և փառահեղ մորուսի վրա էլ ոսկեփոշի էր ցանում։ Երբ ամիրապետը զարմանք հայտնեց Քրիստոսի պաշտոնյայի այսօրինակ պճնասիրության վրա, Օձնեցին առանձնացավ Ամիրապետի հետ և ցույց տալով մսի վրա հագած կոշտ քուրձը, ասաց. «Ռամիկի աչքի համար արտաքին պերճություն, Աստուծու համար ներքին ճգնություն»։—Նշանավոր մատենագիր է. իր գործերն են՝ Ատենաբանութիւն, Կանոնք, Ճառ ընդդէմ Երևութականաց, Ընդդէմ Պաւղիկեանց, Սակս ժողովոց որ եղեն ի Հայս, Մեկնութիւն ժամագրոց, Հիմնարկէք և Օրհնութիւն եկեղեցւոյ, որոնք տպված են Վենետիկ 1833։ Իրն է նաև «Թուղթ խոստովանութեան» (հիշում է Շնորհալին, տպ. Արրա. 1896, 192—9), Ընդդէմ այնոցիկ որ ապականեն զսուրբ խորհուրդն ի ձեռն խմորոյ և ջրոյ (հրատ. Գիրք թղ. ծը)։ Ունի նաև Շարականներ։ Գլխավոր գործն է Հայոց Կանոնագրքի խմբագրությունը (տես Տաշեան՝ Ցուց. 1130)։—Յովհան՝ Լծ. կոչ. 165, Կանոն. 179, Շար. (ակիզբը հիշված իբր հեղինակ). Կիր. խա. Մխ. ա. իթ (=իը). Մխ. այրիվ. 21, 66. Այրիվ. 18 ա. Մ. մաշտ. 336 ա. Մխ. անեց. դ. Վրդ. լը. Վրդ. աշխ. 512. Սամ. անեց. 86, 87. Քհնպ. 271. Ցայսմ. ապր. 17. Օրբ. իէ, լ, հա. Օրբ. հկճռ. ը. Տաթև. ամ. 667, 713, հարց. 541, 545, 634, 637. Ցկ. կբ. 22. Ջուղ. 60. Առաք. պատմ. 479.—Յովհաննէս՝ Կանոն. 155, 164. Ցհ. կթղ. իբ. Գիրք թղ. ծէ. Ցհ. իմաստ. 115. Ասող. Բ. բ. Գր. տղ. 30, 76. Շնորհ. թղ. 322. Մխիթա. ժթ (բ տպ. էջ 301, որ չկա Ա. տպ.), Մագ. թղ. կէ. Կիր. 37. Վրդ. լը. Անանուն ժմ. 14. Ցայսմ. ապր. 17. Սամ. անեց. 87. Ցհ. կթղ. հյր. 276.—սեռ. Յովհաննու՝ Ցհ. իմաստ. 109, 110, 112—3, 115. Կանոն. 135. Գիրք թղ. ծէ, ծը? Ցհ. իմ. խոստ. 1. Յոսր. 83, 125, 146, 156, 178, 195, 208, 214—5. Ասող. Բ. բ. Լմբ. 158. Օրբ. կը. Ճշ. 121. Ցհ. կթղ. իբ. Շնորհ. պատճ. 191. Մխ. ա. Բ տպ. 301 (չունի Ա. տպ.), Այրիվ. 17 ա. Ցայսմ. ապր. 17, մայ. 30. Օրբ. հկճռ. ժբ. Մ. մաշտ. 260 բ. Տաթև. հարց. 545. Առաք. պատմ. 229, 250.—Յովհաննէսի,-նիսի՝ Ցհ. իմաստ. էջ 1, 81, 94, 101. Կանոն. 149. Գիրք թղ. ծէ. Ասող. Բ. բ. Մագ. թղ. կէ. Տարօն. Բ. § 12։—Զամչ. Բ. 571—672 (ընդարձակ քննութ.), Զարբ. Հին դպր. 477—488. Ազգապ. 817—850. Սեդրակեան, Հայ. եկ. պտկր. էջ 310—359 (խոսում

է Օձնեցու գործերի մեջ մուծված կաթոլիկական կեղծիքների մասին). Ձեռ. Դաշեան, Ա. 78 ա. իր պատվին մի շարական տես Պարականոն շար. 156։ Յովհ. Օձնեցու գործունեության և Մանազկերտի ժողովի մասին ընդարձակ տես Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 174—231, ուր կա նաև նույն ժողովի արձանագրությունը քաղված ասորական աղբյուրներից։—Վրաց աղբ. Ա. 39, 42, 79.—մի առասպել իր մասին՝ Ձեռ. Վենետ. Բ. 373։

— 74. Յովհաննէս Բ. եպիսկոպոս Սիւնեաց. հաջորդել է Անանիային 725 թ. գահակալել է ինը տարի և մեռել է 734 թ. իրեն հաջորդեց Ստեփաննոս Սիւնեցին.—Օրբ. իթ, լ, հա.—սխ. Յոհանայ՝ Այրիվ. 20 ա։ (Սիսական 20 դնում է 726—736 թ)։

— 75. Յովհաննէս առաջնորդ Յովհաննավանքի. սիրով հյուրընկալեց Վահան Գողթնացուն «736 թ».—Յայսմ. մարտ 28. Վկ. գողթ. 32, 76. Զքր. սարկ. Գ. 29 (գրում է Յոհան և դնում է ՃԾԲ=703 թվին. 30 տարվա տարբերությունը ըստ իս առաջացած պիտի լինի Ծ և Ձ տառերի շփոթությունից)։

— 76. Յովհաննէս պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց Մկրտիչ պատրիարքին և գահակալեց 730—758 թ. (Աղաւնունի)։

— 77. Յովհաննէս Գ եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Սողոմոնին, նստել է 801—3 թ. և իրեն էլ հաջորդել է Սողոմոնը։—Օրբ. լդ, հա, Սիսական 20։

— 78. Յովհաննէս, հայ կրոնավոր, քերականագետ (կոչված Գրամարտիկոս), որդի Բանդրատի, որ կրում էր Σκάστος տիտղոսը (այս բառը չգիտեն ոչ Bailly, ոչ Sophocles=զգաստ?), եղբայրն էր Արշաւիրի, Մորոխարզանեանց (=Կամսարական) ցեղից, որ Պոլսի ամենանշանավոր ընտանիքներից մեկն էր համարվում։ Ապրում էր Բիւզանդական պալատում. ինքը պատկերամարտ էր և գրգռեց Լևոն Ե Հայկազն (813—820) կայսեր՝ ոչնչացնելու արձանները և եկեղեցական պատկերները։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 162, 180, 183, 185։

— 79. Յովհաննէս Գ կաթուղիկոս Աղուանից՝ 796—821 թ. հաջորդելով Սողոմոն Բ-ին, աթոռը Պարտաւից փոխադրեց Բերդակ. իրեն էլ հաջորդեց Մովսէս Գ.—Կղկնտ. Գ. իդ. Դիր. Ը. Մխ. Այրիվ. 24. Հայապ. 384։

— 80. Յովհաննէս իշխանաց իշխան, տեր Հայաստանի, Վրաստանի և Աղուանից (839 թ). համանաբար Սահլ Սմբատեանի որդին է, որին Արաբները կոչում են Մուավիէ՝ ըստ Մարք-

վարթ, Բագր. 55—56. տես Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 134—5, ուր կա մի անտիպ հատված Կաղանկատուացուց:—Ըստ Բարխուտ. անդ՝ էջ 136 Յովհաննէս Եռանշահիկը եղբայրն է Սահլի:

— 81. Յովհան որդի Ներսեհի և եղբայր Սմբատի. իբրև վկա հիշվում է Տաթևի կալվածագրում 844 թ.—Օրբ. լբ.—տես. Յովհանճայ՝ Օրբ. լբ:

— 82. Յովհաննէս հայր Խուդափի, որ իբրև վկա հիշվում է Տաթևի վերոհիշյալ կալվածագրում 844 թ.—տես. Յովհանճայ՝ Օրբ. լբ:

— 83. Յովհան մանուկ, նահատակվեց Նախիջևանում՝ Բուղայի ամիրայի ձեռքով (ըստ Մարքվարտ, Բագր. 54 այս ամիրան է Հասան-Բին-Ալի-ալ-Բադղիս-ալ-Մամունի). նահատակվել է ըստ Գղկնտ. Գ. իա «Երկերիւր և ութսուն էր թուականն Հայոց... յետ երից ամաց» (283+551=834 թ.), բայց Ազգաբ. 941 դնում է «852 թ»: Մտել է նաև Յայսմաւուրքի մեջ ըստ Սիսակյան 498 բ:

— 84. Յովանէս իշխան Աղուանից, հիշված է 853 թ.—Բանասէր 1901, 143—4:

— 85. Յովհաննէս Դ Ովայեցի, կաթողիկոս հայոց՝ «833—855 թ». հաջորդել է Դաւիթ Բ Կակաղեցուն. բարեպաշտ ու սրբակենցեղ մարդ էր, Կոտայք գավառի Ովայից գյուղից: Հայոց Բագարատ Բագրատունի պատրիկը հակառակելով նրան՝ գահընկեց արավ: Կաթողիկոսը նզովեց նրան և Այրից վանքը քաշվեց (841 թ): Շուտով ժողով գումարվելով և կաթողիկոսի կյանքը անբասիր գտնվելով, նորից իր գահը հրավիրվեց: Բուղայի արշավանքի ժամանակ՝ Յովհաննէսը շրջում էր աստանդական, վախճանվեց Մաքենեաց վանքում «855 թ»:—Սրան է ընկնում Մաքենեաց վանքի արձանագրության այն տողը թե «Ես տէր Յովհաննէս հայոց կաթողիկոսն ի տանէս մի իշխեսցէ դատ կամ փայքար հանել» (Օրբ. լգ>Սիսակյան 68): (Այս է այն անձնավորությունը, որ Մանանդյանը Խորենացուն հերքելու ժամանակ՝ Սահակ ու Մեսրոպ մեծանուն գործիչներին իբրև փոխարինող է դնում. տես այս հատորում, էջ 428):—Յհ. կթղ. իե, իգ. Արծր. Ե. գ. Ասող. Բ. բ. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 21. Միխ. աս. իթ (=իը). Յհ. կթղ. հյր. 276. Սամ. անեց. 92. Բհնպ. 272. Կիր. 43. Վրդ. խգ. Օրբ. լգ, հա.—տես. Յովհաննու՝ Յհ. կթղ. իե. Արծր. Գ. ժգ.—Յովհաննիսի՝ Ասող. Բ. բ. Մագ.

Թղ. կէ. Սամ. անեց. 92, 94։—Զամչ.* Բ. 441—450, 886—895, Ազգապ. 925—948։

— 86. Յովհաննէս եպիսկոպոս Արծրունեաց, Բուղայի ժամանակ գերի տարվեց Բաղդադ («852 թ»), հավատքը չուրանալով բանտարկվեց, բայց Աշոտ Ա-ի ժամանակ ազատվելով դարձավ Հայաստան։—Արծր. Գ. զ, ժե.—սեռ. Յոհաննու՝ Արծր. Գ. զ, ժե.—Յովհաննիսի՝ Արծր. Գ. զ, ժզ։

— 87. Յոհան եպիսկոպոս Արծրունեաց, հաջորդեց նախորդին՝ Աշոտ Ա-ի ժամանակ.—Արծր. Գ. ժե։

— 88. Յովհան տես Վահան մետրապոլիտ Նիկիոյ (862 թ)։

— 89. Յովհաննէս Դ. եպիսկոպոս Սիւնեաց. հաջորդել է Դաւիթ Բ-ին. նստել է 10 տարի և իրեն էլ հաջորդել է Սողոմոն Բ։ Հաշվելով Օրբ. լե ժամանակագրությամբ՝ դա՛ է բարձրացել Ստեփաննոս Սիւնեցու մահից «735 թ» 126 տարի հետո, ուստի իր թվականն է 861—871. սակայն Ազգապ. դնում է «857—867 թ», իսկ Սիսական 20 դնում է 856—866 թ.—Օրբ. լԴ, լԴ, լԸ, հա.—սեռ. Յովհաննու՝ Օրբ. լԴ—բց. ի Յովհաննէսէ՝ Օրբ. լԴ։

— 90. Յովհաննէս բժիշկ. Թարգմանեց Դիոնեսիոս եպիսկոպոսի Արիսպագացու գործը հայերենի՝ 869 կամ 880 թ.—Վրք. դիոն. 42. Աբերկ. էջ իե. Զարբ. Հին դպր. 530. Տաշեան, Ցուց. 224, Զեռ. Վենետ. Բ. 11, 140։

— 91. Յովհաննէս որդի Բաբիկի, իբրև վկա հիշվում է Տաթեի 884 թվի կալվածագրում.—սեռ. Յովհաննայ՝ Օրբ. լԸ։

— 92. Յովհաննէս Ա Կուրկուաս (Գուրգէն), հայազգի զորավար հունական բանակի. նշանավոր եղավ Վասիլ Արշակունի (867—886) կայսեր օրով. նահապետն է Կուրկուաս ընտանիքի, որից առաջացել են մի քանի նշանավոր զորավարներ և վերջապես Յովհաննէս Զմշկիկ կայսրը, որ սրա թոռնորդին է։—Դուրեան, Ազգ. պատմ. 352, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ, 129, 137։—Տես և Գուրգէն № 7։

— 93. Յովհաննէս, երկրորդ անուն Համամ իշխան Արևելցու (894 թ) ըստ Մխ. այրիվ. 70։

— 94. Յովհաննէս Դ կաթողիկոս Աղուանից (892—901 թ.) տես Յովնան։

— 95. Յովհաննէս Բենիկ տես Բենիկ № 2։

— 96. Յովհաննէս Ե եպիսկոպոս Սիւնեաց. հաջորդեց Սողոմոն Բ-ին. նախապես Տաթեի վանքի փակակալն էր. իր օծումն ստացավ Գէորգ Բ («877—897 թ») կաթողիկոսից և

Նրա հետ միասին օծեցին Աշոտ Ա թագավորին «885 թ»։ Վերաշինեց Տաթևի վանքը տասնմեկ տարվա ընթացքում և վերականգնեց նրա շարժական սյունը։—Օրբ. լդ, լէ, լթ, խ, խբ, խգ, խե, խէ, խը, ծ, հա.—սեռ. Յովհաննու՝ Օրբ. խ.—Յովհաննիսի՝ Օրբ. խ—խբ, խգ, խե, խէ, խը, ծ, ծէ.—բց. ի Յովհաննիսէ՝ Օրբ. խգ, խզ։ (Գահակալության թվականը շփոթ է. եթե հետևենք Օրբ. լե ժամանակագրության, Ստեփաննոս Սյունեցու մահից «735 թ» մինչև Սողոմոն Բ-ի մահը լինում է 153 տարի, ուստի 888 թ։ Յովհաննէս Ե-ը նստել է 38 տարի, ուստի իր թվականն է 888—926։ Սակայն այս թիվը ճիշտ չէ. որովհետև ըստ Օրբ. լէ Յովհաննէս Ե օծում է Աշոտին 885 թ։ Ազգապ. դնում է նրա թվականը «885--918», իսկ Տաթևի շինությունը «895—906 թ»։ Այստեղ հարմար է 885 թիվը իբրև Աշոտ Ա-ի օծման թվականը. բայց Յովհաննէս Ե-ի գահակալության տարիները, որ ըստ Օրբ. լե 38 են, այստեղ իջեցրած է 33-ի)։—Միսական 20 դնում է 882—918 թ. իր մանկության պատմությունը տես Միսական 247, հիշված է Խոտակերաց վանքի արձանագրության մեջ 910 թ. (Միսական 171) և Տաթևի շինության արձանագրության մեջ 895 թ. (անդ 227)։

— 97. Յովհաննէս Ե Պատմաբան Դրասխանակերտցի. կաթողիկոս հայոց «898—929 թ». կոչված է նաև «մաշեալ»։ Նախ Եպիսկոպոս էր վեհարանում. ազգական, աշակերտ և տեղապահ Մաշտոց կաթողիկոսի, որին և հաջորդեց։ Հաշտեցնելու համար Յուսուփ ոստիկանին հայոց Սմբատ Ա թագավորի հետ, գնաց նրա մոտ, բայց բռնվեց ու բանտարկվեց։ Բանտից ազատվելուց հետո, երկրի համատարած ավերածության պատճառով սկսեց թափառել Աղվանք, Գուգարք, Վրաստան են, մի կողմից իրեն համար մի ապահով անկյուն գտնելու. նպատակով, և մյուս կողմից Աշոտ Երկաթի և նրա հայ և պարսիկ թշնամիների միջև հաշտարար դեր կատարելու համար։ Այս միջոցին է, որ հունաց Նիկողայոս պատրիարքի կողմից ստանում է մի նամակ. «Վսեմականի, աստուածասիրի և հոգևոր հօր՝ տեառն և յաւէտ սիրելի եղբօր մերում Յովհաննու կաթողիկոսի Հայոց Մեծաց»։ Աշոտ թագավորը և Յովհաննէս կաթողիկոսը հրավիրվում են Պոլիս. Աշոտը գնում է (920 թ), բայց կաթողիկոսը կրոնական վեճերից խուսափելու համար հրաժարվում է ընդունել հրավերը և բավականանում է միայն Կոստանդին կայսրին մի երկար պատասխան գրելով։ Այս թղթերը մեջ են բերված Յհ. կթղ.

ԺԴ (տես նաև Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Բ. 421—446)։ Այս բոլորից հետո կաթողիկոսը քաշվում է Վասպուրական, Գագիկ Արծրունի թագավորի մոտ «927 թ», ուր և կնքում է իր կյանքը։ Ունի «Պատմութիւն հայոց», սկզբից մինչև 924 թ. (այս գրքի մի արտագրությունը 1840 թվից տես Ձեռ. Թաւր. 127)։ Իրն է նաև «Շարից հայրապետացն Հայոց յայտարարութիւն երանելւոյն Յովհաննիսի կաթողիկոսի հայոց», տպ. Սամ. անեց. էջ 272—7 (897 թվից)։ Նույնը տես նաև Ձեռ. Վեննետ. Բ. 157։—Յհ. կթղ. (լգ), ծգ, վերջ. Ասող. Գ. գ, ե. Բհնպ. 272. Յհ. կթղ. հյր. 272, 277. Մխ. անեց. դ, ե. Կիր. 3, 46. Արծր. Գ. իգ. Սամ. անեց. 85, 95. Միխ. աս. իթ (=իը). Վրդ. խը. Մխ. այրիվ. 21, 37, 70. Յայսմ. հոկտ. 13. Օրբ. իե, լգ, լէ, խ, խբ, խգ, հա. Ջուղ. 46. Ես. կթղ. էջ ը.—սեռ. Յովհաննու՝ Յհ. կթղ. ա, լգ, խգ, ծգ, ծզ, կե. Արծր. Գ. իը. Ջուղ. 47, 311.—Յովհաննէսի,—նիսի՝ Յհ. կթղ. հյր. 272. Ասող. Ռ. ա. Գ. դ. Կիր. 48. Սամ. անեց. 3. Յայսմ. ապր. 16. Վրդ. խէ. Օրբ. լգ, խբ, խը, ծա. Հաւաք. 13.—բց. ի Յովհաննիսէ՝ Յհ. կթղ. ծգ. Օրբ. խը. Օրբ. ըստ 36 Դուինի վերջին կաթողիկոսին կոչում է Յովհաննէս Գառնեցի, որով պետք է հասկանալ Յովհաննէս Դրասխանակերտցին։—Տաշեան, Ցուց. 109 մեջ բերված Գաւազանագրքում ասվում է թե Ներսէս Կլայեցուց իբր 200 տարի առաջ, մի ոմն Յովհաննէս սրբակեցիկ կաթողիկոս միաբանակների դեմ մի գիրք է գրել։ Ըստ ժամանակագրական հաշվի այս Յովհաննէսը ակնարկում է Յովհաննէս Ե պատմաբանին։—Զամչ. Բ. 717—816, 1014—16, Ազգապ. 1017—1070, Զարբ. Հին դպր. 511—7, Արձ. Սիսական 117 և Սմբատեանց, Գեղարքունի 274.—Յովհաննէս անուն կաթողիկոս հայոց՝ նախ քան Անանիա Մոկացին և Թէոդորոս Ա. հիշում է նաև Անան. ապստ. 130 աբ և 142 ա, որ պիտի լինի Ովայեցին կամ Դրասխանակերտցին։

— 98. Յովհաննէս, հիմնեց Շիրակում Հոռոմոսի վանքը, որի առաջին վանահայրն էլ ինքը եղավ 936 թ.—սեռ. Յովհաննիսի՝ Ասող. Գ, է, Շիրակ 28, Զամչ. Բ. 823։

— 99. Յովհաննէս, ազգով հույն, Փոքր-Հայոց Լիկանդոն գավառից էր. Եգերացոց երկրի քաղկեդոնիկներից հալածվելով՝ եկավ Հայաստան, իր հետ բերելով խաչի մասունքը։ Աբաս թագավորի պաշտպանությամբ հիմնեց Արշարունեաց գավառում Կամրջաձորի վանքը, ուր հավաքեց 300 կրոնավորներ և եղավ վանքի առաջնորդը «939 թ»։ Իր հաջորդն է Պողիկարպոս, որ

ներկա էր Վահան կաթողիկոսի դատապարտության ժողովին «969 թ»։—Ասող. Գ. է. Այրարատ 548, Ազգապ. 1101։—Կամըրջաձորի վանքի սրբության մասին տես նաև Ձեռ. Վենետ. Բ. էջ 994։

— 100. Յովհաննես Բ Կուրկուաս (Գուրգէն), Արաբների մոտ կոչվում է Էդ-դոմեստիկ-էլ-Կուրկաշ. հռչակավոր զորավար Հունաց. ինքը և իր եղբայրը Թէոփիլէ կամ Թէոփիլոս Կուրկուաս (№ 3) Արաբների դեմ 22 տարի (920—942) մղած ծանր պատերազմներով, նրանց ձեռքից հանելով հազարի չափ բերդ ու քաղաք, կայսրության սահմանները Ալիսից մինչև Եփրատ և Տիգրիս հասցրին։ Վերջին նշանավոր ճակատամարտը եղավ Ռուսաց դեմ։—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 312 Յովհ. կթղ. (տպ. Երուսաղէմ 1867), ԿԳ, էջ 401 գտնելով «անընիկն Գուրգէն, իշխան իշխանաց Գամրաց աշխարհին», համարում է նույն այս Կուրկուասը, որին հպատակվել է Ցլիկ Ամրամը, 927 թ։—Գելցեր, Հմռ. Բիւզ. պատմ. 213, Զամչ. Բ. 825, Ազգապ. 1074—5. ավելին տես Գուրգեն № 16։

— 101. Յովհաննես վարդապետ գիտնական, կոչված է «այրն Աստուծոյ». եղավ Սանահնի վանքի առաջին առաջնորդը «957 թ»։—Ասող. Գ. ը. Զամչ. Բ. 839. Զարբ. Թրգմ. 338. Ազգապ. 1104. Մովսէսեան՝ Լոռիի Կիւր. թգ. 23։

— 102. Յովհաննէս Ե կաթողիկոս Աղուանից. կոչված է նաև Ցոլիան. սրան հակաթոռ է նստում Գագիկը (№ 19). Հայոց Անանիա կաթողիկոսը մերժում է Գագիկին և նրա տեղ դնում է Դավիթ Զ կաթողիկոսին (№ 57), որի մահից հետո նստում է դարձյալ այս Յովհաննէսը։ Այս անգամ նա օծեց հայոց Աշոտ Գ Ողորմած թագավորին («961 թ») և ապա Վահան կաթողիկոսին «968 թ»)։—Ուռհ. 3, 4, 33, 34, 231. Սմբ. պատմ. էջ 22։

— 103. Յովհաննէս եպիսկոպոս Աթախոյ, անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթողիկոսը.—Անան. ապստ. 134 բ։

— 104. Յովհաննէս եպիսկոպոս Մաքենոցաց վանից. անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթողիկոսը.—Անան. ապստ. 134 բ։

— 105. Յովհաննես, համանուն որդի Յովհաննէս Ջմշկիկ հայազգի կայսեր Հունաց, իր Մարիամ (№ 15) անունն կնոջից, որ Վարդ Փոկասի քույրն էր։ Յովհաննէսը մի անգամ միայն

ներկայանում է պատմության մեջ, երբ 40,000 զորքով գրավեց Անտիոքի դղյակները 969 թ։—Տէր Սահակեան, Հայ Կայսերք. Բ. 131։

— 106. Յովհաննէս Գ Գուրգէն, հօրեղբօրորդի Յովհաննէս Զմշկիկ կայսեր, որի հետ մասնակցում էր Ռուսաց դեմ ճակատամարտում։ Մի մեքենա Ռուսաց հարձակման դեմ պաշտպանած ժամանակ, նիզակի մի հարված ընդունեց լանջքի վրա և անշնչացած ընկավ (971 թ)։—Տէր Սահակեան, Հայ Կայս. Բ. 195, Դուրեան՝ Ազգ. պատմ. 352։

— 107. Յովհաննէս, գրիչ. օրինակել է Աւետարանը՝ Եղիա քահանայի համար, 974 թ.—Շողակաթ 189։—Նույն է՝

— 108. Յովհաննէս, գրիչ. օրինակեց Աւետարանը 24 տարեկան հասակում և վախճանվեց՝ 974 թ.—Սմբատեանց՝ Երնջակ, էջ 311։ (Ախալցխայի Ծուղրուտ գյուղի Աւետարանն է)։

— 109. Յովհաննէս, կրոնական անուն Աշոտ Գ Ողորմած Թագավորի «954—977 թ».—Ցայսմ. մայ. 27.—տես. Յովհաննիսի՝ անդ։

— 110. Յովհաննէս Զմշկիկ (ըստ հայոց Կիւռժան, արաբները կոչում էին Շումաշտիկին), Հունաց Բիւզանդական կայսրներից մեծագույնը, Կուրկուաս (Գուրգէն) նշանավոր ընտանիքից, որ ընծայել է մի քանի մեծ զորավարներ։ Ծնվել է 924 թ. Չորրորդ Հայոց նահանգի Խոզան գավառի Ցերապոլիս քաղաքում, որ նրա անունով կոչվեց Զմշկածագ։ Իր ծնողների անունը անհայտ է մեզ։ Պապն էր Թէոփիլէ կամ Թէոփիլոս Կուրկուաս (№ 3), որի եղբայրն էլ կոչվում էր Յովհաննէս Բ Գուրգէն (տես Գուրգէն № 16 և վերը Յովհաննէս № 100)։ Սրանք արաբական պետության վերջին հարվածը տվին։ Զմշկիկը հոր կողմից լինելով թոռ Թէոփիլոսի, մոր կողմից էլ Նիկիփոր կայսեր մոտիկ ազգական էր։ Գնալով Պոլիս, ամուսնացավ հայազգի Վարդ Փոկաս պատրիկի քրոջ՝ Մարիամի հետ, որից ունեցավ մի որդի՝ Յովհաննէս անունով (№ 105)։ 34 տարեկան էր Զմշկիկը, երբ ընտրվեց Արևելյան բանակի զորավար (958 թ) և ապա «Արևելքի ստրատեգոս»։ Գնաց Արաբների դեմ պատերազմի և այնպիսի քաջություններ գործեց, որ լսողը առասպել կհամարի։ Արաբ մայրերը իրենց երախաներին վախեցնելու համար «Շամուշտիկինի» անունն էին տալիս։ Զորավարները նախանձելով իր փառքին, չարախոսեցին Նիկեփոր կայսեր մոտ, որ զրկեց նրան պաշտոնից և ապա Ցերապոլիս աքսորեց։ Զայրացած այս

արտըքի դեմ այն կայսեր, որին ինքն էր գահ բարձրացրել. Զմշկիկը վրեժի զգացումով լցվեց։ Առիթը ներկայացավ։ Նիկեփոր կայսեր կինը՝ Թէոփանէ կայսրուհին, սիրահարվել էր Զմշկիկին։ Բարեխոսեց իր ամուսնու մոտ և հաջողեց Զմշկիկին ազատել աքսորից, բայց միայն Քաղկեդոնում բնակվելու պայմանով։ Ծովը բաժանում էր երկու սիրահարներին։ Ամեն գիշեր Զմշկիկը նավակով թաքուն գալիս էր պալատ և չվանե սանդուղքից բարձրանալով, մինչև լուսաբաց ծածուկ տեսակցություն էր ունենում կայսրուհու հետ։ Դժգոհների խմբի հետ միանալով՝ Զմշկիկ և Թէոփանէ դավադրություն կազմեցին կայսեր կյանքի դեմ։ Զմշկիկն ինքը գիշերանց իր ձեռքով սպանեց Նիկեփորին և ինք նրա գահը բարձրացավ (969 թ)։ Իր առաջին գործն եղավ ամբողջ անձնական գանձը ժողովուրդին բաժանել և իր տերության մեջ գտնված բոլոր հայերին տուրքից ազատ հայտարարեց։ Զմշկիկը այրի լինելով՝ երկրորդ անգամ ամուսնացավ Պերփիրուժէնի դուստր՝ Թէոդորայի (№ 2) հետ, որ իր առաքինությամբ նշանավոր հանդիսացավ։ Հաջորդ տարին 970 թ. Զմշկիկը պատերազմ հայտարարեց Սլավների դեմ, որոնք Բուլգարիան գրաված՝ մշտական սպառնալիք էին Պոլսի համար։ Սպարապետ ընտրվեց հայազգի Վարդ Սկլերոսը, որ իր Արևելյան բանակը Ադրիանուպոլիս փոխադրելով՝ կռվի պատրաստվեց։ Թշնամին Բուլգարներից, Հունգարացոց և Պացինակների հետ միացած 30,000 զինվոր էր հաշվում։ Եկան պաշարեցին Ադրիանուպոլիսը, ուր գրեթե բանտարկված մնում էր Վարդ սպարապետը։ Նենգավոր թակարդներ լարելով՝ Վարդը թշնամուն առաջ քաշեց և անակնկալ կերպով թիկունքից հարձակում գործելով, սարսափելի կոտորած սփռեց։ Թշնամին 25,000 դիակ թողեց պատերազմի դաշտում. Վարդի ամբողջ բանակը վիրավորված էր, բայց մեռյալների թիվը հարյուրից չանցավ։ Զմշկիկը ցավ զգաց, որ ինքն էլ անձամբ չմասնակցեց այս պատերազմին։ Ուստի հաջորդ տարին (971 թ), նավատորմիղը ճանապարհ հանելով, Վասիլ սենեկապանի, Վարդ Սկլերոսի և Անեմաս Արաբացու հետ միասին արշավեց Բուլգարիա։ Առաջամարտիկը ինքն էր անձամբ։ Մեծ կոտորածով երկու օրվա մեջ գրավեց Պարաստլավա քաղաքը, որ իր անունով Ցովհաննուպոլիս վերանվանեց և Բուլգարաց Բորիս թագավորին էլ գերի բռնեց։ Սլավների ամբողջ բանակը ջնջվեց. Բուլգարիան ամբողջապես նվաճվեց և կայսրության մի նահանգը դարձավ. Զմշկիկը մեծ փառքով դար-

ձավ Պոլիս, Բուլգարական արքայական թագը եկեղեցուն նվիրեց, իսկ Բորիս Թագավորին իր պալատականներից մեկը դարձրեց: Երբ Բուլգարական պատերազմը վերջացավ, Ձմշկիկը դարձավ դեպի Արևելք: Արաբները, Եգիպտացիք և Պարսիկները դաշնակցություն էին կազմած և 100,000 զորքով գրավել էին Անտիոքը: Ձմշկիկը ծրագրեց նախ գրավել Երուսաղեմը, Քրիստոսի գերեզմանը ազատել գերությունից, ապա արշավել Բաղդադ, Արաբական խալիֆայության վերջ տալ և հետո էլ գրավել Մեքքէն, Իսլամության սրբազան քաղաքը: Մի բանակով ջնջեց դաշնակիցների զորությունը և Անտիոքը գրավեց: Մլեհ սպարապետը գնաց ավերեց Եդեսիան, առավ Մծբինը և Տիգրանակերտը պաշարեց, բայց չկարողացավ գրավել: Օգնության հասավ Ձմշկիկը, որ Տարօնի ճամբով ուզում էր Միջագետք մտնել: Հայերը կասկածեցին: Աշոտ Գ Թագավորը 80,000 զորքով Եփրատի ափին բանակ դրավ: Իր հետ էին նաև Փիլիպպէ՝ Կապանի Թագավորը, Գուրգէն Ա՝ Աղվանից Թագավորը, Աբաս՝ Կարսի Թագավորը և Սենեքերիմ՝ Արծրունեաց Թագավորը: Ձմշկիկը մտավ Մուշ և բանակը դրավ Այծեաց բերդի առաջ: Ամբողջ գիշերը Սասունի հետևակ գունդը հարձակումներով նեղում էր հույներին: Երկրորդ օրը բանակցությունները սկսան: Ձմշկիկն հայտնեց թե իր նպատակն էր կռվել Իսլամների դեմ. Աշոտը 10,000 ընտիր զորք ընծայեց կայսեր՝ առատ պաշարով: Ձմշկիկը կայծակի արագությամբ առաջ անցավ. գրավեց Տիգրանակերտը, Նփրկերտը, Մերդինը, Մծբինը և մոտեցավ Բաղդադին: Երկու ամիրապետներից մեկը սարսափահար հրաժարվեց խալիֆայությունից, մյուսը հարկատու դարձավ կայսեր և Բաղդադը պատրաստ էր անձնատուր լինելու, բայց կայսրը ջրի ու պաշարի պակասությունից նեղված՝ ետ քաշվեց և դարձավ Պոլիս: Գարնան նորից դուրս եկավ, շարժվեց դեպի Արևելք, գրավեց Մծբինը, Եդեսիան, Բաալբէքը, որից հետո Դամասկոսը ինքնակամ անձնատուր եղավ, ամբողջ Ասորիք, Լիբանան և Պաղեստին նվաճվեցին և մնացին միայն Տրիպոլիսն ու Երուսաղէմը: Որոշեց նախ գրավել Բաղդադը և այս քաղաքի վրա գնաց: Բայց հիվանդացավ ու ետ դարձավ. Բիւթանիայում սկսեց իր հոգեվարքը, հազիվ Պոլիս հասած՝ մեռավ 976 թվին, 51 տարեկան հասակում, թագավորելով միայն վեց տարի, բայց Ալեքսանդրի չափ մեծ աշխարհակալություն գործելով: Լացին իր վրա ամեն աղքատ ու ամեն զինվոր: Schlumberger մի ընդարձակ

հատոր է նվիրել նրան «Բիւզանդական դիւցազներգութիւն» վերնագրով։ Զմշկիկի ճյուղագրությունը հետևյալն է. Յովհաննէս Գուրգէն Ա.—Ռոմանոս պատրիկ և Եւփրոսինէ.—Յովհաննէս Գուրգէն Բ.—Ռոմանոս Գուրգէն.—Թէոփիլոս.—X (հայր Զմըշկիկի)—Յովհաննէս Զմշկիկ կայսր.—որդին Յովհաննէս։—Զմշկիկի մասին խոսում են բոլոր ժամանակակից հայ պատմիչները, և ամենից ավելի Ուռհ. տպ. Վաղարշապատ 1898, էջ 17—30, որ մեջ է բերում նաև Զմշկիկի նամակը ուղղված Աշոտ Գ Ողորմածին և մի նամակ էլ հայոց Ղևոնդ վարդապետին։ Առաջինը սկսում է այսպես. «Աշոտ շահնշահ Հայոց Մեծաց և իմ հոգեկան զաւակ, լուր և իմացիր, թէ որչափ ինչ սքանչելիս արար Աստուած առ մեզ և զարմանալի յաղթութիւնս... կամեցաք և քո փառաւորութեանդ ծանուցանել, ով Աշոտ Բագրատունի և զաւակ իմ, իմացուցանեմ քեզ, որ և դու, որպէս և քրիստոնեայդ ես և հաւատարիմ սիրելի թագաւորութեանս մերում, ուրախանաս և փառաւորես...»։ Այնուհետև պատմում է իր պատերազմները և իր քաջագործությունները Ասորիքում, Պաղեստինում, Փինիկէում և Լիբանանում։ Սմբատ պատմիչն էլ ունի այդպիսի նամակ, բայց շատ ավելի համառոտ։—Զամչ. Բ. 843—7, Ազգապ. 1026—8, Տէր Սահակեան, Հայ կայսերք Բ. 120—212 (ընդարձակ և շատ գեղեցիկ վիպական ձևով), 493—541 (ուր մեջ է բերում մեր պատմիչների տված տեղեկությունները և Զմշկիկի նամակները)։

— 111. Յովհաննէս տեր Սենեքերիմ—Յովհաննէս Արծրունի (983 թ)։

— 112. Յովհաննէս եպիսկոպոս Լամբրոյ. Սեբաստիոյ հույն մետրապոլիտի հալածանքի ժամանակ ստիպվեց ընդունել քաղկեդոնական դավանանքը, 986 թ։—Ասող. Գ. ի։

— 113. Յովհաննէս, գրիչ. օրինակել է Աւետարանը՝ Կիրակոս վաճառականի համար, 988 թ.—Շողակաթ 190։

— 114. Յովհաննէս քահանա, Յովսէփ քահանայի հետ միասին Բջնիում արտագրել են մի Աւետարան, 988 թ։—Սըմբատեանց, Գեղարքունի 321։

— 115. Յովհաննէս, գրիչ. Սիւնեաց Նորավանքում, Ստեփաննոս կրոնավորի համար օրինակել է Աւետարանը՝ 989 թ.—Շողակաթ 190 (էջմիածնի փղոսկրյա հռչակավոր Աւետարանն է), Ձեռ. Կարին. 16, Տաշեան, Ակնարկ 20։

— 116. Յովաննէս, միաբան Նորավանից Ս. Ստեփաննոսի. հիշատակագիր 989 թ.—Rapport Arm. 32։

— 117. Յովհաննէս Զ եպիսկոպոս Սիւնեաց, որդի Աշոտի, հաջորդեց հօրը «985—992 թ». իրեն էլ հաջորդեց Սամուէլը։—Օրբ. ծգ, հա.—տես. Յովհաննիսի՝ Օրբ. ծգ. Սխալական 20։

— 118. Յովհաննէս եպիսկոպոս Ամարասի, հիշված 997 թ.—Արձ. Արցախ 91, Ազգագր. հանդ. Բ. 8։

— 119. Յովհաննէս Արտաւազդեան, վեստ, հիւպատոս, դատավոր Վելումի և Կեսլիւրհերոտէսի, մնում է սրա հունարէն կնիքը (Ժ դար)։—Տէր Սահակեան, Հայ կայս. Բ. 576։

— 120. Յովհաննէս Ա. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Դաւիթ Ա-ի և նախորդ Գրիգոր Ա-ի. (Ժ դար).—Հաւաք. 59 (կեղծիք)։

— 121. Յովհաննէս քահանա, նշանավոր կրոնավոր (Ժ դար).—Ասող. Գ. Թ։

— 122. Յովհաննէս վարդապետ, «խաչակիրն Քրիստոսի, որ ակար բանիւ և մեծ գիտութեամբ բացայայտէր զգիտութիւն Գրոց սրբոց». վրացիք սպանեցին նրան. թաղվեց Բասեն գավառի Ակսիգոմս կամ Ս. Յովհան վանքը (Ժ դար)։—Ասող. Գ. Թ. Այրարատ 22։

— 123. Յովհաննէս քահանա, Բոգունի գավառի Անստան գյուղից. Գագիկ Արծրունին նշանակեց նրան վանահայր Մահռաշա գյուղի նորակերտ վանքի (Ժ դար).—Արծր. Գ. ԻԹ։

— 124. Յովհաննէս քահանա Նորավանից (Ժ դարի վերջը).—ըց. ի Յովհաննիսի՝ Օրբ. խզ։

— 125. Յովհաննէս որդի Ոչոպընտրեայ, զորավար Տայոց Դաւիթ Կիւրապաղատի. սպանվեց Ռուսաց հետ ընդհարման ժամանակ (1000 թ. ըստ Չամչ. Բ. 882).—Ասող. Գ. խգ։

— 126. Յովհաննէս Նարեկացի, որդի Խոսրով Անձևացու և երեց եղբայր և ուսումնակից Գրիգոր Նարեկացու. վանական Նարեկայ վանքի, հաջորդեց Անանիա Նարեկացուն՝ իբրև վանահայր։ Աշխատակցել է իր եղբորը՝ Նարեկ գրքի հորինման ժամանակ։—Գր. Նար. մատ. 268, 422. Յայսմ. փետր. 27.—տես. Յովհաննիսի՝ Յայսմ. փետր. 27։

— 127. Յովհաննէս, ազգական Մակար հայկազնի, միասին ուխտի գնացին Երուսաղէմ 1000 թ.—Չամչ. Բ. 459։

— 128. Յովհաննէս վանական Շիրմի վանից, եղբայր Մովսէսի. մեռել է «1002 թ».—Ասող. Գ. ԺԷ։

— 129. Յովհաննէս *տեր Սենեքերիմ թագավոր Փառիսոսի* †*1003 թ.*

— 130. Յովհաննէս *քահանա, տուն տվող (թելադրող) Պատմության Պանդալեոնի, 1005 թ.—Տաշյան, Ցուց. 14։*

— 131. Յովհաննէս *«պատուսպաթար թագաւորի և պռոքսիմոս Դուկիս Թոթորակնիս ճորտ» (օգնական զինվորական կուսակալի Ադրիանուպոլսի)։ Վասիլ Բ կայսեր ծառայության մեջ էր։ Կիրակոս երեցին գրել տվեց մի Ավետարան, Մակեդոնիայի «Անդրանապոլիս» քաղաքում, 1007 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 517, Զարբ. Թրգմ. 158. Հայունի, Պատմ. տարագի 172։*

— 132. Յովհաննէս, *կանգնեցրել է մի խաչքար 1011 թվին, որ այժմ բերած ագուցած պիտի լինեն Սոթից Ս. Աստուածածին եկեղեցու պատի մեջ.—Միսաքյան 73, Սմբատեանց՝ Գեղարքունի, էջ 629։*

— 133. Յովհաննէս, *գրիչ. Կղաւտոյ գավառում, Տալաշայ վանքում, Ծովակ տիկնոջ համար օրինակեց Ավետարանը 1018 թ.—Ձեռ. Վասպ. 76։*

— 134. Յովհաննէս *գրիչ. օրինակեց մի Շարական Հաղբատի վանքում 1019 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 70, Ձեռ. Կարին. 174։*

— 135. Յովանէս, *թվի որդի Ապլղարիբի (որդւոյ Գրիգորի), որ նրա արևշատության համար գնեց Արծուեբոյնը և նվիրեց Հաղբատի վանքին 1021 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. էջ 18։*

— 136. Յովհաննէս վրդ. Կոզեռն, *Տարօնացի. նշանավոր տոմարագետ. Յովսէփ վարդապետի հետ միասին՝ Վասիլ կայսեր կողմից հրավիրվեցին Պոլիս՝ Ծռազատկի հաշիվների համար խորհրդակցելու. բայց այս երկուսը չգնացին և միայն գրավոր պատասխանեցին կայսեր («1007 թ»)։ Ներկա եղավ Տրապիզոնի Ձորոհնեաց հանդեսին, Վասիլ կայսեր մոտ «1023 թ»։ Կյանքի վերջին տարիները անց է կացրել Երևանում, ուր մեռել և թաղվել է։ Գերեզմանը այժմ հայտնի չէ, բայց այդ տեղը իր անունով կոչվում է մինչև այժմ էլ* Կոզեռ *(Շահազիզ, Հին Երևանը, էջ 187, 243)։ Իր կենսագրությունը տես Ձեռ. Կարին. էջ 2։ Թողել է հետևյալ աշխատությունները.* Տեսիլ, *որով աշխարհի կործանումն է գուշակում. (գրված է «1033 թ». Մառը հրատարակել է սրա ռուսերեն թարգմանությունը՝ 1320 թվին գրված մի ձեռագրի վրայից. Շահազիզ, անդ, էջ 244),* Գիր Հաւատոյ

Մեկնութիւն տոմարի, Վասն Վարդավառի, *և պատմական մի գըր-վածք՝ այն է «Պատմութիւն Բագրատունեաց» որ գրել է Գէտ-րոս Գետադարձի հրամանով (Մխ. այրիվ. 37, 74). Թերևս պահ-ված է Ձեռ. կարին. № 1675.—Լաստ. բ. Ուռհ. 50, 52, 67, 68, 74, 179, 230. Սմբ. պատ. 43, 47, 49, 53. Սամ. անեց. 107. Մին. համզ. 34. Դրնղ. 491.*—Կոզեռն՝ *Անանուն ժմ. 16.*—Կոզեռ՝ *Սամ. անեց. 106, շար. 178. Առաք. պատ. 240, 309, 496.—սեռ.* Յով-հաննու՝ *Ուռհ. 52.*—Յովհաննիսի՝ *Ուռհ. 44.*—Կոզռանն՝ *Մխ. անեց. և.—բց.* ի Յովհաննիսէ՝ *Ուռհ. 68.—Զարբ. Հին դպր. 570—571, Հայապ. 316, Սարգիսեան, Ուս. հին կտ. անվաւեր գրոց 190—193 (համարում է յարասութիւն Հիպպոլիտի և Մեթոդիոսի տեսիլների)։ Ալիշան, Մատեն. հետազ. Ա. 220։*

— 137. Յովաննէս, *առաջնորդ Հոռոմոսի վանքի 1038 թ.— Շիրակ 20, 28, Շահխաթ. Բ. 352։*

— 138. Յովհաննէս-Սմբատ, *թագավոր հայոց «1020—1042 թ». Գագիկ Ա-ի երեց որդին էր. հայրը ուղարկեց նրան ավե-րելու իր քեռորդի Ապուսահլի գավառները։ Գահ բարձրանալով՝ իր եղբայրը Աշոտ ապստամբեց նրա դեմ և հաղթեց։ Նախարար-ները հաշտեցրին։ Իր օրով սկսեց Սելճուքեան Թուրքերի արշավանքը՝ Տուղրիլի առաջնորդությամբ, որից վախեցած Սե-նեքերիմ Արծրունեաց թագավորը գաղթեց Սեբաստիա։ Յովհան-նէս-Սմբատն էլ վախենալով հունաց Վասիլ կայսեր արշավան-քից՝ կտակեց որ Անին իր մահվանից հետո հունաց հանձնեն։ Վերաշինել է Հոռոմոսի վանքը՝ 1038 թ. (Շիրակ 20, 138, Տե-ղագիր Հայոց Մեծաց 33, Շահխաթ. Բ. 352)։ Ըստ Տաշեան, Ցուց. 1126 ա իր հրամանով կա կազմված Բժշկարան և Մար-դակազմութիւն (Աբու-Սայիդ) և Օրինագիրք (ի Դատաստանա-գիրս Լեհահայոց)։ Սրա անունով մի կեղծ արձանագրութիւն էջմիածնի արծաթի մի խաչի վրա 966 թվից (Շահխաթ. Բ. 308, Սիսական 518, Արար. 1877, 25 և մանավանդ Բանաս. 1902, 98)։ Իբրև թագավոր հիշված է Տեկորի Արձ. ՆԿԷ=1018 թ. (Շիրակ 134). ուստի կամ պետք է փոխել ! Յովհաննէսի թվականը և կամ, ինչ որ լավագույնն է, ՆԿԷ դարձնել ՆԿԸ=1020 թ։*—Յով-հաննէս-Սմբատ՝ *Լաստ. բ, ժ. Մաղ. թղ. (կա). Սամ. անեց. 105. Մխ. այրիվ. 19.*—Յովհաննէս՝ *Մխ. անեց. ա, գ, ժա. Օրբ. ժմ. 12, 13. Սամ. անեց. 102, 107. Վրդ. ծբ, ծե. Կիր. 50, 51. Անա-նուն ժմ. 17. Ուռհ. 3, 7—11, 44, 49, 67, 75, 79, 80, 84. Սմբ. պատ. 26—29, 43, 46, 48, 52, 54—56. Նհպաբ. 99, 100.*—Սըմ-

քատ՝ *Կիր. 52.*—Սմպատ՝ *Օրբ. ժմ. 12. իսկ Մխ. համդ. 34 դրում է* Սմբատ և Յոհաննէս, *կարծես երկու հոգի լինին.—սեռ.* Յովաննու՝ *Վրդ. ծդ.*—Յովհաննիսի՝ *Ասող. Գ. խգ. Լաստ. ժ. Արծր. Դ. ժբ. Սամ. անեց. 108. Մխ. անեց. ա. Օրբ. ժմ. 13. Ուռհ. 9, 10, 33, 34, 44, 52, 79, 84. Կիր. 52. Վրդ. ծբ, ծդ, ծէ. Յմբ. պտմ. 26, 28, 39, 54.*—Յովհաննէսի՝ *Ուռհ. 76.*—Սմբատայ՝ *Լաստ. բ.*—Սմպատայ՝ *Օրբ. ժմ. 13.*—Սմբատայ, որ և Յովհաննէո՝ *Սամ. անեց. 108.—բց.* ի Յովհաննիսէ՝ *Մխ. անեց. ա. Ուռհ. 10.—Ցիշատ. Հայաստ. 311 և Զարբ. Թրգմ. 455 (մասը դնում են ՆՂ=1041 թվին), Ցոփանեան՝ Հետազոտ. նախն. ռմկ. Ա. 134.—տառադարձված է հուն.* Ἰωβανεσίκης. *այսպես Կեդրենոս, հտ. Բ, էջ 557, որ տալիս է Անիի կտակի պատմությունը և որի թրգմ. տես Սահակեան, Հայ կայս. Բ. 308—9։ Կոչվում է Սմբատ Շահանշահ՝ Արձ. 1031 թ. (Այրարատ 271, Շողակաթ 180) և Արձ. 1034 թ. (Այրարատ 66)։*

— 139. Յովհաննէս *Բարձրեղեցի, Պետրոս Գետադարձ կաթուղիկոսի աշակերտներից մեկը՝ Պոլիս գնալու ժամանակ «1047 թ».—Ուռհ. 105։*

— 140. Յովհաննէս *եպիսկոպոս, առաջնորդ Բջնիի, 1051 թ.—Այրարատ 260, 276, Շողակաթ 181։*

— 141. Յովհաննէս *երեց. օրինակեց Աւետարանը՝ Սանդըղկայ վանքում, 1053 թ.—Շողակաթ 192,* Rapport Arm. *40։*

— 142. Յովհաննէս *վարդապետ Տարօնեցի, ունի «Շարադրութիւն պատմութեան տանն Բագրատունեաց», գրեալ հրամանաւ Պետրոս («1019—1058 թ») կաթուղիկոսի, Շ=1051 թվին. ձեռագիրը գտնվում է էջմ. № 1717, ըստ Տ. Միքելեան, հրատ. Սամ. անեց. էջ 291, Զարբ. Հին դպր. 788։*

— 143. Յովհաննէս Է *եպիսկոպոս Սիւնեաց, «1006—1058 թ». հաջորդեց Գրիգոր Գ-ին. ազգական էր Սարգիս կաթուղիկոսի. կոչված է «երկրորդ Լուսաւորիչ Սիւնեաց». նորոգեց Սիւնեաց մետրապոլտութիւնը, որ ջնջել էր Անանիա Մոկացին. յետ առավ Տաթեւի բոլոր այն հողերը, որ ուրիշները խլել էին։ Սրա օրով Պարսիկները հարձակվեցին Տաթեւի վրա, այրեցին և կողոպտեցին։ Ցովհաննէսը նորից շինեց։ Մեռել է 1058 թվին։ Ունի գրած «Թուղթ մխիթարական առ Տր. Մագիստրոս», որից ստացել է երկար պատասխան։ Սրան են ուղղված նաև Մագիստրոսի* ժա—ժէ *թղթերը.—Օրբ. ծա, ծգ, ծե—ծէ, ծթ, հա.—սեռ.* Յովհաննու՝ *Մագ. թղ. ժգ.*—Յովհաննիսի՝ *Օրբ. խթ, ծա, ծե—ծէ,*

*ժթ, կգ. Մագ. Թղ. ժա.—թց.* ի Յովհաննիսէ՝ *Օրբ. ծէ, հ.—Միսական 231 (Արձ. 1017 թվից), 235 (Արձ. 1043 թվից). Ազգաղր. հանդ. Դ. 141.—Հմմտ. № 69.*

— 144. Ոսան, *իր և իր կնոջ Թիթեղնիկի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Խաչենի Դահրաւ գյուղում 1071 թ.— Արցախ 156.*

— 145. Օսանես *տեր, հիշված Դանավարդ գյուղի (Արցախ) մի արձանագրության մեջ, 1071 թ.— Արցախ 131.*

— 146. Յովհաննէս, *այս անունն ստացավ Վահրամի որդի Սմբատ պատրիկը, երբ դարձավ կրոնավոր՝ 1072 թ. օրինակել է տվել մի Աւետարան նույն թ.—* Rapport Arm. *58:*

— 147. Յովհաննէս, *պատրոն Անի քաղաքի, Գրիգոր պատրոնի (№ 149) հետ միասին նորոգել են Անին և հարկերը ջնջել 1072 թ.— Արձ. Շիրակ 40, 98,101.*

— 148. Յովհաննէս *գրիչ. հրամանով Սմբատ պատրիկի՝ օրինակեց Աւետարանը, 1071—1072 թ.—* Rapport Arm. 57. *Տողակաթ 194 (տես* Յովհաննէս *№ 146).*

— 149. Յոհաննէս *եպիսկոպոս Անիի, հիշված 1072 թ.— Արձ. Շիրակ 40.*

— 150. Յովհաննէս *կրօնաւոր, որի անվան մի խաչքար է կանգնեցրած Երնջակի Ս. Կարապետ վանքում, 1074 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 16:*

— 151. Յովհաննէս *երեց որդի Գագիկ Բ թագավորի. փեսայացավ Անիի հույն դուքսին՝ որոշ ակնկալությամբ. գնաց Անի, բայց այնտեղ հանգիստ չգտնելով անցավ Վրաստան, դարձավ Պոլիս, ուր և մեռավ: Իրանից քիչ առաջ մեռել էր իր որդին Աշոտը (№ 62)՝ թունավորմամբ.—Ուռհ. 220, Վրդ. կ. Սմբ. պատ. 87. Չամչ. Բ. 1005 (1080 թվի տակ, իսկ Վրդ. կ 1076 և 1088 թվերի միջև).*

— 152. Յովհաննէս *քահանա, որ իբր թե Գրիգոր Բ Վկայասէրի կողմից առանձին թղթով դեսպան ուղարկվեց Գրիգոր Է պապին՝ 1080 թ.— Չամչ. Բ. 999, Ալիշան՝ Շնորհ. 35, Միսուան 466ա, Տաշեան՝ Ցուց. 109, Ազգապ. 1281, 1305—6 (համարում է կաթոլիկական կեղծիք).*

— 153. Յովհաննէս *արքեպիսկոպոս Ս. Աստուածածնի պատկերին, հրավիրվեց Փիլառտոսից կաթուղիկոս նստելու Մարաշում, բայց նա մերժեց («1085 թ»).— Ուռհ. 228.*

— 154. Յովհաննէս *Տարօնեցի կիւրապաղատ, իբրև զորա-*

վար հունաց հիշվում է 1093 թ.— Տէր Սահակեան, Հայ կայս. Բ. 577։

— 155. **Յովհաննէս** գրիչ Կիլիկեցի, Գրիգոր վարդապետի հրամանով Սեաւ լեռան Պաղաճա վանքում սկսեց օրինակել Կանոնագիրքը, որի օրինակն էլ ընձեռեց Տէր Խաչիկը։ Զարամիտ տաճկորդների նենգությամբ չկարողացավ ավարտել, ուստի քաշվեց Արմէնի լեռան Յովհաննու անապատը, ուր և երկար ժամանակ հետո ավարտեց գրչությունը՝ 1098 թ։ Կանոնագրքի ամենահին և լավագույն օրինակն է երկաթագիր գրչությամբ. այժմ գտնվում է Նոր—Ջուղայի գրադարանում (№ 131)։ Ընդարձակ նկարագրությունը տես Ակինեան, Թուղթ Մակարայ, էջ 94—103 և Ձեռ. Լվով (ՀԱ 1937, 146)։

— 156. **Յովհաննէս**, ընկեր Գրիգոր վարդապետի. թեև չքավոր էր, բայց օգնեց Յովհաննէս գրչին՝ արտագրելու համար Կանոնագիրքը, հոգալով թուղթը և ծախսը, Արմանի լեռան Յովհաննու անապատում, 1098 թ.— Ակինեան, Թուղթ Մակարայ 102։

— 157. **Յովհաննէս** եղբայր Ահարոն կրոնավորի, որ օրինակեց Սաւտարանը՝ Աղեքսանդրիա քաղաքում, 1099 թ. այս թվին Յովհաննէսը սպանվել էր արաբների ձեռքով.— Rapport Arm. էջ 60—61.

— 158. **Յոհանէս**, վանահայր Կուաշի Ս. Ստեփաննոս վանքի. տանուտերների, դատավորի և ավագերեցի հետ միասին գյուղացոց օգնությամբ ազատել են գյուղի առուն՝ 200 դահեկանով, 1101 թ.— Բանաս. 1903, 27 տես իր արձանագրությունը ZAPh 2,43։

— 159. **Յովհաննէս** Զ կաթուղիկոս Աղուանից, հաջորդեց իր եղբոր՝ Ստեփաննոս Ա կաթուղիկոսին, նստավ 1103 թ. և մեռավ 1112 թ.— Կիր. ը. Հայապ. 385։ (Սրան տրվում է 50 կամ 30 տարի. բայց Ազգապատումը նրան հաջորդող Ստեփաննոս Բ-ին դնում է 1129 թ. հմմտ. Բարխուտ. Պատմ. աղվ. 182, Ջամբռ 76. տես նաև Ստեփաննոս Բ)։

— 160. **Յովհան** որդի Միքայէլ իշխանի և թոռն Գրիգոր Տարօնեցու. հոր մահից հետո Ալեքս Կոմնենոս կայսեր (1081—1118 թ) կողմից, որ իր մորեղբայրն էր, կարգվեց պատտսեբաստոս։ Գնաց Տրապիզոնի դուքս Գրիգոր իշխանի վրա և զսպեց նրա ապստամբությունը. մեծ քաջություններ է գործել Եգերացոց և Պոնտացոց կողմերում—Զամչ. Գ. 10—11։

— 161. **Յոհաննէս** կրոնավոր, որդի Մուշի, աշակերտ Թա-

դէոս վարդապետի. գրեց Մեկնութիւն Եսայեայ, համառօտելով Յովհաննու Ոսկեբերանի և Եփրեմի համանուն գործերից, Վանայ Մարմետ գիւղում, 1118 թ։ Բնագիրը (հեղինակի ձեռագիրը) պահվում է մեր Մատենադարանում, (տես Ձեռ. Կարին. էջ 151, որ է Ձեռ. Էջմ. № 1209=1239), Արար. 1913, էջ 50, Զարբ. Հին դպր. 704։

— 162. Յովհաննէս արքեպիսկոպոս, առաջնորդ Վանի Կարմրաւոր վանքի՝ 1119 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 17 բ։

— 163. Յովհաննէս Սարկաւագ վարդապետ. քահանայի որդի էր. ծնվել է Փառիսոսում (Արցախ), աշակերտել է Հաղբատում, որի վանահայրը դարձավ հետո (ըստ Ոսկեան, էջ 7 սխալ է այս ենթադրութիւնը) և հասցրեց բազմաթիվ աշակերտներ։ Նրանց մեջ նշանավոր են Երեմիա Անձրևիկ և Սամուէլ Անեցի։ Բացի Հաղբատից նա դպրոց է հաստատել նաև Անիում, ուր գործադրած ուսման ծրագրի մասին տես Երևանի Պետ. համ. Գիտ. աշխ. XIII, էջ 411—414 (Ար. Մովսիսյանի ուսումնասիրությունը)։ Իր գիտության և սրբակեցության համար ամենքի հարգանքն էր վայելում. Վրաց Դաւիթ Թագավորի սիրելին էր։ Ինքը հիմնեց Հայոց անշարժ տոմարը «1084 թ» (որ իր անունով կոչվում է Սարկաւագադիր) և քննեց ու հաստատեց բազմաթիվ պատմական դեպքերի ճիշտ թվականը։ Հաղբատում գտնելով Սաղմոսի հին և հարազատ թարգմանությունը Ե դարից, օրինակել է տվել և տարածել ամբողջ հայոց մեջ, փոխանակ այն խաթարեալ օրինակի, որ տարածվել էր։ Նույն աշխատանքը կատարեց նաև ամբողջ Ս. Գրքի և Դաւիթ փիլիսոփայի թարգմանած Արիստոտելի գործերի վրա, որոնք զանազան ձեռքերից անցնելով աղավաղված ու խաթարված էին։ Յովհաննէս Սարկաւագը լավագույն օրինակների համեմատությամբ կազմեց ուղիղ բնագիրը և նույնը տարածեց։ Մեռավ «1129 թ» (ըստ Ազգապ.) և թաղվեց Հաղբատում, ուր ցուցվում է մինչև այժմ իր գերեզմանը այս արձանագրությամբ.

Արձանս այս սեմական
է Սոփեստոսի Սարկաւագին

(Նոտարք 112, Տաշեան՝ Ցուց. 984)

Մահվան թվականի մասին մի քննություն ունի Կոստանեան, Ազգագր. հանդ. XIV 106, ուր հաստատում է 1139 թվականը՝ ըստ Վարդան պատմչի։ Մեր նշանավոր մատենագիրներից է. թողել է հետևյալ գործերը.— 1) Յովհաննու Սարկաւագ վարդապե-

տի Վասն քահանայութեան և Բանք խրատու ուսումնասիրաց (տպ. Սոփերք, հտ. Գ. Վենետ. 1853).—2) Աղօթամատոյց Յովհաննու Սարկաւագայ վարդապետի (տպ. Սոփերք, հտ. ժէ, Վենետ. 1854).— 3) Ճառ ընդդէմ Նեստորականաց (Սամ. անեց. էջ 292).—4) Վասն պատկերաց ընդունելութեան և վասն մասանց պատուոյ (տես Սեդրակեան, Հայ եկեղ. պատկերյրգ. էջ 131—139).—5) Յաղագս Բաղկեդոնականաց, որ նոյն է՝ Հակաճառութիւն ընդդէմ երկաբնակաց (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 70 և Շողակաթ 208).— 6) Վասն շարժման երկրի (երկրաշարժի և պըտուտվող քամու մասին համառոտ գրվածք, որ տպ. Ոսկեան, Մատեն. քնն. էջ 53—55). — 7) Մեկնութիւն տոմարի և յաղագս անկինաւոր Թուոց (հրատարակեց և ուսումնասիրեց Գ. Պետրոսեան, Տեղեկ. ակադ. 1946, № 4, էջ 23—41).—8) Յաղագս ամսոց հայոց և տօնից (սրանից մի քանի էջ արտատպեց Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. գաղտ. էջ 353—5).—9) Ճառ յաղագս իրաւաբանութեան (կորած է. տես Գալէմքեարեան, Ուս. լեհ. դատ. էջ 3).— 10) Պատմութիւն, այն է Սելճուքեանց ծագման, Տուղրիլի, Ալփասլանի և Մելիքշահի պատմութիւնը, որ կորած է և որից քաղվածքներ տես Ձեռ. Վենետ. Բ. 817.— 11) Յաղագս Նշանակ հաւատոյ (Յովսէփեան, Խոսրվկ. էջ 25). —12) Յայտարարութիւն զանազան հերձուածոց (անդ 37—47 և 53—57).— 13) Եկեղեցական Պատմութիւն (որ հիշատակում է Bodleian 184).— 14) Բարոզ ժամագրոց,— 15) Ներբողեան ի Գր. Լուսաւորիչ, ի Տրդատ, ի Ներսէս, Սահակ և Մեսրոպ, ի Ս. Ղեւոնդեանս.—16) Տաղ առ ձագն, որ կոչի սարեկ (հրատ. Բազմ. Ե. 221). Նաև ուրիշ տաղեր, որոնց մասին տես Ոսկեան, Մատ. քնն. 44, զանազան աղօթքներ (Ձեռ. Թաւր. 85 ա), իսկ հեղինակ հիշված է Շարականի սկիզբը (տես և Տաշեան, Ցուց. 1129 բ)։—Յովհաննէս—Սարկաւագն՝ Կիր. 64. Վրդ. հ. Մխ. այրիվ. 37, 75.—Սարկաւագ՝ Կիր. 47,66. Վրդ. հ. Խոսրվկ. 1. Մխ. այրիվ. 33, 77. Օրբ. ժմ. 17. Պտմ. վր. ժը. ժմ. 433, 472, 518. Սամ. անեց. 97, 120, 129. Տաթև. հարց. 638. Մին. համդ. 30.—սեռ. Սարկաւագի՝ Յայսմ. փետր. 11. Եղիփ. կիպր. սղ. 68. Որոտ. պօղ. 89.—Սարկաւագի տոմարը՝ Տաթև ձմ. ա։—Տես և Սարգիս ի Փառիսոսոյ։—Ընդարձակ կենսագրութիւնը տես Յուշիկք, Բ. 279—307, Ոսկեան՝ Մատեն. քնն. էջ 1—64, մանավանդ՝ Տեղեկ. Ակադ. 1944, № 1—2, էջ 31—60։—Տես և Զարբ. Հին դպր. 600—615, Թրգմ. 214—20, Հայապ. 93, Շնորհ. և պրդյ. 134—5։

— 164. Յովհաննէս Անեցի, աշակերտ «Սարգիս վարդապետի, որ ի Փառիսոսոյ» (Նախորդ Յովհաննէս Սարկաւագ վարդապետն է), դասընկեր Երեմիա Անձրեւիկի.—Սամ. անեց, 128, Զարբ. Հին դպր. 615, Յուշիկք Բ. 305։

— 165. Յովհան սեբաստոս, պատվավոր իշխան Հունաց, դաշնակից եղավ Կիռ-Մանուէլ կայսեր հետ այն ժողովում, որ տեղի ունեցավ 1145 թ.— Զամչ. Գ. 11։

— 166. Յովհաննէս կրոնավոր, ստացող Վենետիկի № 654 ձեռագրի, գրված 1149 թ. «Վայք ողբոց Գրիգորի Մարաշեցւոյ» (ըստ Սարգիսեանի, Եւագր. ներած, էջ ճծք, որ համարում է Յովհաննէս Սարկաւագ վարդապետին, մինչդեռ սա արդեն մեռած էր 1139 թվին)։

— 167. Յովհանէս գրիչ, որ Ծով ամրոցում իր ուսուցիչ Գէորգ վարդապետի համար օրինակեց Աւետարանը 1151 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 748։

— 168. Յովհաննէս (ճարտարապետ), որի ձեռքով Արտաւազ և Սարգիս շինել են Արցախի Սրուեղ վանքի եկեղեցին 1152 թ.—Արցախ 340։

— 169. Տէր Ովանէս, որի հիշատակին մի տող արձանագրություն կա Ոսկանապատ գյուղի եկեղեցում 1155 թ.—Արցախ 273։

— 170. Տէր Յոհան, քրոջ որդի Տէր Գրիգոր եպիսկոպոսի Մեծարանց վանքի, միացած սրա եղբորորդի Գերգի (№ 1) և վանքի ուրիշ միաբանների հետ շինեց Հաւապտուկ վանքի եկեղեցին 1163 թ.—Շահխաթ. Բ. 378, Արցախ 182, Յովսէփեան՝ Խաղբակեանք 29։

— 171. Յովհաննէս, վանահայր Հաղբատի, շինեց վանքի գմբեթը 1165 թ.—սեռ. Յովհաննիսի՝ Օրբ. ժմ. 18։

— 172. Յոհանէս եպիսկոպոս քաղաքին Գանձակայ 1167 թ.—Նոր վկ. 31։

— 173. Յովհաննէս Ութման (հուն. 'Ατμάνος) Փիլիպպեցի, վանահայր Փիլիպպէի հայոց վանքի. Հունաց Մանուէլ կայսեր կողմից ուղարկվեց Շնորհալու մոտ, միաբանության խնդրի առթիվ՝ նախ «1170 թ» և երկրորդ անգամ «1172 թ».—Շնորհ. պատճ. 144, 146, 155. Ալիշան՝ Շնորհ. էջ 419. կոչված է նաև Վահան (Ազգապ. 1420)։

— 174. Յոհաննէս հիւսն, հրամանաւ Քուրդ իշխանաց իշխանի նորոգեց Սեանի Առաքելոց տաճարի ընկուզենի դուռը

1176 թ.—Խաղբակեանք 81, Ամրատեանց՝ Գեղարքունի 120 (Սիսական 84 սխալ է դնում 1243)։

— 175. Յոհան քահանա, գրիչ. օրինակել է Խաչէրքը՝ Խաղտեաց գավառում, 1177 թ.—Ձեռ. Կարին. 41։

— 176. Յովհաննէս արքեպիսկոպոս Կեսարիոյ, անդամ Հռոմկլայի ժողովի «1179 թ».—Շնորհ. պատճ. 199։

— 177. Յովհաննէս եպիսկոպոս Անարզաբայի, անդամ Հռոմկլայի ժողովի «1179 թ».—Շնորհ. պատճ. 199։

— 178. Յովհաննէս, եղբայր Մարկոս կրոնավորի 1187 թ.—տես Մխարան, Գոր. և շմ. էջ 52—3։

— 179. Յովանէս գրիչ. Հոռոմոսի վանքում, իր երեց եղբայր և ուսուցիչ Վարդանի հրամանով և կրտսեր եղբայր Գրիգորի օգնությամբ օրինակեց Աւետարանը (մի գեղեցիկ ձեռագիր, որի նմանահանությունը տես Շիրակ 27), 1181 թ. և ավելի ուշ Բարսղի Վեցօրէից գիրքը 1187 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 395, Շիրակ 27, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 15։

— 180. Յովանէս քահանա, գրել տվեց մի Աւետարան՝ Կարնոյ Խանատամլուց անապատում, 1188 թ.—Ձեռ. Վասպ. 78։

— 181. Յովհաննէս վարդապետ, ապա եպիսկոպոս, հոգևոր հայր և ուսուցիչ Ներսէս Լամբրոնացու. երկուսով միասին ճգնում էին Սաղրուի Ս. Աստուածածին վանքում. սրա խնդրանոք գրեց Լամբրոնացին Սաղմոսի Մեկնությունը 1178 թ.—Պատմ. լմբ. 228, 229.—սեռ. Յոհաննու՝ Պատմ. լմբ. 227.—Զարբհին դպր. 713. Սիսուան 113. Հայապ. 415, 416։—Տարիներ հետո այս Յովհաննէս վարդապետը Սսի եպիսկոպոս դարձավ և սրա համար կոչված է նաև Սսեցի (Ազգապ. 1488)։ Այդ ժամանակ Լևոն Բ-ի հրամանով, Ներսէս Լամբրոնացու, Գէորգ Սկևռացու և 20 աշխարհական հետևորդների հետ միասին պատգամավոր գնացին առ կայսրն Ալամանաց. Մարաշի մոտ հարձակում կրելով կողոպտվեցին Թուրքերից «1190 թ»։—Պատմ. լմբ. 231, Սիսուան 447, Ազգապ. 1488։

— 182. Յովհաննէս առաջնորդ Սանահնի վանքի, վերաշինեց քանդված եկեղեցիները օգնությամբ Ամիր Քրդի, Գրիգոր վարդապետի և Յովհաննէս վանահոր 1181 թ.—Ազգագր. հանդ. Գ. 286։ Սրա հետ համեմատել՝

— 183. Յովհաննէս վանահայր Սանահնի.—տես նախորդը։ Նույն անձը հիշված է նաև չորս տարի հետո, երբ նորոգվեց

*վանքի կաթուղիկէն 1185 թ. և ավելի ուշ 1191 թ.—Ազգագր. հանդ. Գ. 306, 283, Է. 391։*

— 184. **Յովհաննէս**, *որդի Վարդ քահանայի, հիշված Սեբաստիայում 1193 թ.—Ձեռ. Վասպ. 80։*

— 185. **Յովհաննէս** *եպիսկոպոս, առաջնորդ Հաղբատի 1195 թ.—Տաթև 1927, 186, Զարբ. Թրգմ. 448, Հայապ. 383։*

— 186. **Յովհաննէս** *որդի Սարգիս բժշկի. օրինակեց Ճառընտիր Եփրեմի, 1196 թ.—Շողակաթ 197։*

— 187. **Յովհաննէս**, *եղբայր Աւետիքի, առաջնորդ Գեմաձգերի=Լամբրոնի Ս. Աստուածածին վանքի 1198 թ.—Սիսուան 114, Տաշեան, Ցուց. 607 բ։*

— 188. **Յովհաննէս** *աշակերտ Ներսէս Լամբրոնացու († 1198 թ.). օրինակել է Եփրեմի Ողբք Նիկոմիդեայ.—Զարբ. Թրգմ. 464։*

— 189. **Յովհաննէս**, *եղբայր Յակոբ գրչի, որ օրինակել է Շնորհալու Մեկնութիւն կաթողիկեայց գիրքը 1198 թ. գովաբանված է իբրև նշանավոր երաժիշտ և անխոնջ գրիչ։—Հայապ. էջ 442։*

— 190. **Յովհաննէս**, *եղբայր հայր Գրիգորի, որի օգնութեամբ Դաւիթ իշխան հիւրիկեան շինեց Անապատի եկեղեցին, 1198 թ.—Տեղեկ. Արմֆանի, 1940, № 4, էջ 168 (Արձ.)։*

— 191. **Յոհաննէս** *քահանա. Վարդանանց վրա հորինել է «Անթառամ սիրոյ ծնունդք» շարականը և Ղևոնդեանց վրա «Աստուածային սիրով լցեալ» շարականը։ Ժամանակն անհայտ, բայց անշուշտ ԺԳ դարից առաջ, որովհետև հիշված է Սարգիս երեցի Շարակնոցում.—Պարականոն շար. 165, 170։*

— 192. **Յովհաննէս**, *ուսումնակից կամ դասընկեր Բարթուղիմէոսի և Ներսէս քահանայի, որ Ներսէս Լամբրոնացու քրոջ որդին էր. միասին սովորում էին Սկևռայ վանքում՝ Գրիգոր Սկևռացի և Բասիլ վարդապետների մոտ 1198 թ.—Սիսուան 99 բ, Զարբ. Հին դպր. 709։*

— 193. **Յովհաննէս** *եպիսկոպոս Սանվիլեայ. ներկա էր Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111։*

— 194. **Յովհաննէս** *գրիչ էջմիածնի № 936 Ճառընտիրի, գրված Ս. Գրիգորում, որ հավանաբար Սաղմոսավանքումն է՝ ըստ Միաբան, Գոր. և շմ. 45 (ԺԲ դար)։*

— 195. **Յովհաննէս** *Խոյլենց, միաբան Սաղմոսավանքի. հիշված է էջմիածնի № 936 Ճառընտիրի գրիչ նախորդ Յովհաննէսի հետ (ԺԲ դար).—Միաբան, Գոր. և շմ. 45։*

— 196. Յովհաննէս *վարդապետ Տաւուշեցի, ժամանակի գիտնական մարդն էր համարվում. նախ աշխարհական էր և ապա այրիանալով՝ կրոնավոր դարձավ. շրջիկ քարոզիչ էր. պահոց մասին օրենքներ է հաստատել. եղավ ուսուցիչ Մխիթար Գոշի (ԺԲ դար).—Կիր. ժա.—սեռ.* Յովհաննիսի՝ *Կիր. ժա.—Ջամչ. Գ. 95 (դնում է 1163 թ).—Տաշեան, Ցուց. 182 նույն անձը կոչված է* Յովհաննէս Ուշեցի: *Տես և № 286։*

— 197. Յովհաննէս *Դամասկացի, այս կեղծ անվան տակ ծածկված է մի հայ-հոռոմ, որ գրել է հայոց դեմ վիճաբանական մի գրվածք «Յովհաննու Դամասկացւոյ պատասխանիք առ հայս» վերնագրով. հրատարակված է Լոյս շաբաթաթերթ, 1906, էջ 355—59 և 474—9 շար., որից Ակինեան՝ Կիւրիոն, էջ 69. հիշում է Անանիա Շիրակացու, Ուխտանէսի և «Մատթէոսիկ պատմողի» (=Ուռհայեցու) գրվածքները, որով երևում է թե առնվազն ԺԲ դարից է։*

— 198. Յովհաննէս *որդի Գէորգի, սկսեց օրինակել Ճառընտիրը. բայց շուտով մեռավ. այն ժամանակ նրա հայրը Գէորգ (№ 67), թեև ծեր և «խաւար աչաւք», հանձն առավ շարունակել ի հիշատակ իր որդու և վերջացրեց 1201 թ.—հրտր. Ագաթ. 1909 թ. յռջ. էջ ԽՁ։*

— 199. Յովհաննէս, *գրիչ. Դարանաղեաց գավառի Ս. Գրիգոր վանքում օրինակել է մի Աւետարան, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 248)։*

— 200. Յովհաննէս *վարդապետ, միաբան Ս. Գրիգոր վանից Դարանաղեաց գավառի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։*

— 201. Յովհաննէս *գրիչ, որդի Թաչէվարդի և եղբայր Սամուէլ կրոնավորի. իր ուսուցիչ Ներսէս Լամբրոնացու համար օրինակեց Եփրեմի ողբը և ուրիշ գործեր 1202 թ.—Ֆ. Մուրատ, Ցայտ. յավհ. էջ* Ի—ժդ:

— 202. Յովհաննէս, *միաբան Կամխի Եղավանքի անապատի, 1203 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 420։*

— 203. Յովհաննէս, *որի համար Առաքել գրիչը օրինակեց Աւետարանը՝ Կամխի Եղիվանքում, 1203 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 419։*

— 204. Յոհան *երեց, մերձավոր Առաքել գրչի, որ օրինակեց Աւետարանը Կամխի Եղիվանք անապատում, 1203 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 420։*

— 205. Յովհաննէս *երաժիշտ, պաշտավորում էր Ղազարու վանքում 1204 թ.—Հայապ. 450։*

— 206. Յովհաննէս հօրեղբայր, սնուցիչ և ուսուցիչ Պետրոս քահանայի, որ էր գրիչ Սկևռայ վանքում 1205 թ.—Սիսուան, էջ 101։

— 207. Յովհաննէս Տիկնազգի, վարդապետ նույն Պետրոս քահանա գրչի՝ Սկևռայ վանքում, մեռավ 1205 թ.—Սիսուան, էջ 101։

— 208. Յովհաննէս քահանա Դանձան գյուղի (Խլաթ). նվիրատու ձեռագրի, 1205 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 471, Հայապ. 448։

— 209. Յովհաննէս, որդի Վասուսի և եղբայր Աստուածատուր Բաբերդցու, որ գրել տվեց մի մեծ Տօնական, 1205 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 470։

— 210. Յովհաննէս քահանա Մրջնաղբիւրցի (Տարօն). նախաձեռնող հանդիսացավ և մեծ գումարով օգնեց յետ գնելու գերի ընկած մի մեծ Տօնական, Խլաթում, 1205 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 472, 473, 480, Հայապ. 395, 449—451։

— 211. Յովհաննէս քահանա, առաջնորդ և օգնական եղավ Կոզմա գրչին, գրելու Աւետարանը՝ Խարբերդ 1205 թ.—Ձեռ. Վեննա. Ա., 400։

— 212. Յովհաննէս վարդապետ, իր եղբոր՝ Սարգսի հետ շինել է տվել Դսեղի Ս. Յարութիւն եկեղեցին և ժամատունը 1205 թ.—Յարութիւնեանց, Ներս. դպր. Ա. ճնպրհ. 65 և Ազգագր. հանդ. Է, 423։

— 213. Յովհաննէս «պատուական ծեր», Ղազարու վանքի առաջնորդներից մեկը, որ օգնեց գնելու գերի ընկած Տօնականը, 1206 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 469։

— 214. Յոհան, հիշված է իբր միաբան Աստուածընկալ վանքի՝ նույն վանքի նորոգության արձանագրության մեջ 1207 թ.—Այրարատ 255, Բանաս. 1903, 31։

— 215. Յովհաննէս կրոնավոր, Սանահնում օրինակեց Նոննոսը 1208 թ.—Զարբ. Թրգմ. 635։

— 216. Յովհաննէս եպիսկոպոս Կարուց. անդամ այն եկեղեցական ժողովի, որ գումարեց Զաքարէ սպասալարը Լոռիում «1208 թ»։—Կիր. գ. Այրարատ 76։

— 217. Յովհաննէս, վանահայր Սանահնի վանքի, դաստիարակ էր եղած Զաքարէ և Իւանէ եղբայրներին. մին այն հյուսիսականներից, որոնք գրեցին Գրիգոր Դ Տղային՝ հակառակ միության խնդրին «1178 թ». անդամ Լոռիի եկեղեցական ժողովի «1208 թ».—Կիր. գ. Շնորհ. Թղ. 308։

— 218. Յովանես, *ազգական Յովսէփի, որ նրա անունով մի խաչքար է կանգնեցրել Հաղբատում 1209 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 70։*

— 219. Հանես, *եղբայր Սիոն գրչի, որ Մուշեղկայ գյուղի Նորսեսի անապատում օրինակեց Մանդակունու ճառերը 1210 թ.—Դուրեան, Ուսում. 230։*

— 220. Յովհաննէս, *Գետկայ ժողովուրդը ազատել է հարկից և այդ բանը արձանագրում է Գոշավանքի մի արձանագրության մէջ 1211 թ.—Ազգագր. հանդ. Ժ, 24։*

— 221. Յովհաննէս, *իբրև վկա հիշվում է հարկերից ազատության նույն արձանագրության մէջ՝ Գոշավանք 1211 թ.—Ազգագր. հանդ. Ժ, 24։*

— 222. Յովհաննէս *հայր, գրել տվեց մի Աւետարան (Ձեռ. էջմ. № 364/987) Հայրապետ քահանային, Սեբաստիա 1211 թ.—Տողակաթ 198։*

— 223. Ելանես *պարոն, դրամով օգնեց մագաղաթ գնելու և նկարազարդելու նույն այն Աւետարանը, որ օրինակեց Հայրապետ քահանան, Սեբաստիա 1211 թ.—Տողակաթ 198, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 12։*

— 224. Յոհան *Գրասէր՝ Վախտանգ անուն անձի հետ մի խաչքար է կանգնեցրել իր որդու՝ Գրիգորի գերեզմանի վրա, Արցախի Վաղահաս գյուղի եկեղեցում, 1213 թ.— Արցախ 192։*

— 225. Յովհաննէս, *հիշվում է Խծկոնից արձանագրության մէջ՝ իբրև պատարագ ստացող, 1213 թ.— Արձ. Այրարատ 113։*

— 226. Յովհաննէս, *փորագրիչն է այն խաչքարի արձանագրության, որ կանգնեցրած է Վանայ Ալիւր գյուղում, Անձրև քահանայի հիշատակին 1214 թ.— Ազգագր. հանդ. ԽԱ, 99։*

— 227. Յովհաննէս *սարկավագ Հռոմկլայեցի. գրիչ. օրինակել է Աւետարանը՝ Գրիգոր եպիսկոպոսի համար, 1214 թ.— Տահազիզ, Պատմ. պատկ. 120—121։*

— 228. Յոհանէս *քահանա, որդի Կոստանդ քահանայի Հոռմեանց, գնել է մի կալված և նվիրել Արջոյ առիճ վանքին, 1213 թ. և մի կալվածք էլ Բագնայրին, 1215 թ.— Արձ. Շիրակ 121—2։*

— 229. Յովաննէս *ճգնավոր, եղբօրորդի Գէորգ քահանայի, որ շինեց Երուսաղէմում Ս. Աստուածածնի տաճարը։ Այս տաճարում ճգնում էր Յովաննէսը՝ իր քրոջ՝ կրոնավորուհի*

Տիկնիրեսի հետ միասին։ Երկուսով գրել տվին Յովան գրչին մի մեծ Ճառընտիր և ընծայեցին նույն տաճարին 1215 թ.—Զեռ. Վեննա. Բ. 144, Զարբ. Թրգմ. 730։

— 230. ՅՈՎԱՆ կամ ՅՈՎԱՆԷՍ, գրիչ. Երուսաղէմում գրեց և կազմեց նույն մեծ Ճառընտիրը՝ Յովհաննէս ճգնավորի համար, 1215 թ.—Զեռ. Վեննա. Բ. 145, Զարբ. Թրգմ. 730։

— 231. ՅՈՎՀԱՆՆԷՍ բարուն, արքեպիսկոպոս Մամեստիոյ, 1215 թ.—Միսուան 250 ա։

— 232. ՅՈՎՀԱՆՆԷՍ Ը եպիսկոպոս Սիւնեաց, հօրեղբօրորդի Ստեփաննոս Դ եպիսկոպոսի. ապստամբելով Սիւնեաց Սարգիս եպիսկոպոսից, որ նստում էր Նորավանքում, գնաց Աղթամար, օծվեց և նստեց առաջնորդ Տաթևի «1216 թ». (ըստ Սիսական 20 նստել է 36 տարի, այն է 1216—1251 թ).— Օրբ. կը, կդ, կե, հտ. Տաշեան, Ցուց. 180 ա.— տես. ՅՈՎՀԱՆՆՈՒ՝ Օրբ. կդ. — ըստ այսմ սրա հետ նույն է ՅՈՎԱՆԷՍ մեծ եպիսկոպոս Սիւնեաց, որ մեռել է 1251 թ. ըստ Օրբ. ժմ. 26.— սրա հետ պետք է նույնացնել նաև ՅՈՎԱՆԷՍ «հայրապետ և մեծահամբաւ լուսաւորիչ» որ հիշված է Հերհերի մի արձանագրության մեջ 1243 թ. (Սիսական 112, Արար. 1889, 330)։ Միևնույն ժամանակ ունինք՝

— 233. ՅՈՎՀԱՆՆԷՍ Կապանեցի, որդի Հասան իշխանի Բաղաց և թոռն Համտուն Ա-ի, որով լինում է երեց եղբայր Համտուն Բ-ի (որ մեռավ Նորավանքում 1231 թ)։ Յովհաննու վանքում եպիսկոպոս էր։ Երբ Բաղաց թագավորությունը վերջացավ և երկիրը ավերվեց (1105 թ), Յովհաննէսը փախավ հաստատվեց Ամաղուի Ս. Կարապետ անապատը։ Նեղված Հրասեկ բերդի Խորասանցի պարսիկ իշխանից, ծպտվեց պարսիկի ձևով և որովհետև լավ էլ պարսկերեն գիտեր, գնաց Սպահան, Մահմուդ Բ Սուլթանի մոտ։ Օրբելեան պատմիչը պատմում է թե սուլթանի միամոր որդին մահամերձ հիվանդ էր. Սուլթանի մայրը մեծ սգի և տրտմության մեջ էր. տեսավ երազում, որ մի եպիսկոպոս է եկել հեռու աշխարհից, նա կարող է բժշկել նրան։ Հրամայեց գտնել ու բերել։ Եպիսկոպոսին տարին նրա մոտ, բժշկեց մանուկին։ Այս առթիվ Սուլթանը իմանալով Յովհաննէսի բողոքը, հրամայեց Հրասեկայ բերդի տեր պարսիկ իշխանին գերդաստանով կոտորել, իշխանին էլ ժայռից ցած գցելով սպանել և բերդը արքունական հրովարտակով եկեղեցուն տալ։ Միևնույն ժամանակ Սուլթանի մայրը Անապատ բերդը 12 ագարակով

եկեղեցուն նվիրեց։ Յովհաննէսը վերադառնալով, հաստատվեց այսպես Նորավանքում, որ նորոգեց, բարեկարգեց և հարստացրեց։ Մեռել է «1214 թ». (ըստ Օրբ. իսկ Սիսական 184 ը դնում է ՈԴ = 1155 թ. այս էջ 274 ծան. հավանօրեն 1164 թ։ Այլիշանի տարակուսանքի պատճառն այն է, որ Օրբելեանը 1105 թվին Յովհաննէս եպիսկոպոսին դնում է Յովհաննու վանքի միաբան, իսկ մահը 1214 թ։ Եթե 1105 թվին եպիսկոպոսը թեկուզ 30 տարեկան լիներ, ծնունդը պիտի լիներ 1075 թ. որով ապրած պիտի լիներ 139 տարի, ինչ որ անհնարին է։ Բայց Օրբելեանը ճիշտ է, որովհետև այն 1105 թիվը ո՛չ թե Յովհաննէս եպիսկոպոսին է պատկանում, այլ Սիւնեաց թագավորության կործանման և Կապան մայրաքաղաքի առման, որ ըստ Սիսական 274 ա՝ եղավ 1104 թվին։ Սխալը միայն կետադրության մէջ է. «Բարձաւ թագաւորութիւնն Բաղաց... բնաջինջ եղև տէրութիւնն Բաղաց, և խափանեալ լռեցին ամենայն ուխտք պաշտօնէից. ի 554 թուականին էր եպիսկոպոս ռՖ Յովհաննէս».— պետք է կարդալ «պաշտօնէից ի 554 թուականին, էր եպիսկոպոս...»։— Օրբ. կ. կգ, հա.—տես. Յովհաննիսի՝ Օրբ. կբ, կգ, հ։—

— 234. Յովհան (տես. Յովհաննես ձևով) իր Մամա անուն աղջկա հիշատակին Կողբում մի այգի է նվիրել Թծկօնից վանքին 1216 թ.—Ազգագր. հանդ. Ա. 45, Արրտ. 1904, 990։

— 235. Յոհաննես հայրապետ, հիշված 1216 թ.— Արրտ. 1896, 81 (Արցախի Վաղահաս գյուղի մի արձանագրության մէջ)։

— 236. Յոհաննէս որդի Թագէոսի, նախ Գլիձորի մի ջաղացը նվիրել է Արջոյառիճին և ապա մի ուրիշ ջաղաց էլ նվիրել Հոռոմոսի վանքին, ուր և թաղվել է 1217 թ?—Շիրակ, էջ 23 և 121։

— 237. Յովհաննէս գրիչ, Հառիճի վանքում արտագրել է մի ձեռագիր, որի մեջ նշանավոր են առյուծաձև սփինքսների նկարները, 1219 թ.—Ծաղքակեանք 165։

— 238. Յովհաննէս գրիչ. Հառիճի վանքում օրինակել է Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոյն Եփեսացոց, ՈԿԸ = 1219 թ.—Ձեռ. Կարին. 162 (սխալ տպ. ՌԿԸ)։

— 239. Յովհաննէս, մի խաչքար է կանգնեցրել Աստուածատուր քահանայի հիշատակին Աստուածընկալ վանքում 1220 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 171, Այրարատ 255։

— 240. Յովհաննէս Զ Սսեցի, մականունը Մեծաբարոյ, կաթողիկոս Հայոց «1203—1221 թ». կոչված է նաև Ծօն (որի

*ժամանը անհայտ է, Սիսուան 505 բ)․ որդին էր Կոստանդինի՝ որդւոյ Օշինի. Հեթումեանց ցեղից, ազգական Լևոն Բ թագավորի Հայոց արքունեան քարտուղար, օտարազգի վաճառականների դատավորը, արքեպիսկոպոս Սսոյ, տեր և առաջնորդ Դրազարկի, հոգևոր գործերում անփույթ, փառասեր, հարուստ, բայց առատաձեռն մարդ էր, որի համար էլ ստացել է «Մեծաբարոյ» տիտղոսը։ Լևոնի հրամանով գնաց Հռոմկլայ՝ ձերբակալելու Գրիգոր Է Քարավէժ կաթողիկոսին (1194 թ)։ Ուղարկվեց Աքքայ՝ բերելու համար գերմանական կայսեր Լևոնին ուղարկած թագը (1197 թ)։ Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին («1199 Յ»)։ Երբ կաթողիկոս ընտրվեց, հյուսիսայինները դժկամակեցին ընդունել նրան, համարելով արևմտասեր և թույլ անձ։ Իննովկենտիոս Գ պապը (1198—1216) ուղարկեց նրան Պետրոս կարդինալի ձեռքով* պալիում *և կաթոլիկ եկեղեցու սահմանադրությունը։ Անտիոքի վեճի առթիվ բռնելով լատինների կողմը, գայրացրեց Լևոնին, որ նրա գանձերն ու ավանները գրավեց և իրեն էլ գահազուրկ անելով, կաթողիկոս կարգեց նրա փոխարեն Արքակաղնի վանքի վանահայր Դավիթ եպիսկոպոսին «1207 թ»։ Յովհաննէսը քաշվեց Հռոմկլայ, որի բերդը սաստիկ ամրացնելով պատրաստվեց պաշտպանվել։ Մեռավ Դավիթը «1211 թ» և Լևոնը հաշտվելով Յովհաննէսի հետ, նորից իր գահը դարձրեց։— Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 21. Օրբ. կէ, հա. Օրբ. ժմ. 22. Վրդ. ձբ. Միխ. աս.* իը (=իէ), *յաւել. Գիր. 70, ա, գ, է. Սամ. անեց. շար. 148, 165. Հեթ. ժմնկ. Վահր. ոտ. 218—9. Սմբ. պատմ. 107, 109, 110, 114, 116. Դրնդ. 304.—* Յոհաննէս՝ *Օրբ. ժմ. 23.—* Յոհան՝ *Հեթ. ժմնկ. Առաք. պատմ. 335.—* Յովհաննէս խճկտոր! *Սամ. անեց. շար. 145—6.—սեռ.* Յովհաննէսի՝ *Դրնդ. 304.—* Յովհաննիսի՝ *Վրդ. ձգ. Կիր. գ.—Զարբ. Թրգմ. 688, 730. Գալձեան 59 (տալիս է նրա թղթակցությունը պապի հետ). Չամչ. Գ. 157—193։ Ազգապ. 1557—1598։*

— 241. Յովհաննէս *վանահայր Խծկոնից վանքի, հիշված է 1211—1221 թվերին. այս թվին իր հետ օգնական ունի Պօղոս վարդապետին, իսկ 1233 թվին արդեն մեռած է, որովհետև առաջնորդն է* Արտս, *Պօղոս վարդապետի հետ հիշված։— Շիրակ 127, 128, 129, Այրարատ 112, Ազգագր. հանդ. Ա. 45, Արրտ. 1904, 990, Շողակաթ 183, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 32, 33։*

— 242. Յովանէս *քահանա, գրեց Սիս քաղաքում մի Աւետարան, 1222 թվին.—Չեռ. կես. ածած. 64։*

— 243. Յովհաննէս *առաջնորդ Սանահնի վանքի 1221—2 թ. հաջորդել է Գրիգորի որդի Արսաւին.— Ակինեան՝ Մատեն. հետազ. Ա. 8, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 32։*

— 244. Յովհաննէս *եղբայր Նորադէս քահանայի, որ էր գրիչ Սեբաստիայում, 1222 թ.—Տաշեան, Ցուց. 558։*

— 245. Յոհաննէս *եպիսկոպոս Տայեցի, ուխտի է գնացել Երուսաղէմ և Քրիստոսի գերեզմանի վրա երեք կանթեղ է դրել հանուն հայոց, հունաց և ֆրանգաց. հայոցն է վառվել, որով իմացել է թե հայոց դավանանքը ավելի ընդունելի է Աստուծուն (1222 թ)։ Այս հեքիաթը մտել է Յայսմաւուրքի մեջ՝ մարտի 23։ Հմմտ. վարք № 308։*

— 246. Յովհաննէս, *հայր Ստեփաննոս Աղթամարցու, որ Խորանաշատի վանքում օրինակեց Արիստոտելի Յաղագս Աստուծոյ և Առ որս գիրքը՝ 1223 թ.—Շողակաթ 199։*

— 247. Յովհաննէս *քահանա, հայր Վահանադրէի, որ օգնեց Պետրոս երեցին՝ արտագրելու Աւետարանը, Նիկոպոլսի Խաւմ քաղաքում, 1223 թ.— Ձեռ. Վեննա. Ա. 422։*

— 248. Յովանէս *քահանա (նախորդի հետ նույն է), թուղթ էր կոկում Պետրոս քահանայի համար, որ օրինակում էր Աւետարանը՝ Նիկոպոլսի Խաւմ քաղաքում, 1223 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 423։*

— 249. Յովհաննէս *վարդապետ Գառնեցի, Գեղարդայ վանքից, ճգնակեցիկ և հրաշագործ. ճգնում էր Թաթլոյ վանքում 1222—3 թ։ Ուխտի գնաց Երուսաղէմ։ Կողոնիայում կրակը գցեցին որ այրեն, բայց ազատվեց և գնաց Կոստանդին Ա («1221—1267 թ») կաթողիկոսի մոտ, ուր մնաց մինչև իր մահը։ Մկրտել է շատ մահմեդականներ, որոնցից նշանավոր է Ջենջան քաղաքի մոլլան՝ իր որդիներով։— Գրական գործերն են՝ 1) Աղօթագիրք, տպ. Վենետիկ 1911 (գլուխների ծայրանունն է «Յովանէս Գառնեցի ասացեալ»).—2) Խրատ հոգեշահ ամենայն մարդոյ, մանաւանդ ժամարարի, ի խնդրոյ Սարգիս քահանայի (տե՛ս Սարգիսեան, Եւագր. ներած. էջ* ճծզ *և Ձեռ. Վեննա. Բ. 1232).—3) Պատմութիւն մուղրոյն Ջանկիանու (Յայսմաւուրքում).—4) Ստուգաբանութիւն Սաղմոսարանի (իբր տիպար օրինակ Սաղմոսարանի, որ արտագրել է Հաղբատում, Յովհաննէս Սարկաւագի կազմած օրինակից (հիշատակարանը տես Ձեռ. Վեննա. Ա. 266) և տարածել է հայոց մէջ։ Սաղմոսի այս տիպար օրինակը կոչվում է «Յովհաննէս Գառնեցի». հմմտ. Ձեռ. Սանաս.*

23 բ և Ձեռ. Վենետ. Ա. 272, 274).— 5) Գանձառք Սաղմոսաց, որ կազմել է Հաղբատում, հետևողութեամբ Եպիփան Կիպրացու. այս մասին տես Ձեռ. Վենետ. Ա, 183։ Սարգիսեանը կարծում է, որ նաև եբրայական տառերի բացատրութիւնը, որ գրված է Սաղմոսների մոտ, Գառնեցու է (տես Ձեռ. Վենետ. Ա. 194).— 6) Տեսիլ Գառնեցւոյ ի Հռոմկլայ ի ձորն Աշոընկս.— 7) Պարականոն մի շարական (Յիսուս միածին, քաղցր և գթած), որի ծայրանունն է «Յովաննէս Գառնեցի» (տես Պարականոն շար. 188)։ Իր անունով կա նաև մի տեսակցութեան պատմութիւնը՝ տեսիլք տեսնող 7 ուխտավորների հետ (Յայսմ. դեկտ. 29)։— ՅՈՎՀԱՆՆԷՍ՝ Կիր. ծբ. Յայսմ. մրտ. 11, դեկտ. 29.— սեռ. ՅՈՎՀԱՆՆՈՒ՝ Յհ. ճառն. էջ 181, 200, 220, 240, 263, 284, 303. Կիր. ժբ. Յայսմ. ապր. 15.— ՅՈՎԱՆԻՍԻ՝ Գիրք Թղ. դզ.— բց. ի ՅՈՎԱՆԻՍԷ՝ Գիրք Թղ. դե.— տես և Ջարբ. Թրգմ. 219—20, Այրարատ 362, Տաշեան՝ Ցուց. 1125 ա։

— 250. ՅՈՎՀԱՆՆԷՍ վանահայր Հառիճայ վանքի 1224 թ. (մեռել է նախ քան 1235 թ. որովհետև այս թվին առաջնորդն է Համազասպ).—Շահխաթ. Բ. 265, Շիրակ 162. սակայն նույն տեղում (Շիրակ 161 և 162) կա երկու անթվական արձանագրութիւն, ուր միասին հիշված են «տէր Համազասպ և հայր Յովհաննէս», ուստի կարող ենք ընդունել մին առաջնորդ, մյուսը վանահայր։ Ալիշան (Շիրակ 161 ա) ենթադրում է թէ այս Յովհաննէսը Գրիգոր Տուտէորդու հայրը կամ եղբայրն է։

— 251. ՅՈՎՀԱՆՆԷՍ, իր ունեցվածքը կտակել է Բջնիի Սոլակ գյուղի Մայրավանից Ս. Աստուածածին եկեղեցուն 1224 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 188, Այրարատ 270, Սմբատեանց՝ Գեղարքունի 336։

— 252. ՅՈՎՀԱՆՆԷՍ, միաբան Կապոսի Ս. Լուսաւորիչ վանից, հիշված է 1224 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 34։

— 253. ՅՈՎՀԱՆՆԷՍ Ա. ԽԱՉԵՆԵՑԻ. Քնդերորդ եպիսկոպոս Հաղբատի. Թամար թագուհու օրով հաջորդեց Գրիգորիս Ա.-ին՝ հրամանով Զաքարէ ամիրսպասալարի և Իւանէ աթաբէկի։ Իր նախորդներն են Սարգիս Ա, Գէորգ Ա, Բարսեղ Ա, և Գրիգոր Տուտէորդի։ Սրանց թվականները լավ ճշտված չեն. բայց գիտենք որ Գրիգոր Տուտէորդին մասնակցել է Լոռիի ժողովին «1208 թ», ուր հակառակ կանգնելով Զաքարէին՝ վտարվել է Հաղբատի առաջնորդութիւնից և թեմը հանձնվել է Յովհաննէս Ա. Խաչենեցուն (Աղգապ. 1578—9)։ [Աղգապ. 1392 այս Յով-

հաննէս Խաչենեցուն նույնացնում է Յովհաննէս Սարկաւագ վարդապետի հետ, որի մահն էլ դնում է «1129 Թ»։ Եթէ Յովհաննէս Խաչենեցին նստել է 1208 կամ 1209 թվին, ուստի չի կարող նույն լինել Յովհաննէս Սարկաւագի հետ, որ մեռել է «1129 թվին»]։ Ըստ Կիր. էջ 56, Գրիգորին հաջորդում են իրար ետեից երեք Յովհաննէսներ (Յովհաննէս Ա Խաչենեցի, Յովհաննէս Բ և Յովհաննէս Գ)։ Սրանց կարճառոտ պատմությունը հետևյալն է ըստ Կիրակոսի։ Յովհաննէս Ա հեզ և առաքինի մարդ էր, ազգական Խաչենի իշխաններին, Հաղբատի կաթուղիկէի փոքր մատուռը քանդեց և նրա տեղ շինեց մեծ և գեղեցիկ շինվածքներ, «որ զարմացուցանէ զտեսողսն հիացմամբ»։ Յովհաննէս Բ քեռորդին էր Զաքարէ և Իւանէ եղբայրների և եղբորորդի Յովհաննէս Ա-ի. շինեց մի ամուր բերդ Հաղբատի և Սանահնի միջև (Արձ. 1233 Թ)։ Յովհաննէս Գ որդին էր Աղսարթանի, Մաճնաբերդի Բագրատունի տոհմից. նստեց 2 տարի. սրան էլ հաջորդեց Համազասպ (№ 38) Անեցին, որ նստել է 1243—1257 Թ։ Ըստ այսմ երեք Յովհաննէսները պիտի տեղավորվեն 1209—1243 թվերի միջև։ Յովհաննէս Գ նստած պիտի լինի 1241—2 թվերին (2 տարի)։ Յովհաննէս Խաչենեցին, որ նստել էր 1209 Թ. վարել է իր պաշտոնը երկար տարիներ, ինչպես պատմում է իր թողած մի երկար արձանագրության մեջ՝ 1221 թվին։ Արել է մեծ շինություններ Հաղբատում, նորոգել է հատկապես Ս. Գրիգոր եկեղեցին 1211 Թ. (Արձ. այս թվից), սպասներով զարդարել, կաթուղիկեն սալել, և եթե Ստեփաննոս Յոփեստոսն էլ իր մորեղբայրն է, շինել է նրա շիրիմը 1224 Թ։ Այստեղից սկսած Յովհաննէս Ա և Բ խառնվում են իրար հետ, մինչև 1233 Թ. երբ հաստատօրեն Յովհաննէս Բ-ն է հիշվում.—Կիր. 56, գ.— տես. Յովհաննիսի՝ Կիր. 56. Կրճատ. եպս.՝ Դափխանք 57. Արձ. Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 18, 24, 26, 34, 57, 58, 65, 70, 72. Ազգագր. հանդ. Է. 405, 414. Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 42։

— 254. Յովհաննէս ավագերեց, հայր Քրշեի, որ կազմեց Ս. Աթանասի գործերի ցանկը 1225 Թ.—Տաշեան, Մատեն. մանր ուս. Ա. 295։

— 255. Յովհաննէս ավագերեց, որդի Գեշի. գնեց մի ժողովածու՝ 1225 Թ.—Ճողակաթ 189։

— 256. Յովհաննէս եպիսկոպոս աթոռակալ Բջնոյ. հանդիմանեց Իւանէ աթաբեկին († 1227) հայոց կրոնի դեմ գործած չար

արարքների համար (տես Պարկեշտ).— Օրբ· կը· Մխ. աս. իը (=իէ), Այրարատ 276։

— 257. Հայր Յովհաննէս, որի մասին խօսում է Առաք. պատմ. 482 այս ձեով. «Թ. ՈՀԷ=1228. Խորագծն եւ ի Հայս, որ հայրն Յօհաննու հաւատոյ ի Քրիստոս»։ Թվի թե խոսքը Յովհաննէս Գառնեցու մասին է. համվածը աղավաղ է։

— 258. Յովհաննէս քահանա, գրիչ. աշակերտ Ղազար վարդապետի. Տուրաուբերանի Խարձի անապատում Վարդան վարդապետի համար օրինակեց Տօնականը 1229 թ.—Խաղբակեանք 92։

— 259. Ովանէս, խնամի Վարդան և Սարգիս քահանաների, որոնք Երզնկայի Կապոսի վանքում գրել տվին Տօնամակը՝ 1230 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1214։

— 260. Յոհան, իր Հայրապետ, Պետրոս և Վարդան եղբայրների հետ մի խաչ է կանգնեցրել իրենց հանգուցյալ մոր հիշատակին Խաչենի Խանձք գյուղում, 1230 թ.—Արցախ 159։

— 261. Յովհաննէս գրիչ. օրինակել է Աւետարանը 1230 թ.—Ձեռ. Հալէպի. Ա. 353։ (Շատ համեստ գրիչ է. ստորագրում է միայն «յոհ.» և այլ տեղեկություն չի տալիս)։

— 262. Յովհաննէս, եղբայր Վեցիկ ճարտարապետի, առաջնորդ Նորաբերդի Անապատ վանքի և շինող եկեղեցւոյ։ Իր եղբայրների հետ մի մահարձան կանգնեցրեց Կեչառու վանքի ճարտարապետ նույն Վեցիկի գերեզմանի վրա 1231 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 355, Ակինեան ՀԱ 1929, 445 ծան։

— 263. Յովհաննէս քահանա, եղբայրներն են Գրիգոր և Սողոմոն, եղբորորդիքն են Սասմ և Աբրահամ. մեռել ու թաղվել է Հաղբատի հասարակաց գերեզմանատան մէջ, ուր մնում է իր խաչքարը 1231 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 63, Ազգագր. հանդ. Է, 413։

— 264. Յովհաննէս վանահայր Գոշավանքի 1231 թ.—Արձ. Արցախ 352, Ազգագր. հանդ. Ժ. 31։

— 265. Յոհանէս որդի Մատթէոս քահանայի, կանգնեցրել է մի խաչքար Բջնիում, 1232 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 324։

— 266. Յովհաննէս Բ. վեցերորդ եպիսկոպոս Հաղբատի. հաջորդեց Յովհաննէս Ա-ին. համանունության պատճառով դժվար է որոշել երկուսի գահակալության տարեթվերը։ Զաքարէ ամիրսպասալարի և Իւանէ աթաբէկի քույր Դոփի որդին էր, եղբայր Հասանի և եղբորորդի Յովհաննէս Ա-ի։ Երբ Խորազմ-

*ների արշավանքի պատճառով երկիրը խռովալի և անապահով վիճակում էր գտնվում, Հաղբատի վանքից չորս վերստ հեռու շինեց Կայան բերդը, ուր փոխադրեց Հաղբատի Ս. Նշանը և իր միաբաններին՝ իր քեռի Իւանէի և նրա որդի Աւագի հրամանով 1233 թ. Իր հաջորդն է Յովհաննէս Գ, ապա Համազասպ, որ արդեն հիշված է 1242—3 թվի արձանագրության մեջ. բայց 1245-ին նորից հիշվում է Յովհաննէսը (Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 18 և 45)։ Գերեզմանը գտնվում է Հաղբատի մեծ ժամատան մեջ, իր մոր Դօփի շիրմի կողքին, հետևյալ տապանագրով. «Զաքարէի և Իվանէի քուերորդի Յովհաննէս եպիսկոպոսինն է այս»։ Զունի Թվական։ — Կէր. 56, ժբ. — սեռ.* Յոհաննիսի՝ *Կիր. 56, Կրպտ. եպս.՝ Դօփեանք 57,—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 72, Ազգագր. հանդ. Գ. 318, Խաղբակեանք 99,*

— 267. Յոհաննէս *երեց, մերձավոր ազգական Աբրահամ երեցի, որ երկու տուն և երկու խանութ նվիրեց Խծկօնից վանքին 1233 թ.—Շիրակ 128,*

— 268. Յովանէս, *հայր Օտար Կողբացու, որ իր կնոջ Սէգդայի հետ մի աղահանք է նվիրել Բագարանին 1235 թ.— Արձ. Այրարատ 68,*

— 269. Յովհաննէս *Է կաթուղիկոս Աղուանից 1195—1235 թ. փոքրահասակ սարկավագ էր, երբ ձեռնադրվեց Բջնոյ Վրթանէս եպիսկոպոսից և նստավ Զարեքում, իբրև հաջորդ Ստեփաննոս Գ-ի։ Նեղվելով Թուրքերից փոխադրվեց Խամշի վանքը, որ ինքը հիմնեց։ Իրեն էլ հաջորդեց Ներսէս Բ.—Կիր. դ, ը. Ջամբռ 77, Բարխուտ. Աղուանից երկ. 236 (1232 թ.),*

— 270. Յովհաննէս , *Թվլի եղբայր Սանասարի և Բաղդասարի, որոնք մի այգի են նվիրել Հառիճի վանքին 1235 թ.— Շահխաթ. Բ. 265, Շիրակ 163,*

— 271. Յովհաննէս *վարդապետ, առաջնորդ Գանձասարի 1237 թ.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Բ. 53,*

— 272. Յովհաննէս, *առաջնորդ Սիւնեաց. հիշված է Նոր-Վարագայ Ս. Նշան Վանքի նորաշեն եկեղեցու արձանագրության մեջ 1237 թ.—Շահխաթ. Բ. 369, Արցախ 337 (տես և Ղուկաս № 7), Թվականը համապատասխանում է Յովհաննէս Ը-ին, որ տես № 232,*

— 273. Յովհաննէս *Կարնեցի, պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Առաքելին և գահակալեց 1230—38 թ. (ըստ Ալիշանի)։*

— 274. Յովհաննէս *վարդապետ, որի հրամանով գրվեց Շնորհալու վարքը (տպ. Սոփերք ԺԴ), 1240 թ.— սեռ.* Յովհաննու՝ *Վրք. շնորհ. 82։*

— 275. Յովհաննէս *երաժիշտ, գրիչ, թերևս Մեծ Հայքից, ուր երաժշտական լավ գործեր չգտնելով, դիմել է Կիլիկիա և գտնելով այնտեղ նշանավոր երաժշտապետ Յովսէփ անուն անձին, ստացել է նրանից մի Տաղարան, որ և արտագրել է Դրազարկի վանքում, 1241 թ.—Սիսուան 233բ, 517ա. Ձեռ. Վենետ. Բ. 1065, «Էջմիածին», 1946 յնվ. էջ 45։*

— 276. Յովհաննէս *արքեպիսկոպոս, եղբորորդի Ներսէս Բ Աղուանից կաթողիկոսի. դեռ նոր էր ձեռնադրված 1241 թ.— Կիր. ծա.—սեռ.* Յովաննիսի՝ *Կիր. լա։*

— 277. Յովհաննէս *Կարնեցի, պարոն և նշանավոր մարդ, ազգական Ումեկի (որ տես), երբ Թաթարաց Բաչու զորավարը գրավեց Կարինը, Ումեկին և նրա ազգական Յովհաննէսի 6 որդիներին (որ է Ստեփաննոսին և նրա հինգ եղբայրներին) գաղթեցրեց քաղաքից 1242 թ.—սեռ.* Յոհաննու՝ *Վրդ. ձը։ (Կիր. ծե Վենետիկի տպագրության մեջ սրանք չեն հիշված. բայց տպ. Տփղիսի էջ 349, ինչպես և ձեռագրում կան, ինչպես տեսել է Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 11բ, 12ա)։*

— 278. Յովհաննէս, *երկու համանուն քահանաներ՝ միաբան Հռոմի Հայոց տան, 1242 թ.— Թորոս աղբ. Բ. 441։*

— 279. Յովհաննէս *կրոնավոր, գրիչ. Գէորգ վարդապետի ծախսով Հաղբատում օրինակեց Դաւթի Սահմանաց գիրքը 1243 թ.— Ձեռ. էջմ. № 1890=1848, Ձեռ. Կարին. էջ 200, Մանանդեան՝ Յունաբ. դպր. 259։*

— 280. Յովհաննէս Գ, *եօթներորդ եպիսկոպոս Հաղբատի, որդի Աղսարթանի, եղբայր Կիւրիկէ Դ-ի (Հայապ. 392), ի Մածնաբերդէ Բագրատունեաց. ձեռնադրվեց Աղուանից Ներսէս (1235—61 թ.) կաթողիկոսից և հաջորդեց Յովհաննէս Բ-ին 1240 թ. երկու տարի մնաց իր առաջնորդությունը և մեռավ 1242 թ. իրեն հաջորդեց Համազասպը։— Կիր. 56, Մովսէսեան, Լօռիի Կիւր. Թգ. 76։— Զարմանալի է որ ասվում է թե սրա առաջարկով է գրել Վարդան Բարձրբերդցին իր Սաղմոսաց Մեկնութիւնը 1251 թ! (Զամչ. Գ. 240. Վրդն. ստ. յոլ. և վերնագրում)։*

— 281. Յոհանէս, *նվիրատու Խորանաշատի վանքին, հիշված 1244 թ.—Արձ. Տեղեկ. Արմֆանի 1940 թ. № 4, էջ 177։*

— 282. Ոհան, *որի անունով մի խաչքար է կանգնեցրել իր*

եղբորորդի Սարգիս քահանան՝ Ղազախի Կոզբ գյուղում 1244 թ.— Արցախ 385։

— 283. Յովհաննէս, որդի Կախաբերի. նախապես կոչվում էր Բուրդ. կրոնավոր դարձավ Կեչառու վանքում և կոչվեց Յովհաննէս. շինել է Ս. Յովհաննէսի պահարանը 1244 թ.—Արձ. Այրարատ 261։

— 284. Յովհաննէս քեռորդի Հաղբատի Համազասպ եպիսկոպոսի, 1245 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 78 (Թերևս № 336 Յովհաննէս Դ եպիսկոպոսն է, որ հետագայում հաջորդեց Համազասպին)։

— 285. Յովհաննէս վարդապետ, առաջնորդ Հաղարծնի վանքի 1248 թ.—Արցախ 369։

— 286. Յովհաննէս վարդապետ Տաւուշեցի. այս անունով երկու անձ կա. առաջինը Մխիթար Գոշի ուսուցիչն է (տես վերը № 196), երկրորդը՝ Մխիթարի աշակերտը։ Առաջինի մասին տեղեկություն է տալիս Կիր. ժա (էջ 106—7) և ասում է թե «ի ժամանակին յայնմիկ երևելի էր գիտութեամբ»։ Մխիթարը նախ սովորեց նրա մոտ և երբ շինեց Գետիկի վանքը, իր հետ առավ նաև երկու Տաւուշեցիներին (Զարբ. Հին. դպր. 800 և 688, Ազգապ. 1571 և 1620)։ Ավելի նշանավոր է Յովանէս Վանական վարդապետ Տաւուշեցի (հաճախ կոչվում է պարզապես Վանական վարդապետ)։ Ծնվել է «1181 թ», Աղուանից Տաւուշ գավառում։ Փոքր ժամանակ սովորել է իր երեց եղբայր՝ Գողասի մոտ և ապա գնալով Գետիկի վանքը, աշակերտել է Մխիթար Գոշին († «1213 թ»), որից և ստացել է վարդապետական գավազան (Նոտարք 29)։ Հաստատվելով Տաւուշում, շինեց Խորանաշատի վանքը, ուր և հասցրեց շատ աշակերտներ, որոնցից նշանավոր են Վարդան պատմիչը և Կիրակոս Գանձակեցին։ Գերի ընկավ Թաթարների ձեռքը «1236 թ», բայց ազատվեց և դարձավ Խորանաշատ։ Մեռել է «1251 թ», մարտի 18, շաբաթ օրը։ Իր թողած գրական գործերն են, 1) Մեկնութիւն Յոբայ, Զաքարիայ և Եզեկիէլի (տես Նոտարք 29), 2) Բացայայտութիւն ագօթից Ամբակումայ, 3) Վասն անքուն որդանց, 4) Տեսութիւն «Ուրախացիր պսակ կուսից» շարականի (որ գրել է Պետրոս անուն մեկի խնդրանոք՝ ըստ Ձեռ. Թաւր. էջ 116 բ), 5) Այլասացութիւնք Ս. Գրոց կամ համեմատութիւն հին կտակարանացն ի նորս, 6) Խոստովանութիւն վասն Հոգւոյն սրբոյ (համմ. Թորոս աղբ. Բ. 322—3), 7) Խոստովանութիւն հաւատոյ, 8) Խրատ դա-

ւանութեան, 9) Ցանկ գրոց հին և նոր կտակարանաց (Ձեռ. Վենետ. Ա. 28—29), 10) Բան հաւատալի (Bodleian 87), 11) Յաղագս տարեմտին (հրատ. Գիտական նյութերի ժողովածու № 1 (Երևան 1941), էջ 151—169), 12) Վասն ճրագալուցի, 13) Բան վասն Հայոց ազգի գովեստ, 14) Պատճառք Առաջաւորաց պահոց, 15) Ջրոյց ի Յայսմաւուրս (տես Տաշեան, Ցուց. 1129 գ), 16) Հարցմունք Վահրամայ վարդապետին և պատասխանիք վարդապետին Վանականայ (Ձեռ. Հալէպի, Բ. 123 բ), 17) Երկինք՝ եկեղեցի, արեգակն՝ Քրիստոս և աւետարան (Բուլղարիայում պահված մի ձեռագրում, որ տես ՀԱ 1937, 572), և այս բոլորից ավելի կարևոր մի գործ՝ 18) Պատմութիւն Թաթարաց, որ այժմ կորած է (բայց արդյոք չի՞ շփոթվում Յովհաննէս Սարկաւագ վարդապետի պատմության հետ)։—Յովհ. Վանականն՝ Առաք. պատմ. 339, Մ. մաշտ. էջ 336 բ.—Վանականն՝ Գիրք Թղ. դէ. ղը. Վանակ. տարեմ. 156, Օրբ. ժմ. 25, 26. Կիր. 4, դ, ժգ, իբ, իթ, խա, խղ, խթ—ծա. Վրդ. ձգ, ձէ. Անանուն ժմ. 22. Մխ. այրիվ. 37. Յայսմ. հոկտ. 2, յնվ. 31. Օրբ. կը. Տաթև. հարց. 353. Վրդ. աղ. ճծը (էջ 419). Մաղաք. աբ. 7, 12, 21. Սամ. անեց. շար. 150. Առաք. պատմ. 482, Եա. կթղ. էջ ք և 5.—սեռ. Վանականի՝ Կիր. ծա. Վրդ. ձթ. Սիւն. յոր. 304. Դրնդ. 304.—Վանականայ՝ Կիր. իբ. Գարդ. 695. Յայսմ. յնվ. 31.—բց. ի Վանականէ՝ Իսիւք. յոր. էջ 283 յիշատ.—Զարբ. Հին դպր. 730—736, Թրգմ. 486, Հայաստ. 462—3, Տեղեկ. Արմֆանի 1940 թ. № 4, էջ 173—7.—Իր ձեռագրով մի հիշատակարան կա Վանեննու Աւետարանում, 1224 թվից (տես Խաղբակեանք 34).—Գոշավանքում գրանցվում է Յովհաննէս Վանականի անունով մի անթվական արձանագրություն, որ Յարութիւնեան, Ազգագր. հանդ. Ժ, էջ 20 սրանն է համարում։ Տես նաև «Էջմիածին», 1945 թ. մայ. էջ 22—26 (ուր դժբախտաբար երկու Տաւուշեցիներին իրար է խառնել և Վանականին՝ որ Մխիթար Գոշի աշակերտն է, ընդհակառակը Գոշի ուսուցիչն է դարձրել)։

— 287. Յովհաննէս մրեղա Բջնեցի. հինգ ընկերներով ուխտի գնաց Երուսաղէմ և այնտեղ պատահած մի տեսիլք լսելով՝ պատմեց Վանական վարդապետին († «1251 թ»), որից և անցավ Յայսմաւուրքի մեջ.—Յայսմ. հոկտ. 2։—Այրարատ, էջ 273 և 276։

— 288. Յովանէս Ծխիկ, եղբայրն է Խաչատուր. Հոռոմոսի վանքին նվիրել է մի ջաղացք և մի հատոր Մարտիրոսաց 1251 թ.—Շիրակ 25—27։

— 289. **ՅՈՀԱՆՆԷՍ** *արքայուն, որդի Այրկան, կինն է Մուլուքան, մայրն է Սթերհէն. Հոռոմոսի վանքին նվիրել են երկուսուն, ցորեն են, 1253 թ.—Շիրակ 26։*

— 290. **ՅՈՎՀԱՆՆԷՍ**, *գրիչ. Հռոմկլայում օրինակեց Աւետարանը պատվերով Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթողիկոսի (№ 56), որ ստացավ իր և իր եղբորորդի Թորոս քահանայի հիշատակին։ Բայց ապա ոսկով ու արծաթով զարդարելով նվիրեց Փոսի անապատին, որի միաբանությունը ինքը կազմակերպեց և ինքն էլ միաբան գրվեց, 1253 թ.—Թորոս աղբ. Բ. 359։ Նույնն է Շողակաթ 200։*

— 291. **ՅՈՎՀԱՆՆԷՍ** *եպիսկոպոս, Հռոմում (կամ Թիլ քաղաքում), Վարդան քահանային օրինակել է տվել Ագաթանգեղոսի Պատմությունը 1254 թ. Ձեռագիրը գտնվում է Պարիզի Ազգ. Մատենադարանում (ըստ Տէր-Միքէլեան, Սամ. անեց. էջ 266)։ Նույնը տես և հրատ. Ագաթ. 1909 թ. յուշ. ԼԴ։—Բայց ըստ* Manus. bibl. nat. *էջ 55 նույն Յովհաննէս եպիսկոպոսը՝ Դանիէլ և Սիմէոն քահանաների հետ Վարդան գրչին գրել է տվել մի ժողովածու, Թիլ քաղաքում, 1254 թ։*

— 292. **ՅՈՀԱՆԷՍ** *քահանա, Հռոմում օրինակեց Աւետարանը՝ Մաթէոս, Յակոբ, Մակար, Ստեփանոս և Ղազար եղբայրների օգնությամբ, 1254 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 409։*

— 293. **ՅՈՎՀԱՆՆԷՍ** *հայ կրոնավոր, որ Մոնղոլների խան Սարդախին քրիստոնյա է դարձրել։ Ըստ Աշոտ Գալստյան, Մոնղոլական շրջանի հայ դիվանագիտության պատմ. Լենինական 1945 թ. էջ 17 այս Յովհաննէս քահանան դիվանագիտական մի գործիչ էր Սարդախի պալատում և իբրև միջնորդ ծառայեց խանի և Հռովմի պապի միջև։ Նա Սարդախից նվերներ տարավ Իննոկենտիոս Դ պապին և հայտնեց նրան թե խանը քրիստոնեություն է ընդունել, որի համար պապն էլ նամակով շնորհավորում է Սարդախին, 1254 թ։*

— 294. **ՅՈՀԱՆԷՍ**, *որդի Ներսէսի. գրիչ. օրինակեց Աւետարանը Հայոց Հեթում Ա թագավորի եղբոր՝ Լիկոսի որդի սիր Լեոնի համար, 1256 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 447. Սիսուան 519 բ։*

— 295. **ՅՈՎՀԱՆՆԵՍ** *Արմանեցի, եպիսկոպոս. ձեռնադրվեց «1256 թ» և նստավ առաջնորդ Նոր-Գետիկի, իբրև հաջորդ Աբրահամ (№ 28) վարդապետի. էր նաև առաջնորդ Հաղարծնի և Հաղբատի։—Կիր. ժե։*

— 296. **ՅՈՎՀԱՆՆԵՍ** *(սեռ. Յովհաննայ), հայր Ստեփաննոսի,*

ար գնել է Խորակերտ գյուղը, Շղերի այգին և հիմանց նորոգել է Խորակերտի վանքը (Բորչալու) 1256 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Է, 425։

— 297. ՅՈՎՀԱՆՆԷՍ, դրան երեց Ջալալ իշխանի. մեռել է 1257 թ. իր տապանագիրը տես Սմբատեանց, Գեղարքունի 535։

— 298. ՅՈՎՀԱՆՆԷՍ 1258 թ. տես Լիանոս № 2։

— 299. ՅՈՎՀԱՆՆԷՍ եպիսկոպոս, գրիչ. Կուքիոյ վանքում օրինակեց Պատարագամատոյց—Խորհրդատետրը, 1260 թ.—Սմբատեանց, Երնջակ 316 (մեծ ցուցակ, էջ 8)։

— 300. ՅՈՎՀԱՆՆԷՍ վարդապետ Երզնկացի, որի խնդրանոք Կիրակոս Երզնկացին գրեց Լուծմունք Եւագրեայ՝ 1260-ական թվերին.—Սարգիսեան, Եւագր. ներած. էջ ճծբ։

— 301. ՅՈՎՀԱՆԷՍ, առաջնորդ Մակարավանքի (Ղազախ), իր հոր՝ Վասակի, իր մոր՝ Շուշիկի, և իր եղբայրների Հասանի և Վաչէի հոգուն շինել է մի եկեղեցի, բոլոր միաբանների ձեռնտվութեամբ 1198 թ. (հիշվում է նաև 1253 թ. և 1260 թ. բայց կարող էր մի անձ առնվազն 62 տարի առաջնորդութիւն անել)։—Արցախ 375, 374։

— 302. ՅՈՎԱՆԷՍ քահանա, գնել է Արտաւազից մի այգի և նվիրել Մակարավանքին 1260 թ.—Արցախ 375։

— 303. ՅՈՎՀԱՆՆԷՍ երեց Բարերդցի, գրիչ. օրինակել է Ճաշոցը 1223 կամ 1261 թ.—Տաշեան, Ցուց. 20—21։

— 304. ՅՈՎՀԱՆՆԷՍ վարդապետ, առաջնորդ էր Արցախի Բուստի գավառի «Նոր բերդ» անապատում։ Վարագայ վանքի վանահայր Ղուկաս (№ 7) վարդապետը Խորազմեների արշավանքի պատճառով փախցնելով Վարագայ խաչը հասավ այստեղ։ Յովհաննէս վարդապետը ոչ միայն տեղ տվեց նրան, այլ և Վասակ Բագրատունի իշխանի օգնութեամբ շինեց մի եկեղեցի Վարագայ Ս. Նշան անունով 1231 թ. այնուհետև իշխանը կալվածներով հարստացրեց վանքը 1237 թ։ Յովհաննէս վարդապետը հիշված է նաև 1261 թ։—Արցախ 336—8։

— 305. ՅՈՎՀԱՆՆԷՍ երեց, որին երևի Կարապետ քահանան գրել ու կազմել է տվել մի Աւետարան 1261 թ.—Թորոս աղբ. Բ. 421։

— 306. ՅՈՀԱՆԷՍ, միաբան Կիլիկիոյ Ակների վանից 1261 թ։—Հրար. Ազատ. 1909 թ. յուլ. էջ լբ։

— 307. ՅՈՀԱՆԷՍ միայնակեց, Ստեփանոս կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1261 թ.—Ջեռ. Վասպ. 94։

— 308. Յովհաննէս Տուեցի, արքեպիսկոպոս Շամքորի, Գարդմանի, Տաւուշի են. ճգնակեցիկ. բոկոտն ուխտի գնաց Երուսաղէմ. ստորագրել է Սսի «1243 թվի» ժողովի կանոններին («1246 թ»). շինել է Նոր-բերդի եկեղեցին, ուր մեռավ ու թաղվեց 1240 թ. (ըստ Կիր.) կամ «1263 թ» (ըստ Վրդ.).—Կիր. 73, խա. Վրդ. ղե. Գիրք Թղ. ղե.—սեռ. Յովհաննիսի՝ Կիր. 73.—Տեղեկ. Արմֆանի 1940 թ. № 4, էջ 167, 171.—Թվի թե այս է Յովհաննէս արքեպիսկոպոս Ուձնացին, որ հիշում է Զամչ. Գ. 186 (1240 թվից)։—Վերևում № 245 ունեինք Յովհաննէս եպիսկոպոս Տայեցի նույնպէս Երուսաղէմ ուխտագնացության պատմությամբ։ Կարող են երկուսը նույն լինել։—Ունինք դարձյալ մի ուրիշ ուխտավոր, այն է Յովհաննէս ճգնավոր, որ մի խումբ ընկերների հետ Երուսաղէմ ուխտի է գնացել և Անտիոքի մոտ մի տեսիլք է տեսել (Թվականն անհայտ)։—Յայսմ. դեկտ. 29։

— 309. Տէր Յովհաննէս, իր ծախսով վերաշինեց Ուշի գյուղի Ս. Սարգիս եկեղեցին, որ հիմքից խախտվել էր, 1264 թ.—Արձ. Այրարատ 181։

— 310. Յովաննէս վարդապետ, ուսուցիչ Յովհաննէս սարկավագի, որ օրինակեց նրա համար Առ որս Գր. Աստուածաբանի, Երզնկա 1266. այս թվին սպանվեց Յովաննէս վարդապետը յանօրինաց.—Շողակաթ 201, Տաշեան, Ցուց. 552։

— 311. Յովհաննէս սարկավագ, որդի Շիրինի, աշակերտ հայր Յակոբի և ապա Յովհաննէս վարդապետի, որի համար օրինակել է իր առաջին արտագրությունը՝ Գրիգոր Աստուածաբանի Առ որս գիրքը՝ Երզնկա 1266 թ.—Ձեռ. Կարին. 78, Շողակաթ 201։

— 312. Տէր Յովան ոմն, սնուցել է Օշինի որդի Մխիթար քահանային (№ 71), որ օգնեց Հաղբատի կաթուղիկէի դռան «սրահայարկ» շինության, 1267 թ։—Արձ. Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 41։

— 313. Յովհաննէս քահանա Կիլիկեցի? պանդուխտ էր Արարատեան գավառում. օգնական եղավ Գէորգ Սկեւռացուն (Բըջնիում են) գրելու Տօնապատճառը՝ 1267 թ.—Գ. Տ. Մկրտչեան, Անան. շիր. 31, Սիսուան 102, Ձեռ. Վենետ. Բ. 313։

— 314. Յոհաննէս, պապ Կոստանդին Հռիփսիմեցի քահանայի, որ Կիլիկիայում գրեց Աւետարանը, 1269 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 656։

— 315. Յոհաննէս քահանա Գոմաձորցի. իր մի ձեռագիրը

օրինակելու համար տվեց Արիստակէս գրչին. Հեթում թագավորի քույր՝ Հռիփսիմէ կրոնավորուհու խնդրանոք, 1270 թ.—Բանասէր 1899, էջ 130։

— 316. Յոհ(աննէս), որդի «տեառն Սամիկայ». նվիրել է մի սկանակուռ խաչ 1270 թ., որ գտնվում էր Երզնկայի Ս. Սարգիս եկեղեցում.—Թորոս աղբ. Բ. 294։

— 317. Յովհաննէս եպիսկոպոս, հիշված է Վարանդայի Հացի գյուղի անթվական մի արձանագրության մեջ (Արցախ 125—6). բայց որովհետև նրա հետ հիշված՝ է Ներսէս եպիսկոպոսը, որ 1270 թվից է, ուստի Յովհաննէս եպիսկոպոսն էլ նույն ժամանակից է։ Ըստ այսմ կարող է լինել այն Յովհաննէսը, որին Սիսական 20 հիշում է Ստեփաննոս Օրբելեանից անմիջապես առաջ։

— 318. Յովանէս կրոնավոր, փակակալ Խորին անապատի (Կիլիկիա). 1270 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 235, Սիսուան 151։

— 319. Յովհաննէս գրիչ. Ստեփաննոս գրչի հետ միասին օրինակել են Դիոնեսիոս Արիսպագացու գործերը՝ Յովհաննէս եպիսկոպոս Արքայեղբոր համար 1271 թ.—Զարբ. Թրգմ. 390, Սիսուան 145, Հայապ. 486։

— 320. Յովհաննէս քահանա, իր երեք եղբայրների հետ միասին (Յովնան, Դաւիթ, Մխիթար) շինել են Հաղբատի մոտիկ Բերդիկ գյուղի կամուրջը և կանգնեցրել կամուրջի գլխի խաչքարը 1273 թ։—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 103։

— 321. Յոյաննէս քահանա, Ուռմի քաղաքում, Գազար արվարձանում Աստոմ քահանային գրել է տվել մի Աւետարան, 1273 թ.—Ձեռ. Վասպ. 97։

— 322. Յովհաննէս քահանա, միաբան Ականց կամ Ակներ անապատի (Կիլիկիա). օգնեց Գրիգոր գրչին՝ արտագրելով Միխայէլ Ասորու ժամանակագրութեան ամբողջ վերջին տետրը, 1273 թ.—Միխ. աս. ը տպ. էջ 45, Սիսուան 154 ա։

— 323. Յովհաննէս գրիչ. Գերմաղբիւրում օրինակեց Աւետարանը 1273 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 310։

— 324. Յովհաննէս եպիսկոպոս Ապրակունեցի, որդի Սեդրաք երեցի. Կոստանդին Ա Բարձրբերդցի («1221—1267 թ») կաթողիկոսից ձեռնադրվեց և նստավ Երնջակում, ուզելով բաժանել Սիւնեաց աթոռից։ Յակոբ Ա Կլայեցի կաթողիկոսը («1268—1286 թ.») կարգալույծ արեց նրան։ Այս դեպքը կատարված պիտի լինի 1273 թվից ուշ, որովհետև այս գործում խառն է նաև

Տարսայիճ իշխանը, որ գահակալեց 1273 թ.—Օրբ. կդ. Խաղբակեանք 96։

— 325. Յովհաննէս քահանա, գրիչ. Անտիոքում սկսեց օրինակել Ոսկեփորիկը, որ աւարտեց նոյն տարին Կեսարիայում՝ 1275 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ. կես. Ա. 1064։

— 326. Յովհաննէս վարդապետ առաջնորդ Մաքենեաց վանքի, 1275 թ.—Ամբատեանց, Գեղարքունի 576։

— 327. Յովհաննէս քահանա, իր մոտ վերցրեց մի փոքր երախա Կոստանդին անունով, հայրաբար խնամեց ու մեծացրեց նրան, և երբ քահանայութեան աստիճանին հասավ, Սկևռայ անապատում, Ստեփանոս քահանային գրել տվեց Մանրուսմունքը և նրան նվիրեց, 1275 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 244։

— 328. Ցեհանա, եղբայր Գովրոս մելիքի, որ Վասպուրականում գնեց մի Աւետարան 1276 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 426։

— 329. Յովհաննէս գրիչ. օրինակել է Շնորհալու Ընդհանրականը և այլ զանազան գործեր՝ 1276 թ.—Ձեռ. Կարին. 34։

— 330. Յովհաննէս իշխան և պարոն Եկեղեաց գավառում, որդի Սարգիս արքեպիսկոպոսի Եկեղեաց, որի շինարարական մեծ գործերին օգնական և գործակից էր։ Հիշատակված է 1266 թ. (Տաշեան, Ցուց. 552 ա) և 1269 թ. (Յ. Մուրատ, Յայտ. յովհ. էջ յխա ևն, նաև Խալաթեան, Մնաց. էջ դ, ե), 1272 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 514), ներկա էր Ս. Ներսէսի մասանց պյուտի հանդեսին «1273 թ»։ Գրել է տվել Մեկնութիւն Քերականին։ Հոր հետ սպանվեց անպարտ մահով՝ «1276 թ» (Ազգապ. 1798)։—Յոհաննէս՝ Երզն. պատմ. 89.—Յոհաննես՝ Անանուն ժմ. 24.—Յովհաննէս՝ Պատմ. յյտ. ներս. 51.—գրծ. Յովհաննեսիսի՝ անդ, էջ 46։

— 331. Ուհաննես շինել է Ձար գյուղի Ս. Սարգիս մատուռը 1279 թ.—Արցախ 406։

— 332. Ուհանն երեց, հիշված է Ձարում, 1279 թ. (տես Դօփ № 2).—Արցախ 406 (հիշված է նախորդի հետ, իբրև տարբեր անձինք)։

— 333. Յոհան քահանա, գրիչ. օրինակել է Բաբերդում Մանրուսմունքը 1279 թ.—«Էջմիածին» 1945, օգոստ. 33 ա։

— 334. Յովհաննէս քահանա Իտալիոյ Perugia (Փերուժ) քաղաքի հայոց Մատթէոս աւետարանիչ եկեղեցու խնդրեց և Կիլիկիոյ Լևոն Գ թագավորից նվեր ստացավ մի Ճաշոց կամ Տօնամակ 1279 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1208 (իսկ անդ 1211 կոչ-

ված է ժամագիրք, նոյնը Հայապ. 485, իսկ Սիսուան 519՝ Աւետարան)։ Նոյնը զարձյալ Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լի-վոռն. էջ 243։

— 335. **Յովհաննէս** քահանա, դրիչ. օրինակեց Եսայի և Թուղթք Պօղոսի, ժանի անապատում 1279 թ.—Տաշեան, Ցուց. էջ 636։

— 336. **Յովհաննէս** տէր, շինել է Եղիշէ առաքյալի մատուռը 1279 և 1284 թվերին.—Բարխուտ. Աղվանից երկ. և դրաց. 281—2։

— 337/8. **Յովհաննէս Դ** եպիսկոպոս, առաջնորդ Հաղբատի. հաջորդել է Համազասպ Անեցուն 1257 թ. իր ծախսով շինել է Հաղբատի կամարակապ մեծ աղբյուրը 1258 թ. պատմում է իր գործերը մի երկար արձանագրության մեջ 1273 թ. շինել է վանքի գավիթը, գրատունը, սրահները, ջուր է բերել վանքը, շինել է մեծածախս պանդարան՝ Բրդաձորի Ս. Նշանի համար, գնել է Բալայ գյուղը և նվիրել վանքին, նաև կանգնեցրել է մի խաչքար՝ աթաբէգ ամիրսպասալար պարոն Սաթունի հիշատակին։ Հիշատակված է արձանագրությանց մեջ մինչև 1280 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 29—31, 40—42, 44, 60, 66, 103, Աղգագր. հանդ. Ի, 406, 412, 414, Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 78, 79։

— 339. **Յովհաննէս** քահանա, որդի Ըռըս(տակէս)ի, մայրն է Ջարմէլիք, կինն է Թամար, որդիքը Նորոզէս և Բանարազէս. Սիւնեաց Քարադնիս վանքում գրել տվեց մի Աւետարան 1280 թ.—Ձեռ. Վասպ. 103—4։

— 340. **Յովանէս**, հիշված է Սիւնեաց Հայրապետ (№ 27) եպիսկոպոսի հետ իբրև առաջնորդ Սիսական տան և «մականորդ (իմա վերանորոգիչ) սուրբ տաճարացս» (Տաթև), 1280 թ.—Ձեռ. Վասպ. 103։

— 341. **Յովհաննէս** վարդապետ Տարօնեցի, դաս էր ասում Մշոյ Ս. Կարապետի վանքում և Ս. Գիրքն էր մեկնում. խնդրեց Յովհաննէս Պլուզ Երզնկացուց գրել Քերականի մեկնութիւնը 1281 թ.—Երզն. պտճռ. 85, Զամչ. Գ 272, Հայապ. 510, Տաթև 1927, 185։

— 342. **Յովհաննէս**, եղբայր Թորոս վարդապետի, որ Դրազարկի վանքում, Բարսեղ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1282 թ.—Manus. brit. mus. 18 ա։

— 343. Յոհաննէս *երէց, որդի Վարդապետի. մայրն է Մամատիկին. գրիչ. Երեմիաս քահանայի համար օրինակեց մի չքնաղ Աւետարան Կարնոյ Կան գյուղում, 1283 թ.—Ջեռ. Վեննետ. Ա. 643—5։*

— 344. Յովհաննէս *քահանայ, հայր Թագուհու՝ կնոջ նույն Երեմիաս քահանայի, որ Կարնոյ Կան գյուղում գրել տվեց մի չքնաղ Աւետարան, 1283 թ.—Ջեռ. Վեննետ. Ա. 644։*

— 345. Յովաննէս, *«որ ի մէջ երկոցունց շնորհեալ է կնիք լուսաւորութեան սուրբ աւազանին» (երևի ուզում է ասել կնքահայր նախորդ անձերի), կինն է Տիկնաց, քույրն է Թուխթեր (իմա Դուխթեր), որոնք նույնպես օգնել են դրամապես Նախորդ Աւետարանի գրչության 1283 թ.—Ջեռ. Վեննետ. Ա. 644։*

— 346. Յովաննէս *քահանա, «ուսուցանող և վարդապետ» նույն Երեմիա քահանայի. ձրիաբար կազմեց նրա գրել տված Աւետարանը, որի նկարներն էլ նկարեց Ընծերը 1283 թ.—Ջեռ. Վեննետ. Ա. 644։*

— 347. Տէր Յովհաննէս, *շինել է Հուռեկայ վանքի եկեղեցին, Արցախի Ջրաբերդ գավառում 1279 թ. և մի քանի տարի հետո էլ նրա գավիթը՝ 1284 թ.—Շահխաթ. Բ. 378, Արցախ 229, բայց նաև Աղուանից երկ. 281—2 (Արաշ)։*

— 348. Յովհաննէս, *որդի Մխիթարի, իր Արիստակէս (№ 13) և Աթանէս (№ 8) անուն եղբայրների հետ մի խաչքար են կանգնեցրել իրենց հոր՝ Մխիթարի հիշատակին՝ Մարտիրոս գյուղում, 1284 թ.—Սիսական 177, Խաղբակեանք 146։*

— 349. Յովհաննէս *եպիսկոպոս. Տփղիսում հորդորեց Յովհաննէս Երզնկացուն գրելու իր «Յաղագս երկնից» աշխատությունը «1284 թ».*—Յոհան՝ *Երզն. երկն. յոջ։ (Ըստ Հայապ. 512 «Թուլի Խաչենոյ կողմանց եպիսկոպոս», ըստ Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա, 6 բ Հաղբատի առաջնորդ Յովհաննէս (№ 337) Դոփեանն է՝ հաջորդ Համազասպի)։*

— 350. Յովանէս *քահանա, կազմեց մի Աւետարան, որ Գորգ անուն անձը փրկանքով ազատել էր և կազմել տալուց հետո նվիրեց Կոռ գյուղի Ս. Ստեփաննոս եկեղեցուն, 1284 թ.—Ջեռ. Վասպ. 81։*

— 351. Տէր Յաւհաննէս!, *Թոռն Դաւթեանց, հայրապետ մի վանքի (Մարցի շրջանում), 1285 թ.—Ազգագր. հանդ. Է, 350։*

— 352. Յովհաննէս *Ջորովանեցի, որ սրբագրում էր սխալները՝ երբ Ստեփանոս գրիչը օրինակում էր Ջորոյ վանքում*

(Կիլիկիա) Յորդորակ ճառս Ոսկեբերանի՝ Յակոբ Ա կաթուղիկոսի «1268—86 թ» համար.—Միսուան 156 բ.—Ըստ Սարգիսեան, այս Յովհաննէս Ջորովանեցին օգնել է Յակոբ Ա. կաթուղիկոսին հօրինելու համար Ոսկեբերանի Յորդորակների խմբագրութիւնը.—տես նրա Քննադատ. Մանդ. էջ 164։

— 353. Յոհաննէս սարկավագ «սրբասէր և ժիր», որդի Յովհաննէս երեցի, որ օրինակեց Մաշտոցը 1276—86 թվերին։—Ջեռ. Հալէպի, Ա. 179 բ (տես հաջորդը)։

— 354. Յովհաննէս երեց, գրիչ. օրինակել է Կիլիկիայում մի Մաշտոց, որի թվականը անհայտ է. բայց որովհետև գրված է «ի հայրապետութեանն տն. Յակովբայ» (1268—86) և «ի թագաւորութեանն Լեոնի» (1270—1289) և «յասպարապետութեանն որդոյ Սմբատայ Լեոնի սրբասիրի և բարեպաշտի», ուստի թվականը պիտի լինի 1270—1286 թվերին։ Լեոնը սպարապետ դարձավ 1276 թվին, ուստի.ավելի սեղմելով այս թիվը՝ կդնենք 1276—1286։ Սրանից հետևում է նաև որ Լեոն սպարապետը վարում էր իր պաշտոնը տակավին 1286 թվին։—Ջեռ. Հալէպի, Ա. 179 ա։

— 355. Յովանէս վարդապետ, միաբան Թանատի վանից. գրիչ. Վարդան վարդապետի համար գրել և միանգամայն ծաղկել է Աւետարանը 1284 թ. և մի Նարեկ էլ Ամիր Հասանի կին Թաճերի համար, 1286 թ.—Խաղբակեանք 137, 139, 147։

— 356. Յովհաննէս (սեռ. Յոհնա), հայր Դաւթի և պապ Ռուբէնի, որ մի ձիթահանք է նվիրել Անիի կաթուղիկէին 1286 թ.—Արձ. Շիրակ 72։

— 357. Յովանէս հայրապետ, հիշված է Աղջոց Ս. Ստեփաննոս վանքի մի արձանագրության մեջ՝ 1287 թ.—Շողակաթ Ա. 26։

— 358. Յովհաննէս վարդապետ, որի վերակացությամբ Պապաք որդի Պռօշ իշխանի շինեց Նախիջևանի Հազարափրկիչ վանքը, 1287 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 485։

— 359. Յովհաննէս քահանա, հայր տոմարագիր Ստեփաննոս երեց Կոռիկոսցու, որ Հեթում պատմիչի համար գրեց Տոմարը. 1287 թ.—Միսուան 337։

— 360. Յովհաննէս կաթուղիկոս. հիշում է Առաք. պատմ. 482 հետևյալ ձևով. «Թուին ՉԼԸ=1289 մեռաւ Լեոն և աքսորեցաւ Կոստանդին կաթուղիկոսն և մնաւ Յովհաննէս կաթուղիկոսն. և նստաւ տէր Ստեփաննոս կաթուղիկոսն»։ Մեր պատմությունը

Կոստանդինի և Ստեփաննոսի միջև ոչ մի կաթուղիկոս չգիտէ։ Զգիտէ նոյն իսկ Առաք. պատմ. 335։

— 361. Յովճաննէս արքայեղբայր, որդի Կոստանդին Թագաւորահօր և կրտսեր եղբայր Հեթում Ա. թագաւորի («1226—1270 թ»)։ Նախապես կոչվում էր Պաղտին, սովորել է իր քրոջ՝ Հռիփսիմէ կրոնավորուհու մոտ. ձեռնադրվել է 1259 թվին և կոչվել Յովհաննէս (Ձեռ. օշ. 98 բ)։ Եղավ «եպիսկոպոս նահանգաց սատուածապահ դղեկին Մանլեոնի և մասին ինչ Բարձրբերդոյ», ապա արքեպիսկոպոս և առաջնորդ վանուց Գռների։ Սրա խնդրով Գէորգ Սկևռացին գրեց Գործք առաքելոցի մեկնության համառոտությունը՝ հանելով Ոսկեբերանից և Եփրեմից, և ապա Դրուատ նրբողական բանի յաւետարանիչն Յովհաննէս՝ 1283 թ. (Սիսուան 104)։ Թողել է իր արտագրությամբ մի քանի ձեռագիր. ինչ. երկու օրինակ Աստուածաշունչ (Ձեռ. կարին. 16), մի Աւետարան (անդ), մի ուրիշ Աւետարան (գրված 1278 թ.), որ պահվում է Միւնխէնի ձեռագրատանում (Ալիշան, Բաղ. աշխ. 250, Ձեռ. Միւնխ. 7—8, Սիսուան 424), Սողոմոնի գործերը՝ որ նվիրել է Զիմի իշխանուհուն (Հայապ. 486—7, Ձեռ. Վեննետ. Ա. 165, Յուշիկք Բ. 533, որից մի նմուշ տես REA 8,23), մի ուրիշ ձեռագիր, որ է Էջմիածնի նոր թիվ 1366=Կարինեան 1330, Ստացող է մի Աստուածաշնչի 1285 թ. (Շողակաթ 206), Դիոնիսիոսի Արիսպագացւոյ ձեռագրի՝ 1271 թ. (Հայապ. 486), Թորոս գրչի օգնությամբ գրել է մի ժողովածու, ուր կա նաև Իրենէոսի Ցոյցք (յիշ. Իրեն. ցոյցք 69 և Շողակաթ 204)։ Ստացող է նաև Վիեննայի Մխիթարեանց № 245 Ճաշոցի, որ գրված է 1270—89 թ։ Գռներում առաջնորդ եղած ժամանակ, 1272 թվին շինել է Յովհաննու աւետարանչի անունով մի մատուռ՝ Տիրոջ կոչված գյուղում, որ վաղուց Լևոն թագավորը նվիրել էր Գռների վանքին։ Այդ մատուռը Յովհաննէս արքայեղբայրը զարդարում է զգեստներով, զարդերով և մի Աւետարանով։ Գողը գողանում է այդ Աւետարանը. Յովհաննէսը շատ է փնտռում, բայց չի կարողանում գտնել, և ծեր հասակում սկսում է գրել մի նոր Աւետարան 1286 թվին, մի ընտիր օրինակից։ Սրա մոտ էլ դնում է Ճաշու ընթերցումները, որ օրինակել է տալիս Ստեփաննոս երեցին և նվիրում է նույն Տիրոջ գյուղի եկեղեցուն (Ձեռ. Վասպ. 107)։ Իր թելադրությամբ Լամբրոնացին թարգմանել է Գրիգոր պապի Տրամախոսութիւնք (ըստ Ձեռ. Վեննետ. Բ. 1174)։ Իր առաջին գրվածքն է «յարքայն Հեթում

մինչ ի Տաթարն էր» քերթվածը, որ տպված է Սիսուան 144, և այլ տեղեր (Զարբ. Հին դպր. 711—2, 722, 92—3, Թրգմ. 123—4, 220—221, 360, 361, 390, Հայապ. 486—491, Ձեռ. Դաշեան, Ա. 59—61)։ Մեռել է «1289 թ.»։ Իր կյանքը և գործերը տես Սիսուան 144—7, իր նկարը տես Ձեռ. Դաշեան, Բ. 35 բ. իր ձեռագրի նմանահանությունը՝ Սիսուան 291. իր մի մակագրությունը 1270—84 թվից տես Շողակաթ 205. իր ձեռագիրն ու ստորագրությունը REA 8,22։—Ոսկ. գծ. 9.—տես. Յովհաննիսի՝ Ոսկ. գծ. 13։

— 362. Յովհաննէս, Թվլի փոխանորդ կաթողիկոսության՝ Կոստանդին Պրոնագործի գահընկեցության միջոցին. մեռել է 1290 թ.— Յիշատ. Karst, Դատաստ. էջ ե:

— 363. Յովհաննէս արքեպիսկոպոս, շինել է Տաթևի Առաքելոց եկեղեցին, ուր գտնվում է նաև իր գամբանը, †1291 թ.— Սիսական 235, Ազգագր. հանդ. Գ. 143։ (Այս թվին չունինք այս անունով եպիսկոպոս, ուստի թվականը սխալ պետք է համարել)։

— 364. Յովհաննէս կրոնավոր, գրիչ. Գայլեձորի Աղբերց վանքում օրինակեց Մեկնութիւն կաթողիկեայ թղթոց 1291 թ.—Սիսական 131, Ամբատեանց՝ Երնջակ 316 (մեծ ցուցակ, էջ 7), Հայապ. 525։

— 365. Յոհաննէս քահանա. ստացող. Խաչատուր գրչին գրել տվեց մի ժողովածու, որի օրինակը շնորհեց Փիլիպոս քահանան, գծեց Թումաս քահանան, և կազմեց Գրիգոր գրակալը՝ Կիլիկիոյ Փնրձերի վանքում, 1292 թ։—Ձեռ. Հալէպի. Ա. 347։

— 366. Յովհաննէս քահանա, իր եղբայր Թադէոս քահանայի հետ միասին Մամիկ սարկավագին գրել տվեց մի Աւետարան, Ուռուքարի Ս. Գէորգ եկեղեցու համար. 1292 թ.—Շողակաթ 207։

— 367. Յոհանէս, առաջնորդ Կանայ անապատին, որ ինքը նորոգեց 1292 թ.—Ձեռ. Վասպ. 110։

— 368. Յոհաննէս քահանա, գրիչ. Սսում օրինակեց Շարակնոցը՝ 1292 թ.—Rapport Belgique 175։

— 369. Յովհաննէս վարդապետ Ծլուղ (ոչ Պլուղ), Թվլի վանական Ակների (Կիլիկիա). ունի սրտառուչ համառոտ մի տաղ «Լուսաւորչի ելքն ի Վիրապէն» (տպ. Սիսուան 154), որի վերջին տունը մաղթանք է հայոց կաթողիկոսին և թագավորին.

Յաթոռ տիրական քո գնստեալն այսօր՝
Հայցեմ առ Յիսուս, մեզ լուսատու շնորհել,

Որդւոցս Արամայ՝ զպսակաւորն արքայ,
Ի Հոգւոյն խնդրեսցես միշտ զօրաւոր պահել։

Ունեցել է «Սաղմոսաց մեկնիչ» գրքից մի օրինակ, որ իր մահուան օրը ընծայել է Ակների վանքին «1293 Թ».— Սիսուան 154 բ, Ջարբ. Հին դպր. 714, Ազգապ. 1795—6, Տաթև 1927, 182։

— 370. Յովհաննէս քահանա Արքայակաղնու, 1293 Թ. տես Գրիգոր № 358։

— 371. Յովհաննէս բարունապետ Երզնկացի, որի առաջարկութեամբ Մովսէս վրդ. Երզնկացին գրեց Մեկնութիւն պատարագին. մեռել է 1293 Թ. կարող է լինել № 300։

— 372. Յովհան եպիսկոպոս, եղբայր Հեթում Բ-ի և որդի Լևոն Գ-ի. համարվում է առաջին աջպահ. (անշուշտ 1293 Թվից քիչ ուշ).— Ձեռ. Վենետ. Բ. 959. Տաշեան, Ցուց. 358 (ըստ Ազգապ. 2939 կեղծիք)։

— 373. Յոհաննէս քահանա, գրիչ. Սսում օրինակել է մի Աւետարան, պարոն Միխայլի համար, 1293 Թ.—Թորոս աղբ. Բ. 303։

— 374. Յովհաննէս քահանա, 1295 Թվին կազմեց մի հին Աւետարան, որ գրել էր Կարապետ գրիչը.— Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 515)։

— 375. Ովհաննէս երէց, վերջին ստացող Աւետարանի, 1295 Թ.— Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 515)։

— 376. Յովհաննէս կրոնավոր, փակակալ Խորնոյ անապատի, գրել է մի Հաւաքածու 1295 Թ.—Տաշեան, Ցուց. 817—8։

— 377. Յովհաննէս Թ եպիսկոպոս Սիւնեաց 1292—1295 Թ. եղբորորդի և հաջորդ Հայրապետ եպիսկոպոսի. նորոգել է Վարարական տուն (Արձ. 1292 Թ).—Օրբ. կբ, հա.—սեռ. Յովհաննէսի՝ Օրբ. կե, կզ.—Ազգագր. հանդ. Գ. 129։—Վարարակի ավելի պատմությունը ընդարձակ տես «Նյութեր Հին Հյաս. պատմ.» Երևան 1935, էջ 115—125. հմմտ. վերը Հայրապետ № 27։

— 378. Յովհան գրիչ, Դրազարկի վանքում, Յովսէփ փիլիսոփայի համար օրինակեց Յովհաննու Աւետարանը՝ 1295 Թ.— Բարխուտ. Արցախ 42։

— 379. Յովաննէս քահանա, եղբօրորդի Ստեփաննոս քահանայի, որ Սկևռայ վանքում օրինակեց Աւետարանը 1295 Թ.— Թորոս աղբ. Բ. 344։

— 380. Յոհաննէս, հոգևոր եղբայր Շմաւոնի և Դաւիթ կրօնաւորի, որոնք օրինակեցին Աւետարանը՝ Թեղենեաց վանքում, 1295 թ.—Manus. brit. mus. 16 ա։

— 381. Յովհաննէս սպասաւոր բանին. ունի «Համառօտ պատմութիւն ժամանակաց հաւաքեալ ի զանազան պատմութեանց, այսինքն ի հայոց, ի փռանկաց, ի յունաց, յասորոց», որ գրել է Կիլիկեան հայերենով, 1296 թ.— Սկսում է Դաւիթ Բ-ի մահից (1079) և հասնում է մինչև 1270 թիվը, ուր ձեռագիրը ընդհատվում է.—Manus. brit. mus. 291 բ։

— 382. Յովհաննէս քահանա, երեց որդի Յովհաննէս քահանայի. մայրն է Խուղելթայ, կինն է Ոսկեհատ, եղբայրն է Մխիթարիչ և քույրը՝ Լուսիկ. կոչված է «ժիր մշակ և սպասաւոր սուրբ ուխտին Մարիանոսի»։ Զավակ չունենալով՝ Սուրմարիում Ծերուն գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց եկեղեցուն, 1296 թ.—Ձեռ. Վասպ. 121—2։

— 383. Յովհաննէս քահանա, երեց այսպես է կոչվում նաև հայրը Նախորդ Յովհաննէս քահանայի, որ Սուրմարիում Ծերուն գրչին գրել տվեց մի Աւետարան 1296 թ.— Ձեռ. Վասպ. 121 (տող 5՝ տակից. գրվածքը երկդիմի է)։

— 384. Յովհաննէ! ոՊ, հիշված է այն խաչարձանի վրա, որ Գրիգորը կանգնեցրել է Լամբրոնի բերդում, 1297 թ.—Սիսուան, էջ 79։

— 385. Յովհաննէս քահանա, գրիչ, օրինակեց Աստուածաշունչը Ներսէս եպիսկոպոսի խնդրանոք 1297 թ.—Ձեռ. Կարին 10։

— 386. Յովհաննէս, գրիչ. Գայլեձորի վանքում օրինակեց Պիտոյից գիրքը 1298 թ.— Երնջակ 316 (մեծ ցուցակի 4-րդ էջ), Սիսական 133, Տաշեան՝ Ակնարկ 74։ Սրա հետ նույն կարող է լինել՝

— 387. Յովհաննէս գրիչ Գլաձորի վանքում (Վայոց ձոր), 1297 թ.— Տաթև 1927, 183։

— 388. Յոհաննէս քահանա, որդի Աւետիքի, մայրն է Թամար, աշակերտ Խաչիկ քահանայի. գրիչ. օրինակել է Աւետարանը՝ Ս. Գէորգ զօրավար եկեղեցու համար 1298 թ.— Թորոս աղբ. Բ. 335։

— 389/390. Յովհաննէս դպիր, որդի Կոստանդին քահանայի. ստացել է մի Աւետարան 1298 թ.— Ճանիկեան, Հնութ. Ակնայ 86։ նույն է և Ձեռ. Հալէպի. Ա. 395 բ։

— 391. Յովանէս, ստացող. Կիւզուց վանքում, Մատթէ-

ոս գրչին գրել է տվել մի Աւետարան, 1298 թ.— Ջեռ. Վասպ. 125։ (Այսպես ըստ Լալայանի. բայց շատ սխալ է. հիշատակարանում չկա ստացողի անուն. վերջին տողում գրած է «որ և նման է Յովանէս ողորմածին». Լալայանը սրանից սարքել է «Յովանէս ստացող»!)

— 392. Յովհաննէս վարդապետ, գնաց Սպանիա՝ իբրև ուխտավոր Կոմպոստելլայի Ս. Յակոբ վանքի և այնտեղ թարգմանել տվեց «Պատմութիւն գլխատման Ս. Յակոբ Առաքելոյ» (ԺԳ դար կամ ավելի շուտ).— Սխակյան 457 բ։

— 393. Յովհաննէս աշակերտ Տիրատուրի և դասընկեր Գրիգորի, որոնց հետ իբր նշանավոր հայր անցել է Պատարագի հիշատակության մեջ (շուրջ ԺԳ դար).—տես. Յոհաննիսի՝ Պորգ. էջ 695։

— 394. Յովհաննէս Բ. Աղձնեցի, կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Գրիգոր Գ-ի և նախորդ Ստեփան Բ Անձևացու (ԺԳ դար).—Հաւաք. 59 (կեղծիք)։

— 395. Յովհաննէս Գանձակեցի. մատենագիր. կոչված է «մեկնիչ ընթերցուածոց», ըստ որում ունի համառոտ մի աշխատություն «Մեկնութիւն ընթերցուածոց» վերնագրով, որ Գրիգոր Արշարունու համանուն աշխատության հետևողությամբ է գրված և տպված է նրա գրքի հետևում։ Ավելի կարևոր և սովոր է իր երկրորդ աշխատությունը, որ կոչվում է Տօնապատճառ և որտեղ կարգի բերված ու դասավորված են ամեն մի տոնի առթիվ ասվելիք քարոզներն ու խրատները, քաղելով Իգնատիոս վարդապետի, Սարգիս Շնորհալու, Լամբրոնացու, Վարդանի և Վանականի գործերից (ԺԳ դար)։—Տաթև. հարց. 651 (կոչում է միայն Գանձակեցի). Զամչ. Բ. 564, Գ. 275. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ ղգ, Զարբ. Նոր մատ. 193. Աղգապ. 1696։

— 396. Յովհաննէս քահանա, Գլաձորի վանքում օրինակեց Աստուածաշունչը՝ Կորապետ վարդապետի համար (ԺԳ դար).— Յ. Մուրատ, Յայտ. յովհ. էջ յժբ և ջար։

— 397. Յովհաննէս քահանա, ունէր մի օրինակ Աստուածաշունչ, որ ավեց սույն Յովհաննէս քահանա գրչին, օրինակելու համար Գլաձորում, Կարապետ վարդապետի խնդրանոք (ԺԳ դար).—Յ. Մուրատ, Յայտ. յովհ. էջ յիգ։

— 398. Յովհաննէս կրոնավոր. փակակալ ուխտին Կամրկանն. ստացավ մի օրինակ Գործք առաքելոց (ԺԳ դար).— Սիսուան 143, Տաշեան, Ցուց. 667։

— 399. **Յովհաննէս** *երեց Տաւուշեցի, գրեց Կիլիկիոյ Բուսաբանութիւնը (ԺԳ դար).—Թորգոմեան,* REA *6, 24։*

— 400. **Յովհաննէս** *գրիչ Դաւթի Լուծմանց նախագաղափար օրինակի (ԺԳ դար), որից օրինակվել է 1363 թվի մի ուրիշ ձեռագիր.— Տաշեան, Ցուց. 756—7։*

— 401. **Յովհաննէս** *որդի Լիպարիտի (տես № 2), հորեղբորթոռ Ստեփաննոս Օրբելեան եպիսկոպոսի. եղավ կրոնավոր (ԺԳ դար).—Օրբ. կե։*

— 402. **Յովանէս** *պարոն, ստացավ և նորոգել տվեց Ժ դարում գրված մի Աւետարան (ԺԳ դար)։ Նույն անձի որդիներն են պր.* **Եհհանէս** *և* **Յոհան**՝ *երեքն էլ տարբերակներ նույն անվան։—Ձեռ. Սանաս. 9 բ։*

— 403. **Յովհաննէս** *եպիսկոպոս, առաջնորդ Սսոյ 1301 թ.—Միսուան 221ա։ Անշուշտ նույն է Յովհաննէս եպիսկոպոս Սսի և առաջնորդ Դրազարկի 1301 թ.— Միսուան 234ա։*

— 404. **Յովան** *եպիսկոպոս, առաջնորդ Լիմ անապատի, 1301 թ.— Ձեռ. Վասպ. 140։*

— 405. **Ոհաննէս** *երեց, հիշատակագիր 1301 թ.— Հրատ. Ազաթ. 1909 թ. յոլ. էջ ԽՁ։*

— 406. **Յովաննէս** *սարկավագ՝ Իտալիոյ Փէրուժ* (Perugia) *քաղաքի հայ եկեղեցու, 1301 թ.— Ձեռ. Վատիկ. (ՀԱ 1892, 342 ա)։*

— 407. **Յովհան** *(որ և Ջեհան) Տիրերիացի, մարաջախտ Հայաստանի թագավորության. ամուսնացավ ասպետ պարոն Յովհան Պեռուինի դուստր Ալիսի հետ, որ մեռավ 1357 թ. և որի դամբանը գտնվում է Նիկոսիայի հայոց եկեղեցում, կանացի շքեղազգեստ փորագրյալ պատկերով և ֆրանսերեն արձանագրությամբ. իսկ Յովհանը մեռել է 1302 թ. որի դամբանն էլ գտնըվում է նույն եկեղեցու մեջտեղում, տապանաքարի վրա իր պատկերով, տոհմական զինանշանով և ֆրանսերեն արձանագրությամբ.— Բակուրան, Կիպրոս 46,55։*

— 408. **Յովհաննէս** *եպիսկոպոս Արարատեան նահանգի, որա խնդրանոք Օրբելեանը գրեց Ծննդեան տոնի ճառը 1302 թ.— տես.* **Յովհաննիսի**՝ *Օրբ. հկճա. ը։*

— 409. **Յովանէս** *եղբորորդի Ստեփաննոս եպիսկոպոսի Օրբելեան (պատմագիր), որի հրամանով օրինակեց Աւետարանը 1302 թ.— Սմբատեանց, Երնջակ 231։*

— 410. **Յոհաննէս** *վարդապետ, որի խնդրանոք և Եսայի*

Նչեցու հրամանով Թադէոս գրիչը օրինակեց Մեկնութիւն երկոտասան մարգարէից, 1303 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 45 բ։

— 411. Յովհաննէս եպիսկոպոս Առաքելոց վանքի. Նրան գրեց Գրիգոր Է Անաւարզացի կաթողիկոսը և առաջարկեց հայ եկեղեցու մեջ մտցնել լատին ծեսեր «1303 թ».—Ազգապ. 1754։

— 412. Յոհան վարդապետ, առաջնորդ Վարագայ վանքի, 1304 թ.—Զարբ. Թրգմ. 413։

— 413. Յովհաննէս քահանա, մերձավոր Թումայ և Հայրապետ քահանաների, որոնք Զաքարիա գրչին գրել տվին մի Աւետարան 1304 թ.—Ձեռ. Վասպ. 143։

— 414. Յովհաննէս քահանա, Խորին անապատում կազմել է մի Հաւաքածու 1305 թ.—Տաշեան, Ցուց. 771։

— 415. Յովհաննէս գրիչ. Սկևռայ վանքում օրինակել է մի Աստուածաշունչ 1305 թ.—Տաշեան, Ցուց. 632։

— 416. Յովհաննէս գրիչ. Ֆամակոսթայում (Կիպրոս) օրինակեց Աստուածաշնչի մի մասը 1305 թ.—Բակուրան, Կիպրոս, էջ 116։

— 417. Յովհաննէս քահանա, որի խնդրանոք Գէորգ վարդապետը գրել է «Վասն հաղորդութեան» գրվածքը.— Տաշեան, Ցուց. 770ա։ (Ըստ Տաշեանի 1072ա այս Գէորգը կամ Երզնկացին է և կամ Սկևռացին. ըստ իս Սկևռացին է, որովհետև ձեռագիրը գրված է 1305 թվին, որ Երզնկացու համար շուտ է)։

— 418. Յովհան աբեղա, գրիչ. Խաղտեաց Բերդակ վանքում օրինակեց Աստուածաշունչը 1305 թ.—Ձեռ. էջմ. № 980, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 17, 70։

— 419. Յովհաննէս գրիչ. օրինակեց Աստուածաշունչը՝ մասամբ Կիպրոսի Մաղուսայ քաղաքում և մասամբ էլ Լամբրոնի Սկևռայ վանքում, 1305 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1181։

— 420. Յովհաննէս երեց, իր քրոջ՝ Աննայի հետ նյութապես օգնեց Գրիգոր գրչին՝ գրելու իր Տօնականը, Կաֆա 1305 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 511—2։

— 421. Յովհաննէս միաբան Բջնիի Ս. Աստուածածին եկեղեցու 1306 թ.—Ալ. Շահխաթ. Բ. 184, Այրարատ 273 բ։

— 422. Յովհաննէս, կրոնական անուն Հեթում Բ. «1289—1307թ» թագավորի.—Ազգապ. 1709, 1745.—տես Հեթում № 20։

— 423. Յովհաննէս եպիսկոպոս Բերիոյ. անդամ Սսոյ կրոնական ժողովի «1307թ».— Ազգապ. 1785։ Ջամչ. Գ. 309 (կոչում է Յովհաննէս եպս. Պիրոյ)։

— 424. Յովհաննէս *եպիսկոպոս Մարանդունեաց, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ».—Ազգապ. 1785։*

— 425. Յովհաննէս *առաջնորդ Վանի են, հիշված է Զաքարիա կաթուղիկոսի հետ 1307 թ.—Ձեռ. Վասպ. 151։*

— 426. Յովհաննէս *եպիսկոպոս Այասի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ».—Ազգապ. 1784, Սիսուան 395 ա։*

— 427. Յովաննէս, *որդի Կիրակոս քահանայի, որ գրել տվեց մի Աւետարան, 1308 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 36ա, ուր կա և սրանց նկարը։*

— 428. Յովհաննէս, *որդի Ապուղամրի, հայրապետ Շիրակ գավառի 1308 թ.—Ձեռ. Կարին. 16։*

— 429. Յովաննէս *քահանա, սկսել էր արտագրել Աւետարանը՝ Պետրոս քահանայի համար, բայց կիսատ էր թողել։ Մնացյալը շարունակեց և ավարտեց Հայրապետ գրիչը Կիլիկիոյ Փոսի վանքում, 1309 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 93 բ։*

— 430. Յովհաննէս, *որդի Մեծպարոնի և հանգուցյալ եղբայր Յակոբ երեցի, որ կազմեց այն Աւետարանը, որ Կիլիկիոյ Փոսի վանքում օրինակել էր Հայրապետ (№ 34) գրիչը 1309 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 94ա։*

— 431. Յոհ(աննէս) *քահանա, գրիչ. Վանայ Աւանց գյուղում, Գէորգ աբեղայի համար օրինակեց Մանկութեան Աւետարանը 1310 թ.—Թորոս աղբ. Բ. 411։ Անշուշտ նույն անձն է՝*

— 432. Յովհաննէս *քահանա, գրիչ. Վանի Աւանց գյուղում օրինակեց և կազմեց Եղիփան Կիպրացու գործերը 1304 թ. և ապա «Պատմութիւն յաղագս մարդեղութեան Քրիստոսի» 1310 թ.—Զարբ. Թրգմ. 196, 413։*

— 433. Յովաննէս *երէց Թավրիզեցի, ճարտարապետ, «յոյժ հմուտ արհեստին». Աղթամարի Զաքարիա Ա կաթուղիկոսը հրավիրեց նրան, նորոգել տվեց Ս. Խաչի խաչկալը և Աղթամարը շքեղացրեց, 1310 թ.—Հաւաք. 43։*

— 434. Յովհաննէս *վարդապետ Սսեցի, աշակերտ Եսայի Նչեցու 1310-ական թվերին.—Սիսական 134 բ։*

— 435. Յովհաննէս *որդի Իւանէի, առաջնորդ Գանձասարի վանքի. նվերներ է արել վանքին 1271 թ.— Արձ. Շահխաթ. Բ. 376, Արցախ 177։ Թերևս նույնն է որ հիշված է նաև 1301 և 1311 թվերին։— Արձ. Արցախ 178, Շահխաթ. Բ. 376։*

— 436. Յովհաննէս *բարունապետ, ուսուցիչ Կիւրիոնի, որ*

օրինակեց Շնորհալու Մեկնութիւն Բարձրացուցէքի, 1311 թ.— Ակինեան, Գիւրիոն կթղ. 265—6։

— 437. Յովանէս, եղբայր Ներսէս գրչի, որ օրինակեց Շարակնոցը՝ Թորոս վարդապետի համար, 1312 թ.— Manus. brit. mus. 95 ա.

— 438. Յովհաննէս կուսակրօն քահանա Դրազարկում, որդի Մեծպարոնի և եղբայր Յակոբ երեցի. երկուսն էլ երաժիշտ. երրորդ եղբայրն է Կոստանդին (№ 103, ուր ավելացնել նաև Սիսուան 234 ա հիշատակութիւնը 1313 թվից)։ Յովհաննէսի խնդրանոք իր մօրեղբայր Ստեփանոս ծերունի քահանան Դրազարկի վանքում օրինակեց Մանրուսմունքը, որ և կազմեց իր եղբայր Յակոբ երեցը՝ 1313 թ.—Սիսուան 233 բ—234 ա, 517 ա։

— 439. Յովհաննէս քահանա, որդի Կոստնդայ, Տայոց Տիկբակ գյուղում գրիչ 1313 թ.—յիշ. ИАН 1911, էջ 1301։

— 440. Յովհաննէս քահանա, հայր Սերովբէ քահանայի, որ կազմեց այն Աստուածաշունչը, որ օրինակել էր Ստեփաննոս քահանան Սեբաստիայում, 1313 թ.— Ձեռ. Սեբ. (ՀԱ 1923, 71)։

— 441. Յովհաննէս փակակալ Թիւրքթի վանից (Կիլիկիա), հիշված 1314 թ. գրել ավեց Կոստանդին գրչին Ոսկեբերանի ճառերը.— Սիսուան 156 բ։

— 442. Յովհաննէս, «ածպան» (այծապան) Թիւրքթի վանից (Կիլիկիա), հիշված 1314 թ.—Սիսուան 156 բ։

— 443. Յոհանէս քահանա Կարմիրվանեցի. քեռի Սկևռայ վանից առաջնորդ Կոստանդին եպս. Պեհեսնեցու (№ 109), 1314 թ.— Ձեռ. Վասպ. 60։

— 444. Յովհաննէս, գրիչ. օրինակեց Հին Կտակարանը Սկևռայ վանքի առաջնորդ Կոստանդին Պեհեսնեցի եպիսկոպոսի համար, 1314 թ. — Ձեռ. Վասպ. 62։

— 445. Յովաննէս քահանա, եղբայր Նիկողայոս քահանայի, որ Անարզաբայում օրինակեց Պատարագամատոյցը՝ 1314 թ.— REA 2, 283, Գաթըրճեան՝ Պարգմատոյցք 83։

— 446. Յովհաննէս վարդապետ, միաբան Արճէշի Ուղընկալ վանից, ուր Հայրապետ կրոնավորին գրել ավեց Սամուէլ Անեցու Պատմութիւնը, 1315 թ.— Ձեռ. Դաշեան. Ա. 94 բ։

— 447. Յովաննէս քահանա, գրիչ. Հարք գավառի Դանեվանք գյուղում. Աւետիք քահանայի պատվերով օրինակեց Աւետարանը 1316 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 464։

— 448. Յովհաննէս քահանա, որդի Սիրունի. մայրն է Կի-

րա. Կրակայ գյուղում, Կոստանդին քահանային գրել տվեց Աստուածաշունչը, 1317 Թ.—Միսուան 547 բ։

— 449. **Յովհաննէս** գրիչ. Կիպրոսի Մաղուսա քաղաքի Կանչուոր Ս. Աստուածածին վանքում օրինակեց Լամբրոնացու Մեկնութիւն Պատարագի, 1317 Թ.—տես Լմբ. Խորհրդածութ. Ս. Պատարագի, տպ. Երուսաղէմ, 1842, յառ, Բակուրան՝ Կիպրոս կղ. 70, ՀԱ 1937, 381։

— 450. **Յովհաննէս** արքեպիսկոպոս Մաժիստրայի, անդամ Ատանայի կրոնական ժողովի «1317 Թ».—Ազգապ. 1818, Սիսուան 250 ա։

— 451. **Յովհաննէս** արքեպիսկոպոս Տարօնի. անդամ Ատանայի կրոնական ժողովի «1317 Թ».—Ազգապ. 1819, Հացունի, Կարևոր խնդ. 267։

— 452. **Յովհաննէս** արքեպիսկոպոս, առաջնորդ Անարզաբայի 1307—17 Թ. անդամ Սսոյ «1307 Թվի» և Ատանայի «1317 Թվի» եկեղեցական ժողովների.—Զարբ. Թրգմ. 265, Ազգապ. 1784, 1818, Սիսուան 241 ա, Գաթըրճեան, Պատմ. 83. REA 2, 283, Հացունի՝ Կարևոր խնդ. 263։

— 453. **Յովհաննէս** վարդապետ Մեծքարեցի. դպրապետ, այն է ուսուցչապետ դպրեվանից. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1307 Թ.» և Ատանայի ժողովի «1317 Թ».—Ազգապ. 1786, 1819։

— 454. **Յովհաննէս** վարդապետ, հիշված է Դարանու դաշտի Խոռինանց գյուղում, 1317 Թ.—Թորոս աղբ. Ա. 218։

— 455. **Յովհան** գրիչ. օրինակել է Աստուածաշունչը 1317 Թ.— Ջեռ. Կարին. 15։

— 456. **Յոհաննէս**, նշանավոր քարոզիչ Որնոյ գավառի Բատաւնց գյուղի եկեղեցում. հիշված է իր ընկեր Մխիթարի հետ. Մխիթարը կոչված է «արուսեակ», Յովհաննէսը «անապատ լապտեր», 1317 Թ.—Թորոս աղբ. Բ. 419։

— 457. **Յոհաննէս** քահանա, որդի Սիրունի, Կրակայ գեղաքաղաքում, Կոստանդին քահանային գրել տվեց մի Աստուածաշունչ, 1317 Թ.—Թորոս աղբ. Բ. 300։

— 458. **Յոհաննէս**, քեռորդի նույն Յովհաննէս քահանայի որ Կրակայ գեղաքաղաքում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1317 Թ.—Թորոս աղբ. Բ. 301։

—459. **Յոհաննէս**, որդի Սիրունի, կրտսեր եղբայր Յովհաննէս քահանայի (№ 457), որ Կրակայ գեղաքաղաքում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1317 Թ.— Թորոս աղբ. Բ. 301։

— 460. Յոհաննէս *քահանա, ունէր մի օրինակ Աստուածաշունչ, որ արտագրելու համար տվեց Կոստանդին քահանային. Կրակայ գեղաքաղաքում, 1317 թ.—Թորոս աղբ. Բ. 301։*

— 461. Յոհանէս, *հայր Աստուածատուր գրչի, որ օրինակեց Աւետարանը, 1317 թ.*—Manus. brit. mus. *20 բ։*

— 462. Յոհանէս *քահանա, օգնեց Աստուածատուր գրչին՝ օրինակելու Աւետարանը, 1317 թ.*—Manus. brit. mus. *20 բ։*

— 463. Յովհաննէս *եպիսկոպոս Տարսոնի, 1307—1317 թ. հիշված է իբրև անդամ Սսոյ «1307 թ» եկեղեցական ժողովի, ապա Սալմաստի Գրիգոր եպիսկոպոսի ընտրողների շարքում (1311 թ) և ապա իբրև անդամ Ատանայի «1317 թ» եկեղեցական ժողովի.—Ազգապ. 1784, 1818, Ձեռ. Հալէպի, Բ. 31 ա, Սիսուան 271 բ։*

— 464. Յովհաննէս *գիտնական, պատուավոր բանի, օրինակել է Գր. Նիւսացու մի գիրքը՝ Գայլեձորում, առ ոտս Եսայի վրդ. Նչեցւոյ 1318—9 թ.—Սիսական 125 բ։*

— 465. Յովաննէս *երեց, հայր Յովհաննէս գրչի, որ օրինակեց Աստուածաշունչը՝ 1319 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 20։*

— 466. Յոհանէս *գրիչ. որդի նախորդ Յովանէս երեցի, Գէորգ Սկեռացու գրած օրինակից արտագրել է Աստուածաշունչը՝ շատ գեղեցիկ գրչութեամբ, 1319 թ.—Անկ. գիրք հին կտ. յոյչ. էջ ժգ. Սիսուան 106. (Վեննետ. № 1508 ձեռագիրն է), Ձեռ. Վեննետ. Ա. 19—20։*

— 467. Յովհաննէս *քահանա, միաբան Փոսի անապատում. թուղթ էր կոկում և օգնում Պօղոս քահանային՝ արտագրելու Աւետարանը, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 516)։*

— 468. Յովհաննէս *որդի Թորոսի և եղբայր Վարդան քահանայի, որ Թորոս քահանային գրել տվեց Աւետարանը 1280—1320 թվերին։—Ձեռ. Թաւր. 27 բ։*

— 469. Յոհանէս *քահանա, իրեն և իր եղբօր Սարգիս քահանայի հիշատակին ստացավ մի Աւետարան, 1320 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 47 ա։*

— 470. Յովհաննէս, *իր կնոջ՝ Թաձնայի հետ միասին շինել են Սպիտակաւոր Աստուածածին վանքի զանգակատունը 1321 թ.—Սիսական 137։*

— 471. Յովհաննէս *քահանա, գրիչ. Ապահունեաց Արճէ գեղակում, Ներսէս քահանայի համար օրինակեց Աւետարանը 1321 թ.—Ձեռ. Վասպ. 168։*

— 472. Յոհանէս, *գրիչ. Մաշկենը անապատում օրինակեց մի Շարակնոց 1322 թ.—Ձեռ. Սանաս. 14 բ։*

— 473. Յովհաննէս, *ուսուցիչ Մարկոս կրօնաւորի, որ Կուքի վանքում օրինակեց Լամբրոնացու Մեկնութիւն Պատարագի, 1322 թ.—Խաղբակեանք 60։*

— 474. Յովան, *հակառակ կանգնեց կաթոլիկացած Կոստանդին Գ Կեսարացի («1307—23 թ») կաթուղիկոսի դէմ և իր ընկերների հետ աքսորվեց Կիպրոս կղզին.—Հայապ. 552։*

— 475. Յովհաննէս *քահանա. Ակների վանքում Վարդան վարդապետին գրել տվեց մի Աւետարան 1323 թ.—Տաշեան, Ցուց. 789։*

— 476. Յովան *եպիսկոպոս հայոց. մեռել է 1323 թ. իր գերեզմանը գտնվեց Միջին Ասիայի Պիշպէք (Սեմիրեչիէ) քաղաքի գերեզմանատան պեղումների ժամանակ, հայ և ասորի լեզուներով (Մառ,* Записки Восточ. отд. им. Русс. Арх. общ. VIII, *344—9, Թրգմ. Ադոնց ՀԱ. 1895, էջ 33—36, Տաշեան՝ Ակնարկ 152, ամփոփումը Յիմի՝ Արարատ 1895, էջ 22։)*

— 477. Յովհաննէս *Ժ Օրբելեան, արքեպիսկոպոս Սիւնեաց. որդին էր Լիպարիտի։ (Յովհաննէս Օրբելեանը և Էաչի Պռօշեան իշխանի կինը՝ Մամախաթուն երկու եղբայր թոռներ էին. Յովհաննէսը Լիպարիտի որդի և Իւանէի թոռ, իսկ Մամախաթունը Ելիկումի դուստր և Տարսայիճի թոռ)։ Նախապես սովորել է Գայլեձորում Եսայի Նչեցու մօտ, երբ դեռ «ծաղիկ էր դեռաբողբոջ և համբակ մշտափայլ», ինչպես ասում է ժամանակակից մի հիշատակագիր (Սիսական 95 ա ծան)։ Ավելի մեծանալով իր հիմնական ուսումն առացավ Ստեփաննոս Օրբելեանի մօտ, որին և հաջորդեց։ Ըստ Յովսէփեան՝ Խաղբակեանք 187—8 գահակալել է 1303—1324 թ. (բայց որովհետև ըստ Ազգապ. Ստեփաննոս Օրբելեանը մեռել է «1304 թ», ուստի մենք էլ Յովհաննէսի գահակալութիւնը համարում ենք «1304 թ»)։ Սրան գրեց Գրիգոր Է Անաւարզեցի կաթուղիկոսը՝ առաջարկելով հայ եկեղեցու մէջ մտցնել լատին ծեսեր «1304 թ» (Ազգապ. 1754)։ Այս առթիվ ինքն էլ ունի Թուղթ առ Կոստանդին Գ. կաթուղիկոս («1307—1323 թ») և առ Զաքարիա Ծործորեցի եպիսկոպոս Արտազի։ Հիշված է 1321 թ. (*Manus. brit. mus. *22 բ). շինել է Արփայի Ս. Աստուածածին եկեղեցին 1322 թ., ուր կա նաև իր արձանագրութիւնը (Սիսական 181)։ Գերեզմանը գտնվում է Նորավանքում, այսպիսի տապանագրով. «Տուն իմաստից և հանճարոյ Սարպել*

Յովհաննէս հռչակաւոր մետրապոլիտ Սիւնեաց» (Սիսական 194, 198)։—Տես և Տաշեան, Ցուց. 179, 180. Ճռաքաղ 1860—1861, Բ. 39—43, Գ. 55—57. Ձեռ. Թաւր. 35 բ. Հացունի, Կարևոր խնդ. 299. Արձ. (1310 թվից) Սիսական 117 և Արրտ. 1889, էջ 286, Բարխուտ. Աղվանից երկ. 246, 251. Սմբատեանց՝ Երնջակ 136։

— 478. **Յոհանէս**, գրիչ. Սկեւռայ վանքում, Սարգիս քահանայի համար օրինակեց Աւետարանը 1325 Թ.—Ձեռ. Վասպ. 171—174։

— 479. **Յովհաննէս**, որդի Կարապետի և եղբայր Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում (Խրիմ) օրինակել տվեց Աստուածաշունչը 1325 թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 480. **Յովհաննէս** «գրքակազմ» (կազմարար), հոգևոր եղբայր Սիմէոն քահանայի, որ նրա համար գրել է Գալու վանքում (Կիլիկիա) Մանրուսմունքը 1325 Թ.—Սիսուան 201 ա։

— 481. **Յովհաննէս** եղբայր Մխիթար քահանայի, որ Ներսէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1325 Թ.—Թորոս աղբ. Բ. էջ 295։

— 482. **Յոհան** քահանա, հայր Ստեփանոս քահանայի, որ իր որդի Մխիթար սարկավագին սկսեց գրել տալ մի Աւետարան։ Մխիթարի մահից հետո, նույնը վերջացրեց Սարգիս քահանան, 1326 Թ.—Rapport Belgique 85։

— 483. **Յովհաննէս** վարդապետ Պլուզ Երզնկացի կամ Ծործորեցի (ըստ Զարբ. Հին դպր. 755 կոչված է նաև «մաշածին» կամ «քաղցրիկ»). ապրել է «շուրջ 1250—1326 Թ.» աշակերտել է Վարդան պատմչին Կայենոյ ձորում.(ըստ Սիսական 23ը աշակերտել է Եսայի Նչեցուն)։ «1273 Թվին» ներկա եղավ Ս. Ներսէսի մասունքների փոխադրության հանդեսին Թիլ գյուղից Երզնկա և այս առթիվ գրեց մի շարական։ «1280 Թվին» գրեց Կանոնք Ս. Գրիգոր վանից Երզնկայի։ «1281 Թվին» անցավ Կիլիկիա, Երուսաղեմ ուխտի գնալու համար, և ներկա եղավ արքայազուններին ասպետ ընտրվելու հանդեսին, ուր մի ճառ էլ խոսեց։ Այս առթիվ ման է եկել Կիլիկիոյ նշանավոր եկեղեցիները և շատ տեղ գեղեցիկ ճառեր է խոսել։ Սրանցից մեկն է «Յորդորակ ասացուածի եկեղեցւոյ», որ խոսել է Կոռիկոսում (մի մասը հրատ. Սիսուան 343)։ Ծերության ժամանակ քաշվեց Արտազի Ծործոր գյուղի Թադէոս առաքյալի վանքը։ Մասնակցեց Ադանայի կրոնական ժողովին, որ գումարել էր Օշին Թագավորը։ Երբ Ունիթոռները եկան Հայաստան, Երզնկացին սովորեց լատիներեն և

հայերէնի թարգմանեց Թովմա Ակուինացու մի գործը 1325թ։ Թադէի վանքը երկրաշարժից կործանվելով, երեւի Երզնկացին գնաց Հաղբատ, ուր մնաց մինչև իր մահը, որովհետև իր գերեզմանը գտնվում է Հաղբատում (Տաշեան՝ Ցուց. 984 բ)։ [Սակայն Թորոս աղբ. Բ. 50 կարծում է, որ Երզնկացու գերեզմանը գտնվում է Երզնկա քաղաքի Ս. Նշան եկեղեցում, որին հավատում է նաև Ագգապ. 1800]։ Իր թողած գրական գործերն են՝ 1) Յաղագս երկնային շարժուց (արձակ), որ գրել է ի խնդրոյ Վախթանկ իշխանի և հորդորմամբ Հաղբատի Յովհաննէս Դ եպիսկոպոսի։ 2) Նույնը ոտանավոր՝ ի խնդրոյ Ապլոց իշխանի, 1284 թ. (Պլուզ տեղյակ է որ բևեռում մի տարին մի օր ու գիշեր է լինում. այս մասին տես Լ. Սիմյոնովի հոդվածը՝ Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 73)։ —3) Մեկնութիւն Մատթէոսի Աւետարանի (Զարբ. Հին դպր. 633, 765, Ալիշան՝ Շնորհ. էջ 118—9), որ Ներսէս Շնորհալու կիսատ աշխատութեան շարունակությունն է. գրել է «1316 թ».—4) Համառօտ մեկնութիւն Սաղմոսի, որ քաղել է Ն. Լամբրոնացու համանուն գործից (Ձեռ. Վիեննա. Բ. 1163).—5) Խրատ և կանոն հասարակաց քրիստոնէից կամ Գիր կանոնական (Շողակաթ Ա. էջ 37—38, Ձեռ. Վիեննա. Բ. 353,773, Ձեռ. Հալէպի, Ա. 346 ա (Յոհաննիսի վրդ. Երզնկացոյ անունով).— 6) Պատճառք աւուրց արարչութեան (?).—7) Համառօտ պատմութիւն յԱդամայ մինչև Մովսէս.—8) Խրատ մանկտաւագաց.—9) Մեկնութիւն քերականի, որ գրել է Հեթում Բ թագավորի համար և նվիրել նրան «1293 թ.» (Սիսուան 549).— 10) Բառն ճառ կամ քարոզ, որոնց վերնագրերը տես Զարբ. Հին դպր. 762—3.—11) Ներբող Լուսաւորչի. —12) Մեկնութիւն Դանիէլի մարգարէի (1316 թ).—13) Մեկնութիւն պատարագի. —14) Լուծմունք Փիլոնի (Զարբ. Թրգմ. 747). —15) Պատմութիւն Հռիփսիմեանց, որ համառոտել է Խորենացուց (Հայաղ. 36)։ Ունի նաև Առակներ, գրված 1316 թվին (տես Տաշեան, Ժողովածույք առակաց Վարդանայ, էջ 17, ըստ Մառ), Հանելուկներ (մի նմուշ տես Ձեռ. Մաղն. 13), Աղօթք (տես Թորոս աղբ. Բ. 396), Տաղեր (մի նմուշ տպ. Յովհաննեան, Միջն. ազգ. տաղչ. Վիեննա 1911, էջ 17), Շարականներ (հատկապես Շարական Մեծին Ներսէսի, և Խոտաճարակաց «յաւուրս վերջինս» շարականը՝ Թէւ. գր, էջ 427, որի ծայրանունն է «Յոհաննիսի է երգս»)։ Խմբագրել է Անանիա Սանահնեցու, Խոսրովիկ Թարգմանչի և Սարկաւագ վարդապետի գործերը։ Դարանաղցին (էջ 305) պատմում է թե Կիլիկիա եղած ժամանակ, Երուսաղէ-

միջ դարձին, գնացել է տեսութիւն Յակոբ կաթուղիկոսի, որ պահել է նրան իր մօտ և խնդրել է իր աշակերտներին դաս տալ Թերականը։ Սրանից հետո խնդրել է նաև, որ հայ գրականությունը ուրիշ գործերով էլ հարստացնի. նա էլ լսելով նրա խորհուրդը, երբ Երզնկա է վերադարձել, Սեպուհ լեռան Ս. Մինասի վանքն է քաշվել, ուր շատ մեկնութիւններ է գրել։ Գլուզի արտագրած ձեռագիրներից մեկն է Յովհաննու Աւետարանչի զանազան մեկնութիւններ 1306 թ. (Շողակաթ 210), թերևս և մի Աստուածաշունչ՝ Եսայի Նչեցու համար, 1318 թ. (Շողակաթ 211)։ Իր ինքնագիր մի ձեռագրի մասին տես Յուշիկք Բ. 472, 487 և Ջեռ. կարին. 158։ Հաճախ հիշատակվում է Գլուզի մի հատվածը, որ հայոց դավանանքի գովասանքն է՝ անկեղծ սրտից բխած.—«Վասն զի ուղղափառ հաւատոյ քո լոյս, ով եկեղեցի հայոց, ոչ նուաղեցաւ. ի բարի սերմանս ցորենոյդ՝ որոմն ոչ խառնեցաւ. ղաղբիւր յստակ աւանդութեանց քոց՝ աղտաղտաւէ ջուր օտարոտի ուսմանց ոչ պղտորեաց. ի ստուգութեան և ի ճշմարտութեան հացն քո կենդանական՝ մեռելական խմոր և հերձուած քացախութեան չարութեանն ոչ զանգեցաւ. յոսկի անբիծ հաւատոյն և յարծաթ լուսատեսիլ բանին՝ պղինձ ժանգահոտ և կապար սևաթոյր ոչ գտաւ»։—Պատմում են թե քարոզել է Անիում, բայց Անեցիք ծաղրել ու խայտառակել են նրան. որի վրա զայրանալով Յովհաննէսը անիծել է և քաղաքը երկրաշարժից կործանվել է «1319 թ» (Աբր. կրետ. 105—8, Յուշիկք Բ. 490)։ Հավանաբար մեռել է «1326 թ»։—Յովհաննես՝ Երզն. երկն. յոջ. Երզն. լս. 83. Փիլ. այլար. յիշ.=Զարբ. Թրգմ. 745. Խարվկ. էջ 1,2, Ճշ. 18. Վրդ. աշխ. 518. Տաթև. հարց. 638, Շար. (սկիզբը հիշված իբր հեղինակ). Յկ. կր. 12. Դրնղ. 305, 416.—Գլուզ Երզնկացին՝ Տաթև. հարց. 271, Յկ. կր. 13.—Յոհան՝ Երզն. մաթ. 107.—սեռ. Յոհաննու՝ Երզն. մաթ. 107. Ճշ. 208.—Յոհաննիսի՝ Երզն. երկն. ոտ. Երզն. երկն. յոջ. Երզն. պտճռ. 82. Ճշ. 18 (երգի սկզբնատառերը).—տես և Տաշեան, Ցուց. 1126 ա. Զամչ. Գ. 271—4, Սիսական 131, Սիսուան 241 բ, 254բ,. Զարբ. Հին դպր. 754—67, 778—9, Թրգմ. 275. Հայապ. 509—515, Յուշիկք Բ. 471—493. Իր գրած շարականների մասին տես Պարականոն շար. էջ 51,75 և էջ 196 բ ցանկը և Դրնղ. 399—400։

— 484. Յոհաննէս գրիչ (Կիլիկեցի). հայրն է Պետրոս. եղբայրներն են Թորոս և Կիրակոս կուսակրոն քահանա։ Վերջինս միջնորդ եղավ և Յովհաննէս գրիչը Թանգեր տիկնոջ համար

գրեց ու կազմեց մի Աւետարան՝ ի հիշատակ սրա հանգուցեալ հօր Ալիծի, 1327 թ. Այս թվին Կիրակոսը որդեն մեռած էր, ինչպես երևում է գրչի հիշատակարանի պակասավոր տողից, որ պետք է լրացնել այսպես. «նաև զհանգուցեալ եղբ[այր]ն իմ Կիւրակոս կուսա]կրաւն քահանայ»: Ըստ այսմ լրացնել Կիրակոս № 56:—Ձեռ. Հալէպի, Ա. 396—7:

— 485. Յովհաննէս Արճիշեցի Ոսպնակեր. Բաջբերունեաց գավառից, աշակերտ Ներսէս Գլաձորեցու, դասընկեր Մխիթար Սասնեցու և Եսայի Նչեցու. 17 տարի հաց չկերավ և միայն թըրջած ոսպով էր ապրում: Ներսէս Գլաձորեցուն աշակերտել է 1280 ական թվերին: Գործել է Մխիթար Սասնեցու հետ Բաջբերունեաց գավառում: Գրել է Մեկնութիւն պատարագի, որ համառոտված է Խոսրով Անձևացու և Ներսէս Լամբրոնացու համանուն գործերից: Ունի նաև «Բան վասն երից կարգաց» անունով մի դրվածք: («Մեկն. պատարագի» գրքից մի ձեռագիր գտնվում է Հալէպում. հրատ. Սիւրմէեանը՝ Արճիշեցուն և նրա երկին անծանոթ լինելով՝ կարծում է գրիչ 1687 թվից!!! (տես Ձեռ. Հալէպի, Ա. 215 ա, 216 բ): Մահվան թվականը հայտնի չէ. Հ. Ն. Սարգիսեան, Տեղագր. 268 Արճէշում գտել է մի դամբան «Յովհաննէս վարդապետի» † 1327 թ. և կարծում է թե Ոսպնակերինն է:—Յհ. արճէշ. էջ 7. Մ. մաշտ. 336 բ. Յայսմ. փետր. 11.—սեռ. Յովհաննու Արճիշեցւոյ՝ Պարգ. 513.—Յովհաննիսի՝ Յհ. արճէշ. էջ 5:—Տես նաև Յովսէփեան՝ Մխիթ. Սասն. էջ 13, Զարբ. Հին դպր. 768, Գաթըրճեան՝ Պատարագմ. 508—518:

— 486. Յովաննէս, հայր Աստուածատուր երէցի, որ օրինակեց Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 460):

— 487. Յովհաննէս, որդի Ստեփաննոս քահանայի. աշակերտ Ներսէս անապատական քահանայի. գրիչ. իր քեռորդի Ներսէս վարդապետի համար օրինակեց Մանրուսմունքը՝ 1328 թվին.—Manus. brit. mus. 87 ա:

— 488. Յովհաննէս աբեղա Կարեր. Ստեփաննոս կրոնավորի խնդրանոք գրեց, ծաղկեց ու կազմեց մի Շարական 1329 թ.—Տաշեան, Ցուց. 496—7:

— 489. Յովհաննէս քահանա, եղբայր Ներսէսի, որ Փոսի վանքում օրինակեց Աւետարանը, 1329 թ. այս թվին Յովհաննէսը որդեն մեռած էր.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 518):

— 490. Յովաննէս քահանա, հայր Հայրապետ գրչի, որ

Փոքր անապատում (Կիլիկիա) օրինակեց «Սանդուղք աստուածային ելից», 1329 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 86 բ։

— 491. ՈՀԱՆՆԷՍ եղբօրորդի նույն Հայրապետ դպրի, որ օրինակեց «Սանդուղք աստուածային ելից», Փոքր անապատում (Կիլիկիա), 1329 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 86 բ։

— 492/3. ՅՈՎԱՆՆԷՍ, երկու համանուն քահանաներ, որոնց հիշում է Գրիգոր գրիչը, որ օրինակեց Ոսկեբերանի Մեկնութիւն Մատթէի, Ակներ 1329 թ.—Սիսուան 155 բ։

— 494. ՅՈՎՀԱՆՆԷՍ քահանա, հայր Սարգիս քահանայի, որ Բղնունեաց Աղէթ գյուղում ստացավ մի Աւետարան 1330 թ.—Ձեռ. Թաւր. 2 ա։

— 495. ՅՈՎԱՆԷՍ գրիչ. օրինակեց Աւետարանը նույն Սարգիս քահանայի համար Բղնունեաց Աղէթ գյուղում 1330 թ.—Ձեռ. Թաւր. էջ 2 բ։

— 496. ՅՈՎՀԱՆՆԷՍ վարդապետ Կիլիկեցի. ունիթոռական միաբան Քռնիի վանքի 1330 թ.—Ձեռ. Ներս. 32 բ։

— 497. ՅՈՎՀԱՆՆԷՍ Ծուանեցի, աշակերտ Եսայի Նչեցու, գնաց աշակերտելու Բարթուղիմէոս լատին եպիսկոպոսին և դարձավ ունիթոռական վարդապետ, միաբան Քռնիի վանքի «1330 թ».—Սիսական 384 ա, Ձեռ. Ներս. 32 բ. Ազգապ. 1845։

— 498. ՅՈՎՀԱՆՆԷՍ քահանա. գրիչ. օրինակեց Ճաշոցը Ապահունեաց գավառում, 1331 թ.—Ֆ. Մուրատ, Յայտ. յովհ. էջ մըը։

— 499. ՅՈՎՀԱՆՆԷՍ քահանա, գրել տվեց Մանրուսմունքը՝ Կարապետ քահանային՝ Անդրէասանց անապատում, 1331 թ.—Սիսուան 150 ա։

— 500. ՅՈՀԱՆՆԷՍ, միաբան Արգելանի վանից. գրիչ. ծերացյալ հասակում, վանքի առաջնորդ Վարդան արքեպիսկոպոսի հրամանով օրինակեց Մաշտոցը, 1331 թ.—Manus. brit. mus. 58 բ, 59 բ>Ակինեան, Գուղնդիրք 56 (նույնը կոչում է Գիրք ձեռնադրութեան)։

— 501. ՅՈՎՀԱՆՆԷՍ վարդապետ. (գրված ՅՈՀԷՍ). հանգանքի համար արգելափակված էր Մոլևոնի դղեկում՝ Կոստանդին (№ 128) վարդապետի հետ (որ տես), 1331 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 126 բ։

— 502. ՅՈՎՀԱՆՆԷՍ վարդապետ, այլ (գրված ՅՈՎԷՍ). տես Կոստանդին № 128։

— 503. ՅՈՎԱՆԷՍ ոմն, Փոքր Ուռս գյուղում, Ընձանեաց Ս. Աստուածածին վանքում, Աստուածատուր քահանային գրել ավեց մի Աւետարան 1331 թ.—Ձեռ. Վասպ. 176։

— 504. Յովան *Թմնակահցի, ազգական Ներսէս վարդապետ Սամնեցու, նվիրատու ձեռագրի, 1332 թ.—Հայապ. 546։*

— 505. Յովհաննէս *Կաղզուանցի, նախապես աշակերտ Եսայի Նչեցու, գնաց աշակերտեց Բարթուղիմէոս լատին եպիսկոպոսին, դարձավ ունիթոռական, միաբան Քռնիի վանքի և վարդապետ «1330 թ». մասնակցել է Քռնիի եկեղեցական ժողովին 1332 թ.—Սիսական 384 ա, Ազգապ. 1845, Այրարատ 54։*

— 506. Յովհաննէս *քաջ, որդի Ջեսարի Օրբելեանց, որ շինեց Վայոց ձորի հոգետունը (Սելիմի քարվանսարա) 1332 թ.—Սիսական 164։*

— 507. Յովհաննէս *քահանա. օգնել է Դաւիթ գրչին գրելու Ս. Գիրքը՝ Գլաձոր 1332 թ.—Հայապ. 548։*

— 508. Յովհաննէս *Մշեցի, միաբան Գլաձորի վանքում. հոգևոր եղբայր Ներսէս վարդապետ Սամնեցու, որին միջնորդ լինելով՝ վարձեց երկու գրիչ՝ արտագրելու համար Գայլեձորի վանքում Աստուածաշունչը 1332 թ.—Հայապ. 546, Զարբ. Թրգմ. 148, Ձեռ. Վեննա. Ա. 126։*

— 509. Յովհաննէս *քահանա, սպասավոր բանի, աշակերտ Տէր Ստեփանոսի. ունէր մի օրինակ Երեմիա, Եզեկիէլ և Դանիէլ, որ արտագրության համար տվեց Եփրեմ գրչին, Գայլեձորի վանքում, 1332 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 127։*

— 510. Յոհաննէս *քահանա, որդի Վարդերեսի. մերձավոր Առլեր տիկնոջ, որ Երուսաղէմում, հարապետ երեցին գրել տվեց մի Ճաշոց, 1333 թ.*—REA *10, 56։*

— 511. Յանէս Իրիցանց *(Յովհաննէս Երիցանց), ջանցլեր կամ պետական քարտուղար Լևոն Ե թագավորի. ստորագրում է այն պարգևագրին, որ տվեց Լևոն Ե-ը Սիկիլիացի վաճառականներին, 1331 թ. հիշված է նաև 1333 թ.—Սիսուան 363, 365, 485 բ, Հայապ. 537, 539։*

— 512. Յոհաննէս, *վերատեսուչ Գլաձորի վանքի 1334 թ.—Թորոս աղբ. Բ. 375 (իբրև ժամանակակից Եսայի Նչեցու, նրա վերջին տարիներում)։*

— 513. Յովանէս, *որդի ոսկերիչ Անպէտի, որ մեռնելով՝ Պօղոս քահանան որդեգրեց նրան, 1334 թ.—Ձեռ. Վեննա. Ա. էջ 698։*

— 514. Յովհաննէս *վարդապետ Սսեցի. վայելչաբան հեղինակ. հիշված է 1335 թ.—Սիսուան 61 ծան։*

— 515. Յովհաննէս *եպիսկոպոս. եղբայր Հասան Ս. իշխանի*

Խաչենեցոյ, որդի Ղարա-Գրիգորի. շինել է Գետամէջի և Խաթրայ վանքերը († 1335 թ).—Բարխուտ. Արցախ 206—7, Պատմ. Աղուանից, Ա. 136։

— 516. **Յովհաննէս** քահանա Խոզկերտ գյուղի (Կիլիկիա). Բարսեղ քահանայի (№ 56) և ուրիշների հետ միասին գնեցին Ալեքս միակեցին և նրա ծախսով Սիմէոն գրչին գրել տվին մի Ճաշոց 1335 թ.—Սիսուան 119 ա։

— 517. **Յովհաննէս** Դ, իններորդ առաջնորդ Հաղբատի (1257—1334 թ). Դոփեան տոհմից, կրտսեր եղբայրն էր Հասան Բ-ի (№ 52), որի որդին է Գրիգոր Բ Բարի (№ 418), ամուսնացած Տարսայիճ Օրբելեան իշխանի դուստր Ասփայի հետ։ Յովհաննէսը հաջորդեց Համազասպին (№ 38), 1257 թվին։ Նշանավոր շինարար անձ է եղել և շարունակել իր նախորդի գործունեությունը. ինքն է շինել Խաթրավանքի եկեղեցին, խաչերով և գրքերով հարստացրել, այգիներով ապահովել և հանձնել իր եղբոր՝ Հասանին, 1204 թ. (Արցախ 194, ուր այս թիվը սխալ է. կա և մի արձանագրություն Արցախ 195, բայց չունի թվական)։ Ինքն է կանգնեցրել Հաղբատի Ամենափրկիչ խաչարձանը 1273 թ. շինել է մատենադարան, մի լիճ են։ Իր հորդորով գրեց Երզնկացին «Յաղագս երկնից» 1284 թ. (Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 6 բ և 67). ընդօրինակել է Վարդանի Մեկնութիւն Հնգամատենի գործը 1296 թ. (անդ 69)։ Ստորագրում է Օրբելեանի Թղթին՝ ուղղված Գրիգոր Է Անաւարզեցի կաթողիկոսին՝ 1299 թ. (Օրբ. կը)։ Հաղբատի առաջնորդության ժամանակ այցելեց իր հայրենի Ծար գյուղը՝ իր ավագ եղբոր Հասանի մոտ։ Հավանելով այդ ջրաշատ ու գեղեցիկ վայրերին, մի բլրի վրա հիմնեց Ծարի Ս. Աստուածածին եկեղեցին՝ 1301 թ. (Շահխաթ. Բ. 364 և Արցախ 407), որ հանձնեց իր Գրիգոր Բ Բարի եղբորորդուն։ Այս առթիվ թողել է մի ընդարձակ արձանագրություն նույն 1301 թվից (Արցախ 407)։ Հիշված է նաև Ասփայի արձանագրության մեջ (Շահխաթ. Բ. 362, Արցախ 194)։ Մեռել է 1334 թ. և իր գամբանը գտնվում է Դադիվանքում (Խութավանքում) (Արցախ 306)։—Կնիք հաւ. յոլ. 112. Չեռ. Մագն. 17. Արցախ 206. Հայապ. 471. Կրպտ. եպս.՝ Դոփեանք 59, 66, 67, 69—71. Շողակաթ Ա. 27. հիշված է նաև 1267 թվի մի հիշատակարանում՝ Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 156 և Շողակաթ 202։ Նույն է նաև № 337։

— 518. **Յովանէս** աբեղա Լիկանդացի, թուղթ էր կոկում

Ներսէս աբեղայի համար, երբ սա օրինակում էր Ճառընտիրը՝ Երուսաղէմ 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 349։

— 519. Յովանէս քահանա, ապրում էր Երուսաղէմի Ս. Սիոնում, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 520. Յոհանէս աբեղա, եղբայր Թորոս քահանայի. ապրում էին Երուսաղէմի Ս. Սիոնում, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 521. Յովանէս միակեց, քեռի Ներսէս Կրակացի աբեղայի, որ օրինակեց Ճառընտիրը, Երուսաղէմ 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 347 և Ա. 149, 150։

— 522. Յոհաննէս աթոռակալ Երուսաղէմի, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 347։

— 523. Յովհաննէս վարդապետ, գտնվելով Դերջանում, ականատես և ականջալուր եղավ Ամենաւագ Դերջանցու նահատակութեան և գրեց նրա վկայաբանութիւնը, որ և անցավ Յայսմաւուրքի մեջ, 1335 թ.—Նոր վկ. 132։

— 524. Յովհաննէս Շապաթեփեցի, գրիչ. օրինակել է Վարք Հարանցը, Երուսաղէմ 1336 թ.—Զարբ. Թրգմ. 553։

— 525. Յովհաննէս կրոնավոր, քեռի Մարկոս հայրապետի, որ Խիզանում Յովաննէսի գրչին գրել տվեց Աւետարանը 1336 թ.—Ձեռ. Վասպ. 194։

— 526. Յովանէս, որդի Մկրտիչ քահանայի. գրիչ. Խիզանում, Մարկոս հայրապետի համար գրեց մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 193—4։

— 527. Յովհանէս քահանա, կինն է Մամախիկին. ծնողներն են Բարսեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գյուղում գրեց մի Աւետարան 1336 թ։—Ձեռ. Վասպ. 191։

— 528. Յովանէս, մերձավոր Ստեփաննոս եպիսկոպոսի, որ Խորձեանում օրինակեց Աւետարանը 1336 թ.—Նաթանեան, Արտօսր Հայաստանի 152։

— 529. Յովհաննէս, միաբան Խորձեանի Խլպաշի վանից, 1336 թ.—Նաթանեան, Արտօսր Հայաստանի 152։

— 530. Յովհաննէս կուսակրոն քահանա, եղբօրորդի Սարգիս մետրապոլիտի Սիւնեաց. այս երկուսի համար էր որ Աւագ գրիչը գրեց մի Երգարան, 1337 թ.—Ձեռ. Բեռլինի, 26 բ։

— 531. Յովհաննէս սարկավագ, կազմարար. կազմել է Աստուածաշունչը Յակոբ կաթուղիկոսի համար 1338 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 11։

— 532. Յովհաննէս *կրօնաւոր Սեբաստացի, իր եղբայրների հետ միասին շինել է Երիմի Ս. Խաչ կամ Ս. Նշան վանքը 1338 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 324, Ստեփանէ՝ Ղրիմի Ս. Խաչ վանքը 4,* Кугук—Иоаннесов, Стар. арм. над. 40. *Նոր վկ. 346 (սխալվում է Ազգապ. 2218, որ կարծում է թե այս Յովհաննէս Սեբաստացին* շինել է *Աւետիք նահատակի տաղը ըստ Նոր վկ. 346)։*

— 533. Յովհաննէս *Հռոմայրեցի, գրիչ, որին Եսայի Նչեցին (1284—1338 թ) օրինակել տվեց Դիոնեսիոս Արիսպագացու ձեռագիրը.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 70։*

— 534. Յովանէս, *որդի Առաքել գրչի, որ Մոկաց Դաշտ գյուղում օրինակեց Աւետարանը 1338 թ.— Ձեռ. Վասպ. 198։*

— 535. Յովանէս *քահանա, հօրեղբայր նոյն Առաքել գրչի։*

— 536. Յովհաննէս *սարկավագ. կազմեց այն Աստուածաշունչը, որ Յակոբ գրիչը և Սարգիս Պիծակը օրինակեցին Յակոբ Բ կաթուղիկոսի համար, 1338 թ.—Շողակաթ 203։*

— 537. Յուհաննէս! *վանահայր և առաջնորդ Արծկոյ վանք անապատի 1338 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 73 ա։*

— 538. Յովան *քահանա, գրիչ. Արծկոյ վանք անապատում, Հայրապետ կուսակրոն աբեղայի համար օրինակեց Աւետարանը 1338 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 73 ա։*

— 539. Յովհաննէս *Սսեցի, «աշակերտ բանի», սովորել է Մեծ Հայքում, Եսայի Նչեցու († 1338) և Մխիթար բաբունապետի մօտ—Սիսուան 517 ա։*

— 540. Յոհաննէս *գրիչ. Երուսաղէմում գրեց ու կազմեց մի Աւետարան 1339 թ.—Ձեռ. Վասպ. 198։*

— 541. Յովհաննէս, *առաջնորդ Մշու Ղազարավանքի 1339 թ.—Ձեռ. Վասպ. 201։*

— 542. Յովհաննէս *կրօնավոր, որդի Ներսէս քահանա գրչի. մեռած էր 1340 թ.—Տաշեան, Ցուց. 499։*

— 543. Յովհաննէս *Ծօպին, պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Վարդան Արեելցուն և գահակալեց 1332—1341 թ. (Աղաւնունի). հիշված է 1335 թ. Ձեռ. Վենետ. Բ. 347։*

— 544. Յովհաննէս, *գրիչ. օրինակել է Գանձարանը՝ 1341 թ.—*Manus. bibl. nat. *էջ 37։*

— 545. Յովհաննէս, *ծաղկող. նկարազարդեց մի Շարական՝ ծախիւք Աստուածատուր քահանայի, 1341 թ.—*Manus. bibl. nat. *էջ 32։*

— 546. Յովհաննէս, *քահանայ Սսոյ Ս. Աթանագինէ եկեղեցու, 1342 թ.—Սիսուան 223 բ։*

— 547. Յովհաննէս *քահանայ, Գրիգորիս քահանայի հետ միասին, Աբրահամ քահանայի պատվերով՝ Երզնկայում օրինակեց Տոմարը, 1342 թ.—Աբրահամեան, Շիրակացու մատեն. 122։*

Յովհաննէս—Ջիւան, *թագավոր Կիլիկիոյ. տես Կոստանդին № 137։*

— 548. Յովհաննէս *ավագերեց Հեթումաշէնի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870։*

— 549. Յովհաննէս *ավագերեց Սսոյ, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870։*

— 550. Յովհաննէս *եպիսկոպոս Այասի. հիշված է 1342 թ. անդամ Սսի եկեղեցական ժողովի «1343 թ».—Սիսուան 395 ա, Ազգապ. 1869։*

— 551. Յովհաննէս *եպիսկոպոս կաթուղիկոսարանի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։*

— 552. Յովհաննէս, *այլ եպիսկոպոս կաթուղիկոսարանի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։*

— 553. Յովհաննէս *եպիսկոպոս Մաղարդու, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։ (Չամչ. Գ. 341 գրում է Մաշարդոյ)։*

— 554. Յովհաննէս *վանահայր Ակների վանուց. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Սիսուան 156 ա, Ազգապ. 1870։*

— 555. Յովհաննէս *վանահայր Բլրոյ վանից. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Սիսուան 66 ա, Ազգապ. 1870։*

— 556. Յովհաննէս *վանահայր Բելեզականի վանից, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870։*

— 557. Յովհաննէս *փիլիսոփա, ուսուցիչ Ներսէս սարկավագ գրչի, Սեբաստիա 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489։*

— 558. Յովհաննէս *վարդապետ կաթուղիկոսարանի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870։*

— 559. Յովհաննէս *եպիսկոպոս Կռակայ կամ Կռակեցի, Գուիտոն Լուսինեան թագավորի կողմից՝ երկու ապետների և Դանիէլ Փրանչիսկեան կրոնավորի հետ միասին դեսպան ուղարկվեց Ավինիոն պապի մոտ՝ ներկայացնելու համար հայոց դավանության թուղթը և օգնություն խնդրելու «1344 թ».—Դարդել 42, Սիսուան 319, 559 բ, Ազգապ. 1906։*

— 560. Յովաննէս «պարոն, այցելու որբոց և այրեաց», որդի Կիրակոսի, մայրն է Շողաթիկին, կինն է Թագուհի. Կարապետ կրօնավորին գրել տվեց մի Աւետարան 1344 թ։—Թորոս աղբ. Բ. 355։

— 561. Յոհաննէս որդի վերահիշյալ Կարապետ կրօնավոր գրչի 1344 թ։

— 562. Յովաննէս, որդի Իշխանի և հանգուցյալ եղբայր Մկրտիչ կուսակրոն քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Աւետարան, 1344 թ.—Ձեռ. Մեր.=ՀԱ 1926, 237։

— 563. Յովհաննէս արքեպիսկոպոս և աթոռակալ ս. առաքելոյն Բարթուղիմէոսի վանից Գողթան. Գրիգոր դպրին գրել տվեց մի Մաշտոց՝ 1345 թ.—Սարգիսեան, Քննադ. Մանդ. էջ 13, Սիսուան 223 ա, Հացունի՝ Կարևոր խնդ. 269։

— 564. Յովհաննէս Նաղաշ, ժահաեսի, կազմարար. Բաքերդում կազմեց մի հին Աւետարան, 1346 թ. որ ձեռք էր բերել Խոսրովշահ որդի Ումիկի.—ՀԱ 1926, էջ 344։

— 565. Յովհաննէս վարդապետ Քռնեցի, որ և Ծրա Յոհան. աշակերտ էր նախապես Եսայի Նչեցու. ապա Գոյլեձորից գնաց Մարաղայի լատին Բարթուղիմէոս եպիսկոպոսի մոտ «1328 թ», սովորեց լատիներեն, ընդունեց լատին դավանանքը և մտավ Թարգմանչաց կարգը։ Բարթուղիմէոսին բերավ Քռնի և նրա մահից հետո («1333 թ») եղավ նրա հաջորդը։ Գնաց Հռոմ և պապից ստացավ գավառական առաջնորդ տիտղոսը։ Մեծ ջանք գործ դրեց կաթոլիկությունը տարածելու համար Երնջակ գավառի հայոց մեջ։ Սրանով պատճառ դարձավ ազգային երկպառակության, կռվի ու գժտության։ Ինքն է հիմնել Քռնիի վանքը՝ օգնությամբ իր մորեղբայր գյուղապետ պարոն Գորգի և նրա կնոջ՝ Էլթիկի (1330 թ)։ Մեռել է «1348 թ»։ Ունի Քերականութիւն կամ Համառոտ հաւաքումն յաղագս քերականին։ Թարգմանել է լատիներենից «Յաղագս բնութեան և անձնաւորութեանց Քրիստոսի»։ Յակոբ Թարգմանին էլ թարգմանել է տվել Բարթուղիմէոս Բոլոնիացու գործերը լատիներենից հայերեն Քռնիում (Manus. bibl. nat. էջ 82, Ձեռ. Թուր. 96 ա)։—Զամչ. Գ. 326. Զարբ. Թրգմ. 275, Նոր մատ. 10—13, 199—202. Ազգապ. 1844. Ձեռ. Բերլինի 57 բ. Manus. brit. mus. 158—9. REA 10,43. հիշված է Ծախաքարի 1317 թվի արձանագրության մեջ՝ Սիսական 156, 374 և Նոտարք 192։

— 566. Յովաննէս, հայր Շապագինի, որ գնել և ազատել է

կալվածներ և նվիրել Անիի Առաքելոց եկեղեցուն 1348 թ.— Արձ. Շիրակ 63։

— 567. Յովաթէս *«գեղեցկատեսիլ և բարեպաշտ» որդի Շապադինի, նախորդի թոռը, որի հիշատակին եղել է նույն նվիրաբերությունը.—անդ։*

— 568. Յովհաննէս, *միաբան Հերմոնի վանքում. հիշում է նրան Մովսէս գրիչը (№ 64), որ նույն վանքում օրինակել է Նարեկը 1349 թ. ըստ Ձեռ. Կարին. 173 կամ 1350 թ. ըստ Սիսական 125բ։*

— 569. Յոհաննէս *աբեղա Սեբաստացի, «հռետոր և իմաստասէր», աթոռակալ Ստեփաննոսի, որ էր առաջնորդ Խրիմի, 1346 և 1350 թ.—Թորոս աղբ. Բ. 392, 427։*

— 570. Յովանէս *որդի Նորիկ Գանձակեցու, պատրաստվում էր քահանայության. հայրը գնեց նրա համար մի Աւետարան, 1350 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 388)։*

— 571. Յովհաննէս *Սեբաստացի. ստացավ «Տաղաչափութիւնք Ներսէս Շնորհալւոյ» 1351 թ.—Տաշեան, Ցուց. 1020։*

— 572. Յովհաննէս, *որդի Գրիգորիս քահանայի և հանգուցյալ եղբայր Ստեփանոս քահանա գրչի, որ Սուրխաթում (Խրիմ) Քրիստոսատուր կրոնավորի համար օրինակեց Աստուածաշունչը, 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7։*

— 573. Յովհաննէս *աբեղա, գրիչ. Երուսաղէմում օրինակեց մի Գանձարան—Տաղարան, 1354 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 199 (գրված է համառոտագրությամբ «յովս». հրատարակիչը կարդում է Յովհաննէս)։*

— 574. Յովհաննէս, *նշանավոր վարդապետ Խրիմում 1354 թ.—Զարբ. Թրգմ. 508։*

— 575. Յովհաննէս *քահանա, իր եղբոր Սիմէոնի հետ ստացել է մի Աւետարան, 1354 թ.—Շողակաթ 209։*

— 576. Յոհան, *որդի Մարգ քահանայի. մայրն է Տերանց. շատ դառնություններ է տեսել իր ազգականներից, «թափուր գտեալ և տրտմութեամբ հետամտեալ», բայց հաղթահարելով այդ բոլոր դժվարությունները, գտել է «աշխատութեամբ զկարգ ուսեալսն՝ քերթող վերագրեալ»։ Օրինակել է մի Աւետարան, բայց այդ միջոցին մեռել է իր սիրելի որդի՝ Մարգը, որի համար էլ ողբում է. «Գտայ յաւուրս յայս հարեալ և վիրաւորեալ սգով անփարատ։ Վասն զի թռաւ աղաւնիկն յաչաց իմոց և կորուսի զշառաւիղիկն իմ տղայիկն իմ զՄարգ... սգաւոր գրեցաք և լա-*

լով։ Յիշեցէք զիս մարթոյ աչաց լոյսն, զկորեալն սրով հրեշտակին, որպէս զծաղիկ նռան հարեալ ի կարկտէ, առ եղի ի գրի հողոյ ծանրիս։ Այսպիսի դառն ցավի ծանրության տակ ավարտում է իր աշխատությունը, 1355 թ.—Ձեռ. Վասպ. 208—9 (տեղն անհայտ է)։

— 577. Յովհաննէս քահանա, վերջին ստացող Աւետարանի 1355 թ.—Ձեռ. Կարին. 17։

— 578. Յովհաննէս հայր Տիրատուրի, որ ստացավ Եսայի և Թուղթք Պօղոսի 1356 թ.— Տաշեան, Ցուց. 394։

— 579. Յոհան վարդապետ, որդի Գրիգոր քահանայի. Սուրխաթում Ստեփանոս դրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բերլինի, 4ա։

— 580. Յոհանէս ծաղկող. ծաղկեց այն Սաղմոսարանը, որ Վարդ քահանան գրեց Թեֆինի վանքում (Մերդին), 1356 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 188։

— 581. Յովհաննէս երեց Պետանց աքեղա (մի մարդ է), որ Սարգիս Բրտանցի հետ մի Աւետարան է ծախել Վարդանին, ստանալով 1 կով և 2 կապիճ հաց, 1356 թ.—Արցախ 261։

— 582. Յովանէս «զեռարոյս զաւակ» Թաթուլի, մերձավոր հարազատ (№ 79) գրչի, որ մահտեսի Հնդուի համար գրեց մի Աւետարան 1357 թ.—Ձեռ. Վասպ. 214։

— 583. Յովաննէս, որդի Վասիլի և հորեղբայր Աբրահամ քահանայի, որ Հոռմկլայի Ծակաղբիւր գյուղում ստացավ մի Աւետարան 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 613։

— 584. Յովանէս, որդի Գրիգորի և եղբայր Հնդուի (№ 1), որ եղավ Ս. Գէորգ զորավար վանքի առաջնորդ և գնեց նույն վանքի համար մի Աւետարան և այլ սուրբ գրքեր (1357 թ)։—Ձեռ. Վասպ. 213։

— 585. Յովանէս, եղբորորդի նույն Հնդուի, որ որդեգրեց նրան, բոլոր գրքերը նրան կտակեց և պատրաստեց քահանայության։—Ձեռ. Վասպ. 216։

— 586/7. Յովանէս, երկու համանուն կրոնավորներ նույն Ս. Գէորգ զորավար վանքում, 1357 թ.—Ձեռ. Վասպ. էջ 213։

— 588. Յովաննէս դպիր, որդի Սէթ քահանայի, Հոռմկլայի Ծակաղբիւր գյուղում, Փիլիպպոս եպիսկոպոսի հրամանով և Հեթում քահանայի ցուցումներով արտագրեց Աւետարանը, 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 612—3։

— 589. Յովանէս, քեռի Յակոբ սարկաւագ դրչի, որ օրինակեց Կիւրղի «Կոչումն ընծայութեան» գիրքը շուրջ 1358 թ.— Ձեռ. Թաւր. 28ա։

— 590. Յոհան, այլ քեռի նոյն Յակոբ սարկաւագ դրչի, որ օրինակել է Կիւրղի «Կոչումն ընծայութեան» գիրքը շուրջ 1358 թ.— Ձեռ. Թաւր. 28ա։

— 591. Յովհաննէս դրիչ. օրինակել է Նարեկը՝ 1358 թ.— Ձեռ. Կարին. 172։

— 592. Յովանէս կրօնաւոր, դրիչ. Հոնաց աշխարհի (Երիմ) նորաշէն Կօքսու քաղաքում գրեց, նկարեց և կազմեց Աւետարանը 1358 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 501։

— 593. Յովանէս, ամուսին Թանգխաթունի, որ գրել տուեց մի Աւետարան՝ Կարապետ կրօնաւորին, 1358 թ.— Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 563)։

— 594. Յոհաննէս, եպիսկոպոս Մէրտինի, 1360 թ.— Թորոս աղբ. Բ. 381։

— 595. Յոհաննէս [illegible], մեծաւոր Սանփաննոսի, որ ստացաւ Արճէշ գրուած մի ժողովածու, 1360 թ.— Քոսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 83։

— 596. Ովանէս, որդի Թագւորի, եղբայր Զաքարիա կրօնաւորի, որ Անապատիկ գիւղում օրինակել է Մեկնութիւն Պատարագի, 1361 թ.— Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1912, 57)։

— 597. Յովհաննէս վարդապետ Սեբաստացի, ստացաւ Դիոնիսիոսի գործերը Սուրխաթում, 1362 թ.— Ջարբ. Թրգմ. 389.— հավանաբար նոյն է № 599։

— 598. Յոհան, մեծաւոր Ներսէս վանահոր, որ Երուսաղէմում օրինակել տուեց Աստուածաշունչը 1363 թ. — Ձեռ. Վատ. 18։

— 599. Յոհանէս կրօնաւոր Սեբաստացի, որդի Պարոնշահի, գրել տուեց Սանփաննոս քահանային Դաւթի Սաղմոսը, Ղրիմի Սուրխաթ քաղաքում, 1363 թվին.— Manus. brit. mus. 248ա.— Հավանաբար նոյն է № 597։

— 600. Յովհաննէս եպիսկոպոս, առաջնորդ Կեչառուի 1364 թ.— Այրարատ 267։

— 601. Յովհաննէս Թագաւորազան, առաջին եպիսկոպոս Իլվովի. ծնունդ ստացաւ Մեսրոպ Արտազեցուց «1365 թ».— Ազգաբ. 2175։

— 602. Ոհաննէս կրօնաւոր, եղբայր Սանփաննոս կրօնա-

*վոլի, երկուսն էլ միաբան Աղթամարի, 1366 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 846։*

— 603. ՈՀԱՆ *կրօնաւոր, միաբան Աղթամարի Ս. Խաչ վանքի, 1366 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 846 (տարբեր է նախորդից)։*

— 604. ՅՈՎՀԱՆՆԷՍ *եպիսկոպոս Անւոյ. օրինակել է Աստուածաշունչը՝ նախ քան 1368 թ.—Տաշեան, Ցուց. 253, 259—260։*

— 605. ՅՈՀԱՆՆԷՍ *գրիչ, օրինակել է Տօնապատճառը, 1368 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 1162։*

— 606. ՅՈՎՀԱՆՆԷՍ *կրօնաւոր, օգնական գրիչ Լուծմանց Դաւթի, 1370 թ.—Տաշեան, Ցուց. 757։ Տես և № 608։*

— 607. ՅՈՎՀԱՆՆԷՍ *քահանա, որդի Սիմէոն գրչի, 1370 թ.—Տաշեան, Ցուց. 757։*

— 608. ՅՈՎՀԱՆՆԷՍ, *օգնեց Յովհաննէս գրչին արտագրելու համար «Դաւթի Լուծմունք ճառից Աստուածաբանի» 1370 թ.—Տաշեան, Ցուց. 757։ Տես և № 606։*

— 609. ՅՈՀԱՆ *սիր, մեռավ Լիպարիտ զորավարի հետ Թուրքերի դեմ պատերազմում 1370 թ.—Թլկր. 56։*

— 610. ՅՈՎՀԱՆՆԷՍ *որդի նույն Լիպարիտ զորավարի, որ մեռավ Սսի կամուրջի վրա՝ Թուրքերի հետ պատերազմում 1370 թ.—Թլկր. 54։*

— 611. ՅՈՀԱՆՆԷՍ *սարկավագ, որդի Թադէոս քահանայի, որ հիւրընկալեց Տարօնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսին, երբ սա պանդխտել էր Երզնկա, 1370 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 780։*

— 612. ՅՈՎԱՆԷՍ, *որդի Աստուածատուր երեցի, որ Երզնկայի Թլակ ավանում Տարօնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսից գնեց մի Աւետարան, 1370 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 780։*

— 613. ՅՈՎԱՆՆԷՍ *Ալինախ, որդի Ներսէսի, եպիսկոպոս Տարօնի Ս. Կարապետ վանքի. այլազգիների նեղութիւնից հեռացավ Երզնկայի Թլակ ավանը, ուր իր պարենը հայթայթելու համար գրեց մի Աւետարան, ծախեց, ոսկեց ու կազմեց և վաճառեց Աստուածատուր երեցին, 1370 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 779։*

— 614. ՅՈՎՀԱՆՆԷՍ *տպետ, Գենուացի, ազգաւ հայ. սրա որդին է Մանուէլ Թարգման, որ Մարիամ Թագուհու կողմից դեսպան գնաց Նէապոլիս՝ Սսի Յովհաննէս արքեպիսկոպոսի հետ 1371 թ.—Միսուան 560ա։*

— 615. ՅՈՎՀԱՆՆԷՍ *արքեպիսկոպոս Սսոյ և առաջնորդ Դրազարկի վանուց, Մարիամ Թագուհու կողմից, Մանուէլ Թարգմանի հետ դեսպան գնաց Հռոմի պապի մոտ՝ Կղեմէսոյ համար*

ադնութիւն խնդրելու «1371 թ».—Ջամչ. Գ. 358. Յուշիկք Բ. 513. Բասմաջեան՝ Լևոն 34, Ազգապ. 1929, Միսուան 560ա։ (Միսուան 234ա տված է թե դեսպանը գնացել է Տարենտայ իշխան Փիլիպպոսին, 1372 թ., ինչպես հիշատակված է Գրիգոր ԺԱ պապի թղթում)։

— 616. Յովանէս եպիսկոպոս Մելիտինոյ, հիշված 1372 թ.— Manus- brit. mus. 89բ։

— 617. Յովհաննէս քահանա. գնել կամ ստացել է Ջաջուռեան Վանենու Աւետարանը 1373 թ.—Բարխուտ. Արուանից երկ. 236։

— 618. Յովանէս, եղբայր Թորոս քահանայի, որ Ամիթում արտագրեց Աւետարանը՝ 1373 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 618։

— 619. Յովհաննէս եպիսկոպոս Անւոյ վիճակի. գրիչ. առաջնորդությամբ Բջնիի արքեպիսկոպոս Մանուէլի օրինակեց Աստուածաշունչը 1368—75 թ.— Տաշեան, Յուց. 259։

— 620. Տէր Յովհաննէս, մեռել է 1375 թ. Թաղված է իր գամբանը Հաղբատի Ս. Ամենափրկչի առաջ. թվում է Հաղբատի վանքի առաջնորդներից մեկը.— Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 44, Ազգագր. հանդ. Է, 406։

— 621. Յովանէս աբեղա, թվի թե գրիչն է այն Աւետարանի, որի գրիչն ու գրչության տեղը անհայտ է ըստ Լալայեանի, բայց գրության թվականն է 1375 թ։—Ձեռ. Վասպ. 223։

— 622. Տէր Յոհանէս, հորեղբայր Ներսէս երեցի, որ նրա խնդրանոք օրինակեց Թաւրիզում Նարեկը, 1377 թ.— Ձեռ. Դաղեան Ա. 54 բ։

— 623. Յովհաննէս, հայր նույն Ներսէս երեցի, որ Թաւրիզում օրինակեց Նարեկը, 1377 թ.— Ձեռ. Դաղեան, Ա. 55 ա։

— 624. Յովանէս որդի մուղտասի Հասանի, որ Մերդինում գնեց և ազատեց գերի ընկած մի Ճառընտիր, 1377 թ.— Ձեռ. Վեննա. Բ. 65։

— 625. Յովհաննէս վարդապետ, միաբան Ղազարու վանքից. գնել էր մի օրինակ Աստուածաշունչ, որ գրված էր 1332 թվին Գլաձորում և պահում էր Մշոյ Առաքելոց վանքում. մեռավ նախ քան 1378 թ. իր հորեղբայրն է Փօղոս կրոնավոր, որ նորոգել տվեց նույն Աստուածաշունչը՝ 1378 թ։— Ձեռ. Վեննա. Ա. 127. Հայաստ. 548։

— 626. Յովանէս գրիչ. նույն Փօղոս կրոնավորի պատվերով կազմեց Մշու Առաքելոց վանքին պատկանող այդ Աստու-

ծաղունչը և այս դէպքը հիշատակագրեց 1378 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 128, Հայապ. 548։

— 627. Յովհաննէս սարկավագ, միաբան Ղազարու վանից. որդեն մեռած էր 1378 թ.— Հայապ. 548։

— 628. Յովհաննէս գրիչ. օրինակել է մի Աւետարան 1378 թ.— Տաշեան, Ցուց. 692։

— 629. Յովհաննէս, արքեպիսկոպոս Անաւարզայի 1174—79 թ.— Միսուեան 241 ա։

— 630. Յովհաննէս կրոնավոր, քեռորդի Տիրացուի, որ առաջնորդն էր Մոկաց գավառի Կանաց վանքի և Նահապետ գրչին գրել տվեց Եսայեայ մարգարեությունը, 1380 թ.— Ձեռ. Մեր. (ՀԱ 1923, 73)։

— 631. Յովհաննէս (Սեբաստացի), որդի Մահնի, արքեպիսկոպոս Խրիմի 1362 թ. դեռ կենդանի էր 1380 թվին.— Manus. bibl. nat. էջ 62։

— 632. Յովհաննէս (գրված կրճատ «ՅՀՍ») երեց, Նիկողայոս կրոնավորի համար օրինակեց Վարդանագիրքը (Եղիշէի պատմ.), Վան 1381 թ։— Թորոս աղբ. Բ. 334։

— 633. Յովանէս որդի Մկրտչի՝ եղբայր Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.— Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 849)։

— 634. Յովհաննէս որդի Վարդանի, ազգական նույն Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.— Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 850)։

— 635. Յովհաննէս, հայր Մարկոս գրչի, որ Կաֆա քաղաքում, Աստուածատուր քահանայի համար օրինակեց Գանձարանը, 1381 թ.— Manus. bibl. nat. էջ 37։

— 636. Յոհաննէս, գրիչ. Ոստանում արտագրեց Կիւրեղ Աղեքսանդրացու, Եփրեմի և Վարդան վարդապետի գործերը՝ Յովհաննէս և Կիրակոս վարդապետների հրամանով, 1382 թ.— Bodleian 165.

— 637. Յովհաննէս վարդապետ, միաբան Սպարկերտի Ս. Խաչ վանից. գրել տվեց նույն Յովհաննէս գրչին Կիւրեղի, Եփրեմի և Վարդանի գործերը՝ Ոստանում, 1382 թ.— Bodleian 165։

— 638. Յովհաննէս կրոնավոր, տվեց իր ձեռագիրը և օգնեց նույն Յովհաննէս գրչին օրինակելու Կիւրղի, Եփրեմի և Վարդանի գործերը, Ոստանում, 1382 թ.— Bodleian 165։

— 639. ՅՈՎՀԱՆՆԷՍ նորընծայ քահանա Կախմխի գիւղի, 1383 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 79ա։

— 640. ՅՈՀԱՆՆԷՍ, տանուտէր Կախմխի գիւղի, 1383 թ. —Ջեռ. Հալէպի, Ա. 79ա։

— 641. ՅՈՎՀԱՆՆԷՍ վարդապետ. պատանեց Մաղաքիա Ղրիմեցու մարմինը «1384 թ».— Ազգապ. 1970։

— 642. ՅՈՎԱՆԷՍ «մեծ րաբունապետ» Գողթն գաւառի Սինէական անապատի՝ 1385 թ,—Սմբատեանց՝ Երնջակ 177։

— 643. ՅՈՎՀԱՆՆԷՍ Դ Լեհացի, պատրիարք Երուսաղէմի. հաջորդել է Մկրտիչ Բ-ին 1378 թ. և գահակալել մինչև 1386 թ. (Աղաւնունի)։

— 644. ՅՈՎՀԱՆ Myre, ջամբռլայ հայոց թագաւորութեան 1386 թ.—Միսուան 485 բ։

— 645. ՅՈՎՀԱՆ de Tabarie, անվանական մարաջախտ հայոց թագաւորութեան ի Կիպրոս, 1387 թ.—Միսուան 485ա։

— 646. ՅՈՎՀԱՆՆԷՍ եպիսկոպոս Սիւնեաց, Լանկթամուրի բռնած գերիներից էր, որի համար հետևյալ առասպելն են պատմում— Խաչը մեջքից կապելով Ջրից անց կացավ. այս հրաշքի վրա Լէնկթիմուրը խոստացավ շնորհել նրան ինչ որ ցանկանար. նա էլ խնդրեց որ գերիներից ազատ թողնի այնքան մարդ, որքան կարող էր տանել մի փոքրիկ մատուռ։ Լէնկթիմուրը շնորհեց։ Բայց ով գերին որ մտնում էր մատուռը, դառնում էր աղաւնի, թռնում անցնում գետի մյուս երեսը և նորից մարդ դառնում։ Այս ձևով ամբողջ գերութիւնը ազատեց։—Վանքը կամ մատուռը այնուհետև կոչվեց Մարդաղաւնեաց։—Ջամչ. Գ. 881, Սիսական 41. Սմբատեանց՝ Գեղարքունի 436, Հայապ. 559։ (Թվականը պետք է դնել 1387 թ. քանի որ անցքը Սիւնիքի արշավանքի հետ է կապված)։

— 647. ՅՈՎՀԱՆՆԷՍ, իր Մարգարէ անուն որդուն տվեց Մովսէս քահանային իբրև հոգեորդի, ապա քահանա դարձնելու համար 1387 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 45,61։

— 648. ՅՈՎՀԱՆՆԷՍ դրիչ. Յուսիկի հետ գրեց «Առ որս և Դաւիթ անյաղթ» (նախ քան 1388 թիվը).—Տաշեան, Ցուց. էջ 764։

— 649. ՅՈՎՀԱՆՆԷՍ եպիսկոպոս, մականունը ՉՈՒԿԻ. Մեծոփեցին կոչում է «եպիսկոպոսն մեր». գնացել է Սմրղանդ և տեսել Ուլուխպէկի կոտորածը քրիստոնյաների դեմ (1387 թվից հետո) և դույժը բերել է Մեծոփեցուն.—Մեծոփ. 29։

— 650. ՅՈՎՀԱՆՆԷՍ, թոռն է Պետրոսի որ ստացավ Յայս-

մաւուրքը 1388 թ. (ՊԼԵ պէտք է ուղղել ՊԼԷ).—Տաշեան. Ցուց. էջ 889։

— 651. Յովհաննէս երէց, գրիչ. օրինակել է Նախորդ Յայսմաւուրքը 1388 թ.—Տաշեան. Ցուց. 889։

— 652. Յովհաննէս վարդապետ Որոտնեցի. Սիւնեաց Որոտըն գավառի Վաղանդնոյ գյուղից էր՝ Սիսական ազնվական տոհմից. ծնվել է «1315 թ», որդին էր Իւանէ մեծ իշխանի (№ 20)։ Աշակերտեց Եսայի Նչեցուն և Տիրատուր վարդապետին։ Նշանավոր եղավ իր գիտությամբ և Երնջակի ունիթոռների դեմ ունեցած կրոնական վիճաբանություններով։ Ուսուցանում էր Գլաձորում, ապա փոխադրվեց Տաթևի ուսումնարանը, որի առաջնորդ նշանակվեց։ Հասցրեց շատ աշակերտներ, որոնցից նշանավոր են Գրիգոր Խլաթեցի Ծերենց և Գրիգոր Տաթևացին։ Կոչված է Կախիկ, «որ կախեալ կայր միշտ ի սիրոյն Աստուծոյ»։ Հրավիրվեց Սիւնեաց առաջնորդական աթոռը, բայց նա մերժեց։ Գնաց Տփղիս, ուր վիճել և հաղթել է քաղկեդոնիկներին։ Վրաց Դաւիթ թագավորի մահից հետո, ուխտի գնաց Երուսաղէմ. վերադարձին քաշվեց Երզնկայի Սեպուհ լեռը, ուր մնաց մի տարի։ Դաբանաղցին, էջ 506—7 ասում է թե Սեպուհ լեռան անապատի մոտ Որոտնեցին «պամբոցն է կառուցեալ ի վերայ ապառաժի վիմին ձորոյ Ջրհոսանին»։ Երզնկայից գնաց Տրապիզոն, հունաց կայսեր մոտ, ուր նույնպես ունեցավ կրոնական վեճեր։ Վերադարձավ Տաթև և շինեց վանքի զանգակատունը։ Մաղաքիա վրդ. Ղրիմեցու հրավերով վերջում գնացել է Երնջակի Ս. Կարապետ վանքը, ուր նույնպես դաս էր տալիս։ Երբ թուրքերը գրավեցին Որոտան բերդը, Յովհաննէս Որոտնեցին փախավ Ծար և Գորգուն իշխանից «դառնամահ» եղավ «1388թ»։ Թաղվեց Երընջակի Ս. Գէորգ վանքում, իր աշակերտ Մաղաքիա Ղրիմեցու կողքին. գերեզմանի մասին տես Սմբատեանց՝ Երնջակ 362։ (Նոտարք 36՝ Գր. Ծերենցի մի ոտանավորում մահը դնում է ճիշտ 1386թ. յնվ. 7)։ Իր վրա ներբողեան ունի Տաթև. աժ. 711—6։ Իր գրական գործերն են. Լուծմունք Պարապմանց գրոց Կիւրղի (տպ. Պոլիս 1717. հմմտ. Ձեռ. Բեռլինի, էջ 24), Լուծմունք արտաքոյ թուոյ ճառից, Հարցումն երկաբնակաց և պատասխանիք, Լուծմունք Աստուածաբանի Առ որս գրոց, Պատմութիւն ի բանս առաքելոյն «Մարդով եղև մահ», Մեկնութիւն Կորնթացւոց Գ թղթոյն (տես Տաշեան, Ցուց. 1129բ և Հայկ. աշխատ. Ֆեթթերի, էջ 152), Մեկնութիւն Եսայեայ (գրված 1385 թ.) (որից ծաղ-

կաքաղ է արել Գր. Տաթևացին. տես Ձեռ. Վենետ. Բ. 730 և Սիրական 217ա), Հարցմունք ի Յոհաննէս վարդապետէ որ է մականունն Կախիկ (Ձեռ. Վենետ. Բ. 947,973)։—Զարբ. Նոր մատեն. 214 ուրիշ գործեր է վերագրում Որոտնեցուն. այն է՝ Համառօտ մեկնութիւն Յովհաննու Աւետարանի, Պօղոսի 14 թղթոց, Լուծմունք Նեթաղի յառաջաբանութեան, Քարոզներ, Փիլոնի յաղագս նախախնամութեան երկու ճառերի հաւաքումը, Վերլուծութիւնք Պորփիւրի, Արիստոտելի Պերիարմենիասի և Ստորոգութեանց։—Բայց այս բոլորից ավելի կարևոր է այն աշխատությունը, որ մեր Մատենադարանում հայտնաբերեց մեր համալսարանի դասախոսներից քիմիկոս Տիրան Ղազանչյանը։ Ձեռագիրը կրում է 3441 համարը և կոչվում է «Յովհաննու Որոտնեցւոյ հաւաքեալ ի բանից իմաստասիրաց», ուր հեղինակը խոսում է զանազան բնափիլիսոփայական հարցերի, այն է՝ նյութի, որակի, տարրերի, նյութի քանակի պահպանման և շրջանառության, ինչպես նաև տարրերից նյութերի առաջացման, օդի, երկրի, ծովի, երկնքի և այլ բնագիտական հարցերի մասին։ Նույն ձեռագրից կան այլ ևս ուրիշ չորս օրինակներ։ (Այս տեղեկությունը հաղորդեց ինձ դասախոսը 1947 թ. հոկտ. 16)։ Որոտնեցին ստացող է Առ որս և Դ. Անյաղթ գրոց ձեռագրերի (Տաշեան, Ցուց. 764)։ Հրամայել է իր աշակերտ Գրիգորին (1373թ) օրինակել Աւետարանը Երզնկայում (Թորոս աղբ. Բ. 326 և Ճանիկեան, Հնութ. Ակնայ 98)։ Այս գրքի հիշատակարանի վերջում գրված է թե Որոտնեցին «զմագաղաթս նոյն ինքն մեծ վարդապետն իւր ձեռօքն գործեաց և մեզ ուսոյց զոյն արուեստ» (Ճանիկեան, էջ 99, իսկ Թորոս աղբ. չունի)։— Յովհաննէս՝ Տաթև. ամ. 721. Լծ. պրպմ. 592. Յայսմ. յնվ.6, ապր. 27. Մեծոփ. 14—16, 39, 40,55.— Յովհան՝ Տաթև. հարց. (781—2). Խլաթ. յիշ. 1. Մ. մաշտ. 336բ. Յայսմ. ապր. 27. Առաք. պատմ. 340.—Կախիկ Սամ.անեց. շար. 170. Յայսմ. հոկտ. 21. Առաք. պատմ. 484.—սեռ. Յովհաննու՝ Ճշ. 121. Ժմ. 946. Մ. մաշտ. 260բ, 281ա. Տաթև. լծ. պարփ. 327. Լծ. պրպմ. 529, 775. Մեծոփ. 16, 33, 45, 47, 56, 85, 383. Տաթև. ձմ. ա, բ. ամ. 9 և 711. հարց. 6, 773. Գարգ. 690. Յայսմ. ապր. 27. Առաք. տաթև. 716. Մեսր. տաթև. 720.—Որոտնեցւոյ՝ Տաթև. ամ. 715։—Թորոս աղբ. Բ. 325—7. Ձեռ. Թուղ. 47ա. Զարբ. Նոր մատ. 213—5, Թրգմ. 519. Սիրական 217—220։

— 653. Յովհաննէս, գրիչ. օրինակել է Ն. Լամբրոնացու «Մեկ-

նուէթիւն Առակաց Սողոմոնի», ՊՀԷ=1388 Թ.—Ձեռ. Կարին. էջ 145։

— 654. Յովանէս ոմն հիշատակագիր Աւետարանի, 1389 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 652։

— 655. Յովանէս, սան Կարապետ գրչի, որ օրինակեց Ճառընտիրը Աղթամարում, 1389 Թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, էջ 765)։

— 656. Յովհաննէս քահանա Գաւաշի, երաժիշտ, որդի Թադէոս քահանայի, 1389 Թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 765)։

— 657. Յովաննէս, փեսա Ստեփանոս միայնակեցի, որ Աղթամարում գրել տվեց մի Ճառընտիր, 1389 Թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 764)։

— 658. Յովաննէս, որդի Մկրտիչ քահանայի և եղբայր Կարապետ գրչի, որ օրինակեց Ճառընտիրը Աղթամարում, 1389 թվին. Յովհաննէսը նրա համար թուղթ էր կոկում.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 765)։

— 659. Յոհանէս սարկավագ, որդի Սահակ քահանայի, որ ստացավ Կոստանդին Ս. Բարձրբերդցի կաթողիկոսի Աւետարանը, 1389 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 652։

— 660. Յովհաննէս գրիչ. Խիղանի Նորշինայ անապատում, Պետրոս աբեղայի հետ միասին օրինակել է Աստուածաշունչը՝ Յովհաննէս բաբունապետի համար 1390 Թ.—Ձեռ. Կարին. 11։

— 661. Յովհաննէս րաբունապետ, ստացող նույն Աստուածաշնչի 1390 Թ.—Ձեռ. Կարին. 10։

— 662. Յովհաննէս քահանա, նորոգեց Ժ դարում գրված մի Աւետարանի կազմը 1390 Թ.—Ձեռ. Սանաս. 9 բ։

— 663. Յովհաննէս, որդի Առաքել քահանայի և եղբայր Գէորգ երեցի, որ Երզնկայում օրինակեց Ճաշոցը 1391 Թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։

— 664. Յովհաննէս գրիչ. օրինակել է Նուագը, Եկեղեաց Տիրաշէն վանքում, 1391 Թ.—Ձեռ. Կարին. 206։

— 665. Յովհաննէս վարդապետ, ստացավ Գլաձորում 1317 թվին գրված մի Ոսկեփորիկ՝ 1372—92 թվից քիչ առաջ.—Ձեռ. Վենետ. Բ. 859.

— 666. Յովհանէս «համշիրակ եղբայր» Յովհաննէս վարդապետի. Հերմոնի վանքում, Ծերուն վարդապետի մոտ դասով Կիւրղի Պարապմանց գիրքը, որ օրինակեց Յովհաննէս վարդապետը՝ 1394 Թ.—Bodleian 160։

— 667. Յովհաննէս վարդապետ, գրիչ. օրինակեց նոյն Կիւրղի Գարագմանց գիրքը, որի օրինակը պատահաբար գտնվեց Հերմոնի վանքում, Ծերուն վարդապետի մոտ, 1394 թ.— Bodleian 160—161։

— 668. Յովհաննէս արքեպիսկոպոս, որդի պարոն Աստուածատուրի, մայրն է Թամրիկ խաթուն, քույրն է Ուստիանէ խաթուն. Բաբերդի կամ Թաղանեաց նահանգի առաջնորդն էր. մեռավ 1395 թվին (տես և Յուստիանէ)։— Նոտարք 6—7, Հացունի՝ Կարևոր խնդ. 270։

— 669. Յովհաննէս, որդի Ստեփաննոս քահանա Ամկեցու, որ Արճէշում նահատակվել էր «1395 թ»։ Որդին ծնվեց նոր նահատակությունից հետո և սիրելի եղավ ամենքին, թէ՛ քրիստոնյաներին և թէ՛ մահմեդականներին և դարձավ «ձեռնատուր քաղաքին և երկրին հրամանատու»։— Մեծոփ, 113, Ազգապ. էջ 2013։

— 670. Յովհաննէս, ազգական նույն Ամկեցի նահատակ Ստեփաննոս քահանայի (մ. 1395 թ). ազգախառն ամուսնություն կնքեց Ղրիմլեկի հետ.—Մեծոփ. 114։

— 671. Յովհան Babin, ջամբռայ հայոց թագաւորութեան 1395 թ.—Միսուան 485 բ։

— 672. Յովհաննէս Կաֆացի, բնակվում էր Վենետիկում 1395 թ.—Հայ. Վենետ. 174։

— 673. Յովհաննէս, Արճէշի Աղու գյուղից. երբ Բաանի Աթալմիշ ամիրան ամբողջ գյուղը գերի էր տանում, Յովհաննէսը մի խումբ երիտասարդներով հարձակվեց նրա վրա, հաղթեց և գերիներին ազատեց, 1395 թ.—Զամչ. Գ. 427։

— 674. Յոհաննէս, առաջնորդ Ծպատի վանից Ամենափրկիչ եկեղեցու, 1395 թ.—Ձեռ. Վասպ. 234։

— 675. Յաւհաննէս, հայր տանուտեր Մարտիրոս Շատախեցու (Մոկաց երկրից), որ Ծպատի անապատում Կարապետ գրչին դրել տվեց մի Աւետարան, 1395 թ.—Ձեռ. Վասպ. 231—4։

— 676. Յովհաննէս, երագոտն բանբեր, Լենկթիմուրի արշավանքի ժամանակ, թաթարների մասին լուր հասցրեց Ղարա-Եուսուֆին և նա հաջողությամբ կռվեց նրանց դեմ (1395 թ)։— Մեծոփ. 48 (ասում է «աստուածապաշտ այր մի՝ հարազատ մեր Յովհաննէս անուն կոչեցեալ»). Այրարատ 323, Ազգապ. 2003։

— 677. Յովհաննէս կազմարար. կազմել է մի Աւետարան 1396 թ.—Տաշեան, Ցուց. 416։

— 678. Յովանէս նվիրակ. Կիլիկիոյ Մըլէճոն վանքից մի Աւետարան բերավ և կազմել տվեց Գուգարաց վանքում, 1397 թ.—Նոտարք 10։

— 679. Յովհան, de Brie, անվանական մարաջախտ հայոց թագավորության 1397 թ.—Սիսուան 485 ա։

— 680. Յովանէս, մեծ հայր Հասանի՝ կնոջ Վարդան քահանայի, որ Երզնկայում, Խոսրովի որդի Վարդան քահանայից գնեց մի Աւետարան, 1397 թ.—Ձեռ. Սեբ. = ՀԱ 1926, 46։

— 681. Յովաննէս սարկավագ, միաբան Գամաղիէլի վանքի. Թուղթ էր կոկում Ներսէս գրչի համար, որ արտագրում էր Ճառընտիրը նույն վանքում, 1397 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1286։

— 682. Յոհան, նրա ընկերը, միասին թուղթ կոկող։

— 683. Յովհաննէս արքեպիսկոպոս հայոց Լէոպոլսոյ, կոչված «արքեպիսկոպոս ամենայն Ռուսաց և Օլախաց աշխարհի», 1398 թ.—Տաշեան, Ցուցակ 680, Տան, Արեւել. Հայք, էջ 6—8, Труды Вост. комм. ИМАО, հտ. II 3, էջ 43։ Նույնը տես № 733։

— 684. Յովհաննէս, որդի Մկրտիչ քահանայի և եղբայր Զաքարայ գրչի (№ 49), որին օգնում էր թուղթ կոկելով 1393 թ և 1399 թ։—Ձեռ. Վասպ. 230, 235։

— 685. Յովհաննէս գրիչ. Վարագայ վանքում և Շուշանց գյուղում օրինակեց մի Ճառընտիր, իր ուսուցիչ Սիմէոն վարդապետի թելադրությամբ և նվիրեց Բարթուղիմէոս առաքյալի վանքին 1399 թ.— Թորոս աղբ. Բ. 429 > Նոտարք 10։

— 686. Յովհաննէս վարդապետ Աղթամարի, որդի Իվան Գահլաւունու (ԺԴ դա՞ր).—Հայապ. 582։

— 687. Յովհաննէս Ոսկէփոր, առաջնորդ Անիի. հիշված ԺԴ դարում.—Շիրակ 96 բ։ Հմմտ. № 986։

— 688. Յովհաննէս Գ. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Դաւիթ Գ-ի և նախորդ Մովսէս Ա-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 689. Յովհաննէս Դ. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Աբրահամ Ա-ի և նախորդ Ղեւոնդ Բ-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 690. Յովանէս Ե, կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Սարգիս Բ-ի և նախորդ Թադէոս Բ-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 691. Յովհաննէս Դավրիժեցի, առաջնորդ Ջահկեցոց. հաջորդեց Թովմաս եպիսկոպոսին (ԺԴ դար).—Ազգապ. 1956։

— 692. Յովհաննէս Սուրմարեցի, վանահայր Կամրջաձորի, հաջորդ Գրիգորի, շինեց վանքի կաթուղիկէն (ԺԴ դար).—Այրարատ 549։

— 693. Յովհաննէս, ընկեր Գրիգորի, աշակերտ Մխիթարի կամ Կարապետի, որոնց հետ իբրև նշանաւոր հայր անցել է պատարագի հիշատակութեան մէջ (շուրջ ԺԴ դար).—տես. Յովսեփի՝ Գարգ. էջ 695։

— 694. Յովաննէս ստացող. գրել տվեց մի Աւետարան, որ և ծաղկեց Առաքել նկարողը (ԺԴ դար).—Ձեռ. Նոր-Բայազ. էջ 17 բ։

— 695. Յովհաննէս վարդապետ. թարգմանել է Պատմութիւն Պարսից (ԺԴ դար).— հայտնի չէ թե ով է.—Հայապ. 119։

— 696. Յովհաննէս Մարաղացի, գանձասաց. իր գանձերից մեկը տես Ձեռ. Դաղեան, Ա. 22։ (Թվականը անհայտ է. բայց անշուշտ ամենաուշը ԺԴ դար, որովհետև ձեռագիրը 1436 թվից է)։

— 697. Յովհաննէս Հալէպցի, որդի Թուաքալ Հալէպցու (№ 3), որ գնեց գերի ընկած մի Աւետարան, 1400 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 402։

— 698. Յո(վան)էս, հոգևոր եղբայր Կիրակոս միայնակեցի, որ գնեց Իգնատիոս Հռոմայեցու գրած մի Աւետարանը և նվիրեց Մարտիրոս քահանային, 1400 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 65 բ։

— 699. Յովանէս կրօնավոր, Թումաս և Կիրակոս կրօնավորների հետ միասին գտան Գետարգել Ս. Նշանը, որ Լէնկթիմուրի երկյուղից թաղել էին հողի տակ և վերադարձրին Վարդ-Պատրիկի վանքը, Ս. Եղիշէի ուխտը՝ «1401 թ».—Նոտարք 15 > Ազգապ. 1971։

— 700. Յովհաննէս ի կարգէ Դոմինիկեանց. խնդրանօք Ֆրանչիսկոս վարդապետի օրինակեց Աստուածաշունչը, 1401 թ. —Ձեռ. Կարին. 11։

— 701. Յոհաննէս տանուտէր, գրել տվեց մի Ճաշոց Աստուածատուր քահանային՝ Ուշտունեաց գավառի Շատվան գյուղում, 1401 թ.—Նոտարք 13։

— 702. Տէր Յովհաննէս, տեղապահ Ուշտունեաց գավառի Ս. Նկար վանքի, օգնեց «մարմնաւոր պիտոյից» մի Գանձարանի գրչութեան համար 1401 թ.—Նոտարք 14։

— 703. Յոհաննէս գրիչ. օրինակեց Մաշտոցը Մոկաց Խիզան քաղաքում, 1401 թ.—Ձեռ. Կարին. 139։

— 704. Յովաննէս Մշեցի, որդի Զաքարիայի, գրիչ և նկարիչ. օրինակել է Ղազար երեցի ծախսով մի Աւետարան, 1402 թ.—Manus. brit. mus. 38 բ, 39 ա։

— 705. Յովհաննէս, որդի Զաքարիայի, եղբայր նախորդ Յովաննէս Մշեցու, որ օրինակեց Աւետարանը՝ Ղազար երեցի համար, 1402 թ.—Manus. brit. mus. 39 ա (երկու եղբայրներն էլ Յովհաննէս լինելով, երկրորդը պէտք է լինի կրօնաւոր)։

— 706. Յոհաննէս քահանա, իր որդի Թումայ քահանայի համար, Խիզանում, Յովաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան։ Բայց շուտով Թուման մեռնելով՝ Աւետարանը փոխանցեց իր քրոջ որդի Սուքիաս քահանային, 1402 թ.—Ձեռ. Վասպ. 287—9։

— 707. Յովաննէս, որդի Մկրտիչ քահանայի, եղբայր Զաքարիա կրօնաւորի (№ 49, ուր տես իր գերդաստանը), գրիչ. Խիզանում, Յովհաննէս քահանայի և նրա որդի Թումայ քահանայի համար գրեց մի Աւետարան 1402 թ.—Ձեռ. Վասպ. 288—9։

— 708. Յովհաննէս վարդապետ Սաղաղ. աշակերտ Սարգիս վարդապետ Ապրակունեցու, որ Խոյից ուղարկեց նրան Բուժբերունիք, որպեսզի որոնի և գտնի ուսումնարան հիմնելու համար մի վայր («1388 թ»)։ Յովհաննէսը եկավ Սուխարայ կամ Խառաբաստայ Ս. Աստուածածնայ վանքը և տեսիլքով իմացավ, որ դա լավագույն վայրն է։ Սարգիսը փոխադրվեց այդտեղ, դպրոց բաց արեց, 60 աշակերտ հավաքեց և լուսավորեց Վասպուրականի ծովեզրը՝ սկսած «1389 թվից», Մեռավ «1402 թ»։—Մեծոփ. 35, 36, Ազգաղ. 1982։

— 709. Յովհաննէս միաբանակեաց. իր եղբայր Հայրապետ կրօնաւորի հետ, Վասպուրականում, 1402 թվին, գրել տվեց մի մեծ Ճառընտիր՝ Յովհաննէս քահանային, Յովհաննէս կրօնաւորին և Աւետիք սարկավագին։—Ձեռ. Կարին. 94 > Նոտարք 16։

— 710. Յովհաննէս քհ. գրիչ Ճառընտրի և

— 711. Յովհաննէս կրօնաւոր. գրիչ Ճառընտրի

տես նախորդը։

— 712. Յովհաննէս քահանա, Սուքիաս քահանայի հետ միասին, Խիզանում գրել տվին մի Աւետարան 1402 թ.—Նոտարք 18։

— 713. Յովհաննէ (գրում է «Ես Յովհաննն»). գրիչ. օրինակեց

Ագաթանգեղոսը Թիֆլիսում 1402 թ.—Տաշեան, Ագաթ. առ Գէորգայ, էջ ժ։

— 714/715. Յովհաննէս քահանա Զմշկածագցի. Նոր վկա. քաղաքի քահանաները խռովություն հանելով նրա դեմ, իր ժողովուրդի հետ միասին հեռացավ և քաղաքի դեմը՝ Կարմիր Սարուկ կոչված տեղում փայտաշեն մի եկեղեցի շինեց։ Քահանաները դրդեցին քաղաքի Մահմուդ ամիրային, որ հրամայեց իր զինվորներին այրել եկեղեցին, հետը նաև քահանային «1403 թ»։ Դաւիթ եպիսկոպոսը գրեց նրա նահատակության համառոտ պատմությունը։—Յայսմ. մարտ 27 = Նոր վկ. 205—7։

— 716. Յովանէս կրոնավոր, մերձավոր Յակոբ վարդապետի, որ Աստուածատուր գրչին գրել տվեց մի Ոսկեփորիկ, 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 931։

— 717. Յովհաննէս երեց, Կիլիկիոյ մեծ գաղթականության առաջնորդներից՝ դէպի Կիպրոս և Իտալիա «1404 թ»։— Ազգապ. 2007, Սիսուան 542 բ։

— 718. Յովհաննէս կրոնավոր, իր Եղեկիէլ և Սիոն քահանա եղբայրների հետ միասին՝ Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Տօնական՝ Ծղող գյուղում, 1404 թ.—Նոտարք 21։

— 719. Յովհաննէս, պապ Կիրակոս քահանայի, որ Դանիէլ սարկավագին գրել տվեց մի Մաշտոց, 1404 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 277։

— 720. Յովհաննէս քահանա, կազմեց մի հին Մաշտոց, Կոնկրակայ գյուղում, 1405 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ. 1926, 337)։

— 721. Յովանէս, ամուսին Թուրվանդայի, որ ստացավ մի Աւետարան և նվիրեց Անդրէաս քահանային, 1406 թ.—Բօսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 22։

— 722. Յովանէս երեց, վկայում է այն մասին, որ Դաւիթը գնել է մի հին Աւետարան 1407 թ.—Ձեռ. Վասպ. 166։

— 723. Յովհաննէս քահանա Սեբաստացի, գրել է մի Յայսմաւուրք, որի մեջ մտցրել է նաև Սեբաստիա նահատակված Դաւիթ կրոնավոր քահանայի և մի ուրիշ Արևելցի երեցի վկայաբանությունը՝ 1407 թվից քիչ առաջ։— Նոտարք 25։

— 724. Յովհաննէս քահանա Թիֆլիսցի. գրիչ. Թիֆլիսում, Պօղոս աբեղայի խնդրանոք գրեց մի Յայսմաւուրք, 1407 թ.— Նոտարք 26, 27։

— 725. Յովհաննէս աբեղա, փակակալ Տաթևի վանքի 1407 թ.—Սիսական 240 ա։

— 726. Յովհաննէս գրիչ. օրինակել է Վարդան վարդապետի Մեկնութիւն Երգոց երգոյն, Աթանասի Մեկնութիւն Յայտնութեան եւ. 1407 թ.—Ձեռ. Կարին. 147, Նոտարք 25։

— 727. Յովհաննէս ճգնաւոր վարդապետ Ռշտունեաց, «որ աւելի քան զ50 ամ իբրեւ անմարմին հրեշտակ կայր կանգուն ի վերայ ոտից իւրոց յաղօթս և ի պաղատանս, զոր և տեսաք աչօք մերովք և վայելեցաք յաղօթից նորա»։ Բաջբերունեաց Ս. Յարութիւն վանքից էր (որ կոչվում է նաև Սարխանկայ վանք), Վախանից գյուղից։ Մեռել է 1408 թ.—սեռ. Յովհաննու՝ Մեծոփ. էջ 71։

— 728. Յոհաննէս, որդիներից մեկն է Աստուածատուրի, որ շինեց Թէոդոսիայի Հրեշտակապետաց եկեղեցին 1408 թ.—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 37։

— 729. Յովհաննէս գրիչ. օրինակել է Շնորհալու Ընդհանրականը և շատ զանազան թղթեր, Իրեվ ? քաղաքում, 1409 թ.—Ձեռ. Կարին. 33։

— 730. Յովհաննէս գրիչ. օրինակել է Խրատական հոգեշահ գիրք, ՊԾԸ (տպ. ՊԺԸ)=1409 թ.—Ձեռ. Կարին. 43։

— 731. Յովհաննէս, Մեծոփայ վանքը կառուցող 12 հայ ճարտարապետներից մին «1402—9 թ».—Նոտարք 30>Ազգագ. էջ 2001։

— 732. Յովհաննէս աբեղա, որ ստացավ մի Աւետարան, «ի վայելումն սիրասնունդ զաւակին իւրոյ Տիրատուրի», 1409 թ.—Բոսեան, Հայք ի Զմիւռնիա Բ. 23։

— 733. Յովհաննէս արքեպիսկոպոս, որդի Նասրադնի, առաջնորդ Լեհահայոց. հիշել է 1379 թ. հաջորդելով Գրիգոր Ախին (Ալիշան, Կամենից, էջ Ի և 11—13)։ Նույնը էջ 131 դնում է 1398 թ. և էջ 218՝ վերահաստատված 1383 թ. (հիշված է նաև էջ 219 և 220). ուխտի գնաց Երուսաղէմ՝ իր եղբայր Գրիգոր աբեղայի հետ. վերադարձին՝ Սուչ, Յակոբ Դ կաթողիկոսից ստացավ հաստատության նոր կոնդակ (1409 թ), որ տես Կամենից 221—4։ Նույնը տես № 683։

— 734. Յոհաննէս, քարտուղար Յակոբ Դ. կաթողիկոսի հիշված է 1409 թ.—Կամենից 224։

— 735. Յովհաննէս պարոն, իր կնոջ Ծովիկի և իր երկու որդիների (Աւագի և Փոխանշահի) հետ հիշատակված է այն Աւետարանում, որ Մարտիրոս քահանան գնեց 1410 թ.— Ձեռ. Վատ. 164։

— 736. Յովհաննէս քահանա, հայր Ղազար և Անտոն քահանաների, որոնք Մոկաց Ս. Խաչ վանքում, Աստուածատուր գրչին գրել տվին մի Աւետարան 1410 թ.—Ձեռ. Վասպ. 297—8։

— 737. Յովանէս, որդի նախորդ Յովհաննէս քահանայի և եղբայր Ղազար և Անտոն քահանաների, որոնք Մոկաց Ս. Խաչ վանքում, Աստուածատուր գրչին գրել տվին մի Աւետարան 1410 թ.—Ձեռ. Վասպ. 297—8։

— 738. Ովաննէս սարկավագ. մայրն է Սիլտան. հիշատակվում է իրեն այն Աւետարանում, որ գնեց Մարտիրոս քահանան 1410 թ.—Ձեռ Վասպ. 164։

— 739. Յոհաննէս, հայրապետ Մոկաց Ս. Խաչ վանքի 1410 թ.—Ձեռ. Վասպ. 298։

— 740. Յովհաննէս քահանա, Տշող գյուղում Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, որ նվիրեց Ոստան քաղաքի եկեղեցուն, 1410 թ.— Նոտարք 38։

— 741. Յովաննէս կրոնավոր, միաբան Խորաձորի Ս. Աստուածածին վանից, 1410 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 51 բ։

— 742. Յովհաննէս վարդապետ Մեծոփեցի. Բաջբերունեաց գավառի Արճէշ քաղաքից. ուխտական զավակ Զարիշատ գյուղի Ներսէս քահանայի. իր նախնական ուսումը ստացավ Մեծոփայ վանքի Նահապետ աբեղայի մոտ, ձեռնադրվեց Ներսէս եպիսկոպոսից և գնաց Ապրակունեաց վանքը՝ աշակերտելու Յովհան Որոտնեցու մոտ։ Տասներկու տարի աշակերտեց նրան։ Ուխտել էր որ եթե վարդապետական աստիճան ստանա, մի մեծ տաճար պիտի շինի։ Որոտնեցուց ստացավ մասնավոր գավազան, իսկ վարդապետական գավազանն էլ ստացավ Գր. Տաթևացուց։ Այնուհետև վերադարձավ իր հայրենի երկիրը՝ Մեծոփ (1391 թ) և դարձավ նույն վանքի առաջնորդը։ Իր աշակերտներից է Թովմա Մեծոփեցին։ Ավելի ուշ սկսեց շինել Մեծոփի հռչակավոր տաճարը («1402 թ.»), այն է վանքի Ս. Աստուածածին եկեղեցին, հույն գլխավոր ճարտարապետ Փարաճի և այլ 12 հայ վարպետների ձեռքով։ Շինությունը ավարտվեց 7 տարուց, այն է «1409 թ.»։ Երբ Գր. Տաթևացին իր աշակերտներով եկավ Մեծոփ, Յովհաննէսը ընդունեց նրանց իր վանքում և Տաթևացին սկսեց սովորեցնել։ Մեծոփը դարձավ մեծ ուսումնավայր։ Վախենալով Աղթամարի Դաւիթ կաթողիկոսի հալածանքից, Մեծոփի աշակերտների հետ փախավ Տաթև, ման եկավ Սիւնեաց և Այրարատի վանքերը, մնաց Գեղարդում և թաղվեց Հաւուցթա-

ռում «1411 Թ»։— Մեծոփ. 17, 49, 53—61.—տես. Յովհաննու՝ Մեծոփ. 47.—Ձամչ. Գ. 453. Ազգապ. 1984, 2000, 2032. Յայսմ. տպ. 27։ Այրարատ 357. Տաշեան, Ցուց. 293, 417, 478։

— 743. Յոհաննէս երեց խաչպան, որդի խաչպան Թօզանի. գնեց Գրիգոր վարդապետից մի Աւետարան, 1411 Թ.— Սմբատեանց, Երնջակ 232։

— 744. Յովաննէս, որդի Նախորդ խաչպան Յովհաննէս երեցի, որ գնեց մի Աւետարան 1411 Թ.—Սմբատեանց, Երնջակ 232։

— 745. Յովհաննէս քահանա, Մինեցի Թովմա (№ 79) գրչին գրել տվեց մի Ճաշոց՝ Մար գավառի Գետամէջ վանքում, 1411 Թ.—Նոտարք 40։

— 746. Յովհաննէս քահանա Սեբաստացի. գրիչ. օրինակել է Աւետարանը 1411 Թվին.—Ձեռ. Կարին. 22։

— 747/748. Յովհաննէս, երկու համանուն կրոնավորներ, Գրիգոր կրոնավորի հետ գործակից և խորհրդակից եղան Բըշտունցի Փիլ Ստեփաննոս վարդապետին և վերաշինեցին Բշտունեաց Ս. Յակոբայ վանքը, որի ճարտարապետներն էլ իրենք էին (1412 Թ)։ Այս Թվից մի քանի տարի անց վախճանեցին այս երկու ճարտարապետներն էլ։—Նոտարք 41, 138։

— 749. Յոհաննէս դպիր, որդի Կոստանդին քահանայի, որ Միսում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Մանրուսմունքը 1412Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 153 բ։

— 750. Յովհանէս վարդապետ, որդի Հնդուփ և եղբայր Ստեփաննոս երաժշտի, ուսուցչի Թադէոս քահանայի, որ Արճէշի Մեծոփայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1412 Թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 30 բ։

— 751. Յովաննէս, որդի Համազասպի (№ 41) և եղբայր Վարդանէս աբեղայի, որ Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում օրինակեց Գանձարանը, 1412 Թ.—Manus. brit. mus. 120 բ։

— 752. Յոհաննէս վարդապետ, հոգեղբորորդի նույն Վարդանէս աբեղայի, որ Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում գրեց մի Գանձարան, 1412 Թ.—Manus. brit. mus. 120 բ։

— 753. Յոհաննէս աբեղա, Թուղթ էր կոկում Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում, ուր Վարդանէս աբեղան օրինակեց Գանձարանը, 1412 Թ.—Manus. brit. mus. 121 ա։

— 754. Յովհաննէս, հայրապետ կամ վանահայր Մոկաց Ս. Փրկիչ վանքի, նախորդ Դաւիթ հայրապետի, որ հիշված է 1413 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 274 ա։

— 755. ՅՈՀԱՆՆԷՍ, վանահայր Մոկաց Ծպատայ վանքի. հիշված է 1413 թ. և կոչված է «հեզահոգի և աղքատասէր, զի զմեզ խնամէ իբրև զիւր որդիս»։ — Ձեռ. Հալէպի, Ա. 270 ա։

— 756. ՅՈՎՀԱՆՆԷՍ, որդի Թադէոս քահանայի (№ 56). դեռ սարկավագ էր 1409 թ, երբ հայրը նրան ի ժառանգութիւն գրել տվեց մի Ավետարան։ 1413 թվին «դեռաբուսիկ քահանայ» էր, երբ հայրը գրել տվեց նրա համար Ճառընտիրը։ — Ձեռ. Վասպ. 293, Ձեռ. Հալէպի, Ա. 269, 272 բ, 273 ա։

— 757. ՅՈՎՀԱՆՆԷՍ, տանուտեր, քեռայր Թադէոս քահանայի (№ 56), որ Մոկաց Ծպատայ վանքում գրել տվեց մի Ճառընտիր, 1413 թ. — Ձեռ. Հալէպի, Ա. 269, 273 ա։

— 758. ՅՈՎԱՆԵՍ քահանա, հայր Ալեքսան քահանայի և պապ Յովհաննէս Հաետոր վարդապետի, որ Խիզանի Ս. Խաչ վանքում օրինակեց Ագաթանգեղոսը 1402 թ. և Գր. Տաթևացու Քարոզգիրքը 1413 թ. — Նոտարք 42։

— 759. ՅՈՎՀԱՆՆԷՍ վարդապետ, որ Կիրակոս վարդապետի հետ միասին առաջնորդ էին Խիզանի Ս. Խաչ վանքի. հիշված են 1402 և 1413 թ. իբրև արդեն վախճանյալ։ — Նոտարք 17, 42, 43։

— 760/761. ՅՈՎՀԱՆՆԷՍ, երկու սրբիչ միաբաններ Խիզանի Ս. Խաչ վանքի. կենդանի էին դեռ 1402 և 1413 թ. — Նոտարք 17, 42, 43։

— 762. ՅՈՎՀԱՆՆԷՍ Երզնկացի, գրիչ. օրինակել է Գր. Տաթևացու Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի. ՊԿԲ=1413 թ։ — Ձեռ. Կարին. 150 > Նոտարք 42։ (Հմմտ. № 793)։

— 763. ՅՈՎՀԱՆՆԷՍ Հաետոր վարդապետ, որդի Ալեքսան քահանայի և թոռն Յովհաննէս քահանայի. եղբայրներն են Յակոբ և Պետրոս կուսակրոն քահանաները. հորեղբայրներն են Պետրոս և Ստեփաննոս կրոնավորները. միաբան էր Խիզանի Ս. Խաչ վանքում, որի առաջնորդներն էին այն ժամանակ Յովհաննէս և Կիրակոս վարդապետները, իսկ նրանց մահից հետո Մկրտիչ կրոնավորը։ Գրեց նույն վանքում Ագաթանգեղոսը 1402 թ. (Դաշանց թղթով միասին), որի թուղթը մատակարարողն էր Տարոնի Աստուածատուր եպիսկոպոսը, իսկ թուղթ խազողը՝ Գրիգոր սարկավագը (№ 545)։ Նույն վանքում 1411 թվին սկսեց օրինակել Գր. Տաթևացու Քարոզգիրքը և ավարտեց 1413 թ. (դրամով օգնեցին իրեն Կիրակոս որդի Շիրինի ի Տիոյ և նրա կինը՝ Նազխաթուն)։ — Նոտարք 17, 42—43 (Փիրղալէմեան կարծում է թե

*Յովհաննէս վարդապետը նույն Ս. Խաչ վանքի առաջնորդն էր)։ Հմմտ. № 875։*

— 764. ՅՈՎԱՆՆԷՍ *միակեաց, միաբան Խիզանի Ս. Խաչ վանքի 1413 թ.—Նոտարք 43։*

— 765. ՅՈՎԱՆԷՍ *քահանա, և*

— 766. ՅՈՀԱՆ *քահանա, սպասավորք Տրապիզոնի Ստեփաննոս խորանի, 1414 թ։—Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 79—80։*

— 767. ՅՈՎԱՆՆԷՍ *քահանա և*

— 768. ՅՈՎԱՆԷՍ *«դեռաբոյս» քահանա, գնեցին մի հին Աւետարան 1414 թ.—Ձեռ. Վասպ. 249։*

— 769. ՅՈՀԱՆՆԷՍ *տանուտեր, Ղազար գրչին իրոյ վանքում գրել տվեց մի Յայսմաւուրք և նվիրեց Ս. Յակոբայ վանքին, 1415 թ.—Նոտարք 45։*

— 770. ՅՈՎՀԱՆՆԷՍ *աբեղա, թուղթ էր կոկում Հոճերաց վանքում 1415 թ.—Լմբ. առակ. էջ* XI։

— 771. ՅՈՎՀԱՆՆԷՍ *վարդապետ, որի խնդրանոք Վարդանէս գրիչը օրինակեց Լամբրոնացու և Վանականի գործերը՝ Հոճերաց վանքում, 1415 թ.—Ձեռ. Վիեննա. № 1627, Լմբ. առակ. էջ* IX *և 428։*

— 772. ՅՈՎՀԱՆՆԷՍ *փիլիսոփա (երաժիշտ) քահանա, Պօղոս քահանայի հետ միասին ունեցին մի Ճառընտիր, որ տվին Ստեփաննոս գրչին՝ արտագրելու համար Տշող գյուղում, 1415 թ.—Նոտարք 45։*

— 773. ՅՈՎՀԱՆՆԷՍ *կրոնավոր, գրիչ. Երուսաղէմում օրինակեց Աւետարանը 1416 թ.—Տաթև տարեց. 1925, էջ 292։*

— 774. ՅՈՀԱՆՆԷՍ *կրոնավոր, փակակալ էր Երուսաղէմի Ս. գերեզմանին և ջահավառ Ս. Գողգոթայի. գրել էր մի Աւետարան, որ վաճառեց Արճիշեցի Կարապետ վարդապետին (№ 207), երբ նա ուխտի էր գնացել Երուսաղէմ, 1416 թ։—Նոտարք 49։—Թերևս նույն է նախորդի հետ։*

— 775. ՅՈՀԱՆՆԷՍ *աբեղա, եղբայր Կարապետ վարդապետի (№ 207), որ Խառաբաստայ վանքի վանահայրն էր։ Մեռել էր արդեն, երբ Կարապետը վերադարձավ Երուսաղէմի ուխտագնացությունից (1416 թ.)։ Նրա հիշատակին կանգնեցրեց մի խաչարձան 1448 թ։—Նոտարք 50, 160։*

— 776. ՅՈՎՀԱՆՆԷՍ *քահանա, որդի Մկրտիչ քահանայի. գրիչ. իր առաջին արտագրությունը եղել է մի Գանձարան, 1416 թ.— Նոտարք 49։*

— 777. **Յովհաննէս** *քահանա, մերձաւոր Սարգիս եպիսկոպոս գրչի, որ օրինակել է Աւետարանը 1416 թ.—Ձեռ. Թաւր. 31 բ։*

— 778. **Յովանէս**, *կինն է Աղիզ, ծնողներն են Ստեփաննոս կրօնաւորի, որ Խիզանում գրել տվեց մի Աւետարան 1417 թ.—Ձեռ. Վասպ. 305։*

— 779. **Յովհաննէս** *գրիչ, Խիզան քաղաքում գրել է մի Աւետարան 1417 թ. որի վերջում կա մի ողերգ (տպված է մի քանի տող, մնացյալը երևի տաճկական գրաքննությունը կրճատել է)։—Նօտարք 51։*

— 780. **Յովանէս** *քահանա, որդի Մկրտիչի և հօրեղբօրթոռ Յովհաննէս քահանայի, որ գրեց երկու Աւետարան, 1409 և 1417 թ.—Ձեռ. Վասպ. 304։*

— 781. **Յոհանէս** *քահանա, որդի Յակոբի, մայրն է Մինայ. տատիկն է Տիրանց. եղբայրներն են Սարգիս և Մարտիրոս քահանա. հօրեղբայրն է Թումայ (№ 81), սրա կինը՝ Գոհար (№ 8), սրա որդին (Յոհանէսի հօրեղբօրորդին) է Պետրոս քահանա։ Արտագրել է մի Աւետարան Մոկաց Կաղթանց գյուղում՝ Թադէոս քահանայի համար 1409 թ. և մի Աւետարան էլ իր վաղամեռիկ եղբօր՝ Մարտիրոս քահանայի համար, Ջերմաձորի Ակոռայ վանքում, 1417 թ.—Ձեռ. Վասպ. 294,302,303—4, Նօտարք 51։*

— 782. **Յովհաննէս** *կրօնաւոր. գրիչ. օրինակել է Գր. Տաթևացու Քարոզգիրքը՝ 1417 թ.—Ձեռ. Կարին. 217։*

— 783. **Յովհաննէս**, *տանուտեր Յաստականց գյուղի (Վան). ստացավ Մաշտոցը 1418 թ.—Տաշեան, Ցուց. 383։*

— 784. **Յովհաննէս** *սարկավագ. ստացավ Հարանց վարքը, որ օրինակեց Խաչատուր կրօնավորը Աւագ վանքում 1418 թ.—Աթան. յոբ. ժբ։*

— 785. **Յովհաննէս** *քահանա, որդի Ստեփաննոս քահանայի. մայրն է Մինա, հօրեղբայրը Մովսէս. եղբայրն է Կարապետ քահանա գրիչ (№ 202), որ օրինակեց Վանում մի Աւետարան 1418 թվին, երբ Յովհաննէսը մեռած էր արդեն։—Նօտարք 57, Ձեռ. Վասպ. 309,341,369։*

— 786. **Յովհաննէս** *վարդապետ, Վայոց Ձորի Հերմոնի վանքում օրինակեց Կիւրղի Աղեքսանդրացու Թուղթ Գանձուց, 1418 թ.—Սմբատեանց, Երնջակ 126։*

— 787. **Յովհաննէս** *քահանա, որին հիշում է Յակոբ քահանայի (№ 163) հետ Կարապետ քահանա գրիչը (№ 202) իբրև իր երախտավորներին, Վան 1418 թ.—Նօտարք 57, Ձեռ. Վասպ. 309։*

— 788. **Յովանէս** քահանա, որին հիշում է Աւետիս քահանայի հետ Ստեփաննոս Տշողեցի գրիչը իր 1419 թվին արտագրած Ճառընտրի վերջում, հետեւյալ բառերով. «Յիշեցէք և զսրբազան քահանայքն զԱւետիս և զՅովանէս, որ զօրինակ գրել ետուն զհանգուցեալքն առ Աստուած»։ Եթե հանգուցյալ էին, չէին կարող օրինակ տալ Ստեփաննոսին, ուստի պետք է հասկանալ թե մայր օրինակի երկու ստացողներն են, որոնք ով գիտէ որ թվին գրել են տվել Ճառընտիրը։ Ըստ այսմ ուղղել Աւետիս № 56։—Նոտարք 60։

— 789. **Յովհաննէս** վարդապետ Տաթևացի. փակակալ ուխտին. գրիչ. օրինակեց Տաթևացու Քարոզգիրքը՝ 1419 թ.—Տաշեան, Ցուց. 978։

— 790. **Յովանէս** քահանա, որդի Ստեփաննոսի, մայրն է Մոջան, եղբայրը Յովսէփ, քույրը Փաշամելիք, քեռին Մարկոս, կինը Շաքարխաթուն. Ուշտունեաց Տշող գյուղում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Ճառընտիրը 1419 թ։—Նոտարք 59։

— 791. **Յովհաննէս** քահանա Տշողեցի, որդի Գրիգոր քահանայի և եղբայր Ստեփաննոս գրչի. նախապէս սարկավագ էր և կոչվում էր Բոչբէկ. օգնում էր իր եղբորը՝ թուղթ կոկելով 1404 թ. հետո դարձավ քահանա և կոչվեց Յովհաննէս՝ արդեն 1417 թ. հիշված է նաև 1419 թ.—Նոտարք 22,50,59։

— 792. **Յովհաննէս** աբեղա, գրիչ. Երուսաղէմում օրինակեց Յիսուս որդին 1419 թ.—Տաթև տարեց, 1925, էջ 292։

— 793. **Յովհաննէս** Երզնկացի. գրիչ. Մանուէլ վարդապետի հետ օրինակել է Ճառընտիրը՝ 1417—9 թվերին (Ձեռ. Երուսաղէմի № 442).—Զարբ. Թրգմ. 561, 728։ (Հմմտ. № 762)։

— 794. **Յովհաննէս** աբեղա, գրիչ. Երուսաղէմում օրինակել է Յիսուս որդի Ն. Շնորհալւոյ, 1419 թ.—Ձեռ. Կարին. 171։

— 795. **Յովանէս** վանահայր Պատրկի վանքի (Ոստան քաղաքի դեմ). Նրա համար հետևյալ գովասանքն ենք կարդում «Նախ և առաջին զբաղձալին հրեղինաց և հողեղինաց, զամբիծն հոգով և զանարատն մարմնով, զիմաստասէր և զհանճարեղ և զմեծահամբաւ րաբունին զՅովհաննէս, որ է պատճառ շինութեան և ամենայն բարեկարգութեան սուրբ ուխտիս, և խրատիչ և վարժիչ ամենեցուն և պարծանք ամենայն Հայաստանեայց եկեղեցեաց»։—Ձեռ. Վասպ. 324 դնում է 1420 թ։ Իսկ Նոտարք 88 հիշում է նույնին համառոտ կերպով՝ 1428 թվի տակ և կարծում է **Պուտլիկ** կոչված վարդապետն է, որ ունի գրած շատ գանձեր։

— 796. ՅՈՎՀԱՆՆԷՍ երեք համանուն միաբաններ Գառնէկի վանքի՝ հիշված 1420 թ. (Ձեռ. Վաստ. 324). իսկ Նոտարք 88 հիշված է 1423 թվի տակ և միայն մի Յովհաննէս ունի։

— 797. ՅՈՎՀԱՆՆԷՍ, կինն է Աւագտիկին (№ 7), ծնողներն են Ստեփաննոս քահանա գրչի, որ Ծերուն քահանայի համար օրինակեց մի Աւետարան 1420 թ.—Նոտարք 63։

— 798. ՅՈՎԱՆԷՍ, երկու համանուն միաբաններ Բերկրիի «Տէր Յուսկան որդի» վանքում, 1420 թ.—Նոտարք 61։

— 799. ՅՈՎՀԱՆՆԷՍ որդի Եղբայրիկի. մայրն է Մամթութ, որ նրանց հիշատակին մի Աւետարան գրել տվեց 1420 թ.—Ձեռ. Վաստ. 320։

— 800. ՅՈՀԱՆԷՍ, հայր Վարդան կրոնավորի, որ Աղթամարում, Թումայ արեղային գրել տվեց մի Աւետարան 1420 թ. —Ձեռ. Վաստ. 322։

— 801. ՅՈՎՀԱՆՆԷՍ ձեռնավոր Ասպիսնակ գյուղից, հավատքի համար նահատակվեց Ամիւկ բերդի բանակալ Փիրալիի ձեռքով 1420 թ.—Մեծոփ. 110, Նոր վկ. 231, Ազգապ. 2055։

— 802. ՅՈՀԱՆ, հոգևոր եղբայր Վարդան կրոնավորի, որ Աղթամարում, Թումայ արեղային գրել տվեց մի Աւետարան 1420 թ.—Ձեռ. Վաստ. 324։

— 803. ՅՈՎՀԱՆՆԷՍ, դեռաբույս զավակ Ծերուն քահանայի (№ 8), որ Ստեփաննոս քահանա գրչին գրել տվեց մի Աւետարան 1420 թ.—Նոտարք 63։

— 804. ՅՈՎՀԱՆՆԷՍ եպիսկոպոս Վարագայ վանքի և առաջնորդ Վանայ, հիշված 1421 թ.—Նոտարք 65—67, Ձեռ. Վաստ. էջ 340։ Հմմտ. № 929 և 1224։

— 805. ՅՈՎՀԱՆՆԷՍ գրիչ. Սանահինում օրինակեց Մանրուսմունքը 1421 թ.—Տաշեան, Ցուց. 873։

— 806. ՅՈՎԱՆԷՍ, հանգուցյալ հորեղբայր Թումա միակեց գրչի (№ 164), որ օրինակեց Ճաշոցը Աղթամար 1421 թ.—Նոտարք 67։

— 807. ՅՈՎՀԱՆՆԷՍ քահանա, կինն է Սուլտան խաթուն, որդիքն են Գրիգոր, Ղազար և Ստեփաննոս «դեռաբույս ծաղիկն». այս Յովհաննէս քահանային ի վայելումն Ստեփաննոս կրոնավորը և Ղազար քահանան (№ 51) Վանում, Կարապետ երեցին գրել տվին մի Աւետարան, 1421 թ.— Ձեռ. Վաստ. 341—2։

—808. ՅՈՎՀԱՆՆԷՍ, հայր նույն Ղազար քահանայի (№ 51). —Ձեռ. Վաստ. 341։

— 809. Յոհանէս, առաջնորդ ուխտին Ծպատայ. հիշված է 1421 թ.—Ձեռ. Վասպ. 331։

— 810. Յովանէս կրոնավոր, Աւետիս կրոնավորի հետ միասին թուղթ էին կոկում Թումայ գրչի համար, երբ սա օրինակում էր Ճաշոցը Աղթամարում, 1421 թ.—Նոտարք 68։

— 811. Յովհաննէս, ծաղկել է այն Աւետարանը, որ գրեց Վարդան աբեղան Ծպատի անապատում, Թումայ կրոնավորի համար՝ 1421 թ.—Ձեռ. Վասպ. 329 (ամբողջ 7 սյուն հիշատակությանց մեջ մի բառ չկա ծաղկելու մասին. միայն Լալայեանն է հիշում ծաղկողի անունը ձեռագրի նկարագրության մեջ։ Ընդհակառակը տեղը համարում է անհայտ, մինչդեռ էջ 331 հիշված է Ծպատի վանքը։ Զանեսված ուշադիր վերաբերմունք դեպի գործը!)։

— 812. Յովհաննէս կրոնավոր, Ս. Խաչ վանքում գրել է մի Աւետարան 1421 թ.—Ձեռ. Վասպ. 361։

— 813. Յովհաննէս վարդապետ, առաջնորդ Հերմոնի վանից 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ)։

— 814. Յոհաննէս կրոնավոր, Աղթամարում Թումայ գրչին (№ 164) գրել տվեց մի Ճաշոց և նվիրեց Վարագայ վանքին, 1421 թ.—Նոտարք 67։

— 815. Յովհաննէս եպիսկոպոս, կոչված Մեռելյարոյց, վանահայր Լիմ անապատի. սրա եղբայրն էլ կոչվում է Յովհաննէս. երկուսի գերեզմանի վրա Կարապետ և Խաղաղութիւն կանգնեցրել են մի խաչքար 1421 թ.—Արձ. Նոտարք 64։

— 816. Յովհաննէս՝ նրա եղբայրը։

— 817. Յովհաննէս Ամիրզա, հիւան. որդի Աւետիսի. ամուրի լինելով և զավակ չունենալով՝ գրել տվեց մի Ճաշոց՝ Կարապետ աբեղա գրչին, Աղէթ 1421 թ.—Ձեռ. Թաւր. 111—4։

— 818. Յովհաննէս, եղբայր Սիմէոն աբեղայի, որ վաճառեց մի Աւետարան Խութլուբէկին, 1422 թ.—REA 7, 107, համենից 161։

— 819. Յովհաննէս որդի Բանեբդեսի. իր Աստուածատուր եղբոր հետ միասին ազատեց Տկուց վանքի Աւետարանը, որ գերի էր ընկել և նորից վերադարձրեց նույն վանքին 1422 թ.—Նոտարք 68։

— 820/821. Յովհաննէս երկու համանուն կրոնավորներ, միաբան Կացի Ս. Խաչ վանքի, 1422 թ.—Նոտարք 68։

— 822. Յովհանէս վարդապետ, որդի Սահմադնի. Խլաթում,

Կարապետ գրչին օրինակել տվեց Աստվածաշունչը՝ 1418—1422 թ. (այս գիրքը ավելի ուշ անցավ Մկրտիչ Նաղաշին).—Ձեռ. Վենետ. Ս. 114, Անկ. գիրք հին կտ. յոչ. էջ Թ։

— 823. ՅՈՎՀԱՆՆԷՍ հայր նույն Կարապետ գրչի, որ Խլաթում օրինակեց Աստուածաշունչը՝ 1418—1422 թ.—Ձեռ. Վենետ. Ս. 114։

— 824. ՅՈՎԱՆԷՍ աստվածաբան վարդապետ, զանազան ուսմունքներ է սովորցրել Յոհաննէս կրոնավորին, որ Բերկրիի Եղավանք ուխտում մի Ավետարան գրել տվեց Յակոբ աբեղային՝ 1422 թ.—Ձեռ. Վասպ. 349, Նոտարք 70։

— 825. ՅՈՎՀԱՆՆԷՍ քահանա, որդի Թուլուխի, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան՝ Վան 1422 և ապա վաճառեց Մխիթար անուն անձին, որ և նվիրեց Ս. Վարդան եկեղեցուն։—Նոտարք 69։

— 826. ՅՈՎՀԱՆՆԷՍ, նախորդի եղբայրն է.—Նոտարք 69։

— 827. ՅՈՎԱՆԷՍ, «դեռաբույս ծաղիկն» Առաքել վարդապետի, որ հեղինակել է Ճառ Ծաղկազարդի, Ղազարի վանքում, 1422 թ.—Ձեռ. Կես. ածած. 70 ա։

— 828. ՅՈՎԱՆԷՍ, որդի Զաքարէի, որ էր տանուտեր Բերկրի քաղաքի 1422 թ.—Ձեռ. Վասպ. 350,

— 829. ՅՈՀԱՆՆԷՍ «խաչընդուս» կրոնավոր, որդի Ստեփաննոսի, սովորել է զանազան ուսմունքներ Յովանէս աստուածաբան վարդապետի մոտ, գրել տվեց Յակոբ աբեղային մի Ավետարան՝ Բերկրիի Եղավանք ուխտում, 1422 թ։—Ձեռ. Վասպ. 347—9, Նոտարք 70։

— 830. ՅՈՎԱՆԷՍ, նորաբողբոջ պատանեակ, եղբորորդի նույն Յոհաննէս «խաչընդուս» կրոնավորի, 1422 թ.—Ձեռ. Վասպ. էջ 347։

— 831. ՅՈՎՀԱՆԷՍ, որդի Թովմա (№ 102) քահանայի, որ եղել էր հոգևոր հայր և վարպետ նույն Յովհաննէս «խաչընդուս» կրոնավորի, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348։

— 832. ՅՈՎՀԱՆԷՍ, եղբայր Աստուածատուրի. միասին գնեցին մի հին Ավետարան, որ Աստուածատուրի որդին՝ Մարտիրոսը նորեց կազմել տվեց 1423 թ։—Ձեռ. Վասպ. 192։

— 833. ՅՈՎՀԱՆՆԷՍ աբեղա, գրիչ, Երուսաղէմում օրինակեց խնդրանոք Պօղոս պատրիարք (ապա Սսոյ կաթուղիկոս) Գանձեցու մի օրինակ Տարեգիրք «Սամուէլ Երզնկացւոյ»! (Սամուէլ Անեցին է) 1419 թ. ապա մի Յայսմաւուրք 1422 թ. և հետո էլ

*մի Ճառընտիր 1422—23 թ.—Տաթև տարեց. 1925, 292, Սիսուան 541 ա։*

— 834. ՅՈՎԱՆԷՍ, *եղբայր Աստուածատուրի, որ ստացավ մի Աւետարան և նվիրեց Ուլկապոմ գյուղի Ս. Շմաւոն տաճարյալ եկեղեցուն 1423 թ.—Նոտարք 74։*

— 835. ՅՈՀԱՆՆԷՍ *աբեղա, գրիչ. օրինակել է Զաքարիա կաթողիկոսի Ներբողեան խաչի, 1423 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1117։*

— 836. ՅՈՀԱՆԷՍ *քահանա, գրիչ. գրել է մի Գանձարան և Տաղարան, 1424 թ.—*REA *7, 145։ Կարծեմ սրա հետ նույն է՝*

— 837. ՅՈՀԱՆԷՍ *քահանա, գրիչ. Ամասիայում, Մխիթար արքեպիսկոպոսի համար օրինակեց Գանձարանը 1424 թ.—Ձեռ. Լվով (ՀԱ 1937, 121—2)։*

— 838. ՅՈՎՀԱՆՆԷՍ *Խիզանցի, նկարազարդել է բազմաթիվ ձեռագրեր, ԺԴ դարի վերջում և ԺԵ դարի առաջին քառորդում—Խաչիկեանք 198։*

— 839. ՅՈՎՀԱՆՆԷՍ *միաբան Հերմոնի վանքի, որ «այժմ կրօնաւոր է և ի մերձակայ ուսուցս վարդապետ լինելոց». և այդ միջոցին Գրիգոր գրչին դրել է տվել մի Շարական նույն վանքում, 1425 թ.—Սիսական 126 ա։*

— 840. ՅՈՎՀԱՆՆԷՍ *քահանա, գրիչ. օրինակեց Աւետարանը Խանրոց գյուղում, ստացող Սիմէոնի և Մինայի համար, 1425 թ. —Սմբատեանց, Գեղարքունի 397, Ձեռ. Մեան. 9 ա։*

— 841. ՅՈՎԱՆՆԷՍ *քահանա, ուսուցիչ Դանիէլ աբեղայի, որ գնեց Քարոզգիրքը՝ 1425 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)։*

— 842. ՅՈՎԱՆԷՍ, *նորաբողբոջ որդի Էվաչայի, որ Տրապիզոնում գնեց մի հին Աւետարան, 1425 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 485։*

— 843. ՅՈՎԱՆԷՍ *որդի խոջա Աստուածատուրի, որ ազատեց Նարեկը թուրքմանի գերութիւնից և նվիրեց Վարագայ վանքին, 1425 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 55 ա։*

— 844. ՅՈՎՀԱՆՆԷՍ *առաջնորդ մի վանքի, որի անունը կորված է, 1426 թ.—Թորոս աղբ. Բ. 425։*

— 845. ՅՈՎՀԱՆՆԷՍ *եպիսկոպոս Քաջբերունեաց 1427 թ.—Տաշեան, Ցուց. 880։*

— 846. ՅՈՎՀԱՆՆԷՍ *և Սարգիս, հիշված են միասին, թվի թե ծառաներ են եղել Գուգարքի Կոթիփորոյ Ընկուզագոմ վանքում և ջուր են բերել, երբ Սարգիս եպիսկոպոսը արտագրում էր Յայսմաւուրքը նույն վանքում 1427 թ։—Նոտարք 86։*

— 847. ՅՈՎԱՆՆԷՍ *քահանա, հոգևոր եղբայր Սարգիս*

եպիսկոպոսի, որ Գուգարքի Կոթիփորոյ Ընկուզագոմ վանքում արտագրեց Յայսմաւուրքը 1427 թ։—Նոտարք 84։

— 848. Յոհաննէս գրիչ, Խիզանի Գամաղիէլ վանքում, Սագոնի դուստր Հռիփսիմէի պատվերով գրեց մի Աւետարան 1427 թ։—Նոտարք 82։

— 849. Յովաննէս միաբան ոմն Խիզանի նույն Գամաղիէլ վանքի, 1427 թ։—Նոտարք 83։

— 850. Յովանէս Ոստանցի, որդի Ամիր Սարգսի, եղբայր Էվատշահի (№ 3), որ տես. 1428 թ.—Ձեռ. Վասպ. 355։

— 851. Յովհաննէս քահանա, միաբան Կողուց վանքի 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 852. Յովհաննէս «գրոց աշակերտ» Կողուց վանքում, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 853. Յովհաննէս Ղազարոսենց «գրոց աշակերտ» Կողուց վանքում, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 854. Յովհաննէս սարկավագ, որդի տանուտէր պարոն Մկրտչի, Կողուց վանքում 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 855. Յոհաննէս գրիչ, սկսեց օրինակել Յայսմաւուրքը Սարգիս աբեղայի պատվերով. բայց շուտով Սարգիսը մեռավ և գրիչը շարունակեց և ավարտեց Մեծոփայ վանքում 1428 թ։—Նոտարք 89։

— 856. Յովհաննէս վարդապետ, առաջնորդ Լիմ անապատի. պահեց և խնամեց Թաթարների արշավանքից փախած ժողովրդին, որոնց մեջ էր նաև Թովմա Մեծոփեցին («1428 թ»).—Մեծոփ. 85, Ազգապ. 2051։

— 857. Տէր Յովանէս, հիշված է իբրև միաբան Մեծոփայ վանքի՝ վանահայր պատմաբան Թովմա վարդապետ Մեծոփեցու հետ 1428 թ. հայտնի չէ թե ով է։—Նոտարք 89։

— 858. Յովանէս վարդապետ, հաստատում է Պետրոս արքեպիսկոպոսի կտակը 1428 թ. (տես անդ)։—Ձեռ. Վասպ. 136։

— 859/860. Յովհաննէս, երկու նույնանուն միաբաններ Լուսաւորչի Ջորեհանգիստ վանքի, 1429 թ.—Նոտարք 92։

— 861. Յովհաննէս կաթուղիկոս Աղուանից 1428 թ.—Սմբատեանց՝ Սաղիան 244։

— 862. Յովանէս երեց Վաւդոեցի, 300 սպիտակ նվիրեց Լուսաւորչի Ջորեհանգիստ վանքին՝ առաջնորդ Ղազար վարդապետի ձեռքով 1429 թ.—Նոտարք 91։

— 863. Յոհաննես «գետաբուսիկ» եղբորորդի Մամատիկին (№ 8) աղաչխարողի, որ ամս. 1130 թ.—Ջեռ. Վասպ. 359։

— 864. Յովհաննէս Փոքոյ, տանուտեր Արճէշի. երբ Իսքէնտէր ամիրան պաշարեց քաղաքը, Յովհաննէսը Գորգի տանուտերի հետ միասին բանակցության մտավ նրա հետ, քաղաքը հանձնեց, որով ժողովուրդը կոտորածից ազատեց «1430 թ».—Մեծոփ. 93, Ջամչ. Գ. 465, Ազգապ. 2052։

— 865. Յոհաննես, հայր Ղազարի (№ 60), մերձավոր Խոսրովայ վանքի առաջնորդ Մկրտիչ (№ 101) քահանայի, 1430 թ.—Ջեռ. Վասպ. 358։

— 866. Տէր Ովաննես, որի գերեզմանը գտնվում է Եղիշէ Առաքեալ վանքի տաճարում 1431 թ.—Արցախ 235։

— 867. Յովաննես աբեղա, գրիչ. Ս. Կիրակոսի վանքում օրինակեց Մաշտոցը՝ 1432 թ.—Նոտարք 100։

— 868. Յովան, կինն է Արուս խաթուն, երկուսն էլ մերձավոր տանուտեր Յովսէփի, որ ստացավ մի Աւետարան 1432 թ.—Ջեռ. Վասպ. 163։

— 869. Յովհաննէս վարդապետ, իր միաբանակից Աբրահամ վարդապետի հետ Մեծոփի վանքում ծաղկեց մի Ճաշագիրք և Պատարագամատոյց 1432 թ.—Գաթըրճեան, Պարգմ. 84։

— 870. Յովաննես կրոնավոր, միաբանակից և հոգևոր եղբայր Մկրտիչ վարդապետի, որ Արճէշում, Կարապետ քահանային գրել տվեց Մաշտոցը. Յովաննէսն էլ «զհօթն օրէնքն գըրեաց և զիշատակարանս գրոցս» 1432 թ.—Նոտարք 101։

— 871. Յովհաննէս քահանա, գրել է Ամիրգայ վկայի նահատակության պատմությունը 1432 թ.—Նոտարք 98։

— 872. Յովհաննէս վարդապետ, աշակերտ Թովմա Մեծոփեցու. իր ուսուցչի հրամանով, իր աշակերտակից Մկրտիչ և Զաքարիա վարդապետների հետ օրինակեց Ճաշագիրքը՝ Մեծոփի վանքում, Ներսէս աբեղայի համար, 1432 թ.—Ջեռ. Մխ.Նխ. 15 ա, 19 ա։

— 873. Յովաննես աբեղա, որդի Ստեփաննոսի. մայրն է Զմրութ. եղբայրներն են Լէանոս և Կարապետ. եղբորորդիքն են Ստեփանոս, Յովանէս, Թումայ, քրոջ Պետրոս և Խաչատուր. Մոկաց Սուրբկանց գյուղում գնել է մի հին Աւետարան, 1433 թ։—Ջեռ. Վասպ. 204—5 (կոչում է իրեն «Ներփանուկ», որ Լալայեանը չի հասկանում և կողքին դնում է հարցական։ Նշանա-

*կում է «գարշապար» (ներբանուկ) և գրված է համեստության համար)։*

— 874. **Յովանէս**, *նույնի եղբորորդին է (տես վերը)։*

— 875. **Յովհաննէս** *վարդապետ «հռետորաբան», հիմնեց Խիզանի Ս. Խաչ վանքը՝ Դավիթ Գ կաթողիկոս Աղթամարցու («1393—1433 թ») ժամանակ.—Աղգապ. 2014։ (Որտեղի՞ց է հանել այս տեղեկությունը, քանի որ Խիզանի Ս. Խաչ վանքը հիշված է ավելի շուտ. տես № 763, որ թերևս նույն անձն է)։*

— 876. **Յովանէս**, *որդի Նորամիրի. տաճիկների ձեռքից գնեց մի Աւետարան 1433 թ.—Ձեռ. Վասպ. 364։*

— 877. **Յոհաննէս** *Երզնկացի, ոսկերիչ, տանուտեր, որդի Պատուականի. Արճէշում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան՝ 1433 թ.—Նշխարք 102, Ձեռ. Վասպ. 367—8։*

— 878. **Յովհաննէս** *եպիսկոպոս Սսոյ. իբրև կաթողիկոսական փոխանորդ գտնվում էր Պոլսում. նամակով դիմել է* Basel-*ի ժողովին և ծառայել է Եսայի արքեպիսկոպոսի հետ իբրև միջնորդ պապի և Կոստանդին կաթողիկոսի միջև, Ֆլորենտիայի ժողովի համար «1433 թ».—Պալճեան 80—83, Թորգոմեան՝ Սսումպ. պատմ. Բ, 482, 501. Աղգապ. 2077։*

— 879. **Յովհաննէս**, *որդի Յակոբի և եղբայր Յովհաննէս քահանայի. մեռած էր 1434 թ.—Թորոս աղբ. Բ. 414, Նշխարք, էջ 191։*

— 880. **Յովհաննէս** (Iwanis), *դատավոր Հայոց Լեհաստանի, 1416—1434 թ.*—REA *7, 71։*

— 881. **Յովհաննէս** *(գրուած* **յաւհանէս**) *աբեղա Կաֆայեցի. վերաբնակվել է Մարաշ, ուր իր եղբոր Զաքարի հիշատակին գրել է մի Պատարագամատոյց, 1434 թ.—ՀԱ 1894, 51 ա։*

— 882. **Յովհաննէս** *երեց, եղբայր Սարգիս գրչի՝ Տիւրիկ քաղաքում 1435 թ.—Տաշեան, Ցուց. 760։*

— 883. **Յովհանէս**, *արենակից ազգական բրուտ տանուտեր Ստեփաննոսի, որ Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, Վան 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։*

— 884. **Յովհաննէս** *վարդապետ, գրիչ. Ագուլեաց վանքում օրինակեց «Պատմութիւն» 1436 թ.—Սմբատեանց, Երնջակ 316 (մեծ ցուցակ, էջ 8)։*

— 885. **Յովհաննէս** *քահանա Գանձակեցի, որդի Հուսումի (տես այս անունը). ապրում էր Տփղիսի Կրծանիս գյուղում. ուխտի գնաց Երուսաղէմ. վերադարձին Դամասկոսում գնեց*

*թուղթ և այլ գրենական պիտույք. բերավ Վրաստան. գնաց Գանձակ՝ իրայնոց այցելության։ Գանձակից վերցրին իրենց եկեղեցու զգեստները, գրքերն ու սպասները՝ Վրաստան բերելու համար։ Աշտարակում Ջաղաթայի հեծյալները իրենց վրա հարձակվեցին և ամբողջ կարավանը մորեմերկ կողոպտեցին։ Դառնալով Կրծանիս, օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 27 ա։*

— 886. Յովանէս, *որդի Հուսամի (տես այս անունը) և եղբայր նախորդ Յովհաննէս քհ. Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 27 բ։*

— 887. Յովաննէս *տանուտեր, կինն է Մարթա. Աղթամարում գրել տվեց Դանիէլ քահանայի մի Աւետարան, 1436 թ։ Հայտնի է այս Յովհաննէսի գերդաստանը. հայրն է Տէրաւագ (և ոչ թե Տէր Աւագ. այսպես ուղղել Աւագ № 28), մայրը Աղիզտիկին. հորեղբայրը՝ Տիրացու. մեծ հայրն է Առաքել և տատը՝ Զըմրութ.—երեք եղբայրներն են Սահակ, Ստեփաննոս և Մկրտիչ, որոնց կանայքն են՝ Փոքրտիկին, Աւագտիկին և Սիրամարգ. սրանց որդիներն են Տէրաւագ (պապի անունով. այսպես ուղղել Աւագ № 29), Վարդանէս և Յովանէս սարկավագ, որ վաղամեռիկ եղավ։—Ձեռ. Վասպ. 373—4։*

— 888. Յովանէս *սարկավագ (տես նախորդը)։*

— 889. Յովհաննէս *քահանա Մելտինցի (իմա Մերտինցի՞ թե Մելիտինեցի, ինչպես ավելի հավանական է) ծաղկեց մի Շարական, Երզնկա 1436 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։*

— 890. Յովհաննէս *վարդապետ, մեծ բաբունի և քաջ հռետոր, որ ուսուցանում էր Հաղբատում, Զաքարիայի առաջնորդության ժամանակ, 1437 թ.—Նոտարք 112,* Manus. brit. mus. *էջ 96 բ։*

— 891. Յովանէս, *հայր Ստեփանոսի, որ Տրապիզոնում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1437 թ.* (Труды вост. комм. ИМАО, *հտ.* II, *3, էջ 55)։*

— 892. Յովհաննէս *քահանա, որդի Պետրոս քահանայի և եղբայր Ուլուխաթուն երեցկնոջ, որ իր հանգուցյալ ամուսին Աւետիք (№ 66) քահանայի հիշատակին,* Յովհաննէս *անուն անձից գնեց մի Աւետարան 500 սպիտակով, Կաֆա 1437 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 238։*

— 893. ՅՈՎՀԱՆՆԷՍ, այն անձն է, որից Ուլուխաթունը գնեց նույն Աւետարանը (տես նախորդը)։

— 894. ՅՈՎԱՆԷՍ աբեղա, որդի Ստեփաննոս քահանայի և հանգուցյալ եղբայր Կարապետ քահանա գրչի, որ Վանում արտագրեց Աւետարանը 1437 թ.—Ձեռ. Վասպ. 376։

— 895. ՅՈՎԱՆՆԷՍ ոսկերիչ, հայր Ահլիժմելիքի, որ Բաղեշում Աւետիք աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Manus. brit. mus. 30 բ։

— 896. ՈՀԱՆԷՍ երեց, որդի Առաքել երեցի, ծառայում էր Աղուանից Մատթէոս կաթուղիկոսի մոտ. մեռավ 1438 թ. կամ քիչ առաջ.—Ձեռ. Դադեան, Բ. 44 ա։

— 897. ՅՈՎՀԱՆՆԷՍ աբեղա Կաֆացի. աշակերտ Թովմա Մեծոփեցու. իր ուսուցչի կողմից ուղարկվեց Մկրտիչ Նաղաշի մոտ՝ միասին խմբագրելու համար Եւգինէոս պապի պատասխանը՝ 1438 թ.—Նշխ. լատ. 423։

— 898. ՅՈՎՀԱՆՆԷՍ արքեպիսկոպոս, որդի Ներսէս քահանայի, առաջնորդ Բարթուղիմէոս առաքյալի վանուց։ Աղաբիա և Մարգար գրիչներին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41—42։

— 899. ՅՈՎՀԱՆՆԷՍ հէքիմ, որդի Սկանդարի. խմբագրել է «Բժշկարան լիակատար», ի մասնաւորի «Անուանք դեղերոյ» կամ Բժշկական բառգիրք, Ջերմանց մխիթարութիւն (քաղված Մխիթար Հերացուց), Տառպել մարդոյ գիրք, 1438 թ.—Տաշեան Ցուց. 1127 ա, Ցոֆյանեան՝ Հետազօտ. Բ. 378։

— 900. ՅՈՎՀԱՆՆԷՍ սարկավագ Արճիշեցի. աշակերտ Թովմա Մեծոփեցու († «1448 թ»), որ սրբագրեց և նրան օրինակել տվեց «Օծումն հիւանդաց» գիրքը, որ Կիրակոս Վիրապեցին (օծված կաթուղիկոս 1441 թ) բերել էր Կաֆայից (ուրեմն ամենաուշը 1438 թ)։—Տաշեան, Ցուց. 677։ Նույն է անշուշտ № 989։

— 901. ՅՈՎՀԱՆՆԷՍ քահանա. գրիչ Հաղբատի վանքում 1438 թ.—Հայապ. 557։ Նույն է՝

— 902. ՅՈՀԱՆՆԷՍ քահանա, գրիչ. պանդուխտ Աստուածատուր երեցի պատվերով օրինակեց Ճաշոցը Հաղբատի վանքում, 1438 թ։—Նօտարք 115։

— 903. ՅՈՎՀԱՆՆԷՍ մանուկ Խլաթեցի, մականուն Խօլու կամ Հոյլու. քանամյա քաղցրաձայն երգիչ էր Խլաթի Սէյֆէդդին ամիրայի մոտ. քրդերը գրպարտեցին թե նա մի տաճիկ երգչուհու հետ ընկել է և պահանջեցին մահմեդական դառնալ։

Նա թուլացավ և համաձայնվեց. բայց նույն օրն ևեթ զղջալով դիմեց եկեղեցի։ Հայերը մերժեցին նրան հաղորդել, ուրացող և անհավատ կոչելով։ Նա մնաց մեջտեղ, տանջված հոգով և անօրէն արարքը ողբալով։ Ծախեց իր ամբողջ ինչքը և աղքատներին բաժանեց։ Դիմելով եկեղեցի, վճռաբար հայտնեց որ պիտի դիմի նահատակության և եկեղեցու բեմի առաջ իր գերեզմանի տեղն էլ որոշեց։ Մահմեդական ամբոխը բռնեց նրան և չարաչար տանջելուց հետո, քարկոծմամբ նահատակեց «1438 թ»։— Նոր վկ. 284—298 (երկու խմբագրությամբ), Ազգապ. 2089։

— 904. Յոհաննէս գրիչ. Մատթէոս քահանայի խնդրանքով օրինակեց Աւետարանը՝ Վրաստանի Գորի քաղաքի Ս. Աստուածածին եկեղեցում, 1438 թ.—Նոտարք 117։

— 905. Յովհաննէս արքեպիսկոպոս Պոլսի, Թերեւս Ֆլորենտիոյ ժողովին (1438) մասնակցող երկու հայերից մեկն է.— Պալճեան 92։

— 906. Ովանէս երեց Ծղունդեցի. հիշվում է իբրև վկա 1438 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 44 ա։

— 907. Յովհաննէս եպիսկոպոս Ծկեղեաց գավառի 1439 թ.—Տաշեան, Ցուց. 50։

— 908. Յովհաննէս, եղբայր Մովսէս քահանայի, որ Ծկեղեաց գավառի Աւագ վանքում ստացավ Յայսմաւուրքը 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49։

— 909. Յովհաննէս գրիչ. աշակերտ Կոստանդին կաթուղիկոսի և Գրիգորիս, Ստեփաննոս և Դաւիթ վարդապետների. օրինակեց Ոսկեբերանի Մեկնութիւն Յովհաննու. թվականն անհայտ, բայց 1112—1439 թվերի միջև.— յիշատ. Զարբ. Թրգմ. 613։

— 910. Յոհաննէս տանուտեր, Ոստան քաղաքում Կարապետ քահանային գրել տվեց մի Ճաշոց, որ նվիրեց Նահգենց գյուղի Ս. Գէորգ եկեղեցուն ՊՁԸ=1439 թ.—Նոտարք 119 (Ակինեան, Գուղնգրք. ուղղում է ՊԺԸ=1369)։

— 911. Յովհաննէս քահանա (որ և Յոհաննէս երեց), որդի Սահակ քահանայի. իր որդի Մանկասարի (որ ապա եղավ Մարկոս դպիր) գործածության համար, Իսկանդար անուն անձից գնեց մի հին Աւետարան երեք ֆլորինով և նորոգել տվեց 1439 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 83։

— 912. Վանէս, որդի Աբրահամի և թոռն? Մարկոս քահանայի, որի հայրը՝ Յոհաննէս քահանան գնեց և նորոգեց մի հին Աւետարան 1439 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 83։

— 913. Ռեհանես, *որդի Աբրահամի, եղբայր Վանեսի և թոռն? Մարկոս քահանայի, որի հայրը՝ Յովհաննէս քահանան գնեց և նորոգեց մի հին Աւետարան 1439 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. էջ 83։*

— 914. Ռճաննես *այլ, եղբայր նոյն Մարկոս քահանայի.—անդ։*

— 915. Յովհաննես *Ծործորանց, որի մասին տես Առատ (յաւել.) 1440 թ։*

— 916. Յովանես *վարդապետ, որդի Շատլուսի, մայրն է Խաթունշահ. սկսեց օրինակել Աւետարանը, բայց չվերջացրած վախճանվեց վաղամեռիկ։ Մնացյալը ծերունի Յովսէփ միայնակեցը (հողացեալս և փոշիացեալս ի գերեզմանի), իր ծախսով գրել և ծաղկել տվեց Մկրտիչ վարդապետին, Լիմ անապատում։ Մկրտիչը վերջացրեց Աւետարանը, բայց հիշատակարանը չգրած մեռավ։ Ծերունի Յովսէփը գիրքը կազմել տվեց Գրի(գոր) անուն անձին (№ 582), և իր ու առաջին գրիչ Յովհաննէս վարդապետի անունով նվիրեց Ս. Գէորգ եկեղեցուն, 1439 թ։—Ձեռ. Վասպ. 379—382 (շատ սխալ է հասկացել. տես և* Յովսէփ *և* Մկրտիչ *№ 116, որ պետք է ձևափոխել վերոհիշյալ իմաստով)։*

— 917. Յովանես, *հանգուցյալ որդի նոյն Յովսէփ միայնակեցի.—Ձեռ. Վասպ. 380։*

— 918. Յովհաննէս *Կոլոտիկ կամ Կոլոտենց, Երզնկացի կամ Հերմոնեցի. մեծ վարդապետի և ուսուցչի հռչակ ունի։ Արտաքասեան երկրից էր. սովորեց նախ Վայոց ձորի Հերմոնի վանքում, ապա աշակերտեց Գրիգոր Տաթևացուն, որին և հաջորդեց իբրև ուսուցիչ Տաթևի վանքում։ Հիշված է 1415—25 թ. իբրև առաջնորդ Հերմոնի վանքի (Սխտակյան 125 բ, 126 ա), և կոչված է Յովհաննէս Հռետոր (Սխտակյան 23 բ, 126 ա)։ Թովմա Մեծոփեցու գործակից և գլխավոր հեղինակն է կաթողիկոսական աթոռը Սսից Էջմիածին փոխադրելու համազգային գործի։ Ինքն է ուղարկել բոլոր հրավիրագրերը և ինքն էլ իբրև գլխավոր անդամ մասնակցել է ժողովին (1441 թ)։ Ընտրությունից հետո հակառակ կանգնեց Կիրակոս Վիրապեցուն, և մյուս բողոքավորներին էլ հավաքելով՝ 30 եպիսկոպոսներից և 40 քահանաներից մի խումբ կազմեց ու վտարեց նոր կաթողիկոսին։ Իր աշակերտներից են Դաւիթ և Ստեփաննոս վարդապետները (Նոտարք 122) և Մարկոս (№ 33) եպիսկոպոս Վրաց (Դրնդ. 313, 314)։ Ինքը խուլ էր։ Արտագրել է մի Ճառընտիր*

1441 *թ. (տես Փիլոքս. էջ* 28, *Միսաքեան* 126 *ա, Ձեռ. Վեննա. Բ.* 513 *և* 520, *Տաշեան, Ցուց.* 205)։ *Իր գրական երկերն են՝ Մեկնութիւն Եսայեայ (քաղուածք) և Լուծմունք Դիոնեսիոսի—Մեծոփ. յիշատ. ա, բ, գ. Առաք. պատմ.* 322. *Ձեռ. Դաշեան, Ա.* 92 *ա, Զամչ. Գ.* 453, *Դրնդ.* 310. *Զարբ. Նոր մատ.* 219. *Ազգապ.* 1997, 2032։ [*Մեծոփ.* 50 *գրված է «Յովհաննէս ի յԵկեղեաց ի վանաց Հերմանի», իսկ Ցայսմ. տպ.* 27 *«Յովհաննէս յԵղեգնաց վանից»։ Հերմոնի վանքը գտնվում է Թանատի վանքի մոտ, Եղեգեաց ձորում. ուստի* Եկեղեաց *ձևը սխալ ընթերցման արդյունք է. որից էլ պա հետևցրել են Երզնկա և Արարատեան երկրի բնակիչը դարձել է Երզնկացի*]։

— 919. **Յովհաննէս** *վարդապետ Արծկէի. անդամ էջմիածնի մեծ ժողովի* 1441 *թ.—Մեծոփ. յիշ. ա։*

— 920. **Յովհաննէս** *եպիսկոպոս Բջնիի. անդամ էջմիածնի մեծ ժողովի* 1441 *թ.—Մեծոփ. յիշ. ա։ Նույն է՝*

— 921. **Յովհաննէս** *եպիսկոպոս, վանահայր Բջնոյ* 1441 *թ.—Շահխաթ. Բ.* 113, 187, 282, 296>*Նոտարք* 123։

— 922. **Յովհաննէս** *եպիսկոպոս Արճէշի Մեծոփայ վանքի. անդամ էջմիածնի մեծ ժողովի* 1441 *թ.—Մեծոփ. յիշ. ա։*

— 923. **Յոհան** *վարդապետ Արծկեցի, իր ընկեր Սարգիս վարդապետի հետ մասնակցեց էջմիածնի մեծ ժողովին* 1441 *թ։—Նոտարք* 122։

— 924. **Յովհաննէս** *վարդապետ Խլաթեցի. անդամ էջմիածնի մեծ ժողովի «*1441 *թ».—Զամչ. Գ.* 487։

— 925. **Յովհաննէս** *վարդապետ Ապարանեցի. Թղթակից անդամ էջմիածնի մեծ ժողովի* 1441 *թ.—Մեծոփ. յիշ. ա։*

— 926. **Յովհաննէս** *վարդապետ ի Բարեձորոյ. Թղթակից անդամ էջմիածնի մեծ ժողովի* 1441 *թ.—Մեծոփ. յիշ. ա։*

— 927. **Յովհաննէս** *վարդապետ «միւս Գամաղիելայ վանիցս». Թղթակից անդամ էջմիածնի մեծ ժողովի* 1441 *թ.—Մեծոփ. յիշ. ա։*

— 928. **Յովհաննէս** *եպիսկոպոս Սասնոյ. Թղթակից անդամ էջմիածնի մեծ ժողովի* 1441 *թ.—Մեծոփ. յիշ. ա։*

— 929. **Յովհաննէս** *եպիսկոպոս, առաջնորդ Վարագայ վանից. Թղթակից անդամ էջմիածնի մեծ ժողովի* 1441 *թ.—Մեծոփ. յիշ. ա. Առաք. պատմ.* 322։ *Հմմտ.* № 804 *և* 1224։

— 930. **Յովհաննէս** *կաթուղիկոս Աղվանից, հաջորդեց Աթանասին* 1441 *թ.—Ջամբռ* 77։

— 931. Ոհ՞ս (=Յովհաննէս) կրօնաւոր, ստացաւոր Ս. Յովհաննէս վանքի՝ Արարատեան գաւառի Սերկեւլի գիւղում, 1441 թ.—Հրատ. Ազաթ. 1909 թ. յուլ. էջ ԽԹ։

— 932. Ոհաննէս միայնակեաց, «ի գաւառէն Վրաստանայ, ի յամուրն գղեակէն Թմոքոյ» (Ախալքալաք գաւառ), գրիչ. գրեց, ծաղկեց և կազմեց մի Ճառընտիր, Այրարատեան գաւառի Սերկեւիլ գիւղի իշխան Շալուէի պատուերով, նոյն գիւղի Ս. Յովհաննէս վանքում, 1441 թ.—Հրատ. Ազաթ. 1909 թ. յուլ. էջ ԽԹ։

— 933. Յոհաննէս, հիշված է Թումայ քահանայի հետ իբրև հոգևոր ծնող Մարգարէ (№ 41) բեղմնավոր գրչի, 1441 թ.—Նոտարք 124։

— 934. Յովաննէս, որդի Յոհաննէսի, եղբայր սույն Մարգարէ գրչի. հիշված է 1441 թ.—Նոտարք 124։

— 935/7. Յովհաննէս, երեք համանուն միաբաններ Աղթամարի Ս. Խաչ վանքի (մեկը փակակալ), 1441 թ.—Ջեռ. Վասպ. 384, Նոտարք 127։

— 938. Ոհաննէս, հիշված է իբրև աշակերտ Աղթամարի Ս. Խաչ վանքում 1441 թ. իր դասընկեր Հայրապետի հետ (№ 88), որ հետագայում նշանավոր գրիչ դարձավ։—Նոտարք 127 (Նույն հատվածը ունի նաև Ջեռ. Վասպ. 334, բայց այս երկուսի հիշատակությունը չի դրած)։

— 939. Յոհաննէս, կինն է Ոսկի, ծնողներն են Մարգարէ գրչի (№ 41), որ հիշված է 1441—63 թվերին, հայրը հիշված է նախ 1441 թ.—Նոտարք 124։

— 940. Յովհաննէս քահանա, գրիչ. Քաջբերունեաց Արճէշ քաղաքում, ստացող և նկարող Մկրտիչ քահանայի համար գրեց մի Ճաշոց, 1441 թ.—Թորոս աղբ. Բ. 223—4։

— 941. Յովաննէս հէրպետ, մորեղբայր Մկրտիչ քահանայի Արճիշեցւոյ, որ գրել տվեց մի Ճաշոց, 1441 թ.—Թորոս աղբ. Ա. 223։

— 942. Յովհաննէս Մանգասարենց, գրիչ. Արճէշում օրինակել է Գրիգորի Տղայի Ողբ Երուսաղէմի, 1441 թվին.—Manus. bibl. nat. էջ 151։

— 943. Յովաննէս քահանա, որդի Ղազար երեցի, որ իր հոր հետ միասին Տիւրիկում գնեց մի Ճաշոց, գրված 1441 թ.—Թորոս աղբ. Ա. 224—5 (տես Ղազար երեց)։

— 944. **Յովհաննէս** *աբեղա Այրիվանից. գրել տվեց մի Շարական 1441 թ.—Արարատ 346։*

— 945. **Յովաննէս** *քահանա, իր որդի Յակոբ դպրի հետ միասին գրեցին մի Յայսմաւուրք, Հերմոնի վանքի Սարգիս ճգնավորի համար 1441 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 242։*

— 946. **Յովհաննէս** *(Ովանէս), եղբայր Ստեփանոսի. մայրն է Շամս խաթուն, որդիներն են Դանիէլ քահանայի (№ 30). մանրամասն տես Շամսխաթուն. հիշված են 1433, 1436 և 1441 թվերին։—Ձեռ. Վասպ. 366, 375, 383։*

— 947. **Յովհաննէս** *եպիսկոպոս Խրիմի, կանգնեցրել է մի խաչքար, 1442 թ. այժմ գտնվում է Նոր-Նախիջևանի Ս. Լուսաւորիչ եկեղեցում։—Ջալալ. Բ., էջ 467> Նօտարք 128, Ազգագր. հանդ. Է, 49։*

— 948. **Յովհաննէս** *միայնակեցիկ կրօնավոր. գրիչ. արտագրել է Ճառընտիրը 1442 թ.—Սոկր. յոջ. 38, Ձեռ. Կարին. 133։*

— 949. **Յովհաննէս** *քահանա, գրիչ. օրինակել է Աւետարանը 1442 թ.—Ձեռ. Կարին. 17։*

— 950. **Յովաննէս** *քահանա, եղբօրորդի Արծկէի առաջնորդ Ստեփաննոս արքեպիսկոպոսի. գրիչ. Արծկէում օրինակեց Յայսմաւուրքը, 1442 թ.—Նօտարք 129։*

— 951. **Հաննէս** *պապ Անդրէասի, որ գնեց մի հին Աւետարան, 1442 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 17 բ։*

— 952. **Յովան** *քահանա Զմշկածագցի, նահատակվել է հավատքի համար Մելիք Մահմի Ուզբէկցու ձեռքով և թաղվել է Խարբերդի Խուլէ վանքի Ս. Աստուածածնի մատուռում, 1443 թ։ Այս մասին գրում է նահատակի եղբայրը՝ Գէորգ եպիսկոպոս (№ 109) Զմշկածագցի (Թորոս աղբ. Բ., 350). բայց տաճկական գրաքննութիւնը այնպես է կրճատել պատմութիւնը, որ բոլորովին խաթարվել է։ Այս պատճառով այդ Մահմին, որ ինչպես երևում է Օզբէկ թաթար է և Յովան քահանային նահատակողն է, սխալմամբ հայ եմ կարծել և այդպես նշանակել վերը՝ էջ 170։ (Լավ է արել Նօտարք 131, որ Մահմիի հիշատակութիւնը բոլորովին հապավել է)։*

— 953. **Յոհան** *վարդապետ, Յովհաննավանքի աթոռակալն էր Էջմիածնում. հակառակորդ մի խումբ եպիսկոպոսների հետ միանալով վտարեցին Կիրակոս կաթողիկոսին և դրին Գրիգոր Մակուեցուն 1443 թ.—Զքր. սարկ. Գ. 31։*

— 954. **Յովաննէս** *որդի Կարապետ քահանայի, և եղբայր*

Աստուածատուր քահանայի, որ Խլաթում օրինակեց Աւետարանը, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 955. Յոհանէս տանուտէր, որդի տէր Մկրտիչի. Խլաթում, իր կնոջ Հալվախաթունի հետ միասին՝ Աստուածատուր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1443 թվին.—Ձեռ. Նոր-Բայազ. 18—19։

— 956. Յովհաննէս, որդի Առաքել քահանայի, որ Աղթամարում, Դանիէլ գրչին գրել տվեց մի Ճաշոց 1444 թ.—Նոտարք 135։

— 957. Յովհաննէս սարկավագ, որդի Դանիէլ (№ 30) քահանա գրչի, որին աշխատակցել է թուղթ կոկելու և կցելու գործում, Աղթամար 1444 թ.—Նոտարք 135։

— 958. Յոհաննէս կրոնավոր, երեցփոխան Արղնիի Ս. Աստուածածին վանքի 1444 թ.—Առաք. պատմ. 323։

— 959. Յովաննէս վարդապետ Պուտըլկեցի, Յակոբ վարդապետի հետ միասին գլուխ կանգնեցին և վանահայր Թումայ աբեղայի, միաբանների և Գաւաշեցի ժողովուրդի օգնությամբ ի հիմանց վերաշինեցին Ս. Վարդան վանքը և կալվածներով հարստացրին 1415—44 թ.—Ձեռ. Վասպ. 389, Նոտարք 46։ (Հրատարակիչն ասում է թե այս Պուտըլկեցին ունի մի քանի լավ գանձեր)։

— 960. Յովաննէս, վեց միաբաններից մէն է Գաւաշից Ս. Վարդան զօրավար վերանորոգված վանքի 1444 թ.—Ձեռ. Վասպ. էջ 389։

— 961. Յովաննէս, հինգ քահանաներից մեկն է Գաւաշ գյուղի Ամենափրկիչ և Ս. Կիրակոս եկեղեցիների 1444 թ.—Ձեռ. Վասպ. 388։

— 962. Յոհանէս Փափոսենց, Գաւաշ գյուղի տանուտերներից էր. իր ընկերակիցների հետ (Թումայ Մանկասարենց, Կիրակոս հիւսն, Խօջա Ստեփաննոս, Ջէթկանց Կիրակոս և Աղասպշահ) և Գաւաշի գյուղացոց օգնությամբ վերաշինեցին Ս. Վարդան զօրավարի վանքը 1444 թ.—Ձեռ. Վասպ. 389, Նոտարք 46։

— 963. Յոհանէս եպիսկոպոս, միաբան Ոստանի Գալկի վանից, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 41 ա։

— 964. Յովանէս բաբունի, միաբան Ոստանի Գալկի վանից. որդեն մեռած էր 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։

— 965. ՅՈՎԱՆԷՍ *կրօնաւոր, միաբան Ոստանի Գոլկի վանից, 1444 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 41 ա։*

— 966. ՅՈՎԱՆԷՍ *կրօնաւոր, (այլ), փակակալ Ոստանի Գոլկի վանից, 1444 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 41 ա։*

— 967. ՅՈՎԱՆԷՍ *վարդապետ, (այլ), միաբան Ոստանի Գոլկի վանից, 1444 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։*

— 968. ՅՈՀԱՆԷՍ *կրօնաւոր, (այլ), միաբան Ոստանի Գոլկենց վանից. արդեն մեռած էր 1444 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40բ։*

— 969. ՅՈՀԱՆՆԷՍ, *որդի Խաչիկի և եղբայր Հայրապետ աբեղայի, որ Ղուկիկ Թումայ կրօնաւորի համար, Աղթամարում օրինակեց Աւետարանը 1444 Թ.—Ձեռ. Վասպ. 388։*

— 970. ՅՈՎԱՆԷՍ *քահանա, պապ Կարապետ քահանայի, որ Ոստանում օրինակեց Գանձարանը՝ 1444 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։*

— 971. ՅՈՎԱՆԷՍ *քահանա, որդի Ստեփանի և եղբայր Կարապետ քահանայի, որ օրինակեց Ոստանում Գանձարանը, 1444 Թ.—այս Թվին մեռած էր Յովհաննէսը.--Ձեռ. Նոր-Բայազ. էջ 40 բ։*

— 972. ՅՈՎՀԱՆՆԷՍ *Ե. պատրիարք Երուսաղէմի. ըստ Աղաւնունու հաջորդել է Եսայի Գ պատրիարքին և գահակալել է 1431—1441 Թ. իսկ ըստ այլ տեղեկութեանց գահակալել է 1441—45 Թ. ուրեմն պետք է երկարել Յովհաննէս Ե 1431—1445 Թ։ Իր հաջորդն է Աբրահամ Ե (№ 73)։*

— 973. ՅՈՎՀԱՆՆԷՍ *աբեղա, միաբան Մշու Ս. Յովհաննէս վանքի. շքադիր ուղեկիցներից մեկն է Կարապետ աբեղայի եպիսկոպոսական ձեռնադրութեան առթիվ, 1445 Թ.—Նոտարք 142 (տես Կարապետ № 195)։*

— 974. ՅՈՀԱՆՆԷՍ *քահանա, մերձաւոր Յոհաննէս կրօնաւորի, որ Թովմա Մեծոփեցի պատմագրի եղբօրորդին էր և Արճէշում գրել տվեց մի Աւետարան 1445 Թ.—Նոտարք 147։*

— 975. ՅՈՎԱՆՆԷՍ *կրօնաւոր, որդի Բաղտասարի, Գաւաշից (Բըծոնց) գյուղից. Ուշտունեաց Ս. Յակոբ վանքի առաջնորդ Սիմէոն վարդապետի հորդորով դիմեց Մինասենց Թումայ գրչին և գրել տվեց նրան Աղթամարում մի Մաշտոց, որ նվիրեց նույն վանքին 1445 Թ.—Նոտարք 136։*

— 976. ՅՈՎՀԱՆՆԷՍ *աբեղա, փակակալ Սեպուհ լեռան Ս. Լուսաւորիչ վանքի. հիշված է 1442 և 1445 Թ.—Նոտարք 129, 135։*

— 977. **Յովաննես** *աբեղա, միաբան Սեպուհ լեռան Ս. Լուսաւորիչ վանքի. գրիչ. օրինակեց մի Սաղմոս և նվիրեց նույն վանքին՝ 1442 թ. երեք տարի անց՝ օրինակեց Աւետարանը՝ 1445 թ.—Նոտարք 129, 135։*

— 978. **Յովհաննէս** *կրոնավոր, որդի Գորգի Մելիքի՝ եղբոր Թովմա Մեծոփեցի պատմիչի. իր ուսուցիչն էր Ամիրմէլիք (№ 3, որ ուղղել այս ձևով)։ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան 1445 թ.—Նոտարք 147։*

— 979. **Յովհաննէս** *վարդապետ, առաջնորդ Մեծոփայ վանքի. ամբողջ միաբանության օգնությամբ շինեց Մեծոփի Ս. Մարիամ Աստուածածին տաճարը՝ սկսելով 1402 թ. և վերջացնելով 1409 թ. (ուրեմն 7 տարի)։ Շինության վրա աշխատող ճարտարապետներն էին նախ նույն Յարան՝ գլխավոր ճարտարապետ, որ Լէնկթիմուրի տարած գերիներից էր և ապա փախչելով կամ ազատվելով եկել էր Մերտին։ Յովհաննէսը մարդ ուղարկեց և կանչեց նրան իր մոտ։ Մյուս ճարտարապետներն են 12 հոգի. Ատոմ, Սիրուն, Դաւիթ, Տիրատուր, Մկրտիչ, Յովհաննէս, Յովսէփ, Ղազար, Ատոմ, Մարտիրոս, Զաքարբէկ, Կիրակոս։ Ընդարձակ արձանագրությունը այս մասին գտնվում է տաճարի արևմտյան պատի վրա, դրսի կողմից։ (Օրինակությունը հրատարակված է Նոտարք 30. տես և անդ 17)։ Նույն 1409 թվին Մեծոփ եկավ Գրիգոր Տաթևացին, իր աշակերտների հետ միասին։ Յովհաննէս վարդապետը գնաց նրա առաջ, հրավիրեց իր վանքը, ուր հաստատվելով Տաթևացին՝ սկսեց ուսուցանել (Նոտարք 33)։ Կարծեմ այս նույն անձն է, որ ապա դարձավ* **Յովհաննէս** *եպիսկոպոս և առաջնորդ Բաջբերունեաց երկրի (Արճէշ). Թովմա Մեծոփեցի պատմագրի, Մկրտիչ վարդապետի և Մեծոփայ վանքի այլ միաբանների հետ միասին շինել են Աստուածատուր Արճիշեցու (№ 28) շիրիմը՝ 1432 թ (Նոտարք 100, 101)։ Հիշված է նաև 1437 թ. իբրև շնորհող Յայսմաւուրքի մի օրինակի արտագրության (Նոտարք 112)։ Իբրև հանգուցյալ հիշված է 1445 թվին (Նոտարք 147)։ Նույն է № 742։*

— 980. **Յովհաննէս** *աբեղա, իր եղբայր Թումայի (№ 149) հետ միաբան Ոշտունեաց Բերդաձորի Ս. Յակոբ մենաստանի. երկուսն էլ քեռիներն են Առաքել աբեղայի (№ 71), որ Մարգարէ (№ 41) գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց նույն վանքին 1446 թ.—Ձեռ. Վասպ. 400։*

— 981. **Յովհաննէս** *վարդապետ, քաղցրաձայն երաժիշտ,*

խարագնազգեաց ճգնաւոր և առաջնորդ Երզնկայի Ս. Կիրակոս վանքի. Ներսէս կրօնաւորին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1446 թվին.—Թորոս աղբ. Բ. 296, Նոտարք 148։

— 982. **Յովհաննէս** աբեղա, միաբան Երզնկայի Ս. Կիրակոս վանքի, հոգևոր սիրեցյալ որդի նույն վանքի Յովհաննէս (№ 981) վանահոր, 1446 թ.—Նոտարք 148։

— 983. **Յովաննէս**, եղբայր Մկրտիչ կրօնաւորի, որդի Բուքի. Բաղէշում, Ստեփաննոս գրչին գրել տվին մի Յայսմաւուրք և նվիրեցին Գառաշի Ս. Վարդան զորավար վանքին 1446 թ.—Նոտարք 151—2։

— 984. **Յովհաննէս** բարունի, այն է ուսուցիչ Սեպուհ լեռան Ս. Լուսաւորիչ և Ս. Կիրակոս վանքում. իր աշակերտներն են Աբրահամ, Մարտիրոս, Աստուածատուր և Աւետիք աբեղան են, որոնք սովորում էին 1445 թ. (Նոտարք 135)։ Իր երկու աշակերտների՝ Աստուածատուր և Աւետիք աբեղաների հետ մասնակցեց մի Յայսմաւուրքի խմբական գրչության նույն վանքում, 1446 թ.—Նոտարք 149։

— 985. **Յովհաննէս** աբեղա, միաբան Երզնկայի Ս. Կիրակոս վանքի, եղբորորդի Յովհաննէս (№ 981) վարդապետի, որ առաջնորդն էր նույն վանքի, 1446 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 986. **Յովհաննէս** եպիսկոպոս, մականունը Ոսկիափոր, ուսուցիչ գրչության արվեստի. ուսուցանում էր Արարատեան գավառի Սերկևիլի գյուղի Ս. Յովհաննէս վանքում, 1441 թ. (հրատ. Ազատ. 1909 թ. յուշ. էջ ԽԸ)։ Անշուշտ սրա հետ նույն է Յովհաննէս եպիսկոպոս Անիի, «մականունեալ Ոսկեփոր». գրել է մի գեղեցիկ Շարական, որից արտագրել է Մաթէոս գրիչը Այրիվանքում, 1447 թ.— Ձեռ. Բեռլինի, 30 ա։ Հմմտ. № 687։

— 987. **Յովհաննէս** կրօնաւոր, եղբորորդի Տէր Պետրոս գրչի, որ օրինակեց Շարականը՝ 1447 թ.—Ձեռ. Բեռլինի, 29 բ։

— 988. **Յովհաննէս** աբեղա, ձեռնասուն աշակերտ Մաթէոսի, որ գնեց մագաղաթ և իր ձեռքով օրինակելով Շարականը Այրիվանքում, նվիրեց Յովհաննէսին, 1447 թ։ Նույն Շարականը Յովհաննէսը ծաղկել տվեց Մինաս նկարչին.—Ձեռ. Բեռլինի, 30 ա.

— 989. **Յովհան** Արճիշեցի, աշակերտ Թովմա Մեծոփեցու. Մեծոփի վանքում օրինակել է ԺԱ դարում գրված և Կիրակոս Վիրապեցու ձեռքով Կաֆայից բերված լեզվաբանական մի լուրջ աշխատություն, 1411—48 թվերին։ Պարունակում է 7 լեզվի այբուբեն և աղոթքներ։ Այստեղ է նաև Աղվանից այբուբենը։

Ձեռագիրը գտնվում է այժմ Երևանի Մատենադարանում և կրում է 7117 համարը։ Գտավ անմատչելի փաքի ու պատվի արժանի վրացի երիտասարդ գիտնական Աբուլաձէն, 1937 սեպտ. 28։ Հատուկ ուսումնասիրություն գրեց վրացի նշանավոր գիտնական Շանիձէն. (տես իմ հոդվածը՝ Տեղեկ. Արմֆանի 1941, № 3—4, էջ 3—4 և հատկապես էջ 5)։ Անշուշտ նույն է № 900։

— 990. Յովհաննէս քահանա, պաշտոնավարում էր Թաւրիզի եկեղեցում 1448 թ.—Ձեռ. Թաւր. 70 բ։

— 991. Յովանէս ոսկերիչ, որդի Ամիրմուլքի, հայր Յովհաննէսի, Խաչատուրի և Յուստիանէի. մեռավ և նրա հիշատակին՝ իր կինը Թուրվանդա՝ գրել տվեց մի Աւետարան՝ Գրիգոր քահանային, Աղթամար 1449 թ.—Ձեռ. Վաստ. 403։

— 992. Յոհանէս, որդի նույն ոսկերիչ Յովհաննէսի.—Ձեռ. Վաստ. 403։

— 993. Յովաննէս եպիսկոպոս, առաջնորդ Արպեսլանի վանից, 1449 թ.—Manus. brit. mus. 95 բ. Նոտարք 161։

— 994. Յոհաննէս որդի Սքանդարի, որդիները մեռնելով նրանց հիշատակին 24 թամուրի թանկայով գնեց չաղաթայից գերի ընկած մի Շարական, որ նվիրեց Եսայի քահանայի որդի Յովհաննէս սարկավագին, Արպեսլանի վանքում, 1449 թ.— Նոտարք 160, Manus. brit, mus. 95 բ. (որ սխալ է գրում Յոհանէս որդի ժանկտարի)։

— 995. Յովհաննէս սարկավագ, որդի Եսայի քահանայի, «դեռաբոյս մանուկ», նույն սարկավագն է Յարպիլանայ ուխտում, որ նվեր ստացավ այդ Շարականը 1449 թ.—Նոտարք 161, Manus. brit. mus. 95 բ։

— 996. Յոհանէս երեց, որդին է Սարգիս երեցի. մի հին Աւետարան նվիրեց Մարտիրոս երեցին, 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 537։

— 997. Յոհաննէս հայրապետ Արճէշի Արծուաբեր վանքի. ուր կա նրա հիշատակին մի խաչքար, որ կանգնեցրել է նրա եղբայրը Կարապետ վարդապետ, 1449 թ.—Նոտարք 160։

— 998. Յովհաննէս քահանա, միաբան Ապահունեաց ուխտի, 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 999. Յովհաննէս, այլ միաբան նույն ուխտի, 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 1000. Յոհանէս կուսակրոն աբեղա, որդի Եղէանի, հա-

գեոր եղբայր Յովսէփ աբեղայի, որ Մկրտիչ Նաղաշից ստացավ մի Աստուածաշունչ՝ 1449 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 115։

— 1001. **Յովանես**, *որդի Եղէոնի, և եղբայր նույն Յոհաննէս աբեղայի՝ 1449 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 115։*

— 1002. **Յովանէս** *աշակերտ Կարապետ վարդապետի, որ էր վերջին ստացող մի Աստուածաշնչի, 1449 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 296։*

— 1003. **Յովհաննէս** *քահանա, որդի Մանկասարի, գրիչ. գըրակալ Վարդանի պատվերով Արճէշում օրինակեց Աւետարանը 1450 թ.—Ձեռ. Թաւր. 66 բ։*

— 1004. **Յովհաննէս**, *որդի Աւետիսի և եղբայր Վարդան գրակալի, որ Արճէշում՝ նույն Յովհաննէս քահանայից գրել տվեց Աւետարանը 1450 թ.—Ձեռ. Թաւր. 66 բ։*

— 1005. **Յովանէս** *կրոնավոր, գրիչ. Ցիպնայ դաստակ վանքում, Կարապետ միայնակեցի համար օրինակեց մի Աւետարան, 1450 թ.—Ձեռ. Վասպ. 406, Նոտարք 166։*

— 1006. **Յոհաննէս** *աբեղա, միաբան Ցիպնայ դաստակ վանքի, հիշված է 1450 թ.—Ձեռ. Վասպ. 406, Նոտարք 166։*

— 1007. **Յովաննէս**, *որդի Ամիրալեի և հօրեղբօրորդի Ամիրդօլի, որ մի Ճաշոց նվիրեց Խլաթի Ս. Յովհաննէս վանքին, 1450 թ.— Նոտարք 164։*

— 1008. **Յովանէս** *քահանա, որդի Կարապետ քահանայի. մայրն է Թադամելիք. գրիչ. Ամիրդօլի պատվերով գրեց մի Ճաշոց՝ Խլաթ քաղաքում, 1450 թ.—Նոտարք 164։*

— 1009. **Յովանէս** *կրոնավոր, միաբան Խլաթի Ս. Յովհաննէս վանքի, 1450 թ.—Նոտարք 164։*

— 1010. **Յոհաննէս** *գրիչ. Հարհոց գյուղում օրինակել է Աւետարանը՝ Կիրակոս եպիսկոպոսի համար, 1450 թ.—Ձեռ. Բեռլինի, 5բ։*

— 1011. **Յովհաննէս** *եպիսկոպոս, հաջորդ Եղիազարի. երրորդ աջպահ. «1450-ական թվերին»—Աղզապ. 2938։*

— 1012. **Յովանէս** *քահանա, ապա աբեղա, որդի Ստեփաննոս քահանայի և եղբայր Կարապետ (№ 202) երեցի, որ տես. հիշված է 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։*

— 1013. **Յովանէս**, *վաղամեռիկ որդի Կարապետ Մանկարօնի (№ 204). մեռել էր նախ քան 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։*

— 1014. **Յովհաննէս** *կրոնավոր, տարեգիր. պատմում է Ջահանշահի Վրաստանում կատարած կոտորածների և Բաղդադ,*

*Երզնկա, Բաղէշ և Խլաթ քաղաքների գրավման մասին, 1440—1451 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 58 ա։*

— **1015. Յոհաննէս** *քահանա, կինն է Բաղդադ. ծնողներն են Մովսէս աբեղա (№ 96) գրչի, որ Գղնձայգոյ Աւագ անապատում գրեց մի Աւետարան 1451 թ.—Ձեռ. Վասպ. 408։*

— **1016. Յովհաննէս** *քահանա. ստացող. օրինակել տվեց մի Աւետարան՝ 1451 թ. (ծեր և ծուժ).—Ձեռ. Սևան. 9բ։*

— **1017. Յովհաննէս** *գրիչ. օրինակել է Աւետարանը 1452 թ.—Ձեռ. Կարին. 20։*

— **1018. Յովհաննէս** *քահանա, կինն է Ջմրուխտ. ծնողներն են Վարդան գրչի (որ Վան քաղաքում գրել է զանազան ձեռագրեր 1452—65 թվերին) և Կարապետ քահանայի (№ 205), որ նույնպես գրիչ է և նահատակվել է հավատքի համար Արճէշում 1437—52 թվերի միջև։—Նոտարք 111, 169, 171, 172, 222. Ձեռ. Վասպ. 138։*

— **1019. Յովհաննէս** *քահանա, որդի նշանավոր տաղասաց Առաքել Բաղիշեցու (№ 77), մեռել էր «ի հասակ մանկագունի» նախ քան 1453 թ.—Տաշեան, Ցուց. 795, Հայապ. 126, Ձեռ. Դաշեան, Ա. 42բ, Ձեռ. Հալէպի, Ա. 104բ։*

— **1020. Յովհաննէս**, *որդի տանուտեր Խաչատուրի (№ 97), որ Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան 1453 թ.—Ձեռ. Վասպ. 419, 420։*

— **1021. Յովանէս**, *որդիներից մեկն է Վարդան երեց գրչի, որ Վանում օրինակեց 2 Աւետարան, 1452 և 1453 թ.—Նոտարք 169, 171, 122, Ձեռ. Վասպ. 138։*

— **1022. Յովանէս** *տանուտեր. կինն է Աւագուհի (№ 2). Վանում, Վարդան երեցին գրել տվեց մի Աւետարան, 1452 թ. մի տարի հետո նույն Յովանէսը որդեգրեց Թումային և նրան տվեց տանուտերությունը։ Թուման Վարդան կազմարարին կազմել տվեց Յովանէսի մի Ճառընտիրը, որ նույն Յովանէսը նվիրեց Թումային, 1453 թ.—Նոտարք 169 և հրատ. Ազաթ. 1909 թ. յուլ. էջ ծ—ծա։*

— **1023. Յովանէս** *եղբայր Մելքիսեթ երեցի, որ օրինակեց Գանձարանը՝ Աւան գյուղում, 1453 թ.*—Bodleian *134։*

— **1024—26. Յովհաննէս**, *երեք համանուն միաբաններ Վարագայ վանքի 1454 թ.—Նոտարք 175—6։*

— **1027. Յովաննէս** *կրոնավոր, որդի Սիմէոնի և փաղամե-*

որի եղբայր Կարապետ վանահոր, որ Գառուագրակի վանքում օրինակեց Աւետարանը, 1454 թ.—Rapport Belgique 97։

— 1028. Յովհաննէս ոմն, որ Սուչավա քաղաքում մի տուն կտակեց Մոլտովիցա վանքին 1454 թ.—Տաշ, Արևել. հայք 15։

— 1029. Յովանէս որդի Ստեփանոսի, եղբայր Աստոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 580)։

— 1030. Յովանէս, որդի Կիրակոսի, հօրեղբայր մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։

— 1031. Յովհաննէս արքեպիսկոպոս, աթոռակալ Վարագայ վանքի և առաջնորդ Վանի. հիշված է 1435—1454 թվերին (Ձեռ. Վասպ. 369, 137, Նոտարք 106, 146, 154, 158, 169, 171, 175—6։—Ըստ Զամչ. Գ. 487 Յովհաննէս եպիսկոպոսը մասնակցել է Էջմիածնի մեծ ժողովին 1441 թ. (բայց Մեծոփ. յիշ. ա տալիս է Յովհաննէս վարդապետ!) Նոտարք 188 հրատարակված մի հիշատակարանում 1458 թվին Վարագի առաջնորդ է գրված Յովսէփ եպիսկոպոս, որ Փիրղալէմեան սխալ է համարում և ուղղում է Յովհաննէս։ 1465 թվին էլ (Նոտարք 222) Վարագայ առաջնորդ են հիշվում Յովանէս եպս. մեծն և Յովհաննէս եպս. փոքրն։ Իսկ 1467 թ. Վարագայ առաջնորդն է «Տէր Յովաննէս եպիսկոպոս» (Նոտարք 232)։—Հմմտ. նաև № 804, 929, 1224։

— 1032. Յովհաննէս վարդապետ, որդի Վարդանի, գրիչ. Գամաղիէլի վանքում օրինակել է մի Ճաշոց 1442 թ. մի Աւետարան 1445 թ. և մի Աւետարան էլ 1455 թ.—Նոտարք 128, 145, 181։ (Առաջին Աւետարանը գրված է առաջնորդ Դաւիթ եպիսկոպոսի օրով, երկրորդը առաջնորդ Յովհաննէս վարդապետի ժամանակ, որի մահից հետո առաջնորդ է ընտրվել մի ուրիշ Յովհաննէս անուն վարդապետ։ 1455 թվին գրիչը իրանից բացի հիշում է հինգ Յովհաննէս անուն վարդապետ, որոնցից երկուսը առաջնորդ։ Փիրղալէմեան այս գրիչ Յովհաննէսին համարում է նույն վանքի վանահայր, ինչ որ չի ակնարկված գրչի կողմից, և միացնում է Զամչ. Գ. 487 հիշված Գամաղիէլի վանքի վարդապետ Յովհաննէսի հետ, որ Էջմիածնի մեծ ժողովի թղթակիցն էր։ Մեծոփ. յիշ. ա հիշում է երկու այսպիսի անձ։—Հմմտ. վարը № 1040։

— 1033. Յոհաննէս նախորդի եղբայրն է, որ մեռած էր արդեն 1442 թ.—Նոտարք 128։

— 1034. Յոհաննէս, միաբան Բասենի Սպիտակ վանքի 1455 թ.—Նոտարք 180։

— 1035. Յովանէս քահանա, որ Յոհաննէս տանուտերի հետ միասին Մոկաց Փասավանք գյուղում, Խարայէլ քահանային գրել տվեց մի Ավետարան 1455 թ.—Նոտարք 178։

— 1036. Յոհաննէս տանուտեր, Մոկաց Փասավանք (Փառավանք) գյուղում. տես նախորդը 1455 թ.—Նոտարք 178։

— 1037. Յոհանէս, կինն է Ոսկի, ծնողներն են Խաչատուր քահանայի, որ Արճէշում, Դաւիթ (№ 208) գրչին գրել տվեց մի գեղանկար Ավետարան 1455 թ.—Նոտարք 177։

— 1038. Յովանէս քահանա, ուսուցիչ նույն Դաւիթ քահանայի (№ 208), որ Արճէշում, Խաչատուր քահանայի պատվերով գրեց մի գեղանկար Ավետարան 1455 թ. —Նոտարք, էջ 177։

— 1039. Յովհաննէս բաբունի, առաջնորդ Գամաղիէլի վանից 1445 թ., որի մահից հետո առաջնորդ ընտրվեց մի ուրիշ Յովհաննէս վարդապետ 1455 թ.—Նոտարք 145, 181։

— 1040—42. Յովհաննէս, երեք համանուն միաբաններ Գամաղիէլի վանքում, 1445, 1455 թ.—Նոտարք 145. 181։ Հմմտ. վերը № 1032։

— 1043. Յովհաննէս, միաբան Ս. Փրկչի, թուղթ էր կոկում իր հոգևոր եղբայր Թադէոս սարկավագի համար, երբ սա Երուսաղէմի Ս. Սարա վանքում օրինակում էր Ավետարանը 1455 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 59։

— 1044. Յովհաննէս քահանա, գրիչ. Արճէշում օրինակեց մի Ավետարան՝ 1455 թ.—Նոտարք 182։

— 1045. Յոհանէս եպիսկոպոս, առաջնորդ Տրապիզոնի, 1455 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 190։

— 1046. Յովանէս, վաղամեռիկ որդի Ստեփանոսի՝ եղբորորդւոյ տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 582։

— 1047. Յովանէս, հորեղբայր նույն տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Ավետարան, 1455 թ. — Ձեռ. Վեննա. Ա. 582։

— 1048. Յովանէս, հորեղբորորդի նույն տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց Ավետարանը, 1455 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 582։

— 1049/1050. Յովհաննէս քահանա, եղբայրն էլ կոչվում է

**Յովհաննէս** *տանուտէր. Մոկաց Փառավանք գյուղում, Իսրայէլ քահանային գրել տվին մի Աւետարան, 1455 թ։ Հայտնի է սրանց ամբողջ գերդաստանը. — Պապի հայրն է Գրիգոր, որի կինն է Մելիք. սրանց որդին է Աբրահամ, որի կինն է Արքայ. (սրանք լինում են Յովհաննէսի պապն ու տատը). սրանք ունենում են երկու դուստր (Արղուն և Բաղդադ) և չորս որդի՝ Գրիգոր, Աստուածատուր, Սարգիս և Մեծատուր. վերջինիս կինը լինելով Ջհան, Յովհաննէսի ծնողներն են։ Յովհաննէս քահանայի կինն է Շարմելիք, որդիքը Թովմա և Իսրբէկ. իսկ Յովհաննէս տանուտիրոջ կինն է Ուսլուն Մելէք, որոնց որդիքն են Մարտիրոս (կինը Աղիղ), Աբրահամ, Սարգիս, Վարդաշահ, Հայրավարդ և Ալամ։—Ջեռ. Վասպ. 421—2։*

— 1051. **Յովհաննէս** *եկեղեցպան, և*

— 1052/3. **Յովհաննէս,** *երկու այլ համանուն անձինք, որոնք իրենց միաբանակիցների հետ հիշվում են իբրև միաբան մի վանքի, որի անունը չէ հիշատակված, 1456 թ.—Ջեռ. Վասպ. էջ 425։*

— 1054. **Յովան** *սարկավագ նույն վանքի, 1456 թ.—Ջեռ. Վասպ. 426։*

— 1055. **Յովհաննէս** *գրիչ, օրինակել է Աւետարանը, Բաբերդ 1456 թ.—Նոտարք 183։*

— 1056. **Յովհաննէս** *«արհիեպիսկոպոս առաջնորդ Ս. ուխտիս» 1456 թ.—Նոտարք 182 (հանելով մի Արձանագրութիւնից, բայց վանքը չէ հիշված)։*

— 1057. **Ովանէս,** *որ մի խաչքար է կանգնեցրել իր որդի Զահրապի հիշատակին՝ Վասակաշէն (Բասարգեչար) գյուղում, 1456 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 604։*

— 1058. **Յոհաննէս** *քահանա, գրիչ, Անդրէաս կրոնավորի հետ օգնեց Ղազար գրչին՝ օրինակելու համար Յայսմաւուրքը Լիմ կղզում, 1457 թ.—Ջեռ. Թաւր. 103ա, 105ա։*

— 1059. **Յովանէս,** *հայր Սարգիս կրոնավորի, որ Երուսաղէմում օրինակեց Գանձարանը՝ 1457 թ. — Ջեռ. Հալէպի, Ա. էջ 166 բ։*

— 1060. **Յովանէս,** *որդի Ստեփանոսի և Փաշամելէքի. կինն է Աղիզ. մեռավ տարաժամ 1458 թ. ավելին տես Փաշամելէք։—Ջեռ. Վասպ. 426—431։*

— 1061. **Յովհաննէս** *որդի Գրիգորի (1458 թ).— տես Փաշամելիք։*

— 1062. **Յովհաննէս**, որդի Կարապետ քահանայի. մայրն է Տիրունի մելիք. եղբայրն է Իսրայէլ, կինն է Թանսուլու, որդին Պաղտասար (եղբայրը, մայրն ու որդին մեռան 1458 թվի ժանտարաժամին). գրիչ. Գրիգոր քահանայի պատվերով օրինակեց Յայսմաւուրքը 1458 թ.—Նոտարք 190։

— 1063. **Յովհաննէս** քահանա, որդի Թուաքալի, աշակերտ Յովհաննէս կրօնավորի. հանձն առավ գրել Փաշամելէքի պատվերով մի Աւետարան՝ նրա ամուսին Ստեփանոսի և վաղամեռիկ որդի Յովհաննէսի հիշատակին (տես Փաշամելէք)։ Աշխատանքը բավական առաջ էր տարել, երբ մի մեծ փորձանք պատահեց նրան։ «Եթող զգրելն և գնաց փայտ բերել վասն շինութեան տան. և ճանապարհն դժուարին և քար։ Գլորեաց տէր Յովանէսն զիւր փայտն և եկ զհետ փայտին. և իւր քեռին և միւս ընկերն գլորեցին զիւրեանց փայտն. և ի գալ փայտին ոստեաւ փոքըր քար մի ի փայտէն։ Եւ նոքա աղաղակեցին. «Տէ՛ր Յովհաննէս, փախի՛ր»։ Եւ նա պահեաց զինքն ի փայտէն. և քարն եհար զգլուխ տէր Յովհաննէսին։ Եւ նա խեղագարեալ անկաւ ի քարն ի վայր. զի տեղին դժուարին էր. և հեղաւ արիւնն ի բերանն ի վայր և ականջն և քիթն։ Եւ յայն գիշերն մեռաւ. և եթող զսուգ անմխիթար ծնօղին և եղբարցն» (Շարունակությունը տես Յովհաննէս № 1064)։ Այժմ խոսում է մեռյալը գերեզմանի միջից. «զՅովանէս գրիչս, որ յերիտասարդ հասակի եհաս ինձ որոգայթ, որպէս հրամայէ Դաւիթ. պահեա զիս յորոգայթէ, որ թաքուցաւ ինձ. և քարիւ եղև կատարումն իմ և մնաց աւետարանս կիսատ։ Եւ ես կամ ի նեղ տապանիս և երես ի ձեզ արարեալ՝ խնդրեմ ի ձէնջ զողորմութիւն, ո՛վ աստուածասէր քահանայք և ժողովուրդք, որ միամիտ սրտիւ և բոլոր հաւատով ասէք. թէ Քս Ած, ջնջեա զիւր մարդկօրէն յանցանան։ Եւ այս է խնդիրք իմ ի ձէնջ, զի դուք ինձ ողորմիք և Ած ձեզ։ Ցիշեցէք և զհայրն իմ զԹուաքալն և զմայրն իմ Մարթայ խաթուն, որ կայ դառն սրտիւ և լալագին արտասուօք. և զեղբարքն իմ զԿարապետն և զՍուլտանշէն և զկին (իմ) զՄոնղքարն և զայլ ամենայն մերձաւորքն մեր» (1458 թ)։—Ձեռ. Վասպ. 427—9։

— 1064. **Յովհաննէս** աբեղա, նախորդ Յովհաննէս քահանայի ուսուցիչն էր. երբ նա մեռավ քարի արկածին զոհ գնալով (1458 թ), Յովհաննէս աբեղան իր վրա վերցրեց գրչության շարունակությունը և կուրացած ու լալագին աչքերով ավարտեց և դրավ Եղեգիսի վանքը։ Ահա իր վերջին խոսքերը. «Որկին մաղ-

*թանօք աղաչեմ յիշել ի բարին զանարժանս զՅովհաննէս կրօնաւորն, զուսուցիչ տէր Յովհաննէս քահանային, զի նա էր մեր հոգևոր որդին և հանգուցիչ և մխիթարիչ ծերութեան մերոյ։ Եւ զի յաղագմանէ չարին և ի թոյլ տալոյ Արարչին՝ եհաս յորդայթըն այն ի վերայ մեր. և ես, ծերացեալ և տկար անձամբս գրեցի զպակասութիւն Աւետարանիս հեծեծանօք և դառն սրտիւ, զի աչքս ի լուսոյ էր պակասեալ և կարողութիւնս խափանեալ։ Եւ ես լալագին աչօք զայս չափս յանձկամայ արարի . . . զի հասեալ կամ ի դուռն գերեզմանին և սատանայ հանապազ չարչարէ ազգի ազգի մեղօք»։—Ջեռ. Վասպ. 429—430։*

— 1065. **Յովհաննէս** *աբեղա, որդի պարոն Թումայի. Աղբակ գավառի Ասփսթան գյուղում ստացավ մի Աւետարան 1458 թ.— Ջեռ. Թաւր. 69։*

— 1066. **Յովհանէս** *որդի Վարդերի 1458 թ.—Ազգագր. հանդ. է, 71 (Երիմից Նոր—Նախիջևան բերված մի արձանագրության մեջ)։*

— 1067. **Յովհաննէս** *աբեղա, գրիչ. Այրիվանքում օրինակեց Մաշտոցը, 1458 թ.—Սեդրակեան, Հայ. եկեղ. պատկերյարգութիւնը, էջ 105։*

— 1068. **Յոհաննէս**, *իր եղբոր՝ Սիմէոնի հետ մի խաչքար է կանգնեցրել Թէոդոսիայի Ս. Թորոս եկեղեցում 1459 թ.— Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 352։*

— 1069. **Յովհաննէս**, *եղբայր Խաչատուր այրի քահանայի, որի խնդրանօք գրեց գեղեցիկ ծաղկանկար մի Ճաշոց 1459 թ.— Նոտարք 192։*

— 1070. **Յովաննէս** *կրոնավոր «Կորույի», հայր խօջա Ասլանի, որ Բաղէշում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք 1459 թ.—Նոտարք 191։*

— 1071. **Յովհաննէս** *ամի, հիշված Անհարոն երեցի հետ 1460 թ.—Ազգագր. հանդ. է, 72 (Երիմից Նոր—Նախիջևան բերված մի խաչքարի վրա)։*

— 1072. **Յովանէս**, *որդի Հաշաուրի և եղբայր Թումայի (№178), որ Ներսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Ս. Վարդանի վանքին, 1460 թ.—Ջեռ. Վասպ. 433։*

— 1073. **Յոհանէս** *կրոնավոր, որ «կամակից» եղավ Ս. Վարդանի վանքին ընծայելու այն Աւետարանը, որ Ներսէս աբեղային գրել տվեց Թուման (№178), 1460 թ.—Ջեռ. Վասպ. 434։*

— 1074. **Յովհաննէս** *կրոնավոր Ախքիրմանցի, քեռորդի Նի-*

կողայոս եպիսկոպոսի, որ Ախքիրմանում, տանուտեր Կիւրեղի համար գրեց մի ճաշոց՝ 1460 թ.—REA 10,63։

— 1075. **Յոհաննես**, իր եղբորորդիների և հորս Սելչուքի հետ մի այգի են գնել և Ամենատիրի հոգուն նվիրել են Ս. Նշանին, 1461 թ.—Manus. brit. mus. 31։

— 1076. **Յովհաննէս** աբեղա. գրիչ. օրինակել է Շարականը 1461 թ.— Ձեռ. Կարին. 175։

— 1077. **Յովհաննէս** եկեղեցպան Ամիրդոլայ վանքի 1461 թ.— Նոտարք 199։

— 1078. **Յովանես**, աբեղա Ամիրդոլայ վանքի. Պօղոս վարդապետի հետ ժողովարարութեան է դուրս եկել և ներկայացնում է իր հաշիվը 1461 թ.—Նոտարք 199։

— 1079. **Յովանէս** տանուտեր, որդի Գրիգորի, մայրն է Շնոհւոր, կինը՝ Թագուհի, որդին Աստուածատուր, եղբորորդին Թումա. իր քեռու՝ Սիմոնի հետ միասին գնեցին մի հին Աւետարան 1461 թ.—Ձեռ. Վասպ. 225։

— 1080. **Յովաննէս**, հայր Ալէքսանդրի և Մուսէսի, իր որդիները և Ամենադինի քույր Սալչուկի հետ միացած գնեցին Ամենադինի այգին և նվիրեցին Ս. Նշան վանքին, շուրջ 1461 թ.—Թորոս աղբ. Բ. 347 (Թվականը չէ նշանակված, բայց որոշվում է Ալէքսանդրս № 8 և Ամինադին № 2 հիշատակությանց միջոցով)։

— 1081. **Յովանես**, որդի Յոհանէսի և եղբայր Մարգարէ գրչի, որ Ուշտունեաց Բերդաձոր վանքում օրինակեց Աւետարանը 1463 թ.—Ձեռ. Վասպ. 445։

— 1082. **Յովհաննէս** աբեղա, միաբան Տարօնի Եղերդուտ վանքի, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան 1463 թ.—Նոտարք 215։

— 1083. **Յովաննես**, կինն է Հիրիքայ, ծնողներն են Ստեփաննոս գրչի, որ Տարօնի Եղերդուտ վանքում գրեց մի Աւետարան 1463 թ.—Նոտարք 215։

— 1084. **Յովանես** աբեղա, աշակերտ նույն Ստեփաննոս գրչի Եղերդուտ վանքում, 1463 թ.—Նոտարք 215։

— 1085. **Ովանես**, վոյթ Լեհահայոց 1463 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 87։

— 1086. **Յոհաննէս** պարոն, երեսփոխան Լեհահայոց 1463 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 87։

— 1087. **Յովհաննէս**, Մշու Հողաբլուր գյուղից էր, վանահայր Գլակայ վանուց և եպիսկոպոս Տարօնի. ժամանակին էր

Խորասանցի կամ Խորասանջի. Նոր վկ. սնվել և սովորել էր Ս. Կարապետի վանքում, ուր և ստացավ իր օծումը և կարգվեց առաջնորդ Տարոնի։ Սկսեց նորոգել Ս. Կարապետի վանքը գանազան շինություններով և վերջում ձեռնարկեց նորոգելու Ս. Ստեփաննոսի մեծ կաթուղիկէն։ Դիմլի քրդերը (իսկ ըստ Նոտարք 213 իր միաբաններից ոմանք նախանձելով նրա վրա) չարախոսեցին թե նա քանդել է մզկիթը և նրա քարերով նորոգել եկեղեցին։ Խալիլ գավառապետը բռնեց նրան և կապոտելով ուղարկեց Բաղեշի ամիրա Շարաֆի մոտ։ Նա առանց քննելու՝ հանձնեց դահիճներին, որոնք սկսեցին չարաչար տանջել, պահանջելով որ ուրանա հավատքը։ Մեծ քաջությամբ մերժեց և դիմացավ բոլոր տանջանքներին։ Տարին բերդի տակ այրելու հրապարակավ։ Եվ որպեսզի բոլորն էլ նրա սպանման մեջ բաժին ունենային, կիսավառ հանեցին կրակից և հրապարակով փայտի ու քարի հարվածներով սպանեցին «1463 թ»։ Բաղեշի առաջնորդ Յովաննէս Թամուրենց արքեպիսկոպոսը փառավոր հուղարկավորությամբ թաղեց ավագ եկեղեցում։ Իր վարքը գրել է Մարտիրոս վրդ. Պռուցի. անցել է Յայսմաւուրքի մեջ. մի ներբողեան էլ ունի Ներսէս բանասէր.—Նոր վկ. 299—304, Նոտարք 210—214, 215—6, Թորոս աղբ. Բ. 307, Ազգապ. 2170։

— 1088. **Յոհանէս**, *կինն է Ոսկի. ծնողներն են Մարգարէ գրչի, որ Ռշտունեաց Բերդաձոր վանքում օրինակեց Աւետարանը 1463 թ.—Ձեռ. Վասպ. 445։*

— 1089. **Յովհաննէս** *«երանաւոր», քրոջ որդի Անդրէաս երեցի, որ Եւդոկիայում օրինակեց Աւետարանը 1463 թ.—Ձեռ. Մեր.=ՀԱ 1923, 133։*

— 1090. **Յովանէս** *կրոնավոր, որդի Յակոբ քահանայի, գրիչ. Արծկէում օրինակեց. Աւետարանը՝ տանուտեր Էգիլշահի համար, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ց. 620։*

— 1091. **Յովհաննէս**, *հոգևոր որդի Վարդան կրոնավորի, որ էր միաբան Մեծոփայ վանքի. ստացան մի Շարակնոց, որ գրել տվին Ղազար գրչին, 1464 թ.—Ձեռ. Սևան. 47 բ։*

— 1092. **Յովանէս** *ոմն, որ իր մերձավորների հետ մի Աւետարան գրել տվեց Ստեփաննոս եպիսկոպոսին՝ Խորձեանի Խլպաշի վանքում, 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 342։*

— 1093. **Յովանէս** *մաղթասի, ծնողներն են Դաւիթ և Արուս խաթուն, կինն է Խութլու մելիք կամ Խութլու խաթուն.*

ազատել է մի Աւետարան, որ գերի էր ընկել մահմեդականների ձեռքը, 1464 թ։—Ձեռ. Վասպ. 384, Նօտարք 220։

— 1094. ՅՈՎՀԱՆՆԷՍ քահանա, որդի Յակոբ քահանայի (№ 218). մայրն է Սալչուկ խաթուն. եղբայրներն են Գրիգոր, Ներսէս և Յովհաննէս։ Գրիգորը (№ 575, 602, 623 և 632 որոնք պէտք է միացնել) կոչված է «կրօնաւոր և քաջ փիլիսոփայ» 1434 թվին, իսկ Ներսէսը 1434 թվին կոչվում է «դեռաբոյս», 1443 թվին դպիր է և 1463 թվին «լի շնորհօք սարկաւագ»։ Յովհաննէս եղբայրը մեռած է 1434 թվին. «և դշնորհալին և զքաղցրաբարբառն զՅոհաննէս սարկաւագն փոխեցեալն ի Քրիստոս» (Թորոս աղբ. Բ. 414)։ Գրիգորը դեռ ողջ է 1443 և 1448 թվերին։ Ներսէսը մեռնում է 1448 թվին, իսկ 1459 թվին Գրիգորն էլ է մեռած։ Յովհաննէս քահանան սովորել է Թովմա Մեծոփեցու մոտ. «Զտիեզերալոյս րաբունապետն զԹովմայ Մեծոփայ վանաց մեծ վարդապետն, որ բազում աշխատանօք ուսուցեալ է մեզ զարուեստ գրչութեանս» (Նօտարք 191, որ ավելի որոշագիր է համարելու երկրորդ Թովմա վրդ. Մեծոփեցին, նույնպէս և Նօտարք 193)։ Դեռ սարկավագ էր Յովհաննէսը 1434 թվին, երբ Արղնիի Բագուր գյուղում գրեց Մաշտոցը. այնուհետև արտագրել է մի Ճաշոց 1443 թ. Ղազար կրոնավորի համար (№ 72), մի Աւետարան 1448 թ. Թուրվանդա խաթունի համար (№ 8), մի Յայսմաւուրք Բաղէշում Խօջա Ասլանի համար (№ 10) 1459 թ., և մի Աւետարան Արճէշ քաղաքում 1462 թ., և երկու Աւետարան Արծկէ քաղաքում 1459 և 1464 թվերին։ Այսպես ուրեմն առնվազն 21 տարվա գործունեություն հաստատված է։ Գանգատվում է որ պանդխտությամբ ման է եկել զանազան տեղեր և վշտալի կյանք է անցկացրել ներքին և արտաքին թշնամիներից։ Ունեցել է նաև մի որդի Յակոբ անուն (№ 217 և 219, որ պէտք է միացնել), որ աշխատակցել է իր հոր 1463 և 1464 թվերին. «Յակոբ որդեակն իմ որ աշխատեցաւ ընդ իս ի գրել Ս. Աւետարանիս»։—Ձեռ. Վասպ. 402—4, Նօտարք 103, 132, 158, 191—193, 209, 219, Ձեռ. Վենետ. Ա. 621, Թորոս աղբ. Բ. 413։

— 1095. ՅՈՎՀԱՆՆԷՍ քահանա Արճիշեցի, որդի Մանկասարի. մայրն է Փաշամէլիք. միաբան Մեծոփայ վանքի և աշակերտ Թովմա պատմագիր Մեծոփեցու, որի եղբօրորդի Յովհաննէս կրոնավորի պատվերով Արճէշում գրեց Մեռելյարոյց Աւետարանը 1445 թ, մի Աւետարան 1456 թ, մի Ճաշոց՝ Արճէշ

1457 Թ, մի Աւետարան՝ Արճէշ 1462 Թ, և մի ուրիշ ծաղկազարդ Աւետարան էլ Արճէշ 1463 Թ.—Թորոս աղբ. Բ. 437, Ձեռ. Վասպ. 426, 439, Նօտարք 147, 185—6, 216—7, 239։

— 1096/7. Յովհաննէս, երկու համանուն միաբաններ Խորձեանի Խլպաշի վանքի 1464 Թ.—Նօտարք 218, Թորոս աղբ. Բ. 341։

— 1098. Յոհաննէս, քահանայ, կինն է Հաթփաթմէ. ծնողներն են Մարտիրոս կրօնաւորի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց Արծկէում մի Աւետարան, 1464 Թ.—Նօտարք 219։

— 1099. Յովհաննէս միաբան Յովհաննավանքի 1464 Թ.—Այրարատ 172։

— 1100. Յովաննէս վարդապետ, առաջնորդ Աւագ վանից, 1464 Թ.—Ձեռ. Գետերբ. (ՀԱ 1892, 116 բ)։

— 1101. Յովհաննէս րաբունապետ. գրել տվեց մի Աստուածաշունչ 1465 Թ.—Ձեռ. Կարին. 11։

— 1102. Յովաննէս, եպիսկոպոս Հայոցթառի 1465 Թ.—Նօտարք 221։

— 1103. Յովաննէս, Վանի Պօղոս-Պետրոս եկեղեցու քահանաներից մէկն էր 1465 Թ.—Նօտարք 222։

— 1104. Յովհաննէս, միաբան Եղիվարդի կամ Գետարգելայ վանքի, 1465 Թ.—Նօտարք 221։

— 1105. Յովաննէս քահանայ, ուսուցիչ Սամուէլ գրչի, որ «Մանրլոյ Ս. Նշան» եկեղեցում օրինակեց Ժամագիրք և Տօնացոյցը 1465 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 190 բ։

— 1106. Յովհաննէս Արծկեցի, կրօնաւոր. գրիչ. եկավ Գեղարքունեաց հած գյուղը, ուր հյուրընկալվեց Մանուէլ քահանայի մոտ և նրա ծախսով օրինակեց Ճաշոցը, Հերմոնի վանքում, Սանահնի վանքի օրինակից, 1465 Թ.—Ձեռ. Սեւան. 18—19։ (Մառը չի դնում թվականը, բայց ըստ Սմբատեանց՝ Գեղարքունի 403 և Երնջակ 216 գրված է 1465 Թ. սրա մոտ հիշատակարանը ամբողջական է)։

— 1107. Յովաննէս կրօնավոր, որդի Ծերունի. Սմբատ Արծրունի նորընծա Թագավորից գնեց մի Շարակնոց, որ Սիոնում գրել էր Հեթում քահանան՝ Սահակ եպիսկոպոսի համար և ապա հասել էր Զաքարիա կաթողիկոսին և սա էլ նվիրել իր եղբորորդի սույն Սմբատ «թագաւորին»։ Յովաննէսը կրկին նորոգել տվեց և Մինաս նկարչին նկարել տվեց տնօրինական նկարները՝ 1465 Թ.— Rapport Belgique 145։

— 1108. Տէր Ովանէս, որի գերեզմանը գտնվում է Շաքի գավառի Ամուր-Աւան գյուղի գերեզմանատանում 1466 թ.—Բարխուտ. Աղուանից երկ. 215։

— 1109. Յովանէս, կինն է Սուլդանմէլիք. ծնողներն են Հայրապետ գրչի (№ 86), որ Սալչուկ խաթունի պատվերով օրինակեց Աւետարանը 1466 թ.— Թորոս աղբ. Բ. 338։

— 1110. Յովանէս «նորընծայ զաւակ» նույն գրչի։

— 1111. Յոհաննէս քահանա, որ Աղթամարում, Մկրտիչ արեղային գրել տվեց մի Գանձարան 1466 թ.—Նոտարք 224։

— 1112. Յոհաննէս եպիսկոպոս Խարբերդի, որդի Լիպարիտի. մայրն է Մամանա։ Խարբերդի Սինամուտ թաղում, Յակոբ քահանային և Պօղոս սարկավագին գրել տվեց Ճաշու գիրք 1466 թ.—Թորոս աղբ. Բ. 479։

— 1113. Յովանէս հայրապետ կամ առաջնորդ Եղրդուտ վանքի 1466 թ.—Նոտարք 227։

— 1114. Յովհաննէս եպիսկոպոս Եղրդուտ վանքի 1466 թ.—Նոտարք 227։

— 1115. Յովաննէս եպիսկոպոս, առաջնորդ (ո՞ր) նահանգի, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։

— 1116. Յովաննէս Աղթեցի, միաբան Առբերդոյ վանքի 1466 թ.—Նոտարք 225։

— 1117. Յովանէս Բէլուեցի, միաբան Առբերդոյ վանքի 1466 թ.—Նոտարք 225։

— 1118. Յովհաննէս քահանա, Մոկաց Դաշտ գյուղում Յովհաննէս գրչին գրել տվեց մի Նարեկ, 1466 թ.—Նոտարք 226։

— 1119. Յովհաննէս գրիչ. նույն Յովհաննէս քահանայի պատվերով Մոկաց Դաշտ գյուղում օրինակեց Նարեկը, 1466 թ.—Նոտարք 226։

— 1120. Յովհաննէս Թամուրենց, արքեպիսկոպոս և առաջնորդ Բաղէշի. ինքն է որ թաղեց Տարօնի նահատակ Յովհաննէս եպիսկոպոսին 1463 թ. հիշատակված է 1454, 1458, 1461, 1463 և 1467 թվերին.—Նոտարք 173, 190, 199, 213—4, 230, Նոր վկ. 303, Ազգապ. 2171։

— 1121. Յոհաննէս Ցախրկանց, տանուտեր, Աղթամարում Հայրապետ արեղային գրել տվեց մի Ճառընտիր 1467 թ.—Նոտարք 231։

— 1122. Յովհաննէս քահանա, որդի Թումայի և Թոռն Մարտիրոսի. կինն է Նշխուն. իր և իր որդի Սարգիս քահանայի

համար, Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Մեր.=ՀԱ 1925, 258, Նոտարք 230։

— 1123. **ՅՈՎՀԱՆՆԷՍ**, որդի Թաթարի, թոռն Յովհաննէսի՝ եղբոր նույն Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Մեր.= ՀԱ 1925, 258։

— 1124. **ՅՈՎՀԱՆՆԷՍ**, որդի Թումայի և եղբայր նույն Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Մեր.=ՀԱ 1925, 258։

— 1125. **ՅՈՎՀԱՆՆԷՍ**, տանուտեր, մերձավոր նույն Յովհաննէս քահանայի, որ Ոստանում գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Մեր.=ՀԱ 1925, 258։

— 1126—7. **ՅՈՎՀԱՆՆԷՍ**, երկու համանուն որդի՞ք Շարմէլէքի, բոլորն էլ մերձավոր նույն Յովհաննէս քահանայի, որ Ոստանում գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Մեր.= ՀԱ 1925, 258։

— 1128. **ՅՈՎՀԱՆՆԷՍ**, մորեղբայր Սարգսի, որ Ղազար գրչին մի Աւետարան գրել տվեց Գամաղիէլի վանքում, 1468 թ.— Ձեռ. Վասպ. 451։

— 1129. **ՅՈՎՀԱՆՆԷՍ** հորեղբայր նույն Սարգսի (անդ)։

— 1130. **ՅՈՎՀԱՆՆԷՍ** եղբայր նույն Սարգսի.—Ձեռ. Վասպ. էջ 454։

— 1131—2. **ՅՈՎՀԱՆՆԷՍ**, երեք համանուն միաբաններ Գամաղիէլի վանքի 1468—9 թ.—Ձեռ. Վասպ. 452, 455։

— 1133. **ՅՈՎԱՆԷՍ** քահանա Բիւրականի, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 1134. **ՅՈՀԱՆԷՍ**, որդի Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1112—3։

— 1135. **ՅՈՀԱՆԷՍ**, եղբայր նույն Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.— Ձեռ. Վենետ. Բ. 1113։

— 1136. **ՅՈՎԱՆԷՍ**, եղբորորդի նույն Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.— Ձեռ. Վենետ. Բ. 1113։

— 1137. **ՅՈՀԱՆԷՍ** աբեղա, ծաղկեց ու կազմեց «Ժողովածու քերթուածոց», որ Բիւրականում օրինակեց Մկրտիչ քահանան, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1113։

— 1138. Յոհան *գրագիր Բիւրականում, 1469 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1114։*

— 1139. Յոհանէս *քահանա Անբերդի, 1469 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1114։*

— 1140. Յովհաննէս *պարոն և տանուտէր, Շեղգինայ գիւղից, որդի Ամիրի, գրել տվեց մի Յայսմաւուրք Մինաս գրչին և նվիրեց Հրեշտակապետաց վանքին, Սեբաստիա 1469 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 11։*

— 1141. Յովհաննէս *Նաղաշ, ծաղկեց և ոսկով զարդարեց այն Յայսմաւուրքը, որ գրեց Մինաս գրիչը Սեբաստիայում, 1469 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 11։*

— 1142. Յովհաննէս *քահանա, որդի Շահպարոնի, երեց Խարբերդի Ս. Սարգիս եկեղեցու. հրամայեց Յակոբ քահանային՝ օրինակել Աւետարանը, 1469 թ.*—Bodleian *8։*

— 1143. Յոհանէս, *որդի Աստուածատուր Գառնուկ քահանայի և հանգուցյալ եղբայր Ներսէս արեղայի, որի միջնորդությամբ Ստեփաննոս գրիչը օրինակեց Աւետարանը՝ Տիվրիկի Վաւղըռ գյուղում, 1469 թ—Ձեռ. Վեննա. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 364։*

— 1144. Յովանէս, *հայր Նորմանուկի, որ Տիվրիկի Վաւղըռ գյուղում գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Աւագ վանքին, 1469 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 363։*

— 1145. Յոհանէս *վարդապետ բաբունի և առաջնորդ Գամաղիէլի վանքի, ժամանակակից Դաւիթ եպիսկոպոսի, 1468—9 թ.—Ձեռ. Վասպ. 453։*

— 1146. Յոանէս, *Թոռն տանուտէր Առաքելի, որ Գամաղիէլի վանքում մի Աւետարան գրել տվեց 1469 թ.—Ձեռ. Վասպ. էջ 455։*

— 1147. Յովհաննէս *վարդապետ, գրիչ. Գամաղիէլի վանքում, Յովհաննէս վարդապետի առաջնորդության ժամանակ, տանուտեր Առաքելի պատվերով գրեց մի Աւետարան 1469 թ.—Ձեռ. Վասպ. 454։*

— 1148. Յովհաննէս *կաթողիկոս Աղուանից. որդին էր Ջալալ մեծ իշխանի, եղբայր Աթաբէկի և Աղբասանի, թոռն մեծ Աթաբէկի. հաջորդել է Աթանասին 1441 թ. իրեն էլ հաջորդել է Մատթէոս կաթողիկոսը՝ ըստ ոմանց 1454 թ. և ըստ այլոց 1462 թ. Հիշված է ըստ այլ ավելի վստահելի հիշատակարանի 1456 թ. կամ 1458 թ. Նրա անունով կա մի արձանագրություն Խաչե-*

նում 1469 թ. ըստ այսմ մի խաչքար է կանգնեցրել Մեծարանց վանքում 1469 թ. և մեռել ու թաղվել նույն վանքում 1470 թ. Թուած է իր տապանաքարը 1470 թ։—Ջալալ. Բ. 244, 481—2, Նոտարք 187—8, 206, Արցախ 187, Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ, Բ. 30 բ, Բանաս, 1901, 138—9։

— 1149. Յովանէս վարդապետ, միաբան Եկեղեաց գավառի Կայիփոս վանքից, 1470 թ.— Թորոս աղբ. Բ. 305։

— 1150. Յոհանէս հայր Ջուլալ տիկնոջ, որ Աղթամարում Գրիգոր աբեղային գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Սալնապատի եկեղեցուն 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459։

— 1151. Յովանէս եղբայր նույն Ջուլալ տիկնոջ.—անդ։

— 1152. Յովանէս կրոնավոր, Գրիգոր կրոնավորի հետ միջնորդ և հորդորիչ է եղել նույն Ավետարանի գրչության։—Ձեռ. Վասպ. 460։

— 1153. Յովանէս որդի Թօղանի և եղբայր Փաշայի, որ Թովմա առաքյալի վանքում Յովանէս գրչին գրել տվեց մի Ավետարան 1471 թ.— Ձեռ. Վասպ. 463։

— 1154. Յովանէս որդի Մելքիսեթ քահանայի. մայրն է Խաթուն մելիք. գրեց նույն Ավետարանը Թովմա առաքյալի վանքում 1471 թ.—Ձեռ. Վասպ. 464։

— 1155. Յովհաննէս կրոնավոր, գրիչ. Կուքիոյ վանքում օրինակեց մի Յայսմաւուրք 1471 թ.—Սմբատեանց, Երնջակ 316 (մեծ ցուցակ, էջ 7)։

— 1156. Յոհաննէս քահանա Ուռի կամ Ուռիկ գյուղից, որդի Վարդապետի. մայրն է Հռիփսիմէ, կինը՝ Թանսուխ, որդին Խաչատուր սարկավագ։ Երզնկա քաղաքում, Մանուէլ երեցին գրել տվեց մի Ավետարան 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 420։

— 1157. Յովաննէս քահանա, որդի Առաքել քահանայի. Բաղէշի Գոռ գյուղից. Մկրտիչ Նաղաշի երեց եղբայրն է. երիտասարդ հասակում մեռավ նախ քան իր եղբայրը, որ † 1473 թ.—Արար. 1898, յուլ. էջ 44ա. Ազգապ. 2065, Հայապ. 571։

— 1158. Յովհանէս (քիչ ցածր Յովնան), որդի Մկրտիչի և եղբայր տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում, Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

— 1159. Յովհաննէս քահանա Կանչ բերդի. եղբայրն է Կիրակոս վարդապետ (№ 147), որդիքն են Հեթում և Լևոն. բոլորն էլ Զարմանդուխտ հերոսուհու սերունդից. հիշված են 1473 թ.—Սիսուան 184 ա։

— 1160. Յովանէս *արքեպիսկոպոս, հայրապետ Բերկրիի Տէր Յուսիան որդու վանքի, 1473 թ.—Ձեռ. Վաւաք. 467։*

— 1161. Յովհաննէս, *իր երեք եղբայրների հետ՝ Մոկաց Փառավանք գյուղում Իսրայէլ գրչին գրել ավեց մի Աւետարան, 1473 թ.— Արցախ 146։*

— 1162. Յովանէս, *հայր* (գրված պապ) *Սահակի, որ Խիզանում մի Աւետարան գրել ավեց Յովանէս քահանայէն 1474 թ.—Ձեռ. Վաւաք. 469։*

— 1163. Յովհաննէս *որդի կամ եղբորորդի նույն Սահակ ստացողի.—Ձեռ. Վաւաք. 470։*

— 1164. Յովհաննէս *քահանա, որդի Թումայ քահանայի, մայրն է Խոնդմէլիք, գրիչն է նույն Աւետարանի 1474 թ.—Ձեռ. Վաւաք. 470։*

— 1165. Յովհաննէս *հորեղբայր նույն Յովհաննէս քահանա գրչի.—անդ։*

— 1166. Յովհաննէս *քահանա, որդի Մկրտիչ քահանայի, որ նույն գրիչ Յովհաննէս քահանայի ուսուցիչն էր.—անդ։*

— 1167. Յովանէս, *որդի Մկրտիչի և եղբայր Աղքատ Յովսէփի, որ Վանում, Կարապետ երեցին գրել ավեց մի Աւետարան 1475թ.—Ձեռ. Վաւաք. 478։*

— 1168. Յովանէս, *քրոջ որդի նույն Աղքատ Յովսէփի.—անդ։*

— 1169. Յոհանէս *հայրապետ, հիշված է Վանում 1475 թ.— Ձեռ. Վաւաք. 478։ (Վանի՞, թե որևէ վանքի)։*

— 1170. Յովանէս *աբեղա, Աբիստակէս աբեղայէն գրել ավեց մի Աւետարան Բաղեշ անապատում 1475 թ.—Ձեռ. Վաւաք. էջ 480։*

— 1171. Յովհաննէս, *որդի Էգլշահի, որ ստացավ մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վաւաք. 473։*

— 1172. Յովանէս, *որդի Գրիգոր քահանայի և եղբայր Մարգարէ քահանայի, որ Բալուի Նեխրի գյուղում օրինակեց Աւետարանը՝ 1475 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 624։*

— 1173. Յոհանէս *եպիսկոպոս, առաջնորդ Գեղարդայ վանքի, 1475 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 234։*

— 1174. Յոհանէս, *որդի Եղիազարի և եղբայր Գրիգոր կրոնավորի, որ Արծկէում, Ղազար քահանայէն գրել ավեց մի Յայսմաւուրք, 1475 թ.—Ձեռ. Մաղն. 36։*

— 1175. Յոհաննէս *եպիսկոպոս, առաջնորդ Սրկղունից*

*(Վայոց ձորի) Ս. Գէորգ և Ս. Յակոբ վանքերի, 1475 թ.—Սըմբատեան, Երնջակ 176։*

— 1176. ՅՈՀԱՆՆԷՍ *ոՑ, հիշված է մի խաչքարի վրա, Ցղնա 1477 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ. 321—2։*

— 1177. ՅՈՎՀԱՆՆԵՍ, *Աղթամարում գրել տվեց մի Ավետարան՝ 147? թ.—Արցախ 112։*

— 1178. ՅՈՎԱՆԷՍ *արքեպիսկոպոս, Արճէշում գրել ավեց մի Ճաշոց 1477 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 306։*

— 1179. ՅՈՎԱՆԷՍ, *մերձավոր Յակոբի, որ ստացավ մի Ավետարան, Երզնկա 1477 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 628։*

— 1180. ՅՈՎԱՆԷՍ *քահանա, մերձավոր Յակոբի, որ Երզնկայում ստացավ մի Ավետարան, 1477 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 628։*

— 1181. ՅՈՎԱՆՆԵՍ *արքեպիսկոպոս, եղբորորդի Սարգիս արքեպիսկոպոսի, որ էր առաջնորդ Երզնկայի, 1477 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 628։*

— 1182. ՅՈՎՀԱՆՆԷՍ, *եղբայր Ազնաւրի, որ գրել տվեց մի Ավետարան՝ Աշոտաձորի Անկիւնեաց վանքում, 1477 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 219)։*

— 1183. ՅՈՎՀԱՆՆԷՍ *եպիսկոպոս, ստացավ Գիրք ձեռնադրության 1478 թ.—Տաշեան, Ցուց. 785։*

— 1184. ՅՈՎՀԱՆՆԷՍ *քահանա, եղբայր Գրիգոր եպիսկոպոս Աշտարակեցի գրչի. Թուղթ կոկող 1478 թ.—Այրարատ 274։*

— 1185. ՅՈՀԱՆՆԵՍ *բէգ, մեռել է 1478 թ. դամբանը գտնվում է Մարտիրոս գյուղի մոտ.—Սիսական 177։*

— 1186. ՅՈՀԱՆԷՍ, *որդի Աստուածատուրի և եղբայր պարոն Ֆարաճի, որ Հալէպ քաղաքում գրել տվեց մի Ավետարան 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96 բ։*

— 1187. ՅՈՎՀԱՆՆԷՍ *քահանա, հայր Մխիթար (№ 190) քահանայի, որ Թոսրով անուն անձի համար օրինակեց Ավետարանը Բռնաշէնում 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։*

— 1188. ՅՈՎՀԱՆՆԷՍ *քահանա, նախորդի թոռն է, որ կազմեց էր հոր գրած Ավետարանը.— անդ։*

— 1189. ՅՈՎԱՆ *երեց, որդի Մուրադի. գրիչ. Ծովքի Ս. Նշան վանքում օրինակեց Գանձարանը 1478 թ.— Ալպօյաճեան, Պատմ. հայ. կես. Բ. 1847։*

— 1190. ՅՈՀԱՆ, *որդի նույն Ցովան երեցի, որ Ծովքի Ս. Նշան վանքում օրինակեց Գանձարանը՝ 1478 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ. կես. Բ. 1847։*

— 1191. Յովհաննէս, *որդի խոջա Յակոբի, Խարբերդցի. վաղամեռիկ եղավ 1478 թ. որի վրա մի ողբ գրեց Մաթէոսը (տես այս անունը № 78).*—Bodleian *34։*

— 1192. Յովանէս *խոջա, որդի խոջա Մուրադի, կինն է Սուլթան, որդիքն են խոջա Մելքոն, Շադաթ, Թանգրիվերդի, Աղաչա և դուստրը՝ Խանում. այլ և փոքր երախաները՝ Խաչուկ, Պապուկ, Սաֆար, Հորմազ, Սրահաս և աղջիկը՝ Խանզադա։ Ինքը հորեղբորորդին է խոջա Յովսէփի, որ Տարօնի իշխանն էր և Մուշում գրել էր տվել մի Աւետարան 1479 թ. այս Աւետարանը վերջում ստացավ խոջա Յովանէսը՝ 1488 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, էջ 263։*

— 1193. Յոհաննէս *խօճա, որդի Մելքոնի, եղբայր Յովսէփի, որի հետ միասին նորոգել տվին այն Աւետարանը, որ Տարօնի իշխան և իրենց պապի հորեղբորորդի խոջա Յովսէփը գրել էր տվել Մուշում՝ 1479 թ։—Նախորդի թոռն է և կրում է նույն անունը։—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։*

— 1194. Յովհաննէս *քահանա, թուղթ էր կոկում Պօղոս վարդապետի համար, երբ սա գրում էր Մուշում մի Աւետարան՝ խօճա Յովսէփի պատվերով 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։*

— 1195. Յոհանէս *կրոնավոր, մականուն Ճալա, գրել տվեց մի Ժամագիրք և Տօնացոյց, 1480 թ. (տեղն ու գրիչը անհայտ).—Ձեռ. Հալէպի, Ա. 193։*

— 1196. Յովանէս, *հայր Վարդան աբեղայի, որ Խաչատուր աբեղային գրել տվեց մի Աւետարան, Կտուց անապատում 1481 թ.→Ձեռ. Վասպ. 488։*

— 1197. Յովաննէս *հայրն է նույն Խաչատուր աբեղա գրչի.—անդ։*

— 1198. Յովհաննէս *ոՑՆ որդի Ներսէսի, հիշված Ահարոն քահանայի հետ, 1481 թ.—Ազգագր. հանդ. Է, 50 (Երեմից Նոր-Նախիջևան փոխադրված մի խաչքարի վրա)։*

— 1199. Ովանէս *կրոնավոր, թուղթ էր կոկում Գրիգոր աբեղայի համար, երբ սա օրինակում էր Յայսմաւուրքը Ագուլիսում, 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 300։*

— 1200. Յոհան, *իր հոր Աթանասի և իր մոր X-ի անվան կանգնեցրել է մի խաչքար Աստապատում 1481 թ.—Սիսական, էջ 511։*

— 1201. Ոհան, *միաբան Բոլորաբերդի վանքում, 1482 թ.—Խաղբակեանք 236։*

— 1202. ՅՈՀԱՆ, *որդի Վարդանի, գնեց այն Աւետարանը, որ գրել էր Մկրտիչ քահանան Խիզանում, 1482 Թ.—Ձեռ. Վասպ. էջ 492։*

— 1203. ՅՈՎԱՆՆԷՍ *եպիսկոպոս, օրինակել տվեց մի Մայր Մաշտոց գրիչ Ցակոբ քահանային 1482 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 163 բ։*

— 1204. ՅՈՎԱՆԷՍ *Արծկեցի, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Արղուան աղայի համար, 1482 Թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, էջ 84 բ)։*

— 1205. ՅՈՎՀԱՆՆԷՍ *Արմէնսին, Նաշի Զինուղի մեջ Օսդարգանա գյուղի կեսը կտակեց Մոլտովիցա վանքին 1483 Թ.—Տան, Արևել. հայք 15։*

— 1206. ՅՈՎՀԱՆՆԷՍ *Է կաթուղիկոս Հայոց «1474—84 Թ». Նախապես («1470 Թ.») աթոռակալ էր Սարգիս Բ կաթուղիկոսին, որին և հաջորդեց. «1484 Թվին» գնաց Կամենից, իրեն հաջորդ թողնելով Սարգիս Գ-ին։ Իր օրով Լուսաւորչի աջը Աղթամարից փոխադրվեց էջմիածին, որի համար էլ Ազգապ. կոչում է նրան* Աջակիր։*—Առաք. պատ. 330, 331, 337, Կամենից 135. Ազգապ. 2183—98։*

— 1207. ՅՈՎՀԱՆՆԷՍ, *հայր Զահվիլի, որ Մկրտիչ երեցին մի Գանձարան գրել տվեց Մուղնիում, 1484 Թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։*

— 1208. ՅՈՎՀԱՆՆԷՍ *աբեղա Մուղնեցի. գրիչ, ծաղկող և կազմող. եղբայրն է Բայրամ, որի կինն էլ էր սույն Զահվիլը՝ 1484 Թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։*

— 1209. ՅՈՎՀԱՆՆԷՍ, *որդի Շահպարոնի և քեռորդի նույն Զահվիլի, որ Մուղնիում ստացավ Գանձարանը 1484 Թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։*

— 1210. ՅՈՎՀԱՆՆԷՍ *քահանա, որդի Կոստանդինի. Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան 1484 Թ.—Ձեռ. Թաւր. 15—16։*

— 1211. ՅՈՎՀԱՆՆԷՍ *Նաղաշ Երզնկացի, գրիչ, ծաղկել և ոսկիով զարդարել է մի քանի ձեռագիրներ, 1478—1484 Թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կեսարիոյ, հտ. Բ. էջ 1544։ Տես № 1253։*

— 1212. ՅՈՀԱՆԷՍ *քահանա, հայր Մելքիսէթ քահանայի, որ Բաղէշում օրինակեց Ցայսմաւուրքը՝ 1484 Թ.—*Rapport Belgique, *էջ 40։*

— 1213. ՈՎԱՆԷՍ, *որի անունով մի խաչքար են կանգնեցրել իր եղբայրները Ծար գյուղում 1484 Թ.—Արցախ 405։*

— 1214. Յոհաննէս *վարդապետ, «բարբունապետ» Կամախի Աւագ կամ Թադէոս առաքեալի վանից, 1484 թ.—Թորոս աղբ. Բ. 302։—Հմմտ. № 1260։*

— 1215. Յովանէս *աբեղա Պուտացի, գրիչ. օրինակել է Խաչտուրը, 1485 թ.*—Manus. bibl. nat. *էջ 38։*

— 1216. Յովհաննէս *կրօնաւոր, հօրեղբայր Գրիգոր քահանայի, որ Սեբաստիայում, Փիլիպպոս եպիսկոպոսին գրել տվեց մի Աւետարան, 1485 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 598։*

— 1217. Յովաննէս *եպիսկոպոս, Խիզանում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան 1486 թ.—Ձեռ. Վասպ. 504։*

— 1218. Յովհանէս *քահանա գրիչ Խիզանում, տես նախորդը։*

— 1219—21. Յովհաննէս, *երեք համանուն ազգականներ Ղարիպշահի (№ 4) գերդաստանից, որոնք հիշված են Արծկէում 1486 թ.—տես անդ (Ձեռ. Վասպ. 501)։*

— 1222. Յովանէս *քահանա Ոստանի Ս. Ստեփանոս եկեղեցու 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։*

— 1223. Յոհաննէս, *որդի Հայլալի (Արով) և հայր Մուրադի, որի հիշատակին Ստեփաննոս գրիչը Արճէշում օրինակել է Աւետարանը՝ 1486 թ.—Ձեռ. Վասպ. 498։*

— 1224. Յովաննէս *արքեպիսկոպոս Վարագայ վանքի, 1487 թ.—Հացունի, Կարևոր խնդ. 273։ Հմմտ. № 804 և 929։*

— 1225. Յովան *միայնակեաց, ստացել էր մի Աւետարան, որ գրել էր Զաքարիա գրիչը 1487 թ. (Աղթամարում), և նվիրեց Մխիթար աբեղային; սա էլ նվիրեց Տիրուհւոյ Ս. Աստուածածնի վանքին։—Ձեռ. Վասպ. 506։*

— 1226. Յովհաննէս *արքեպիսկոպոս, առաջնորդ Աղբակի Բարթուղիմէոսի վանուց, 1487 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ, էջ 84։*

— 1227. Յովհաննէս *եպիսկոպոս Հաւուցթառի 1465—1488 թ.—Այրարատ 357։*

— 1228. Յովհաննէս *քահանա Տիւրիկցի, գրիչ. օրինակել է Աւետարանը 1488 թ.—Ձեռ. Կարին. 17։*

— 1229. Յոհաննէս *քահանա, կինն է Մարգարիտ, որդին Ստեփաննոս, որին ի վայելումն, Սարգիս գրչին գրել է տվել մի Աւետարան, Բերկրիի Առեղս գյուղում, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 508—10։*

— 1230. Յովաննէս, *նույն Յոհաննէս քահանայի գերդաստանի անդամներից մեկը.—անդ։*

— 1231. Յովհաննէս, իր որդի Նորընծա սարկաւագ Պարոնիկի համար, Աստուածատուր գրչին գրել տվեց Սաղմոսը, 1488 թ.—Bodleian 16։

— 1232. Յովհաննէս, եղբորորդի (neveu) Յակոբի, որ գրեց մի Յայսմաւուրք՝ հաջի Մուրադի համար, 1488 թ. Յովհաննէսը շարունակել է նույնի գրությունը.—Manus. bibl. nat. էջ 102։

— 1233. Յոհանէս, եղբայրներն են Ջիկեէլ (=Եզեկիէլ) և Ղուկաս. երեքով որդիքն են Սարգիս երեցի, որ Ասիլ Մելիք տատից նվեր ստացավ մի Աւետարան 1488 թ։—Ձեռ. Վասպ. 242։

— 1234. Յոհ(աննէս) քահանա, աշակերտ Արճիշեցի Յոհաննէս (№ 942) Մանգասար(ենց) քահանայի. Արճէշի Սոսկոն գյուղում գրեց մի Աւետարան, երեք տանուտեր Տողանի համար 1489 թ.—Թորոս աղբ. Բ. 437։

— 1235. Յովանէս, որդի Մատթէոսի և հանգուցյալ եղբայր Մատթէոս վարդապետի, որ էր առաջնորդ Սեբաստիոյ, 1489 թ. —Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 239, 240։

— 1236. Յովհաննէս մալազ, միաբան Սեբաստիոյ Ս. Նշան վանքի, 1489 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 239։

— 1237. Յովհաննէս Ա. Անտիոքացի, կաթուղիկոս Սսոյ, հաջորդեց Ստեփաննոս Սարաձորեցուն, 1474 թ. իրան էլ հաջորդեց Յովհաննէս Բ Թլկուրանցի 1489 թ.—Սիսուան 218։—Տես հաջորդը։

— 1238. Յոհանէս կաթուղիկոս Սսոյ, գահակալել է 1486 թվին, ինչպես հիշատակում է ինքը՝ Ձեռ. Հալէպի, Բ. 32 ա, որին հաջորդել է Յովհաննէս Բ. Թուլկուրանցի՝ 1489 թ.—իսկ ըստ Ազգապ. 2209 Յովհաննէս Ա. Անտիոքացի, կաթուղիկոս Սսոյ, նստել է 1488—9 (մի տարի), հաջորդելով Ստեփաննոս Սալաձորեցուն։

— 1239. Ովանէս, նորընծա կրոնավոր Գողթան գավառի Բուստայ անապատում 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 276։

— 1240. Յովանէս քահանա, որ իր տանուտեր Արապշահ, Յակոբ և Սուլթանշահ եղբայրների հետ՝ Աղբակու Էրընկանի գյուղում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան 1490 թ.—Ձեռ. Վասպ. 511։

— 1241. Յովանէս, որդի Սուլթանշահի՝ եղբոր նույն տանուտեր Արապշահի։—Ձեռ. Վասպ. 512։

— 1242. Յոհաննէս աբեղա, աշակերտ Իսրայէլ վարդապետի. գրիչ. օրինակեց Աւետարանը խօջա Ջաւզի համար, 1490 թ. —Ձեռ. Վասպ. 514։

— 1243. ՅՈՎՀԱՆԷՍ *(որդին է Դովլաթ), եղբայր խօջա Ջաւզի, որ գրել տվեց մի Աւետարան 1490 թ.—Ձեռ. Վասպ. 516։*

— 1244. ՅՈՎՀԱՆՆԷՍ, *կինն է Մելիք (№ 14). ծնողներն են Հաթուշի՝ կնոջ խօջա Ջաւզի, որ Յովաննէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 514։*

— 1245. ՅՈՎՀԱՆՆԷՍ *արքեպիսկոպոս, առաջնորդ կամ աթոռակալ Աղբակի Բարթուղիմէոս առաքեալ վանքի, 1489—1490 թ. —Ձեռ. Վասպ. 512, Ձեռ. Դաղեան՝ Բ. 51 բ։*

— 1246. ՅՈՎԱՆԷՍ, *որդի Մկրտչի, թոռն Ստեփաննոսի և Դեկիշի, բոլորն էլ մերձավոր Դովլաթխաթունի, որ Աղթամարում Հայրապետ աբեղային օրինակել տվեց Աւետարանը, 1490 թ. —Ձեռ. Նոր-Բայազ. 12 բ։*

— 1247. ՅՈՀԱՆԷՍ *որդի Խաչատուրի և եղբայր նույն Հայրապետ աբեղայի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12 բ։*

— 1248. ՅՈՎԱՆԷՍ *Կեսարացի, գրիչ. արտագրել է «Գիրք ձեռնադրութեան», 1491 թ,—*Manus. brit. mus. *90 ա։*

— 1249. ՅՈՎՀԱՆՆԷՍ, *եղբայր Լիանոսի, որ ստացավ մի Աւետարան, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։*

— 1250. ՅՈՎՀԱՆՆԷՍ Զ *Եգիպտացի, կոչված* Թաւիլ (=*արաբ.* طويل ṭavīl *«երկայնահասակ»), պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Աբրահամ Զ-ին և գահակալեց «1479—1491 թ»։*

— 1251. ՀԱՆԷՍ *մենակեց Ուրծայ անապատում 1491 թ.—Այրարատ 443։*

— 1252. ՅՈՎՀԱՆՆԷՍ *մահդեսի, փակակալ Ուրծայ անապատի, 1491 թ.—Այրարատ 443։*

— 1253. ՅՈՎԱՆԷՍ *կամ* ՅՈՎԱՆԷ *Նաղաշ, գրիչ Կեսարացի. գրել է մի Ճաշոց Էլպաշի Էմին պէկի համար՝ 1481 թ., մի ուրիշ Ճաշոց գրել, ծաղկել և ոսկով զարդարել 1484 թ. խոճայ Մանուկի համար, և Ձեռնադրութեան մի գիրք էլ՝ 1491 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 1078, Բ. 1848—9։ Տես № 1211։*

— 1254. ՅՈՎԱՆԷՍ *գրիչ. օրինակել է Գանձարանը, Սեբաստիա 1492 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 312։*

— 1255. ՅՈՎՀԱՆՆԷՍ *արքեպիսկոպոս, առաջնորդ Վայոց ձորի, որդի Միրիշէկի, եղբայր Ստեփաննոս եպիսկոպոսի, եղբորորդի Ջումայ Բ-ի և թոռն մեծին Պռօշի. հիշված է 1475—8 թվերին. Գեղարդայ վանքում օրինակել է մի Ցայսմաւուրք 1486 թվին և նվիրել է Կոտայքի Բարձաղի գյուղի եկեղեցուն։*

Վերջին անգամ հիշված է 1493 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 178. Կրպտ. եպս.՝ Դօփեանք 94. հրտր. Ազաթ. 1909 թ. յոչ. էջ Ծ, Յովսէփեան՝ Խաղբակեանք 232—236, 238—240։

— 1256. Յովհաննէս կուսակրոն աբեղա, փակակալ Գետամիջի ս. ուխտին, 1493 թ.—Արցախ 247։

— 1257. Յովաննես վարդապետ, ուսուցիչ Յակոբ կրոնավորի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը խոջա Միրիջանի համար 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— 1258. Յովհաննէս եպիսկոպոս, առաջնորդ Այրիվանից 1475—88 թ. (Այրարատ 346, 350). հիշված է նաև 1493 թ. (Թորոս աղբ. Բ. 304)։

— 1259. Յով'աննես, հայր Համանգուլ կույսի, որ Այրի վանքում, Ստեփան աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1493 թ.—Թորոս աղբ. Բ. 304։

— 1260. Յով.աննես եպիսկոպոս, առաջնորդ Աւագ վանից՝ 1494 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 576)։—Հմմտ. № 1214։

— 1261. Յոհաննես աբեղա, միաբան Պալախորի վանքի 1495 թ.—Ձեռ. Սանաս. 24 ա։

— 1262. Յովհաննէս եպիսկոպոս, առաջնորդ Սեբաստիոյ Ս. Նշան վանքի, 1489—1495 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, էջ 239—240։

— 1263. Յովաննես հայր Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք 1945 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ. Կես. Բ. 1850։

— 1264. Յով.աննես աբեղա, որդի Թորոսի, գրիչ. Կեսարիայի Մանտիսոն (այժմ Մանճըսուն) գյուղում օրինակեց մի Յայսմաւուրք՝ Սիրատանի պատվերով, 1495 թ. — Ալպօյաճեան, Պատմ. հայ. Կես. Բ. 1850։

— 1265. Յոհաննես, որդի Սահակի և եղբայր Ազարիա աբեղայի, որ Վայոցձորի Եղեգիս քաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։

— 1266. Յովաննես, նույնի եղբայրն է՝ Ձեռ. Վենետ. Ա. 586։

— 1267. Յովհաննէս, որդի Գալուստի և եղբայր Ջանղուրբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1495 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 135։

— 1268. Յովհաննէս աբեղա. գրիչ. ստացող Սպահանի համար սկսեց օրինակել Աւետարանը Մաքեննեաց վանքում և ավար-

տեց Սաղմոսավանքում 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22 բ, Ձեռ. Դաշեան, Բ. 50 ա։

— 1269. Տէր Յովանէս «յառաջակալ» (մուղատայ) Երուսաղէմում. գնեց ամիրային և հրաման ստացավ թաղելու նահատակ Աստուածատուր Տիւրիկեցի քահանայի մարմինը 1496 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 146 բ։

— 1270. Յովհաննէս վարդապետ. գրիչ. Հայրապետ վարդապետի հետ միասին Ս. Աւագ վանքում օրինակեցին Նարեկը՝ ՋԽԵ=1496 թ.—Ձեռ. Կարին. 176։

— 1271. Յովհաննէս, գրիչ Որձոկեցի. աշակերտ Փիլիպպոս և Յովհաննէս քահանաների. օրինակել է Աւետարանը 1497 թ.—Տաշեան, Ցուց. 284։

— 1272. Յովհաննէս քահանա, ուսուցիչ նույն Յովհաննէս Որձոկեցի գրչի, 1497 թ.—Տաշեան, Ցուց. 285։

— 1273. Յովհաննէս վարդապետ Համամաշէնցի կամ Համշէնցի. աշակերտ Դանիէլ ճգնավոր վարդապետի, որ էր աշակերտ Գրիգոր Տաթևացու. Յովհաննէսը եղել է նշանավոր գիտնական վարդապետ, ուսուցել է Երզնկայի մոտ Սեպուհ լեռան Աւագ և Գայլփոս վանքերում. հասցրել է շատ աշակերտներ, որոնք թողել են բազմաթիվ ձեռագրեր և մեծ գովասանքով են խոսում նրա մասին։ Աշակերտներից նշանավոր է Գրիգոր վարդապետ Արճիշեցի, Զորթան (№ 701), որ Արճէշի Ս. Աստուածածին վանքում իբրև դպիր սպասավորում էր 1432 թ. (Նօտարք 101)։ Ոմանք Յովհաննէսին Համշէնի իշխանական տնից են համարում։ Մեռել է 1497 թ։—Թորոս աղբ. Բ. 483. Առաք. պատմ. 301, 340. Մ. մաշտ. 336 բ, Տաշեան՝ Ցուց. 431 և Հայ. բնակ. Սև ծովէն մինչև Կարին, էջ 28։

— 1274. Ոհանէս դպիր, որդի Աւագ քահանայի, որ Երուսաղէմում, Վրթանէս աբեղային գրել տվեց Գանձարանը 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 150 բ։

— 1275. Յովանէս կուզ, ըռէիս (ազգապետ) հայոց Երուսաղէմի, Մարտիրոս Բ պատրիարքի ժամանակ, 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 151 ա։ Հմմտ. № 1269։

— 1276. Յոհանէս, հիշված Ներքին Ագուլիսի Ս. Մինաս մատուռի մի արձանագրության մեջ 1497 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ, 313։

— 1277. Յոհանէս, որդի Սահակի՝ եղբոր Կիրակոս քահա-

նայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Ավետարանը, 1497 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 1278. **Յովանէս** քահանա, որդի Դանիէլի, գրիչ. Ամ գյուղում օրինակեց Ավետարանը՝ Կիրակոս քահանայի համար, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 1279. **Յովհաննէս** վարդապետ. գրիչ. օրինակել է Գրիգոր Նազիանզացու Աստուածաբանութիւնը «ի վանս Գայլեոսի ի դրան Ս. Յակովբայ» և հիւրղի Աղեքսանդրացու Պարապմանց գիրքը՝ Եկեղեաց գավառում, 1497 թ.—Ձեռ. Կարին. էջ 6։

— 1280. **Յովհաննէս** հայրապետ, եղբորորդի Ստեփաննոս վարդապետի Խարտիշարի վանից, 1497 թ.—Թորոս Աղբար, Բ. 305։

— 1281. **Յովհաննէս** վարդապետ, որդի Տէր պարոնի. մանկութիւնից սնվեց ու սովորեց Սանահնի վանքում. իր հորեղբորորդի Արիստակէս գրչին գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ.—ՀԱ 1887, 56։

— 1282. **Տէր Յոհաննէս**, «ճգնազգեաց և ամենայն առաքինութեանց ուսուցիչ և վարպետ, փակակալ Սանահնու», հորեղբայր նախորդ **Յովհաննէս** վարդապետի, որ Սանահնում գրել տվեց մի գեղեցիկ Շարական, 1497 թ. երբ նա մեռած էր.— ՀԱ 1887, 56 բ։

— 1283. **Յովհաննէս**, հայր Աւագտէր վարդապետի, որ էր գրիչ և միանգամայն առաջնորդ Արկզունից Օպիտակաւոր վանքի, մեռած 1498 թվից քիչ առաջ։—Խազրակեանք 233։

— 1284. **Յովաննէս** քահանա, որի գործածության համար Թաւրէզ տիկինը (ամուսին Ղուզիկ Մահի) Պարսամ քահանա գրչին գրել տվեց մի Ավետարան, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 525։

— 1285. **Յովհան** տանուտեր, իր դրամով Երուսաղէմում, Բանծառ գյուղում գրել տվեց մի Գանձարան 1498 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 432

— 1286. **Յովանէս** քահանա, որդի Մկրտիչ քահանայի և եղբայր Մարգարայ գրչի, որ Աղբակու Էրընկանի գյուղում օրինակեց Ավետարանը տանուտեր Արապշահի համար, 1490 թ. և մի Ավետարան էլ 1498 թ.—Ձեռ. Վասպ. 512, 528։

— 1287. **Յովանէս** Երզնկացի. գրիչ. աշակերտ Սամուէլ և Պետրոս աբեղաների. օրինակեց Ավետարանը Կեսարիայի Ս. Գրիգոր Նիւսացու անապատում, պարոն Խըրշահի համար, 1476 թ. (Rapport Belgique 34)։ Ունեցել է նաև ուրիշ աշխատություն-

*նեւ. գրիչ, նկարիչ և ոսկեզօծիչ միանգամայն՝ հասցրել է աշակերտներ, որոնք են Ստեփանոս գրիչ, Աստուածատուր և Թորոս սարկաւագներ և Ներսէս քահանա. հիշված է 1478—1498 թ.— Ալպօյաճեան, Պատմ. հայ. Կես. Ա. 1065։*

— 1288. Յովանէս *քահանա, որդի Մկրտիչ քահանայի, գրիչ. Խիզանում, Ռուզ տիկնոջ պատվերով գրեց մի Աւետարան 1499 թ., որ նվիրվեց հետո Իւրեանց! գյուղի Ս. Նշան եկեղեցուն.—Ձեռ. Վենետ. Ա. 577։*

— 1289. Յովհաննէս *քահանա գրիչ. Թելադրեց Ծառընտիր-Տօնականը Կիպրիանոս կույր! գրչին (1005-ից ուշ և 1506-ից առաջ), որի երկրորդ արտագրութիւնն է Վիեննայի № 2 ձեռագիրը.—Տաշեան, Ցուց. 14։*

— 1290. Յովհաննէս *Ծիպանցի, կրոնավոր. ունի Տաղերգութիւն ԺԵ դարու—Նօտարք 154, 167 (կարծում է թե նույն է այն Յովհաննէս կրոնավորի հետ, որ օրինակեց մի Աւետարան 1450 թ. Կարապետ միայնակեցի համար)։*

— 1291. Յովհաննէս *ոմն գրիչ, որ օրինակել է Եւագրը (ԺԵ դար). ձեռագիրը այժմ գտնվում է էջմիածնում.—Սարգիսեան, Եւագր. ներած. ԾՀԷ։*

— 1292. Յովհաննէս *գրիչ Վենետիկի Մխիթարեանց № 206 ձեռ. Մանրուսմունքի (ԺԴ/ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 529։*

— 1293. Յովհաննէս *գրիչ. օրինակել է Դաւիթ Անյաղթի գործերը Ստեփաննոս քահանայի համար ԺԴ/ԺԵ դար.—Ձեռ. էջմ. 1884=1842 (Մանանդեան, Ցուցակ. գպր. 277—280)։*

— 1294. Յովհաննէս *Փափշէնցի, աշակերտ Սարգիս վարդապետի Սուխարայ վանքի, ապա Գր. Տաթևացու. երբ սա ուսուցանում էր Մեծոփի վանքում. ընկեր Թովմա Մեծոփեցու (ԺԵ դար).—Մեծոփ. 52 (Յովհաննէս ի Փափշինոյ), Տաշեան, Ցուց. 418։*

— 1295. Յովհաննէս *Բաղիշեցի, աշակերտ Սարգսի, ապա Գրիգոր Տաթևացու (ԺԵ դար).—Ցայսմ. ապր. 27, Մեծոփ. 51, 52 (Մեծոփեցին դնում է մի Յովհաննէս. բայց որովհետև բոլոր աշակերտները միասին թվով 12 էին, ուստի ճիշտ է վարվում Ազգապատումը, որ դնում է 3 Յովհաննէս։ Բոլորի թվումը առա Սարգիս բարունապետ)։*

— 1296. Յովհաննէս *ի Վաղանդու վանից. աշակերտ Գր. Տաթևացու (ԺԵ դար).—Ցայսմ. ապր. 27. Մեծոփ. 51։*

— 1297. Յովհաննէս *Կարմիր, Կապանեցի. աշակերտ Գրիգոր Տաթևացու (ԺԵ դար).—Ցայսմ. ապր. 27. Մեծոփ. 51։*

— 1298. Յոհան Զ. *կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Ստեփաննոս Դ-ի և նախորդ Եղիայի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։*

— 1299. Յոհան Է, *կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Սարգիս Դ-ի և նախորդ Ստեփան Է-ի (ԺԵ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։*

— 1300. Յովհաննէս *քահանա, հայր տեր Յակոբ գրչի, որ Արծկէում օրինակեց մի Ցայսմաւուրք 1482 թ. և մի Աւետարան 1500 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 124։*

— 1301. Յոհան, *որդի Ուսեկ քահանայի և եղբայր Աւետիք քահանայի, որ գնեց մի Աւետարան 1500 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 68 բ։*

— 1302. Յովհաննէս *աբեղա, հովտաքի համար նահատակվեց Դրախտիկ գյուղում (Արեգունի գավառ), Ալվանդ փաթշահի խանության ժամանակ, «1500 թ».—Սիսական 76, Նոր վկ. 339, Ազգապ. 2217, Ձեռ. Սևան. 20 ա։*

— 1303. Յոհանէս, *եղբայր Խաչատուրի, որ գրել տվեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։*

— 1304. Յովհաննէս *եպիսկոպոս, նկարիչ. կազմել է Յովհաննէս աւետարանչի փառավոր արծվենիշ քանդակը, Առինջ գյուղի հին պարսպի մեջ, 1501 թ.—Սմբատեանց, Գեղարքունիք 247։*

— 1305. Յովհաննէս *եպիսկոպոս. իր ընկերներ Սարգիս եպիսկոպոսի և Դաւիթ աբեղայի հետ միասին նվիրակ գնացին Էջմիածնից Պոլիս, Կաֆա, Սուչավա, Իլվով, Ակքիրման և նորից դարձան Պոլիս։ Այստեղից դարձան յետ. բայց Ամասիայում, տաճիկները նրանց լրտես համարելով՝ երեքին էլ բռնեցին և կախաղանով նահատակեցին ՋԾԵ=1506 թ. հոկտ. 17 շբ։ Յովհաննէս քահանան նրանց վրա գրեց մի տաղ, որ տպված է Նոր վկ. 340—345. տես և Ձեռ. Հալէպի, Ա. 105. Թորգոմեան՝ Ստամպ. պատմ. Բ. էջ 465—9։ (Մեր հրատարակած տաղի մի այլ օրինակը տպված եմ գտնում Կոստանեանց, Նոր ժող. Ա. 31—37, որ բոլորովին նույն է. միայն էջ 343, տող 27 ունի մի լավ ընթերցված. «Որ է մարմինն ի Սպանիան» (մերը՝ ի սպանման)։ Կոստանեանի օրինակը նահատակության թվականը դնում է ՋԾԷ, որ սխալ է. ըստ որում 1508 թվին, հոկտ. 17-ը չի ընկ-*

նում շարաթ. բացի սրանից, էջ 342, տող 6 ասվում է թե կաթուղիկոսը վախճանվել է. և իրոք Սարգիս Գ կաթուղիկոսը վախճանվեց 1506 թ. և ոչ թե 1508 թ։ Ազգաց. 2195 թվականը դնում է 1506 և հիշված Յովհաննէսին համարում է Յովհաննէս է կաթուղիկոս Աջակիր։—(Ալիշանն էլ Կամենից, էջ 16 նահատակությունը դնում է 1503 թ)։

— 1306. **Յովհաննէս** քահանա, գրեց մի տաղ էջմիածնի երեք նվիրակների (Յովհաննէս եպս. № 1305, Սարգիս եպս. և Դավիթ աբեղա) նահատակության վրա, Ամասիա 1506 թ։ Տաղը հրատարակված է Նոր վկ. 340—345. տես և Չեռ. Հալէպի, Ա. էջ 105։

— 1307. **Յովհաննէս** կաթուղիկոս Աղթամարի, 1510—1512. հաջորդել է Աստվծին. և իր էլ հաջորդն է Գրիգորիս Ա Աղթամարցի բանաստեղծ կաթուղիկոսը.—Ակինեան՝ Գավազանագիրք, էջ 124—5։

— 1308. **Յովհաննէս** քահանա Տրապիզոնցի. հավատքի համար նահատակվեց Պոլսում, Աթմէյդանում 1518 սեպտ. 1. իր վկայաբանությունը գրել է Յոհան երէց նոտար (տես Փիրղալէմեան, Զորս ընկերք, Թիֆլիզ 1882, էջ 109)։

— 1309. **Յոհան** երէց նոտար. գրել է Յովհաննէս քահանա Տրապիզոնցու նահատակության († 1518) պատմությունը.—տես նախորդը։

— 1310. **Յովհաննէս** Բ. Թլկուրանցի, կաթուղիկոս Սսոյ «1489—1525 թ». հաջորդեց Յովհաննէս Ա Անտիոքացուն. նշանավոր բանաստեղծ. ունի գանձեր և տաղեր. իր տաղերի հավաքածուն հրատարակեց Կոստանեանց, Տփղիս 1892. իր մի սիրուն տաղը Քաջ Լիպարիտի վրա տես Ցուցիկք Բ. 510—512, Սիսուան 226 և այս բառարանում, հտ. Բ, էջ 433—4։ Մի նոր տաղ էլ տես Գիտ. նյութերի ժողովածու, № 1, էջ 178—181։ Ոտանավորի է վերածել նաև Մովսէսի գրքերը՝ ըստ Չեռ. Կարին. 158, կամ որ նույն է՝ Արարածոց գիրքը, ըստ Ցկ. կր. 46։—Կոստ. երգն. 110. Թլկր. (28), 30, 31, 33, 36, 37, 39, 42, 44, 45, 47, 49, 50, 56.—Թլկր. 50՝ ծայրանուն՝ **Յոհանես**.—տես և Չեռ. Հալէպի, Ա. 8 ա, 150 բ, Բ. 32 ա, Տաշեան, Ցուց. 1126 բ. Կոստանեանց՝ Նոր ժող. Գ. էջ Բ և 32. Յովսէփեան, Միջն. ազգ. տղչփ. Վիեննա 1911, էջ 27—33։

— 1311. **Յովհաննէս** եպիսկոպոս Ղուկասեան, պատրիարք Երուսաղէմի. նստել է մինչև «1532 թ», երբ նրան հաջորդեց

*Աստուածատուր Բ Մերդինցին.—Ազգապ. 2235 (տալիս է այս տեղեկությունը «ըստ ոմանց». իսկ Աղաւնունի դնում է 1517—22 թ. երբ հաջորդ Սարգիս Գ-ի և համարում է հավանաբար Յովհաննէս Թլկուրանցի՝ կաթուղիկոս Սսոյ)։*

— 1312. **Յովհաննէս** *կաթուղիկոս Հայոց, հիշված է Բիւրական գյուղի Ս. Յովհաննէս եկեղեցու մի խաչքարի վրա՝ 1536 թ.—Բանաս. 1903, 28.* ZAPH *2, 49 (բայց այս թվին այս անունով կաթուղիկոս չկա. թերևս մի աթոռակալ է)։*

— 1313. **Յովհաննէս** *Գ Քիլիսցի, կոչված Կայծակ. կաթուղիկոս Սսոյ «1525—1539 թ». հաջորդեց Յովհաննէս Բ Թլկուրանցուն.—Ձեռ. Հալէպի, Բ. 32 ա, Սիսուան 218։*

— 1314. **Յովհաննէս** *քահանա Արճիշեցի, տարեգիր. գրել է 1531—1547 թվերի Տարեգրութիւնը, ուր պատմում է Ուլամայ սուլթանի ապստամբությունը։ Սա Շահ Թահմազից իշխան էր կարգված Թաւրիզում. ապստամբեց նրա դեմ և փախավ Պոլիս՝ Սուլթան Սիւլէյմանի մոտ. ստացավ նրանից մեծամեծ պարգևներ ու պատիվներ. և գրգռելով նրան Պարսից դեմ, մեծ զորքով առաջնորդեց տարավ Պարսկաստան՝ Շահ Թահմազի դեմ։ Այսպեսով պատճառ եղավ բազմաթիվ քաղաքների և գյուղերի ավերման և բյուրավոր մարդկանց կոտորածի։—Ձեռ. Դադեան, Բ. 57 բ։ (Նույնին հիշում է նաև Հայապ. 129 և ասում է թե գրել է Շահ Իսմայիլի և նրա հաջորդների պատերազմների պատմությունը Օսմանցոց դեմ՝ ԺԶ դարում)։*

— 1315. **Յովհաննէս** *վարդապետ Շիրակ. նշանավոր գիտնական անձ. աշակերտ Գրիգոր Տարոնացու. հիշված է 1553 թ.—Մ. մաշտ. 336 բ, Առաք. պատմ. 340, Դրնդ. 349։*

— 1316. **Յովհաննէս** *Անգութ կամ Հայ, ապօրինի որդին էր Ստեֆանիցա (Թոմշա) իշխանի՝ իր Սրբուհի անուն հայ կնոջից. եղավ իշխան Մոլդավիայի 1572—4 թ.—Տամ, Արևել. հայք, էջ 27։*

— 1317. **Յովհաննէս** *Ա Տիգրանակերտցի. պատրիարք Պոլսի. հաջորդեց Յակոբ Ա-ին «1573 թվին» և գահակալեց մինչև «1581 թ».—Ազգապ. 2284։*

— 1318. **Յովհաննէս** *վարդապետ Ծարեցի, Թադէոս առաքելոյ (Դադիու) վանքից. որդի Ջհանշահի, յազգէ Դոփեայ և Հասանի. աշակերտ Ղուկաս վարդապետ Հաղբատեցու. ունի Պատմութիւն Աղուանից սկսած 1573 թվից։ Ըստ Զարբ. Նոր մատ. 176—7 «Հետաքննական տեղեկութիւններ կու տայ իր երկրին՝*

*Աղուանից աշխարհին վրայ, և առաւելապէս Սիւնեաց և Վրաստանի (1571—1599) մինչև Սիմոն Ա. Թագաւորին գերութիւնը. և կամփոփեն Կովկասի, պարսկական Հայաստանէն մինչև ի Դավրէժ տրուած Լալա Մուսթաֆա փաշայի և Ճղալի զադէ Ճղալ օղլուի պատերազմներուն պատմութիւնը»։ Մեռել և թաղվել է Գեղարքունեաց Վասակաշէն գյուղը «1583 թ»։*—Յովհան *Ծարեցի՝ Զբր. սարկ. Ա. 12.*—Յոհանէս *Ջհանշահենց՝ Ցհնսկ. 200.—սեռ.* Յոհանիսի՝ *Ցհնսկ. 192.—տես և Առաք. պատ. ծդ, էջ 467 և 472. Ջամչ. Գ. 529, 531. Կրպտ. եպս.՝ Դոփեանք 81, Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 59. Տաշեան, Ցուց. 1126 գ. Հայապ. էջ 129։*

— 1319. **Յովհաննէս** *Ը կաթուղիկոս Աղուանից. Մէյրաբէկի որդին և Գրիգոր Գ-ի եղբօրորդին էր. հաջորդից Փիլիպպոս Տուժեցուն՝ 1574 թ. և կամ թերևս ավելի ճիշտ՝ 1578 թ. մեռավ 1586 թ.—Ջեռ. Դաղեան, Ա. 89 բ.—(1586 թվին հիշված է վստահելի մի հիշատակարանում՝ անդ, Բ. 31 բ).—Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 23։*

— 1320. **Յովհաննէս** *վարդապետ Խիզանցի. պանդխտում էր Իլվով քաղաքում. գրեց ճառող Ա—Բ» 1587 թ.—Տաշեան, Ցուց. 988։*

— 1321. **Յովհաննէս** *քահանա Տէրզնցի. հայոց առաջին տպագրիչներից. եղել է Վենետիկ, Հռոմ, Մարսիլիա. Թարգմանել է «Գեղեցիկն Փարիզու» վեպը (նույնը կոչվում է նաև Պատմ. Փարէզ մանկան) «1588 թ». տպագրել է Սաղմոսը «Վենետիկ «1587 թ»), Նոր տոմար (Հռոմ «1584 թ»).—Ալիշան՝ Հայ-Վենետ. 210—5, Հայապ. 599։*

— 1322. **Յովհաննէս** *ոմն համարվում է ոչ-օրինական կաթուղիկոս Սսի՝ 1588 թվին, Ազարիա Ջուղայեցու և Յովհաննէս Դ Անթապցու միջև, Տիրատուր կաթուղիկոսից հետո, որ նույնպես օրինական կաթուղիկոս չէր (Սիսուան 218)։*

— 1323. **Յովհաննէս** *վրդ. կոչված Բրդուտ կամ Բրդութենց, Ոստանցի. ծնվել է Ոստանի դիմաց գտնվող Վառնիշատ գյուղում. հայրն է Ղուլիջան և մայրը Նուրար։ Աշակերտել է Մարգար Գառնոտէրին Վարագում և Ներսէս վրդ. Ամկեցուն, իրեն ընկերակից ունենալով Ազարիա Ջուղայեցուն (ապա կաթուղիկոս)։ Վարդապետական գավազան ստացավ շուրջ 1570 թ. Իր աշակերտներից են Յովաննէս Ոստանցի, Սիմէոն Ապարանցի, Բարսեղ վրդ. Գաւառցի (№ 98) (որ նորոգել է Բաղէշի Ամրդո-*

լայ վանքը), և Ներսէս Բաղիշեցի։ Գրել է գանձեր ու տաղեր, որոնցից հիշատակվում են Գանձ ի Ս. Խաչն Աղթամարայ, Գանձ Գետարգել Ս. Նշանի և Տաղ Գետարգել Ս. Նշանի։ Մեռել է 1589 թ։ Կենսագրությունը գրեց Ակինեան ՀԱ 1937, 210—215։ Տես և Նոտարք 81, Թորոս աղբ. Բ. 483, Առաք. պատմ. 301, 340, Ազգապ. 2261։

— 1324. Յովհաննէս *Բ. Ուռնեցի, պատրիարք Պոլսի «1590—1591 թ». հաջորդեց Սարգսին. այս թվին Սսի Ազարիա Ջուղայեցի կաթողիկոսը հեռացրեց նրան և ինքը աթոռին տեր դարձավ.—Ազգապ. 2284։*

— 1325. Յովհաննէս *եպիսկոպոս Դարանաղցի. Նոր վկա. ծնվել էր Դարանաղեաց գավառի Խուտի գյուղում. ձեռնադրվեց եպիսկոպոս և եղավ առաջնորդ Կարնոյ։ Աշկալայում Ս. Սարգսի եկեղեցին շինած ժամանակ տաճիկները պահանջեցին որ մահմեդական դառնա։ Հետաքրքրականն այն է, որ երբ տաճիկները դիմեցին դատավորին և մահվան վճիռ պահանջեցին, նա փէթվա չավեց։ Այն ժամանակ ամբոխը տեսնելով որ եպիսկոպոսը հաստատուն է իր հավատքի վրա, իր դաժանությունը գործ դրեց և նահատակեց նրան «1592 թ»։—Նոր վկ. 421 աննշան մի տեղեկություն կար միայն, որի աղբյուրն է Զամչ. Գ. 516. ընդարձակ է Ղ. վրդ. Փիրղալէմեան, Զորս ընկերք, Թիֆլիս 1882, էջ 70—71։*

— 1326. Յովհաննէս *կաթողիկոս Աղուանից, հիշված է 1615 թվի մի հիշատակարանում (Արցախ 140). ավելի ուշ 1621 թվին կա մի պաշտոնական գրություն Աղուանից Յովհաննէս կաթողիկոսի անունով (Ձեռ. Դաղեան, Բ. 24 բ)։ Այլուստ մենք գիտենք Յովհաննէս № 1319, 1574—86 թ, Յովհաննէս № 1329, ԺԶ դար և Յովհաննէս № 1337, 1628—34 թ. ըստ այսմ վերոհիշյալը պետք է համարել երկրորդի և երրորդի միջև, և կամ երրորդի թվականը տանել ավելի վեր։*

— 1327. Յովհաննէս *Դ. Այնթապցի, կաթողիկոս Սսոյ, կոչված է* բարեբարոյ. *«1588 թվից» սկսած, Տիրատուրի հետ միաժամանակ վարում էր կաթողիկոսական պաշտոնը. «1592 թվին» Ազարիա Ջուղայեցին գալիս է Սիս և աթոռին տեր դառնում. Յովհաննէսը քաշվում է Բերիա և վարում է կաթողիկոսությունը մինչև իր մահը, սկզբում Ազարիայի հետ միաժամանակ, իսկ նրա մահից հետո՝ միահեծան «1601—1627 թ»։ Կոչված է «երաժիշտ քաջ բարունապետ» 1619 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 122 ա)։ (Ըստ Սիսուան 218 Յովհաննէս Դ Անթապցին հաջոր-*

գրել է Ազարիա Ջուղայեցուն 1601 թ. և իրեն էլ հաջորդել է Պետրոս Կարկառեցին 1602 թ),—Դրնդ. 319, 321—2, Առաք. պատմ. 183, 341, Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 120), Ձեռ. Հալէպի, Ա. 98 բ, Բ. 31 ա, Կամենից 172, Զարբ. Թրգմ. 144, Ազգ. մատ. ՀԸ 14, Ազգապ. 2284։—Իրենից մնում է մի հիշատակարան 1606 թվից, ուր հայտնում է թե ինքն է կազմել Կոստանդին Գ կաթողիկոսի գեղեցիկ Մայր Մաշտոցը (տես Ձեռ. Հալէպի, Բ. էջ 33 ա)։

— 1328. Յովհաննէս արքեպիսկոպոս. «գրոց աշակերտ». ծաղկել է Աղթամարում, ԺԶ դարի սկիզբը.—Ազգապ. 2212։

— 1329. Յովհաննէս Է. կաթողիկոս Աղվանից. հաջորդեց Փիլիպպոսին և իրեն էլ հաջորդեց Շմավոն Բ. (ԺԶ դար).—Ջամբռ 78։

— 1330. Յովհաննէս Ը, կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Աբրահամ Գ-ի և նախորդ Ներսէս Զ-ի (ԺԶ դար).—Հաւաք. 63 (կեղծիք)։

— 1331. Յովհաննէս, աշակերտ Յովհաննէս վարդապետ Ջհանշահենց Ծարեցու. ավելի կոչված է Յովհաննիսիկ. գրել է Համառօտ Պատմութիւն անցելոց անցից՝ 1572—1600 թ. տպ. Ճառաքաղ 1859 Գ. 69—76, Դ. 105—113. Հայապ. 129. մի հատված էլ տպված է Այրարատ 300—301։ Տես և Յովհաննիսիկ:

— 1332. Յովհաննէս Մակուեցի, տաղասաց. գրել է Շահաբասի արշավանքի (1604 թ.) պատմությունը ոտանավոր, որ հրատարակված է Այրարատ 301։ Ամբողջական վերնագիրն է ըստ Ակինեանի՝ «Ողբ ի վերայ գերութեան ի Շահաբբասէ» (տես Շահազիզ, Հին Երևանը, էջ 32). Տաղը գտնվում է նաև Բեռլինի № 84 ձեռագրում (մի նմուշ տես Ձեռ. Բեռլինի, էջ 67 բ)։

— 1333. Յովհաննէս ավագերեց Կամենիցի. 56 տարի հովվել է իր թեմը. գրել է Լեհահայոց Պատմութիւնը, որ սկսում է 1430 թվից և հասնում է մինչև 1610 թ. որ իր մահվան նախորդ տարին է։ Այնուհետև Պատմութիւնը շարունակել են իր որդիները՝ Գրիգոր, Օքսենտ և Յակոբ քահանաները և հասցրել մինչև 1624 թ։ Այս գործը հրատարակեց Ալիշանը՝ Կամենից, Վենետ. 1896, ուր հեղինակի հիշատակությունը տես էջ 3 և 67։ Մեռել է 1611 թ։—Հայապ. 131։

— 1334. Յովհաննէս մալազ. թուղթ կոկող և կազմարար վարպետ. աշխատում էր Կարմիր վանքում 1618 թ.—Karst, Դատան. էջ գ:

— 1335. Յովհաննէս *քահանա, Տիգրանակերտցի ասորե-արաբերենից հայերենի թարգմանեց* Yahyā bin Isa bin ǰazlah *բժշկի* كتاب تقويم الابدان Kitābi taqvīm-ul-ābdān *աշխատությունը, որ գրի առավ Մկրտիչ գրիչը՝ Իլվով քաղաքում, բժշկապետ Ջուղայեցի Խոջա Յովհաննէսի համար, 1628 թվին.*—Tübingen, *էջ 119։*

— 1336. Յովհաննէս *Ջուղայեցի, որդի Խարաճի. բժիշկ էր արվեստը կատարելագործելու համար ման եկավ շատ երկիրներ, գնաց Լեհաստան, Գերմանիա, Վենետիկ, Պադովա, ուր գտավ արաբերեն բժշկական գրականությունը։ Վեց տարի աշխատեց նրանց թարգմանության վրա և Իլվով քաղաքում գրի առավ 1629 թ.*—Tübingen, *էջ 120—1 (տես և Յովհաննէս քհ. Տիգրանակերտցի № 1335)։*

— 1337. Յովհաննէս *Ը. (ըստ Ջամբռի, իսկ ըստ Բարխուտ. Յովհաննէս Թ). կաթուղիկոս Աղվանից. հաջորդեց Սիմէոն Գ-ին 1628 թ. մատնեցին ու տարին նրան Շահաբասի մոտ, բայց նա վերահաստատեց նրան իր պաշտոնում. գահակալել է մինչև 1634 թ. իրեն էլ հաջորդեց Գրիգոր Ե (№ 722).—Ջամբռ 78. Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 63, 64. իսկ ըստ Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ՝ Յովհաննէսը հաջորդել է Սիմէոնին 1633 թ. և իրեն էլ հաջորդել է Գրիգորը 1634 թ։—Գանձասարի վանքում թաղված է Յովհաննէս կաթուղիկոս Աղվանից (Արցախ 176), թվականն անհայտ. բայց որովհետև ասվում է թե նախորդն է Գրիգորի, ուստի վերի Յովհաննէսն է և մահն էլ պետք է դնել 1634 թ։*

— 1338. Յովհաննէս *Գ. Խուլ, Պոլսեցի, պատրիարք Պոլսի. ծնվել էր «1554 թ». տապալեց Մելքիսեդեկին և գրավեց Պոլսի պատրիարքական աթոռը «1600 թ». այնուհետև ինքը և Գրիգոր Գ Կեսարացին մի քանի անգամ խլխլեցին աթոռը իրար ձեռքից։ Յովհաննէսը լատինամետ կուսակցության գլուխն էր կանգնած. «1632 թվին» գնաց Հռոմ, կաթոլիկ դարձավ և գրեց այնտեղ մի քանի գրքեր Հայոց դավանանքի դեմ։ Մեռավ «1634 թ»։—Ազգապ. 2308, 2427, Ազգ. մատ. ՀԸ, էջ 1—41։*

— 1339. Յովհաննէս *Անկիւրացի. հայ տպագրության ռահվիրաներից. գիտեր իտալերեն. գնաց Հռոմ 1637 թ. և տպագրեց երկլեզյան Պատարագամատույցը՝ հայերեն և լատիներեն. անցավ Վենետիկ և տպագրեց Սաղմոսը 1642 թ. և Յիսուս Որդին 1643 թ։—Զամչ. Գ. 657։*

— 1340. Յովհաննէս *Դ Մուղնեցի, պատրիարք Պոլսի «1653—*

*1655 թ». հաջորդեց Եղիազար Այնթապցուն՝ առաջարկությամբ Փիլիպպոս կաթողիկոսի։ Կաթողիկոսի մահից անմիջապես հետո Յովհաննէսը գահազուրկ եղավ և պատրիարքական աթոռը անցավ աշխարհականների ձեռքը.—Ազգապ. 2475։*

— 1341. Յովհաննէս *Հոլով վարդապետ Պոլսեցի. լատինաբան հայերենի հեղինակն է. գրել է Քերականութիւն հայերէն լեզուի (հայերէն և լատիներէն), որ է* Զտութիւն հայկաբանութեան—Puritas linguae armeniacae, *տպ. Հռոմ, 1674 թ։ Ունի նաև թրգմ. գրոց Բնազննութեան և Ձեռնազննութեան, Խոկումն քրիստոնէական, Հնգետասան աղօթք սրբուհւոյն Բրիգիտայ, Ջերմեռանդութիւնք առ Ս. Աստուածածին, Ներկրութիւնք հոգեւորականք.—Տաշեան, Ցուց. 1127 ա, Ազգապ. 2632։*

— 1342. Յովհաննէս *եպիսկոպոս, տաղասաց. ունի «Տաղ վասն Թռչնոյ» (Կոստանեանց, Նոր ժող. Ա. 42), որ գրել է «յերկիր օտար», նախ քան 1680 թիվը։*

— 1343. Յովանէս *Ամթեցի, մուշտակակար. հավատքը չուրանալով նահատակվեց Դամասկոս (Շամ) քաղաքում 1681 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 977։*

— 1344. Յովհաննէս *Զ վարդապետ Թօփալ («կաղ»), Ամասիացի կամ Սամաթիացի. պատրիարք Պոլսի. հաջորդեց Ստեփաննոս Մեղրեցուն «1674 թ», բայց մի տարի հետո գահընկեց եղավ։ Նստավ հակաթոռ պատրիարք Երուսաղեմի 1680 թ. (ըստ Աղանյունու)։—Ազգապ. 2602։ Այս անգամ* Յովհաննէս *Ամասիացին գահակալեց Երուսաղեմի պատրիարքական աթոռը իբրև հաջորդ Մարտիրոս Ղրիմեցու, որ անվանապես վարում էր Երուսաղեմի պատրիարքական պաշտոնը, մինչև որ այս վերջինը իրոք անցավ իր աթոռը «1682 թ» (տես Մարտիրոս № 164)։*

— 1345. Յովհաննէս *վարդապետ Ջուղայեցի, որդի Էդկարի. աշակերտ Խաչատուր Կեսարացու. Նրա հրամանով գնաց Իտալիա, ուր 7 տարի մնալով սովորեց տպագրական արվեստը և հայկական տպարան բերավ Ն. Ջուղա։ Տպագրեց Պարզատումարը (1647 թ)։ Ձեռնադրվեց եպիսկոպոս և առաջնորդ Հին Ջուղայի, ուր հարձակման ենթարկվելով Թուրքերի կողմից՝ սպանվեց։—Զքր. սարկ. Բ. 64, 66, Ջուղ. 118—120, 148։*

— 1346. Յովհաննէս *Երզնկացի, կոչված Քէշիշ-Օղլի. տաղասաց. իր տաղերից տես Նոր ժողովածու, Դ. էջ 11—17 (Թուրք աղջկա վրա գրված սիրահարական տաղը), նախ քան 1695 թ։*

— 1347. Յովհաննէս *Է եպիսկոպոս Պոլսեցի. մականունը*

*Նոխութճի («սիսեռակեր»). պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց աշխարհական տեղակալներին, որոնք* պապա *անունով կառավարում էին աթոռը Մարտիրոս Կաֆայեցուց հետո 1683—4 թվերին։ Տապալվեց աթոռից «1687 թ». և իրեն հաջորդեց Սիմէոն պատրիարք 1688 թ. բայց չորս տարուց նորից գահ բարձրացավ «1691 թ». պաշտպանեց Երուսաղէմի իրավունքները հույների ոտնձգությունների դեմ, որի համար էլ վանքը ծանր պարտքերի տակ ընկավ։ Մեռել է «1697 թ»։—Ազգապ. 2639։*

— 1348. Յովհաննէս *վարդապետ Կաֆայեցի. տաղասաց (ԺԷ դար).—Իր տաղերը տես Տաշեան, Ցուց. 1127 ա։*

— 1349. Յովհաննէս *Ամթեցի. կոչված «լոկ վարդապետ». տաղասաց (ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 1124 բ. Ձեռ. Արգ. յովհ. էջ 134։*

— 1350. Յովհաննէս *վարդապետ Խիզանցի. աշակերտ Սիմէոն Ապարանցու. ունի մանր գրվածքներ (ԺԷ դար).—Ազգապ. էջ 2261։*

— 1351. Յովհաննէս *կաթուղիկոս Աղթամարի, հաջորդեց Աբրահամին (ԺԷ դար)։*

— 1352. Յովհաննէս *կաթուղիկոս Գանձասարի (ԺԷ դար).—Ջքր. սարկ. Ա. 47։*

— 1353. Յովհաննէս *Գրագիր վարդապետ. աշակերտ Աղթամարի դպրոցի. ունի մանր գրվածներ (ԺԷ դար).—Ազգապ. էջ 2261։*

— 1354. Յովհաննէս *Կրճօն վարդապետ. աշակերտ Աղթամարի դպրոցի. ունի զանազան մանր գրվածներ (ԺԷ դար).—Ազգապ. 2261։*

— 1355/6. Յովհաննէս *Ծաղկող վարդապետ. աշակերտ Սիմէոն Ապարանցու. ունի մանր գրվածներ (ԺԷ դար).—Ազգապ. էջ 2261։*

— 1357. Յովհաննէս *վարդապետ Ջնքուշցի, աշակերտ Մարտիրոս վրդ. Ջնքուշեցու և ուսուցիչ Եղիազար կաթուղիկոսի և այլոց. հիշված է ԺԷ դար։—Թորոս աղբ. Բ. 464, 484։*

— 1358. Յովհաննէս *տաղասաց. ունի Տաղ Թուխթունի (ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 327 և Կոստանեան, Ժողովածու Ա. 65—67։*

— 1359. Յովհաննէս *Թերովբենց, տաղասաց. իրենն է «Երէկ հողվարովգ անցի» խուր տաղը (ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 1162 ա. Ձեռ. Արգ. յովհ. 133։*

— 1360. Յովանէս *վարդապետ Վարագեցի, տաղասաց. ունի Տաղ Վաան ծննդեան Քրիստոսի. «Ցայն առաւօտին· անեղ գիշերին, եղնիկն էր ծնել խայթհոյթ մեր (=իմա՝ խայտ հորթ մ'էր) բերել» (Ձեռ. Բերլինի, 68 ա).—Ձեռագիրը հաւանաբար ԺԷ դարից է։*

— 1361. Յովհաննէս *կաթողիկոս Աղվանից. հիշված է 1702 թ.—Ձեռ. Թաւր. 109 բ։—Այլուստ անծանոթ է։*

— 1362. Յովհաննէս *Ե վարդապետ Արեւելցի, մականունը Թիւթիւնճի (իբր թե շատ ծխող), նախապես պաշտոնավարում էր Վասպուրականի վանքերում. շինել է ավել Վարագի առուն. իբրև նվիրակ էջմիածնի գնաց Պոլիս 1650 թ. սակայն հավաքած դրամը վառնեց գնելու համար պատրիարքական աթոռը և Ղազար Սեբաստացուն տապալելով՝ գահ բարձրացավ «1663 թ» (Աղգաղ. 2531)։ Սարգիս Թէքիրտաղցու ձեռքով ինքն էլ տապալվեց «1664 թվին», բայց մի տարուց նորից գահին տիրացավ։ Երկրորդ անգամ գահազուրկ եղավ Յակոբ կաթողիկոսի ձեռքով, երբ սա գնացել էր Պոլիս «1667 թ» և աթոռը տվեց նույն Սարգիս պատրիարքին։ Այս թվին Յովհաննէսը անցավ Վասպուրական և նստավ կաթողիկոս Աղթամարի՝ իբրև հաջորդ Մարկոս Արճիշեցու։ Ըստ Աղգաղ. 2589 և 2648 այս անգամ գահակալել է 16 տարի և մեռել է «1683 թվին»։—Սակայն Ակինեան, Գաղնգիրք 138—142 ասում է որ հաջորդել է Աղթամարի Կարապետ կաթողիկոսին, բայց շատ կարճ ժամանակով։ Որովհետև թեև 1669 թվին իբրև Աղթամարի կաթողիկոս հիշված է, բայց 1670 թվին կամ ավելի ուշ աթոռը թողնելով սկսել է թափառել զանազան տեղեր։ 1678 թ. գնացել է Եգիպտոս և այնտեղից անցել է Հաբեշիստան։ Կահիրէից մեկնելով սեպտ. 17-ին և անցնելով Տունկոլայից ու Սեննարից, 112 օրից հասել է Գուսմպիտ, որ Հաբէշ թագավորի մայրաքաղաքն էր։ Այս միջոցին նա գտնում է առաջին անգամ Նեղոսի ակունքը, որ այնքան եվրոպացիներ որոնել ու չէին գտել, և իրենից շատ տարիներ հետո եվրոպացիք հազիվ պիտի գտնեին։ Չորս ամիս մնալով մայրաքաղաքում, յետ է դառնում Կահիրէ, Կարմիր ծովի վրայով, անցնելով Մասուա, Սուաքին և Քուսէյր նավահանգիստներով։ Կահիրէ հասնում է 1680 թ. սեպտ. 27։ Իր ամբողջ ճամբորդությունը տևել էր 2 տարի 10 օր։ Այս ճամբորդությունը նկարագրել է նա համառոտ կերպով (8 միջակ երես, 222 տող)։ Հրատարակված էր նախ* Христ. Вост. *1914 թ. պրակ* II, *էջ 6—*

*16 հայերենը՝ ռուսերեն թարգմանությամբ հանդերձ։ Երկրորդ անգամ, ընդարձակ ծանոթություններով հրատարակեց բազմահմուտ և բազմավաստակն Արշակ Ալպօյաճեան, Գահիրէ 1946 (Հայ եպիսկոպոսի մը առաքելութիւնը ի Հապէշիստան ԺԷ դարուն, էջք 152)։ Այստեղ շատ երկար քննված է այն դժվարին ճամբորդության նպատակը, որ ո՛չ կրոնական քարոզչություն կարող էր լինել և ոչ էլ երկրախուզություն։ Հեղինակի կարծիքով Ցովհաննէս եպիսկոպոսը քաղաքական գործիչ էր։ Եվրոպական մի պետության կողմից նա գնացել էր այդ երկիրը, Հաբեշներին էլ ոտքի հանելու և միացնելու Օսմանեան պետության դեմ կազմվող մի ընդհանուր արշավանքի։ Այս ծրագրի կետերից մեկն էլ Հայաստանի ազատությունն էր։ Իր ճամբորդությունը կատարելուց հետո, Ցովհաննէս եպիսկոպոսը նորից անցնում է Եվրոպա։ 1683 թվին արդեն Վերսայլումն է, ապա Լիվոռնօ, և 1698 թվին Տրապիզոն, ուր ականատես է եղել Կարապետ պատանու նահատակության, որին և թաղել է։ Ինքն էլ մեռել և թաղվել է նույն քաղաքում, 1703 թ. ուր մնում է և իր տապանը։*

— 1363. Յովհաննէս *Գ Կեծուկ, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդեց Սահակ Արծկեցուն «1699—1705 թ». իրեն էլ հաջորդեց Հայրապետ Ա Փակտխեցի (№ 110).—Ազգապ. 2868, Հաւաք. 63. Ակինեան, Գւզնգիրք 145։*

— 1364. Յովհաննէս *Է վարդապետ Զմիւռնիացի, պատրիարք Պոլսի «1707—1708 թ». նախապես օգնականն էր Աւետիք պատրիարքի. երբ Աւետիքը գահընկեց եղավ, Յովհաննէսն էլ փախավ Էջմիածին։ Պոլսի հասարակությունը ազգովին խնդրեց Աղեքսանդր Ջուղայեցի կաթուղիկոսից ուղարկել նրան Պոլիս, ավելի ազդու կերպով կարողանալ կռվելու համար կաթոլիկության դեմ։ Պոլիս գնալով ընտրվեց պատրիարք «1707 թ»։ Ձեռք առավ խիստ միջոցներ, մինչև անգամ մի քանի հոգի կախաղան բարձրացան, բայց անկարելի եղավ գտնել Աւետիք պատրիարքին, որ Ֆրանսիացիք փախցրել ու բանտարկել էին։ Մի տարի հետո ժողովուրդը խաղաղվելով՝ Յովհաննէսը գահից ցած առնվեց և նստավ Սահակ Ապուչեխցին «1708 թ»։—Ազգապ. 2754, 2760։*

— 1365. Յովհաննէս *Ը վարդապետ Գանձակեցի. ճարտարախոս մարդ էր. ընտրվեց պատրիարք Պոլսի՝ իբրև հաջորդ Սահակ Ապուչեխցուն «1714 թ». կարողացավ կրքերը զսպել և ժողովուրդը հանդարտության մեջ պահել։ Երբ Յովհաննէս հոլատը*

Պոլիս գնաց Երուսաղէմի պարտքը վճարելու համար փող հանգանակելու նպատակով և ժողովուրդը ուզեց նրան պատրիարք ընտրել, Գանձակեցին կամովին հրաժարվեց և աթոռը նրան հանձնեց «1715 թ».—Ազգապ. 2795, 2807։

— 1366. Յովհաննէս *Մրքուզ վարդապետ Ջուղայեցի (1642—1716). աշակերտ Դավթի. Նոր-Ջուղայի վանքում ուսումն ավարտելուց հետո գնաց Արաբիա և սովորեց քաջ արաբերեն, լավ գիտեր նաև պարսկերեն։ Այս երկու լեզուների և գրականության մեջ այնքան առաջացավ, որ գերազանցեց նույն իսկ Պարսից մոլլաներից, որոնք գալիս նրանից դաս էին առնում։ Պարսից թագավոր Սուլէյման շահը և նրա հաջորդ Հուսէին շահը նպատակ ունենալով մահմեդական դարձնել Ջուղայի հայերին, իրենց հմուտ մոլլաներով եկան նրա մոտ և կրոնական վեճ բացին։ Յովհաննէսը հաղթեց և շահերի մտադրությունը կասեցրեց։ Ունի բազմաթիվ աշխատություններ, որոնցից հիշենք Քերականութիւն, Տրամաբանութիւն, Գիրք վիճաբանութեան ընդդէմ երկաբնակաց (տպ. Ն.-Ջուղա 1687, Պոլիս 1713), Մակացութիւն ճշմարտութեան, Համառօտ աստուածաբանութիւն, Սրբազնագործութիւն կամ Ճաշակեցէք, Մեկնութիւն Երգոց երգոյն, Մեկնութիւն Սաղմոսի, Թուղթ առ Լուդովիկոս եպիսկոպոս Լատինաց, Աղօթագիրք ևն։ Այս աշխատություններից մի քանիսը, ինչպես և Գիրք հարցմանց, գրված են հայ և պարսիկ լեզուներով դեմ առ դեմ։ Թարգմանել է նաև Նոր Կտակարանը պարսկերեն և արաբերեն լեզուներով։ Եղել է նաև ժամագործ և նկարիչ, Իր ընդարձակ կենսագրությունը տես Ջուղ. 153—218 և 221—3, ուր կա նաև իր վիճաբանությունը Պարսից թագավորների հետ— Լէօ, Հայկ. տպագր. Ա. 259, «Էջմիածին», 1944 թ. № 1, էջ 29—34։*

— 1367. Յովհաննէս *Հաճնցի, կաթուղիկոս Սսոյ. ընտրվեց «1705 թվին», իբրև հաջորդ Մատթէոս Սարիի։ Ձեռ. Հալէպի, Ա. 128 բ կա մի հիշատակություն, ուր ասված է թե «Յովհաննէս հոգևոր տէրն եկաւ ի Հալէպ 1720 թ»։ Գահակալել է մինչև իր մահը՝ 1721 թ. Մնում է իր գերեզմանը Սսում, նույն թվից— Սիսուան 217, Ազգապ. 2866։ (Բայց* Manus. brit. mus. *182 ա հիշված կա* Յովհաննէս *կաթուղիկոս Սսոյ 1724 թ)։*

— 1368. Յովհաննէս *Դ Հայոցձորեցի. կաթուղիկոս Աղթամարի։ Ըստ Հաւաք. 63 հաջորդեց Հայրապետ Ա Փափախեցուն, որ նստել էր 1705—7 թ. (№ 110), և որին էլ հաջորդեց Գրիգոր*

Գաւաշցի։ Իսկ ըստ Ակինեան, Գաւդգիրք 146 Յովհաննէս Դ հաջորդել է Գրիգոր Գաւաշեցուն։ Հիշված է 1720 թ. հիշված է գործյալ 1722 թ. մի հիշատակարանում, որ հրատարակեց Մ. Ներսիսյան, Տեղեկ. Արմֆանի, 1941, № 5—6, էջ 74։

— 1369. **ՅՈՎՀԱՆՆԷՍ** իշխան Ուտէացի. քաջությամբ վանեց Լէզգիների արշավանքը 1722 թ. երկար տարիներ պատերազմներ ունեցավ այլազգիների դեմ. բայց վերջապես իր երկիրը նրանց հանձնելով՝ գնաց Աժդարխան և նույն տեղի իշխանից պատիվ գտավ։—Չամչ. Գ. 784, 800։

— 1370. **ՅՈՎՀԱՆՆԷՍ** Թ Կոլոտ, պատրիարք Պոլսի «1715—1741 թ». Բաղիշեցի էր. աշակերտեց Ամրդօլու վանքում Վարդան Բաղիշեցու մոտ. Նրա մահից հետո («1705 թ») գնաց Մշու Ս. Կարապետի վանքը։ «1709 թվին» երկրաշարժին վանքը քանդվելով՝ նորից շինեցին։ Վանքը պարտքի տակ ընկած լինելով՝ Յովհաննէսը գնաց Պոլիս հանգանակության «1712 թ»։ Իր ընդունակությամբ աչքի ընկնելով, ուղարկեցին նրան Երուսաղէմ, որպեսզի այս վանքի պարտքերը վճարի։ Երուսաղէմից վերադարձավ Պոլիս՝ պարտքի խնդրով. նրան ընտրեցին Պոլսի պատրիարք՝ փոխանակ Յովհաննէս Գանձակեցու «1715 թ»։ Եղավ ազդու պաշտպան ազգի շահերին ընդդեմ կաթոլիկների ոտնձգությանց։ Հիմնեց դպրոց և հասցրեց շատ աշակերտներ։ Սրանց մեջ նշանավոր է Յակոբ Նալեան պատրիարքը։ Իր գործն է նաև Պատրիարքարանի գրադարանը, որ Պոլսի Ազգային Մատենադարանի սկիզբն է։ Մեռել է «1741 թ»։—Աբր. կրետ. էջ 1. Ազգապ. 2926։—Ընդարձակ մենագրություն ունի Բաբգէն վրդ. Կիւլէսէրեան, հրատ. Վիեննա 1904։

— 1371. **ՅՈՎՀԱՆՆԷՍ** Հաճնցի (այլ). մականունն է «Տէր Աղամ». կաթուղիկոս Սսոյ. հաջորդեց Գրիգոր Կեսարացուն և նստավ Հաճին, «1727 թ». հիշված է իբրև կաթուղիկոս 1729 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 226 բ). ընտրեց իր համար մի աթոռակից «1731 թ», որից հետո 3 տարի առանձնացած ապրելով՝ մեռավ «1734 թ».—Ազգապ. 2867, 2938։ Իսկ ըստ Ազգ. մատ. ՀԸ, էջ 261 դեռ ողջ էր 1742 թ։

— 1372. **ՅՈՎՀԱՆՆԷՍ** Խանդամիրեան, քաջ իշխան Շահկերտ (Ղազանչի) ավանի։ Երբոր Պարսից Հայդար խանը Նախիջևանը նվաճելով՝ Շահկերտի վրա եկավ, Յովհաննէսը ժողովուրդին սարի վրայի դղյակում ամրացրեց, պաշարով ապահովեց, ինքն էլ պղնձի ռումբեր ձուլել տալով, 500 կտրիճներով նրա

դեմ դուրս եկավ։ Հայդարը շատ փորձեր արեց, շատ հարձակումներ գործեց նվաճելու համար նրան, բայց չկարողանալով գրավել Շահկերտը, ակամա հաշտվեց Յովհաննէսի հետ։ Բայց հետո մի խնջույքի ժամանակ թունավորելով սպանեց նրան 1750 թ։— Ջամչ. Գ. 842—8, Սիսական 362—3։

— 1373. Յովհաննէս *Այթուն*, տորոնի մշակությունը մըտցրեց Ֆրանսիայում (ԺԸ դարի կեսին). իր մասին գրված գըրքերի և հոդվածների ցանկը տես REA 2, 276—7 և լրացուցիչ տեղեկություններ, անդ, էջ 276—282։ Դրված է նաև Avignon քաղաքում իր պատվին կանգնեցրած արձանի կրկին նկարները։

— 1374. Յովհաննէս *Մալաթիացի*. Նոր վկա. Մալաթիայում իր հարևան այլազգին խաբեությամբ իր տունն է տարել և բռնի թլփատել. վախից գաղթել է Եւդոկիա, բայց շուտով բռնվել և դատի է կանչվել. մերժելով ուրանալ իր հավատքը, տանջել են նրան չարաչար և նահատակել «1775 թ»։— Նոր վկ. 569—571. Ազգապ. 3619։— Նահատակիս վրա Եւդոկիացի աշուղ Սէֆէրօղլին գրել է մի սրտառուչ տաղ, որ տպված է Նոր վկ. անդ։— Տաշեան, Ցուց. 1129 դ Սէֆէրօղլուն դնում է Յովհաննէսների շարքում, բայց ոչ մի տեղ չէ ասված որ նրա անունը Յովհաննէս էր։

— 1375. Յովհաննէս *Ժ եպիսկոպոս Համադանցի*. պատրիարք Պոլսի։ Նախապես Պրուսայի առաջնորդ էր. երբ Զաքարիա Կաղզուանցի պատրիարքը կաթոլիկների դեմ իր ցույց տված խստության համար դեսպանների խնդրանոք գահընկեց եղավ, նրա տեղ նշանակվեց Յովհաննէսը «1781 թ»։ Բայց սա է՛լ ավելի խիստ գտնվելով կաթոլիկների, ինչպես նաև իրայինների դեմ, ստիպվեցին նրան էլ հրաժարեցնել «1782 թ»։— Ազգապ. էջ 3155։

— 1376. Յովհաննէս *քահանա*, Նոր Թոնդրակեցի աղանդավորներից, գրել է «Բանալի ճշմարտութեան» գիրքը 1782 թ. ապա մահմեդականություն է ընդունել։ Գիրքը անգլերեն թարգմանությամբ և ընդարձակ քննությամբ հրատարակեց անգլիացի հայագետ Conybeare, Key of truth, Oxford 1898։— Փորձ, Դ տարի, № 10, էջ 91—130 > Շիրակ 157։

— 1377. Յովհաննէս *Թ կաթողիկոս Աղվանից (Գանձասարի)*. Եսայի կաթողիկոս Հասան-Ջալալեանի եղբորորդին էր. Ղարաբաղի մելիքների և ժողովուրդի կողմից ընտրվեց իբրև հաջորդ Եսայի և Ներսէս կաթողիկոսների 1763 թ։ Նստում էր

Գանձասարում։ Իրեն հակաթոռ դուրս եկավ Իսրայէլ կաթուղիկոսը, որ նստում էր Երից մանկանց վանքում։ Երկար կռիվներից հետո, ժողովուրդը խնդրում է Էջմիածնի Սիմէոն կաթուղիկոսի միջամտությունը. նա կանչում է երկուսին էլ իր մոտ. Յովհաննէսը հնազանդվում է, իսկ Իսրայէլը ըմբոստանալով՝ կարգալույծ է արվում և նզովվում (տես Իսրայէլ № 20)։ Իսրայէլը քաշվում է Գանձակ, իսկ Յովհաննէսը հաստատվում է Գանձասարում։ Ջերմապես կողմնակից Հայաստանի ազատության գաղափարին, մասնակցեց Ղարաբաղի մելիքների այս առթիվ գումարած ժողովներին և գրագրության մտավ Ռուսաց պետության հետ։ Իսրայէլը առ երեսս բարեկամ ձևանալով նրան, որսում էր բանակցության գաղտնիքները և հաղորդում Շուշու Իբրահիմ խանին, հուսալով որ իր այս ծառայության փոխարեն ձեռք կբերի նաև Գանձասարի կաթուղիկոսությունը։ Յովհաննէսին դավաճանում էր նաև իր հարազատ եղբայրը՝ Ալլահ-Ղուլի բէգը։ Սրա մատնությամբ և Իսրայէլի միջոցով Իբրահիմը ձեռք բերեց գաղտնի փաստաթղթերը, մելիքներին և Յովհաննէսին ձերբակալեց ու բանտարկեց, Գանձասարը կողոպտեց և Յովհաննէսին բանտում թունավորելով սպանեց «1786 թ»։ Թաղվել է Գանձասարի վանքի գավթում։—Րաֆֆի՝ Խամսայի մելիքութ. 123—134, Ջեռ. Դադեան, Բ. էջ 19—22, 43, Ազգապ. 3053, 3208, Արցախ 175—6։

— 1378. **Յովհաննէս** *Սպարկերտցի, կաթուղիկոս Աղթամարի. հաջորդեց Մարկոս Շատախցուն, որ նստել էր 1788 թ. իրեն էլ հաջորդեց Թէոդորոս 1792 թ.—Ազգապ. 3175 (տես Թէոդորոս № 49)։ Ըստ Հաւաքարանի՝ Սպարկերտցին հաջորդել է Կարապետ Գ-ին և նախորդել Միքայէլ Գ-ին. ուրեմն պիտի լինի 1788—1796 թվերի միջև, ուր Ակինեան, Գաւազանագիրք 163—166 դնում է Մարկոս և Թէոդորոս, ու չգիտե Յովհաննէս Սպարկերտցուն։*

— 1379. **Յովհաննէս** *տաղասաց (ԺԸ դար).—Տաշեան, Ցուց. 820։*

— 1380. **Յովհաննէս** *աբեղա, տաղասաց (ԺԸ դար).—Տաշեան, Ցուց. 8[illegible]2—3*

— 1381 2. **Յովհաննէս** *վարդապետ Նուրտինեան. ծնվել է 1747 թ. Տիգրանակերտում. աշակերտել է Սարգիս արքեպիսկոպոս Սարաֆեանին, որի հետ գնաց Լիվոռնո, ուր և մեռավ 1803*

Թ. գրել է իր ուսուցչի ոտանավոր կենսագրությունը 1789 Թ. որ և հրատարակված է Վիեննա 1908 (Ազգ. մատ. ԾԵ)։

— 1383. Յովհաննէս (որ և Հաննէս, Հաննա, Հաննէ) Կարնեցի, ժահտեսի, վարժապետ, կոչված. «Նոտար». տաղասաց. բեղմնավոր գրիչ. ունի 19 աշխարհական գեղեցիկ տաղերի մի հավաքածու, գրված 1777—1788 Թվերին։ Իրենն են նաև Սահակ Մըսըր Կարնեցի նահատակի ոտանավոր ընդարձակ տաղը (1778 Թ), Յարութիւն Կարնեցու վկայաբանական տաղը (1806 Թ.) և Վառվառէ Կարնեցի կույսի նահատակության ոտանավոր պատմությունը կամ վիպերգը (1810 Թ)։ Սրանք հրատարակված են Նոր վկ. 572—604, 620—626, 631—674. տես հատկապես էջ 601, Ազգապ. 3620, 3622, 3624։

— 1384. Յովանէս կաթուղիկոս Կիլիկիոյ, հիշված է 1816 Թ. (Ջեռ. Վիեն. Բ. 236). բայց այս Թվին Կիլիկիայի կաթողիկոսն է Կիրակոս Ա (№ 163), որ նստել է 1797—1823 Թ. ուստի պետք է համարել նրա մի փոխանորդը՝ իր բացակայության ժամանակ։

— 1385. Յովհաննէս ԺԱ Զամաշըրճեան (Թրք. «լվացարար»), Բաբերդցի. ընտրվեց պատրիարք Պոլսի «1800 Թ», երբ ցարական խարդավանքով դահընկեց արվեց Դանիէլ Սուրմառեցին։ Մի տարուց պաշտոնանկ եղավ՝ «1801 Թ». նորից դարձավ իր աթոռը «1802 Թ» և նստավ մինչև «1813 Թ»։ Կառավարեց հաջողությամբ և հանդարտությամբ, կաթոլիկական հարցն էլ առանց չափազանց արծարծելու և գրգռելու։ Հիվանդության պատճառով ստիպվեց հրաժարվել «1813 Թ» և մեռավ «1817 Թ»։—Ազգապ. 3262, 3306, 3339, 3417։

— 1386. Յովհաննէս արքեպիսկոպոս Սեբաստացի, առաջնորդ Սեբաստիոյ. մեռել է 1830 Թ. պատմիչ. Թողել է Սեբաստիոյ առաջնորդների պատմությունը՝ սկսած Սիմոն եպիսկոպոսից, որ նստել է 1016 Թ, մինչև իր ժամանակը։—Ջեռ. Դաղեան, Բ. 58 բ, Հայապ. 137։

— 1387. Յովհաննէս Փիրէնեան, Պարտիզակցի, նահատակ. աղքատ և անուս հողագործ մշակ էր. քսան տարեկան մի գեղեցիկ երիտասարդ, որ մի տաճկի ծառայության էր մտել. իր տիրոջ աղջիկը հրապուրվելով նրա գեղեցկությունից, ուզեց իսլամ դարձնել և հետը ամուսնանալ։ Այս մտադրությամբ զրպարտեցին թե նախապես իսլամություն է ընդունել. դատի և անտանելի տանջանքների մատնեցին թե Նիկոմիդիա (Իզմիտ) և թե

*Պոլիս, շուրջ 2 ամիս։ Յովհաննէսը հավատքը չուրացավ և կախաղանով նահատակվեց «1838 թ. ապրիլ 30».—Մկրեան, հենագր. Մ. Թաղիադեանց, տպ. Թիֆլիզ, 1886, էջ 104, Ազգապ. էջ 3714։*

— 1388. Յովհաննէս *քահանա Խալփայեան, Վանեցի, մեռել է 1840 թ. և թաղվել Վանի Արարուց եկեղեցում։ Պատմիչ։ Թողել է մի Պատմութիւն, որ սկսել է շատ հին ժամանակներից և մասնավորելով իր խոսքը Վանի փաշաների վերաբերմամբ, հասնում է մինչև 1800 թիվը, այն է մինչև էջմիածնի Ղուկաս կաթուղիկոսի մահը և Երուսաղէմի Պետրոս պատրիարքը։ Իր պատմությունը մի ճոխ գանձ է ինչպես Վանի նկարագրության, նույնպես նաև Վանի բարբառի ուսումնասիրության համար, որովհետև գրված է Վանի ժողովրդական բարբառով։ (Ջեռ. Դաղեան, Բ. 58 բ)։*

— 1389. Յովհաննէս *Ը Կարբեցի. կաթուղիկոս Հայոց «1831—1842 թ». ծնվել էր «1762 թ». հաջորդեց Եփրեմին. շահասեր և փառամոլ մարդ. Ռուսաց կառավարության համակրանքը վայելելով հանդերձ չկարողացավ որևէ ձևով օգտակար լինել ազգին. իր օրով կազմվեց Ռուսական Պոլոժենիան «1836 թ». կնքեց իր այդ ապարդյուն կյանքը «1842 թ»։—Ազգապ. էջ 3625—3766։*

— 1390. Յովհաննէս *Շատախեցի, կաթուղիկոս Աղթամարի «1823—1843 թ». Շատախ գավառի Ծուղ գյուղից էր. Յարութիւն Արտօնեցու սպանությունից հետո բռնի կաթուղիկոս օծեցին. իշխանությունը վարեց Պոլսի պատրիարքարանի հսկողության տակ. Աղթամարի միաբաններից թունավորմամբ սպանվեց՝ 1843 թ.—Հուաք. 65, 82, Ակինեան՝ Գաւազանագիրք 168—172, Ազգապ. 3615։*

— 1391. Յովհաննէս *Աջպահեանց, կաթուղիկոս Սսոյ, հաջորդեց Եփրեմ Բ-ին «1833 թ.» և գահակալեց մինչև «1846 թ».—Ազգապ. 3758։*

— 1392. Յովհաննէս *Ը Մովսէսեան, Զմիւռնիացի. պատրիարք Երուսաղէմի «1850—1860 թ». հաջորդեց Կիրակոսին. շինարար անձ էր. ինքը շինեց Երուսաղէմի պատրիարքարանը և ճեմարանը, որոնք այսօր էլ Երուսաղէմի փառքն են կազմում։ Գնեց նաև բազմաթիվ կալվածներ, որոնցով այժմ էլ պահովված է Երուսաղէմի միաբանության նյութականը։—Ազգապ. 3876, 3897, 4005։*

— 1393. Յովհաննէս Վերծանող. ունի «Նախահաւաքումն պատմութեան», տես Հրաչ. Աճառ. անեց. էջ 292. Թվականն անհայտ։

— 1394. Յովհաննէս տաղասաց. ունի «Տաղ ի Ս. Վահան Գողթնացի», որի ծայրանունն է Յովանէ. Հրաչ. Վկ. գողթ. 93 (Թվականն անհայտ)։

— 1395. Յովհաննէս քահանա, հայր Ստեփաննոս տոմարագետի (Թվականն անհայտ)։—Զարբ. Հին դպր. 790։

— 1396. Յովհաննէս քորեպիսկոպոս. ունի «Պատմութիւն Վարագայ խաչի» (Թվականն անհայտ)։—Զարբ. Հին դպր. 789։

— 1397. Յովհաննէս քահանա, գրել է Թվաբանական մի փոքր գրվածք՝ «Անկիւնաւոր թուեր» վերնագրով։ Թվականն անհայտ է։ Իր մասին տես Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատենագր. Երև. 1941, էջ 70։

* ՅՈՎՀԱՆՆԷՍՈՒԿ, ար. նախորդ անվան փաղաքշականն է, որ Յովանէսուկ ձևով ավանդված է ԺԶ դարից։ Այսպես՝

— Յովանէսուկ սարկավագ Տիւրիկցի, Թուղթ կոկող. հիշված է 1561 թ. (Թորոս աղբ. Ա. 229)։ Տես և Յովհանէսիկ։

* ՅՈՎՀԱՆՋԱՆ, ար. < նույն Յովհաննէս անվան կրճատ Յովհան ձևից+պրս. جان jān «հոգյակ»։ Գործածված է ԺԷ դարում. օր. Յովանջան՝ 1683 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռ. 258), Օհանջան՝ 1685 թ. (Ջեռ. Ազուլ.=Արար. 1911, էջ 1011), Յովհանջան 1697 թ. (Սիսական 336 բ)։ Կենդանի է նաև այսօր։ Սրանից է Յովհանջանեան կամ Օհանջանեան ազգանունը։

* ՅՈՎՆԱԹԱՆ, ար. < եբր. יהונתן Yəhōnāṭān անվան հուն. Ἰωναθαν տառադարձությունից։ Այս անվան հետ նույն է բաբ. Jāḫūnatannu, ḫūnatanna անունը։ Կազմված է יהו Yəhō «Աստուած, Եհովա» և נתן nṭn «տալ, նվիրել» բառերից և նշանակում է բուն «աստուածատուր կամ աստուածանուէր, պարգև Տեառն» (Gesenius 291, 531)։ [Հները շփոթելով Յովնան անվան հետ կարծում էին «աղաւնի». ինչ. Յովնաթան աղաւնի լռի, որ և անլեզի» Ջեռ. Վէնետ. Բ. 690]։ Այս անունով հայտնի են Յովնաթան՝ Սաւուղի որդին և Դաւթի լավ բարեկամը, Դաւթի եղբորորդին, Դաւթի զորավարներից մեկը ևն։ Մեր մեջ սովորական անուն չէ։

— 1. Յովնաթան քահանա Աղուանից, որին Ս. Մեսրոպը

թողեց Աղուանքում՝ լուսավորության գործի համար։—Խոր. Գ. ծզ. Կոր. 19. Կղկնտ. Բ. գ։

— 2. Յովնաթան Նաղաշ Շոռոթեցի, որդի Յովհաննէս քահանայի, նկարիչ, երգիչ և տաղասաց («1661—1722 թ»)։ Ուսումնական անձ էր. եղել է սարկավագ. ճանապարհորդել է շատ երկիրներ. օրինակել է «Պատմութիւն Յովսեպոսի» (Միսաքյան 329, նմանահանությամբ էջ 331)։ Սիրելին էր Վրաց Վախթանգ Զ թագավորի (1716—37), որ հաճախ հրավիրում էր նրան իր պալատը՝ լսելու համար նրա երգած հայերեն երգերը։ Ունի 66 տաղ (սիրային, երգիծական, կրոնական և խրատական). տաղերի ցանկը տես Տաշեան՝ Ցուց. 1130 գ, նաև Այրարատ 223։ Տաղերի ոչ ամբողջական հրատարակությունը կենսագրությամբ հանդերձ եղավ Փարիզ 1910, ուր ամեն տաղի վերջում հիշված է իր անունը՝ Յովնաթան կամ Նաղաշ։ Նրա մահվան վրա մի ողբ որ գրել է որդին Յակոբ, տես անդ, էջ 113—6, ուր գեղեցիկ են հնչում հետևյալ տողերը. Ինքն պակասեալ՝ անունն միայ, Այր երևելի Նաղաշ Յովնաթան։ (Հրատարակիչը չէ տպել այս տողերը՝ գտնելով նրանք կոպիտ և անհամ)։ Յովնաթան Նաղաշի և նրա որդիների մասին մենագրություն է Ակինեան, Յովնաթան Նաղաշ և Յովնաթաննեանք, Վիեննա 1911։ Տես նաև Պետրոսեան, Բիբլիոգրաֆիա, էջ 204—8։

— 3. Յովնաթան Յովնաթաննեան, Շոռոթեցի, որդի Յակոբի և թոռն նախորդ Նաղաշ Յովնաթանի։ Նշանավոր պատկերահան, ծաղկարար և որմանկարիչ։ Բնակվում էր Թիֆլիսում և Վրաց արքունիքի արվեստագետն էր։ Երբ Ղուկաս կաթողիկոսը սկսեց նորոգել Էջմիածնի տաճարը, խնդրեց Վրաց թագավորից իր մոտ ուղարկել Յովնաթանին, որ վեց տարի մնալով Էջմիածնում, զարդարեց տաճարը 120 նկարներով «1786 թ»։ Այս նկարները քանդեց Մկրտիչ Խրիմեան կաթողիկոսը. մի քանիսն էլ պահվում են թանգարանում։ Բոլորի շքեղատիպ հրատարակությունը՝ կենսագրությամբ հանդերձ կատարվեց Փարիզ 1910, «Նաղաշ Յովնաթան» հատորով։ Իր մասին տես Ակինեան, Յովնաթան Նաղաշ, Վիեննա 1911, էջ 94 են։

*ՅՈՎՆԱՆ, ար. < եբր. יונה Yōna անվան հուն. Ἰωνᾶς տառադարձությամբ հյց. Ἰωνᾶν ձևից և կամ ասոր. יונן Yaunān ձևից (Հիւբշ. 295)։ Բուն նշանակում է «աղաւնի»։ Հմմտ. «Որդի Յովնանու, այսինքն աղաւնւոյ, որ նշանակէ զՀոգին սուրբ» (Մալութ. 295 ա)։ Այս անունով հայտնի է Յովնան (լտ. ֆրանս. Jo-

nas) *փոքր մարգարէներից մին, որ ըստ առասպելին* 3 *օր կէտի փորը մնալով՝ ցամաք դուրս եկաւ (շուրջ* 825 *Ն. Ք.)։ Գործածական է Յոնան, Յունան* (1604 *թ. Ձեռ. Վաւաք.* 816), *Յաւնան* (1640 *թ. Թորոս աղբ. Բ.* 444) *և Ունան ձևերով։ Անցյալ դարում դեռ գործածական էր, այժմ չկա։ Մնում է* Յովնանեան *կամ* Ունանով *ազգանունը։*

— 1. Յովնան *երեց, անդամ Շահապիվանի ժողովի «444 թ».—Ազգապ.* 330։

— 2. Յովնան *եպիսկոպոս Վանանդայ, ըստ Այրր.* 76 *գահակալել է* 527—554 *թ. ժամանակակից էր Ներսէս Բ կաթողիկոսին («548—557 թ»). անդամ Դուինի երկրորդ ժողովի «554 թ».—Գիրք թղ. ժէ։*

— 3. Յունան *եպիսկոպոս Հաշուաց. անդամ Աղուէնի ժողովի. ժամանակակից Վաչագան Գ թագաւորի Աղուանից (Ձ դար).—Կաղկտ. Ա. իզ. Կանոն.* 192։

— 4. Յովնան *«607 թ». տես* Յունանէս:

— 5. Յովնան *Խուժեցի, Սասնեցոց գլուխն անցած հարձակվեց Արաբների վրա, ջարդեց Բուղայի զորքը, բայց հետո բռնվեց, բանտարկվեց և հավատը չուրանալով նահատակվեց (Թ դար).—Արծր. Գ. ժա։ Նույնը հիշում է նաև արաբ պատմիչ Տաբարի հիջրեթի* 237 *թ (=Ն. Ք.* 850) *«Յոնան որդի...ի» ձևով, բայց անընթեռնլի (Խալաթ. Արաբ. մատ.* 132)։*—Ծերենցի «Երկունք» վեպի գլխավոր հերոսն է։*

— 6. Յովնան *Ա. կաթողիկոս Աղուանից* 892—901 *թ. հաջորդեց Սամուէլին։ Նախապես Հայոց Դռան եպիսկոպոսն էր. Գէորգ կաթողիկոսի գերության ժամանակ փախավ Աղուանք. և որովհետև Աղուանքում կաթողիկոս չկար, իսկ Գէորգն էլ գերի էր, Աղուանից եպիսկոպոսները հավաքվեցին և ինքնագլուխ օծեցին նրան կաթողիկոս։ Երբ Գէորգը շնորհիվ Աղուանից Համամ թագավորի ազատվեց, Յոնանը ընդ առաջ եկավ նրան. բայց Գէորգը լուծեց նրան պաշտոնից։ Համամ թագավորը միջամտեց և Գէորգը զիջելով իր ազատարարի խնդրանքին, վերահաստատեց «894 թ»։ Նրան հաջորդեց իր եղբայրը՝ Սիմէոն։—Կաղկտ. Գ. իգ. Օրբ. ծա. Հայապ.* 385.—Յունան՝ *Անան. ապատ.* 138 *բ,* 139 *ա. Կիր. ը. Մխ. այրիվ.* 24.—*սեռ.* Յովնանայ՝ *Օրբ. ծա։—Հրատ. Շահնազ. ունի* Յովնան, *որ մյուսների համեմատությամբ վրիպակ է։*

— 7. Յովնան *Բ. կաթողիկոս Աղուանից, որին ձեռնադրե-*

լով Աղուանք ուղարկեց Անանիա կաթողիկոս Մոկացին («946—968 թ»)՝ մերժված Գագիկի փոխարեն։ Այս երկուսը դարձան միմյանց հակաթոռ։ Անանիան գնաց անձամբ Խաչեն, հյուրընկալվեց երկրի իշխան Գրիգորի (№ 108) մոտ և երկու կաթողիկոսներին էլ կարգալույծ արեց։—Օրբ. ծա.—Յունան՝ Անան. ապստ. 133 ա, 135 ա.—սեռ. Յովնանու՝ Օրբ. ծա։

— 8. Յովնան, կազմեց Գր. Նիւսացու «Մեկնութիւն Երգոց երգոյն» գիրքը, որ օրինակել էր Պետրոս գրիչը Տարոնում, 973 թ.—Զարբ. Թրգմ. 370 (ըստ Ջալալ. Ճնպրհ.)։

— 9. Յովնան քահանա, Հաղբատում, Առաքել քահանային գրել տվեց «Եսայի և Թուղթք Պօղոսի» 1207 թ.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 71։

— 10. Յունան, իր երեք եղբայրների՝ Յովհաննէս քահանայի, Դաւիթի և Մխիթարի հետ միասին հիմանց նորոգել են Հաղբատի Բերդիկ գյուղի կամուրջը և այդ բանը արձանագրել են մի խաչքարի վրա 1273 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 103։

— 11. Յունան, գրիչ. Գլաձորի վանքում աշակերտել է նշանավոր վարդապետ Եսայի Նչեցուն և նրա օգնությամբ տրտագրել է մի փիլիսոփայական գրվածք, որի հիշատակարանի մի կտորն է միայն մնում, 1334 թ.—Շողակաթ 213, Ձեռ. Դաշեան, Բ. 30 բ։

— 12. Տէր Յունան, որդի Առաքելի, միաբան Մեծոփայ վանքի, ուր օրինակեց Գր. Տաթևացու Քարոզգիրքը՝ 1414 թ.—Rapport Belgique 180։

— 13. Յունան գրիչ. Սարգիս Պարտաւեցի գրչի հետ միասին օրինակեց Ճաշոցը՝ 1420 թ.—Ձեռ. Սևան. 20 ա, Սմբատեանց, Գեղարքունի 403, Տաշեան՝ Ցուց. 181 ա։

— 14. Յունան կրոնավոր, եղբայր Խոցադեղի և հորեղբայր Մարտիրոս աբեղայի, որ Հաղբատում օրինակեց մի Շարակնոց, 1437 թ.—Manus. brit. mus. 96 բ, Նոտարք 113։

— 15. Յոնան Մեծպարոնեան ոմն, որի անունով կա մի խաչքար Թէոդոսիայի Ս. Գէորգ եկեղեցում, 1479 թվից։—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 352։

— 16. Ունան Շամախեցի, աշակերտ Գր. Տաթևացու (ԺԵ դար).—Մեծոփ. 51, Ցայսմ. ապր. 27։

— 17. Յովնան վարդապետ, առաջնորդ Ս. Կարապետի վանքի. տաղասաց (ԺԸ դար). իր տաղերը տես Տաշեան, Ցուց. 1131 ա։

— 18. Յովնան *որդի Յակոբի. տաղասաց (ԺԸ դար). գրել է «Այգի եմ տնկե, վարդ եմ բուսցուցե» տաղը.—Տաշեան, Ցուց. էջ 460։*

Յովսէս *տես* Յոյսէս:

**ՅՈՎՍԷՓ**, *աբ.<եբր.* יוסף Yōsēf *անվան հուն.* Ἰωσήφ *տառադարձությունից։ Այլ ձևերն են ասոր.* Yausef, *լտ. գերմ. ֆրանս.* Joseph, *անգլ.* Joseph, Joe, Jo, *ռուս.* Иосиф, О'сип, *իտալ.* Giuseppe, *արաբ.* يوسف Yūsuf, *վրաց.* იოსებ, *թուշ.* ივსებ *ևն։ Ս. Գրքում ստուգաբանված է բառս «յաւելցէ». հմմտ. Եւ կոչեաց զանուն նորա Յովսէփ. ասէ. Յաւելցէ ինձ Աստուած որդի միւս ևս (Ծն. լ. 24)։ Մեր հին մատենագիրները մեկնում են զանազան ձևերով. այսպես՝ «Յովսէփ թարգմանի աճումն (Տաթև. ամ. 649). Յովսէփն յաւելադրութիւն թագաւորի թարգմանի (Բրս. մրկ. 384). Յովսէփ որ թարգմանի վայր իջուցիչ (Բրս. մրկ. 378)։ Նոր քննիչները տալիս են զանազան բացատրություններ. օր. եգիպտ.* Ja-ša-pa-'a-ra, *բաբել.* Jašub-ilu, *կամ եբր.* ישב אל išb-ēl *«յորում Աստուած բնակի, աստուածաբնակ»* (Gesenius *295)։ Այս անունով հայտնի են հնության մեջ Յովսէփ գեղեցիկ՝ որդի Յակոբ նահապետի, Ս. Յովսէփ այր Մարիամայ, աստուածահայր, Յովսէփ Արեմաթացի՝ որ զմուսեց Յիսուսի մարմինը, արդարն Յովսէփ՝ որ ընտրվեց իբր առաքեալ փոխանակ Յուդայի ևն։ Հին մատենագրության մեջ գործածված է միշտ* Յովսէփ *ձևով. իսկ Թր. քեր. 44, Սիւն. քեր. 219 և Խոր. քեր. 179 իբրև օրինակ անձնանվան ունին* Յովսեպոս *ձևը, որ հայոց մեջ բնավ չէ գործածված։ Անկ. գիրք Նոր կտ. 242 գրված է միշտ* Յուսէփ: *Ունինք նաև* Ովսէփ՝ *Թորոս աղբ. Բ 366 (անհայտ թվականով),* Յիսըփ՝ *1585 թ. (Ձեռ. Վասպ. 704)։ Արդի ձևերն են Յովսէփ, Յուսէփ, Ուսէփ, Օսէփ և օտարաձև Իւսուֆ, Եուսուֆ, կաթոլիկ հայոց մեջ նաև Ժօզէֆ, Ջուզէփա (Հիւբշ. 355)։ Սրանցից էլ Յովսէփեան, Իւսուֆեան, Եուսուֆեան ազգանունները։*

— 1. Յովսէփ, *բերավ Թովմաս առաքյալի մասունքը Աղձնեաց նահանգի Պաղ կոչված տեղը, Սեմղ բերդի մոտ՝ Խողց գետը և դրավ մի եկեղեցում, որ կոչվեց Պալիվանք. ինքն էլ կրոնավոր դառնալով ծառայեց նրան վեց տարի. որից հետո փոխադրեց Մանազկերտ, ուր Արծրունիք մի վանք շինեցին (Դ դար).—Զամչ. Ա. 587։*

— 2. Յովսէփ, *նախարար Աբգար Թագավորի, որ ուղարկեց*

նրան Յիսուսի մոտ՝ մի պատկերահանի հետ միասին և ստացավ անձեռագործ դաստառակը.—Դարդել 2 (Նկարիչն էլ կոչված է Յովհաննէս № 1)։

— 3. Յովսէփ Պաղնացի, աշակերտ Ս. Մեսրոպի և գործակից Ս. Գրքի թարգմանության մեջ. ուղարկվեց Եդեսիա և ապա Բիւզանդիոն՝ թարգմանութեամբ պարապելու համար «424 թ»։— Կոր. 10, 20. Փարպ. Ժ. Խոր. Գ. ծզ, կ. Փ. կոր. 11 (գրված Յուսէփ), 16. Ասող. Բ. ա. Վրդ. իե. Ցայսմ. հոկտ. 14 (գրված Փաղանացի). Տարօն. Ա. § 80 (տպ. Գաղնացի). Պատմ. սահ. 14. Տաթև. հարց. 543 (տպված Փաղանացի). Մին. համզ. 93 (տպ. Կաղանեցի). Առաք. լծ. սահմ. 170։

— 4. Յովսէփ եպիսկոպոս Բագրատունեաց, Ներսէս Մեծի ուղեկիցներից մեկն է Կեսարիա օծման գնալու ժամանակ «353 թ».—Մեսր. եր. 26։

— 5. Յովսէփ երեց, Սիւնեաց նահանգի Վայոց ձորի Խոզոբիմ կամ Հողոցմանց գյուղից, աշակերտ Ս. Մեսրոպի։ Եղիշէի մեջ կոչվում է եպիսկոպոս Այրարատի (այս առթիվ տես Ե. Տ.-Մինասեան, Տեղեկ. Արմֆանի 1943, № 3, էջ 89)։ Հաջորդեց Ս. Սահակին և Ս. Մեսրոպին՝ նախ իբրև տեղապահ «437 թ», հրամանաւ Մեսրոպի, և ապա «444 թվից» սկսած, երբ մեռավ Սուրմակ կաթողիկոսը, Յովսէփ դարձավ կաթողիկոս։ Նույն թվին գումարվեց Շահապիվանի ժողովը (Հայապ. 159), «449 թվին» էլ Արտաշատի ժողովը։ Մասնակցեց Վարդանանց պատերազմին, բանտարկվեց Պարսկաստանում և ապա նահատակվեց Ապար աշխարհում, Ղևոնդեանց խմբի հետ «454 թ»։—Փարպ. ժթ, իգ, լը, խբ, խգ, խէ, ծզ, ծէ. Կոր. 1, 27, 28. Եղիշ. 22, 54, 77, 96, 101, 104, 114, 120, 132, 139. Խոր. Գ. կէ. Փ. կոր. 32, 34. Յհ. կթղ. ժդ, ժե. Գիրք թղ. ծէ (Յովսեփ). Յհ. կթղ. հյր. 274. Ասող. Բ. բ. Արծր. Ա. ժա. Մեսր. եր. 138. Յղ. մովս. և դաւթի, էջ 58. Մխ. անեց. դ. Սամ. անեց. 71. Մխ. այրիվ. 20. Շնորհ. վիպ. 1005. Միխ. ասո. իթ (=իը). Կիր. 16, 20. Վրդ. իդ, իէ. Շար. ղգ. Ցայսմ. յուլ. 31, օգոստ. 7. սեպտ. 17. Քհնպ. 270. Օրբ. ժդ, հա. Օրբ. ողբ. 35. Սիմ. ապար. 48. Զուղ. 45.—սեռ. Յովսեփու՝ Եղիշ. 33.—սեռ. Յովսեփայ՝ Եղիշ. 82, 131. Փարպ. լը, խդ, ծա, ծբ, ծե, կբ. Յհ. կթղ. ժե. Շար. ղգ. Ասող. Բ. բ. Կիր. 20. Վրդ. իէ. Ցայսմ. յուլ. 31. Օրբ. հկճռ. ժա.—գրծ. Յովսեփաւ՝ Փարպ. լը. Ասող. Բ. բ.—Յովսեփեանք՝ Կիր. 3.—Վրաց. աղբ. Ա. 40։—Զամչ. Բ. 15—112։

— 6. Յովսէփ, վանահայր Գլակայ վանքի, հաջորդ Սահակի (Զ դար).—Մամիկ. ա։

— 7. Յովսէփ աղուան, երեց Կաղանկատուաց. անդամ Աղուէնի ժողովի, ժամանակակից Վաչագան Գ Թագավորի (Զ դար).—Կղկնտ. Ա. իզ. Կանոն. 192։

— 8. Յովսէփ (հայ կամ ասորի), տեսիլքով իմացավ որ Գեղումների պատերազմում նահատակված հայերից մեկը կենաց փայտի մասունք ունի։ Այս Յովսէփը գնաց գտավ և բերավ Սմբատ Բագրատունի Վրկան մարզպանին, որ նույն մասունքը դրեց տաճարի մեջ։ (Դեպքը տեղի է ունեցել քիչ ժամանակ առաջ «617 թվից», որ Սմբատի մահվան տարեթիվն է)։—Սեբ. իդ, իե. Սիմ. ապար. 98.—սեռ. Յովսեփի՝ Սիմ. ապար. 99։

— 9. Յովսէփ անապատական, Գեղամայ գավառի Բրաի այրեաց անապատից. Տաճկաց նեղությունից փախավ Արցախ, գնաց Երուսաղէմ և բերավ շատ մասունքներ (Է դար).—Կղկնտ. Բ. ծ.—սեռ. Յովսեփայ՝ անդ։

— 10. Յովսէփ Ա. եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Աբրահամին (Է դարի վերջը և Ը դարի սկիզբը).—Օրբ. իթ, հա։

— 11. Յովսէփ եպիսկոպոս Արծրունեաց, անդամ Մանազկերտի եկեղեցական ժողովի «726 թ».—Ազգապ. 839։

— 12. Յովսէփ եպիսկոպոս Բագրատունեաց, անդամ Մանազկերտի եկեղեցական ժողովի «726 թ».—Ազգապ. 839։

— 13. Յովսէփ Ա. կաթողիկոս Աղուանից 746—763 թ. էր եպիսկոպոս Ամարասի. հաջորդեց Անաստասին։—Կղկնտ. Գ. իզ. Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 384։

— 14. Յովսէփ Բ եպիսկոպոս Սիւնեաց. եղբորորդի և հաջորդ Ստեփաննոս Սիւնեցու. ձեռնադրվեց Դաւիթ կաթողիկոսից և գահակալեց 735—752 թ.—Օրբ. լգ, հա։—Նույնը Այրիվ. 22 ա կոչվում է Յուսիկ։

— 15. Յովսէփ եպիսկոպոս Սիւնեաց, որի անթվական անդրին գտնվում է Սիսիանի Ղարաքիլիսա գյուղի եկեղեցում։—Ազգագր. հանդ. Գ. 188 (ի հարկէ չի կարող լինել Յովսէփ Բ. բայց ուրիշ Յովսէփ անուն եպիսկոպոս Սիւնեաց հայտնի չէ ոչ Օրբելեանին և ոչ այլուր)։

— 16. Յովսէփ Բ Կարիճ, կաթողիկոս Հայոց «795—806 թ». Արագածոտն գավառից էր. հաջորդեց Գէորգ Ա-ին. Խուզիմա ոստիկանից բռնվելով՝ բանտի մեջ չարչարվեց, կաթողիկոսական կալվածները նրան չնվիրելու պատճառով։—Յհ. կթղ. իդ.

Ասող. Բ. ք. Մխ. անեց. դ. Սամ. անեց. 90. Քհնպ. 272. Յհ. կթղ. հյր. 276. Մլխ. աս. իթ (=իը). Կիր. 42. Վրդ. խդ. Մխ. այրիվ. 21. Օրբ. հա.—սեռ. Յովսեփայ՝ Յհ. կթղ. իդ. Կիր. 43։—Զամչ. Բ. 426—8։

— 17. Յովսէփ Օրհնեալ, անհայտ մատենագիր. հունարենից հայերենի թարգմանեց «Պատմութիւն յաղագս մատին սրբոյ առաքելոյն Պետրոսի և բերման ի Հայս. Յամս Նիկեփորայ կայսեր Յունաց...». Թվականն անհայտ է. բայց որովհետև Նիկեփոր Ա նստել է 802—811 թ., ուստի Յովսէփ Օրհնեալն էլ այս թվերին է.—Ձեռ. Լվով (ՀԱ 1937, 129)։ Ձեռագիրը ԺԴ դարից է։ (Ասում է թե հրատ. Հայապատում, Բ. 122—132. բայց չկա)։

— 18. Յովսէփ իշխան Կարնեցի, սուրբ. հայրը Կայս ցեղից այլազգի էր, մայրը հայ. հավատքը չուրանալով՝ եղբորը (Սահակի) հետ նահատակվեց «808 թ»։—Սամ. անեց. 90. Վրք. և վկ. Բ. 266—271. Կիր. 42. Մխ. այրիվ. 68. Յայսմ. յնվ. 22. Առաք. պատմ. 479.—սեռ. Յովսեփայ՝ Ճշ. 503. Վրդ. էջ 132. Յայսմ. յնվ. 22. Վրք. և վկ. Բ. 266—271.—ընդարձակ տես Լիակ. վրք. սրբ. Դ. 293։ Տես և Փիրղալէմեան, Զորս ընկերք, Տփղիս 1882, էջ 71։

— 19. Յովսէփ Բ կաթողիկոս Աղուանից 850—875 թ. Նախապես Մեծկուենից եպիսկոպոսն էր. հաջորդեց Դավթին և իրեն էլ հաջորդեց Սամուէլը.—Կղկնտ. Գ. իդ. Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 385.—սեռ. Յովսեփայ՝ Կղկնտ. Գ. իբ։

— 20. Յովսէփ քահանա, մատնիչների ձեռքով տարապարտ սպանվեց. իր հիշատակին մի խաչքար է կանգնեցրած Բասենի (Կարս) Զուրուկ գյուղում 893 թ.—Արրտ. 1904, 991։

— 21/2. Յովսէփ քահանա, գրիչ. Յովհաննէս քահանայի հետ միասին Բջնիում արտագրել է մի Աւետարան Կիրակոս վաճառականի համար՝ 988 թ.—Շողակաթ 190։—Սմբատեանց՝ Գեղարքունի 321։

— 23. Յովսէփ աղանդապետ Թոնդրակեցոց. քարոզում էր թե պատարագը, արարողությունը, ձեռնադրությունը և կարգավորող բաներ են. խմորը գինու մեջ թրջված պետք է հավատալ և ընդունել իբրև մարմին Քրիստոսի։ Հաջորդել է Կիւրեղին և իրեն էլ հաջորդել է Յեսու (Ժ դար).—Հայապ. 551. Տաշեան՝ Ցուց. 148 ա (Մագիստրոսի թուղթն է, բայց Կոստանեան հրատարակության մեջ (էջ 154) պակասում է Յովսեփ)։

— 24. Յովսէփ, երկրորդ առաջնորդ Հաղբատի վանքի. հաջորդեց Սիմէոնին. հիշված է 1006 և 1008 թվերին.—Յովսէփ-

եան՝ Նիւթեր և ուս. Ա. 64. Մովսէսեան՝ Լոռիի հիւր. 48, Երզընկեանց՝ Հնախ. տեղագր. 24։

— 25. Յովսէփ վանահայր և առաջնորդ Կարնոյ Հնձուց վանքի, «առատ գիտութեամբ, գերամաքուր հայր»։ Պետրոս Գետադարձ կաթողիկոսի հետ գնացել է Տրապիզոն, Վասիլ կայսեր տեսութեան «1023 թ» (Յուշիկք, Ա. 109).—Ասող. Գ. խ. Լաստ. բ։— Սրա հետ նույն պիտի լինի Յովսեփ հայր Ընծայուց, Ընծայեցի կամ Ընծանեցի, որ Ծառզատկի առթիվ տոմարական մի գրվածք ունի՝ ուղղված հունաց Վասիլ կայսեր «1007 թ».—սեռ. Յովսեփայ՝ Ուռհ. 44, 179, որ Սմբ. պատմ. 43 կոչում է «Յովսեփ հայր Անձևացի».—տես և Տաշեան՝ Ցուց. 658 ա։

— 26. Յովսէփ Դ. կաթողիկոս Աղուանից, հաջորդեց Գէորգին։ Նախագահել է այն ժողովին, որ գումարվեց Յովհաննէս-Սմբատ թագավորի ժամանակ, խորհրդակցելու և վերադարձնելու բանտարկյալ Պետրոս կաթողիկոսին իր աթոռը «1038 թ»։ Դավիթ Անհողին թագավորին օգնության գնաց 200 եպիսկոպոսների գլուխն անցած՝ 1041 թ? (տես վերը, հտ. Բ, էջ 35)։— Կիր. 51, 56, ը. Վրդ. ծդ. Ուռհ. 77, 81, 231. Սմբ. պատմ. 55.— սեռ. Յովսեփայ՝ Մխ. այրիվ. 75։ [Հայապ. 385 և Զամբռ. 76 դնում են հաջորդ Մարկոս Ա-ի. իսկ Յովսէփին էլ հաջորդեց Մարկոս Բ)։

— 27. Յովսէփ արքեպս. Աստապատցի, նորոգեց Նախիջևանի Կարմիր վանքը, 1076 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 484։

— 28. Յովսէփ նշանավոր վարդապետ (ԺԱ դար). տարբեր է Յովսէփ Ընծայեցուց.—Ուռհ. 179։

— 29. Յովսէփ Դունեցի. Նախապես կոչվում էր (Ա)բուբաքր և որդին էր Սեուշ (Սիյավուշ) անուն մի պարսկի, որ գաղթելով իր երկրից, եկել բնակվել էր Դունինի մոտ, Կոտայքի Թուրբար դաշտի Նորաշէնք գյուղում։ Փոքր հասակից կրթվեց մահմեդական դպրությամբ. բայց զզվելով մոլլաների անբարոյական կյանքից, մեծանալով քրիստոնյա ընկերների հետ և մանավանդ խրատվելով իրենց տան մշակ Սարգիս անուն անձից, քրիստոնյա դարձավ։ Հայրը լսելով այդ, ուզում էր սրով սպանել, մայրը հազիվ ազատեց նրան։ Տեսնելով որ իրենց տանը բնակվել անհնարին է, փախավ գնաց Վասպուրականի Առեստ գյուղը, ապա Ամուկ բերդը։ Հայրը հասավ նրա ետևից և քաղցր խոսքերով համոզելով տուն բերեց։ Այստեղ շղթայի զարկեց նրան և հանձնեց մոլլաներին, որոնք աղերսանքով ու տանջանք-

ներով ուզում էին դարձի բերել նրան։ Մի քանի քահանաներ խորհուրդ տվին առ երեսս մահմեդական դառնալ և գաղթել ուրիշ տեղ։ Լսեց նրանց։ Հետո գնաց Բջնի, Իշխանի (կամ Թեղենեաց) վանքը, Սարգիս անուն մի ճգնավոր քահանայի մոտ, որ խորհուրդ տվեց նրան՝ ման գալ հայոց վանքերը։ Հետզհետե անցավ Հաղբատ, Սանահին, Մակարավանք, Հառիճ, Սաղմոսավանք, Յովհանավանք։ Ոչ մի տեղ հանգիստ չգտավ. աղքատ ու Թշվառ Թափառում էր, որովհետև մահմեդականների ահից և կամ խաբեբա համարելով նրան, ամեն տեղից վտարում, հաց անգամ չէին ուտում նրա հետ։ Մի քանի տարի այս վանքերում Թափառելուց հետո, որոշեց գնալ Երուսաղեմ։ Նախ գնաց Սուլաւէտ լեռան ճգնավորների մոտ, առավ նրանց օրհնությունը, ապա գնաց Կիլիկիա։ Հռոմկլայում հանդիպեց Ներսէս Շնորհալի կաթողիկոսին, որ հաստատեց նրան իր հավատքում, միանգամայն խոստանալով անց կացնել հին մարտիրոսների շարքը, եթե հավատքի համար նահատակվի։ Երուսաղեմի սրբավայրերը այցելելուց հետո, համոզված այն մտքով՝ Թե ուրացողը պիտի նահատակվի իր ուրացած վայրում, դարձավ իրենց գյուղը՝ Նորաշէնք։ Հայրը մեռել էր։ Սկսեց քարոզել իր մորն ու եղբոր. բայց նրանք վախից չընդունեցին նրան։ Սարգիս անուն մի քահանա հորդորեց նրան հեռանալ. բայց Յովսէփը չլսեց։ Եղբայրը մատնեց նրան Արջահան կամ Սաղրիջհան գյուղապետին, որ 2 ամիս բանտարկելուց և չարչարելուց հետո, հանձնեց Դուինի ամիրա մեծ Աթաբէկին։ Սա էլ բազմատեսակ խոստումներով աշխատեց հրապուրել. բայց տեսնելով որ անօգուտ է, հանձնեց իր զորքի բազմությանը, որոնք քարկոծելով նահատակեցին 1170 Թ։ Սարգիս անուն մի քահանա (նախկին մահմեդական) գողացավ նրա մարմինը և տարավ Թաղեց Հալուցթառում։ Դաւիթ քահանան (№ 83) գրեց նրա ներբողականը, որի մի մասը տպված է Նոր վկ. ամբողջը գտնվում է Վենետիկում (տես Ձեռ. Վենետ. Բ. 393—4. բայց զարմանալի է որ հումուտ բանասեր հրատարակիչը տեղեկություն անգամ չունի մեր Նոր վկայքից)։ Շնորհալին Յովսէփին կարգեց նահատակների շարքը, ինչպես խոստացել էր։—Վրդ. հն. Յայսմ. յունիս 19.—սեռ. Յովսեփայ՝ Մեծոփ. 53, 61. Յայսմ. յունիս 19. Նոր վկ. 46—70. Ալիշան՝ Շնորհ. 389—397. Հայապ. 379—381. Աչքապ. 1398 (դնում է †1167 Թ)։

— 30. Յովսէփ վարդապետ, միաբան Հաղբատի վանքի.

կազմեց Բարսեղ Կեսարացու ճառերի ձեռագիրը, որ արտագրել էր Սարգիս գրիչը՝ 1172 թ. (տես վերը հտ. Ա. էջ 395, № 19).—Ձեռ. Վենետ. Բ. 1268, Հայապ. 382։

— 31. Յովսէփ աշակերտ Ն. Լամբրոնացու († «1198 թ»). Իր վարժապետի հաստատած նոր կարգերը տարածում էր Խաչենում և Աղվանքում (Լմբ. 230)։ Թվի թե սա է որ Լամբրոնացին կոչում է «պաշտոնակից եղբայր մեր Յովսէփ» և որին արտագրել է տվել Պարապմանց գիրքը 1175 թ. (Միսուան 87, Զարբ. Հին դպր. 92. Թրգմ. 521. Ալիշան. յուշ. ժգ. REA 8, 28. (Աղզապ. 1520 համարում է Յովսէփ (Դ) կաթուղիկոս Աղվանից)։

— 32. Յովսէփ արքեպիսկոպոս Դունինի, անդամ Հռոմկլայի ժողովի «1179 թ».—Շնորհ. պատճ. 199։

— 33. Յովսէփ ոմն ի Դունայ անապատէն, որին Ստեփաննոս Ռոշքա իր ժամանակագրության մեջ համարում է հեղինակ Դատաստանագրքի՝ փոխանակ Մխիթար Գոշի, 1184 թ։—Գալէմք. Ուս. Լեհ. դատաս. էջ բ։ Հմմտ. № 38։

— 34. Յովսէփ եպիսկոպոս, եղբայր Կեչառու վանքի վանահայր Պետրոսի. երկուսով հիշված են Կեչառուի մի արձանագրության մեջ (Այրարատ 261), իբր ժամանակակից Գրիգոր Դ Տղայ (1173—1193 թ) կաթուղիկոսի և Աղվանից Ստեփաննոս կաթուղիկոսի։ Երկու եղբայրները (Յովսէփ և Պետրոս) միասին նորոգել են Կեչառու վանքը 1184 թ. կամ քիչ առաջ։—Այրարատ 266, Հայապ. 399։—Հիշված է նաև ՇԿԳ=1114 թվի մի արձանագրության մեջ (Սմբատեանց՝ Գեղարքունիք 351) Պետրոս վանահոր և իր երրորդ եղբայր Սարգսի հետ։

— 35. Յովսէփ արքեպիսկոպոս Անտիոքի և տեր Ցեսուանց վանքի. սովորել էր Շուղրի վանքում. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Կիր. 64, ա. Սմբ. պատմ. 110. (ըստ Հացունի՝ Կարևոր խնդ. 262 հիշված է նաև 1231 թվի մի հիշատակարանում, բայց իբրև հին հանգուցյալ)։

— 36. Յովսէփ, մի խաչքար է կանգնեցրել Հաղբատում 1209 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 70։

— 37. Յովսէփ ոմն, որ տվեց Յովհ. Մանդակունու ճառերը Սիոն գրչին՝ արտագրության համար 1210 թ.—Դուրեան, Ուսումն. 231։

— 38. Յովսէփ, հայր Հռոմաշէն մենաստանի. օգնեց Մխիթար Գոշին († «1213 թ») գրելու Դատաստանագիրքը.—սեռ. Յովսէփայ՝ Մխ. դտ. Նխդր. ժա։

— 39. **Յովսէփ** *գրիչ կամ քանդակող Բագնայրի մի արձանագրության 1215 թ?—Շիրակ 118։*

— 40. **Յովսէփ** *քահանա, որի անունով մի խաչքար կա Խորանաշատի վանքում, 1222 թ.—Արցախ 323։*

— 41. **Յովսէփ** *քահանա, հոգևոր զավակ Սարգիս և Վարդան քահանաների, որոնք Երզնկայի Կապոսի վանքում գրել տվին Տօնամակը՝ 1230 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1214։*

— 42. **Յովսէփ** *աշակերտ Իգնատիոս Հոռոմոսցի գրչի և նկարչի. հիշված է 1236 թ.—Յովսէփեան՝* Նիւթեր և ուս. Ա. 24, *27 և Բ. 55, 53։*

— 43. **Յովսէփ** *աբեղա, գերեզմանը գտնվում է Հաղբատում, 1247 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 63, Ազգագր. հանդ. Է, 413։*

— 44. **Յովսէփ** *վարդապետ Արտազեցի, աշակերտ Յովհաննէս Վանական վարդապետի և դասընկեր Կիրակոս Գանձակեցու, Վարդան պատմչի և Մաղաքիա աբեղայի։ Եղավ առաջնորդ Արտազի Թադէոս առաքյալ վանքի. օժանդակությամբ Կոստանդին կաթուղիկոսի և թույլտվությամբ Թաթարաց Անգուն զորավարի՝ վերաշինեց ավերյալ վանքը և մեծ պայծառություն հասցրեց («1248 թ.» և ավելի ուշ)։ Մասնակցել է Վանական և Վարդան վարդապետների հետ այն կրոնական վեճին, որ հարուցել էր Հռոմի պապը Կոստանդին Ա Բարձրբերդցի («1221—67 թ») կաթուղիկոսի առաջ և այս առթիվ թղթակցել է կաթուղիկոսի հետ՝ պաշտպանելով հայ եկեղեցու դավանանքը (Թորոս աղբ. Բ. 322)։—Կիր. խա, խէ, խը. Մխ. այրիվ. 82. Մաղաք. աբ. 12.—*Ուսեփ՝ *Օրբ. ժմ. 25.—սեռ.* Յովսեփայ՝ *Կիր. խա։—Իր վրա մի առասպել՝ Ձեռ. Վենետ. Բ. 594։*

— 45. **Յուսեփ** *Դրազարկցի, երաժշտագետ և երաժշտապետ Կիլիկիոյ Դրազարկի վանուց. «կարի հասու ամենայն իմաստից երաժշտից՝ մինչև ի բաւանդակն, որ յաւուրս մեր ոչ գտանի նմանգոյն»։ Ունի մի տեսություն երաժշտության մասին, որ գտնվում է Վենետիկի Մխիթարյանների գրադարանում, Յովհաննէս գրչի 1224 թվին գրած Տաղարանում (ըստ Գ. Լևոնեան, «Էջմիածին», 1945 թ. մայ. էջ 49 ծան.)։ Տվել է իր մի օրինակ Տաղարանը Յովհաննէս գրչին ընդօրինակության համար 1241 թ.—Ըստ Տաշեան՝ թերևս սրա հետ նույն է* Յովսեփ Խուհանա, *որ Դրազարկում օրինակել է Գրիգորի Սկևռացւոյ Ճառք. գրել է «Բան յիշատակի»՝ ուսանավոր Գրիգոր Սկևռացու և Լամբրոնի*

տեր Կոստանդինի վրա, 1220—50 թվերի միջև.—Սիսուան 233 բ, 517 ա, Տաշեան՝ Ցուց. 476—8 (ցանկում, էջ 1125 բ սխալմամբ գրված է Ցովհաննէս Դրազարկցի), Ձեռ. Վեննա. Բ. 1066։—Ասվում է որ արտագրել է նաև մի Գանձարան, բայց սա ճիշտ ենթադրություն չէ. նրա ունեցած Գանձարանը կամ Տաղարանը մի ուրիշ գրչի արտագրություն էր։ Ճիշտ չէ նաև այն որ երաժշտագետ Ցովսէփին քահանա են կոչում. այսպիսի կոչում չի տրված նրան և թերևս վարդապետ էր. քահանա է կոչված երկրորդ Ցովսէփ գրիչը, որով երկուսի նույնացման ցուցմունքները բավական պակասում են։ Տես և «Էջմ.» 1946 յնվ. էջ 45։

— 46. Յուսէբ պարոն, մերձավոր Խաչատուր գրչի, որ օրինակեց մի Աւետարան Կիրակոս կրոնավորի համար, 1252 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 378։

— 47. Յուսէփ, հորեղբայր Լևոնոսի (№ 2), որ մի եկեղեցի է նորոգել 1258 թ.—տես անդ։

— 48. Յուսէփ քահանա, որի խնդրանոք Կիրակոս գրիչը օրինակեց Աւետարանը՝ Մաշկևոր վանքում, 1259 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 55 ա։

— 49. Յուսէփ փակակալ Բագնայրի. 1262 թ.—Արձ. Շիրակ 116, 119։

— 50. Յովսէփ, աշակերտ Վարդան Հաղբատացու. գրիչ. իր ընկեր Տիրացուի հետ, Հաղբատում օրինակել է Վարդան վարդապետի Պատճառաց գիրքը կամ Տօնապատճառը, 1267 թ.—Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 68, Շողակաթ 202։

— 51. Յուսէփ, վանահայր Հոռոմոսի կամ Խոշավանքի 1269 թ.—Արձ. Շիրակ 28։

— 52. Յովսէփ սարկավագ, եղբայր Ստեփաննոս քահանայի, որ իր համանուն Ստեփաննոս քահանայից գրել տվեց Մանրուսմունքը, Սկևռայ վանքում, 1278 թ.—Շողակաթ 205։

— 53. Յովսէփ մեծ վարդապետ Աղջոց վանքի. մեռավ 1279 թ.—Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 17<Օրբ. ժմ. 28։

— 54. Յուսէփ քահանա, «որդի արեամբ նահատակեալ Նահապետի». գրիչ. քահանա օծվեց Կեսարիայում և իբրև երախայրիք իր մատների՝ օրինակեց Աւետարանը 1277 թվին և նվիրեց եկեղեցուն։ Ապա 1282 թ. ճամբորդելու դուրս եկավ Կիլիկիա, կանգ առավ Եդիոյ քաղաքը, որ է Այաս։ Այստեղ, մահմեդականների հարձակման ժամանակ, ինքն էլ զոհ գնաց «սուգ-

մեծ և վիշտ ու աղէտ կսկծալի Թողեալ ծերունի և բազմահառաչ մօր իւրոյ։ — Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1845։

— 55. Յովսէփ «աստուածախօս վարդապետ». գերեզմանը գտնվում է Արատէսի վանքում, 1283 թ.—Սիսական 144, Արար. 1888, էջ 772։

— 56. Յովսէփ դպիր. օրինակել է Սարգիս Շնորհալու Մեկնութիւն Թղթոցն կաթուղիկեայց, Երզնկա 1289 թ.—Ձեռ. Կարին. 161։

— 57. Յովսէփ պատանի, եղբորորդի Ստեփաննոս քահանա գրչի, որ Սկևռայ վանքում օրինակեց Աւետարանը 1295 թ.—Թորոս աղբ. Բ. 344։

— 58. Յովսէփ (կամ Յուսէփ) փիլիսոփա, Դրազարկի անապատում՝ Թորոս փիլիսոփային և Յովհան գրչին գրել տվեց մի Աւետարան, 1295 թ.—Բարխուտ. Արցախ 41։

— 59. Յուսէփ, գրիչ. օգնությամբ իր հորեղբոր Սարկավագ կրոնավորի, որ Թուղթ էլ էր կոչում, օրինակեց մի Ժողովածու՝ Արճէշի Ասպրինկայ վանքում, 1293 թ.—Քօսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 82։

— 60. Յովսէփ գրիչ. օրինակեց Արճէշում Աստուածաշունչը 1299 թ.—Ձեռ. Կարին. 14։

— 61. Յովսէփ վարդապետ, գտավ Հաղբատում Թարգմանչաց Աստուածաշունչը, որ կոչվեց Բազմայրեցի. որանից է օրինակել Յոհան աբեղան 1305 թ. (Ձեռ. էջմ. № 930)։—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 17, 70։

— 62. Յովսէփ վարդապետ Բէլեզականի վանուց, անդամ Սսոյ ժողովի «1307 թ».—Ազգապ. 1787։

— 63. Յովսէփ գրիչ. Արճէշում, տանուտեր Թորոսի համար գրեց մի Աւետարան, 1314 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 660։

— 64. Յովսէփ գրիչ. օրինակեց Աւետարանը Նախիջևանում, 1319 թ.—Բարխուտ. Աղվանից երկ. 279։

— 65. Յովսէփ, հորեղբայր Գօշոս քահանայի, որ Փոսի անապատում գրել տվեց մի Աւետարան, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 516)։

— 66. Յուսէփ գրիչ. օրինակել է Աստուածաշունչը՝ Լևոն Գունդստաբլի որդի Սմբատ (Բ) Գունդստաբլի համար, շուրջ 1320 թ.—Թորոս աղբ. Բ. 296 («անմեղադիր լերուք խոշորութեանս, զի ապակի աչօք գրէի»—ակնոցի գործածության հետաքրքիր հիշատակությունը մեր մեջ (Կիլիկիայում)։

— 67. Յովսէփ քահանա, Նախիջևանում գրեց մի Աւետարան՝ 1321 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 136։

— 68 Յովսէփ քահանա, եղբայր Վասլի, գրիչ. օրինակել է Շարակնոցը Սսում 1323 թ.—Ձեռ. Մանաս. 3 բ, Սիսուան՝ էջ 223 ա։

— 69. Յուսիփ քահանա, գրիչ. Կարապետ քահանայի համար օրինակեց Աւետարանը Նախիջևանում, 1324 թ.—Ձեռ. Վասպ. 170, Հմմտ. № 64 և 67։

— 70. Յովսէփ կրօնավոր, միաբան Քաջբերունեաց Սուխարայ վանից. շնորհեց ժԲ մարգարէից և Յոբայ գիրքը Սարգիս գրչին՝ արտագրութեան համար, 1325 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 332։

— 71. Յովսէփ վարդապետ, ուսուցիչ նոյն Սարգիս գրչի, որ Քաջբերունեաց Սուխարայ վանքում օրինակեց ժԲ մարգարէից և Յոբայ գիրքը, 1325 թ.—Թորոս աղբ. Բ. 332։

— 72. Յուսիփ, որդի Եղգանբախշի, † 1327 թ.—Ձեռ. Ագուլ (Արար. 1911, 461)։

— 73. Յովսէփ որդի Աբղուլմսեհի, † 1327 թ.—Ձեռ. Ագուլ (Արար. 1911, 461)։

— 74. Յովսէփ, կինն է Թէֆանէ. ծնողներն են Ջալալոսնի՝ կնոջ Սարգիս քահանայի, որ Սիս քաղաքում Անդրէաս քահանայի համար գրեց ու ծաղկեց մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 185։

— 75. Ոսկոյ? քահանա, ուսուցիչ Կիրակոսի, որ ծաղկեց այն Աւետարանը, որ Յովհաննէս քահանան օրինակեց Արծկոյ վանքում, 1333 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 73 բ։

— 76. Յովսէփ ավագերեց, հյուրընկալեց Տարօնի Յովհաննէս Այլինախ եպիսկոպոսին, երբ սա պանդխտել էր Երզնկա, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 77. Յովսէփ դպիր, հիշատակագիր 1375 թվից. տես Ֆիմի Այասցի։

— 78. Յովսէփ, հայր Առաքելի (№ 39) (Ներքին Կամախի Կախմխի գյուղից), որ մի Աւետարան ազատեց այլազգիների ձեռքից և թիւրի մասերը նորոգել տվեց 1383 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 79 ա։

— 79. Յովսէփ, նոյն Առաքելի որդին և Նախորդի թոռն է։

— 80. Յովսէփ, որդի Օտարշահի և եղբայր Ներսէս գրչի,

*որ Գամաղիէլի վանքում օրինակեց Ճառընտիրը՝ Աստղ միայնակեցի համար, 1397 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 1286։*

— 81. Յովսէփ, *պապ տանուտեր Դանիէլի, որ Աղթամարում Զաքարիա գրչին գրել տվեց մի Ավետարան 1399 թ.—Ձեռ. Վասպ. 234, 239։*

— 82. Յովսէփ, *Մեծոփայ ուխտը վերաշինող 12 հայ ճարտարապետներից մին 1402—9 թ.—Նոտարք 30։*

— 83. Յովսէփ *Շահապօնեցի, ունիթոռական, երևի վանահայր, թարգմանեց Թովմա Ակուինացու Աստուածաբանութիւնը 1410—15 թ։—Սիսական 390 ա։*

— 84. Յուսէփ, *եղբայր Յովհաննէս քահանայի, որ Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Ճառընտիր՝ Բաջբերունեաց Տշող գյուղում, 1419 թ.—Նոտարք 59։*

— 85. Յովսէփ *փիլիսոփա Սանահինում, եղբայր Ղազար վարդապետի, հիշված է 1421 թ.—Տաշեան, Ցուց. 873։*

— 86. Յովսէփ, *միաբան Խիզանի Գամաղիէլ վանքում, 1427 թ.—Նոտարք 83։*

— 87. Յովսէփ *(կամ Յոսէփ), միաբան Պատրկայ վանքի. հիշված է 1420 և 1428 թ։—Ձեռ. Վասպ. 324, Նոտարք 88։*

— 88. Յովսէփ *եպիսկոպոս Անկիւրացի, առաջնորդ Խրիմի, 1428 թ.*—Manus. bibl. nat. *էջ 38 և 168։*

— 89. Յուսէփ, *նոր հանգուցյալ եղբօրորդի Էվատշայի, որ Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Վաանիշատ գյուղի «Եղիշէ վարդապետ» եկեղեցուն, 1428 թ.—Ձեռ. Վասպ. 355։*

— 90. Յովսէփ, *հայր Մամատեկին (№ 8) ապաշխարողի, որ Ստեփաննոս կրոնավորի հետ միասին մի Ավետարան գրել տվեց Խուրովայ վանքում, 1430 թ.—Ձեռ. Վասպ. 359։*

— 91. Յովսէփ, *եղբայրն է Դրպօ. միասին գնել են մի Ավետարան և նվիրել Մլիանից եկեղեցուն, 1431 թ.—Նոտարք, էջ 97։*

— 92. Յովսէփ *կրոնավոր, որդի Յակոբ քահանայի, աշակերտ Արիստակէս վարդապետի. գրիչ. Կիւրղի անապատում օրինակեց Ավետարանը 1432 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46—47։*

— 93. Յովսէփ *տանուտեր, որդի Բուրթէլի. գնեց մի հին Ավետարան 1432 թ. որ և անցավ Օհովոց գեղի Ս. Աստուածածին և Ս. Յովհաննէս եկեղեցուն։—Ձեռ. Վասպ. 163։*

— 94. Յովսէփ, *որդի տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ*

վանում, կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ջեռ. Վասպ. 369։

— 95/96. Յուսէփ, երկու համանուն այլ ազգականներ նույն Ստեփաննոսի.—Ջեռ. Վասպ. 370։

— 97. Յուսէփ, գրիչ. Թացու գյուղում, տանուտէր Դաւթի համար արտագրել է մի Աւետարան, 1437 թ. (Սա եղել է իր առաջին արտագրած գիրքը)։—Ջեռ. Վասպ. 380։

— 98. Յովսէփ (Գ) կաթողիկոս հայոց «1437 թ». հաջորդեց Կոստանդին Զ Վահկացուն.—Առաք. պատմ. 339, Ջամչ. Գ. 483.—ըստ Պալճեան 117 նստել է Կոստանդին Վահկացու մահից հետո՝ միայն մի քանի ամիս, ապա մեռել և իրեն էլ հաջորդել է Գրիգոր Մուսաբէգեանը 1440 թ։—Ըստ Աղգապ. 2088 նա մի խռովարար է, որ Վահկացու կենդանության ժամանակ գործել է և թերևս ոչ իսկ եպիսկոպոս է, ուստի և նրա անունը պետք է ջնջել կաթողիկոսների շարքից։

— 99. Յովսէփ, ստացավ և կազմեց մի օրինակ Շարակնոց Կիւրղի վանքում 1438 թ.—Տաշեան, Ցուց. 447։

— 100. Յովսէփ միայնակեց, գրել ու վերջացնել տվեց այն Աւետարանը, որ Յովհաննէս վարդապետը (տես № 916) կիսատ էր թողել 1439 թ. (Հայտնի է այս Յովսէփի գերդաստանը. հայրն է Թաւաքալ, մայրը Մէրէթ. ինքը թեև միայնակեց, բայց ունի կին և որդիներ. կինն է Աղութ, որդիներն են՝ Ատոմ, Մխիթար, Առաքել և հանգուցյալ Յովհաննէս)։—Ջեռ. Վասպ. 380։

— 101. Յովսէփ վարդապետ Խառաբաստայ Ս. Աստուածածին վանքի. անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».—Մեծոփ. յիշ. ա. Նոտարք 122։

— 102. Յովսէփ եպիսկոպոս Գլակայ վանքի. Թղթակից անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».—Մեծոփ. յիշ. ա։

— 103. Յուսէփ միաբան Աղթամարի Ս. Խաչ վանքում, 1441 թ.—Նոտարք 127, Ջեռ. Վասպ. 384։

— 104. Յովսէփ սարկավագ, գրիչ. օրինակեց Ճաշոցը 1446 թ. (երևի Վասպուրականում).—Նոտարք 154։

— 105. Յովսէփ արքեպիսկոպոս Անկիւրիոյ. սրա հաջորդն է Ներսէս արքեպիսկոպոս, որ հիշված է 1447 թ.—Հացունի, Կարևոր խնդ. 271։

— 106. Յուսէփ աբեղա, այն Աւետարանը որ գրել էր

Տէր քահանան 1311 թվին խոջա Միրաքի համար, երկրորդ անգամ կազմեց Թաւրիզում, 1448 թ.—Ձեռ. Թաւր. 70 բ։

— 107. Յովսէփ աբեղա, որդի Խաչատուրի, աշակերտ Առաքել վարդապետի։ Մկրտիչ Նաղաշի մոտ, Ամիթում տեսնելով պատկերազարդ մի գեղեցիկ Աստուածաշունչ, որ Նաղաշն էր նկարել, նվիրեց նրան 300 թանկա՝ Ամիթի կաթուղիկէի շինության համար և ստացավ նույն գիրքը, 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 115։

— 108. Յովսէփ գրիչ. Արճէշի հյուսիսային կողմը գտնըված Ականց գեղաքաղաքում, Վալաթ անուն անձի համար օրինակեց Աւետարանը 1453 թ.—Թորոս աղբ. Բ. 365։

— 109. Յովսէփ, հորեղբօրորդի տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 110. Յուսէփ մաճակալ (մր) վանքի, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 426։

— 111. Յովսէփ երեց, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Բաղբերունեաց Յականց գյուղում, 1456 թ.—Ձեռ. Դադեան, 55 բ։

— 112. Յովսէփ եպիսկոպոս, առաջնորդ ուխտին Վարագայ. հիշված է 1458 թ.—Թորոս աղբ. Բ. 479։ (Պետք է հաջորդած լինի Յովհաննէս եպիսկոպոսին № 111։ Բայց Նոտարք 188, որ անփոփոխ արտագրում է Թորոս աղբ. վերոհիշյալ հատվածը՝ առանց աղբյուրը հիշելու, Յովսէփ անունը սխալ համարելով ուղղում է Յովհաննէս):

— 113. Յուսէփ, որդի Թումայի, որ Աղթամարում, Ներսէս գրչին գրել տվեց մի Աւետարան 1460 թ։—Ձեռ. Վասպ. էջ 433։

— 114. Յուսէփ, որդի Յովհաննէսի՝ եղբայր նույն Թումայի։—անդ։

— 115. Յովսէփ գրիչ. օրինակել է Ճաշոցը, 1460 թ.—Ձեռ. Կարին. 52։

— 116. Յովսէփ եպիսկոպոս, գրիչ. Շահապունեաց ձորի Կուգոյ կամ Գուգոյ վանքում, Հազարաբուրք Ս. Խաչ եկեղեցում օրինակեց Պատարագամատոյցը 1461 թ. (Նոտարք 205) և հաջորդ տարին էլ Շարականը՝ 1462 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 51 բ)։

— 117. Յովսէփ քահանա Բաղիշեցի. գրիչ. օրինակել է Յակոբ Ղրիմեցու Մեկնութիւն Տոմարին, Բաղէշ 1463 թ.—Ձեռ. Կարին. 210>Նոտարք 210։

— 118. Յովէփ *քահանա, մի Աւետարան, որ գրել էր Յովհաննէս գրիչը 1450 թվին Կիրակոս եպիսկոպոսի համար, ձեռք բերեց ինքը 1464 թ.—Ձեռ. Բերլինի, 5 բ։*

— 119. Յովէփ *եպիսկոպոս, նորոգեց մի հին Շարական, 1466 թ.*—Bodleian *21։*

— 120. Յովէփ, *թոռն տանուտեր Առաքելի, որ Գամաղիելի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։*

— 121. Ուսէփ, *մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։*

— 122. Ուսէփ, *ամուսին Արղուն-մելէքի (№ 3)՝ քրոջ Գրիգոր աբեղայի (№ 654), որ Զուլալ տիկնոջ համար օրինակեց Աւետարանը՝ Աղթամար 1470 թ.—Ձեռ. Վասպ. 460։*

— 123. Յովէփ *կրոնավոր. գրիչ. օրինակել է «Յայսմաւուրքը ի ձորն Շնապունեաց ի գիւղն Կուփին» (իմա Կուքի), ՋԻ=1471 թ.—Ձեռ. Կարին. 169 (տպ. ՇԻ, որ պետք է ուղղել ՋԻ), Սմբատեանց՝ Երնջակ 123։—Անշուշտ տարբեր է Յովէփ № 116, որ եպիսկոպոս է, իսկ սա աբեղա։ Բայց նույն է* Յովէփ *հիշատակագիր 1471 թ. (Սիսական 487 բ)։*

— 124. Յովէփ *աղա, գրիչ. Սպեր գավառում, Տղանց անապատում օրինակեց մի ընտիր Պատարագամատոյց՝ 1474 թ.—Փաթըրճեան, Գորգմ. 567։*

— 125. Յովէփ, *որդի ժամհար Մկրտիչի. մայրն է Շնորհաւոր. կոչվում է «աղքատ Յովէփ». Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, Վան 1475 թ.—Ձեռ. Վասպ. 477—8։*

— 126. Յովէփ *քահանա Շերենենց, հորդորիչ եղավ նորոգելու այն Աւետարանը, որ տանուտեր Սաղաղան գրել էր տվել Թումայ քահանային և նվիրել Աղթամարի Ս. Խաչ վանքին 1476 թ.—Ձեռ. Վասպ. 482 (գրված է գրչության հիշատակարանում. հետևաբար հետին նորմուծություն է և պատկանում է ըստ իս նորոգության հիշատակարանին, 1575 թ. Ձեռ. Վասպ. էջ 484)։*

— 127. Յովէփ *եպիսկոպոս. գրիչ. գրեց ու կազմեց Սաղմոսարանը Կամախի Վարդենցոց վանքում, 1476 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 247։*

— 128. Յովէփ *խոճա, որդի պարոն Սէթի և Դուլխաթրի, «ամենապատվելի և մեծաշուք իշխան Տարօնոյ գաւառիս», Մու-*

*շում, Պօղոս վարդապետէն գրել տվեց մի Աւետարան, 1479 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 262—3։*

— 129. **Ովսէփ**, *որդի Մելքոնի, եղբայր խոջա Յոհաննէսի, որի հետ միասին նորոգել տվին այն Աւետարանը, որ Տարօնի իշխան և իրենց պապի հօրեղբօրորդի խոջա Յովսէփը գրել էր տվել Մուշում, 1479 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։*

— 130. **Յովսէփ** *քահանա, հայր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայի վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 10 բ։*

— 131. **Յուսէփ**, *հիշված է մի խաչքարի արձանագրության մեջ, Թէոդոսիա 1487 թ.— Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 351։*

— 132. **Յովսէփ** *քեռորդի Խոնտքար տիկնոջ, որ Խորատկայ վանքում գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։*

— 133. **Յովսէփ**, *հայր գրիչ Յակոբ (№ 248) կրոնավորի, որ Աղթամարում օրինակել է Աւետարանը՝ խոջա Միրիջանի համար 1493 թ.— Ձեռ. Վասպ. 520։*

— 134. **Յուսէփ** *երեց, քեռի Սահակ երեցի, որ Կեսարիոյ Մոնտիսոն գյուղում օգնեց Յովանէս աբեղային՝ գրելու Յայսմաւուրքը, 1495 թ.— Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։*

— 135. **Ուսուպ**, *մի հող է նվիրել Գանձասարի վանքին 1495 թ.— Շահխաթ. Բ. 375։*

— 136. **Յովսէփ** *ոմն հայ, պանդուխտ էր Վենետիկում, վերադարձավ իր հայրենիքը 1498 թ.— Հայ-Վենետ. 198։*

— 137. **Յովսէփ** *քահանա, հայր Կարապետ երեցի, որ ստացավ մի Ոսկեփորիկ-Հաւաքածոյ, 1500 թ.— Տաշեան՝ Ցուց. էջ 486։*

— 138. **Յովսէփ** *ոմն, որ համառոտել է Դաւիթ փիլիսոփայի «Պատմութիւն Լակոնացւոց». այսպես ունին Ցուցակ Կարինեան և Զարբ. մատ. հյ. թրգմ. էջ 756. բայց սխալ է. հիշյալ Յովսէփը պարզապես մի գրիչ է 1690 թվից (Ձեռ. № 1808= Մայր Ցուց. № 1765), ըստ Մանանդեան, Նոնն. էջ 2։*

— 139. **Յովսէփ** *վարդապետ Աղթամարցի. տաղասացներից մի տաղ տես Նոր Ժողովածու, Դ. էջ 42՝ հանված 1623 թվին գրված մի Սաղմոսից։*

— 140. **Մելիք Յովսէփ**, *որդի մելիք Յուսէինի († 1736 թ.). Մելիք Միրզա-բէկ Բ-ի գլխատումից հետո՝ Նադըրշահի կողմից նշանակվեց մելիք Վարանդայի։ Եղբայրը մելիք Շահնազար իր*

ձեռքով սպանեց նրան և նրա ամբողջ ընտանիքը, և ապօրինի կերպով խլեց մելիքական իշխանությունը.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 69—70։

— 141. Յովսէփ քահանա Ջուղայեցի. գրել է «Պատմութիւն եկեղեցական», սկսելով Ադամից և հասցնելով 1751 թ.՝ Բասրայում 1761 թ.—Հայապ. 135։

— 142. Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեան. ծնվել է Սանահին «1743 թ». հայրը Վրաց արքունիքում պաշտոնյա էր. այս պատճառով էլ Յովսէփը իրեն ազնվականության տիտղոս հորինեց։ Սովորել է Էջմիածնում, աշակերտելով Սիմէոն Երեւանցուն։ Եղավ առաջնորդ հայոց Ռուսաստանի՝ սկսած «1773 թվից»։ Մեծապես կողմնակից էր Ռուսաց դեպի Արևելք տարածման գաղափարին և դրա վրա էր դնում Հայաստանի ազատագրությունը։ Ինքն էլ առաջնորդեց Ռուս բանակը դեպի Գանձակ «1796 թ»։ Ղուկաս կաթուղիկոսի մահից հետո («1799 թ»), Ռուս պետությունը պահանջեց, որ Յովսէփը կաթուղիկոս ընտրվի։ Ազգը խոհեմությամբ, Տաճկաց և Պարսից կասկածը հայոց վրա չհաստատելու համար, մերժեց, ըստ որում Յովսէփը Ռուսական բանակների առաջնորդն էր եղել Տաճկաց և Պարսից դեմ պատերազմներում։ Բայց Պօղոս Ա. կայսրը Պոլսի դեսպանի միջոցով տարաձայնություն գցեց Պոլսի հայոց մեջ, պատրիարքին գահընկեց արավ, ընտրելիներին հեռացրեց և Սուլթանի մոտ պահանջ դնելով՝ ընտրել տվեց Յովսէփին։ Յովսէփը մեծ շքով ճանապարհ ընկավ Պետերբուրգից՝ Էջմիածին օծվելու. ճանապարհին հիվանդացավ Տփղիսում և մեռավ «1801 թ», լոկ անվամբ միայն կոչվելով կաթուղիկոս հայոց։—Ազգապ. 3242—3281, Լէօ՝ Հայկ. տպագր. հտ. Բ, էջ 545 են։

— 143. Յովսէփ Էմին, ծնվել է 1726 թ. Պարսկաստանի Համադան քաղաքում։ Հայրը վաճառական էր. առևտրական գործերի մեջ անհաջողության հանդիպելով գաղթեց Կալկաթա (Հնդկաստան)։ Այստեղ պատանի Յովսէփը շփվում է անգլիացիների հետ, սովորում է անգլերեն և անգլիական գրականության ազդեցությամբ ծագում է իր մէջ հայ հայրենիքի ազատագրության գաղափարը։ 1751 թվին նավ է նստում և վեց ամիս ճամփորդելուց հետո, մեծ նեղությամբ հասնում է Լոնդոն։ Ոչ մի ծանոթ չուներ. կրում է ամեն տեսակ զրկանքներ. կատարում է ամեն տեսակ սև աշխատանք՝ իր գոյությունը պահելու համար։ Պատահաբար ծանոթանում է անգլիացի գործիչ Էդմոնդ

Բըրքի, ապա լորդ Նորթըմբըրլանդի հետ և այս վերջինի բարեխոսությամբ մտնում զինվորական ակադեմիան։ Դառնում է ապա և մի ժամանակ ծառայում է անգլիական և գերմանական բանակներում, կռվելու համար Ֆրանսիայի դեմ։ Իր ծրագիրն էր Պարսկաստանի և Տաճկաստանի հայոց մեջ ապստամբություն բարձրացնել և Վրաց Հերակլ թագավորի օգնությամբ ազատել Հայաստանը մահմեդականների լծից։ Այս նպատակով 1760 թվին, Եգիպտոսի և Հալեպի վրայով գնում է Հայաստան, հասնում Էջմիածին (1761 թ), բայց Յակոբ կաթողիկոսի և միաբանության կողմից թշնամական վերաբերմունք միայն գտնելով, վերադառնում Լոնդոն։ Այստեղ ծանոթանում է Ռուսական դեսպան իշխան Գոլիցինի հետ, պարզում իր ծրագիրը և նրա հանձնարարականով գնում է Պետերբուրգ։ Պետրոս Գ կայսրը առանձին նամակով ուղարկում է նրան Վրաց Հերակլ թագավորին։ Հերակլը ընդունում է նրան, հավանում է նրա ծրագրին, բայց այդ ծրագրի գործադրության համար փող էր պահանջում։ Էմինը թղթակցություն սկսեց Ղարաբաղի մելիքների և Մշու Ս. Կարապետ վանքի վանահայր Յովհաննէսի հետ են։ Վերջինս ապահովեց նրան, որ բավական է որ Վրաց թագավորը հարձակվի Տաճկաց վրա. Նրանք հուսալքված են. գիտեն որ իրենց վախճանը հասել է. հայերը բոլոր ոտքի պիտի կանգնին. Նրանց պիտի միանան նաև ասորիները և եզիդիները։ Հաջողությունը սպասվածից ավելի արագ պիտի լինի։ Այստեղ էլ նորից Էջմիածինը հակառակ կանգնեց շարժման. Սիմէոն կաթողիկոսը գիմեց Հերակլին և խնդրեց վռնդել Էմինին Վրաստանից։ Էմինը գնաց Դաղստան, ուր լեզգիների մոտ լավ ընդունելություն գտավ։ Ընտրվեց զորավար և երկու տարի պաշտոնավարեց, կասեցնելով լեզգիների արշավանքը դեպի Վրաստան և Հայաստան։ Այս միջոցին նա գնաց Ղարաբաղ և ուզեց կազմակերպել նրանց, բարձրացնել միացյալ ապստամբություն։ Բայց այստեղ էլ վրա հասավ Սիմէոն կաթողիկոսը և քայքայեց նրա ծրագիրը։ Էմինը թողեց Ղարաբաղը և հանկարծ լսելով, որ Խոյում ասորիները ապստամբել են Պարսից դեմ, շտապեց այնտեղ։ Բայց անօգուտ։ Նորից գնաց Տփղիս՝ Հերակլի մոտ, ապա Իմերեթիայի թագավոր Սողոմոնի մոտ, և այսպես ութ տարի ապարդյուն դեգերելուց հետո, գնում է Հնդկաստան, ուր և մեռնում է խոր ծերության մեջ 1809 թ.—(Ամփոփել եմ Մկ. Ներսիսյանի հոդվածը, Տեղեկագիր Արմֆանի 1941 թ. № 1, էջ 41—60։ Ընդարձակ կենսա-

գրությունը գրեց Նորընտիր ակադեմիկոս Աբգար Ռ. Հովհաննիսյանը ռուսերեն լեզվով, (Երևան 1945, էջք 352), շատ գնահատելի մի գործ, որի հայերեն թարգմանությունն էլ պատրաստվում է տպագրության համար։ Հեղինակը հայտնեց ինձ, որ հակառակ ընդունված կարծիքի, այս անձի անունը Յովսէփ չէ, այլ Էմին. իսկ Յովսէփը հայրանունն է, ինչպես հայտնի երևում է նույն գրքի էջ 120 գրված նմանահանությունից, ուր ստորագրված է. «Յովսէփի որդի Էմինս ձեռնագրեցի» (իմն ստորագրեցի)։

— 144. Յովսէփ Ամիրխանեան, հնդկահայ վաճառական, որ Ռուսաց Կատարինէ կայսրուհուն խոստացավ տարեկան 500,000 ռուբլի եկամուտ բերող դրամագլուխ, եթե իր նախնյաց հայրենիքի ազատությունը ապահովեր «1829 թ»։ — Ազգապ. էջ 3749։

* ՅՈՎՍԻԱ, ար.<եբր. יאשיה Yašiyāh անվան հուն. Ἰωσίας տառադարձությունից։ Այս անունով հայտնի է Հրէից թագավորներից մեկը, որ նշանավոր եղավ իր բարեպաշտությամբ (Ն. Ք. 641—610)։ Նույնը կոչվում է ֆրանս. Josias, գերմ. Josia։ Շատ քիչ է գործածված մեր մեջ։

— 1. Յովսիա վանական, «այր երկիւղած և ճշմարտախոհ», Վարազդ Գաբեղեան իշխանի խնդրանքով գրեց «Պատմութիւն Թաթլոյ և Գիւտի և Թովմասու և Վարոսի»։ Տեղեկացնում է թե Արշարունեաց գավառի Վանդոյի վանքում 36 վարդապետ գըրչության արվեստով էին զբաղված (Զ դարի կեսին),—Այրրտ. 46 բ, 52 ա, Զարբ. Հին դպր. 406. Հայապ. 66, 190. Ալպօյաճեան՝ Պատմ. հայ Կես. Ա. 1062 (ըստ Դուրեանի Պատմ. հայ մատեն. էջ 67—68)։

— 2. Յովսիան գրիչ, որդի Շերկանն, մայրն է Հափսիմէ. Հաղարակն գյուղում օրինակեց Աւետարանը՝ Հայրապետ քահանայի համար, 1316 թ.—Ձեռ. Վասպ. 166 գրված է ճշտիվ Յովսիան, հինգ տող ցած՝ Յովսեան, իսկ էջ 162 սեռ. «Յովսի նուաստի»։ Այնուհետև այս գիրքը անցավ Գորգի որդի Թումային (№ 76). որից գնեց Դաւիթ (№ 173)։ 1100 դրամով՝ 1407 թ. երեք տարի անց, մյուս եղբայրը՝ Մարտիրոս քհ. որդի Գորգի եա է գնել Դաւիթից՝ 1410 թ. կարծեմ սրանից հետո գնել է Ստեփաննոս որդի Պօշի (Թիֆլ անհայտ), որից հետո էլ տանուտեր պարոն Յովսէփ որդի Բուրթելի 1432 թ. (ըստ այսմ ուղղել հտ. Բ. էջ 676 կտորեկ № 1)։

— 3. Յովսեան քահանա, գրիչ. օրինակեց Աւետարանը

*Տուրուբերանի Բերդուկ գյուղում 1298 թ.—Ակինեան՝ Գուղնգիրք, էջ 49։*

— 4. Յովսիկ, *հիշված է 1576 թ. (Ձեռ. Վեներ. Ա. 358). կրճատ ձևն է նախորդ կամ հաջորդ անվան։*

** ՅՈՎՍԻՄՈՍ, ար. գրված է* Յոփսիմոս *ձևով և ավանդված է իբրև անձնանուն 1506 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 79 բ)։ Նախ պետք է ուղղել Յովսիմոս և ապա դարձնել* Զովսիմոս, *որ Սուքիասեան նահատակներից մեկն է։ Ավելին տես Սուքիաս և* Զոսիմոս:

** ՅՈՐԴԱՆԱՆ, ար.<եբր.* ירדן Yardēn *բառի ասոր.* ܝܘܪܕܢܢ Yordənān *տառադարձությունից (Հիւբշ. 295)։ Մյուսներն ունին հուն.* Ἰορδάνης, *լտ.* Jordanes, Jordanis, *գերմ.* Jordan, *ֆրանս.* Jourdain, *ռուս.* Иордан *(հինը* Іорданъ), *արաբ.* اردن Urdunn *են։ Այս անունով հայտնի է Պաղեստինի գլխավոր գետը։ Սրա հետ համտ. եգիպտ.* Ja-ira-du-na, Ju-ru-den (Gesenius *317)։ Հները ստուգաբանում էին «իջնել» բայից. համտ. Փիլ. այլաբ. 171 «Յորդանան էջ թարգմանի». Գիրք առաք. 670 բ «Յորդանան թարգմանի գետ դատաստանաց» (համտ.* Դանիէլ): *Այժմ էլ ոմանք կցում են եբր.* ירד ird *«իջնել, ցած իջնել», որ բնիկ սեմական արմատ է և որի հետ կապվում են ասուր.* arādu *«իջնել». ասոր.* ܝܪܕܐ yardā *«հեղեղ, գետ», արաբ.* ورد vrd *«գալ, հասնիլ» և թերևս ասուր.* Uruttu *«Եփրատ գետը»* (Gesenius *316)։ Յորդանան գետը նշանավոր եղավ նրանով մանավանդ, որ Յիսուս մկրտվեց այնտեղ և այդ օրը քրիստոնեական տոն դարձավ։ Մեր մեջ իբր անձնանուն քիչ է գործածված. մի քանի օրինակ ունենք ԺԲ—ԺԷ դարերից. այժմ էլ Նոր-Ջուղայում կա* Յորդանանեան *ազգանունը։ Օտարներից հայտնի է* Յորդանանէս *(=հուն.* Ἰορδάνης), *Սուքիասեան նահատակներից մեկը։*

— 1. Յորդանան *Կարնեցի, հայացյալ տաճիկ, նահատակվեց մահմեդականների ձեռքով 1182 թ.—Վրդ. հէ. Մխ. այրիվ. 79>Նոր վկ. 72.—Փիրղալէմեան, Զորս ընկերք, Տփղիս 1882, էջ 71 պատմում է այնպես, որ իբր թե մնում է նրա գերեզմանը Կարինում։*

— 2. Յորդանան *քահանա, որդի Ենոքի, մայրն է Մարթա. շինել է Պօղոս-քիլիսայի հին եկեղեցին 1247 թ.—Արձ. Արցախ 363։*

— 3. Յորդանան *կուսակրոն աբեղա, մերձավոր Հայրապետ աբեղայի, որ Արծկոյ վանքում, Յովաննէս քահանային գրել տվեց Աւետարանը 1338 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 73 ա։*

— 4. Յորդանան որդի Գրիգոր քահանայի, որ մի Աւետարան նվիրեց Գաղխայ Ս. Գէորգ եկեղեցուն, 1348 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 564)։

— 5. Յորդանան, որդի Մկրտիչ (№ 79) քահանայի, որ Թումայ կրոնավորին գրել տվեց մի Ճաշոց՝ Աղթամար 1419 թ.—Նոտարք 58։

— 6. Յորդան (փոխանակ Յորդանան) ոմն, հիշված է մի ձեռագրում 1420 թվից առաջ.—Տաշեան, Ցուց. 666։

— 7. Յորդանան, միաբանակից Սարգիս եպիսկոպոսի, որ Կոթիփորոյ Ընկուզագոմ վանքում օրինակեց Յայսմաւուրքը 1427 թ.—Նոտարք 85։

— 8. Յորդանան (կամ Որդանան), որդի Ուփիկի և եղբայր Ներսէս քահանայի, որ Թումայ կրոնավորին գրել տվեց Աւետարանը Ուրանց գյուղում, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 364—6։

— 9. Յորդանան աբեղա, հոգևոր եղբայր Յովհաննէս քահանայի, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 ա։

— 10. Յորդանան, հայր Խաչատուր քահանա Ուրծեցու, որ էր գրիչ 1460-ական թվերին։—Այրիվ. 16 ա։

— 11. Յորդանան քահանա, եղբայր Գրիգոր եպիսկոպոս Աշտարակեցի գրչի. Թուղթ կոկող էր 1478 թ.—Այրարատ 274։

— 12. Յորդանան վարդապետ, առաջնորդ Արևէս գյուղի Ս. Գրիգոր եկեղեցու 1487 թ.—Սիսական 217 բ։

— 13. Յորդանան, եղբայր Գալուստ աբեղայի, որ Կեչառուսում օրինակեց մի Աւետարան, 1491 թ.—Ձեռ. Սևան. 10 բ։

— 14. Յորդանան, որդի Յովհաննէսի և եղբայր Համանգուլ կույսի, որ Այրի վանքում գրել տվեց մի Աւետարան, Ստեփան աբեղային, 1493 թ.—Թորոս աղբ. Բ. 304։

— 15. Յորդանան, եղբայր Ազարիա աբեղայի, որ Վայոց ձորի Եղեգիս քաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։

— Ավելի ուշ հիշատակված են Յորդան՝ 1525 թ. (Ձեռ. Վասպ. 418), Որդան (թիվը անհայտ, բայց նախ քան 1671 թ. Ձեռ. Հալէպի, Ա. 358 բ), Յորդան (թիվը անհայտ, Արցախ, էջ 186)։

†ՅՈՐԴՈՐ, ար.<հյ. յորդոր «մեղմ, հանդարտ» բառից. մի քանի անգամ գործածված է ԺԳ—ԺԸ դարերում։

— 1. Որդոր, որդի Իւանէի և հայր Հասան Տաւուշի, որ

*վաղամեռիկ եղավ 1304 թ. շիրիմը գտնվում է Ջուլախաչ գյուղում (Նոր-Բայազետ).—Սմբատեանց, Գեղարքունի 546։*

— *Անստույգ թվականով են* Որդոր *(1311 թվից ուշ, Ջեռ. Թաւր. 74 բ),* Յորդոր *(1420 թվից առաջ, Տաշեան՝ Ցուց. 666 ա),* Հորդոր *(1418 թվից ուշ, Ջեռ. Վասպ. 316),* Որդաւր *1702 թ. (Ջեռ. Թաւր. 109 բ). կա և* Յորդարանց *ազգանունը 1440 թ. (Ջեռ. Վասպ. 312)։*

**ՅՈՐՈՍՆ,** *ար. ձեն ու ծագումն անհայտ։ Հիշված է մի անգամ Արջոյառիճի 1289 թվի մի արձանագրության մեջ՝ հետևյալ ձևով. «ա (պատարագ) կենակցի իմ Մամաթէ, բ (պատարագ) ազգաց իմ (իմ ազգականին)* յորոսնու, *բ ինձ Որդեկիս» (Շիրակ 123, որ նույն բառի մոտ մի հարցական դնելով անցնում է)։*

***ՅՈՒԼԱԳԽԱՆ,** *իգ.<պրս.* گلاب gulāb*>արաբ.* جلاب ǰulāb *«վարդի ջուր» բառն է + պրս.* خان xān *«իշխան»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1691 թ. (Ջեռ. Թաւր. 10)։*

***ՅՈՒԼԻԱՆԷ,** *իգ.>հուն.* Ἰουλιανή *ձևից, որ իգականն է* Ἰουλιανός*<լտ.* Julianus *արական անվան։ Օտար տառադարձություններն են գերմ. անգլ.* Juliana, *ֆրանս.* Julienne, *ռուս.* Юлиана, Ульяна*։ Արականը մեր մեջ գործածված չէ, որովհետև* Յուլիանոս *Ուրացողի անունն է (իբր վերադիր կա Ջար-Ուլիանոս կամ Ջարլիանոս)։ Իգական ձևով հայտնի են Ցայսմավուրքում մի քանի նահատակ կույսեր. մի քանի անգամ էլ գործածված է մեր մեջ. այսպես* Ուլիանէ *1648 թ. (Ջեռ. Նոր-Բայազ. 38 բ),* Ուլիան *(անդ 37 ա), սեռ.* Յուլիանէին *1650 թ. (Տաշեան՝ Ցուց. 934)։*

***ՅՈՒԽՆԱՆ,** *ար.<եբր.* יוחנן Yōxānān *անվան սուր.* ܝܘܚܢܢ Yōxannān *տառադարձությունից, որ կարելի է սակայն նաև կարդալ* Yūxnān *ըստ գրության (Հիւբշ. 295)։ Եբրայական անվան բուն ձևն է* יהוחנן Yəhōxānān, *որ ծագում է* יהו Yəhō *«Եհովա»+*חנן xnn *«ողորմել, կարեկցել» բառերից և նշանակում է «աստուածողորմ, աստուածաշնորհ»* (Gesenius *245)։ Յունական թարգմանության մեջ այս անվան դեմ դրված է* Ἰωνά, Ἰωανάν, *իսկ հյ.* Յովնան, *որ սակայն պետք է տարբերել բուն* Յովնան *անունից։*

— Յուխնան *Ռոփսոնեան տես* Յովհաննէս *№ 18։*

***ՅՈՒՂԻՏԱՅ,** *իգ.<հուն.* Ἰουλία*<լտ.* Julia *անվան փաղաքշական ձևից, որ և ֆրանս.* Juliette, *որ այժմ էլ գործածվում է մեր մեջ* Ջուլետա *ձևով։ Այս անունով* (Յուղիտայ) *Ցայս-*

ժառուրքում կա մի նահատակուհի, որի անունով էլ կա մի եկեղեցի Ամիթում (Ուգհր. Լիակ. վրք. սրբ. Ա. 170, Տաշեան՝ Ցուց. 618 բ)։ Հնագոյն գործածությունն է ԺԵ դարից, որ և գործածական է այժմ Ագուլիսում։

— 1. Ուղիտա, կին Մարգարէ քահանայի, որ Բալուի Նեխաի գյուղում օրինակեց Ավետարանը 1475 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. էջ 624։

— Ավելի ուշ հիշատակված են՝ Ուղիտայ 1548 թ. (Manus. brit. mus. 108 բ), Ողիտայ՝ 1475 թվից հետո (Ձեռ. Մաղն. 35), Աւղիտ (1418 թվից ուշ, Ձեռ. Նոր-Բայազ. 33 ա), Օղիտա 1629 թ. (Կամենից 183=ՀԱ 1890, 21 ա), Յողիտայ (Փիլիպպոս կաթուղիկոսի ժամանակ՝ Ջամբռ 188), Յուղիտա 1653 թ. (Ձեռ. Վիեննա. Բ. 1037), Ուղիտայ 1694 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 53), Օղիտայ՝ 1702 թ. (Manus. brit. mus. 167 բ), Յուղիտայ 1796 թ. (Էֆիմ. 448), կրճատ ձևով էլ Օղիկ, որ հիշված է 1671 թ. (Քննութ. և համտ. Եղնկայ 5)։

. Յունանես տես Յուսանես:

† ՅՈՒՇԱՊ, պր.<հյ. վիշապ բառի ժղվ. ուշապ կամ յուշապ ձևից. ավանդված է միայն մի անգամ՝

— Յուշապ սպարապետ, մեծապես օժանդակեց Միջագետքի Կարապետ քահանային, երբ նա պանդխտում էր Կիլիկիայում (Լամբրոն) 1233 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 404. Սիսուան 85 ա. Հայապ. 457։

ՅՈՒՋՐԱԹ, իգ. ծագումն անստույգ է. (կան արաբ. هجرت hiȷrat «գաղթ» և اجرت uȷrat «վարձք, թոշակ» ձևերը)։ Մի անգամ հիշատակված է 1749 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 450)։

† ՅՈՒՍԱԿ, պր.<հյ. յոյս բառից. համտ. Յոյս և Յուսիկ անունները։ Մի անգամ ունինք՝

— Յուսակ, նահապետ Հայկազն, հաջորդեց Հոյի, Ն. Ք. 941 թ (ըստ Չամչ.)—Խոր. Ա. ժթ. Յհ. կթղ. բ. Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. ժե. Վրդ. է. Մագ. թղ. խթ (Ո՞ւր Յուսակ յուսացեալ զօրութեամբ). Սամ. անեց. 45. Մին. համդ. 10. Մխ. այրիվ. 18, 53։

† ՅՈՒՍԱՄ, պր.<հյ. յուսամ «հույս ունիմ, հուսով եմ» բայից։ Հմմտ. Յոյս, Յուսակ և Յուսիկ անունները։

— 1. Յուսամ քահանա, որի մասին տես Սխիտանոս քահանա 1292 թ։ (Տպված է նոր ուղղագրությամբ Հուսամ և չգիտենք թե բուն ձևը ինչ է։ Եթե հին ձևն է իրոք Հուսամ, ու-

նինք այս ձևով «մի տեսակ թռչուն» և կամ ավելի լավ՝ «մի տեսակ անուշահոտ ծաղիկ, lavanda spica"․ Իսկ եթե հին ձևն է Ցուսամ, ինչպես կարծում եմ, պետք է համարել «յուսամ» բայից։ Նույնը հաստատում է Նաև՝)

— 2. Ցուսամ քահանա, իր Գորգ և Գրիգորէս որդիների հետ միասին օգնեց Սիմէոն երեցին՝ արտագրելու Աւետարանը, Ղրիմի Սուրխաթ քաղաքում, 1347 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 755։

— Անթվական է Եղվարդի մի արձանագրության մեջ՝ Բանաս. 1903, 30։

*ՑՈՒՍԱՆԷՍ*, *ար. մի անգամ հիշատակված է՝*

— Ցուսանէս վանեցեց Աւանի. մի խումբ ուրիշ կրոնավորների հետ ստորագրում է այն ձեռնարկին, որ ներկայացրին Աբրահամ կաթողիկոսին, խոստանալով հավատարիմ մնալ հայ եկեղեցու դավանանքին «607 թ».—Ուխտ. Բ. լէ.—Նույնը գրված է Ցունանէս Գիրք Թղ. խ։ Սրանցից մրն է ուղիղ։ Իսկ Ազգապ. 618 գրում է Ցովնան, որով այս նոր անունը ամբողջովին ջնջվում է։

— Անթվական է Գոշավանքի մի արձանագրության մեջ (Ազգագր. հանդ. Ժ. 24), ուր գրված է որ. Ցուսանին։ Այս վերջինը կարող է իրար միացնել Ցուսամ և Ցուսանէս անունները։

†*ՑՈՒՍԲԻՔԱ*, *իգ.<հյ.* յոյս+*թթր.* ﺑﻴﮑﻪ bika *«տիկին» բառերից. (բայց գուցէ պետք է կարդալ* Ցուսբիքա, *որ տես առանձին)։ Մի անգամ հիշված է՝*

— Ցուսպիքա, երեցկին, հիշված է Ղրիմի մի արձանագրության մեջ 1460 թ. այժմ փոխադրված Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքը.—տես Շահազիզ, Ազգագր. հանդ. Է, 72 և Ն. Նախջ. Ս. Խաչ. 12 (առաջինում տպված յուսպիքային, երկրորդում՝ յատիքին):

†*ՑՈՒՍԵՐ* *ար?<հյ.* յոյս *բառի հոգնակին է, եթե չէ սակայն վրիպակ փխ.* Լուսեր: *Հիշված է մի անգամ ուշ ժամանակի անթվական և սխալաշատ մի հիշատակության մեջ (Տաշեան՝ Ցուց. 15 բ)։*

†*ՑՈՒՍԻԿ* *ար.<հյ.* յոյս *բառից (տես անդ). իբր հունական անվան թարգմանություն ունինք* Տէր Ցուսիկ՝ *հայրենական անուն Ս. Եւստրատիոսի (Ցայսմ. դեկտ. 13)։ Այժմ Կովկասում համարվում է իգական անուն, ինչ որ ռուս.* Надежда *իգական անվան հետևողությամբ է, սակայն անկախ նրանից, իբրև իգական գործածված է մեր մեջ 1680 թ. (Ձեռ. Վասպ.*

570)։ Հույն տառադարձությամբ գրված է Ἰώσακις (Justi 150 ա)։

— 1. Յուսիկ ոմն, որի քույրը Մարիամ՝ Բարթուղիմէոս առաքյալի կողմից նշանակվեց վանամայր Հոգեաց վանքի (50 թ. ըստ Զամչ. Ա. 297).—սեռ. Յուսկանն՝ Խոր. պամ. ածան. 295.—Յուսիստայ՝ Հայապ. 53։

— 2. Յուսիկ նահատակ Արօրակցի (Դ դար).—տես Եւստրատիոս։

— 3. Յուսիկ Ա. սուրբ, որդի Վրթանէսի և թոռն Լուսաւորչի. ծնվել է «295 թ». կաթողիկոս հայոց «341—347 թ». իբրև հաջորդ Վրթանէսի։ Մանուկ հասակից կրթվել էր արքունի պալատում, փեսայացավ Տիրան թագավորին. կինը մեռնելով՝ հոգևոր կոչում ստացավ և կաթողիկոս ընտրվեց։ Նախատելով Տիրանին իր անկարգ վարքի համար, թոպաձահ սպանվեց և թաղվեց Թորդանում։—Բուզ. Գ. ե, ժբ—ժդ. Դ. գ. Խոր. Գ. ժա. Ցհ. կթղ. ժա. Ցհ. կթղ. հյր. 273. Կղկնտ. Ա. ժդ. Մեսր. եր. 11—14, 24. Ասող. Բ. ա. Եղն. եր. 266, 268. Մխ. այրիվ. 20. Մխ. անեց. դ. Արծր. Ա. ժ. Սամ. անեց. 66. Լմբ. 217. Շնորհ. վիպ. 764. Սասն. 23. Միխ. աս. իթ (=իը). Քհնպ. 270. Կիր. 10, 11. Վրդ. իբ. Օրբ. հա. Մեծոփ. յիշ. գ. Շար. կէ, էջ 467. Ներբ. յորդ. 4, 9, 21, 28, 32, 40—42. Մ. մաշտ. 331 ա. Յայսմ. դեկտ. 1. Հաւաք. 11, 12. Մին. համդ. 24.—Օսիկ՝ Վրաց աղբ. Ա. 77.—Ոսիկ՝ անդ Ա. 75։—Յոյս՝ Ներբ. յորդ. 18.—սեռ. Յուսկանն՝ Բուզ. Գ. ե, ժգ, ժե, ժթ. Խոր. Գ. ժա, ժդ, ժե. Ցհ. կթղ. ժա, ժբ. Եղն. եր. 266. Ցհ. կթղ. հյր. 273. Մեսր. եր. 11, 15. Քհնպ. 270. Պատմ. ներս. 6. Պատմ. յյտ. ներս. 42, 46. Վկ. շուշ. 49. Ներբ. յորդ. 32, 42. Ագաթ. 398. Անան. խոստ. 5 (բցռ. հոլով). Արծր. Դ. ժբ. Ասող. Բ. ա. Կիր. 10, 11, ը. Ճշ. 572. Ժմ. 946. Գտրգ. 547, 690. Մեծոփ. յիշ. գ. Լմբ. մատ. 218. Տաթև. ձմ. ծ. Յայսմ. դեկտ. 1.—Յուսկան՝ Բուզ. Գ. զ, ժգ—ժե. Դ. գ. Խոր. Գ. ժդ, ի, իթ. Ցհ. կթղ. ժա. Մեսր. եր. 19. Պատմ. ներս. 5. Ասող. Բ. ա. Սամ. անեց. 66. Կիր. 11. Վրդն. աշխ. 507.—Յուսկայ՝ Մ. մաշտ. 336 ա. Յայսմ. սեպտ. 9, 30. նոյ. 19. մրտ. 6.—Զամչ. Ա. 432—4. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 481. Աղգապ. 141—154։

— 4. Յուսիկ տես Յովսէփ Բ եպիսկոպոս Սիւնեաց։

— 5. Յուսիկ Բ կաթողիկոս հայոց «373—377 թ», Աղբիանոսի ցեղից. Պապի հրամանով հաջորդեց Մեծն Ներսէսին և կաթողիկոսական օծում ստացավ Հայաստանում, առանց Կեսարիա-

գնալու, ինչպես սովորություն էր առաջ։ Սրանով հայտարարվեց հայոց կաթողիկոսական աթոռի անկախությունը կեսարիոյ թեմի հովանավորությունից, ինչ որ Պապ թագավորի բարենորոգչական գործերից գլխավորն է։—Բուզ. Ե. իթ. Մխ. աս. իթ (=իը).—սեռ. Ցուսկան՝ Բուզ. Ե. իթ։—Այս Ցուսիկը (հուն. 'Ιωσάκης ձևով), իբր եպիսկոպոս Հայոց Մեծաց և իբր ձեռնադրված կեսարիայում 372 թ. հիշված է Ս. Բարսեղի մի թղթում (տես Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. գաղտ. 194), իբրև հակառակորդ Արիոսական հերձվածին (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 280, Հացունի՝ Կարևոր խնդ. 210։—Իր մասին տես նաև Սահակ Ա։

— 6. Ցուսիկ քահանա, գրիչ. օրինակեց Ավետարանը, Պետրոս Գետադարձ կաթողիկոսի համար, 1045 թ.—Ջարբ. Թրգմ. 159, Rapport Arm. էջ 38։ Շողակաթ 192։

— 7. Ցուսիկ վաներեց Միջագետցի. իր վատ վարքի պատճառով Ն. Շնորհալուց («1166—1173 թ») վտարվելով՝ Գէորգ և Կարապետ քահանաների հետ միասին Ուռհա գնացին և հայ-հոռոմ դառնալով՝ իրենց հետ նաև 400 տուն հայ հունադավան դարձրին։ Այս նորադարձները «Ցուսիկեան» կոչվեցին։ Ուռհայից Ցուսիկը գնաց Անտիոք և իբր ճգնավոր վանք մտավ։ Այստեղ էլ նա շարունակում էր իր չարությունները Հայոց դեմ, ուստի այժմ էլ Ն. Լամբրոնացին († 1198) գրեց նրան և զգաստության հրավիրեց։—Մխ. աս. իէ (=իզ). Ալիշան՝ Շնորհ. էջ 473—4։

— 8. Ցուսիկ, իր երկու եղբայրների հետ (այն է Ադամ և Սիմէոն)՝ Փարբիում իրենց ունեցած մի այգին նվիրել են Հոռոմոսին 1174 թ.—Արձ. Շիրակ, էջ 21։

— 9. Ցուսիկ վարդապետ, միաբան Ս. Գրիգոր վանից Դարանաղեաց գավառի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։

— 10. Ցուսիկ երաժիշտ Ղազարու վանքի (1204 թ).—Հայապ. 449։

— 11. Ցուսիկ ոմն Երևանցի, կրոնավոր. (ԺԳ դարի սկիզբը).—Justi 150 ա։

— 12. Ցուսիկ երաժիշտ Ղազարու վանից, մասնակից եղավ գնելու Խլաթ գերի ընկած մի Տօնական, 1206 թ.—Ձեռ. Վեննա. Բ. էջ 472։

— 13. Ցուսիկ քհ. Արտամետցի. նույն գյուղացի Ստեփաննոս քահանայի որդին էր. սովորեց Վարագայ վանքում, Անանիա վարդապետի մոտ, որ իր մորեղբայրն էր։ Թեև ուխտել էր կույս

նալ, բայց իր վարդապետի հրամանով ամուսնացավ, սակայն իր կնոջ հետ կույս ապրեց ամբողջ 13 տարի։ Ապա ձեռնադրվեց քահանա (1224 թ)։ Թաթարները գերեցին նրա կնոջ և տարին Թավրիզ ծախեցին։ Յուսիկը գնաց, գտավ նրան և սիրելի դառնալով նրա տիրուհուն՝ ազատեց իր կնոջը։ Վերադառնալով Արտամետ, Երուսաղեմից եկած Ստեփաննոս վարդապետի հորդորով, ապրեց իր կնոջ հետ և ունեցավ մի որդի։ Սա է նշանավոր Ստեփաննոս Տէր-Յուսկան որդին, որի կեանքը տես առանձին։ Երկուսի էլ վարքը տրված է Յայսմաւուրքի մեջ.—Յայսմ. յնվ. 3.—սեռ. Յուսկան՝ Կիր. և Յայսմ. յնվ. 3. Վրդ. աշխ. 513.—Յուսկայ՝ Մխ. այրիվ. 81. Յայսմ. յնվ. 3.—Առաք. պատմ. 326. Պատմ. տէր յուսկ. 198—232։

— 14. Յուսիկ պատանյակ, Երզնկայի Կապոսի անապատում, հիշված 1230 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1214։

— 15. Յուսիկ քահանա, ազգական և ուսուցիչ Ստեփաննոսի՝ դռան եպիսկոպոսի, որ ստացավ Հռոմկլայում մի Աւետարան, 1248 թ. այս թվին Յուսիկը վախճանվեց.—Ձեռ. Հալէպի, Բ. 5։

— 16. Յուսիկ, գրիչ. Ճախաթու վանքում (Կիլիկիա) արտագրել է մի Աւետարան, նույն վանքի վանահոր խնդրանաց, 1250 թ.—Միսուան 255 ծան. Ձեռ. Վենետ. Ա. 676։

— 17. Յուսիկ փիլիսոփա, Թերես մերձավոր Խաչատուր գրչի, որ օրինակեց մի Աւետարան Կիրակոս կրոնավորի համար՝ 1252 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 378։

— 18. Յուսիկ (սեռ. Յուսկա), հայր Աստուածատուր (№ 24) քահանայի, որ Հաւարծին վանքում օրինակեց Աւետարանը՝ Գրիգոր քահանայի համար 1284 թ.—Թորոս աղբ. Բ. 339։

— 19. Յուսիկ տես Սուքիաս 1307 թ։

— 20. Յուսիկ, շինել է «սրանոց» (Ղարաբաղի բարբառով նշ. «ձիթահանք») և ընծայել Թանատի վանքին 1311 թ.—Արձ. Սիսական 120։

— 21. Հուսիկ (գրված հ-ով), մերձավոր Սարգսի որդի Տարի (?), որ Իւլգեւրտի հին եկեղեցուն հողեր է նվիրել 1323 թ.—Սիսական 167։

— 22. Յուսիկ քահանա, գրիչ. օգնեց Յովհաննէս Կարեւրին գրելու Շարակնոցը՝ 1329 թ.—Տաշեան, Ցուց. 496—7։

— 23. Յուսիկ երեց, արձանագրում է մի Աւետարանի գնման մասին և ինքն էլ ուրիշների վկայում, 1356 թ.—Արցախ, էջ 261։

— 24. Յուսիկ *գրիչ. օգնեց Յովհաննէսին գրելու «Առ Որս և Դաւիթ Անյաղթ» (նախ քան 1388 թիվը). հմմտ. վերը № 21։ —Տաշեան, Ցուց. 764։*

— 25. Յուսիկ, *հայր Յակոբ աբեղա գրչի, որ Յովհաննէս կրօնաւորի համար օրինակեց Աւետարանը Բերկրիի Եղավանք ուխտում 1422 թ.—Ձեռ. Վասպ. 349։*

— 26. Յուսիկ *(սեռ. Յուսկանն), եպիսկոպոս Բասենի Սպիտակ վանքի, ուր հայրապետ էր նոյն ժամանակ Մելքիսէթ քահանան, 1455 թ.—Նօտարք 180։*

— 27. Յուսիկ, *հարազատ Մատթէոս երեցի, որ օրինակեց Տօնականը Վերի Նորավանքում, 1456 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ ԽՁ, Զարբ. Թրգմ. 727։*

— 28. Յուսիկ *գրիչ. օրինակել է Գր. Նարեկացու Աստուածաբանութիւնը 1483 թ.—Ձեռ. Կարին. 6։*

— 29. Յեւսիկ *հայրապետ, հիշված է 1488 թ. և որովհետև այս թվին ոչ մի կաթողիկոս չկա այս անունով, ուստի Յուսիկը վանահայր է մի անհայտ վանքի.—Ձեռ. Վենետ. Ա. 492։*

30. Յուսիկ *(գրված է սեռ. Ուսկանն) աշակերտ, հարազատ Մատթէոս գրչի, որ օրինակեց Գիրք Թղթոցը 1426—1476 թ.—Կրպտ. եպս.՝ Դօփեանք 189։*

— 31. Յուսիկ *եպիսկոպոս, առաջնորդ Գուգարաց Ս. Կարապետ վանքի 1491 թ. (Թորոս աղբ. Ա. 120), որ սխալմամբ դարձել է Յուսիկ Գ. կաթողիկոս Հայոց՝ 1488—9 թ. (Այրարատ 230)։ Այլուստ այսպիսի կաթողիկոս անծանոթ է՝ ըստ Ազգապ. 2202։ Հմմտ. № 29։*

32. Յուսիկ *աբեղա, գրիչ. Խարտիշարի վանքում գրեց մի Մաշտոց, որ գնեց Մարթա դուստր Ծատուր քահանայի, 1491 թ.* Bodleian *29։*

— 33. Յուսիկ *վարդապետ, առաջնորդ Պալախորի վանքի 1495 թ. Ձեռ. Սանասար. 24 ա։*

34. Յուսիկ ? *(սեռ.* Ուսկան *ձևով) որդի Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1 93 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։*

- 35. Յուսկան *ոճ, գրծ.* Յուսկանու *ձևով հիշված է Ձեռ. Էջմ. № 940 (ԺԵ դար), սխալմամբ սեռ.* Յուսկանն *ձևը ուղղական կարծելով։*

*ՅՈՒՍՄԻՆ, իգ. (վերջաձայնը հնդ է). ձէն ու ծագումը ան-*

սաուլզ. մի անգամ հիշված է 1671 թ.—Ձեռ. Ազուլ. (Արրտ. 1911, էջ 314)։

*ՅՈՒՍՈՒՓ, ար.<արաբ. يوسف Yūsuf, որ Յովսէփ անվան արաբական ձևն է։ Մեր մեջ գործածվել է ԺԲ դարից սկսած և շարունակվել է մինչև ԺԸ դար։ (Տես նաև վերը Յովսէփ)։

— 1. Յուսուփ, եղբայր Մեծարանց վանքի առաջնորդ Գրիգոր եպիսկոպոսի. մեռել է 1167 թ. և նրա տապանի վրա եղբայրը կանգնեցրել է մի խաչքար։—Յովսէփեան՝ Խաղբակեանք, էջ 29։

2. Իւսուֆ պարոն, որ փեսան էր Խրիմի Յովհաննէս եպիսկոպոսի. հիշված են 1442 թ. մի խաչքարի վրա, որ այժմ գտնվում է Նոր-Նախիջևանի Ս. Լուսաւորիչ եկեղեցում։—Ազգագր. հանդ. Է, էջ 49։

— Ավելի ուշ հիշատակված են՝ Ուսուփ (անթվական, բայց 1331 թվից ուշ. Manus. brit. mus. 58 բ), Յուսուփ (անթվական, բայց 1578 թվից ուշ. Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 472) ևն։

— 3. Իւսուբ, որդի Արով Բ-ի. մելիք Գուլիստանի. պատանի էր, երբ մեռավ հայրը (1728), սկզբում գտնվում էր իր հորեղբայր Թամրազի խնամակալության տակ. զայրանալով սրա դավաճան արարքների դեմ, սպանեց նրան և իր գահին տեր դարձավ։ Երբ պարսից Հիւսէին շահի հարկահան Միրզա Թահիրը հարկ էր հավաքում Դերբենդից սկսած մինչև Գանձակ և Ղարաբաղ, Իւսուբը զայրացած նրա անօրենությունների դեմ, հարձակվեց նրա վրա, ամբողջ խումբը կոտորեց և բոլոր հարկերը խլեց։ Մեռավ 1775 թ։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. էջ 13—17։

*ՅՈՒՍՈՒՖՇԱՀ, ար.<նույն արաբ. Յուսուփ անունից + պրս. شاه šāh «թագավոր»։ Հնագույն հիշատակությունը ԺԱ կամ ավելի ճիշտ՝ ԺԴ դարից։ Հիշատակված է նաև ԺԷ դարում,

— Յուսուփշահ, ընթերցող եկեղեցու, ավագ եղբայր խոջա Մասուդշահի, որի խնդրանոք Գր. Տաթևացին գրեց Ոսկեփորիկը՝ 1407 թ.—Տաշեան, Ցուց. 402։

— Ավելի ուշ հիշատակված է Ուսուփշա՝ 1639 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 279 բ), Յուսուփշայ՝ 1651 թ. Հալէպում (Ձեռ. Բեռլինի, 44 ա), Ուսուփշա (անթվական, բայց 1311 թվից ուշ. Ձեռ. Թաւր. 73 ա)։

*ՅՈՒՍՏԻԱՆԷ, իգ.<լտ. Justina կամ Justine իգ. անվան հունական տառադարձությունից. ծագում է լտ. justus «արդար»

*բառից. հայտնի է* Յուստիանէ *կույս նահատակուհի (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 68—90). գործածական է մեր մեջ սկսած ԺԴ դարից և մինչև այժմ էլ կա. գրական ձևը համարվում է* Յուստինէ, *փաղաքշականն է* Յուստիկ *կամ* Ուստիկ:

— 1. Ուստիանէ, *կին պարոն Ստեփանոսի, որ թուղթ հայթայթեց Ստեփանոս քահանային՝ օրինակելու Աստուածաշունչը Քրիստոսատուր կրոնավորի համար, Սուրխաթ 1352 թ.—Ձեռ. Վատ. 13։*

— 2. Յուստի *(պետք է կարդալ* Յուստիկ) *կին Գրիգոր քահանայի, մայր Յոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփանոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի, 4 ա։*

— 3. Ոստիանէ, *դուստր Սահակ քահանայի, որ ստացավ Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթողիկոսի Աւետարանը 1389 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 652։*

— 4. [Ուս]տեան, *կինն է Առաքել երեցի (№ 40) և պապի զոքանչն է Գէորգ երեցի (№ 101), որ օրինակեց Ճաշոցը Երզնկայում 1391 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։*

— 5. Ուստիանէ *խաթուն, դուստր պարոն Աստուածատուրի և քույր Յովհաննէս արքեպիսկոպոսի Բաբերդի. Երբ այս վերջինս մեռավ (1395 թ) «եղև պակասութիւն ամենայնի մեզ ամենեցուն, եւ առաւել հրեշտակարնակ մենաստանիս Խաղճանեաց, զոր և ի սադրելոյ չարին, յարեան ոմանք ի մէնջ ի մեր ազգականաց և հակառակեցան վանիցս, և ցրուեցին զուխտ և զամենայն որ ինչ կայր ի նմա. զոր տէր Յովհաննէս հանցէ զպատիժ պատուհասին ի գլուխ հակառակողին. ամէն»։ Ուզում է ասել, որ ազգականները, Յովհաննէս եպիսկոպոսին ժառանգորդ համարելով իրենց, վանքի ամբողջ ունեցվածքը խլել են, որով և միաբանները ցրվել և վանքը փակվել է։ Այս Յուստիանէն իր որդի Թորոսի հետ միասին, հավաքել է վանքի կահ-կարասիքն ու իրեղենները և նորից հաստատել Բաբերդի Խաղճանեայ վանքը։—Նօտարք 6—7։*

— 6. Ուստիանէ, *կին Մովսէս երեցի. որ Կամախի Աւագ վանքին նվիրեց մի հին Աւետարան, 1407 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 304։*

— 7. Ուստիանէ, *կին Յովհաննէս քահանայի, որ Ծարէ Գետամէջ վանքում գրել տվեց մի Ճաշոց 1411 թ.—Կրպտ. եպս.՝ Դոփեանք 184։*

— 8. Ուստիանէ, դուստր Սարգիս երեցի. հիշատակված է մի խաչքարի վրա, Ցղնա 1425 թ.—Աղգագր. հանդ. ԺՍ. 321—2։

— 9. Ուստինէ, կին Գառնուկի և մայր մղտեցի Սահակի, որ Աստուածատուր քահանայից, 24 ֆլորիով մի Աւետարան գնեց և նվիրեց Ամասիայի Ղադալու գյուղաքաղաքի Ս. Սարգիս եկեղեցուն, 1427 թ։—Նոտարք 82, Թորոս աղբ. Ա. 65։

— 10. Ուսքիանէ, կին Պատուականի և մայր տանուտեր ոսկերիչ Յովհաննէս Երզնկացու, որ Արճէշում, հարազատ գրչին գրել տվեց մի Աւետարան 1433 թ.—Ձեռ. Վասպ. 367։

— 11. Ուստիանէ, դուստր Խոցադեղի և քույր Մարտիրոս աբեղա գրչի, որ Հաղբատում օրինակեց մի Շարակնոց, քույրն էլ նույն վանքում «միամտութեամբ սպասաւորեաց մեզ» 1437 թ.—Նոտարք 113, Manus. brit. mus. 97 ա։

— 12. Ուստիանէ, կին Ստեփանոսի, որ Տրապիզոնում գրել տվեց մի Ցայսմաւուրք՝ Յակոբ կրոնավորին, 1437 թ. (Труды вост. комм. ИМАО, հտ. II, 3, էջ 55)։

— 13. Յուստիանէ, դուստր ոսկերիչ Յովհաննէսի, որի մահվան վրա իր կինը Թուրվանդա գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1449 թ.—Ձեռ. Վասպ. 404։

— 14. Ուստիանէ, մայր Սուլթանխաթունի՝ կնոջ խօջա Խաչատուրի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, Արճէշ 1462 թ.—Ձեռ. Վասպ. 439։

— 15. Յուստիանէ, կին տանուտեր կամ ռէս Մարտիրոսի (№ 138), որ Բերկրիում, հարազատ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

— 16. Ուստիան աշխարհ, դուստր Յովսէփ քահանայի և քույր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ. այս թվին Ուստիանը մեռել էր.—Ձեռ. Նոր-Բայազ. 10 բ։

— 17. Ուստիան, դուստր Էրկիլի և քույր Զաքարայ աբեղայի, որ Երզնկայում, Յակոբ քահանայից գնեց մի Շարակնոց, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 18. Յուստիանէ, դուստր Ամիրբէկի և քույր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց հաժ գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։

— Ավելի ուշ գրված հիշատակություններից են՝ Իւստիանէ 1513 թ. (Ձեռ. Վասպ. 135), Ուսքիան 1596 թ. (անդ 748), Ուսքեան 1645 թ? (անդ 607), Ուստիան 1649 թ. (Հնոց և Նորոց

127), 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 551), Իստիան՝ 1668 թ. (Ձեռ. Հալէպի Ա. 162 ա), Յուստիանէ՝ ԺԷ դար (Ջքր. սարկ. Բ. 139). Ուստիան 1796 թ. (Էֆիմ. 448) են. իսկ փաղաքշական Յուստիկ ձևով՝ անթվական, հիշված Ձեռ. Նոր-Բայազ. 39 ա և 1327 թվից հետո էլ մի ուրիշ հիշատակարանում՝ Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

* ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ, ար. }
* ՅՈՒՍՏԻՆՈՍ, ար. } ծագում են լտ. Justinus, Justinianus անունների հունական տառադարձությունից (բոլորն էլ լտ. justus «արդար» բառից)։ Երկրորդ ձևով տես Սարուանդ (638 թ), իսկ Յուստինոս և Յուստինիանոս կոչվում են Հունաց Մորիկ հայազգի կայսեր երկու որդիները, որոնք իրենց հոր և մյուս եղբայրների հետ գլխատվեցին 601 թ. (տես Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 122—3, 305)։

ՅՐԵԻ, ար. ծագումն անհայտ։

— Յրև, մասնակցեց Եղեգեաց վկայարանի շինության՝ 472 թ.—Օրբ. ԺԲ։ (Ագգաղ. 424 գրում է Հրև Վայոցձորեցի։ Այժմ Ախտայում կա Հրև անունը. կապ ունի՞ն)։

## ՎԵՐՋ Դ ՀԱՏՈՐԻ

## ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Էջ | Տող | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 32 | 11 ն. | չկար | — |
| — | 3 ն. | Հայկազեան | Հայկազնեան |
| 58 | 15 | 1024 թ. | 1204 թ. |
| 100 | 3 | ת | ח |
| 128 | 14 ն. | [illegible] | [illegible] |
| 170 | 16—25 | ջնջել | |
| 177 | 8 | 1224—15 | 1224—5 |
| 172 | 18 | 165 | 165, նաև 254 |
| 247 | 2 ն. | Թաւր. | Վասպ. |
| 307 | 6 | ז | ן |
| 466 | 5 | ՄՈՒՍԻՆ | *ՄՈՒՍԻՆ |
| » | 6 | 890 | 1890 |

